# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ԲԱԺԻՆ Բ

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՅՔԱՐԸ ՍԱՍԱՆՅԱՆ ԻՐԱՆԻ ԵՎ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԴԵՄ V—VII ԴԱՐԵՐՈՒՄ

## ԲԱԺԻՆ Գ

## ՀԱՅԱՍՏԱՆՆ ԱՐԱԲԱԿԱՆ ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՆԵՐՔՈ ԵՎ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՅՔԱՐԸ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ VII—IX ԴԱՐԵՐՈՒՄ



## ԲԱԺԻՆ Դ

## ՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԸ ՎԱՂ ՖԵՈԴԱԼԻԶՄԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

# ИСТОРИЯ АРМЯНСКОГО НАРОДА



ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1984

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

ԲԱԶՄԱՀԱՏՈՐՅԱԿԻ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

Աղայան Ծ. Պ., Առաքելյան Բ. Ն., Ավետիսյան Հ. Ա., Գալոյան Գ. Ա., Երեմյան Ս. Տ., Խաչիկյան Լ. Ս., Հակոբյան Ա. Մ., Հովհաննիսյան Ա. Գ., Ներսիսյան Մ. Գ.





ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1984

# ТОМ II

# АРМЕНИЯ В ПЕРИОД РАННЕГО ФЕОДАЛИЗМА

РЕДАКЦИЯ ТОМА

*Еремян С. Т.* (отв. ред.), *Аракелян Б. Н.* (отв. ред.),
*Аревшатян С. С.*, *Бартикян Р. М.*,
*Даниелян Э. Л.*, *Тер-Гевондян А. Н.*

# ՀԱՏՈՐ II

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՎԱՂ ՖԵՈԴԱԼԻԶՄԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ


ՀԱՏՈՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Երեմյան Ս. Տ. *(պատ. խմբագիր)*, Առաքելյան Բ. Ն. *(պատ. խմբագիր)*
Արևշատյան Ս. Ս., Բարթիկյան Հ. Մ.,
Դանիելյան Է. Լ., Տեր-Ղևոնդյան Ա. Ն.

ԳՄԴ 63. 3(2Հ) 1
Հ 24

Տպագրվում է ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի
գիտական խորհրդի որոշմամբ

Հայ ժողովրդի պատմություն /ՀՍՍՀ ԳԱ Պատմ. ին-տ.
Հ 24 խմբ. կոլեգիա՝ Ծ. Պ. Աղայան, Բ. Ն. Առաքելյան, Հ. Ա. Ավետիսյան, Գ. Ա. Գալոյան, Ս. Տ. Երեմյան և ուրիշ.— Եր.։ ՀՍՍՀ ԳԱ Հրատ., 1984։

Հ. 2. Հայաստանը վաղ ֆեոդալիզմի ժամանակաշրջանում, 691 էջ, 6 քարտեզ, 34 թերթ նկ.։

*Հատորն ընդգրկում է Հայաստանի վաղ ֆեոդալիզմի դարաշրջանի պատմությունը (III—IX դդ.)։ Արտացոլված են ստրկատիրական հարաբերությունների քայքայման ու անկման պատմությունը, ֆեոդալական հարաբերությունների հաղթանակն ու տիրապետությունը։*

*Լուսաբանվում են Արշակունիների թագավորության շրջանը, պարսկարյուզանդական և արաբական տիրապետությունը, տվյալ ժամանակաշրջանի քաղաքական, սոցիալ-տնտեսական և մշակութային կյանքը։ Քննության են առնված օտար նվաճողների քաղաքականությունը և նրա կործանարար հետևանքները հայ ժողովրդի համար, նրա դարավոր ազգային-ազատագրական պայքարը օտար նվաճողների դեմ։*

*Առանձին բաժին է նվիրված հայ ժողովրդի մշակույթի պատմությանը՝ հայոց գրերի ստեղծմանը, գիտությանը, արվեստին։*

0505040000
Հ ——————— 23—80
703 (02)—84

ԳՄԴ 63. 3 (2Հ) I
9 (С 43) I

# ԱՌԱՋԱԲԱՆ

Հայ ժողովրդի պատմության ութհատորյակի սույն II հատորը նվիրված է III—IX դարերում Հայաստանի վաղ ֆեոդալական հասարակարգի զարգացմանը։

Մարքս-լենինյան մեթոդոլոգիայից ելնելով՝ հատորում լուսաբանվում են սովետական պատմագիտության համար կարևոր նշանակություն ունեցող սոցիալ-տնտեսական ֆորմացիաների, անցողիկ ձևերի ու յուրահատկությունների փոփոխումը, դրանց ընդերքում տեղի ունեցող դասակարգային կռվի ձևերը՝ ներհյուսված օտար նվաճողների դեմ ժողովրդաազատագրական մարտերի հետ։

Հայ ժողովրդի պատմության անքակտելի մասն է կազմում դարերի խորքից եկող հոգևոր մշակույթը, որն արտացոլում էր երկրի քաղաքական, սոցիալ-տնտեսական և հասարակական կյանքում կատարվող տեղաշարժերը։ Հատորում առանձին բաժին է նվիրված հայ ժողովրդի մշակույթի պատմությանը։

Հին աշխարհից միջնադարին անցնելու ժամանակաշրջանում (III—V դդ.) հայկական հասարակությունը զարգացած դասակարգային մի հանրություն էր, որի ընդերքում արդեն քայքայվում էին ստրկատիրական հարաբերությունները և ձևավորվում ֆեոդալական փոխհարաբերությունները։ Հելլենիստական այն երկրներում, որտեղ հիմնվել էին անկախ պետություններ, հասարակության զարգացումն ընթանում էր ֆեոդալական հունով։ Այսպիսի իրավիճակ էր Հայաստանում և Իրանում։ Իսկ հելլենիստական Արևելքի այն երկրներում (Եգիպտոս, Ասորիք, Փոքր Ասիա), որոնք վերածվել էին հռոմեական պրովինցիաների, դեպի նոր, ավելի առաջադիմական արտադրահարաբերություններին անցման պրոցեսն զգալիորեն դանդաղեց։

Արշակունիների դինաստիայի (63—428) թագավորության ժամանակներում, սկսած III դարից, հասարակության զարգացումը Հայաստանում ընթանում էր ֆեոդալականացման հունով, շահագործման ֆեոդալական եղանակի ձևավորմամբ։

Արտատնտեսական հարկադրանքն իրագործվում էր արդեն ոչ միայն պետական, այլև մասնավոր ճանապարհով, որը հող էր նախապատրաստում ֆեոդալական հողատիրության հաստատման համար։

Խոշոր ֆեոդալական հողատիրության աճն առանձնապես մեծ չափերի էր հասնում։ Հայ Արշակունիները հետզհետե ավելի էին կորցնում իրենց ենթակաների նկատմամբ ունեցած անսահմանափակ իշխանության իրավունքները. Հայոց թագավորն այլևս նախկին հելլենիստական միապետը չէր։ Նրա իշխանությունն ավելի ու ավելի էր սահմանափակվում դինաստիային պատկանող տերիտորիայով, երկրի մնացած մասն ընկնում էր զանազան մանր ու խոշոր նախարարական տների ձեռքը։ Կենտրոնական իշխանության թուլացմանը, բացի դրանից, նպաստում էր արտաքին քաղաքական բարդ իրավիճակը։ Թեև

Արշակունիները ջանում էին հողերը շնորհել արդեն ոչ թե «հայրենիքի»՝ ժառանգական չօտարվող տիրույթի կարգով, այլ «պարգևականքի», այսինքն՝ հողի պայմանական տիրապետման՝ (բենեֆիցիումի) կարգով. սակայն իրականում պարգևականի տերերը ջանում էին այդ պայմանական տիրապետումը վերածել ժառանգական-պայմանական տիրապետման (ավատ, լեն), իսկ այնուհետև՝ անվերապահ տոհմական տիրույթի։ Հողի պայմանական տիրապետումը հատկապես բնորոշ էր ազատների դասին (հեծյալների դաս) և գյուղական հոգևորականությանը։

Նախարարների և ազատների արտադրության հիմնական միջոցի՝ հողի փաստական տնօրեն դառնալու երևույթն ընթանում էր այնպես, որ անմիջական արտադրողը՝ համայնքի անդամ գյուղացին՝ շինականը, դառնում էր ֆեոդալականապես կախյալ գյուղացի։ Ֆեոդալականացող ազնվականությունը ձգտում էր ոչ միայն իրեն վերապահել հողն անսահմանափակ ձևով տնօրինելու իրավունքը, այլև այդ իրավունքը տարածել գյուղացիների վրա։ Հետզհետե ավելի էր թուլանում հողագործի՝ շինականի կախումը կենտրոնական իշխանությունից, և նրա նկատմամբ ավելի էր ուժեղանում նախարարի ու ազատի ունեցած իշխանությունը։ Ավելի ու ավելի էր խորանում շերտավորումը համայնքի ներսում։ Թագավորական և մասնավոր սեփականատիրական նախարարական հողերում ազատ շինականների կողքին երևան էին գալիս կախյալ շինականներ, որոնք հավասարեցվում էին հողին ամրակայված հողագործ մշակներին, ծառաներին։ Ազատ և կախյալ շինականների սոցիալական բնույթը մոտենում էր Հռոմեական կայսրության գոյության վերջին շրջանում եղած ազատ և կցագրված կոլոններին։ V դարի վերջին «շինական» տերմինն արդեն նշանակում էր ֆեոդալականորեն կախյալ գյուղացի։ Դրանից հետո, ողջ միջնադարի ընթացքում, այդ տերմինով էր արտահայտվում հողագործությամբ զբաղվող գյուղական ողջ բնակչությունը։

Մեծ Հայքի թագավորության ֆեոդալականացումը նշանավորվեց քրիստոնեական կրոնի ամրապնդմամբ։ 301 թ. քրիստոնեությունը հռչակվեց Մեծ Հայքի պետական կրոն և ծնունդ առնող ֆեոդալական վերնախավի գաղափարախոսություն ու միաժամանակ վերածվեց գաղափարական զենքի՝ Անդրկովկասում Սասանյան Իրանի զավթողական քաղաքականության դեմ մղված պայքարում։ Հայաստանում հաստատված քրիստոնեական եկեղեցին, ինչպես երևում է 354 թ. Աշտիշատի ժողովի որոշումներից, հանդես էր գալիս թբբև նոր իրավակարգի գաղափարախոս ու ջատագով։ Նախկին աշխարհաժողովը չէր համապատասխանում զորեղացած ֆեոդալների շահերին։ Եկեղեցական ժողովը կոչված էր դառնալու նախարարների խորհրդակցական և օրենսդիր մարմին, ինչպես և նա հանդես եկավ V դարում, Արշակունիների դինաստիայի անկումից հետո։

Ֆեոդալականացման պրոցեսի ուժեղացումը Հայաստանում հատկապես նշանավորվեց մասնավոր հողատիրության ընդլայնմամբ։ Ռենտայի համար մղվող պայքարը սաստկացնում էր ֆեոդալական շահագործումը, որը սրում էր դասակարգային հակասություններն անմիջական արտադրողների՝ շինականների և նախարարների միջև։

Ֆեոդալականացման պրոցեսի խորացման հետևանքով Հայաստանում առաջատար քաղաքական ուժը դառնում է խոշոր հողատիրական վերնախավը՝ նախարարների դասը, որն իր ձեռքն է վերցնում պետության կառավարման

իրավունքները, իսկ կենտրոնական իշխանությունը՝ հանձին թագավորի, ավելի ու ավելի է կորցնում իր սոցիալական հենարանը։ Հայ նախարարների տարբեր խմբավորումները Մեծ Հայքի Արշակունի թագավորի իշխանության դեմ ծավալված իրենց պայքարում օգտվում էին իրանական և հռոմեական զավթիչների դեմ մղած պայքարի հետևանքով կենտրոնական իշխանության համար՝ստեղծված աննկանելի վիճակից։ Այդ լավ էին հասկանում պարսից արքայից արքան և Հռոմի կայսրը։ Նրանք ամեն կերպ հովանավորում էին դեպի իրենց կողմնորոշված հայ նախարարներին։ Գահի շուրջը համախմբված նախարարների խավը ձգտում էր Մեծ Հայքի թագավորությունը զերծ պահել թե իրանական և թե հռոմեական քաղաքական ազդեցությունից։

Ֆեոդալական կացութաձևի ուժեղացումը, միջազգային առևտրական փոխանակության ճգնաժամը, հելլենիստական քաղաքների անկումը, այս ամենը խորացրին հակասություններն արտադրական նոր հարաբերությունների և Արշակունիների պետական կառավարման՝ իրենց դարն ապրած հելլենիստական սիստեմի միջև։ Արտաքին քաղաքական իրավիճակի հետևանքով արագացվեց հայոց կենտրոնացված պետության՝ Արշակունիների թագավորության փոխարինումը իշխանության նախարարական մարմնով։

Միջագետքում պարսիկների տարած հաղթանակը հռոմեացիների նկատմամբ աղետալի եղավ Արշակունյաց Հայաստանի համար։ 363 թ. հաշտության պայմանագրով Հռոմի դաշնակից Հայաստանը թողնվեց բախտի քմահաճույքին. ներքին հակասություններից բզկտված, նա չկարողացավ դիմագրավել թշնամուն։ 364—368 թթ. Հայաստանն ավերածության ենթարկվեց Շապուհ Բ Որկարակյացի (309—379) զորքերի կողմից։ Ավերվեցին հելլենիստական Հայաստանի ծաղկուն քաղաքները, իսկ բնակչությունը գերեվարվեց։ Սրանով ավարտվեց քաղաքների՝ դեռևս ստրկատիրական հասարակարգի ճգնաժամի ժամանակներից սկսված անկումը, որի հետևանքն էր տնտեսական ու քաղաքական կյանքի տեղափոխումը ֆեոդալական դղյակները։ Արհեստների ու առևտրի զարգացումն անկում ապրեց, որով բնատնտեսությունը երկրում համայնապարփակ բնույթ ստացավ։ Հօգուտ Հյուսիսային Միջագետքի քաղաքների նվազեց Հայաստանի դերը՝ որպես միջազգային կարավանային առևտրի փոխանցող օղակի։

Նախարարական և եկեղեցական կալվածքներն օրըստօրե ավելի էին վերածվում ինքնաբավ տնտեսական օրգանիզմի, այդ պրոցեսը, արագացնում էր ապակենտրոնացումը, հայկական վաղ ֆեոդալական միասնական պետության տրոհումն առանձին ինքնաբավ տերիտորիաների՝ նախարարությունների, որով ավարտվում էր ֆեոդալական հարաբերությունների հասունացման շրջանը և սկսվում մի նոր՝ տնտեսվարման ու քաղաքական իշխանության նախարարական սիստեմի շրջան։

Սոցիալական ներքին ներհակությունների, Սասանյան Իրանի ու Հռոմեական կայսրության զավթողական քաղաքականության հետևանքով 385 թ. Մեծ Հայքի միասնական թագավորությունը բաժանվեց երկու իրար դեմ պայքարող տերությունների՝ Սասանյան Իրանի և Հռոմեական կայսրության միջև։ Այսպես ավարտվեցին ֆեոդալականացման պրոցեսները, որոնք ինքնին լինելով պրոգրեսիվ, օտարերկրյա ագրեսիայի պայմաններում հանգեցնում էին քաղաքական անկախության կորստի. երկիրը ենթակա էր դառնում օտար գերիշխանության։ Օտարերկրյա տիրապետության հաստատման առաջին փուլում երկու

պետությունները ճանաչեցին ոչ միայն աշխարհիկ ու հոգևոր ազնվականության, այլև հարևան Վրաց աշխարհի և Աղվանքի ֆեոդալականացող ազնվականության սոցիալական և դասային իրավունքները։

Հայ Արշակունիների թագավորությունը Հայաստանի բյուզանդական մասում իր գոյությունը պահպանեց մինչև 387 թ., իսկ պարսկական մասում՝ 428 թ.։

Սասանյանների ջանքերը՝ Հայաստանում տարածել Իրանի պետական կրոնը՝ զրադաշտականությունը, և, մյուս կողմից՝ ասորալեզու եկեղեցու ուժեղացման սպառնալիքը երկրում, անհրաժեշտ էր դարձրել հակադրել նրանց քրիստոնեական եկեղեցին՝ հայոց լեզվով, իբրև միջոց պահպանելու հայ ժողովրդի ազգային և մշակութային ինքնատիպությունը թշնամու ոտնձգություններից։ Պահպանելու համար ստեղծված իրադրությունը հրամայական պահանջ էր դառնում Հայաստանի կառավարող վերնախավի առաջ՝ ունենալու գիր ու գրականություն մայրենի լեզվով։

Հայոց գրերի գյուտը Մեսրոպ Մաշտոցի կողմից (404—405 թթ.) դարակազմիկ նշանակություն ունեցավ հայկական մշակույթի զարգացման համար։ 421—422 թթ. Մաշտոցը հայերեն նշանագրերը տարածեց նաև բյուզանդական Հայաստանում։ Այդ ժամանակից սկսած ժողովուրդը ձեռք բերեց մի հզոր զենք, որի օգնությամբ դարեր շարունակ մաքառելով պաշտպանեց իր ինքնուրույնությունն ու ազգային մշակույթը։ Ժողովուրդը վերջնականապես ստեղծեց իր ինքնուրույն մշակութային աշխարհը, որը հակադրվեց իրանականին և դրանով իսկ վերացրեց երկրի հետագա պարսկացման բոլոր նախադրյալները։

Սասանյան Իրանը և Բյուզանդական կայսրությունն իրենց քաղաքական տիրապետությունը Հայաստանում հաստատեցին հայ նախարարների ու եկեղեցու ժառանգական հողատիրությունը ճանաչելու միջոցով. Նախարարները գրավում էին շինականների համայնքային հողերը և դրա հետևանքով շինականներն ավելի ու ավելի էին ընկնում ֆեոդալական կախվածության մեջ։ 428 թ., երբ ընկավ Արշակունիների դինաստիան, Եղիշեի դիպուկ արտահայտությամբ, հայկական թագավորությունն անցավ նախարարների ձեռքը։ Նախարարները հասան իրենց հանրային-իրավական իշխանության ճանաչման, որի համար զոհաբերեցին երկրի անկախությունը և ժողովրդական զանգվածների շահերը։

Սասանյաններին ենթարկված նախարարական Հայաստանը նախարարների մանր ու խոշոր տիրույթների մի ամբողջություն էր. յուրաքանչյուր տիրույթի գլուխ կանգնած էր «տէրը» կամ «նախարարը» (սենիորը)՝ տերության ժառանգական գլուխը։ «Տէրը» իր տիրույթի սահմաններում օժտված էր հանրային-իրավական իշխանությամբ և իրեն համարում էր Սասանյան Պարսկաստանի արքայից արքայի վասալը։ Իր տիրույթի սահմաններում նախարարը լիիրավ տեր էր, նա դատավարում էր ու հավաքում ենթակա բնակչության հարկը, ընդ որում պետական հարկերն արքունի հարկահավաքի միջոցով մուծվում էին Սասանյանների գանձարանը։ Յուրաքանչյուր նախարար ուներ իր զորքը, տոհմական զինանշանն ու դրոշը։

Ֆեոդալական տնտեսության հետագա զարգացմանը զուգընթաց տեղի էր ունենում նախարարական տիրույթների մասնատումն ավելի մանր քաղաքական միավորների։ Նախարարական յուրաքանչյուր տիրույթ վերածվում էր ավելի մանր, «տէր»-ից վասալական կախման մեջ եղող կալվածքների մի ամ-

բողջության։ Այդ կալվածքների գլուխ էին կանգնած «սեպուհները»՝ նախարարական տան կրտսեր ներկայացուցիչները և «ազատները»՝ հեծյալները, ավատների տերերը։

Սակայն քաղաքական իրադրությունն ստիպում էր նախարարներին միավորվել, որպեսզի հնարավոր լիներ դիմակայել ֆեոդալականորեն կախյալ գյուղացիության ընդվզումներին երկրի ներսում և Պարսկաստանին ու Բյուզանդիային՝ երկրից դուրս։ Քաղաքական այդ միասնությունն արտահայտվում էր պետական կառավարման ընդհանուր ապարատով, նախարարների ու հոգևորականության խորհրդակցական ու օրենսդրական մարմնով՝ ժողովով, որը գումարվում էր ըստ անհրաժեշտության, ինչպես նաև նախարարական հեծելազորի և հետևակազորի միասնական ռազմական կազմակերպությամբ։

Նախարարական Հայաստանում ֆեոդալական շահագործումը կրում էր խառը բնույթ։ Ֆեոդալականորեն կախյալ գյուղացիները՝ շինականները, մի կողմից շահագործվում էին պետական իշխանության կողմից՝ հանձին Սասանյանների, որը վերցնում էր հողային հարկ («հաս») և գլխահարկ, մյուս կողմից ֆեոդալների՝ նախարարների և եկեղեցու, որն արտահայտվում էր կոռով, բազմաթիվ պարհակներով և բնավճար տուրքերով («պտուղ»)։

Հայաստանին արտոնություններ և ներքին ինքնուրույնություն շնորհելու քաղաքականությունը Սասանյանները փոխարինեցին երկիրը սովորական պարսկական վարչական միավոր դարձնելու քաղաքականությամբ։ Սակայն այդ քաղաքականությունը ձախողվեց շնորհիվ ժողովրդի համառ դիմադրության, որն ընդունեց ժողովրդաազատագրական պատերազմների ձև (դրանցից առավել նշանավորները 420, 450—451, 481—484, 493 և 571—572 թթ. ապստամբություններն էին)։ Նախարարներն ու եկեղեցին, օգտագործելով ժողովրդական զանգվածների ելույթները, Սասանյաններին ստիպեցին հրաժարվել իրենց ասիմիլյատորական քաղաքականությունից և վերականգնել Հայաստանի արտոնյալ վիճակը։ 485 թ. հաշտության պայմանագրով Հայաստանը կրկին ճանաչվեց կիսանկախ, ինքնավար երկիր։ Իսկ Հայաստանի բյուզանդական հատվածում Հուստինիանոս Ա-ի (527—565) մի շարք հրովարտակներով նախարարական կարգը վերացվեց, որի հետևանքով երկրում երկար ժամանակ գերակշռող դարձան տնտեսավարման լճացած ձևերը։

V—VII դդ. պատմության ամբողջ շրջանը լի է գյուղացիների ելույթներով, որոնք ձգտում էին պաշտպանել իրենց իրավունքները նախարարների ու եկեղեցու, ինչպես նաև օտարերկրյա (պարսկական ու բյուզանդական) պետական իշխանության ոտնձգություններից։ Գյուղացիների դրությունը հատկապես վատթարացավ Խոսրով Ա Անուշիրվանի (531—578) սահմանած հարկային նոր սիստեմի հետևանքով։ Գլխահարկը գանձվում էր դրամով, որը բնատնտեսական հարաբերությունների տիրապետության պայմաններում քայքայում էր գյուղացիներին, որոնք վեր էին ածվել աշխարհիկ ու հոգևոր ֆեոդալների և վաշխառուների անվճարունակ պարտապանների։ Ժամանակակիցները, հանձին Հովհաննես Մայրավանեցու, վկայում են վաշխառուներին զոհ դարձած գյուղացիության ծանր գոյավիճակի մասին։

Գյուղացիական տնտեսությունը քայքայվում էր ոչ միայն ծանր տուրքերից, այլև գաղիկպետին (սասանյան պետության հասարակական աշխատանքների ղեկավարը) որպես պետական պարհակ՝ «մարդահարկ», բանվորական ուժ (Սասանյանների կողմից Կովկասյան լեռներում Դերբենդի պա-

րիսպների և այլ ամրությունների կառույցներում) և ռազմիկներ տրամադրելու (որոնք հաճախ օգտագործվում էին պետության հեռավոր մասերում), ինչպես նաև Բյուզանդիայի դեմ Սասանյանների մղած երկարատև պատերազմների ընթացքում զորքերին բնամթերք մատակարարելու հետևանքով։

Այս երևույթները նպաստում էին գյուղական համայնքի սոցիալական շերտավորման խորացմանը, և VII դարի սկզբին գյուղական համայնքի ներսում ի հայտ եկավ գյուղացիների երեք շերտ՝ ունևորներ («թուանիկ»), «տառապյալներ» և «վարելահող ու խաղողի այգի չունեցող» գյուղացիներ։

Դասակարգային հակասությունների սրման այս պայմաններում, VII դարի կեսերին իսկ ծնունդ առած պավլիկյանների սոցիալական ուսմունքը, որը դարձավ գյուղացիական զանգվածների շարժման դրոշը և վառ հետք թողեց միջնադարյան Հայաստանի ու Բյուզանդիայի դասակարգային պայքարի պատմության մեջ։ Սասանյան պետությունը դաժանորեն ճնշում էր գյուղացիական հուզումները։ 528 թ. Իրանում ճնշվեց Մազդակի գլխավորած շարժումը, որը ֆեոդալական կեղեքումների դեմ գյուղացիական զանգվածների պայքարի արտահայտությունն էր։ Պավլիկյան ուսմունքը, որ շատ մոտ էր Մազդակի ուսմունքին, հայ եկեղեցու կողմից դիմադրության հանդիպեց։

V—VII դարերում Հայաստանը մշակութային բուռն վերելք էր ապրում։ Հենց այս ժամանակաշրջանում էլ դրվեցին հայկական ֆեոդալական մշակույթի հիմքերը, որի մեջ դեռևս զորեղ էին հելլենիստական տարրերը։ Հայաստանի վաղ ֆեոդալական մշակույթը շարունակությունն էր հայկական հելլենիստական կուլտուրական ավանդույթների և դրանով պետք է բացատրել այն իրողությունը, որ IV—VII դդ. հայկական մշակույթը հանդես է գալիս իբրև ամբողջական ու կատարյալ երևույթ, իբրև արգասիք ֆեոդալականին նախորդող՝ ստրկատիրական հասարակարգի մշակույթի հետագա զարգացման։

Ֆեոդալականացող Հայաստանի մշակութային զարգացման ընթացքում քրիստոնեական և հելլենիստական «հեթանոսական» մշակույթների միջև խիստ ընդհատում չի եղել։ Հեթանոսական մշակույթի վերապրուկների ազդեցությունը երկար ժամանակ զգալի էր քրիստոնեական գաղափարախոսության ու մշակույթի գերիշխանության պայմաններում։ Հայաստանի հարևան Բյուզանդական կայսրությունում IV—V դդ. դեռևս գոյություն ունեին հելլենիստական կրթության կենտրոնները՝ Աթենքը, Ալեքսանդրիան, Անտիոքը, Եդեսիան, Կոստանդնուպոլիսը։ Այս քաղաքներում, չնայած կուսակրոնների ֆանատիկոսությանը, դեռևս պահպանվում էին անտիկ գիտության, գրականության ու արվեստի գանձերը։ Հելլենիստական մշակույթի գործիչները հարմարվեցին նոր պայմաններին, և այդ կենտրոնները դարձան քրիստոնեական գաղափարախոսության տարածման օջախներ։ Այստեղ էր գալիս հայ երիտասարդությունը՝ բարձրագույն կրթություն ստանալու։ Արևմտյան Եվրոպայի հետ համեմատած «Արևելքի Հռոմը», ինչպես կոչում էր Մարքսը. Բյուզանդիան, շարունակում էր մնալ անտիկ գիտության ավանդույթների պահպանող։ Հետագայում, երբ Հուստինիանոս Ա-ի (527—565) միջոցառումներն Արևելյան Հռոմեական կայսրությունում վերջ դրեցին այդ ամենին, Նախարարական Հայաստանում այդ ավանդույթները շարունակվեցին և այնտեղ իրենց գործունեության ասպարեզ գտան կայսրությունում հալածվող հունական դասական կրթության ներկայացուցիչները։

Այս շրջանի Հայաստանի մշակույթի զարգացման բնորոշ առանձնահատկությունն այն էր, որ քրիստոնեական եկեղեցին դեռևս տիրապետող դիրք չէր

գրավել երկրի հոգևոր կյանքում և, հակառակը, իր վրա կրում էր «հեթանոսական ժամանակների» աշխարհիկ մտածողության կնիքը։ Այս տեսակետից ցայտուն օրինակ է Դավիթ Անհաղթը։ Հետագայում հայկական ֆեոդալական կուլտուրան եկեղեցական սխոլաստիկ կանոնների ճնշման պատճառով չկարողացավ տալ այնպիսի խոշոր գիտնականներ ու մտածողներ, ինչպիսիք էին Մովսես Խորենացին (410—492), Դավիթ Անհաղթը (477—520), Անանիա Շիրակացին (610—685) և ուրիշներ։

Չնայած քաղաքների բարբարոսական ավերածություններին, որ տեղի էին ունենում Սասանյան Իրանի ներխուժումների և Իրանի ու Բյուզանդիայի միջև տեղի ունեցող պատերազմական ընդհարումների ժամանակ, որոնց թատերաբեմը սովորաբար լինում էր Հայաստանը, այնուամենայնիվ երկրի մշակույթի զարգացումը չընդհատվեց։ V—VII դդ. մշակութային վերելքը, հիմնված արտադրաուժերի զարգացման և անտիկ ժամանակաշրջանի գիտության ու հայկական հելլենիստական կուլտուրայի առաջադեմ ավանդույթների վրա, բնորոշվում է հայրենասիրությամբ, հանճարեղ Մեսրոպ Մաշտոցի՝ հայ գրերի գյուտին անմիջապես հաջորդած հին հայերեն գրական լեզվի՝ «գրաբարի» զարգացմամբ և հայերեն հարուստ գրականությամբ, հատկապես՝ պատմագիտական, փիլիսոփայական գրականությամբ։

Հին աշխարհի անտիկ մշակույթի հետ սինթեզված քրիստոնեական մշակույթի կենտրոնը աշխարհում V—VII դդ. մնում էր Հայաստանը։ Այդ է վկայում հայոց գրերի հանճարեղ հորինող Մեսրոպ Մաշտոցի, փիլիսոփա և աստվածաբան Եզնիկ Կողբացու, մտածող և պատմաբան Եղիշեի, պատմահայր Մովսես Խորենացու և այս ժամանակաշրջանի խոշորագույն մտածող Դավիթ Անհաղթի ու Անանիա Շիրակացու թողած գիտական ժառանգությունը։ Հայաստանի հունաբան դպրոցի ներկայացուցիչները V—VII դդ. հայերեն լեզվով իրագործեցին անտիկ փիլիսոփայության կարկառուն դեմքերի՝ Արիստոտելի, Պլատոնի, Փիլոն Եբրայեցու, Պորփյուրի և այլոց երկերի թարգմանությունը։ Այդ թարգմանությունները բացառիկ նշանակություն ունեցան հայկական տեսական մտքի ձևավորման համար։ Նշանակալից է, որ արդեն V—VI դդ. առաջացավ գիտությունների դասավորումը երկու կարգի՝ «Եռյակ» (trivium), որի մեջ մտնում էին՝ քերականությունը, ճարտասանությունը և փիլիսոփայությունը, և «քառյակ» (quadrivium), որը ընդգրկում էր չորս գիտություն՝ թվաբանություն, երաժշտություն, երկրաչափություն (որից առաջացավ երկրագրությունը՝ աշխարհագրությունը) և աստղաբաշխությունը։ Նշված յոթ գիտությունների դասակարգումով վաղ ֆեոդալական Հայաստանի գիտությունը դրվեց ամենազարգացած երկրների գիտությունների շարքում։ Հայկական մշակույթը հանդես եկավ իբրև ազգային մշակույթ, հարստացված անտիկ ու հելլենիստական մշակույթի լավագույն ավանդույթներով։ Այս ժամանակաշրջանին բնորոշ է գիտությունների դասակարգումը հայկական միջավայրում, որ առաջադրում է Դավիթ Անհաղթը և շարունակում է Անանիա Շիրակացին։

Հայաստանում հիմք է դրվում բանավիճային հակաքաղկեդոնական գրականությանը։ Աստվածաբանական հարցերից բացի մեծ հետաքրքրություն է նկատվում փիլիսոփայության ու պատմության նկատմամբ։

Ի դեմս հունաբան դպրոցի, Հայաստանում վերելք-էին ապրում հելլենիստական ավանդույթները՝ հարմարեցված քրիստոնեական գաղափարախոսությանը։ V—VI դդ. զարգանում են ու իրենց ծաղկուն շրջանն են ապրում ճար-

տարապետությունն ու կերպարվեստը՝ մանրանկարչությունը, որմնանկարչությունն ու խճանկարչությունը, երաժշտությունն ու թատրոնը։ Ճարտարապետությունը մեծ հասել է հատկապես պաշտամունքային շենքերի ձևով։ Միանավ և եռանավ բազիլիկ շենքերից առաջանում է գմբեթավոր բազիլիկան, զարգանում և տարածում է գտնում կենտրոնագմբեթ կառուցվածքը, որի նախատիպն էր գյուղական «գլխատունը» իր երդիկով։ Կենտրոնագմբեթ շենքերի դասական օրինակն են հանդիսանում VII դարում կառուցված Հռիփսիմեի և Զվարթնոցի հոյակապ տաճարները։ Հայաստանի մշակութային կյանքի գաղափարական ուղղվածությունն արտահայտվում էր սասանյան և բյուզանդական ագրեսիայի պայմաններում ինքնատիպ ազգային մշակույթը պահպանելու ձգտումով։

Արաբների ավերիչ արշավանքները VII դարի կեսերին, արաբաբյուզանդական պատերազմները VII—VIII դդ. սահմանագծում խիստ բացասաբար անդրադարձան հայ ժողովրդի ճակատագրի վրա։ Արաբական նվաճումներն ազդեցին Հայաստանի քաղաքական կյանքի, սոցիալ-տնտեսական և մշակութային զարգացման վրա։ VIII դ. սկզբին Հայաստանը նվաճվեց արաբների կողմից, վերածվելով խալիֆայության նահանգներից մեկի։ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը խոշոր նվաճումների մասին գրել են. «Հասարակարգի այն ձևը, որն ընդունվել էր նստակյաց դարձած նվաճողների կողմից, պետք է համապատասխանի արտադրաուժերի զարգացման առկա աստիճանին, իսկ եթե այդ համապատասխանությունն սկզբնապես չկա, ապա հասարակարգի այդ ձևը պետք է փոփոխվի՝ եղած արտադրաուժերի համեմատ»[1]։

Սրանով պիտի բացատրել այն երևույթը, որ արաբական նվաճումները մի ամբողջ հարյուրամյակ կասեցրին ֆեոդալական հարաբերությունների զարգացման պրոցեսը։ Միաժամանակ արագացավ Հայաստանում հիմնավորված տեղական հայ ազգաբնակչությունից զարգացման ավելի ցածր աստիճանի վրա գտնվող արաբական ցեղերի ֆեոդալականացումը։ Նվաճողներն ընդգրկվեցին ֆեոդալականացման ոլորտը։

Իր տիրապետության հաստատման սկզբնական շրջանում խալիֆայությունը Հայաստանում վարում էր հայկական ավագանու և նրա զինական ուժերի ֆիզիկական ոչնչացման քաղաքականություն։ Կրճատվեց նախարարական տների թիվը, նրանցից շատերն ապաստան գտան Բյուզանդական կայսրության սահմաններում։ Երկրում մնացած նախարարները (իշխանները), կամ ինչպես նրանց անվանում էին արաբները՝ «բատրիկները» (բյուզանդական «պատրիկ» տերմինից), զրկվեցին իրենց տիրակալական իրավունքից։ Այդ իրավունքներն այժմ նրանց շնորհում էր խալիֆն իր հայեցողությամբ, հաշվի չառնելով նախարարական տների աստիճանակարգի ու ժառանգականության գոյություն ունեցող սկզբունքը։

Ամբողջ հողն ու դրա ընդերքը պետական սեփականություն հայտարարվեցին։ Ռազմաստրատեգիական կարևորություն ունեցող շրջաններից հեռացվում էին տեղի բնակիչները։ Դրանք այն քաղաքներն ու ամրոցներն էին, որոնք ավերվել էին նախընթաց պատերազմների շրջանում։ Տեղի բնակչությունը «մարդահարկի» կարգով պետք է վերականգներ այդ ամրությունները, որոնք այդուհետ վեր էին ածվում Հայաստանում վերաբնակեցվող արաբական վաշ-

---

[1] К. Маркс и Ф. Энгельс. Соч., изд. 2-ое, т. III, с. 74.

կատուն ցեղերի ռազմական բնակավայրերի՝ հայ գյուղացիների նոր աղետների աղբյուր՝ արաբ վետերանների՝ «ռաբաթների»։ Վետերաններն արաբական ֆեոդալականացող տոհմացեղային վերնախավն էր, ռազմական ավագանին, որ Օմայաններից, իսկ այնուհետև Աբբասյաններից որպես պարգև ստանում էր հողերի եկամուտը։

Այս ճանապարհով VIII դարի ընթացքում արաբները վերականգնեցին ավերված քաղաքներն ու ամրությունները, որոնք դարձան նրանց տիրապետության ռազմավարչական կենտրոնները։

Արաբական այս ավագանին խալիֆայության գանձարանից ռոճիկ չէր ստանում և պահվում էր տեղի բնակչության՝ շինականների, հաշվին, որոնք որպես պետական պարհակ նրան տալիս էին անհրաժեշտ ամեն ինչ։ Հողազրկված և աղքատացած գյուղացիներն աշխատում էին ստրկական պայմաններում. զարգանում էր կիսրարական վարձակալությունը՝ խալիֆայությանը բնորոշ շահագործման ձևը։ Նախարարական Հայաստանի կյանքում նոր երևույթ էր կոմենդացիայի ինստիտուտը։ Իշխող կամայականության պայմաններում տնտեսապես սակավազոր ամեն մի գյուղացի և նույնիսկ ավագանու ներկայացուցիչ ձգտում էր ձեռք բերել զորեղ հովանավորի աջակցությունը և ժամանակի ընթացքում հովանավորման հարաբերությունները փոխարինվում էին կախվածության ու ենթարկման հարաբերություններով։

Հովանավորություն էին փնտրում ինչպես արաբական ռազմահողատիրական ավագանու, նույնպես և հայկական նախարարական ազդեցիկ տների շրջանում. տներ, որոնք կարողացել էին պահպանել իրենց դիրքը։ Հարթավայրերում պահպանվող նախարարական մանր տների ներկայացուցիչները լքում էին իրենց հողերը և ապաստան ու հովանավորություն գտնում երկրի բարձրադիր շրջաններում՝ Վասպուրականում, Սյունիքում, Արցախում, նախարարական խոշոր տների՝ Արծրունիների, Սյունիների, Բագրատունիների, Մամիկոնյանների և Կամսարականների մոտ։

Կատարվեց հայկական մանր ու միջին ավագանու վերախմբավորում՝ նախարարական պահպանված խոշոր տների շուրջը։ Մանր ֆեոդալներից և ազատ հողագործներից հավաքագրվում էր «մավալիների» (կլիենտների) հիմնական կազմը, դրանք տեղի նվաճված բնակչության այն ներկայացուցիչներն էին, որոնք անցնում էին արաբ որևէ ռազմական պետի կամ արաբական ամբողջ մի տոհմի հովանավորության տակ և նրա համար վասալական որոշակի ծառայություն կատարում։

Եթե արաբական տիրապետության շրջանում նախարարների ժառանգական հողատիրությունը թուլացավ, ապա եկեղեցական-վանական հողատիրությունն, ընդհակառակը, ամրապնդվեց։ Նախկին արտոնությունների ու «մեռյալ ձեռքի» փաստական իրավունքն օրինականացվեց վանքերի ենթարկումով մահմեդական իրավունքի՝ շարիաթի նորմերին։ Նրանց վրա տարածվում էին «վակըֆների» (հայերեն՝ «վախմ») հոգևոր շարժական ու անշարժ ունեցվածքի պահպանման կանոնները։

Անմիջական արտադրողների՝ շինականների, իսկ այնուհետև նաև ֆեոդալների՝ նախարարների դրությունն զգալիորեն վատթարացավ 725 թ. աշխարհագրի հիման վրա հարկային նոր սիստեմ մտցվելուց հետո։ Հարկային այս նոր սիստեմը, VIII դարի հայ նշանավոր Ղևոնդ պատմիչի վկայությամբ, սահմանվել էր «հարկային կախվածության բեռ-լուծը ծանրացնելու համար»,

այն պետք է վերջնականապես ստրկացներ անմիջական արտադրողին։ Գլխահարկի (ջիզիեի) հետ սահմանվեց հողահարկ (խարաջ)։ Սա հարկային մի սիստեմ էր, որ փոխ էր առնվել Սասանյան Իրանից։

Ժողովրդական զանգվածների պատկերացմամբ արաբները տիրում էին երկրին, որպեսզի կլանեն ամեն ինչ։ Այս կարծիքն արտահայտել է Ղևոնդ պատմիչը, որն իսլամի հիմնադիր Մուհամմեդի շուրթերին էր դրել այն խոսքերը, որոնք նա իբր ավանդել է իր հետնորդներին. «Ելեք երկրների դեմ, ենթարկեք նրանց ձեր իշխանությանը, որովհետև... վայելելու համար երկրի բարիքը տրված է մեզ։ Կերեք ընտրյալների միսը, խմեք ուժեղների արյունը»։

Գլխահարկ ջիզիեն հավաքում էին խալիֆայության ենթակա այն երկրներում, որոնց ժողովուրդները չէին ընդունել իսլամը և մահմեդական արաբների պատկերացմամբ իրավազուրկ էին, իրենց ստրուկներն էին։ Ոչ մահմեդական հողագործ բնակչության համար հատկապես ստորացուցիչ էր «կնքումը», երբ ջիզիե վճարողի վզից հատուկ կապարե կնիքներ էին կախում, որոնց վրա նըշված էր, թե որ բնակավայրից տվյալ անձը որքան հարկ է պարտավոր վճարել։

Հայաստանում յուրաքանչյուր խոշոր ապստամբություն VIII դարում սկսվում էր հարկահավաքների սպանությամբ։ Հուսահատության հասած բնակչությունը պայքարի էր ելնում խալիֆայության դեմ։ Պայքարը կրում էր ժողովրդաազատագրական պատերազմների բնույթ, հանուն արաբների լծից երկրի ազատագրության և հայկական պետականության վերականգնման։ Առավել խոշոր ապստամբություններ տեղի ունեցան 747—753, 774—775 և 851—853 թթ.։ Արաբական իշխանությունները դաժան պայքար էին մղում ապստամբական շարժումների դեմ, ինչպես նաև ոչնչացնում էին ընդդիմադիր նախարարական տները (Մամիկոնյանների, Կամսարականների)։

VIII դարի վերջերից սկսվում է ներքին և արտաքին հակասություններից բզկտվող խալիֆայության անկումը, այն կորցնում էր իր դիրքերը նվաճված երկրներում։

Խալիֆայության տիրապետության տակ գտնվող երկրների, դրանց թվում նաև Հայաստանի ազատագրման համար մղված պայքարին նպաստում էին սոցիալական այն շարժումները, որոնք հասցրին Աբբասյանների իշխանության թուլացման։ IX դարի երկրորդ կեսից արաբական լծի դեմ մղած հայ ժողովրդի պայքարի արգասիքը եղավ հայկական ֆեոդալական պետականության վերականգնումը՝ ի դեմս հայ Բագրատունիների թագավորության։

Այսպիսով, IX դարի կեսերից Հայաստանը թևակոխում է զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանը։

Հատորը շարադրված է մեծ թվով հայերեն, հունարեն, պահլավերեն, ասորերեն, արաբերեն, վրացերեն սկզբնաղբյուրների հարուստ տվյալների հիման վրա. օգտագործվել են նաև հնագիտական պեղումների և վիմագիր արձանագրությունների ընձեռած տվյալները։ Հատորում հաշվի են առնվել և ընդհանրացվել հայ ժողովրդի՝ տվյալ դարաշրջանի սոցիալ-տնտեսական, քաղաքական ու մշակութային պատմությանը վերաբերող գիտահետազոտական ուսումնասիրությունների արդյունքները։

Ս. ԵՐԵՄՅԱՆ

Հատորը պատրաստել է հեղինակային կոլեկտիվը հետևյալ կազմով.

Աբրահամյան Ա. Ա. (գլ. XVIII, § 3)։

Առաքելյան Բ. Ն. (գլ. XXIV, §§ 1, 2, 3, 4)։

Արևշատյան Ս. Ս. (մշակույթի ներածական, գլ. XXI)։

Բարթիկյան Հ. Մ. (գլ. X, XI, XVII)։

Դանիելյան Է. Լ. (գլ. XIII, XXII, § 1)։

Երեմյան Ս. Տ. (ներածական, գլ. I, II, III, IV, V, VI, VII, VIII, IX, XVIII, §§ 1, 2, XXII, § 3)։

Թահմիզյան Ն. Կ. (գլ. XXIV, § 5)։

Թումանյան Բ. Ե. (գլ. XXII, § 2)։

Իսկանյան Վ. Կ. (գլ. XII)։

Հարությունյան Ս. Բ. (գլ. XIX)։

Հովհաննիսյան Հ. Վ. (գլ. XXIV)։

Հովհաննիսյան Ս. Հ. (գլ. XX)։

Մնացականյան Ս. Խ. (գլ. XXIII, § 2)։

Մուշեղյան Խ. Ա. (գլ. XII, § 6, XVI, § 5)։

Սահինյան Ա. Ա. (գլ. XXIII, § 1)։

Վարդանյան Ռ. Հ. (գլ. XXII, § 4)։

Վարդանյան Ս. Ա. (գլ. XXII, § 5)։

Տեր-Ղևոնդյան Ա. Ն. (գլ. XIV, XV, XVI)։

Հատորում զետեղված քարտեզների հեղինակն է Ս. Տ. Երեմյանը։

Հատորի ժամանակագրությունը և մատենագիտությունը կազմել է Ժ. Հ. Սողոմոնյանը, անձնանունների և տեղանունների ցանկերը՝ Ա. Հ. Շաղգամյանը։





ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՎ ԱՌԱՋԻՆ ՍԱՍԱՆՅԱՆՆԵՐԸ

## 1. ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԿՈՒՄԸ

*Հին աշխարհում ծայր առած սոցիալ-տնտեսական և քաղաքական համընդհանուր ճգնաժամը, որն ընդգրկել էր միջերկրածովային և առաջավորասիական երկրները, III դարի սկզբներին Պարթևստանում դրսևորվեց Արշակունիների կենտրոնական իշխանության թուլացմամբ։*

*Հռոմեապարթևական պատերազմների հետևանքով պարթևներից Հռոմին էր անցել Միջագետքի հիմնական մասը։ Սահմանագիծը Խաբուր գետով հասնում էր մինչև Տիգրիս գետը և նրանից հեռու չէր պարթևական խոշոր առևտրական կենտրոն Դուրա-Եվրոպոսը, որից հետո սկսվում էին պարթևների մայրաքաղաքի մատույցները։*

*Նոր գրաված տարածքը հռոմեացիները դարձրել էին առանձին պրովինցիա՝ «Մեսոպոտամիա» (*Mesopotamia*) անունով, որի կենտրոնն էր առևտրական խոշոր հանգույց Մծբին քաղաքը, որը դառնում էր հռոմեացիների կարևոր ռազմական հենակետ։ Մեսոպոտամիական լեգեոնները տեղավորվում էին Ջեզմայից եկող մայրուղու վրա և գետերի ափերին*[1]*։*

*Հռոմի օգտին արված տերիտորիալ զիջումները ավելի էին թուլացրել պարթևական թագավորությունը։ Անպաշտպան էին մնացել պարթևական պետության ամենակարևոր քաղաքական կենտրոնները, երկրի տնտեսական սիրտը հանդիսացող կենտրոնական և Ստորին Միջագետքը՝ «Արքայանիստ աշխարհը»*[2]*։*

*Կային նաև մի շարք գործոններ, որոնք բոլորովին հեղինակազրկել էին պարթևական աշխարհակալությունը։ Դրանցից էր տնտեսական կապերի թուլացումը, որ հետևանք էր միջազգային քարավանային առևտրի նվազման։ Տընտեսական ծանր վիճակը և դրամական շրջանառության խանգարումը պարթևական պետության մեջ II դարի վերջում և III դարի սկզբներին*[3] *հետևանք էին այն ավերածությունների, որ հռոմեական զորամասերը կատարում էին պարթև Արշակունիների «Արքայանիստ աշխարհում»։*

*Ավելի աղետալի հետևանքներ ունեցավ միջազգային առևտրական փոխանակության թուլացումը և նույնիսկ դադարումը։ Հարկ է հատկապես նշել պարթև Արշակունիների գանձարանին մեծ եկամուտներ բերող «մետաքսի ճանապարհով» կատարվող առևտրի նվազումը*[4]*։*

---

1 *Т. Моммзен,* История Рима, т. V, с. 382.

2 Խորենացի, *Բ. ՀԲ, էջ 207։*

3 *Տե՛ս М. Е. Массон,* Новые данные по истории Парфии, ВДИ, 1950, № 3, с. 53.

4 *Տե՛ս А. Г. Бокщанин,* Парфия и Рим, ч. I, М., 1960, с. 284—286. *М. Е. Массон,* Народы и области южной части Туркменистана в составе Парфянского государства, «Труды ЮТАКЭ», 1955, с. 17.

Կենտրոնական իշխանության տնտեսական սնանկացումը հարկադրում էր նրան ստեղծել եկամուտների նոր աղբյուր։ Տիզբոնում նստող արքայից արքաները բարձրացնում էին պահանջներն իրենցից կախում ունեցող թագավորներից և տեղական կառավարիչներից, իսկ այդ դժգոհություն էր հարուցում կենտրոնական իշխանության հանդեպ, որը հասցնում էր նույնիսկ զինված բախումների՝ արքայից արքայի և տեղական ավագանու միջև։ Երկիրը մասնատվում, տեղական իշխանությունները զորեղանում էին[5]։

Պարթևական պետության մեջ ստեղծված իրավիճակն օգտագործեցին քաղաքական ասպարեզ իջած Սասանյանները, որոնց ձեռքին էր գտնվում երկրի հոգևոր իշխանությունը։ Սասանը վարում էր երկրի գլխավոր սրբարանի՝ Անահիտի մեհյանի[6] քրմապետի պաշտոնը։

Սասանի որդի Պապակը ժառանգելով հորից Անահիտի մեհյանի քրմապետի պաշտոնը, միաժամանակ ամրապնդում է իր քաղաքական դիրքերը։ Վաղարշ Դ-ի մահից հետո նա, հափշտակելով Պարսքի արքայական գահը, դառնում է «մարզպան և շահրդար» Պարսքի, իսկ 308—309 թթ. կատարված հեղաշրջման շնորհիվ իր որդի Շապուհին հռչակում է Պարսք նահանգի Ստահր մայրաքաղաքի թագավոր[7]։ Այսպիսով, Սասանյանները ձեռք են բերում նաև քաղաքական իշխանություն[8]։

Արշակունիների համար քաղաքական այս տագնապալից իրավիճակում բացակայում էր նաև միասնությունը թագավորող տան ներկայացուցիչների միջև։

Վաղարշ Ե-ի գահ բարձրանալու տարվանից (208) հինգ տարի անց նրա եղբայր Արտավանն իրեն հռչակեց արքայից արքա և գահակալական կռիվները եղբայրների միջև շարունակվեցին մինչև Վաղարշ Ե-ի մահը (222/223)։

Համաձայն հայկական պատմական ավանդության, Հայոց թագավորը Արտավանի դաշնակիցն էր և նրա հետ միասին պայքարում էր Վաղարշ Ե-ի դեմ։ Ագաթանգեղոսի և Մովսես Խորենացու վկայությամբ Հայոց Խոսրով Ա թագավորը (198—216) երիցս արշավանքներ է ձեռնարկել դեպի հարավ՝ առաջին Սասանյանների դեմ և վերադարձել է հարուստ ավարով[9]։ Խոսրով թագավորը ժամանակակից էր այն անցքերին, երբ Արտավանն իրեն արքայից արքա հռչակեց և կռիվ մղեց եղբոր՝ Վաղարշ Ե-ի դեմ։ Ուրեմն հավանական պետք է համարել, որ Արտավանի դաշնակից հայոց թագավորը արշավանքներ է ձեռնարկել Արտավանի ախոյանի՝ Վաղարշ Ե-ի դեմ[10]։

---

5 А. Г. Бокщанин, Парфия и Рим, ч. II, с. 287—288.

6 Ենթադրվում է, որ Անահիտի մեհյանի շենքն է մեզ հասած «Քաաբա-ի Զարդուշտ» կոչվող հուշարձանը։

7 Թերևս 209 թ. հեղաշրջումն է հիմք ծառայել հայկական աղբյուրների այն ավանդության, որով Հայոց Խոսրով Ա թագավորը ներկայանում է իբրև սասանյան առաջին տիրակալների դեմ համառորեն մարտնչող (Ագաթանգեղոս, գլ. Ա, 18, էջ 15)։

8 Ռ. Գիրշմանը առաջինը նկատել է, որ քաղաքական իշխանության ձեռք բերման տարեթիվը՝ 209 թվականը հռչակվում է որպես սասանյան էրայի սկիզբ։

9 Ագաթանգեղոս, գլ. Ա, 19, էջ 16, 21, էջ 18, 22, էջ 19, գլ. Բ. 23, էջ 19։

10 Ինչպես նշվեց, Խոսրով Ա-ն ժամանակակից էր 208/209 թթ. Պարսքում տեղի ունեցած հեղաշրջման, իսկ Սասանյանների վերջնական հաղթանակը տեղի է ունեցել նրա մահից տաս տարի հետո (227), երբ Մեծ Հայքի թագավոր էր նրա որդի «Խոսրով Մեծը»—Տրդատ Բ։ Հ. Մանանդյանն իրավացի նշում է՝ «Հայ պատմիչների մոտ միակական Խոսրովին վերագրված պարսիկների դեմ պատերազմները հիշողություն են, իրապես այն երկարատև ու համառ կռիվների,

Արտավան Ե-ն պարտության մատնելով եղբորը, հաստատվեց Տիզբոն մայրաքաղաքում, առժամանակ ամրացնելով իր դիրքերը։

Անտոնինոս Կարակալլայի հաջորդած Մակրինոս կայսրը (217—218) փորձեց շարունակել պատերազմը պարթևների դեմ։ Մծբինի մոտ տեղի ունեցած ճակատամարտերում Արտավանը երկիցս պարտության մատնեց հռոմեական զորքերին։ Մակրինոս կայսրը ստիպված էր հաշտության պայմանագիր կնքել։ Հռոմեացիները վերադարձրին պարթևական ռազմագերիներին[11], Մակրինոսը Արտավանին վճարեց հինգ հազար բյուր դրախմե, քանի որ «ինքը պարտվել էր»[12]։ Դա փաստորեն ռազմատուգանք էր։ Երկու տերությունների միջև հաստատվեց խաղաղություն։ Հռոմին անցավ Միջագետքը, որով և սահմանափակվեցին հռոմեացիների հավակնությունները։

Հաստատված կայուն վիճակի շնորհիվ վերականգնվեցին նաև հայ-հռոմեական հարաբերությունները։

Արտավան Ե-ի հաղթանակները, սակայն, պարթևների վերջին հաջողություններն էին՝ նրանց թագավորության անկման նախօրյակին։

Սոցիալական և քաղաքական ճգնաժամի և հռոմապարթևական պատերազմների հետևանքով ավելի ևս խորանում է Պարթևական պետության թուլացումը և տրոհումը պետական մանր միավորումների։

Արտաքուստ թվում էր, թե Արտավան Ե-ն հասել էր իր հզորության գագաթնակետին և իր կամքն էր թելադրում հռոմեական հաջորդ կայսր Անտոնինոս Հելիոգաբալին (218—222)։ Բայց իրականում պարթևական աշխարհակալությունն ապրում էր իր մայրամուտը։ Դեպքերը ցույց են տալիս, որ հեռավոր Պարսքում տեղի ունեցած պետական հեղաշրջումը տեղական բնույթ չուներ, որ այն անխուսափելիորեն պիտի ընդգրկեր ողջ Իրանը։

Պապակի որդի Արտաշիրը չորս տարվա ընթացքում կարողացավ ջլատել թուլացած պարթև Արշակունիների վերջին ուժերը։ 227 թ. ապրիլի 28-ին տեղի ունեցած Որմիզդականի վճռական ճակատամարտում սպանվեց պարթևական վերջին թագավոր Արտավան Ե-ն[13]։ Պարթևական թագավորությունը կործանված էր։

## 2. ՀԱՅ-ՔՈՒՇԱՆԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ՍԱՍԱՆՅԱՆՆԵՐԻ ԴԵՄ

227 թ. Պապակի որդի Արտաշիրը թագադրվեց Տիզբոնում և նրան շնորհվեց «Արքայից արքա Երանի» տիտղոսը։ Այսպիսով, Արտաշիր Ա-ի (227—243) գահակալությամբ սկսվում է Սասանյան դինաստիայի իշխանությունն ամբողջ Երանշահրում՝ նախկին Պարթևական թագավորության տարածքում։

Ստրկատիրական կարգերի ճգնաժամը և Իրանում Սասանյան դինաստիայի հաստատվելը ունեցան խոշոր սոցիալ-տնտեսական և քաղաքական նշանա-

---

որ պատմական այս Տրդատ Բ-ն, իբրև հռոմեացիների դաշնակից ու վասալ, վարել էր Արտաշիր Ա-ի և Շապուհ Ա-ի դեմ» (Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Բ, մասն Ա, էջ 85)։

11 Dio, LXXIX, գլ. 26, 2, 5 (հայ. թարգմ., էջ 223)։

12 Նույն տեղում, գլ. 27, 1—3 (հայ. թարգմ., էջ 224)։ Հռոմեացիների վճարած հինգ հազար բյուր դրախմեն կազմում էր 50 միլիոն դինար, որը հավասար էր 200 միլիոն սեստերցի։ Տե՛ս նաև Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 61։

13 Herodianus, VI, 2 (Z), Խորենացի, Բ, ՀԹ։

կություն։ Տեղի էր ունենում լուրջ շրջադարձ։ Մի կողմից՝ թուլանում էր հզոր Հռոմեական ստրկատիրական կայսրությունը, որն այլևս ի վիճակի չէր ընդարձակելու իր աշխարհակալությունն Արևելքում, մյուս կողմից՝ հզորանում էր ֆեոդալականացող Իրանը, որտեղ Սասանյանները ստեղծեցին կենտրոնական զորեղ պետություն և դարձան ռազմական վճռական ուժ Մերձավոր և Միջին Արևելքում։ Դերերը փոխվել էին, եթե միասնականությունից զուրկ և թուլացած Պարթևական պետությունը իր գոյության վերջին շրջանում պաշտպանվում էր հռոմեական նվաճողների հաճախակի կրկնվող հարձակողական պատերազմներում, ապա այժմ ռազմական գերազանցությունը Սասանյանների կողմն էր և Հռոմն էր անցել պաշտպանության։

Միջազգային նշանակություն ունեցող այս տեղաշարժերն իրենց անդրադարձն ունեցան նաև հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական և քաղաքական պատմության վրա։ Հայաստանը ֆեոդալականանում էր[14], փոփոխվել էր նաև երկրի արտաքին քաղաքական վիճակը։ Եթե մինչ այդ Հայաստանի անկախության սպառնալից վտանգը գալիս էր արևմուտքից՝ Հռոմեական կայսրությունից, ապա այժմ առավել վտանգավոր էր դառնում Սասանյան Պարսկաստանը։

Նոր հաստատված Սասանյան դինաստիան սակայն դեռևս պետք է ամրացներ իր դիրքերը։ Պայքարն սկսվեց երկրի ներսում, որտեղ հալածում, ոչնչացնում էին նախկին պարթև Արշակունիների դինաստիայից կենդանի մնացած անձանց, որպեսզի բացի Սասանյաններից, Իրանի արքայից արքայի գահը ոչ մի հավակնորդ չունենա։ Այնուամենայնիվ սպանված Արտավան Ե-ի որդիները՝ Արտավազդը և նրա եղբայրները, կարողացել էին փախչել Հյուսիսային Իրանի անմատչելի լեռները, հավանաբար կենտրոն ունենալով էկբատան քաղաքը[15]։ Սակայն Արտավազդը չուներ ո՛չ քաղաքական, ո՛չ էլ սոցիալական հենարան։ Իրանի ավագանին հետզհետե անցնում էր հաղթանակած Սասանյանների կողմը։ Սասանյանների կողմն անցան նաև պարթև Արշակունիներին տոհմակից տները։ «Երբ Սասանի որդի Արտաշիրն Արտավանին սպանեց և ինքը թագավորեց,—հաղորդում է Խորենացին,— պահլավյան երկու ցեղերը, որոնք կոչվում են Ասպահապետի և Սուրենի Պահլավ՝ հոժարությամբ ընդունեցին Սասանի որդու՝ Արտաշիրի թագավորությունը»[16]։ Սրանով էլ պատմահայրը բացատրում է Արտաշիրի հաջողությունները։ Խորենացու այս տեղեկությունները համապատասխանում են «Քաաբա-ի Զարդուշտ»-ի, Շապուհ Ա-ի՝ փորագրած արձանագրության (մոտ 262 թ.) տվյալներին[17]։

---

14 Տե՛ս А. П. Новосельцев, Генезис феодализма в странах Закавказья, М., 1980 с. 234.

15 Հայտնի են այս Արտավազդի արծաթե դրամները (դրախմաները), որոնք հատվել են մինչև 229—230 թթ. (В. Г. Луконин, նշվ. աշխ., էջ 37)։

16 Խորենացի, Բ, հա (աշխ. թարգմ., էջ 206)։

17 Տե՛ս В. Г. Луконин, նշվ. աշխ., էջ 38։ Նույն տեղում Վ. Գ. Լուկոնինը նշում է, որ միայն պարթևական ավագանու օգնությունն Արտաշիրին բավական չէր տապալելու պարթևական դինաստիան։ «Ճգնաժամի այս ծանր դարաշրջանում,— գրում է Վ. Գ. Լուկոնինը,— ոչ միայն ազատանի տոհմերին, այլև շահրերի թագավորներին, ինչպես և ազնվականության ավելի լայն խավերին ու քաղաքներին, անհրաժեշտ էր ունենալ ուժեղ պետություն, որն ի վիճակի կլիներ իր ձեռքում պահելու Երանշահրի տնտեսական «սիրտը»՝ Միջագետքը և կարգի բերելու երկրի տնտեսական կյանքը»։ Անշուշտ, մեծ նշանակություն ուներ նաև այն հանգամանքը, որ դառնալով Պարսքի թագավորներ, Սասանյանները սերտորեն կապվեցին երկրի զրադաշտականության կենտրոնի հետ։

Ըստ հայկական պատմական ավանդության Սասանյանների քաղաքական ասպարեզ իջնելուց հետո, կային երկու հակադիր ուժեր, որոնք III դարում մի քանի տասնամյակներ շարունակ կատաղի պայքարում էին միմյանց դեմ. դրանք էին Հայոց թագավորը՝ «Խոսրով Մեծ» անունով, այն է՝ Տրդատ Բ-ն և նրան հակադրվող «Սասանի որդի Արտաշիրը»՝ Արտաշիր Ա-ն (227—243) և նրա թոռ, դեռևս զորավար, իսկ հետագայում «Արմենիայի մեծ թագավոր» Որմիզդ-Արտաշիրը (կամ Խոսրով-Որմիզդ-Արտաշիրը) (264—272), որը բազմում է Սասանյան Իրանի գահին իբրև «արքայից արքայ Երան և Աներան» տիտղոսով՝ Որմիզդ Ա (272—273) անունով։ Ահա այս երկու հակադիր ուժերը՝ Հայաստանի «Խոսրովը»[18] և Պարսկաստանի «Արտաշիրը» անընդհատ պայքարի մեջ էին միմյանց դեմ։ Այս հավաքական Արտաշիրը հանձին Որմիզդ-Արտաշիրի, սպանում է Խոսրովին՝ հանձին Տրդատ Բ-ի[19]։

Խորենացու տեղեկությունների համաձայն հայ Արշակունիները ձեռք են առել բոլոր միջոցները՝ օգնելու Արտավան Ե-ին Արտաշիր Սասանյանի դեմ մղած իր պայքարում։ Ըստ այդ տեղեկությունների, Հայոց «Խոսրով Մեծ» (իմա՝ Տրդատ Բ) թագավորը «հենց որ լսեց ծագած խռովության մասին, շտապեց օգնության գալու Արտավանին[20], թերևս հնար լինի ազատելու գոնե նրան։ Բայց, երբ նա Ասորեստան մտավ, այստեղ լսեց Արտավանի մահվան բոթը, բոլոր պարսից զորքերի և նախարարների, ինչպես և իր ազգի՝ պարթևների և պահլավիկների միաբանության մասին (Արտաշիրի հետ), բացի Կարենյան տոհմից»[21]։ Այս անցքերը պետք է տեղի ունենային Որմիզդականի ճակատամարտից հետո։

Խորենացու տվյալներից կարելի է եզրակացնել, որ այս կարճ ժամանակամիջոցում, երբ Իրանում պարթևական դինաստիայի ներկայացուցիչները գրեթե վերացել էին, Իրանին հարևան չորս երկրներում (Մեծ Հայք, «Թետա-

18 «Խոսրով» ոչ միայն անուն է, այլ և տիտղոս, որի վրա ժամանակին ուշադրություն են դարձրել Հ. Պերպերյանը («Որմիզդ-Արտաշիր՝ մեծ արքա Հայաստանի», «Զվարթնոց», II, 1944, էջ 167—173, Կ. Թումանովը (*C. Toumanoff*, նշվ. աշխ., էջ 277) և Բրիան Մակդերմոտ (*Brlan Macdermot*. The Conversion of Armenia in 294 A. D., RE Arm., VII, 1970, էջ 349)։ Այն նշանակելով «բարեհամբավ, հռչակավոր, անվանի» (տե՛ս Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, Հ. Բ, Երևան, 1944, էջ 529—530) եղել է մեծարման մակդիր-տիտղոս՝ hwslwb (տե՛ս *В. Г: Луконин*. Завоевания Сасанидов на Востоке и проблема кушанской абсолютной хронологии. ВДИ, 1964, № 3, էջ 36)։ ŠKZ-ում Շապուհ Ա-ն և նրա չորս որդիները՝ Երանշահրի կոնֆեդերացիայի «դաստակերտ» թագավորությունների տիրակալներն իրենց անունից առաջ ունեն «Խոսրով» անունը (տե՛ս *E. Honigmann et A. Mariq* Recherches sur le Res gestae Divi Saporis, *Brussel*, 1953. էջ 15—17)։ Հայկական էպոսում, ըստ երևույթին, «Խոսրով» անունը դարձել է հոմանիշ «Հայոց թագավոր» հասկացությանը։

19 Այս փաստի բացահայտումը ճշտում է բանասերների եզրակացությունը, որ Տրդատ Բ-ն Խորենացու մոտ հանդես է գալիս «Խոսրով Մեծ» անվամբ։ Ուրեմն չպետք է նույնացնել Խոսրով Ա-ի թագավորության տարիները Արտաշիր Ա-ի տարիների հետ։

20 Այս դեպքը չպետք է շփոթել մի այլ համանման դեպքի հետ, երբ Արտավանը պայքարում էր իր եղբայր Վաղարշ Ե-ի դեմ և Հայոց Խոսրով Ա թագավորը (198—216) փութացել էր նրան օգնության։

21 Խորենացի, Բ, հա (հմմտ. աշխ. թարգմ., էջ 206)։

լացոց աշխարհ»[22], «Լիմերիկէ» կամ «Հնդիկք»[23], «Մազքթաց թագավորութիւն»[24]) գահակալող Արշակունի դինաստիաների մեջ առաջնությունը փաստորեն անցել էր հայ Արշակունիներին՝ հանձին Խորենացու նշած «Խոսրով Մեծ» (Տրդատ Բ) Հայոց թագավորի։ Խոսրովը կոչ է անում բոլոր Արշակունիներին գումարել իրենց ուժերը և համախմբված դիմադրել Սասանյաններին։ Ահա այս ժամանակ հայոց թագավորը, որը գրավում էր Արշակունյաց երկրորդ գահը, դառնում է ավագագույնը Արշակունիների մեջ և դրանով պիտի բացատրել «Խոսրով»—Տրդատ Բ-ի «Մեծ» մակդիրը։

Պարթև Արշակունիների պետության տապալումից հետո ստեղծված իրադրության պայմաններում միակ քաղաքական ուժը Հռոմեական կայսրությունն էր, որը շահագրգռված էր պահպանելու Մեծ Հայքի թագավորության գոյությունը։ «Մեծ թագաւորը Հայոց Մեծաց», որի երկիրը Վիրքի և Աղվանքի հետ ռազմական տեսակետից մտնում էր Կապադովկիայի ռազմական շրջանի համակարգի մեջ, այս տագնապալից պահին պետք է դիմեր հռոմեական կայսեր օգնությանը[25]։

Խորենացին հաղորդում է, որ Հայոց թագավորը, Արտավանի սպանությունից հետո, ռազմական օգնություն խնդրելով Հռոմեական կայսրությունից, միաժամանակ պատգամավորներ է ուղարկում տոհմակից պարթև և պահլավիկ ազգերին և քուշանաց երկրի բոլոր զորքերին, կանչում իր մոտ՝ Արտաշիրից վրեժ առնելու, և խոստանում, որ նրանցից արժանավորին ինքը կթագավորեցնի, որպեսզի տերությունը նրանց ձեռքից դուրս չգա[26]։ Սակայն արդեն ուշ էր. Իրանի մեծագույն մասի ֆեոդալականացող ավագանին իրական ուժը տեսնում էր Սասանյանների մեջ, ուստի Հայոց թագավորի դիմումը մեծ մասամբ մնում է անպատասխան։ Ինչպես հաղորդում է Խորենացին, Ասպահա-

---

22 Այն անտիկ ժամանակաշրջանի Սոգդիանա երկիրն էր՝ երբեմնի Հունաբակտրիական թագավորությունը, Բակտրա (կամ Զարիասպ, որից հայկ. Զարասպա) մայրաքաղաքով։ Վերջինս հայ մատենագիրների մոտ կոչվում է Բահլ Շահաստան («Պատմութիւն Սեբէոսի», աշխատասիրությամբ Գ. Վ. Աբգարյանի, Երևան, 1979, էջ 52, 53 և այլն) կամ «Բաղխ Առաւատին» (միջին պարսկ. «Բահլ-ի Բամիկ»՝ «Արևածագի Բահլ»)։ Քուշանական այս և Լիմերիկէ կոչվող թագավորություններում իշխող Արշակունիների դինաստիան պատկանում էր Կարենի-Պահլավի ճյուղին։

23 Խորենացի, Բ, հզ։ Ընդգրկում էր Հնդկաստանի արևմտյան մասը (Փենջաբ, Քաշմիր, Սինդ և Ութար-Փրադեշ շրջանները) և Իրանի արևելյան երկրամասերը՝ Սագաստանը և Տուրեստանը։ Քուշանշահրի այս թագավորությունը սովորաբար կոչվում է հնդկապարթևական, որի մայրաքաղաքն էր Պուրուշապուրա (այժմ՝ Փեշավար), տե՛ս Ս. Տ. Երեմյան, «Աշխարհացոյցի» սկզբնական բնագրի վերականգնման փորձ, ՊԲՀ, 1972, № 4, էջ 219։

24 Այն գտնվում էր Արալյան ծովից արևմուտք, ընդգրկելով Վոլգայի ստորին հոսանքը և Թերեք գետի շուրջն ընկած տափաստանները՝ ներառյալ այժմյան Դաղստանը և Մերձկասպյան տարածքը մինչև Կուրի գետաբերանը։ Այն հյուսիս-արևելքից սահմանակից էր Մեծ Հայքի թագավորությանը (տե՛ս С. Т. Еремян, Страна «Махелония» надписи Кааба- и Зардушт, էջ 47—58)։ Մազքթաց թագավորության սկզբնական կենտրոնն էր Բաղխ կամ Պահլ (Պահլդուռն, տե՛ս Եղիշե, Ա, Բ, էջ 9, 19) կամ Բաղխար քաղաքը (որը չպետք է շփոթել վերոհիշյալ «Բաղխ Առաւատինի» հետ), ապա Վառաչանը (այժմ՝ Արծեկի), իսկ հետագայում Սամանդարը (այժմ՝ Մախաչկալայի մոտ), տե՛ս В. Г. Котович. «О местоположении раннесредневековых городов Варачана, Беленджера и Таргу» и «Археологические данные к вопросу о местоположении Семендера», «Материалы по археологии Дагестана», т. V, Махачкала, 1974, с. 182—196, 216, 232—235)։

25 Հմմտ. Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 70։

26 Խորենացի, Բ, հր (աշխ. թարգմ., էջ 206—207)։

պետի և Սուրենի պահլավները չհամաձայնեցին Հայոց թագավորի դիմումին[27]։ Միայն Քուշանշահրի թագավորություններն էին, որ դեռևս շարունակում էին մաքառել և գիմադրել Արտաշիրին։

Դուրս գալով Պարսքից, Արտաշիրը կարողացավ իր իշխանությանը ենթարկել Իրանի արևելյան[28] ու հյուսիսային նահանգները։ Այնուամենայնիվ, սկզբնական շրջանում միայն Պարսքը, Խուժաստանը և Ատրպատականը հայտարարվեցին սասանյան արքայից արքայի դաստակերտ, այսինքն՝ դարձան նոր դինաստիայի ժառանգական սեփականություն[29]։ Նշված երեք երկրամասերն իրենց կարևորությամբ ապահովում էին նոր դինաստիայի իշխանությունն ամբողջ Իրանում և դրանց միջոցով Սասանյանները մոտենում էին իրենց աշխարհակալության արևմտյան և արևելյան մատույցներին, որոնք դեռ կարիք ունեին ամրապնդման։ Այդ անխուսափելի էր դարձնում տևական ռազմական բախումներն արևմուտքում՝ Հռոմեական կայսրության և Մեծ Հայքի թագավորության, ի կ արևելքում՝ Հնդկաքուշանական թագավորությունների հետ։

Բնականաբար սասանյան ագրեսիայի օրըստօրե աճող սպառնալիքը և նրա դեմ պայքարի անհրաժեշտությունը հայ Արշակունիներին մերձեցնում էին քուշանական Արշակունիների հետ և ավելի էին խորացնում գիտակցությունն իրենց ընդհանուր ծագման մասին՝ ոչնչացված պարթև Արշակունիներից։ «Խոսրով Մեծ»-Տրդատ Բ-ն (216—256) էր հայ-քուշանական ռազմական դաշինքի ոգեշնչողը։ Ինչպես քուշանները, այնպես էլ հայ Արշակունիները թշնամաբար էին վերաբերվում զրադաշտականությանը, որը հռչակվել էր իբրև Սասանյան Իրանի պետական կրոն և դարձել նրա նվաճողական քաղաքականության գաղափարական զենքը։ Ծվ թերևս պատահական չէր, որ Սասանյանների պետական կրոնին հակադրվեցին բուդդայականությունը՝ քուշանների և քրիստոնեությունը՝ հայերի մոտ։

Սասանյան Իրանը III դ. երկրորդ քառորդում պատերազմ էր մղում արևելքում՝ քուշանների, հյուսիս-արևմուտքում՝ հայերի դեմ։ Սասանյանները ձգտում էին վերացնել առաջին խոչընդոտը՝ հանձին Մեծ Հայքի Արշակունիների թագավորության։

Սասանյանները Երանշահրի կենտրոնական նահանգներում նույնպես իրենց ապահով չէին զգում, քանի դեռ ապրում և պայքարում էին ոչնչացված պարթև Արշակունիների վերջին շառավիղները՝ Արտավազդը և նրա եղբայրները, որոնց օգնում էր հատկապես Հայաստանի Արշակունի թագավորը։ Սասանյան զորքերը, հետապնդելով պարթև Արտավազդին, խորանում են Իրանի հյուսիս-արևմտյան երկրամասերը՝ գրավելով Ատրպատականը և ընդհուպ մոտենում Մեծ Հայքի թագավորության սահմաններին։

Պարզ էր, որ պարթև Արշակունիների իշխանության տապալումից ու վերացումից հետո անխուսափելիորեն հերթը հասնելու էր Արշակունիների հայ և քուշանական ճյուղերին, որոնք դեռ իշխում էին Առաջավոր Ասիայի երկրների

27 Նույն տեղում։

28 Ապարշահրը, Մարվը, Սագաստանը, ճիշտ է, ճանաչեցին նոր արքայից արքային, բայց իշխանությունը նախկինի պես պատկանում էր տեղական դինաստիաների ներկայացուցիչներին։ Կենտրոնական իշխանությունն առանձնապես չէր խառնվում Սուրենի, Կարենի, Վարազի Պահլավ և այլ պարթև Արշակունիներին ցեղակից իշխանությունների գործին (տե՛ս В. Г. Луконин, նշվ. աշխ., էջ 51)։

29 Նույն տեղում։

մի զգալի մասում։ Ստեղծված միջազգային իրադրությունը հարկադրում էր Հայաստանի գահակալներին՝ ընդունել համապատասխան դիրքորոշում։ Եվ հայկական արքունիքն ու այնտեղ ապաստանած պարթև Արշակունիների ներկայացուցիչներն ավելի ևն ամրապնդում կապերը Հռոմեական կայսրության հետ, որն արդեն պատրաստվում էր դիմագրավել Արտաշիրին Միջագետքում։

Երկրորդ քաղաքական ուժն այդ քուշանների հիշյալ երեք թագավորություններն էին։ Քուշանների թագավորությունից անմիջական վտանգի տակ էր հատկապես հնդկապարթևականը, որտեղ ապաստան էին գտել պարթև Արշակունիների հալածական տան անդամներն ու նրանց կողմնակիցները։ Հնդկապարթևական քուշանների Արշակունիների ճյուղը Խորենացու մոտ հայտնի է «Կարենյան Պահլավի տուն» կամ «Կարեննեանք» անունով։ Խորենացին հատկապես նշում է, որ երբ Սասանի որդի Արտաշիրն Արտավանին սպանեց և ինքը թագավորեց, «Կարենյան Պահլավի տունը» հավատարմությունը պահպանելով դեպի իրենց եղբայրական ազգակցականությունը, պատերազմով գիմադրեց Սասանի որդի Արտաշիրին[30]։

Հռոմեական պատմիչ Էլիոս Լամպրիդիոսը հաղորդում է, որ կայսր Ալեքսանդր Սևերոսի հռոմեական մի զորամաս օգնության էր ուղարկված հայերին՝ Մեդիայի կողմից հարձակվող պարսիկներին դիմագրավելու[31]։ Այս առաջին օգնությունը տեղի է ունեցել այն ժամանակ, երբ Հայոց Խոսրով թագավորը (իմա՝ Տրդատ Բ) արշավանք էր ձեռնարկել դեպի Ասորեստան[32], նշում է, որ դեռ չհասած պատերազմական գործողությունների վայրը, «լսեց Արտավանի մահվան բոթը» ապա, Խորենացին ավելացնում է, որ Հայոց թագավորը «մեծ տրտմությամբ ու վշտով վերադառնում է մեր աշխարհը։ Եվ իսկույն շտապով ծանուցանում է հռոմեացիների Փիլիպպոս կայսրին (244—249)՝ նրանից օգնություն խնդրելով»[33]։

Խորենացին այստեղ քննվող ժամանակաշրջանի անցքերը միահյուսել է ավելի ուշ տեղի ունեցած դեպքերին։ Պարսիկներին ցույց տված այս առաջին դիմադրության ժամանակ Հայոց թագավորն իրականում դիմում է ոչ թե Փիլիպպոս Արաբ կայսրին, այլ Ալեքսանդր Սևերոսին (222—235), որը, ինչպես վկայում է հունական աղբյուրը, ի տարբերություն իր նախորդի՝ Անտոնինոս Կարակալլայի, առանձին համակրանքով էր վերաբերվում հայերին[34]։

Սասանյանների միջազգային ասպարեզ իջնելը և պարթև Արշակունիների պետության կործանումը մեծ անակնկալների առաջ էր կանգնեցրել Հռոմին։

---

30 Խորենացի, Բ, հա (աշխ. թարգմ., էջ 206)։ Հնարավոր է, որ Խորենացին առանձին ուշադրություն է նվիրում Հայաստան գաղթած պահլավական-պարթևական տոհմին, որպեսզի արդարացնի Ագաթանգեղոսի ներկայացրած վարկածը Գր. Լուսավորչի և նրանից սերած կաթողիկոսական դինաստիայի պարթևական ծագման մասին։ «Բայց դու,— դիմում է Խորենացին իր մեկենասին,— այստեղ մեզ չրամբասես իբրև ավելորդաբանի, որ մեր մի անգամ արդեն պատմածը նորից ասեցինք։ Բայց գիտցիր,— շեշտում է նա,— որ մենք ցանկալով, որ ընթերցողները լավ ծանոթություն ունենան մեր Լուսավորչի ազգականների մասին, կրկնագրեցինք երկրորդելով» (Խորենացի, Բ, կը, աշխ. թարգմ., էջ 204)։

31 *Aelius Lampridius*, Alexander Severus, LVIII, BDN, 1958, № 3, էջ 258։

32 Խորենացի, Բ, հա։ «Ասորեստան»-ը տվյալ դեպքում համապատասխանում է ասորական-պահլավական «Սուրիստան» երկրին, այսինքն՝ Միջագետքին, որտեղ գտնվում էր մայրաքաղաք Տիզբոնը, ուստի Խորենացին Միջագետքի այս մասն անվանում է «գահանիստ երկիր»։

33 Խորենացի, Բ, հա (աշխ. թարգմ., էջ 206)։

34 Տե՛ս *Trebellius Pollio*, Turanni triginta, Titus, 32, 3, BDN, 1959, N 4, էջ 243։

Դիոն Կասիոսը հաղորդում է, որ «Միջագետքում կատարված դեպքերն առավել ահավոր էին և իրականում սարսափ էին գցել բոլորի վրա, ոչ միայն Հռոմի բնակիչների, այլև մյուս վայրերի»[35]։ Այնուհետև Դիոն Կասիոսը շարունակում է. «Ոմն Արտաքսերքսես պարթևներին երեք ճակատամարտերում հաղթելուց և նրանց թագավոր Արտաբանոսին սպանելուց հետո, ռազմի ելավ Հադրայի դեմ, այն (գրավեց), հռոմայեցիների դեմ իր համար հենարան դարձնելու նպատակով»[36]։ Պատմիչը ցույց է տալիս, որ Սասանյանների համար Հադրայի գրավումը միայն միջոց էր Հռոմին «դաշնակից և բարեկամ» Մեծ Հայքի թագավորությունը ներխուժելու, որտեղ իշխում էր Արշակունիների դինաստիայի հայկական ճյուղը և որի մոտ ապաստանել էին ոչնչացումից փրկված պարթև Արշակունիների դինաստիայի առանձին ներկայացուցիչներ և Սասանյաններից դժգոհ այլ տարրեր։ Դիոն Կասիոսը, անդրադառնալով Արտաշիրի կողմից Հադրայի պաշարմանը, նշում է, որ «նա թեև կործանեց պարիսպը, բայց կորցնելով իր զինվորներից շատերին, որոնք դարանի մեջ էին ընկել, ետ նահանջեց Մեդիա և այս երկրում, ինչպես նաև Պարթիայում, մասամբ բռնությամբ, մասամբ էլ ահաբեկմամբ, գրավելով մի շարք շրջաններ, շարժվեց դեպի Հայաստան»[37]։ Դեպքերը տեղի են ունեցել 228 թվականին, և Արտաշիրի ռազմական գործողություններն ուղղված էին առաջին հերթին Էկբատանի շրջանում դարանակալած պարթև Արտավազդի և նրան օգնող հայ-պարթևական ռազմական ուժերի դեմ, որոնք գտնվում էին Մեծ Հայքի հարավարևելյան ատրպատականյան սահմանի վրա, ուստի Մեդիա ասելով, Դիոն Կասիոսը տվյալ դեպքում նկատի ունի Մատիանա երկիրը (հայկական՝ «Մատեանք»), որն Ատրպատականի մասն էր և սահմանակից էր Մեծ Հայքի թագավորությանը։

Դիոն Կասիոսը հաղորդում է, որ Հայաստանի տարածքում խորացող Արտաշիրին «դիմադրեցին տեղի բնակիչները և մեդացիներից ոմանք, ինչպես նաև Արտաբանոսի որդիները և նա, ինչպես ոմանք ասում են, փախավ, իսկ ուրիշներն ասում են, թե նա ետ քաշվեց, ավելի մեծ զորք պատրաստելու համար»[38]։ Նման տեղեկություն է պահպանել նաև Խորենացին։ Նա հաղորդում է, որ Հայոց թագավորն իր բանակով և այլ երկրների օգնական զորքերով «գիմում է Արտաշիրի վրա, ճակատամարտ տալով նրան ստիպում փախչել և խլում է նրանից Ասորեստանը և մյուս արքայանիստ երկրները»[39]։

Խոսելով «Արտաբանոսի որդիների» մասին, Դիոն Կասիոսը նկատի ունի սպանված Արտավան Ե-ի որդի Արտավազդին և նրա եղբայրներին։ Արտավազդը, քաշվելով Իրանի հյուսիսային մասում գտնվող Էկբատան քաղաքը, այժմ իր եղբայրների հետ մասնակցում էր հայկական բանակի ռազմական գործողություններին[40]։ Ինչպես երևում է, այնքան էլ դյուրին չէր Արտաշիրի համար կոտրել հայ-պարթևական դիմադրությունը։

---

35 DIO, LXXX3, 1 (հայ. թարգմ., էջ 226)։

36 Նույն տեղում, գլ. 3, 2։

37 Նույն տեղում, գլ. 3, 2—3։

38 Dio, LXXX, գլ. 3, 3 (հայերեն թարգմ., էջ 226)։

39 Խորենացի, Բ, հբ (աշխ. թարգմ., էջ 207)։ Տվյալ դեպքում Ասորեստան ասելով պետք է հասկանալ Ադիաբենեն։

40 Հ. Մանանդյանը Դիոն Կասիոսի (LXXX, 3—4) և Խորենացու (Բ, հզ) հաղորդումներից եզրակացնում է, որ Հայաստան էին եկել Տրդատ Բ-ի մոտ իրենց զորքերով ու կուսակալներով Արտավան Ե-ի որդիները և նոր դինաստիայի հակառակորդ պարթև ազնվականությունը (Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 80)։

Խորենացու պահպանած կիսապատմական-կիսաառասպելական տեղեկությունները հիմնականում ճիշտ են արտացոլում իրականությունը։ Արտավազդը 228—230 թթ. թագավորել է Վերին Մեդիայի կենտրոն Էկբատանում։ Նրան հովանավորում էր Հայոց թագավոր «Խոսրով»—Տրդատ Բ-ն, որն իրեն համարում էր առաջին գահակալը Արշակունի դինաստիաների միջև, իսկ պարթև Արտավազդը արդեն գրավում էր «երկրորդական դահը»։ Մոտ 230 թ. Տրդատ Բ-ն իր արևելյան բանակով, որի հրամանատարն էր Երախնավու Անձևացին, օգնության է գալիս Արտավազդին։ Սակայն վերջինիս գերում են Սասանյանները, տանում Տիզբոն և այնտեղ գլխատում։ Չնայած դրան, Տրդատ Բ-ն կարճ ժամանակով տիրել էր Էկբատան քաղաքին՝ իր Վերին Մեդիա նահանգով, երկրի կառավարումը հանձնելով Երախնավու Անձևացի նախարարին։ Ինչպես վկայում է Խորենացին, «Տրդատը յոթն պարսպյան Էկբատանին տիրելով՝ թողնում է այնտեղ իր երկրորդին և վերակացուներ և վերադառնում Հայաստան, իր հետ բերելով Կամսարին՝ նրա բոլոր ունեցվածքով»[41]։ Մի այլ տեղ Խորենացին խոսելով Տիրանի մասին, բերում է մի առասպել, կապված Երախնավու Անձևացու հետ, իբրև Տիրան[42] (իմա՝ Տրդատ Բ) թագավորի ժամանակակցի։ «Ասում են, սրա (Տիրան թագավորի) ժամանակ եղել է Անձևացյաց ցեղի մի պատանի՝ Երախնավու անունով, ամեն բանում սեգ. նա կին է առել Արտավազդի կանանցից վերջինին, որ բերել էր տվել Հունաստանից։ Եվ որովհետև Արտավազդը զավակներ չունեցավ, ուստի թագավորը Երախնավուին թողեց Արտավազդի ամբողջ տունը։ Նա, ասում էին, ընտիր մարդ է եղել, ամեն բանում համեստ և մարմնական ցանկության կողմից էլ օրինավոր»։ Ապա պատմահայրը շարունակում է. «Թագավորը սիրելով՝ նրան է տալիս երկրորդական դահը, որ գրավում էր Արտավազդը, նույնպես նրան է վստահում արևելյան զորքի հոգսերը և նրա մոտ է թողնում Դրվասպ անունով մի պարսիկ, որ իր մտերիմն էր»[43]։

41 Խորենացի, Բ, ձէ (աշխ. թարգմ., էջ 225), Գ. Ասլանը և Ս. Կոգյանը իրավացիորեն եկել են այն եզրակացության, որ Կամսարականների գաղթը եղել է Տրդատ Բ-ի ժամանակ, սակայն ի տարբերություն Գ. Ասլանի (տե՛ս K. Aslan, Etudes historigues Sur le peuple armenien, Paris, 1909, էջ 139), Ս. Կոգյանը ճիշտ է, գտնելով, որ այս գաղթը տեղի է ունեցել Արշակունիների անկումից հետո (տե՛ս Ս. Կոգյան, Կամսարականները, «Տեարք Շիրակայ և Արշարունեաց» պատմական ուսումնասիրություն, Վիեննա, 1926, էջ 1—14։ Տե՛ս նաև՝ Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 89)։

42 Հ. Մանանդյանը, հիմնվելով Կ. Մելիք-Օհանջանյանի հետազոտության վրա («Տիրան-Տրդատի վեպը ըստ Փավստոս Բուզանդի», «Լրաբեր», 1947, էջ 7) նշում է, որ ոչ միայն IV գ. Տիրան թագավորի անունը կարող էր Տրդատ լինել, այլև կրկնակի անուն՝ Տիրան-Տրդատ կարող է ունեցած լինել նաև Տրդատ Գ-ն (Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 132), քանի որ Տրդատ (նաև՝ Տիրիդատես) անվան մյուս ձևը Տիրանն է, ուրեմն Տրդատ Բ-ին Խորենացին նույնպես կարող էր Տիրան անվանած լինել։ Այսպիսով, Տրդատ Բ-ի գործունեությունը կապվում է ոչ միայն վիպական «Խոսրով Մեծի», այլև մասամբ Տիրանի հետ։

43 Խորենացի, Բ, կբ (աշխ. թարգմ., էջ 196)։

Խորենացու մոտ պահպանված աղոտ տեղեկությունները ցույց են տալիս, որ Հայկական լեռնաշխարհի պետությունը՝ ի դեմս Մեծ Հայքի թագավորության, այս երրորդ անգամն էր, որ հարավում իր իշխանությունը տարածում էր Մարաստանի խորքերը և հսկողության տակ առնում Էկբատանով ու Բագաստանով (Բիսիթուն) անցնող առևտրական մայրուղին մինչև այժմյան Քասր-ի Շիրինը, որտեղ Գ դարի վերջերին Պայկուլի վայրում փորագրվեց Սասանյան արքայից արքա Ներսեհի (293—309) եռալեզու արձանագրությունը։ Առաջին անգամ Ուրարտուի թագավորությունն էր, որ բավական երկար ժամանակով իր քաղաքական գերիշխանությունը տարածել էր նշված երկրամասում (VIII դար մ. թ. ա.)։ Երկրորդ անգամ Տիգրան Բ Մեծի ժամանակն

Ստեղծված պայմաններում Տրդատ Բ-ն չէր կարող երկար դիմանալ էկբատանում։ Տրդատ Բ-ի նահանջն այդ տեղերից միահյուսված է Կամսարական նախարարական տոհմի ծագման ավանդության հետ։

Մեզ հասած տեղեկությունները ցույց են տալիս, որ, իրոք, Կարենի Պահլավ տոհմն իր կալվածքներն ուներ էկբատանից հարավ-արևմուտք ընկած «Ջագրոսի դռների» մոտ գտնվող Կարին գավառում (ἡχώρα Κάρινα-Carenitis regio), որը գտնվում էր Ջեգմայից ու Տիզբոնից Իրանի խորքերով մինչև Հնդկաստան տանող առևտրական գլխավոր մայրուղու վրա[44]։ Հավանաբար, այս ժամանակ է, որ կոտորվում է այստեղ իշխող Կարենի Պահլավ տոհմը, որի հիմնական մասը, ինչպես նշվեց, շարունակում էր իշխել «Կիմերիկէ» երկրում, տիրելով հնդկապարթևական քուշանների արքայական գահին։

Այս տեղեկությունների հետ սերտ առնչվում է էկբատանից դեպի արևմուտք գտնվող հռչակավոր Կանգավարի (κόγχοβαρ)[45] սրբավայրը, նվիրված «Անահիտ տիկին» դիցուհուն (᾿Αρτέμιδος᾿ ἱερòν)[46]։ Ըստ երևույթին, Տրդատ Բ-ի զորամասերի նահանջի ժամանակ էլյումայիս նահանգի այս հռչակավոր տաճարի հարստությունները «Անահիտ տիկին» աստվածուհու արձանի հետ միասին, այստեղի կառավարիչ Երախնավու Անձևացին փոխադրել է Հայաստան և տեղադրել իր ժառանգական կալվածքում՝ Անձևացիք գավառում։ Այստեղ նույնպես Երախնավու Անձևացու նստավայրը կոչվեց Կանգավար։ Անձևացիք գավառում գտնվող Անահիտ տաճարի մասին տեղեկություններ են պահպանվել Մովսես Խորենացուն վերագրվող պարականոն գրվածքներում (ապոկրիֆներում)՝ «Պատասխանի թղթոյ Սահակայ» և «Պատմութիւն սրբոց Հռիփսիմեանց»[47]։ Անձևացիք գավառի Կանգավար լեռան և ամրոցից ոչ հեռու գտնըվել է Անահիտ դիցուհու տաճարը[48], որի հետ կապվում է շղթայակապ Արտավազդի առասպելը, ուստի այս տեղը կոչվել է «Դարբնացքար» կամ «Ագռաւաքար»։ Վերջինս կապվում է Միհրի պաշտամունքի հետ։ Շղթայակապ Արտավազդն արտացոլումն էր վերջին պարթև Արշակունի գահակալ Արտավազդի։ Այս վայրերում հայտնի է նաև Տրդատ Թագավորի գերեզմանը[49]։

Արտաշիրը Տրդատ Բ-ի նահանջից հետո շտապում է գրավել էկբատանից հյուսիս-արևմուտք գտնվող Ատրպատականը, հռչակելով այն, ինչպես նշվեց իր

---

էր, որ Հայկական պետությունը տարածվել էր մինչև այս տեղերը։ Երրորդ անգամ մ. թ. 228—230-ական թթ. «Խոսրով Մեծ»—Տրդատ Բ-ն իր գերիշխանությունը տարածել է մինչև այս վայրերը։

[44] Isidori Gharaceni Mansiones Parthicae, IV, *K. Müller*. Geographi Graeci Minore Hildesheim, 1965, t. I; Տե՛ս նաև՝ Է. Լ. Դանիելյան, Իսիդոր Խարակացու «Պարթևական կայանները» , ՊԲՀ, 1971, № 4, էջ 173 և 179։

45 Նույն տեղում։

46 Տե՛ս *В. Г. Луконин*, Храм Анахиты в Кангаваре, ВДИ, 1977, № 2, էջ 105—111։

47 Տե՛ս «Մովսէսի Խորենացւոյ մատենագրութիւնք», Վենետիկ, 1865, էջ 283—296, 297—303։

48 Անահիտ տաճարի տեղում հիմնվեց Տիրամոր տաճարը և իբրև Կանանց վանք՝ կուսանաց անապատ, կոչվեց Հոգվոց վանք։ Վերջինս գոյություն ունի և այժմ, սակայն ավերված վիճակում։

49 Խորենացի, նշվ. աշխ., էջ 295։ Տրդատ Բ-ի և նրա զորամասի նահանջի ժամանակ էկբատանից դեպի Հայաստան Երախնավու Անձևացու հետ միասին եկել է նաև վերը նշված Դրվասպ անունով պարսիկը։ «Թագավորը,— գրում է Խորենացին,— նրան էր տվել Տառօնք ավանը ագարակներով հանդերձ և այն միակ այգին, որի մեջ էր մանում Գայլատու ծովակից հանած մեծ առուն» (Խորենացի, Բ, կր., աշխ. թարգմ., էջ 196, 207)։

տոհմի «դաստակերտ»—դոմեն՝ դինաստիայի ժառանգական սեփականություն։

Հայաստանին անմիջապես սահմանակից Ատրպատականը ռազմաստրատեգիական տեսակետից մեծ նշանակություն ուներ Սասանյանների պետության համար։ Այստեղից Արտաշիրը, Շապուհ Ա-ն սպառնում էին թիկունքից ներխուժել Մեծ Հայքի թագավորությունը։ Ատրպատականում Սասանյանները հովանավորում էին պարթևական «Վարազոյ» տոհմը, որը հետագայում հենարան դարձավ Անակի գործողություններին՝ Տրդատ Բ-ի դավադիր սպանության համար։

Ատրպատականի և Մեդիայի կողմից ամրապնդելով իր թիկունքը, Արտաշիրը անցավ հիմնական նպատակի իրագործմանը՝ ջլատելու հռոմեացիների ուժերը Միջագետքում, որից հետո միայն Սասանյանները կարող կլինեին հաջողության հասնել՝ պարտության մատնել հայ Արշակունիներին։ Հռոմեական Մեսոպոտամիա պրովինցիան, որը Հայաստանի համար ռազմական հենարան էր Սասանյանների դեմ մղվող պայքարում, շուտով դառնում է հռոմեապարսկական ռազմական բախումների թատերաբեմ։

## 3. ՀԱՅ-ՀՌՈՄԵԱԿԱՆ ԴԱՇԻՆՔԸ ՍԱՍԱՆՅԱՆՆԵՐԻ ԴԵՄ ՄՂՎԱԾ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Սասանյաններն Արտաշիր Ա-ի ժամանակ դառնալով Երանշահրի ժառանգական տիրակալներ, բնականաբար, ինչպես իրանական նախորդ դինաստիաների ժամանակ, այժմ էլ իրենց քաղաքական կենտրոնը դարձրին Ստորին Միջագետքը, կամ, ինչպես Խորենացին է կոչում՝ «Գահհնիստ երկիրը»՝ Տիզբոն մայրաքաղաքով։ Սակայն Միջագետքի մնացյալ մասը գտնվում էր Հռոմեական կայսրության տիրապետության ներքո։ Պարթև Արշակունիների թուլացման և անկման ժամանակաշրջանում տեղի ունեցած Միջագետքի քաղաքական բաժանումը հակասում էր Սասանյանների արքունիքում գերիշխող այն քաղաքական տեսությանը, ըստ որի Սասանյաններին (իբրև Աքեմենյանների շառավիղների և «օրինավոր ժառանգների») վերապահված էր տիրելու Հռոմեական կայսրությանը ենթակա այն բոլոր տարածքներին, որոնք մի ժամանակ գտնվում էին Աքեմենյանների տիրապետության ներքո[50]։ Այդ նշանակում էր, որ Սասանյանները հավակնություն ունեին տիրելու Հռոմեական կայսրության ամբողջ ասիական մասին։

Մեդիայում և Ատրպատականում հաստատելով Սասանյանների տիրապետությունը, Արտաշիր Ա-ն արդեն 230 թ. իր զորքերով անցավ Եփրատը, պաշարեց Մծբինը և ողջ Մեսոպոտամիա պրովինցիան[51]։ Պարսկական հեծելազորն անցնելով Եփրատը, ասպատակեց նաև Ասորիքն ու Կապադովկիան[52]։

Պարսկական ներխուժման տագնապն այնքան մեծ էր, որ 231 թ. Ալեքսանդր Սևերոսի գլխավորությամբ հռոմեական մի մեծ բանակ եկավ Անտիոք և

---

[50] *Herodianus*, VI, 2 (1—2), Dio, LXXX, 30.

[51] *Aelius Lampridius*, Antoninus Aeliagabalus, I.4—7; II, 1—4.

[52] Dio, LXXX, գլ. 3։ *Herodianus*, VI. 2 (1—2)։ Տե՛ս նաև՝ Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 77։

հաջորդ՝ 232 թ., սկսվեցին պատերազմական գործողությունները պարսիկների դեմ[53]։

Հռոմեական բանակը բաժանվեց երեք մասի և հարձակվելու էր երեք ուղղություններով։ Բանակի առաջին մասը դաշնակից Հայաստանի կողմից արշավելու էր Ատրպատական-Մեդիա։ Երկրորդ զորամասը Եփրատ գետի ընթացքով պետք է շարժվեր դեպի Տիզբոն-Սելևկիա, իսկ երրորդը գլխավորելու էր ինքը՝ Սևերոս կայսրը, հենակետ ունենալով Միջագետքի պրովինցիայի կենտրոն Մծբինում տեղադրված հռոմեական բանակը[54]։ Հռոմեական զորամասերն ավելի շուտ պաշտպանական դիրք էին ընդունել և խուսափում էին թշնամու հետ անմիջական բախումներից։ Մանավանդ անվճռական էր գործում Ալեքսանդր Սևերոսը։ Հռոմեական երկրորդ զորամասը փորձեց իրեն ծանոթ ճանապարհով իջնել Եփրատով և հասնել Սասանյանների մայրաքաղաք Տիզբոն-Սելևկիային, սակայն Արտաշիրի զորամասերը կտրեցին նրանց ճանապարհը և հռոմեական բանակը մեծ կորուստներով նահանջեց։ Միայն Հայաստա՛ում եղած հռոմեական զորամասերը, որոնց, ինչպես ենթադրում է Հ. Մանանդյանը, առաջնորդում էր Յունիուս Պալմատուսը[55], ունեցան որոշ հաջողություններ, այն էլ շնորհիվ տեղական ռազմական ուժերի։ Խորենացին գրում է. «Տրդատն էլ բոլոր յուրայիններով և իր ձեռքի տակ եղած զորքերով արշավից պարսից իշխանության հյուսիսային կողմերը միամյա ապստամբությամբ»[56]։ Ըստ երևույթին, Արտաշիրն իր հիմնական ուժերը կենտրոնացնելով մայրաքաղաքի պաշտպանության ուղղությամբ, հարկ եղած ուշադրություն չէր դարձրել Ատրպատականի հյուսիսին։ Հայկական զորամասերը հռոմեական զորքի հետ ներխուժել են Մեդիա-Ատրպատական՝ ավերելով սահմանամերձ գյուղերն ու քաղաքները[57]։ Սակայն հռոմեական զորամասերը մեծ կորուստներ կրեցին. մի մասը ամռանը՝ Միջագետքի շոգերից, մյուս մասը՝ Հայաստանի ցրտաշունչ ձմռան պատճառով։ Ուստի Ալեքսանդր Սևերոսը հրամայեց զորքերին նահանջել Անտիոք[58]։ Չնայած երկուստեք որոշ հաջողություններին, պատերազմի արդյունքներն անորոշ էին։ Այնուամենայնիվ, երկու կողմերն էլ իրենց հաղթող էին համարում։ Ալեքսանդր Սևերոսը նույնիսկ մեծ հաղթահանդես կազմակերպեց Հռոմում[59], նշելով իր հաղթանակը պարսիկների դեմ, հավանաբար, նկատի ունենալով այն մասնակի հաջողությունները, որ ունեցել էին դաշնակից հայկական և հռոմեական զորամասերն Ատրպատականում-Մեդիայում։

Արտաշիր Ա-ն նույնպես գտնում էր, որ պարսկական հեծելազորը մեծ

---

53 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 77։

54 *Herodianus*, VI, 5—6, Zonaras. XII, գլ. 15 (տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ. էջ 78—80)։

55 *Aelius Lampridius*, Alexander Severus, 58, 1 (տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ. էջ 77)։

56 Խորենացի, Բ, ձէ (աշխ. թարգմ., էջ 224)։

57 *Aelius Lampridius*, *Alexander Severus*, *1*, տե՛ս ВДИ, 1958, № 3, էջ 258, տե՛ս նաև՝ Հ. Մանանդյան, նշվ. աշխ. , էջ 77։

58 Հ. Մանանդյան, նույն տեղում։

59 *Aelius Lampridius*, Alexander Severus, 55·1—3 և 56·1։ Հակառակ դրան հունական պատմիչներ Հերոդիանոսը և Զոնարասը Ալեքսանդր Սևերոսին պարտված էին համարում, *Herodianus*. VI, 5—6, Zonaras, Epitoma historiarum XII, XV, տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 78։

*հաղթանակ էր տարել, սակայն, ինչպես ճիշտ նշում է Հ. Մանանդյանը, «պատերազմն անորոշ ելք ունեցավ և Միջագետքը մնաց հռոմայեցիների ձեռքին»[60]։*

*Չնայած չորս տարի (232—236) համեմատաբար խաղաղություն էր տիրում Միջագետքում, իրականում պատերազմական վիճակը չէր դադարել։ Այս տարիներին մեծ փոփոխություններ տեղի ունեցան Հռոմում։ Ալեքսանդր Սևերոսը, որը 233 թ. Ասորիքի Անտիոքից վերադարձել էր Հռոմ, իր հետ տանելով ոչ միայն հայ և օսրոենցի աղեղնաձիգների գնդերը, այլև Սասանյանների հետապնդումից հռոմեացիների մոտ ապաստանած պարթևական, ինչպես և ադիաբենական ու արևելյան այլ ժողովուրդներից կազմված զորամասերի հետ[61], 234 թ. նա պատերազմեց գերմանացիների դեմ, որտեղ և սպանվեց Մայնցի մոտ։ Նրան հաջորդեց Մաքսիմինոս Թրակացին (235—237)[62]։*

*Եվրոպայի երկրներում հռոմեացիների վարած պատերազմներում հայ աղեղնաձիգների մասնակցությունը, պիտի ենթադրել, որ կատարվում էր հայ-հռոմեական դաշինքի հիման վրա, որով հայերը պարտավոր էին զինական օգնություն ցույց տալ հռոմեացիներին։*

*Դաշնակից հայերի աղեղնաձիգ գնդերի աչքի զարնող դերի, մասնավորապես Գերմանիայում մղվող պատերազմական գործողություններին հռոմեական զորաբանակի կազմում նրանց մասնակցության վերաբերյալ վկայում են Լամպրիդիոսի և Հերոդիանոսի հաղորդումները[63]։ Տրեբելլիոս Պոլլիոնի վկայությամբ, ներքին մեծ խառնակությունների ժամանակ Հռոմում հայ աղեղնաձիգները կայսր էին հռչակել Տիտոսին, որը, սակայն, թագավորեց վեց ամիս[64]։ Կայսերական գահի շուրջը ծավալված բուռն պայքարը, որի ընթացքում փոխվեցին մի քանի կայսրեր, ի վերջո ավարտվեց տասնչորսամյա Գորդիանոս Գ-ի (238—244) գահակալությամբ։*

*Պարսկական զորքերը օգտվելով Հռոմում տիրող դրությունից 237—238 թթ. գրավեցին Մծբինը և Խառանը, իսկ 242 թ. Արտաշիր Ա-ի որդու՝ Շապուհ Ա-ի գլխավորությամբ առաջ շարժվեցին մինչև Անտիոք քաղաքը և, ինչպես գրում է Հ. Մանանդյանը, հենց այս արշավանքների ժամանակ նվաճվեց Օսրոենե-Եդեսիայի թագավորությունը և պարսկական հեծելազորն սկսեց նորից ասպատակել Կապադովկիան ու Կիլիկիան[65]։ Այդ նշանակում էր, որ հռոմեական Ասորիքին սպառնում էր պարսկական ներխուժման վտանգը։*

*Ծանր փորձություններ էին սպասվում Հռոմին։ «Գորդիանոսը բացեց երկդեմ Յանուսի տաճարի դռները, որ նշան էր այն բանի, թե պատերազմը հայտարարված է և գնաց պարսիկների դեմ»[66]։ Պրետեքստատի և Ատտիկոսի կոնսուլության ժամանակ էր այդ՝ 242 թվականին[67]։ Սակայն, ինչպես հաղորդում*

60 Հ. Մանանդյան, *նշվ. աշխ.*, էջ 78։

61 *Julius Capitolinus*, Duo Maximines. XI, 7, *Herodianus*, VII, 2, *տե՛ս* Հ. Մանանդյան, *նշվ. աշխ.*, էջ 80։

62 Հ. Մանանդյան, *նույն տեղում*։

63 *Aelius Lampridius*, Alexander Severus, 61, 8, *Herodianus*, Ab excessu divi Marci, VII. 2.

64 *Trebellius, Pollio, Tyranni Triginta, XXXII, 3, տե՛ս* Հ. Մանանդյան, *նշվ. աշխ.*, էջ 80—81։

65 Հ. Մանանդյան, *նշվ. աշխ.*, էջ 81։

66 *Նույն տեղում*, *Julias Capitolinus*, Gordiani tres, XXVI. 3.

67 *Նույն տեղում*։

է Գորդիանոս Գ-ի կենսագիր Հուլիոս Կապիտոլինոսը, «պարսկական պատերազմն» արդեն սկսվել էր Գորդիանոսի և Պոմպեյանոսի կոնսուլության տարում, այսինքն՝ 241 թվականին[68]։

Դեպի արևելք գնացող հռոմեական բանակի գլուխ կանգնեց պրետորիաների պրեֆեկտ (արքունի գվարդիայի ղեկավար) Տիմեսիթեոսը՝ պատանի կայսեր աները։ Սիրիական շրջանում հռոմեական զորքերի արշավանքը դեպի Արևելք նմանվում էր հաղթական երթի։ Հռոմեական զորքերը մտան Միջագետք, վերագրավեցին Խառանը, Ռաշ-Այնը և Մծբինը, վերականգնվեց Օսրոենեի թագավոր Աբգար ԺԱ-ի (242—244) թագավորական իշխանությունը[69], թվում էր, թե նվազեց Իրանի կողմից Հայաստանին սպառնացող վտանգը։ Այնուհետև կայսրը պատրաստվեց արշավել հարավ-արևելք, դեպի Տիզբոն[70]։ Սակայն պատանի կայսրին վիճակված չէր հասնել մինչև Սասանյանների մայրաքաղաքը։

## . ՄԵՍԻԽԵՍԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ ԵՎ «ԱՄԵՆԱԱՄՈԹԱԲԵՐ ԴԱՇՆԱԳԻՐԸ»: ՇԱՊՈՒՀ Ա-Ի ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ ՀԱՅ-ՔՈՒՇԱՆԱԿԱՆ ԿՈԱԼԻՑԻԱՅԻ ԴԵՄ

243 թ. վերջերին, երբ հռոմեական բանակը Ռաշ-Այնի հաղթանակից հետո[71], Խաբուր գետի ընթացքով մոտեցավ Եփրատին և շարժվեց դեպի Սասանյանների մայրաքաղաք Սելևկիա՝ Տիզբոն, մահացավ հռոմեական զորքի իրական առաջնորդ Տիմեսիթեոսը։ Պրետորիաների պրեֆեկտի պաշտոնը հանձնվեց Փիլիպպոս Արաբին։ Վերջինս այն օգտագործեց, որպեսզի դառնա կայսր։

Հմուտ և խորամանկ ռազմագետ Շապուհը ծուղակի մեջ գցեց թշնամունհռոմեական բանակը, դիմադրության չհանդիպելով, հասնում է մինչև Տիզբոնի մատույցները, Մեսիխես (Բեթ-Մաշկենե) վայրը։ Այստեղ, 244 թ. փետրվարի 11-ին տեղի ունեցած մեծ ճակատամարտում, հռոմեական զորքը խայտառակ պարտություն է կրում, իսկ Գորդիանոս կայսրն սպանվում է։ Հռոմեական բանակը կայսր է հռչակում Փիլիպպոս Արաբ մականվամբ հայտնի Մարկոս Հուլիոս Փիլիպպոսին (244—249), որն իր դավանանքով քրիստոնյա էր։

Նոր կայսրն շտապեց 244 թ. խաղաղության դաշն կնքել, վճարելով 500 հազար դինար ռազմատուգանք։ Գրեթե միակ գրավոր աղբյուրը, որ ժամանակով մոտ է այս դեպքերին, վերոհիշյալ «Քաաբա-ի Զարդուշտ»-ի արձանագրությունն է[72]։

---

68 Նույն տեղում, XXIII, 5։

69 *Julius Capitolinus*, Gordiani tres, XXVI, 6; XXVII, 1. տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 82։

70 Հ. Մանանդյան, նույն տեղում։

71 Ammiani Marcellini Rerum gestarum libri qui supersunt, recensuit, notisque selectis instruxit V. Gardthausen, V. 1—2, Leipzig, 1874—1875. տե՛ս նաև՝ *Аммиан Марцеллин*, История, перев. с латинского Ю. А. Кулаковского. вып. II, Киев, 1907, с. 172.

72 Արձանագրության տեքստը փորագրված է Շապուհ Ա-ի կողմից այս դեպքերից ավելի ուշ՝ մոտ 262 թ. (տե՛ս *Н. В. Пигулевская*, Города Ирана в раннем средневековье, М.—Л., 1956, էջ 167) երեք լեզվով՝ պարթևական (պահլավերեն), միջին պարսկերեն և հունարեն (տե՛ս *E. Honigmann et A. Maricq*, նշվ. աշխ., էջ 112—116)։ Իր տարած փայլուն հաղթանակը նշանավորելու համար Շապուհ Ա-ն ճակատամարտի վայր Մեսիխես քաղաքը վերանվանել է «Պերոզ-Շապուհ», որ նշանակում է «Հաղթական Շապուհ» (այժմ՝ Սեյխան գյուղը), «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 41, 42։ Չպետք է շփոթել Մոսուլից հյուսիս գտնվող Պերոզ-Շապուհի հետ (այժմ՝ Փեշաբուր գյուղը)։

Բանակի կողմից կայսր հռչակված Փիլիպպոս Արաբն շտապում է Հռոմ, որպեսզի ծերակույտը հաստատեր իր գահակալությունը, ուստի նա համաձայնում է հաղթող կողմի թելադրած բոլոր պայմաններին։ Ստեղծված իրադրությունն օգտագործում են պարսիկները։ Հռոմ շտապող Փիլիպպոս Արաբ կայսրը լքում է հայոց թագավոր Տրդատ Բ-ին, որը հույսեր էր կապում հռոմեական ռազմական օգնության հետ։ Ավելին, ինչպես նշում են Զոնարասը և Եվագրիոսը, կայսրը ոչ միայն ռազմատուգանք է վճարում, այլև Շապուհ Ա-ի հետ կնքում է խաղաղության պայմանագիր, զիջելով պարսիկներին Հայաստանի մեծ մասը[73]։ Զոսիմոսն այդ պայմանագիրը բնորոշում է իբրև «ամենաամոթաբեր հաշտություն»[74]։

Տիգրանակերտի հունարեն արձանագրություններից (III դ. վերջ) երևում է, որ Տիգրանակերտ[75] և Նեկրան[76] քաղաքները գտնվել են հռոմեական Հայաստանում՝ բաժանման սահմանագծից ոչ հեռու։ Մի այլ տեղեկություն է հաղորդում և Փավստոս Բուզանդը. Ոսխա գյուղը, որտեղ 297 թ. տեղի ունեցավ ճակատամարտը՝ հռոմեահայկական ուժերի և պարսիկների միջև, գտնվում էր Բասեան գավառում[77], որ պարսկական Հայաստանում էր և սահմանակից էր հռոմեական Հայաստանին։ Ըստ այսմ, հռոմեացիների ձեռքում էր Ծոփքը և նախկին Փոքր Հայքի հիմնական մասը կազմող Բարձր Հայքի նահանգը[78]։ Հայաստանի մնացած մասն ըստ պայմանագրի զիջվում էր Սասանյաններին։ Ըստ Ագաթանգեղոսի, հռոմեական Հայաստանը դիտվում էր իբրև «դաստակերտ կայսերաց»[79]։ Այժմ, երբ հայտնի է, որ պարսկական Հայաստանը ըստ ŠKZ-ի համարվում էր Սասանյանների դաստակերտ («դաստակերտ արքայից արքայի»), հասկանալի է դառնում նման տերմինի գործածումը հռոմեական Հայաստանի համար։

244 թ. պայմանագրի՝ Հայաստանի վերաբերյալ կետը մնացել էր թղթի վրա և Մեծ Հայքի թագավորությունը պահպանվել էր նախկին վիճակում։ «Հայաստանը,— գրում է Հ. Մանանդյանը,— չէր նվաճված Սասանյան Պարսկաստանի կողմից, ո՛չ Փիլիպպոս Արաբացու և ո՛չ էլ նրա հաջորդի՝ Դեկոսի, ժամանակ (249—251)։ Նա իր անկախությունը պահպանել էր մինչև Գալլոս կայսեր (251—253) ժամանակը[80]։ Երկրի անկախության պահպանության համար

[73] *Zonaras*, XII, 19; *Evagrios*, Historia ecclesiastica V.7. (տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 83)։

[74] Zosimos, III, 32, 4 (տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 83)։ «Ամենաամոթաբեր հաշտությունը» կնքելու տարեթվին (244) են վերաբերում հռոմեական մի քանի արծաթե դրամներ, որոնց ձախ կողմից կարդացվում են՝ Pax fundata cum Persis («Խաղաղութիւն հաստատեալ ընդ Պարսս»)։ Տե՛ս Հ. Ասատուրյան, Քաղաքական վերաբերություններ ընդ մեջ Հայաստանի և Հռովմա 190—են Ն. Ք. մինչև 428 թ. Հ. Ք., Վենետիկ, 1912, էջ 241, ծան. 2/։

[75] Այժմ՝ Ֆարկին։

[76] Νεχραν հանդիպում է Տիգրանակերտի արձանագրության տեքստում և համապատասխանում է այժմյան Խարաբա-Նաջարանին։ Այն պիտի լինի Արշամաշատ քաղաքի նախնական անունը։

[77] «Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութիւն Հայոց», Գ, իա, ՍՊբ, 1883, էջ 48։

[78] Այս մեկնությամբ, թերևս բացահայտվում է Եվագրիոսի հիշատակությունը «Փոքր Հայքի» մասին, որին անդրադարձել է Մարկվարտը (J. *Markwart*, Untersuchungen zur Geschichte von Eran, zweite Heft. 1905, էջ 218—220)։ Տե՛ս Ս. Տ. Երեմյան, *Մեծ Հայքի թագավորության բաժանումը Սասանյան Իրանի և Հռոմեական կայսրության միջև* (244—253), ՊԲՀ, 1976, № 1, էջ 74։

[79] Ագաթանգեղոս, 127, էջ 73։

[80] Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 84։

Հայ ժողովուրդը զենքը ձեռքին մարտեր է մղել նոր նվաճողների դեմ, չցանկանալով ճանաչել իրեն պարտադրված քաղաքական իրադրությունը։

244—253 թթ. ստեղծված իրավիճակը բացատրվում է նրանով, որ Շապուհ Ա-ն, ստիպված լինելով մտածել իր պետության նաև արևելյան սահմանների ապահովության մասին, ինչպես 243 թ.[81], այնպես էլ 245—248 թթ. արշավել է դեպի Քուշանշահր[82]։ Խաղաղության դաշինք կնքելով Փիլիպպոս Արաբի հետ, հռոմեական սահմանագծի պաշտպանությունը և Հայաստանը ժամանակավորապես թողել է իր որդուն՝ գահաժառանգ Որմիզդ-Արտաշիրին, որին Խորենացին շփոթում է Արտաշիր Ա-ի հետ և շարունակում կոչել Արտաշիր։

Շապուհ Ա-ն զբաղված էր Քուշանշահրի թագավորության հնդկապարթևական մասի նվաճումով. դա հնարավորություն էր ընձեռում Հայոց թագավոր «Խոսրով Մեծ»—Տրդատ Բ-ին վերջին ճիգերը գործադրելու նվաճողների լծից իր երկիրն ազատագրելու համար։ Այս պայքարի արդյունքը պայմանավորված էր Քուշանշահրի Արշակունիների պայքարի ելքով։ Եթե նրանք հաղթեին Սասանյաններին, Հայաստանը ևս կարող էր հաջողություն ունենալ։ Ահա այս պատմական իրադրությունն է, որ յուրահատուկ ձևով է արտացոլվել Ագաթանգեղոսի և Խորենացու հաղորդումներում, ուր այդ պայքարի գլուխ կանգնած է «Խոսրով Մեծ» թագավորը։ Ագաթանգեղոսը վկայում է, որ «Խոսրովի» պատերազմները Սասանյանների դեմ տևել են 11 տարի (245—256)[83], որը և համապատասխանում է պատմական իրականությանը[84]։ Այսպիսով, 245—248 թթ. Շապուհ Ա-ն պատերազմել է Քուշանշահրի հնդկապարթևական մասում և Հայոց «Խոսրով Մեծ»-Տրդատ Բ թագավորը հանդես է գալիս իբրև քուշանաց Արշակունիների, եթե ոչ անմիջական, ապա հեռավոր դաշնակից՝ ռազմաքաղաքական շահերի զուգադիպման առումով։ Միայն այդ տեսանկյունով հասկանալի է դառնում Խորենացու այն վկայությունը, թե Խոսրովը «իր զորքերով և նրան հարած ուրիշ սիրելիներով և հյուսիսային ազգերի օգնությամբ Արտաշիրին[85] հաղթեց և հալածելով քշեց մինչև Հնդկաց աշխարհ»[86]։ Այս տեղեկությունը ենթադրել է տալիս, որ «Խոսրով»-Տրդատ Բ-ն ռազմական օգնություն է ցույց տվել իր տոհմակից և դաշնակից հնդկաքուշանների Արշակունի թագավորին, որը, սակայն, պարտվել է։ Դրանից հետո, ըստ երևույթին, Շապուհ Ա-ն կոտորել է հնդկապարթևական Արշակունի «Կարենյան Պահլավի տոհմը», որը չէր ենթարկվել Սասանյաններին[87]։ Փրկվում է միայն մանուկ Պերոզամատ,

---

81 Այս արշավանքի մասին տեղեկություն է պահպանվել Զ դարի հեղինակ Մշիխա-Զեխայի «Ադիաբենեի եկեղեցու պատմության» մեջ։ Շապուհը նվաճված երկրների թագավոր՝ «շահ է նշանակում» իր որդիներից մեկին՝ Վառահրանին (ապագա արքայից արքա Վառահրան Բ), որը «Քաաբա-ի Զարդուշտ» արձանագրությունում հիշատակվում է իբրև Գելանի թագավոր՝ «Գելանշահ» տիտղոսով (*В. Г. Луконин,* Культура сасанидского Ирана, с. 55, 58, 63):

82 *В. Г. Луконин,* Завоевания Сасанидов на Востоке, с. 28, прим. 15.

83 Ագաթանգեղոս, Ա-Բ։

84 Գուտշմիդը ենթադրում է 228—238 թթ., Տաշյանը և Ասողիկը՝ 238—248 թթ., Քրիստենսենը և ուրիշներ՝ 242—252 թթ. (գրականությունը տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 88)։ Հ. Մանանդյանը նույն տեղում այն կարծիքին է, որ այդ տարիներն ընկած են 228 և 252/3 թթ. միջև։

85 Այս հավաքական անվան՝ «Արտաշիրի» տակ պիտի ենթադրել կամ Շապուհ Ա-ին կամ նրա որդի Որմիզդ-Արտաշիրին։

86 Խորենացի, Բ, հգ (աշխ. թարգմ., էջ 208)։

87 Խորենացի, Բ, հա (աշխ. թարգմ., էջ 206)։

«անախնի մեծ ազգին Կամսարականաց»[88], որին փախցնում են Քուշանաց աշխարհ, իսկ այնուհետև՝ Հայաստան։ Նրանից սկիզբ է առնում Կամսարականների նախարարական տունը[89]։

Սասանյանների նշված արշավանքի արդյունքը եղել է այն, որ Քուշանշահրի հարավային մասը, մինչև Հնդկաստանի Փեշավար քաղաքը, նվաճել է Շապուհ Ա-ն և այդ երկրամասը միացնելով Իրանի հյուսիսարևելյան նահանգներին, կազմել նոր կախյալ թագավորություն՝ «Սակաստանի, Տուրեստանի և Հնդկաց մինչև ծովափ»։ Այդ միացյալ երկրների թագավոր է նշանակվել Շապուհ Ա-ի որդի Ներսեհը (248—276)[90]։

Այսպիսով, Սասանյաններն այս արշավանքով ապահովում են իրենց աշխարհակալության արևելյան ծայրամասի անվտանգությունը և ռազմական ամբողջ ուժերը կենտրոնացնում արևմուտքում՝ կայսրության սահմանակից Միջագետքում և Հայաստանում։ Ստեղծված պայմաններում Հայոց թագավորի վիճակը դառնում է անելանելի։

Ինչպես հաղորդում է Խորենացին, «Սասանյան Արտաշիրի (իմա՝ Շապուհ Ա-ի) դեմ կռվելու համար Հայոց թագավոր Խոսրովը (իմա՝ Տրդատ Բ-ն) շտապով ծանուցանում է հռոմեացիների Փիլիպպոս կայսրին, նրանից օգնություն խնդրելով»[91]։ Փիլիպպոս կայսրը մահացել է 249 թ., ուրեմն հռոմեացիներից Հայոց թագավորն այդ օգնությունը կարող էր խնդրել 245—249 թթ. միջև։ Հիրավի, խաղաղությունը Հռոմի և Սասանյան Իրանի միջև տևել է ընդամենը 4—5 տարի և Փիլիպպոս կայսեր մահվան նախօրյակին Հայոց թագավորը, ըստ Խորենացու[92], կայսեր հրամանով ռազմական օգնություն է ստացել հռոմեացիների դաշնակիցներից, որով և խախտվել է 244 թ. խաղաղության պայմանագիրը[93]։ Այդ ընթացքում Տրդատ Բ-ն օգնության համար դիմել է նաև քուշանների թագավորին, որ այն ժամանակ պիտի լիներ Վեհսաճանը (Վասուդևա Ա)[94]։ Քուշանշահրը ենթարկվել էր Սասանյանների ներխուժման, սակայն չէր նվաճվել, այլ միայն զրկվել էր իր հարավային երկրամասերից[95]։ Այս անցքերի մասին Խորենացին գրում է, որ Խոսրովի (իմա՝ Տրդատ Բ-ի) մոտ են հասնում այն պատգամավորներից մի քանիսը, «որոնք գնացել էին ամենապատվավոր ազգի մոտ, աշխարհի խորքերը, բուն Բահլը, և նրան լուր բերին, թե քո ազ-

---

88 Խորենացի, Բ, հզ։

89 Ս. Կոգյան, Կամսարականները «տեարք Շիրակայ և Արշարունեաց», Վիեննա, 1926։

90 Նա հետագայում մինչև շահնշահ դառնալը, հռչակվում է «Արմենիայի մեծ թագավոր» (276—293թթ.), *В. Г. Луконин,* Завоевания Сасанидов на Востоке, էջ 34—37։

91 Խորենացի, Բ, հա (աշխ. թարգմ., էջ 203)։ Այս հաղորդումը վերը նշվեց նաև Ալեքսանդր Սևերոսի և Արտաշիր Ա-ի առնչությամբ։

92 Նույն տեղում, հբ, էջ 208—209։

93 Զոնարասի հաղորդման տվյալները՝ «Երբ նա (Փիլիպպոսը) տեսավ, որ հռոմեացիները վշտացած են այդ երկրների կորստի պատճառով՝ մի փոքր հետո դաշնագիրն անվավեր համարեց և երկրները ետ վերցրեց» (XII, 19), նույնպես լույս են սփռում այս անցքերի վրա։

94 Ինչպես ենթադրում է Գիրշմանը (*R. M. Cirshman.* Le probleme de la chronologie des Coushans, „Cahier d' histoire mondiale„, III, Neuchatel, 1917. № 2, էջ 300 և հտ.։ Տե՛ս նաև՝ История таджи ского народа, т. I, М., 1961, с. 367, *В. Г. Луконин* Завоевания Сасанидов на Востоке, с. 28).

95 Այնուամենայնիվ ժամանակի ընթացքում Շապուհ Ա-ին հաջողվում է Քուշանշահրը միացնել Երանշահրին, և այդպիսով այդ երկիրը դառնում է Սասանյան տան գահաժառանգների սեփականությունը (*Р. Фрай,* Наследие Ирана, с. 278—279).

*գական Վեհասճանն իր Կարենյան Պահլավ ցեղով Արտաշիրին (իմա՝ Շապուհ Ա-ին) չհնազանդվեց, այլ քո կոչին անսալով, գալիս է քեզ մոտ»*[96]*։*

*Խաղաղության պայմանագրի խախտումը Շապուհ Ա-ին առիթ էր տվել նորից վերսկսելու պատերազմական գործողությունները հռոմեական սահմանագծում և Հայաստանում։ Պարսկական զորքերի հրամանատար նշանակվեց թագաժառանգ Որմիզդ-Արտաշիրը, որը փութաց ներխուժել հռոմեական Մեսոպոտամիա և Սիրիա (Ասորիք) պրովինցիաները։*

*Եվրոպայում կայսրությունը պատերազմում էր գոթերի, դակերի, ալամանների և ֆրանկների դեմ ու փաստորեն հնարավորություն չուներ դիմագրավել արևելյան պրովինցիաները ներխուժող պարսիկներին։ Դեկոս (249—251) կայսրն ընկավ կռվի դաշտում՝ գոթերի դեմ պատերազմելիս և ստեղծված պայմաններում հռոմեական Արևելքը թողնված էր բախտի քմահաճույքին, այն պետք է իր սեփական ուժերով պաշտպաներ կայսրության սահմանները։ Վտանգն ավելի էր մեծանում նրանով, որ Եվքսինյան Պոնտոսի (Սև ծովի) ծովահենները կողոպտում, ավերում էին ծովափնյա երկրները և նույնիսկ անարգել թափանցում Փոքր Ասիայի և Կողքիսի խորքերը։*

*253 թ. պարսկական զորքերը ներխուժեցին հռոմեական պրովինցիա Սիրիան։ Այնուհետև Բարբալիսոս քաղաքի*[97] *մոտ հռոմեական 60 հազարանոց զորքը ծանր պարտություն մատնվեց։ Այս արշավանքի ժամանակ պարսկական զորքերը գրավում են Ասորիքի, Կիլիկիայի, Կապադովկիայի 37 քաղաքները, որոնց թվում նաև շքեղ ու պերճ Անտիոքը*[98]*։ Պարսկական զորամասերը հասնում են մինչև Փոքր Հայքի Սատաղ քաղաքը և նրան սահմանակից Մեծ Հայքի Դոմանա քաղաքը։*

*Եվրոպայում և Առաջավոր Ասիայում Հռոմեական կայսրության համար ստեղծված ծանր պայմաններում Հայաստանը չէր կարող երկար դիմադրել։ 253 թ. Սասանյանները գրավում են Հայաստանը*[99]*։ Զոնարասը գրում է. «Գալլոսի (251—253) ժամանակ սկսվեցին պարսիկների խլրտումները և նրանք նվաճեցին Հայաստանը, այս երկրի Տրդատ թագավորը փախավ, իսկ նրա որդիները մեկնեցին պարսից կողմերը»*[100]*։*

*Այս տեղեկություններից կարելի է կռահել, որ հայկական արքունիքը երկփեղկվել էր։ Ինչպես երևում է, Տրդատ Բ-ի հռոմեասեր կողմնորոշման հետևանք էր Հայաստանի համար ստեղծված ծանր վիճակը։ Արքունիքի մի մասը՝ Արշակունի ավագ սեպուհները և մի շարք ազդեցիկ նախարարներ անցնում են Սասանյանների կողմը և կարողանում ժամանակավորապես պահպանել Արշակունիների տան գահը Հայաստանում, իսկ մի մասն էլ լքում է հայրենիքը և նահանջող հռոմեական զորամասերի հետ հեռանում։ Դրանք էին՝ Հայոց*

---

96 Խորենացի, *Բ, հբ (աշխ. թարգմ., էջ 207)։*

97 *Բարբալիսոս քաղաքի քաղաքապետական տերիտորիան, իբրև «Փոքր աշխարհ» Ասորիքի, հիշատակում է «Աշխարհացույցը»՝ «Բալբանիտիս» (պիտի լինի «Բարբալիտիս») աղճատված ձևով (տե՛ս* Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացույցի», էջ 44)։*

98 *E. Honigmann et A. Maricq*, *նշվ. աշխ., էջ 143։*

99 *Տե՛ս* Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 84։ Հոնիգմանը և Մարիքը, ինչպես նաև Վ. Լուկոնինը գտնում են, որ այս իրադարձությունը տեղի է ունեցել 244—253 թթ. միջև* (*E. Honigmann et A. Maricq*, *նշվ. աշխ., էջ 131—151, В. Г. Луконин.* Культура сасанидского Ирана, с. 37)։

100 *Zonaras*, XII. 21 *(տե՛ս* Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 34—35)։*

թագավոր «Խոսրով Մեծ»-Տրդատ Բ-ն և նրա նորածին որդի Տրդատը՝ իրենց կողմնակիցներով։ Խորենացին գրում է, որ Տիրանը (իմա՝ Տրդատ Բ-ն) գնաց «Եկեղյաց կողմերը և արքունիքը հաստատեց Զրմես ավանում»[101]։ Զրմես ավանն այն հինավուրց կենտրոնն էր, որ հայտնի էր դեռևս Ուրարտուի ժամանակներից[102]։ Ահա այս Զրմեսում Տրդատ Բ-ն թագավորեց մոտ երեք տարի։ Իսկ պարսիկներին անցած Հայաստանի մեծագույն մասում՝ Վաղարշապատ մայրաքաղաքում, «Արմենիայի մեծ թագավոր» դարձավ Տրդատ Բ-ի ազգականներից Արտավազդ Ե-ն (253—261), որին ճանաչեց Շապուհ Ա-ն։ Այսպիսին էին Սասանյան Իրանի երկրորդ արշավանքի հետևանքները[103]։

Հայաստանի պարսկական մասը միաժամանակ մտավ Երանշահրի կոնֆեդերացիայի մեջ և որոշ չափով անցավ քաղաքական կացության այն փուլերը, որոնք բնորոշ էին Սասանյան Իրանին ենթակա կախյալ թագավորություններին։

---

101 Խորենացի, Բ, կբ (աշխ. թարգմ., էջ 196—197)։

102 Այս վայրը տեղադրված է Երզնկայի դաշտում, այժմյան Ջիմին գյուղի տեղում, որտեղ գտնվում է հռչակավոր հնավայր Ալթին-Թեփե բլուրը։ Այնտեղ կատարած պեղումները հայտնաբերել են ուրարտական ժամանակաշրջանի բազմաթիվ հուշարձաններ։ Զրմեսը կամ Ծումինան (Ծմին) մինչև մ. թ. ա. 66 թ. Փոքր Հայքի թագավորության մայրաքաղաքն էր, իսկ կրոնական կենտրոնն էր Երեզ ավանը (այժմ՝ Երզնկան)՝ Անահիտ դիցուհու հռչակավոր տաճարով։ Պոմպեոսի հետ Տիգրան Ա-ի կնքած դաշնագրի համաձայն նախկին Փոքր Հայքի թագավորության մեջ մտնող Բարձր Հայք նահանգը ճանաչվել էր Մեծ Հայքի թագավորության կազմում և այնուհետև Զրմեսը դարձել «արքունական երկիր» հանդիսացող Բարձր Հայքի նահանգի կենտրոնը։

103 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանի քաղաքական վիճակը Արտավազդ Ե-ի ժամանակ 252(3—261), էջ 13—21։

ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ 253—273 ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

## 1. ԱՐՏԱՎԱԶԴ Ե-Ի ԳԱՀԱԿԱԼՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՐՍԿԱԿԱՆ ՄԱՍՈՒՄ։ ՄԵԾ ՀԱՅՔԻ ՀՌՈՄԵԱԿԱՆ ՄԱՍԸ՝ «ԴԱՍՏԱԿԵՐՏ ԿԱՅՍԵՐԱՑ»։ «ԽՈՍՐՈՎ ՄԵԾ»-ՏԻՐԱՆ-ՏՐԴԱՏ Բ-Ի ՍՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Հայաստանում, ինչպես և նվաճված այլ երկրներում, Սասանյանները ժամանակավորապես հանդուրժեցին տեղական թագավորի իշխանությունը, հանձին Արտավազդ Ե-ի, որն, անշուշտ, Արշակունի դինաստիայից էր և տարագիր Տրդատ Բ-ի ազգականներից՝ Արշակունի սեպուհներից մեկը[1]։ Այդ Արտավազդն էր, որ Շապուհ Ա-ի կողմից բարձրացվեց հայկական գահը։

Արտավազդ Ե-ն Մեծ Հայքի պարսկական մասում, Վաղարշապատ մայրաքաղաքում թագավորել է 253—261 թթ.[2]։

Եթե նկատի ունենանք Սասանյանների ընդհանուր քաղաքականությունը Երանշահրի կազմում մտնող ոչ-իրանական («Ան-Երան»)[3] երկրների թագավորությունների նկատմամբ, ակնհայտ կդառնա, որ նրանք հանդուրժում էին իրենց ծառայության մեջ մտած տեղական ավագանու ներկայացուցիչներին, նույնիսկ պարթև Արշակունիների շառավիղներին։ Սակայն այդ ժամանակավոր երևույթ էր, և հարմար առիթի դեպքում տեղական դինաստիայի թագավորությունը վերացվում էր ու տվյալ երկրի գահը դառնում էր Սասանյան դինաստիայի ներկայացուցիչների ժառանգական սեփականությունը՝ «դաստակերտը»։ Այդպես էին՝ Մեշան (Մեսենե), Գելան, Կըրման և «Սակաստանի, Տուրեստանի և Հինդի մինչև ծովափ» միացյալ երկրների գահը, ավելի ուշ Քուշանաց աշխարհի (Քուշանշահրի) մնացյալ մասը։ Սակայն Սասանյանների համար ամենակարևորը Հռոմեական կայսրության սահմանակից Հայաստանն

---

[1] Գերիշխող է այն կարծիքը, որ այս Արտավազդ Ե-ն Արշակունյաց դինաստիայից չի եղել (տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 93) և թերևս նա նույն Արտավազդ Մանդակունին էր (Ալիշան, Այրարատ, 1890, էջ 374)։ Ըստ Աստուրյանի Արտավազդ Մամիկոնյանն էր նա (Քաղաքական վերաբերությւններ, էջ 245—246), իսկ ըստ Ասլանի նա Ատրպատականի թագավորների սերնդից էր (Etudes historiques, էջ 143)։ Ա. Աննինսկու ենթադրության համաձայն Արտավազդ Ե-ն Տրդատ Բ-ի որդին էր (*А. Аннинский*, Древние армянские историки как исторические источники, Одесса, 1899, с. 44).

[2] Հ. Մանանդյանը, հիմնվելով նախորդ հետազոտությունների վրա, Արտավազդի գահակալության տարեթվերը համարում է 252/3—272/3 թթ. միջև (նշվ. աշխ., էջ 95)։

[3] Շապուհ Ա-ի արձանագրություններում Հայաստանը հիշատակվում է «Ան-Երան» երկրների շարքում (տե՛ս *В. Г. Луконин*, Завоевания Сасанидов на Востоке и проблема абсолютной хронологии, с. 32; *Р. Фрай*, Наследие Ирана, М., 1972, с. 296)։

էր։ Պարթև Արշակունիների վերացումից հետո Հայաստանին տիրելու համար Հռոմի և Սասանյանների միջև մղվող պայքարն ավելի է սրվում։ Տիզբոնի արքունիքի հիմնական ձգտումն էր Հայաստանում հաստատել Սասանյան դինաստիայի ժառանգական իշխանությունը։

Սասանյանների այս քաղաքականության պայմաններում, միաժամանակ հանգուրժվում է հայ Արշակունի սեպուհ («աւագ սեպուհ») Արտավազդի թագավորությունը։ Դա Սասանյանների համար միջոց էր երկիրն իրենց կողմը գրավելու։ Պատեհ առիթը ներկայանալուն պես Արտավազդը պիտի գահընկեց արվեր և հայկական գահը դառնար Սասանյան գահաժառանգների սեփականությունը։

Արտավազդ Ե թագավորի մասին կցկտուր տեղեկություններ են պահպանվել Մովսես Խորենացու «Հայոց պատմության» մեջ, ուր որոշ պատճառներով այս Արտավազդը շփոթվել է Արտաշես Ա-ի որդի Արտավազդի հետ։ Խորենացու տեղեկություններում պահպանվել են աղոտ փաստեր Տրդատ Բ-ի արքունիքում ծագած տարաձայնությունների մասին, որոնք կապվում են Արտավազդ Ե-ի գահակալության հետ։

Ըստ գոյություն ունեցող կարգի, միայն գահաժառանգն իրավունք ուներ բնակվելու Հայոց ոստան Այրարատում։ Արշակունյաց տոհմի մյուս ներկայացուցիչները՝ ավագ սեպուհները, բնակվում էին իրենց հատկացված Հաշտյանք, Աղիովիտ և Առբերան գավառներում։ Արտավազդը գահաժառանգ չէր և թագավորել էր իբրև Սասանյանների քաղաքականության կողմնակից և, անշուշտ, որպես հակառակորդ Հայաստանի հռոմեական մասն անցած իր ազգական «Խոսրով Մեծ»-Տրդատ Բ-ի ու նրա ընտանիքի, առաջին հերթին վերջինիս որդու՝ մանկահաս Տրդատի։

Մովսես Խորենացին այս ընթացքում տեղի ունեցած դեպքերը խառնելով Տրդատ Ա-ի (63—88) ժամանակաշրջանի հետ, հաղորդում է, որ «Տիրան» (իմա՝ Տրդատ Բ) թագավորը, որ հավատարմությամբ ծառայեց հռոմեացիներին[4], հարկադրված էր զբաղվել Հաշտյանք, Աղիովիտ և Առբերանի գավառներում բնակվող Արշակունի սեպուհների հարցով։ Խորենացու տեղեկության համաձայն «Տիրան»-Տրդատի մոտ են գալիս Արշակունյաց ցեղից իր հին ազգականները, որոնք ապրում էին Հաշտյանքի կողմերում և ասում. «Ընդարձակիր մեր ժառանգության (հողերը), որովհետև մենք շատ բազմացանք և մեզ նեղ է գալիս (եղածը)։ Նա էլ հրամայում է, որ նրանցից մի քանիսը գնան ապրելու Աղիովիտ և Առբերանի գավառներում։ Նրանք ավելի սաստիկ բողոք բարձրացրին թագավորի առջև, թե մեր տեղը չափազանց նեղ է, բայց Տիրանն ուշադրություն չդարձրեց, այլ հաստատապես վճռեց ոչ մի նոր (հող) չտալ նրանց ժառանգություն, այլ որ նրանք ինչ որ ունեն, հավասար իրենց մեջ բաժանեն»[5]։ Այնուհետև պատմահայրն ավելացնում է, որ հողը «մարդաթվով բաժանելիս դուրս եկավ, որ Հաշտյանքում բնակվողների ժառանգությունը պակաս է, ուստի նրանցից շատերը եկան Աղիովիտ և Առբերանի գավառները»[6]։ Այս ընդարձակ հատվածում նշված է Արշակունի սեպուհների գալը Հաշտյանք գավառից Աղիովիտ և Առբերանի գավառները։ Հայաստանում III դ. կեսերին ստեղծված իրադրության զննությունից երևում է, որ այս տեղեկության մեջ ճիշտ չեն բացատրված

[4] Խորենացի. Բ, կբ, էջ 193։

[5] Նույն տեղում (աշխ. թարգմ., էջ 196)։

[6] Նույն տեղում։

Արշակունի սեպուհների գալու հիմնական շարժառիթները։ Հաշվի առնելով, որ 244—252/3 թթ. բաժանումով Հաշտյանք գավառը մնում էր Հայաստանի հռոմեական մասում, իսկ Վանա լճի հյուսիսային և հյուսիսարևելյան եզերքում ընկած Աղիովիտ և Առբերանի գավառներն ընկնում էին պարսկական Հայաստանի կենտրոնական մասում, պարզ կլինի, որ Խորենացու վկայության մեջ արտացոլվել է այն իրողությունը, որ «Տիրան»-Տրդատ Բ-ի քաղաքականությունից դժգոհ Արշակունի սեպուհները նրան անցած երկրամասից 253 թ. հետո անցնում են պարսկական մասը։ Ահա այս Արշակունի սեպուհներից պետք է լիներ Մեծ Հայքի պարսկական մասի գահակալ «մեծ թագաւորն Հայոց» կամ «մեծ արքայ Հայոց» Արտավազդ Ե-ն։ Հայոց թագավորը, իբրև վասալ, իր այրուձիով պարսկական զորամասերի հետ մասնակցում էր Հռոմեական կայսրության դեմ մղվող պատերազմներին։

Մեծ Հայքի հռոմեական մասը նույնպես շարունակում էր գոյություն ունենալ որպես կախյալ թագավորություն (կենտրոնը Ջրմես ավան), որի թագավորն իր այրուձիով շարունակում էր մասնակցել կայսրության պատերազմներին, իբրև «դաշնակից և բարեկամ կայսեր և հռոմեական ժողովրդի»։ Հռոմեական կայսրությանն անցած Մեծ Հայքի արևմտյան մասը բաղկացած էր Ծոփաց աշխարհից և Բարձր Հայք նահանգից, որը կոչվում էր Armenia Major, այսինքն՝ «Մեծ Հայք» և միացած էր «Փոքր Հայք»—Armenia Minor երկրամասին[7]։ Իբրև «Ձեռակալ աշխարհ թագաւորին Հայոց», հռոմեական Հայաստանի կազմի մեջ պետք է մտներ նաև Միջագետքի Գիմաթենե գավառը՝ Վաղարշակուպոլիս կենտրոնով[8]։ Քանի որ Հայաստանի Հռոմին անցած մասը կայսրության վարչական բաժանման համակարգի մեջ էր, ուստի Ագաթանգեղոսն այն համարում էր «դաստակերտ կայսերաց»[9]։

Հռոմեական Հայաստանի վարչական բաժանումն այն ժամանակաշրջանում արտացոլվել է Վերոնյան երկրացուցակի մեջ։ Ըստ այդ ցուցակի, իբրև Հռոմեական կայսրության Պոնտական դիոցեզի երկրամաս է հիշատակված «Փոքր Հայք, այժմ նաև Մեծ Հայքը ավելացրած» (Armenia Minor, nunc et Major addita)[10]։ Երկրի վարչական այս բաժանումն սկզբնավորվել է ոչ թե 298 թ. Մծբինի 40-ամյա դաշնագրի հետևանքով, ինչպես սովորաբար կարծում են[11], այլ այն հետևանք էր 244 թ. «ամենաամոթաբեր հաշտության», որը, ինչպես նշվեց, փաստորեն ուժի մեջ մտավ միայն 253 թ.։

---

7 Այս վարչական միավորումների մասին տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 28—29, 86.

8 Գավառը հայտնի էր իր ջերմուկներով, ուստի հայերը միջին դարերում այն կոչում էին Ջերմուկ (այժմյան՝ Չիրմիկ)։ Այն գտնվում էր Ամիդ-Դիարբեքիրից արևմուտք (տե՛ս *J. Markwart*, Südarmenien und die Tigrisquellen, Wien, 1930, էջ 251, 253, տե՛ս նաև՝ Ս. Տ. Երեմյան, Պայմանական հողատիրության առաջացման հարցի շուրջը ֆեոդալականացող Հայաստանում։ «Ձեռական իշխանութիւնը» Հին Հայաստանում, ՊԲՀ, 1971, № 1, էջ 3—8)։

9 Ագաթանգեղոս, գլ. ԺԲ, 127 (գրաբար բնագիր, էջ 73)։

10 *Codex Veronensis*, II, 8: Ենթադրվում է, որ Վերոնյան երկրացուցակը Դիոկղետիանոս կայսեր (284—305) պրովինցիալ բաժանման ռեֆորմն արտահայտող փաստաթուղթ է (*T. Mommsen*, Abhand. d. Akad. d. Wiss. zu Berlin, 1862, էջ 489; Մանրամասն տե՛ս *Н. Адонц*, նշվ. աշխ., էջ 85—86)։ Այդ պետք է ճիշտ լինի, սակայն նշված երկրացուցակն արտացոլում է մինչև 298 թ. գոյություն ունեցող իրավիճակը։

11 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 116—117։

Ռազմական առումով 253—297 թթ. հռոմեական Հայաստանը, որոշ ընդմիջումներով, շարունակեց մնալ Կապադովկիայի ռազմական շրջանի համակարգում։

«Խոսրով Մեծ»—Տրդատ Բ-ն, որ գրեթե երեսուն տարի (227—256 թթ.) պայքար էր մղում Սասանյանների նվաճողական քաղաքականության դեմ, դաշնակցել էր քուշանների հնդկապարթևական թագավորների հետ, երկու անգամ կազմակերպելով (227—232 թթ. և 248—252 թթ.) ռազմական կոալիցիա, համարվում էր Շապուհ Ա-ի ամենաոխերիմ թշնամին, որին հարկավոր էր վերացնել մեջտեղից, ուստի և դավադրություն է կազմակերպվում նրա դեմ։ Շապուհը Հայոց թագավորի սպանության գործը հանձնարարում է Անակ պարթևին՝ «Սուրենյան Պահլավի տոհմից»։

Անակի Հայաստան գալու ժամանակը ճշտիվ որոշում է Խորենացին։ Նա գրում է. «Անակը Հայաստան գալուց երկու տարի անցած՝ երրորդում սպանում է Խոսրովին»[12]։ Ուրեմն Անակը Հայաստան էր եկել այն ժամանակ, երբ Հռոմը ճանաչեց Մեծ Հայքի թագավորության բաժանումը երկու աշխարհակալությունների միջև և «Խոսրով Մեծ»—Տրդատ Բ-ն անցել էր իր արքունիքով հռոմեական Հայաստան, այսինքն՝ 253 թ.։ Այստեղ Անակը մնացել է երեք տարի։ Ճիշտ է Խորենացու հաղորդումը, որ Անակը կեղծում է, թե իր ընտանիքով փախչում է Շապուհ Ա-ի հալածանքներից և ապաստան հայցում Հայոց թագավորից։ Անակը հյուրընկալվում է «Խոսրովի» կողմից և երրորդ տարում (256) ի կատար է ածում ոճիրը[13]։ Այս սպանությունը ցույց է տալիս, որ Անակի տոհմը՝ Սուրենի Պահլավը, ինչպես այլ պարագաներում, այժմ ևս հավատարմորեն ծառայում էր Սասանյան արքունիքին։

## 2. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՌՈՄԵԱԿԱՆ ՄԱՍԻ ԲՌՆԱԳՐԱՎՈՒՄԸ ՍԱՍԱՆՅԱՆՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ

Չնայած Գալլոս կայսրը ճանաչել էր Հայաստանի բաժանումը երկու մասի, սակայն պարսկահռոմեական բախումները Վերին Միջագետքում և Հայաստանում շարունակվում էին։

Ըստ պատմական ավանդության, մահացող «Խոսրովը» հրամայում է ոչընչացնել Անակի ընտանիքը[14]։ Սակայն փաստերը ցույց են տալիս, որ պարսկական զորքերը ներխուժել են հռոմեական Հայաստան և բռնագրավել այն։ Այդ մասին խոսվում է Ագաթանգեղոսի երկում, չնայած որ տարբերություն չի դրվում Հայաստանի երկու մասերի միջև։ Նա գրում է. «Երբ Պարսից թագավորն այս ամենը լսեց՝ զվարճացավ, այն օրն ուրախության մեծ տոն արեց և ատրուշաններին շատ զոհ մատուցեց։ Զորք հավաքեց, շարժվեց գնաց ասպատակ սփռեց Հայաստանի կողմերը, խոսունն ու անասունը, ծերն ու տղան, երիտասարդն ու մանուկն ընդհանրապես գերի տարավ»[15]։ Այստեղ խոսքը հռոմեական Հայաստանի մասին է, և պատմիչը հատկապես ընդգծում է, որ «Պարսից արքան գալով այնուհետև Հայաստան, իր անվամբ կոչեց այդ վայրերը և հունաց զորքը փախուստի մատնելով, հալածեց մինչև հունաց սահմանները։ Փո-

12 Խորենացի. Բ, հդ (աշխ. թարգմ., էջ 209)։

13 Նույն տեղում։

14 Ագաթանգեղոս, 35։

15 Նույն տեղում (աշխ. թարգմ., էջ 36)։

սեր փորելով սահմաններ հաստատեց և տեղի անունը դրեց Փոսից դրունք[16] այն վայրերում, որոնք կոչվում էին Ոյծք»[17]։ Այստեղ, փաստորեն, նշվում է այն սահմանագիծը, որ բաժանում էր կայսրությունը Մեծ Հայքից։ Խորենացին նույնպես հաղորդում է պարսիկների կատարած բռնագրավման մասին, որտեղից երևում է, որ խոսքը վերաբերում է Հռոմեական Հայաստանին՝ Տրդատ Բ-ի սպանությունից հետո։ Պատմահայրը հաղորդելով Վալերիանոս կայսեր և նրա հաջորդների թուլության մասին, ասում է, որ դրա պատճառով «Արտաշիրը (իմա՝ կամ Շապուհ Ա կամ Որմիզդ-Արտաշիր) համարձակաբար արշավեց մեր երկիրը, հունաց զորքերին դուրս քշեց և մեր երկրի մեծագույն մասը գերելով, ավերակ դարձրեց»[18]։

«Խոսրով»-Տրդատի սպանությունից հետո արքունիքում գտնվող նրան կողմնակից հակապարսկական կողմնորոշում ունեցող նախարարները պետք է բողոքի ձայն բարձրացնեին սասանյան անիրավությունների և Հռոմեական Հայաստանի բռնագրավման դեմ։ Խորենացին գրում է. «Խոսրովի (իմա՝ Տրդատ Բ-ի) սրախողխող լինելուց հետո հայոց նախարարները միաբանելով՝ իրենց օգնության են կանչում Փոյուգիայում գտնվող հունաց զորքերը՝ պարսիկներին դիմադրելու և Հայաստանը պաշտպանելու համար։ Եվ իսկույն իմաց տվին Վալերիանոս կայսրին...»[19]։ Նախարարների բողոքը ժամանակին էր հասել։ Հռոմը չէր կարող հաշտվել իր ազդեցության կորստի հետ Հայաստանում ու Հյուսիսային Միջագետքում։ Հայաստանը կրկին պատերազմի առիթ էր դառնում։ Վալերիանոսը 256 թ.[20] իր բանակով գալիս է Արևելք, սակայն դեռ Հայաստանի սահմաններին չմոտեցած, շեղում է ճանապարհը և հարկադրված իր ուշադրությունը բևեռում այն դժվարությունների վրա, որ նրա առաջ ծառացան Կապադովկիայում ու Ասորիքում։

Վալերիանոսն իր թուլակամ ու անվճռական բնավորությամբ չէր դիմանում լուրջ դժվարություններին։ Կայսրը հռոմեական բանակի գլուխ անցած գալիս է Անտիոք, որը պարսիկները կամովին թողնում են ու հեռանում։ Վալերիանոսը պրետորյանների պրեֆեկտ Բալլիստայի հետ իր բանակով Անտիոքից շարժվում է Կապադովկիա, որպեսզի Մելիտինեի կողմից Եփրատն անցնելով, տեր կանգներ հռոմեական Հայաստանին։ Բայց Խորենացին հաղորդում է. «Գոթերը Դանուբ գետն անցնելով շատ գավառներ գերեցին և Կյուկլադի կղզիները կողոպտեցին, ուստի Վալերիանոսը չի կարողանում մեր երկիրը հո-

16 Նույն տեղում, 36։ Ըստ VII դարի «Աշխարհացույցի» այն կոչվում էր «Փոսադուռն» և պիտի համապատասխանի Պրոկոպիոս Կեսարացու Γερμανοῦ φοσσᾶτον ամրությանը։ Փոսադուռ էր կոչվում այժմյան Վավուկի լեռնանցքը, որտեղով անցնում էր Կարինից դեպի Կողոնիա տանող ճանապարհը և որը գտնվում է Մեծ Հայքը Փոքր Հայքից բաժանող սահմանագծի վրա։ Վավուկ կոչվող լեռնանցքը գտնվում էր Գայլ գետի (Լյուկոս) և Ճորոխ գետի ակունքները միմյանցից բաժանող ջրբաժան լեռնաշղթայի վրա (տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույցի», Երևան, 1963, էջ 88)։

17 Ագաթանգեղոս, 36 (աշխ. թարգմ., էջ 36)։ Ագաթանգեղոսի նշված հրատարակության «Սոյզ»-ից դերադասելի «Ոյծք» տարընթերցվածքը։ Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հ. 3, էջ 560։

18 Խորենացի, Բ, հզ (աշխ. թարգմ., էջ 211)։

19 Նույն տեղում, էջ 210։

20 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 92։ Այս թվականով ևս մեկ անգամ ապացուցվում է, որ Տրդատ Բ-ն այս նույն ժամանակ էր սպանվել։

վանավորել»[21]։ Հենց այս ժամանակ էլ պարսիկները Միջագետքում անցան «Մեսոպոտամիա» պրովինցիան և գրավեցին խոշոր կենտրոն Դուրա-Եվրոպոսը[22]։ Այնուհետև պատերազմը դադարում է, կնքվում է խաղաղության համաձայնագիր[23] (մոտ. 257/8 թ.)։

Այդ համաձայնագրով Հռոմը, հավանաբար, հարկադրված եղավ ճանաչել պարսիկների հետ կայացած 253 թ. համաձայնությունը, ըստ որի Հայաստանի մեծագույն մասն անցնում էր պարսիկներին (ինչպես որոշվել էր 244 թ.), իսկ մնացյալ՝ փոքր մասի վրա, Սասանյանները ճանաչեցին կայսրության իրավասությունը։ Իրականում, սակայն, հռոմեական Հայաստանը մնաց գրավված պարսիկների կողմից։

259 թ. վերսկսված պարսկահռոմեական պատերազմը Վալերիանոսի համար ունեցավ ողբերգական վախճան։ Ռազմական գործողությունները վերջացան մեծ ճակատամարտով՝ Եդեսիայի և Խառանի միջև, որտեղ հռոմեական բանակը խայտառակ պարտություն կրեց, իսկ Վալերիանոս կայսրը գերի ընկավ Շապուհ Ա-ի ձեռքը (260)[24]։

Ստեղծվեց այնպիսի վիճակ, որ Հռոմը ոչ միայն ճանաչեց պարսկական Հայաստանի գոյավիճակը, որտեղ Սասանյանները թագավոր էին կարգել Արտավազդ Ե-ին, այլև բախտի քմահաճույքին թողեց հռոմեական Հայաստանը։ Ավելին, Սասանյաններն այս հաղթանակից հետո որոշեցին Հայաստանի պարսկական մասում ևս վերացնել հայ Արշակունիների իշխանությունը։

Արտավազդ Ե-ի թագավորությունը Հայաստանի պարսկական մասում գոյատևեց հազիվ ինը տարի։ Հայ Արշակունիներին վերացնելու առիթ հանդիսացավ Արտավազդ Ե-ի դիրքորոշումը գերեվարված Վալերիանոս կայսեր հանդեպ։

Վալերիանոսի գերությունը և նրա բանակի ջախջախումը հին աշխարհի համար արտասովոր երևույթ էր։ Այդպիսի խայտառակ և ստորացուցիչ պարտություն կայսրությունը չէր տեսել։ 261 թ. Շապուհ Ա-ի դեսպանները հարևան երկրների թագավորներին հանձնում էին նամակներ, որոնց միջոցով ամենուրեք ազդարարում էին պարսից բանակի հաղթանակի մասին։

Առանձին թագավորությունների տիրակալներ տարբեր կերպ արձագանքեցին այս հաղթական ուղերձներին։ Նրանց մի մասը պատասխանեց, իսկ մյուս մասն՝ արհամարհաբար լռեց։ Հայոց թագավոր Արտավազդ Ե-ի պատասխան նամակը Շապուհին պահպանել է հռոմեական պատմիչ Տրեբելլիոս Պոլլիոնը. «Արտավազդը՝ Հայոց թագավորը,— ասում է նա,— ուղարկեց Շապուհին հետևյալ նամակը. «Համակիր եմ քո փառքին, բայց երկյուղ եմ կրում, որ դու ոչ այնքան հաղթել ես, որքան հրահրել ես մոլեգին կռիվը։ Վալերիանոսին այժմ պահանջում են ազատ արձակել և նրա որդին, և թոռը, և հռոմեական զորավարները, և ամբողջ Գալլիան, ամբողջ Աֆրիկան, ամբողջ Սպանիան, ամբողջ Իտալիան ու նաև բոլոր ժողովուրդները, որոնք ապրում են Իլլիրիկումում, նաև Արև-

21 Խորենացի, Բ, հզ (աշխ. թարգմ., էջ 210—211)։

22 Տե՛ս Р. Фрай, Наследие Ирана, с. 292.

23 В. Г. Луконин, նշվ. աշխ., էջ 57։

24 Լավագույն աղբյուրը Շապուհ Ա-ի այս արշավանքի մասին ŠKZ-ն է (տե՛ս E. Honigmann et A. Maricq, նշվ. աշխ., էջ 12)։ Խորենացին (Բ, հզ) լռությամբ է մատնում Վալերիանոսի գերությունը։

*վիլքում ու Պոնտոսում[25], և որոնք կողմնակից են այն հռոմեացիներին կամ նրանց հպատակ են։ Դու վերցրիր դերի միայն մի ծերունու, իսկ քո դեմ խիստ թշնամացրիր երկրագնդի բոլոր ժողովուրդներին, գուցե նաև մեր դեմ, որ ուղարկել էինք քեզ օգնական զորքեր, մենք, որ քո հարևաններն ենք՝ միշտ ծանր դրության մեջ ենք ընկնում, երբ դուք իրար հետ կռվում եք»[26]։ Եթե նույնիսկ այս նամակը կեղծիք համարվի, այդուհանդերձ դիպուկ է բնորոշում Հայաստանի վիճակը իրանահռոմեական ներհակությունների ոլորտում, որով և որոշվում էր Հայոց թագավորի պատասխանը, իսկ վրացիները, աղվաններն ու քուշաններն առհասարակ հրաժարվեցին ստանալ Երանշահրի արքայի նամակները և նույնիսկ խոստացան օգնել հռոմեացիներին[27]։*

*Այս նամակը բոլոր դեպքերում իր ժամանակի հետաքրքրական փաստաթուղթ է։ Դրա բովանդակությունից երևում է, որ Մեծ Հայքի պարսկական մասը, ուր թագավորում էր Արտավազդ Ե-ն, ներքին կյանքում անկախ էր և կախվածությունը Սասանյան Իրանից արտահայտվում էր նրանով, որ պատերազմի ժամանակ Հայոց թագավորը զորք էր տրամադրում Իրանին։ Ուշագրավ է, որ ժամանակակիցները գիտակցում էին, թե բուֆեր պետության վիճակում գտնըվող Հայաստանին որքան ծանր էր նստում յուրաքանչյուր պատերազմական ընդհարումը Սասանյան Իրանի և Հռոմեական կայսրության միջև։ Ի վերջո՝ մեջբերված նամակի տեքստը ցույց է տալիս, որ Արտավազդ Ե-ն այս պարագայում չի թաքցնում համակրանքը հռոմեական կայսեր հանդեպ և միայն հարկադրաբար է ենթարկվում պարսիկներին։*

*Անշուշտ, Հայոց թագավորի այս դիմումը պարսից արքունիքում պետք է դիտվեր իբրև անհավատարմության դրսևորում Սասանյան Իրանի ինքնակալի հանդեպ և այդ այն ժամանակ, երբ պարսիկների դեմ Միջագետքում հաջող պատերազմական գործողություններ էր սկսել Հռոմի անունից հանդես եկող Պալմիրայի թագավոր Օդենատոսը։ Փորձը ցույց է տալիս, որ եթե քաղաքական կշեռքի նժարը Միջագետքում թեքվում էր հօգուտ Հռոմի, Հայաստանի գահակալը կարող էր անցնել դրա կողմը։ Ահա հանգամանքներ, որ հասկանալի են դարձնում Շապուհ Ա-ի քաղաքական վարքագիծը Հայաստանի հանդեպ՝ Վալերիանոսի գերությունից հետո։ Բացի այս նկատառումներից, հարկավոր է հաշվի առնել նաև այն, որ Շապուհ Ա-ն այդ ժամանակ ապրում էր իր հաղթանակների փայլուն ժամանակաշրջանը։ Շահած երեք խոշոր ճակատամարտերը (Պերոզ-Շապուհի, Բարբալիսոսի և Եդեսիայի) Շապուհ Ա-ին հասցրել էին փառքի գագաթնակետին, և նա արդեն կարող էր հաշվի չառնել Մեծ Հայքի թագավորության իրավական վիճակը։*

*Արտավազդ Ե-ն գահընկեց է արվում և, ըստ երևույթին, սպանվում (մոտ.*

---

[25] Illiricum, Oriens, Pontica *սրանք Հռոմեական կայսրության Բալկանյան թերակղզու և փոքրասիական դիոցեզներն են։*

[26] Trebellius Pollio Valerianus pater et filius *(Թարգմ. տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 94)։*

[27] *Նույն տեղում, IV, 1։ Շապուհ Ա-ին ուղարկված Արտավազդի նամակը Կ. Թումանովը համարում է գրական հնարանք, կազմված Թուկիդիդեսի ճառերի, ինչպես և նմանօրինակ մյուս ստեղծագործությունների օրինակով։ Չի բացառվում, որ իրականում նման նամակները կազմըվում էին աչքի առաջ ունենալով դասական ճառերի տեքստերի օրինակները։ Քննարկվող ժամանակաշրջանի պատմական իրադրությունը չի բացառում նման նամակի գոյությունը։*

261 թ.)։ Այսպես է ավարտվում այս ժամանակաշրջանում Հայ Արշակունիների գահակալությունը Հայաստանի պարսկական մասում։

Շապուհ Ա-ն, ներխուժելով հռոմեական Հայաստան, նպատակ ուներ նաև ոչնչացնել «Խոսրով-մեծ»—Տրդատ Բ-ի ընտանիքը և դրանով իսկ վերջնականապես վերացնել հայ Արշակունիներին։ Նման դեպքերում միշտ գտնվում էր որևէ մեկը հայ մեծամեծներից, որ փրկում էր հատկապես արու զավակներին, որով պահպանվում էր ավյալ հարստության ժառանգական իրավունքը։ Ագաթանգեղոսը հաղորդում է. «Այդ ժամանակ մի մարդ ավաղակից ազատելով, փրկում է Հայոց Խոսրով թագավորի որդիներից Տրդատ անունով մի փոքրիկ մանկան, (որին) դայակներն առնելով փախցրին կայսեր արքունիքը, Հունաց կողմերը»[28]։ Ըստ Խորենացու, այդ Արտավազդ Մանդակունին էր «որ Խոսրովի Տրդատ որդուն առնելով հասցնում է կայսեր պալատը»[29]։ Ագաթանգեղոսը նույնպես վկայում է, որ մանուկ Տրդատին փախցրին Հռոմ «ի դուռն կայսեր»։ Նախարարները փրկեցին նաև արքայադուստր Խոսրովիդուխտին՝ հասցնելով նրան Դարանաղի գավառի Անի ամրոցը[30]։

Ձափազանց հետաքրքրական է Ագաթանգեղոսի տեղեկությունը, որ մանկիկ Տրդատին փախցրին Հռոմ «ի դուռն կայսեր»։ Գոյություն ունեցող մի շարք ձեռագրերում միտումնավոր կերպով հանված է «ի Հռոմ» բառը, որով փոխվում է հատվածի միտքը։ Ագաթանգեղոսի ձեռագրերից մեկի ընթերցումը հետևյալն է. «երթեալ, սնեալ և ուսեալ Տրդատէս ի Հռոմ առ կոմսի ումեմն Լիկիանէս անուն կոչեցելոյ»[31]։ Ագաթանգեղոսի սկզբնական տեքստի խմբագրողները, ձգտելով մանուկ Տրդատին անպատճառ դարձնել ժամանակակիցը առաջին քրիստոնյա կայսր Կոստանդիանոս Ա Մեծի (306—337) և նրան գահակից՝ կեսար «Լիկիանէս»-ի (կամ՝ Լիկիանոսի) (308—324), որը նախքան կեսար դառնալը III—IV դդ. սահմանագծին Կապադովկիայի կառավարիչ էր՝ «կոմես» (κόμης, comites) տիտղոսով, ժամանակագրական տեղաշարժեր են կատարում, աղավաղելով պատմական իրողությունը։

Անդրադառնալով այս հարցին, Մ. Լ. Շոմոնը իրավամբ նշում է, որ պատանի թագավորազնի հովանավորը պատկանում էր «Լիկինիա տոհմին» (gens Licinia), ինչպիսիք էին կայսրեր Վալերիանոսը (253—260) և նրա որդի Գալլիենոսը (253—268), որոնց հետ և գիտնականը նույնացնում է Ագաթանգեղոսի «Լիկիանէսին»[32]։ Պարզվում է, որ մանկիկ Տրդատին հայ նախարարները տա-

---

28 Ագաթանգեղոս, 36 (աշխ. թարգմ., էջ 36)։

29 Խորենացի, Բ, հզ (աշխ. թարգմ., էջ 211, համտ. Եղիշե, Վասն Վարդանանց և Հայոց պատերազմին, Երևան, 1957, էջ 72)։ Տրդատ Բ-ին նվիրված նախարարներից էր Օտա Ամատունին, որը նույնպես մասնակցեց նրա զավակների փրկությանը։ Օտա Ամատունին Տրդատ Բ-ի արքունիքում, ըստ երևույթին, հազարապետի գործակալությունն է վարել։ Նա լքել էր իր ժառանգական կալվածքը՝ Արտազ գավառը և Խոսրովիդուխտի հետ գալով Հայաստանի արևմտյան մասը, հաստատվել էր Դարանաղի գավառի Անի (Կամախ) ամրոցում, որտեղ գտնվում էին հայ Արշակունիների դամբարանները։ Ավելի ուշ, Սասանյանները հանձին «Հայաստանի մեծ թագավոր» Որմիզդ-Արտաշիրի հարքունիս էին գրավել լքված Արտազ գավառը, իսկ այնուհետև, հայոց գահի վրա գտնվելու ժամանակ Ներսեհը այս գավառը դարձնում է իր կենտրոնը։ Այստեղ, հավանաբար, հնագույն Շավարշանի տեղում Ներսեհը հիմնում է Ներսեհապատ ավանը։

30 Խորենացի, Բ, հէ (աշխ. թարգմ., էջ 211)։

31 Ագաթանգեղոս, 37։

32 *Chaumont*, Recherche sur l'histoire d'Arménie de l'avenement des Sassanides a la conversion du royaume, Paris, 1969. p. 94;

րել են Հռոմ[33]՝ կեսար Պուբլիոս Լիկինիոս Էգնատիոս Գալլիենոս[34] Օգոստոսի մոտ։ Տրդատի մանկությունն ու պատանեկությունն անցել են ոչ թե Կապադովկիայի Կեսարիայում, այլ հռոմեական կայսրերի արքունիքում։ Ագաթանգեղոսի տեքստից երևում է, որ Տրդատը կատարյալ գիտեր լատիներենն ու հունարենը։ Նա քաջ ծանոթ է եղել և վայելել է հովանավորությունը ոչ միայն Լիկիանոսների ընտանիքի՝ հանձին Վալերիանոսի և Գալլիենոսի, այլև զորավարներ ու քաղաքական գործիչներ՝ Կլավդիոս Ավրելիանոսի, Տակիտոսի, Պրոբոսի և Կարոսի (որոնք հերթով գրավեցին կայսերական գահը) մեծ հովանավորությունը[35]։

## 3. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՐՍԿԱԿԱՆ ՄԱՍԸ ՍԱՍԱՆՅԱՆՆԵՐԻ ԴԱՍՏԱԿԵՐՏ

Արտավազդ Ե-ի գահընկեցությունից հետո պարսկական Հայաստանը հայտարարվել է Սասանյան դինաստիայի դաստակերտ (դինաստիական սեփականություն) և արքայից արքայի ժառանգական «գոմեն»։ Այդ էր պատճառը, որ 261—293 թթ. ընթացքում՝ 32 տարի անընդմեջ, պարսկական Հայաստանում «Հայաստանի մեծ թագավոր» տիտղոսով թագավորում են Որմիզդ-Արտաշիրը (261—272)[36], նրա որդի Որմիզդակը (273—276) և Ներսեհը (276—293)։ Škz-ի արձանագրության մեջ Որմիզդ-Արտաշիրը և նրա եղբայր Ներսեհը հիշատակված են Սասանյան դինաստիայի «Խոսրով» պատվանունը կրող այն անձնավորությունների շարքում, որոնց համար Շապուհ Ա-ն հիմնադրել էր անվանական տաճարներ («Հրատն» կամ «Հուր», «Կրակ»)։ Այդպիսով Տիզբոնի արքունիքն իրագործում էր իր վաղեմի քաղաքական ծրագիրը՝ Հայաստանում հաստատել Սասանյան դինաստիայի ժառանգական իշխանությունը։ Ինչպես առաջ Մեծ Հայքը պարթև Արշակունիների արքայատոհմի երկրորդ թագավորությունն էր համարվում, այժմ էլ այդ նույն դերը վերականգնվում էր, սակայն իբրև Սասանյան դինաստիայի երկրորդ թագավորություն։

ŠKZ-ն փորագրվել է Վալերիանոս կայսեր գերեվարումից հետո՝ 262 թ., որտեղ իբրև «Արմենիայի մեծ թագավոր»[37] հիշատակվում է Շապուհ Ա-ի ավագ որդին՝ թագաժառանգ Որմիզդ-Արտաշիրը։ Շապուհ Ա-ն Վալերիանոս կայսեր գերեվարումից հետո, ի նշանավորումն փայլուն հաղթանակի, մեծ նվիրաբերություններ է անում կրոնական հաստատություններին և հիմնում մի շարք տա-

---

33 Ճիշտ է Լեոն, գտնելով, որ Տրդատին տարել են Հռոմ և դաստիարակել, սակայն նրան չի նույնացնում Տրդատ Գ-ի հետ, որին նա վերագրում է Տրդատ Բ-ի հետ կատարված անցքերը (տե՛ս Լեո, Հայոց պատմություն, հ. Ա, Թիֆլիս, 1917, էջ 538—540)։

34 Հայ մատենագիրների մոտ հիշատակվում է «Գաղղիանոս» ձևով։

35 Ագաթանգեղոսի տեքստում Կապադովկիայի տարբերակն առաջ է եկել նշված «Լոմս Լիկիանէսի» անվան առնչությամբ։ Սրա հետ Տրդատը որոշ կապեր ունեցել է, երբ արդեն ինքը Հայոց թագավոր էր (*B. MacDermot*, The Conversion of Armenia in 294 A. D., Rearm' nouvelle serie, t. YII. Paris, 1970, այնուհետև *MacDermot*, էջ 321—323)։

36 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Նախշ-ի Ռուստեմի «Քաաբա-ի Զարդուշտ»-ի հուշարձանի արձանագրության վկայությունները Հայաստանի մասին, ՊԲՀ, 1966, № 2, էջ 63—68։ Եթե Արտավազդ Ե-ն գահընկեց է արվել և 261—262 թթ. միջև Հայաստանի թագավոր է նշանակվել Որմիզդ-Արտաշիրը, որը Trebellius Pollion-ի մոտ հիշատակվում է «Օրմազդէս» անունով, ապա անհիմն է Հ. Պերպերյանի ենթադրությունը, թե «Արտավազդ» անունը կարող է ձեռագրական վրիպակ լինել «Որմազդես» անվան (տե՛ս «Ջվարթնոց», II, 1944, էջ 167—173)։

37 Հմմտ. հայ մատենագրությունից հայտնի «Թագաւոր Հայոց Մեծաց» կամ «արքայ Հայոց Մեծաց» տիտղոսի հետ (տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյցի», էջ 66)։

ճար-ատրուշաններ՝ իր և իր ընտանիքի անդամների հավիրժացման համար։ ŠKZ-ում այդ ընդարձակ թվարկումների շարքում նշված է, որ հիմնվել է «մեկ ատրուշան, որ անվանվում է «Խոսրո-Որմիզդ-Արտաքսեր», ի հիշատակ և ի պահպանումն անվան Որմիզդ-Արտաքսիրի՝ մեծ թագավորի Արմենիայի, մեր որդու...»[38]։

ŠKZ-ի այս տվյալների լույսի ներքո նոր իմաստ են ստանում Մովսես Խորենացու երկի հետևյալ տողերը, որոնց աղբյուրն է Փերմելիանոս պատմագրի երկը։ Խորենացին, գրելով գոթերի հարձակման պատճառով հռոմեական զորքերի (Վալերիանոսի գլխավորությամբ) դեպի Հայաստան չկայացած արշավանքի մասին, շարունակում է. «Այս պատճառով Արտաշիրը համարձակաբար արշավեց մեր երկիրը և հունաց զորքերը փախցրեց և մեր երկրի մեծագույն մասը գրավելով, ավերակ դարձրեց»[39]։

Այս ժամանակաշրջանում պետք է տեղի ունենար նաև Վրաց և Աղվանից թագավորությունների ենթարկումը Սասանյան Իրանին[40]։ Վրացական ավանդական պատմությունը XI դարի պատմիչ Լեոնտի Մրովելու շարադրությամբ, հենվում է հիմնականում Ագաթանգեղոսի երկի վրա և Վրաց թագավորության ենթարկումը Սասանյաններին կապում է Հայոց Խոսրով թագավորի սպանության հետ[41]։

Ուսումնասիրողները գտնում են, որ Վրաց թագավորությունը Սասանյան Իրանին է ենթարկվել 253—255 թթ.[42], երբ Հայաստանի պարսկական մասում թագավոր էր Արտավազդ Ե-ն, իսկ Վիրքում՝ ավանդական Ասպագուրը կամ Ասփագուրը, որոնք երկուսն էլ գահընկեց են արվել Վալերիանոսի գերությունից

---

[38] ŠKZ, էջ 40—42, 48, 50։ Հայտնի են Որմիզդ-Արտաշիրի և Ներսեհի թողարկած սասանյան դրամները։ Արքայից արքայի գահը գրավելուց հետո էլ Որմիզդ Արտաշիրն իր թողարկած դրամների վրա շարունակում է կոչվել «Հայաստանի մեծ թագավոր»։ Միայն 273 թ. մարտ ամսից հետո, երբ տեղի ունեցան նրա թագադրության պաշտոնական արարողությունները, նոր թողարկած դրամների վրա արդեն նշված է շահնշահի լրիվ տիտղոսը, բայց մնում է գահաժառանգի նշանը, իբրև ապացույց գահակալման օրինականության։ Որմիզդ-Արտաշիրի թողարկած դրամների նման են Ներսեհի դրամները, բայց նշանակալից է, որ նրա դրամի վրա իր կերպարը ներկայացված է Վառահրան (Վռամ) Բ-ի (276—293) թագը գլխին։ Այս նշանակում է, որ Ներսեհն իրեն էր համարում Իրանի արքայից արքա՝ շահնշահ։ Ներսեհի դրամների վրա ներկայացված է նաև իր կինը, որն իր քույրն էր՝ Շապուհդուխտը, «Թագուհի Հայոց» տիտղոսով (276—293)։ Տե՛ս В. Г. Луконин, նշվ. աշխ., էջ 101, 180, 198։

[39] Խորենացի, Բ, հզ (աշխ. թարգմ., էջ 211—212)։ Այստեղ հիշատակվող Արտաշիրը Խորենացու կողմից ներկայացված է իբրև Վալերիանոսի և նրանից հետո թագավորած հռոմեական կայսրերի (Կլավդիոս Բ՝ 268—270 թթ., Ավրելիանոս՝ 270—275 թթ. և այլոց) ժամանակակից, հետևաբար նա չի կարող լինել Սասանյան դինաստիայի առաջին տիրակալը՝ Արտաշիր Ա Փափականը (227—243)։ Ուստի այս Արտաշիրը, Շապուհ Ա-ի որդի Որմիզդն է, որին պատմահայրը հիշատակում է դինաստիական «Արտաշիր» անունով։

[40] ŠKZ-ում ըստ պարթևական և հունական տեքստերի Հայաստանի հետ հիշատակված են նաև այդ երկրները. Արմենիա—Ἀρμενία, Վարզան—Ἰβηρία, Սիկան—Μαχελονία, Արդան—Ἀλβανία և Բալասական (այն հունարեն բնագրում չի հիշատակված), մինչև Պաշ-կոհ (Կովկասյան լեռները) և դռունք Ալանաց (E. Honigmann et A. Maricq, նշվ. աշխ., էջ 88), որ Դարիալի կիրճն է։

[41] ლეონტი მროველი, ცხოვრება ქართველთა მეფეთა (ქ. ც. I), էջ 59—64։

[42] Տե՛ս ნოდარ ლომოური, ნარკვევები ქართლის (იბერიის) სამეფოს ისტორიიდან, თბილისი, 1975. էջ 40—41 (ռուսերեն ամփոփումը՝ Н. Ломоури, Очерки из истории Картлийского (Иберийского) царства в III- начале IV вв. н. э. Тбилиси, 1975, с. 98).

հետո՝ 261 թ.։ Սրանց փոխարեն դահ բարձրացան Հայաստանում՝ Խոսրով-Որմիզդ-Արտաշիր Սասանյանը, Վիրքում՝ Համազասպ «Խոսրովյանը»[43]։

Հայաստանում Որմիզդ-Արտաշիրը ձգտել է իր գահակալումը նշանավորել այնպիսի միջոցառումներով, որոնք պետք է երկիրն ավելի սերտորեն կապեին Իրանի հետ։ Երկրում Սասանյանները փորձել են վերացնել այն ամենը, ինչ կապ ուներ հայ Արշակունիների հետ։ Որմիզդ-Արտաշիրի գահակալության սկիզբը Հայաստանում նշանավորվեց նրանով, որ Հայաստանի Ատրպատականին և բուն Իրանին հարևան նահանգ Նոշիրականում, Զարեհավան քաղաքի (այժմ՝ Քյոհնաշահր) արևմտյան արվարձանում՝ Սաղամասում (այժմ՝ Սալմաստ) նա քանդակել է տալիս ինվեստիտուրայի (թագավորական նշանների հանձնում) տեսարան, որտեղ ներկայացված են երկու ձիավոր՝ սասանյան արքաների նշաններով։ Սրանցից Շապուհ Ա-ն Հայաստանի թագը հանձնում է Որմիզդ-Արտաշիրին։ Այս վիմաքանդակը գոյություն ունի նաև այսօր[44]։

ŠKZ-. վերոհիշյալ վկայությունները լույս են սփռում Մովսես Խորենացու «Հայոց պատմության» երկրորդ գրքի 76-րդ գլխի վրա։ Այժմ, երբ պարզվում է Մովսես Խորենացու ներկայացրած Արտաշիրի նույնությունը ŠKZ-ի Որմիզդ-Արտաշիրի հետ, հասկանալի է դառնում նրա «Հայոց պատմության» երկրորդ գրքի ՀԷ գլուխը, որ վերնագրված է «Յաղագս խաղաղութեան Պարսից եւ Յունաց, եւ շինելոյ Արտաշրի զՀայս յամս անիշխանութեան»։ Այս գլխում Արտաշիրը ներկայացված է իբրև երկրի շինարար, որը ձգտում է ընդհանուր լեզու գտնել նախարարների հետ և այդ եղանակով նախադրյալներ ստեղծել Հայաստանի պարսկացման համար։ Մովսես Խորենացին, անդրադառնալով այդ հարցին, հաղորդում է. «Իսկ Արտաշիրը գեղեցիկ կարգավորում է Հայաստանը, վերականգնում է նախկին կարգերը»[45]։

Որմիզդ-Արտաշիրի միջոցառումներից գլխավորն էր հաշտարար քաղաքականությունը ֆեոդալականացող հայ ավագանու՝ նախարարների հանդեպ: Հռոմեական Հայաստան և այլ կողմեր գաղթած, ինչպես նաև անմատույց ամրություններում փակված հայ նախարարներին Որմիզդ-Արտաշիրը ներում է շնորհում և մոտեցնում իրեն։ Պատմագրի ասելով «Արտաշիրը սիրաշահեց նախարարական տոհմերը, գաղթածներին ետ դարձրեց, ամուր տեղեր ապավինածներին ներքև իջեցրեց»[46]։ Առանձնապես ծանր էր այն նախարարական տոհմերի վիճակը, որոնք «Խոսրով»-Տրդատ Բ-ի հետ պարսկական Հայաստանից գնացել էին հռոմեական Հայաստան՝ լքելով իրենց ժառանգական գավառները։ Այժմ տարիներ էին անցել, և Որմիզդ-Արտաշիրը խոստանում էր անհիշաչարություն վերադարձողներին, օտարության մեջ գտնվող նախարարները հերթով պիտի վերադառնային։ Սրանց թվում էր նաև Արտավազդ Մանդակունին, որը ժառանգական տեր էր պարսկական Հայաստանում գտնվող Արշամունիք ընդարձակ գավառի։ Որմիզդ-Արտաշիրը նենգորեն վարվեց նրա և նրա տոհմա-

---

[43] *E. Honigmann et A. Maricq*, նշվ. աշխ., էջ 17։ Տե՛ս *В. Ф. Минорский*, Келяшин Стела у Топузава и древнейшие памятники вблизи Урмийского озера. Записки Вост. Отд. Имп. Русск. Арх. Общ. Т. XXIX, 1916, с. 145—193. Таблица VII. Сасанидский рельеф на горе Пир-чауш в Салмасе.

[44] Տե՛ս նաև *M.—L. Chaumont*, Recherches sur l'histoire d'Arménie, 173—175.

[45] Խորենացի, Բ, ՀԷ, էջ 215 (աշխ. թարգմ., էջ 211)։

[46] Նույն տեղում։

կիցների հետ։ Խորենացին գրում է, որ Արտաշիրը լսել էր, թե հայ նախարարներից մեկը «Խոսրովի որդիներից մեկին առնելով փախցրել, ազատել է՝ կայսեր դուռը հասցնելով։ Եվ քննելով, թե ո՞վ է այդ մարդը, իմացավ, որ Արտավազդն է՝ Մանդակունիների ցեղից. ուստի հրամայեց նրա բոլոր ցեղը կոտորել, ոչնչացնել։ Որովհետև երբ հայերն Արտաշիրից (խուսափելով) գաղթեցին, Մանդակունիները ևս մյուս նախարարական տոհմերի հետ գաղթեցին, իսկ երբ Արտաշիրը մյուսներին սիրաշահեց, նրանք էլ ետ դարձան և բոլորը սրով կոտորվեցին»[47]։ Շատ հավանական է, որ Արտավազդ Մանդակունին մեղադրվել էր պետական դավաճանության մեջ և իբրև կողմնակից հայ Արշակունիների ժառանգական իրավունքների՝ ենթարկվել էր մահապատժի և նրա հետ միասին բնաջնջվել էր նաև Մանդակունյաց նախարարական ողջ տոհմը։

Որմիզդ-Արտաշիրի միջոցառումներից հարկ է հիշատակել հանդուրժողական քաղաքականությունը ոստանիկների հանդեպ։ Ինչպես հաղորդում է Խորենացին, այն Արշակունիներին, որոնք զրկված էին թագից և Այրարատում բնակվելու իրավունքից, նա հաստատում է նույն տեղերում՝ նշանակելով եկամուտներ ու ռոճիկ[48]։

Որմիզդ-Արտաշիրի տնտեսական միջոցառումներից էր հարկային քաղաքականության կարգավորումը։ Այդ նպատակով անց է կացվում աշխարհագիր, համաձայն երկրի վարչական բաժանման և, դրանով իսկ, ինչպես նշում է Խորենացին, նա երկիրը հարկատու է դարձնում[49]։ Աշխարհագրի հետ կապված էր նոր հողաբաժանումը և կալվածատիրական սահմանների վերանայումն ու կարգավորումը։ Որմիզդ-Արտաշիրը վերացնում է Արտաշեսյանների ժամանակներից եկող «Արտաշիսական» կոչվող հին սահմանաքարերը և նրանց փոխարեն կանգնեցնել տալիս նորերը։ Սրանք Սասանյանների դինաստիական անունով կոչվում են «Արտաշիրական»։ Մովսես Խորենացու վկայությամբ Արտաշիրը «Արտաշեսի հաստատած սահմանները նորոգեց, գետնի մեջ քարեր կանգնեցնելով, և իր անունով կոչեց Արտաշիրական»[50]։ Հայ Արշակունիներն իրենց համարում էին Արտաշեսյանների ժառանգներ, ուստի նրանց իշխանության ժամանակաշրջանում ևս սահմանաքարերը շարունակում էին կոչվել «Արտաշիսական», իսկ Սասանյանները Հայաստանում հանդես էին գալիս իբրև նոր դինաստիայի ներկայացուցիչներ, այն էլ օտարերկրյա։

Որմիզդ-Արտաշիրը կրոնի և գաղափարախոսության բնագավառում ևս փորձել էր նորամուծություններ անել։ Պատմագրի ասելով, Արտաշիրը «մեհյանների պաշտամունքն ավելի է զարգացնում, այլև հրամայում է անշեջ պահել որմիզդական հուրը Բագավանի բագինի վրա»[51]։ Այս տեղեկության մեջ ուշագրավ է այն փաստը, որ «Հայաստանի մեծ թագավոր» Որմիզդ-Արտաշիրի անվանական կրակը՝ «հուրն Որմզդական», գտնվում էր Բագրևանդ գավառի Բագավան ավանում, Նպատ սրբազան լեռան փեշերին։ Հարկ է հիշել, որ Բագավանը «հովոց տեղիքն» էր, այսինքն՝ հայկական արքունիքի ամառանոցը, որտեղ օգոստոս ամսին տեղի էին ունենում Ամանորի (Նոր տարվա) նավա-

---

47 Խորենացի, Բ, հը (աշխ. թարգմ., էջ 212, բերվում է ուղղումներով)։

48 Նույն տեղում, Բ, հէ։

49 Նույն տեղում։

50 Նույն տեղում։

51 Նույն տեղում։

*սարդյան հանդեսները։ Այդ ժամանակ այստեղ հրավիրվում էր Հայկական պետության համաժողովրդական խորհրդակցական մարմինը՝ Աշխարհաժողովը։ Վերջինս վաղուց արդեն կորցրել էր իր համաժողովրդական բնույթը, դառնալով տիրող վերնախավի խորհրդակցական մարմին։*

*Որպեսզի հասկանալի դառնա Որմիզդ-Արտաշիրի քաղաքականությունը կրոնի և գաղափարախոսության բնագավառում, հիշենք, որ այս այն ժամանակն էր, երբ Սասանյանների արքունիքում գործում էին կրոնական երկու նշանավոր գործիչներ՝ Կարտիրը (275—293) և Մանին (215—276)։ Վերջինս հիմնադիր է «տիեզերական կրոնի»՝ մանիքեականության. սակայն նա հալածվեց Կարտիրի և նրան հովանավորող Շապուհ Ա-ի ու Հորմիզդ Ա-ի (նույն Որմիզդ-Արտաշիրն է) կողմից։ Քուրմ-մոգպետ Կարտիրի ջանքերով ձևավորվող զրադաշտականությունը հայտարարվեց Երանշահրի պետական կրոն և սկսվեց դրա բռնի տարածումը ինչպես Իրանում, նույնպես և նվաճված ու նվաճվող բոլոր երկրներում։*

*Հայաստանում ևս տարվում է հատուկ քաղաքականություն, որի նպատակն էր արմատավորել զրադաշտականությունը։ Խորենացու մոտ հիշատակված «Հուրն Որմզդական» այն անվանական կրակ-տաճարն («Հրատն») էր, որտեղից պետք է երկրում տարածվեր զրադաշտականությունն իր բոլոր հետևանքներով։ Այս նպատակն էր հետապնդում նաև Արտաշեսյանների և հայ Արշակունիների ստեղծագործած թագավորների՝ տաճարներում դրված արձանների ոչնչացումը ու հայկական հեթանոսական-հելլենիստական պանթեոնի մերժումը երկրում։ Ինչպես հաղորդում է Խորենացին, «Բայց այն արձանները, որ Վաղարշակը շինել տվեց իր նախնիների պատկերներով, ինչպես և արեգակի ու լուսնի պատկերներն Արմավիրում, որոնք Արմավիրից փոխադրվեցին Բագարան և նորից Արտաշատ, Արտաշիրը հրամայում է փշրել»[52]։ Այստեղից երևում է, որ Որմիզդ-Արտաշիրը ձգտում էր վերացնել Հայաստանում գերիշխող սինկրետիկ հայկական հելլենիստական պանթեոնը և երկրում ներմուծել զրադաշտականությունը, որը Սասանյան Իրանում վերջնականապես ձևավորվել էր իբրև պետական կրոն և մեծ հեղինակություն էր վայելում պարսկական արքունիքում։ Սակայն հելլենականությունը Հայաստանում այնքան խոր արմատներ էր ձգել, որ III դարում Սասանյանների այդ քաղաքականությունը միայն արագացրեց քրիստոնեական կրոնի թափանցումն ու տարածումը երկրում։ Ինչպես ասորական աղբյուրներն են վկայում, այդ ժամանակաշրջանում, Մեծ Հայքի թագավորությանը հարևան Միջագետքի ասորաբնակ միջավայրում արդեն քանից ավելի եպիսկոպոսական աթոռներ էին հիմնվել[53]։ Մի իրողություն, որը հաստատում էր, թե քրիստոնեությունը նշանակալից հաջողությունների էր հասել և ավելի լայնորեն էր տարածվել, անշուշտ, ոչ թե պարսիկների, այլ պարսիկներին հակադրվող, մանավանդ, պարսկական լծից տառապող, հատկապես պարսից արքայից արքաների կողմից Պարսկաստան բռնագաղթած ժողովուրդների՝ ասորիների, հայերի, հույների, հրեաների ու այլոց շրջաններում։ Հասկանալի է, որ Հայաստանը հակասասանյան իր քաղաքականությամբ ու դիրքորոշմամբ ամենահարմար միջավայրն էր նման քարոզչական աշխատանքների ծավալման համար։ Այդ է պատճառը, որ Հայաստանի*

52 *Նույն տեղում։*

53 Հ. Մելքոնյան, *Ասորական աղբյուրները, Ա, Երևան, 1976, էջ 83—84։*

քաղաքներում, որոնք այս ժամանակաշրջանում տիպիկ հելլենիստական քաղաքային համայնքների բնույթ ունեին, արդեն առաջացել էին քրիստոնեական-գնոստիկյան համայնքները և պարարտ հող կար քրիստոնեությունը դարձնելու գերիշխող կրոն։ Խորենացու վերոհիշյալ վկայությունը հետաքրքրական է նաև այն առումով, որ կռապաշտությունը և կուռքերը սկսել էին վերացվել Հայաստանում Որմիզդ-Արտաշիրի գործակալների ակտիվ մասնակցությամբ՝ դեռևս քրիստոնեական կրոնի հաստատումից առաջ։

Որմիզդ-Արտաշիրի և նրա հաջորդների կրոնագաղափարական քաղաքականության նպատակն էր արմատախիլ անել Հայաստանում հաստատված հելլենիստական մշակույթը, որը դարերի ընթացքում մերվել էր տեղական հայկական հնավանդ սովորություններին ու կենցաղին։ Սասանյանների հակահելլենիստական քաղաքականությունը Հայաստանում ավելի խորացրեց գաղափարական այն ճգնաժամը, որ համակել էր ողջ Հռոմեական կայսրության ազգաբնակչությանը և տարածվել Առաջավոր Ասիայի երկրներում։ Ստեղծված պայմաններում քրիստոնեական կրոնի քարոզիչների գործունեությունն ավելի պարարտ հող գտավ Մեծ Հայքում։ Հայկական ֆեոդալականացող ավագանին չէր կարող համակրել արդեն որպես պետական կրոն ձևավորված վերստին աշխուժացող իրանական զրադաշտականությունը, իր չարի և բարու դուալիստական ըմբռնումներով, որը խորթ ու օտար էր հայերին։ Ստեղծված պայմաններում նաև քրիստոնեությունն էր, որ գաղափարական զորեղ զենք կարող էր դառնալ երկրի ինքնուրույնությունը կորցնելու վտանգից պահպանելու գործում[54]։ Հետագա դեպքերը ցույց տվին, որ պետական կրոն հռչակված իրանական զրադաշտականությունը հող չգտավ Հայաստանում, չնայած նրան, որ զարմանալի զուգահեռներ են նկատվում Կարտիրի և Գրիգոր Լուսավորչի քարոզչական գործունեության մեջ, նույնիսկ առանձին մանրուքներում։

## 4. ՊԱԼՄԻՐԱՅԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԴԵՐԸ ՊԱՐՍԿԱՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ ԵՎ ՀՌՈՄԵԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ

Հռոմից և Եգիպտոսի Ալեքսանդրիայից հետո Անտիոքը հին աշխարհի երրորդ մեծ քաղաքն էր։ Վալերիանոսին գերելուց հետո պարսիկները տիրեցին այս քաղաքին և այնուհետև սփռվեցին ու հաստատվեցին Ասորիքում, Կապադովկիայում, Փոքր Հայքում և Կիլիկիայում[55]։ Հռոմեական Արևելքի նվաճված երկրներից դեպի Սասանյան Իրանի խորքերը քշվեց բազմահազար ազգաբնակչություն, որի ձեռքով այնտեղ հիմնվեց մի քանի քաղաք։

Սակայն շուտով ուժերի հարաբերակցությունը փոխվեց՝ հօգուտ հռոմեացիների։ Պաշարված Եդեսիան շարունակում էր մաքառել թշնամու դեմ, իսկ հերոսաբար պաշտպանվող Կեսարիան թշնամուն անցավ միայն դավաճանության հետևանքով։ Պարսկական զորամասերը, տիրելով ընդարձակ տարածքի, ակամայից բաժան-բաժան էին լինում, ցրվում էին, ուստի հակառակորդի զորախմբերը հանկարծական հարձակումներով առանձին-առանձին ոչնչացնում էին նրանց։ Պրետորիաների պրեֆեկտ Բալլիստան հավաքել էր ծովափի

---

54 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Նախշ-ի Ռուստեմի «Քաաբա-ի Զարդուշտ» հուշարձանի արձանագրության վկայությունները Հայաստանի մասին, ՊԲՀ 1966, 2 (33), էջ 68։

55 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 94, В. Г. Луконин, նշվ. աշխ., էջ 81, 87։

նավահանգիստներում գտնվող նավերը և հարձակում գործել Պոմպեուպոլիսի վրա[56] (261)։ Պարսկական զորքից կոտորվում է մի քանի հազար մարդ և Բալլիստայի ձեռքն է ընկնում արքայից արքայի կանանոցը՝ նրա կանայք ու երեխաները։ Շապուհ Ա-ն խուճապի մատնված փութով նահանջում, անգամ եդեսացիներից գնում է նրանց երկրով ազատ անցնելու իրավունքը՝ տալով թալանած ամբողջ ոսկին[57]։

Ահա այս խուճապահար նահանջող պարսկական բանակը Եփրատ գետն անցնելիս ենթարկվեց Պալմիրայի տիրակալ Սեպտիմիոս Օդենատոս (Օտայնաթ) II-ի հարձակմանը։ Վերջինս խլեց ամբողջ ավարն ու գերիներին։ Շապուհ Ա-ն իր զորքերի մնացորդներով հազիվ հասավ իր պետության սահմանները[58]. Սակայն Հռոմի վիճակն էլ բարվոք չէր։

Լիկինիոս Գաղլիանոս կայսրը (որը Վալերիանոսի որդին էր) Արևմուտքում զբաղված էր «բարբարոսների» և հատկապես գոթերի հարձակումների այս ու այնտեղ բռնկվող զինվորական ապստամբությունների դեմ պայքարելով։ Օդենատոս II-ը միակ տիրակալն էր, որ Արևելքում պահպանել էր հավատարմությունը կայսրության հանդեպ։ Ստեղծված պայմաններում աննախընթաց մեծացավ Պալմիրա-Թադմոր քաղաք-պետության դերը։ Ճիշտ է, Օդենատոսն սկզբնական շրջանում գաղտնի բանակցություններ էր վարում Շապուհ Ա-ի հետ, սակայն վերջինս այնպիսի պայմաններ էր առաջադրել, որ Օդենատոսը գերադասել էր պահպանել իր բարեկամությունը Հռոմի հետ[59]։ Գիտակցելով կայսրության համար Արևելքում ստեղծված բարդ վիճակը, Գաղլիանոսն Օդենատոսին ճանաչեց որպես ժառանգական կառավարիչ, տալով «Պալմիրայի թագավոր», «իմպերատոր» և «վերականգնող Արևելքի» (Corrector totius Orientis) ապա «Արևելքի Օգոստոս» տիտղոսները։ Օժտված լինելով արտակարգ լիազորություններով, նա հանդիսանում էր կայսրության ռազմական ուժերի գերագույն հրամանատարը և զորավարն Արևելքում[60]։ Գաղլիանոսի կենսագիրը հաղորդում է, որ Օդենատոսի իշխանությունը տարածվում էր ամբողջ հռոմեական Արևելքի (Ասորիք, Արաբիա, Պաղեստին և Կիլիկիա), ներառյալ և Եգիպտոսի վրա[61]։

Իր ձեռքը վերցնելով կայսրության ողջ իշխանությունը հռոմեական Արևելքում, կայսերական բանակի մնացորդների ու տեղական ռազմական ջոկատների ուժերով Օդենատոսը կարողանում է կարճ ժամանակում վերականգնել Հռոմի գերիշխանությունն Արևելքում։ Գործելով Հռոմի անունից, Օդենատոսը 262—264 թվականներին շարունակեց պատերազմը պարսիկների դեմ և կարողացավ Եդեսիան ազատել պաշարումից, ինչպես նաև խլել նրանց նվաճած Մծբինն ու Խառանը[62]։ Ահա այստեղից նա պիտի անցներ Տիգրիս գետը

---

56 Հ. Մանանդյան, նույն տեղում։

57 *В. Г. Луконин*, նշվ. աշխ., էջ 81, 87։

57 *Т. Моммвен*, История Рима, т. V, с. 388—392.

59 *И. Ш. Шифман*, История и культура Пальмиры в книге: *И. Ш. Шифман*, Пальмирский пошлинный тариф. М., 1980, с. 24—25.

60 Նույն տեղում, տե՛ս նաև *И. А. Стучковский*, Пальмира. «Вопросы истории», 1970, № 2.

61 *Т. Момлзен*, նշվ. աշխ., էջ 389—390։

62 Նույն տեղում, էջ 391։ Տե՛ս նաև՝ *И. Ш. Шифман*,, նշվ. աշխ., էջ 24։

և մտնելով հռոմեական Հայաստան, ստիպեր պարսիկներին հեռանալ երկրի այդ մասից։

Այդ հաղթանակներից ոգեշնչված Օդենատոսն այնքան վստահ էր իր ուժերին, որ Գորդիանոս Գ-ից (238—244) հետո առաջին անգամ հռոմեական բանակը կրկնեց արշավանքը Սասանյանների մայրաքաղաք Տիզբոնի վրա։ Երբ նա ասպատակում էր Տիզբոնի մատույցները, լուր է հասնում, որ գոթերը հարձակվել են Փոքր Ասիայի վրա, ուստի նա շտապում է Կապադովկիա։ Այդ ստիպում է գոթերին շտապ թողնել և հեռանալ։

Հռոմեական կայսրության համար ստեղծված պայմաններում, երբ այն կորցնում էր իր միասնությունը[63], Օդենատոսը հրապուրվելու էր հռոմեական Արևելքի միահեծան տեր դառնալու հեռանկարով։ Սակայն Հռոմի գաղտնի մեքենան գործում էր և Էմեսայում սպանվում է Օդենատոսը, իսկ հեռավոր Գաղղիայում զինվորական ապստամբության ղեկավար Պոստումը։ Այս սպանություններով կայսրության ամբողջականությանն սպառնացող ուժերը չէին վերանում։ Հռոմեական պետության միասնության խախտման պատճառներն ավելի խորն էին և արտահայտությունն էին այն ճգնաժամի, որ համակել էր Հռոմի ստրկատիրական հասարակարգը՝ սկսած Կոմմոդոս կայսեր սպանությունից (193) մինչև Դիոկղետիանոսի գահակալումը (284)։

Օդենատոսին հաջորդեց նրա անչափահաս որդին՝ Վահբալլաթ-Աթենադորոսը (266/7—273), սակայն իբրև միահեծան իշխան և տեր հռոմեական Արևելքի ղեկավարությունն իր ձեռքը վերցրեց նրա մայր Զենոբիան։

Սկզբնական շրջանում Զենոբիան արտաքուստ պահպանում էր իր հավատարմությունը Հռոմի հանդեպ, որը նրան շնորհեց «Օգոստոսուհի» (Augusta) տիտղոսը։ Սակայն հաղթանակեցին անջատողական ձգտումները։ Զենոբիայի արքունիքում օրեցօր ուժեղանում էր հակահռոմեական՝ պարսկասեր կուսակցությունը։ Պալմիրայի ծերակույտը ստիպում է Զենոբիային խզել իր կապերը Հռոմից և դաշինք կնքել պարսիկների հետ, որից հետո նա նոր նվաճումներ կատարեց՝ զրկելով Հռոմին Փոքր Ասիայից, Եգիպտոսից և գրեթե բոլոր արևելյան պրովինցիաներից։

Ստեղծվել էր այնպիսի իրավիճակ, որ միաժամանակ Պալմիրան տեր ու տնօրեն էր Արևելքում։ «Արևելքի թագուհի» Զենոբիան գլխավորում էր իր շուրջը համախմբված հակահռոմեական ուժերը։ Այս ժամանակաշրջանում Հայաստանի արևմտյան մասին տակավին տիրում էին հռոմեացիները և, ինչպես այս, նույնպես Իրանին ենթակա մասերի հայկական զորամասերը պիտի պայքարեին կայսրության դեմ։ Այդ վիճակը նկատի ունի Տրեբելլիոս Պոլլիոնը, խոսելով Զենոբիայի հանդեպ հայերի տածած ակնածանքի մասին[64]։ Մեզ հասել է նոր կայսր հռչակված Ավրելիանոսին (270—275) Զենոբիայի գրած պատասխան նամակը, որտեղ հատկապես շեշտված էր, որ «մեր կողմն են սարակինոսները, մեզ կողմնակից են հայերը»[65]։

Ինչպես երևում է, հռոմեական Հայաստանի վիճակը նույնը չի եղել Օդենատոսի և Զենոբիայի օրոք։ Օդենատոսի ժամանակ այն պիտի նվաճված և

---

63 Պոստումի (258—268) գլխավորությամբ Գաղղիայից, Բրիտանիայից և Սպանիայից ստեղծվել էր մի նոր՝ Գաղղիական կայսրություն։

64 *Trebellius Pollio*. Triginta tyranni, 30. տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 96։

65 *Flavius Vopiscus*, Aurelianus, 27, տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 97։

ներառված լիներ կայսրության կազմում, իսկ Զենոբիայի ժամանակ Փոքր Ասիայի հետ միասին հռոմեական Հայաստանը պիտի ճանաչեր Զենոբիայի իշխանությունը։ Ստեղծված վիճակը շտապեցրեց կայսրությանը զբաղվելու Տրդատին Հայաստանի թագավոր հռչակելու հարցով[66]։

Գահ բարձրանալուց հետո Ավրելիանոսը հրաժարվեց ճանաչել Պալմիրայի կառավարությունը։ Ի պատասխան դրա, «Օգոստոս» հռչակված Վահբալլաթի կողմնակիցները Զենոբիայի գլխավորությամբ վերջինիս կայսր (imperator) հռչակեցին։ Ավրելիանոսի զորավար Պրոբոսը 270 թ. վերջին ետ նվաճեց Եգիպտոսն իր Ալեքսանդրիա մայրաքաղաքով։ 271 թ. ամռանը Ավրելիանոսի բանակըն սկսում է իր արշավանքը[67]։ Այս փաստերի առնչությամբ հետաքրքրական է Փլավիոս Վոպիսկոսի տեղեկությունն այն մասին, որ այդ պատերազմում Զենոբիայի դեմ մղվող պատերազմում Ավրելիանոս կայսրը «բռնել էր այն օգնական ուժերը, որ ուղարկված էին պարսիկների կողմից, իսկ սարակինոսների և հայերի դաշնակից ջոկատները կաշառել էր, նաև իր կողմն էր անցկացրել կամ բռնությամբ, կամ հնարամտությամբ»[68]։ Բանակը հիմնականում բաղկացած էր Հռոմին ենթակա եվրոպական պրովինցիաների ռազմական կոնտինգենտներից։ Այդ արշավանքին, ըստ երևույթին, մասնակցում էր նաև Արևմուտքում գտնվող հայկական այրուձին՝ թագաժառանգ Տրդատի գլխավորությամբ։ Կիլիկիայի լեռնային անցքերը հյուսիսից հսկող Տիանա քաղաքի պաշարումից հետո կապադովկիական կայազորներն անցան հռոմեացիների կողմը։

Հայկական այն զորամասերը, որոնք Զենոբիայի կողմից օկուպացված հռոմեական Հայաստանից էին, նույնպես հեշտությամբ անցնում էին Ավրելիանոս կայսեր կողմը, որի բանակում էր այդ ժամանակ արդեն չափահաս Տրդատը[69]։

Ծերացած Շապուհ Ա-ն օգնություն է ուղարկում Զենոբիային, սակայն Պալմիրայի զորքերն Անտիոքի և Էմեսիայի ճակատամարտերում պարտություն են կրում[70]։ Զենոբիան և Վահբալլաթը փորձում են փախչել պարսիկների մոտ, սակայն գերի են ընկնում հռոմեացիների ձեռքը։ Պալմիրան գրավվում է 272 թ.։ Այժմ Ավրելիանոսի իշխանությունը տարածվում էր «Սիրիա» և «Միջագետքա» պրովինցիաների վրա։

Գերի տարված Զենոբիան պիտի զարդարեր Ավրելիանոսի հաղթահանդեսը Հռոմում։ Սակայն կայսրը Հռոմ չէր հասել, երբ ճանապարհին, Հելլեսպոնտոսը (Բոսֆորի նեղուցը) անցնելիս, լուր են հասցնում, որ պալմիրացիներն ապստամբելով, ոչնչացրել են հռոմեական կայազորը և իրենց իշխան են հռչակել ոմն Անտիոքոսի։ Միաժամանակ ապստամբներն ստիպում էին Միջագետքիա պրովինցիայի կառավարիչ Մարկելլինոսին՝ անջատվել Հռոմից։ Այդ 272 թ.

---

66 Գիտնականների մի մասը (Մոմզեն, Խալաթյանց, Գ. Ասլան, Սանտալաճեան և ուրիշներ) գտնում են, որ Հայաստանը վերստին ճանաչել էր Հռոմի գերիշխանությունը, իսկ Հ. Մանանդյանը հավանական է համարում այն կարծիքը, ըստ որի, այդ ժամանակ հայերը շարունակում էին մնալ պարսից գերիշխանության տակ (Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 95)։ Հետաքրքիր է նշել, որ ժամանակին Գուտշմիդը զարգացնում էր այն միտքը, որ Օդենատոսի հաղթանակներից հետո միայն կարող էր հարց դրվեր Տրդատի գահակալության մասին 271 թ. (K. Striften, III, էջ 302, 407)։ Նա չէր սխալվում, այդ տեղի ունեցավ քիչ ավելի ուշ՝ 274 թ.։

67 Տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 96։

68 *Flavius Vopiscus*, Aurelianus, 28 տե՛ս Հ. Մանանդյան, նույն տեղում։

69 Այս ժամանակ Տրդատը պիտի 18 տարեկան լիներ։

70 И. Ш. Шифман, նշվ. աշխ., էջ 26։

օգոստոսին էր։ Ավրելիանոս կայսրը վերադառնում և կրկին պաշարում է Պալմիրան։ Այս անգամ նա անողոք դատաստան է անում քաղաքի բնակչության հետ։ Հիմնահատակ քանդվեցին Պալմիրայի պարիսպները, ավերվեցին նրա վեհաշուք պալատները, իսկ հոյակերտ Արևի տաճարի հոյակապ զարդերը տարվեցին Հռոմ, որտեղ դրանք պիտի զարդարեին այս հաղթանակները հավերժացնող Արեգ աստծո տաճարը (273)[71]։

---

71 Т. Моммзен, նշվ. աշխ., էջ 394—396։ Զենոբիա թագուհին զարդարում էր Ավրելիանոսի հաղթահանդեսը Հռոմում։ Հ. Մանանդյանն ուշադրություն է դարձրել այն փաստի վրա, որ Ավրելիանոսի հաղթահանդեսին մասնակցած ժողովուրդների այն շարքում, որ անկախ էին Հռոմից, չեն հիշատակված հայերը (Vopiscus, Avrelianus, 33). տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 99։ Ինչպես նշում է Հ. Ասատուրյանը, այդ նշանակում էր «Հռոմ զանոնք իբր իրեն հովանավորյալները կը նկատեր» (տե՛ս «Քաղաքական վերաբերություններ, էջ 219)։

ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ III ԴԱՐԻ ՎԵՐՋԻՆ ՔԱՌՈՐԴՈՒՄ

## 1. ՏՐԴԱՏ Գ-Ի ԳԱՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՌՈՄԵԱԿԱՆ ՄԱՍՈՒՄ՝ ԱՎՐԵԼԻԱՆՈՍ, ՊՐՈԲՈՍ ԵՎ ՏԱԿԻՏՈՍ ԿԱՅՍՐԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ

272 թ. վերջին մեռնում է արքայից արքա Շապուհ Ա-ը։ Սասանյան գահին պաշտոնական գահաժառանգ է կարգվում «Հայաստանի մեծ թագավոր» Որմիզդ-Արտաշիրը (272—273)։ Իրանին ենթակա Հայաստանում նա իր փոխարեն թագավորեցնում է որդուն՝ Որմիզդակին[1], որը կոչվեց Շապուհ, այսինքն «արքայամանուկ»։ Նա «թագավորեց մեկ տարի, մինչև Տրդատի թագավորելը»[2]։

Հետաքրքրական են այն պարագաները, որոնք պայմանավորեցին Տրդատի առաջին գահակալումը։ Որմիզդ-Արտաշիրը «Էրան և Աներան արքայից արքայ էր ընդամենը մի քանի ամիս։ Նրա մահից հետո սասանյան արքունիքում ծայր են առնում գահակալական կռիվները, որոնք շարունակվում են գրեթե մինչև IV դարի սկզբները։ Ըստ երևույթին, Որմիզդ-Արտաշիրը չէր հասցրել իր որդուն՝ Որմիզդակին, հռչակել արքայից արքա, այսինքն՝ իր գահաժառանգը, իսկ այն փաստը, որ նա նշանակվել էր «Հայաստանի մեծ թագավոր», ուր նա իշխեց միայն երեք տարի (273—276), ինքնին արդեն հասկանալի է դարձնում, որ նա էր լինելու գահաժառանգը, սակայն Իրանի շահնշահը դառնալու ձգտումով «Հայաստանի մեծ թագավորի» գահը նրանից խլում է իր հորեղբայրը՝ Ներսեհը[3], որը մինչ այդ գրավում էր հնդկապարթևական քուշանների գահը, «Սակաստանի, Տուրեստանի և Հնդկաց մինչև ծովափ թագավոր» տիտղոսով[4]։ Ներսեհն իր եղբոր՝ արքայից արքա Որմիզդ-Արտաշիրի մահվանից հետո իրեն էր համարում Իրանի շահնշահի գահի օրինավոր ժառանգը, սակայն նա չեզո-

---

1 ŠKZ (հունարեն տեքստ), տող 48։ Այս Որմիզդակը հիշատակված է նաև «Քաաբա-ի Զարդուշտ»-ի արձանագրության մեջ իր հոր՝ «Արմենիայի մեծ թագավոր Որմիզդ Արտաքսարից» հետո («Հորմիզդակ որդվոյ թագաւորին Հայոց»)։

2 Խորենացի, Բ հէ (աշխ. թարգմ., էջ 212)։ Ենթադրվում է, որ Արտավազդից հետո Հայաստանում գահակալել է Տրդատ Մեծի հայրը՝ «Խոսրով Բ-ն» (272/3—287, տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 99)։ Սակայն նոր հետազոտությունները բոլորովին տեղ չեն թողնում կարծեցյալ Խոսրով Բ-ի համար։ Ինչպես պարզվեց, Տրդատ Գ Մեծի հայրն էր «Խոսրով Մեծը», որն օտար աղբյուրներում հայտնի է Տրդատ (Բ) անվամբ։ Սա, ինչպես նշվեց, սպանվել է 256 թ., թողնելով մանուկ Տրդատին։ Վերջինս Տրդատ Գ Մեծն է։

3 *В. Г. Луконин*, Культура сасанидского Ирана, с. 197.

4 Նույն տեղում, էջ 55։ Հայաստանի պարսկական մասի գահին եղած ժամանակ Ներսեհի իշխանությունը պարբերաբար տարածվում էր նաև պարսկական զորքերի կողմից գրավված Հայաստանի՝ Հռոմին ենթակա մասի վրա։

քացվում է, և Տիզբոնի արքունիքում հաղթող է դուրս գալիս նրա եղբայրներից մեկը՝ Վառահրան Ա-ն (Վահրամ, Վռամ 273—276)։

Լիկկիանոս Գաղղիանոս և Կլավդիոս կայսրերի արքունիքներում մեծացած և դաստիարակություն ստացած Տրդատն Ավրելիանոսի ժամանակ արդեն չափահաս էր։

Ըստ Խորենացու, Որմիզդակ-Շապուհը մեկ տարվա թագավոր էր Հայաստանում (իմա՝ պարսկական մասում), երբ գահակալեց Տրդատը։ Այսպիսով պարզվում է, որ 274 թ.[5] Տրդատն Ավրելիանոսի կողմից նշանակվել էր Հայաստանի՝ Հռոմին ենթակա մասի թագավոր, որտեղ նա իշխել էր մոտ երկու տարի (մինչև 276 թ.)։ Այս, Տրդատի առաջին գահակալումն էր[6]։

Ավրելիանոսի հաղթանակները մեծ հույսեր էին ներշնչում Սասանյան Իրանի դեմ պայքարող ժողովուրդներին։ Վոպիսկոսի հաղորդումներից երևում է, որ Հռոմում հիմնված Արեգ աստծո տաճարը մեծ համբավ էր վայելում Արևելքի ժողովուրդների մոտ, իսկ Արևի պաշտամունքը կապված էր Ավրելիանոսի անձի հետ։ Վոպիսկոսն ասում է, որ Ավրելիանոսին «սարակինոսները... իբերները, աղվանները, հայերը, նաև Հնդկաստանի ժողովուրդները, մեծարում էին գրեթե իբրև աստծու»[7], կարելի է ենթադրել, որ Տրդատը, Պալմիրայի նվաճման առթիվ Հռոմում տեղի ունեցած տոնախմբության ժամանակ Արեգ աստծո տաճարում, թագադրվել էր Ավրելիանոսի կողմից և ստացել «Հելիոս» անունը[8]։

Հետաքրքրական է, որ որոշ վերապահությամբ* ճշտվում է նաև Մ. Օրման-

---

5 Հմմտ. Մ. Օրմանյան Ազգապատում, մասն Ա, Կոստանդնուպոլիս, 1913, էջ 76։

6 Ըստ Խորենացու (Բ, ղբ), Տրդատ Գ Մեծը թագավորել է 56 տարի։ Եթե նա մահացել է 330 թ., նրա թագավորության առաջին տարին պիտի լինի՝ 274 թ.։

7 Flavius Vopiscus Aurelianus. Տե՛ս Հ. Մանանդյան, Նշվ. աշխ., էջ 98։

8 Գառնիի հունարեն արձանագրությունում, որը, ինչպես կարծում է Հ. Մանանդյանը, փորագրվել է 315—330 միջոցում, այսինքն՝ երբ Տրդատ Գ-ն ամբողջ Հայաստանի թագավորն էր, հիշատակված է ΗΛΙΟΣ ΤΙΡΙΔΑΤΗΣ (տե՛ս Հ. Մանանդյան, Գառնիի հունարեն արձանագրությունը և Գառնիի հեթանոսական տաճարի կառուցման ժամանակը, Երևան, 1946, էջ 13—16, տես և նրա՝ Քննական տեսություն հայ ժող. պատմ., հ. Բ, էջ 134)։ Խորենացին հիշատակում է այս հունարեն արձանագրությունը, խոսելով Գառնի ամրոցի և Տրդատի քրոջ՝ Խոսրովիդուխտի համար կառուցված «Տուն հովանոցի» շինության մասին (Բ, ղ)։ Զարմանք չպետք է պատճառի, որ տաճարի մասին խոսք չկա Խորենացու մոտ, քանի որ այն արդեն կառուցված է եղել I դարում )Tacitus Annales, XII 45). Պետք է կարծել, որ Տրդատ Գ-ն վերակառուցել է ամրոցը և պալատը։ Իսկ հին աշխարհում սովորական երևույթ էր նույնիսկ վերաշինված քաղաքները նոր հիմնադրված համարել։ Մ. Շոմոնը նույնպես արձանագրությունն իրավամբ վերագրում է Տրդատ Գ-ին, սակայն Ἥλιος-ի փոխարեն կարդում է Αὐρέλιος (*M. L. Chaumont*, Նշվ աշխ. էջ 94, ծան. 4), որը չի ճշտվում։ Հետազոտողների մի մասն էլ (Ստ. Լիսիցյան, Ա. Աբրահամյան, Վ. Տրևեր, Բ. Առաքելյան, Գ. Սարգսյան, Հ. Բարթիկյան, Ս. Կրկյաշարյան) կարծում է, որ արձանագրությունը փորագրվել է Տրդատ Ա-ի օրոք։ Տողերիս հեղինակը նույնպես այդ կարծիքին էր (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հ. I, Երևան, 1971, էջ 762)։ Սակայն այժմ նույնպես հավանական է համարում, որ Գառնիի արձանագրությունը փորագրվել է Տրդատ Գ-ի օրոք։ Ինչպես Հ. Մանանդյանը իրավամբ նշում է. «Խորենացին միանգամայն ճիշտ է որոշել, որ իր տեսած հունարեն արձանագրությունը, որ պարզապես այժմյան նորագյուտ արձանագրությունն է՝ պատկանում է Տրդատ Մեծի ժամանակին» (Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Բ—էջ 134)։

* Վերապահություն այն իմաստով, որ Մ. Օրմանյանը Տրդատի գահակալումը նշում է ամբողջ Հայաստանի, այլ ոչ թե դրա հռոմեական մասի վրա։

*յանի ենթադրությունը, որ 274 թ. «Ավրելիանոս Հայաստանը յուր հովանավորության ներքո առնելով Տրդատը թագավորեցրած էր, բայց երկու տարի ետքը Վռամ Բ նորեն Հայաստանը գրավեց, և Տրդատը հեռացավ, թեպետ նորեն դարձավ հռոմայեցվոց պաշտպանությամբ»*[9]*։ Այստեղ խոսքը վերաբերում է նոր գահ բարձրացած Վառահրանին (Վռամ Բ-ին, 276—293), որի գահակալության հենց սկզբին՝ 276 թ., պարսկական զորքերը նորից բռնագրավել են հռոմեական Հայաստանը, և Տրդատը հեռացել է կայսրության սահմանները։*

*Տրդատը նորից ներգրավվում է Հռոմի պատերազմներում՝ գոթերի դեմ Տակիտոս կայսեր վեցամսյա գահակալության և նրան հաջորդած Պրոբոսի (276—282) առաջին տարում*[10]*։ Սրանց դեմ հաղթանակ է տանում Պրոբոս կայսրը, որը ստանում է* Gothicus *պատվանունը։ Ագաթանգեղոսի պահպանած ավանդությունը, որ Տրդատը թագավորել է կովի դաշտում՝ գոթերի դեմ մղված պատերազմի ժամանակ*[11]*, հանգեցնում է այն եզրակացության, որ այդ տեղի է ունեցել Պր բոսի կայսրության առաջին տարում (276)։ Թեև Պրոբոսը նույնպես ճանաչել է Տրդատի գահակալությունը, սակայն այս անգամ նա չի կարողացել հաստատվել Հայաստանում։*

*Պրոբոսն իր գահակալության տարիներին ժամանակ առ ժամանակ անդրադարձել է 244 թ. դաշնագրից հետո Հայաստանի՝ Հռոմին անցած մասի հարցին, բանակցություններ վարելով մերթ Վառահրան Բ-ի (276—293), մերթ Ներսեհի հետ։ Քանի որ գահակալական նկրտումների հետևանքով վերջինների միջև եղած հարաբերությունները խիստ լարված էին և թշնամական, ուստի և հռոմեական Հայաստանի հարցը նրանց համար պատրվակ էր Հռոմի հետ վերսկսվող հարաբերությունների նժարը մեկի կամ մյուսի կողմը ձգելու՝ ի հաշիվ Հայաստանի այդ հատվածի զիջման*[12]*։ Եվ պատահական չէ, որ Պրոբոսի և Վառահրանի բանակցությունների ելքը, ըստ որի՝ հույների*[13] *վրա թագավորելով, Պրոբոսը՝ «Արտաշիրի*[14] *հետ խաղաղություն կնքելով՝ մեր երկիրը բաժանում է սահմանացույց փոսեր փորելով»*[15]*, չի գոհացնում Ներսեհին և նա իր հերթին բանակցություններ է վարում Պրոբոսի հետ*[16] *և արդյունքի չհասնելով, հար-*

---

9 Մ. Օրմանյան, *նշվ. աշխ., էջ 78։*

10 Խորենացի, *Բ, հզ, հթ, (աշխ. թարգմ., էջ 211—213)։*

11 Ագաթանգեղոս, *Դ, 44—46։*

12 *Պատմագրության մեջ նշված էր, որ 283—286 թթ. խաղաղության դաշն է կնքված եղել Վառահրան (Վռամ) Բ-ի հետ և ըստ այդ դաշնագրության Հայաստանը տրվել էր Հռոմեական կայսրության* (Mommsen, Romische Geschichte t., V, *էջ 443,* Տաշյան, *Ագաթանգեղոս առ Գէորգայ սարրի եպիսկոպոսին և ուսումնասիրութիւն Ագաթանգեղայ գրոց, Վիեննա, 1891, էջ 125։ Халатьянц,* Очерк истории Армении *և այլն)։ Ավելի ճիշտ է այն պնդումը, որ «վերոհիշյալ թվերին օրինավոր դաշինք կնքված չի եղել»* (Աստուրյան, *Քաղաքական վերաբերություններ, էջ 253, Аннинский,* Древние армянские историки, с. 45) *և «Ըստ երևույթին, մինչև երրորդ դարի վերջերը թե՛ Հայաստանը և թե՛ Միջագետքը տարտամ և անորոշ դրության մեջ են եղել և անցել են ձեռքից-ձեռք»* (Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 102)։*

13 *Այսպես է անվանում Խորենացին հռոմեացիներին, ինչպես և հռոմեական պետությունը «կողմն Յունաց»։ Այդպես էր ընդունված կայսրությունից արևելք գտնվող ժողովուրդների մոտ։*

14 *«Արտաշիր», ինչպես նշվեց, Սասանյան արքայից արքաների դինաստիական անունն էր և տվյալ դեպքում պիտի հասկանալ Վառահրան։*

15 Խորենացի, *Բ, հէ աշխ. թարգմ., էջ 211)։*

16 *Vopiscus*, XVII, VIII, 4: *Ճիշտ է Բ. Մակ Դերմոն, որ Վոպիսկոսի նշած բանակցությունները եղել են Պրոբոսի և Ներսեհի միջև* (*B. MacDermot*, *նշվ. աշխ., էջ 284—285)։*

ջախվում և Տրդատին վտարում է հռոմեական Հայաստանից[17]։ Այս պատճառ դարձավ նոր կայսր Կարոսի (282—283) արշավանքին դեպի հռոմեական Հայաստան, որտեղ կրկին գահակալեց Տրդատը և Կարոսի զորքերի հետ գնաց Միջագետք[18]։ Սասանյանների կողմից պատերազմին մասնակցում էր «Հայաստանի մեծ թագավոր» «Խոսրով»-Ներսեհը, որին հայ մատենագիրները շփոթում են Հայոց թագավոր Խոսրովի հետ։ «Խոսրով»-Ներսեհը գլխավորում էր պարսկական Հայաստանի հեծելազորը՝ կազմված իր դաշնակիցներից, որոնցից հիշատակվում է առասպելական Կռոնակը։ Կարոս կայսրն արդեն հասել էր Սասանյանների մայրաքաղաք Տիզբոն, բայց նա կայծակնահար է լինում և սպանվում։ Հռոմեական բանակը նրա որդու՝ կայսր Նումերիանոսի (283—284) հրամանատարությամբ, շտապ նահանջում է։

Պարսիկները նորից զավթեցին հռոմեական Միջագետքը (Մեսոպոտամիա պրովինցիան) և հռոմեական Հայաստանը։ Սակայն այս վերջին անգամ էր, քանի որ Թրակիայում՝ Նումերիանոսի և Իտալիայում (Վերոնայի մոտ) նրա եղբայր Կարինոսի սպանվելուց հետո գահ բարձրացած Դիոկղետիանոսը (284—305) վերջ դրեց այս վիճակին։

## 2. ՏՐԴԱՏ Գ-Ի ԳԱՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆԸ ԴԻՈԿՂԵՏԻԱՆՈՍԻ ԺԱՄԱՆԱԿ

Դիոկղետիանոսի գահակալությամբ սկսվում է նոր ժամանակաշրջան։ Հին աշխարհի ստրկատիրական հասարակության ճգնաժամը, որ գրեթե մեկ դար (193—284) ընդգրկել էր ամբողջ Հռոմեական կայսրությունը, ավարտվում է կայսրության ամրապնդմամբ ու վերելքով, և ընդհակառակը, այժմ ճգնաժամային վիճակ էր ապրում Սասանյան Իրանը՝ Էրանշահրը։ Ստեղծվում էր այնպիսի իրադրություն, երբ պիտի վերանար Հայաստանի անկայուն վիճակը և վերականգնվեր նրա միասնությունը։

Դիոկղետիանոսի արևելյան քաղաքականության ակտիվացումը նշանավորվեց նրանով, որ նա իր գահակից դարձրեց Մաքսիմիանոսին (286—305), իսկ ավելի ուշ երկրորդ կեսար նշանակեց Գալերիոսին (293—311)։ Դիոկղետիանոսը Մաքսիմիանոսին ուղարկում է Արևմուտք՝ այնտեղի գործերը կարգավորելու, իսկ Գալերիոսին՝ Արևելք։ Վերջինս զբաղվում է Միջագետքով և Հայաստանով։

Ըստ Խորենացու, հռոմեական Հայաստանում կայուն վիճակ էր ստեղծվել և Տրդատը վերստին, և այս անգամ վերջնականապես, հաստատվել էր իր գահին՝ Դիոկղետիանոսի թագավորության երրորդ տարում (287)[19]։ «Որովհետև

---

17 Վառահրան Բ-ն այդ ժամանակ չի կարողանում Ներսեհի դեմ դուրս գալ, զբաղված լինելով իր եղբայրներից մեկի՝ Հորմիզդի (որն Ապար աշխարհի (Խորասանի) կառավարիչն էր) ապստամբության ճնշումով։ Հորմիզդն իրեն հռչակել էր Իրանի արքայից արքա, սակայն Վառահրան Բ-ի կողմնակիցներն ավելի ուժեղ գտնվեցին և Հորմիզդը ենթարկվեց մահապատժի (283 թ.)։

18 Խորենացի, Բ, ՀԲ։

19 Խորենացու այս հաղորդումը Հ. Մանանդյանը համարում է սխալ, միևնույն ժամանակ նշելով Աննինսկու այն կարծիքը, ըստ որի, այդ վկայությունն ինչ-որ չափով ճիշտ է, «բայց ոչ այն իմաստով, ինչպես այդ հասկացել է ինքը՝ Խորենացին։ Խոսրով Բ-ի մահից (287) հետո նրա անմիջական հաջորդն էր լինելու իրապես Տրդատ Գ-ն, որը սակայն գահ էր բարձրացել ոչ թե այդ թվին, այլ ավելի ուշ՝ 298 թ.»։ (*Аннинский*, Древние армянские историки, с. 51, Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հ. Բ, էջ 115)։

չկա սույգ պատմություն առանց ժամանակագրության,— ասում է Խորենացին,— ուստի մանրամասն հետազոտությամբ գտանք, որ Տրդատը թագավորել է Դիոկղետիանոսի երրորդ տարում, և այս կողմերն է եկել մեծ զորքով»[20]։

Գաղղիայում ապստամբած բագաուդների պարտվելուց հետո Դիոկղետիանոսը կարողացավ զբաղվել Արևելքի գործերով, Արևմուտքի Օգոստոս նշանակելով Մաքսիմիանոսին[21]։

Պարսկական Հայաստանում 17 տարի (276—293) իշխելով իբրև «Հայաստանի մեծ թագավոր» «Խոսրով»-Ներսեհը, եղբոր՝ Որմիզդ-Արտաշիրի մահվանից հետո (274) Իրանի արքայից արքայի գահի առաջին թեկնածուն էր, սակայն ամեն անգամ թշնամիները զրկում էին նրան գահակալական իրավունքներից։ Ներսեհը սերտ կապեր է հաստատում Դիոկղետիանոսի և Տրդատի հետ։ Այդ պետք է օգներ նրան՝ հասնելու իր վաղեմի նպատակին։ Ներսեհը ճանաչում է կայսրության իրավունքները Հայաստանի Հռոմին ենթակա մասի վրա և պարսկական զո.ամասերը հեռանում են այնտեղից, իսկ Տրդատն իր զորամասերով գալիս, հաստատվում է իր գահին, նույն Զրմեսում՝ Երիզայում գտնվող Անահիտի սրբավայրից ոչ հեռու։

Այսպիսով, 287 թ. սկսվում է Տրդատի անընդմեջ թագավորությունը, առայժմ Հայաստանի հռոմեական մասում։

287—293 թթ. ընթացքում Տրդատը հռոմեական Հայաստանի թագավորն էր, իբրև վասալ հռոմեական կայսրի։ Իրանում ստեղծված իրադրությունը հարկադրում է Ներսեհին նոր զիջումներ անել։ Նրա կողմնակիցները Տիզբոնի արքունիքում հանդիսավոր հրավերներ են ուղարկում՝ գալու և գրավելու իր նախնիների գահը իբրև միակ օրինավոր ժառանգի, որին նա սպասել էր գրեթե 20 տարի [22]։ 293 թ. նա շտապում է Տիզբոն՝ գրավելու արքայից արքայի գահը, և որպեսզի ապահովի իր թիկունքն արևմուտքից՝ Հայաստանի ու կայսրության կողմից, և նրանք ընդունեն իր գահակալությունը, զիջում է պարսկական

---

20 Խորենացի, Բ, ձբ (աշխ. թարգմ., էջ 217)։ Որոշ ձեռագրերում փոխանակ «յերրորդ ամի» նշված է «յերկրորդ ամի» (Խորենացի, Բ, ձբ, գրաբար, բնագիր, էջ 224, ծան. 5)։ Սամուել Անեցին իր ձեռքի տակ ունեցել է Խորենացու երկի այնպիսի գրչագիր օրինակ, որտեղ եղել է վերջին տարընթերցվածը։ Նա գրում է, պետք է «զառաջին ամն Տրդատայ զուգել, զհետ երկրորդ ամին Դիոկղետիանոսի՝ ըստ Մովսիսի Հայոց պատմագրի, և ոչ իններորդին կամ տասներորդին ըստ ոմանց» (էջ 63)։ Սամուել Անեցին պատահել է նաև այնպիսի աղբյուրների, որտեղ Տրդատի թագավորության առաջին տարին դրված է եղել Դիոկղետիանոսի կայսրության առաջին տարում՝ 284 թ., կամ նրա կառավարության իններորդ տարում՝ 293 թ.։ Երկու թվականներն էլ ճիշտ են և նկատի են առնված Տրդատի գահակալության տարբեր պարագաները։

21 Դիոկղետիանոսը ամբողջ Հռոմեական կայսրությունը դարձրեց «տետրարքիա» («չորրորդապետություն»)։ Արևելյան մասում կայսր էր Դիոկղետիանոսը, կեսար՝ Գալերիոսը։ Արևմտյան մասում կայսր էր Օգոստոս Մաքսիմիանոսը և կեսար՝ Կոստանդիոս Խլորը։ Այսպես նախադրյալ ստեղծվեց կայսրության երկատման, որը տեղի ունեցավ 395 թվականին։

22 Պայկուլիի արձանագրությունում Ներսեհն իրեն Հայաստանի թագավոր է կոչում և այնուհետև՝ հաղորդում է՝ «դեսպանը եկավ մեզ մոտ (ասելու), որ կարող է արքայից արքան Հայաստանից հանդիսավորությամբ ուղևորվելով Երանշահր ընդունել աստվածներից և իշխանությունը և գահը... Եվ երբ տեսանք այդ նամակը, ապա հանուն Ահուրա-Մազդայի և բոլոր աստվածների և տիրուհու Անահիտի, Հայաստանից ուղևորվեցինք Երանշահր Paikuli, Monument and Inscription of the Early History of the Sasanian Empireby E. Herzfeld, Berlin, 1924, 97—99, (այսուհետև՝ Paikuli); Henning. A Farewell to the Khagan of the Aq-Aqatārān, Bulletin of the School of Oriental Studies, vol. XIY 1952, թ. 517 518, տե՛ս նաև՝ B. MacDermot. նշվ. աշխ., թ. 283—284)։

Հայաստանի գահը հանձնել օրինավոր ժառանգ Տրդատին և ոչ Սասանյան դինաստիայի որևէ ներկայացուցչի, որն այնուհետ կդառնար իր մրցակիցը։ Այսպիսով, Ներսեհը 293 թ. Տրդատ Գ-ին ճանաչում է պարսկական Հայաստանի թագավոր[23]։ Սրանով ավարտվում է Սասանյան դինաստիայի ներկայացուցիչների գահակալության ժամանակաշրջանը, որը Խորենացին բնորոշում է իբրև «ժամանակ անիշխանութեան», դրա տևողությունը համարելով 26 տարի[24]։

Ինչպես երևում է, Խորենացին «ժամանակ անիշխանութեան» կամ «ամք անիշխանութեան» էր համարում այն 26 տարի կազմող ժամանակահատվածը, որ սկսվում էր Արտավազդ Ե-ի գահընկեցությունից հետո, երբ 261 թ. պարսկական Հայաստանում գահ բարձրացավ Որմիզդ-Արտաշիրն իբրև «Հայաստանի մեծ թագավոր», մինչև Տրդատ Գ Արշակունու գահակալության վերջնական ճանաչումը հռոմեական Հայաստանում (287)։ Այս 26 տարին, որ ամբողջ Հայաստանի վրա հայ Արշակունիների իշխանության ընդհատման տարիներն են, չպետք է շփոթել այն 27 տարվա («Խոսրով սպանեալ յԱնակայ և անիշխան մնաց աշխարհս Հայոց զամս Իէ»)[25] հետ, որ ընդգրկում է 256—283 թվականները։ Դրանք բռնագրաված հռոմեական Հայաստանի Սասանյանների ապօրինի իշխանության տարիներն են։ Այսպիսով, պարսկական տիրապետությունը Հայաստանի մեծագույն մասում տևել է 261—293 թթ., այսինքն՝ 32 տարի։

Մարկվարտը իրավամբ ենթադրում է, որ հատվածաբար պահպանված Տիգրանակերտի արձանագրությունը[26] փորագրվել է III դ. և այդ արձանագրության մեջ ակնարկվածը Տրդատ Գ-ն է[27]։ Տիգրանակերտի հունարեն արձանագրությունից երևում է, որ Տիգրանակերտը գտնվել է հռոմեապարսկական սահմանագծի մոտ՝ պարսիկներին անցած կողմում։ Հայոց թագավորը (իմա՝ Տրդատ Գ) պարսից արքայից հրովարտակ է ստանում, որի բովանդակության պատճենը, թերևս, հենց Տիգրանակերտի այդ արձանագրության հիմնական մասն էր կազմում, դատելով դրա վերջավորությունից. «Հրամայեցինք... ինչպես որ փաստաթղթի մեջ է հայտնված՝ հենց այստեղ էլ փորագրված և ամրացված»[28]։ Արձանագրության բովանդակությունից երևում է, որ համաձայնություն է եղել հռոմեացիների ու պարսիկների միջև և Տիգրանակերտը հանձնվել է Հայոց թագավորին[29]։ Արձանագրության մեջ խոսվում է ինչ-որ հաշտության

---

23 Տրդատ Գ-ն մինչև 296/7 թթ. պատերազմը պետք է ճանաչեր իր վասալական կախումը թե՛ Հռոմից և թե՛ Պարսկաստանից։

24 Խորենացի, Բ, հէ։

25 «Սամուէլի քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», Վաղարշապատ, 1893, էջ 61։

26 C. F. Lehmann-Haupt, Armenien einst und jetzt, Bd. Berlin, 1910, s. 411—419, Г. Х. Саркисян, Тигранакерт, М., 1960, с. 81—82:

27 J. Markwart, Südarmenien und die Tigrisquellen, 134—135; Լեհման-Հաուպտն այն վերագրում էր Հայոց Պապ թագավորին։ Հ. Մանանդյանը համաձայն է Մարկվարտի կարծիքին (նշվ. աշխ., էջ 121—122)։

28 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 121։

29 Չնայած Ա. Մարտիրոսյանը ճիշտ է եզրակացնում, որ Ներսեհը 293 թ. Հայաստանից է գնացել գահը ժառանգելու, սակայն գրում է. «Տիգրանակերտի արձանագրությունն այս դեպքերին չի կարող վերաբերվել» (Ա. Մարտիրոսյան, Հայաստանը և առաջին Սասանյանները, ՊԲՀ, 1975, № 3, էջ 163—165)։ Ինչպես իրավամբ նշում է Հ. Մանանդյանը, Տիգրանակերտ քաղաքի պարսպի վրա գտնված հունարեն արձանագրությունը խիստ կարևոր մի նոր աղբյուր է «Տրդատ Գ-ի վերադարձի ու թագադրման մասին Հայաստանում» (Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 120)։

*կամ խաղաղ վիճակի մասին[30]։ Այսպիսով Ներսեհի գահակալության առաջին տարում տեղի ունեցած հռոմեապարսկական բանակցությունների մասին գաղափար է տալիս հենց այս՝ Տիգրանակերտի արձանագրությունը։ Արքայից արքան Տրդատին վերադարձնում է Տիգրանակերտը և այլ քաղաքներ[31]։ Դա Արշակունի գահակալի համար «անսպասելի» էր։ Նշանակում է այդ քայլը հարկադրանքով չէր թելադրված, այլ արված էր խաղաղ ճանապարհով։ Տրդատը հարգալից և երախտագիտությամբ է խոսում հռոմեացիների և պարսից արքայից արքայի մասին։ Նա երեք անգամ Իրանի գահակալին կոչում է «աստված արքայից արքա»[32]։ Եթե Տիգրանակերտի և այլ քաղաքների հանձնումը 298 թ. դաշնագրության հետևանք լիներ, հայ թագավորն այդպիսի երախտագիտություն չէր արտահայտի պարսից արքայի նկատմամբ, քանզի վերջինս պարտված կողմն էր և քաղաքները զիջում էր հարկադրաբար։ Իսկ արքայի անսպասելի նամակն ամենից առաջ հրովարտակ էր Տրդատի թագավորության ստատուսը ճանաչելու, որի համար և նա հրամայել էր հյուսիսային դարպասի վրա փորագրել այդ արձա՛ ագրությունը։ Այն հաստատում է, որ պայմանավորվածություն է եղել պարսիկների ու հռոմեացիների միջև և երկուստեք ճանաչվել են Տրդատի իրավունքները։ Այս փոխհամաձայնությունը երկու ինքնակալների և Տրդատի միջև կարող էր լինել միայն Ներսեհի գահակալության սկզբնական շրջանում։*

*Այս փաստերի կողքին մենք ունենք Պայկուլիի արձանագրության վկայությունը, որտեղ Ներսեհի գահակալության արարողության շնորհավորողներից մեկն է նաև Հայոց թագավոր Տրդատը։ Վերջինս 28 շնորհավորողների թվում 14-րդն է հիշատակվում[33]։*

*293 թ. հետո, ճանաչվելով նաև Հայաստանի մնացած մասի թագավոր, Տրդատն իր քաղաքական կենտրոնը Եկեղյաց գավառի Զրմես ավանից պիտի փոխադրեր Այրարատ՝ Վաղարշապատ մայրաքաղաքը։ Քրիստոնեության տարածման մասին պահպանված ավանդական պատմությունը Հայաստանում կապվում է Այրարատ նահանգի և նրա կենտրոններ Վաղարշապատի ու Արտաշատի հետ։ Վերջինում էր Խորվիրապը։*

## 3. 296—297 ԹԹ. ՊԱՐՍԿԱՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԵՎ ՄԾԲԻՆԻ 298 Թ. 40-ԱՄՅԱ ԴԱՇՆԱԳԻՐԸ

*Արքայից արքա Ներսեհը պայքարելով ներքին թշնամիների դեմ, ամրապնդեց իր գահը[34], ուշադրություն դարձնելով ստեղծված ստորադաս վիճակի վրա, որում գտնվում էր Սասանյան Իրանը՝ Հռոմեական կայսրության հանդեպ։ 296 թ. Ներսեհը, չեղյալ համարելով 284, 287 և 293 թթ. համաձայնագրերը Դիոկղետիանոսի և Տրդատ Գ-ի հետ, սկսեց պարսկահռոմեական պատերազմը։*

---

30 *J. Markwart*, նշվ. աշխ., էջ 124, 152 և այլն։ Ա. Մարտիրոսյան, նշվ. աշխ., էջ 166։

31 Նույն տեղում։ Այդ քաղաքներից՝ Նեկրանը։

32 *J. Markwart*, նշվ. աշխ., էջ 134—135, Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 121։ Վերջինս կարծում է, որ արձանագրության ժամանակը 298 թ. է (Նույն տեղում, էջ 122)։

33 *Paikull*, 117—119, *B. MacDermot*, նշվ. աշխ., էջ 284—285,

34 *В. Г. Луконин*, Иран в III в., М., 1979, стр. 59—73

Պարսից զորքը ներխուժում է նաև Մեծ Հայքի թագավորության սահմանները։ Այս պատերազմի սկզբնական շրջանում կարծես թե հաղթանակը պարսիկների կողմն էր։ 296 թ. Ներսեհն իր բանակով ներխուժեց հռոմեական Միջագետք, որտեղից մտավ Հայաստանի արևմտյան մասը։ Ամմիանոս Մարկելինոսի վկայությամբ Ներսեհը վերագրավեց Հայաստանը, որը «ենթարկված էր հռոմեացիների իշխանության»[35]։

Դիոկղետիանոսը պատերազմական գործողությունների ղեկավարությունը հանձնեց կեսար (իր փեսա) Գալերիոս Վալերիոս Մաքսիմիանոսին։ Վճռական բախումը հռոմեացիների և պարսիկների միջև տեղի ունեցավ Միջագետքում՝ Խառանի և Կալլինիկումի միջև[36]։ Այս ճակատամարտին հռոմեական զորամասերի հետ մեկտեղ մասնակցել է նաև Տրդատ Գ-ն՝ իր հեծելազորով[37]։

Հռոմեական զորքը ծանր պարտություն կրեց և վերադարձավ Անտիոք։ Թվում էր, թե վերականգնվել է նախկին վիճակը։ Պարսկական զորքը կրկին գրավել էր հռոմեական Միջագետքը և Հայաստանը։ Սակայն ժամանակները փոխվել էին, և սկսված պատերազմն անակնկալ ելք ունեցավ։ 297 թ. Դիոկղետիանոսը նորից Գալերիոսին է հանձնարարում պատերազմը վարելու գործը, և այս անգամ նա թշնամու հետ կռվում է Հայաստանում[38]։ Այս պատերազմի մասին տեղեկություններ են պահպանել IV դարի լատին պատմագիրները՝ Ավրելիոս Վիկտորը, Եվտրոպիոսը և Ռուփոս Փեստոսը։ Մասնավորապես Ռուփոս Փեստոսը հաղորդում է. «...ինքը՝ կեսարը երկու ձիավորի հետ անձամբ հետախուզեց թշնամիներին Մեծ Հայքում և քսանհինգ հազար զորքով վրա հասավ թշնամու բանակին, հանկարծակի հարձակվեց պարսիկների անթիվ զորքերի վրա և ոչնչացրեց։ Պարսից թագավոր Ներսեհը փախուստի դիմեց, իսկ կինն ու աղջիկներն ընկան հռոմեացիների ձեռքը, որոնք մեծագույն ակնածությամբ պահպանեցին նրանց պատիվը։ Այդպիսի վերաբերմունքից հիացած՝ պարսիկները խոստովանում էին, որ հռոմեացիները ոչ միայն զենքով, այլև բարքով գերազանցում են (իրենց)։ Եվ Միջագետքը հինգ «Անդրտիգրիսյան» նահանգների հետ վերադարձրին նրանց։ Խաղաղությունը կնքվեց և հարատևեց ցարդ՝ հօգուտ կայսրության»[39]։ Ըստ Փավստոսի կիսաավանդական-կիսապատմական տեղեկությունների, պարսից արքայից արքա Ներսեհի ժամանակակիցն էր Հայոց թագավոր Տիրանը[40], որի ժամանակ Հայաստանին հարևան Ատրպա-

---

[35] *Ammian. Marcell*, XXII, I, 5. 13: Այստեղից նաև երևում է, որ մինչև այս պատերազմը Տրդատ Գ-ն ճանաչում էր Հայաստանի փաստական կախվածությունը Հռոմից։

[36] Այս վայրերում մ. թ. ա. 53 թ. տեղի ունեցավ հռոմեական զորքի պարտությունը պարթևներից և Կրասոսի սպանությունը։

[37] Տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 105։

[38] Հ. Մանանդյանը նշում է, որ Գալերիոս Մաքսիմիանոսը պատերազմի վայր ընտրեց Հայաստանը, նկատի ունենալով նրա լեռնային մակերևույթը, որը նպաստավոր չէր պարսկական հեծելազորի ռազմական գործողությունների համար, ինչպես և այն, որ իրեն կարող էին օգնել Տրդատի կողմնակից հայերը (նշվ. աշխ., էջ 106)։

[39] Rufi Festi Breviarium, XXY;

[40] Տե՛ս Կ. Մելիք-Օհանջանյան, Տիրան-Տրդատի վեպը ըստ Փավստոս Բուզանդի, «Լրաբեր հաս. գիտ.», 1947, № 6, էջ 64—65։

տականի կառավարիչն էր Վարազ-Շապուհ իշխանը[41]։ Ըստ պատմիչի, Վարազ-Շապուհի բանսարկությամբ է տեղի ունեցել այդ պատերազմը։ Պարսկական զորքերը ներխուժել են Հայաստան, դրավել այն մինչև Բասեն գավառի Ոսխա գյուղը[42], որ գտնվում էր մինչև 293 թ. գոյություն ունեցող պարսկահռոմեական բաժանման գծից ոչ հեռու։ Հայերը դիմում են հռոմեական կայսրին։ Վերջինս իր բանակով գալիս է Հայաստան։ Նա հռոմեական աղբյուրների Գալերիոս կեսարն է, որը, ինչպես վերը նշվեց, Միջագետքում 296 թ. պարտություն կրելով, 297 թ. մեծ զորքով գալիս է Հայաստան։ Այստեղ Գալերիոսը դիմում է ռազմական հատուկ տակտիկայի։ Ըստ Եվտրոպիոսի տեղեկության, Գալերիոսը «հանձըն առավ դետքի («հետախույզ») պարտականությունը երկու անգամ՝ երեք հետախույզի հետ»[43], որոնց մասին, ինչպես վերը նշվեց, խոսում է նաև Ռուփոս Փեստոսը։ Նրանցից երկուսի մասին պարզվում է Փավստոսի տեղեկություններից։ Դրանք Անդովկ Սյունի և Արշավիր Կամսարական նախարարներն էին, որոնց հետ կեսարը «ի շինականութեան կերպարանս, ի կաղամբավաճառի օրինի» անցնում է պարսկահռոմեական սահմանագիծը և լրտեսում պարսից բանակին «ի գեւղն, որ անուանեալ կոչի Ոսխայ»[44]։ Տեղեկանալով թշնամու դիրքերի և զորքի քանակի մասին, Գալերիոսը 25 հազարանոց հռոմեահայկական զորքով գրոհում և խայտառակ պարտության է մատնում թշնամուն։ Պարսից բանակը ջախջախվում և փախուստի է դիմում[45]։ Ինչպես պատմում է Փավստոսը, «բանակը կողոպտեցին, ավար առան, բռնեցին թագավորի կանանց ու բամբիշին (տիկնանց տիկին) և նրանց հետ ամբողջ բանուկանը (հարեմի տիկիններին), նրանց բոլոր գույքն ու ստացվածքները, գանձերը, պաշարեղենը, սարքը կանանց հետ գերի վերցրին»[46]։ Պատերազմն ավարտվում է 298 թ. Մծբինի 40-ամյա դաշնագրով։ Ըստ 298 թ. դաշնագրի ամբողջ Մեծ Հայքի թագավորությունը ճանաչվեց Հռոմի հովանավորության ներքո և գրեթե կես դար Սասանյանները հրաժարվեցին ակտիվ քաղաքականությունից։ 298 թ. դաշնագրով Տրդատ Գ-ն վերջնականապես դառնում է վերամիավորված Հայաստանի թագավոր։

Պարտված Սասանյան Պարսկաստանը զիջեց Հռոմեական կայսրությանը «Անդրտիգրիսյան երկրները» (Regiones Transtigritanae), Մեծ Հայքի թագավորության հարավային երկրամասերը և Միջագետքի Ծավդեք (Zabdicenae)

41 Նա պիտի «Վարազոյ» իշխանական տնից լիներ, որ հայտնի էր նաև «Միհրական տուն» անունով իբրև Գանձակի Միհրի տաճարի գլխավոր քուրմ ու վերակացու։ Հետագայում այս տոհմը հանդես է գալիս Աղվանքում։

42 Փավստոս Բուզանդ, Գ, ի, էջ 48։

43 *Eutropius*, XXII.

44 Փավստոս, Գ, իա, էջ 48։

45 Նույն տեղում։ Այդ ժամանակ հռոմեահայկական զորքերը շրջապատում և դերի են վերցնում պարսից արքայական կանանցի վրանը՝ «մաշկապարճենը»։ «Մաշկապարճեն» բառի մասին տե՛ս Հր. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հ. Գ, Երևան, 1977, էջ 261։

46 Փավստոս; Նույն տեղում (Թարգմ., ներածությունը և ծանոթությունները ակադեմիկոս Ստ. Մալխասյանցի, Երևան, 1969, Գ, իա, էջ 112։ Աշխարհաբար թարգմանությունը բերվում է որոշ փոփոխություններով)։ Այս պատերազմի մասին հաղորդում է նաև Մովսես Խորենացին, շփոթելով ժամանակը և գործող անձանց։ Տրդատը այստեղ կոչվում է «Տիրան որդի Խոսրովու», իսկ Ներսեհը ներկայացված է իբրև պարսից Շապուհ թագավորի որդի, որը պատերազմում է հայերի դեմ, որպեսզի թագավորի Հայաստանում։ Արշավիր Կամսարականի գլխավորությամբ պարսիկները հաղթվում են Մռուղ դաշտում, որ նույն Ոսխա գյուղի վայրում պիտի գտնվեր։ Այս ճակատամարտից հետո Տիրան-Տրդատը թագավորում է Հայաստանում (Խորենացի, Գ. ժ.)։

գավառը։ Այդ երկրամասերի վերաբերյալ մեզ հասել է երկու տեղեկություն. մեկը վերաբերում է 298 թ. Մծբինի դաշնագրության համաձայն կայսրությանը Սասանյանների զիջած հողերին՝ Ինգելենե-Անգեղտուն, Սոֆենե-Ծոփք, Արզանենե-«Աղձնարզին», Կորդուենե-Կորդուք և Զաբդիկենե-Ծավդեք։ Սրանց մասին հաղորդում է Պետրոս Պատրիկիոսի՝ պատառիկներով մեզ հասած պատմական երկը (Petr. Pat., p. 135)[47]։ Ամմիանոս Մարկելլինոսի հաղորդման համաձայն կայսրության անցան նաև՝ Մոկքը (Moxoene) և Ռեհիմենեն։ Վերջինս պետք է լինի Արուաստան գավառը՝ Մծբին քաղաքի երկրամասը։

Հարկ է նշել, որ այստեղ հիշատակվող Սոֆենե-Ծոփքը, Ծոփք Շահունյացը կամ Ծոփք Փոքրը չէ, այլ Անգեղտան-Ինգելենե գավառին արևելյան կողմից սահմանակից Տիգրանակերտ կամ Նփրկերտ գավառը, որը հետագայում կոչվում էր Ծոփք Մեծ։ Սույն երկու գավառները՝ Անգեղտունը և Տիգրանակերտը-Նփրկերտը Մեծ Հայքի թագավորության 385 թ. բաժանման ժամանակ անցան կայսրությանը։ Հավանաբար 298 թ. հետո Հռոմը հաստատվել էր այս տեղերում և ռազմաստրատեգիական մեծ առավելություններ էր տալիս հռոմեական զավթիչներին։ Եթե իրոք Ռեհիմենեն նույն Արվաստանն է, ապա նրա կարևորությունը ընդգծվում էր այստեղ գտնվող Մծբին քաղաքով, որը Արևելքի ապրանքափոխանակության խոշորագույն կենտրոններից մեկն էր։ Այս հանգամանքը հատկապես ընդգծված է 298 թ. Մծբինի պայմանագրում՝ ըստ որի առևտրական հարաբերությունների կենտրոն էր դառնալու Մծբին վաճառաշահ քաղաքը[48]։ Աղձնիքի բդեշխությունը պարփակված էր Արզն կամ Աղձն գավառում։ Վերջինս «մեծ բդեշխի» ոստանն էր[49], ուստի ավելի ճիշտ կլիներ Arzanene հայերեն նշել «Աղձնարզին» ձևով, որ պահպանվել է Եղիշեի մոտ[50]։

Փաստերի վերլուծությունը ցույց է տալիս, որ 298 թ. պայմանագրով Հռոմեական կայսրության ռազմական հսկողության տակ էին անցնում Մեծ Հայքի թագավորության հարավային երկրամասերը՝ Ingilene-Անգեղտուն և Sophene-Տիգրանակերտ գավառները, Arzanene Աղձնյաց բդեշխությունը (Արզնարզին), Corduene-Կորդվաց բդեշխությունը, իսկ Միջագետքում՝ Zabdicenae-Ծավդեք գավառը։ Կայսրության համար այս երկրամասերը սատրապություններ էին, որտեղ տեղադրված էին հռոմեական կայազորները, իսկ դրանց տարածքը (բացի Ծավդեք գավառից) նախկինի պես համարվում էր Մեծ Հայքի անքակտելի մասը։ Նոր-Շիրական բդեշխությունը մնում էր Մեծ Հայքի թագավորության անմիջական հսկողության ներքո։ Պայմանագրում նշված է հատուկ կետ, ըստ

---

47 Երկրամասերի երկրորդ թվարկումը վերաբերում է 363 թ., երբ պարսիկները նորից վերականգնելով իրենց դիրքերը Հայաստանում և Միջագետքում, կայսրությունից պահանջում են Սասանյան Իրանին վերադարձնել Արզանենե-«Աղձնարզին», Մոքսենե-Մոկք, Զաբդիկենե-Ծավդեք, Ռեհիմենե-Արվաստան (?) և Կորդուենե-Կորդուք երկրամասերը։ Այս թվարկումը բերում է Ամմիանոս Մարկելլինոսը (Ammian. Marc. XXV, 7, 9)։ Ն. Ադոնցը ուշադրություն է դարձրել բերված երկու ցուցակների տարբերության վրա։ Երկու դեպքում էլ խոսքը հինգ երկրների մասին է, բայց առաջին դեպքում չի նշված Մոքսենե-Մոկքը և Ռեհիմենե-Արվաստանը (?), իսկ երկրորդ դեպքում՝ Ինգելենե-Անգեղտուն և Սոֆենե-Ծոփքը (տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, с. 43).

48 Տե՛ս Н. Адонц, Фауст Византийский как историк, «Христианский Восток», т. VI, вып. III, Птг., 1922, стр. 244—245.

49 Ասորական աղբյուրներում այդպես էլ նշված է՝ Arsen ostan։

50 «Եղիշէի վասն Վարդանայ և Հայոց պատերազմին», աշխատասիրությամբ Ե. Տեր-Մինասյան, Ե., 1957, էջ 10։

որի «Արմենիայի սահմանը լինելու է Զինթա ամրոցը, որը գտնվում է Մեդիայի սահմանում»[51]։ Ճիշտ է Ն. Ադոնցի դիտողությունը, որ այս երկրամասի կառավարիչները, որոնց կայսրությունում դիտում էին իբրև սատրապներ, ենթարկվում էին հայ Արշակունիներին մինչև այդ դինաստիայի վերացումը[52]։

298 թ. Մծբինի 40-ամյա դաշնագրի կետերից մեկն էլ այն էր, որ «Իբերիայի թագավորն իր տիրակալական նշանները պետք է ստանա հռոմայեցիներից»[53]։ Իբերիան-Վիրքը՝ Վրաց աշխարհը, վրացական աղբյուրներում նշված Քարթլիի (Արևելյան Վրաստանի) թագավորությունը, որը սերտ կապեր ուներ Մեծ Հայքի թագավորության հետ, չէր կարող դուրս մնալ երկու աշխարհակալությունների փոխհարաբերությունների ոլորտից։ Վրացական պատմական ավանդությունը, չնայած ժամանակի և դեպքերի շփոթության, այնուամենայնիվ, ճիշտ է արտացոլում պատմական իրականությունը։ 287 թ., երբ Դիոկղետիանոս կայսրը Տրդատին նորից հաստատեց Հայոց գահի վրա, չանտեսվեց Հարևան Իբերիան՝ Վիրքը։ Ինչպես երևում է այստեղ պետք է թագավոր նշանակվեր Միրիանը-Միհրանը, վերոհիշյալ Ռև Արդարի որդին[54]։ Բոլոր դեպքերում Միրիանը Վրաց թագավոր է հռչակվել մինչև 298 թ. Մծբինի դաշնագիրը։ Վրացական կիսապատմական-կիսաառասպելական տեղեկություններից կարելի է կռահել, որ նրա գահակալումը տեղի է ունեցել պարսկահռոմեական պատերազմի տարիներին (296—297), երբ Վրաց թագավորը մասնակցում էր այդ կռիվներին՝ պարսիկների կողմից։ Այս տեղեկություններում «Արմենիայի թագավոր» Ներսեհին վերաբերող փաստերը վերագրվում են Միրիանին։ Ստեղծված քաղաքական վիճակը հարկադրում էր հռոմեացիներին զբաղվել նաև Վիրքով, որի մասին հատուկ կետով նշված էր 298 թ. պայմանագրում։ Ըստ վրացական աղբյուրների, կայսրը հաշտեցնում և բարեկամացնում է Տրդատին ու Միրիանին[55]։ Այնուհետև նրանք հանդես են գալիս իբրև դաշնակիցներ և հռոմեական արտաքին քաղաքականության կողմնակիցներ։

Արշակունիների վերահաստատումը Հայաստանում պայմանավորված էր հայկական պետականության վերականգնումով. հայ ժողովուրդը թևակոխում էր ֆեոդալական դարաշրջանը։

Նկատելիորեն ուժեղանում էր հայ ժողովրդի դերը Մերձավոր Արևելքի երկրներում։ Միաժամանակ Արշակունիների վերահաստատումը Հայաստանում համընկնում էր Հռոմի քաղաքական շահերին Արևելքում։ Մեծ Հայքի թագավո-

---

51 Н. Адонц, նշվ. աշխ., էջ 245։

52 298 թ. դաշնագրի կապակցությամբ հիշատակված տարածքների տեղադրությունը տե՛ս Մեծ Հայքի թագավորությունը IV դարում քարտեզը (Երևանի համալսարանի հրատարակչություն, 1979, Քարտեզի հեղինակ՝ Ս. Երեմյան)։

53 Н. Адонц, նշվ. աշխ., էջ 245։ 298 թ. կայսրությանը անցած երկրամասերի վերաբերյալ. բացի նշված գրականությունից, տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, Բ, մաս Ա, էջ 110—112։ Կ. Գյուտերբոկ, Հռովմեական Հայաստանը և հռոմեական սատրապությունները Դ—Զ դարերում, թարգմ. Մ. Նորշուանի, Վիեննա, 1914, էջ 7—8։ Հ. Հյուբշման, Հին հայոց տեղւոյ անունները, թարգմ. Բ. Պիլեզիկճեան, Վիեննա, 1907, էջ 30—31։

54 Ըստ «Մոքցեվայ Քարթլիսայ» բնագրի Վրաց առաջին քրիստոնյա թագավորը՝ Միրիանը. Ռևի որդին էր, որը բանասերների կարծիքով նույն Ռևն է (Տե՛ս ძველი ქართული აგიოგრაფიული ლიტერატურის ძეგლები՝ I, էջ 83) և պատահական չէ, որ Միրիանի-որդին ևս Ռև անունն է կրում։ Տե՛ս საქართველოს ისტორიის ნარკვევები, ტომი II, თბილისი. 1973. էջ 61—62։

55 Նույն տեղում։

րությունն ընդգրկվում էր Հռոմեական կայսրության քաղաքական ոլորտը և Տրդատ Գ-ի ներքին պետական միջոցառումները համաձայնեցվում էին կայսրության հետ։

298 թ. Մծբինի դաշնագրով վերջնականապես ճանաչվեց և վերականգնվեց Մեծ Հայքի թագավորության այն միասնական տարածքը, որն առաջին անգամ պաշտոնապես ճանաչվեց Տիգրան Բ-ի՝ Պոմպեոսի հետ կնքված դաշնագրով՝ 66 թ. մ. թ. ա., ապա՝ 63 թ. մ. թ., Հռանդեայի համաձայնագրով։

32 տարվա բաժանվածությունից հետո անհրաժեշտ էր վերականգնել Մեծ Հայքի թագավորության տերիտորիալ կազմը և փոխել 261 թ. «Արմենիայի մեծ թագավոր» Որմիզդ-Արտաշիրի (261—272) անցկացրած աշխարհագրից հետո ստեղծված երկրի ներքին վիճակը։ Մեզ հասած տեղեկությունները կցկտուր են, բայց հնարավորություն են ընձեռում ենթադրելու, որ, ինչպես Հռոմեական կայսրությունում, նույնպես և Մեծ Հայքում գործադրվել են վարչական և հարկային այն միջոցառումները, ինչ որ իրականացվել էին Դիոկղետիանոսի ժամանակ՝ 298 թ. սկսած։ Մեծ Հայքում ևս անց է կացվել ընդհանուր աշխարհագիր։ Վիճակագրական հաշվառման է ենթարկվել ամբողջ օգտակար հողատարածությունը և կարգավորվել են հողահարկն ու գլխահարկը։ Որմիզդ-Արտաշիրի կողմից փոփոխված հողատարածությունները բաժանող սահմանաքարերը, որոնք, կոչվում էին «Արտաշիրական», Տրդատ Գ-ի ժամանակ վերըստին վերականգնում են նախկին «Արտաշիսական» անունը։

Պատմականորեն ստեղծված Մեծ Հայքի տերիտորիալ կազմը (ըստ գավառների, ապա ըստ բդեշխական, նախարարական և ցեղային բաժանումների) նորից վերականգնվում և հաստատվում է պաշտոնապես։ Մեծ Հայքի պետության տարածքը բաժանված էր 201 գավառների, որոնց մեծագույն մասը պատկանում էր հայ Արշակունի դինաստիային և համարվում էր «երկիր արքունի»։ Այս կարգին էին պատկանում նաև հռոմեական կայսրից և սասանյան արքայից իբրև «երկիր ձեռական իշխանութեան» ստացված Փոքր Հայք երկրի և Գիմաթենե գավառի հողերը արևմուտքում՝ Հռոմեական կայսրության սահմաններում, և «Ատրպատճաց գաւառը» արևելքում՝ Ատրպատականում։ Բդեշխները, ավագ ու կրտսեր նախարարները և վերջիններին հավասարեցված ցեղապետերը ճանաչվում են իրենց սեփական գավառների ժառանգական կառավարիչներ[56]։

Տերիտորիալ-վարչական բաժանման կարգավորման նպատակն էր հիմնականում կարգավորել հարկային քաղաքականությունը։ Դիոկղետիանոսի էդիկտը՝ կայսրության լայնածավալ տարածքի վրա հողային կադաստր[57] անցկացնելու վերաբերյալ, հրապարակվել է 298 թ., երբ Հռոմը կայունացրեց արևելյան սահմանագիծը Սասանյան Իրանի հետ։ Կայսրության «հովանավորության» ներքո գտնվող Մեծ Հայքի թագավորության վրա ևս պետք է տարածվեին նշված միջոցառումները։ Անանիա Շիրակացու «Աշխարհացոյցի» բնագրից Հայաստանին, Վիրքին և Աղվանքին վերաբերող մասի մանրակրկիտ ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այն ստեղծվել է այս ժամանակաշրջանում նաև իբրև «Աշխարհագիր»՝ գավառների ցուցակ։ Անուղղակի տվյալները վկա-

---

[56] Մեծ Հայքի քաղաքական, վարչական բաժանումը նշված ժամանակաշրջանում տե՛ս «Մեծ Հայքի թագավորությունը IV դարում (298—385)» քարտեզը (հեղինակ՝ Ս. Տ. Երեմյան)։

[57] Մշակվող հողատարածությունների հաշվառում։ Կադաստր էր կոչվում հին Հռոմում հարկատուների ցուցակը։

յում են, որ ՝Մեծ Հայքի թագավորության հողատարածությունների հաշվառումը կատարվում էր ըստ մանր տարածքային միավորների՝ գավառների, որոնք թվով 201 էին, և այդ ցուցակը կոչվում էր «Աշխարհագիր»։ Այն կազմում էր առանձին գիրք՝ «Աշխարհագիր մատեանք» վերնագրով։ Կային այդ «Աշխարհագրի» ընդարձակ և համառոտ տարբերակները[58]։ Ըստ որոշ տվյալների, այդ հողային կադաստրը կայսրության մեջ անց է կացվել 298—300 թթ. ընթացքում[59]։ Այդ ժամանակ Մեծ Հայքի թագավորության մեջ պետք է անցկացվեր «Աշխարհագիրը»։

## 4. ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՔՐԻՍՏՈՆԵՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՈՆԱԿԱՆ ՃԱՆԱՉՈՒՄԸ ՏՐԴԱՏ Գ-Ի ՕՐՈՔ

293—297 թթ. լայնորեն ծավալվում է այն շարժումը, որը 301 թ. հանգեցրեց քրիստոնեության ճանաչմանը իբրև Մեծ Հայքի թագավորության պետական կրոնի։

Տրդատ Գ-ի հակազրադաշտական քաղաքականությունը Հայաստանի երկու մասերում հավասարազոր էր հակասասանյան՝ հակապարսկական քաղաքականության, հանգամանք, որ չէր կարող հանդուրժել Տիզբոնի արքունիքը։

Սասանյանների կողմից պարթև Արշակունիների վերացումը և հակահելլենիստական ռեակցիան Պարսկաստանում, որն արտահայտվեց զրադաշտականության կայունացմամբ, հակառակ տրամադրություններ առաջացրեց Հայաստանում։ Հայ Արշակունիները դառնում էին ոխերիմ թշնամիները Սասանյանների և այն ամենի, ինչ որ բխում էր զրադաշտական գաղափարախոսությունից։

Սասանյանների կողմից հովանավորվող զրադաշտականությունը Հայաստանում դիտվում էր որպես հայերի ստրկացման և պարսիկների հետ նրանց միաձուլման գաղափարի կրող։ Ստեղծված պայմաններում քրիստոնեության նպատակն էր Հայաստանի քաղաքական, գաղափարական և մշակութային ինքնության և ինքնուրույնության պահպանումը։ Քրիստոնեության ընդունումը Հայաստանում հակասում էր նաև հունահռոմեական կրոնագաղափարական համակարգին, սակայն Հռոմը հանդուրժեց այն, քանի որ ուղղված էր Սասանյան Իրանի և զրադաշտականության դեմ։

Ի դեմս քրիստոնեական եկեղեցու, ֆեոդալական հայ ավագանին գտավ ամենահարմար գաղափարական արդարացումը սոցիալ-տնտեսական այն փոփոխությունների, որոնք նրան դարձրել էին անմիջական արտադրողի՝ շինականի փաստական տերը։ Քրիստոնեությունը միաժամանակ դարձավ գաղափարական հենք հայկական վաղֆեոդալական մշակույթի ձևավորման և զարգացման համար։

Հայաստանում վերստին հաստատված Արշակունյաց դինաստիան, որն

---

58 Այս «Աշխարհագիր մատեանք» կոչվող ցուցակները հետագայում Անանիա Շիրակացին (610—685) օգտագործել է Մեծ Հայքի, Վիրքի և Աղվանքի վարչական բաժանումներին վերաբերող իր գրքում, որը կոչվել է «Աշխարհագիր», իսկ հետագայում քարտեզը կազմելուց հետո՝ «Աշխարհացոյց»։ Շիրակացու ձեռքին եղել է Տրդատ Գ-ից հետո կազմված «Աշխարհագիրը», որտեղ նաև արտացոլվել են Մեծ Հայքի 363—385 թթ. քաղաքական սահմանները։

59 Տե՛ս А. И. Павловская, Египетская хора в IV в., М., 1979, стр. 232.

ուժեղ կենտրոնացված պետություն ստեղծելու քաղաքականություն էր սկսել, միապետական իշխանության գաղափարական հիմնավորման խիստ կարիք ուներ։ Հենց այդպիսի գաղափարախոսություն էր քրիստոնեությունը, որը թագավորի իշխանությունը հռչակեց սրբազան, աստծո ողորմածությամբ տըրված, իսկ թագավորներին՝ աստծո օծյալներ։

Քրիստոնեության հաղթանակի համար բարենպաստ պայմաններ էին ստեղծվել նաև կրոնագաղափարական առումով։ Արշակունյաց Հայաստանում մազդեականությունը ,որն Իրանում պետական կրոն էր հռչակված, հող չգըտավ տարածվելու։ Սակայն Հայաստանում իշխող դասակարգերի գաղափարախոսությունը քիչ էր տարբերվում Իրանի իշխող դասակարգերի գաղափարախոսությունից, մասնավորապես արևապաշտությունից (միթրաիզմ), իսկ քրիստոնեությունը շատ բան էր վերցրել արևապաշտությունից[60]։ III դ. վերջերին քրիստոնեությունն արդեն բավական ավարտված սինկրետիկ կրոնական աշխարհայացք էր, որի մեջ ներծծված էին անտիկ աշխարհայեցողության շատ տարրեր[61]։ Բացի այդ, Ասորիքում և Փոքր Ասիայում առաջացող քրիստոնեական համայնքների ներքին կառուցվածքը՝ իր շեշտակիորեն արտահայտված եկեղեցական հիերարխիայով, շատ մոտ էր կենտրոնացված միապետական կազմակերպությանը։

Եկեղեցին իր կառուցվածքով կենտրոնացված ուժեղ պետություն ստեղծելու հետևողական քաղաքականության գաղափարական լավագույն հիմնավորումն էր։ Արշակունի թագավորները նաև մտադիր էին եկեղեցու օգնությամբ սանձել հայ նախարարների անջատողական տրամադրությունները։ Իսկ եկեղեցին վայելում էր պետության մեծ հովանավորությունը, պետությունն օգնում էր նրան, իրավունք էր տալիս պայքարելու հեթանոսական կրոնի ու քրմության և ամեն տեսակ հերետիկոսության դեմ։ Այդ պայքարը նշանավորվեց նրանով, որ հրով ու սրով ոչնչացվեցին նախաքրիստոնեական պաշտամունքի անհնազանդ ներկայացուցիչները, նրանց ողջ ունեցվածքը դարձավ հողատերերի նոր խավի՝ հոգևոր տերերի սեփականությունը։

Անտիկ աշխարհի մայրամուտին ձևավորվող քրիստոնեությունը մի կրոնական սիստեմ էր, որը I—II դդ. բավական տարածվել էր[62]։ Եվսեբիոս Կեսարացու «Եկեղեցական պատմությունը» լի է մ. թ. I դարում քրիստոնյաների հալածանքների մասին եղած ավանդություններով։ Ֆ. Էնգելսը քրիստոնեության վաղ ժամանակաշրջանի մասին գրել է, որ «ծագման իր առաջին շրջանում այն ճնշված դասակարգերի կրոնն էր՝ ստրուկների, ստրկությունից ազատվածների, աղքատների, իրավազուրկների և կամ նվաճված ու ճնշված ժողովուրդների»[63]։ III—IV դդ. հաշտվելով պետական իշխանության,

---

60 Տե՛ս Ե. Գ. Տեր-Մինասյան, *Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից*, Երևան, 1968, էջ 12—16։ Տե՛ս նաև՝ С. Т. *Еремян*, Культура раннефеодальной Армении (IV—VII вв.), Ереван, 1980, стр. 9.

61 Նույն տեղում։

62 Համա. Մ. Աբեղյան, *Մեսրոպ Մաշտոցը և գրի ու գրականության սկիզբը* (տե՛ս Մ. Մաշտոց, *Հոդվածների ժողովածու*, Երևան, 1968, էջ 246։

63 *К. Маркс* и *Ф. Энгельс*. Соч., 2-е изд. т. 22, с. 465. *И. А. Кривелев*, История религии, т. I, М., 1975, стр. 137—139.

*իշխանավորների հետ և դասակարգային հիերարխիկ աստիճանի վրա բարձր դիրք գրավելով, քրիստոնեությունը հնազանդության կոչ էր անում շահագործվող քրիստոնյաներին[64]։*

*Հռոմեական կայսրության մեջ քրիստոնեությունն սկզբում տարածվել էր նրա արևելյան պրովինցիաներում՝ Ասորիքում, Պաղեստինում, Կապադովկիայում և Աֆրիկայում։ Այս երկրներից քրիստոնեական ուսմունքը տարբեր ձևերով թափանցում էր Հայաստան և Անդրկովկաս, ինչպես և Իրանի խորքերը։ Փոքրասիական և ասորական նվաճված քաղաքների բնակչության բռնագաղթը և նրանց բնակեցումը Սասանյանների նոր հիմնադրված քաղաքներում հատկապես նշանակալից դեր խաղացին քրիստոնեական համայնքների տարածման գործում։ III դ. վերջերին և IV դ. սկզբներին քրիստոնեական կրոնը դերիշխող էր դարձել Հռոմեական կայսրության արևելյան մասերում։ Նույն վիճակն էր Մեծ Հայքում, որտեղ քրիստոնեությունն սկսել էր մուտք գործել դեռևս II դ. վերջերից՝ Ասորիքից Կապադովկիայի և Փոքր Հայքի կողմերից եկող քարոզիչների ջանքերով[65]։*

*Սկզբնական շրջանում ավելի մեծ դեր էր կատարում Օսրոյենեն՝ իր Եդեսիա կենտրոնով։ Ինչպես հայտնի է, քրիստոնեությունն առաջին անգամ իշխող դինաստիայի կրոն դարձավ Եդեսիայում, որի թագավոր Աբգար Թ-ն (179—214) քրիստոնեություն էր ընդունել[66]։ Եդեսիայից բացի, Ադիաբենից ևս, որը դարձել էր քրիստոնեական առաջին օջախներից մեկը, Հայաստան էին թափանցում քրիստոնյա գործիչներ ու տարածում քրիստոնեական վարդապետությունը։ Նման կապերի ու փոխհարաբերությունների համար բարենպաստ պայմաններ էին ստեղծվել հատկապես մ. թ. I դարի կեսից սկսած։ Ահա այս ժամանակ Բագրատունի տոհմի նախնիները՝ «ազգն Շամբատայ»* (Σαμβάται ἔθνος)[67]*, որոնց բնակության սկզբնական վայրն էր Ադիաբենին սահմանամերձ Մահկերտան գավառը, ընդունում են քրիստոնեություն, որն սկզբնական շրջանում շփոթվում էր մովսիսական կրոնի հետ։ Մովսես Խորենացին իր «Հայոց պատմության» մեջ Բագրատունիների նախնիներին համարում է հրեա[68], որ նշանակում է եբրայական կրոնի հետևորդ, իսկ իրականում նրանք քրիստոնեական կրոնի հետևորդ էին[69]։ III դարի կեսերին է վերաբերում հիշատակությունը Ալեքսանդրիայի եպիսկոպոս Մեհրուժանի մասին[70]։ Հայաստանում ամենից առաջ եպիսկոպոսություն է հաստատվում Ծոփքին հարևան Տարոն գավառում (Աշտիշատ վայրում)[71]։ Եդեսիայից եկող*

---

64 Հ.. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 128։*

65 *Նույն տեղում, էջ 124։*

66 *A. Gutschmid*, Untersuchungen über die Geschichte des Königreichs Osroene Mem. de l' Acad. imp, des sciences de St.-Pétersbourg 1887; *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, с. 347.

67 Ptol., YI, 1, 2:

68 Խորենացի, *Բ, գ, է։*

69 Հ. Գ. Մելքոնյան, *Ադիաբենի պետությունը և Հայաստանը, Երևան, 1980, էջ 131—134։*

70 *«Եւսեբիոս Կեսարացի. Պատմութիւն եկեղեցւոյ», թարգմանեալ ի նախնեաց Ե դարուն և հրատարակեալ հանդերձ նոր թարգմանութեամբ ի յունարէնէ ի Հ. Ճարեան», Վենետիկ, 1975, VI, 46. 2։*

71 *Н. Адонц, նշվ. աշխ., էջ 347—348։*

քրիստոնեական քարոզչության մյուս կենտրոնը կազմակերպվում է Արտազ գավառում (այժմ՝ Մակու)[72]։

Քարոզչական նպատակներով Հայաստան է գալիս նաև հռչակավոր գնոստիկ ասորի Բարդածանը (154—222), որը ծագումով Եդեսիայից էր։ Խորենացին նշում է, որ Բարդածանը Հայաստանում հետևորդներ չգտավ, բայց նա չի անտեսվել Հայոց արքաների կողմից։ Խոսրով Ա-ն Բարդածանին հրավիրել է իր մոտ և հանձնարարել գրելու իր նախնիների պատմությունը[73]։

Հայաստանի հարավային շրջաններից մի ուրիշ քրիստոնյա եպիսկոպոս՝ Արքելայոսը (275—277) հանդես է գալիս պարսիկ Մանիի հետևորդների՝ մանիքեցիների դեմ, որոնց ուսմունքը նույնպես թափանցում էր Հայաստան։

Քրիստոնեության մյուս հոսանքը, ինչպես նշվեց, թափանցում էր Կապադովկիայից և Փոքր Հայքից։ Այն հատկապես ուժեղանում է Սասանյանների հաստատվելուց հետո։ Քրիստոնեությունը Հայաստանում հաստատվել է պետական կրոն նույն պայմաններում, ինչ որ զրադաշտականը Իրանում։ Այս շարժման հիմքում ընկած էր կենտրոնական իշխանության ամրապնդման գաղափարը։ Տրդատ Գ-ն գլխավորում էր նոր կրոնի՝ քրիստոնեության վարդապետության հաղթանակը, քանի որ այն կոչվում էր ամրապնդելու Մեծ Հայքի նորոգվող թագավորության կենտրոնացված պետությունը։ Պայքարը նոր կրոնի վարդապետության անաղարտության համար տարվում էր ոչ միայն մանիքեյության դեմ, որը հելլենիստական «համաշխարհային» կրոնափիլիսոփայական ուսմունք էր՝ իրեն հատուկ դուալիզմով և էկլեկտիզմով, այլև զրադաշտականության դեմ։

Կրոնական առումով Հայաստանում, ինչպես և Միջագետքում հին արևելյան պաշտամունքների կողքին գոյակցում էին հելլենիստական և հռոմեական աստվածությունների պանթեոնները, ինչպես և «քաղդեացիների»՝ Բաբելոնի աստղագուշական և աստվածաբանական գաղափարները և գնոստիկյան բազմաթիվ ուսմունքներ։ Հատկապես քաղաքային համայնքներում լայնորեն տարածվում էին վաղ-քրիստոնեական ուսմունքները, որոնք վերաճել էին

72 Նույն տեղում, էջ 348—349։ Ըստ ավանդության Արտազ գավառում հետագայում հիմնըված Ս. Թադեոս առաքյալի վանքի տեղում է գտնվում Թադեոս առաքյալի գերեզմանը։ Խորենացին հատուկ ուշադրություն է նվիրում Արտազ գավառին և այդ տեղին։ Ըստ ավանդության, որ վարքագրական բնույթ ունի, Գրիգոր Լուսավորչի մայրը հղիացել է նրանով Թադեոս առաքյալի գերեզմանի վրա (Խորենացի, Բ, հդ)։

73 Հայտնի է Բարդածանի գործունեությունը երաժշտության բնագավառում, որն առնչվում է նաև Հայաստանի հետ։ Այս ժամանակաշրջանում Սաղմոսարանի կողքին պիտի գոյություն ունենար «կոնդակը», իբրև ոլորված գլանաձև թուղթ կարճ օրհներգով (տե՛ս Հր. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հ. Բ, Երևան, 1973, էջ 632)։ Այդ երաժշտության հիմնական տարածողներից էր Բարդածանը՝ հելլենիստական ժամանակաշրջանի համար բնորոշ համապարփակ կուլտուրայի տեր մի անձնավորություն։ Արդեն այն ժամանակաշրջանում, ինչպես Ասորիքում, նույնպես և հարևան Հայաստանում, ժողովրդական երաժշտական կուլտուրան պիտի հիմք հանդիսանար կրոնական բնույթի գործերի համար։ Ասորական օրհներգությունը նախքան արևմտաեվրոպական երաժշտության մեջ թափանցելը, հաստատվել էր հայկական երաժշտական միջավայրում, արդեն մ. թ. III դարում։ Չէ որ Բարդածանը և նրա որդի Հարմոգիոսը հայտնի են իբրև եկեղեցական օրհներգության դպրոցի հիմնադիրներ։ Մեզ հասել է մի ամբողջական «գնոստիկ սաղմոսարան», բաղկացած 150 հայկական սաղմոսներից (Р. И. Грубер, История музыкальной культуры с древнейших времен до конца XVI в., 1, М.—Л., 1941, с. 342)։

հուդաիզմի։ Բազմաթիվ էին քաղաքներում հրեական համայնքները։ Տրդատ Գ-ի գահակալությունից առաջ Հայաստանի պարսկական մասում թագավորող Սասանյան դինաստիայի ներկայացուցիչները արմատախիլ էին անում հելլենիստական և հռոմեական պաշտամունքները և դրա փոխարեն տարածում զրադաշտականությունը։ Հայաստանի հեթանոսական սրբավայրերի տեղում հիմնվում էին «Հայաստանի մեծ թագավորների» անվանական կրակները («Հրատն» կամ «Հուր»). օրինակ՝ Որմիզդ-Արտաշիրի անվանական տաճարը Աշտիշատում, որտեղ սպասարկում էին նրա կողմից «Սակաստան, Տուրեստան և Հնդիկք մինչև ծովափ» թագավորությունից բերված հնդիկ քուրմերը։ Բագավանում և նրանից ոչ հեռու գտնվող Անգղում հնուց գոյություն ուներ զրադաշտական մոգերի խոշոր համայնք՝ «մագուստան»[74], որի դեմ պետք է պայքարեին Տրդատ Գ-ն և նրա գործակիցները։

Հայկական ավանդական ֆեոդալական պատմագրությունը Հայաստանում քրիստոնեական կրոնի արմատավորող և հայ եկեղեցու հիմնադիր է համարում Թադեոս և Բարդուղիմեոս առաքյալներից հետո Գրիգոր Լուսավորչին։ Քրիստոնեության մյուս հոսանքը, ինչպես նշվեց, Հայաստան էր թափանցում Կապադովկիայից։ Փոքրասիական քարոզիչների առաջին համայնքները հիմնվում են Կապադովկիային սահմանակից Հայաստանի Դարանաղի, Եկեղյաց և Դերջան գավառներում։ Այս տեղերի հայկական միջավայրից էին դուրս եկել Գրիգոր Լուսավորիչը (252—325) և նրա կրտսեր ժամանակակից հռետոր Պրոերեսիոսը (272—363)[75]։ Գրիգորը սկզբնապես հայկական Դարանաղի, Եկեղյաց և Դերջան գավառների եպիսկոպոսն էր, նշանակված Կեսարիայի արքեպիսկոպոսի կողմից՝ 296 թ. առաջ, հավանաբար մինչև 293 թ.։

Հայերի դարձի կապադովկիական վերսիան պատմականորեն ավելի ճիշտ պիտի համարել։ Դիոկղետիանոս կայսեր վարչական նոր բաժանումների հետևանքով «տիեզերական» եկեղեցին ևս բաժանվում էր ըստ դիոցեզների։ Ասիայի դիոցեզում այդպիսի եկեղեցական կենտրոն էր Եփեսոս քաղաքը, իսկ Պոնտականում՝ Կեսարիա քաղաքը («Կեսարիա Կապադովկիոյ»)[76]։ Զինվորական իշխանության տեսակետից Մեծ Հայքի թագավորությունը Վիրքի և Աղվանքի հետ հռոմեական ռազմական կոալիցիայի սիստեմում ենթարկվում էր Կապադովկիայի ռազմական օկրուգին, իսկ Դիոկղետիանոսի վարչական ռեֆորմներից հետո այն Պոնտական դիոցեզի կազմում էր։ Զինվորական իշխանության նման եկեղեցական իշխանությունը ևս պիտի հիերարխիկ կարգով ենթարկվեր Պոնտական դիոցեզին։ Ձևավորվող Հայոց եկեղեցու պետը՝ կաթողիկոսը, պետք է ձեռնադրվեր Կապադովկիայի Կեսարիայում նստող մետրապոլիտի կողմից։ Այդ կարգը պետք է սահմանվեր 298 թ., Մծբինի 40-ամյա դաշնագիրը կնքելուց հետո, և իրոք՝ Գրիգոր Լուսավորիչն առաջինն էր, որ

---

[74] Պտղոմեոսը Անգղը հիշատակում է Μαγουστάνα անվան տակ։ (Claudii Ptolemaei Geographia, Vol. I, pars 2, V, 12, Parisiis, 1901, էջ 944։ Զրադաշտական այս կենտրոնների կողքին անհրաժեշտ է հիշատակել Վարուժան թուչունը (Vargan), որը համարվում էր Վահագնի (Վահագն, Վարթրագն) թռչուն և էմբլեմ։ Նրան նվիրված սրբազան գավառները պիտի կոչվեին «Վարաժնունիք» (Վահագնունիք)։ Այս պաշտամունքի հետ է կապվում նաև Վարագ (* Վարհագն) սրբավայրը։

[75] Տե՛ս Արշակ Ալպոյաճյան. Պատմութիւն Հայ Կեսարիոյ, հատ. Ա, Գահիրե, էջ 80։

[76] Տե՛ս М. Я. Сюзюмов, Христианская церковь в IV—VI вв., «История Византии», I, гл. 6, М., 1967, стр. 145, 146.

301 թ. գնաց Կեսարիա, որտեղ նստող մետրապոլիտը ձեռնադրեց նրան Մեծ Հայքի արքեպիսկոպոս։ Այնուհետև այդ կարգը շարունակվեց մինչև Պապ թագավորը (369—373)։

Հայերի դարձի ավանդական պատմությունը, որի հեղինակն իրեն անվանում է «Ագաթանգեղոս»[77], հաղորդում է, որ թագավորական ողջ ընտանիքը մկրտվում է Եփրատ-Արածանիի ակունքների մոտ՝ Բագավան վայրում, Նպատ սրբազան լեռան ստորոտում, Գրիգոր Լուսավորչի կողմից։ Տրդատ Գ թագավորը ստանում է մկրտության անունը՝ «Յովհաննէս»[78]։ Ի նշանավորումն այս դեպքի հիմնվում է թագավորի անվանական՝ «սուրբ Յովհաննէս» բազիլիկ տաճարը Բագավանում, որը մինչև այսօր գոյություն ունի[79]։ Այս իրադարձության ավանդական տարեթիվն է 301։ Ի նշանավորումն այս մեծ իրադարձության, երկրի մայրաքաղաք Վաղարշապատում մոտ 303 թ., դրվում է Էջմիածնի տաճարի հիմքը, որը պիտի նշանավորեր Հայոց եկեղեցու առաքելական լինելը։ Արևելքի կրոնական ուղղություններին բնորոշ «տեսիլներից» էր Գրիգոր Լուսավորչի «տեսիլքը», երբ կոչված էր հիմնավորելու այն դրույթը, թե «Միածինը» իջնելով «շողակաթի» ձևով, տքնող Գրիգոր Լուսավորչին շնորհել է Հայոց եկեղեցու հովվապետությունը։

Քրիստոնեության հաղթանակը Հայաստանում ամենից առաջ հռոմեական կողմնորոշում ունեցող թագավորի և նախարարների հաղթանակն էր։ Նրանց հակադրված էին այն նախարարները, որոնց շահերը սերտորեն կապված էին Սասանյանների հետ։ Ըստ երևույթին, սկզբնական շրջանում նոր կրոնն առանձին ժողովրդականություն չէր վայելում և ազնվականության մի մասը ժողովրդական զանգվածների հետ միասին պայքարում էր հանուն իր նախնիների հավատքի։ Դրա դեմ է վրդովվում Մովսես Խորենացին՝ նշելով, որ մարդիկ «բնությամբ մեծամիտ և կամակոր լինելով, դիմադրում են թագավորի կամքին՝ քրիստոնեական կրոնի վերաբերմամբ, հետևելով իրենց կանանց և հարճերի կամքին»[80]։

Քրիստոնեության տարածումը Հայաստանում ուղեկցվում էր հեթանոսա-

---

[77] Գոյություն ունի ստվարածավալ գրականություն Ագաթանգեղոսի տարբեր լեզուներով առկա խմբագրություններին և Գրիգոր Լուսավորչի կյանքին ու գործունեությանը վերաբերող հարցերին. «Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց», հրատ. Տէր-Մկրտչեան և Ստ. Կանայեանց, Տփղիս, 1909, *Н. Марр,* Крещение армян, абхазов и аланов св. Григорием, СПб., 1905. Պարույր Մուրադյան, *Ագաթանգեղոսի հին վրացերեն խմբագրությունները, Երևան, 1982*; Ղ. Ալիշան, *Հայապատում, Վենետիկ, ս. Ղազար, 1901,* Ղ. Ալիշան, *Արշալոյս քրիստոնեութեան ի Հայս, Վենետիկ, Ս. Ղազար, 1920,* Մ. Օրմանեան, *Հայոց եկեղեցին և իր Պատմութիւնը, Կ. Պոլիս, 1911,* Հ. Վ. Հացունի, *Կարևոր խնդիրներ հայ եկեղեցւոյ պատմութեան, Վենետիկ, ս. Ղազար, 1927,* *B. Garitte.* Documents pour (l'etude du livre d' Agathange, Vaticano, 1946,) Ն. Ակինյան, *ս. Գր. Լուսավորիչ, «Հան. Ամս», ԺԳ (1949),* Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Բ,* Պ. Անանեան, *Ս. Գրիգոր Լուսաւորչի ձեռնադրութեան թուականը եւ պարագաները, Վենետիկ, ս. Ղազար, 1960,* Ս. Կոգեան, *Հայոց եկեղեցին մինչև Փլորենտեան ժողովը, Բեյրութ, 1961,* Ա. Տեր-Ղևոնդյան, *Ագաթանգեղոսի արաբական նորահայտ ամբողջական բնագիրը, ՊԲՀ, 1973, 1 և այլն։*

[78] Ագաթանգեղոս, *էջ 396, տե՛ս Հ.* Աճառյան, *Հայց անձնանունների բառարան, հ. Գ, էջ 539։*

[79] *И. А. Орбели,* Багаванский храм и его надписи «Христианский Восток», Птг., 1917, стр. 128—143.

[80] Խորենացի, *Բ, ղբ, էջ 246 (աշխ. թարգմ., էջ 233)։*

*կան տաճարների ստեղծած հողատիրության ոչնչացմամբ։ Քրիստոնեական սրբավայրերն· ստեղծվում էին հեթանոսական տաճարների տեղում, որոնց հողերն անցնում են եկեղեցուն։ Ընդարձակ մեհենական հողերը Տրդատ Գ-ն հանձնում էր եկեղեցու սպասավորներին, որպես հավիտենական և չօտարվող տիրույթներ։ Հոգևորականության շարքերը համալրվում էին նաև քրմական դասին պատկանող մարդկանցով, որոնք այդ ձևով պահպանում էին իրենց հողերի ու գույքի նկատմամբ ունեցած ժառանգական իրավունքները, ինչպես նաև պաշտամունքի սպասավորներ լինելու արտոնությունը։ Կարճ ժամանակում ստեղծվում է գյուղական և քաղաքային քահանաների մի ամբողջ բանակ։*

*Տրդատ Գ Մեծի ժամանակվանից արդեն քրիստոնեական եկեղեցին դառնում է Հայաստանի ու Հռոմեական կայսրության քաղաքական մերձեցման կարևորագույն օղակներից մեկը, չնայած որ Դիոկղետիանոսի կողմից 303 թ. սկսվում են հալածանքներ քրիստոնյաների դեմ և շարունակվում են նաև նրանից հետո։ Մաքսիմիանոս Դայա (305—313) կայսեր գահակալության վերջին տարիներին Հայաստանի և Հռոմեական կայսրության փոխհարաբերությունները բավական լարված էին, եղան նույնիսկ հայկական և հռոմեական զորքերի զինված ընդհարումներ (311—312)[81]։ Այդ շատ ձեռնտու էր Սասանյաններին։ Ուշ շրջանի պատմիչներն այս ընդհարումները բնութագրել են որպես քրիստոնյա Հայաստանի պայքարը հեթանոս Հռոմի դեմ։*

*Քրիստոնեություն ընդունելուց հետո Մեծ Հայքի արտաքին քաղաքականության ղեկավար դերում հանդես էր գալիս ոչ միայն Հայոց արքան, այլև՝ հայ եկեղեցու առաջնորդը։ Դա հնագույն ավանդության շարունակությունն էր, երբ քրմապետը տնօրինում էր հարևան երկրների հետ ծագած վիճելի հարցերը։ Քրիստոնյա հոգևորականության ներկայացուցիչներն սկսում են խոշոր դեր խաղալ դիվանագիտական հարաբերությունների ասպարեզում՝ որպես դեսպաններ ու հետախույզներ։*

*Իրենց քաղաքական հակառակորդ Մաքսիմիանոս Դայայի դեմ Կոստանդիանոս Ա-ի և Լիկիանիոսի տարած հաղթանակից ու 313 թ. Միլանի «էդիկտի»[82] հրապարակումից հետո պետք է որ մեղմանար լարվածությունը Հռոմի և Հայաստանի միջև։ Սակայն քրիստոնյաների դեմ Կոստանդիանոս Ա-ի ոխերիմ թշնամու՝ Հռոմեական կայսրության արևելյան մասի կայսր Լիկինիոսի (308—323) սկսած հալածանքները կրկին սրելու էին հարաբերությունները։*

*Վերջապես 323 թ. Կոստանդիանոս Ա-ն հաղթում է նաև Լիկինիոսին և դառնում ողջ կայսրության միահեծան տերը (324—337)։ Ի նշանավորումն այս իրադարձության, Կոստանդիանոս Ա-ն հրապարակում է մի հրովարտակ, որով*

---

81 Եւսեբիոս Կեսարացի, *Պատմութիւն եկեղեցւոյ*, Վենետիկ, 1875։ *Հ. Մանանդյանը կարծում է, որ կայսրը պատերազմ էր մղել «Հռոմեական Հայաստանի, այսինքն՝ Անդրտիգրիսյան երկրներից մեկի դեմ» (նշվ. աշխ., էջ 125—126)։*

82 *Այն հավատքի հանդուրժողականություն էր հռչակում և ընդունում քրիստոնեության իրավահավասարությունը պետական հեթանոսական կրոնի հետ։ Սակայն, ինչպես այժմ պարզվում է, քրիստոնեական եկեղեցու պատմության մեջ Միլանի էդիկտին հատկացրել են մեծ տեղ, մինչ իրականում այդպես չի եղել։ Նույնիսկ առաջին (Նիկիական) տիեզերական ժողովից (325 թ.) հետո էլ այն վերջնականապես չէր դարձել կայսրության պետական կրոն, չնայած որ Արիոսի ուսմունքը նզովվեց։ Կոստանդիանոս Ա Մեծը արիոսական էր և, միայն 337 թ., երբ մահամերձ էր, նա հաղորդվեց։ «Ուղղափառ» տիեզերական եկեղեցին այնուամենայնիվ Կոստանդիանոսին և նրա մորը՝ Հեղինե թագուհուն, դասեց սրբերի շարքը։*

քրիստոնեությունը ճանաչվում էր որպես միակ ճշմարիտ կրոնը, իսկ հեթանոսությունը հայտարարվում էր մոլորություն, թեև հանդուրժելի[83]։

Հռոմեական կայսեր կողմից քրիստոնեությունը պետական կրոն հռչակելուց հետո առաջնակարգ նշանակություն են ստանում կազմակերպչական հարցերը, որոնց լուծմանն է ձեռնարկում ինքը՝ պետությունը։

325 թ. հունիսի 19-ին Նիկիա քաղաքում կայսրը հրավիրում է առաջին տիեզերական ժողովը։ Առիթը Եգիպտոսի թեմի առաջնորդ Արիոսի «հերետիկոսությունն էր»[84]։ Ժողովին հրավիրված էին քրիստոնեական բոլոր եկեղեցիների ներկայացուցիչները, նաև Տրդատ թագավորն ու Գրիգոր Լուսավորիչը՝ Հայաստանից։ Սակայն իրենց փոխարեն նրանք ուղարկեցին վերջինիս որդուն՝ Արիստակեսին[85]։

Կոստանդիանոսը պաշտպանում էր ուղղափառներին, ուստի Արիոսի ուսմունքը համարվեց հերետիկոսական[86], իսկ դրա հիմնադիրն աքսորվեց[87]։ Ժողովում մշակվեցին նոր կրոնի հիմնական սկզբունքները։ Քրիստոնեությունը դաշն էր կնքում կայսեր հետ, ի նշան որի հրապարակվեց «Հավատի նիկիական հանգանակը»։ Բայց սրանով վեճերին վերջ չտրվեց, ընդհակառակը, դրանք ավելի կատաղի դարձան, իսկ Կոստանդիանոս կայսրը հարեց արիոսականությանը։

Հայաստանում քրիստոնեությունը պետական կրոն ճանաչելուց հետո քրիստոնեական եկեղեցին որոշակի կառուցվածք է ձեռք բերում։ Կազմակերպվող հայ եկեղեցու գլուխ է կանգնում Գրիգոր Ա Լուսավորիչը, որն արքեպիսկոպոս է ձեռնադրվում Կապադովկիայի Կեսարիա քաղաքի արքեպիսկոպոսի կողմից։ Ըա ևս ցույց էր տալիս Հայաստանի կապվածությունը Հռոմի հետ, որը առաջ բերեց Սասանյանների դժգոհությունը։ Ս. Գրիգորի Վարքի հայերեն խմբագրության համաձայն Գրիգոր Լուսավորիչը Հայաստանի տարբեր գավառներում (Բագրևանդ, Բասեն և Կոտայք, Եկեղյաց և Դերջան, Դարանաղի, Կարին, Սպեր, Տարոն և Տայոց երկիր, Խորխորունիք, Շիրակ, Կորդվաց աշխարհ, Վանանդ-

---

83 Ըստ եկեղեցական պատմիչների, 324 թ. Գրիգոր արքեպիսկոպոսի գլխավորությամբ Տրդատ Գ-ն հատուկ դեսպանություն է առաքում Հռոմ։ Ըստ ավանդության, Հռոմ ժամանած հայ դեսպանները շնորհավորում են Կոստանդիանոս Ա-ին իր թշնամիների դեմ տարած հաղթանակի ու միահեծան գահակալության, ինչպես և քրիստոնեության հաղթանակի առթիվ։ Կոստանդիանոս Ա Մեծը և Սեղբեստրոս պապը (314—335) «հավիտենական դաշինք» են կնքում Տրդատ Դ-ի և Գրիգոր Լուսավորչի հետ՝ ընդդեմ բոլոր «հեթանոսների», ի նշան որի Կոստանդինոս Ա-ն դեսպաններին է նվիրում իր նոր դրոշը (λάβαρον)՝ զարդարված Քրիստոսի անվան մոնոգրամ ձևով պատկերված խաչով։ Այնուհետև այդ դրոշը երևան է գալիս Սասանյանների դեմ հայերի մղած պատերազմներում։

Ինչպես նշում է Հ. Մանանդյանը, «Քրիստոնեության մուտքը Հայաստան իբրև պետական կրոն, անշուշտ, խիստ մեծ կարևորություն ունեցող փաստ է։ Հայաստանը այնուհետև սերտ հարաբերությամբ կապվեց Հռոմեական կայսրության հետ ոչ միայն քաղաքականապես, այլև կուլտուրապես» (նշվ. աշխ. էջ 129)։

84 Մ. Օրմանյան. Ազգապատում, Կոստանդնուպոլիս, 1913, հ. Ա, էջ 112—113։

85 Դրանից մեկ տարի անց նա սկսեց վարել հայրապետական պաշտոնը (326—333)։ Նույն տեղում, 82—86, էջ 117—124, տե՛ս նաև «Կանոնագիրք Հայոց», հ. Ա, աշխատասիրությամբ Վ. Հակոբյանի, Երևան, 1964, էջ 141։

86 Նույն. տեղում։

87 Մ. Օրմանյան, նշվ. աշխ., հ. Ա, 78, էջ 112։

*Արեղյանք-Դարեղյանք, Արշամունիք) 12 եպիսկոպոս է ձեռնադրել, իսկ ըստ հունարեն խմբագրության՝ 13[88]։*

*Հետագայում առասպել է ստեղծվում Գրիգոր Լուսավորչի արքայական՝ պարթևական ծագման մասին, որի վարքագրությունը սերտորեն միահյուսված է Տրդատ Գ-ի վարքագրության հետ։ Արդեն IV դարի կեսերին Լուսավորչի տան ներկայացուցիչներն իրենց հորջորջում էին «Պարթև»։*

*Նախարարական հասարակարգի պայմաններում եկեղեցու առաջնորդի՝ Մեծ Հայքի արքեպիսկոպոսի պաշտոնը դառնում է Գրիգոր Լուսավորչի տոհմի ժառանգական արտոնությունը։ Ինչպես առաջներում գերագույն քրմապետի պատիվն անխզելի էր գլխավոր դատավորի գործակալությունից, այդպես էլ քրիստոնեության շրջանում հայ եկեղեցու առաջնորդը միաժամանակ գլխավորում էր «Մեծի դատաւորութեան» գործակալությունը[89]։ Նա էր գերագույն դատավորը։ Այդ պաշտոնների հետ կապված էին հսկայական եկամուտներ, որոնք ստացվում էին ընդարձակ, օրեցօր աճող եկեղեցական կալվածքներից։*

*Գրիգոր Լուսավորչի տան այս ժառանգական իրավունքը վիճարկում էին Աղբիանոս եպիսկոպոսի սերունդները։ IV դարի ընթացքում, նայած քաղաքական իրադրությանը, կաթողիկոսական գահին էին նստում մերթ Լուսավորչի և մերթ Աղբիանոսի (որը քրմի որդի էր) տան ներկայացուցիչները։ Սկզբում, Տրդատ Գ Մեծի և նրա որդու՝ Խոսրով Բ Կոտակի օրոք, որոնք անշեղորեն հակասասանյան պայքար էին տանում, գերակշռությունը Լուսավորչի տան կողմն էր, բայց երբ երկրում ուժեղանում էր Սասանյանների քաղաքական ազդեցությունը, պատրիարքական գահի վրա Գրիգորի տան ներկայացուցիչների փոխարեն հաստատվում էին Աղբիանոսի տան ներկայացուցիչները։*

*Քրիստոնեության այս նախնական շրջանում Հայաստանի և հարևան երկրների բնակչության զգալի մասը դեռևս հեթանոս էր, այդ իսկ պատճառով հատուկ դեր էին կատարում քարոզիչները՝ քորեպիսկոպոսները, որոնք գնում էին այդ երկրների առավել հետամնաց շրջանները՝ կրոնական նոր ուսմունքը տարածելու։ Այդ քարոզիչներից առանձնապես հայտնի է Գրիգորիս եպիսկոպոսը, որն ուղարկվել էր մասքութների և Կուր ու Արաքս գետերի ստորին հոսանքում ապրող այլ վաչկատունների մոտ, սակայն սպանվել էր նրանց ձեռքով՝ 336 թ.[90]։ Ս. Գրիգորի Վարքի հունարեն խմբագրության համաձայն, Գրիգոր Լուսավորիչը քարոզիչներ է ուղարկում (Իրենարքոս քահանա, Սոփրոնիոս, Թովմաս) նաև Վիրք, Լազերի երկիրը և Աղվանք[91]։*

*IV դարի կեսերից սկսած հայ եկեղեցին, որը փաստորեն նախարարական խոշոր կազմակերպություն էր դարձել, նախարարների հետ միասին սկսում է պայքարել Արշակունիների դեմ՝ իր ժառանգական իրավունքների պահպանման ու ընդլայնման համար։*

*Հայ հոգևորականությունը մեծ դեր էր խաղում տնտեսական ու քաղաքական կյանքում։ Նա պահում էր արհեստավորական գործատներ («գործոց տուն») և խանութներ՝ կախյալ արհեստագործներով ու վաճառականներով,*

---

88 G. Garritte, նշվ. աշխ., էջ 102—104, 172։

89 Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934, էջ 76—79։

90 Փավստոս, Գ, զ։

91 G. Garitte, նշվ. աշխ., էջ 101, 102, 170։

հսկայական դրամական կուտակումներ էր կատարում։ Այդ շրջանի պատմիչները հատկապես շեշտում են հարստության ու փարթամության, շքեղ հագուստների ու ձիավարության հանդեպ հոգևորականության տածած սերը[92]։ Հոգևորական բարձր պաշտոնյաները՝ Հայաստանի քահանայապետն ու եպիսկոպոսները դեսպանների ու հայոց թագավորների ներկայացուցիչների դեր էին կատարում հռոմեական կայսրերի արքունիքում[93]։

Հետևողականորեն հողային հարստություններ կուտակելու հետ մեկտեղ եկեղեցին ջանում էր ապահովել իր ժառանգական իրավունքները դրանց նկատմամբ։ Դրան կարելի էր հասնել այն դեպքում, եթե, համաձայն նախարարական իրավունքի կանոնների, տոհմը շարունակվում էր արական գծով։ Այսպես, Վրթանես քահանայապետը ջանում էր ապահովել իր սերունդների ժառանգական իրավունքն Արշակունիներից ստացած հողերի նկատմամբ։ Ապագայում իր տան տիրապետությունն ապահովելու նպատակով Վրթանեսը շտապում էր արյունակցական կապեր հաստատել Արշակունյաց հարստության հետ։ Եթե հավատանք պատմիչին, ապա Վրթանեսն իր տասներկուամյա որդուն՝ Հուսիկին, ամուսնացնում է Խոսրով Բ-ի դստեր հետ[94]։ Այդ ամուսնությունից ծնվում են Պապը (Գրիգոր) և Աթանագինեսը։

Քրիստոնեության պաշտոնական ճանաչումով ավելի են բարդանում Հայաստանի հարաբերությունները Սասանյան Պարսկաստանի հետ, որը դրսևորվում է IV դարի երկրորդ քառորդից։

---

92 Փավստոս, Զ, ը։

93 *N. Garsoïan*, Quidam Narseus? A note on the mission of Nerses the Great. "Armeniaca", Melanges d' Etudes arméniennes, Venise, 1969, 148—164;

94 Փավստոս, Գ, ե։

ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

# ՊԱՅՔԱՐ ՄԵԾ ՀԱՅՔԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ՏՐԴԱՏ Գ-Ի ՀԱՋՈՐԴՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ

*Տրդատ Գ Մեծը, որ թագավորեց քաղաքական բարենպաստ պայմաններում, կարողացավ որոշ չափով ամրապնդել հայկական վաղ ֆեոդալական միապետությունը, ճնշելով նախարարների իրանասեր խմբի բոլոր փորձերը՝ դիմադրելու իր համապետական միջոցառումներին։ Բայց ժամանակները փոխվում էին։*

*Արտաքին քաղաքական երկու հանգամանք վճռական դեր խաղացին Մեծ Հայքի վաղ ֆեոդալական միապետության ճակատագրի հարցում։*

*330 թ. մայիսի 11-ին Կոստանդիանոս Ա Մեծ կայսրն իր մայրաքաղաքը «հավիտենական քաղաք» Հռոմից տեղափոխեց Բյուզանդիոն, որը նրա պատվին վերանվանվեց Կոստանդնուպոլիս։ Կայսրության կենտրոնը Բոսֆորի ափերը տեղափոխվելուց հետո հռոմեացիներն ավելի սերտորեն են կապվում Արևելքի հետ, հետևաբար և նրանց համար ավելի խոշոր ռազմաստրատեգիական նշանակություն է ձեռք բերում Հայաստանը[1]։ Հայաստանի կառավարող շրջանները, և առաջին հերթին եկեղեցին ու հռոմեասեր նախարարները, ավելի են մերձենում կայսրությանը՝ Սասանյանների դեմ համատեղ պայքարելու նպատակով։*

*Մյուս հանգամանքը Սասանյան Իրանի նվաճողական քաղաքականության սաստկացումն էր։ Իրանում գահ էր բարձրացել Շապուհ Բ Երկարակյացը (309—379), որը ծրագրեր է կազմում վերականգնելու սասանյան պետության երբեմնի հզորությունը և, առաջին հերթին, վերացնելու Մծբինի՝ 298 թ. 40-ամյա հաշտության դաշնագրի Իրանի համար ոչ ձեռնտու պայմանները, մանավանդ դաշնագրի ժամկետը լրանում էր։*

*330-ական թվականներին Շապուհ Բ-ն սկսում է իր գործողությունները կայսրության և Հայաստանի դեմ։ Սրանով պետք է բացատրվի Հայաստանի իրանասեր նախարարների և քրմական դասի մնացորդների աշխուժացումը Տրդատ Գ-ի մահվանից հետո (մոտ 330), երբ Սասանյանների ուժեղացող նվաճողական քաղաքականությունը հատկապես զգալի դարձավ[2]։*

---

[1] *Հռոմեական կայսրության մեջ տեղի ունեցած փոփոխությունները, երբ պետության կենտրոնը փոխադրվում էր Արևելք, ավելի մեծ իրավունք էր տալիս հայերին կայսրությունն անվանելու «կողմանք Յունաց»։*

[2] *Լեոն հավանական է համարում այն ավանդությունը, որով պարսկասեր նախարարներին է վերագրում Տրդատի սպանությունը (Լեո, Հայոց պատմություն, հ. Ա, Թիֆլիս, 1917, էջ 577),*

Հայաստանում նոր գահակալած Խոսրով Բ Կոտակը (330—338)՝ Տրդատ Գ-ի որդին դեռևս հնարավորություն ուներ շարունակելու հոր քաղաքականությունը, սակայն ամբողջովին գտնվում էր հոգևորականության և Հռոմի կողմնակիցների ազդեցության ներքո։ Ելնելով քաղաքական բարդ իրադրությունից, նա պետք է ջանար լեզու գտնել նաև Սասանյանների հետ։ Բայց հռոմեասեր նախարարները Գրիգոր Լուսավորչի ավագ որդու՝ Վրթանես եպիսկոպոսապետի (333—341)[3] գլխավորությամբ իրենց կամքն էին թելադրում թագավորին և կազմակերպված ձևով հանդես գալիս Սասանյանների ու նրանց կողմնակիցների Հայաստանում կատարած ոտնձգությունների դեմ։ Այդ պատճառով իսկ Շապուհ Բ-ին կողմնակից պալատականները կազմակերպում են դավադրություն, որին մասնակցում էր նաև թագուհին։ Սրանք օգտագործում են լեռնցի, սակավին հեթանոս սասունցիներին, որոնք դժգոհ էին նոր կրոնից։ Վրթանեսի դեմ ծրագրվող մահափորձը, որ կատարվելու էր քրիստոնեական տոնակատարության ժամանակ Տարոնի Աշտիշատում, չի հաջողվում[4]։

Նախարարական տարբեր խմբակցությունների պայքարն իրենց հողատիրական ու քաղաքական իշխանության ամրապնդման համար, օբյեկտիվորեն վերածվում էր պայքարի՝ ընդդեմ հայ Արշակունիների կենտրոնաձիգ քաղաքականության։ Դրանից օգտվում էին հակամարտող պետությունները՝ Սասանյան Իրանը և Հռոմեական կայսրությունը։ Այս բոլորն անխուսափելիորեն թուլացնում էին հայկական միասնական պետության հիմքերը, խիստ բացասաբար անդրադառնում հայ ժողովրդի պատմական ճակատագրի վրա։

Հայ արքունիքում ավելի են սրվում հակասությունները պետական կառավարմանը մասնակցող նախարարների տարբեր խմբերի միջև, որոնց հետևից գնում էր ավագանու մնացած մասը։ Թագավորին առավել նվիրված մարդպետը, մաղխազը և ուրիշներ պայքարում էին կենտրոնական իշխանության համար և հավասարապես թշնամաբար էին տրամադրված թե՛ հռոմեասեր, թե՛ պարսկասեր նախարարների նկատմամբ։ Եպիսկոպոսապետն՝ «կաթողիկոսն Հայոց Մեծաց», սպարապետն ակտիվ հռոմեասեր կողմնորոշման հետևորդներ էին և, օգտվելով այն հանգամանքից, որ վերջիններս ձեռքում էին երկրի ռազմական ուժերը, ճնշում էին գործադրում թագավորի վրա[5], նրա քաղաքականությունն ուղղելով քրիստոնեական կայսրության հետ մերձենալու կողմը։ Վերջապես մնացած պալատականները և նախարարների մի մասը Սասանյանների հետ քաղաքական մերձեցման գաղտնի ու բացահայտ կողմնակիցներ էին և թշնամաբար էին վերաբերվում եկեղեցուն և առհասարակ այն ամենին, ինչը կարող էր մոտեցնել երկիրը հռոմեացիներին։

Այս երրորդ խմբակցության դեմ պայքարելու համար առաջին երկու խմբերն ընդհանուր լեզու են գտնում։ Վրթանեսն ու Մամիկոնյանները, որոնց շուրջն էին համախմբված հռոմեասեր բոլոր նախարարները, Խոսրով Բ-ի մի-

---

Կոստանդիանոս Ա-ին ներկայացած Շապուհի դեսպանությունը պահանջում է հինգ «անդրտիգրիսյան նահանգները», որոնք, պարսիկների ասելով, Մաքսիմիանոս Գալերիոսը (286—305) խլել էր նրանցից (Ammian. Marc. XX, 7—9)։ Մերժում ստանալով, Սասանյաններն առժամանակ հետաձգում են հարցը զենքի միջոցով լուծելու իրենց մտադրությունը։

3 Փավստոս, Գ, գ։ Վրթանեսը հաջորդել էր իր սպանված եղբորը՝ Արիստակեսին (տե՛ս նաև՝ Մ. Օրմանյան, նշվ. աշխ., էջ 124)։

4 Փավստոս, Գ, գ, Խորենացի, Գ, բ։

5 Հմմտ. Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 147։

*ջոցով անց են կացնում հակառակորդ նախարարական տների բնաջնջման ու նրանց ունեցվածքի բռնագրավման իրենց քաղաքականությունը*[6]։ *Քանի որ խլված հողերը որպես «հավիտենական ու անօտարելի տիրույթներ» հանձնվում էին եկեղեցուն, որը շուտով նախարարների հետ դաշնակցած հանդես էր գալու նույն թագավորի դեմ, այսպիսով, նախարարական տների բնաջնջման քաղաքականությունը հանգեցնելու էր թագավորական իշխանության հետագա թուլացման ու սահմանափակման։*

*Ընդհանուր առմամբ խոսրով Բ Կոտակի թագավորության շրջանը Փավստոս Բուզանդը բնութագրում է որպես մի շրջան, որին բնորոշ էին «խաղաղությունը և շինությունը, մարդաշատությունը և առողջությունը, պտղաբերությունը, առատությունը և գործի հաջողությունը»*[7]։

*Այս խաղաղ շրջանը նշանավորվում է շինարարական լայն գործունեությամբ։ Փավստոսը պատմում է հսկայական անտառատնկումների մասին, որ կատարում էր ամբողջ երկրից հավաքագրված հարկատու բնակչությունը. այդ ծանր աշխատանքն արվում էր պետական պարհակի («խաշար»)*[8] *կարգով։ Ընկուզենիների ու կաղնիների տնկարանները ձգվում էին թագավորի ամրոց և կալվածք Գառնիից ցած, Ազատ և Մեծամոր գետերի ափերով մինչև Դվինի դաշտավայրը։ Արտաշատից և թագուհու «Տիկնունի դաստակերտից» հյուսիս այս տնկարանները կոչվում էին «Տաճար մայրի»*[9]։

*Տնկարանների մի այլ շերտ էր ստեղծվել Արտաշատի և Արաքսի ճահճոտ ափերի միջև, և կոչվել «Խոսրովակերտ»։ Այստեղ կառուցվեցին արքունական ապարանքներ*[10]։ *Այս անտառները լցնում են վայրի կենդանիներով և դարձնում թագավորի ու նրա շքախմբի որսատեղ։ «Տաճար մայրին» և «Խոսրովակերտը» պարսպապատվում են, բայց իրար չեն միացվում, քանի որ դրանց միջև անցնում էր Արտաշատից Վաղարշապատ տանող արքունի պողոտան։*

*Հնում Արտաշատի մոտ Արաքսին միացող Մեծամոր գետի հունը փոխվելու*[11] *և բազմաթիվ ճահճուտներ գոյանալու հետևանքով Արտաշատ քաղաքի միկրոկլիման փոփոխվում է, դառնում խիստ վնասակար ու վատառողջ։ Խոսրովն իր արքունիքը տեղափոխում է Արտաշատից հյուսիս Դվին կոչվող բլրի վրա*[12]*, որի շուրջը առաջանում է Դվին քաղաքը, որը IV դարի երկրորդ կեսից փաստորեն դառնում է երկրի քաղաքական կենտրոնը։*

*Այս խաղաղ շինարարությունն ընդհատվում է մազքութների Սանեսան*

---

6 Փավստոս, Գ, *դ։ Պատմիչի ասելով, մինչև այդ թագավորը և եպիսկոպոսապետը Մանավազյանների և Որդունիների մոտ էին ուղարկել եպիսկոպոս Աղբիանոսին հաշտեցման բանակցություններ վարելու նպատակով։ Սակայն նրանք անարգել էին նրան։*

7 Փավստոս, Գ, *գ։*

8 Փավստոս, Գ. *ը։*

9 *Նույն տեղում։*

10 *Ենթադրվում է, որ այս վայրերում անտառներ տնկելը և շինությունների կառուցումը ծառայելու էր նաև ազնվական դասի զինվորական ուսուցման նպատակին։ Տե՛ս* Ղ. Ինճիճեան, *Հնախոսություն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, հ. Գ., Վենետիկ, 1835, էջ 137—139։ Տե՛ս նաև* Հ. Մանանդյան, *Քննական տեսություն, հ. Բ, էջ 139։*

11 *Հնում Մեծամորը խառնվելով Քասաղ, Հրազդան և Ազատ գետերին, Արաքսին էր միանում Արտաշատի մոտ։*

12 *Դեռևս Տրդատ Ա-ի (63—88) ժամանակներից այստեղ գոյություն ուներ Դվին-Աստակ սրբավայրը, կապված թագավորի պաշտամունքի հետ, ուր կառուցվել էր Հայոց թագավորի անվանական տաճարը (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հ. Ա, Երևան, 1971, էջ 764)։*

(Սանատրուկ) թագավորի ավերիչ արշավանքի և պարսկահռոմեական ռազմական բախումների վերսկսման հետևանքով։

Մազքութների Սանեսան թագավորի գլխավորությամբ հյուսիսային լեռնականները 335 թ.[13] արշավեցին Հայաստան և գրավեցին երկրորդ մայրաքաղաք Վաղարշապատը[14]։ Խոսրով թագավորը և Վրթանես եպիսկոպոսապետը փակվում են Կոգովիտի Դարոյնք բերդում, իսկ Վաչե Մամիկոնյանը շարժվում է Հունաց կողմերը։ Մի ամբողջ տարի վաչկատուն հրոսակները վխտում էին երկրում, մինչև որ Օշականի մոտ Ցլուգլուխ բլրի վրա տեղի ունեցած ճակատամարտում հայոց զորքերը Վաչե Մամիկոնյանի և նրա զինակիցներ Մեհենդակ ու Գարեգին Ռշտունիների, Բագարատ Բագրատունու, Վահան Ամատունու և Վարազ Կամսարականի գլխավորությամբ, ջախջախում են նրանց, Սանեսան թագավորն էլ սպանվում է։

Մծբինի հաշտության պայմանագրի ժամկետը դեռևս չլրացած, պարսիկները հարձակվում են Ամիդի վրա։ Թեև նրանք լուրջ պարտություն են կրում[15], բայց հայ ավագանու պարսկասեր մասը նկատելիորեն աշխուժանում է։ Միջագետքում սասանյան զորքերի հայտնվելու հետևանքով Հայաստանի ծայրագավառների պարսկասեր տիրակալներն անջատվում են կենտրոնական իշխանությունից։

Խոսրով Բ-ի դեմ 336/7 թ. ապստամբում են Աղձնիքի «մեծ բդեշխ» Բակուրը և Բզնունիքի Դատաբեն նախարարը[16]։ Վերջինս բացահայտ դավաճանության դիմելով, պարսկական զորքերին ներս է թողնում իր պաշտպանությանը հանձնված Ձորա պահակ լեռնանցքով (այժմ՝ Բիթլիսի լեռնանցք)։ Խոսրով արքան շտապ զորքեր է հավաքում, թվով երեսուն հազար և սպարապետ Վաչե Մամիկոնյանը շտապում է փակել թշնամու ճանապարհը։ Վանա լճի (հնում՝ Բզնունյաց ծով) ափին, Առեստ գետի վրա գտնվող արքունական ձկնորսարան («ձկնատեանք արքունի») հանդիսացող Առեստ ավանի մոտ ճակատամարտ է տեղի ունենում։ Հայկական զորքերը հաղթանակ են տանում։ Թշնամին մեծ կորուստներով նահանջում է։ Վաչե սպարապետը և Վահան Ամատունին Դատաբեն Բզնունուն ձերբակալում, բերում են Խոսրովի մոտ։ Նրան քարկոծում

13 Մարկվարտը, որի հետ համաձայն է Հ. Մանանդյանը, նշում է այս թիվը, Սանեսանի արշավանքի ժամանակաշրջանը կապվում է Կոստանդիանոս Մեծի խորթ եղբոր՝ Դալմատիոսի որդու Աննիբալիանոսի՝ իբրև պոնտական. ժողովուրդների կառավարիչ Կեսարիա ուղարկելու հետ։ Ընդ որում գիտնականը ենթադրում է, որ Աննիբալիանոսին հանձնարարված է եղել այս կողմերում բոլոր ծայրամասային մարզերի պաշտպանությունն ու վերահսկողությունը հենց կովկասյան լեռնաբնակների վտանգավոր առաջխաղացման կապակցությամբ և, որ Հայաստանի ազատագրումը տեղի է ունեցել հռոմեական զորքի աջակցությամբ (տե՛ս J. Markwart, Die Entstehung der armenischen Bistümer, Rom, 1932, „Orientalia Christana", vol, XXVII, 2).

14 Տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 144—146։ Մինչ այդ Սանեսանը (կամ Սանատրուկ), սպանել էր Վրթանեսի որդուն՝ Գրիգորիսին, որն Աղվանք էր գնացել քարոզչական նպատակով (Փավստոս, Գ, է, տե՛ս նաև Լեո, 1917, հ. Ա, էջ 582)։

15 Հ. Մանանդյանը, հետևելով Մարկվարտին, որը հենվում է Թեոփանեսի մի վկայության վրա, նույնպես ենթադրում է, որ պարսիկները Միջագետքում պատերազմական գործողությունները սկսել են ոչ թե 337, այլ 335 թ․ (J. Markwart, Südarmenien..., էջ 265—268, Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 143)։

16 Մարկվարտը սրանց ապստամբությունների ժամանակը ենթադրում է 335 թ. (J. Markwart, Die Entstehung der armenische Bistümer Rom, 1932, Orientalia Christiana, vol. XXVII, 2, էջ 96), իսկ Հ. Մանանդյանը՝ 336 թ. կամ 337 թ. (Նշվ. աշխ., էջ 149)։

են իբրև մի մարդու, «որ դավաճանել էր իր տիրոջ երկրին, գնդին ու զորքերին»[17], իսկ Բզնունյաց ողջ տոհմը բնաջնջվում է։ Թագավորը բռնագրավում է Բզնունիք գավառը, որն այնուհետև շնորհվում է Աղբիանոս եպիսկոպոսին։

Խոսրովն անջատված Աղձնիքի բդեշխ Բակուրի դեմ մեծ զորքով ուղարկում է-իր հավատարիմ իշխաններին[18], ազդեցիկ նախարար Վաղինակ Սյունու գլխավորությամբ, որը կոտորում է մեծ բդեշխի ամբողջ տոհմը[19]։ Աղձնիքը միացվում է թագավորական ոստանին, իսկ նահանգի կառավարիչ է նշանակվում Վաղինակ Սյունին։ Խոսրովը նախարարների կենտրոնախույս տրամադրությունները կանխելու նպատակով օրենք է սահմանում, որ մեծամեծ ավագանին և նախարարներն իրենց զորքերով իր հետ միասին շրջեն երկրում[20]։

338 թ. Շապուհ Բ-ի զորքերը պաշարում են Մծբին քաղաքը, բայց ապարդյուն և հենց այդ ժամանակ էլ, ինչպես ենթադրում է Հ. Մանանդյանը[21], տեղի է ունեցել պարսկական զորքերի ներխուժումը Հայաստան[22]։ Ինչպես հաղորդում է Փավստոս Բուզանդը, այս պատերազմի ժամանակ սպանվել է Հայոց սպարապետ Վաչե Մամիկոնյանը[23]։ Այս պատերազմից հետո, Մարկվարտի և Հ. Մանանդյանի կարծիքով, վախճանվել էր Խոսրով թագավորը, որին թաղել են իր նախնիների մոտ՝ Դարանաղի գավառի Անի ամրոցում[24]։

Հայաստանի համար ստեղծված այս ծանր ժամանակաշրջանում Վրթանես եպիսկոպոսապետը հրավիրում է մեծամեծների խորհուրդ՝ քննարկելու ստեղծված վիճակը։ Հայրենիքի պաշտպանության գործը հանձնարարվում է ազդեցիկ նախարար Արշավիր Կամսարականին, իսկ Անդովկ Սյունու գլխավորությամբ Կոստանդնուպոլիս է ուղարկվում մի դեսպանություն, ըստ ընդունված կարգի, շնորհավորելու նոր գահ բարձրացած Կոստանդիոսին (337—361)։ Դեսպանությունը կայսեր ուշադրությունն էր հրավիրում Հայաստանում ստեղծված իրավիճակի վրա։

Հաշվի առնելով կայսրության սպառնացող վտանգը, Կոստանդիոս կայսրը նախարարների հռոմեասեր և պարսկասեր խմբակցություններին խաղաղեցնելու և սիրաշահելու միջոցներ է ձեռնարկում և Հայաստանի թագավոր է հաստատում Տիրանին (338—344)[25], որն, ի հակադրություն իր հոր՝ Խոսրով Բ-ի, ուժեղ անձնավորություն էր։ Վրթանեսի մահից (341) հետո նա աշխատեց ազատագրվել հոգևորականության խնամակալությունից և հանդուրժողաբար վերաբերվել հեթանոսությանը։ Դրանով նա նվաճում է Հռոմի և եկեղեցու հանդեպ թշնամաբար տրամադրված ազնվականության համակրանքը։ Տիրանը պայքարում է պառակտող նախարարների դեմ և իր մերձավորն է դարձնում

---

17 Փավստոս, Գ, ը։

18 Կորդուքի Ջոն իշխանը, Մեծ Ծոփքի Մար իշխանը, Ծոփք Շահունյաց Ներսեհ իշխանը, Հաշտեանքի Դատ իշխանը, Բասենի Մանուկ իշխանը։

19 Փավստոս, Գ, ը։

20 Փավստոս, Գ, ը։

21 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 150։

22 Վրթանեսը ջանացել էր Սասանյանների դեմ մղվող պատերազմը հայտարարել սրբազան, իսկ այդ պատերազմում զոհվածներին՝ նահատակներ (Փավստոս, Գ, ժա)։

23 Նույն տեղում։

24 J. Markwart, նշվ. աշխ., էջ 96։ Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 151։

25 Տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 151—152։ Խորենացին Խոսրով Բ Կոտակի և Տիրանի գահակալության պարագաները շփոթում է և վերջինիս հետ կապված անցքերը որոշ չափով վերագրում Խոսրով Բ-ին՝ նրան համարելով Կոստանդիոսի ժամանակակից (Գ, ե)։

*Հայր Մարդպետին, որը կենտրոնական իշխանության հզորացման կողմնակից էր և հավասարապես մերժում էր թե՛ հռոմեական և թե՛ պարսկական կողմնորոշումները[26]։ Ամենից ավելի նա վստահում էր երկրի սեփական ուժին՝ գյուղացիներից ու ազատներից կազմված զորքին։ Հակառակորդները դաժանորեն պատժվում են, որոնց թվում նաև անջատողական ձգտումներ ցուցաբերած Արծրունի և Ռշտունի նախարարական տները։ Վերջիններիս հողերը՝ Վան և Հադամակերտ ամրացված քաղաքներով, թագավորը հանձնում է մարդպետների կառավարմանը։ Ի նշան բողոքի՝ թագավորի նման քաղաքականության դեմ, Մամիկոնյանները հեռանում են քաղաքական ասպարեզից և փակվում Տայքում, իրենց Երախանի (Ճորոխ գետի հովտում, այժմ՝ Իրխան) տոհմական նստավայրում[27]։ Զորքի մեջ մեծ հեղինակություն վայելող Մամիկոնյաններն անջատվելով, թագավորին թողեցին փաստորեն առանց բանակի։ Տիրանի ներքին քաղաքականության դեմ ընդվզում են նաև սպատանի Հուսիկ արքեպիսկոպոսը (341—344) և հռոմեասեր մյուս նախարարները։ Ըստ ավանդության Հուսիկն սպանվում է՝ թագավորի վարքագիծը վճռականորեն դատապարտելու համար[28]։ Սպանվում է նաև նոր քահանայապետ Դանիելը, որից հետո Հայաստանի քահանայապետությունը հանձնվում է Աղբիանոսի տան ներկայացուցիչ Փառնենին (348—352), որը չէր խառնվում պետական գործերին և ամեն բանում ենթարկվում էր թագավորին[29]։*

*Երկրի իշխանության կենտրոնացման խիստ ու հետևողական քաղաքականությունը հանգեցրեց նրան, որ ողջ տոհմիկ ավագանին, հատկապես դրա հռոմեասեր թևը, թշնամական անհաշտ դիրք բռնեց թագավորի նկատմամբ։ Թագավորի և ավագանու փոխհարաբերություններն այսպես սրված էին մըրցակից երկու մեծ տերությունների՝ նոր պատերազմին նախապատրաստվելու ժամանակաշրջանում։ Տիրանի դրությունը անմխիթար է դառնում և նա շտապում է բարելավել հարաբերությունները Շապուհ Բ-ի հետ, որը նոր պատերազմի եռանդուն պատրաստություն էր տեսնում։ Տիրանի վարած արտաքին քաղաքականության այդպիսի փոփոխությունը բնականորեն բացասական ազդեցություն են ունենում հայ-հռոմեական հարաբերությունների վրա։ Որպես պատանդ կայսեր արքունիքում գտնվող արքայազն Տրդատը՝ Տիրանի որդին, սպանվում է, մյուս պատանդները՝ նույն արքայազն Տրդատի որդին՝ Գնելը և Տիրանի անդրանիկ որդու՝ վաղամեռ Արտաշեսի տղան՝ Տիրիթը[30] նույնպես պատժի սպառնալիքի տակ էին։ Որդու սպանության բոթը ցնցում է Տիրանին և հանգամանքների ճնշմամբ նա հարկադրված է լինում վերանայել իր քաղաքական վարքագիծը. նա հաշտություն է կայացնում Մամիկոնյանների և հռոմեասեր մյուս նախարարների հետ, որը հարուցում է Շապուհ Բ-ի զայրույթը։*

*Կայսրությունը 344/5 թ. վերսկսում է պատերազմական գործողությունները Սասանյանների դեմ. պատերազմի ընթացքում պարսիկները գերեվարում և*

---

26 *Հ. Մանանդյանն, ի տարբերություն այլ գիտնականների (Հ. Ասատուրյան, Քաղաքական վերաբերություններ, էջ 276, Գարագաշյան, Քննական պատմություն, Գ, էջ 37, Լեո. Հ. Ա, էջ 590 և ուրիշներ) գտնում է, որ Տիրանը ոչ թե պարսկական, այլ հռոմեական կողմնորոշում է ունեցել (նշվ. աշխ., էջ 152—153)։*

27 Փավստոս, Գ, *ժթ*։

28 *Նույն տեղում, Գ, ժր*։

29 *Նույն տեղում, Գ, ժթ*։

30 Խորենացի, Գ, *ժդ (աշխ. թարգմ., էջ 249)*։

*կուրացնում են Տիրանին[31], իսկ 345 թ. Սինգարայի մոտ տեղի.ունեցած ճակատամարտում պարսից արքայազն Ներսեհը գերի է ընկնում և սպանվում[32]. Սասանյանները հարկադրված են լինում հաշտություն կնքել և վերադարձնում են Տիրանին[33]։ Կուրացած Տիրանը հեռու է քաշվում պետական գործերից և բնակություն հաստատում իր կալվածքներից մեկում՝ Արագած լեռան ստորոտին գտնվող Կուաշ (այժմ՝ Կոշ) ավանում, Հայոց թագավոր է հռչակվում Տիրանի որդին՝ Արշակ Բ-ն[34]։*

## 2. ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԵՎ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՐՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԱՐՇԱԿ Բ-Ի ԳԱՀԱԿԱԼՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ

*Արշակ Բ-ն (մոտ 345—368) ձգտում էր նորմալ հարաբերություններ պահպանել կայսրության հետ։ Նա հատուկ դեսպանություն է ուղարկում կայսեր մոտ, Կեսարիայում Հայաստանի նոր եպիսկոպոսապետ (կաթողիկոս) ձեռնադրված Ներսեսի (353—372) առաջնորդությամբ, որպեսզի «կայսեր ու իրենց միջև եղած համաձայնության ու խաղաղության դաշինքը նորոգեն»[35]։ Կոստանդիոս Բ կայսրը, ի պատասխան Արշակ Բ-ի դիմումի, շտապում է ցուցաբերել իր բարյացակամությունը նրանով, որ վերադարձնում է աքսորի մեջ գտնվող պատանդներին՝ Արշակ Բ-ի եղբայրների որդիներին՝ Գնելին ու Տիրիթին[36]։*

*Արշակ Բ-ի գահակալության առաջին տարիներն անցնում են խաղաղ իրադրության պայմաններում։ Նրա ճկուն քաղաքականության շնորհիվ երկիրն սկզբում ապրում է խաղաղ շինարարության և ծաղկման շրջան։ Այդ շրջանում,*

---

[31] Փավստոս, Գ, ա։ *Н. Адонц*, Фауст Византийский. "Христианский Восток", 1917—1920, т. VI, вып. 3, стр. 254—255. *Տիրանի դերեվարման և կուրացման մասին պահպանված տեղեկությունները հայկական ավանդության մեջ Հ. Մանանդյանը վիպական-առեղծվածային դրվագ է համարում (նշվ. աշխ., էջ 156)։*

32 *Սինգարայի ճակատամարտի թվականը պարզել են Բյուրին և Ադոնցը, որոնց հետ համաձայն է Հ. Մանանդյանը (տե՛ս J. B. Bury*, The Date of the Battle of Singara. Byzantinische Zeitschrift, 1896. 302—305). Հ. Մանանդյան, *Քննական տեսություն..., հ. Բ, մ. Ա, էջ 153—154, 305)։ Ինչպես նշում է Ն. Ադոնցը, հաջողությունն, այնուամենայնիվ, պարսիկների կողմն էր, իսկ նրանց նահանջի պատճառը Շապուհի ցնցված լինելն էր Ներսեհի մահվան լուրը ստանալու հետևանքով (Н. Адонц, նշվ. աշխ., էջ 253, ծան. 5)։*

33 Փավստոս, Գ, ա։

34 *Լեո, Ասատրյանը և ուրիշներ Արշակ Բ-ի գահակալության առաջին տարին համարում են 350 թ., որը Հ. Մանանդյանը չի համարում հաստատուն և վերջնական (տե՛ս* Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 158)։ Ն. Ադոնցն այն համարում է 345 թ. (Н. Адонц, նշվ. աշխ., էջ 235)։ Մարկվարտն սկզբում այն կարծիքին էր, որ Արշակը գահ է բարձրացել 350 թ., այնուհետև՝ 356 թ. (J. Markwart*, Die Entstehung der armenischen Bistümer, *էջ 96)։ Այստեղ հիմք է ընդունվում Ն. Ադոնցի կարծիքը, նկատի ունենալով, որ Արշակի գահակալումը պետք է ավելի մոտ լիներ պարսկահռոմեական 344/5 թ. պատերազմին։*

35 Փավստոս, *Դ, ե (աշխ. թարգմ., էջ 133—134)։ Այդ դեսպանությունը Մարկվարտը կարծում է կայացած 357 թ. (J. Markwart, նշվ. աշխ., էջ 88), իսկ Հ. Մանանդյանը՝ 353 և 357 թթ. միջև (նշվ. աշխ., էջ 160)։*

36 *Քննարկելով այս անցքերը, Հ. Մանանդյանը (նշվ. աշխ., էջ 159) գտնում է, որ այս անցքերի կապակցությամբ Փավստոսի (Դ, ե) և Խորենացու (Գ, իա) հաղորդումներում Վաղես և Վաղենտիանոս կայսրերի մասին եղած հիշատակությունները պետք է վերաբերվեն Կոստանդիոս Բ կայսրին։*

Փավստոսի վկայությամբ, Հայաստանը «երկու թագավորների միջև խաղաղվեց, բարեկարգվեց, կազմակերպվեց»[37]։ Հռոմն ու Պարսկաստանը այդ ժամանակ զբաղված էին պատերազմներով իրենց երկրների ծայրագավառներում և պարսկահռոմեական սահմանն առժամանակ հանգիստ էր թողնված։

Կարգավորելով հարաբերությունները Սասանյանների ու հռոմեացիների հետ՝ Արշակ Բ-ն աշխատում է հաշտեցնել միմյանց թշնամի նախարարական խմբակցությունները։ Դրա առաջին պայմանը տոհմիկ ավագանու ժառանգական արտոնությունների վերականգնումն էր։ Նա հաշտեցման քաղաքականություն է վարում Մամիկոնյանների հզոր ու ազդեցիկ նախարարական տոհմի հետ[38]։ Արշակ Բ-ն Մեծ Հայքի բոլոր զինված ուժերի հրամանատար է կարգում իր պատանեկության ընկեր Վասակ Մամիկոնյանին (345—368)։ Փառաբանված հայ հեծելազորի գլուխ կանգնած, Վասակը պաշտպանում էր իր հայրենիքի սահմանները և շատ անգամ դուրս քշում ներխուժած թշնամիներին։ Հայոց սպարապետ Վասակ Մամիկոնյանի անունն անպարտելի հերոսի փառքով էր պսակված, նրա մասին երգեր ու վեպեր էին հորինվում։

Վասակ Մամիկոնյանն ու Ներսես Ա Մեծը երկրի անկախության համար մղված պայքարում այն համոզմունքն ունեին, որ պետք է լիովին հենվել Հռոմի վրա, որի հետ հայերը մշակութային ու կրոնական ընդհանրություն ունեին[39]։ Սակայն բացահայտորեն արտահայտված հռոմեասիրական քաղաքականությունը հարուցում էր նախաքրիստոնեական հասարակության հետ կապված հայ ավագանու պահպանողական թևի և նրա թիկունքում կանգնած Սասանյանների ոժգոհությունը։ Արքունիքի երրորդ, ոչ պակաս ազդեցիկ անձնավորությունը՝ Հայր մարդպետ Գղակը, ձգտում էր Արշակ Բ-ի քաղաքականության հիմքը դարձնել կողմնորոշումը դեպի սեփական ուժերը, երկրի իրական հզորությունը, դեպի ժողովրդի հայրենասիրությունը, հայրենիքը կրծքով պաշտպանելու նրա պատրաստակամությունը։ Սակայն IV դարի երկրորդ կեսի սկզբներից ստեղծված քաղաքական իրադրությունը, ինչպես և ներքին կյանքի բարդությունները, որոշակի և հաստատուն քաղաքականություն վարելու հնարավորություն չէին ընձեռում։

Իր գահակալության առաջին տարիներին Արշակ Բ-ն հիմնադրում է նոր քաղաք, որը նրա անունով կոչվում է Արշակավան[40]։ Այս քաղաքի պատմության մեջ, ինչպես կիզակետում, բեկվեցին թագավորական իշխանության և նախարարների, մանավանդ իշխող հողատերերի և կեղեքվող բնակչության սոցիալական հակասությունները։ Արշակավանը հիմնադրվում է իբրև թագավորին պատկանող քաղաք՝ դաստակերտ, Փոքր Ասիայից դեպի Իրան և Անդրկովկասից դեպի Միջագետք տանող առևտրական գլխավոր ճանապարհների խաչմերուկում՝ Կոգովիտ գավառում, թագավորական գանձարան հանդիսացող Դարույնք բերդից ոչ հեռու։ Նոր քաղաքը պետք է դառնար թագավորի հենարանը կենտրոնախույս նախարարների դեմ, ուստի այն շուտափույթ բնակեցնելու մտահոգությամբ թագավորն այնտեղ հաստատվողներին շնորհում էր զանազան ար-

37 Փավստոս, Դ, ա (աշխ. թարգմ., էջ 120)։

38 Փավստոս, Դ, բ։

39 Գրիգոր Լուսավորչի տան ներկայացուցիչ, խոհեմ ու եռանդուն քաղաքագետ ու դիվանագետ Ներսես Մեծը, որը մեծ կամքի տեր և նախաձեռնող մարդ էր, քանիցս ընդհարվել էր Արշակ թագավորի հետ։

40 Փավստոս, Դ, ժբ։ Խորենացի, Գ. լէ։

*տոնություններ և, ամենից առաջ, ապաստանի իրավունք, որի շնորհիվ քաղաքը կարճ ժամանակում խիստ բազմամարդ է դառնում։ Փավստոս Բուզանդի և Մովսես Խորենացու վկայությամբ Արշակավանում բնակություն են հաստատում պարտապանները, ավանդառուները, ծառաները, խաբեբաները, վնասարարները և ամեն տեսակ հանցագործները*[41]*։ Ուշադրության արժանի է, մանավանդ, Փավստոս Բուզանդի այն վկայությունը, որ «բազում ծառայք զիւրեանց տերանց..., փախուցեալք անդր անկանէին»... իսկ այդ վայրը ավան դարձավ, քաղաք դարձավ, մեծացավ և լցրեց ամբողջ հովիտը*[42]*։ Արշակավանում հաստատված ազգաբնակչությունն ազատվելու էր բոլոր տուրքերից, հանցագործները թողություն էին ստանալու կատարած հանցանքների համար և որևէ մեկի կողմից չէին հետապնդվելու։ Այսպիսով, Արշակավանում ապաստանած մարդիկ դառնում էին քաղաքացիներ և թագավորի հենարանը՝ նախարարների կենտրոնախույս ձգտումների դեմ նրա մղած պայքարում։ Թագավորի այդ կոչին արձագանքեցին ամենից առաջ նախարարների կողմից կեղեքվող և խիստ շահագործվող աշխատավորական զանգվածները։ Այստեղ ապաստանում էին հասարակության ստորին խավերից ելած բոլոր նրանք, ովքեր դժգոհ էին իրենց շահագործող տերերից։ Հ. Մանանդյանը, Լեոն և Մարկվարտը ենթադրում են, որ Արշակավան էին փախել հավանականորեն ոչ միայն հանցապարտները, այլև, գլխավորապես, կախյալ գյուղացիները, «շինականները»,— որոնց այնտեղ տրվել էին որոշ արտոնություններ*[43]*։ Թագավորական իշխանության հենարան քաղաքի հիմնադրումը և դրա հետ կապված կախյալ գյուղացիների փախուստը մեծ դժգոհություն է առաջացնում խոշոր ազնվականության շրջանում, խոշոր նախարարներից հատկապես դժգոհ էին Կամսարականները և Ներսես կաթողիկոսը, քանի որ նրանց տիրույթները մոտ էին թագավորական ոստանին, որտեղ հիմնվել էր Արշակավանը։ Բացի այդ, Կամսարականների ոստան Երվանդաշատ քաղաքը (Ախուրյանի և Արաքսի միախառնման վայրում) և եկեղեցուն պատկանող Բագավանը (Եփրատ-Արածանիի ակունքների շրջանում), որոնք խոշորագույն առևտրական հանգույցներ էին, Արշակավանի հիմնադրումով կորցնում էին իրենց նշանակությունը։ Առաջինը դուրս էր մնում առևտրական հիմնական ճանապարհներից, իսկ երկրորդը վերածվում էր սովորական միջանկյալ կայանի, դա զրկում էր նրա տերերին տարանցիկ առևտրից ստացվող շահույթներից։*

*Երբ Արշակ Բ-ն ավարտում է իր պալատի շինարարությունն Արշակավանում և ցանկանում օծել պալատական եկեղեցին, Ներսես Ա Մեծ կաթողիկոսի տեղապահ՝ Բագրևանդի և Արշարունյաց եպիսկոպոս Խադը հրաժարվում է մտնել «մեղապարտ քաղաքը» և ընդդիմանում է արքային։ Նա բիբլիական*

41 *Նույն տեղում։ Տե՛ս նաև* Գարագաշյան, *Քննական պատմություն Հայոց, Բ, էջ 11—12,* Խ. Սամվելյան. *Արեան վրեժ և փրկանք, «Ազգագրական հանդես», Թիֆլիս, 1908, էջ 278—280,* Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 161—162։*

42 Փավստոս, *Դ, ժբ։*

43 *Հմմտ.* Լեո, *Հ. Ա, էջ 623, J. Markwart,* Südarmenien..., *էջ 62,* Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 161—162։ Հ. Մանանդյանը քննելով «ծառայից իւրեանց» խոսքերը (*Խորենացի, *Գ, իէ), գտնում է, որ դրանք այդ հատվածում կարող են վերաբերել «շինականներին» և եթե այդ ընդումնելի համարվի, պետք է նաև ենթադրել, որ «շինականները» գտնվել են կցագրված կոլոնների վիճակում, որ Հ. Մանանդյանը հավասարազոր է համարում ճորտական վիճակին (տե՛ս նրա «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», Երևան, 1934, էջ 170—171)։*

մարգարեի մոլեռանդությամբ կոչ է անում ավերել այն, իսկ Ներսես կաթողիկոսը պահանջում է թագավորից՝ ետ կանգնել այդ քայլից[44]։ Այս հանգամանքը թագավորի ու եկեղեցու միջև առաջ է բերում անբարյացակամություն, որն այնուհետև փոխվում է բացահայտ թշնամության։

Աշխարհիկ և հոգևոր ֆեոդալներից գյուղացիների համընդհանուր դժգոհության ալիքը, որի վառ դրսևորումն էր նրանց մասսայաբար փախուստը դեպի նոր հիմնադրված Արշակավան քաղաքը, անհրաժեշտություն առաջացրեց ինչ-որ ձևով կարգավորելու հողատերերի և անմիջական արտադրողների հարաբերությունները։ Այդ նպատակով 354 թ. Աշտիշատում Ներսես Ա կաթողիկոսը գումարեց առաջին եկեղեցական օրենսդիր ժողովը, որի կանոնական որոշումները, ինչպես նշում է Հ. Մանանդյանը, վերաբերում էին ոչ միայն կրոնական-եկեղեցական խնդիրներին, այլև աշխարհիկ կյանքին ու հասարակական-սոցիալական հարաբերություններին։ Համաձայն այս ժողովի որոշումների, Հայաստանի շատ վայրերում կառուցվեցին բարեգործական հիմնարկներ՝ հիվանդանոցներ, ուրկանոց-գոդենոցներ, աղքատանոցներ, վանքերին կից դպրոցներ ու իջևանատներ, որոնք պահվում էին եկեղեցական կալվածքների եկամուտներով և ժողովրդից գանձվող առանձին տուրքերով[45]։ Աշտիշատի ժողովի կանոնական որոշումների մեջ կենտրոնականը հողատերերի և գյուղացիների փոխհարաբերությունների հարցն էր։ Դ կանոնը տերերին հանձնարարում էր գթությամբ վարվել ծառաների հետ և նրանց չնեղել չափից ավելի հարկերով, պարտադիր աշխատանքներով ու պարհակներով, հիշեցնելով, որ «նրանց համար էլ երկնքում տեր կա»[46]։ Միաժամանակ կանոնը ծառաներին պատվիրում էր հնազանդ լինել իրենց տերերին։ Այս միջոցառումները, պարզ է, չէին կարող հաշտեցնել շահագործողներին ու շահագործվողներին, որոնց միջև եղած հակասությունները և դրանք ծնող պատճառներն ընկած էին ֆեոդալական հասարակարգի հիմքում։ Աշտիշատի ժողովի որոշումներն իրենց էությամբ դրսևորում էին եկեղեցու վերաբերմունքը երկրի ներքին կյանքում Արշակ Բ-ի վարած քաղաքականության հանդեպ։

Արշակ Բ-ն հաշվի չէր առնում այն, որ ժառանգական իրավունքի հիման վրա նախարարների կառավարմանը հանձնված տարածքները փաստորեն դարձել էին նրանց անօտարելի ժառանգական սեփականությունը, իսկ այդ հողերի վրա նստած գյուղացիական համայնքները նրանցից կախման մեջ էին ընկել և թագավորն արդեն չէր կարող ըստ իր հայեցողության տնօրինել դրանք։ Արշակ Բ-ն հաշվի չէր առնում նաև նախարարների ու հոգևորականության վրդովմունքը, որոնք մատնացույց էին անում թագավորի կողմից փախըստական ծառաներին իրենց տերերին վերադարձնելու օրենքի խախտման դեպքերը։ Այս ժամանակ տեղի է ունենում նախարարների նոր վերախմբավորում, որին նպաստեց նաև արքունիքում ծագած ընտանեկան ողբերգությունը։

Անդովկ Սյունու դուստր Փառանձեմն ամուսնացել էր Գնելի հետ։ Սա-

44 Փավստոս, Դ, ժը։ Տե՛ս *С. Т. Еремян,* Раннефеодальная монархия армянских Аршакидов, в книге: История СССР с древнейших времен до образования древнерусского государства, части III—IV, М.—Л., 1939, с. 103—104.

45 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 160։

46 Տե՛ս Փավստոս Դ, դ։

*կայն շուտով Տիրիթը՝ Արշակի մյուս եղբորորդին, որ ցանկանում էր տիրանալ Փառանձեմին, ամբաստանում է Գնելին թագավորի առաջ և Գնելը սպանվում է։ Բայց Տիրիթը նույնպես սպանվում է, իսկ Փառանձեմը դառնում է Արշակ Բ-ի կինը՝ Մեծ Հայքի թագուհին*[47]*։*

*Այս դեպքերն ավելի են սրում թագավորի լարված հարաբերությունները նախարարների և եկեղեցու հետ։ Պալատական բանսարկությունները, մանավանդ միջազգային բարդ և վտանգավոր իրադրության պայմաններում, Արշակ Բ-ին անելանելի վիճակի մեջ են դնում։ Նրա քաղաքականությունից դժգոհ Ներսես Ա կաթողիկոսը մեկուսանում է երկրի քաղաքական կյանքից։ Արքունիքում կենտրոնական դեմք է դառնում Հայր մարդպետ Գղակը։ Ընդդիմադիր խումբը ղեկավարում էր հռոմեասեր ավագանին՝ քահանայապետի, սպարապետի և Կամսարականների գլխավորությամբ։ Այս պայմաններում պարսկասեր նախարարները ձգտում են մոտենալ թագավորին։ Հակառակորդ ուժերի այսպիսի զուգակցումն Արշակին բերում է Հռոմի հանդեպ թշնամաբար տրամադրված նախարարների՝ Սասանյանների կողմնակիցների ճամբարը և այդ այն ժամանակ, երբ երկու տերությունները նախապատրաստվում էին նոր պատերազմի ու դրանցից յուրաքանչյուրը ցանկանում էր Հայաստանն իր կողմը գրավել։*

*Երկրում գոյություն ունեցող դասակարգային և դասային խոր հակասությունններն ավելի սրվեցին անբարենպաստ արտաքին քաղաքական նոր իրադարձության առաջացմամբ։*

*Ռազմական ընդհարումները պարսկահռոմեական սահմանում հարկադրելու էին Հայաստանին բացահայտել իր վերաբերմունքը կռվող կողմերի նկատմամբ։ Արշակը կանգնած էր երկընտրանքի առաջ, կամ գործել որպես կայսրության կողմնակից, կամ լինել Իրանի համախոհը, սակայն երկու դեպքում էլ նրան անհաջողություն էր սպասվում։ Այս երկվության մեջ էր Հայաստանի և անձամբ Արշակ Բ թագավորի ճակատագրի ողբերգականությունը։*

*Շապուհ Բ-ն Հայաստան է ուղարկում դեսպաններ, որոնք համոզում են Արշակին արքայից արքայի դաշնակիցը դառնալ և զինվորական մի ջոկատ ուղարկել Մծբինում գտնվող հռոմեացիների դեմ Սասանյանների ձեռնարկելիք գործողություններին մասնակցելու համար։ Արշակ Բ-ն, ինչպես հաղորդում է Փավստոսը, բազմաթիվ նախարարների հետ գնաց Արվաստան և մինչև Շապուհի գալը պարտության մատնեց հռոմեացիներին*[48]*։*

*Արշակ Բ-ի այս վարքագիծը հակասում էր քրիստոնյա կայսեր հետ դաշինքի այն ավանդական քաղաքականությանը, որ գոյություն ուներ Տրդատ Գ Մեծի ժամանակներից ի վեր։ Հռոմը, հասկանալի է, չէր կարող հանդիստ նայել այն ամենին, ինչ կատարվում էր Հայաստանում։ 354 թ. հատուկ առաքելությամբ Հայաստան է ուղարկվում քվեստոր Տավրոսը։ Նա պետք է վե-*

---

47 Փավստոս, Դ, ժե։

48 *Ըստ Փավստոսի, արքայից արքան «անխզելի սեր» է հաստատում Արշակ Ա-ի հետ և խոսք տալիս իր դստերն ամուսնացնել Արշակ Բ-ի հետ ու նվիրել ընդարձակ մի տերիտորիա (Փավստոս, Դ, ի)։ Գարագաշյանը («Քննական պատմություն», Գ, էջ 75—76), Տուրնեբիզը* (Tournebize. Histoire politique et religeuse de l' Arménie, *էջ 807*) *և Մարկվարտը* (Die Entstehung der armenischen Bistümer, *էջ 94—95, 97*) *կարծում են, որ այս դեպքը եղել է պարսկահռոմեական պատերազմի ժամանակ, իսկ Հ. Մանանդյանը՝ մինչ այդ (նշվ. աշխ., էջ 167)։ Ճիշտ պետք է լինի Հ. Մանանդյանի կարծիքը։*

րականգներ հարաբերությունները Արշակ Բ-ի և կայսրության միջև։ Հռոմեական բանագնացն այնպես էր ցույց տալիս, թե իբր ոչինչ չգիտե պարսից արքային Հայոց թագավորի ցույց տված օգնության մասին, դրանով լռելյայն ներվում էր Արշակ Բ-ի հակահռոմեական արարքը։

Քվեստոր Տավրոսի դիվանագիտական առաքելությունը պսակվեց լիակատար հաջողությամբ։ Ուղղակի և անուղղակի ճնշման տակ Արշակ Բ-ն հարկադրված էր խզել կապը Շապուհ Բ-ի հետ և հարել Հռոմին։ Միաժամանակ Հայաստանում խաղաղություն է տիրում[49],

Այս շրջանում ևս Շապուհ Բ-ն քանիցս փորձել է Արշակ Բ-ին վերստին իր կողմը գրավել։ Այդ նպատակով նա, Ամմիանոս Մարկելլինոսի վկայության համաձայն, մեծ ջանքեր էր թափում, դիմելով խաբեության, սպառնալիքների ու նենգության[50]։ Որպեսզի հարկադրի Արշակ Բ-ին նորից իր հետ դաշն կնքելու, Շապուհ Բ-ն 355 թ. ընթացքում անընդհատ հարձակումներ է կազմակերպում։ Սասանյանների զորքերը ներխուժում են հարավային Հայաստանի ու Միջագետքի սահմանամերձ շրջանները, թալանում բնակչությանը, տանում անասունները[51]։ Արևելքի կառավարիչ Մուզոնիանոսը բնավ ուշադրություն չէր դարձնում բնակչության կրած աղետների վրա և ինքն էլ իր հերթին շարունակում էր խլել ժողովրդի ինչքն ու պաշարները։

357—358 թթ. Շապուհ Բ-ն զբաղված էր Արևելքում խիոնիտների դեմ մղված պայքարով։ Սակայն 359 թ. Աղվանքի և խիոնիտների թագավորների հետ դաշն կնքած Շապուհ Բ-ն վերադառնում է Միջագետք և 73 օր տևած պաշարումից հետո գրավում Ամիդը[52]։

Ինչպես հաղորդում է Փավստոսը, մինչ Արշակ թագավորն իր զորքերով Ատրպատականի կողմերն էր հսկում, այնտեղից սպասելով Շապուհի հարձակմանը, պարսից զորքերը ներխուժում և ավերում են Հայաստանի հարավային և արևմտյան երկրամասերը՝ Աղձնիք, Մեծ Ծոփք, Անգեղտուն, Անձիտ, Ծոփք Շահունյաց, Մզուր, Դարանաղի, Եկեղյաց գավառները[53]։ Պարսիկներն ավերեցին Տիգրանակերտը և Դարանաղիի Անի բերդը։ Անիում էին Արշակունի թագավորների գերեզման-դամբարանները։ Փավստոսը գրում է. «Ապա բաց արին Հայոց նախկին թագավորների՝ քաջ Արշակունիների գերեզմանները և

49 Փավստոս, Դ, իա։

50 *Ammian. Marc.*, XV. 11,2.

51 Նույն տեղում, XV, 13, 4։

52 Նույն տեղում, XIX, 1—9 (տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 199)։

53 Սեն-Մարտենը և Մարկվարտը, որոնց հետ համաձայն է նաև Հ. Մանանդյանը, գտնում են, որ Փավստոսի այս հաղորդումը վերաբերում է Ամմիանոսի նկարագրած 359 թ. պարսից արշավանքներին (*Lebeau*, Histoire du Bas-Empire, nouvelle edition par M. Le Saint-Martin, t. II, Paris, 1824, էջ 236—238, *J. Markwart*, Südarmenien und die Tigisquellen..., էջ 95—96, Հ. Մանանդյան, նշվ աշխ., էջ 170—171)։ Ընդ որում Մարկվարտը նշում է, որ պարսից զորքերի ուղեկցորդի գավաճանական այն դերը, որ Փավստոսը վերագրել է Մեհրուժան Արծրունուն, ըստ Ամմիանոսի կատարել է հռոմեական դասալիք ոմն Անտոնինոսը (*J. Markwart*, նշվ աշխ., էջ 171)։ Ինչպես նշում է Հ. Մանանդյանը, պարսից ասպատակությունների մասին հիշողությունները ոչ թե 364—367/8 թթ. կռիվներին են վերաբերում, այլ Շապուհ Բ-ի 359 թ. մեծ արշավանքին (Նույն տեղում, էջ 180)։ Իսկ Լեոն գտնում է որ, դրանք եղել են 364 թ. հետո («Պատմություն հայոց», հ. Ա, Տփղիս, 1917, էջ 630—631)։

թագավորների ոսկորները գերի տարան։ Որովհետև նրանք՝ ըստ իրենց հեթանոսական կրոնի, ասում էին՝ «մենք նրա համար ենք առել Հայոց թագավորների ոսկորները և տանում ենք մեր աշխարհը, որպեսզի թագավորների փառքը և այս աշխարհի բախտն ու քաջությունը գնան այստեղից և թագավորների ոսկորների հետ փոխագրվեն մեր աշխարհը»[54]։ Սակայն հայկական զորքը կտրում է թշնամու ճանապարհը և սպարապետ Վասակ Մամիկոնյանի գլխավորությամբ, Այրարատյան աշխարհում մեծ ճակատամարտ է տալիս ու խլում թշնամուց թագավորների ոսկորները, գերիներին ու ավարը։ Թագավորական ոսկորները տարան թաղեցին Արագածոտն գավառի Աղձք գյուղում, որտեղ մինչև այժմ պահպանվել է Արշակունի թագավորների դամբարանը։

360 թ. Շապուհը նորից մտնում է Միջագետք և գրավում Սինգարան, Բեզաբդեն՝ Տիգրիսի վրա (Կորդուքի արևմտյան կողմում)[55]։ Այնուհետև պարսկական զորքերը պաշարում են Վիրտան (Բիրթոն)[56], սակայն այդտեղ մեծ կորուստներ կրելով ստիպված են լինում վերադառնալ Պարսկաստան[57]։

Սասանյանների հաջողություններից լրջորեն անհանգստացած Կոստանդիոս Բ-ն ժամանակավորապես հաշտվում է կեսար Հուլիանոսի հետ, բանակի գլուխ անցած, 360 թ. ժամանում է Կապադովկիայի Կեսարիա քաղաքը։ Պարսիկների դեմ պայքարելու համար Կոստանդիոս Բ-ն համակենտրոնացնում է ինչպես կայսրության, նույնպես և դաշնակիցների ռազմական բոլոր ուժերը։ Այս վճռական պահին նրա համար հատկապես կարևոր էր Հայոց թագավորի աջակցությունը, քանի որ հայկական զինված ուժերը կարող էին որոշիչ դեր խաղալ առաջիկա պատերազմում։ Մինչդեռ լուրեր էին պտտվում, թե Շապուհ Բ-ն դիմում է ամեն միջոցի՝ Արշակ Բ-ին իր կողմը գրավելու համար։

Արշակը կայսրից հատուկ հրավեր է ստանում գալ իր մոտ՝ Կեսարիա[58]։ Սպարապետ Վասակ Մամիկոնյանի և մյուս նախարարների ճնշման տակ նա մեկնում է Կեսարիա։ Այստեղ մեկ անգամ ևս վերականգնվում են հայ-հռոմեական հարաբերությունները և բացի տարբեր ընծաներից ու շնորհումներից, կայսրը Արշակին կին էր տվել իր մահացած եղբոր՝ Կոստասի նախկին նշանածին՝ Օլիմպիային, որը պրետորիաների նախկին պրեֆեկտ Աբլաբիոսի դուստրն էր[59]։

Կայսրը, այնուհետև, Կեսարիայից անցնում է Եդեսիա և շարժվում Բե-

---

54 Փավստոս, Դ, իդ։

55 *Ammian. Marc.*, XX, 6, 1—6 և 7. 1—16։ Բեզաբդեն պաշտպանում էին Երկրորդ Փլավիոսյան, Երկրորդ Հայկական, Երկրորդ Պարթևական լեգեոնները և Ծավդեքի աղեղնաձիգների մի զորամաս (տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 171)։

56 Procopius Caes., De aedificiis, II, 4, 20; *E. Honigmann,* Die Ostgrenze des Byzantinischen Reiches, 14, 2:

57 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 171։

58 Կոստանդիոս Բ կայսրը մինչ այդ (մոտ 358 թ.) փորձել էր սիրաշահել Արշակին, հատուկ օրենքով հարկերից ազատելով նրա այն կալվածքները, որ գտնվում էին կայսրության սահմաններում (տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 165)։ Հայոց թագավորի կայսրության սահմաններում գտնվող կալվածքներն էին՝ Փոքր Հայքն ու Գիմաթենե գավառը։ Նշված տարածքների տեղադրությունը տե՛ս «Մեծ Հայքի թագավորությունը IV դարում (298—385 թթ.)», Երևանի համալսարանի հրատարակչություն, 1979 (քարտեզի հեղինակ Ս. Տ. Երեմյան)։

59 *Ammian. Marc.*, XX, 11, 1—3:

գարդե՝ բերդը ետ գրավելու նպատակով, սակայն հաջողություն չունենալով նահանջում է Անտիոք[60]։

360—361 թթ. ողջ ձմեռը կայսրը նախապատրաստվում էր արտաքին ու ներքին թշնամիների դեմ պայքարի։ Կոստանդիոս Բ-ն վախենում էր, որ 361 թ. գարնանը Սասանյանները կվերսկսեն իրենց հարձակումը, այդ պատճառով էլ նոր քայլեր է անում հայ թագավորի և շրջակա տիրակալների հետ բարեկամական դաշինքն ամրապնդելու նպատակով[61]։

Հռոմեացիների նախապատրաստությունների լուրն ստանալուց հետո Սասանյանները, անսպասելիորեն, հետաձգում են պատերազմական գործողությունները և ետ քաշվում իրենց սահմանները։ Այդ Կոստանդիոս Բ-ին հնարավորություն է ընձեռում շարունակելու պայքարը Հուլիանոսի դեմ, և նա շտապում է դեպի Կոստանդնուպոլիս, բայց ճանապարհին, Կիլիկիայում հանկարծակի մահանում է տենդից (361)։ Կայսր է հռչակվում նրա հորեղբոր որդին՝ Հուլիանոսը (361—363), որը քրիստոնեական եկեղեցու դեմ մղած պայքարի պատճառով ստանում է «Ուրացող» մականունը։

Հուլիանոսի գահակալությունը շնորհավորելու և կայսրության հետ բարեկամությունը վերականգնելու նպատակով նրան պատգամավորություններ են այցելում, այլ երկրներից բացի, նաև Հայաստանից և Անդրտիգրիսյան երկրներից[62]։

Սակայն Արշակ Բ-ի նոր մտերմությունը հռոմեացիների հետ, նրա երկրորդ ամուսնությունը և Օլիմպիային Մեծ Հայքի թագուհի հռչակելը[63] կրկին բարդություններ ստեղծեցին արքունիքում և առիթ դարձան ընտանեկան նոր ողբերգության։ Տիրական, վեհ ու հպարտ գեղեցկուհի Փառանձեմը բախվեց լուսակյաց, գոռոզ ու ամբարտավան Օլիմպիայի հետ։ Փառանձեմ թագուհին չէր կարող հաշտվել այն մտքի հետ, որ «տիկնանց տիկին» պատիվը հավակնություն ուներ յուրացնելու այդ օտարուհի հռոմեացին։ Փառանձեմի անհանգիստ մտքում հասունանում էր իր ախոյանին ասպարեզից վերացնելու ծրագիրը։ Նա կարողանում է կաշառել պալատական քահանա Մրջյունիկին, որը զատկի օրը, հաղորդության ժամանակ թունավորում է Օլիմպիային (362)[34]։ Իր ախոյանին վերացնելուց հետո Փառանձեմը վերստին ձեռք է բերում նախկին ազդեցությունն Արշակի վրա։ Իսկ Մրջյունիկն այս ծառայության դիմաց թագուհուց որպես «պարգևականք» ստանում է Գոմկունք գյուղը՝ Տարոնում[65]։

Հայկական արքունիքում Հռոմի շահերը ներկայացնող Օլիմպիայի մահը նորից բորբոքում է հռոմեացիների կասկածը հայերի հավատարմության նկատմամբ։ Արշակ Բ-ի վրա զայրացած Հուլիանոսը, Միջագետք արշավելուց առաջ, 363 թ. արդեն հրամայողաբար պատվիրել էր «որպեսզի նա բավական մեծ զորք հավաքելով, գործի այնպես, ինչպես նրան կհրամայվի, թե ուր պետք է

---

60 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 173։

61 *Ammian. Marc.*, XX, 2, 1—4, XXI. 6—8:

62 *Ammian. Marc.*, XXII, 7, 9—10: Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 174։

63 Լեոն նշում է. «Մեզ չպետք է զարմացնի այս կրկնամուսնությունը։ Քրիստոնյա Արշակունիների պալատում էլ պահվեց ներքինապետությունը, որ ապացույց է, թե հին հարեմական դրությունը չէր վերացել» (Լեո, Երկերի ժողովածու, հ. Բ, Երևան, 1966, էջ 461, ծան. 3)։

64 *J. Markwart*. Die Entstehung der armenischen Bistümer, էջ 95, 97, Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 174։

65 Փավստոս, Դ, ժե։

ուղևորվի նա և ինչ պետք է անի, շուտով կիմանա»[66]։ Հռոմեական նոր կայսեր դիմելու այս ոճը հարուցում է հայերի կասկածամտությունը և Արշակ Բ-ն որոշում է կրկին սպասողական դիրք ընդունել, մինչև կպարզվի, թե ինչ հետևանքներ են ունենալու հռոմեացիների ու պարսիկների միջև վերսկսված պատերազմական գործողությունները։

Գոռոզամիտ Հուլիանոսը հայտարարում էր, թե հռոմեացիները ոչ ոքի կարիքը չեն զգում, որ, ընդհակառակը, պատրաստ են պաշտպանելու իրենց բարեկամներին ու դաշնակիցներին, եթե նրանք օգնություն խնդրեն։ Բայց, միաժամանակ, նրան անհանգստացնում էր այն միտքը, որ հանկարծ Արշակը կարող էր օգնության չգալ։ Հասնելով Խառան, Հուլիանոսն Արշակ Բ-ին լուր է ուղարկում իր զորավարներից մեկի՝ Պրոկոպիոսի միջոցով, որպեսզի Հայոց թագավորը չմոռանա իր պարտականությունները՝ Կորդուքի ու Մոկքի վրայով և (աղբյուրում չհիշատակված) Անձևացեաց գավառից Կրբրեաց լեռնանցքով[67] իջնի Մեծ Զավ գետի հովիտը։ Նրանք այստեղից արագ հարձակումով պետք է ավերեին Մարաստանի Խիլիոկոմ նահանգը և այնուհետև միանային հռոմեացիների հիմնական ուժերին՝ Ադիաբենեում[68]։ Սրանով պիտի կասեցվեր արևելքից Ատրպատականի Գանձակից եկող պարսկական զորամասերի հարձակումը հռոմեացիների վրա, որոնց ուժերը կենտրոնացվել էին Արբելայի մոտերքում։ Սակայն Արշակ Բ-ն չէր շտապում իրագործել այդ հանձնարարությունը։ Նա դանդաղում էր, չցանկանալով վատացնել հարաբերությունները պարսիկների հետ և սպասում էր իրադարձությունների ելքին։ Նրա համար պարզ էր, որ հաղթելու դեպքում պարսիկները վրեժ կլուծեին հայերից՝ հռոմեացիների կողմն անցնելու համար։

Իր բանակի գլխավոր ուժերով Հուլիանոսը շարժվեց Եփրատի հոսանքով հարավ, դեպի Սասանյանների մայրաքաղաք Տիզբոնը, որի մոտ հռոմեացիները ջախջախում են պարսիկներին, սակայն քաղաքը չեն կարողանում գրավել։ Հաջողություն չունենալով, Հուլիանոսը նահանջում է հյուսիսային ուղղությամբ, հույս ունենալով, որ Արշակի ու Պրոկոպիոսի զորքերը կմիանան իրեն։ Իսկ մինչ այդ, ինչպես հաղորդում է Ամմիանոսը, Արշակը կայսեր հանձնարարությամբ ավերել էր Խիլիոկոմը, ըստ երևույթին, կարծելով, թե հռոմեացիները գրավել են Սասանյանների մայրաքաղաքը։ Սակայն Հուլիանոսը փաստորեն պարտվել էր և իրողությունն այն էր, որ Շապուհի ձեռնարկած միջոց-

---

[66] *Ammian. Marc.* XXII, հմմտ. Հուլիանոսի Նամակը Արշակին (Iuliani opera, vol. 1, epistola, 66, 588—590; *Lebeau*, Histoire du Bas-Empire, t. III, 40-41; *Н. Адонц*, Фауст Византийский как историк, «Христианский Восток», т. VI, вып. III, Птг., 1922, стр. 269—270). *և Գաթըրճյանը վավերական են համարել, իսկ Գարագաշյանը («Քննական պատմություն Հայոց», Գ, էջ 84)՝ կեղծիք, հորինված մի մոլեռանդ քրիստոնյայի կողմից՝ ուրացող կայսրին նախատելու և վարկաբեկելու նպատակով (տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 175—176)։*

[67] *Կրբրեաց լեռնանցքը գտնվում է Ջերմ (Տիգրիս) գետի ակունքների մոտ՝ Կալումերիկդաղ կոչվող լեռան արևմտյան փեշերին։ Տե՛ս* Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացույցի», Երևան, 1963, էջ 61։*

[68] *Նույն տեղում, XXIII, 3,5։ Հմմտ.* Փավստոս. *Դ. ին։* Chiliocomum, *որ բառացի նշանակում է «Հազարագյուղ», ըստ երևույթին, գտնվում էր Թևանդուզի շրջանում, դեպի Արբելա տանող ճանապարհին և սահմանակից էր Մեծ Հայքի թագավորության Մահկերտ-տուն գավառին։ Տե՛ս* Հ. Մարկվարտ, *Պարսկահայք նահանգը։ Գերմաներեն անտիպ բնագիրը թարգմանեց, ծանոթագրեց և պատրաստեց հրատարակության Գ. Վ. Աբգարյանը, ՊԲՀ, 1961, № 2, էջ 240։*

ները խանգարեցին կայսրին միանալու Արշակի և Պրոկոպիոսի գլխավորած զորքերին[69], Հուլիանոսը, հույս չունենալով, թե սպասվող օգնությունը կըստանա և համոզված, որ պարսիկներին հաղթել չի կարող, դիմում է նահանջի և սպանվում թշնամու նիզակից[70]։

## 3. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԻ ԾԱՆՐԱՑՈՒՄԸ 363 Թ. «ԱՄՈԹԱԼԻ ԴԱՇՆԱԳՐԻՑ» ՀԵՏՈ ԵՎ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՐՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ՍԱՍԱՆՅԱՆ ԻՐԱՆԻ ԶԱՎԹՈՂԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԴԵՄ

Հուլիանոս Ուրացողի մահը և կայսրության անհաստատ վիճակը միանգամայն նոր իրադրություն են ստեղծում։ Կայսր հռչակված Հովիանոսն (363—364) շտապում է Իրանի հետ հաշտություն կնքել երեսուն տարով (363—393), որն Ամմիանոսն անվանում է «ամոթալի»[71], քանի որ այդ դաշնագրով Հռոմին դաշնակից Հայաստանն այնուհետև թողնվում էր բախտի քմահաճույքին։

Շապուհ Բ-ն վերջապես հասնում է իր նպատակին։ Դաշնագրի համաձայն հռոմեացիները պարսիկներին զիջում են «անդրտիգրիսյան» այն երկրները, որոնք 298 թ. Մծբինի դաշնագրով անցել էին Հռոմին. հարավային Հայաստանի Աղձնիք, Մոկք, Կորդուք, Ծավդեք և Ռեհիմենե գավառները՝ 15 բերդերով ու քաղաքներով, որոնցից խոշորագույններն էին Մծբինը, Սինգարան և Կաստրա-Մավրորումը[72]։ Արևելքի առևտրական խոշորագույն կենտրոն Մծբին քաղաքը 120 տարով, մինչև 483 թ., փաստորեն ընդմիշտ, հանձնվում էր Սասանյաններին։ Սակայն ամենակարևոր կետն այն էր, որ հռոմեացիները պարտավորվում էին այսուհետև չխառնվել Հայաստանի և Վիրքի (Իբերիայի) գործերին։ Հովիանոսը խոստանում էր չօգնել Արշակ Բ-ին, եթե Շապուհ Բ-ն պատերազմական գործողություններ սկսի նրա դեմ[73]։

Հաշտության այս դաշնագիրը[74] կործանարար հետևանքներ է ունենում Հայաստանի և անձամբ Արշակ Բ-ի համար։ Միջազգային իրադրության անսպասելի փոփոխությունը կործանման է հասցնում Արշակ Բ-ի ներքին և արտաքին ողջ քաղաքականությունը։ Իրենց զայրույթը մինչ այդ զսպած նախարարներն այժմ բացեիբաց դժգոհում էին թագավորից։

Նախարարներին հանգիստ չէր տալիս ամենից առաջ Արշակավանի գոյությունը։ Նրանց դեմ մղված պայքարում Արշակ Բ-ն բացահայտորեն հովանավորության տակ էր առել սոցիալական ստորին խավերին, ապաստան և արտոնություններ տալով նրանց իր հիմնած քաղաքում։ Նախարարներն առիթ էին փնտրում իրենց վրեժը լուծելու, իսկ քաղաքական նոր իրադրությունը գործողության ազատություն էր ընձեռում նրանց։ Ապահովելով թագավորից

---

69 *Ammian. Marc.*, XXIII, 3, 5, XXIV, 7, 8, XXV, 7, 9—12. Տե՛ս Հ. Ասատուրյան Քաղաքական վերաբերությունները..., էջ 292, ծան. 4, Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 177։

70 *Ammian. Marc.*, XXV, 3. 6—23:

71 Նույն տեղում, 7. 13—14։

72 Նույն տեղում, XXV, 7. 9—11։ Կաստրա-Մավրորում (մավրերի բանակատեղ), տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 177։

73 *Ammian. Marc.*, XXV, 7, 12, հայերեն թարգմ. տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 178—179։

74 Ամմիանոսի և Փավստոսի (Դ, իա) հաղորդումները համահունչ են։

*գժգոհ նախարարների (որոնք, ինչպես Խորենացին է ասում, «կատաղած էին իրենց ծառաների և հանցավորների դեմ») և կաթողիկոս Ներսես Ա-ի լռելյայն օժանդակությունը, նախարարական զորքերը Ներսեհ Կամսարականի գլխավորությամբ հարձակվում են Արշակավանի վրա, հիմնահատակ ավերում, իսկ բնակչությանը սրի քաշում[75]։ Այսպես, նախարարները պատժեցին այն ծառաներին, գյուղացիներին, շինականներին, իրենց պարտքերից ու պարտականություններից խուսափողներին, որոնք համարձակվել էին փախչել իրենց տերերից։ Ազատվել էին միայն ծծկեր երեխաները։*

*Արշակավանը թագավորի հենարանը չդարձած, ավերվեց և դա մեծ հարված էր Հայոց թագավորի հեղինակությանը։ Արտաքին ահեղ վտանգի նախօրեին սկսվում են արյունահեղ ընդհարումներ թագավորի[76] ու անհնազանդ նախարարների միջև։ Շապուհ Բ-ն շտապում է Հայաստան ուղարկել իր զորավարներից մեկին, հանձնարարելով, որ նրան միացած հայկական գնդի՝ դեպի պարսիկները հակված զինվորականների միջոցով գերի վերցնի Արշակ Բ-ին, սակայն վերջինս «Խոյս ետ ի նոցանէ զկողմամբք Կաւկասու, վրաց միաբանելով»։ Վրաց աշխարհից Արշակ Բ-ն վերադառնում է օժանդակ զորքով, որին միանում են արքունիքին հավատարիմ հայ նախարարների զորամասերը և կարողանում են ճնշել ապստամբ նախարարներին։ Այդ ժամանակ Ներսես Ա կաթողիկոսը որոշում է միջնորդի ու հաշտարարի դեր կատարել։ Նրան հաջողվում է թագավորին հաշտեցնել նախարարների հետ և դրանով իսկ կանխել վերջիններիս բնաջնջումը։ Այդ հաշտությունը Ներսես Ա-ն օգտագործեց հօգուտ հռոմեացիների, պատանդ ուղարկելով կայսրին թագաժառանգ, տակավին մանուկ Պապին և Հայոց ավագանու այլ սեպուհների։*

*Սակայն շուտով Արշակը դրժում է իր խոստումը և վրեժ լուծում Արշակավանի ավերման գլխավոր նախաձեռնողներից։ Ինչպես նշում է Խորենացին, Արշակը «կոտորեց նախարարներից շատերին, մանավանդ բնաջինջ արեց Կամսարականների ցեղը, աչք տնկելով Արտագերս ամրոցին և Երվանդաշատ քաղաքին, որ նրանց ստացվածքն էր»[77]։*

*Մթնոլորտն այնքան շիկացած էր, որ այլևս անհնար էր Արշակի հաշտությունն ավագանու, հատկապես նրա հռոմեասեր թևի հետ։ Այս խմբի գլուխ էին կանգնած Հայաստանի այնպիսի մեծամեծներ, ինչպիսիք էին կաթողիկոս Ներսես Ա-ն և սպարապետ Վասակ Մամիկոնյանը։*

*Թագավորի հետ անձնական հաշիվներ ունեին ոչ միայն Հռոմի կողմնակիցները, այլև իրանասեր նախարարները։ Ավագանու այդ խմբի գլուխ էին*

---

75 Խորենացի, *Գ, իէ (աշխ. թարգմ., էջ 263)։ Տե՛ս Г. Х. Саркисян,* Из истории городской общины в Армении (IV в. н. э.), ВДИ, 1955, № 3, стр. 59—60.

76 *Արշակ Բ-ն օգնության է կանչում իր դաշնակցին՝ Իբերիա-Քարթլիի (Վիրք) թագավոր Միհրանին, որը վրացական՝գունդ է ուղարկում* (Խորենացի, *Գ, իէ, էջ 288),* საქართველოს ისტორიის ნარკვევები. ტ. II, თბილისი, 1973, *էջ* 79; *Г. А. Меликишвили.* К истории древней Грузии, Тбилиси, 1959, стр. 453—454, 476—477.

77 Խորենացի, *Գ, լա (աշխ. թարգմ., էջ 266—267)։ Փրկվում է միայն Սպանդարատ իշխանը։ Ի դեպ, սա ոչ այնքան անձնական վրեժ էր, որքան, ինչպես երևում է Խորենացու հաղորդումից, Կամսարականների հարուստ հողերին տիրանալու ձգտում։ Կամսարականների տիրույթները՝ Շիրակ և Արշարունիք գավառները, բռնագրավվում են հարքունիս։ Արշակը վերաշինում է Արտագերս ամրոցը և դարձնում գանձարան* (Լեո, *Հայոց պատմություն, Երկերի ժողովածու, հ. Ա, Երևան, 1966, էջ 463)։*

կանգնած այնպիսի ազդեցիկ դեմքեր, ինչպիսիք էին մաղդեականություն ընդունած Մեհրուժան Արծրունին և Վահան Մամիկոնյանը[78]։

Ստեղծված իրադրության պայմաններում, երբ պարսկական ներխուժման վտանգն սպառնում էր Հայկական պետության բուն գոյությանը, պետք էր համախմբել երկրի բոլոր այն ուժերը, որոնք ի վիճակի էին հակահարված տալու թշնամու հարձակմանը։ Սպարապետ Վասակ Մամիկոնյանը, մոռանալով ներքին դժգոհությունը, նորից մտերմանում է Արշակ Բ-ի հետ, որպեսզի այս պատասխանատու պահին վերականգնի թագավորի հեղինակությունը և բարձրացնի հայոց զորքի ոգին։ Նա է, փաստորեն, 364—367/8 թթ. գլխավորում հայ ժողովրդի հերոսական պայքարը Սասանյանների ներխուժումների դեմ։

Պարսիկների դեմ հայ ժողովրդի մղած պայքարը հիմք է հանդիսացել «Պարսից պատերազմ» կոչվող մեծ վիպերգության, որի կենտրոնական անձը խիզախ սպարապետ Վասակ Մամիկոնյանն է։ Անսահման էր ժողովրդի զայրույթը հայրենիքի թշնամիների նկատմամբ։ Պահպանվել է դավաճան Վահան Մամիկոնյանին հասած պատժի մասին հայրենասիրական մի դրվագ։ Նրա որդին՝ Սամվել Մամիկոնյանը, չկարողանալով հանդուրժել հոր դավաճանությունը հայրենիքին ու ժողովրդին, սպանում է նրան ու խորթ մորը՝ Որմիզդուխտին, որը Շապուհ արքայի քույրն էր, իսկ ինքը միանում է ժողովրդական աշխարհազորին[79]։

Շապուհ Բ-ն արդեն որոշել էր ասպարեզից վերացնել Արշակ Բ-ին և վերջ տալ Հայաստանի անկախությանը։ Արշակ Բ-ին նա խորամանկորեն հրավիրում է իր մոտ՝ վիճելի հարցեր լուծելու։ Որպեսզի Հայոց թագավորը հավատա Շապուհին, ժամանած դեսպաններն Արշակ Բ-ին ցույց են տալիս վարազագիր մատանիով կնքված աղ. զրադաշտական ամենասուրբ երդումն էր դա։ Հրավերը կրկնվում է մի քանի անգամ, և Արշակ Բ-ն համոզվում է, որ արքայից արքան չի կարող դրժել իր երդումը[80]։

Արքունիքում այդ հարցը քննարկելուց հետո որոշվում է Պարսկաստան ուղարկել Արշակ Բ-ին՝ սպարապետ Վասակ Մամիկոնյանի ուղեկցությամբ։ 367 թ. նրանք երկուսով գալիս են Տիզբոն՝ Շապուհ Բ-ի արքունիքը։ Առաջին օրերին նրանց սիրալիր ընդունելություն է ցույց տրվում։ Բայց որոշ ժամանակ անց Շապուհ Բ-ն համոզվելով, որ Արշակը չի հնազանդվի իրեն, կալանավորում է նրան և նետում հեռավոր Խուժաստանի Անդմըշ (Անհուշ) բերդը[81]։

Շապուհը խիստ դաժան է վարվում Վասակի հետ, որը բազմիցս ծանր հարվածներ էր հասցրել պարսից զորքերին։ Ծաղրելով Վասակի կարճ հասակը, Շապուհը նրան աղվես է անվանում, որն այդքան տարի կոտորում է արքայց զինվորներին։ Վասակը համարձակ պատասխանում է. «Մինչև այժմ ես քեզ համար առյուծ էի, իսկ այժմ՝ աղվե՞ս։ Բայց մինչ ես Վասակն էի, ես

---

78 Առաջինը Վասակ Մամիկոնյանի քրոջ որդին էր, իսկ երկրորդը՝ եղբայրը։

79 Փավստոս, Դ, ծթ։

80 Փավստոս, Դ, ծգ։

81 Փավստոս, Դ, ծզ։ Ammian. Marc., XXVII, 12, 3: Փավստոսը Արշակի՝ Պարսից արքունիքում գտնվելու հետ կապված մի ժողովրդական ավանդություն է պատմում՝ կապված հայրենի հողի ուժի հետ։ Ինչպես նշում է Լեոն, դրանում կարելի է նկատել հայ ժողովրդական մի տարբերակն այն այլաբանության, որ տարածված էր շատ ազգերի մեջ և ներկայացնում էր հողի ուժը (Լեո, Հ. Ա, էջ 633, ծան. 1)։

հսկա էի. մի ոտքս մի լեռան վրա էր, մյուս ոտքս՝ մի այլ լեռան վրա. երբ աջ ոտքիս վրա էի հենվում, աջ լեռն էի գետին տանում, երբ ձախ ոտքիս վրա էի հենվում, ձախ լեռն էի գետին տանում»[82]։ Եվ երբ Շապուհը հետաքրքրվեց, թե այդ ինչ լեռներ են, Վասակը պատասխանեց. մեկը ինքը՝ Շապուհն է, իսկ մյուսը՝ հունաց թագավորը։ Շապուհը հրամայում է Վասակին մորթազերծ անել, մորթը խոտով լցնել և ուղարկել Անհուշ բերդը[83], որ Արշակը նրան միշտ աչքի առաջ ունենա։ Մի առ ժամանակ անց, այդ ամրոցում, ըստ Փավստոսի, ինքնասպանություն է գործում Արշակը (ըստ Ամմիանոսի, նրան մահապատժի են ենթարկում)[84]։

Այս ժամանակ Մեծ Հայքից անջատվել էին նրա ծայրամասային գավառներից մի քանիսը՝ Աղձնիքը, Գուգարքը, Ուտիքի մի մասը, Արցախը, Կասպից աշխարհը (Փայտակարանը), Կորդվաց աշխարհը։ Սրանք մտել էին Շապուհ Բ-ի իշխանության տակ, իսկ Ծոփքը՝ կայսրության[85]։

Այս ճակատագրական պահին է՛լ ավելի են համախմբվում ժողովրդի տարբեր խավերի ուժերը՝ հայրենիքին սպառնացող օտար լծի դեմ մղվող համատեղ պայքարում։ Ժամանակավորապես թագավորական իշխանությունը ներկայացնում էին Փառանձեմ թագուհին և նրա անչափահաս որդին՝ Պապը։ Նրանք փակվում են Արտագերս ամրոցում, որը շուտով պաշարվում է պարսիկների կողմից։ Այստեղ թագուհին ուժեր է կազմակերպում թշնամուն հակահարված տալու համար[86]։

Հռոմի գաղտնի և բացահայտ օգնությամբ լեռներում ապաստանած նախարարները, արձագանքելով թագուհու կոչին, ուժեր էին հավաքում՝ թշնամուն երկրից վտարելու համար։ Սպարապետ է նշանակվում Վասակ Մամիկոնյանի որդին՝ եռանդուն և արիասիրտ Մուշեղ Մամիկոնյանը[87]։ Ներսես Ա կաթողիկոսը և Մուշեղ Մամիկոնյանն իրենց միացած նախարարների հետ միասին թագուհու անունից դիմում են Հովիանոսի հաջորդ՝ Վաղես կայսրին (364—378), խնդրելով նրան իր հովանավորության տակ վերցնել Հայաստանը և գահին նստեցնել օրինական գահաժառանգ Պապին[88]։

Մինչ այդ Փառանձեմ թագուհին 14 երկար ու ձիգ ամիսներ (368—369) արիաբար պաշտպանում էր Արտագերսը։ Սկզբում նրա տրամադրության տակ կար 11. 000 զինվոր, որոնք նվիրված էին թագուհուն և քաջությամբ պաշտպանում էին ամրոցը։ Թագուհու հիմնական նպատակը որդու կյանքը փրկելն էր[89]։ Դա նշանակում էր նաև փրկել թագավորական դինաստիան, որի առկա-

82 Նույն տեղում (աշխ. թարգմ., էջ 215)։

83 Նույն տեղում։

84 Նույն տեղում, Ammian. Marc., XXVII, 12, I—4։ Փավստոսը պատմում է, որ Արշակ Բ-ի Դրաստամատ անունով ներքինին, Շապուհից թույլտվություն ստանալով, այցելում է Արշակին։ Նա արձակում է Արշակի կապանքները, լվանում նրան, հագցնում ազնիվ զգեստներ և ճոխ սեղան պատրաստում։ Այդ ժամանակ Արշակը մրգի դանակով ինքնասպանություն է գործում։ Տեսնելով այդ, Դրաստամատը նույն դանակով վերջ է տալիս իր կյանքին (Փավստոս. Ե, է)։

85 Նույն տեղում, Դ, ծ։ Լեո, Պատմություն Հայոց, հ. Ա, Տփղիս, 1917, էջ 628։ Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 186—188։

86 Փավստոս, Դ, ճե։

87 Նույն տեղում, Ե, ա։

88 Ammian. Marc., XVII. 12. 10:

89 Փավստոս, Դ, ճե։

յության շնորհիվ տակավին պահպանվում էր կենտրոնացած, միասնական Հայաստանը։

Փառանձեմը վաղօրոք հոգ էր տարել այն մասին, որ արքայազն Պապը ամրոցից հեռանա հռոմեական սահմանները՝ կայսեր մոտ։ Նա այժմ թագուհին անհամբեր սպասում էր հռոմեական օժանդակ զորքերին, որոնց ժամանման մասին քանիցս խոստումներ էին ստացվել նախարարների ուղարկած սուրհանդակների միջոցով։

Իմանալով ամրոցում եղած գաղտնուղու մասին, Շապուհ Բ-ն թագուհու մոտ է ուղարկում իր կողմն անցած երկու հայերի՝ Գլակին[90] և Արտավանին, որոնք համոզում են Հայոց տիկնոջը՝ հանձնվել թշնամու ողորմածությանը, այլապես նրան սպասում էր արքայից արքայի ցասումը։ Սակայն Փառանձեմը կարողանում է ազդել նրանց վրա և նրանք անցնում են թագուհու կողմը։ Արդյունքը լինում է բերդապահ զորքերի գրոհը հարձակման չսպասող պարսիկների վրա, որոնք ջախջախվում են։ Դրանից հետո Վաղեսին է ուղարկվում թագուհու նոր պահանջը՝ թագաժառանգ Պապին Հայոց թագավոր նշանակելու մասին[91]։

Կայսրը, որ առհասարակ խուսափում էր Սասանյանների հետ զինված ընդհարումից, սահմանափակվում է նրանով, որ Նեոկեսարիայում ապրող Պապին մեծ պատվով ուղարկում է Հայաստան, առայժմ առանց թագավորական տիտղոսի, որպես Հայաստանի կառավարիչ[92]։

Ստանալով այս դեպքերի լուրը, Շապուհ Բ-ն զայրացած, մեծաքանակ զորքով սկսում է ավերել Հայաստանը։ Պատանի Պապը, ստիպված, Գլակի և Արտավանի հետ հեռանում է Ճորոխի հովիտը, Տայքի անառիկ կիրճերը։ Մոտ հինգ ամիս նա թաքնվում է խոր անտառներում՝ Լազիկեի սահմանի մոտ[93]։ Այդ ժամանակ Շապուհ Բ-ն ներխուժում է Իբերիա-Քարթլի (Վրաց աշխարհ), քշում այնտեղից հռոմեացիների նշանակած Սաուրմագ (Սաուրմագ) թագավորին և տեղը նշանակում նրա ազգական Ասպագուրին (Վարազ-Բակուրին)[94]։ Վիրքից վերադառնալով՝ նա Պապին հափշտակելու անհաջող փորձ է անում, որից հետո նորից վերադառնում է Արտագերս ամրոցի պարիսպների տակ։ Փառանձեմը շարունակում էր հերոսաբար դիմադրել։ Սովն ու հիվանդությունները ոչնչացրել էին նրա զորքը, Փառանձեմը չուներ ո՛չ մարդիկ, և ո՛չ

[90] Ինչպես նշում է Մարկվարտը (J. Markwart, Untersuchungen zur Geschichte von Eran. I, Leipzig, 1905, S. 212—214, 1905, s. 212—214, նաև նույնի՝ Südarmenien und die Tigrisquellen, էջ 154—155), որի հետ համաձայն է Հ. Մանանդյանը, Ամմիանոսի հիշատակած Գլակը (Cylaces, Cylaces, Ammian. Marc., XXVII, 12. 5) և Փավստոսի հիշատակածը՝ նույն հայր մարդպետ Գլակն է (տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 198)։ Լեոն գրում է, որ հայր ներքինապետի մասնակցությունն այս բանակցություններին մեջ շփոթություն է առաջացրել, կարծել տալով, թե ներքինին առանձին մարդ չի եղել, այլ հենց ինքը՝ Ամմիանոսի հիշատակած հիլակը (Լեո, նշվ. աշխ., էջ 636—637)։ Մարկվարտը ենթադրում է, որ Արտագերսի երկու պաշարում է եղել. առաջինի ժամանակ պարսկական զորքն առաջնորդել էին Ամմիանոսի հիշատակած Գլակը և Արտավանը, իսկ երկրորդի՝ Փավստոսի հիշատակած՝ Զիկը և Կարենը (J. Markwart, Untersuchungen..., 212):

[91] Ammian. Marc., XXVII, 12, 7—9:

[92] Նույն տեղում, XXVII, 12, 10։

[93] Նույն տեղում, XXVII, 12, 11։

[94] Նույն տեղում, XXVII, 12, 4։ Տե՛ս ა. ბოგვერაძე, ქართლის პოლიტიკური და სოციალურ ეკონომიური განვითარება IV—VIII საუკუნეებში, თბილისი, 1979, էջ 19—22.

*մերը։ 14-ամյա պաշարումից հետո պարսիկները գրավում են ամրոցը։ Արքայից արքայի ձեռքն են ընկնում Փառանձեմ թագուհին և թագավորական գանձերը։ Հայրենիքի այդ քաջարի պաշտպանը զոհվում է տանջալից մահով[95]։*

*Պարսկաստան վերադառնալիս Շապուհ Բ-ն (369) ավերածության է մատնում թագավորական ոստան Այրարատը, քանդում Արտաշատ, Վաղարշապատ, Զարեհավան, Զարիշատ, Վան, Նախճավան և արքունի այլ քաղաքներ[96], որոնց ողջ ազգաբնակչությունը (որոնց թվում նաև առևտրով ու արհեստներով զբաղվող հրեաներ և ասորիներ) գերի է տարվում։ Հայաստանի արհեստագործական, տնտեսական-առևտրական ու մշակութային խոշոր կենտրոններին հասցված էր ծանր ու անուղղելի հարված։ Կործանված քաղաքներն այլևս չվերականգնվեցին և հետզհետե կորցրին իրենց նշանակությունը։ Երկրի կարևորագույն ստրատեգիական կետերում տեղավորվում են պարսկական կայազորներ։ Հալածանք է սկսվում քրիստոնեական հոգևորականության դեմ՝ որպես Հռոմի գործակալների։ Քաղաքային ազգաբնակչության զանգվածային գերեվարությունը Հայաստանից շարունակությունն էր այն քաղաքականության, որ իրագործվում էր Շապուհ Բ-ի կողմից IV դ. կեսերին՝ պարսկական զորամասերի գրաված Ասորիքում, Կապադովկիայում և Կիլիկիայում։ Հայաստանից բռնագաղթած ազգաբնակչությունը հոգևորականներով հանդերձ ևս տարվում է Իրանի խորքերը և բնակեցվում նոր հիմնված քաղաքներում։ Նոր բնակատեղիներում նրանք հանդիպեցին բազմաթիվ քրիստոնեական համայնքների։*

*Հայաստանի քաղաքային կենտրոնների ավերումը խախտում էր երկրի առանձին մասերի միջև գոյություն ունեցող կապերը։ Հայաստանի յուրաքանչյուր գավառ այդուհետև դառնում էր ինքնամփոփ, ինքնաբավ մի միավոր, մի հանգամանք, որ տանում էր դեպի բնատնտեսության բացարձակ տիրապետություն և քաղաքական անջատողականության խորացում։*

*Հելլենիստական տիպի քաղաքը կործանվեց, նրա տեղը բռնեց ֆեոդալական կալվածքն իր բնատնտեսությամբ՝ ֆեոդալականապես կախյալ բնակչությամբ։ Շապուհ Բ-ի ավերիչ արշավանքն ուղեկցվում էր կողոպուտով, կոտորածով, բնակչության հալածանքով։*

*Հայ պետականության գոյությանը սպառնացող վտանգի այս պահին նախարարները, ժողովրդական զանգվածները և աշխարհազորը համակված էին մեծ զայրույթով՝ պարսիկների և նրանց կողմն անցած հայրենադավ իշխանների նկատմամբ և ամենքը պատրաստ էին հայրենիքի պաշտպանությանը։ Համաժողովրդական պայքարի, ինչպես և Հռոմից ստացված օգնության շնորհիվ հաջողվեց փրկել Մեծ Հայքի կենտրոնացված պետությունը։ Կայսրը օժանդակ զորք էր ուղարկել կոմես Արինթեոսի[97] ղեկավարությամբ, որին հրամայված էր ապահովել Պապի գահակալությունը և հայերին պաշտպանել պարսիկների հարձակումից[98]։ Օժանդակ զորքերի հետ Պապը մտավ*

---

95 Փավստոս, Դ, ծե։ Խորենացի, Գ, լե։ *Ammian. Marc.*, XXYII, 12, 12.

96 *Նույն տեղում։*

97 *Փավստոսի մոտ այս անունը հիշատակվում է «Աղէ» ձևով, որը Մարկվարտն առաջարկում է ուղղել «Արէ»* (*J. Markwart*, Untersuchungen..., *էջ 214*)։

98 *Ammian. Marc.*, XXVII. 12. 13: Փավստոս, Ե, ա։ Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 201—202։*

Հայաստանի սահմանները[99], նրան միացան ժողովրդական աշխարհազորայինները, որոնց օգնությամբ պարսիկները դուրս մղվեցին երկրից։ Սպարապետ Մուշեղ Մամիկոնյանի և Ներսես Ա կաթողիկոսի ու զորքի հետ միասին Պապը[100] 369 թ. գարնանը հաղթականորեն մտավ Արտաշատ և հռչակվեց Մեծ Հայքի թագավոր։

## 4. ՊԱՊ ԹԱԳԱՎՈՐԻ ՆԵՐՔԻՆ ԵՎ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Համառ պայքարից հետո Պապ թագավորին հաջողվում է մաքրել երկիրը սասանյան զորքերից։ Գահին հավատարիմ նախարարների, զորքի և ժողովրդի անձնուրաց պայքարի շնորհիվ երկիրն ազատագրվում է թշնամուց։

Մեծ Հայքի թագավորության ամբողջականության վերականգնումը Շապուհ Բ-ի համար հավասարազոր էր պարտության։ 363 թ. «ամոթալի դաշնագրով» Սասանյաններին անցած տարածքներից մնում էր միայն Մծբին քաղաքն իր շրջակայքով։ Իսկ հռոմեացիներն ամրացել էին սահմանամերձ Ամիդ քաղաքում, որն ավերվել էր վերջին պատերազմների ընթացքում, բայց արագ վերականգնվում էր։ Վաղեսը, վերջացնելով պատերազմը գոթերի դեմ, հնարավորություն ունեցավ միջամտելու Հայաստանի և Վիրքի (Իբերիայի) գործերին։ Կայսրն անձամբ 371 թ. եկավ Կապադովկիա, իսկ այնտեղից՝ Անտիոք[101]։ Խախտելով դաշնագրի պայմանները, կայսրն իր զինված ուժերով օգնում է ոչ միայն Պապին գահ բարձրանալու Հայաստանում, այլև իր զորավար Տերենտիոսի գլխավորությամբ 12 հռոմեական լեգեոն է ուղարկում Վիրք՝ վերստին թագավորեցնելու Սաուրմագին, որը հաստատվում է երկրի արևմտյան մասում որպես կայսեր վասալ, իսկ հյուսիսային և արևելյան շրջաններում գահակալում է արքայից արքայի վասալ Վարազ-Բակուրը[102]։

Հռոմեացիների ինքնակամ գործողությունները Հայաստանում և Վիրքում առավել բորբոքեցին Շապուհ Բ-ի զայրույթը։ Երբ Շապուհ Բ-ն վճռական բողոք է հայտնում ու պահանջում, որ Վաղեսը հավատարիմ մնա Հովիանոսի դաշնագրին և հռոմեական զորքը դուրս բերի Հայաստանից, կայսրը կտրականապես հայտարարում է, որ ինքը ոչ միայն չի հրաժարվում Հայաստանին «հովանավորելուց», այլև չի զիջելու նաև Իբերիան (Վիրքը)[103]։

Շապուհ Բ-ն պատերազմ է հայտարարում կայսրությանը և 371 կամ 372 թ., գարնանը, մեծ բանակով շարժվում է դեպի Հայաստան և Վիրք։ Կայսրը մեծ զորքով նրա դեմ է ուղարկում Տրայանոս կոմեսին և ալամանների նախկին թագավոր Վադոմարին։ Ճակատամարտը տեղի է ունենում Հայաստանում, Ձիրավի դաշտում[104], սրբազան Նպատ լեռան հյուսիսային փեշերին,

---

[99] Մինչ այդ Ամմիանոսի հաղորդած՝ Պապի և Շապուհի միջև եղած բանակցությունների և Գղակի ու Արտավանի սպանության մասին տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 202—203։

[100] Պապի տարիքի խնդիրը և դրա հետ կապված այլ հարցեր տե՛ս Հ. Մանանդյան, նույն տեղում։

[101] Տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 205։

[102] *Ammian. Marc.*, XXVII, 12, 16—17: Տե՛ս საქართველოს ისტორიის ნარკვევები, ტ. II, էջ 79։

[103] *Ammian. Marc.*, XXVII, 12, 15—16: Տե՛ս საქართველოს ისტორიის ნარკვევები, ტ. II, էջ 79—81։

[104] Խորենացի, Գ' լե։ Տե՛ս նաև՝ Լեո, հ. Ա, Տփղիս, 1917, էջ 613։ Տե՛ս საქართველოს ისტორიის ნარკვევები, ტ. II, էջ 79—81։

*որտեղ գտնվում էր Բագավանը[105] և որտեղ սովորաբար անց էր կացնում ամառը հայկական արքունիքն ու արքունի բանակը։*

*Ձիրավի ճակատամարտը խոշոր նշանակություն ունեցավ։ Մարտնչող կողմերից յուրաքանչյուրն իր շահերն ու նպատակներն էր հետապնդում։ Շապուհ Բ-ն, որը մինչ այդ պարտության էր մատնել հռոմեացիներին և ստիպել էր նրանց կնքել 363 թ. «ամոթալի» պայմանագիրը, ձգտում էր իրեն ենթարկել Հայաստանը և հետ մղել հռոմեացիներին Արևելքում։ Հռոմեացիներն, իրենց հերթին, ջանում էին Հայաստանը դարձնել Հռոմի եթե ոչ վասալը, ապա կրտսեր դաշնակիցը՝ Սասանյանների դեմ մղվող պայքարում։ Հայերն իրենց խնդիրներն ունեին և պայքարում էին ազատվելու պարսից ոտնձգություններից, պահպանելու հայկական պետականությունը և, դաշնակցած Հռոմի հետ, վերականգնելու երկրի եթե ոչ անկախությունը, ապա հաստատուն ինքնուրույնությունը։ Այդ էր պատճառը, որ հայկական զորքերը Մուշեղ Մամիկոնյանի, ինչպես նաև Սմբատ Բագրատունու գլխավորությամբ ճակատամարտ մտան մեծ խիզախությամբ և անձնազոհությամբ։*

*Հայերի և հռոմեացիների դաշնակից զորքերը ջարդում են թշնամուն։ Մովսես Խորենացին հաղորդում է. «Հունաց և Հայոց զորքերն... զորացած, թշնամիների դիակներով ամբողջ դաշտը լցրին և մնացածներին փախցնելով, հալածեցին»[106]։ Պարտված Շապուհ Բ-ն ստիպված է լինում հենց այդտեղ հայտարարել զինադադար և հաշտություն կնքել, որից հետո վերադառնում է Պարսկաստան, իսկ հռոմեական զորքը՝ Անտիոք։ Սասանյանները հարկադրված եղան հաշտվել գոյություն ունեցող իրավիճակի հետ։ Շապուհ Բ-ն ճանաչում է Պապի հաստատումը Հայաստանում և Սաուրմագինը՝ Վիրքի արևմտյան մասում։ Սա հայրենիքի անկախության համար ժողովրդի մղած անձնուրաց պայքարի արդյունքն էր։ Այսպիսով, 363 թ. դաշնագրի Հայաստանին և Վիրքին վերաբերող մասը վերանայվում է, և հայ Արշակունիների թագավորությունը վերացնելու Շապուհ Բ-ի ծրագրերը կրկին տապալվում են։*

*Հռոմի և Պարսկաստանի միջև զինադադարի կնքումից հետո Հայաստանում խաղաղություն է հաստատվում[107]։ Պապ թագավորը, չնայած իր երիտասարդ տարիքին, ինքնուրույն և ուժեղ կամքի տեր անձնավորություն էր։ Պարզվում է, որ այնքան էլ հեշտ չէր տանել նրան այն ճանապարհով, որով ուզում էին գնալ պալատական մեծամեծների առանձին խմբերը։ Պապ թագավորն աշխատում էր ընդհանուր լեզու գտնել նախարարների բոլոր խմբերի հետ, իսկ դա դուր չէր գալիս կաթողիկոսին ու սպարապետին, որոնք ձգտում էին նրա քաղաքականությունն ուղղել հռոմեացիներին ցանկալի հունով։*

*Պապը շիտակ քաղաքականություն էր վարում, նպատակ ունենալով բարձրացնել երկրի բարեկեցությունը և ամրապնդել պետական իշխանությունը։ Ամենից առաջ նա ձեռնամուխ էր եղել ուժեղ բանակ ստեղծելուն, դրա թիվը կրճատված 10.000-ից հասցնելով մինչև 90.000-ի։ Այս զորքի օգնությամբ սպարապետ Մուշեղ Մամիկոնյանը վերագրավել էր Արշակ Բ-ի գահակալության վերջին տարիներին Հայաստանից անջատված ծայրագավառները, Հայոց թագավորի տիրույթներն Ատրպատականում, Նոշիրականը, Կորդուքը,*

---

105 *Ammian. Marc.*, XXIX. Փավստոս, *Ե, գ։*

106 Խորենացի, *նույն տեղում, աշխ. թարգմ., էջ 274։*

107 Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 208։*

*Կորդրիքը, Տմորիքը, Մարաց ամուր աշխարհը, Արցախը, Ուտիքը, Շակաշենը, Գարդմանաձորը, Կողթը, Կասպից երկիրը, Գուգարքը, Աղձնիքը, Մեծ Ծոփքը, Անգեղտունը և Անձիտը։ Այսպիսով վերականգնվել էր Մեծ Հայքի թագավորության նախկին տարածքը*[108]։

*Երկրի պաշտպանությունը բարձրացնելու հետ մեկտեղ Պապը հոգ էր տանում նաև շինարարության մասին։ Իր ձեռնարկած բոլոր գործերում նա աշխատում էր հենվել երկրի ներքին ուժերի վրա և վարել անկախ, միանգամայն ինքնուրույն քաղաքականություն։*

*Թագավորը փորձում էր ըստ հնարավորին վերականգնել հայ-պարսկական*[109] *դրացիական հարաբերությունները, որն առաջացնում է Ներսես Ա կաթողիկոսի, սպարապետ Մուշեղ Մամիկոնյանի, նրանց կողմնակիցների ու թիկունքում կանգնած հռոմեական գործակալների դժգոհությունը։*

*Պապ թագավորն անշեղորեն վարում էր պետական գործերին մշտապես միջամտող եկեղեցու հզորությունը թուլացնելու քաղաքականություն։ Ներսես Ա-ի մահվանից հետո Պապ թագավորը կաթողիկոս է նշանակում Հուսիկ-Շահակին՝*[110] *Աղբիանոսի տոհմից։ Ուշագրավ է այն հանգամանքը, որ ձեռնադրվելու համար Պապը Շահակին չի ուղարկում Կեսարիա, ինչպես արվում էր մինչ այդ հաստատված սովորությամբ։ Եպիսկոպոսապետ է օծվում Հայաստանում և պաշտոնապես հաստատվում է «կաթողիկոս Հայոց Մեծաց» տիտղոսը։ Այս քայլով հայկական եկեղեցին հռչակվում էր կայսերական իշխանությունից անկախ, ինքնուրույն կազմակերպություն։*

*Պատերազմներում հյուծված հայ ժողովրդի համար ծանր բեռ էին դարձել եկեղեցու բազմաթիվ բարեգործական հաստատությունները։ Ներսես Ա-ի հիմնած օտարանոցները, անապատներն ու մենաստանները մեծ մասամբ վեր էին ածվել ծրիակերների ապաստանների։ Պապը հրամայեց վերացնել դրանցից շատերը, իսկ աշխատունակներին ուղարկել աշխատանքի։*

*Եկեղեցական դասի արտոնությունը՝ զինվորական ծառայությունից ազատ լինելը սահմանափակվում էր և պարտադիր դառնում երեցների ու սարկավագների եղբայրների, որդիների ծառայությունն արքունի բանակում*[111]*, Պապը գրավեց եկեղեցու հողերի մի մասը, որը հանձնված էր գյուղական քահանաներին։ Փավստոսի վկայությամբ, Պապը «յոթ հողից հինգը կտրում էր՝ հօգուտ արքունիքի և միայն երկու հողն էր թողնում»*[112]*։ Համապատասխանաբար կրճատվում էր քահանաների և եկեղեցական այլ սպասավորների թիվը։ Վերջապես, նա վերացնում է շինականների համար չափազանց ծանր հարկերը՝ տասանորդն ու*

108 Փավստոս, *Ե, գ, ը—ժթ։ Տե՛ս Հ.* Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 208։ Տե՛ս նաև՝ Н. Адонц,* Армения в эпоху Юстиниана, стр. 225—226.

109 *Հ.* Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 212։*

110 *Սեն-Մարտենի կարծիքով այս եպիսկոպոսը Մեծ Հայքի «Իսակիոս» եպիսկոպոսն է (տե՛ս Lebeau,* Histoire du Bas-Empire, III, *էջ 444, ծան. 3), որ հիշատակված է 364 թ. Անտիոքի ժողովի մասնակիցների թվում* (Socr., III. 25): *Հ. Մանանդյանը ենթադրում է, որ Փավստոսի մոտ «Յուսիկ» անունն աղավաղված է, ընթերցված՝ փոխանակ «Իսահակ»-ի (նշվ. աշխ., էջ 211, ծան. 5)։*

111 *А. Аннинский,* История армянской церкви, Кишинев, 1900, стр. 31, *Տե՛ս Հ.* Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 210,*

112 Փավստոս Բուզանդ, *Ե, լա*

պտղին[113]։ Ֆեոդալականապես կախյալ բնակչության հարկային բեռի թեթևացումը թելադրված էր տնտեսական այն ծանր պայմաններով, որոնք ստեղծվել էին երկրում ավերիչ արշավանքներից հետո։

Փակելով կուսանոցները, Պապը, ինչպես հետևեցնում է Հ. Մանանդյանը Փավստոսի վկայություններից, թույլատրել էր ամուսնալուծությունը, հրամայել էր, որ կույսերն ամուսնանան, չէր արգելել մահացածների վրա սուգ ու կոծ անելը, հեթանոս հայերի նկատմամբ եղել էր հանդուրժող[114]։

Եկեղեցու նկատմամբ Պապի վարած քաղաքականությունը, բնականաբար, հոգևորականության շրջանում առաջ բերեց խիստ դժգոհություն, որն օգտագործեցին հռոմեական գործակալներն իրենց համար անցանկալի անկախ քաղաքականություն վարող թագավորին ասպարեզից վերացնելու նպատակով։ Պապի դեմ ոտքի են ելնում եկեղեցին և նրա կողմնակից նախարարները։ Լուրեր են տարածում, թե իբր քահանայապետ Ներսես Ա-ին թունավորել էր Պապը[115]։ Փավստոս Բուզանդը՝ հայ եկեղեցու ջահերի արտահայտիչը, ջանք չի խնայում Պապին վատաբանելու համար, ներկայացնում է նրան իբրև բոլոր արատներով օժտված բարոյազուրկ մի անձնավորություն, մինչդեռ Պապի ժամանակակից Ամմիանոս Մարկելլինոսը բնութագրում է նրան որպես համեստ մի մարդ, որը բանսարկությունների ու չարագործության զոհ էր դարձել[116]։

Հոգևորականությունը և հռոմեասեր նախարարների մի մասը Պապից դժգոհ նպաստում են հռոմեական գործակալներին՝ նենգ ու ստոր դավադրություն կազմակերպելու՝ երիտասարդ ու եռանդուն թագավորի դեմ։ Դավադրության գլխավոր ոգեշնչողը Բագրևանդում գտնվող հռոմեական ջոկատի հրամանատար Տերենտիոսն էր, որը կայսեր հետ ունեցած իր գաղտնի նամակագրության մեջ Պապին ներկայացնում էր որպես իրանասեր տրամադրությունների տեր թագավորի, որն իբր հակված էր Շապուհ Բ-ի կողմն անցնելու և Հռոմի կողմնակից իր հպատակներին ճնշելու[117]։

Տարսոնում (Կիլիկիա) գտնվող Վաղես կայսրը որոշում է ասպարեզից վերացնել հայ թագավորին։ Նա Պապին հրավիրում է իր մոտ հույժ կարևոր խորհրդակցության։ Դյուրահավատ երիտասարդ թագավորը, 300 թիկնապահների ուղեկցությամբ, անմիջապես մեկնում է Տարսոն։ Կայսեր պալատում նա նկատում է, որ իրեն հետևում են, և որ ինքը պատվավոր գերության մեջ է, իսկ երբ փորձում է տեսակցություն ունենալ կայսեր հետ, այդ նրան ոչ մի կերպ չի հաջողվում։ Շուտով Պապին հայտնի է դառնում Տերենտիոսի նոր նամակը, որտեղ վերջինս խորհուրդ էր տալիս կայսրին նոր թագավոր ուղար-

113 Նույն տեղում։

114 Նույն տեղում։ Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 211։

115 Փավստոս, Ե, իդ։ Պատմական գրականության մեջ պարզված է, որ թունավորման այս ամբաստանությունը ոչ միայն կասկածելի է, այլև բոլորովին անհիմն։ Տե՛ս Գարագաշյան, Քննական պատմություն Հայոց, Գ, էջ 144—145, *K. Aslan*, Etudes historiques..., էջ 196, Ե. Մուրադյան, Քննական պատմություն Արշակ Բ-ի և անոր Պապ որդւոյն, Աղեքսանդրիա, 1900, էջ 143—147, Մ. Օրմանյան, Ազգապատում, Կ. Պոլիս, 1912, Ա, էջ 128, Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 211 և հտն.։

116 *Ammian. Marc.*, XXX. 1.

117 Նույն տեղում, 1, 1—3։

կել Հայաստան, քանի որ հայերն ատում են Պապին և վախենում են, որ վերադառնալուց հետո նա կանչնի պարսիկների կողմը։ Պապն իմանում է, որ իր դեմ դավադրություն է կազմակերպված և նույն գիշերը հեռանում է Տարսոնից[118]։ Այս ամենից հետո անգամ Պապը, Ամմիանոսի ասելով, շարունակում էր բարեկամական հարաբերություններ պահպանել կայսրության հետ[119]։

Կայսրը որոշում է անպայման վերացնել Պապին քաղաքական ասպարեզից։ Այդ նպատակով Տերենտիոսի փոխարեն Հայաստան է ուղարկվում Տրայանոսը, որին հանձնարարված էր ի կատար ածել Վաղեսի որոշումը։ Տրայանոսն ամեն կերպ ջանում էր ձեռք բերել Պապի վստահությունն ու մտերմությունը։ Ճաշկերույթ կազմակերպելով, Տրայանոսը հրավիրում է նաև հայ թագավորին, որը սպանվում է դավադրաբար[120]։ «Այսպիսի անարգ նենգությամբ—գրում է Ամմիանոսը,— դյուրահավատությունը խարդավանվեց. օտարականի արյունը փրփրելով թափվեց շքեղ սեղանածածկոցների վրա՝ դեմ հանդիման հյուրասիրության աստուծո հյուրընկալության ժամանակ, որը նույնիսկ Եվքսինյան Պոնտոսի կողմերում խղճամիտ երկյուղածության է արժանանում, և այնուհետև ճաշկերույթի մասնակիցները չափից դուրս հազեցված, բոլորովին սարսափահար եղան և փախան»[121]։

## 5. ՄԵԾ ՀԱՅՔԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԹՈՒԼԱՑՈՒՄԸ 370—380 ԹԹ.

Պապի սպանությունից հետո Վաղես կայսրը հայկական գահի վրա է նստեցնում Պապի եղբորորդուն՝ Վարազդատին (374—378)[122]։

Վարազդատի թագավոր նշանակվելը Հռոմի կողմից Սասանյանները դիտում են իբրև ագրեսիվ քայլ։ Հռոմեապարսկական հարաբերությունները նորից սրվում են։ Դեսպանությունների փոխանակության (375—376) արդյունքը լինում է այն, որ հռոմեական կողմը Հայաստանի հաշվին տիրանում է մի քանի փոքր գավառների[123]։

Վարազդատը հաշվի է առնում Հայաստանի վիճակը երկու մրցակից աշխարհակալությունների միջև։ Նա թեև գտնվում էր հռոմեական լեգեոնների հսկողության տակ, սակայն շուտով միացավ երկրի անկախության կողմնակիցներին և փորձեց ինքնուրույն կառավարել։ Այս առաջացրեց նոր դժգոհություններ։ Ինչպես հռոմեացիները, նույնպես և պարսիկները, չէին կարող հաշտվել Վարազդատի անկախության ձգտումների հետ։

---

118 *Ammian. Marc.*, XXX, 1, 4։ *Պապի փախուստի մանրամասնությունները տե՛ս նույն տեղում, XXX, 1, 3—17։*

119 *Նույն տեղում, XXX, 1, 5—15։ Մարկվարտը կարծում է, որ Պապի բարեկամության մասին Փավստոսի (Ե, լբ) հաղորդման հավանականության դեպքում, այդ պետք է տեղի ունեցած լիներ նրա՝ Տարսոնից վերադառնալուց հետո (J. Markwart.* Südarmenien und die Tigrisquellen, *էջ 152, տե՛ս Հ.* Մանանդյան, *Քնն. տես.*, *էջ 214)։*

120 Փավստոս, *Ե, լբ, Ammian. Marc.*, XXX, 1. 18—23:

121 *Ammian. Marc.*, XXX, 1, 22 *(Թարգմ. տե՛ս Հ.* Մանանդյան, *Քնն. տես., էջ 217)։*

122 Փավստոս. *Ե, լէ։* Մ. Օրմանյան, *Ազգապատում, էջ 165։ Վարազդատը հայտնի էր իր սխրագործություններով, որոնք նա ցուցաբերել էր օլիմպիական խաղերում։ Այս ավանդական դարձած օլիմպիական խաղերին Հունաստանում վերջ տրվեց 395 թ., Թեոդոս Ա կայսեր հրամանով, իբրև քրիստոնեական եկեղեցին վարկաբեկող հեթանոսական խաղերի։*

123 Ammian. Marc., *XXX, 2, 1—5։ Տե՛ս Հ.* Մանանդյան, *Քնն. տես., էջ 223—224։*

Մեծ Հայքի կենտրոնացված պետությունը, որի կառավարման ձևերը կազմավորվել էին դեռևս ստրկատիրական հասարակարգի պայմաններում, իբրև հելլենիստական միապետություն, ֆեոդալական դարաշրջանում այլևս չէին համապատասխանում գոյություն ունեցող արտադրահարաբերություններին և դրանցով պայմանավորված ձևավորվող քաղաքական վերնաշենքին, նա թուլացել էր և դատապարտված էր անկման ու վերացման, որն ավելի էր արագացվում հարևան նվաճող հզոր պետությունների միջամտությամբ։

Այս վիճակն ստեղծվեց դեռևս Պապ թագավորի սպանությունից հետո և հայոց արքունիքը միջոցներ էր որոնում, որպեսզի կանխի պետության անկումը։ Այդ ծանր օրերին հայրենասեր նախարարները համախմբվեցին հայ Արշակունիների երերացող գահի շուրջը։ Հայոց թագավորները, լինելով պատանի կամ երիտասարդ, կարիք ունեին խորհրդատուների, և այդ ժամանակաշրջանում երկրի իշխանությունը, փաստորեն, ներկայացված էր արքայական խնամակալներով։ Խնամակալների դերում հանդես են գալիս Մամիկոնյան նախարարական տան ներկայացուցիչները՝ հանձին Հայոց սպարապետի։ Դրանցից մեկն էր հայոց սպարապետ Մուշեղ Մամիկոնյանը, որը հանդես եկավ իր քաղաքական ծրագրով։ Նա առաջարկեց Հայաստանի յուրաքանչյուր ռազմավարչական միավոր հանդիսացող գավառում, մինչև Պարսկաստանի սահմանը հիմնել մեկ (կամ երկու) ամուր պարիսպներով շրջապատված քաղաքամրոց[124] և Հռոմեական կայսրության ծախքով պահել տվյալ գավառի այրուձին՝ կայենական զորքը։ Միաժամանակ երկիրը պետք է դաշնակցային հարաբերությունների մեջ լիներ Հռոմի հետ և Հայոց թագավորը նախկինի պես համարվեր հռոմեական կայսեր բարեկամն ու դաշնակիցը[125]։

Մուշեղ Մամիկոնյանը, իրոք, մտահոգված լինելով Մեծ Հայքի թագավորության ճակատագրով, դիմում էր բոլոր միջոցներին՝ հայոց պետությունը կործանումից փրկելու համար։

Այն նախագծին, որի իրականացմանն էր ձեռնարկել Մուշեղ Մամիկոնյանը, թշնամաբար ու կասկածանքով են վերաբերվում երիտասարդ թագավորն ու նրա համախոհ նախարարները։ Սպարապետին արատավորելու համար լուր է տարածվում, թե Պապի սպանության մեջ խառնված էր նաև Մուշեղ Մամիկոնյանը, որը ձգտում էր ասպարեզից հեռացնել նրան իր քաղաքական նպատակների իրագործման՝ Հայաստանը հռոմեացիներին հանձնելու համար։

Արքունիքում կազմակերպվում է դավադրություն, որ գլխավորում էր թագավորի մերձավոր խորհրդական Բատ Սահառունին։ Ննջույքի ժամանակ սպարապետը սրախողխող է արվում նույնքան ոխտադրժորեն, ինչպես Պապը։ Սպարապետի պաշտոնը Վարազդատը հանձնում է Բատ Սահառունուն, իսկ Մամիկոնյան տոհմի նահապետ է դառնում Վաչե Մամիկոնյանը[126]։

Հռոմեասեր ազնվականները և նրանց թիկունքում կանգնած հռոմեական գործակալները համոզվում են, որ Վարազդատն այն մարդը չէ, որի վրա հռոմեացիները կարող են հույս դնել։ Սակայն կայսրությունը չի կարողանում զբաղվել Հայաստանի հարցով, քանի որ արևմուտքում վիճակը վերստին

---

124 Տե՛ս Ստ. Մալխասյանցի ծանոթագրությունը Փավստոսի երկի թարգմանությունում (էջ 337, ծան. 181)։

125 Փավստոս, Ե, լդ։

126 Փավստոս, Ե, լե, լէ, խգ։

ծանրացել էր՝ կապված վեստգոթերի արշավանքների հետ, որոնք հասել էին Թրակիա և Կոստանդնուպոլիս։ Նրանց դեմ պայքարելու համար համախմբվում են կայսրության բոլոր ուժերը, այդ թվում նաև Հայաստանում տեղավորված հռոմեական զորամասերը, որոնք ետ են կանչվում այնտեղից։ Վաղեսը, մինչև արևմուտք գնալը, ստիպված է լինում բանակցություններ վարել Շապուհ Բ-ի հետ։ Խաղաղությունը պահպանվել էր, բայց պատմիչները չեն հաղորդում դաշինքի պայմանները[127]։ Սակայն, 378 թ. Ադրիանուպոլսի մոտ վեստգոթերի հետ տեղի ունեցած ճակատամարտում Վաղեսը ծանր պարտություն է կրում և սպանվում։ Արևմուտքի կայսր Գրատիանոսն իրեն կառավարչակից հայտարարեց Թեոդոսիոսին (379—395), որը, սակայն, մինչև 382 թ. չի կարողանում զբաղվել Արևելքի գործերով[128]։ Այս միջոցին Հայաստան է վերադառնում Մանուել Մամիկոնյանը, որին գերի էին տարել պարսից զորքերը[129]։ Մանուելն անցնում է Տարոն, հանդիպում Վաչե Մամիկոնյանին, որը Վարազդատից իր ստացած Մամիկոնյանների տան նահապետի պատիվը, նախարարական իրավունքի համաձայն, հանձնում է օրինական ժառանգորդ Մանուել Մամիկոնյանին[130]։

Մանուել Մամիկոնյանը Վարազդատին չի ճանաչում Հայաստանի թագավոր և վրեժ է պահանջում իր եղբոր՝ Մուշեղ Մամիկոնյանի սպանության համար։ Իր մարդկանց միջոցով Մանուելը պահանջում է, որ Վարազդատը նախօրոք հեռանա Հայաստանից, եթե չի կամենում զրկվել կյանքից։ Նա ավելացնում է նաև, որ Վարազդատը նույնիսկ Արշակունի չէ, որ լինելով ապօրինի զավակ, նա հանդգնել էր ձեռք բարձրացնել Մամիկոնյանների վրա, որոնք սկզբից իսկ հավատարմորեն և անշահախնդիր ծառայել են հայրենիքին և Արշակունիներին։ Վիրավորված թագավորն իր հերթին Մանուել Մամիկոնյանից պահանջում էր անմիջապես թողնել Հայաստանը։ Ինչպես պատմում է Փավստոսի մոտ բերված ժողովրդական վեպը, երկու դյուցազունները հանդիպում են Կարինի դաշտում։ Վարազդատի և Մանուելի մենամարտն ավարտվում է թագավորի պարտությամբ և նրա փախուստով դեպի կայսրության սահմանները։ Դրանից հետո Մանուել Մամիկոնյանը հաշվեհարդար է տեսնում նաև Բատ Սահառունու հետ, սպանելով նրան և նրա բոլոր որդիներին, իսկ սպարապետության պատիվը ստանձնում է ինքը[131]։

Մանուել Մամիկոնյանը 378 թ. դառնում է երկրի փաստական կառավարողը։ Նրան հաջողվում է հաշտեցնել նախարարների հակառակորդ խմբակցությունները և երկրում խաղաղություն հաստատել։

Թագավորական իշխանությունը երկրում ձևականորեն ներկայացված էր ի դեմս Պապ թագավորի այրու՝ Զարմանդուխտ տիկնոջ և նրա երկու փոքրահասակ որդիների՝ Արշակի ու Վաղարշակի։ Մանուել Մամիկոնյանը պատանի արքայազունների խնամակալն էր, բայց իրականում նա էր վարում երկրի բո-

---

[127] *Ammian. Marc.*, XXXI, 7, 1—2, *Zosimi*, Historia nova, IV, 21; *Այս բանակցությունների արդյունքների շուրջ եղած ենթադրությունները տե՛ս* Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, стр. 44, Գարբնյան, *Տիեզերական պատմություն, Բ, էջ 514,* Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 228—229։*

128 Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 228—229։*

129 *Նույն տեղում։*

130 Փավստոս, *Ե, լէ։*

131 *Նույն տեղում։*

լոր պետական գործերը։ Շապուհ Բ-ն մահացել էր 379 թ. և նոր գահ բարձրացած արքայից արքա Արտաշիր Բ-ն (379—383) գտնում էր, որ Մանուել Մամիկոնյանը պաշտպանում է Սասանյան Իրանի շահերը Հայաստանում[132]։ Իր դեսպան Սուրենի միջոցով պարսից արքայից արքան, հնուց ի վեր հաստատված սովորության համաձայն, ուղարկում է Հայաստանի պետական դրոշը և թագեր՝ պատանի արքայազունների համար, իսկ սպարապետ ու խնամակալ Մանուելին՝ ծիրանի, ինչպես և ոսկե արծվազարդ վրան։ Սակայն դրա հետ մեկտեղ Սուրենն իր հետ բերում է 10.000 հեծյալ, իբր երկիրը հռոմեացիների ոտնձգություններից պաշտպանելու համար։ Պարզվում է, որ նա լինելու էր երկրի փաստական կառավարիչը, նշանակված արքայից արքայի կողմից։ Այս փաստի բացահայտումն անհանգստացնում էր ամենից առաջ Մանուել Մամիկոնյանին, որը զրկվում էր իշխանության իր առանձնաշնորհումներից։ Իրադարձությունների այդպիսի ընթացքը Մանուելին բերում է նախարարների հռոմեասեր խմբի կողմը։ Նա դառնում է Սասանյանների թշնամին։ Լսելով Արտաշիր Բ-ի մահվան և Իրանում սկսված խլրտումների լուրը՝ նա հանկարծակի հարձակվում է պարսկական զորքերի վրա և ջարդում նրանց, իսկ Սուրենը փախչում է։ Մանուել Մամիկոնյանը կարգավորում է գահակալության հարցը։ Նա իր դուստր Վարդանդուխտին ամուսնացնում է իր խնամակալության ներքո թագավորող Արշակի հետ, իսկ նրա եղբայր Վաղարշակին կին է տալիս Սպեր գավառի Բագրատունի ասպետի դստերը։ Այնուհետև սպարապետ Մանուել Մամիկոնյանը, ինչպես հաղորդում է Փավստոսը, «մանուկ Արշակին թագավորեցրեց Հայոց աշխարհի վրա և Վաղարշակին նրան երկրորդ նշանակեց»[133]։ Այս դեպքերը տեղի են ունենում Կարին քաղաքում, որի շրջանը, Վերին Եփրատի հովտի հետ միասին, Արշակունյաց տան տոհմական սեփականությունն էր։

Հռոմեական ազդեցության նոր ուժեղացումը Հայաստանում արտահայտվեց նրանով, որ արքունի խնամակալ Մանուել Մամիկոնյանն իր մահից առաջ փորձում էր Հայաստանը դնել հռոմեական կայսեր հովանավորության ներքո[134]։

Հոգալով երկրի ապագայի մասին՝ խնամակալ Մանուելն այնուհետև նամակով դիմում է Թեոդոսիոս Մեծ (379—395) կայսրին և նրան հանձնում Հայաստանի ու Արշակ Գ-ի (378—387) բախտը։ Դրանից հետո նա մեռնում է, սպարապետության գործակալությունը հանձնելով իր որդի Արտաշիրին (384—385)[135]։

382 թ. Թեոդոսիոս կայսրը պարտության էր մատնել ապստամբած վեստգոթերին և հնարավորություն ունեցել զբաղվելու արևելյան գործերով, բայց չէր կամենում ընդհարվել Իրանի հետ։ 383—384 թթ. Հայաստանի թիկունքում պարսկահռոմեական բանակցություններ են սկսվում Հայաստանի բաժանման վերաբերյալ[136]։

---

132 Փավստոս, Ե, լը։ Փավստոսի հաղորդման համաձայն այս ժամանակ սասանյան արքունիքը քրիստոնյա հոգևորականությանն իր դիրքով հավասարեցրել էր մանր ազնվականությանը՝ ազատներին։ Պատմիչը գրում է, որ Զավեն կաթողիկոսը «բոլոր քահանաներին սովորեցրեց զինվորական զգեստ հագնել» (Զ. բ, աշխ. թարգմ., էջ 300)։

133 Փավստոս, Ե, խդ (աշխ. թարգմ., էջ 292)։

134 Նույն տեղում։

135 Նույն տեղում։

136 Հ. Աստուրյան, Քաղաքական վերաբերությունները..., էջ 318։

*խնամակալ Մանուել Մամիկոնյանի քաղաքականությունը, որի հիմնական նպատակն էր բարձրացնել թուլացած Արշակունի գահակալների՝ մանավանդ Մամիկոնյանների ու նրանց համախոհների քաղաքական կշիռը, հարուցում է նախարարների մեծ մասի դժգոհությունը։ Մանուելի մահից հետո նրանք Արշակ Գ-ին չեն ճանաչում Հայաստանի օրինական թագավոր, այլ դիմում են Իրանում գահ բարձրացած Շապուհ Գ-ին (383—388) և խնդրում նրանից թագավոր Արշակունյաց տոհմից։*

*Շապուհ Գ-ն անմիջապես իր արքունիքում գտնվող երիտասարդ Արշակունի Խոսրովին ուղարկում է Հայաստան։ Հայոց նոր թագավորին ուղեկցում էին սասանյան զորքերը, որոնց գլուխ էր կանգնած մեծատոհմիկ Առավանը՝ Զիկ տոհմական տիտղոսով։*

*Իր ախոյանի մոտենալու լուրն ստանալուց հետո Արշակ Գ-ն զգալով, որ ինքն ի վիճակի չէ նրան դիմագրել, հեռանում է Հայաստանի արևմտյան մասը, Վերին Եփրատի հովտում գտնվող իր տիրույթները, որոնք հռոմեական ազդեցության ոլորտում էին։ Փավստոսի դիպուկ արտահայտությամբ «Արշակ թագավորը, երբ նրանց տեսավ, տեղի տվեց, քաշվեց, գնաց Հունաց սահմանները։ Եվ թիկունք եղան Արշակ թագավորին Հունաց թագավորը, իսկ Խոսրովին՝ Պարսից թագավորը»։ Այնուհետև՝ «Հունաց զորքերը եկան (Արշակ թագավորին) օգնության, որը Եկեղյաց գավառումն էր, իսկ Պարսից զորքը և Խոսրով թագավորը Այրարատ գավառումն էին»[137]։*

*Այս ժամանակ շարունակվում էին պարսկաբյուզանդական բանակցությունները, որոնց հետևանքն է լինում Հայաստանի բաժանումը։*

---

137 Փավստոս, *Զ, ա (աշխ. թարգմ., էջ 298—299)*։

ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՄԵԾ ՀԱՅՔԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՏՐՈՀՈՒՄՆ ՈՒ ԱՆԿՈՒՄԸ

## 1. ՄԵԾ ՀԱՅՔԻ ԲԱԺԱՆՈՒՄԸ 387 Թ.

*Շուրջ 600 տարի պահպանեց իր գոյությունը Մեծ Հայքի կենտրոնացված պետությունը, մաքառելով Արևելքի ու Արևմուտքի աշխարհակալությունների դեմ։ Վերջին անգամ Մեծ Հայքի թագավորությունն ամրապնդեց իր դիրքերը 298 թ. Մծբինի դաշնագրով, ավելի քան երեք քառորդ դար ևս երկարացնելով իր կյանքը։*

*III—IV դարերում երկրի ներսում արդեն գերիշխող էր ֆեոդալական կացութաձևը և Հայ Արշակունիների կենտրոնացված միապետությունը փոխել էր իր բնույթը, ընդունելով վաղ-ֆեոդալական միապետության բնույթ։ Երկրի ներսում տեղի ունեցող այս փոփոխություններն անխուսափելի էին դարձրել Հայ Արշակունիների թագավորության խիստ թուլացումը և նախարարական «տէրութիւն»-ների ձևավորումը իբրև վասալական կախման մեջ գտնվող առանձին քաղաքական միավորների*[1]*։*

*Նախարարներն ու եկեղեցին IV դարի ընթացքում տնտեսապես այնքան էին հզորացել, որ դարձել էին իրենց տրամադրված տարածքների փաստացի տերերը և աշխատում էին պետությանը չվճարել փաստորեն իրենց ենթակա գյուղական համայնքներից գանձվող հարկերը։ Չնայած նախարարական առանձին տների նկատմամբ գործադրած խստագույն միջոցառումներին, Արշակունիների կենտրոնական իշխանությունն ի վիճակի չէր սաստելու կենտրոնախույս իշխաններին և դեպի անկում էր գնում։ Հենց այս հանգամանքն էլ օգտագործեցին Հայաստանի տարածքի համար իրար դեմ պայքարող Սասանյան Իրանն ու Հռոմեական կայսրությունը։ Նրանք ժամանակավորապես ապահովեցին նախարարների հարկային փաստացի անձեռնմխելիությունը և այդ միջոցով կարողացան նրանց գրավել իրենց կողմը, սակայն նաև հող նախապատրաստեցին Հայաստանի բաժանման և այնուհետև թագավորական իշխանության վերացման համար, որին նպաստում էր առաջին հերթին Հայաստանում ստեղծված քաղաքական իրավիճակը։*

*383—384 թթ. սկսված պարսկահռոմեական բանակցությունները հիմ-*

---

1 Ս. Տ. Երեմյան, *Մեսրոպ Մաշտոց (ծննդյան 1600-ամյակի առթիվ), «Լենինյան ուղիով», 1962, № 5, էջ 8։*

*նականում ավարտվում են 387 թ.[2] Հայաստանի բաժանմամբ Սասանյան Պարսկաստանի և Հռոմեական կայսրության միջև։*

*387 թ. բաժանման համաձայն, դեռևս 363 թ. «ամոթալի դաշնագրից» մի քանի տարի անց անջատված Մեծ Հայքի ծայրամասերը, որոնք այնուհետև վերամիավորվել էին Պապի թագավորության տարիներին, կրկին անջատվեցին։ Դրանք էին՝ Ուտիք, Բաղասական (Փայտակարան քաղաքի նահանգը) աշխարհները, ինչպես և «Մարաց ամուր աշխարհը» և Գուգարքի հյուսիսային գավառները։ 387 թ. դաշնագրի համաձայն սրանց գումարվեցին բդեշխությունները՝ Աղձնիքը, Կորդուքը, Նոր-Շիրականը, Գուգարք նահանգը ամբողջովին, ապա Արցախ նահանգը։ Սրանք ծայրամասային՝ «եզերային» նահանգներ էին՝ 103359 քառ. կմ ընդհանուր տարածությամբ։*

*Այսպիսով, Մեծ Հայքն ընդմիշտ մասնատվում էր, մնում էր Միջնաշխարհը՝ Բարձր Հայք, Ծոփք, Ծոփք Մեծ, Տուրուբերան, Մոկք, Վասպուրական, Սյունիք, Տայք, Այրարատ նահանգները՝ 184.916 քառ. կմ ընդհանուր տարածությամբ[3]։ Միջնաշխարհն իր հերթին բաժանվում էր երկու մասի՝ նրա արևելյան մեծագույն մասը՝ 73%-ը (երեք քառորդից ավելին)՝ 134.341 քառ. կմ տարածությամբ, ենթարկվում էր Սասանյան Իրանին (Պարսկաստանին), իսկ 27%-ը (գրեթե մեկ երրորդը), այն է՝ 50.575 քառ. կմ անցնում էր Հռոմեական կայսրությանը[4]։ Սասանյան Իրանին անցնող Հայաստանի տարածքն ընդգրկում էր Մեծ Հայքի Տուրուբերան, Մոկք, Վասպուրական, Սյունիք, Տայք և Այրարատ նահանգները։*

---

2 Հայաստանի բաժանման տարեթիվը Կ. Գյուտերբոկը («Հռոմեական Հայաստանը և Հռոմեական սատրապությունները Դ—Ձ դարերում», Քյոնիգսբերգ, 1900, թարգմ. Նորշուան, Վիեննա, 1914, էջ 16—30), Ն. Բեյնեսը (*N. H. Baynes*, Rome and Armenia in the IV century, "*English Historical Revue*", *25 (1910)*, p. 624—643), Հ. Հ. Մանանդյանը («Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության», հատ. Բ, մասն Ա, Երևան, 1957, էջ 233, 237)՝ Կ. Թումանովը (*C. Toumanoff*, Studies in Christian *Caucassian History*, *Georgtown*, 1963, էջ 152, ծան. 6) և ուրիշներ նշում են 387 թ., Հ. Ասատուրյանը («Քաղաքա կան վե րաբերությունները ընդ մեջ Հայաստանի և Հռոմա», Վենետիկ, 1912, էջ 317—320), Մ. Օրմանյանը («Ազգապատում», § 172, էջ 247), Ժ. Դուսզը (*J. Dolse*, Le partage del' Armenie sous Theodose Ier "Revue des Etudes anciennes, (Bordeaux) t. 47, 3—4 1945, էջ 274—277)՝ 384 թ., Նյոլդեկեն և Մարկվարտը (*Nöldeke*, Aufsätze zur Persischen Geschichte, Leipzig, 1887, S. 103; *J. Markwart*, Südarmenien und die Tigrisquellen' s. 126)՝ 389/90 թ.։ Քննելով այդ հարցի մասին եղած աղբյուրները և գրականությունը է. Դանիելյանը 1978 թ. պարզել է, որ Հայաստանի այդ բաժանումը տեղի է ունեցել 385 թ., որը ստույգ որոշվում է Փավստոս Բուզանդի, Մովսես Խորենացու և Ղազար Փարպեցու հաղորդած տեղեկությունների հիման վրա և, որ այդ բաժանմամբ էր պայմանավորված Արշակ Գ-ի հեռանալը Հայաստանի արևմտյան՝ հռոմեացիներին անցած մասը և Շապուհ Գ-ի կողմից Խոսրով Գ-ին (385—388) երկրի արևելյան՝ Պարսկաստանին անցած մասում թագավոր կարգելը։ է. Դանիելյանը ճիշտ է համարում այն հետազոտողներին (Հ. Ասատուրյան, Լեո, Ժ. Դուսզ), որոնք գտնում են, որ բաժանման հետ կապված երկրորդական հարցերի կարգավորումը տևեց մինչև 389 թ.։ է. Դանիելյանը կատարել է նաև ժամանակագրական կարգի այլ դիտողություններ. նա գտնում է, որ Ներսես Ա կաթողիկոսը մահացել է 372 թ., Պապ թագավորը սպանվել է 373 թ., Շահակը կաթողիկոս է եղել 372—376 թթ., Զավենը՝ 376—380 թթ., Ասպուրակեսը՝ 380—385 (կամ 387) թթ., Արշակ Գ-ն Հայաստանի արևմտյան մասում թագավորել է 385—387 թթ. և այլն (տե՛ս Է. Լ. Դանիելյան, Հայաստանի բաժանման տարեթիվը 387 թե՞ 385, ՊԲՀ, 1, 1980, էջ 203—214)։

3 Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացույցի»*, Երևան, 1963, էջ 116—118։

4 Նույն տեղում։

Հայաստանի արևելյան մասը, որն անցավ Սասանյան Իրանին, չորս անգամ մեծ էր արևմտյան՝ Բյուզանդական կայսրությանն անցած մասից[5]։ Ղազար Փարպեցին նշում է, որ այս բաժանումով «Հայոց երկրի մեծ մասը՝ լավը, պիտանին ու արգավանդը՝ Պարսից արքայի բաժնի մեջ ընկավ։ Ջնայած Հունաց թագավորին ժառանգություն դարձած մասում ուրիշ բազմաթիվ գավառներ էին մնացել, սակայն նրանք հավասար էին միայն Այրարատյան գավառին»[6]։

Հայաստանը 387 թ. հետո ոչ միայն երկու մասի էր տրոհվել, այլև ինչպես գրում է Փավստոսը, «երկուսից էլ շատ գավառներ պոկվեցին»[7]։

Պարսկաստանի գերիշխանության տակ անցած նշված հողերից արևմուտք գտնվում էր կայսրությանն անցած Մեծ Հայքի մասը՝ Բարձր Հայք նահանգը, որն այն ժամանակ կոչվում էր «Ներքին Հայք» (Armenia interior)[8], և Ծոփաց աշխարհը՝ հետագա Չորրորդ Հայքը (Armenia quarta), որը բաժանված էր հինգ սատրապությունների[9]։ Սրանցից Ծոփք Մեծը, ըստ «Աշխարհացույցի» բաժանումների կազմում էր նախկին Աղձնիք նահանգի Անգեղտուն և Նփրկերտ (կամ Տիգրանակերտ) գավառները[10]։

Հռոմեական կայսեր վեհապետության ներքո գտնվող Հայաստանի հյուսիսային մասը՝ Բարձր Հայքը ընդգրկում էր Վերին Եփրատի հովիտը, ուր թագավորում էր Արշակ Գ-ն։ Այն նրա տոհմային տիրույթն էր։ Այստեղ Արշակ Գ-ի նստավայրն էր Ջրմես ավանը, որը հայտնի էր նաև Ծումինա (այժմ՝ Ջիմին գյուղը) անունով։ Միայն Բարձր Հայքն էր, որ բաժանումից հետո էլ կոչվում էր «Մեծ Հայք» (Armenia Maior)։ Հռոմեական վարչական ապարատն այն կոչում էր «Ներքին Հայք»—(Armenia interior)։

Մեծ Հայքը, այնուհետև, որպես մեկ միասնական պետություն այլևս գոյություն չուներ։ Փավստոս Բուզանդը իր «Պատմության Հայոց» (կամ «Բուզանդարան պատմությունք») աշխատությունը հասցնում է մինչև Հայաստանի այս բաժանումը և եզրափակում հուսահատությամբ ու հոռետեսությամբ լի հետևյալ խոսքերով. «և այն ժամանակ ու այնուհետև Հայոց թագավորությունը բաժանվեց, ցրվեց, նվազեց, իր նախկին մեծությունից ընկավ» («նուազեաց

---

5 Հ. Մանանդյանը գրում է, որ Թեոդոսիոս Ա-ի քաղաքականությունն Արշակունյաց թագավորության վերաբերմամբ և նրա կնքած Հայաստանի բաժանման դաշինքը, ինչպես ճիշտ մատնանշել են պատմագետներից շատերը (Գելցեր, Համառոտ պատմություն Հայոց, էջ 10, *K. Krumbacher*, Geschichte der byzantinischen Literatur, München, 1897, Գյուտերբոկ Հռոմեական Հայաստան, էջ 19, Լեո, Հայոց պատմություն՝ Հ. Ա, էջ 672, *K. Aslan*. Etudes historiques 199), «խիստ ծանր սխալ էր և չէր համապատասխանում կայսրության քաղաքական իրական շահերին» (Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 241)։

6 Ղազար Փարպեցի, Հայոց պատմություն, Թուղթ Վահան Մամիկոնյանին։ Աշխարհաբար թարգմանությունը և ծանոթագրությունները Բագրատ Ուլուբաբյանի, Երևան, 1892, էջ 19։

7 Փավստոս, Դ, ա. (աշխ. թարգմ., էջ 299)։ Հ. Մանանդյանը գրում է. «Թե որոնք էին այդ կտրված գավառները, դժբախտաբար մեզ մանրամասն հայտնի չէ»։ Նա այնուհետև ենթադրում է, որ դրանք էին Բալահովիտը, Հաշտեանքը, Հերը և Զարևանդը ու սրանց հարևան մի քանի այլ շրջաններ («Քննական տեսություն», հ. Բ, Մ. Ա, էջ 239)։ Այս ժամանակաշրջանի Հայաստանի քաղաքական բաժանումը տե՛ս Ս. Տ. Երեմյան, Ատլաս «Հայ ժողովրդի պատմության գրքի», մասն Ա, Երևան, 1952, «Հայաստանը V—VII դդ.» քարտեզը։

8 *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, СПб., 1908, стр. 46—65.

9 Նույն տեղում, էջ 28—45։

10 Նույն տեղում, էջ 116։ Այս բաժանումների սահմանների մասին տե՛ս նույն տեղում էջ 1—27 և Կ. Գյուտերբոկ, նշվ. աշխ.։

բաժանեցաւ, ցրուեցաւ թագաւորութիւնն Հայոց, պակասեաց յիւրմէ մեծութենէն յայն ժամանակն և յապայ»)[11]։ Բնորոշ է, որ այս դեպքերի ժամանակակիցները գիտակցում էին, թե որքան մեծ պետության հետ գործ ունեին երկու մարտնչող աշխարհակալությունները և որքան մեծ էր նրա նշանակությունը Սասանյանների ու կայսրության համար։ Խոսելով այս բաժանման մասին, Փավստոսն ասում է. «Հունաց և Պարսից թագավորների դեսպաններն ու պատգամավորներն իրենց մեջ երթևեկություն ունեցան, և երկու թագավորները՝ Հունաց և Պարսից, իրար հետ խորհուրդ արին և համաձայնության եկան։ Նրանք հարմար համարեցին,— շարունակում է նա,— նախ Հայոց աշխարհը երկու բաժին անել իրենց մեջ։ Նրանք ասում էին. «Մեր երկուսի միջև ընկած է այս հզոր և հարուստ թագավորությունը. լավ կլինի, որ այս միջոցով թուլացնենք ու խանգարենք այս թագավորությունը. նախ երկու մասի բաժանենք այս երկու Արշակունի թագավորներով, որոնց նշանակեցինք, հետո կաշխատենք նրանց էլ թուլացնել, աղքատացնել և մեր ծառայության ենթարկել, որպեսզի մեր մեջ չկարողանան գլուխ բարձրացնել»[12]։ Այն, ինչ որ չկարողացան իրականացնել Սասանյանները 253—293 թթ., այժմ նրանք արեցին Հռոմի հետ համատեղ։ Հայոց թագավորի գահը մատնված էր պարսից արքայից արքայի ու Հռոմի կայսեր քմահաճույքին և հետևյալ քայլն էր լինելու հայ Արշակունիների, թեև կախյալ, վիճակում դեռևս պահպանվող թագավորության վերացումը։

Հայաստանի բաժանման հետևանքով շատ նախարարներ Արշակ Գ-ի հետ հեռացել էին երկրի արևմտյան մասը և այժմ տեսնելով, որ Խոսրովի բաժնում մնացած իրենց կալվածքները հարքունիս են գրավվում, սկսում են վերադառնալ[13]։ Նախարարներից ոմանք էլ ցանկանում էին գալ Խոսրով Գ-ի բաժինը, զրկված լինելով իրենց տիրույթներից։ Նրանցից էին Սահակ ասպետ Բագրատունին, որի իշխանությունը՝ Սպեր գավառը, գտնվում էր կայսրությանն անցած մասում, և Հայաստանի՝ Պարսկաստանին անցած մասից եկած նախարարները՝ Սուրեն Խորխոռունին, Վահան Առավեղյանը և Աշխադար Դիմաքսյանը։ Սահակ ասպետին հաջողվում է գալ Խոսրովի մոտ, որը նրան մեծ պատվով ընդունեց և իր զորքերին սպարապետ կարգեց[14]։ Ըստ երևույթին, այս ժամանակ Բագրատունի նախարարական տոհմին շնորհվեց Կոգովիտ գավառը՝ Դարոյնք կենտրոնով։

Արշակ Գ-ի արքունիքում գտնվող նախարարները փնտրում էին պատեհ առիթ՝ Խոսրով Գ-ի կողմն անցնելու և այդ առիթը գտնվեց։ Երբ Արշակ Գ-ն իր գանձերն Անի ամրոցից (Կամախ) հանելով փոխադրում էր Ծոփք (ըստ երևույթին Բնաբեղ ամրոցը), Սուրեն Խորխոռունին, Վահան Առավեղյանը և Աշխադար Դիմաքսյանը «հափշտակեցին (գանձերը) և նրանք կամենում էին անցնել Խոսրովի մոտ», բայց Արշակ Գ-ին նվիրված Սամվել Մամիկոնյանը նրանց հետապնդում է մինչև Մանանաղի գավառի քարայրները։ Փախստականները նեղ վիճակում էին, բայց վրա է հասնում Սահակ ասպետը՝ «Խոսրովի սպարապետը, զորքի գլուխն անցած նա հալածում էր Վանանդից դուրս

---

11 Փավստոս, Դ, ա. (աշխ. թարգմ., էջ 299)։

12 Նույն տեղում։

13 Լեո, Պատմություն Հայոց, հ. Ա, Թիֆլիս, 1917, էջ 670։

14 Խորենացի, Գ, խդ։

մղված մի խումբ ավազակներին»[15], ապա թողնելով վերջիններիս, Սահակ ասպետը հարձակվում է Սամվել Մամիկոնյանի գնդի վրա և ազատում քարայրում ապաստանած Սուրենին, Վահանին և Աշխադարին «գանձերով միասին և շատ շտապով հասնում է Խոսրովի մոտ»։ Խոսրով Գ-ն գանձերի մի մաս ուղարկում է արքայից արքա Շապուհ Գ-ին «և նրա հրամանով նրանց է տալիս գյուղեր և ընտիր ու հարմար դաստակերտներ այն (նախարարների) ժառանգությունից, որոնք պարսից բաժնից էին, բայց մնացին Արշակի մոտ»։ Այս դեպքը պատճառ եղավ, որպեսզի Արշակը պատերազմ հայտարարելով Խոսրովին, մտներ Վանանդ[16]։

Խոսրովի բանակատեղը գտնվում էր Գեղամա ծովի (Սևանա լճի) հարավարևելքում գտնվող մորուտի մոտ, որ կոչվում էր Մորք (այժմ՝ Ծովակ)։ Մինչև Խոսրովն այստեղից հասավ Վանանդ, Արշակ Գ-ն արդեն Վանանդի, Զարիշատի կողմերը գտնվող Երևել դաշտում էր։ Տեղի ունեցած ճակատամարտի ժամանակ Արշակ Գ-ն պարտվեց։ Գազավոն Կամսարականը կարողացավ նրան փրկել և հասցնել Եկեղյաց գավառը, որտեղ և Արշակ Գ-ն հիվանդացավ բաղուկացավով և տենդից հյուծվելով, 387 թ. մահացավ[17]։

Ինչպես նշում է Խորենացին, Արշակ Գ-ի մահից հետո հույներն իրենց բաժնում այլևս թագավոր չնշանակեցին։ Այն կողմի նախարարներին առաջնորդում էր քաջ Գազավոնը, իսկ հույներն իրենց ենթակա մասում իշխաններ՝ կոմեսներ նշանակեցին[18]։

Հայաստանի հռոմեական մասի նախարարները, տեսնելով հայկական պետականության վերացումը, «որոշեցին կամավորապես հնազանդվել Խոսրով թագավորին»[19]։ Իրենց նամակում նախարարները պատրաստակամություն են հայտնում ենթարկվելու Խոսրովին, եթե վերջինս ճանաչի նրանց տիրակալական իրավունքները։ Սամվել Մամիկոնյանը ձեռք է գցում Խոսրովի պատասխան նամակը և նախարարների նամակի պատճենը ուղարկում Արկադիոս կայսրին, որը դրանք դրել էր իր դիվանը և, ինչպես պատմահայրն է ասում՝ «մինչև այսօր էլ մնում են»[20]։

Խորենացին ցույց է տալիս, որ Հայոց Խոսրով թագավորն իր կողմը գրավելով հռոմեական Հայաստանի նախարարներին, կայսրին «դիմում է խնդրելով, որ իրեն վստահի Հայաստանի հունական մասն էլ, որը չեն պահելով՝ նրան ճշտությամբ հարկերը կվճարի, ինչպես նրա գործակալները»։ Կայսրը «կատարում է Խոսրովի խնդրածը»[21]։

Խոսրով Գ-ն այս պարագայում միաժամանակ թագավորեց Հայաստանի թե՛ պարսկական և թե՛ հռոմեական մասերում՝ իրեն համարելով վասալ և

---

15 Նույն տեղում։

16 Խորենացի, Գ, խե (աշխ. թարգմ., էջ 283)։ Տե՛ս նաև՝ Լեո, նշվ. աշխ., էջ 671։ Այս ժամանակ պիտի վերադարձվեին Խոռխոռունիների, Առավեղյանների և Դիմաքսյանների ժառանգական կալվածքները։

17 Խորենացի, Գ, խզ։

18 Նույն տեղում։

19 Խորենացի, Գ, խը, (աշխ. թարգմ., էջ 284—285)։

20 Շատ հավանական է, որ Խորենացին այս տեղեկությունները հաղորդելիս իր ձեռքի տակ ունեցել է նաև հիշյալ նամակը։ Այս և հաջորդ դեպքերի շարադրությունը Խորենացու կողմից կասկած չեն թողնում, որ նա առաջնորդվել է իր ձեռքի տակ եղած արխիվային նյութերով։

21 Խորենացի, Գ, խթ (աշխ. թարգմ., էջ 287)։

արքայից արքայի ու կայսեր, միաժամանակ երկուսին էլ հարկ վճարելով[22]։ Խոսրովը, ընդառաջելով Գազավոն Կամսարականի և Հայաստանի հռոմեական մասը գնացած մյուս հայ նախարարների խնդրանքին, համաձայնում է, որ նրանք վերադառնան իրենց տոհմական կալվածքները[23]։ Խոսրով Գ-ի ներքին քաղաքականությունը ևս հեռացնելու էր Հայաստանը Պարսկաստանից։ Մինչ այդ վախճանվել էր Ասպուրակես կաթողիկոսը, և որոշ ժամանակ անց Խոսրովը նրան հաջորդ է նշանակում Լուսավորչի տոհմի վերջին ներկայացուցիչ Սահակ Պարթևին՝ Ներսես Մեծի որդուն[24]։ Ստեղծվել էր այնպիսի վիճակ, որ երկրի հայրենասերներին հույսեր էր ներշնչում, որ նորից կվերականգնվի միասնական Հայաստանը։

Խոսրով Գ-ի այս ինքնուրույն քաղաքականությունը թշնամաբար է ընդունվում Տիզբոնում։ Խորենացին հաղորդում է, որ «Շապուհը բարկացած էր Խոսրովի վրա, որ նա անձնական բարեկամությամբ հաստատեց Արկադիոսի[25] հետ և առանց [իր] հրամանի եպիսկոպոս նշանակեց Մեծ Սահակին, ուստի նրան մեղադրանք ուղարկեց սպառնալիքով»։ Խոսրով Գ-ն այնքան վստահ էր իր ուժերի վրա և այնքան մեծ հույսեր էր կապում քրիստոնյա կայսեր հետ, որ նույնիսկ «ըմբոստացավ, խրոխտալով հանդգնաբար պատասխանեց և պատգամավորներին անարգանքով ետ դարձրեց»։ Հայոց թագավորը նույնիսկ բանակցություններ էր վարում կայսեր հետ և հորդորում էր նրան, որպեսզի «Շապուհի հետ (կնքած) դաշինքը խզի և զորքով իրեն օգնի, իսկ ինքը մեր ամբողջ երկիրը նրան կդարձնի»[26]։

Բյուզանդական կայսրությունը գոհ կլիներ, եթե նա կարողանար պահել և յուրացնել՝ իրեն բաժին հասած Հայաստանի արևմտյան մասը, ուստի կայսրը գերադասեց չեզոք դիրք գրավել։ Խոսրով Գ-ն ոչ մի կողմից օգնություն չունենալով, մնում է անելանելի վիճակում։ Շապուհ Գ-ի հրամանով Խոսրովը կալանավորվում է։ Ջնջյալ են համարվում Խոսրով Գ-ի կողմից արված նշանակումները. Սահակ Պարթևը ինչպես և հայկական կենտրոնաձիգ իշխանության համար պայքարող բոլոր նախարարները զրկվում են իրենց պատիվներից[27]։ Պարսից մի ստվար գունդ թողնվում է Հայաստանում, իսկ Խոսրովը տարվում է Պարսկաստան՝ Անհուշ կոչված բերդում պահելու համար»[28]։ Գահընկեց արված Խոսրով Գ-ի հետ Պարսկաստան տարվեց նաև Գազավոն Կամսարականը։ Երբ կալանավորված Խոսրովը և Գազավոնը տարվում էին Պարսկաստան, Գազավոնի եղբայրը՝ Շավարշ Կամսարականը և Պարգև Ամատունին իրենց յոթ հարյուր զինվորներով փորձեցին Խոսրով թագավորին ազատել, սակայն այդ նրանց չհաջողվեց, որովհետև Խոսրովի ոտքերը շղթայակապ էին։ Տեղի ունեցած կռվում սպանվում են Շավարշ Կամսարականը, Պարգև Ամատունու որդի Մանվելը և նրանց հետ շատերը։ Իսկ Պարգևին կալանավորելով տանում են պարսից զորավարի մոտ, որ նրան մորթազերծ անեն և զնեն

22 Տե՛ս Մ. Օրմանյան, հ. Ա, § 184։

23 Նույն, նշվ. աշխ., էջ 673։

24 Խորենացի, Գ, խթ (աշխ., թարգմ., էջ 287)։

25 Արկադիոսը 383 թ. իր հոր՝ Թեոդոսիոս Ա-ի գահակիցն էր կայսրության արևելյան մասում։

26 Խորենացի, Գ, ծ (աշխ. թարգմ., էջ 288)։

27 Նույն տեղում։

28 Նույն տեղում։

*խոսրովի առաջ։ Այնուհետև հարքունիս են գրավվում Գազավոն և Շավարշ Կամսարականների, ինչպես նաև Պարգև Ամատունու կալվածքները*[20]։

*Այս ժամանակ Սահակ Պարթևը գնում է Տիզբոն իր գործերը կարգավորելու։ Պարսից արքունիքը Խոսրովի փոխարեն Հայաստանում թագավոր է նշանակում Վռամշապուհին*[30] *(388—414), որը Սահակ Պարթևին հաստատում է կաթողիկոս*[31]։

*Բնորոշ է, որ գահակալած Վռամշապուհը նույնպես ճանաչվում էր Հայաստանի երկու մասերի թագավոր։ Խորենացին նշում է. «Վռամշապուհը տիրում էր մեր երկրին և հպատակվում էր երկու թագավորներին՝ հարկ վճարելով՝ պարսից բաժնի համար Վռամին և հունաց բաժնի համար՝ Արկադին»*[32]։

*Վռամշապուհի գահակալության ժամանակ Հայաստանում խաղաղություն էր տիրում, որն արգասիք էր մոտ 30 տարի Պարսկաստանի և Արևելյան Հռոմեական կայսրության միջև տևած խաղաղության։*

*Հռոմեական կայսրությունը Թեոդոսիոս Ա Մեծի մահվանից հետո (395) բաժանվեց երկու մասի՝ նրա երկու որդիների միջև։ Արկադիոսին (395—408) բաժին ընկավ արևելյան մասը՝ Բյուզանդիոն կամ Կոստանդնուպոլիս կենտրոնով, որն այնուհետև կոչվեց Արևելյան Հռոմեական կայսրություն*[33], *իսկ Հոնորիոսը (395—423) տիրեց արևմտյան մասին՝ Հռոմ կենտրոնով, որը կոչվեց Արևմտյան Հռոմեական կայսրություն։ Պարսկաստանի հանդեպ Արկադիոսը վարեց խաղաղասիրական քաղաքականություն։ Նույնիսկ իր կտակում կայսրը խնդրում էր Պարսից թագավոր Հազկերտ Ա-ին (399—420) լինել պաշտպան, հովանավոր և դաստիարակ իր փոքրահասակ Թեոդոսիոս որդուն։ Պարսկաբյուզանդական հարաբերությունների նման ընթացքը Պարսկաստանում առաջացրեց մեղմ վերաբերմունք քրիստոնյաների հանդեպ։ Այսպես, 412 թ. ասորի քրիստոնեական համայնքը Տիզբոն-Սելևկիայում ճանաչվեց իբրև ինքնուրույն եկեղեցի, որի գլուխ կանգնած էր ասորի պատրիարքը՝ կաթողիկոս տիտղոսով*[34]։ *Տիզբոնում գտնվող ասորական կաթողիկոսությունը,— ինչպես նշում է Հ. Մելքոնյանը,— պաշտոնապես ճանաչվեց պարսկական տերության կողմից, որի հիման վրա 410 թ. Իսահակ կաթողիկոսի կար-*

---

29 *Նույն տեղում։*

30 *Վռամշապուհի թագավորության տարիների մասին տե՛ս* Մ. Օրմանյան, *Տրդատէ Արտաշէս ժամանակագրական դիտողութիւններ, «Հանդէս ամսօրեայ», 1909, № 8, էջ 243—245,* Լեո. *նշվ. աշխ., էջ 674, ծան. 3,* Հ. Մանանդյան. *նշվ. աշխ., էջ 245։*

31 *Սահակ կաթողիկոսի թափած ջանքերի շնորհիվ Մամիկոնյան տոհմը նախարարական տների մեջ բարձրացվեց հինգերորդ տեղը, նրա փեսա Համազասպը կարգվեց սպարապետ Սահակ Բագրատունու տեղը, որը մահացել էր, թողություն շնորհվեց Մամիկոնյանների և Լուսավորչի տան կողմնակիցներին՝ Կամսարական և Ամատունի տոհմերին* (Խորենացի, *Գ, ժա,* Լեո. *նշվ. աշխ., էջ 678)։*

32 Խորենացի, *Գ, ժա (աշխ. թարգմ., էջ 291)։*

33 «История Византии», I. *էջ 181։ Հայերը հնուց ի վեր Հռոմեական կայսրությունը գիտեին նրա արևելյան փոքրասիական մասով, որը գերազանցապես հունաբնակ ու հունախոս էր, ուստի սովորաբար կոչում էին «աշխարհն Յունաց», «կողմանք Յունաց», «թագաւորութիւն Յունաց», իսկ Հռոմի կայսրը հայերի մոտ հայտնի էր իբրև «կայսր Յունաց», «թագաւոր Յունաց»։ Արևմտյան Հռոմեական կայսրության համեմատությամբ՝ Արևելյան Հռոմեական կայսրությունը՝ Բյուզանդիան, ավելի կենսունակ գտնվեց և հարատևեց մինչև 1453 թվականը։ XVI դարի գրականության մեջ կայսրության այս հատվածը պայմանականորեն անվանում են Բյուզանդական կայսրություն, իսկ հայերը՝ «կողմն Յունաց»։*

34 «История Византии», *հ. Ա, էջ 181, 185—186։*

կցորությամբ Տիզբոնում հրավիրվեց ընդհանուր ժողով, ընդունվեցին կարևոր որոշումներ, որոնք կարգավորեցին ասորական եկեղեցու հետագա գործունեությունը։ Այս արտոնություններից օգտվելով՝ ասորի կաթողիկոսներն իրենց դիրքերն ամրացրին պարսկական տերության ներսում ու փորձեցին պարսիկների օգնությամբ Հայոց եկեղեցին ևս առնել իրենց ազդեցության ներքո։ Ճիշտ է, ավելի ուշ նրանց հաջողվեց նույնիսկ հայոց կաթողիկոսական աթոռին բազմեցնել ասորի եկեղեցական գործիչների։ Բայց ապարդյուն, որովհետև Սահակ Ա Պարթև հայրապետի շուրջը համախմբված հայրենասիրական ուժերն անհրաժեշտ հակահարված հասցրին և կարողացան պահպանել հայոց եկեղեցու ինքնուրույնությունը, որը Հայաստանում քաղաքական ուժերի թուլացման պայմաններում, սկսել էր ժողովրդի կյանքում ավելի ազդեցիկ դիրք գրավել և ավելի կարևոր դեր խաղալ ներքին ուժերը համախմբելու և հայ ժողովրդի գոյությանն սպառնացող վտանգի առաջն առնելու համար։ Նվ այդ տալիս էր իր արդյունքը[35]։

Սակայն Սահակ Պարթևը կաթողիկոսական աթոռի վրա Լուսավորչի տան վերջին շառավիղն էր։

Ստեղծված պայմաններում Հայաստանին վերաբերող վեճերն ավելի մեղմանում են, պարսից արքայից արքան պարտավորվում էր չմիջամտել Բյուզանդիային անցած Հայաստանի ներքին գործերին։ Կայսրությունում նոր գահ բարձրացած Թեոդոսիոս Բ Փոքրը (408—450), Խորենացու ասելով, «նույնպիսի բարեկամություն պահպանեց մեր երկրի և մեր Վռամշապուհ թագավորի հետ, բայց իր մասը նրան չվստահեց, այլ իրեն պահեց՝ գործակալներով, և պարսից Հազկերտ թագավորի հետ խաղաղություն կնքեց»[36]։ Այսպիսով, 408 թ. հետո Վռամշապուհը մնաց միայն Հայաստանի արևելյան մասի թագավոր։

Հայկական հողերի տերիտորիալ նոր բաժանումները հանգեցրին նրան, որ հայ ազգաբնակչության ահագին զանգվածներ դուրս մնացին Հայաստանի երկու մասերի պաշտոնական սահմաններից։ Հյուսիսում Գուգարքի մեծագույն մասը (բացի Տաշիր գավառից, որ մնաց Հայաստանի կազմում), անցնում էր Վրաց թագավորությանը։ Սակայն այնտեղ ժամասացության լեզուն դարձավ հայերենը և V դարից Գուգարքի բդեշխության կենտրոն Ցուրտավում նստող եպիսկոպոսը ժամերգությունը պիտի կատարեր միաժամանակ հայերեն ու վրացերեն[37]։ Աղվանից թագավորությանը, բացի Ուտիքից, կցվեց նաև Արցախը, որի բնակիչները միայն հայեր էին։ Խորենացու արտահայտությամբ «յարևելից կողմանէ զեզերբ հայկական խօսիցս»[38] տարածքում էր գտնվում Ուտիքը, որը խառը՝ հայ և ուտիական (աղվանական մի ցեղ) ազգաբնակչություն ուներ։ Այս նահանգներում ևս ժամերգության լեզուն հայերենն էր։ Հայկական տարրը Ուտիքում անընդհատ ուժեղանում էր և դա կապված էր միաբնակ հայոց եկեղեցու ուժեղացման հետ։ Հայաստանից անջատված հարավային նահանգները (Միջագետքին սահմանակից շրջաններում) մասամբ ունեին խառը ազգաբնակչություն։ Սրանցից էին Աղձնիքի, Կորդուքի, Նոր-Շիրականի,

---

35 Տե՛ս Հ. Գ. Մելքոնյան, Աշխարհի պետությունը և Հայաստանը, Երևան, 1980, էջ 218—242։

36 Խորենացի, Գ, ծդ (աշխ. թարգմ., էջ 204)։

37 ნ. ს. ჯანაშია, „ეპისტოლეთა წიგნის" ცნობები შუშანიკის შესახებ, კრებული „მრავალთავი", ტ. IV, თბილისი, էջ 166—189։

38 Խորենացի, Բ, ը, էջ 112—113։

Մարաց ամուր աշխարհի հարավային ծայրամասերը։ Նշված նահանգների հարավային՝ դաշտային մասերում հայերի կողքին բնակվում էին արամեացիներ, ասորիներ, որոնք իրենց եպիսկոպոսություններն ունեին։ Սրանց հետ խառը ապրում էին նաև զրադաշտական պարսիկները, իսկ տեղ-տեղ պատահում էին դեռևս հեթանոս արամեացիներ, որոնք գերազանցապես քոչվոր անասնապահներ էին։ Հրեաներն առանձին համայնքներով ապրում էին քաղաքներում ասորիների-արամեացիների առևտրական և արհեստավորական համայնքների կողքին։

Բյուզանդական Հայաստանը միատարր հայ ազգաբնակչություն ուներ, միայն հարավում բնակվում էին մեծ թվով արամեացիներ, ասորիներ։

Այս բաժանումից հետո Մեծ Հայքի կենտրոնացված պետության միասնական տարածքը, որ գոյություն էր ունեցել գրեթե վեց հարյուրամյակ, հետագայում չվերականգնվեց։ Հայաստանի Սասանյաններին անցած մասը հայերը շարունակում էին նախկինի պես անվանել «Մեծ Հայք», իսկ հռոմեացիներն անվանում էին «Պարսկահայաստան» (Περσαρμενία)։

Հայկական հողերը, որոնք գտնվում էին Արևելյան Հռոմեական կամ Բյուզանդական կայսրության իշխանության ներքո, բաժանվում էին երեք մասի՝ ինքնավար իշխանություններ («սատրապություններ»), Ներքին Հայք, որն այժմ կազմում էր նախկին Մեծ Հայքի բյուզանդական մասը, և վերջապես՝ Փոքր Հայքը։ Սրանք իրենց իրավական և քաղաքական դրությամբ այսպես մնացին մինչև Հուստինիանոս Ա-ի (527—556) ռեֆորմները։

Եփրատից այն կողմ գտնվող Փոքր Հայքը սկզբում ձուլված էր հռոմեական պրովինցիա Կապադովկիայի հետ։ Դիոկղետիանոս կայսեր (284—305) ժամանակ Փոքր Հայքն առանձնացվել էր Կապադովկիայից իբրև առանձին պրովինցիա՝ «ձեռական երկիր» և կցվել էր Մեծ Հայքի թագավորությանը։ Նրա բաժանումից հետո, Թեոդոսիոս Ա Մեծի օրոք (379—395) Փոքր Հայքը բաժանվեց երկու առանձին պրովինցիաների՝ Առաջին Հայք (ըստ երևույթին կոչվում էր նաև «Վերին Հայք»)՝ Սեբաստիա մայրաքաղաքով և Երկրորդ Հայք (կամ «Ստորին Հայք»)՝ Մելիտինե մայրաքաղաքով։ Վարչական առումով այս պրովինցիաները մտնում էին Պոնտական դիոցեզի մեջ, որն իր հերթին մասն էր կազմում Արևելյան պրեֆեկտուրայի։ Քաղաքացիական իշխանության գլուխ էին կանգնած պրեզիդները, որոնք ենթարկվում էին վիկարիոսին[39]։ Ռազմական իշխանության գլուխ էին կանգնած դուքսերը և կոմեսները, որոնք ենթարկվում էին մագիստրոսին[40]։

«Ներքին Հայքից» հարավ գտնվում էր Ծոփքը, որը անջատվել էր Մեծ Հայքից դեռևս նախքան նրա բաժանումը։ Այն տրոհված էր հռոմեական կայսեր վասալ հինգ ինքնավար սատրապությունների, որոնք մինչև Հուստինիանոս Ա-ը (527—565) պահպանեցին իրենց նախարարական կազմակերպությունը։ Բյուզանդական բուն Հայաստանի հարավային մասը, որը կոչվում էր «սատրապություններ» կամ «ազգեր», ներկայացնում էր մի կոմպլեքս ինքնավար «դաշնակից» և «ազատ» իշխանությունների, որոնք քաղաքականորեն ենթարկվում էին կայսրությանը, իսկ ներքին կյանքում բոլորովին ազատ էին։ Սատրապություններն էին՝ Ծոփք Շահունյաց, Ծոփք Մեծ, Անձիտ, Անգեղ-

39 Н. Адонц, նշվ. աշխ., էջ 116։

40 Նույն տեղում, էջ 95։

ում, Հաշտեանք և Բալահովիտ։ Սրանք առանձին նախարարություններ էին՝ իրենց ժառանգական իրավունքներով։ Այս սատրապ-նախարարներն առաջ ճանաչում էին հայ Արշակունիների սյուզերենական իրավունքները, իսկ այժմ դարձել էին կայսեր վասալներ և իբրև նրա «ֆեդերատներ», պարտավոր էին կատարել զինվորական ծառայություն և պաշտպանել կայսրության սահմանները Սասանյաններից[41]։ Սրանց իշխանությունը տևեց մինչև 530 թվականը։

Բուն Հայաստանի բյուզանդական բաժնի հյուսիսային մասը բաղկացած էր 9 գավառներից և «Աշխարհացույցում» կոչվում էր «Բարձր Հայք»։ Բյուզանդացիները կոչում էին «Մեծ Հայք» (Armenia Maior)[42], սակայն պաշտոնապես այն կոչվում էր «Ներքին Հայք» (Armenia Interior)։ 385 թ., երբ Արշակ Գ-ն թողեց Այրարատը և հաստատվեց Եկեղյաց գավառում, այստեղ սրա կենտրոնն էր Ջրմես ավանը։ 387 թ. հետո, երբ Արշակ Գ-ն մահացավ, Արշակունյաց իշխանությունը «Ներքին Հայքում» վերացվեց և երկրի կառավարությունը հանձնվեց կոմեսներին[43], որոնց պաշտոնը հիշեցնում էր սասանյան Հայաստանի մարզպանի պաշտոնը։ Հայաստանի այս մասը կառավարվում էր կոմեսների միջոցով (391—528)[44]։

Արշակունյաց տոհմը, սակայն, մնաց իբրև նախարարական տուն իր սեփականությունը կազմող գավառներում (Կարին, Դերջան, Մանանաղի, Խորձեն և այլն), որից առաջացան առանձին ճյուղեր և որոնց ներկայացուցիչները մեծ ազդեցություն ունեին բյուզանդական արքունիքում՝ Կոստանդնուպոլսում։ Նրանք գրավում են այնուհետև մեծամեծ պաշտոններ և օգտվում բազմաթիվ արտոնություններից ու պատիվներից։ «Ներքին Հայքում» մեծ կալվածքներ ուներ նաև Լուսավորչի տունը, հանձին Սահակ Մեծ Պարթևի (367—438), որի մահից հետո նրա ժառանգության տերն է դառնում Մամիկոնյան տունը, որն իր դիրքով ու ազդեցությամբ կայսեր դռանը ետ չէր մնում Արշակունիներից։

Ռազմական տեսակետից, մինչև Հուստինիանոսը, Բյուզանդիայի կազմում գտնվող հիշյալ չորս հայկական մարզերը ենթարկվում էին Երկրորդ Հայքի կամ «Ստորին Հայքի» մայրաքաղաք Մելիտինեում նստող «Հայաստանի դուքսին»։

Հետաքրքրական է, որ Կորյունը և Եղիշեն Մելիտինեում նստող Հայաստանի դուքսին կոչում են՝ առաջինը՝ «սպարապետն հայոց», իսկ երկրորդը՝ «սպարապետ... Ստորին Հայոց»[45]։ Վարդանանց դեպքերի ժամանակ, օրինակ, «սպարապետն էր Ստորին Հայոց, և հաւատարիմ զօրացն Հոռոմոց ի սահմանին Պարսից» «այր մի, որոյ Վասակ անուն էր, յայն Մամիկոնեից՝ որ էն ի ծառայութեան Յունաց»[46]։ Այս Հայաստանի դուքսը ենթարկվում էր Արևելքի մագիստրոսին, որը նստում էր Անտիոք քաղաքում և որին սասանյան

41 Նույն տեղում, էջ 29, 109։

42 Խորենացի, Գ, խզ։

43 Նույն տեղում։

44 Н. Адонц, նշվ. աշխ., էջ 118, 139։

45 Կորիւն, Վարք Մաշտոցի, Երևան, 1941, էջ 69։ Եղիշէ, Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, Երևան, 1957, էջ 93։ Տե՛ս նաև՝ Մանուկ Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք Ա, էջ 294—297։

46 Եղիշէ, նույն տեղում։

տերմինաբանությանը ընտելացած Կորյունն անվանում է «ապայապետ աշխարհին»[47]։

V դարի սկզբներին Արևելքի մագիստրոս էր Անատոլիոս զորավարը։ Նույն դարի կեսերից «Ներքին Հայքը» ռազմական տեսակետից ենթարկվում է մագիստրոսին և Հայաստանի մագիստրոսի պաշտոնում 438—443 թթ. միջև[48] տեսնում ենք նույն Անատոլիոսին։ Սա առանձին ուշադրություն է դարձնում սահմանամերձ ամրությունների ամրացման վրա, որոնցից հարկավոր է նշել Կարնո քաղաքի ամրությունների կառուցումը։ Կարինը դառնում է բյուզանդական Հայաստանի ռազմական ուժերի կենտրոն։ Ի պատիվ Թեոդոս Բ Փոքրի (408—450), այն անվանեց Թեոդոսուպոլիս։ Այնտեղ էր նստում Հայաստանի մագիստրոսը[49]։

Բյուզանդիայի այդ ատրիճանի հոգատարությունը սահմանամերձ ամրությունների վերաբերյալ անհանգստություն է պատճառում Սասանյաններին, ուստի 441 թ., երբ նոր պայմանագիր կնքեցին Բյուզանդիայի հետ հատուկ հոդվածով, երկու կողմերն էլ պարտավորվեցին սահմանամերձ վայրերում նոր ամրություններ չկառուցել։ Այսպիսին էր վարչական-քաղաքական վիճակը բյուզանդական իշխանության ենթակա հայկական մարզերում։

Սասանյան Հայաստանում թագավորական իշխանությունը պահպանեց իր գոյությունը ևս քառասուն տարի, թեև կախյալ և թուլացած վիճակում։ Հայաստանի ուշ հելլենիստական պետականությունն իր տեղն արդեն զիջում էր ֆեոդալականին։ Սակայն նախկին Մեծ Հայքի միասնական թագավորական տարածքի վրա շարունակում էր գոյություն ունենալ հայ ժողովուրդը, որը պայքարում էր օտար տիրապետություններից ազատվելու և հայրենիքի ամբողջականությունը վերականգնելու համար։ Այդ անհավասար և դժվարին պայքարը գլխավորում էին Վռամշապուհ թագավորը և Սահակ Պարթև կաթողիկոսը։ Օտարի տիրապետությունից ազատվելու և հայկական պետականությունը պահպանելու համար հայ ժողովրդի մղած պայքարի ինքնատիպ, բայց շատ կարևոր միջոցներից մեկն էր հայերեն գրի և գրականության ստեղծումը։ Այդ հարցը IV դարի վերջերին ստացել էր առանձնակի կարևորություն և անհետաձգելի ու բազմիմաստ բնույթ։

Հայկական հասարակության վերնախավը, նաև քաղաքային բնակչությունը դարեր շարունակ ծանոթ էին արամեական ու հունական գրերին և օգտագործում էին դրանք։ Հայերը հաղորդակից էին, մանավանդ, հելլենիստական մշակույթին՝ գրականությանը, հասարակական մտքին, գիտությանը և արվեստին։ Սակայն օտար գրերով ու լեզվով սեփական գիր, դպրոց և գրականություն ստեղծելն հնարավոր չէր։ Բացի այդ, հունարենը, որն արքունիքի և հելլենիստական երկրների գործարար կապերի, ինչպես նաև կրոնական արարողությունների լեզուն էր, արգելվում էր սասանյան պետության սահմաններում, որպես թշնամի՝ Արևելյան Հռոմեական կայսրության լեզու։ Կայսրությունում, իր հերթին, չէր խրախուսվում Սասանյանների կողմից հովանավորվող ասորերենը։ Այս պայմաններում Հայաստանի կառավարող աշ-

47 Կորյուն, նշվ. աշխ., էջ 64։

48 Н. Адонц. նշվ. աշխ., էջ 118։

49 Նույն տեղում, էջ 148։ Տե՛ս Ա. Ն. Տեր-Ղևոնդյան, նշվ. աշխ.։ Ըստ ավանդության Կարին-Թեոդուպոլիսի շինարարությանը մասնակցել են՝ պատմահայր Մովսես Խորենացին և նրա եղբայր Մամբրե Վերծանողը։

խարհիկ և հոգևոր շրջանների առաջ ծառանում է մի լուրջ հարց՝ ո՞ր լեզվով վարել պետական գործերը և եկեղեցու ժամասացությունը։ Հայաստանի պարսկական մասում գործարար հարաբերությունների և կրոնական արարողությունների միակ լեզուն մնում էր ասորերենը։ Այսպիսով հայոց եկեղեցու լեզուն հունարենն էր, կամ ասորերենը, որոնք հայ ժողովրդի լայն խավերի համար բոլորովին անհասկանալի էին[50]։ Հայ հոգևորականությունը առաջ է քաշում ժամասացությունը հայերեն կատարելու խնդիրը, դրանով իսկ հայ գրերի գյուտը անհրաժեշտություն է դառնում նաև այդ առումով։ Սակայն սեփական գիր և գրականություն ունենալը ոչ միայն մշակութային ու դավանաբանական, այլև պատմաքաղաքական կարևոր նշանակություն ուներ։ Մանանդյանն իրավացիորեն գրում է. «Անկասկած է, սակայն, որ այդ գյուտն ունեցավ նաև քաղաքական մեծ նշանակություն, որովհետև սեփական հայ գրի ու գրականության ստեղծումը մտցրեց հայությունը հին կուլտուրական ժողովուրդների շարքը և, զարթեցնելով նրա ազգային ինքնագիտակցությունը՝ արգելք եղավ հայ ժողովրդի ապազգայնացման ու միաձուլման քաղաքականությանը, որ V և VI դդ. վարում էին Հայաստանում Սասանյան Պարսկաստանը և Բյուզանդական կայսրությունը»[51]։

Մեսրոպ Մաշտոցի (361—440) գլխավորած լուսավորական շարժումը, որը ծառայում էր հայ ժողովրդի ազգային ինքնագիտակցության խորացմանն ու ամրապնդմանը, ընթացել է սոցիալական և քաղաքական բարդ պայմաններում։

Վռամշապուհ թագավորը, որի անվան հետ «անջնջելի կերպով կապվում են հայ գրերի գյուտը և կուլտուրական մեծ հեղաշրջումը հայկական կյանքում, վախճանվեց 414 թ.»[52]։ Նրա որդու՝ Արտաշեսի, անչափահասության պատճառով նախարարները Հազկերտ Ա-ից խնդրեցին Հայոց գահի վրա վերահաստատել Խոսրով Գ-ին, որը, սակայն, կրկին գահ բարձրանալով, թագավորեց ընդամենը ութ ամիս և մահացավ 415 թ.։ Ղազար Փարպեցու հաղորդման համաձայն, Հազկերտ Ա-ն Խոսրով Գ-ից հետո չկամենալով «Հայոց աշխարհին թագավոր տալ Արշակունիների տոհմից՝ հայերի վրա թագավոր կարգեց իր որդուն, որի անունն էր ըստ իր հոր անվան՝ Շապուհ»[53]։ Հ. Մանանդյանի կարծիքով Հազկերտ Ա-ի թագավորության վերջին տարիներին Հայաստանի նկատմամբ վարած քաղաքականության ոլորտում նման շրջադարձն արդյունք էր արքայից արքայի իրազեկության պարսկական Հայաստանի ներքին դրության՝ հայ դպրության տարածման և քրիստոնեության արմատացման՝ ընդդեմ իրանական կրոնի[54]։

---

50 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 246։ Հմմտ. Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, հ. Ա, Երևան, 1944, էջ 74։

51 Հ. Մանանդյան, նույն տեղում։ Մարկվարտը, նշելով Մաշտոցի մեծ գործի արտասովոր վեհությունը, գրել է, որ եթե նկատի առնենք պատմական այն բացառիկ ծանր իրադրությունը, որի մեջ Մաշտոցը կարողացավ զարթնեցնել հայ ժողովրդի ազգային գիտակցությունը, և նրա գործը համեմատենք Պիպինի և նրա զինակից Վինֆրիդի գործունեության հետ՝ այս վերջինները «խեղճ թզուկներ կերևան» համեմատությամբ մեզի այդ հսկայի (Մարկվարտ, Պատմութիւն հայերէն նշանագրերու և վարուց Ս. Մաշտոցի, թարգմ. Ա. Վարդանյանի, Վիեննա, 1918, էջ 8)։

52 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 278։

53 Փարպեցի, Ա, ժբ։

54 Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հ. Բ, մ. Ա, էջ 278։

## 2. 419—421 ԹԹ. ԱՊՍՏԱՄԲԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ։ ԱՐՇԱԿՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԿՈՒՄԸ

*Քրիստոնեությունը հակասում էր ոչ միայն զրադաշտական կրոնին, այլև պարսից պետության շահերին, ուստի քրիստոնեության դեմ հալածանքներ սկսվեցին Պարսկաստանում։ Դրան առիթ ծառայեց Հորմիզդ-Արտաշիր քաղաքում քրիստոնյաների ձեռքով մի ատրուշանի ավերումը։ Կրքերը բորբոքվեցին նաև քրիստոնյա Հայաստանի դեմ, որտեղ 419 թ. ապստամբական շարժում էր սկսվել պարսից տիրապետության դեմ։ Հայաստանի հարցը կրկին դարձավ երկու մրցակից տերությունների վեճերի և ընդհարումների առարկա և 421—422 թթ. բռնկվեց պարսկաբյուզանդական պատերազմը, որի հիմնական պատճառը նույն վերին Միջագետքին և Հայաստանի հարավարևմտյան երկրամասերին տիրելու ձգտումն էր։ Նոր պատերազմը թևավորեց օտար տիրապետությունից ազատվել ձգտող հայ հայրենասերներին և Հայաստանում ապստամբական շարժում ծավալվեց*[55]*։*

*Պարսկաբյուզանդական պատերազմը և ապստամբական շարժումը Հայաստանում շատ նեղ վիճակում դրեցին Սասանյաններին։ Պարսից գահաժառանգ Շապուհը Հայաստանում թագավորեց «անարգաբար» միայն չորս տարի (416—420)*[56]*։ Նախարարների արհամարհական վերաբերմունքը և դժգոհությունը քանի գնում խորանում էր և ապստամբները պայքարում էին հայ Արշակունիների գահակալման իրավունքների ու հայկական կենտրոնաձիգ իշխանության վերականգնման համար։ Փաստորեն հայ ֆեոդալական վերնախավի այդ շարժումը ղեկավարում էր քաջ Ներսես Ճիճրակացին, իսկ նրա զինակիցն էր Ապրսամ Սպանդունին։ Ներսես Ճիճրակացու գլխավորությամբ հայոց զորքերը «պարսից գնդի դեմ պատերազմ մղեցին, նրանց զորքերը կոտորեցին, իսկ Ապրսամ Սպանդունին սպանեց նրանց զորավարին»*[57]*։ Ապստամբական շարժումը, որը քաջալերվում էր Պարսկաստանի դեմ պատերազմի մեջ մտած կայսրության կողմից, գնալով ավելի էր ծավալվում։ Ապստամբում էին նորանոր ուժեր, որոնց թվում և քաջ վանանդացիները։ Ապստամբական շարժումը տևեց երեք տարի (419—421) և խանգարեց պարսիկներին՝ հաղթանակ տանելու բյուզանդական զորքերի դեմ Միջագետքում։*

*421 թ. գարնանը արքայից արքայի զորավար Միհրներսեհն ընդլայնեց պատերազմական գործողությունները կայսրության դեմ։ Սակայն հյուսիսային Միջագետքում օգոստոսին տեղի ունեցած մեծ ճակատամարտում պարսիկները պարտություն կրեցին։*

---

55 *Այս ժամանակ կայսրը հաղորդում է Սահակին «Կարնոյ քաղաքի» տեղում նոր քաղաքի հիմնադրման մասին, որը ներկայացվում է «իբրև ապավինություն» Սասանյան Իրանի դեմ մարտնչող հայերի (***Խորենացի***, Գ, ծէ)։ Պարսպապատ ամրությունների շինարարությունը պարսկաբյուզանդական սահմանագծի վրա կայսրությունն սկսեց ըստ 420 թ. մայիսի 5-ին ընդունված օրենքի, որ պատասխան էր Սասանյան Իրանում սկսված հալածանքների քրիստոնյաների դեմ, որոնք ապաստան էին գտնում Բյուզանդիայում։ Հազկերտ Ա-ն նույնիսկ պատգամավորություն ուղարկելով Թեոդոսիոս Բ կայսեր մոտ՝ պահանջեց, որպեսզի փախստականները ետ ուղարկվեն։ Պարսկաստանում Հազկերտ Ա-ին հաջորդած Վռամ Ե Գոռը (421—439) ավելի սաստկացրեց հալածանքները քրիստոնյաների դեմ (տե՛ս* **Հ. Մանանդյան***, նշվ. աշխ., էջ 281)։*

56 **Խորենացի**, *Գ, ծե (աշխ.՝ թարգմ., էջ 297)։*

57 **Խորենացի**, *Գ, ծզ (աշխ. թարգմ., էջ 297)։*

Միհրներսեհը պարսկական զորքի մնացորդներով նահանջում է դեպի Մծբին[58], որը պաշարվում է նրան հետապնդող հռոմեական զորքի կողմից[59]։ Սակայն պաշարվածներին օգնության են հասնում նոր զորամասեր՝ Վռամ Ե Գոռի գլխավորությամբ, ուստի բյուզանդացիների վերջնական հաղթանակը ձախողվում է։ Մասնակի հաջողություններից հետո Թեոդոսիոս Բ-ն 422 թ. խաղաղության բանակցություններ սկսեց Վռամ Ե-ի հետ։ Հոնների ծուղակի մեջ գցելու պարսիկների վերջին փորձերն ի դերև ելան և Վռամ Ե-ն հարկադրված էր խաղաղության դաշն կնքել Թեոդոսիոս Բ-ի հետ։ Արքայից արքան խոստանում էր իր պետության մեջ ապրող քրիստոնյաներին ազատություն տալ, իսկ կայսրը պարտավորվում էր ամեն տարի որոշ գումար հատկացնել Ալանաց դռների ամրացման ու պաշտպանության համար։ Սակայն դաշնագրի այդ երկու կետերն էլ անընդհատ խախտվում էին ու առիթ դառնում նորանոր դժգոհությունների երկու պետությունների միջև։

Խաղաղություն կնքելուց հետո ապստամբական շարժումը Հայաստանում հետզհետե դադարում է։ Խորենացին հաղորդում է, որ «մեր երկիրը երեք տարի անիշխան մնալով, կռիվների և խռովության մատնված, ավերվում, ամայանում էր, արքունական հարկերը պակասում էին, ժողովրդի երթևեկի ճանապարհները փակ էին, ամեն տեսակ բարեկարգություն խանգարվում և անհետանում էր»[60]։

Հայաստանի պարսկական մասում Վռամ Ե-ն հարկադրված եղավ դիմել ժամանակավոր զիջումների քաղաքականության։ Նա «հաշտություն հաստատելով, (նախարարների) հանցանքները մոռացության տալու թույլ է կնքում և նրանց խնդրանքով թագավոր նշանակում Վռամշապուհի որդի Արտաշեսին՝ անունը փոխելով, Արտաշիր կոչելով և նրան է վստահում Հայաստանը առանց պարսիկ վերակացուի»[61]։ Սակայն Արտաշեսը թագավորեց միայն վեց տարի (422—428)։ Այս ժամանակաշրջանում արքայից արքա Վռամ Ե-ի հայ նախարարներին խոստումներ տալու և սիրաշահելու քաղաքականության հետևանքն այն է լինում, որ նա իր կողմն է գրավում խոշոր նախարարներին, որոնք իրենց կալվածքներում դառնում են արքայիկներ՝ լիիրավ տերեր։ Նրանք հակադրվում են հայոց կենտրոնական թագավորությանը, հայրենասեր նախարարներին ու հոգևորականությանը և արագացնում Հայկական թագավորության անկումը։ Պարսից արքունիքը խոստանում էր, որ եթե Հայկական թագավորությունը վերանա, ապա իշխանությունը նախարարներին կանցնի։ Անջատողական ձգտումներով համակված իշխանատենչ ու անհեռատես նախարարներն ընդունեցին այդ խայծը։ Այս քաղաքականության արդյունքն այն եղավ, որ Հայաստանում թագավորական իշխանության վերացումը տեղի ունեցավ սասանյան արքունիքի և հայ նախարարների փոխադարձ համաձայնությամբ։ Նախարարները միանում են արքայից արքայի սարքած խեղկատակային դատին, ուր քննվում էր Հայոց թագավորի հարցը։ Վերջինս մեղադրվում էր այն բանում, որ անընդունակ և ապաշնորհ կառավարող է և անբա-

58 «Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղեցական պատմութիւն», հրատ. Մ. Տեր-Մովսեսյանի, Վաղարշապատ, 1897, էջ 602—609 և ուրիշներ։

59 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 282։

60 Խորենացի, Գ, ծզ (աշխ. թարգմ., էջ 297)։

61 Խորենացի, Գ, ծը (աշխ. թարգմ., էջ 301)։

*րոյական կյանք է վարում։ Հարցաքննության պատրվակով Տիզբոն են կանչվում Արտաշեսը և Սահակ Պարթև կաթողիկոսը, բայց իրականում այդ հրավերի նպատակն էր գահընկեց անել Հայոց թագավորին և վերացնել թագավորական իշխանությունը Հայաստանում, մի նպատակ, որին Սասանյանները ձգտում էին հասնել իրենց իշխանության գլուխ անցնելու պահից ի վեր։*

*Արտաշես թագավորը գահընկեց արվեց 428 թվականին*[62]*։ Սրանով դադարում է Արշակունյաց տան թագավորությունը Հայաստանում։*

---

62 *Այս դեպքը զուգադիպեց հայկական տոմարի շրջադարձային փաստի հետ։*

*Ըստ հետագա հաշիվների՝ հայերը ի սկզբանե անտի ղեկավարվում էին շարժական տոմարով։ Տարին բաղկացած էր 365 օրից։ Յուրաքանչյուր ամիս պարունակում էր 30 օր, իսկ 13-րդ ամիսը բաղկացած էր 5 օրից և կոչվում էր «Աւելեաց»։ Հավելյալ օրերը մեկ տարի էին դառնում 1460 տարվա ընթացքում։ Այս պարբերաշրջանը կոչվում էր «Հայկեան շրջան»։*

*427 թ. օգոստոսի 11-ին (ըստ Հուլյան տոմարի) լրանում էր «Հայկեան երկրորդ շրջանը», ապա սկսվում էր նահանջ տարին, որը վերջանում էր 428 թ. օգոստոսի 10-ին և սկիզբ դրվում «Հայկեան երրորդ շրջանին»։ «Հայկեան առաջին շրջանը» սկսվում է մ. թ. ա. 2492 թ. օգոստոսի 11-ին, որ համարվում էր Նոր տարի—«Նաւասարդ»։ Ըստ առասպելաբանության այդ օրը Հայկ նահապետը սպանել է ասորեստանցի Բելին և հայ ժողովրդի հիմքն է դրվել։ 1460 տարուց հետո՝ մ. թ. ա. 1032 օգոստոսի 11-ին վերջացել է «Հայկեան առաջին շրջանը» և սկսվել «Հայկեան երկրորդ շրջանը», որը ավարտվել է մ. թ. 428 թ., օգոստոսի 11-ին։ Այս թվականը զուգադիպեց Հայկական թագավորության՝ Մեծ Հայքի անկման հետ, որը առիթ դարձավ պատմությանը ավանդելու հայկական ազգային տոմարի հիմնական փաստերը։* Մաղաքիա Օրմանեան, *Ազգապատում, Կոստանդնուպոլիս, 1913, § 211, էջ 303;* Ղ. Ալիշան, *Յուշիկք հայրենեաց հայոց, Վենետիկ, էջ 72—97;* Հ. Ս. Բադալյան, *Օրացույցի պատմություն, Երևան, 1970, էջ 49—62;*

ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ III—IV ԴԱՐԵՐՈՒՄ։ ՖԵՈԴԱԼԱԿԱՆԱՑՈՂ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԵՎ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

## 1. ՎԱՂ-ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ։ ԴԱՍԵՐ ԵՎ ԴԱՍԱԿԱՐԳԵՐ։ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՇԵՐՏԱՎՈՐՈՒՄ

*II դարից սկսած ամբողջ Մերձավոր Արևելքում՝ Հռոմեական կայսրության սահմաններում, ինչպես և Հայաստանում[1], սկսվում է ստրկատիրական հարաբերությունների ճգնաժամի ժամանակաշրջանը։ Այդ ճգնաժամը պայմանավորված էր ստրկական աշխատանքի անարտադրողականությամբ, ինչպես և ստրուկների ապստամբություններով։ Փաստերը ցույց են տալիս, որ հելլենիստական փուլն ապրած այն երկրներում, որտեղ հիմնադրվել էին տեղական անկախ պետություններ, հասարակական հարաբերությունների զարգացումը տանում էր դեպի ֆեոդալականացում։ Ֆեոդալականացման պրոցեսի հիմնական էությունն այն էր, որ արտադրության հիմնական միջոցը՝ նախկինում համապետական հանդիսացող հողը, աստիճանաբար դառնում էր մասնավոր սեփականություն, իսկ դրա վրա հաստատված անմիջական արտադրողը՝ համայնական հողագործ գյուղացին՝ շինականը, դառնում էր ֆեոդալականապես կախյալ գյուղացի։ Միաժամանակ արտադրամիջոցների տեր՝ ֆեոդալականացող ազնվականության մասնատիրական տնտեսությունների՝ ագարակների և դաստակերտների անմիջական արտադրողները՝ ստրուկները, «ծառայք» և «աղախնայք» հետզհետե դառնում են հողին կցված, բայց անձնապես ազատ արտադրողներ՝ հողագործներ (նման Հռոմեական կայսրության կցագրված կոլոններին)։ Նրանք ապրում էին հատուկ բնակավայրերում՝ ագարակներում, ուստի կոչվում էին «բնակիչք ագարակին»։ Այդպես էր Հայաստանում։ Իսկ Արևելքի մի շարք հելլենիստական երկրներում (Եգիպտոս, Ասորիք և Փոքր Ասիա), որոնք դարձան հռոմեական պրովինցիաներ, դեպի նոր՝ ավելի առաջադեմ արտադրահարաբերությունները տանող այս պրոցեսները բավական դանդաղեցված էին։ Պատմական պայմանները նպաստեցին Հայաստանի վաղ*

---

1 *Հայաստանն իր տնտեսական և սոցիալական բնույթով առաջավորասիական ստրկատիրական հասարակության մասն էր կազմում, որի բնորոշ կողմն էր արևելյան համայնքը։ Վերջինս մանրամասնորեն քննված է Կ. Մարքսի կողմից։ Տե՛ս К. Маркс,* Формы, предшествующие капиталистическому производсту. *К. Маркс* и *Ф. Энгельс,* Соч. изд. 2-ое, т. 46, ч. I, с. 461—508. *Այդ համայնքի կենսունակությամբ է Կ. Մարքսը բացատրում Արևելքի ստրկատիրական հասարակությունների զարգացման դանդաղկոտությունը, որոնք չհասան անտիկ Միջերկրայքի երկրների արտադրահարաբերություններին։*

անցմանն ավելի առաջադեմ՝ ֆեոդալական հարաբերությունների զարգացման ուղին։ Վաղ ֆեոդալիզմի ժամանակաշրջանում գեղջուկները և ագարակի բնակիչները ենթարկվում են ֆեոդալական կախման։ Կազմակերպվում է հողատերերի կողմից շահագործվող անտագոնիստական դասակարգ՝ մի ընդհանուր ֆեոդալականապես կախյալ գյուղացիություն։ Հետագայում՝ IX դարում հիմնականում ավարտվում է ֆեոդալական հասարակարգի ձևավորման պրոցեսը Հայաստանում, և հայ ժողովուրդը թևակոխում է հասունացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանը[2]։

Վաղ միջնադարյան Հայաստանում ֆեոդալականացման պրոցեսների խորացման հետ մեկտեղ ավելի որոշակի էր դրսևորվում սոցիալական տարբեր շերտերի միջև եղած սահմանագիծը։ Սոցիալական խմբերը վերածվում էին ներփակված դասերի՝ որոշակի ժառանգական իրավունքներով ու պարտականություններով, ընդ որում, անցումը մի դասից մյուսը, որպես կանոն, արգելված էր։

Արշակունյաց Հայաստանի ողջ ազգաբնակչությունը III—IV դդ. բաժանված էր բարձր և ստորին դասերի։ Բարձր դասին էին պատկանում խոշոր և միջին հողատեր ազնվականությունը՝ նախարարները, բարձր հոգևորականությունը, ապա մանր ազնվականությունը՝ ազատները և գյուղական հոգևորականությունը («ժառանգաւորք եկեղեցւոյ», «տոհմ քահանայից», «ժառանգութիւն քահանայական»)։ Սրանք միասին կազմում էին մեկ տիրող դասակարգ՝ «ազնվականների», «տոհմիկների», որ ընդհանուր տերմինով կոչվում էր «ազատների» դաս։ Ազատների դասը բաղկացած էր երկու հիմնական շերտերից՝ «նախարարներից» և «ազատներից»՝ նեղ իմաստով[3]։

Ստորին դասին էին պատկանում քաղաքացիները՝ առևտրականներն ու արհեստավորները, որոնք համեմատաբար արտոնյալ վիճակում էին և «շինականները»՝ ազատ և կախյալ գյուղացիները, ինչպես նաև քաղաքային պլեբսը՝ ռամիկները։ Ամբողջությամբ վերցրած ստորին դասը կազմում էին ստորին իրավունքներն ու անձնական ազատությունը կորցնող, շահագործվող մի դասակարգ, որ կոչվում էր «անազատ» (ոչ ազնվական, ոչ տոհմիկ) և «ռամիկ» (ամբոխ), ընդհանուր տերմիններով։

«Ստրուկները» (ծառայ և աղախին)[4] դասերից դուրս էին, կարգից դուրս («անկարգ»), որպես հասարակության առավել իրավազուրկ զանգված։

Բարձր դասերը միայն «ազնիվ»՝ զինվորական ծառայություններ էին կա-

---

[2] Տե՛ս *С. Т. Еремян,* Армения в период кризиса рабовладельческого общества и формирования феодальных отношений. *Հրատարակվել է՝* «Очерки истории СССР. Кризис рабовладельческой системы и зарождение феодализма на территории СССР. III—IX вв.», *գրքում,* М., 1958, стр. 167—185: *Տե՛ս նաև՝ С. Т. Еремян,* Нахарарское общество Армении (в книге «История СССР с древнейших времен до образования древнерусского государства», части III—IV, М., 1939, на правах рукописи), стр. 108—116 и сл.

[3] Հ. Մանանդյան, *Ֆեոդալիզմը հին Հայաստանում (Արշակունիների և մարզպանական շրջան), Երևան, 1934, էջ 92, 128։ Ինչպես նշում է Ն. Ադոնցը, «ազատ բառը ոչ միայն ընդհանուր կոչում չէր նախարարական դասի, այլ նշանակում էր նաև մանր ազնվականություն, նման Իրանի ազատներին»* (Ն. Ադոնց, *Հայ հին շինականությունը, Պատմական ուսումնասիրություններ, Պարիս, 1949, էջ 202)։*

[4] *Վաղ ֆեոդալական Հայաստանում «ստրուկների» (ծառայ, աղախին) մասին եղած Փավստոսի (Դ, ժէ), Ղազար Փարպեցու (Գ, հր), Եղիշեի (է), Անանիա Շիրակացու և այլոց հաղորդումների վերլուծությունը տե՛ս* Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 236—238։*

տարում. այդպիսին համարվում էր հեծելազորում ծառայելը, մինչդեռ ստորին դասերը համալրում էին միայն հետևակը։ Միայն թագավորի կամ նախարարի հայեցողությամբ կարող էր կազմավորվել «ռամիկ այրուձի»։ Ռամիկ այրուձին բաղկացած էր «ռամիկ հեծեալ»-ներից, որն առանձնապես կարևոր նշանակություն ստացավ հաջորդ՝ մարզպանական ժամանակաշրջանում[5]։ Պետի ենթադրել, որ հենց այդ ժամանակաշրջանից սահմանվեց հատուկ կարգ, ըստ որի գյուղական համայնքի յուրաքանչյուր հինգերորդ երդը տալիս էր մեկ «ռամիկ հեծեալ»[6], որից կազմվում էր «ռամիկ այրուձին», որ դուրս էր բերում նախարարը, «ազատ այրուձիից» անջատ։

Բարձր դասերն ունեին արտոնություններ, որոնք ժամանակի ընթացքում դառնում էին ժառանգական։ Տոհմիկ ազնվականությունը և բարձր հոգևորականությունը չէին ենթարկվում սովորական դատարաններին, նրանց դատել կարող էր միայն թագավորը։ Բարձր հոգևորականներին դատում էր կամ թագավորը, կամ հայ եկեղեցու առաջնորդը՝ կաթողիկոսը։

Մանր ազնվականությունը՝ ազատները և իր իրավունքներով ազատներին հավասարեցված ստորին հոգևորականությունը ենթարկվում էին քաղաքացիական և հոգևոր դատարաններին։ Բայց ստորին դասի համեմատությամբ նրանք որոշ արտոնություններ ունեին։ Սպանված ազատի արյան գինը երկու անգամ ավելի էր սպանված շինականի արյան գնից[7]։ Ե՛վ ազատը, և՛ շինականը ենթարկվում էին դրամական «տուգանքների»[8], բայց ազատը շինականի պես մարմնական պատժի չէր ենթարկվում կամ տաժանակիր աշխատանքի չէր դատապարտվում։ Դրա հետ մեկտեղ որոշակի իրավազանցությունների համար ազատները պետք է եկեղեցուն վճարեին դրամական տուգանքներ, որոնք կրկնակի անգամ բարձր էին, քան շինականներից գանձվող համանման տուգանքները։ Սա ցուցանիշ էր այն բանի, որ մանր ազնվականությունը, ի դեմս ազատների, գույքային տեսակետից և տնտեսապես կրկնակի անգամ ուժեղ էր ազատ հողագործ-շինականից[9]։

Հանցանք գործած շինականին կամ ազատ գեղջկուհուն տաժանակիր աշխատանքի էին դատապարտում բորոտանոցներում գոդենոցներում, որպեսզի այնտեղ, որոշակի ժամկետի ընթացքում (մեկ կամ երկու տարի) ստրկական աշխատանք կատարեին՝ պատեին երկանքները կամ ձեռքի աղացները՝ ալյուր կամ ձավար ստանալու համար, որոնցով կերակրում էին բորոտներին։ Դատապարտված գեղջկուհին պտտում էր ձեռքի աղորիքը։ Կնոջ աշխատանքը տղամարդու աշխատանքից կրկնակի անգամ ցածր էր գնահատվում։ Համաձայն այն տեսակետի, թե մեկ տղամարդը երկու կին արժե, կնոջ դրամական տուգանքն ու տաժանակիր աշխատանքը պետք է երկու անգամ պակաս լիներ։ Հաշվումները ցույց են տալիս, որ շինականի տարեկան աշխատանքը՝ դրամով

---

5 Փարպեցի, Գ, Հը, Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 118։

6 «Կանոնք Դունայ ժողովոյն», Վաղարշապատ, 1905, էջ 23, տե՛ս Հ. Մանանդյան, նույն տեղում։

7 Թ. Ավդալբեգյան, Հայ շինականի ու գեղջկուհու աշխատավարձը հինգերորդ դարում, տե՛ս նրա «Հայագիտական հետազոտություններ», Երևան, 1969, էջ 285—286։

8 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 123,184—186։

9 Նույն տեղում, էջ 184։

*արտահայտած, կազմում էր 100-ից մինչև 250 սասանյան դրախմ (50—60 ռուբլի արժաթով), իսկ ազատ գեղջկուհունը՝ 50—62,5 սասանյան դրախմ (25—30 ռուբլի արժաթով)։ Համապատասխանաբար ազատ գյուղացու օրական վաստակը կազմում էր 16—20, իսկ ազատ գեղջկուհունը՝ 8—10 կոպեկ արժաթով[10]։ Շինականների համեմատությամբ «քաղաքացիք»՝ առևտրականներն ու արհեստավորներն ավելի մեծ իրավունքներ ունեին։ Կյանքը «ըստ քաղաքացու կարգի» ենթադրում էր անձի ազատություն և այլ իրավունքներ։*

*Ազատ շինականները, գյուղական համայնքի բնակիչները՝ գեղջուկները («գեղջուկք»), իրենց հերթին ավելի մեծ իրավունքներ ունեին, քան ագարակներում բնակվող, մասնավոր հողատերերին ամրացված կախյալ գյուղացիները՝ «բնակիչք ագարակին», որոնց վիճակը քիչ բանով էր տարբերվում նրանց հետ կողք-կողքի ապրող «մշակներ»-ից[11]։*

*Հայաստանի վաղ միջնադարի որոշակի պայմաններում անմիջական արտադրողների վիճակի խնդիրը սովետահայ պատմագրության ամենադժվար հարցերից մեկն է։ Սկզբնաղբյուրները, որոնցում ողջ ուշադրությունը կենտրոնացած է եղել դրեթե բացառապես քաղաքական պատմության վրա, գյուղացիների ու վաղ ֆեոդալական Հայաստանի բնակչության շահագործվող մյուս խավերի մասին հիշատակում են միայն հարևանցիորեն և ակնարկներով[12]։*

*Հայաստանը գերազանցապես երկրագործական երկիր էր։ Նրա բնակչության ճնշող մեծամասնությունը համայնքի անդամ կամ ֆեոդալական կախվածության տարբեր աստիճանի վրա գտնվող գյուղացիներ էին։*

*Պետական հողերի վրա կային մանր հողագործ տնտեսատերեր, որոնք միավորված էին համայնք-գյուղերում (գեւղ, շէն) և կոչվում էին «շինականներ»[13]։ Նրանք ազատ հողագործներ էին և ինքնուրույն տնտեսություն էին վարում։ Համայնքների անդամները միմյանց հետ կապված էին համապարտ երաշխավորությամբ ու պատասխանատվությամբ հարկի վճարման և պետական պարհակների կատարման գործում[14]։ Հարկերը նրանք մուծում էին պետությանը գեղջավագների կամ դեհկանների միջոցով, որոնք դրանք հանձնում էին Հայոց հազարապետին։*

*Գյուղական համայնքն ուներ կոլեկտիվ հողային սեփականություն, որը բաժանվում էր երդերի միջև ըստ արական շնչի և, այդպիսով, կոլեկտիվ հողատիրությունը վեր էր ածվում մասնավոր հողօգտագործման։ Ինչպես նշում է Մարքսը, նման համայնքում «գոյություն ունի միայն կոլեկտիվ սեփականություն և մասնավոր տիրակալություն»[15]։ Համայնական սեփականությունը հանդես է գալիս որպես «կոլեկտիվ սեփականություն, ընդ որում առանձին*

---

10 Բ. Առաքելյան, *նշվ. աշխ., էջ 291։*

11 *С. Т. Еремян,* Основные черты общественного строя Армении в эллинистическую эпоху, *«Լրաբեր», հաս. գիտ», 1948, № 11, էջ 44։*

12 *Տե՛ս А. П. Новосельцев,* Генезис феодализма в странах Закавказья (Опыт сравнительно-исторического исследования), М., 1980, гл. IV, стр. 173—247.

13 Ն. Ադոնց, *նշվ. աշխ., էջ 181—188։*

14 *С. Т. Еремян, նշվ. աշխ., էջ 45—52։*

15 *К. Маркс,* Формы, предшествующие капиталистическому производству, (ВДИ, 1940, № 1, стр. 16).

անհատը ներկայանում էր իբրև միայն տիրակալ և մասնավոր հողատիրություն բոլորովին գոյություն չուներ»[16]։

Մեծ Հայքի թագավորության ողջ հողատարածության գերագույն հողատերն էր համարվում թագավորը՝ Արշակունի գահակալը։ Այդ հողային տարածությունն ամբողջ պետության մեջ վարչականորեն բաժանված էր առանձին «գաւառների» ու «աշխարհների», որոնք տարբեր ժամանակներում հայոց թագավորների կողմից հանձնվել էին կառավարելու հայ ավագանուն՝ նախարարներին ու ազատներին, որոնք ժամանակի ընթացքում դարձել էին իրենց ստանձնած տարածքների ժառանգական տիրակալներ՝ խոշոր հողատերեր, իրենց ենթակա գյուղական համայնքներով։ III—IV դդ. արդեն գոյություն ուներ հողի մասնավոր սեփականատիրություն արքունի տան հողատիրության կողքին։ Ստեղծված վիճակը մասնակի փոփոխության էր ենթարկվում միայն առանձին դեպքերում, երբ նախարարը մեղադրվում էր պետական դավաճանության կամ այլ հանցանքի մեջ, նախարարական տոհմը «անճետ» էր արվում, այսինքն՝ բնաջնջվում էր, իսկ նրա «երկիրը» գրավվում էր «յարքունիս»։

Պետական հարկերը և դրանց գանձման սիստեմը նույնն էին, ինչ որ հարևան Սասանյան Իրանում և Հռոմեական կայսրության արևելյան պրովինցիաներում։ Կար հարկերի հիմնական երկու ձև՝ հողային—«սակ» կամ «հաս» և գլխահարկ՝ «խարագ» կամ «հարկ»[17]։ Հարկերի բաշխումը կատարվում էր սոցիալական ստորաբաժանման համաձայն։

Հողային հարկը վճարում էին բնակչության բոլոր խավերը, մանր ու խոշոր հողատերերը, գյուղացի-հողագործները։ Հողային հարկը պայմանավորված էր յուրաքանչյուր շրջանի հողերի բերրիության աստիճանով, տվյալ տարվա բերքով և ըստ այդմ կազմում էր բերքի $^{1}/_{3}$, $^{1}/_{4}$, $^{1}/_{5}$, $^{1}/_{6}$ մասը։

Գլխահարկը վերցնում էին միայն ստորին խավերից՝ շինականներից ու քաղաքացիներից։ Որոշակի տարիքի հասած արական սեռի յուրաքանչյուր աշխատունակ շնչից վերցվում էր 4 դրախմ (սասանյան արծաթ դրամ)։ Հարկերը մուծվում էին տարին երեք անգամ՝ հունվարին, մայիսին և դեկտեմբերին։

Բացի հողային հարկից և գլխահարկից գոյություն ունեին մի շարք պարհակներ պետության օգտին, որոնք ծանրացած էին միայն ստորին դասերի վրա.

1. Զինվորական հարկ (բեկար)[18]. Գյուղացիական աշխարհազորը սովորաբար համալրում էր հետևակը և բանակում ամենասև աշխատանքն էր կատարում։ Ամմիանոս Մարկելլինոսը, որն ապրել էր այն դարաշրջանում, այսպես է բնութագրում գյուղացիներից հավաքվագրված «պարթևական» հետևազորը. «Հետևակայինները, զինված միրմիլլոնների օրինակով (գլադիատորական սպառազինման մի ձև), գոմակավորների ծառայությունն են տանում։ Նրանց զանգվածը գնում է հեծալազորի ետևից, ասես դատապարտված հավիտենական ստրկության, երբեք չվարձատրվելով ոչ ռոճիկով, ոչ էլ որևէ այլ

16 Նույն տեղում, էջ 17։

17 Թ. Ավդալբեգյան, Հաս, սակ, բաժ, «Տեղեկագիր գիտ. և արվեստի ինստիտուտի», 1926, № 1, էջ 54—55։ Հ. Մանանդյան, նշվ. աշխ. էջ 131—205, 207—208։

18 Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հ. Ա, Երևան, 1971, էջ 437, «բեկար» բառի տակ։

*նպաստով»*[19]: *Այս բնութագրությունը նույն չափով կարող է վերաբերել նաև վաղմիջնադարյան ժամանակաշրջանի Հայաստանի հետևակին։*

*2. «Տարապարհակ». իր գրաստները շինականը տրամադրում էր պետական պաշտոնյաներին կամ տվյալ գավառում տեղավորված զորամասերին։*

*3. Զանազան ծանր ֆիզիկական աշխատանքների կատարում («պարհակութիւն»)։*

*4. Բանվորական ուժի հավաքագրում համապետական նշանակության. շինարարական աշխատանքների՝ քաղաքների, կամուրջների, ջրանցքների, ճանապարհների կառուցման, անտառատնկումների և այլնի համար «մարդահարկ, խաշար»*[20]:

*Ծանր բեռի նման աշխատավոր բնակչությանն էր բաժին ընկնում բանակի մատակարարումը, հատկապես արքունական հողերում, որտեղ բերդապահ կայազորները («կայենական զորք») ապրում էին շրջակա գյուղական բնակչության հաշվին։ Գյուղացիները պարտավոր էին ապահովել զորքերն անհրաժեշտ ամեն ինչով։*

*Գյուղը ղեկավարում էր գյուղական ավագը՝ «ծեր, գեղջաւագ, դեհկան», որը հավաքում էր հարկերը, հաշվառում և բաշխում պարհակները*[21]: *Դեհկանը պատասխանատու էր պետության առաջ՝ ի դեմս հայոց հազարապետի, հարկերը ժամանակին մուծելու և մյուս պարտավորությունների կատարման համար։*

*Ժամանակի ընթացքում դեհկանի պաշտոնը դառնում է առավել ունևոր ընտանիքների ժառանգական արտոնությունը։ Դեհկանների և գյուղական քահանաների և մի շարք այլ ընտանիքներ կազմում էին գյուղի ունևոր վերնախավը («թուանիկ»), որն իշխում էր գյուղական մանր արտադրողների վրա։ Վերջիններս ըստ ունեցվածքի միտում ունեին շերտավորման՝ «տառապեալ»-ների և ամենաստորին սոցիալական շերտին պատկանող մարդկանց («որոյ վար և այգի ոչ է»)։ Սա հողազուրկ «անաշխարհիկ» աղքատացած շինականների մի շերտ էր*[22], *որ, բնականաբար, ստիպված էր վարձակալել վարելահող ունևոր տնտեսատերերի մոտ՝ ամենածանր պայմաններով։ Այդպիսի հողազուրկ «անաշխարհիկ» գյուղացին սովորաբար դառնում էր ազատի, նախարարի կամ հոգևոր անձի մանր վարձակալ, դրանով իսկ ընդմիշտ կորցնելով երբեմնի ազատությունը, վերածվելով կախյալ շինականի՝ «մշակի»*[23]:

*Գյուղական յուրաքանչյուր տուն օգտագործման համար ստանում էր հողաբաժին՝ «հող երդոյ», որի միավորը համապատասխանում էր հելլենիստական և բյուզանդական դարաշրջանների «արուրա»-ին կամ հռոմեական «յուգեր»-ին*[24] *(մոտավորապես 1/4 հեկտար)։ «Հող երդոյ»-ը հողաբաժնի այնպիսի*

---

19 *Ammian. Marc.*, LXXIII, 6:

20 *С. Т. Еремян, նշվ. աշխ., էջ 51։*

21 **Ն. Ադոնց**, *նշվ. աշխ., էջ 200։*

22 *С. Т. Еремян,* Проблема падения рабовладельческого общества и зарождения феодальных отношений в древней Армении. Доклады советской делегации на XXIII Международном конгрессе востоковедов, М., 1954.

23 *С. Т. Еремян,* Основные..., 1954, стр. 118.

24 *Հ. Մանանդյանը, հենվելով Ագաթանգեղոսի (Ճ, ժԹ) և Փավստոսի (Ե, լա) հաղորդումների վրա եզրակացրել է, որ «հող երդոյ» որոշ չափի հողաբաժիններ են, որոնք ավաններում և ագարակներում տրվել են «երդ»-երին (Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 135, 197)։*

միավոր էր, որի տարածությունը պայմանավորված էր յուրաքանչյուր ընտանիքի անդամների թվով։ Այն փոփոխվող մեծություն էր։ Արտերի վերաբաժանման ժամանակ հաշվի էին առնվում ամեն մի ընտանիքում տեղի ունեցած փոփոխությունները։

Քրիստոնեության ընդունումից հետո գեղջավագի հետ մեկտեղ գյուղում մեծ դեր է սկսում խաղալ գյուղական քահանան, որը շինականներից հավաքում էր տասանորդ և այլ «կամավոր նվիրատվություններ» (օրինակ՝ «պտուղի»[25]), որոնք հարմարեցվում էին կրոնական տոների օրերին և ժամանակի ընթացքում դառնում պարտադիր։

Գյուղական համայնքի ներսում դեռ շատ երկար պահպանվում էր հավասար հողօգտագործման սկզբունքը և կատարվում էին արտերի պարբերական վերաբաժանումներ։ Հողերը բաժանվում էին «հաւասար» և «ըստ մարդաթուի» վիճակահանությամբ[26]։ Վարելահողերից բացի կային արոտատեղիներ, բարձր լեռնային մարգագետիններ, նախրատափեր, անտառներ, որոնցից օգտվել կարող էին համայնքի բոլոր անդամները։ Իրենց հողաբաժիններում շինականներն զբաղվում էին հացահատիկի մշակությամբ։ Ցանում էին գարի, ցորեն, կորեկ, որոշ տեղերում նաև բրինձ և այլն։ Հողը սովորաբար մշակվում էր երկաթե խոփ ունեցող փայտե արորով։ Զարգացած էին նաև այգեգործությունը, խաղողագործությունն ու գինեգործությունը, հատկապես դաշտավարային շրջաններում։ Տնտեսության մյուս կարևոր ճյուղն անասնապահությունն էր, որը երկրագործությունից հետո երկրորդ տեղն էր գրավում։

Ինչպես մյուս ծառայությունները, նույնպես և շինականը համարվում էր ժառանգական և այդ վիճակից դուրս գալը շատ դժվար էր։

## 2. ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ։ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՁԵՎԵՐԸ։ ՖԵՈԴԱԼԱԿԱՆԱՊԵՍ ԿԱԽՅԱԼ ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԻ ԾԱՆՐԱՑՈՒՄԸ

Ֆեոդալականացման պրոցեսի խորացմանը զուգահեռ թագավորական կամ պետական հողն աստիճանաբար տրոհվում էր մանր սեփականատերերի միջև, մեծանում էր մասնավոր-սեփականատիրական հողը, իսկ այնտեղ ապրող, մինչ այդ ազատ հողագործ բնակչությունը հետզհետե վերածվում էր ֆեոդալական կախյալ բնակչության, որի վրա ծանրանում էր կրկնակի և եռակի ճնշումը։ Այդուհետ գյուղացին, որպես կախյալ շինական, պարտավոր էր պարհակներ կատարել ու հարկ վճարել և՛ պետությանը, և՛ իր հողատիրոջը, և՛ եկեղեցուն[27]։

Նախարարներին և ազատներին պատկանող հողերում գոյություն ունեցող գյուղական համայնքների բնակչությունը կախման մեջ էր ընկնում հողատերերից։ Նախկինում ազատ համայնականները՝ շինականները, բնակվելով թագավորի կողմից նրա բարձրաստիճան պաշտոնյային շնորհված հողի վրա, վեր էին ածվում հողի ազատ վարձակալների՝ գյուղական համայնքների անդամի

---

25 Նույն տեղում, էջ 140։

26 Նույն տեղում, էջ 195—198։

27 Ինչպես նշում է Հ. Մանանդյանը, շինականների «ի հարկի ծառայութեանս» վիճակն ունեցել է, հավանաբար, որոշ չափով ճորտության բնույթ (նշվ. աշխ., էջ 166)։

*պայմաններով։ Սակայն հարկային ճնշումը կրկնակի չափով ավելանում էր։ Սովորական պետական հարկերից ու պարհակներից բացի գյուղացին իր բերքի մի մասն ստիպված էր տալ հողատիրոջը՝ հողի վարձակալման դիմաց։ Հողի սեփականատիրոջից կախյալ շինականները, Հռոմեական կայսրության ազատ կոլոնների նման, անձնապես ազատ էին, բայց ամրակայված էին հողին և իրավունք չունեին տեղից-տեղ փոխադրվելու[28]։*

*Կախյալ շինականն ուներ որոշ սեփականություն՝ գյուղական բնակարան[29], պարզունակ գյուղատնտեսական գործիքներ (օրինակ՝ «երկմատանի փայտատը»)[30], բայց արտադրության հիմնական միջոցը՝ հողը, համարվում էր ֆեոդալի սեփականությունը։ Նախկինում ազատ գյուղական համայնքի հողն աստիճանաբար դառնում էր խոշոր հողատիրոջ սեփականությունը։ Այդ պատճառով էլ փոքր հողաբաժին ունեցող կախյալ շինականը հողի սեփականատիրոջ հանդեպ սկսում էր հանդես գալ իբրև մանր վարձակալ։ Վարձակալության դիմաց նա տալիս էր իր բերքի որոշակի մասը։*

*Աղբյուրների կողմնակի վկայություններից հայտնի է, որ եթե ազատ վարձակալ-շինականը չէր վճարում իր վրա դրված հարկերը և չէր կատարում պարհակները, ապա դառնում էր կցագրված գյուղացի՝ «մշակ», այսինքն՝ պետք է ծրի աշխատեր հողատիրոջ տնտեսությունում։ Այդպիսի կցագրված գյուղացին սոցիալապես հավասարեցվում է «ագարակների բնակիչներին» և ստրուկներին։ Միայն գյուղական համայնքի համապարտ երաշխավորությունը կարող էր փրկել նրան այդ ստրկական վիճակից։*

*Ընդհանրապես գյուղական համայնքն իր կարգերով ու ավանդույթներով շինականին հնարավորություն էր ընձեռում պաշտպանելու իր սոցիալական շահերը հողատիրոջ կամայականություններից։ Պահպանված եկեղեցական կանոնների համաձայն շինականը կարող էր իր սեփականությունը կտակել որդիներին, կարող էր ամուսնանալ առանց կալվածատիրոջ համաձայնության[31]։ Այս փաստը ցույց է տալիս, որ Հայաստանում կար հողի մանր, ազատ սեփականատերերի մի խավ։ Տիրոջ համաձայնությամբ շինականը կարող էր ստորին հոգևոր պաշտոններ վարել։*

*Ֆեոդալականապես կախյալ գյուղացին, որպես հարկատու, հաշվվում էր հողի սեփականատիրոջ վրա և այս վերջինս էր վճարում պետությանն իր հողի վրա ապրող գյուղացիներից գանձվելիք հարկերը։ Կային հողագործներ, որոնք նման էին Հռոմեական կայսրությունում կցագրված կոլոններին[32]։ Ժամանակի ընթացքում «կցագրված» (այսինքն՝ հողին ամրակայված) ստրուկ-հողագործի և «կցագրված» կոլոնի միջև եղած տարբերությունը վերանում էր, այդ*

---

28 Հ. Մանանդյան, *Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 176։*

29 *Համայնական գյուղացու բնակատեղին՝ «տուն»-ը իրենից ներկայացնում էր ազգագրության մեջ հայտնի գլխատունը կամ հազարաշենքը, մեջտեղը երդիկով, ուստի յուրաքանչյուր այդպիսի տան մեջ ապրող ընտանիքը կամ գերդաստանը բնորոշվում էր «երդ» բառով։ Երդը հարկահանության մեկ միավոր էր։ С. Т. Еремян,* Народное жилище. *Տե՛ս* Культура раннефеодальной Армении (IV—VII вв.), Ереван, 1980, стр. 307—314.

30 *Տե՛ս С. Т. Еремян,* Происхождение некоторых орудий пашенного земледелия в древней Армении. *Տե՛ս ժողովածու «Նյութեր Հայաստանի գյուղատնտեսության պատմության», հ. 1, Երևան, 1964, էջ 16—17։*

31 *Նույն տեղում։*

32 Ն. Ադոնց, *նշվ. աշխ., էջ 197—198։*

պատճառով էլ հողագործների այս երկու կարգն էլ հայերեն կոչվում էին մեկ տերմինով՝ «ծառայ»[33]։

Աշխատանքի ծանր պայմանները կախյալ գյուղացիներին և ծառաներին անելանելի գրության մեջ էին դնում և նրանց միակ փրկությունը փախուստը էր։ Ամեն ինչ, անգամ ընտանիքը թողնելով, փախչում էին վանքեր ու անապատներ։ Ոչ ոք իրավունք չուներ իր մոտ ընդունել փախած ծառային։ Նրա տեղն իմացող յուրաքանչյուր ոք պարտավոր էր ծառային վերադարձնել նախկին տիրոջը։ Նույնիսկ եկեղեցին միջոցներ էր ձեռնարկում կանխելու անապատականների շարժումը և ամուրիության քարոզը։ Արշակավանը եղավ սոցիալական հակասությունների սրման կիզակետը։ Արշակավանում տեղի ունեցած դեպքերի ժամանակակից Ամմիանոս Մարկելլինոսը խոսելով իրանական ազնվականության մասին, հաղորդում է, որ նրանք այնքան դաժան էին, «որ սեփականացնում են ստրուկների ու ստորին խավի մարդկանց կյանքի ու մահվան իրավունքը»[34]։ Այս դիտողությունը լիովին վերաբերվում է նաև հայ ավագանուն և իրենից կախում ունեցող մարդկանց նկատմամբ դրսևորվող նրա վերաբերմունքին։

Կալվածատերերի ու ֆեոդալականապես կախյալ գյուղացիների փոխհարաբերությունններն այնքան սրված էին, որ գոյություն ունեցող արտաքին քաղաքական իրադրության պայմաններում հղի էին մեծ վտանգներով։ Դրա վկայությունն են Աշտիշատի ժողովի 354 թ. ընդունած որոշումները։

Թեև ստրկատիրական հասարակարգն իր տեղն ընդմիշտ զիջել էր ֆեոդալականին, ստրկությունն այնուամենայնիվ լիովին չէր վերացել։ Ստրկական աշխատանքը շարունակում էր պահպանվել արհեստներում, գյուղատնտեսության մեջ, և այդ հանգամանքը բացասաբար էր անդրադառնում վերջնականապես ֆեոդալական հասարակությանն անցնելու վրա։ Առհասարակ ստրկատիրական կացութաձևը այս կամ այն չափով միշտ էլ գոյություն է ունեցել[35]։

Ստրուկների վրա իշխող դասակարգի խավերն էին՝ նախարարները, ազատները, հոգևորականությունը։ Իշխող դասակարգին կենցաղում ծառայում էր տնային սպասավորների մի ամբողջ խումբ։ Ստրուկը համարվում էր տիրոջ շարժական ունեցվածքի մի մասը։ Նրան կարելի էր նվիրել, վաճառել, գնել, փոխանակել, գրավ դնել և այլն։ Փախած ստրուկը, որպես կանոն, վերադարձվում էր տիրոջը։ Հողին ամրակայված ստրուկը՝ մշակը, ուներ որոշ գույք, խրճիթ, պարզունակ գյուղատնտեսական գործիքներ, թերևս նաև անասուններ։ Տիրոջ թույլտվությամբ ստրուկը կարող էր ձեռք բերել նաև որոշ անհրաժեշտ իրեր։

Ագարակներում ու դաստակերտներում աշխատող ստրուկ-հողագործները՝ «մշակները», ատտիճանաբար ամրակայվում էին հողին և այդպիսի ստրուկների բնակավայրերը կոչվում էին «ագարակ»[36]։

---

[33] С. Т. Еремян, նշվ. աշխ., էջ 54։ Հին հայերենում «ծառայ» և «ստրուկ» անվանվել են տղամարդիկ, իսկ կանայք կոչվել են «աղախին» (Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 234)։

[34] Ammian, Marc., 6, 80:

[35] Տե՛ս А. П. Новосельцев, նշվ. աշխ., էջ 183—184, 196։

[36] Ագարակը վեր է ածվում ավանի՝ հողին կցված հողագործ բնակչությամբ («բնակիչք ագարակին»), որը, սակայն, իրավական առումով ցածր էր գյուղից, «շէնից», որտեղ ապրում

Ֆեոդալական հասարակության շահագործող դասակարգի ներկայացուցիչների հզորությունն ու պետական գործերի վրա ունեցած ազդեցությունն աճում էր նրանց հողային հարստությունների աճին համեմատ։

Տոհմիկ ազնվականությունը ծագում էր մասամբ առանձին ցեղերի ու նրանց դինվորական աշխարհազորների հնագույն առաջնորդների և հրամանատարների սերունդներից, որոնք դարձել էին նախկին ցեղային տարածքների ժառանգական իշխողներ, մասամբ էլ բարձրաստիճան պաշտոնյաներից, որոնք ծառայության դիմաց, որպես ժառանգական սեփականություն, ստացել էին հողային տիրույթներ և ժամանակի ընթացքում դարձել տոհմիկ ազնվական։

Հայ առաջին քրիստոնյա թագավորներն ստիպված եղան նաև կալվածքներ շնորհել ձևավորվող քրիստոնյա հոգևորականությանը։ Նրանք այդ կատարեցին նաև ի հաշիվ ապստամբ նախարարներից բռնագրավված կալվածքների։ Այդպիսի նախարարական տները բնաջնջվում էին, իսկ նրանց հողերը հանձնվում էին հոգևորականությանը որպես հավիտենական չօտարվող տիրույթներ։

Ագաթանգեղոսի և Փավստոսի վկայություններից երևում է, որ Տրդատ Գ-ն գյուղական հոգևորականությանը տնտեսապես ապահովել է՝ տալով նրանց հողամասեր։ Ըստ Ագաթանգեղոսի վկայության, Տրդատ Գ-ն «իր ամբողջ իշխանության մեջ, առհասարակ, տվեց քահանայական պաշտոնեության սպասարկման համար բոլոր ագարակ տեղերում չորս չորս «հող երդոյ», իսկ ավաններում՝ յոթ յոթ «հող երդոյ»[37], որ մատուցեց Աստծուն որպես նվեր պտղի[38]։ Ագաթանգեղոսի վկայությունը լիովին ապացուցվում է Փավստոսի տեղեկություններով։ Երբ նա խոսելով Պապի (368—373)՝ եկեղեցու հանդեպ վարած ներքին քաղաքականության մասին, հաղորդում է, որ Պապ թագավորը բռնագրավեց եկեղեցու հողերը, որ «Մեծն Գրիգոր քահանայապետի ժամանակ Տրդատ թագավորը տվել էր եկեղեցուն Հայոց ամբողջ երկրում պաշտամունքի սպասավորության համար, որովհետև յոթ հողից հինգը գրավեց արքունիքը և միայն երկու հող թողեց»[39]։ Այդ հողերն ազատված էին ամեն տեսակ հարկերից, բացառյալ հողային հարկը, որը քահանաները մուծում էին պետական գանձարան։

Ձևավորվող հոգևոր դասը հավասարեցված էր ազատների դասին («...պա-

---

էին դեռևս հողին չամրակցված, բայց արդեն հողատերերից կախյալ գյուղացի համայնականները՝ «շինականները», (*С. Т. Еремян*, Основные черты обществ. строя Армении, «Լրաբեր», 1948, № 11, էջ 55)։ Դաստակերտը վեր է ածվում խոշոր հողատիրոջ կալվածքի։ Նման դաստակերտներով էր շրջապատված ֆեոդալական ամրոցը։ Տե՛ս նաև՝ *Г. Х. Саркисян*, О двух значениях термина дастакерт в ранних армянских источниках. Сб. «Эллинистический Восток», «Византия и Иран», М., 1967, стр. 91—101. *А. Г. Периханян*, Сасанидский Судебник, «Книга тысячи судебных решений», Ереван, 1973, стр. 458—460.

37 Դրանց չափերը, նայած արգավանդության, տարածվում էին 5—12 հեկտարի միջև (տե՛ս Ն. Ադոնց, Հայ հին շինականությունը, «Պատմական ուսումնասիրություններ», Փարիզ, 1948, էջ 178)։

38 Ագաթանգեղոս, գլ. ԾԺԹ, 837, էջ 436; Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Բ, մասն Ա, Երևան, 1957, էջ 347։

39 Փավստոս, Ե, լա։

րեզօտաւորք ազատեալ էին ի Քրիստոս»)[40] և ունեին նույն իրավունքները, ինչ որ ազատները։

Նախկին հեթանոսական տաճարների հողերն ստանալուց բացի, հայ հոգևորականությունն ընդարձակում էր իր հողային տիրույթները՝ ի հաշիվ պետության կողմից բռնագրավված այն հողերի, որոնք վերցվում էին շնորհազուրկ կամ բնաջնջված նախարարական տներից։ Այսպես, Աղբիանոսը և Եվթաղիոսը Վրթանես արքեպիսկոպոսի (333—347) օրոք եպիսկոպոսական աստիճանի հետ միասին ստացել էին ընդարձակ կալվածքներ, որոնք նախկինում Բզնունի, Մանավազյան և Որդունի նախարարական տներինն էին։

Այսպես ահա զավթվում էին այն հողերի վերջին մնացորդները, որտեղ դեռևս գերակշռում էր նախաֆեոդալական կացութաձևը, իսկ այդ հողերի ազատ բնակիչները վեր էին ածվում եկեղեցական ֆեոդալների կախյալ հպատակների։

Բացի այդ, եկեղեցին մշտապես ստանում էր նոր հողեր ու գույք՝ թագավորի ու նախարարների հանուն հոգու փրկության արած նվիրատվությունների ձևով։ Դրա հետևանքով IV դարի ընթացքում եկեղեցական հողատիրության հիման վրա աճում է բավական պատկառելի մի ուժ՝ հոգևորական դասը, որը մեծ հաջողությամբ պաշտպանում էր իր շահերն աշխարհիկ ֆեոդալների ոտնձգություններից և իր պայմաններն էր թելադրում ոչ միայն ազատներին ու նախարարներին, այլև թագավորներին։

Նմանօրինակ շնորհումների հետևանքով թագավորական, այսինքն՝ պետական սեփականություն համարվող հողերի մեծ մասը դառնում էր խոշոր նախարարական տների ու եկեղեցու սեփականությունը։ IV դ. կեսերին երկրում երևան եկավ խոշոր մասնավոր հողատիրությունը, որը հայրենական («ալոդային») հողատիրության բնույթ ուներ։ Այդպիսի ժառանգական հայրենիք-ալոդներն այդ շրջանում կոչվում էին «երկիրք հայրենական»[41]։

Իրենց հողերը հետագա կրճատումից փրկելու նպատակով հայ թագավորներն սկսում են ավելի հաճախակի դիմել հողային շնորհումների նոր սիստեմին՝ պայմանական հողատիրության։ Պայմանական հողատիրության ձևով՝ «երկիրք պարգևականք», թագավորը շնորհումներ էր անում ավագանուն այս կամ այն ծառայության համար՝ ցմահ կամ ժառանգաբար։ Եթե նվիրատուն կամ ստացողը մեռնում էր, ապա նվիրատվությունը պետք է վերականգնվեր։

Հեծյալներին՝ «ազատներին» հողաբաժիններ հատկացնելու նախկին ձևը, որ այնքան բնորոշ էր հելլենիստական տիպի պետություններին, ֆեոդալականացող Հայաստանի պայմաններում ավատական հողատիրության բնույթ է ստանում, ընդ որում այդ հողերում ապրող գյուղացիները վեր են ածվում ազատներից կախում ունեցող «անազատ» բնակչության։

IV դարում հեծյալների-ազատների կողքին երևան է գալիս իրավական տեսակետից ազատներին հավասարեցված գյուղական հոգևորականությունն իր մանր հողակտորներով։ Տարբերությունն այն էր, որ հեծյալ-ազատն իր հողն ստանում էր թագավորից՝ որպես զինվորական ավատ, իսկ հոգևոր անձը՝ քահանայապետից կամ արքեպիսկոպոսից՝ որպես եկեղեցական ավատ։

---

40 Փարպեցի, էջ 168 («Թուղթ Ղազարայ Փարպեցւոյ», Մեղադրութիւն ստախօս աբեղայից)։

41 *С. Т. Еремян,* Проблема падения рабовладельческого общества. стр. 117.

Ալոդ-հայրենիքները[42] գերազանցապես հայկական թագավորության ծայրամասերի ինքնուրույն, բայց Արշակունիներից վասալական կախում ունեցող իշխանությունների, հատկապես բդեշխությունների տիրույթներն էին։

Բոլոր դեպքերում էլ ամբողջ հողը նախկինի պես համարվում էր թագավորի՝ սեփականությունը։ Ամեն անգամ որևէ տիրակալ իշխան՝ նախարարի մահից հետո նախարարական տնից նոր իշխանի նշանակումը կատարվում էր թագավորի համաձայնությամբ, ընդ որում վերջինս պարտավոր էր պահպանել սահմանված ժառանգական կարգը։

Բարձրաստիճան տոհմիկ ավագանին (նախարարները) մասնակցում էր երկրի կառավարմանը, արքունիքում բարձր պաշտոններ գրավում, որոնց վարելը դառնում էր նրա ժառանգական արտոնությունը։ Այդպիսին էին Մարդպետական, Խոռխոռունի, Բագրատունի, Մամիկոնյան, Արծրունի, Սյունի, Ամատունի, Կամսարական, Ռշտունի և մյուս նախարարական տները։

Պաշտոնները վարելու ժառանգական սկզբունքի խախտումը պետք է թուլացներ պալատական պաշտոնեության արտոնյալ դիրքի հիմքերը։ Այդ պատճառով էլ վերջինս երբեք չէր հանդուրժում սահմանված կարգի այդպիսի խախտումը և սպառնում էր թագավորին անցնել Սասանյանների կամ Հռոմեական կայսրության կողմը։ Արշակունի թագավորը հետզհետե ավելի ու ավելի էր նմանվում առաջին իշխողի, առաջին՝ իրեն հավասար նախարարների մեծամեծ ավագանու մեջ։

Նախարարները և եկեղեցական պաշտոնյաները դառնում էին իրենց «տէրութիւնների» մինչ այդ իրավականորեն ազատ բնակչության «տէրը»[43]։ Ֆեոդալականացող ավագանու բարձրացումն արտահայտվում էր նաև նրանով, որ վերջինս սեփականացնում էր կենտրոնական իշխանության ֆունկցիաները։ Խոշոր հողատերերը հավասարեցվում էին կենտրոնական իշխանության պաշտոնյաներին։ Նրանց վրա էր դրվում տեղական կառավարումը։

Այդպիսի վասալ նախարարական տան («ազգ», «ազն») գլուխ էր կանգնած «տանուտէրը» կամ «նահապետը»։ Նախարարական տոհմում տարիքով ավագագույնը, որը հաջորդելու էր «տանուտէրին» կամ «նահապետին» կոչվում էր «աւագ սեպուհ»[44]։ Տոհմի մյուս անդամները («սեպուհները») զինվորական վասալային «ծառայութիւն» էին տանում և կազմում էին նախարարական հեծելազորի («այրուձիի») լավագույն մասը։ Պետք է նշել, որ նախարարական տների ներսում շարունակում էին պահպանվել տոհմական ազգակցության կարգը և իրավասությունները։

Հին հռոմեական իրավունքում նման տոհմական կազմակերպությունը նշվում է Agnatus բառով։ Յուրաքանչյուր նախարարական տոհմ սերում էր մի նախահորից, որը պատմական անձնավորություն էր կամ առասպելական նախահայր։ Օրինակ՝ Շամբատ Բագարատ նախահորից սերված բոլոր անդամները արական գծով համարվում էին Բագրատունի իբրև առանձին «տոհմ» կամ «ազգ» և նրանց կողմից ժառանգության իրավունքով զբաղեցրած տա-

---

[42] Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 27, 122, 311—313, 315 և 316։
[43] *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 298—321.
[44] Նույն տեղում, էջ 472—475։

րածքը համարվում էր նրանց «հայրենիքը»։ Նախարարական տոհմը կառուցվածքով տիպիկ ազնվատային էր։

Նախարարական սենյորիան («տէրութիւնը») ժամանակի ընթացքում վեր է ածվում ինքնաբավ տնտեսական ու քաղաքական միավորի՝ սեփական կենտրոնով ու զինվորական ուժով։ Դա հայկական միասնական կենտրոնացած պետության թուլացման և անկման պատճառներից մեկն էր։

Յուրաքանչյուր այդպիսի նախարարական տերության մեջ ֆեոդալական իշխանության կենտրոնն ամրոցն էր, բերդը կամ «գահոյից գեւղ»-ը։ Այստեղ պահվում էին նախարարի գույքն ու գանձերը։ Պատերազմների ժամանակ այդպիսի ամրոցը դառնում էր ոչ միայն նախարարական ընտանիքի, այլև գյուղական բնակչության ապաստարանը։ Ամրոցի շուրջը փռված էին նախարարի կալվածքները՝ ագարակներն ու դաստակերտները։ Նախարարներից յուրաքանչյուրն ուներ իր տոհմական պինանշան-դրոշը («նշան», «դրաւշ», «վառ»)[45]։

Հայ Արշակունիների ժամանակաշրջանում նախարարները «ազնվական» զինվորական ծառայություն էին տանում և, ընդունված սովորության համաձայն, տարվա որոշակի օրերին ոսկի էին մատուցում արքային («բաժ պսակի» «aurum coronarium»)։ Ոսկի մատուցելու այս սովորությունը («պատարագ») չէր բացառում այն, որ նախարարները պետք է հողային հարկ ու գլխահարկ վճարեին ժառանգաբար իրենց կախյալ գյուղացիների համար։

Կենտրոնական իշխանության գլխավոր հենարանը մանր հողատերերն էին՝ ազատների դասը։ Կենտրոնական իշխանության ուժեղացման համար մղված պայքարում թագավորը հենվում էր մանր հողատերերի վրա, որն ավելի հավատարմորեն էր ծառայում, քան տոհմիկ ավագանին։ Վերջինս օգտագործում էր արտաքին քաղաքական բարդությունները՝ իր քաղաքական կշիռը բարձրացնելու նպատակով։

Որպես հեծյալ, ազատը պայմանական հողօգտագործման կարգով ստանում էր կալվածք՝ «պարգևական», որը ժամանակի ընթացքում դառնում էր նրա ժառանգական սեփականությունը։ Ազատը պետությանը վճարում էր հողային հարկ, որը սովորաբար գանձվում էր նրա «ռոճիկի», այսինքն՝ այն դրամական ու բնամթերային նպաստի հաշվին, որ նա ստանում էր պետությունից իր հանդերձավորման ու ապրուստի համար[46]։

Ձևավորվող ֆեոդալական սեփականությունը ձեռք է բերում իրեն հատուկ հիերարխիկ կառուցվածք՝ ստորադաս սեփականատիրոջ վասալական կախումը վերադասից։ Այս հիերարխիայի վերին աստիճանի վրա Հայ Արշակունի թագավորն էր՝ «Թագաւոր Հայոց Մեծաց» տիտղոսով։ Անմիջապես նրանից հետո գալիս էին չորս բդեշխները՝ Աղձնիք, Կորդուք, Նոր-Շիրական և Գուգարք նահանգների տիրակալ վասալ-արքայիկները։ Իրենց դիրքով բդեշխները բարձր էին մյուս բոլոր նախարարներից («գահերէց, բարձերէց»)։ Նրանք հավասար էին Սասանյան Իրանի «շաթրադարներին»[47]։ Սակայն հիերարխիկ սկզբունքը գոյություն ուներ նաև բդեշխների միջև։ Աղձնիքի բդեշխը համար-

45 Փավստոս, էջ 14, 156։
46 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 181։
47 Նույն տեղում, էջ 37։

վում էր «Մեծ բդեաշխ», իսկ Գուգարքինը՝ «Միւս բդեաշխ»։ Սրանցից հետո գալիս էին Կորդվաց և Նոր-Շիրական բդեշխները։

Հինգերորդ, բուրգի հաջորդ աստիճանին կանգնած էին նախարարները՝ ընդարձակ նահանգների ու գավառների տերերը, խոշոր իշխանական տների ներկայացուցիչները։ Նախարարները հայոց արքաների վասալներն էին և պարտավոր էին արքունիքում լինել, կազմելով արքայի շքախումբը։ Նրանք իրենց հերթին ստորաբաժանվում էին ավագ և կրտսեր նախարարների[48]։ Առաջիններից էր կազմվում արքունիքի իշխող վերնախավը, որը ներկայացնում էին գործակալները։

Այս ժամանակաշրջանում է մշակվում պաշտոնակալության կարգը՝ «գահերէցութիւնն» ու «բարձերէցութիւնը»։ Արքունի դիվաններում պահվում էին տոհմաբանական շատ մատյաններ («անբաւ գրուցաց մատեանք»), որոնց հիման վրա կազմվում էր աստիճանների՝ ավագ նախարարների հերթականությունն ըստ արքունիքում նրանց գրաված դիրքի, ցուցակը՝ «Գահնամակը»։ Ամեն անգամ նոր թագավորի գահ բարձրանալով «Գահնամակը» վերահաստատվում էր։ Իսկ արքունիքում գրաված դիրքն զգալի չափով պայմանավորված էր յուրաքանչյուր նախարարի կողմից տրամադրվող հեծյալների թվով։

Իրենց դիրքով իշխող դասի ամենաստորին աստիճանին կանգնած էին աշխարհիկ ու հոգևոր բազմաթիվ մանր հողատերերը՝ ազատները, հեծյալները և նրանց հավասարեցված գյուղական քահանաները։ Ազատները վասալներ էին «աւագ» և «կրտսեր» նախարարների[49]։

Աղնվականության թվարկված բոլոր խավերը իրենց տիրոջ՝ թագավորի վասալներն էին՝ «ծառաները» և պարտավոր էին վասալական ծառայության կարգով («ի սպասու ծառայութիւն»)[50] հանդես գալ իրենց համապատասխան թվով հեծելազորով։ Թագավորն էլ, իր հերթին, պարտավոր էր անխախտ պահել նրանց ժառանգական իրավունքները։

## 3. ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՍԻՍՏԵՄԸ: ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Արքունիքը («արքունի դուռն»), որը գտնվում էր երկրի մայրաքաղաքում, Մեծ Հայքի պետական կառավարման կենտրոնն էր։ Երկրի գերագույն տերը Հայոց թագավորն էր, որը կրում էր «մեծ արքայ Հայոց Մեծաց» կամ «թագաւոր Հայոց Մեծաց» տիտղոսը[51]։ Թագավորն էր ընդունում և ուղարկում դեսպաններին, նա էր պատերազմ հայտարարում և հաշտություն կնքում, բայց այս հարցերը ենթակա էին ավագանու խորհրդի քննարկմանը, որը և դառնում էր պետության բախտի փաստական տնօրենը։

Իրենց իշխանությունն ուժեղացնելու նպատակով Արշակունի թագավորները ձգտում էին հենվել մանր ավագանու՝ ազատների վրա և փորձում էին պատասխանատու պետական պաշտոնները հանձնել առավել հավատարիմ նա-

48 Ինչպես նշում է Հ. Մանանդյանը, «աւագների» խմբին են պատկանել այն հզոր ու առաջնակարգ տոհմերի նախարարները, որոնք «գահերէց էին», իսկ «կրտսեր»՝ նրանք, որոնց գահերը եղել են երկրորդական կարգի (Նույն տեղում, էջ 43)։

49 Նույն տեղում, էջ 44։

50 Նույն տեղում, էջ 133, 156, 234։

51 Սիմոն Կրկյաշարյան, Հայոց արքայի տիտղոսաշարի մասին, «Լրաբեր հաս. գիտ.», 1982, № 9, էջ 49—51։

խարարներին, բայց դրա հետևանքը միշտ լինում էր բարձրաստիճան տոհմիկ ավագանու մի մասի դժգոհությունը, որը երբեմն ծանր վիճակի մեջ էր գցում թագավորին։

Պետական կառավարման սիստեմը սերտորեն կապված էր դասային կառուցվածքի հետ, որն առանձին գործակալությունների մի ամբողջություն էր ներկայացնում։ Գործակալությունների գլուխ էին կանգնած առավել աչքի ընկնող նախարարական տոհմերի ներկայացուցիչները։ Արքունիքի մեծամեծները ձգտում էին անխախտ պահել պաշտոնների ժառանգականության սկզբունքը, որպեսզի դրանով իսկ պահպանեն պետության համատեղ կառավարման իրենց դիրքը։ Պետական կառավարման առանձին վարչությունները կոչվում էին «գործակալութիւն»-ներ։ Յուրաքանչյուրի գլուխ էր կանգնած գործակալը։ Արքունական այս պաշտոնը դիտվում էր որպես «պատիւ»[52]։ Այն ստացողը գլխին հատուկ ժապավեն-կապ էր կրում, որը նույնպես կոչվում էր «պատիւ», այստեղից էլ հայերեն «պատուական» և վրացերեն «պատիոսանի» բառերը, որ նշանակում են «պատիվ կրող», ներկա իմաստով՝ պատվավոր, ազնիվ։

Հիմնական գործակալություններն էին.

1. Հազարապետի գործակալությունը («հազարապետութիւն»)։ Այս գործակալությունը վարում էր հազարապետը («հազարապետ Հայոց»)[53]։ Այն երկրի տնտեսական-հարկային վարչությունն էր, որը միավորում էր իր մեջ նաև հասարակական աշխատանքների, այսինքն պետական պարհակների տնօրինությունը։ Հազարապետն ուներ պաշտոնյաների («համարակար»-հարկահավաքների) մի ամբողջ խումբ։ Վերջիններս գյուղական համայնքների՝ ավագների՝ դեհկանների միջոցով շինականներից գանձում էին պետական հարկերը։ Հազարապետին էին ենթարկվում՝ «շահապները», քաղաքների թագավորական տնտեսները (οἰκονόμος), որոնք պատասխանատու էին քաղաքային բնակիչներից ու արհեստավորներից հարկեր գանձելու համար։

Պետական պարհակների կատարման հսկողությունը հանձնարարված էր հազարապետին ենթակա հատուկ պաշտոնյային՝ «գործակալ»-ին[54], որը գյուղական համայնքներից անհրաժեշտ քանակությամբ բանվորական ուժ էր հավաքագրում համապետական նշանակություն ունեցող աշխատանքների՝ քաղաքների ամրությունների կառուցման, ջրանցքների անցկացման, անտառատնկումների և ճանապարհների, կամուրջների կառուցման համար և այլն։ Հազարապետի գործակալությունը Ամատունի նախարարական տոհմի ժառանգական արտոնությունն էր։

2. Սպարապետի գործակալությունը («Սպարապետութիւն») ռազմական վարչությունն էր։ Այս գործակալությունը գլխավորում էր Հայաստանի սպարապետը («սպարապետ Հայոց»)՝ Հայաստանի բոլոր զինված ուժերի (և հետևակ, և հեծելազոր) գերագույն հրամանատարը։ Միաժամանակ նրա տրամադրության տակ էր գտնվում թագավորական կամ ոստանիկ այրուձին («ոստանիկ այրուձի», «ազատ այրուձի»), իսկ պատերազմի ժամանակ նրան ենթակա էին

52 Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 53, 66, 74—75 և այլն։

53 Նույն տեղում, էջ 69—71։

54 Նույն տեղում, էջ 74 և հետ.։

նաև բոլոր նախարարների զինված ուժերը և աշխարհազորը[55]։ Սպարապետի պաշտոնը, որոշ բացառությամբ, հիմնականում վարում էին Մամիկոնյան տան ներկայացուցիչները։

Սպարապետի կողմից գլխավորվող «արքունի բանակը» սովորաբար տեղավորված էր լինում Մամիկոնյանների տոհմի ժառանգական հայրենիքում՝ Տայք նահանգում, Բերդացփոր գավառի «Բանակ արքունի» վայրում (այժմ՝ Փենեք գյուղ)։

Զորքի մեջ մեծ հեղինակություն վայելող Մամիկոնյանները հաճախ իրենց կամքն էին թելադրում թագավորին և, ի հակադրություն մարդպետների, դըտնում էին, որ Հայաստանի ինքնուրույնությունը կարելի էր պահպանել միայն Հռոմի հետ դաշնակցելու դեպքում։ Արշավանքների ժամանակ ռազմական ավարի մեծ բաժինը հասնում էր թագավորին, եթե նա մասնակցում էր ճակատամարտերին, ապա հայոց սպարապետին։

3. Մարդպետի գործակալությունը («մարդպետութիւն»)[56] թագավորական կալվածքների վարչությունն էր։ Հայր մարդպետի վրա էր դրված թագավորի գանձարանների ու կալվածքների հսկողությունը։ Նրա հսկողությանն էին ենթակա նաև պալատի կանանց բաժինը և արքայազները՝ Արշակունյաց սեպուհները և վերջիններիս դաստիարակությունը, ուստի կոչվում էին «Հայր Մարդպետ»։ Մարդպետը գլխավորում էր «մարդպետական» կամ «սեպուհական» այրուձին («մարդպետական գունդ», «սեպուհական գունդ», «Վասպուրական գունդ»)[57]։

4. Մաղխազի գործակալությունը («Մաղխազութիւն») արքունիքի և թագավորական պահակազորի վարչությունն էր։ Գործակալությունը գլխավորում էր Հայաստանի մաղխազը («մաղխազ Հայոց»)։ Նա թագավորի պալատական պահակազորի՝ թագավորական թիկնապահների ջոկատի հրամանատարն էր։ Այս պաշտոնը Խորխոռունյաց նախարարական տոհմի ժառանգական արտոնությունն էր. «Մաղխազ»-ը այդ ընտանիքի տոհմական տիտղոսն էր[58] և այդ տոհմը կոչվում էր նաև Մաղխազունիք։

5. Մեծ դատավորի գործակալությունը («գործակալութիւն մեծի դատաւորութեան») մինչև քրիստոնեության մուտքը գլխավորում էր քրմապետը, իսկ քրիստոնեության ընդունումից հետո այս պաշտոնը դառնում է Գրիգոր Լուսավորչի կաթողիկոսական տան ժառանգական արտոնությունը[59]։

Հայ եկեղեցու առաջնորդը՝ հայոց քահանայապետը՝ հայրապետը կամ կաթողիկոսը, ուներ օրենսդրական իշխանություն. հսկում էր ընդունված օրենքները, հատկապես ուշադրություն էր դարձնում ընտանեկան ու եկեղեցական իրավունքի պահպանմանը։

6. «Թագադիր և թագակապ ասպետութեան» գործակալությունը Բագրատունյաց նախարարական տան ժառանգական արտոնությունն էր։ Այս ընտանիքի ավագը, որ կրում էր «ասպետ» ժառանգական տիտղոսը, արքայա-

55 Նույն տեղում, էջ 73—76։ Ոստանիկներից կազմված է եղել այն հատուկ զորագունդը, որ կոչվել է «արքունի» (Նույն տեղում, էջ 99)։

56 Նույն տեղում, էջ 64—68 և հետ.։

57 Տե՛ս Թ. Ավդալբեգյան, Կողմն սեպհական գնդին Վասպուրական, «Հայագիտական հետազոտություններ», 1963, էջ 141—145։

58 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 68—69։

59 Նույն տեղում, էջ 76—79։

կան թագը դնելու և թագավորական «պատիվը» կապելու արտոնություն ուներ։ Նա ղեկավարում էր պալատական արարողությունները և հսկում սահմանված պալատական վարվելակարգի պահպանումը ինչպես և ընդունում այլ պետությունների դեսպաններին[60]։

7. Արտաշատի շահապը («Շահապն Արտաշատու») մայրաքաղաքը կառավարող քաղաքագլուխն էր, հելլենիստական դարաշրջանի մայրաքաղաքի թագավորական տնտեսը։ Այս պաշտոնը թագավորն իր հայեցողությամբ հանձնում էր պալատական ավագանու առավել նվիրված ներկայացուցիչներից մեկին։ Բացի այս գործակալություններից, արքունիքում կար թագավորական սենեկապետի («արքունի սենեկապետ») պաշտոնը։ Թագավորական սենեկապետը գլխավորում էր պետական դրասենյակը և դիվանը («արքունի դիւան»)։ Նա թագավորի անձնական քարտուղարն էր և գրի էր առնում նրա բանավոր հրամանները, որոնք այնուհետև գրանցվում էին հատուկ մատյաններում։ Այս պաշտոնը թագավորը հանձնարարում էր առավել նվիրված անձնավորության։ Սենեկապետն ուներ դպիրների ու կնքապահների մի ամբողջ խումբ։ Արքունի դիվանի և պետական հրովարտակների լեզուն, մինչև հայկական գրերի գյուտը, ինչպես բոլոր հելլենիստական արքունիքներում, մնում էր հունարենը։ Առավել կարևոր պետական հրովարտակները գրվում էին մագաղաթի վրա՝ դիվանում պահվելու համար և փորագրվում էին քարի վրա՝ հայտնի տեղում։

Այս պաշտոններից բացի գոյություն ուներ թագավորական պալատն սպասարկող մի ամբողջ անձնակազմ՝ արքայականախոռապետ («շահախոռապետ»), որսապետ, զինակիր, դրոշակակիր և այլն։

Պետական գերբն արծիվն էր, իսկ դրոշը նախկինի նման ծիրանագույն էր՝ վրան ոսկե արծիվ գործած։

Առավել կարևոր հարցերը քննվում էին ժողովրդական համաժողովներում («աշխարհաժողով»)[61], որոնք գալիս էին նախնադարյան համայնական կարգերի դարաշրջանից։ Հայոց ամանորի՝ Նավասարդի տոնակատարության օրը[62] Բագավանում կազմակերպվում էին նախարարական ավագանու և «դեհկանութեան» գյուղական ավագների ավանդական համաժողովներ։ Զինված ժողովրդի այս հավաքները, որ գումարվում էին համաժողովրդական գործերը վճռելու համար, աստիճանաբար վեր են ածվում բարձր խավերի խորհրդակցական օրգանի, որին ստորին խավերի ներկայացուցիչները ներկա էին լինում սոսկ ավանդաբար։ IV դ. երկրորդ կեսից սկսած աշխարհաժողովի պարտականություններն անցնում էին «ժողովին», որի գումարման նախաձեռնողը՝ հայոց եկեղեցու առաջնորդ կաթողիկոսը, օգտվելով օրենսդրի իրավունքից («պատիւ մեծի դատաւորութեան»)[63] այդ ժողովներին եկեղեցական բնույթ էր տալիս և այնտեղ մշակվող օրենքները դառնում էին եկեղեցական կանոններ։

Մշտական բանակ, որպես այդպիսին, գոյություն չուներ։ Հայկական բանակն ուներ ուրույն կառուցվածք, հավաքագրվում էր ըստ անհրաժեշտության,

60 Նույն տեղում, էջ 61—63։

61 Նույն տեղում, էջ 79։

62 Աշխարհաժողովը հրավիրվում էր ամռանը՝ Նավասարդի տոնակատարության օրը, որ անշարժ տոմարով ընկնում էր օգոստոսի 11-ին։

63 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 282։

բայց և՛ թագավորը և՛ նախարարները պետք է պահեին որոշակի թվով հեծելազոր, որը միավորվելով որպես միասնական հայ այրուձի, պատկառելի ուժ էր ներկայացնում և հին աշխարհում հռչակված էր մարտական իր բարձր ունակություններով։ Թագավորն, իբրև առաջինը նախարարների մեջ, պահում էր ազատներից կազմված հեծելազոր («ազատ այրուձի»), որը ղեկավարում էր Հայոց սպարապետը։ Այն կազմում էր «կայենական զորքը» և տեղադրված էր երկրի կարևոր ստրատեգիական կետերում, առաջին հերթին՝ թագավորական ոստանում («Ոստան Հայոց») և վերը հիշված «Բանակ արքունի» կոչված վայրում։ Սպարապետը, մաղխազը և մարդպետը արքունիքին կից ունեին հատուկ հեծյալ ջոկատներ, որոնց պարտականությունն արքունի ոստանի պաշտպանությունն էր, ուստի կոչվում էին «ոստանիկ այրուձի», («սպասաւորք դրանն արքունի, որ է ոստանդ»)։ Մաղխազի այրուձին թագավորի թիկնապահ զորքն էր («թիկնապահք արքունի»), բաղկացած ընտրյալ նետաձիգներից, որոնք մշտապես գանվում էին պալատում՝ թագավորի անձը պահպանելու համար։

Հայոց բանակի հիմնական մասը կազմված էր նախարարական աշխարհազորայիններից, որոնք պարտավոր էին ներկայանալ արքունիք առաջին իսկ անհրաժեշտության դեպքում։ Յուրաքանչյուր նախարարական տուն պարտավոր էր հետևակից բացի տալ որոշ քանակությամբ հեծելազոր։ «Զորանամակ»-ում ցույց էր տրված յուրաքանչյուր նախարարական տան ներկայացվելիք հեծելազորի քանակը։ Նախարարական հեծելազորի ընդհանուր թիվն ըստ «Զորանամակի» հասնում էր 84 հազարի։

Ըստ իրենց ունեցած զորքի քանակի ավագ նախարարները բաժանվում էին բյուրավորների («բիւրաւորք») և հազարավորների («հազարաւորք»), այսինքն՝ նախարարներ, որոնք ունեն առնվազն 10.000 և 1.000 հեծյալներ։ Վերջիններս, ըստ «Զորանամակի», տասնչորս ընտանիք էին։ Նրանցից ցած կանգնած էին հարյուրավորները («հարեւրաւորք»), հիսնավորները («հիսնաւորք») և տասնավորները («դասնաւորք»), որոնց գլխավորները կոչվում էին «դասապետք»։

«Զորանամակը», ցույց տրված զինվորական ստորաբաժանումներով, գալիս է նախաֆեոդալական շրջանից, երբ ներկայացվող զինվորական աշխարհազորի քանակի համաձայն նրանց զորահրամանատարները՝ ստրատեգները, դասակարգվում էին վերը նշված տասնորդական սիստեմով[64]։

Երկրի տնտեսական, հարկային և ֆինանսական գործունեության կարգավորման համար կային կադաստրային հատուկ գրքեր՝ «աշխարհագիր մատեանք», որ պահվում էին հայոց հազարապետի մոտ։ Բնամթերային ու մասամբ էլ դրամական, իսկ հիմնականում՝ հողային հարկերից էր գոյանում պետական բյուջեն։ Քաղաքում և գյուղում շահապների ու դեհկանների ստացած բնամթերք հարկերը տեղավորվում էին պետական պահեստները, բանակի և արքունիքի կարիքների համար։ Պատերազմները նույնպես իրենց հետքն էին թողնում պետական գանձարանի վրա։

Գանձարանի միջոցները ծախսվում էին հիմնականում դրամական և բնամթերք նպաստ՝ «ռոճիկ» վճարելու, այսինքն՝ թագավորական այրուձին և արքունիքը պահելու վրա։ Թագավորի ընտանիքն ու շքախումբն իրենց փարթամությամբ խոշոր միջոցներ էին կլանում։ Պալատին կից արքայական գան-

---

64 Н. Адонц, նշվ. աշխ., էջ 236—297։

*ծարանում պահվում էին նախարարներից ստացված թանկարժեք առարկաներ, դրամներ, թանկագին քարեր, շքեղ հագուստներ և այլ հազվագյուտ իրեր։*

*Ժառանգական խոշոր հողատիրության՝ «հայրենիքների» աճը, անխուսափելիորեն հանգեցնում էր կենտրոնական-թագավորական իշխանության թուլացման, որն ավելի ու ավելի էր ամփոփվում ոստանի սահմաններում։*

*Արշակունիների օրոք, երկրի ֆեոդալականացման խորացմանը զուգահեռ ձևավորվում էր Մեծ Հայքի վարչական բաժանումը, որը բխելով նաև շրջանների գրաված աշխարհագրական դիրքից, երկար ժամանակ կայուն մնաց։ Այս ժամանակաշրջանի Հայկական պետության պետական սահմանները և ներքին վարչաքաղաքական բաժանումը ճշտիվ արտացոլված են Անանիա Շիրակացու «Աշխարհացույցում»*[65]*։*

*298 թ. դաշնագրով վերստին ճանաչվեցին Հայաստանի այն սահմանները, որոնք որոշված էին 63 թ. Հռանդեայի դաշնագրով։ Սակայն Հռոմեական կայսրությունը, որը որպես հաղթող կողմ իր պայմաններն էր թելադրում պարտված Սասանյան Իրանին, 298 թ. Մծբինի 40-ամյա դաշնագրի համաձայն, իրեն իրավունք էր վերապահում ռազմական կայազորներ ունենալ Հայաստանի հարավային շրջաններում։ Դրանք էին՝ Անգեղտունը, Ծոփքը, Աղձնիքը, Կորդուքը, Մոկքը և Տիգրիսից հարավ՝ Հայկական Միջագետքում գտնըվող Ռեհիմենե ու Ծավդեք գավառները։ Դրանց կառավարիչները՝ նախարարները և բդեշխները որպես սատրապներ ենթարկվում էին Հռոմեական կայսրությանը, բայց իրականում շարունակում էին իրենց «բնակ տէրը»՝ սյուզերենը համարել հայ Արշակունիներին։*

*Այս ժամանակաշրջանում ամբողջ հայկական պետությունը, որի տարածքը 311 հազար քառ. կմ էր՝ մոտ չորս միլիոն ազգաբնակչությամբ, բաղկացած էր երկու մասից՝ Կենտրոնական Հայաստան՝ «Միջնաշխարհը» և ծայրամասային շրջանները («երկիրք եզերականք»), որոնք կառավարում էին կիսանկախ ֆեոդալականացող տիրակալները՝ բդեշխներն ու տոհմիկ իշխանները։*

*Միջնաշխարհը՝ երբեմնի «արքունի երկիրը» IV դարում բաժանված էր նախարարների, եկեղեցու և Արշակունյաց կառավարող հարստության միջև։ Դրանք, ամենից առաջ, այն հողերն էին, որոնք դարձել էին հայկական արքունիքի ազնվազարմ գործակալների ժառանգական, օտարման չենթարկվող սեփականությունը։ Մամիկոնյանների, Բագրատունիների, Ամատունիների, Խոռխոռունիների տիրույթներն ընկած էին համապատասխանաբար Տայքում, Տարոնում, Սպերում, Վասպուրականի արևելքում, Նոր-Շիրական բդեշխության հյուսիսում։*

*Միջնաշխարհում կային նախարարական տներին պատկանող այլ խոշոր տիրույթներ։ Դրանցից հարկ է նշել հետևյալները. Սյունիքում՝ Սյունյաց նախարարներն էին տիրում*[66]*, Շիրակում և Արշարունիքում՝ Կամսարականները, Աղբակ գավառում՝ Մեծ Ջավի հովտում, հարակից գավառներով՝ Արծրունիները, Տոսպ և Ռշտունիք գավառներում՝ Ռշտունիները։ Ավելի մանր տիրակալներ էին Ապահունի, Գնթունի, Մոկքի, Անձևացի, Անձիտ, Գնունի, Սահառունի և այլ*

---

65 *Տե՛ս* Ս. Տ. Երեմյան, *Հայաստանն ըստ «Աշխարհացոյցի», Երևան, 1963 (տե՛ս գրքին կցված քարտեզը՝ մասշտաբ՝ 1 ։ 1.250 000).*

66 *Նույն տեղում, էջ 51—52, 55, 60։*

նախարարական տները[67]։ Միջնաշխարհի տարածության զգալի մասը, մոտ 15 գավառ, IV դ. կեսերին Գրիգոր Լուսավորիչի տան ժառանգական սեփականությունն էր։ Այդ տան ժառանգական արտոնություններն էին՝ «Հայաստանեայց առաքելական եկեղեցու» հայրապետությունը և օրենսդրական իրավասությունը։ Խոսրով Բ Կոտակի (332—338) օրոք բնաջնջվեցին Բզնունի, Մանավազյան և Որդունի նախարարական տները, իսկ նրանց տիրույթները՝ Բզնունիք, Հարք և Բասեան գավառները շնորհվեցին Աղբիանոս և Եվթաղիոս եպիսկոպոսներին և դարձան նրանց սերունդների ժառանգական սեփականությունը։

Միջնաշխարհի մնացած մասը պատկանում էր կառավարող հարստությանը, կազմելով արքունի ոստանը՝ «Երկիր Արշակունեացը»։ IV դ. կեսերին թագավորական ոստանը շատ չէր գերազանցում աշխարհիկ ու հոգևոր խոշոր կալվածատերերի հողերին և հայոց արքան ինքն էլ փաստորեն մի նախարար էր, միայն թե՝ խոշորագույնը։ Արշակունիների մոտ ավելի վաղ, քան մյուս նախարարական տներում, երևան եկավ սեպուհական իրավունքը։ Ժամանակի ընթացքում թագավորական ընտանիքն այնքան բազմամարդ դարձավ, որ անհրաժեշտ եղավ Արշակունի սեպուհներին հողեր տրամադրել Առբերանի, Աղիովիտ և Հաշտեանք գավառներում։ Այս հողերի վրա ժամանակի ընթացքում Արշակունյաց շառավիղներից ձևավորվեցին առանձին նախարարություններ, որոնք կոչվում էին «ոստանիկներ»[68], թեև «ոստանիկ» կոչվում էին նաև արքայական ոստանի բնակիչները։

Այն տարածքը, որ պատկանում էր Հայոց թագավորին, կոչվում էր «ոստան»[69], Նրա կենտրոնն էր Արտաշատ մայրաքաղաքի գավառը, որ կոչվում էր «Ոստան Հայոց»։ Վերջինս կազմում էր առանձին նահանգ՝ Այրարատը, Արաքսի հովտում, որ հնուց ի վեր եղել է Հայաստանի տնտեսական, քաղաքական ու մշակութային կյանքի կենտրոնը։ Այրարատ նահանգն ընդգրկում էր ողջ Արարատյան դաշտը, մի տարածություն, որ պարփակված էր Արագած, Գեղամա ու Արարատ լեռնազագաթների, Ախուրյան ու Արփա գետերի միջև։ Բայց անգամ այս, համեմատաբար փոքր, տարածությունից ևս թագավորը հողեր էր շնորհել մի քանի մանր նախարարական ընտանիքների։ Արտաշատը ինչպես Տրդատ Գ Մեծի, այնպես էլ նրա հաջորդների օրոք ևս պաշտոնական մայրաքաղաքն էր, սակայն նստավայրը Վաղարշապատն էր, որն այդ շրջանում ընդարձակվել ու կառուցապատվել էր[70]։

Արշակունիներին էին ենթարկվում Միջնաշխարհը եզերող («Երկիրք եզերականք») ծայրամասային նահանգների չորս տիրակալները՝ բդեշխ տիտղոսով՝ Աղձնիքի, Կորդուքի, Նոր-Շիրականի և Գուգարքի։ Աղձնիք նահանգը (անտիկ հեղինակների՝ Arzanene) շնորհիվ իր աշխարհագրական դիրքի փակում էր Հայկական Տավրոսի լեռնանցքներով դեպի Միջնաշխարհ տանող մուտքը, հատկապես («Տաւրոյ բերան», այժմ՝ Բիթլիսի կամ Ռահվա լեռնանցք) բնությունից ստեղծված Զորապահակ դուռը՝ ռազմաստրատեգիական առաջադիր դեր էր կատարում։ Երկրի պաշտպանության առումով Աղձնիքի ունեցած այս առանձնահատուկ նշանակությամբ էր պայմանավորված դրա

67 Նույն տեղում, էջ 36, 62, 71, 79։

68 *А. Г. Периханян,* Древнеармянские востаники, ВДИ, 1956, № 2.

69 Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 56—58։

70 *Я. А. Манандян,* О торговле и городах Армении, стр. 114—118.

տիրակալի խաղացած դերը, որի շնորհիվ նա առաջին տեղն էր գրավում երկրի բդեշխների շարքում և կրում էր «իշխանն Աղձնեաց», «բդեշխն մեծ» տիտղոսը։ Նրա նստավայրը Արզան քաղաքն էր։ Այն ոչ միայն քաղաքական, այլև առևտրական կենտրոն էր և կոչվում էր նաև Շուկառաբա (այսինքն՝ «Մեծ շուկա» կամ «Գլխավոր շուկա»)։ Տիգրանակերտ կամ Նփրկերտ (այժմ՝ Ֆարկին) քաղաքի գավառը, որ մի ժամանակ լինելով Աղձնիքի կազմի մեջ ընդգրկում էր այդ «արքունի քաղաքի» քաղաքային տարածքը, այժմ արդեն կազմում էր առանձին նախարարություն՝ Անգեղտան սատրապությունը։ Այս նորակազմ սատրապությունը, որն ըստ երևույթին, Σοφανήγη անվամբ էր հայտնի, գլխավորում էր Մարդպետական սան իշխաններից մեկը։ Անգեղ ամրոցը արքունի գանձարաններից (γαζοφυλακίον) մեկն էր։ Այստեղ գտնվող Մարդպետական տան ներկայացուցիչը պիտի հսկեր հարևան Աղձնիքի տիրակալի քաղաքական գործունեությունը։ Աղձնիքի հիմնական ռազմական ուժը մարտական աշխարհազորն էր, կազմված Սասունի խիզախ լեռնականներից։

Կորդուքը (անտիկ հեղինակների մոտ՝ Gordyene, Corduene) պետք է պաշտպաներ Հայաստանի թիկունքն Իրանի գերիշխանության ներքո գտնվող ասորական Ադիաբենեի (Հեդայաբ) կողմից։ Կենտրոնն էր Փինիկ բերդաքաղաքը՝ Տիգրիսի ափին։ Կորդուքի նահանգում էր ապրում տմորեաց քաջ և ռազմատենչ ցեղը, որը և համալրում էր Կորդվաց բդեշխի ռազմական ուժերի հիմնական կազմը։ Հայտնի է Տմորիք գավառի Ալկի (կամ Շատ-Ալկի) ամուր բերդը (այժմ՝ Էլք), որից արևելք գտնվում էր հայկական Միջնաշխարհը պաշտպանող Կրերեաց լեռնանցքը, որը դեռևս Ուրարտուի ժամանակաշրջանում հայտնի էր «Կիրրուրի» անունով։

Նոր-Շիրականի բդեշխությունը բաղկացած էր երկու մասից՝ Շիրական (հնագույն ձևն է Շատիրական) և Մարաց ամուր աշխարհ (ներկա Կելիշինի և Ռևանդուզի շրջանները)։ Նոր-Շիրականը պաշտպանում էր Հայաստանի մատույցները Ատրպատականի կողմից՝ Արասխ կամ Երասխ սահմանային գետով (այժմ՝ Գետառ-սու վտակ), որը հարավարևմտյան կողմից թափվում է Կապուտան (Ուրմիա) լիճը։ Արասխ գետի ակունքները Զարասպ լեռնագագաթի արևելյան փեշերին են, որի մոտերքը գտնվում էր հույժ կարևոր նշանակություն ունեցող Զարասպ (այժմ՝ Կելիշին) լեռնանցքը։ Դրանից հարավ էր գտնվում մի այլ շատ կարևոր ռազմաստրատեգիական կետ՝ Զինթա ամրոցը (այժմ՝ Զինվի-շեյխ վայրը), որը վեր էր խոյանում մի այլ լեռնանցքի բարձրադիր կետում։ Կելիշինի լեռնանցքով էր անցնում Հյուսիսային Միջագետքից դեպի Կասպից ծովի ափերը տանող ճանապարհը։

Նոր-Շիրական բդեշխության քաղաքական-վարչական կենտրոնն էր Զարեհավան գավառը՝ համանուն քաղաքով։ Զարեհավան քաղաքում պիտի գտնըվեր Զարեհավանյան նախարարական տոհմից սերող բդեշխի նստավայրը։ Բդեշխության ռազմական կենտրոնը գտնվում էր Մարաց ամուր աշխարհի ծայր հարավում, Մահկերտ-տուն գավառում՝ Մահկերտ կենտրոնով, որ առաջ էր եկել հինավուրց Մուսասիր քաղաքի տեղում։ Մահկերտ-տուն գավառը, որը տեղադրվում է այժմյան Ռևանդուզի շրջանում, ուներ ռազմաստրատեգիական կարևոր նշանակություն՝ Մեծ Հայքն այս կողմերից պաշտպանելու առումով։

Մեծ Հայքի թագավորության չորրորդ բդեշխությունն էր Գուգարք նահանգը (անտիկ հեղինակների մոտ՝ Gogarene)՝ երկրի ծայրագույն հյուսիսում։

Այս բդեշխության հիմնական ֆունկցիան էր՝ պաշտպանել Մեծ Հայքի հյուսիսային սահմանները Հյուսիսային Կովկասի վաչկատուն ցեղերի ու լեռնցիների ներխուժումից։ Գուգարք նահանգը տարածվում էր Ճորոխ գետից (արևմուտքում) մինչև Կուր գետը (արևելքում), այնտեղ, որտեղ այս գետում թափվող Քցիա վտակի ափին գտնվում էր Հունարակերտ կամ Խունան ամրոցը։ Բդեշխների տան ոստանը՝ «Բդեշխականը» (վրաց. «Սապիտիաշխո») բաղկացած էր չորս գետահովիտներից, որոնք կազմում էին՝ Կանգարք, Քուիշափոր, Բողնոփոր և Ծորոփոր գավառները։ Բդեշխների կառավարող տան նստավայրը՝ Ցուրտավ (կոչվում էր նաև Գաչենք) քաղաքը գտնվում էր Գաչենադետի (կամ Մաշավերա) և Ցուրտագետի (հետագայում՝ Ջուրտակետի) միախառնման վայրում։ Այստեղ էր նստում Գուգարաց բդեշխը, որն, ի տարբերություն Աղձնիքի «Մեծ բդեաշխ»-ի համարվում էր «Միւս բդեաշխ»։ Գուգարքի բդեշխը կրում էր «Աշուշա» տոհմանունը[71]։

Գուգարքը հյուսիսից եզերված էր Թռեղքի (Թրիալեթի) լեռներով, որոնք բնական պատնեշ էին հյուսիսից։ Թռեղք գավառում (Պլինիուսի՝ regio Thriare, վրաց. Թրիալեթի) էր գտնվում Կղեն-Կարնի (վրաց. «Վիմադուրք») լեռնանցքը, շատ կարևոր պաշտպանական կետ, որի նշանակության մասին հատկապես խոսում են միջնադարյան վրացական աղբյուրները։ Գուգարքի հյուսիսային գավառներում հայերն անմիջականորեն շփվում էին վրացիների, Վիրքի-Քարթլիի թագավորության հիմնական ազգաբնակչության հետ։

Մեծ Հայքի թագավորության ազգաբնակչությունը միատարր էր՝ մոնոէթնիկ և այն հայ ժողովրդի պետությունն էր, սակայն սահմանամերձ ծայրամասային գավառներում դեռևս գոյություն ունեին հետամնաց շրջաններ, որոնք գտնվում էին նահապետական հարաբերությունների քայքայման և ռազմական դեմոկրատիային անցնելու փուլում, ուր առաջատար դերը պատկանում էր ցեղային առաջնորդին՝ տոհմապետին։ Այս հայկական տոհմացեղային միությունները քայքայման շրջան էին ապրում։ Ցեղային միությունների (մոկացիների, կարդուխների, սասունցիների, Գարդմանի ու Արցախի բնակիչները) առաջնորդներն ավանդական տոհմական արտոնություններն օրինականացնելու համար դառնում էին հայ Արշակունիների «հավատարիմ ծառաներ» և նրանց օգնությամբ օրինականացնում իրենց իշխանությունը ցեղակիցների վրա։

Հատկապես մեծ էր Բաղասական կամ «Կասպերի երկիր» (Կազբք, անտիկ աղբյուրներում՝ Caspianae) տիրույթը՝ Փայտակարան կենտրոնով։ Այս երկիրը մինչև 363 թ. գտնվում էր Մեծ Հայքի պետության կազմում։ Բաղասականի տերերը պատկանում էին մասքութների ցեղին և իրենց համարում էին Արշակունիներ։ Այս երկրի տիրակալը՝ «Կասպեից տէրը» Հայոց թագավորին տրամադրում էր 3000 հեծյալ։

## 4. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔՆԵՐԸ, ԱՌԵՎՏՈՒՐՆ ՈՒ ԱՐՀԵՍՏՆԵՐԸ III—IV ԴԴ.

298 թ. Մծբինի հաշտության դաշնագիրը կնքելուց հետո, միջազգային քարավանային առևտուրը վերստին սկսում էր աշխուժանալ։ Այս շրջանում ևս Արտաշատը դառնում է մեկն այն վայրերից, ուր ապրանքափոխանակությունը պետք է տեղի ունենար Հռոմեական կայսրության և Սասանյան պետության վաճառականների միջև։ Արտաշատը Մծբինի և Կալլինիկոսի (Ռակկա) հետ

[71] თამარ ჯამსახურდია, პიტიაშხის ინსტიტუტის საკითხისათვის.

միասին ճանաչված էր որպես չեզոք վայր, ուր հանդիպում էին երկու տերությունների կարավանները և ապրանքափոխանակություն կատարում։ Այստեղ կար հատուկ մաքսատուն, որտեղ հարկ («բաժ»)[72] էր գանձվում վաճառվող ապրանքներից, հատկապես չինական մետաքսյա գործվածքեղենից։ Առևտրական հարկերը հայկական պետության եկամուտների զգալի մասն էին կազմում։

Քաղաքային կյանքում կարևոր դեր էր խաղում «շուկան», որը գտնվում էր «շահաստանում» (քաղաքային պարսպից ներս)։ Այստեղ էին գտնվում արհեստավորների «գործատները», խանութները, որտեղ պատրաստվում և վաճառվում էին արհեստագործական զանազան իրեր և պերճանքի առարկաներ։

Արտաշատում կային բնակչության կողմից որպես բնատուրք վճարվող ցորենի և այլ մթերքների պետական շտեմարաններ։ Քաղաքի կարգ ու կանոնը պահպանվում էր թագավորական տնտեսի՝ «շահապի» և նրա պաշտոնյաների կողմից, որոնք գտնվում էին քաղաքի կենտրոնում վեր խոյացող միջնաբերդում՝ դղյակում։

Քաղաքի բնակչության զգալի թիվն էին կազմում առևտրականներն ու արհեստավորները։ Այս շրջանում դեռ մնում էին հելլենիստական դարաշրջանի «թագավորական մենաշնորհները»։ Արհեստանոց-գործատների մի մասը քաղաքներում սպասարկում էին արքունիքին։ Առաջին հերթին պետք է հիշատակել Արտաշատի համաշխարհային հռչակ վայելող ներկարանները, որոնք որդան կարմիր ներկ էին արտադրում և ներկում ընտիր գործվածքներ։ Զարգացած էին մետաղագործությունը, հատկապես զինագործությունը տեղական հանքային հումքի՝ երկաթի, պղնձի, արճճի, արծաթի ու ոսկու հարուստ բազայի վրա, ինչպես ջուլհակությունը, կավագործությունը և այլ արհեստներ։ Պետական ձեռնարկություններում ազատ արհեստագործների հետ կողք-կողքի աշխատում էին ստրուկ-արհեստավորները[73]։

Քաղաքների բնակչությունը բավականին խայտաբղետ ու բազմալեզու էր։ Այստեղ, բացի հիմնական հայ բնակչությունից, կային կրակապաշտ պարսիկներ կամ «մոգաց ազգը», «խուժիկները» (արամեացիներ և քրիստոնյա պարսիկներ հեռավոր Խուժաստանից), ասորիներ և հրեաներ։ Քաղաքացիներից գերազանցապես հրեաները, ասորիներն ու պարսիկներն ապրում էին առանձին թաղամաս «գաղութներում», որոնց գլխավորները կոչվում էին «ռայիս» կամ «ռես»։ Վերջինս պատասխանատու էր Հայաստանի հազարապետի առջև[74]։

Հարկերի մուծման և պետական պարհակների կատարման համար «գաղութի» անդամները կապված էին միմյանց հետ համապարտ երաշխավորությամբ ու պատասխանատվությամբ։ Մուծումները կատարվում էին «ռայիսի» կամ «ռեսի» միջոցով, որը քաղաքում կատարում էր նույն դերը, ինչ որ «դեհկանը»՝ գյուղում։ Քաղաքների և դրանց գավառների միջև տնտեսական կապը սովորաբար իրականացվում էր գյուղացիների, հաճախ հայ և երբեմն էլ ասորի ու հրեա առևտրականների միջոցով, որոնք խոշոր հողատերերից գնում էին նրանց արտադրանքը և բերում քաղաքային շուկա։

Օտարազգի վաճառականներն իրավունք չունեին բնակություն հաստատե-

---

72 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 205։

73 *С. Т. Еремян,* Развитие городов и городской жизни в древней Армении, ВДИ, 1953, № 3, стр. 11—31.

74 Նույն տեղում։

լու Արտաշատի շահաստանում. Նրանք ապրում էին քաղաքի արվարձաններում՝ «ավաններում», «այգեստաններում», որոնք թաղված էին խաղողի ու պտղատու այգիների մեջ։ Այնտեղ էին գտնվում նաև պանդուխտանոցները։

Նեստորական առևտրականները («խուժիկ») իրենց քարավաններով գալիս էին Չինաստանից, Հնդկաստանից ու Տապրոբանայից (Ցեյլոն) և Արտաշատ էին բերում չինական մետաքս, հնդկական համեմունքներ, մարգարիտ, անգին քարեր ու պերճանքի առարկաներ[75]։ Դեռևս կային հատուկ վաճառականներ, որոնք («վաճառականք մարդագինք») զբաղվում էին ստրկավաճառությամբ։

Զարգացած միջազգային առևտուրն իր պայմաններն էր թելադրում փոխանակություն կատարող կողմերին։ Արտաշատը միջազգային առևտրի կենտրոնից էր, ուստի և այստեղ շրջանառության մեջ կային և Սասանյան Իրանի, և Հռոմեական կայսրության դրամներ, ընդ որում երկու պետությունների դրամական սիստեմները կարգավորված էին և դյուրացնում էին միջազգային փոխանակությունը։

Մայրաքաղաքում հայ ազնվականությունն ապրում էր իր պալատներում, քաղաքի այն մասում, ուր գտնվում էր շքեղության մեջ թաղված թագավորական պալատը։ Քաղաքային ստորին խավը բաղկացած էր «ռամիկներից», որոնք զբաղվում էին գերազանցապես երկրագործությամբ՝ այգեգործությամբ ու հացահատիկի մշակությամբ՝ քաղաքը շրջապատող «ավաններում»։ Շրջակա գյուղերից շուկա էին գալիս գյուղացիները, գլխավորապես ազատ հողագործները։

Արտաշատում վաղուց ի վեր գոյություն ուներ հելլենիստական թատրոն, ուր հատկապես ներկայացվում էին «հեթանոսական» դրամաներ, որոնք հարմարեցվում էին նախաքրիստոնեական տոներին։ Արտաշատից դուրս, այլ քաղաքներում կազմակերպվում էին թատերականացված խաղեր, որոնք գրավում էին ամեն տեսակ տեսարանների ու թափորների սիրահար մեծ բազմություն։ Եկեղեցին անզոր էր պայքարելու «հեթանոսության գայթակղության» դեմ։

Նշանավոր կենտրոն էր Վաղարշապատ քաղաքը, որը արքայի փաստական աթոռանիստն էր։ Այդ ժամանակ Արտաշատի շրջակայքում առաջացել էին ընդարձակ ճահիճներ, որոնք այդ վայրը դարձրել էին առողջության համար աննպաստ։

Հնագիտական ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հնագույն Վաղարշապատը գտնվել է այժմյան Վաղարշապատի (էջմիածին) տեղում։ Քաղաքն ունեցել է դարաշրջանին բնորոշ տեղադրություն։ Քաղաքում գերիշխող դիրք է գրավել միջնաբերդը («բերդ»)՝ ներկայիս էջմիածնի Մայր տաճարի և կաթողիկոսական աթոռանիստի տեղում։ էջմիածնի տաճարից ոչ հեռու գտնված լատիներեն երկու արձանագրությունները, որոնք թվագրվում են 175 և 185 թթ., տեղեկացնում են, որ այդ ժամանակ Վաղարշապատում ամրություններ են կառուցել XII «Ֆուլմինատա» (Fulminata) և XV «Ապոլլինարյան» (Apollinaris) լեգեոնների հռոմեական երկու ջոկատները[76]։

Վաղարշապատի միջնաբերդի ներսում վեր էր խոյանում թագավորական պալատը («ապարանք արքունի», «ապարանք թագաւորին»), որտեղ արքայա-

---

[75] *Я. А. Манандян,* О торговле и городах древней Армении, стр. 95.

[76] *М. И. Ростовцев,* Новая греческая надпись из Эчмиадзина, «Христианский Восток», т. III, вып. 3, СПб., 1915, стр. 245—246, *К. В. Тревер,* Очерки по истории культуры древней Армении, М.—Л., 1953, стр. 246—265.

կան սենյակներն էին («սեննակք արքունի»), իսկ Թագավորական պալատից սկսվում էր «ներքին փողոցը» («փողոցսն ներքնագոյն»)։ Մոտավորապես 303 թ. պալատի առաջ կառուցվեց Մայր տաճարի (Կաթուղիկէ) շենքը, որը սկզբնապես եռանավ բազիլիկա է եղել և IV դարից հետո քանիցս վերակառուցվել է, վերափոխվելով կենտրոնագմբեթ կառուցվածքի։ Միջնաբերդի շուրջը տարածվում էր բուն քաղաքը («Քաղաքամէջ»)՝ շրջապատված պարիսպներով, ջրով լցվող խրամատով («պարկին փոս») և հողապատնեշով։ Քաղաքը, հավանաբար, ունեցել է չորս դարպաս, աշխարհի չորս կողմերին համապատասխան. դրանցից հիշատակվում են Արևելյան դարպասը («Արեգ դուռն») և Հարավային դարպասը («Դուռն հարաւոյ»)։ Արևելյան դարպասից ելնող ճանապարհը Վաղարշապատը կապում էր մյուս սթոռանիստի՝ Արտաշատի հետ և կոչվում էր «Արտաշատի պողոտայ»։ Այստեղ, քաղաքի պատնեշից դուրս (Հռիփսիմեի վանքի շրջակայքում) գտնվում էր ընդարձակ գերեզմանատունը, որը մասամբ պեղված, ուսումնասիրված է։

Պեղված նյութերի թվում գերակշռում են տեղական արհեստագործական արտադրանքի առարկաները, հանդիպում են ուշ անտիկ շրջանի III—IV դդ. Ասորիքից և հելլենիստական Փոքր Ասիայից ներմուծված, ինչպես և վաղքրիստոնեական առարկաներ։ Վաղարշապատը քրիստոնեական ուսմունքի տարածման հնագույն կենտրոններից էր[77]։

Հայաստանի մյուս քաղաքները տեղադրված էին հիմնականում միջազգային քարավանային մեծ ճանապարհների վրա։ Գանձակ (Ատրպատականի մայրաքաղաքը)—Արտաշատ-Սատաղ մեծ և բարեկարգ ճանապարհի վրա էին գտնվում Նախճավան, Երվանդաշատ, Զարեհավան, Կարին առևտրական քաղաքները։ Արտաշատ-Տիգրանակերտ մեծ ճանապարհի («արքայական ճանապարհ») վրա էր Զարիշատը (Աղիովիտ գավառում)։ Տիգրանակերտում էին խաչաձևվում Միջագետքից և Փոքր Ասիայից եկող ճանապարհները։ Վերջապես, առևտրի ու արհեստագործության հնագույն կենտրոնն էր Վան քաղաքը՝ Վանա լճի ափին։ Այն ուրարտական ժամանակաշրջանի Տուշպան էր (անտիկ հեղինակների՝ Thospia-ն), որը Խորենացին V դարում անվանում է «Վան-Տոսպայ»։

Այս բոլոր քաղաքները երկրի տարբեր շրջանների տնտեսական կենտրոններն էին, որոնք իրենց հերթին կապված էին Արտաշատի և Վաղարշապատի հետ։ Արտաշատի միջոցով այդ քաղաքները մասնակից էին դառնում միջազգային ապրանքափոխանակությանը։

Արքունական մենաշնորհ էր համարվում Վանա լճի (Բզնունեաց ծով) տառեխ ձուկը, որն աղ դրած արտահանվում էր երկրից երկիր։ Արքունի ձկնորսարանները («ձկնատեանք արքունի»)[78] գտնվում էին Վանա լճի հյուսիս-արևելյան ծայրամասում՝ Առեստ ավանում։

Արտաշատում և այլ մեծ քաղաքներում կային արհեստագործական միություններ, որոնք միաժամանակ կրոնական համայնքներ էին և ղեկավարվում էին սեփական իրավասությամբ, տեղական իրավունքներով ու տեղական սովորություններով։ Դրանք առևտրական հրեաների, մանիքեացի ասորիների, քրիստոնյա պարսիկների կամ «մոգերի», այսինքն՝ կրակապաշտ պարսիկների, կրոնական համայնքներն էին իրենց տաճարներով ու հասարակական այլ հիմնարկ-

---

77 Աշխարբեկ Քալանթար, Հին Վաղարշապատի պեղումները, Երևան, 1935։
78 Փավստոս Բուզանդ, Պատմութիւն Հայոց, Գ դպրութիւն, գլուխ Ը։

ներով։ Վաճառականների ու արհեստավորների միությունները պարտավոր էին համապարտ երաշխավորությամբ հարկեր վճարել և պետության օգտին պարհակներ կատարել։

Հայ ֆեոդալների ամրոցներում ու գյուղերում նույնպես կային արհեստագործ գյուղացիներ ու մասնագետ-արհեստավորներ, որոնք զբաղվում էին մետաղի և քարի ու փայտի մշակությամբ։ Դարբինն ու քարագործը, ինչպես և ատաղձագործը, ֆեոդալական կալվածքը սպասարկող ամենից ավելի կարևոր մասնագետներն էին։ Դարբինը պատրաստում էր տնային գործածության համար անհրաժեշտ իրեր, գյուղատնտեսական գործիքներ և այլ զենքեր՝ նախարարական հեծելազորի համար։ Մետաղագործությունից ոչ պակաս կարևոր նշանակություն ունեին շինարարական արհեստները։ Բազմաքանակ քարագործ որմնադիրները՝ «գաղատոսները», հյուսները, պալատների, տաճարների, ամրոցների ու եկեղեցիների շինարարները, սպասարկում էին գերազանցապես տիրող դասակարգին և եկեղեցու պահանջները։ Նրանց վարպետության և մշակված ճաշակի վկայությունն են այդ դարաշրջանից մնացած ճարտարապետական հուշարձանները։

Այս դարաշրջանում Հայաստանի առևտրական ճանապարհները մանրամասնորեն հայտնի են հռոմեական աշխարհագրական քարտեզ-ուղեցույցի, այսպես կոչված, «Պետինգերյան քարտեզի» շնորհիվ։ Այն կազմել է IV դ. հռոմեական աշխարհագետ Կաստորիուսը[79]։ Այդ քարտեզի վրա ցույց են տրված ռազմաստրատեգիական և առևտրական նշանակություն ունեցող բոլոր հիմնական ճանապարհները, նշանակված են հանգուցային կետերն ու միջանկյալ կայանները և դրանց միջև եղած տարածությունը։ Հայաստանի (ինչպես և Հռոմեական կայսրության) սահմաններում կայանների միջև ընկած տարածությունը ցույց է տրված հռոմեական մղոններով (Milia passus= 1,481 կմ), իսկ Սասանյան Իրանի սահմաններում՝ փարսախներով[80]։

Այս ուղեցույց քարտեզի վրա Արտաշատը հիմնական ճանապարհներով կապվում էր հարավում՝ Էկբատանի (Սասանյանների ամառային նստավայրը, այժմ՝ Համադան), հարավ-արևմուտքում՝ Տիգրանակերտի, Մծբինի, Եդեսիայի, Անտիոքի և այլ քաղաքների հետ, հյուսիսում՝ Վիրքի (Իբերիայի-Արևելյան Վրաստան) մայրաքաղաք Արմազ-Մցխեթայի և սեծովյան նավահանգիստների՝ Փասիսի (այժմ՝ Փոթի) և Դիոսկուրիաս-Սեբաստուպոլիսի (այժմ՝ Սուխումի) հետ։ Վերջապես մի գլխավոր ճանապարհ Արտաշատից գնում էր արևմուտք՝ և Փոսադուռն լեռնանցքով հասնում Սատաղ սահմանային կետը և դրանից էլ այն կողմ՝ մինչև Կոստանդնուպոլիս։ Այս քարտեզի վրա նշված է նաև «արքունի պողոտան», որը Տիգրանակերտը կապում էր Արտաշատի հետ։ Սատաղից Պոնտոսի լեռների վրայով մի ճանապարհ էր անցնում դեպի Սև ծովի գլխավոր նավահանգիստ Տրապիզոնը։

Հայաստանի նշանավոր քաղաքներն ավերվեցին Շապուհ Բ-ի կողմից, 364—368 թթ. արշավանքների ժամանակ։ Հելլենիստական քաղաքների ավերումով ու դրանց բնակչության գերեվարմամբ Հայաստանում սկսվում է փակ,

---

79 Հ. Մանանդյան, Հայաստանի գլխավոր ճանապարհներն ըստ Պետինգերյան քարտեզի. Երևան, 1936։ С. Т. Еремян, Торговые пути Закавказья по Tabula Peutingeriana, ВДИ, 1939, № 1, стр. 79—97.

80 Հ. Մանանդյան, նույն տեղում։

ինքնաբավ, բնատնտեսական արտադրության զարգացումը, որով նշանավորվում է ֆեոդալական հարաբերությունների տիրապետության շրջանը։ Նախարարական կալվածքները հետզհետե վեր են ածվում ինքնաբավ տնտեսությունների, որոնք դուրս են մնում քաղաքի հետ առևտրական փոխանակման ոլորտից։ Այս երևույթը, զուգորդված երկրում նախարարների քաղաքական ազդեցության աճի հետ, որոնք ձգտում էին վարչաքաղաքական և զինվորական ինքնուրույն իշխանություն ձեռք բերել իրենց տիրույթների սահմաններում, անխուսափելիորեն պետք է արագացներ վաղ ֆեոդալական, միասնական Հայկական պետության տրոհման պրոցեսը։ Ներկա իրողությունն օգտագործեցին Հռոմը և Պարսկաստանը, որոնք Հայաստանը բաժանեցին իրենց քաղաքականության ազդեցության ոլորտների, որը և հանգեցրեց թագավորական կենտրոնական իշխանության վերացմանն ու Արշակունիների հարստության անկմանը Հայաստանում։

Մեծ Հայքի թագավորության հելլենիստական քաղաքները կործանվեցին IV դարի վերջում, բայց կենսունակ եղավ Դվին քաղաքը։ Այստեղ փոխադրըվեց ավերված Արտաշատի ազգաբնակչությունը, որտեղ անընդհատ ավելանում էին ճահճուտները և կլիմայական պայմանները փոփոխվում էին։ Հարևան Դվինի բարձունքը գտնվում էր մերձլեռնային շրջանում և Արտաշատի շոգ հարթավայրից տարբերվում էր իր մեղմ օդով։ Դեռևս I դարում Տրդատ Ա թագավորը Դվինի բլուրի վրա կառուցել էր իր անվանական տաճարը և այս վայրը կոչվեց Դվին-Ասաակ, սակայն այն այդպես էլ մնաց իբրև մայրաքաղաքի արվարձան[81]։ Միայն IV դարում իր արքունիքը այնտեղ տեղափոխեց Խոսրով Բ Կոտակը (330—338) և Արտաշատի ճահճուտներում տնկեց Խոսրովակերտ արգելանոց-անտառը։ Սակայն Դվինը մայրաքաղաք հռչակվեց 481 թ., երբ Սասանյան Իրանի դեմ ապստամբած հայ ժողովուրդը կազմեց իր պետությունը՝ «տանուտէր Հայոց» Սահակ Բագրատունու գլխավորությամբ։ Այնուհետև Դվինը երկար ժամանակ դառնում է միջնադարյան Հայաստանի մայրաքաղաք, իսկ նրա քաղաքային տարածքը՝ «Ոստան Հայոց» գավառը կոչվում է նաև «Ոստան Դըվնոյ»։

Գյուտ Արահեզացի (461—478) կաթողիկոսի օրոք կաթողիկոսարանը Վաղարշապատից տեղափոխվում է Դվին։ Դվինում կառուցվում են մայր եկեղեցին՝ եռանավ բազիլիկ շենքը, վեհարանը, բարձրագույն դպրանոցը և այլն։

Արտաշատի տնտեսական, քաղաքական ու մշակութային դերը անցնում է Դվինին։ Մարզպանական շրջանում այստեղ զարգանում են արհեստներն ու առևտուրը։

Դվինը իբրև հնագիտական հուշարձան երկարամյա պեղումների է ենթարկվել Կարո Ղաֆադարյանի ղեկավարած հնագիտական արշավախմբի կողմից։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ Դվինը եղել է միջնադարյան առաջավորասիական խոշորագույն կենտրոն[82]։ Արաբական նվաճումների տարիներին Դվինը ավերվել է, սակայն հետագայում, երբ քաղաքը դառնում

---

81 Տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հ. 1, Երևան, 1971, էջ 761։

82 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, հատ. 1, 1952, հատ. 2, 1982։

*է Արմենիա փոխարքայության կենտրոն, նորից է աշխուժանում և մեծ վերելք ապրում IX—XI դարերում։*

*Հեթանոսական տաճարի տեղում IV դարի սկզբում կառուցվել է Մայր տաճարը, որը VII դարի սկզբին վերակառուցվում է, դառնալով կենտրոնագմբեթ եկեղեցի։ Այս տաճարը կառուցվել է IV դարում հիմնված Արշակունի թագավորների պալատի գահասրահից ոչ հեռու։ Այս շենքերի մոտ էր V դ. երկրորդ կեսին կառուցված կաթողիկոսի պալատական դահլիճը*[83]*։*

*Դվինի ճարտարապետական կառույցներից հայտնի է գլխավոր շուկան՝ ներքին երեք փողոցներով և վեց շարք իջևան-խանութներով։ Շնորհիվ Կարո Ղաֆադարյանի պեղումների և ուսումնասիրությունների, այսօր ունենք միջնադարյան Հայաստանի խոշորագույն կենտրոն Դվին քաղաքի մանրամասն պատկերը*[84]*։ Դվինն ունեցել է մոտավորապես 100 հազար բնակիչ և ընդգրկված է եղել միջազգային առևտրում։ Անանիա Շիրակացու (610—685) «Մղոնաչափք»-ի համաձայն Դվինից սկիզբ էին առնում վեց մայրուղիներ, որոնց միջոցով առևտուր էր արվում հին աշխարհի, հատկապես միջերկրածովյային ու առաջավորասիական երկրների հետ։ Արաբական մատենագիրների վկայությամբ Դվինում արտադրվել և օտար երկրներ են արտահանվել բրդյա ու մետաքսյա գործվածքներ, հայկական բանվածքներ, ծածկոցներ, բազմոցներ, գեղեցիկ ու թանկարժեք գորգեր, հախճապակյա առարկաներ, որդան կարմիր*[85]*. Դվինում եղել է փողերանոց։ Այնտեղ իբրև աշխարհիկ և հոգևոր իշխանության կենտրոն, գումարվել են եկեղեցական ժողովներ՝ 506, 554, 584, 607, 609, 645, 648, 688, 720 թվականներին*[86]*։*

*Մեծ Հայքի թագավորության վերջին ժամանակաշրջանում, երբ երկարատև ու անհավասար պայքարից հետո տեղի ունեցավ նրա բաժանումը (387)՝ երկու մարտնչող պետությունների միջև, ֆեոդալականացման պրոցեսներն ընթանում էին քաղաքական իշխանության մասնատվածության պայմաններում։ Այսպիսով, ֆեոդալական հարաբերությունները Հայաստանում ձևավորվել էին ավելի վաղ, քան հին աշխարհի մյուս երկրներում։ Արևելահռոմեական կայսրությունն ու Սասանյան Իրանի պետությունն իրենց քաղաքական ուժեղ կազմակերպությամբ, բյուրոկրատական ապարատով ու բանակով, նոր ժողովուրդների նվաճման միջոցով կարողացան որոշ ժամանակ երկարաձգել հին հասարակության ճգնաժամը, մինչդեռ Հայաստանն արդեն այդ ժամանակ ֆեոդալական երկիր էր և պայքարում էր նրանց դեմ՝ հանուն հասարակական նոր հարաբերությունների զարգացման։ V—VII դդ. Սասանյան Իրանի ու Բյուզանդական կայսրության դեմ հայերի, վրացիների ու աղվանների մղած ժողովրդաազատագրական պատերազմներն այդ ժամանակաշրջանի առաջադիմական դասակարգերի պայքարի արտահայտությունն էին՝ ընդդեմ իրենց դարն ապ-*

---

83 Կ. Հարությունյան, *Դվինի V—VII դդ. ճարտարապետական հուշարձանները, 1950։*

84 *Տե՛ս* Կ. Ղաֆադարյան, «*Դվին*» *հոդվածը «Հայկական Սովետական Հանրագիտարանում», հատ. 3, Երևան, 1977, էջ 444—446։*

85 *Նույն տեղում; Տե՛ս նաև՝* *Б. А. Шелковников,* Художественная керамика двинских раскопок, «Известия», Арм. ФАН-и, 1940, № 4—5.

86 Մ. Օրմանյան, *Ազգապատում, հատ. Ա, §§ 339, 361, 384, 410, 429, 480, 484, 535, 565—568։*

րած արտադրահարաբերությունների ստրկատիրական սիստեմի[87]։ Ստրկատիրության մեղմացրած ձևն էր հելլենիստական հասարակարգը, որը III—V դդ. Հայաստանում զարգացավ հասարակության ֆեոդալականացման ուղիով[88]։

## 5. ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՀԱԿԱՄՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՐՈՒՄԸ: ԱՆԱՊԱՏԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՅՆՔՆԵՐԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ: ՄԾՂՆԵ ԵՎ ԲՈՐԲՈՐԻՏՈՆ ԱՂԱՆԴՆԵՐԸ

Ֆեոդալական հարաբերությունների ձևավորման հետևանքով գյուղացիության կախումը հողատերերից ավելի ու ավելի սաստկանում էր։

Հայ նախարարները և օրեցօր հզորացող հոգևորականությունը ձգտում էին վերջնականապես իրենց ենթարկել գյուղական համայնքը։

Գյուղացիները՝ շինականներն ու մշակները, հենվելով հինավուրց համայնական սովորույթի և իրավունքների վրա, դիմադրում էին ֆեոդալների ձգտումներին՝ արոտավայրերի ու անտառների լիիշխան տեր լինելու։ Գեղջուկների մեծաքանակ ամբոխները, հողազուրկ-«անաշխարհիկ» ու մշակ դարձած, սարսափահար թողնում էին իրենց հողերը և ընկնում սար ու ձոր։ Պետական իշխանությունները և ֆեոդալները խիստ արգելում էին իրենց ժառանգական պարտականություններից փախչող («փախչողք ի ժառանգութենէ») համայնական գյուղացիներին օթևան տալ և հարկադրում էին վերադառնալ իրենց բնակավայրերը։ Սակայն, շատերը նրանցից թաքնվում էին երկրի անմատչելի տեղերում։

Գյուղական համայնքի անդամների մղած դասակարգային պայքարը արտահայտվում էր տարբեր ձևերով։ Այդ ձևերից մեկն էր փախուստը՝ պասիվ պայքարը, մյուսը՝ աղանդավորական շարժումը։ Վերջինս հետևանք էր այն բանի, որ քրիստոնեական եկեղեցին դառնում էր արդեն շահագործող դասակարգի շահերը պաշտպանող կազմակերպություն։ Նա ոչ միայն արդարացնում էր գյուղացիների շահագործումը, այլև ինքն էր հարստահարում նրանց։ Հավատացյալ աշխատավորը հեռանալով պաշտոնական եկեղեցուց, սկսում էր որոնել «ճշմարիտ» ու «արդար» հավատ։ Առաջ էին գալիս քրիստոնեական եկեղեցու նոր ուղղություններ ու հոսանքներ, որոնք պաշտոնական եկեղեցու կողմից համարվում էին «աղանդներ»։ Աղանդավորները պահանջում էին վերադառնալ քրիստոնեության վաղ ժամանակաշրջանի համայնքներին, որպեսզի դրանով իսկ համայնքը հակադրեն իշխող դասակարգի կեղեքմանը։

IV դարի 60—70-ական թվականներին Փոքր Հայքում հանդես էին գալիս մծղնե և բորբորիտոն աղանդները, որոնց հիմքն էր I—III դդ. գնոստիկանությունը։

Կորյունն իր «Վարք Մաշտոցում» պահպանել է առաջին տեղեկությունները բորբորիտոնների աղանդի վերաբերյալ։ Խոսելով Մեսրոպ Մաշտոցի գործունեության մասին Գողթան գավառում, Կորյունը հաղորդում է, որ Մեսրոպ

---

87 *С. Т. Еремян,* Армения в период кризиса рабовладельческого общества и формирования феодальных отношений. Очерки истории СССР. *Տե՛ս* «Кризис рабовладельческой системы и зарождение феодализма на территории СССР. III—IX вв.» *գրքում,* М., 1958, стр. 193.

88 *Նույն գրքում, էջ 167—185։*

Մաշտոցն այնուհետև ձեռնարկեց «անպատշաճ ու ծուռ բարբարիանոս աղանդը քննել։ Եվ երբ ոչ մի հնար չգտավ ուղղության բերելու, սկսեց թշվառացնող գավազանը գործադրել խիստ ծանր պատուհասներով՝ բանտերով, տանջանքներով, գելարաններով։ Իսկ երբ դրանով էլ փրկությունից զուրկ մնացին, [այն ժամանակ] ջարդ տվին, ապա խանձեցին, մրեցին ու պեսպես ձևվերով խայտառակեցին և աշխարհից դուրս քշեցին»[89]։ Այդ խիստ միջոցներին դիմում էր Բյուզանդական կայսրությունը 385 թ. Մեծ Հայքի թագավորության բաժանումից հետո իր իշխանության տակ անցած Հայաստանի արևմտյան մասում։ Կայսերական թույլտվություն ստանալով բյուզանդական Հայաստանում ևս դպրոցներ բանալու, Մեսրոպը հրաման է ստանում «և վասն ժանտագործ ազգին բարբարիանոսաց»[90]։

Ըստ Մովսես Խորենացու, պատրիարք Ատտիկոսը (405—425) իր նամակում՝ ուղղված Սահակ Պարթև կաթողիկոսին, հատուկ նշում է, որ կայսերական հրամանով նրան «իրավունք է տրվում ուսուցանել մեր կողմը (Հայաստանը), իսկ բորբորիտոնների աղանդը կամ հավանության բեր կամ հալածիր քո վիճակից»[91]։ Կայսեր հրամանը ստանալով, Սահակ Պարթևը Մեսրոպին հրամայում է «քննել պղծագործ բորբորիտոններին, և եթե ոչ մեղմությամբ, և ոչ խստությամբ ուղղության չգան, ապա չարչարանքներով հալածել, ինչպես թշնամիներ թշնամիներից վրեժ առնեն, որպեսզի իրավացի մահով հոգիների անիրավ մահը խայտառակվի»[92]։

Կայսեր հրովարտակում նշված բորբորիտոնների աղանդի կենտրոնն այդ ժամանակ Փոքր Հայքն էր և այն գլխավորել էր Սեբաստիայի հայազգի եպիսկոպոս Եվստաթիոսը (315—379)։ Արիոսականների և «ուղղափառների» միջև բռնկված պայքարում Աղեքսանդրիայում կրթություն ստացած Եվստաթիոսը հարեց արիոսականներին, ավելի ճիշտ՝ նրա «մակեդոնական» կոչված թևին։ Նա, դառնալով Սեբաստիայի եպիսկոպոս, գլխավորեց Փոքր Հայքում ծավալվող ժողովրդական զանգվածների «հերետիկոսական» շարժումը։ Շուտով Եվստաթիոսի կողմից գլխավորած շարժումը ստացավ «անապատականների» շարժման բնույթ, որը գալիս էր Եգիպտոսից։ Պասսիվ պայքար մղելով օրըստօրե աճող շահագործման դեմ, քաղաքի և գյուղի անմիջական արտադրողները լքում էին իրենց բնտանիքները և գնում անմարդաբնակ անապատները[93]։

Անապատականների շարժման հիմնադիր Անտոնիոսը՝ Թեբեից (251—357), արտաքուստ կողմնակից էր հռոմեական պաշտոնական եկեղեցու և գոյություն ունեցող սոցիալական կարգերի, սակայն նրա քարոզը ամուսնության դեմ, այնքան մեծ տարածում գտավ գյուղի և քաղաքի բնակչության մեջ, որ քրիստոնեությունը պաշտոնապես ընդունվելուց հետո, չհանդուրժվեց և ենթարկվեց հալածանքի։ Ինչպես վկայում է Սոզոմենոսը, անապատականների

89 Կորյուն, Վարք Մաշտոցի, աշխարհաբար թարգմանությունը, ներածական ուսումնասիրությամբ, առաջաբանով և ծանոթագրություններով՝ Մ. Աբեղյանի, Երևան, 1962, էջ 114։

90 Ե. Գ. Տեր-Մինասյան, Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից, Երևան, 1968, էջ 63—64։

91 Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց, Գ. ծէ, թարգմանությունը, ներածությունը և ծանոթությունները ակադեմիկոս Ստ. Մալխասյանցի, Երևան, 1968, էջ 300։

92 Նույն տեղում, Գ. ծը, էջ 301։

93 Տե՛ս Լ. Խաչիկյան, Փոքր Հայքի սոցիալական շարժումների պատմությունից (IV դար), Երևան, 1951։

*հայտնի գործիչ էր հայ եպիսկոպոս Եվստաթիոս Սեբաստացին[94]։ Վերջինիս գործունեությունն այնքան մեծ ծավալ է ընդունում, որ Փոքր Հայքի չորս եպիսկոպոսական թեմերը անհանգստացած դիմում են Կեսարիայի մետրոպոլիտ Բարսեղ Կեսարացուն[95]։ Անապատական շարժումը Եվստաթիոսի գլխավորությամբ աշխուժանում է 370-ական թթ. սկզբներին և Փոքր Հայքի եպիսկոպոսները հարկադրված դիմում են Փոքր Հայքի հռոմեական կառավարիչ կոմես Տերենտիոսին[96]։*

*Այստեղ ուշադրության է արժանի նաև այն հանգամանքը, որ պայքարը աղանդավորների դեմ քողարկում էր հայոց եկեղեցու պայքարը երկրում դեռևս մնացած զրադաշտականների դեմ։ Այդ պայքարն անուղղակիորեն ուղղված էր Սասանյան Իրանի դեմ, մանավանդ վերջինիս ենթարկված Հայաստանի արևելյան մասում, որտեղ պայքարը զրադաշտականների դեմ արգելված էր և միայն այս միջոցով՝ իբրև պայքար «հերձվածողների» դեմ, փաստորեն ուղղված էր նրանց դեմ։*

*Հռոմեական կայսրական իշխանությունները, որոնք պայքար էին մղում Փոքր Ասիայի, նաև Փոքր Հայքի ու Հռոմից կախման մեջ ընկած Մեծ Հայքի արևմտյան նահանգների ֆեոդալականացող խոշոր հողատերերի դեմ, երբեմն իրենց պաշտպանության տակ էին առնում իրենց տերերից դժգոհ ժողովրդական մասսաներին։ Այս միջոցով նրանք ամրապնդում էին կայսեր իշխանությունը տեղերում։ Այդ առավել անհրաժեշտ էր Մեծ Հայքի թագավորության 385 թ. բաժանումից հետո, երբ նրա արևմտյան նահանգները՝ Ծոփաց կողմն ու Ներքին Հայքը (կամ Բարձր Հայքը) պետք է ճանաչեին հռոմեական կայսեր գերագույն իշխանությունը։ 376 թ. Կեսարիա է գալիս նոր կառավարիչ Դեմոսթենեսը, որը համակրանք էր տածում Եվստաթիոսի հանդեպ։ Նման նպաստավոր պայմաններում Եվստաթիոսը Փոքր Հայքի չորս եկեղեցական թեմերում եպիսկոպոսներ է նշանակում իր կողմնակիցներին[97]։*

*Այս տարիներին Եվստաթիոսի ուսմունքին հետևող անապատականները դաշնակից դարձան մծղնեականներին (մեսալյաններ)[98]։*

*Մծղնեից աղանդն առաջ եկավ 360-ական թվականներին՝ Միջագետքի ասորական աղգաբնակչության մեջ իբրև «մեսալյանների աղանդ», որը հայկական աղբյուրներում կոչվում է՝ «մծղնեից աղանդ»։ Մծղնեից աղանդի հետևողները ժխտում էին եկեղեցին, որն իբր թե հետամուտ էր մարդկանց «ուղիղ ճանապարհի» բերելու, բայց փաստորեն նպաստում էր գյուղացիների շահագործմանը։ Մծղնեականները պնդում էին, թե մարդը՝ ինքը, առանց եկեղեցու պետք է ուղիղ ճանապարհով ընթանա։ Նրանք քարոզում էին, որ բոլոր մարդիկ բնությամբ հավասար են, և հավասար են ծնվում, իսկ տնտեսական անհավասարությունն ու շահագործումը ծագել են մարդկանց չարությունից, որ հատուկ է հարուստներին ու իշխանավորներին։*

---

94 «Церковная история Эрмия Созомена Саламинского», СПб., 1851.

95 Լ. Խաչիկյան, նշվ. աշխ., էջ 26—28։

96 *Տե՛ս* «Творения иже во святых отца нашего Василия Великого, архиепископа Кесарии Каппадокийские». Изд. 3-е, Сергиев Посад, 1892, стр. 242—285.

97 Լ. Խաչիկյան, նշվ. աշխ., էջ 31։

98 Նույն տեղում։

*Չքավորությանն ու կեղեքմանը վերջ տալու համար նրանք առաջարկում էին ստեղծել իրավահավասար համայնքներ։ Ուստի քարոզում էին ծառաներին՝ փախչել իրենց տերերից և համախմբվել համայնքների մեջ։ Նրանց ստեղծած համայնքներում մասնավոր սեփականությունը համարվում էր աններելի մեղք։ Հարուստները կարող էին այդ համայնքների անդամ դառնալ՝ իրենց ունեցվածքը համայնքին բաժանելուց հետո միայն։*

*Մծղնեականներն ատում էին պետական կարգը և հրաժարվում էին աշխարհիկ կյանքից։ Ստեղծելով առանձին եղբայրություններ, նրանք գալիս էին քաղաքները և մուրացկանությամբ պահպանում իրենց գոյությունը։ Նրանք չէին ճանաչում պաշտոնական եկեղեցին, կնունքն ու հաղորդությունը*[99]*։*

*Առաջին հալածանքները մծղնեականների դեմ սկսվեցին Միջագետքում՝ Եդեսիայում, որտեղից նրանք փախչում էին ու ապաստան գտնում Փոքր Ասիայում, հատկապես Փոքր Հայքում, որտեղ նրանց համախոհներն էին Եվստաթիոսի քարոզության հետևորդները*[100]*։*

*Ինչպես սեբաստացիները, այնպես էլ մծղնեականները համարում էին, որ մարդը բարոյականության կատարելության կարող է հասնել մշտական աղոթքով, բայց ոչ եկեղեցում։ Նրանք ժխտում էին եկեղեցական կազմակերպությունը և իրենց շարքերն էին ընդունում տղամարդկանց ու կանանց լիակատար հավասար իրավունքներով, բայց մի պայմանով, որ նրանք իրենց գույքը կվաճառեն և կհրաժարվեն մասնավոր սեփականությունից*[101]*։ Սեբաստացիները 363 թ. սկսած մեծ պայքար են մղում կայսերական «ուղղափառ» եկեղեցու դեմ և խոր համակրանք վայելում ժողովրդական զանգվածների կողմից։*

*«Ուղղափառ» եկեղեցու սյուներից մեկը Փոքր Ասիայում, Բարսեղ Կեսարացին խիստ պայքար է սկսում «հերետիկոսների» դեմ։ Նա նույնիսկ նամակներով է դիմում Իտալիայի և Գաղղիայի եպիսկոպոսներին։ Բարսեղ Կեսարացին իր նամակներից մեկում, գրված 376 թ., գանգատվում է, որ արդեն 13 տարի է ինչ «հերետիկոսները» սկսել են հալածանքները եկեղեցու դեմ (363—376)։*

*Սեբաստացիների շարժումն այնքան մեծ ծավալ է ընդունում, որ նրանց հարցը քննարկվում է Գանգրայի՝ 378 թ. հրավիրված «տիեզերական ժողովում»՝ Փոքր Հայքին սահմանակից հարևան Պափլագոնիայում։ Ժողովին մասնակցող 15 եպիսկոպոսները 24 կանոններում նզովքի են ենթարկում «Եվստաթեցւոց հերձուածութիւնքը», իսկ ինքը՝ Եվստաթիոսը կարգալույծ է արվում*[102]*։ Սոկրատ Սքոլաստիկոսն իր «եկեղեցական պատմության» մեջ հաղորդում է՝ «ժողով ի Գանգրա Պափղագոնիոյ եղեալ զնա (զԵւստաթիոս) ընգեաց, և զաղանդս նորա նզովեալ*[103]*»։*

*Ժողովում ընդունված 24 կանոններում տրված է «աղանդավորների» ուսմունքի սպառիչ պատկերը։*

99 *Կ. Ա. Մծղնեից աղանդ, «Արարատ» ամսագիր, 1895, հունվար, էջ 6—7։ Տե՛ս նաև՝* Ե. Գ. Տեր-Մինասյան, *նշվ. աշխ., էջ 63—85։*

100 Լ. Խաչիկյան, *նշվ. աշխ., էջ 34—35։*

101 *Նույն տեղում։*

102 *«Կանոնագիրք Հայոց», հատ. Ա, աշխատասիրությամբ Վազգեն Հակոբյանի, Երևան, 1964, էջ 188—201։*

103 *«Սոկրատայ Սքոլաստիկոսի եկեղեցական պատմութիւնը», Վաղարշապատ, 1879, էջ 206։*

«Կանոնք Գանգրայ գլուխք ԻԴ.

Ա. վասն որ զամուսնութիւն գարշ համարին։
Բ. վասն որ զմսակերութիւնս պիղծ համարին։
Գ. վասն ծառայից որ զտեարս արհամարհեն։
Դ. վասն որ խոտեն զամուսնացեալ քահանայս։
Ե. վասն որք զեկեղեցի արհամարհեն։
Զ. վասն որք արտաքոյ եկեղեցւոյ ժողովս առնեն։
Է. վասն որք զրկեն զեկեղեցին ի պտղոց։
Ը. վասն որ առանց եպիսկոպոսին ծախեն զպտուղսն։
Թ. վասն որք չամուսնանան գարշ համարելով։
Ժ. վասն որք ամբարտաւանեն յամուսնացելոցն վերայ։
ԺԱ. վասն որք անգոսնեն զագապն։
ԺԲ. վասն որք հանդերձիւք արդարանան։
ԺԳ. վասն կանանց որ զարանց հանդերձ զգենուն։
ԺԴ. վասն կնոջ որ յառնէ ելանիցէ։
ԺԵ. վասն որ որդիս թողուցուն։
ԺԶ. վասն որ ծնաւղս իւր ատիցէ։
ԺԷ. վասն կանանց որ զհերս փոքրեն։
ԺԸ. վասն որ զաւր կիւրակէին ոչ պահեն եւ ի գործ արկանեն։
ԺԹ. վասն որք ոչ պահեն զկանոնեալ աւուրսն։
Ի. վասն որք չպահեն խ աւր աղուհացիցն։
ԻԱ. վասն Զատկի հինգշաբաթուոյն։
ԻԲ. վասն որ երթիցէ ի ժողովս մարտիւրոսաց։
ԻԳ. վասն որ յառաջ քան զՊատարագամատոյցն ճաշակեն։
ԻԴ. վասն որ առանց աղաբողոնի սաղմոսեն[104]։

Ժողովի մասնակիցները հատուկ «Թուղթ» են հղում հայ եպիսկոպոսներին, կարգադրելով նրանց անողոք պայքար մղել «հերետիկոսների» դեմ։

Եվստաթիոսը կարգալուծ եղավ Գանգրայի ժողովի կողմից, բայց շատ շուտ ըստ Սոզոմենոսի վկայության «դարձի եկավ» և վերադարձավ եկեղեցու ծոցը[105]։ Այժմ նա ձգտում է ընդհանուր լեզու գտնել պաշտոնական եկեղեցու և հռոմեական վարչական մարմինների հետ։ Այս անգամ արդեն նա խանգարում էր այդ սոցիալական շարժման ծավալմանը Փոքր Հայքում և Մեծ Հայքում։ Բանադրված լինելով Գանգրայի ժողովում, Եվստաթիոսը և նրա մերձավորյն աշակերտները լքում են իրենց դաշնակիցներին։ Այդ դաշնակիցներն էին «հերետիկոսները» այն սոցիալական խավերը, որոնք կազմում էին «հեղափոխական օպոզիցիան»՝ ուղղված ֆեոդալիզմի դեմ։ Այդ օպոզիցիայի մասին է խոսում Ֆ. Էնգելսն իր «Նախնական քրիստոնեության պատմության շուրջ» հոդվածում։ Նա գրում է. «Եթե այդ դասակարգային պայքարն այն ժամանակ ընթանում էր կրոնական նշանաբանով, եթե առանձին դասակարգերի շահերն ու պահանջները քողարկվում էին կրոնական քողի տակ, ապա դա ամենևին չի փոխում խնդրի էությունը և հեշտությամբ բացատրվում է ժամանակի պայմաններով... Պարզ է, որ այդ պայմաններում ընդհանուր ձևով արտահայտ-

---

104 «Կանոնագիրք Հայոց», հատ. Ա, էջ 188։

105 Церковная история Эрмия Созомена Саламинского, кн. III, гл. 14, СПб., 1851, стр. 201.

ված հարձակումները ֆեոդալիզմի, և առաջին հերթին՝ եկեղեցու դեմ, բոլոր հեղափոխական՝ սոցիալական և քաղաքական ուսմունքները պետք է առավելապես իրենցից ներկայացնեին միաժամանակ նաև աստվածաբանական հերետիկոսություն։ Որպեսզի հնարավոր լիներ հարձակվել հասարակական հարաբերությունների վրա, պետք էր վերջիններիս վրայից դեն նետել սրբության քողը»[106]։

Արդեն II դարում Հայաստանում քրիստոնեական քարոզչությանը ուղեկցում էին զանազան ուսմունքներ, որոնք շեղվում էին պաշտոնական քրիստոնեությունից և առաջին հերթին գնոստիկականությունն էր այդ, որի փայլուն ներկայացուցիչն էր Հայաստանում իր գործունեությունը ծավալած Բարդածանը (154—222), որն, ըստ երևույթին, ծագումով հայ էր։ Այդ բազմազան ու բազմատեսակ կրոնափիլիսոփայական և գնոստիկյան ուսմունքները, հերձվածներն ու աղանդները պատրիստիկ ու ջատագովական գրականության մեջ հակադրվում էին ձևավորվող հայկական եկեղեցուն[107]։ Հայաստանի պայմաններում առաջացող տարբեր, խիստ խայտաբղետ, հաճախ հակադիր հայացքների համակարգերը հակադրվում էին ձևավորվող հայկական եկեղեցուն, որն ըստ. Ֆ. Էնգելսի, հանդիսացավ «գոյություն ունեցող ֆեոդալական կարգերի առավել ընդհանուր սինթեզը և առավել ընդհանուր վավերացումը»[108]։

IV—V դդ. Հայաստանում ժողովրդական զանգվածների բողոքը ֆեոդալական շահագործման դեմ ստանում է անապատականների շարժման բնույթ։ Որոշ դեր էր խաղում նաև այն հանգամանքը, որ շինականը հարկատու դասից կարող էր անցնել ազատների դասը, եթե նա կարողանում էր դառնալ առնվազն ստորին կարգի հոգևորական՝ «Քանզի պարեգօտաւորք ազատեալ են ի Քրիստոս»[109]։ Այդպիսի շինականը կարող էր դառնալ գյուղական քահանա կամ կուսակրոն։ Հաճախ այդ միջոց էր լինում հեծյալ դառնալու և համալրելու այրուձիի շարքը, թողնելով հոգևոր կոչումը։ Սակայն այս ճանապարհով քչերին էր հաջողվում անցնելու ազատների դասը, մինչդեռ մեծ մասը սրանցից դառնում էր հասարակ ճգնավոր։ Ահա այս միջավայրում էր ուժեղանում ընտանիքից հրաժարվելու քարոզը։ Շարժումը այնպիսի չափերի է հասնում, որ եկեղեցին հարկադրված խիստ պայքար է սկսում ընտանիքը քայքայող այդ ուսմունքների դեմ, որոնք «ղամուսնութիւն գարշ համարին», «որք ամբարտաւանեն յամուսնացելոցն վերայ» կամ «կնոջ որ յառնէ ելանիցէ», կամ ընտանիքի, կամ այնպիսի հայրերին, «որ զորդիս թողուցուն»։ Այս ժամանակաշրջանի եկեղեցական ժողովները պարտադրում էին գյուղացուն ամուսնանալ, ընտանիք և երեխա ունենալ, որը հասարակության գոյության հիմքն է։ Նման պայմաններում խորանում է ժողովրդական զանգվածների՝ մծղնեաների և բորբորիտների հակաեկեղեցական ուսմունքը, որը VI դ. հանգեցնում է պավլիկյանների ուսմունքին։

Մծղնեաների և բորբորիտների աղանդավորական շարժումը IV—V դդ. Փոքր Հայքից տարածվեց Մեծ Հայքում, որտեղ առաջ բերեց ֆեոդալականա-

---

106 *К. Маркс и Ф. Энгельс,* Соч., т. VIII, стр. 360—361; Տե՛ս Վ. Կ. Չալոյան, *Հայոց փիլիսոփայության պատմություն (հին և միջին դարեր), Երևան, 1975, էջ 258։*

107 Տե՛ս Վ. Կ. Չալոյան, *նույն տեղում։*

108 *К. Маркс и Ф. Энгельс,* Соч., т. VII, стр. 361; Տե՛ս Վ. Կ. Չալոյան, *նույն տեղում։*

109 *«Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան», Տփղիս, 1904, էջ 188։*

ցող հայ ազնվական վերնախավի և եկեղեցու պայքարը «հերետիկոսների» դեմ։ Անհրաժեշտ է ուշադրություն դարձնել, որ այս պայքարը Հայաստանի պայմաններում, որտեղ դեռևս արմատախիլ չէին արված հեթանոսությունը և Սասանյան Իրանի պաշտոնական կրոնը հանդիսացող զրադաշտականությունը, քողարկվում էր պայքարով պաշտոնական, եկեղեցուց խոտորվող տարրերի դեմ, քանի որ բացեիբաց չէր կարելի պայքար մղել մազդեականության դեմ.

Հարստահարված և քրիստոնեությունից հիասթափված մարդիկ մասսայաբար փախչում էին նույնիսկ հեռավոր Միջագետքի և Ասորիքի անմարդաբնակ անապատներն ու լեռները, որպեսզի թեև զրկանքներով լի, բայց միայնակության պայմաններում վարեն իրենց կյանքը, զուրկ բոլոր բարիքներից, բայց ազատ սոցիալական անարդարություններից և ճնշումից։ «Անապատականների» նման համայնքները ստեղծվել էին նաև Հայաստանի բարձրաբերձ լեռներում[110]։

Մեծ Հայքի Ծաղկոտն գավառում, Եփրատ-Արածանի գետի ակունքների վայրում, որը կոչվում էր Ոսկիք, VI դարում առաջացան մի շարք համայնքներ, որոնցից է «խոտաճարակների անապատը»։ Անապատական Շաղիտայի մասին խոսելիս, Փավստոս Բուզանդը (Ե, իզ) ասում է, որ «ի տղայութենէ իւրմէ սնեալ էր համակ յանապատս, և ընդ անապատաւորս խոտաճարակ լեալ էր»։ Նման «անապատներ» էին առաջացել նաև Տարոն գավառում և այլ բազմաթիվ անմատչելի տեղերում։ Անապատականների շարժման ղեկավարներից էր Գինդը, որը ըստ Փավստոս Բուզանդի տեղեկության (Ե, ժզ) «Տարոն գավառից էր, աշակերտել էր մեծ Դանիելին և նրանից հետո դարձել աբեղաների գլխավոր, միայնակյացների վարդապետ և առաջնորդ, վանքերի վերակացու, բոլոր անապատականների ուսուցիչ և առհասարակ տեսուչ այն բոլոր մարդկանց, որոնք աստծո սիրո համար հրաժարվել էին աշխարհից և բնակվում էին անապատներում ու քարանձավներում։ Շրջում էին ոտաբոբիկ, զգաստ կյանք էին վարում, կերակրվում էին խոտերով, ընդեղեններով, արմատներով։ Գազանների նման շրջում էին լեռներում՝ կաշիներով և այծի մորթիներով ծածկված, նեղվում, տառապում, չարչարվում էին, անապատում մոլորված ենթարկվում էին ցրտի ու տոթի, քաղցի ու ծարավի՝ աստծո սիրո համար։ ...Թռչունների երամների նման նրանք բնակվում էին ժայռերի ճեղքերում, քարանձավների ծերպերում, առանց զույքի ու ստացվածքի, առանց խնամքի և դարմանի, իրենց անձերի մասին ամենևին չհոգալով։ Եվ սրանց գլխավորն էր սուրբ Գինդը, որին Հայոց աշխարհի բոլոր մարդիկ առհասարակ վարդապետ էին կոչում»[111]։ Ապա պատմաբանը հաղորդում է, որ Գինդը «իր համար բնակության տեղ էր ընտրել այն անապատը, որտեղից սկսվում են Եփրատ գետի ակունքները[112], այնտեղ նա բնակվում էր ժայռերի ճեղքերում... որ Ոսկիք էին կոչում. այս նույն ճեղքերում բնակվում էր Գինդը՝ անապատականների մեջ մեծը»։

---

110 Մծղնեաների և բորբորիտոն աղանդավորների համայնքների տեղադրությունը Հայաստանի լեռներում տե՛ս քարտեզ՝ «Մեծ Հայքի թագավորությունը IV դարում (298—385)», Երևան, 1979, քարտեզի հեղինակ՝ Ս. Տ. Երեմյան։

111 Փավստոս Բուզանդ, Պատմություն Հայոց, թարգմանությունը, ներածությունը և ծանոթագրությունները ակադեմիկոս Ստ. Մալխասյանցի, Երևան, 1968, էջ 307։

112 Նկատի են առնված Արածանի (Արևելյան Եփրատ) գետի ակունքները։

*VI—VII դարերում, երբ ուժեղացավ ժողովրդական զանգվածների պայքարը օտարերկրյա և տեղական կեղեքողների դեմ, նշված աղանդներն ավելի ևս ընդունել էին հեղափոխական օպոզիցիայի բնույթ՝ ուղղված ֆեոդալական կեղեքման դեմ*[113]*։ Ինչպես նշել է Ֆ. Էնգելսը, «Ֆեոդալիզմի դեմ ուղղված հեղափոխական օպոզիցիան անցնում է ամբողջ միջնադարի միջով։ Այն ժամանակի պայմաններին համապատասխան հանդես է գալիս մերթ միստիկայի ձևով ,, մերթ հերետիկոսության ձևով, մերթ զինված ապստամբության ձևով»*[114]*։*

113 Վ. Կ. Չալոյան, *նույն տեղում։*

114 *К. Маркс* и *Ф. Энгельс*, т. VII, с. 361.

# ԲԱԺԻՆ Բ



# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՅՔԱՐԸ ՍԱՍԱՆՅԱՆ ԻՐԱՆԻ ԵՎ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԴԵՄ V-VII ԴԱՐԵՐՈՒՄ

ԳԼՈՒԽ ՅՈԹԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ՄԵԾ ՀԱՅՔԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԿՈՒՄԻՑ ՀԵՏՈ։ ՍԱՍԱՆՅԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ՃՆՇՄԱՆ ՍԱՍՏԿԱՑՈՒՄԸ

## 1. ՍԱՍԱՆՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Հայաստանում թագավորական իշխանության անկումից հետո «իշխանությունն անցավ հայոց նախարարներին,— գրում է Եղիշեն,— որովհետև թեպետև հարկը պարսից արքունիքին էր գնում, սակայն Հայոց հեծելազորն ամբողջապես նախարարներն էին առաջնորդում պատերազմի ժամանակ»*[1]*։*

*Իրականում նախարարական Հայաստանը, որտեղ Վռամ Ե Գորը կառավարիչ էր նշանակել Վեհմիհրշապուհ մարզպանին*[2]*, դառնում էր սասանյան պետության վարչական միավորումներից մեկը մարզպանի իշխանության ներքո։ Պարսից արքունիքը վաղ թե ուշ ձգտելու էր խախտել նախարարների արտոնյալ վիճակը, կոտրել հայ ժողովրդի դիմադրությունը և իրավական-վարչական տեսակետից երկիրը ձուլել այլ պարսկական վարչական միավորների հետ։ Այդ խիստ բացասական հետևանքներ էր ունենալու երկրի համար։ Սակայն առայժմ Սասանյանները նախարարների և հայոց եկեղեցու հանդեպ վարում էին հանդուրժողական քաղաքականություն։*

*Ի հատուցումն այն գործակցության, որ Արտաշեսի գահընկեցության հարցում հայ նախարարները ցույց տվեցին Վռամ Ե Գորին (421—439), պարսից արքան նրանց հայրենիք վերադարձրեց մեծ պատիվներով*[3]*։ Ինչպես Եղիշեն է ասում, «աստվածապաշտությունը բաց ճակատով ու ինքնիշխան փայլում էր Հայոց աշխարհում, արքայից արքա Շապուհի (Գ) թագավորության սկզբից մինչև Վռամի որդի արքայից արքա Հազկերտի (Բ) երկրորդ տարին»*[4]*, այսինքն՝ 383—440 թթ.։ Հռետորական բնույթի այս հաղորդումն, անշուշտ,*

---

1 *«Եղիշէի Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին», ի լոյս ածեալ բաղդատութեամբ ձեռագրաց աշխատութեամբ Ե. Տեր-Մինասյանի, Երևան, 1957։ Առաջին յեղանակ, ժամանակ, էջ 6։ «Եղիշեի Վարդանանց պատմությունը», թարգմանություն և ծանոթագրություններ Ե. Տեր-Մինասյանի, Երևան, 1958, Ա գլուխ, աշխ. թարգմ. էջ 13։ Տե՛ս նաև՝* Հ. Մանանդյան, *Քննական տեսություն, հ. Բ, մ. Ա, էջ 285—287։*

2 Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 287։*

3 *«Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան», աշխատութեամբ Գ. Տեր-Մկրտչեան և Ստ. Մալխասեանց, Տփղիս, 1904, Ա, ժդ։ Աշխ. թարգմ. տե՛ս* Ղազար Փարպեցի, *Հայոց պատմություն և Թուղթ Վահան Մամիկոնյանին, աշխարհաբար թարգմանությունը և ծանոթագրությունները Բագրատ Ուլուբաբյանի, Երևան, 1982 (այսուհետև՝ աշխ. թարգմ.), էջ 59։*

4 Եղիշե, *Ա (աշխ. թարգմ., էջ 13)։*

պետք է որոշ վերապահությամբ ընդունել, քանի որ Եղիշեն նշված ժամանակները համեմատում է Հազկերտ Բ-ի օրոք ստեղծված ծանր դրության հետ։ Բացի այդ Սասանյանները ձգտում էին կաթողիկոսական պատիվը տալ Լուսավորչի տան մրցակիցներին կամ ստորին հոգևորականների, որը խախտում էր հայ եկեղեցու կազմակերպչական հիմքերը։

Սասանյաններին ենթակա Հայաստանի մասն իրենից ներկայացնում էր մեծ և փոքր նախարարական տիրույթների համակարգ։ Նախարարության գլուխ էր կանգնած նախարարը, որը համարվում էր «տէր» կամ «տանուտէր», ուստի նրա իշխանության ներքո գտնվող տարածքը կոչվում էր «տէրութիւն» կամ «տանուտէրութիւն»։ Այդ իշխանությունները իրենց հերթին բաժանվում էին ավելի մանր վարչական միավորումների, սովորաբար մայր տոհմից ճյուղավորված նոր ֆեոդալական տների, որոնց իրավասության ներքո գտնվող տարածքները կոչվում էին «սեպհականութիւն»[5]։ Նախարարական տոհմի գլխավոր «տէր»-ից հետո առաջին տեղը գրավում էր նրա եղբայրներից ավագը, որը պիտի ժառանգեր նրա պատիվը, կոչվում էր «աւագ սեպուհ», իսկ տոհմի մնացյալ անդամները կոչվում էին «սեպուհներ»։ Նախարարական տերությունների կենտրոններն սկսում են կոչվել «ոստան»։ Մարզպանական Հայաստանի քաղաքական ու վարչական կենտրոնն էր Այրարատը, որ կոչվում էր «Արքունի տուն» կամ «Ոստանն Հայոց»։ Այսպես էր կոչվում մայրաքաղաք Արտաշատն իր գավառով, ապա դրան փոխարինած Դվինը։ Վերջինիս անունով «Ոստան Հայոց» գավառը կոչվում էր նաև «Ոստանն Դըվնոյ»։ Մարզպանի զորքը տեղավորված էր «Արքունի տան»՝ ստրատեգիական տեսակետից այն կարևոր վայրերում, որոնք հնուց կոչվում էին «Թագաւորական», ինչպես և «Ձմեռոց արքունի», քանի որ Այրարատը, Արարատյան դաշտն իր կլիմայական պայմանների բերումով միշտ էլ հանդիսացել է ձմեռոց զորամասերի համար։ Այդ վայրերում տեղավորված էին զորակայաններ, որոնք կոչվում էին «կայանք զօրաց»[6], իսկ կայազորները՝ «կայենականք»։

Հայաստանը մյուս մարզպանությունների համեմատությամբ օգտվում էր ավելի մեծ իրավունքներով։ Նախարարներն այդ կախումը սասանյան պետությունից դիտում էին իբրև վասալական, որ բոլորովին հակադիր էր Սասանյանների շահերին, որոնք ձգտում էին Հայաստանը դարձնել պարսկական նահանգ։ Նախարարների և Սասանյանների շահերի այս հակասություններն ի վերջո հանգեցրին սուր պայքարի և հայ ժողովրդի զինված դիմադրության՝ սասանյան պետությանը՝ իր ներքին իրավունքները պաշտպանելու համար։

Սասանյանները ջանում էին ցույց տալ, թե նախարարների ժառանգական իրավունքները հարգվում են։ Հայոց մարզպանության գլխավոր գործակալությունները՝ սպարապետությունը և հազարապետությունը, մնացել էին

---

5 Այս ժամանակաշրջանի համար արդեն ունենք «սեպհականութիւն Տաշրայոյ։ Վիրքին անցած Գուգարաց բդեշխի տոհմից անջատված իշխանություն, որը մնաց մարզպանական Հայաստանի կազմում։

6 Եղիշեն (III, էջ 78—79) խոսում է այդ արքունի ձմեռոցի մասին, տալով սպառիչ տեղեկություն, «զձմերոցս արքունի, որ կայանք զօրացն էին, զԴաոնին և զերամանս և զԴրասխանակերտն՝ զմեծ դաստակերտն, զՎարդանաշատն և զամուրն Օշական, զՓառախոտն, զԱրդեանսն, զՁողակերտն աւան և զբերդն Արմաւրի, զԿուաշն աւան, զԱրուճն, զԱշնակն, և զամենայն ոտն Արագածու, և զնահանգն Արտաշատու և զԱրտաշատն ինքնին գլխովին, և զամենայն գեւղս և զաւանս, որ շուրջ զնովաւ էին»։

հայոց իշխանների ձեռքում։ Հայոց սպարապետի գլխավորած այրուձին սասանյան արքունիքից ստանում էր դրամական ու բնամթերային վարձ՝ «ռոճիկ», իսկ Հայոց հազարապետը գլխավորում էր երկրի հարկահավաքությունը և պետական շինարարությունը։ Հազարապետը բնակչությունից հավաքում էր պետական հարկերը և հանձնում մարզպանին։

Առժամանակ անձեռնմխելի թողնելով նախարարների բոլոր իրավունքները՝ Սասանյաններն այնուամենայնիվ ձգտում էին Հայոց եկեղեցին առնել իրենց անմիջական հսկողության ներքո։ Ճիշտ է, գոյություն ուներ երրորդ հիմնական գործակալությունը՝ «մեծի դատաւորութիւն», որը գլխավորում էր Հայոց կաթողիկոսը, սակայն վերջինս գտնվում էր սասանյան արքունիքի անմիջական հսկողության ներքո[7]։ Սասանյանները չէին մոռանում Հայոց եկեղեցու արևմտյան կողմնորոշումը և այն, որ դա իր ներքին կառուցվածքով մի զորեղ կազմակերպություն էր պետության մեջ։

Սասանյաններն անցնելով իշխանության գլուխ, սկզբից ևեթ մեծ ուշադրություն նվիրեցին զրադաշտական կրոնին, որը դառնում էր պետական կրոն, իսկ այդ կրոնի պաշտոնյաները՝ մոգերը, հայտարարվում էին Սասանյանների իշխանության հենարան։ Սասանյաններն իրենց պետության մեջ գոյություն ունեցող քրիստոնեական եկեղեցիները համարում էին հակապետական կազմակերպություններ, որոնք վաղ թե ուշ հարկավոր էր վերացնել։ Հայերի և հայոց եկեղեցու նկատմամբ Սասանյանների վերաբերմունքն ու մտայնությունը լավագույնս արտացոլվել են Ղազար Փարպեցու երկում։ Նա գրում է, որ Հազկերտ Ա-ն գիտակցում էր, որ հայերը «օտար են մեր հավատին, ատում են մեզ և հույների հետ ունեն նույն հավատն ու նույն օրենքները»[8]։

Սասանյանների հակաքրիստոնեական քաղաքականությունը Հայաստանում տարվում էր ոչ միայն նրա՞ համար, որ եկեղեցին դիտվում էր երկրում իբրև Սասանյանների թշնամի՝ Բյուզանդիայի բարեկամ, այլև նրա համար, որ այն մի կազմակերպություն էր, որն Արշակունիների անկումից հետո հանդիսանում էր երկրի կենտրոնաձիգ ուժերը պահպանող զորեղ գործոն։ Հայոց եկեղեցին իր ներքին վարչական կազմակերպությամբ վերարտադրում էր Արշակունյաց Հայաստանի պետական կազմակերպությունը և փաստորեն քաղաքականապես մասնատված Հայաստանը կաթողիկոսի հոգևոր տեսչության տակ էր դնում։ Վերջապես եկեղեցին միավորելով ամբողջ Մեծ Հայքը, շատ վաղ արթնացրեց ժողովրդի հոգում ազգային շահերի ընդհանրության գիտակցությունը, հակադրելով իր լեզուն, գիրն ու գրականությունը և առհասարակ մշակույթը թե՛ Սասանյան Պարսկաստանին և թե՛ Բյուզանդական կայսրությանը։ Այս վերջին հանգամանքն իր հերթին ազդում էր եկեղեցու վրա, դարձնելով այն զուտ ազգային՝ նախարարական կազմակերպություն, որն ի վերջո, «տիեզերական» եկեղեցու կազմակերպության մեջ դարձավ ինքնուրույն ազգային եկեղեցի։ Հայոց եկեղեցին սատարում էր հայ ժողովրդի պայքարը օտար նվաճողների դեմ։

Սահակ Պարթևին կաթողիկոսությունից հեռացնելուց հետո, Սասանյան-

---

[7] Ինչպես նշում է Եղիշեն, Հայաստանում քրիստոնեությունը վերացնելու Սասանյանների փորձերը սկսվել են Արշակ Բ-ի ժամանակաշրջանից (Եղիշե, Ա, էջ 6, հմմտ. Փավստոս, Դ, ծզ)։
[8] Ղազար Փարպեցի, Դրվագ Ա, գլուխ ԺԲ (աշխ. թարգմ., էջ 48)։

ները կաթողիկոս են դարձնում Աղբիանոսի տան ներկայացուցիչ Սուրմակին՝ Արծկե գյուղից։ Սակայն մի տարի չանցած, նախարարների խնդրանքով նա կարգալույծ է լինում՝ և նրա փոխարեն Վռամ Ե Գոռը նշանակում է ասորի Բրքիշոյին, որը, ինչպես հաղորդում է Խորենացին, երեք տարի ամենադատարկ ու շռայլ կյանք էր վարում իր հետ բերած ընկերակիցների մասնակցությամբ, հափշտակելով վախճանված եպիսկոպոսների վիճակները[9]։

Հարցը սրվել էր, և նոր կաթողիկոսի ընտրությունն ընդունել էր քաղաքական պայքարի բնույթ, որին միջամտեց և Բյուզանդական կայսրությունը։ Նախարարների ամենաազդեցիկ մասը և հոգևորականությունը պահանջում էին, որ կաթողիկոսական աթոռին նորից վերականգնվի Սահակ Պարթևը, որը պահվում էր Տիզբոնում, իր երկրից հեռու Բյուզանդական Հայաստանի զորավար Անատոլիոսը, Խորենացու ասելով, «Կաբինից ուղարկեց կուկայառիճեցի Հավուկին՝ խնդրելու, որ եթե (պարսից) թագավորը չի հաճում նրան իր բաժնում պահել, թող տա հունաց բաժնին»։ Վռամ Ե Գոռն ստիպված վերադարձնում է Սահակ Պարթևին հայրենիք այն պայմանով, որ նա չի օգտագործի իր դիրքը սասանյան պետության դեմ և հավատարիմ կմնա արքայից արքային[10]։ Մինչև վերադարձը կաթողիկոսը մի շարք խնդրանքներով դիմում է արքայից արքային։ Սահակ Պարթևն այս անգամ ևս առաջին հերթին մտահոգված էր նախարարների ժառանգական իրավունքների վերականգնումով[11], որն արտահայտվեց նախարարների գահերի հաջորդականությունը ցույց տվող «Գահնամակում»[12]։

Սահակ Պարթևի խնդրանքով, արքայից արքան հազարապետի պատիվը տալիս է Վահան Ամատունուն, իսկ Սահակ կաթողիկոսի թոռանը՝ Վարդան սպարապետին, նորից հաստատելով Մամիկոնյան տոհմի նահապետ, վերադարձնում է Հայաստան[13]։ Դա հայ ժողովրդի դիմադրությամբ ձեռք բերված կարևոր հաջողություն էր։ Երկրի գլխավոր գործակալությունները՝ հազարապետությունը և սպարապետությունը անցնում էին իսկական հայրենասերներին, որոնք պատրաստ էին զոհվել իրենց հայրենիքի ու ժողովրդի համար։ Սակայն Վռամը Սահակ Պարթևին չվստահեց և նրա հետ միասին ուղարկեց ասորի Շմուել եպիսկոպոսին, «որպեսզի Մեծն Սահակին ընդդիմադիր և հակաթոռ լինի, և որոշում է նրա անելիքը՝ ընկերանալ մարզպանին, վերահասու լինել պահանջվելիք հարկերի բաշխման, դատաստաններին և այլ աշխարհական կարգերին»[14]։

Սահակ Պարթևը, այսպիսով, մնաց իր պաշտոնում միայն ձևականորեն։ Շմուելը նստում էր Վաղարշապատում, իսկ Սահակը քաշվում է իր կալվածքը՝ Բագրևանդ գավառի Բլուր գյուղը, Բագավան ավանից ոչ հեռու։ Սահակ Պարթևին միայն իրավունք էր վերապահվում ուսուցանելու քրիստոնեական ուսմունքը և «ձեռնադրելու նրանց, որոնց կհամաձայնվի Շմուելը»[15]։

Այնուամենայնիվ, մինչև իր կաթողիկոսական գործերից հեռանալը, Սա-

---

9 Խորենացի, Գ, կզ (աշխ. թարգմ., էջ 312)։
10 Նույն տեղում, Գ, կե (աշխ. թարգմ., էջ 310)։
11 Խորենացի, Գ, կե (աշխ. թարգմ., էջ 311)։
12 *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 267—271.
13 Խորենացի, Գ, կե (աշխ. թարգմ., էջ 312)։
14 Նույն տեղում, Գ, կե (աշխ. թարգմ., էջ 310)։
15 Նույն տեղում։

հակ Պարթևը Հայաստանի ամենահեղինակավոր մարդուն՝ Մեսրոպ Մաշտոցին կարողանում է նշանակել Վաղարշապատի Մայր աթոռի Կաթողիկե եկեղեցու (էջմիածնի տաճարի) վերակացու։ Շմուելի մահից հետո նախարարները զզված նրա բարքերից և արարքներից, գնում են Սահակ Պարթևի մոտ, խնդրում վերադառնալ իր աթոռը և «ուխտի գիր» են կնքում, որ կաթողիկոսության աթոռը ժառանգաբար կտան նրա թոռներին։ Սակայն Սահակ Պարթևը ժառանգ-չունենր և շուտով մահանում է 439 թ. (սեպտեմբերի 7-ին)[16], Բլուր գյուղում։ «Սահակ Պարթևը,— գրում է Խորենացին,— մահկանացու ծնվելով՝ անմահ թողեց իր հիշատակը»[17]։ Նրա աճյունը հողին են հանձնում իր տոհմական գերեզմանատանը՝ Աշտիշատ ավանում։

Նախարարները կաթողիկոսի պատիվը հանձնում են Մեծ վարդապետ Մաշտոցին, որը, սակայն, ապրեց միայն վեց ամիս և մահացավ 440 թ. փետրվարի 17-ին (մեհեկան ամսի 13-ին), շաբաթ օրը, Վաղարշապատում։ Այդ մեծ գործչի աճյունը հազարապետ Վահան Ամատունին ամփոփում է իր ոստանում՝ Օշական գյուղում և երեք տարուց հետո (442) նրա գերեզմանի վրա կառուցում գմբեթավոր կլոր հուշարձան՝ եկեղեցի[18]։

Կաթողիկոսական աթոռին, իբրև տեղապահ, նստում է Մաշտոցի աշակերտ Հովսեփ Հողոցմեցին (439—451), որը մինչև վերջ էլ իբրև կաթողիկոս չհաստատվեց պարսից արքունիքի կողմից և մնաց տեղապահ[19]։

Հայաստանի վիճակը խիստ վատթարացավ Հազկերտ Բ-ի (439—457) գահակալությամբ։ Միջին Ասիայում վաչկատուն ցեղերի, ինչպես նաև Կովկասյան լեռնաշղթայի հյուսիս-արևելքից ներխուժող հոների դեմ պատերազմելու համար Հազկերտ Բ-ն հավաքագրում է ոչ միայն իր պետության ռազմական ուժերը, այլև հատուկ հրովարտակով հրամայում է զորք հավաքել ենթակա քրիստոնյա երկրներից և առաջին հերթին Հայաստանից[20]։

Ենթակա երկրներից զինվորական ուժի հավաքագրումը Սասանյանների համար նաև այն նշանակությունն ուներ, որ նրանք Հայաստանը, Վիրքը և Աղվանքը զրկում էին տեղական ռազմական ուժերից։ Այդ երկրները մնում էին անպաշտպան, որը և հնարավորություն էր տալիս Սասանյաններին իրագործելու իրենց նվաճողական ծրագրերը։ Այս դեպքերի ժամանակակիցները լավ էին հասկանում Տիզբոնի արքունիքի գաղտնի նպատակները։

Հայկական հեծելազորի համար մշտական երևույթ է դառնում զինվորական ծառայության մեջ լինել իր հայրենիքից դուրս, հեռավոր վայրերում։ Ընդ որում, պատերազմական գործողությունների ժամանակ ամեն անգամ հին

---

16 *Ed. Dulaurier*, Recherches sur la chronologie arménienne, Paris, 1859. c. 135—136.

17 Խորենացի, Գ, կէ (աշխ. թարգմ., էջ 314)։ Լուսավորչի տնից մնում էր միայն Սահակ Պարթևի դուստր Սահականուշը՝ Համազասպ Մամիկոնյանի կինը։ Նրանց զավակներն էին Վարդանը, Հմայակը և Համազասպյանը։ Մամիկոնյաններն իրենց ժառանգական կալվածքներին՝ Տայքին և Տարոնին, միացնում են Լուսավորչի տան ընդարձակ կալվածքները, որոնք գտնվում էին Հայաստանի պարսկական ու բյուզանդական մասերում։ Դրանով վերականգնվում է նրանց առաջնակարգ դիրքը երկրում։

18 Այդ ավերված տաճար-դամբարանի տեղում XIX դարում կառուցվում է այժմյան բազիլիկ եկեղեցու շենքը, որն իր մեջ է առնում նախկին տաճարի շենքը։

19 Խորենացի, Գ, կէ։

20 Եղիշե, Ա (գրաբար բնագիր, էջ 11—12)։

ուժերը փոխարինվում էին նորերով[21]։ Ղազար Փարպեցին վկայում է, որ Հայաստանի սպարապետ Վարդան Մամիկոնյանը կռվել է հոների դեմ Մարվիրոտ վայրում[22], իբրև վասալ «արեաց արքայի»[23]։ Այստեղ 450—451 թթ. հոների-խիոնիտների դեմ տարած մեծ հաղթանակից հետո Հազկերտ Բ-ն չի արձակում իր մոտ եղած հայոց, վրաց և աղվանից զորամասերը, այլ տանում է նրանց և հավաքում մի տեղ՝ Պահլ-դուռ, որ Ղազար Փարպեցու հիշատակած նույն Մարվիրոտն է, և պահում այնտեղ հետագա ռազմական գործողությունների համար[24]։

Հայրենիքից հեռու գտնվող քրիստոնյա զինվորներին, և առաջին հերթին հայերին, պարսիկ մոգերը զանազան միջոցներով աշխատում էին կրոնափոխ անել։ Քրիստոնյա զորամասերն ուղարկվում էին մարտի ամենավտանգավոր տեղերը, որտեղ զինվորներից շատերն սպանվում էին։ Սակայն դրանով չէին վերջանում հալածանքները, պարսիկները պակասեցնում էին զինվորական ծառայության համար նախատեսված վարձը, տանջում էին քաղցով ու ծարավով, ձմեռները տանում էին ամենավատթար տեղերը, նսեմացնում մյուսների առաջ, ենթարկում խոշտանգումների, ազնվականներին զրկում պատիվներից[25]։

Հայոց հեծելազորի տոկունությունը բացատրվում է նաև նրանով, որ նրանց հետ գնացած հայ հայրենասեր հոգևորականությունը ձգտում էր բարձր պահել հայկական զորքի բարոյական ոգին։ Նրանցից շատերը հայկական մշակույթի ստեղծողներն էին։ Սահակ-մաշտոցյան դպրոցի սաներն էին նրանք, որոնց մեջ առանձնապես ուժեղ էր սերմանված հայրենասիրությունը։ Եղիշեն սրտի կսկիծով է պատմում հայոց բանակի անելանելի դրության մասին օտարության մեջ[26]։ Սասանյանների այս դաժան միջոցառումներն առաջ են բերում մեծ դժգոհություն նախարարների և ազատների շրջանում։

Այդ ժամանակ Սասանյանները սկսեցին համարձակ գործել։ Հայաստան ուղարկված պարսկական արքունիքի ներկայացուցիչ Դենշապուհի անցկացրած աշխարհագրի հետևանքներն անմիջապես զգացնել տվին Սասանյանների հարկային քաղաքականության ողջ ծանրությունը։ Բացի շինականներից ու ռամիկներից, հարկատու էր դառնում հոգևորականությունը, որը մինչ այդ ապահարկ էր[27]։ Այդ անմխիթար վիճակը Եղիշեն նկարագրում է հետևյալ կերպ. «Որտեղից պետք էր հարյուր դահեկան առնել, կրկնապատիկն էին առնում. այսպես էլ (հարկի տակ) դրին եպիսկոպոսներին և երեցներին, ոչ միայն շեն, այլև ավերակ տեղերը։ Մանավանդ ո՞վ կարող է պատմել, թե ինչպիսի ծանր տուրքեր ու սակեր, բաժեր ու հասեր էին նշանակված լեռների, դաշտերի ու անտառների վրա։ Առնում էին ոչ թե ինչպես վայել է պետական արժանապատվությանը, այլ ավազակաբար հափշտակելով, այն աստիճան, որ

21 Նույն տեղում էջ 12։

22 Ղազար Փարպեցի (Բ, խգ, էջ 7)։ Համապատասխանում է Մերվի հռչակավոր երկրագործական օազիսին, որը գտնվում էր Գահլ (Բահլ, Բակտրա) քաղաքից արևմուտք, պաշտպանելով քոչվոր ցեղերից նրա մատույցները, ուստի կոչվում էր «Գահլ-դուռ», ինչպես և հիշատակում է Եղիշեն «Գահլա դուռն»։ Մի այլ Գահլ-դուռ գտնվում էր Շամախուց հյուսիս։

23 Փարպեցի, Բ, խգ։

24 Եղիշե, Ա (աշխ. թարգմ., էջ 15)։

25 Նույն տեղում, էջ 14։

26 Նույն տեղում, էջ 14, 218։

27 Եղիշե, Բ (աշխ. թարգմ., էջ 26—27)։

իրենք էլ մեծապես զարմանում էին՝ «թե մի տեղից որ այսքան գանձ է դուրս գալիս, էլ ինչպե՞ս է չեն մնում այդ աշխարհը»[28]։

Եղիշեն շատ լավ է հասկացել, թե վերջին հաշվով ինչ էր հետապնդում աշխարհագիրը՝ տնտեսական ճնշում գործադրելով ստիպել ազգաբնակչությանը ընդունել զրադաշտականությունը, որի հետևորդները թեթևանում էին հարկերի ծանրությունից։ Սասանյաններն այդ կազմակերպված կողոպուտի միջոցով նաև ձգտում էին տնտեսապես սնանկացնել երկիրը և դրանով իսկ վերջնականապես Հայաստանը ենթարկել իրենց իշխանությանը։

Աշխարհագրին և հարկերի ծանրացմանը հետևեց մի այլ ձեռնարկում, որը պիտի զրկեր նախարարներին ու եկեղեցուն իրենց դարավոր ժառանգական իրավունքներից։ Դենշապուհը երկրի գործակալությունները վերցնում է հայ նախարարներից և հանձնում պարսիկ ավագանուն։ Վահան Ամատունուն ամբաստանելով՝ նա հեռացրեց պաշտոնից և նրա փոխարեն հազարապետ նշանակեց մի պարսիկի։ Նույնպես է վարվում և «մեծի դատաւորութեան» գործակալության հետ, որն այն ժամանակ վարում էր կաթողիկոսի տեղապահ Հովսեփ Հողոցմեցին։ Նա զրկվում է այդ պատվից և նրա փոխարեն նշանակվում է մի մոգպետ[29]։

Գործակալություններից հայերի ձեռքում մնում էր միայն սպարապետական իշխանությունը։ Հայկական հեծելազորի հիմնական մասը գտնվում էր Միջին Ասիայում, հարկադրաբար ծառայելով Սասանյանների պետական շահերին։ Երկրում մնում էր մարզպանը՝ Վասակ Սյունին, որը հավատարիմ էր պարսից արքունիքին։

Այս միջոցառումները խախտում էին երկրի տնտեսական և քաղաքական իրավիճակը, Հայաստանը դարձնում պարսկական մի նահանգ։ Դժգոհությունը Սասանյանների դեմ դառնում է համաժողովրդական։ Հակապարսկական, հակազրադաշտական տրամադրություններով համակվում են ժողովրդի բոլոր խավերը և այդ դժգոհությունները վերածվում են կազմակերպված հակասասանյան շարժման։

## 2. ԱՐՏԱՇԱՏԻ ԺՈՂՈՎԸ։ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻ ՏԻԶԲՈՆ ՄԵԿՆԵԼԸ ԵՎ ՎԵՐԱԴԱՐՁԸ

Այս միջոցառումներին հետևում է պարսից հազարապետ Միհրներսեհի նամակը՝ հրովարտակը հայերի հավատափոխության մասին, որն ուղարկվում է «հայոց բոլոր մեծամեծներին»[30]։ Հրովարտակում նշվում է, որ եթե հայերն ընդունեն զրադաշտականությունը, վրացիներն ու աղվանները կհետևեն նրանց օրինակին[31]։ Ի վերջո, հրովարտակում հազարապետը հայտնում է, որ նախարարները երկու ելք ունեն, կամ կետաևետ պատասխանեն դրան և կամ գնան Տիզբոն ու ներկայանան Մեծ ատյանին[32]։

Հրովարտակը չի հուսալքում հայոց ավագանուն։ Դրան պատասխանելու

28 Նույն տեղում, էջ 27—28։

29 Նույն տեղում։

30 Փարպեցի, Բ, իբ էջ 43—44, Եղիշե, Բ (աշխ. թարգմ., էջ 28—30)։

31 Փարպեցի, Բ, իա, էջ 43։

32 Եղիշե, Բ (աշխ. թարգմ., էջ 30)։

ուժերը փոխարինվում էին նորերով[21]։ Ղազար Փարպեցին վկայում է, որ Հայաստանի սպարապետ Վարդան Մամիկոնյանը կռվել է հոների դեմ Մարվիռոտ վայրում[22], իբրև վասալ «արեաց արքայի»[23]։ Այստեղ 450—451 թթ. հոների-խիոնիտների դեմ տարած մեծ հաղթանակից հետո Հազկերտ Բ-ն չի արձակում իր մոտ եղած հայոց, վրաց և աղվանից զորամասերը, այլ տանում է նրանց և հավաքում մի տեղ՝ Պահլ-դուռ, որ Ղազար Փարպեցու հիշատակած նույն Մարվիռոտն է, և պահում այնտեղ հետագա ռազմական գործողությունների համար[24]։

Հայրենիքից հեռու գտնվող քրիստոնյա զինվորներին, և առաջին հերթին հայերին, պարսիկ մոգերը զանազան միջոցներով աշխատում էին կրոնափոխ անել։ Քրիստոնյա զորամասերն ուղարկվում էին մարտի ամենավտանգավոր տեղերը, որտեղ զինվորներից շատերն սպանվում էին։ Սակայն դրանով չէին վերջանում հալածանքները, պարսիկները պակասեցնում էին զինվորական ծառայության համար նախատեսված վարձը, տանջում էին քաղցով ու ծարավով, ձմեռները տանում էին ամենավատթար տեղերը, նսեմացնում մյուսների առաջ, ենթարկում խոշտանգումների, աղնվականներին զրկում պատիվներից[25]։

Հայոց հեծելազորի տոկունությունը բացատրվում է նաև նրանով, որ նրանց հետ գնացած հայ հայրենասեր հոգևորականությունը ձգտում էր բարձր պահել հայկական զորքի բարոյական ոգին։ Նրանցից շատերը հայկական մշակույթի ստեղծողներն էին։ Սահակ-մաշտոցյան դպրոցի սաներն էին նրանք, որոնց մեջ առանձնապես ուժեղ էր սերմանված հայրենասիրությունը։ Եղիշեն սրտի կսկիծով է պատմում հայոց բանակի անելանելի վիճակի մասին օտարության մեջ[26]։ Սասանյանների այս դաժան միջոցառումներն առաջ են բերում մեծ դժգոհություն նախարարների և ազատների շրջանում։

Այդ ժամանակ Սասանյանները սկսեցին համարձակ գործել։ Հայաստան ուղարկված պարսկական արքունիքի ներկայացուցիչ Դենշապուհի անցկացրած աշխարհագրի հետևանքներն անմիջապես զգացնել տվին Սասանյանների հարկային քաղաքականության ողջ ծանրությունը։ Բացի շինականներից ու ռամիկներից, հարկատու էր դառնում հոգևորականությունը, որը մինչ այդ ապահարկ էր[27]։ Այդ անմխիթար վիճակը Եղիշեն նկարագրում է հետևյալ կերպ. «Որտեղից պետք էր հարյուր դահեկան առնել, կրկնապատիկն էին առնում. այսպես էլ (հարկի տակ) դրին եպիսկոպոսներին և երեցներին, ոչ միայն շեն, այլև ավերակ տեղերը։ Մանավանդ ո՞վ կարող է պատմել, թե ինչպիսի ծանր տուրքեր ու սակեր, բաժեր ու հասեր էին նշանակված լեռների, դաշտերի ու անտառների վրա։ Առնում էին ոչ թե ինչպես վայել է պետական արժանապատվությանը, այլ ավազակաբար հափշտակելով, այն աստիճան, որ

21 Նույն տեղում էջ 12։

22 Ղազար Փարպեցի (Բ, խդ, էջ 7)։ Համապատասխանում է Մերվի հռչակավոր երկրագործական օազիսին, որը գտնվում էր Պահլ (Բահլ, Բակտրա) քաղաքից արևմուտք, պաշտպանելով քոչվոր ցեղերից նրա մատույցները, ուստի կոչվում էր «Պահլ-դուռ», ինչպես և հիշատակում է Եղիշեն «Պահլա դուռն»։ Մի այլ Պահլ-դուռ գտնվում էր Շամախուց հյուսիս։

23 Փարպեցի, Բ, խդ։

24 Եղիշե, Ա (աշխ. թարգմ., էջ 15)։

25 Նույն տեղում, էջ 14։

26 Նույն տեղում, էջ 14, 218։

27 Եղիշե. Բ (աշխ. թարգմ., էջ 26—27)։

իրենք էլ մեծապես զարմանում էին՝ «թե մի տեղից որ այսքան գանձ է դուրս գալիս, էլ ինչպե՞ս է շեն մնում այդ աշխարհը»[28]։

Եղիշեն շատ լավ է հասկացել, թե վերջին հաշվով ինչ էր հետապնդում աշխարհագիրը՝ տնտեսական ճնշում գործադրելով ստիպել ազգաբնակչությանը ընդունել զրադաշտականությունը, որի հետևորդները թեթևանում էին հարկերի ծանրությունից։ Սասանյաններն այդ կազմակերպված կողոպուտի միջոցով նաև ձգտում էին տնտեսապես սնանկացնել երկիրը և դրանով իսկ վերջնականապես Հայաստանը ենթարկել իրենց իշխանությանը։

Աշխարհագրին և հարկերի ծանրացմանը հետևեց մի այլ ձեռնարկում, որը պիտի զրկեր նախարարներին ու եկեղեցուն իրենց դարավոր ժառանգական իրավունքներից։ Դենշապուհը երկրի գործակալությունները վերցնում է հայ նախարարներից և հանձնում պարսիկ ավագանուն։ Վահան Ամատունուն ամբաստանելով՝ նա հեռացրեց պաշտոնից և նրա փոխարեն հազարապետ նշանակեց մի պարսիկի։ Նույնպես է վարվում և «մեծի դատաւորութեան» գործակալության հետ, որն այն ժամանակ վարում էր կաթողիկոսի տեղապահ Հովսեփ Հողոցմեցին։ Նա զրկվում է այդ պատվից և նրա փոխարեն նշանակվում է մի մոգպետ[29]։

Գործակալություններից հայերի ձեռքում մնում էր միայն սպարապետական իշխանությունը։ Հայկական հեծելազորի հիմնական մասը գտնվում էր Միջին Ասիայում, հարկադրաբար ծառայելով Սասանյանների պետական շահերին։ Երկրում մնում էր մարզպանը՝ Վասակ Սյունին, որը հավատարիմ էր պարսից արքունիքին։

Այս միջոցառումները խախտում էին երկրի տնտեսական և քաղաքական իրավիճակը, Հայաստանը դարձնում պարսկական մի նահանգ։ Դժգոհությունը Սասանյանների դեմ դառնում է համաժողովրդական։ Հակապարսկական, հակազրադաշտական տրամադրություններով համակվում են ժողովրդի բոլոր խավերը և այդ դժգոհությունները վերածվում են կազմակերպված հակասասանյան շարժման։

## 2. ԱՐՏԱՇԱՏԻ ԺՈՂՈՎԸ։ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻ ՏԻԶԲՈՆ ՄԵԿՆԵԼԸ ԵՎ ՎԵՐԱԴԱՐՁԸ

Այս միջոցառումներին հետևում է պարսից հազարապետ Միհրներսեհի նամակը՝ հրովարտակը հայերի հավատափոխության մասին, որն ուղարկվում է «հայոց բոլոր մեծամեծներին»[30]։ Հրովարտակում նշվում է, որ եթե հայերն ընդունեն զրադաշտականությունը, վրացիներն ու աղվանները կհետևեն նրանց օրինակին[31]։ Ի վերջո, հրովարտակում հազարապետը հայտնում է, որ նախարարները երկու ելք ունեն, կամ կետառկետ պատասխանեն դրան և կամ գնան Տիզբոն ու ներկայանան Մեծ ատյանին[32]։

Հրովարտակը չի հուսալքում հայոց ավագանուն։ Դրան պատասխանելու

28 Նույն տեղում, էջ 27—28։

29 Նույն տեղում։

30 Փարպեցի, Բ, իբ էջ 43—44, Եղիշե, Բ (աշխ. թարգմ., էջ 28—30)։

31 Փարպեցի, Բ, իա, էջ 43։

32 Եղիշե, Բ (աշխ. թարգմ., էջ 30)։

նպատակով Հայաստանի բոլոր գավառներից նախարարներն ու հոգևորականները հրավիրվում են Արտաշատ՝ ժողովի[33]։

Ժողովին ներկա էին նախարարական դասից՝ 17 իշխան և հոգևոր դասից՝ 17 եպիսկոպոս[34]։

Ժողովի նախագահն էր, ըստ տիրող օրենքի, «մեծի դատաւարութեան» գործակալը՝ քահանայապետը, կաթողիկոսի տեղապահ Հովսեփ Հողոցմեցին։ Արտաշատում հավաքվել էր հայ նախարարների և հոգևորականության ամենահեղինակավոր մասը՝ երկրի իշխանները և մտավորականությունը։ Հավաքվածներից շատերը սահակ-մաշտոցյան դպրոցի նախկին աշակերտներն էին։ Հավաքվածներին համակել էր հայ ժողովրդի ինքնության և հայրենիքի պաշտպանության խորը գիտակցությունը, այդ սուրբ գործի արդարությունը։ Նրանք զգում էին իրենց բարոյական ու կուլտուրական վեհությունը Սասանյանների համեմատությամբ և խորապես համոզված էին, որ «այս բոլոր չարիքները մարդու միտքն են մտնում անուսումնությունից»[35]։ Նրանք գիտակցում էին, որ ուսումն է մարդու մեջ զարգացնում բարձր ինքնագիտակցություն և մարդասիրություն։ Նշանակալից են հայոց ուսկեդարը պսակող Եղիշեի խոսքերը. «Կույրը զրկվում է արեգակի ճառագայթներից, իսկ տգետը զրկվում է կատարյալ կյանքից։ Լավ է աչքով կույր (լինել), քան մտքով կույր։ Ինչպես որ հոգին մեծ է մարմնից, այնպես էլ մտքի տեսողությունը մեծ է մարմինների տեսողությունից»[36]։ Ահա այսպիսի վեհ, համամարդկային՝ առաջադեմ գաղափարներով էին տոգորված Արտաշատի ժողովականները։

Այս առաջադեմ ոգով է գրված ժողովականների պատասխան նամակը, որտեղ քրիստոնեական գաղափարախոսության դիրքերից նշվում է քրիստոնեական գաղափարների ճշմարտությունը և մազդեզանց կրոնի թշվառությունն ու մանկամտությունը։ Նրանք մատնանշում էին, որ այն հարցերը, որոնք վերաբերում են խղճի ազատությանը, չեն կարող օրենքի ուժով փաթաթել մարդկանց վզին։ Ապա ընդգծում են, որ նրանք իրենց հավատը և գաղափարները չեն փոխի ոչ մի գնով, իսկ եթե հարկավոր լինի մեռնել հայրենիքի համար, նրանք պատրաստ են իրենց զոհել սուրբ սեղանին։

Նամակը վերջացնելուց հետո ժողովականները երդվում են հավատարիմ մնալ իրենց միաբանությանը[37]։

Խիզախ և հանդուգն պատասխան նամակը վրդովեցնում է արքայից ար-

---

33 Փարպեցի, բ, իգ։ Եղիշե, Բ (աշխ. թարգմ., էջ 31)։

34 Փարպեցին (Բ, իգ, էջ 44—45) և Եղիշեն (Բ, աշխ. թարգմ., էջ 30—31) հականե հանվանե հիշում են Արտաշատի ժողովի մասնակիցներին։ Սյունյաց Վասակ իշխանը, Մամիկոնյան իշխան և Հայոց սպարապետ Վարդանը, Վահևունյաց Գյուտ, Մոկաց Արտակ, Անձևացյաց Շմավոն, Ապահունյաց Մանեճ, Վանանդի Առավան, Արշարունյաց Արշավիր, Ամատունյաց Վահան, Գնունյաց Ատոմ, Պալունյաց Վարազ-Շապուհ, Աշոցի Հրահատ, Դիմաքսյան Հմայակ, Աբեղենից Գադրիկ, Առավեղենից Փափագ և Զյունական Վրեն իշխանները։ Հոգևորական դասից ժողովում ներկա էին Հայոց կաթողիկոսի տեղապահ Հովսեփը, Սյունյաց Անանիա, Արծրունյաց Մուշե, Տարոնի Սահակ, Ռշտունիքի Սաճակ, Մանազկերտի Մելիտէ, Բագրևանդի Եզնիկ (Կողբացին), Բզնունիքի Սուրմակ, Բասենի Թաթիկ, Մարդաստանի Երեմիա, Վանանդի Գադ, Մոկաց Բասիլ, Անձևացյաց Եղբայր, Տայոց Տաճատ, Տարբերունու Քասուն, Մարդաղվո Զավեն, Ամատունյաց Եղիշե, Ապահունյաց Երեմիա եպիսկոպոսները՝ ավագ քահանաների և վանականների հետ։

35 Եղիշե, Բ (աշխ. թարգմ., էջ. 20)։

36 Նույն տեղում։

37 Նույն տեղում, էջ 31—41։

*քային և պարսից ավագանուն։ Բոլորը զարմանում են խիզախ ու համարձակ նամակի վրա։ Մոգերը և հազարապետ Միհրներսեհը արքային արքային խորհուրդ են տալիս լուրջ ուշադրություն դարձնել և հայ նախարարների պատասխան նամակը դիտել իբրև հակապետական ելույթ։ Հազկերտը հրամայում է անմիջապես հրովարտակ ուղարկել, որով հրամայվում է Հայաստանի, Վիրքի և Աղվանքի բոլոր տանուտերերին և մեծամեծներին շտապ գնալ Պարսկաստան։ Ուշացողներին սպառնում էր մահապատժով*[38]*։*

*Հայաստանից Տիզբոն՝ Բարձրագույն Դուռը ներկայացան հետևյալ տասը նախարարները. մարզպան Վասակ Սյունին, Ներշապուհ Արծրունին, Արտակ Ռշտունին, Գադիշո Խորխոռունին, սպարապետ Վարդան Մամիկոնյանը, Արտակ Մոկացին, Մանեճ Ապահունին, Վահան Ամատունին, Գյուտ Վահևունին, Շմավոն Անձևացին*[39]*։*

*Եղիշեն չի հիշում, թե Վրաստանից և Աղվանքից ովքեր գնացին, իսկ Ղազար Փարպեցին նշում է Վրաց աշխարհից Աշուշա բդեշխին և այլ տանուտերերի, առանց անունները հիշատակելու*[40]*։*

*Հայոց միաբանության մեջ էին նաև այն նախարարները, որոնք հայրենիքից դուրս էին գտնվում, ուստի նրանք էլ գնացին Տիզբոն*[41]*։ Տիզբոն գնացող նախարարները փափագում էին արքունի դռանը տեսնել իրենց մերձավորներին ու սիրելիներին, որոնք գտնվում էին այնտեղ իբրև պատանդներ*[42]*։*

*Տիզբոն ներկայացած (450) նախարարներին Հազկերտ Բ-ն նախ և առաջ հրամայում է երկրպագել կրակին, հակառակ դեպքում նրանց սպառնում էր չարչարանքով։ Նախարարներն ընդդիմանում են և խնդրում Հազկերտին, որ հայտնի իրենց, թե ի՞նչն է նրա դժգոհության պատճառը։ Արքայից արքան պատասխանում է նախարարներին, որ վնաս է համարում նրանց աշխարհի հարկը արքունի գանձարանն ընդունելը և նրանց արիությունն ու քաջությունն էլ անօգուտ, քանի դեռ պարսից կրոնը չեն ընդունել։ Այնուհետև Հազկերտը կրկին մահապատժով սպառնում է նրանց ուրանալ քրիստոնեական կրոնը*[43]*։*

*Հայոց սպարապետ Վարդան Մամիկոնյանն առաջ գալով աներկյուղ և քաջությամբ պատասխանում է արքային. «Այն օրենքները, որ աստծուց սովորեցի իմ մանկությունից՝ թողնել և երկյուղի հետ փոխել անհնար է։ Թե որ մարդուց ընդունած լինեի այն ճշմարիտ վարդապետությունը, որ իմ մտքումը հաստատված է, գիտենայի որ ճշմարիտ են և ուրանայի, իմ անձը ողորմելի կհամարեի, ուր մնաց Աստծո բերանից ընդունած և սովորած օրենքները վաճառել սուտ փառքերի և մարդու երկյուղի փոխարեն։ Աստված չանե։ Իմ պատասխաններն այս են. սրա վրա ցանկանում եմ մեռնել, քան թե ուրացությամբ ապրել առանց աստծու»*[44]*։*

*Երեք երկրների նախարարները լսելով Վարդան Մամիկոնյանի աներկյուղ*

---

38 Եղիշե, *Բ։* Փարպեցի, *Բ, ԻԵ։*

39 Փարպեցի, *Բ, ԻԵ, էջ 47։* Եղիշե, *Բ (աշխ. թարգմ., էջ 42—43)։*

40 Փարպեցի, *նույն տեղում։*

41 Եղիշե, *Բ (աշխ. թարգմ., էջ 43)։*

42 *Նույն տեղում։*

43 *Նույն տեղում։ Փարպեցին Հազկերտ Բ-ի հետ տեղի ունեցած հանդիպման մասնակիցների թվում, բացի հայոց նախարարներից, հիշատակում է նաև վրաց և աղվանից իշխաններին (Բ, ԻԶ)։*

44 Փարպեցի, *Բ (աշխ. թարգմ., էջ 96—97)։*

պատասխանը և տեսնելով արքայի դեմքի բարկությունը, դիմում են վերջինիս՝ խնդրելով, որ նա ժամանակ տա նրանց վերջնական պատասխանի համար։

Հայոց, վրաց և աղվանից նախարարները գաղտնի հավաքվեցին և խորհուրդ արին, թե ինչ հնարքով գտնեն այս գործի ելքը։ Ըստ ժողովականների, եթե նրանք շարունակեին համառել և ընդդիմանալ, արդյունքը կլիներ այն, որ նրանց երկրները կավերվեին և կամայացվեին։ Ուստի միակ ելքը ստեղծված դրությունից նրանք տեսնում էին առերես ուրացության մեջ, որը նրանց հնարավորություն կընձեռեր վերադառնալ հայրենիք և նորից հաստատ մնալ իրենց նախնիների հավատքին[45]։

Երեք երկրների իշխաններն իրենց մտորումները Վարդան Մամիկոնյանից գաղտնի էին պահում, իմանալով, որ նա չի համաձայնվի նույնիսկ առերես ուրանալ։ Սակայն վաղ թե ուշ նա պիտի իմանար։ Նախարարները գալիս են Վարդան Մամիկոնյանի մոտ և բացատրում ստեղծված դրությունը, հիշեցնում, թե ինչ է սպասում նրանց, եթե շարունակեն ընդդիմանալ[46]։ Սակայն Վարդանը հանդիմանում է նրանց և լսել անգամ չի ուզում այդ առաջարկը։ Նախարարներն ստիպված են լինում դիմել նրա մտերիմ ընկերոջը՝ Արտակ Մոկացուն, որպեսզի նա առանձին խորհրդակցի նրա հետ և համոզի առերես ուրանալ։ Ամեն կերպ աշխատում էր համոզել Վարդանին նրա եղբոր քենակալը՝ վրաց բդեշխ Աշուշան։ Վարդան Մամիկոնյանը՝ Սահակ Պարթևի թոռը՝ Լուսավորչի շառավիղը մոր կողմից և Մամիկոնյան տան տերը անհողդողդ էր։ Այն ժամանակ երեք երկրների նախարարները բերեցին Ավետարանը և բոլորը միասին ձեռքները վրան դնելով երդվեցին, որ եթե Վարդանը մի փոքր ժամանակով ընդունի Հազկերտ Բ-ի ասածները և նրանց ազատի որոգայթ լարող թշնամու հարձակումներից, ապա նրա բոլոր ասածները կլսեն և կկատարեն ու հայրենիքի փրկության համար չեն խնայի իրենց կյանքը։ Սոսկալի պատիժ էր սպասում ուրացողին և երդմնազանցին[47]։

Վարդան Մամիկոնյանը, լսելով ու տեսնելով այս ամենը, արտասուքով լցված՝ մի փոքր ժամանակով հանձն առավ առերես ուրանալ[48]։

Ըստ Եղիշեի, նախարարներին առերես ուրանալու այդ որոշումը խորհուրդ էր տվել թագավորի «ներքին խորհրդակիցներից մեկը», որը գաղտնի հետևում էր քրիստոնեական ուսմունքին։ Պահը տագնապալից էր։ Հազկերտը պատրաստվում էր արշավանքի՝ արևելքից վաշկատուն ցեղերի նոր ներխուժումը ետ մղելու։ Արքայից արքայի այդ «ներքին խորհրդականը» նախարարներին զգուշացրել էր, որ Հազկերտ Բ-ն նրանց քշելու էր օտարություն։ Ուստի նախարարները միաբանության ուխտը կատարելուց հետո, այդ անձնավորությանը, որպես պատգամավոր ուղարկում են Հազկերտի մոտ իրենց որոշումը հայտնելու[49]։

Պատմիչները վկայում են, թե որքան մեծ ուրախություն պատճառեց Հազկերտ Բ-ին հայ, վրաց և աղվանից նախարարների ուրացումը։ Արքան նրանց պարգևներ տալով և վերականգնելով պատիվները՝ վերադարձնում է իրենց երկրները՝ զրադաշտականություն տարածելու համար։ Վերադարձող նախարար-

45 Փարպեցի, Բ, ԻԵ։
46 Նույն տեղում։
47 Նույն տեղում։
48 Նույն տեղում։
49 Եղիշե, Բ, Փարպեցի, Բ, ԻԸ։

ներին ուղեկցում էին «բազում այրուձի» և 700 մոգ, որոնց գլխավորում էր մոգպետը։ Մոգերին Հազկերտը հանձնարարում է, որպեսզի մինչև կովից իր վերադառնալը նրանք վերջացնեն իրենց գործը, այսինքն՝ այդ երկրների բնակչությանը կրոնափոխ անեն։ Որպեսզի նախարարները ետ չկանգնեն իրենց խոսքից, Հազկերտը պատանդ է պահում վրաց Աշուշա բդեշխին և Սյունյաց Վասակ իշխանի երկու որդիներին՝ Բաբիկին և Ատրներսեհին[50]։ Այս հանգամանքը որոշակի ազդեցություն գործեց Վասակ Սյունու հետագա վարքագծի վրա։ Իսկ վրաց թագավորը, որը միայն անվանաբար էր գրավում իր նախնիների գահը, կորցրեց երկրի փաստական կառավարիչ Աշուշա բդեշխին, դժվարին վիճակի մեջ ընկավ, մանավանդ մինչ այդ Սասանյանները Վիրքից օտարության մեջ էին ուղարկել բազմաթիվ նախարարների[51]։ Վրաց աշխարհը փաստորեն դուրս մնաց ապստամբական շարժումից, չնայած Սասանյանների քաղաքականությունը հավասարապես ուղղված էր նաև Վիրքի դեմ, իսկ վրաց ժողովուրդը մեծապես համակրում էր հայերի ու աղվանների ապստամբական շարժումը։

---

50 Նույն տեղում։

51 Եղիշե, Բ (աշխ. թարգմ., էջ 48)։

ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

# «ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԸ»

## 1. ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏԱՐԵՐԱՅԻՆ ՇԱՐԺՈՒՄՆ ԸՆԴԴԵՄ ՍԱՍԱՆՅԱՆՆԵՐԻ

*Մինչ առերես կրոնափոխ եղած հայ նախարարները գտնվում էին Տիզբոնում, Հայաստանում սկսվում է տարերային համաժողովրդական շարժում՝ ընդդեմ պարսիկների ու նախարարների, քանի որ վերջիններիս ուրացության և մոգերի բազմությամբ վերադառնալու լուրերն արդեն հասել էին Հայաստան։ Սկսված ապստամբական շարժումն արագ տարածվում է ողջ երկրում։ Ապըստամբած հայ ժողովուրդը որոշում է մինչև արյան վերջին կաթիլը պայքարել հայրենիքի համար։ Հայրենիք վերադարձող նախարարներից երես էին դարձրել ողջ ժողովուրդը և նույնիսկ նրանց հարազատները*[1]։

*Ապստամբած ժողովրդի վճիռն այս էր. «Հարազատ եղբոր ձեռքը թող բարձրանա այն մերձավորի դեմ, որ դուրս է եկել Աստծո պատվիրանի ուխտից. հայրը չխնայի որդուն, և որդին չակնածի հոր պատվից։ Կինը կռվի իր ամուսնու դեմ և ծառան դիմադրի իր տիրոջը»*[2]*։ Կենաց և մահու պայքարի են ելնում տղամարդ ու կին, երիտասարդ ու ծեր։*

*Տիզբոնից վերադարձող նախարարները Հայաստան հասնելով, կանգ են առնում Անգղ գյուղաքաղաքում, որտեղ հայոց զորքի ամառանոցներն էին։ Նրանց հետ էին պարսիկ մոգերը, որոնք ճանապարհին վիճակ էին գցել, թե իրենց գործի համար երեք երկրներից ում ինչ բաժին է հասնելու։ Անգղում մոգերը փորձում են քանդել եկեղեցին և դրա փոխարեն ատրուշան կանգնեցնել։ Տեսնելով իր սրբության խորտակումը՝ ժողովուրդը դագանակներով զինված հարձակվում է մոգերի վրա և ցրում նրանց*[3]*։ Եկեղեցին օգտագործեց տարերայնորեն սկսված ժողովրդական շարժումը և եռանդուն պայքար սկսեց երկրում գտնվող մոգերի դեմ։ Ժողովրդի ողջ ատելությունն ուղղվում է Սասանյանների և նրանց ներկայացուցիչների՝ մոգերի դեմ։ Պարսիկների ծանր հարկահանությունից դժգոհ ժողովրդական զանգվածներն ապստամբում են, սպանում կամ երկրից արտաքսում պարսիկ պաշտոնյաներին ու մոգերին։ Ապստամբած ժողովուրդը հարձակվում է քաղաքների և ամրոցների վրա, ամենուրեք կոտորելով ու հալածելով պարսկական կայազորները։ Շուտով համոզվելով, որ իրենց ձեռնարկումն անիրագործելի է, մոգերը մտածում են միայն այն մասին, թե ինչպես*

---

1 *Տե՛ս* Եղիշե, *Գ (աշխ. թարգմ., էջ 54—55)։* Ղազար Փարպեցի, *Բ, իԹ (գրաբար տեքստ, էջ 55—56)։*

2 Եղիշե, *նույն տեղում, էջ 55։*

3 *Նույն տեղում։*

ողջ և անվնաս ետ վերադառնան իրենց երկիրը[4]։ Հայրենիք վերադարձած առերես կրոնափոխ նախարարները միանում են ապստամբական շարժմանը և ստանձնում նրա ղեկավարությունը։

Ապստամբական շարժումը թևակոխում է իր հաջորդ փուլը՝ տարերային ընդվզումից վերածվելով նախարարական Հայաստանի կազմակերպված ապստամբության։

Սպարապետ Վարդան Մամիկոնյանը Տիզբոնից վերադառնալուց հետո ընտանիքով,. եղբայրների հետ հեռացել էր կայսրության սահմաններում գտնվող իր կալվածքները, բայց նրա ներկայությունը խիստ կարևոր էր, և նախարարների ու հոգևորականության միջամտությամբ Վասակ Սյունին նամակ է գրում և պատգամավորություն ուղարկում, որպեսզի Վարդան Մամիկոնյանը վերադառնա։ Վարդանը վերադառնալով, գլխավորում է երկրի զինված ուժերի ռազմագին նախապատրաստությունը։ Զինված ուժերի ստուգատեսի համար հարմար պահ էր մոտալուտ ամառը, երբ հայկական զորքերի այն մասը, որ դեռևս գտնվում էր երկրում, աշխարհազորի հետ միասին հավաքվելու էին Ծաղկոտն գավառի ամառանոցներում, Անգղ գյուղաքաղաքի մոտ[5]։ Ապստամբության ղեկավար սպարապետ Վարդան Մամիկոնյանը, տեղեկանալով, որ մոգերն արդեն հայտնել են արքունիքին հայերի նախապատրաստվող զինված ապստամբության մասին, շտապում էր կազմակերպել ապստամբների ուժերը, ցանկանալով կանխել պարսկական զորքի ներխուժումը Հայաստան[6]։ Սակայն այդ պահին զգալի դարձավ լոկ հանգամանքների բերումով ապստամբությանը հարած մարզպան Սյունու անվճռական, տատանվող դիրքը։

Պարսից արքունիքից մարզպանի պաշտոն ստացած Վասակ Սյունին, Եղիշեի ասելով, հակված էր հավատափոխության և գործակցում էր պարսիկների հետ[7] (նրա երկու որդիներն էլ պատանդ էին Տիզբոնում)։ Նա ապստամբական շարժման ծավալման հետևանքով հարում է ապստամբությանը։ Ապստամբությունը գլխավորող նախարարները-և, առաջին հերթին, Վարդան Մամիկոնյանը, Վասակ Սյունուն չվստահելով, սկսում են ռազմական գործողությունների նախապատրաստությունը վարել մարզպանից գաղտնի։ Վարդան Մամիկոնյանը, օգտվելով իր սպարապետական իրավունքներից, հրավիրում է նախարարների, սեպուհների ու եպիսկոպոսների գաղտնի խորհրդակցություն, որտեղ քննվում է Պարսկաստանի դեմ տարվելիք ռազմական գործողությունների ստրատեգիական ծրագիրը։ Վասակ Սյունու նկատմամբ եղած մեծ անվստահության մասին է վկայում այն փաստը, որ երբ Ջանդազան իշխանը ցանկանում էր ընդունած որոշումների մասին հայտնել Վասակ Սյունուն, նրան հետապնդում և, ըստ հնագույն սովորության, հասնելուն պես քարկոծում են որպես հայրենիքի դավաճան[8]։

Ապստամբության ղեկավարները ցանկանում էին Վասակ Սյունուն կանգնեցնել արդեն կատարված փաստի՝ ժողովրդի զինված ելույթի առաջ, որպեսզի նա այլևս չկարողանար ետ կանգնել այն առաջարկություններից, որ

---

4 Նույն տեղում, էջ 56։

5 Փարպեցի, Բ, լա էջ 60։

6 Փարպեցի, Բ, լբ (աշխ. թարգմ., էջ 141—147)։

7 Եղիշե, Գ (աշխ. թարգմ., էջ 59)։

8 Նույն տեղում, էջ 61։

արել էր Վարդան Մամիկոնյանին ուղղված իր նամակում։ Երբ նախարարները, Վարդան Մամիկոնյանի գլխավորությամբ, մարզպանին հայտնում են իրենց որոշումը պարսիկների դեմ զինված ելույթի մասին, նա սկզբում տատանվում, հապաղում է, ի վերջո, «θէպետ և ոչ կամաւ, սակայն ի հարկէ յանձն առեալ միաբանէր ընդ նոսա»[9]։

Այնուհետև բոլոր նախարարները և ամբողջ աշխարհազորը, որ բաղկացած էր հիմնականում շինականներից ու ռամիկներից, Վարդան Մամիկոնյանի գլխավորությամբ սրբազան երդում են տալիս Անգղում[10]։ Հայրենիքը ստըրկացնող պարսիկների, նրանց զորքերի ու մոգերի հանդեպ եղած համընդհանուր ատելությունը միավորել էր ժողովրդի բոլոր խավերին։

Համաժողովրդական երդումից հետո աշխարհազորականները հարձակվում են մոգերի կանգնեցրած ատրուշանների վրա, խորտակում դրանք, իսկ զրադաշտական սրբազան կրակը հանգցնում ջրով, որը զրադաշտականները մեծագույն սրբապղծություն էին համարում։ Ապա կալանավորում են Անգղում եղած բոլոր մոգերին, տանում ոչ հեռու գտնվող Շապուհ Բ-ի կողմից ավերված քաղաքը՝ Զարեհավան և այնտեղ սպանում[11]։ Անգղում գտնվող ապստամբական զորքը հաջորդ օրը բաժանվում է երեք մասի և հանկարծակի հարձակմամբ շրջապատում այնտեղ գտնվող պարսկական զորքին ու կոտորում, իսկ զորավարներին կալանավորում և պահում նախարարների ամրոցներում[12]։ Հավանաբար այս միջոցառման նպատակն էր նրանց փոխանակել Տիզբոնում գտնվող հայ պատանդների հետ։

Վիրքում և Աղվանքում տեղի ունեցող իրադարձությունները հայերին ստիպում էին շտապել։ Ապստամբած վրացիներն ու աղվանները սերտ կապ էին պահպանում հայերի հետ։ Սակայն ապստամբ վրացիները մինչև վերջ այդպես էլ չկարողացան գործնականորեն մասնակցել հայերի ապստամբական շարժմանը[13]։

Աղվանքում ևս տարվում էր նույն քաղաքականությունը, ինչ Հայաստանում։ Այստեղ նույն կրոնափոխության նպատակով Հազկերտ Բ-ն ուղարկել էր 300 մոգ։ Մոգերի հետ մեկտեղ անթիվ զորքով եկել և Բաղասականի Փայտակարան քաղաքում ճամբար էր դրել Միհրներսեհը՝ այդտեղից պետք է պարսիկներին իրականացնեին ռազմական հսկողությունն ամբողջ Անդրկովկասի վրա։ Աղվանքում ապստամբական շարժումը գլխավորող Վաչե Բագավորի համար ստեղծվում է տագնապալի վիճակ։ Այն ժամանակ, երբ հայերն սկսել էին իրենց գործողություններն Անգղում, Աղվանքից եկած դեսպանները խնդրում են նրանց արագացնել ռազմական գործողությունները պարսիկների դեմ և օգնության գալ իրենց։ Դեսպանները մեծ տագնապով հայտնում էին, որ հյուսիսից՝ Հոնաց պահակի կողմից, Աղվանքի թիկունքն է գալիս այնտեղ գտնվող Սեբուխտ Նիխորական մարզպանն՝ իր զորքերով[14]։ Հայաստանի համար առանձնապես վտանգավոր էր պարսից հազարապետ Միհրներսեհի

---

9 Նույն տեղում, էջ 62։

10 Նույն տեղում, էջ 61—62։

11 Փարպեցի, Բ, լբ (աշխ. թարգմ. էջ 147)։

12 Եղիշե, Գ (աշխ. թարգմ., էջ 64)։

13 Տե՛ս ლ. ჯანაშია, ლაზარ ფარპეცის ცნობები საქართველოს შესახებ, თბილისი. 1962. էջ 124 -125։

14 Եղիշե, Գ (աշխ. թարգմ., էջ 70)։

Փայտակարանում գտնվելը[15]։ Ապստամբ հայերի դրությունը բարդանում էր։ Ամբողջ Այրարատում, երկրի ռազմական նշանակություն ունեցող բոլոր կենտրոնում տեղավորված էին պարսկական կայազորներ։ Այրարատից այս ամրությունները շարունակվում էին դեպի արևելք, այն ճանապարհի երկայնքով, որը Վայոց ձորով ու Սևանա լճի հարավային ափով, Տրտու (Թարթառ) գետի հովտով տանում էր Աղվանք, Փայտակարան քաղաքը, ուր գտնվում էին Անդրկովկասի երկրները և Կովկասյան լեռնանցքները հսկող պարսկական զինված ուժերի գլխավոր հրամանատարությունը։

Դեպի երկրի կենտրոնական շրջանը պարսկական զորքերի հնարավոր ներխուժումը կանխելու նպատակով հայկական աշխարհազորը Ծաղկոտն լեռների իր ամառանոցներից արագությամբ իջնում է Այրարատ և հարձակվելով պարսկական կայազորների վրա, կոտորում նրանց։ Այսպիսով, հայոց զորքը տիրանում է երկրի բոլոր կարևոր ռազմական նշանակություն ունեցող կետերին և դրանցում տեղավորում հայկական կայազորներ[16]։

Չնայած ապստամբների այս հաջողություններին, առկա ռազմական ուժերն, այնուամենայնիվ, անբավարար էին պարսկական զորքերի գերազանց ուժերի դեմ կռվելու համար։ Հայկական հեծելազորի մեծ մասը գտնվում էր Հայաստանից դուրս, իսկ երկրի ներսում եղած զորքը փոքրաթիվ էր։ Ժողովրդական աշխարհազորի խմբերը թեև մեծաքանակ էին ու պատրաստ մարտական սխրանքի, սակայն պատերազմական գործում անփորձ էին։ Այդ պատճառով էլ Վարդան Մամիկոնյանն անհրաժեշտ էր համարում ռազմական օգնություն խնդրել Հյուսիսային Կովկասում գտնվող հոներից և Բյուզանդիայից։ Նա Վասակ Սյունուն առաջարկում է դեսպանների միջոցով նամակներ հղել կայսրին և Հայաստանի բյուզանդական մասի նախարարներին։ Շուտափույթ կերպով նամակներ են գրվում՝ ուղղված Թեոդոսիոս Բ (408—450) կայսրին և Կոստանդնուպոլսի պալատական ավագանուն, ինչպես նաև բյուզանդական Հայաստանի նախարար-սատրապներին։ Դեսպանության կազմում էին Վահան Ամատունին, Հմայակ Մամիկոնյանը և Մեհրուժան Արծրունին։ Թեոդոսիոս Բ-ն ջերմորեն արձագանքում է հայերի խնդրանքին և պատրաստվում օգնություն ցույց տալ նրանց, բայց շուտով վախճանվում է (450 թ. հուլիսի 2-ին)։ Բյուզանդիայի վիճակն այս ժամանակաշրջանում բարդացել էր։ «Բարբարոսները», Դանուբն անցնելով, սպառնում էին Կոստանդնուպոլսին։ Այս պայմաններում Բյուզանդիայում նոր գահ բարձրացած Մարկիանոս կայսրը (450—457) մերժում է հայերի խնդրանքը և ջանում Սասանյաններին ցուցադրել իր չեզոքությունն ու հավատարմությունը 422 թ. կնքված հիսնամյա խաղաղության դաշնագրին[17]։ Բյուզանդական Հայաստանի նախարարները ևս չեն կարողանում օգնության հասնել իրենց հայրենակիցներին։ Հոների օգնության վրա դժվար էր հույս դնել։ Հայերի համար արդեն պարզ էր, որ իրենք ստիպված են լինելու պարսիկների դեմ կռվելու առանց դրսի օգնության։ Միակ փրկությունը նրանք տեսնում էին իրենց միաբանության և հակառակորդին հանկարծակի հարված հասցնելու մեջ։ Դեպքերի հետագա զարգացումը պետք

---

15 Փարպեցի, Բ, լգ, էջ 63։

16 Եղիշե, Գ։

17 Եղիշե, Գ, էջ 68։ Տե՛ս Վ. Կ. Իսկանյան, Բյուզանդական կողմնորոշման հարցը Վարդանանց պատերազմի ժամանակ, ՊԲՀ, 1966, № 3 (34), էջ 53—70։

է ավելի պարզորոշ ցույց տար ժողովրդական խավերի և աշխարհիկ ու հոգևոր ֆեոդալների հետապնդած դասակարգային տարբեր նպատակներն այս պայքարում։ Աշխարհազորի մեջ համախմբված ժողովուրդը ձգտում էր երկրից դուրս քշել պարսկական զավթիչներին։

Շարժման ելքի վրա ամենից շատ ազդում էր նախարարների հակասական շահերի բախումը։ Ավելի ու ավելի պարզ էր դառնում, որ նախարարների գործողությունների միասնությունը լոկ առերես էր։ Գերիշխող դիրք գրավելու համար նրանց միջև ընթացող խուլ, բայց համառ պայքարը շարունակվում էր։ Չէին վերացված ներքին տարաձայնությունները ու մրցակցությունը, որից և օգտվում էր թշնամին։ Պարսիկների դեմ տարած հաղթանակը պետք է նպաստեր նախարարական Հայաստանի և Բյուզանդիայի քաղաքական մերձեցմանը, որի շնորհիվ ամրապնդվելու էին Վասակ Սյունու քաղաքական հակառակորդների՝ Մամիկոնյանների, Ամատունիների, Կամսարականների և հայոց եկեղեցու դիրքերը։ Այդպիսով Հայաստանի մարզպան Վասակ Սյունին կորցնելու էր իր բոլոր արտոնությունները, ընդհուպ մինչև երկրի քաղաքական գործերից մեկուսացվելը։ Վասակ Սյունին ապստամբության տարբերքով ներգրավված լինելով ազատագրական շարժման մեջ և ակամա դառնալով դրա կազմակերպիչն ու ղեկավարներից մեկը, ընկել էր շատ դժվարին կացության մեջ։ Թվում էր, թե նա նահանջելու տեղ չուներ, քանի որ առաջին անգամ իր նախաձեռնությամբ էին նախարարները հավաքվել՝ համաձայնեցնելու իրենց գործողությունները։ Առաջինը նա էր ուղարկել նախարար-սատրապներին, բյուզանդական կայսրին և հոների առաջնորդներին հղված նամակները, քանի որ ինքն էր երկրի կառավարիչը։ Նա երգում էր տվել, որից հրաժարվելը նշանակում էր վտանգել իր և իր ընտանիքի կյանքը, գույքն և տիրույթներն ու բարեկեցությունը։ Նրա դեմ էր ուղղվելու ապստամբած ժողովրդի ողջ զայրույթը։ Միաժամանակ նա զգում էր, որ Հայաստանում իրեն համարում են ընդհանուր գործին խորթ անձնավորություն, որը երկրի մարզպանի դիրքին էր հասել Սասանյանների շնորհիվ։ Մինչդեռ Հայաստանում կատարված իրադարձություններից հետո պարսից արքունիքում գտնում էին, որ հայերին հավատափոխ անելու ծրագրի ձախողման հիմնական մեղավորը Վասակն էր։ Այս պայմաններում Վասակ Սյունին փորձում է սպասողական դիրք գրավել, առերևույթ մնալով ապստամբների համախոհը։

Բյուզանդիայի գրաված չեզոք դիրքը առաջացրեց նախարարներից մի մասի տարակուսանքը հաղթանակի նկատմամբ։ Այդ ամենը Վասակ Սյունուն անելանելի կացությունից դուրս գալու հույս ներշնչեց։ Նա մտածում էր, որ դեռևս հնարավոր է այդ վիճակից խաղաղ ելք գտնել։ Բայց ապստամբության հիմնական ղեկավարները՝ սպարապետ Վարդան Մամիկոնյանի գլխավորությամբ, գտնում էին, որ պետք է շտապ գործել, և արագ հարվածով հաղթանակի հասնել, քանի դեռ թշնամին նախահարձակ չի եղել։

## 2. ԶԻՆՎԱԾ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ ՍԱՍԱՆՅԱՆՆԵՐԻ ԴԵՄ։ ԱՎԱՐԱՅՐԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ

Հայ ժողովրդի 450—451 թթ. մեծ ապստամբությունը Սասանյանների լծի դեմ Եղիշեն անվանել է «Հայոց պատերազմ»։ Ապստամբության ղեկավարները ավարտելով ռազմական նախապատրաստությունները, անմիջապես ձեռ-

նամուխ եղան ակտիվ գործողությունների։ Վարդան Մամիկոնյանը զորքը բաժանեց երեք մասի։ Առաջին մասը՝ Ներշապուհ Արծրունու գլխավորությամբ, ուղարկեց հարավ, հայ-պարսկական սահմանի ամենախոցելի մասը, որտեղից Հեր և Զարևանդ գավառների վրայով թշնամին անմիջապես կարող էր ներխուժել երկրի սիրտը՝ Այրարատ նահանգը։ Զորքի մյուս մասի գլուխն անցած Վարդան Մամիկոնյանը շարժվեց դեպի Վրաց աշխարհի սահմանը, այստեղից պիտի գնար դեպի արևելք՝ «բուն աշխարհն Աղուանից», որտեղ գտնվում էր Աղվանքի մայրաքաղաք Կապաղակը։ Այստեղից ճանապարհը դեպի հյուսիս՝ «Դուռն Աղուանից» լեռնանցքով տանում էր Կասպից ծովափը, որտեղ գտնվում էր Ճորա պահակը։ Վարդան Մամիկոնյանի զորքը նպատակ ուներ թիկունքից հարվածել Աղվանքի Ճորա պահակում նստող մարզպան Սեբուխտ Նիխորականին, տիրանալ Հոնաց պահակին (Ճորա պահակ, այժմյան՝ Դերբենդից հարավ), ջախջախել այնտեղ եղած պարսկական կայազորը և կապ ստեղծել հոների հետ։ Զորքի երրորդ մասը թողնվեց Վասակ Սյունու տրամադրության տակ. նա պետք է դիմադրեր թշնամուն իր հայրենի տիրույթ Սյունիքում և պաշտպաներ Այրարատը[18]։

Մարտական ուժերի այսպիսի բաժանումն օգտակար կլիներ, եթե ապստամբության մասնակիցների մեջ լիակատար համաձայնություն տիրեր։ Բայց շուտով պարզվում է, որ այդպես չէ։ Վասակ Սյունին շտապում է օգտագործել այն հանգամանքը, որ մենակ է մնացել Այրարատում։ Զուր չէր իր հրամանատարության տակ վերցրել այն նախարարների աշխարհազորները, որոնք իր գաղտնի համախոհներն էին։ Բացի այդ, Այրարատում տեղավորված բազում կայազորներ ևս բաղկացած էին նրա կողմնակիցներից։ Շատ զորամասեր, լրիվ անգործության մատնելով, Վասակ Սյունին պահում էր Սյունիքում, իբրև թե պարսկական զորքերի ներխուժումը Սյունիք կանխելու համար[19]։

Ստեղծված պայմաններում Վասակ Սյունին կարող էր դեն նետել իր դիմակը և պարսից արքունիքի առաջ ցույց տալ, թե ինքը սկզբից ևեթ դեմ է եղել ապստամբության և մտածել է միայն լեզու գտնել արքունիքի հետ։

Երբ Վարդան Մամիկոնյանն Այրարատը թողնելով, իր զորքով շարժվում էր դեպի Լոփնաս գետի (Աղստևի գետ) հովիտը, Վասակ Սյունին նամակներ է ուղարկում Փայտակարան, պարսից հազարապետ Միհրներսեհին և Ճորա երկրի սահմանապահ մարզպան Սեբուխտ Նիխորականին, որոնցով հայտնում էր, որ իրեն հաջողվել է ցրել ապստամբների ռազմական ուժերը, որ հայկական զորքի հիմնական մասը գտնվում է իր տրամադրության տակ։ Սեբուխտ Նիխորականին նա տեղեկացնում էր նաև, որ Վարդան Մամիկոնյանը փոքրաթիվ զորքով է շարժվում նրա դեմ և որ Սեբուխտի համար դժվար չի լինի ջախջախել նրան[20]։ Ստանալով այս տեղեկությունները, Սեբուխտն շտապ գալիս է հարավ և Վարդան Մամիկոնյանին հանդիպում Վիրքի սահմաններից ոչ հեռու գտնվող Աղվանից թագավորի ձմեռոցի՝ Խաղխաղ քաղաքի մոտ[21]։

Որքան մեծ պետք է լիներ Վարդան Մամիկոնյանի և նրա զորքի զարմանքն ու զայրույթը, երբ Լոփնաս գետի կիրճից դուրս գալով ու հովիտը

---

18 Եղիշե, Գ (աշխ. թարգմ., էջ 69)։

19 Նույն տեղում։

20 Ղազար Փարպեցի. Բ, լդ (աշխ. թարգմ., էջ 151)։

21 Եղիշե, Գ (աշխ. թարգմ., էջ 70)։

մտնելով, հեռվում՝ Խաղխաղ քաղաքի մոտերքում, տեսնում են կազմ ու պատրաստ կանգնած Սեբուխտ Նիխորականի զորքը։ Վարդան Մամիկոնյանն ընդունում է մարտը և, չնայած թշնամու գերազանցող ուժերին, հաղթանակ է տանում[22]։ Թշնամու զորքը ցրվում է, իսկ հաղթանակած հայոց զորքը, անցնելով Կուր գետը, մտնում է Բուն Աղվանից երկիրը, որտեղ համալրվում է լեռներում ապաստանած ապստամբ աղվանների ջոկատներով։ Հայ-աղվանական միացյալ զորքն անցնում է Ավթարանի հովտով և արշավանք ձեռնարկում դեպի Աղվանքի մայրաքաղաք Կապաղակից հյուսիս գտնվող «Դրունք Աղուանից» լեռնանցքը[23]։ Եղիշեն հաղորդում է, որ նրանք կոտորում են այնտեղ գտնվող պարսից զորքը և տեղի հսկողությունը հանձնում Վահանին, որը «աղվանների թագավորների ցեղից էր»[24]։ Այնտեղից անցնում են Չոր կամ Ճորա երկիրը և հասնում «Ճորայ պահակ» (կամ Հոնաց պահակ)[25], ուր գտնվում էր պարսկական սահմանապահ զորքի պետի՝ մարզպանի ռազմական կայանը։ Այստեղ ճամբար դնելուց հետո ապստամբները նույն Վահան արքայազնին որպես դեսպան, ուղարկում են Հոների երկիրը և «Հոների երկրին գործակից ուրիշ շատ բարբարոս ազգերի մոտ[26], նրանց հետ բանակցելու և դաշն կնքելու, որ հաստատ մնան այդ միաբանության վրա»[27]։

Այս բանակցությունները անցնում են մեծ հաջողությամբ։ Հոների և լեռնցիների ներկայացուցիչները խոստանում են ոչ մի օժանդակություն ցույց չտալ պարսիկներին և հակառակը, օգնել ապստամբ հայերին ու աղվաններին[28]։

Մինչ Վարդան Մամիկոնյանը պարսիկների դեմ հաղթանակներ էր տանում, Վասակ Սյունին բացահայտ դավաճանության դիմեց։ Նա ցրեց Այրարատի ամրություններում տեղավորված հայկական կայազորները և նրանց տեղը պարսկական կայազորներ դրեց։ Այդ լուրը Վարդան Մամիկոնյանին հասցրեց մի վիրավոր դաժկան։ Վասակ Սյունու բացահայտ դավաճանության և Այրարատում նրա կատարած ավերածությունների լուրը շարժում է Աղվանքում հաղթանակ տարած զորքի զայրույթը։ Վարդան Մամիկոնյանը հարկադրված էր Ճորա պահակից շտապ վերադառնալ Հայաստան[29]։

Վասակ Սյունին շուտափույթ ամրանում է իր հայրենի Սյունիքում, նախապես ավերելով Այրարատի ամրությունները և ոչնչացնելով պարենամթերքը, որպեսզի հայկական զորքը չկարողանա այնտեղ ձմեռել։ Վասակ Սյունու դավաճանությունը բացահայտ է դառնում[30]։ Վարդան Մամիկոնյանի հրա-

---

22 Նույն տեղում, էջ 70—71։

23 Եղիշեն (Գ, էջ 78) անվանում է պարզապես «Դուռն»։ Ղազար Փարպեցին (Բ, լզ, էջ 66) նշված լեռնանցքը գիտե իբրև «պահակ որմոյն, որ է ընդ մէջ իշխանութեանն Աղուանից և Հոնաց»։

24 Եղիշե, Գ (աշխ., թարգմ., էջ 70—71)։

25 Այժմյան Ռուբաս գետի մոտ։

26 Եղիշեն նկատի ունի առաջին հերթին Հոնաց պահակին սահմանակից թավասպարներին (թաբասարանցիներին) ու լեկերին (լեզգիներին)։

27 Եղիշե Գ (աշխ. թարգմ., էջ 72)։

28 Նույն տեղում, Փարպեցի, Բ, լե, (աշխ. թարգմ., էջ 155)։

29 Եղիշե, Գ (աշխ. թարգմ., էջ 73)։ Փարպեցի, Բ, լզ, էջ 66—67։

30 Ա. Գարագաշյանը, Ն. Ադոնցը, Հ. Արմենը, Ստ. Մալխասյանցը, Խ. Վեմյանը Վասակ Սյունու քաղաքական կողմնորոշման և վարքագծի հարցում այլ տեսակետ ունեն, գտնելով, որ

մանով հայոց զորքը ձմեռելու համար ցրվում է երկրով մեկ, այն պայմանով, որ գարնանը պատրաստ լինի պատերազմական գործողությունների։

Հաղթողի փառքով պսակված Վարդան Մամիկոնյանն Արտաշատում նոր կառավարություն է կազմում։ «Տանուտէր հայոց», այսինքն երկրի կառավարիչ է դառնում ինքը՝ Վարդան Մամիկոնյանը, միաժամանակ մնալով նաև սպարապետ։ Նա, փաստորեն, վերականգնում է Արշակունյաց ժամանակաշրջանի գործակալությունները։ Վահան Ամատունին վերահաստատվում է հազարապետի պաշտոնում, դավաճան Գադիշո Խոռխոռունու փոխարեն մաղխազ է դառնում նրա ազգական Խորեն Խոռխոռունին, մեծ դատավորն էր կաթողիկոսի տեղապահ Հովսեփ եպիսկոպոսը։ Վերականգնվում է մինչև անգամ մարդպետի պաշտոնը, որը հանձնվում է Միհրշապուհին։ Հայաստանը փաստորեն դառնում էր անկախ պետություն՝ «Տանուտիրական երկիր» կամ «երկիր տանուտիրական գնդին»։ Բոլորը հասկանում էին, որ Սասանյանների նոր ընդհարումն անխուսափելի էր։ Ուստի ապստամբները պատրաստվում էին առաջիկա պատերազմին։

Վասակ Սյունին և նրա կողմնակիցները ժողովրդին համոզում էին հրաժարվել ապստամբության մտքից, խոստանալով ամեն ինչ հարթել և խաղաղ ճանապարհով հասնել նախկին իրավիճակի վերականգնման։ Այս հավաստիացումներին եղան հավատացողներ, որոնք անցան նրանց կողմը։ Այդ նույն ժամանակ Հազկերտ Բ-ն Միջին Ասիայում պարտություն է կրում հոներից և վերադառնում Տիզբոն։ Վասակ Սյունին օգտագործում է հենց այս հանգամանքը։ Նա ամեն կերպ համոզում է արքայից արքային, որպեսզի վերջինս մեղմացնի իր քաղաքականությունը Հայաստանի նկատմամբ, ներման հրովարտակ շնորհի և դրանով իսկ վերջ դնի պատերազմի նախապատրաստությանը երկրում։ Վասակ Սյունին հասնում է այն բանին, որ Հազկերտ Բ-ն «ներման» հրովարտակ է ուղարկում ապստամբներին։ Հրովարտակում արքայից արքան խոստանում է ազատել ապստամբության՝ ձերբակալված մասնակիցներին և վերադարձնել նրանց բռնագրավված ունեցվածքը։ Ի վերջո նա խոստանում է լիակատար կրոնական հանդուրժողականություն[31]։

Հազկերտ Բ-ի հրովարտակը շատերի վրա որոշակի տպավորություն է թողնում։ Վասակ Սյունու հեղինակությունը նրանց աչքում բարձրանում է, քանի որ նա էր համարվում պարսկական արքունիքի կողմից արված զիջումների նախաձեռնողը։ Սակայն Վասակ Սյունու հաշիվները սխալ դուրս եկան։ Հետագա դեպքերը ցույց տվեցին, որ պարսիկները խաբում էին նրան։ Նա, հավանաբար, չգիտեր, որ հայերին ներման հրովարտակ ուղարկելու հետ միաժամանակ, Հազկերտ Բ-ն գաղտնի պատվիրակություն է ուղարկում Մարկիանոս կայսեր մոտ, վերստին հավաստիանալու, որ Բյուզանդիան ոչ մի օգնություն ցույց չի տա ապստամբած հայերին։ Մարկիանոսը շտապում է տալ նրան այդ երաշխիքը[32]։ Սովորական դիվանագիտական հավաստիացում չէր

Վասակ Սյունին ստեղծված ծանր վիճակից ելք էր որոնում։ Գիտնականների մյուս մասը սկզբնաղբյուրների որոշակի տվյալների քննության հիման վրա նշում է, որ Վասակ Սյունին սկզբում երերուն դիրք բռնելով, ապստամբության ծավալման բուռն պահին բացահայտորեն դավաճանում է և անցնում թշնամու կողմը։ Այս տեսակետն է արտահայտված նաև Դ. Դեմիրճյանի «Վարդանանք» վեպում և բանասեր Վ. Ս. Նալբանդյանի՝ «Егише» (Ереван, 1972) գրքում։

31 Եղիշե (աշխ. թարգմ., էջ 78), Փարպեցի, Բ, լգ, էջ 67—68։

32 Եղիշե, Գ (աշխ. թարգմ., էջ 79)։

այդ կայսրության կողմից։ 422 թ. խաղաղության պայմանագրի համաձայն Բյուզանդական կայսրությունը պետք է պարբերաբար «ոսկի» տար սասանյան արքունիքին՝ կովկասյան անցքերը հոների և այլ «բարբարոսների» ներխուժումներից պաշտպանելու համար։ 449—450 թթ. մոտերքը հոն Հեռանի՝ բյուզանդական Հայաստանի սահմանամերձ վայրերի ասպատակությունից հետո բյուզանդական արքունիքն առավել շահագրգռված էր կովկասյան անցքերի ամրապնդման գործում և, անշուշտ, թշնամաբար էր տրամադրված Հայաստանի ու Աղվանքի ապստամբական շարժման նկատմամբ։

Ապահովելով իր անվտանգությունը մարզպանական Հայաստանի բյուզանդական սահմանագծի կողմից՝ Հազկերտ Բ-ն վերսկսում է պատերազմի նախապատրաստությունը, որպեսզի մեկընդմիշտ հաշիվ մաքրի ապստամբած հայերի ու աղվանների հետ։

Հազկերտի հրովարտակի արդյունքն այն եղավ, որ ապստամբների շարքերն սկսեցին թուլանալ, տարաձայնություններ ծագեցին։ Մի շարք նախարարներ հրաժարվեցին պատերազմին նախապատրաստվելուց։ Սպարապետ Վարդան Մամիկոնյանը և նրա զինակիցներն անվստահությամբ ընդունեցին Հազկերտի հրովարտակը։ Վարդան Մամիկոնյանն ու նրա կողմնակից նախարարները, հոգևորականներն ու ազատները, ինչպես նաև ժողովրդի լայն զանգվածները որոշել էին մինչև վերջ պայքարել հայրենիքի ազատության համար, ուստի շարունակում էին պատրաստվել պատերազմի[33]։ Սասանյանները տեսնելով այդ, շտապում են զորք ուղարկել Հայաստանի սահմանը։ Պարսկական զորքը, այդ թվում նաև մարտական փղերի գումարը հազարապետ Միհրներսեհը կենտրոնացնում է Փայտակարանում։ Այստեղ է կանչվում Վասակ Սյունին՝ ապստամբած հայերի ռազմական պատրաստությունների մասին տեղեկություններ հաղորդելու համար։ Հայաստանի մարզպանին ընդունում են մեծ պատվով, որպես մի մարդու, որը դեռևս կարող էր պիտանի լինել պարսիկներին։ Պատմիչների հաղորդման համաձայն, Միհրներսեհը, Վասակին սիրաշահելու միտումով խոստացել էր ապստամբությունը ճնշելուց հետո նրան հռչակել թագավոր և նստեցնել Հայոց գահին[34]։

Հայրենիք վերադառնալով, Վասակ Սյունին վերսկսում է հայ նախարարների միասնականությունը խախտելու իր տենդագին գործունեությունը և քայքայիչ աշխատանք է ծավալում նաև Հայաստանից դուրս։ Նա կարողանում է խափանել ապստամբ հայերի և աղվանների միասնությունն ու դաշինքը։ Ապստամբությանը չեն մասնակցում նաև բարձր լեռնային ծայրագավառները՝ Աղձնիքը, Տմորիքը, Կորդուքը, Արցախը։ Վասակը դրանց իշխաններին պատվիրում է պաշտոն չտալ փախստականներին։ Վասակ Սյունին նամակ է ուղարկում բյուզանդական Հայաստան՝ Վասակ Մամիկոնյանին և հայտնում, թե իբր ապստամբների կողմնակիցները հեռացել են նրանցից, ամբողջ Հայաստանն իր կողմն է անցել, և որ ինքը վերականգնել է քրիստոնեությունը։ Վասակ Մամիկոնյանը «Ստորին Հայքի» սպարապետ էր և հռոմների զորքերին հավատարիմ մի անձ՝ Պարսից սահմանի վրա։ Վասակ Մամիկոնյանն իր հերթին այդ լուրը հայտնում է Կոստանդնուպոլսի արքունիք[35]։

33 Նույն տեղում։
34 Նույն տեղում, դ, էջ 83, Փարպեցի, Բ, լզ (աշխ., թարգմ., էջ 159)։
35 Եղիշե (աշխ. թարգմ., էջ 85)։

*Այդ իրավիճակում ապստամբները ոչ մի տեղից օգնության հույս չունեին, միայն հոներն էին հավատարիմ մնացել իրենց խոստմանը։ Սակայն կովկասյան լեռնանցքներով հոների ներխուժումը կանխելու համար Վասակ Սյունին պարսկական զորաջոկատներ դնելով, ամենուրեք ամրացրել էր անցումները։*

*Վասակ Սյունին Հայաստանին հարևան տարածքներից հավաքագրում է նաև մի շարք լեռնցի ցեղեր*[36]*։ Ապստամբների դեմ պատրաստվող այս բոլոր ռազմական ուժերը հավաքվում են Փայտակարանում, ուր Միհրներսեհին կըրկին ներկայացած Վասակ Սյունին իր համախոհներով հավաստիացնում են, որ հայերի ու պարսիկների ընդհարման դեպքում իրենք կլինեն վերջիններիս կողմը։ Վասակից ու նրա կողմնակիցներից տեղեկություններ ստանալով ապստամբների ռազմական ու ստրատեգիական բոլոր ծրագրերի մասին՝ Միհրներսեհն ուղևորվում է Միջին Ասիա, այս ամենի մասին Հազկերտին զեկուցելու, իսկ ապստամբ հայերի դեմ կռվելու համար պարսից զորքի հրամանատար է նշանակում Մուշկան Նիսալավուրտին*[37]*։*

*450—451 թթ. ձմռան ընթացքում ապստամբների զորքը նախապատրաստվում էր առաջիկա կռիվներին։ 451 թ. ապրիլին պարսիկներն իրենց զորքերը Փայտակարանից քաշում են դեպի Հայաստանի հարավային սահմանը՝ Հեր և Զարևանդ գավառների մոտ, որտեղից Ատրպատականի կողմից ներխուժելու էին Հայաստանի կենտրոնը՝ Այրարատ նահանգը։ Այդ մասին տեղեկություն ստանալով, Վարդան Մամիկոնյանը կարգադրում է, որ բոլոր նախարարներն իրենց աշխարհազորով հավաքվեն Արտաշատում, ընդ որում Վասակ Սյունու կողմն անցած նախարարների զորքերը հանձնվում են ապըստամբության հավատարիմ մնացած՝ ուխտապահների հրամանատարությանը*[38]*։ Արտաշատում տեղի է ունենում զորքերի հանդիսավոր ստուգատես, որի ժամանակ այրուձիով ներկա էին բոլոր ուխտապահ նախարարները (Ներշապուհ Արծրունին, Խորեն Խոռխոռունին և ինքը՝ սպարապետը՝ Արտակ Պալունին, Վահան Ամատունին, Վահևունյաց Գյուտը, Թաթուլ Դիմաքսյանը, Արշավիր Արշարունին, Շմավոն Անձևացին, Տաճատ Գնթունին, Ատոմ Գնունին, Խոսրով Գաբեղյանը, Կարեն Սահառունին, Հմայակ Դիմաքսյանը, մի այլ Դիմաքսյան՝ Գազրիկը, Ներսեհ Քաջբերունին, Փարսման Մանդակունին, Արսեն Ընծայացին, Այրուկ Սղկունին, Վրեն Տաշրացին, Ապրսամ Արծրունին, արքունի ախոռապետը, Խուրս Սրվանձտյանցը, Քոշյանները, Ակեացիները, Տրպատունիները և Ռշտունիների զորքը և արքունի բոլոր գործակալներն ամեն մեկն իր զորքերի հետ միասին)*[39]*։ Ապստամբների ամբողջ զորքի ընդհանուր թիվն էր վաթսունվեց հազար մարդ՝ հեծյալ և հետևակ*[40]*։ Առաջիկա ճակատամարտում հայոց ռազմական այս ուժի դեմ դուրս եկած պարսկական զորքում հաշվվում էր 80—90 հազար մարդ և 13 մարտական փիղ։ Սակայն իր բարոյական ոգով ապստամբների զորքը գերազանցում էր թշնամուն։ Արտաշատում զորքի հանդիսավոր ստուգատեսի ժամանակ Վարդան Մամիկոնյանը քաջալերում էր զորականներին. «Արդ, աղաչում եմ ձեզ, ով իմ քաջ նիզակակիցներ.*

---

36 *Նույն տեղում, էջ 86—87։*
37 Փարպեցի, *Բ, լէ, էջ 69։* Եղիշե, *Դ, էջ 88։*
38 Եղիշե, *Ե (աշխ. թարգմ., էջ 91—92)։*
39 *Նույն տեղում։*
40 *Նույն տեղում, էջ 92։*

մանավանդ որ ձեզանից շատերը քաջությամբ ինձնից ավելի լավ էք և հայրենական գահի պատվով՝ ավելի բարձր, բայց երբ ձեր հոժար կամքով ինձ կարգեցիք ձեր առաջնորդ և զորագլուխ, թող իմ խոսքերն ախորժալուր և բաղձալի թվան մեծերիդ ու փոքրերիդ ականջներին։ Չերկչենք ու չվախենանք հեթանոսների բազմությունից... իսկ եթե հասել է ժամանակը մեր կյանքը սուրբ մահով ավարտելու այս պատերազմում, ընդունենք ուրախ սրտով, միայն թե արիության ու քաջության մեջ վախկոտություն չխառնենք»[41]. «վախը թերահավատության նշան է, թերահավատությունը մենք վաղուց ենք մերժել մեզանից. նրա հետ վախն էլ թող փախչի մեր մտքերից ու խորհուրդներից»[42]։ Հայոց բանակում մեծ հեղինակություն էր վայելում Ղևոնդ երեցը, որ քաջալերում էր ապստամբներին, հիշեցնելով նրանց գործի մեծ առաքելությունը հայրենիքի և ժողովրդի ազատության համար մղվող պայքարում։

Պարսկական բանակի ներխուժումը կանխելու նպատակով Վարդան Մամիկոնյանը շտապում էր իր զորքն ուղարկել երկրի հարավային սահմանը։ Նա հույս ուներ, որ պատերազմական գործողությունները տեղի կունենան թըշնամու հողի վրա և երկիրը զերծ կմնա ավերածություններից[43]։ Սակայն պարսկական բանակն արդեն հասցրել էր անցնել մարզպանական Հայաստանի սահմանագիծը Ամբրիոտիկ ամրոցի կողմից և հայկական զորքը հակառակորդին հանդիպում է Ավարայրի դաշտում, Տղմուտ գետի ափին[44]։

Տղմուտ գետի հյուսիսային ափին, պարսկական զորքին դիմացրավ կանգնում է ապստամբ հայերի շատ ավելի փոքրաթիվ զորքը։ Վարդան Մամիկոնյանը հայկական զորքը բաժանում է չորս մասի. աջ թևի զորամասի հրամանատարությունը հանձնում է Ներշապուհ Արծրունուն և նրան նիզակակից կարգում Մոկաց մեծ իշխան Արտակ Մոկացուն, ձախ թևի զորամասի հրամանատարությունը հանձնում է Խորեն Խոռխոռունուն և նիզակակիցներ կարգում Արսեն Ընծայացուն և Ներսեհ Քաջբերունուն։ Երրորդ զորամասը Վարդան Մամիկոնյանը հանձնում է Թաթուլ Վանանդացուն և նրան նիզակակից կարգում Տաճատ Գնթունուն։ Վարդան Մամիկոնյանը ինքը, վերցնում է չորրորդ գունդը և իրեն նիզակակից նշանակում քաջ իշխան Արշավիր Կամսարականին ու իր հարազատ եղբայր Համազասպյանին[45]։

Դեմ դիմաց կանգնած էին երկու բանակ՝ հակադիր խնդիրներով ու նպատակներով. մի կողմից պարսից բանակը, որը ձգտում էր պարտության մատնել հայերին, ճնշել ապստամբությունը և հաստատել պարսկական լուծը հայ ժողովրդի ուսերին, հարկադրելով նրանց նաև ընդունելու պարսից զրադաշտական կրոնը, մյուս կողմից՝ հայկական բանակը, որն ուխտել էր մինչև վերջ կռվել օտար տիրապետության դեմ, իր հայրենիքի և ժողովրդի ազատության ու իր դավանանքի համար։ Թվական գերակշռությունը պարսիկների կողմն

41 Նույն տեղում, էջ 93։

42 Նույն տեղում, էջ 95։

43 Փարպեցի, Բ, լէ (աշխ. թարգմ., էջ 161)։

44 Ավարայրի դաշտը կոչվել է նաև Արտազու դաշտ կամ Տղմուտի դաշտ, որ համապատասխանում է այժմյան Զորսի դաշտին, ինչպես ժամանակին ցույց է տվել Գալուստ Շերմազանյանը (տե՛ս «Արարատ», ամսագիր, 1872, նոյեմբեր-դեկտեմբեր)։ Տե՛ս Հ. Օ. Աղաբեկյան, Ավարայրի ճակատամարտի տեղի հարցի շուրջը, ՊԲՀ, 1967, № 4։ Հ. Աղաբեկյան, Ավարայրի ճակատամարտ, ՀՍՍՀ, հ. 1, էջ 607 (տե՛ս նաև նրա Ավարայրի ճակատամարտի քարտեզը)։

45 Եղիշե. Ե (աշխ. թարգմ., էջ 105—106)։

էր, իսկ բարոյականը՝ հայերի։ Ահեղ ճակատամարտն սկսվեց 451 թ. մայիսի 26-ին, շաբաթ օրը, կեսօրին։ Հակառակորդ կողմերը ձեռնամարտի բռնվեցին։ Մարտը բորբոքվեց մեծ ուժգնությամբ, մինչ հետևակը կռվի մեջ էր, ձախ թևում Վարդան Մամիկոնյանն իր հեծելազորով անցնում է գետը և թափով հարձակվելով թշնամու աջ թևի վրա, հարկադրում նրան նահանջել, իսկ հետևում կանգնած պարսկական «անմահների գունդը» առանց մարտի բռնվելու փախուստի է դիմում։ Անզիջում կռիվը շարունակվում է երկար, սակայն մարտի թեժ պահին հայկական մի քանի ջոկատներ ընկրկելով հակառակորդի դերակշիռ ուժերի առջև, ետ են քաշվում մերձակա բլրակները։ Այդ օգտագործում է Մուշկան Նիսալավուրտը և աջից հարձակում սկսում հայկական զորքի ձախ թևում։ Երկու կողմերն էլ կռվում են մեծ համառությամբ, ամբողջ հարթությունը ծածկվում է դիակներով։ Մուշկան Նիսալավուրտը կռվի մեջ է մըտցընում մարտական փղերը։ Թշնամին իր փղերի գնդով շրջապատում է Վարդան Մամիկոնյանին և նրա ջոկատի հեծյալներին։ Այստեղ հերոսի մահով ընկնում են հայոց սպարապետ Վարդան Մամիկոնյանը և նրա զինակիցները։

Մայրամուտին մարտը դադարում է։ Զոհերի թիվը մեծ էր։ Սակայն հաղթանակի հարցը մնում էր չլուծված։ Եղիշեի խոսքերով ասած՝ «ոչ թե մի կողմը հաղթեց և մյուս կողմը պարտվեց, այլ քաջերը քաջերի դեմ դուրս գալով՝ երկու կողմերն էլ պարտություն կրեցին»[46]։ Եղիշեն և Ղազար Փարպեցին պահպանել են Ավարայրի դաշտում հերոսական մահով ընկած նահատակների անունները. «Մամիկոնյան ցեղից Քաջ Վարդանը՝ հարյուր երեսուն և երեք մարդով, Խորխոռունյաց ցեղից Կորովի Խորենը՝ տասնինը մարդով, Գնթունյաց ցեղից Զարմանալի Տաճատը՝ տասնինը մարդով, Դիմաքսյան ցեղից Հրաշակերտ Ներսեհը՝ յոթ մարդով, Գնունյաց ցեղից Մանուկ Վահանը երեք մարդով, Ընծայնոց ցեղից Արդար Արսենը յոթ մարդով, Սրվանձտյան ցեղից Հառաջադեմ Գարեգինը՝ երկու հարազատներով և տասնութ մարդով»[47]։ Ճակատամարտում կողմերի տված զոհերի թվի մասին մեր երկու պատմիչն էլ՝ թե Եղիշեն, և թե Փարպեցին, միևնույն տեղեկությունն են հաղորդում։ Նրանց տըվյալների համաձայն Ավարայրի դաշտում հայերից զոհվեց 1036 հոգի, որոնցից 9-ը՝ նախարար, պարսիկներից՝ 3544 հոգի[48]։ Հայ ժողովրդի՝ օտար նվաճողների դեմ մղած պայքարի բազմաթիվ դրվագներից ոչ մեկը այնպես չի տպավորվել հայ ժողովրդի հիշողության մեջ, ինչպես Ավարայրի հերոսամարտը։ Այն մնաց իբրև հայ ժողովրդի ազատասեր ոգու և ազատագրական պայքարի անջնջելի պատգամ դարեր շարունակ։ Ավարայրի ճակատամարտում զոհվածները դասվել են «հայրենիքի նահատակների» շարքը և այսօր էլ «Վարդանանց տոնը» համազգային տոն է, որ նշվում է ամենուրեք՝ թե Հայրենիքում և թե սփյուռքում[49]։

---

46 Նույն տեղում, էջ 108։

47 Նույն տեղում։ Փարպեցի. Բ, լԲ (աշխ. թարգմ., էջ 171)։

48 Նույն տեղում, էջ 109։ Փարպեցի, նույն տեղում։

49 Տե՛ս С. Т. Еремян, Народно-освободительная борьба армян против персов в 450—451 гг., ВДИ, 1951, № 4.

## 3. ՏԱՐԵՐԱՅԻՆ ՊԱՅՔԱՐԸ ՍԱՍԱՆՅԱՆՆԵՐԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԴԵՄ։ ՏԻԶԲՈՆԻ ԴԱՏԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ

*Ավարայրի ճակատամարտից հետո ապստամբական շարժումն ընդունեց տարերային պայքարի բնույթ։ Ժողովուրդը քաշվում է անառիկ լեռներն ու ձորերը, որտեղից անընդհատ հարձակումներ է գործում պարսկական պատժիչ ջոկատների վրա, որոնք գործում էին երկրի ցածրադիր մասերում։ Սովորաբար պարսիկները պաշարում էին այն ամրությունները, որտեղ պատսպարված էր լինում խաղաղ բնակչությունը և ներումն խոստանում՝ եթե հանձնվեն։ Տեղ-տեղ պաշարվածները ստիպված էին հանձնվել՝ քաղցից և ծարավից դրդված։ Բայց կամովին հանձնվածներին էլ պարսիկները չէին խնայում, կոտորում էին կամ գերության քշում, իսկ բնակավայրերը՝ հրկիզում[50]։ Հայկական ջոկատները հերոսական պայքար էին մղում պարսկական պատժիչ ջոկատների դեմ։ Տմորիքի լեռների անմատչելի ամրոցներում ապաստանածները պարսիկների չարագործությունների լուրն առնելով, արիաբար իջնում են լեռներից և հաշվեհարդար տեսնում պատժիչների հետ[51]։*

*Արցախի խիտ անտառներում ապաստանած փախստականներն անդադար մարդիկ էին ուղարկում Հյուսիսային Կովկասի հոների մոտ և հիշեցնում, որ նրանք կատարեն հայերին օգնելու մասին իրենց խոստումը։ Ի վերջո, հոների մի մեծ ջոկատ ներխուժում է Անդրկովկաս և հասնում մինչև Պարսկաստանի սահմանը, ավերելով պարսկական մի քանի նահանգներ։ Վերադարձին հոները հարձակվում են Հյուսիսային Կովկասի այն ցեղերի վրա, որոնք օգնել էին պարսիկներին՝ ընդդեմ հայերի։ Սակայն այս միջոցին պարսիկները գրավում են հոների սահմանամերձ ամրությունները[52]։*

*Պարսկական պատժիչ ջոկատներին նույնպիսի կազմակերպված դիմադրություն էին ցույց տալիս Հայաստանի բյուզանդական մասին սահմանակից շրջանների, հատկապես Ճորոխի ավազանի զինված ջոկատները։ Այստեղ Տայքում, Պարխարյան լեռների և Խաղտիքի խիտ անտառներում Վարդան Մամիկոնյանի եղբոր՝ Համայակի մոտ ապաստան էր գտել ապստամբների հիմնական մասը։ Այստեղից կարելի էր տևական դիմադրություն կազմակերպել, իսկ անհաջողության դեպքում հեշտությամբ անցնել Բյուզանդական կայսրության սահմանները։ Համայակ Մամիկոնյանի դեմ ուղարկվում են պարսիկների պատժիչ ջոկատներ, որոնք հույս ունեին այնտեղ գտնել փախած նախարարների գանձերը։ Համայակ Մամիկոնյանն իր աշխարհազորի հետ, որը վատ էր զինված, Պարխարյան լեռներից իջնում է Ճորոխ գետի կիրճը, Որջնհաղ գյուղը (այժմ՝ Օշնախ)։ Այստեղ թշնամու կանոնավոր զորքը հաղթում է աշխարհազորական ջոկատներին։ Նահանջի ճանապարհին, Բերդագրակ ամրոցի մոտ անհավասար մարտում ընկնում է նաև Համայակ Մամիկոնյանը[53]։ Մյուսներն*

---

50 Եղիշե, *Զ (աշխ. թարգմ., էջ 111—112)։*

51 *Նույն տեղում, էջ 115։*

52 *Նույն տեղում, էջ 116։*

53 Փարպեցի, *Բ, խա, աշխ. թարգմ., էջ 175։ Համայակ Մամիկոնյանը հայոց եկեղեցու կողմից դասվեց սրբերի շարքը։ Նրա նահատակության տեղում հիմնվում է եկեղեցի և միաբանություն, որ հետագայում հայտնի է Զորդվանք անունով (վրաց. Օթխթա-էկլեսիա, այսինքն չորս եկեղեցի, այժմ կոչվում է Դորթ-Քիլիսե)։ Տե՛ս նաև Հ.* Աճառյան, *Հայոց անձնանունների բառարան, հ. Գ, Երևան, 1946, էջ 90։*

ապաստան են գտնում Պարխարյան լեռներում[54]։

Սասանյանները հասկանում էին, որ Ավարայրի ճակատամարտից հետո ծավալված ժողովրդական պատերազմը կձգձգվի անորոշ ժամանակով։ Պատժիչ ջոկատներն էլ ավելի էին գրգռում ժողովրդի ատելությունը պարսիկների և դավաճան նախարարների հանդեպ։ Հայերի դիմադրությունը հետզհետե զորեղանում էր, իսկ պարսիկների գործերը Միջին Ասիայում վատ էին։ Հոների և հեփթաղների հարձակման հետևանքով ստեղծված պայմաններում անհրաժեշտ էր շուտափույթ լուծել ապստամբ վիճակում գտնվող Հայաստանի հարցը։ Բայց այդ կարելի էր անել միայն ժողովրդին ատելի դարձած Վասակ Սյունուն պաշտոնից զրկելու և նրա կողմնակիցներին չեզոքացնելու միջոցով։

Հայերի դեմ ռազմական գործողությունները գլխավորող Մուշկան Նիսալավուրտը բազմաթիվ անհաջողություններ կրելով, և վախենալով պատասխանատվությունից, ամբաստանագիր է գրում Վասակ Սյունու և նրա կողմնակիցների դեմ[55]։ Այս պայմաններում Հայաստանում խաղաղություն հաստատելու համար Հազկերտ Բ-ն որոշում է ժամանակավորապես փոխել իր քաղաքականությունը։

Վասակ Սյունին հեռացվեց իր պաշտոնից և կանչվեց Տիզբոն։ Նրա փոխարեն Հազկերտ Բ-ն Հայաստանի պարսկական մասի մարզպանի պաշտոնը հանձնեց իր ավագ նախարարներից մեկին՝ Ատրորմիզդ Արշականին (Արշակունուն)[56]։ Մուշկան Նիսալավուրտ զորավարը նույնպես հեռացվում է Հայաստանից։ Ատրորմիզդ մարզպանը, ինչպես նշում է Եղիշեն, «Հայոց աշխարհը մտավ սիրով և խաղաղությամբ»[57]։ Նա երկրով մեկ խաղաղության հրովարտակներ էր հղում։ Որ ավելի կարևոր էր, արքայից արքայի հատուկ հրովարտակով բոլորին լիակատար կրոնական ազատություն էր տրվում, հրամայվում էր չպահանջել ապստամբության տարիներին չմուծված հարկերը, առժամանակ պակասեցվում էր Միջին Ասիայում կռվելու համար Հայաստանից հավաքագրվող հեծելազորի թիվը, փախստականներին թույլատրվում էր վերադառնալ և տեր դառնալ իրենց ունեցվածքին[58]։ Նույնիսկ բռնի կրոնափոխ եղածներին, ըստ հրովարտակի, չէր արգելվում նորից վերադառնալ քրիստոնեության։

Այս նույն ժամանակ Սասանյանները բռնություններ են կիրառում ապստամբական շարժման ղեկավարների նկատմամբ։ Ավարայրի ճակատամարտից կենդանի մնացած ուխտապահ նախարարները՝ թվով 37 հոգի, և 8 եկեղեցականները տարվում են Տիզբոն[59]։ Տիզբոն էին գնում ավագ նախարարները, ամենանշանավոր նախարարական տոհմերի ներկայացուցիչները, որ միևնույն ժամանակ քաղաքական գործիչներ էին։

Եղիշեն և Ղազար Փարպեցին գրեթե միատեսակ բերում են Տիզբոն գնացող, ապա 12 տարով (452—464) աքսորված նախարարների ցուցակը՝ «Սյուն-

54 Փարպեցի, Բ, խա (աշխ. թարգմ., էջ 177)։

55 Եղիշե, Զ (աշխ. թարգմ., էջ 116—117)։

56 Նույն տեղում, էջ 117։

57 Նույն տեղում։

58 Նույն տեղում (էջ 118—119)։ Փարպեցի, Բ, խ (աշխ. թարգմ., էջ 173)։

59 Նույն տեղում։ Նրանք հասել են 451 թ. հոկտեմբերի կեսերին (Մ. Օրմանյան, Ազգապատում, հ. Ա, էջ 385)։

յաց տոհմից՝ երկու եղբայրներ՝ Բաբգեն և Բակուր. Արծրունյաց տոհմից՝ Ներշապուհ և Շավասպ և Շնգին և Մեհրուժան և Պարգև և Տաճատ. Մամիկոնյան տոհմից՝ Համազասպյան և Համազասպ և Արտավազդ և Մուշեղ. Կամսարականների տոհմից՝ Արշավիր և Թաթ, Վարձ, Ներսեհ և Աշոտ. Ամատունյաց տոհմից՝ Վահան և Առանձար և Առնակ. Գնունյաց տոհմից՝ Ատոմ, Դիմաքսյանների տոհմից՝ Թաթուլ և Սատոյ, երկու այլ ընկերներով, Անձեւացյաց տոհմից՝ Շմավոն և Ջվարեն և Առավան. Առավեղյանների ցեղից՝ Փափագ և Վարազդեն և Դատ. Արծրունյաց տոհմից՝ Ապրսամ. Մանգաւկունյաց տոհմից՝ Սահակ և Փարսման, Տաշրացյաց տոհմից՝ Վրեն. Ռափսոնյան տնից՝ Բաբիկ և Հոհան։

Այս երեսունևհինգ աքսորականներից ոմանք ավագ նախարարներից էին, ոմանք կրտսերներից, բայց բոլորն էլ մարմնով նախարարուզուններ են»։ Սրանց հետ աքսորվել են նաև «ուրիշ շատ ազատ մարդիկ էլ, ոմանք թագավորական տնից և ոմանք հենց նախարարների տնից, քաջ նահատակների նիզակակիցներ ու մարտակիցներ»[60]։ Որպեսզի նախարարների համարձակությունը չափավորվի և կաշկանդվի, իբրև պատանդ Տիզբոն էին ուղարկվում նաև ամենաերևելի նախարարների երեխաները։ Սրանք էին՝ սպանված Հմայակ Մամիկոնյանի (Վահան, Վասակ, Արտաշես) և Արշավիր Կամսարականի (Ներսեհ և Հրահատ) որդիները։ Բոլորը նահատակված Վարդան Մամիկոնյանի եղբորորդիներն ու թոռներն էին[61]։ Վասակ Սյունին գնաց արքունիք, երբ բոլորն արդեն Տիզբոնում էին։ Նա մեծ հույսեր ուներ, որ իր «ծառայությունները» կգնահատվեն։

Տիզբոնում ատյանը կազմվեց Միհրներսեհի նախագահությամբ, 452 թ. սկզբներին։ Նախապես դատվեցին հոգևորականները, Արտաշատի և Ռշտունիքի կրակատները քանդողները՝ Սամուելը և Աբրահամը, Սահակն ու Քաջաջը, որից հետո կաթողիկոսի տեղապահ Հովսեփը և Ղևոնդ երեցը, Մուշեղի և Արշենի հետ ենթարկվում են գանահարման, ապա շղթայակապ բանտարկվում են, մինչև արքունական վերջնական վճիռը[62]։

Այնուհետև հերթը հասնում է նախարարներին։ Շատերին փրկելու հույսով պետք էր մեղքը բարդել մեկի՝ Վասակ Սյունու վրա։ Նա իբրև երկրի մարզպան սկզբում հանդես էր եկել ապստամբության կազմակերպչի դերում։ Ատյանում ցույց են տրվում նրա մատանիով կնքված թղթերը, որոնք առնչվում էին ապստամբության հետ, դրանց թվում և բյուզանդական կայսրին հղած նամակը, որով խնդրվում էր օգնել ապստամբներին։ Մեջտեղ են բերվում նաև պարսիկներից խլված շատ բերդերի վերաբերմամբ նրա թղթերն ու հրամանները։ Ապա վկայություն տվեցին, որ մարզպան Վասակ Սյունին խառն էր մոգերի կոտորածին Զարեհավանում։ Ատյանում գտնվող Ատոմ Գնունին, որին Վասակը պատգամավոր էր ուղարկել հույների մոտ, առաջ եկավ ու մեղադրեց նրան, մեջ բերելով այն հրովարտակը, որը նա տվել էր՝ կնքած մատանիով[63]։

Ատյանին ներկա էին նաև Վասակ Սյունու ազգականները, որոնց թվում՝ հորեղբոր որդիները։ Նրանց հորը նա բանտարկությամբ սպանել էր և անօրեն

---

60 Եղիշե, է (աշխ. թարգմ., էջ 171—172)։ Փարպեցի. Բ, խէ (աշխ. թարգմ., էջ 205)։
61 Փարպեցի. Բ, խը, Գ, ծթ (աշխ. թարգմ., էջ 183, 257, 259)։
62 Փարպեցի, Բ, ծզ, ծը։ Մ. Օրմանյան. Ազգապատում, Ա, էջ 386—387։
63 Եղիշե, Զ (աշխ. թարգմ., էջ 120—122)։

տիրացել Սյունյաց իշխանությանը, որի մասին նրան նորից հիշեցրին Տիզբոնի ատյանում։ Վասակ Սյունու ազգականները հայտնեցին, որ Վասակը բարեկամացել էր հոն Հեռանի հետ այն ժամանակները, երբ վերջինս կոտորեց պարսից զորքերն Աղվանքում։ Բոլորի առաջ պարզ դարձավ Վասակի երկդիմի դերը, որն ավելի շեշտեց Սահակ եպիսկոպոսը[64]։

Հազարապետ Միհրներսեհը հայտնեց Հազկերտին ատյանում լսված Վասակի գործի մասին։ Վասակ Սյունին արդեն կատարել էր դավաճանի իր դերը, նա այլևս պետք չէր Սասանյաններին։ Հայերին հաճոյանալու և նրանց հետ ընդհանուր լեզու գտնելու համար Հազկերտ Բ-ն կարգադրում է ձերբակալել Վասակին։

Մարզպան Վասակն, օժտված լինելով ամենաբարձր լիազորություններով ու արտոնություններով, ըստ պարսկական արքունիքում ընդունված կարգի, պետք է նույնպիսի բարձր մակարդակի վրա պատվազրկության արարողությանը ենթարկվեր, որ այն ժամանակ հայերենում արտահայտվում էր «պատուհաս» բառով։ Այդ տեղի է ունենում հրապարակայնորեն, հանդիսավոր պայմաններում։ Վասակ Սյունուն երևելի մարդկանց հետ ընթրիքի են հրավիրում։ Նա ներկայանում է զարդարված ու պճնված։ Բացի տարբեր զարդերից նա հագել էր Հազկերտից ստացած պարսկական հագուստը։ Վասակը նստում է դահլիճում, որը մեծամեծների ժողովատեղին էր։ Այստեղ է գալիս արքունի սենեկապանը և իբրև թագավորի ներկայացուցիչ, որպես մեղադրանք մեկ առ մեկ հիշեցնում նրան ատյանում ասված բոլոր խոսքերը։ Ուխտապահների անունից հանդես է գալիս Արշավիր Կամսարականը՝ Վասակ Մամիկոնյանի փեսան։ Նա նորից հիշեցրեց բոլոր ամբաստանությունները և հատկապես այն, որ Վասակն ստիպեց կայսրություն գնացող Վարդանին ետ վերադառնալ և վինված ապստամբության գլուխ կանգնել[65]։ Վասակը արդարանալու խոսք չի գտնում։ Հազկերտը կայացնում է Վասակի մահվան վճիռը[66]։

Այնուհետև տեղի ունեցավ «պատուհասի» արարողությունը։ Վասակի վրայից դահճապետը հանում է արքունիքից ստացած հագուստները և նրան մահապարտի զգեստ հագցնում։ Վասակի ոտքերն ու ձեռքերը կապում են և կնոջ նման մատակ ձի նստեցնում, տանում հանձնում են այն զնդանը, որտեղ բոլոր մահապարտներն էին։ Բայց սրանով չէր վերջանում նրա պատիժը, նրան ամեն օր բերում էին մեծ հրապարակը, նախատում, ծաղրում ամբողջ բանակի առաջ[67]։

Մահվան դատապարտված Վասակից պահանջվեց հատուցել այն գումարը, որ յուրացրել էր, և նա ստիպված է լինում տալ իր ողջ ունեցվածքը։

Եղիշեն Վասակ Սյունուն ներկայացնում է իբրև հայրենիքի և իր ժողովրդի դավաճանի, որը խիստ անփառունակ վախճան ունեցավ[68]։

Վասակի դատավարությունից հետո 8 եկեղեցականներ և 37 նախարարներ աքսորվեցին Վրկանից աշխարհը, որտեղ բանտարկված մնացին երկու տարի։ 454 թ. սկզբներին Քուշանաց աշխարհում նորից պատերազմ ծագեց՝

---

64 Նույն տեղում, էջ 121—122։

65 Նույն տեղում։ Փարպեցի, Բ, խե, էջ 83—84։

66 Եղիշե, Զ (աշխ. թարգմ., էջ 124)։ Փարպեցի, Բ, խզ, էջ 85։

67 Եղիշե, նույն տեղում, էջ 124—125։

68 Նույն տեղում, էջ 124—126։

պարսիկների և հոների միջև։ Վրկանը սահմանակից էր հոներին, ուստի Հազկերտ Բ-ի հրամանով բանտարկյալներին տարան խոր թիկունք՝ Ապար աշխարհը (հետագայի Խորասանը)[69]։ Նոր պատերազմը պարսիկների համար անհաջող է վերջանում, և Հազկերտը ողջ զայրույթը թափում է քրիստոնյաների վրա, նրանց դեմ սկսվում են նոր հալածանքներ։ Ահա այս ժամանակ 454 թ. հրոտից ամսի 7-ին (հուլիսի 7-ին)[70], Նյուշապուհ քաղաքից ոչ հեռու գտնվող Վարդգետ կամ Վարդգէս գավառի անապատ վայրում տեղի է ունենում հոգևորականների մի մասի սպանությունը, իսկ մնացած եկեղեցականները, որոնց թվում նաև Ղևոնդ երեցը, սպանվեցին 454 թ. հուլիսի 25-ին, Ռևան (կամ Ռույան) քաղաքում[71]։

Ղևոնդ երեցի և նրա ընկերների մահապատժից հետո Հազկերտ Բ-ն կարգադրեց, որպեսզի նրանց սպասարկող Խորեն Որկովեցի և Աբրահամ Զենակեցի երեցներին կրոնափոխ անեն, սակայն նրանք մերժեցին հավատափոխության առաջարկը, ուստի և ստրկացվեցին՝ ենթարկվելով համապատասխան մարմնական խեղման՝ կտրեցին նրանց ականջները[72] և ուղարկեցին Ասորեստանի գավառներից մեկը՝ տաժանակիր աշխատանքի։ Մեկ տարուց հետո Խորենը մահացավ, չդիմանալով տաժանակրության պայմաններին։ Աբրահամ երեցն ազատվեց, ասորիներից բաղկացած տեղական քրիստոնյա համայնքների շնորհիվ։ Սրանք միջոցներ հավաքեցին և փրկագին վճարելով ազատեցին նրան ստրկությունից[73]։

Այս ժամանակների բարքերին բնորոշ էր նահատակված քրիստոնյաների մասունքների առուծախը։ Ղազար Փարպեցին հաղորդում է, որ մի քրիստոնյա խուժիկ առևտրական, որն առևտրական գործերով լինում էր Հայաստանի քաղաքներում և խոսում հայերեն, ականատես է լինում նշված սպանություններին և նրանց ոսկորներն իբրև մասունքներ հանձնում Պարսկաստանի քրիստոնյա համայնքներին, մի մասն էլ բերում Հայաստան։ Այս առևտրականն էր, որ աքսորավայրում հանդիպում էր ունեցել Արշավիր Կամսարականի հետ և այդ մասին պատմել Ղազար Փարպեցուն[74]։

Ապստամբությանը հաջորդած անցքերը ցույց տվեցին, որ պարսից արքունիքը ստիպված էր վերականգնել Հայաստանի ինքնուրույնությունը և նախարարների արտոնությունները, սակայն դիտելով դա իբրև ժամանակավոր զիջում, աքսորով և սպանություններով ոչնչացնում էր ապստամբության ղեկավարներին և ոգեշնչողներին, փորձելով լծի տակ գցել Հայաստանը։

---

69 Նույն տեղում, էջ 126։

70 Փարպեցի, Բ, խը (աշխ. թարգմ., էջ 205—209)։

71 Մ. Օրմանյան. Ազգապատում, հ. Ա, էջ 393—397։

72 Փարպեցի, Բ, ծը (աշխ. թարգմ., էջ 255)։ Մշտնջենական ստրկություն էր բերում ականջ կտրելը, որը զրկում էր փախչելու հնարավորությունից։

73 Փարպեցի, Բ, ծը (աշխ. թարգմ., էջ 257)։

74 Փարպեցի, Բ, ծէ։

ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

# ԵՐԿՐՈՐԴ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ԵՎ ԴՐԱ ՀԵՏԵՎԱՆՔՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՄԱՐ V Դ. ՎԵՐՋՈՒՄ—VI Դ. ՍԿԶԲՈՒՄ

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԸ «ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՑ» ՀԵՏՈ։ ՀԱԶԿԵՐՏ Բ-Ի ՆՈՐ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*457 թ. Հազկերտ Բ-ի և նրա երկու որդիների՝ Որմիզդի ու Պերոզի միջև սկսվեցին գահակալական կռիվները, որոնք տևեցին երկու տարի։ Այդ ժամանակամիջոցում հայ նախարարներն ազատվեցին աքսորից, բայց մնում էին Պարսկաստանում՝ զինվորական ծառայության մեջ։ Պերոզը մեծ խոստումներով իր կողմը գրավեց հայ նախարարներին, որոնց օգնությամբ և հաղթեց։ Որմիզդի սպանվելուց հետո 459 թ. գահ բարձրացավ Պերոզը։ Նա ոչ միայն չկատարեց իր խոստումները, այլև հայերին ուղարկեց Հրև նահանգը՝ Աշտատ զորավարի հրամանատարության ներքո։ Դրանով հայերը մեկուսացվում և հսկողության տակ էին առնվում։ Բայց կար ավելի զորեղ պատճառ նախարարներին հայրենիք չվերադարձնելու։ Դա Աղվանքում Վաչե թագավորի գլխավորած ապստամբությունն էր։*

*Բուն Հայաստանում Պերոզը ձգտում էր շահել նախարարների բարեկամությունը և ընդառաջ էր գնում նրանց պահանջներին։ Նրա ներկայացուցիչը՝ Հայաստանի մարզպան Ատրորմիզդը, իր մեղմ քաղաքականությամբ համակրանք էր վայելում երկրում։ Երբ 461 թ. մահացավ Մովսես Մանազկերտացի կաթողիկոսը, Ատրորմիզդի համաձայնությամբ կաթողիկոս ընտրվեց Սահակ-մեսրոպյան աշակերտների սերնդի վերջին ներկայացուցիչներից մեկը՝ Գյուտը, Տայքի Արահեզ գյուղից[1]։*

*Աղվանից Վաչե թագավորը, որը Վարդան Մամիկոնյանի համախոհներից էր, նրա սպանվելուց հետո կեղծ ուրացության ուղին բռնեց և ձևացնում էր, թե Ավարայրի ճակատամարտը և նրան հաջորդող դեպքերն իրեն չեն վերաբերվում։ Վաչեն նույնիսկ կին վերցրեց Հազկերտ Բ-ի քրոջ աղջկան և ընդհանուր լեզու գտնելով պարսկական արքունիքի հետ, ապահովեց իր երկիրը Հայաստան ուղարկված պատժիչ արշավախմբերի ասպատակություններից։ Նա նույնիսկ Պերոզի հրամանով 461 թ. հիմնում է «Պերոզապատ մեծ քաղաքն, որ այժմ կոչի Պարտաւ»[2]։*

---

1 Մ. Օրմանյան, *Ազգապատում*, հ. Ա, էջ 418։

2 *«Մովսէսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի», Ա, ժե, Թիֆլիս, 1912, էջ 52։*

Հազկերտ Բ-ի մահից հետո Վաչեն քրիստոնեությունը բացեիբաց հայտարարում է Աղվանքի պետական կրոն և պայքար մղում երկրում զրադաշտականության դեմ։ Սակայն Պերոզն իր դիրքերն ամրապնդելով՝ ներխուժում է Աղվանք և պատերազմ հայտարարում Վաչե Ա-ին։ Վերջինս անմիջապես դիմում է հոների և կովկասյան լեռնցիների օգնությանը։ Աղվանքն ավերվեց, բայց Վաչեն ու նրա դաշնակից լեռնցի ցեղերը չընկճվեցին։ Պերոզը հարկադրված եղավ հաշտություն կնքել Վաչեի հետ[3]։ Այս ժամանակներից Վաչե թագավորն անձնապես մոտ էր Հայոց կաթողիկոս Գյուտ Ա Արահեզացու (461—478) հետ։

Պերոզը լարելով Սասանյանների ողջ ռազմական ուժերը, կարողանում է պարտության մատնել Վաչեին[4]։ Ուխտապահ նախարարներն ու հոգևորականությունը Հայաստանից ամեն կերպ քաջալերում էին Վաչե Ա-ին, որ հանուն քրիստոնեության զոհաբերել էր նույնիսկ իր գահը։ Պերոզը «մեծահոգի» գտնվեց և հնարավորություն տվեց Վաչեին գնալու իր դինաստիական երկիրը՝ Մազքթաց աշխարհը, որտեղ ձեականորեն նա թագավոր էր մնում։ Ահա այս ժամանակին (461—462) պիտի վերաբերի Գյուտ կաթողիկոսի (461—478) նամակը՝ ուղղված Աղվանից թագավոր Վաչեին՝ քրիստոնեական հավատին հաստատուն մնալու վերաբերյալ[5]։

Պերոզի հաջորդ քայլն այն էր, որ Անդրկովկասում կազմակերպեց նոր վարչական միավոր՝ Աղվանից մարզպանությունը։ Աղվանից թագավորությունը այլևս չկար և «Բոււն Աղուանից աշխարհը»[6], որը թագավորող դինաստիայի ժառանգական հայրենիքն էր, Վաչե թագավորի Մազքթաց աշխարհը հեռանալուց հետո վեր էր ածվել Սասանյան դինաստիայի դաստակերտի։ Պերոզը «Բուն Աղուանից աշխարհին» միացնում է 385 թ. հետո Մեծ Հայքից անջատված Արցախ և Ուտիք նահանգները և մերձկասպյան Բաղկան, Չողա և այլ գավառները, ստեղծելով մեկ վարչական միավոր, որը կոչվում էր «Աղուանք» կամ «Արդան», «Առան» և «Ռան»։ Աղվանից մայրաքաղաք Կապաղակը գտնվում էր հեռու հյուսիսում և քաղաքական կենտրոն է դառնում Ուտիքը։ Այստեղ, ճանապարհների խաչմերուկում 461 թ. հիմնադրված Պերոզապատ կամ Պարտավ քաղաքը արագորեն աճում և դառնում է Աղվանքի մարզպանների նստավայր։ Փայտակարան քաղաքը կորցնում է իր ռազմաստրատեգիական նշանակությունը, զիջելով այն Պարտավին։

461 թ. Աղվանքը մարզպանություն[7] դարձնելուց հետո միայն հաջորդ տարվա՝ 462 թ. գարնանը Պերոզը հրաման տվեց նախարարների հայրենիք

---

3 Եղիշե, էջ 197—199։ Տե՛ս նաև Լեո, հ. Բ (Երևան, 1947, էջ 88—89, 91)։

4 Նույն տեղում։

5 Մովսես Կաղանկատվացի, Ա, ժա, էջ 25—36։ Նամակում հատկապես ուշագրավ է այն մասը, որտեղ նա շարադրում է իր առաշադիմական մտքերը տիեզերագիտության մասին, զարգացնելով անտիկ գիտության տեսությունը երկրի գնդաձևության վերաբերյալ (տե՛ս Է. Լ. Դանիելյան, V դարի տիեզերագիտական մի պատառիկ, «Լրաբեր հաս. գիտ.», 1975, № 12, էջ 100—102)։

6 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, Երևան, 1963, էջ 34, 105։

7 Տե՛ս Հ. Ս. Սվազյան, Աղվանից մարզպանության կազմավորման հարցի շուրջը, ՊԲՀ, 1979, № 4, էջ 210—218։ Նույնի՝ Աղվանքը և Միհրանյան տոհմը, «Լրաբեր հաս. գիտ.», 1980, № 9, էջ 91—101։

վերադառնալու մասին[8]։ Ըստ այդ հրամանի վերականգնվում էին նրանց ժառանգական իրավունքներն ու արտոնությունները։ Վերադարձող նախարարների թվում էին քաղաքական այնպիսի խոշոր գործիչներ, ինչպիսիք էին՝ Ներշապուհ Արծրունին, Վահան Ամատունին և Շմավոն Անձևացին, որոնք աքսորում պահպանում էին աքսորվածների արիասրտությունը։

Նախարարների վերադարձի առթիվ Վաղարշապատի Կաթողիկե եկեղեցում Գյուտ կաթողիկոսը ոգեշունչ քարոզներ կարդաց և մաղթեց երջանկություն վերադարձողներին, որոնցից յուրաքանչյուրը գնալու էր իր տոհմական կալվածքները, հանդիպելու իր ընտանիքի անդամներին, որոնք երկար տարիներ սպասել էին նրանց վերադարձին։

Հայաստան վերադարձած նախարարները բախվեցին նոր անբարենպաստ իրադրության։ Պերոզն իր դիրքերն ամրապնդելուց հետո աշխատեց մարզպանական Հայաստանի կառավարման ապարատում ներգրավել իր քաղաքականությանը հավատարիմ «ուխտադրուժ» և «ուխտանենգ» նախարարներին. և, հատկապես, նրանց, ովքեր 450—451 թթ. ապստամբության ժամանակ հեռացել էին ապստամբներից ու մոտեցել Սասանյաններին։ Ընդ որում պետական ապարատում պաշտոնները հատկապես տրվում էին այն նախարարներին, որոնք մազդեականություն էին ընդունել։ Այս երևույթը չէին հանդուրժում «ուխտապահները», այսինքն՝ նախարարների ու հոգևորականության այն մասը, որն իր ետևից էր տանում պարսկական քաղաքականությունից դժգոհ ժողովրդական զանգվածներին։

«Ուխտապահ» նախարարներն ու հոգևորականությունը Գյուտ Արահեզացի կաթողիկոսի գլխավորությամբ հակասասանյան քաղաքականություն էին վարում։ Դարձյալ օգնություն ստանալու համար, Գյուտ կաթողիկոսը գաղտնի ուղերձներ էր հղում Բյուզանդիայի կայսր Լևոն Ա Մեծ Թրակացուն (457—478)։ Գաղտնի դիմումները կայսրին՝ «միանգամ» և «երկիցս» անհետևանք չանցան։ Բյուզանդական արքունիքը խոստանում էր օգնել «քրիստոնյա» հայերին՝ «հեթանոս» և «բարբարոս» պարսիկների դեմ։ Սակայն, ինչպես միշտ, այս անգամ ևս իրական օգնություն չեղավ։ Նման գործողությունները միայն զայրացնում էին պարսիկներին ու նրանց կողմնակից «ուխտանենգ» նախարարներին։

Ահա այս շիկացած ժամանակաշրջանում Գյուտ Ա կաթողիկոսը բարեկամանում է Եգիպտոսի Ալեքսանդրիայում փայլուն կրթություն ստացած և «Քերթողահայր» պատվական կոչման արժանացած Մովսես Խորենացուն (410—492), ծագումով Տարոն գավառի Խորնի գյուղից։ Գյուտ Ա կաթողիկոսը նրան նշանակում է «եպիսկոպոս Բագրևանդայ և Արշարունեաց» (մոտ 461—478), որի նստավայրն էր Բագավանը՝ հայտնի իր հռչակավոր Հովհաննես Մկրտչի անվան բազիլիկ տաճարով։

Մթնոլորտը երկրում լարված էր և չէր երևում, թե Ատրորմիզդ մարզպանը մեղմ քաղաքականություն է վարում։ Հետզհետե վերականգնվում էին նախ-

---

8 Եղիշեն գրում է, որ խռովությունները Աղվանքում տևել են «մինչև ի հինգերորդ ամն Պերոզի արքայից արքայի», իսկ նախարարներն արձակվել են «յամն վեցերորդ» (էջ 199)։ Մ. Օրմանյանը գտնում է, որ նրանք աքսորված մնացին մինչև 459 թ. (տե՛ս նույն՝ 459 թ., հատ. Ա, էջ 88), իսկ 462 թ. (ըստ Լեոյի՝ 465 թ., էջ 88) նրանք ազատ արձակվեցին և վերադարձան հայրենիք։

կին խստությունները և ավելի էին սրվում փոխհարաբերությունները նախարարների տարբեր խմբակցությունների միջև։ Ուխտանենգ նախարարներից հատկապես աչքի էր ընկնում նախկինում Վասակ Սյունու գործակից Գադիշո մաղխազ Խոռխոռունին[9]։ Սա իր ամբաստանագրերով անընդհատ հիշեցնում էր արքայից արքա Պերոզին՝ ուխտապահ նախարարների և հոգևորականության մասին, նշելով նրանց անհավատարմությունը պարսից արքունիքի հանդեպ և նրանց գաղտնի կապերը բյուզանդական կայսեր հետ։ Այս ամբաստանագրերը հատկապես ուղղված էին Գյուտ կաթողիկոսի, Սահակ Բագրատունու և Վահան Մամիկոնյանի դեմ, որի հեղինակությունն օրըստօրե մեծանում էր թե՛ հայ ժողովրդի մեջ և թե՛ պարսից արքունիքում[10]։ Սակայն Պերոզը միշտ հիշում էր Վահան Մամիկոնյանի նախնիների ըմբոստ ոգին և աշխատում էր ձեռնպահ մնալ։

Պերոզը Հայաստանի հանդեպ սկսում է վարել իր հոր՝ Հազկերտ Բ-ի քաղաքականությունը։ Նա գտնում էր, որ Ավարայրից հետո մարզպան Ատրորմիզդը իր անելիքն արել էր։ Որոշ զիջումների գնով նա կարողացել էր վերականգնել պարսկական գերիշխանությունը երկրում։

Ատրորմիզդ մարզպանի փոխարեն 464 թ. նշանակվում է նոր մարզպան՝ Ատրվշնասպ «Յոզմանդեանը» (464—481)։ Նոր մարզպանի նշանակումն ինքնին արդեն ցույց էր տալիս, որ կտրուկ շրջադարձ էր կատարվելու ներքին քաղաքականության մեջ։ Սասանյան Իրանին ենթակա Հայաստանը պիտի դառնար սովորական պարսկական մարզպանություն։ Հայաստանի տարբեր մասերում պարսիկները վերսկսում են հալածանքները ժողովրդի դեմ[11]։

Նոր մարզպան Ատրվշնասպի շուրջը հավաքվեց հայ ֆեոդալական վերնախավի «ուխտանենգ» մասը, որն ավելի ուժեղացրեց պայքարը «ուխտապահների» դեմ։ Նման իրավիճակում առաջին հերթին որոշում են ասպարեզից հեռացնել Գյուտ կաթողիկոսին, որի մասին լուրեր էին պտտվում, թե նա գաղտնի բանակցություններ է վարում բյուզանդացիների հետ։ Պերոզի հրամանով Տիզբոն է կանչվում կաթողիկոսը՝ քննելու նրա դեմ ուղղված Գադիշո Խոռխոռունու ամբաստանագրերը և դատական պատասխանատվության ենթարկելու։

471 թ. Տիզբոն ժամանեց Գյուտ կաթողիկոսը, որին մեծ պատվով ընդունեցին Պարսկաստանի քրիստոնյաները՝ Տիզբոնի, Խուժաստանի և Հրևի պատրիարքի գլխավորությամբ։ Գործի նախնական քննարկումը հանձնվեց պարսիկ ավագանու ներկայացուցիչ Յըզատվշնասպ Միհրանին։ Գյուտ կաթողիկոսը մեկառմեկ ժխտեց իրեն վերագրվող ամբաստանությունները։ Այնուհետև նրան առաջարկում են պաշտոններ և ոսկի, եթե նա կրոնափոխ լինի, մերժելու դեպքում սպառնում են զրկել կաթողիկոսությունից։ Երբ Պերոզը հիշեցնում է, որ Գյուտը մինչ այդ առանց իր հրամանի է վարել կաթողիկոսությունը, նա համարձակ պատասխանում է, որ պատրաստ է հրաժարվելու կաթողիկոսի պաշտոնից, քանի որ այն հաստատում է արքայից արքան, բայց նա մնում է Վանանդի թեմի եպիսկոպոս, քանի որ եպիսկոպոսությունից արքան իրավասու չէ զրկելու[12]։

---

9 Փարպեցի, Գ, կգ (աշխ. թարգմ., էջ 273)։

10 Նույն տեղում, Գ, կե (աշխ. թարգմ., էջ 281—285)։

11 Ստ. Օրբելյան, Պատմութիւն տանն Սիսական, Ա, էջ 1133։

12 Փարպեցի, Գ, կգ (աշխ. թարգմ., էջ 273—281)։

Տիզբոնից Գյուտը վերադառնում է հայրենիք միայն իբրև Վանանդ գավառի եպիսկոպոս և քաշվում Ոդմսու ավանը, որտեղ և մնում է մինչև իր մահը՝ 478 թ., վայելելով ավելի մեծ հեղինակություն ու պատիվներ, քան առաջ[13]։ Գյուտի կենդանության ժամանակ կաթողիկոս ընտրվեց Հովհաննես Մանդակունին, որը ծագումով Արշամունիք գավառի Ծախնուտ գյուղից էր։

Գյուտ Ա կաթողիկոսին քաղաքական ասպարեզից հեռացնելուց հետո հալածանքներ են սկսվում նրա կողմնակիցների, առաջին հերթին Մովսես Խորենացու դեմ։ Նա կարգալույծ է արվում՝ զրկվում է թեմական եպիսկոպոսի պատվից և հալածանքների է ենթարկվում պարսկասերների կողմից։

Հակապարսկական շարժումը պիտի հանգեր մի ավելի մեծ համաժողովրդական ելույթի, որը գլխավորում էին Սահակ Բագրատունին և Վահան Մամիկոնյանը։ Սահակ Բագրատունին իրեն է մոտեցնում Քերթողահայր Մովսես Խորենացուն՝ դառնալով նրա մեկենասը և հովանավորը։ Շուրջ 478 թ. Սահակ Բագրատունին հանձնարարում է Մովսես Խորենացուն գրել Հայոց պատմություն, կամ ավելի ճիշտ՝ «Պատմութիւն Հայոց Մեծաց», այսինքն՝ Մեծ Հայքի պետության պատմություն։ Այս պատմության մեջ պիտի ցույց տրվեր հայ ժողովրդի զավակների անսահման նվիրվածությունը հայրենիքին։ Այդ իրականացվում է։ Խորենացին իդեալականացնում է Մեծ Հայքի թագավորությունը և նրա պատմական երկն ամբողջովին տոգորված է հայրենասիրական գաղափարով։ Այս ժամանակաշրջանում սկսված համաժողովրդական շարժումը՝ հայկական պետականությունը վերականգնելու համար, համապատասխանում էր այն ըմբռնմանը, որ զարգացնում էր Մովսես Խորենացին։

Դեպքերն արագանում էին։ Ապստամբական շարժման գլուխ էին կանգնած արտաքուստ միասնաբար գործող Սահակ Բագրատունին և Վահան Մամիկոնյանը։

Տիզբոնից վերադարձավ ուխտանենգ և ամբաստանող Գադիշո մաղխազը և անմիջապես իր շուրջը հավաքեց ուխտանենգներին, որոնք կաթողիկոսին հեռացնելուց հետո մտածում էին ասպարեզից հանել իրենց համար ավելի վտանգավոր Սահակ Բագրատունուն և Վահան Մամիկոնյանին։ Ամբաստանողները պատճառ էին փնտրում վարկաբեկելու պարսից արքունիքում գտնվող Վահան Մամիկոնյանին։ Եվ այդպիսի պատճառ գտնվեց։ Այդ ժամանակ (մոտ 476 թ.) Դվինում ժողովուրդը կործանում է պարսկական համայնքի ատրուշանը, և Վահան Մամիկոնյանի թշնամիներն այս եղելությունը վերագրում են նրան[14]։ Որպեսզի կարողանա վստահություն շահել, Վահան Մամիկոնյանն շտապում է ներկայանալ արքայից արքային և առերես կրոնափոխ լինել[15]։ Սրանով, սակայն, չի վերջանում թշնամանքը նրա դեմ։

Վահան Մամիկոնյանը, ըստ իր ժառանգական իրավունքի, Մամիկոնյան նախարարական տոհմի տանուտերն էր, որի կենտրոնն էր Տայքի Իշխանք (կոչվել է նաև «Իշխանաց գիւղ») բնակավայրը՝ Ճակք գավառում։ Նրանից ոչ հեռու գտնվում էր «Ոսկեհատը»՝ հռչակավոր ոսկու հանքերը, որոնք հույների մոտ հայտնի էին «ֆարանգիոն» անունով։ Պարսկական տիրապետության տակ գտնվող Հայաստանի մասի ընդերքի հարստությունները համարվում էին

---

13 Նույն տեղում։

14 Տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, հ. Ա, էջ 433։

15 Փարպեցի, Գ, կե (աշխ. թարգմ., էջ 283)։

սասանյան արքայից արքայի սեփականությունը և չնայած նրան, որ այդ հանքավայրը գտնվում էր Մամիկոնյանների կալվածքներում, այնտեղից հանվող ոսկին հիմնականում ուղարկվում էր պարսից արքունիք։ Վահան Մամիկոնյանի մոտ իբրև «գործակից» նշանակվեց ոմն ասորի Վրիվը, որը հատուկ գնում է Տիզբոն՝ ամբաստանելու Վահան Մամիկոնյանին, թե իբր վերջինս երկրի ամբողջ ոսկին իր մոտ է հավաքում, մտածելով գնալ կամ կայսրություն, կամ էլ Հոնաց աշխարհը՝ զորք հավաքելու և ապստամբելու[16]։

Ի պատասխան սրան, Վահան Մամիկոնյանը վերցնում է ոսկին և շտապ գնում Տիզբոն ու ներկայանում Պերոզին։ Այնտեղից նա վերադառնում է հայրենիք մեծ շուքով ու մեծարանքներով։ Այս դեպքից հետո առավել ևս Վահան Մամիկոնյանը գիտակցում է, որ դժվար է համակերպվել թշնամու հետ[17]։

Դեռևս Հազկերտ Բ-ի ժամանակ հատկապես ակտիվացել էին հեփթաղները, որոնք Միջին Ասիայում ստեղծել էին ցեղային հսկայական միություն։ Պայքարը հեփթաղների դեմ գագաթնակետին հասավ Պերոզի ժամանակ։ Երկու անգամ նա գերի ընկավ և միայն մեծ փրկագին ստանալով, հեփթաղները ազատ արձակեցին նրան։ Նա ստիպված էր նույնիսկ իր գահաժառանգ Կավատին պատանդ թողնել նրանց մոտ։

## 2. 482—484 ԹԹ. ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ

Պերոզի անհաջողությունները Միջին Ասիայում վերստին հույս ներշնչեցին հայերին ու վրացիներին՝ թոթափելու օտար նվաճողների լուծը[18]։ Ապստամբության կայծն այս անգամ բռնկում է Վիրքում։ Ըստ Ղազար Փարպեցու, մինչ Վահան Մամիկոնյանը տարակուսանքի և հուզմունքի մեջ էր, հանկարծակի մեծ խռովություն է ծագում Վրաց աշխարհում, որտեղ Վախթանգ Գորգասար (456—502) թագավորը 482 թ. սպանում է բդեշխ՝ պարսկասեր կրոնափոխ Վազգենին (Վարսքենին)[19]։

16 Նույն տեղում, էջ 283։

17 Նույն տեղում, էջ 283—285։

18 Վրաց բդեշխների տոհմն ազգակցական կապերի մեջ էր հայ նախարարական տների՝ Արծրունիների, Մամիկոնյանների ու Կամսարականների հետ։ Հմայակ Մամիկոնյանը և Աշուշա բդեշխն ամուսնացած էին՝ առաջինը՝ Ձվիկի, երկրորդը՝ Անուշվռամի հետ, որոնք Աղան Արծրունու դուստրերն էին։ Աշուշայի որդի Վազգենը (վրաց. Վարսքեն) և Արշավիր Կամսարականն ամուսնացած էին՝ առաջինը Վարդենի-Շուշանիկի, երկրորդը՝ Վարդանույշի հետ, որոնք Վարդան զորավարի դուստրերն էին։ Երբ Աշուշա բդեշխը վերադարձավ պանդխտությունից, նա մեծ կաշառքներ տալով կարողացավ պատանդությունից ազատել նաև Մամիկոնյան Հմայակ և Արտաշիր նախարարների որդիներին։ Նրանք բոլորը (որոնց թվում էր նաև դեռևս պատանի Ղազար Փարպեցին) դաստիարակվում և խնամվում էին Աշուշա բդեշխի տանը (Փարպեցի, Գ, կր)։ Այդ եղբայրական մթնոլորտը Ցուրտավի ապարանքում փոխվում է Աշուշա բդեշխի մահից հետո (467), երբ Վազգենը գնում է Տիզբոն և զրադաշտական դառնում։ Ծագում է ընտանեկան ողբերգություն, որի զոհն է դառնում Շուշանիկը։ Ցուրտավի եպիսկոպոս Հակոբը (476—484) գրում է «Վարք սրբոյ Շուշանկան» գրական երկը, միաժամանակ հայերեն և վրացերեն։ Այդ երկը Ա. Բարամիձեն համարում է հայ-վրացական եղբայրության մասին վկայող ամենահին հուշարձանը (*А. Барамидзе,* Древнейший памятник грузинской литературы, «Литературная Грузия», 1978, № 1, стр. 61); տե՛ս *С. Т. Еремян,* Великий пример братского содружества народов. «Кавказ и Византия», вып. 2, 1980, с. 5—14.

19 Փարպեցի, Գ, կզ։ Վազգեն բդեշխի սպանությունից հետո «բդեաշխ վրաց» դարձավ նրա եղբայր Ջոջիկը, որը չերմեռանդ քրիստոնյա մնաց և, Շուշանիկի նահատակությունից հետո, նրա գերեզմանի վրա կառուցեց «վկայարան Շուշանկայ»։ Նրա նստավայր գյուղն իր անունով կոչվեց Ջոջկանց, այժմ՝ Ծոճկան (տե՛ս С. Т. Еремян, նշվ. աշխ., էջ 12)։

Ապստամբելով Սասանյան Իրանի դեմ՝ Վախտանգը հույս ուներ, որ Ալանաց դռների կողմից կարող է օգնության կանչել հոներին։ Նա գաղտնի սպատգամավոր է հղում հայերին, որպեսզի նրանք էլ սկսեն շարժումը, իսկ ինքը պատերազմ է սկսում պարսից զորավար Ջարմիհր Հազարավուխտի դեմ։

Հայկական հեծելազունդը, որը Պերոզի հետ միասին կռվում էր Միջին Ասիայում, վերադառնում է Շիրակ գավառը ձմեռելու։ Այս ժամանակ Հայաստան լուր է հասնում Վրաց թագավորի ապստամբության մասին, որն ընդունվում է ուրախությամբ և ապստամբելու պատրաստակամությամբ։

Շիրակում գտնվող պարսկական բանակի զորակայանում եղած հայ նախարարները որոշում են ոտքի ելնել։ Հայկական այրուձին, որն այդտեղ էր, ապստամբության առաջնորդ է ընտրում Վահան Մամիկոնյանին։ Ուխտապահների խոսքը մեկ էր, սակայն ուխտադրուժները շտապում են այդ մասին հայտնել Հայոց մարզպանին։ Վերջինս իր կողմնակիցների հետ փախչում է Մաղխազ բերդը, Ախուրյանի աջ ափին՝ Գադիշո խոռխորունու դղյակը։ Այստեղ է ամրանում մարզպանը, սակայն ապստամբներն իմանալով նրանց տեղը, հայկական այրուձին՝ Վահան Մամիկոնյանի գլխավորությամբ ուղարկում են հետապնդելու մարզպանին։ Շիրակի Անիից մարզպանն իր կողմնակիցներով փախչում է Արտաշատ և փորձում ամրանալ քաղաքի միջնաբերդում, բայց երբ ապստամբներն սկսում են բերդի պաշարումը, նրանք գիշերով Երասխի երկայնքով փախչում են Ատրպատական։ Ճանապարհին ձերբակալվում է Գադիշո խոռխոռունին և սպանվում։ Երկիրը մնում է ապստամբների ձեռքին։

Ապստամբ հայերը Դվինում նոր կառավարություն կազմեցին՝ ուխտապահ նախարարների գլխավորությամբ։ Մարզպան նշանակվեց Սահակ Բագրատունին, որը կոչվեց «տանուտէր Հայոց», իսկ Վահան Մամիկոնյանը՝ Հայոց սպարապետ։ Մաղխազ Հայոց նշանակվեց Գարջոյլ խոռխոռունին, ուրացող Գդիհոն Սյունու փոխարեն, Սյունյաց տանուտեր՝ Բաբգեն Սյունին։ Ապստամբ նախարարներն իրենց ընտանիքներն ու գանձերը նախօրոք տեղափոխել էին Բյուզանդիային սահմանակից դժվարամատչելի Տայք նահանգը, որը պետք է դառնար նրանց հենակետը։ Տայքը Մամիկոնյանների ժառանգական կալվածքն էր, իսկ նրան սահմանակից էր Սպեր գավառը՝ Բագրատունիների ոստանը, որը գտնվում էր Հայաստանի բյուզանդական մասում։ Այստեղ Վահան Մամիկոնյանի որդին պետք է պահպաներ խաչափայտի մասունքը, որը գտնվում էր Շուշանիկի մոտ, մինչև նրա նահատակվելը։

Նախարարները հավաքվում են գիշերային խորհրդակցության և Ավետարանի վրա կրկին երդվում՝ մինչև վերջ կռվել պարսիկների դեմ, հույս չդնելով ո՛չ հույների, և՛ ոչ էլ հոների վրա։ Սահակ Բագրատունին, Վահան Մամիկոնյանն ու նրա եղբայրը՝ Վասակը (չնայած նրանց փոքր եղբայր Վարդը պատանդ էր Տիզբոնում) հանձն են առնում գլխավորել ապստամբական շարժումը[20]։ Այս միաբանության լուրը հասցնում են Վաղարշապատ՝ Հովհաննես Ա Մանդակունի կաթողիկոսին (478—490)։

Թվում էր, թե վերականգնվում է հայկական պետականությունը։ Ոգևորության այս պայմաններում «Հայոց տանուտէր» Սահակ Բագրատունին հիշում է Մովսես Խորենացուն, որը պատվով էր կատարել իրեն տրված հանձ-

20 Փարպեցի, Գ, կզ։

նարարականը։ Նա հրավիրվում է արքունիք և Սահակ Բագրատունին իր պալատում ընդունում է նրան։ Մովսեսը ներկայացնում է Մեծ Հայքի թագավորության պատմությունը՝ «Պատմութիւն Հայոց Մեծաց» աշխատությունը՝ բաղկացած երեք գրքից։ Սպարապետ Վահան Մամիկոնյանն իր մանկության ընկեր Ղազար Փարպեցուն պատվիրում է գրել «Պատմություն Հայոց»-ը, որտեղ պետք է վեր հանվեր Մամիկոնյան նախարարական տոհմի դերը։ Ընդհանուր խանդավառության մթնոլորտում ապստամբները Դվինում վերացնում են պարսկական զրադաշտական համայնքը և Դվինն այնուհետև դառնում է նախարարական Հայաստանի մայրաքաղաք։ Հովհան Մանդակունին Վաղարշապատից Դվին է փոխադրում կաթողիկոսարանը։

Ապստամբական շարժման ողջ ընթացքում պայքարը պարսիկների դեմ ուղեկցվում է ուխտապահների պայքարով՝ ընդդեմ ուխտանենգների, որոնք համագործակցում էին թշնամու հետ։ Ուխտադրուժները պարսիկներին տեղեկացնում էին ուխտապահների ռազմական ծրագրերին, միաժամանակ հայերի թիկունքում սուտ լուրեր տարածելով, խանգարում էին ռազմական գործողություններին։

Դեպի Ատրպատական շտապ նահանջող մարզպանն ու հազարապետը ուրացյալների խորհրդով շտապում են անմիջապես սկսել ռազմական գործողությունները, վճռական հարված հասցնել ապստամբներին, քանի դեռ նրանք չէին հասցրել ամրապնդել իրենց դիրքերը։ Դեռևս Ատրպատականի սահմաններին նոր հասած, նրանց օգնության են գալիս լեռնցի կատիշների ռազմական ջոկատները։ Փախուստի մատնված Ատրվշնասպ մարզպանը 7000-անոց զորքով նորից ներխուժեց Հայաստան։ Ապստամբները հասցրին ժողովել ընդամենը 400 հեծյալ և Վահան Մամիկոնյանի գլխավորությամբ թշնամուն հանդիպեցին Ազատ-Մասիս լեռան ստորոտին գտնվող Ակոռի գյուղի մոտ։ Այս 400 հեծյալները բաժանվեցին չորս մասի՝ հարյուրական հեծյալներով։ Նրանց միջին մասը ղեկավարում էին Բաբգեն Սյունին և Վասակ Մամիկոնյանը, ձախակողմյանը՝ Գարջոյլ Խոռխոռունին և աջակողմյանը՝ Ատոմ և Առաստոմ Գնունի եղբայրները, իսկ պահեստի թևը՝ Ներսեհ և Հրահատ Կամսարականները։ Ապստամբ հայերի զորքը դուրս էր գալիս կռվի, խորապես գիտակցելով իր գործի արդարությունը[21]։

Ջնայած ուժերի խիստ անհավասարությանը և կռվի թեժ ժամանակ Գարջոյլ Խոռխոռունու դավաճանությանը, այնուամենայնիվ, Ակոռիի ճակատամարտն ավարտվեց հայ հայրենասերների կատարյալ հաղթանակով։ Պարսիկների ու ուրացյալների զորքերը կոտորվեցին, ցրվեցին, հայրենիքի դավաճան Գդիհոն Սյունին փախուստի դիմեց, իսկ Ատրվշնասպ մարզպանը և կատիշների գնդի զորագլուխը սպանվեցին։

Ուրացյալների խմբից Վառգոշ Գնթունին և Վասակ Սահառունին իբրև գուժկան հասնում են Դվին և սուտ լուր տարածում ուխտապահների պարտության մասին։ Դվինում գտնվող Հայոց տանուտեր Սահակ Բագրատունին և սպարապետ Վահան Մամիկոնյանն ու Հովհաննես Ա Մանդակունի կաթողիկոսը մի պահ հավատում են այդ լուրերին, սակայն հասնում է Առաստոմ Գնունին և հաղորդում հաղթանակի ավետիսը, իսկ նրա հետևից՝ հաղթական հե-

---

21 Փարպեցի, Գ, կԹ (աշխ. թարգմ., էջ 301—307)։

ծնլաղորը։ Կաթողիկոսը Դվինի Մայր եկեղեցում պատարագ է տալիս, ցնծությամբ հնչում է՝ «Դարձոյց զսուգ իմ յուրախութիւն» սաղմոսը[22]։

Զմռան վրա հասնելու հետ հայկական զորագնդերը տեղավորվեցին ձմեռելու և սկսեցին նախապատրաստվել առաջիկա գարնանային կռիվներին՝ Սասանյան Իրանի դեմ։ Կասկած չկար, որ գարունը բացվելուն պես պարսիկները պիտի վերստին գրոհեին Հայաստանի վրա։ Անհրաժեշտ էր մինչև գարուն ռազմական նոր ուժեր հավաքել։

Հարավային Հայաստանի լեռնային շրջանները՝ Անձևացիքը, Մոկքը և Ռշտունիքը դեռևս չէին ընդգրկվել ապստամբական շարժման մեջ։ Վահան Մամիկոնյանը նրանց կոչ արեց մասնակցել օտար տիրապետությունից երկիրն ազատագրելու շարժմանը[23]։ Նախարարներից շատերն արձագանքեցին այդ կոչին և իրենց այրուձիով եկան ու ներկայացան Վահան Մամիկոնյանին։

Գարնան գալուն պես Պերոզը հայերի ու վրացիների դեմ մեծ բանակ ժողովեց, որի մի մասն ուղարկեց մարզպանական Հայաստանի սահմանը, իսկ մյուս մասը՝ Աղվանքի վրայով, Վիրք։

Դվինում 482 թ. ապրիլի 25-ին տոնվում էր Զատիկը, երբ լուր ստացվեց, որ թշնամին ներխուժել է Հայաստան՝ Հեր և Զարևանդ գավառների կողմից։ Թշնամու բանակում էր նաև ուրացյալ Գդիհոն Սյունին։ Սպարապետ Վահան Մամիկոնյանը 30.000-անոց զորքով շտապեց կտրել թշնամու ճանապարհը։ Հայկական բանակը պարսիկներին հանդիպեց Արտազ գավառում, Ներսեհապատ գյուղի մոտ։

Վահան Մամիկոնյանը բանակի կենտրոնը հանձնեց Սահակ Բագրատունուն, աջ թևը՝ Բարշղ Վահևունուն, օգնականներ տալով Բաբգեն Սյունի, Ատոմ Գնունի և Փափագ Պալունի իշխաններին։ Վահան Մամիկոնյանն իրեն պահեց ձախ թևը՝ օգնական ունենալով իր եղբայր Վասակին և Ներսեհ ու Հրահատ Կամսարականներին։ Պահեստի գունդը նա հանձնեց Վրեն Վանանդեցուն և Պապ Արտակունուն։

Ներսեհապատի կռիվը, որն այս ապստամբության խոշոր ճակատամարտերից մեկն էր, սկսվեց վաղ առավոտյան և երեկոյան դեմ ավարտվեց հայերի լիակատար հաղթանակով։ Թշնամու զորքի մի մասը կոտորվեց, մյուս մասը փախուստի դիմեց։ Հայ հայրենասերների ընդհանուր ցնծությանն ավելացավ Վարդ Մամիկոնյանի փախուստը Տիզբոնից և վերադարձը հայրենիք[24]։

Երբ հաղթանակած հայկական զորամասերը գտնվում էին «ի Հովոց տեղիս»՝ Անգղ ավանում (Ծաղկոտն գավառում), այնտեղ է գալիս վրաց դեսպանը և հայտնում, որ նեղ վիճակում ընկած Վախթանգ թագավորը օգնություն է խնդրում հայերից[25]։

Հայոց զորավար Վահան Մամիկոնյանի գլխավորությամբ բոլոր ավագ տանուտերերը, սեպուհները և ամբողջ զորքը շտապեցին վրացիներին օգնության, քանի որ, ինչպես գրում է պատմիչը, «Ավետարանով ու խաչով տված երդում ունեին Վրաց Վախթանգ թագավորի հետ»[26]։

---

22 Նույն տեղում, էջ 307 (տե՛ս և Սաղմոս, ԻԹ, 12—13)։
23 Փարպեցի, Գ, Հ (աշխ. թարգմ., 307—311)։
24 Նույն տեղում, Գ, Հբ (աշխ. թարգմ., էջ 317—321)։
25 Նույն տեղում, Հգ, էջ 321—323։
26 Նույն տեղում։

Հայկական բանակը գալիս է Կանգարք գավառը, որը տեղադրված էր Մթին լեռների (կոչվում էր նաև Կեչուտի լեռներ, այժմ՝ Ջավախքի) արևելյան փեշերին (այժմյան՝ Գոմարեթի շրջանը)։ Վախթանգը տեղեկացրեց, որ Հոների զորքը պետք է նույնպես օգնության հասնի, սակայն օրեր էին անցնում, իսկ Հոների վարձկան զորքն այդպես էլ չեկավ, իսկ ուշացնել հարձակումը Կուրի հովտում գտնվող թշնամու զորքի դեմ, չէր կարելի։ Հայկական ու վրացական զորագնդերի համատեղ գործողությունների ընդհանուր ղեկավարությունը դրվեց սպարապետ Վահան Մամիկոնյանի վրա։

Պարսկական բանակը Միհրանի հրամանատարությամբ երրորդ օրը հանդիպեց հայ-վրացական միացյալ զորաբանակին։ Ճակատամարտը տեղի ունեցավ Ճարմանայնի դաշտում՝ Հայաստանի, Աղվանքի և Վիրքի սահմանագլխին։ Հայկական զորքերի շարքերում միասնություն չկար։ Հայ ավագանու մեջ կային այնպիսիք, որոնք չէին կամենում բարձրացնել սպարապետ Վահան Մամիկոնյանի հեղինակությունը, նրանք պատրաստ էին դիմելու դավաճանության։ Վրացական ավագանու շարքերում, որը պայքարում էր Վախթանգ Գորգասար թագավորի կենտրոնաձիգ քաղաքականության դեմ, ուժեղ էին պարսկասեր տարրերը, որոնց նպատակն էր Սասանյանների օգնությամբ ոչնչացնել թագավորի իշխանությունը և դառնալ երկրի փաստական տերերը։ Հայկական ու վրացական ավագանու այս տարրերն էլ հենց գաղտնի կապեր հաստատեցին իրանական զորապետ Միհրանի հետ, որի պատճառով և դաշնակիցների զորքերը ծանր պարտություն կրեցին[27]։

Ճարմանայնի ճակատամարտում (482) զոհվեցին մարզպան Սահակ Բագրատունին, Վասակ Մամիկոնյանը և ուրիշներ, պարսիկները հայերից ու վրացիներից բազմաթիվ գերիներ վերցրին, որոնց թվում էր Հրահատ Կամսարականը։

Սպարապետ Վահան Մամիկոնյանն իր ուժերը ոչնչացումից փրկելու նպատակով գերադասեց նահանջել և, հավաքելով ցրված զորագնդերը, ամրացավ հայրենական կալվածք Տայքում։ Պարսից զորապետ Միհրանը շարժվեց նրա հետքերով ու կանգ առավ Բասեն գավառում, պարսկաբյուզանդական սահմանագծի մոտ գտնվող Դու գյուղում, իսկ Վահան Մամիկոնյանը գտնվում էր 2 փարսախ (շուրջ 12 կմ) նրանից հյուսիս՝ Տայքի սահմանակից Մկնառինճ գյուղում։ Տեղի ունեցած հայ-պարսկական բանակցությունների ժամանակ զորավար Միհրանը համոզում է սպարապետ Վահան Մամիկոնյանին՝ հնազանդվել արքայից արքա Պերոզին։ Նա խոստանում է, որ ինքը միջնորդի դեր կկատարի և կաղաչի թագավորին՝ հաշտվելու նրա հետ։ Վահան Մամիկոնյանն իր պատասխանում հիշեցնում է հայ ժողովրդին հասցրած Պերոզի չարիքները։ Նա բացահայտում է պարսից արքունիքի նենգ քաղաքականությունը Հայաստանի նկատմամբ[28]։ Բանակցությունները դեռ չէին ավարտվել, երբ Միհրանն իր զորքերով շտապփույթ կանչվեց Պարսկաստան։ Հեռանալիս նա իր հետ տարավ գերի ընկած Հրահատ Կամսարականին և Ցաղդ Սյունուն։ Ներսեհ Կամսարականը ճանապարհին կարողանում է փրկել իր եղբորը և նրանք հեռանում են իրենց հայրենի Շիրակը[29]։

27 Նույն տեղում, հգ, հգ, էջ 323—329։

28 Նույն տեղում, հե, էջ 331—337։

29 Նույն տեղում, հզ, էջ 337։

Հրահատի փախուստի վրեժը պարսիկները լուծում են Յազդ Սյունուց, որին, իր կյանքի փրկության պայմանով, առաջարկում են կրոնափոխ լինել, սակայն մերժում ստանալով, գլխատում են (482 թ. սեպտեմբերի 12-ին)։ Նրա նշխարները ամփոփվում են Բագավանում, սուրբ Գրիգորի մատուռի մեջ[30]։

Պարսկական զորքերի հեռանալուց հետո Վահան Մամիկոնյանն անմատչելի Տայքից վերադառնում է երկրի կենտրոնը՝ Այրարատ նահանգը։ Առաջին հերթին նա այցելում է էջմիածնի Մայր տաճարը, ուր պատարագներ են կատարում զոհվածների և նահատակների հիշատակին։ Այստեղից Վահան Մամիկոնյանը և նրա հետ եղածները գնում են Դվին, ուր մնում են մինչև գարուն[31]։

Դվինում Վահան Մամիկոնյանը հոգ է տանում երկրում կարգ ու կանոն հաստատելու մասին։ Սահակ Բագրատունու մահից հետո երկրի կառավարչի՝ մարզպանի և «տանուտէր Հայոցի» պարտականությունները ստանձնում է Վահան Մամիկոնյանը։

Ուխտադրուժ նախարարները, հակադրվելով Վահան Մամիկոնյանին, փորձում են թուլացնել նրա դիրքը, ինչպես և ռազմական ուժը։ Վրաց աշխարհից Դվին եկած մարդիկ սուտ լուրեր են տարածում, թե իբր Սահակ Բագրատունին և Վասակ Մամիկոնյանը չեն մահացել Ճարմանայնի ճակատամարտում, իբր նրանց վիրավորված վիճակում բերել են ապահով տեղ և Տեղեր վանքի (Բյուրականի մոտ) մի քահանայի շնորհիվ ապաքինվել են և գտնվում են լեռներում, ինչ-որ անմատչելի տեղում։ Այս լուրը ցնցում է բոլորին և այնտեղ գտնվող Մամիկոնյան տան սպուհ Գրիգորը խնդրում է Վահանից մի ջոկատ՝ նրանց փնտրելու համար։ Վահան Մամիկոնյանը համոզված էր, որ այդ լուրերը ճիշտ չեն, բայց, այնուամենայնիվ, որոշ թվով հեծյալներ է տալիս, թուլացնելով առանց այն էլ իր փոքրաքանակ զորքը։ Շուտով պարզվեց, որ թշնամու սարքած դավն էր այդ, որպեսզի ապստամբները չկարողանային դիմադրել պարսիկների նոր հարձակմանը[32]։

Վահան Մամիկոնյանը փոքրաթիվ մի զորախմբով գտնվում էր Դվինում, երբ 483 թ. գարնան սկզբին (Զատկից հետո, որ այդ տարի ընկնում էր ապրիլի 10-ին)[33], պարսկական բանակը, Զարմիհր Հազարավուխտի հրամանատարությամբ, Ատրպատականի կողմից ներխուժում է Հայաստան, հասնելով մինչև Արտաշատ։ Թշնամու զորքը Տափերական կամրջով անցնում է Երասխը և ցրվում Հայոց ամբողջ ոստանով։ Հազարավուխտն իր բանակը դասավորում է Խոսրովակերտ անտառում, որտեղից մի մասը գնում է Դվին, իսկ մի մասը հասնում մինչև Երևան բերդից դեպի հյուսիս-արևելք գտնվող Ջրվեժ գյուղը; Վահան Մամիկոնյանն իր փոքրաթիվ զորքով անպատրաստ էր դիմադրելու թշնամուն։ Նա շտապ դուրս գալով Դվինից, հանդուգն հարձակմամբ պարտություն է մատնում թշնամու՝ հարթավայրում գտնվող զորքերին, սակայն նրա զորախումբը փոքրաթիվ էր, ուստի նա ստիպված կրկին նահանջում է հայրենական կալվածքը՝ Տայք, այնտեղից էլ անցնում Խաղտիքի անառիկ լեռները՝ բյուզանդական տիրապետության տակ գտնվող սահմանները։ Պարսից բանակը շարժվում է նրա ետևից և հասնում Տայք։ Ճանապարհին

---

30 Նույն տեղում, էջ 337—343։ Տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, հ. Ա, էջ 461։
31 Փարպեցի, Գ, հէ (աշխ. թարգմ., էջ 343)։
32 Նույն տեղում, էջ 343—349։
33 Մ. Օրմանյան, Ազգապատում, հ. Ա, էջ 462։

պարսիկների ձեռքն են ընկնում Կամսարական երկու տիկինները՝ Ներսեհ և Հրահատ եղբայրների կանայք։ Նրանց զգուշությամբ պահում էին Բողբերդ ամրոցում (այժմ՝ Բուզա-կալա ամրոցի ավերակները), հույս ունենալով, որ Կամսարական եղբայրներն անձնատուր կլինեն, սակայն իզուր։ Հազարավուխտը Տայքից վերադառնում է Բասեն գավառը և ճամբար դնում Դու գյուղի մոտերքում՝ Մուրց գետի ակունքների մոտ, Աղբերականաց (Արծաթաղբերք) դաշտում[34]։ Սակայն շուտով Հազարավուխտը Պերոզից հրովարտակ է ստանում ամբողջ ուժով գնալ հեփթաղների դեմ, որ Ալանաց դռների կողմից բերել էր վրաց թագավոր Վախթանգ Գորգասարը։ Արքայից արքան հրամայում էր Հազարավուխտին գնալ Վիրք, վրաց Վախթանգ թագավորին կամ ձերբակալել, կամ սպանել և կամ վտարել երկրից, իսկ Շապուհ զորավարին թողնել Հայոց աշխարհում որպես մարզպան[35]։

Վիրքում Հազարավուխտն օգտագործում է այն հակասությունը, որ գոյություն ուներ վրաց թագավոր Վախթանգի և ֆեոդալական վերնախավի միջև։ Վախթանգը ստիպված է լինում հեռանալ Եգերացվոց աշխարհում (Լազիկեի թագավորություն) գտնվող վայրում[36]։

Շապուհը Ոքաղե գավառում փորձում է զանազան միջոցներով Վահանին իր ձեռքը գցել, սակայն վերջինս Ծաղկի գյուղի մոտ անցնում է Եփրատ գետի ակունքների մոտ գտնվող լեռնանցքը և կտրելով բյուզանդապարսկական սահմանը, մտնում է Կարնո գավառը, «Ծովն Կարնոյ» (ըստ այլ աղբյուրների՝ «Շամբ Կարնոյ») լճի մոտ, որտեղից նա հույս ուներ կապվել Հաշտյանքում գտնվող հայ նախարարների հետ։ Այստեղ էին Մուշեղ Մամիկոնյանը և Ներսեհ Կամսարականը, որոնք հասնում են Կարին գավառում գտնվող Արծաթի գյուղը։ Այստեղ է գալիս Վահան Մամիկոնյանը։ Սրանց հետևում է սահմանից այն կողմ գտնվող պարսկական գունդը, որը չի հանդգնում մտնել կայսրության հողը։ Կարին գավառի գյուղացիները սահմանագծի վրա սպանում են 72 պարսկական զինվոր, որոնք հետապնդում էին Վահանին ու նրա հետ գնացողներին[37]։

Վահան Մամիկոնյանն անցնում է Հաշտենից գավառի սահմանը և այնտեղից գալիս մարզպանական Հայաստանի Արշամունիք գավառի Երեզ գյուղը։ Այստեղ տեղի է ունենում հայկական պարտիզանական ջոկատների և պարսիկների ընդհարում, որտեղ թշնամին պարտություն կրելով, նահանջում է։ Երեզ գյուղի շինականները մեծ պատկառանքով էին վերաբերվում Վահան Մամիկոնյանին և նրան օգնություն էին ցույց տալիս։ Տեղի բնակչության օգնությամբ մզած փոքր ու մեծ մարտերով Վահան Մամիկոնյանին հաջողվում է ջլատել թշնամու ուժերը[38]։ Վահան Մամիկոնյանը և նրա զորագնդերն ամենուրեք վայելում էին ժողովրդի ակնածանքը և լայն օգնությունը։

Ռազմական այս գործողությունները տեղի են ունենում այնպիսի ժամանակ, երբ Միջին Ասիայում հոներ-հեփթաղները Սասանյաններին ծանր հարված էին հասցրել։ 484 թ. ամառվա վերջին Իրանից անսպասելիորեն սուրհանդակներ գալով հայտնում են արքայից արքա Պերոզի սպանվելու և հոների ներխուժման լուրը։ Հայերի ու վրացիների դեմ կռիվները շարունակելն անհնա-

34 Փարպեցի, Գ, հը, հթ (աշխ. թարգմ., էջ 349—355)։

35 Նույն տեղում, էջ 355։

36 Նույն տեղում, ձ, էջ 355—357։

37 Նույն տեղում, ձա, էջ 361—363։

38 Նույն տեղում, ձբ, ձգ, էջ 363—373։

*րին է դառնում և պարսից զորապետներն շտապում են Տիզբոն։ Հայաստանում և Վիրքում (Քարթլի) կրկին դրության տերը դառնում են ապստամբ հայերն ու վրացիները։*

*Վահան Մամիկոնյանը Արշամունիքից Այրարատ վերադառնալով, անմիջապես ձեռնամուխ է լինում բանակը, կայազորներն ու երկրի ռազմական հենակետերը կարգի բերելու գործին։ Երկրի գործակալությունները մաքրում է անվստահելի ու կասկածելի նախարարներից և ղեկավարությունը հանձնում մյուսներին՝ ժառանգականության իրավունքի խիստ պահպանման սկզբունքով։ Երկրի կառավարման գլուխ կանգնած Վահան Մամիկոնյանը ղեկավարում է երկրի զինված ուժերը։ Այսպիսով նա դառնում է երկրի՝ նախարարների ու ժողովրդի կողմից ճանաչված կառավարիչը։ Այդ ժամանակից սկսած, ի տարբերություն բյուզանդական Հայաստանի, մարզպանական Հայաստանը դարձավ «Տանուտիրական երկիր»[39], իսկ Դվինը՝ նրա մայրաքաղաքը։*

*Վահան Մամիկոնյանը ձգտում էր վերականգնել պատերազմներից տուժած երկրի բարեկեցությունը։ Նրա օրոք վերաշինվեցին ավերված քաղաքներն ու գյուղերը։ Հայոց տանուտեր «Վահան Մամիկոնյանը մեծապայծառ շքեղությամբ հիմնովին նորոգեց իր նախնիների կառուցած ու այժմ հնացած այդ եկեղեցին (խմա՝ Վաղարշապատի Կաթուղիկե եկեղեցին, էջմիածնի Մայր տաճարը)»[40]։*

*Իրանում գահ բարձրացած Պերոզի եղբայր Վաղարշին (484—491), բաժին էր ընկել պարտված ու թուլացած բանակը, պատերազմներից ավերված երկիրն ու դատարկ գանձարանը։ 484 թ. վերջին Դվին է ժամանում Վաղարշի դեսպանությունը, հայտնելով, որ արքայից արքան ցանկանում է բարեկամություն ու խաղաղություն հաստատել հայերի հետ։ Վահան Մամիկոնյանն ու կառավարող շրջաններն ընդառաջ են գնում այդ առաջարկությանը։*

*Սահմանամերձ Նվարսակ գյուղում (այժմ՝ Նիսակ) Խոյ քաղաքից արևմուտք, կնքվելու էր հաշտության պայմանագիր՝ Հայաստանի և Իրանի միջև։ Ղազար Փարպեցին հաղորդում է, որ բանակցությունները սկսելու համար ապստամբները Վահան Մամիկոնյանի գլխավորությամբ առաջադրում են երեք հիմնական պահանջ։ Առաջին՝ ոչ մի ոտնձգություն հայերի քրիստոնեական դավանանքի նկատմամբ, հայերը համարձակ և աներկյուղ պետք է պաշտեն իրենց բնիկ դավանանքը։ Երկրորդ՝ պետք է անխախտ պահպանվեն Հայաստանում հաստատված նախարարական կարգերը, հարգվեն տոհմիկ ազնվականների իրավունքներն ու արտոնությունները։ Երրորդ՝ հայ նախարարները ճանաչում են միայն պարսից արքայի սյուզերեն իշխանությունը և հայերի գործերը տնօրինել կարող է միայն նա՝ անձամբ, առանց ուրիշներին լսելու կամ ուրիշների միջամտության։*

*Այս պայմանները գրով և կնիքով պետք է հաստատվեն, պնդում են հայերը, «Իսկ եթե մեր այս երեք խնդիրը չեք կարող կատարել և կարծում եք, թե անհնար է, ապա ինչպես որ մենք մահն ենք դրել աչքներիս առաջ, պատրաստ կլինենք մեռնել, բայց Արյաց հպատակվել չենք կարող»[41]։*

*Պարսից բանակի հրամանատար Նիխորը և արքան հարկադրված էին ըն-*

---

39 *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 231—232.

40 Փարպեցի, *Գ, ձզ (աշխ. թարգմ., էջ 381)*։

41 *Նույն տեղում, գլ. ձթ, էջ 389—393*։

դունել այդ պայմանները։ Հաշտության պայմանագիրը կնքվում է Հայաստանի հարավում գտնվող՝ սահմանամերձ Նվարսակ գյուղում, որտեղ բանակ էր դրել պարսից զորքը։

Վահան Մամիկոնյանը նախարարների ուղեկցությամբ և բազմաթիվ զորքով շարժվում է դեպի Նվարսակ և մոտենալով պարսից բանակին, հրամայում ռազմի փողեր հնչեցնել։ Նիխոր զորավարի այն պնդումին, թե այդ եղանակով պարսից բանակը մտնել կարող է միայն Արյաց սպարապետը, Վահան Մամիկոնյանը պատասխանում է՝ նախ ինձ դարձրու Արյաց տիրոջ ծառա, ապա նման պահանջ ներկայացրու[42]։ Երեք տարի տևած ապստամբությունը ապարդյուն չէր անցել, որով, ինչպես և Իրանի աներարենպաստ վիճակով էր պայմանավորված հայերի համարձակ և հաստատուն դիրքը։

Նվարսակում կնքված պայմանագիրը մեծ նշանակություն ունեցավ։ Վերականգնվեցին նախարարների նախկին արտոնությունները և ժողովրդական ապստամբությունից հետո Հայաստանում հաստատված կարգերը։ Քրիստոնեությունը ճանաչվեց որպես Հայաստանի պաշտոնական կրոն։ Երկրի կառավարումը կրկին հանձնվեց հայ տոհմիկ ավագանուն։ Պետական պաշտոններում նախարարական տների գլխավորների նշանակումը պետք է կատարվեր նախարարների ժառանգական իրավունքի համաձայն և ոչ թե Սասանյանների հայեցողությամբ։ Նախարարների գերագույն ատյանը և դատավորը կարող էր լինել միայն արքայից արքան և ոչ թե մարզպանը։

485 թ. գարնանը Վահան Մամիկոնյանը մեկնում է Տիզբոն, որտեղ Վաղարշը նրան ընդունում է մեծ պատիվներով։ Հանդիպման ժամանակ արքայից արքան կատարվածի ողջ մեղքը բարդում է Պերոզի անխոհեմ քաղաքականության վրա։ Վաղարշը հաստատում է հաշտության պայմանագրի կետերը, իսկ հետո հատուկ հրովարտակով Հայաստանի սպարապետ ու տանուտեր է ճանաչում Վահան Մամիկոնյանին։ Հատուկ հրովարտակներով իրենց պաշտոններում հաստատվեցին գործակալությունների ղեկավարները և վերականգնվեցին շնորհազրկված նախարարների շատերի իրավունքները։ Սակայն մարզպան նշանակվեց պարսից Անդեկանը։ Նախարարները չէին կարող հաշտվել դրա հետ։ Հայկական ավագանու ճնշման տակ Վաղարշն ստիպված էր երկրի գերագույն կառավարիչ ճանաչել Վահան Մամիկոնյանին (485 թ. աշնան վերջին)։

Ապստամբների երկարատև պայքարը հաջող ելք ունեցավ, վերջնական համաձայնություն ձեռք բերվեց հայկական ավագանու և Իրանի արքունիքի միջև։ Կրկին վերականգնվեց նախարարների ու հոգևորականության արտոնյալ վիճակը։ Հայաստանը ճանաչվեց որպես կիսանկախ երկիր, որն ուներ իր ինքնավարությունը։

Այսպիսով, 450—451 և 482—484 թթ. ապստամբությունների և հայ ժողովրդի մղած ազատագրական համառ պայքարի արդյունքները նշանակալից էին։ Ձախողվեցին Հայաստանը Իրանի մի սովորական մարզ դարձնելու, հայ ժողովրդի վզին լուծ դնելու, հայերին դավանափոխ անելու բոլոր փորձերը։ Հայաստանը պահպանեց իր քաղաքական ինքնուրույնությունը և տնտեսական ու մշակութային զարգացման հնարավորությունները։

---

42 Նույն տեղում, գլ. ղա, էջ 397—401։

## 3. ՀԱՅԱՍՏԱՆԸ՝ ՏԱՆՈՒՏԻՐԱԿԱՆ ԵՐԿԻՐ

Սասանյան Իրանի դեմ մղվող պայքարում Բյուզանդիան իր զորեղ գործակիցներից մեկը համարում էր եկեղեցին, որի միջոցով ձգտում էր իր քաղաքական և գաղափարական ազդեցությունը տարածել Իրանին ենթակա քրիստոնյա ժողովուրդների վրա։

Այս քաղաքականությունը հարուցում էր Սասանյանների համապատասխան հակազդեցությունը։ Օգտվելով քրիստոնեական եկեղեցու մեջ տեղի ունեցած երկպառակություններից, Սասանյաններն իրենց շահերին համեմատ, լայնորեն հովանավորում էին քրիստոնեական դավանանքի այն ուղղությունները, որոնք մերժված ու հալածված էին բյուզանդական պաշտոնական եկեղեցու կողմից։ Այդպիսի ուղղություն էր նեստորականությունը[43]։ Շուտով երկպառակություններն ավելի սաստկացան։

451 թ. Քաղկեդոնում հրավիրված Տիեզերական Չորրորդ ժողովում պառակտվեցին բյուզանդական և արևելյան եկեղեցիները։ Այս ժողովում դավանաբանական վեճերը բռնկվեցին միաբնակների («մոնոֆիզիտների») և երկաբնակների («դիոֆիզիտների») միջև։ Միաբնակներն ուսուցանում էին, որ Քրիստոսի մեջ կա միայն մեկ էություն՝ նա ինքը աստվածն է մարդու կերպարանքով, երկաբնակները՝ հակառակը, Քրիստոսի մեջ ճանաչում էին երկու բնություն՝ աստվածային և մարդկային։ Ժողովում գերակշռությունը երկաբնակների կողմն էր, որովհետև նրանց սատարում էին Մարկիանոս կայսրը և կայսրուհին՝ մահացած Թեոդոս Բ-ի քույր Պուղքերիան, Կոստանդնուպոլսի պատրիարքը և Հռոմի պապը[44]։ Մարկիանոս կայսեր հատուկ հրովարտակով (էդիկտով) Բյուզանդական կայսրության համար պաշտոնական դավանանք էր ճանաչվում երկաբնակությունը, իբրև «ուղղափառ» եկեղեցի, իսկ մյուս բոլոր դավանությունները համարվում էին հերձված՝ «հերետիկոսական» և հալածանքների ենթակա։ Այս ժամանակվանից սկսած Բյուզանդիայի սահմաններում արգելվեցին միաբնակների համայնքները, որոնք շուտով ենթարկվեցին հալածանքների։ Այնուհետև երկաբնակները՝ «ուղղափառները» կոչվում էին «քաղկեդոնական», իսկ միաբնակները՝ «հակաքաղկեդոնական»։ Այս սխոլաստիկ կրոնական վեճերի քողի տակ ծավալվում էր քաղաքական լուրջ պայքար։ Միաբնակությունը տարածված էր Բյուզանդական կայսրությանը ենթակա մի շարք երկրներում, և կայսրության դեմ՝ ճնշված ժողովուրդների մղած պայքարի արտահայտություններից մեկն էր։

Կայսրության պաշտոնական դավանանքը՝ երկաբնակությունը կամ քաղկեդոնականությունը, մի գործիք էր կայսերական իշխող դասակարգի ձեռքին՝ ճնշված ժողովուրդներին հնազանդ ու ենթակա պահելու և ընդհանրապես նվաճողական քաղաքականություն վարելու համար։

Քաղկեդոնի ժողովը գումարելու պահին (451) Հայաստանում պատամբությունը թուլացել էր և հայերը, ինչպես և վրացիներն ու աղվանները, այդ

[43] *М. Я. Сюзюмов*, Внутренняя и внешняя политика Византии и народные движения в первой половине V в., см. «История Византии», т. I, М., 1967, стр. 190—192, *С. Т. Еремян*, Политические взаимоотношения между Сасанидским Ираном, Византией и Арменией на рубеже V—VI вв., «Очерки истории СССР, III—IX вв.», М., 1958, стр. 208.

[44] *Նույն տեղում*, էջ 196—198։

ժողովին չէին մասնակցել։ Սակայն, ինչպես հետագայում պարզվեց, այս երեք ժողովուրդների համակրանքը հակաքաղկեդոնականների կողմն էր։ Նրանք հարել էին կայսրության արևելյան պրովինցիաների միաբնակների չափավոր թևին, որպիսիք էին՝ ղպտիներն ու ասորիները։

Կայսրության կրոնական քաղաքականությունն ավելի խորացրեց արևելյան ճնշված երկրների պառակտումն ու թշնամությունը։ Հայերը, վրացիներն ու աղվանները կասկածանքով ու վախով էին վերաբերվում այդ քաղաքականությանը։

Եկեղեցական պառակտումն առավել նպաստեց այս ժամանակներում սկսված կայսրության արևելյան պրովինցիաների առանձնացման ընթացքին։ Բյուզանդական կայսրության եվրոպական մասի անջատումը փոքրասիականից առանձնապես ակնբախ դարձավ Զենոն (474—491) և Անաստաս (491—518) կայսրերի ժամանակ, որոնք մի շարք միջոցառումներով ամեն ջանք թափում էին պառակտման առաջն առնելու։

Զենոնն ստիպված էր դավանաբանական հարցերում միջին գիծ ընտրել, փորձելով միավորել եկեղեցին և դրանով ամրապնդել կայսրության քաղաքական դիրքերն արևելյան պրովինցիաներում։ Զենոնը ձգտում էր վերացնել միաբնակների ու երկաբնակների միջև գոյություն ունեցող տարաձայնությունները և դրանց մոտեցնել միմյանց։ Այդ նպատակով 482 թ. նա հրապարակեց, այսպես կոչված, «Հենոտիկոնը»՝ «միաւորութեան գիրը», որով համաձայնեցվում էին իրար հակադիր դավանաբանական ուսմունքները։ Արևելյան եկեղեցիները՝ Ալեքսանդրիայի, Անտիոքի և հայ միաբնակները «Հենոտիկոնը» որակեցին իբրև Քաղկեդոնի ժողովի հեղինակության հերքում ու որոշումների մերժում, երկաբնակների դատապարտում, և մեծ պատրաստակամությամբ ընդունեցին այն։

Զենոնի և նրան հետևող Անաստաս կայսեր այդ միջոցառումները քաղաքական նպատակ էին հետապնդում, այն է՝ միացնել բոլոր հականեստորական տարրերը։ Այս ժամանակ էր, որ Սասանյանները նեստորականությունը պաշտոնապես ճանաչեցին իբրև Իրանում ապրող քրիստոնյաների միակ պաշտոնական դավանանք։

Սասանյանների դեմ իրենց ինքնուրույնության համար մաքառող հայերը, վրացիներն ու աղվանները համառորեն պայքարում էին նաև Սասանյանների հովանավորած նեստորականության դեմ։ Այս պայքարը, ինչպես և Զենոն ու Անաստաս կայսրերի քաղաքականությունը հայերին, վրացիներին և աղվաններին նորից մերձեցրին կայսրության հետ։

Ի պատասխան Բյուզանդիայում նեստորականների հալածանքների, Սասանյաններն սկսեցին հետապնդել միաբնակներին։ Սրանց առաջ հարց էր դրված ընտրություն կատարել նեստորականության և մազդեականության միջև։ Սակայն հայերն օգտագործեցին Սասանյանների նոր դժվարությունները։

Կավատ Բ-ն (488—531), որը գահ էր բարձրացել հոների շնորհիվ, գահի հետ ժառանգեց դատարկ գանձարան։ Միակ աղբյուրը, որով նա կարող էր մեղմացնել ստեղծված վիճակը, այդ այն «ոսկին» էր, որ Բյուզանդիան, համաձայն պայմանագրի, ամեն տարի պիտի մուծեր պարսից գանձարանը, բայց դադարեցրել էր մուծումը՝ մինչդեռ հոները, որոնք սովոր էին հեշտ ճանապարհով՝ թալանով, ձեռք բերել ուժերը, տուրք էին պահանջում պարսից արքայից արքայից։ Ստեղծված վիճակը հարկադրեց Սասանյաններին պատերազմ սկսել Բյուզանդիայի դեմ։

491 թ. Կավատ Բ-ն Բյուզանդիա ուղարկեց իր դեսպաններին, պահանջելով հերթական «ոսկին», որ կայսրությունը վճարում էր պարսիկներին՝ կովկասյան լեռնանցքների պաշտպանության համար։ Նոր գահ բարձրացած Անաստաս կայսրը կտրականապես մերժեց այդ պահանջը[45]։ Դրա հետևանքով 492 թ. Կավատի դեմ ապստամբեցին իրանական ազնվականներն ու զրադաշտական մոգերը՝ նրան գահընկեց անելու նպատակով։ Իրանում ծայր առած երկպառակություններից օգտվեց Տանուտիրական Հայաստանը. այն հրաժարվեց ճանաչել Սասանյանների գերիշխանությունը։ Ասորական պատմագիրներից մեկի վկայությամբ ապստամբ հայերը կոտորեցին պարսկական ատրուշանները, կոտորեցին Հայաստանում եղած մոգերին[46]։ Կավատի ուղարկած պարսկական զորքերը ջարդվեցին։

Ապստամբ հայերը հատուկ դեսպանություն ուղարկեցին Բյուզանդիա՝ կայսր Անաստաս Ա-ից խնդրելով ռազմական օգնություն և նրա հովանավորությունը։ Սակայն Անաստաս Ա-ն չցանկանալով Սասանյաններին նոր պատերազմի առիթ տալ, կտրականապես մերժեց հայերի խնդրանքը։ Հայերից հետո միաժամանակ Սասանյանների դեմ ապստամբություն բարձրացրին նաև միջին Միջագետքի արաբական ցեղերը։

Բյուզանդիային սահմանակից ժողովուրդների ապստամբությունները, ինչպես նաև պարսիկ ավագանու և մոգերի դժգոհությունները Կավատին դրեցին անելանելի վիճակի մեջ։ Նա հարկադրված եղավ 496 թ. կրկին փախչել և ապավինել հոներին, իսկ գահն անցավ նրա եղբոր՝ Ջամասպին։ Միայն 498 թ. Կավատը հոների օգնությամբ կարողացավ նորից գահ բարձրանալ[47]։

Կավատին արդեն անհրաժեշտ էր պատերազմը Բյուզանդիայի դեմ, որպեսզի նա կարողանար վարձատրել հոներին նրանց օգնության համար։ Կավատն սկսեց հաշտության բանակցություններ վարել հայերի հետ։ Ապստամբական իրադրությունը Հայաստանում հարթելու համար, Կավատը հայերին առաջարկում էր հետևյալ պայմանները. նախ՝ Բյուզանդիայի դեմ մղվելիք առաջիկա պատերազմի ժամանակ հայերը պետք է իրենց զորքերով միանային պարսիկներին և կռվեին բյուզանդական բանակի դեմ, երկրորդ՝ Հայաստանի տարածքը պետք է բաց լիներ սասանյան զորքերի առաջ, որպեսզի այդտեղից նրանք ներխուժեին Բյուզանդիայի սահմանները[48]։

Վահան Մամիկոնյանը, չկամենալով նոր թշնամության առիթ տալ կայսրությանը, մերժեց այդ առաջարկները։ Դրանից հետո Կավատը պատերազմ սկսեց հայերի դեմ, որը վերջացավ հայերի պարտությամբ։ Այս պատերազմի ժամանակ ոչ մի օգնություն չստանալով Բյուզանդիայից, հայերը հարկադրված եղան ընդունել Կավատի առաջարկները։ Միաժամանակ հայերը Կավատին առաջարկեցին իրենց պայմանները։ Դրանց մեջ հիմնականն այն էր, որ հայկական եկեղեցին ճանաչվի անկախ, ընդունվի Սասանյան պետության հովանավորության տակ և պաշտպանվի նեստորական հոգևորականության ու զրադաշտական մոգերի ոտնձգություններից։ Կավատն ընդունեց այդ պայմանը և

---

45 Լեո, Հայոց պատմություն, Երկերի ժողովածու, հ. Բ, Երևան, 1967, էջ 132։

46 *Н. В. Пигулевская,* Месопотамия на рубеже V—VI вв. Сирийская хроника Иешу Стилита как исторический источник, М.—Л., 1940, стр. 89.

47 Նույն տեղում, էջ 90։

48 Նույն տեղում, էջ 92։

501 թ. հատուկ հրովարտակ արձակեց, որով նեստորական եկեղեցու կողքին հայկական եկեղեցին պաշտոնապես ճանաչվում էր անկախ և ինքնուրույն[49]։ Այս զիջումով Սասանյանները վերականգնեցին իրենց գերիշխանությունը Հայաստանում։

Տանուտիրական Հայաստանը նորից կախման մեջ էր ընկնում Սասանյան Իրանից։ Այն պարտավորվում էր իր այրուձիով մասնակցել Կավատի արշավանքին՝ ընդդեմ Բյուզանդիայի[50]։

502 թ. օգոստոս ամսին Անաստասի համար անակնկալ, Կավատի զորքերը Տանուտիրական Հայաստանից ներխուժեցին բյուզանդական Հայաստան և գրավեցին սահմանամերձ Կարին-Թեոդոսուպոլիս և Մարտիրուպոլիս-Տիգրանակերտ քաղաքները[51]։ Բյուզանդական կայազորը, հանկարծակիի գալով, ոչ մի դիմադրություն չկարողացավ ցույց տալ, իսկ կայսրությունից դժգոհ հայ բնակչությունն ու ազնվականությունը կամովին անցան պարսիկների կողմը։

Ամիդ քաղաքը, որը համառ դիմադրություն էր ցույց տալիս պարսիկներին, գրավվեց և ավերվեց, իսկ նրա բնակիչների մի մասը սրի քաշվեց, մյուսը՝ գերեվարվեց[52]։ Կավատը ձմեռեց Ամիդում, իսկ նրա զորամասերն ավերեցին «Մեսոպոտամիա» ու «Սիրիա» բյուզանդական պրովինցիաների բարգավաճ քաղաքներն ու գյուղերը։ Կավատը խոստացավ դադարեցնել պատերազմը, եթե կայսրը ուղարկի նրան պահանջվելիք «ոսկին»։ Բյուզանդացիները մերժեցին այդ առաջարկը և հակահարձակման անցան։

503 թ. բյուզանդական զորավար Կելերիոսը մեծ բանակի գլուխ անցած հարձակվեց Սասանյանների վրա։ Թշնամու գերազանց ուժերի ստիպմամբ Կավատը նահանջեց, շարժվելով Եփրատի հոսանքով ներքև և 503 թ. վերջին բյուզանդական տարածքը մաքրվեց պարսից զորքերից[53]։ Տանուտիրական Հայաստանի բնակչությունը գաղտնի ու բացահայտ օգնում էր բյուզանդացիներին։ Բյուզանդական զորքերի ներխուժումը Տանուտիրական Հայաստան, հնարավորություն տվեց հայերին բացեիբաց անցնել կայսրության կողմը[54]։

Հայերի Բյուզանդիայի կողմն անցնելը Կավատին զրկեց ստրատեգիական առավելություններից։ Բյուզանդացիները և հայերն արդեն լիովին վրեժ էին առնում Սասանյաններից։ Բյուզանդացիները, հայերի հետ դաշնակցած, առաջ էին շարժվում, նվաճում, ավերում իրանական Միջագետքի նահանգները[55]։

---

49 *М. М. Дьяконов*, Очерк истории древнего Ирана, М., 1961, стр. 306—307.

50 Կավատը քաջատեղյակ էր, որ բյուզանդական Հայաստանի նախարարները դժգոհ էին կայսրությունից, որը ոտնահարում էր նրանց ժառանգական իրավունքներն ու արտոնությունները։ Այսպես, իսավրացիների ապստամբության ժամանակ նրանց միացան հայ նախարարներից շատերը, ուստի Զենոն կայսրը 479 թ. վերացրեց նրանց տիրակալական իրավունքները։ Սրանից հետո հայ նախարարներն սպասում էին հարմար առիթի՝ անջատվելու կայսրությունից։

51 *Н. В. Пигулевская*, նշվ. աշխ., էջ 94։

52 Նույն տեղում, էջ 95—116։ Այս պատերազմի ժամանակ բյուզանդացիների կողմում պարսիկների դեմ կռվեց վրաց Վախթանգ Գորգասար թագավորը, որը 502 թ. վիրավորվեց ու մահացավ Ուջարմա քաղաքում։ მარიამ ლორთქიფანიძე, ქართლი V საუკუნის ნახევარში, თბილისი. 1979, էջ 88—89։

53 *Н. В. Пигулевская*, նշվ. աշխ., էջ 117—124։

54 Զորրորդ Հայքի իշխան Մուշեղակն իր ամբողջ զորքով անցավ Բյուզանդիայի կողմը և կռվեց Սասանյանների դեմ։ Տե՛ս Մ. Չամչյան, Պատմութիւն Հայոց, հ. Բ, Վենետիկ, 1785, էջ 235։

55 *Н. В. Пигулевская*, նշվ. աշխ., էջ 122։

Կավատի վիճակը բարդացել էր։ Նա միաժամանակ ստիպված էր պաշտպանական պատերազմ մղել հեփթաղների դեմ։ Նա մտածում էր այնպես անել, որ պատերազմը վերջանա խաղաղությամբ։ Այդ ծանր դրությունից դուրս գալու համար նա ձգտում էր հաշտություն կնքել Բյուզանդիայի հետ։ Երկու աշխարհակալությունների միջև տեղի ունեցած պատերազմը վերջացավ 504 թ.։ Բանակցությունները սկսվեցին 504 թ. ձմռանը և ավարտվեցին 506 թ. հոկտեմբեր-նոյեմբեր ամիսներին՝ դաշնագրի կնքմամբ։ Ըստ այդ պայմանագրի վերականգնվեց Բյուզանդական կայսրության նախկին սահմանագիծը, սակայն կայսրությունը վճարելու էր 11 կենտինար ոսկի[56]։

Այս ժամանակաշրջանում բյուզանդացիներն իրենց տեր ու տիրական էին զգում Տանուտիրական Հայաստանում, և երբ Վահան Մամիկոնյանը մահացավ, Անաստաս կայսրը երկրի կառավարիչ հաստատեց նրա եղբայր Վարդ Մամիկոնյանին՝ «պատրիկ» տիտղոսով։ Հայ ժողովրդի հիշողության մեջ Վարդը մնաց իբրև «Վարդպատրիկ»[57]։

Մինչ տեղի էին ունենում խաղաղության բանակցությունները, Անաստասն շտապեց իրականացնել իր կրոնական քաղաքականությունը Հայաստանում, Վիրքում ու Աղվանքում։ 506 թ. Անաստասը հրապարակում է մի նոր հրովարտակ, որով ազդարարում էր, որ նա անցնում է միաբնակների կողմը և սկսում է հալածել նեստորականներին ու քաղկեդոնականներին։ «Հերետիկոսների» դեմ ծավալված պայքարի ոլորտն են ընդգրկվում նաև միաբնակ եկեղեցուն հետևվող հայերը, վրացիներն ու աղվանները, որոնց դավանանքն այժմ լիովին համընկնում էր Բյուզանդական կայսրության մեջ պաշտոնապես ընդունված միաբնակների (հակաքաղկեդոնականների) դոգմաներին։

Ի նշանավորումն Անաստաս կայսեր հրովարտակի, նույն՝ 506 թ. Դվինում Բաբկեն կաթողիկոսը (506—512) հրավիրեց հայ, վրաց և աղվանից եկեղեցիները կազմող թեմերի եպիսկոպոսներին, որոնք մեծ հանդիսավորությամբ ընդունեցին ու հաստատեցին Անաստաս կայսեր հրովարտակը[58]։ Եկեղեցական այս ժողովը պաշտոնապես ճանաչեց միաբնակ դավանանքը, իսկ նեստորականությունն ու երկաբնակությունը (քաղկեդոնականությունը) համարվեցին հերձված[59]։ Այս ժողովի որոշումների «պայման գիրը» գրվել է հայերեն, հունարեն, ասորերեն, վրացերեն և աղվաներեն, բայց մեզ հասել է միայն հայերենը[60]։

Այնուամենայնիվ, բյուզանդացիների տիրապետությունը, որը փաստորեն, հովանավորության բնույթ էր կրում և որի ժամանակ իրականում Տանուտիրական Հայաստանը համարյա անկախ երկիր էր, երկար չի տևում։ Իրանի և Բյուզանդիայի միջև կնքված հաշտության պայմանագրի համաձայն Տանուտիրական Հայաստանը կրկին ընկնում էր վասալական կախման մեջ Սասանյան Իրանից։ Կավատը պարտավորվում էր անհիշաչար լինել և պատասխանատվության չենթարկել հայ նախարարներին, որոնք պատերազմի ժամանակ անցել

---

56 Ըստ Պրոկոպիոսի այդ ժամանակավոր համաձայնագիրը կնքվել էր յոթ տարի ժամկետով Proc. Caes., De bello persico, I- 7,5: *Н. В. Пигулевская*, նշվ. աշխ., էջ 121 – 130։

57 Այդ անունով է հիշատակվում նա «Սասունցի Դավիթ» դյուցազնավեպում։

58 Ե. Տեր-Մինասյան, Բաբգեն կաթողիկոսի ժողովի թվականը և տեղը տե՛ս Ե. Տեր-Մինասյան, «Պատմաբանասիրական հետազոտություններ», Երևան, 1971, էջ 31—44։

59 Նույն տեղում։

60 Ինչպես իմանում ենք այդ փաստաթղթի հայերեն տեքստից, հայերեն բնագիրը ոչնչացվել է հրդեհի ժամանակ՝ Եգեսիայում և հայերեն է թարգմանվել հունարեն բնագրից։

էին Բյուզանդիայի կողմը։ Կավատի հատուկ հրովարտակով պատրիկիոս Վարդը պարսից արքունիքի կողմից հաստատվեց Հայաստանի մարզպան ու սպարապետ։ Վարդը հարկադրված էր հաշտվել ստեղծված իրավիճակի հետ և իրեն ճանաչել Սասանյան Իրանի արքայի վասալ։ Սակայն նույնիսկ այս վասալական վիճակը Սասանյանները չեն հանդուրժում։ Կավատը Վարդին իր մոտ է կանչում և զրկում պաշտոնից։ Վարդը մահանում է 509 թ., օտարության մեջ։ Նրա մահվանից հետո Կավատը, չսպասելով խաղաղության պայմանագրի ժամկետը լրանալուն՝ 511 թ. Տանուտիրական Հայաստանի կառավարիչ՝ մարզպան նշանակեց պարսիկ Բուրգանին (509—520)[61]։ Այսպիսով, Հայաստանը կրկին դառնում էր պարսից մարզպանություն[62], որը Ատրպատականի, Վիրքի և Աղվանքի հետ մտնում էր Երանշահրի «Հյուսիսային Քուստակի» կազմի մեջ։ Այսպիսով, գրեթե անկախ Տանուտիրական Հայաստանը որոշ ընդհատումով գոյություն ունեցավ 450—509 թթ. միջև։ Այս ժամանակաշրջանում էր, որ հայկական մշակույթը ապրում էր իր «ոսկեդարը»։ Մատենագրության մեջ հանդես եկան Մովսես Խորենացին, Եղիշեն, Ղազար Փարպեցին և Դավիթ Անհաղթը։

## 4. ՄԱՐԶՊԱՆԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՍՊԱՅԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԿԱԶՄՈՒՄ։ ՍԱՍԱՆՅԱՆՆԵՐԻ ՆՈՐ ՀԱՐԿԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Սասանյան Իրանի պետությունը VI դարում ապրում էր իր վերելքի ժամանակաշրջանը։ Խոսրով Ա Անուշիրվանի (531—578) թագավորության ժամանակաշրջանում իր ավարտին է հասնում Սասանյան Իրանի՝ Երանշահրի ռազմավարչական և հարկային ռեֆորմը[63]։

Արդեն Կավատ Ա-ի ժամանակ Երանշահրը վարչականորեն բաժանված էր չորս «քուստակների»՝ երկրամասերի։ Խոսրով Ա Անուշիրվանի ժամանակ ռազմական ռեֆորմով այդ չորս երկրամասերը միաժամանակ դարձել էին ռազմական շրջաններ։ Յուրաքանչյուր երկրամաս՝ «կողմ», բաժանված էր առանձին մարզպանությունների և «շահրերի» («աշխարհների»)։

Մարզպանական Հայաստանը, Ատրպատականը, Վիրքը (Քարթլի՝ Վարջան) և Աղվանքը (Արդան՝ Առան), ապա Կասպից ծովի հարավային եզերքին գտնվող Դմբավանդ, Տապարստան, Ռուան և Ամոլ երկրները կազմում էին Հյուսիսային Քուստակը, որը կոչվում էր նաև «Քուստ-ի-Կապկոհ», այսինքն՝ Կովկասյան Քուստակ[64]։ Հյուսիսային Քուստակի մայրաքաղաքն էր Գանձակը

---

61 Մ. Չամչյան, Պատմութիւն Հայոց, հ. Բ, էջ 236։

62 Աղվանքում (որտեղ կարճ ժամանակով մինչև 510 թ. թագավոր էր Վաչագան Բարեպաշտը) և Վիրքում նույնպես շուտով վերացվեցին թագավորությունները և այդ երկրների կառավարիչներ նշանակվեցին մարզպանները (տե՛ս К. В. Тревер, История и культура Кавказской Албании, IV в. до н. э.— VII в. н. э., М.—Л., 1959, стр. 225, 218).

63 Տե՛ս A. Christensen. L' Iran sous les Sassanides, Cobenhagen, 1944.

64 Անանիա Շիրակացու «Աշխարհացույցում» պահպանվել է կովկասյան քուստակը կազմող երկրների լրիվ ցուցակը։ Ըստ Անանիա Շիրակացու «Պարսից աշխարհը չորս մասի է բաժանվում», որոնցից երկրորդը Հյուսիսային փոխարքայությունն էր։ Անանիա Շիրակացին հաղորդում է՝ «Քուստակ-ի-Կապ-կոհ, որ Կովկասյան լեռների երկիրն է և որտեղ կա տասներեք աշխարհ, Ատրպատական, Արմն՝ որ Հայքն է, Վարջան՝ որ Վիրքն է, Ռան՝ որ Աղուանքն է, Բաղասական, Սիսական, Առե, Գեղան, Շանճան, Դլմունք, Դմբավանդ, Տապարստան, Ռուան, Ամոլ» (տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույցի», Երևան, 1961, էջ 115)։

(Գանձակ Շահաստան)՝ Կապուտան (Ուրմիա) լճից հարավ-արևելք։ Այստեղ էր նստում Հյուսիսային երկրամասի փոխարքան՝ «պատգոսպանը»։

Հյուսիսային Քուստակի զորամասերը կենտրոնացած էին այժմյան Մուղանի դաշտում, Փայտակարան քաղաքի շրջանում, որտեղ ժամանակի ընթացքում աճեց Բայլական քաղաքը։ Ամբողջ Քուստակի զորամասերը գլխավորում էր «սպայապետը»։

VI դ. երկրորդ քառորդում Անդրկովկասի երեք երկրում էլ վերացված էին տեղական թագավորների դինաստիաները, իսկ Հայաստանի պարսկական մասը, Վիրքը և Աղվանքը կառավարում էին սասանյան արքայից արքայի կողմից նշանակված մարզպանները։

Այս ժամանակաշրջանից սկսած արդեն գոյություն ունեին Անդրկովկասի երեք երկրների մայրաքաղաքները՝ Դվինը, Տփղիսը, Պարտավը։ Մարզպանական Հայաստանում 481—484 թթ. ապստամբությունից հետո մայրաքաղաքը Արտաշատից փոխադրվել էր Դվին։ Իսկ Դվինի քաղաքային տարածքը, որը, սովորաբար, կոչվում էր «Ոստան Հայոց», այնուհետև կոչվում էր «Ոստան Դունոյ», կամ պարզապես՝ «Դունայ դաշտ»։

Բացի մարզպանություններից, Քուստակ-ի-Կապ-կոհի կազմում կային ավելի փոքր վարչական միավորներ՝ «շահրեր», որոնք գտնվում էին մարզպանությունների կազմում։ Այդպիսին էր Բաղասականը, որն իբրև առանձին շահր մտնում էր Ատրպատականի մարզպանության կազմում, որի կենտրոնն էր Փայտակարան քաղաքը։ Այս կենտրոնի անունով Բաղասական նահանգը «Աշխարհացոյցում» կոչվում է Փայտակարան։

Դեռևս Կավատ Ա-ի ժամանակ սկսվել էր հարկահանության նոր սիստեմի կիրառումը[65], որն իր ավարտին է հասնում Խոսրով Ա Անուշիրվանի ժամանակ։ Մարզպանական Հայաստանում անց է կացվում աշխարհագիր՝ գրանցվում են ցանքատարածությունները, այգիներն ու պարտեզները, ինչպես և անասունների գլխաքանակը։ Աշխարհագրից հետո կարգավորվում է հողահարկը։ Գլխահարկի քանակը պարզելու համար կազմակերպվել է ազգաբնակչության վիճակագրություն։ Հարկը գանձվում էր տարեկան երեք անգամ։ Հողահարկը վճարում էին ազգաբնակչության բոլոր խավերը, իսկ գլխահարկը՝ ստորին դասերը՝ շինականները և քաղաքացիները[66]։

Հարկային նոր սիստեմը մեծ դժգոհություն հարուցեց բնակչության բոլոր խավերում։ Նախկինում հողահարկը գանձվում էր բնատուրքի ձևով՝ պարզապես տրվում էր ստացված բերքի որոշ քանակը, այժմ հարկահավաքները՝ «համարակարները» պահանջում էին և բնատուրքով, և դրամով։ Հարկի գանձման այս ձևը հատկապես դժվար կացության մեջ էր գցում գյուղացիությանը, որն ընկնում էր վաշխառուի ճանկը։ Նոր հարկային սիստեմն ավելի խորացրեց հողի կենտրոնացումը խոշոր և միջին կալվածատերերի մոտ՝ ի հաշիվ մանր հողատերերի, որոնք աղքատանում էին։

Խորանում է սոցիալական շերտավորումը գյուղական համայնքի ներսում,

---

65 Այս խոշոր պետական միջոցառումներն իրականացվում էին սոցիալ-դասակարգային պայքարի սրման պայմաններում, որոնց դրսևորումն էր Մազդակի (մահ. 523 թ.) գլխավորած շարժումը։ Տե՛ս *Н. В. Пигулевская,* Маздакитское движение, «Известия АН СССР», серия истории и философии», 1944, № 4, *М. М. Дьяконов,* նշվ. աշխ., стр. 306.

66 *Н. В. Пигулевская,* К вопросу о податной реформе Хоорова Анушнрвана, «ВДИ», 1937, № 1.

որը հետևանք էր նաև այն բանի, որ նա ուներ իր սեփական տնտեսությունը և արտադրության գործիքներ։ Մի դեպքում գյուղացու ընտանիքում ավելի շատ աշխատավոր ձեռքեր և կանոնավոր արտադրության գործիքներ կային, մյուս դեպքում՝ հողագործ գյուղացին զուրկ էր դրանցից և սրան ավելանում էին տարերային դժբախտությունները, անբերրիությունը, սովը, համաճարակները և այլն։ Այս ամենի հետևանքով խորանում էր գույքային և սոցիալական շերտավորումը։

Հայաստանի հյուսիս-արևելյան մասերում ապրող բնակչության միջավայրում դեռևս գոյություն ունեին հետամնաց կացութաձևեր։ Արցախի լեռնային բավիղներում ու կուսական անտառներում կային համայնքներ, որոնց հիմնական զբաղմունքը անասնապահությունն ու որսորդությունն էր։ Համայնքների միությունները կազմում էին «ազգ», որոնց գլխավորում էր «ազգապետը»։ Դեռևս գոյություն ունեին արենակցական համայնքներ, որոնց գլուխ կանգնած էին տոհմապետները՝ «նահապետները»։

Ազգաբնակչության հիմնական մասը կազմում էին գյուղական համայնքներում միավորված երկրագործները՝ նյութական բարիքների ազատ արտադրողները։ Դրանք տերիտորիալ-համայնքային միություններ էին, որտեղ արենակցական կապերն իրենց տեղը զիջել էին դրացիական ու տնտեսական կապերին։

Գյուղական դրացիական համայնքն իրենից ներկայացնում էր գյուղացիական երդերի-ընտանիքների հանրագումար։ Գերիշխող էր մենամուսնական ընտանիքը՝ իր առանձին տնտեսությունով, որը որոշ կախման մեջ էր պետական իշխանությունից։ Ընտանիքի գլուխ կանգնած էր «տանուտէրը»։ Գյուղական համայնքը «գեւղը» կամ «շէնը» գլխավորում էր «գեղջաւագը» կամ «աւագ շինին»[67]։

Գեղջավագը գյուղացու հարկերի գանձման համար պատասխանատու էր պետության ներկայացուցիչ «համարակարին»։ Պետության առաջին իսկ պահանջով գեղջավագը պետք է հավաքագրեր ռազմիկներ՝ տեղական ռազմական իշխանություններին հանձնելու ինչպես և բանվորական ուժ՝ զարիկպետի ներկայացուցչի տրամադրության ներքո։ Սրանց բանվորական ուժն օգտագործվում էր պետական շինարարության մեջ։

Եկեղեցական ժողովների կանոնադրությունները ցույց են տալիս գյուղական համայնքներում տեղի ունեցող գույքային և սոցիալական շերտավորումը։ Համայնքի անդամների մի մասը հարստանում էր ի հաշիվ աղքատացող համայնականների։ Գյուղական համայնքի վերնախավին էին պատկանում գեղջավագների ընտանիքները, որոնք բնորոշվում էին դեհկան բառով[68]։ «Դեհկանությունը» կազմում էր մանր հողատերերի հիմնական մասը։ Այս ժամանակ, գյուղական համայնքներում արդեն կար գյուղացիների երեք տարբեր շերտ՝ «թուանիկ», «տառապեալ», «վար և այգի չունեցող»։

Այդ մասին է վկայում Աղուենի 488 թ. եկեղեցական ժողովի կանոնների չորրորդ հոդվածը, ըստ որի գյուղացիները պտուղ էին վճարում գյուղական երեցին, հետևյալ կարգով. 1. «Թուանիկը»՝ չորս «գրիվ» ցորեն, «վեց գրիվ» գարի և տասնվեց «քաս» քաղցու. 2. «տառապեալը» տալիս էր նախորդի կեսը և գինի,

[67] *С. Т. Еремян,* Экономика и социальный строй Албании в IV—VII вв., «Очерки истории СССР», III—IX вв.», стр. 307—308.

[68] Նույն տեղում։

որչափ կարող էր. 3. «վար և այգի չունեցողը»՝ ոչինչ։ Բացի դրանից՝ ով ոչխար ուներ, վճարում էր մեկ ոչխար և երեք գզած բուրդ և մեկ պանիր. ով ձիեր ուներ՝ մեկ ավանակ և ով տավար՝ մէկ հորթ[69]։

Բնամթերային մուծումների վերը բերված թվարկումը լրիվ չէ։ Դա միայն այն հարկն էր, որ գյուղացին տալիս էր եկեղեցուն։ Հարկերի մյուս տեսակը և քանակը մեզ հայտնի չեն։ Բնակչության համար ծանր էր մանավանդ հարկահանության կապալային սիստեմը, որը բավականաչափ զարգացավ Խոսրով Ա. Անուշիրվանի հարկային ռեֆորմներից հետո։ Կապալը չարաշահումների լայն հնարավորություններ էր ստեղծում։

Հարկային նոր սիստեմն ավելի ուժեղացրեց հողերի կենտրոնացումը խոշոր ու միջակ հողատերերի ձեռքում և ավելի ստվարացրեց հողազուրկ, չքավոր ու թափառաշրջիկ մարդկանց շարքերը։

Հովհան Մայրավանեցին տիրող դասակարգի ուշադրությունը հրավիրում էր այդ ընչազուրկ մարդկային զանգվածի վրա։ «Ինչպե՞ս պետք է մտածել աղքատի ու տնանկի մասին։ Մտածելն այն է, երբ նրա տառապանքը միտդ ես բերում, որ նա քո եղբայրն է և կարիք է զգում այն ամենի, ինչպես և դու, և կարոտ է ամեն բանի... և դաժան քաղցի վտանգից դրդված՝ շրջում է ու անհանգիստ թափառում. նա տապից տառապում է, ցրտից դողում, նրա որովայնը դատարկ է, և մարմինը մերկ, մազերը թաղքած, դեմքը թոշնած ու դեղնած...»[70]։

Այսպիսով, ունեցվածքային ու սոցիալական շերտավորումը և հարկահան հզոր պետությունների դարավոր մրցակցությունը հայ ժողովրդի լայն զանգվածներին գցել էին սոցիալական ու տնտեսական ծանր վիճակի մեջ, որը նրանց մղում էր պայքարի՝ հանուն հայրենիքի ազատագրության։

---

69 Մովսես Կաղանկատվացի, էջ 97—103։ К. В. Тревер, История и культура, стр. 295—296.

70 «Յովհաննու Մանդակունւոյ Ճառք, Թուղթ յաղագս ողորմութեան տնանկաց», Վենետիկ, 1836, էջ 40։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

# ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՆԱԽՔԱՆ ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ Ա-Ի ՌԵՖՈՐՄՆԵՐԸ

## 1. ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՔԱՂԱՔԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄԸ

*Արևելահռոմեական կայսրության և Պարսկաստանի միջև կնքված հաշտության պայմանագրի համաձայն 387 թ. Հայաստանի $^1/_5$ մասն անցել էր Բյուզանդիայի տիրապետության տակ։ Սահմանագիծը ձգվում էր Թեոդոսուպոլիս-Կարին քաղաք-ամրոցից՝ հյուսիսում, մինչև Մծբին քաղաքը՝ հարավում, ընդ որում Թեոդոսուպոլիսը գտնվում էր կայսրության կողմում, իսկ Մծբինը՝ Պարսկաստանի։*

*Բյուզանդական կայսրությունը IV—V դդ. կենտրոնացած ռազմաբյուրոկրատական միապետություն էր։ Նա ժառանգել էր Հռոմեական կայսրության պետական կարգի հիմնական գծերը, որոնց մեջ զուգորդվում էին հռոմեական պետական կազմակերպության ավանդույթները և արևելյան բռնապետության տարրերը։*

*Հակառակ կայսրության փաստական բաժանման, երկու պետություններն էլ՝ Արևելահռոմեական կայսրությունը և Արևմտահռոմեական կայսրությունը դեռևս համարվում էին մի միասնական ամբողջության մասերը։ Այդ շրջանում Արևելահռոմեական կայսրության պետական լեզուն լատիներենն էր, հակառակ այն բանի, որ բնակչության հիմնական մասը, եթե չհաշվենք Ասորիքն ու Հայաստանը, հունախոս էր։*

*Հռոմեական կայսրությունը բաժանվում էր չորս պրեֆեկտուրաների, որոնք գլխավորում էին* Praefecti Praetorio-*ները։ Պրեֆեկտուրաները բաժանվում էին դիոցեզների, որոնք կառավարում էին* Vicarii Praefectorum-*ների կողմից։ Դիոցեզներն իրենց հերթին բաժանվում էին պրովինցիաների, որոնց իշխանությունը գտնվում էր* Praeses-*ի ձեռքում։*

*Կայսրության արևելյան շրջանները մտնում էին* Praefectus Praetorio Orientis *և* Praefectus Praetorio Illyrici *իրավասության մեջ։ Արևելյան* (Orientis) *պրեֆեկտուրայի մեջ կային հինգ դիոցեզներ, որոնցից մեկի՝ Պոնտական* (Pontica) *դիոցեզի մեջ էին մտնում տասնմեկ պրովինցիաներ, որոնց թվում Առաջին և Երկրորդ Հայքը և Պոլեմոնյան Պոնտոսը։*

*Առաջին և Երկրորդ Հայքը կառավարում էին* Praeses-*ները, որոնք ենթարկվում էին* Vicarius-*ին։ Պրեֆեկտուրան ռազմական տեսակետից ենթարկվում էր* Magister militum-*ին։ Արևելյան պրեֆեկտուրայում գլխավոր զորա-*

հրամանատարը կոչվում էր Magister militum per Orientem։ Սրան էին ենթարկվում դուքսերն ու կոմեսները։

Պոնտական դիոցեզում կար միայն մեկ՝ Հայաստանի դուքսը (Dux Armeniae), որի իշխանությունը տարածվում էր Առաջին Հայք, Երկրորդ Հայք և Պոլեմոնյան Պոնտոս պրովինցիաների վրա։ Զինված ուժերը հիմնականում կենտրոնացված էին Առաջին Հայքի Սատաղ և Երկրորդ Հայքի Մելիտենե քաղաքներում[1]։

Բյուզանդական Հայաստանը քաղաքական, տնտեսական և մշակութային տեսակետից մի ամբողջություն չէր ներկայացնում։ Նրա տարբեր շրջանները միացվել էին Բյուզանդիային տարբեր ժամանակներում և այդ հանգամանքը չէր կարող չարտահայտվել կյանքի բոլոր բնագավառներում։ Սկզբում միացվել էր Փոքր Հայքը՝ Եփրատից արևմուտք ընկած տարածքը։ Մինչև Դիոկղետիանոս կայսրը, այն Կապադովկիա նահանգի մի մասն էր կազմում։ Դիոկղետիանոսը Փոքր Հայքը դարձրեց ինքնուրույն նահանգ՝ Մելիտենե կենտրոնով[2]։

Այսպիսի դրությունը հարատևեց մինչև Թեոդոս I կայսրը, որը 378—386 թթ. միջև Փոքր Հայքը բաժանեց երկուսի՝ Առաջին Հայք՝ Սեբաստիա կենտրոնով[3] և Երկրորդ Հայք՝ Մելիտենե կենտրոնով[4]։ Փոքր Հայքի այս բաժանումը հարատևեց մինչև Հուստինիանոս I կայսրը։ Անգեղտունը, Ծոփքը, Աղձնիքը, Կորդուքը և Մոկքը, նույնպես և Միջագետքի Ծավդեքը և Ռեհիմենեն 298 թ. Դիոկղետիանոսի և Պարսից արքա Ներսեհի միջև կնքված պայմանագրի համաձայն, անցել էին Հռոմի ձեռքը։ Այս շրջաններում, որոնք հետագայում ստացան Անդրտիգրիսյան (Transtigritani) անունը, Դիոկղետիանոսը և նրա հաջորդները չմտցրին իրենց պրովինցիալ կառավարումը։

Հայաստանի այն մասը, որը միացավ Բյուզանդիային 387 թվականից հետո, բյուզանդական աղբյուրներում կոչվում է Մեծ Հայք (Armenia Magna) կամ Ներքին Հայք (Armenia Interior)։ Սրա կազմի մեջ էին մտնում Արշակունյաց Մեծ Հայքից անջատված և Բյուզանդիայի ձեռքն անցած հետևյալ գավառները. Խորձյան, Պաղնատուն, Մնձուր, Դարանաղի, Եկեղյաց, Աղիվն, Մանանաղի, Դերջան, Կարին, Շաղագոմ և Սպեր[5]։ Բյուզանդական Մեծ Հայքին հյուսիսից սահմանակից էր Ճաների երկիրը։ Հայոց Արշակ թագավորը հաստատվել էր բյուզանդական Մեծ Հայքի Եկեղյաց գավառում, բայց նրա մահից հետո «ոչ ևս կացուցին Յոյնք ի բաժնի իւրեանց թագաւոր... և աշխարհին իւրեանց մասինն կացուցին Յոյնք կոմէսս իշխանս»[6]։ Այդ մասին է վկայում նաև Պրոկոպիոս Կեսարացին։ Նա ցույց է տալիս, որ Հայոց թագավորության վերացումից հետո Մեծ Հայքում «Հռոմայեցիների կայսրը Հայոց իշխան

---

1 *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, СПб., 1908, стр. 91—93, 95, 97.

2 Նույն տեղում, էջ 68։

3 Սրա մեջ էին մտնում բացի Սեբաստիա քաղաքից նաև Նիկոպոլիսը, Կոլոնիան, Սատաղը, Սեբաստուպոլիսը և Վերիսան։

4 Սրա կազմում էին նաև հետևյալ քաղաքները. Արկան, Արաբիսոսը, Կուկուսոսը, Կոմանան և Արիարաթիան (տե՛ս *Адонц*, նշվ. աշխ., էջ 90)։

5 *Н. Адонц*, նշվ. աշխ., էջ 46։

6 Խորենացի, Գ, 46։ Ամենայն հավանականությամբ, առաջին կոմեսը դարձավ հայազգի Գաղավոնը, որովհետև Խորենացու ասելով՝ «առաջնորդէ նախարարացն կողմանց այնոցիկ քաջն Գաղաւոն» (Նույն տեղում)։

էր նշանակում երբ որ ցանկանար և ում որ ցանկանար։ Այդ իշխանին անվանում էին, ինչպես և այժմ, Հայաստանի կոմես»[7]։

Բյուզանդական իշխանությունը Արևմտյան Հայաստանում 385 թ. անմիջապես հետո այնքան էլ հաստատուն չէր։ Դրա մասին է խոսում Մովսես Խորենացու այն վկայությունը, թե Արշակ III-ի մահից հետո Պարսկահայաստանի Խոսրով III թագավորի առաջարկությամբ, Բյուզանդիան որոշ ժամանակ նրան զիջեց բյուզանդական Հայաստանի կառավարումն այն պայմանով, որ վերջինս հարկերը վճարի Բյուզանդիային։ Նման վիճակ գոյություն ուներ նաև Խոսրովի հաջորդ՝ Վռամշապուհ թագավորի ժամանակ, որն «ունէր զաշխարհն մեր և ծառայէր երկոցունց թագաւորացն, տալով հարկս, զմասինն Պարսից՝ Վռամայ, և զմասինն Յունաց՝ Արկադեայ»[8]։ Սակայն Թեոդոս Փոքրի ժամանակ նման իրավիճակը վերանում է։ Թեև բյուզանդական կայսրը «զնոյն բարեկամութիւն կալաւ ընդ մերում աշխարհիս և ընդ արքայն մերում Վռամշապհոյ, բայց զմասն իւր ոչ հաւատայ նմա, այլ ինքեան կալաւ գործակալօք»[9]։

Ի տարբերություն Փոքր Հայքի, որը բյուզանդական սովորական մի նահանգ էր, ներքին կամ բյուզանդական Մեծ Հայքը, ինչպես նաև հարավում գտնվող նախարարությունները, որոնք սատրապություններ էին կոչվում, կայսրության հետ դաշնակցային հարաբերությունների մեջ էին (foederatae) և անկախ էին (liberae)։ Սատրապությունների տարածքի վրա չկար նաև բյուզանդական զորք։ Նրանց հիմնական պարտականությունը կայսրությանը զինված օգնություն ցույց տալն էր։

Սակայն այդպիսի իրավիճակը ժամանակի ընթացքում կրում էր լուրջ փոփոխություններ։ Խոսելով բյուզանդական Մեծ Հայքի 539 թ. ապստամբության մասին՝ ընդդեմ կոմես Ակակիոսի դաժան հարկային քաղաքականության, Պրոկոպիոս Կեսարացին ցույց է տալիս, որ ապստամբ հայ նախարարները ապավինում են պարսից Խոսրով արքային, և ի միջի այլոց, հայտնում նրան, որ «մեր նախնիների վերջին արքա Արշակը կամավոր կերպով իր իշխանությունից հրաժարվեց (հօգուտ) հռոմայեցիների կայսր Թեոդոսի այն պայմանով, որ իր բոլոր տոհմակիցները հավիտյան անկախ պիտի ապրեն և ոչ մի դեպքում հարկատու չդառնան։ Մենք կարողացանք պաշտպանել սահմանվածը այնքան ժամանակ, մինչև որ դուք կնքեցիք այս չարաբաստիկ հաշտությունը»[10]։

Այս վկայությունից երևում է, որ Արշակ թագավորի օրոք սահմանված բյուզանդական Մեծ Հայքի անկախ և ոչ հարկատու վիճակը հարատևել էր մինչև բյուզանդապարսկական 532 թ., այսպես կոչված, «հավիտենական» հաշտության պայմանագիրը, որը ազատ էր արձակել Բյուզանդիայի ձեռքերը Մեծ Հայքի նկատմամբ և վերջինիս հետ նա սկսել է վերաբերվել ինչպես իր պետության սովորական նահանգներից մեկի։

Բայց նույն Պրոկոպիոսի մի այլ տվյալից կարելի է կասկածել Մեծ

---

7 Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, 5։ Բյուզանդական աղբյուրներ, գիրք Ա, «Պրոկոպիոս Կեսարացի», թարգմանություն բնագրից, առաջաբանը և ծանոթագրությունները Հրաչ Բարթիկյանի, 1967, էջ 190։

8 Խորենացի, Գ, 51։ Հարավային Հայաստանի նախարարություններն այս ժամանակաշրջանում հարկատու չէին։

9 Նույն տեղում, Գ, 4։

10 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 83։

Հայքի, նույնիսկ հարավային Հայաստանի սատրապությունների լիակատար ազատության և հարկերից ազատված լինելուն։ Բյուզանդական պատմիչը ցույց է տալիս, որ կոմես Ակակիոսը «հայերի վրա չորս կենտինար հարկ գրեց, մի բան, որ երբեք չէր եղել»[11]։ Նույն բանն են ասում Խոսրովին նաև հայ ապստամբ նախարարները, թե Հուստինիանոսը «մեզ վրա սահմանեց հարկերի աննախընթաց գումար»[12]։ Այս բոլորը ցույց են տալիս, որ այստեղ խոսքը հարկերի չափի մասին է, որ աննախընթաց էր հարկային այդ ծանր լուծը[13]։

Այս բոլորը վկայում են, որ բյուզանդական Հայաստանի ինքնուրույնության և անկախության վերացումն սկսվել էր նախքան Հուստինիանոսի բարենորոգումները և այն վերաբերում էր նաև հարավային Հայաստանի սատրապություններին, առավել ևս բյուզանդական Մեծ Հայքին, որ Բյուզանդիային միացվելուց մի քանի տարի անց կառավարվում էր անմիջականորեն կայսրության կողմից։

Հայաստանի հարավում, Տիգրիսի և Եփրատի միջև գտնվող հայկական ինքնավար իշխանությունները, որոնք աղբյուրներում կոչված են «սատրապություններ»[14], ունեին հայազգի բնակչություն, որն աղբյուրներում կոչվում է լատիներեն gentes, հունարեն՝ ἔθνη—ազգություններ, ցեղեր։ Պրոկոպիոս Կեսարացու ասելով սատրապությունները հինգն էին[15], ըստ Հուստինիանոս կայսեր Դատաստանագրքի՝ վեց[16] և համապատասխանում են հայոց Անձիտ, Անգեղտուն, Հաշտյանք, Մեծ Ծոփք, Փոքր Ծոփք կամ Ծոփք Շահունյաց (Sophanena) և Բալահովիտ գավառներին։

Երբ վերոհիշյալ շրջաններն անցան Բյուզանդիայի ձեռքը, նրանց կառավարման գործում որևէ էական փոփոխություն չկատարվեց։ Նախկինի նման սատրապություններում անմիջական կառավարումը գտնվում էր տեղական հայ նախարարների-սատրապների ձեռքում, որոնց իշխանությունը ցմահ էր և ժառանգական։ Այդ մասին արժեքավոր մանրամասնություններ է տալիս Պրոկոպիոս Կեսարացին։ «Ինչ վերաբերում է մյուս Հայքին,— գրում է նա,— որը գտնվում է Եփրատ գետից այս կողմ և տարածվում մինչև Ամիդ քաղաքը, այստեղ իշխում էին հինգ հայ սատրապներ, որոնց իշխանությունը ժառանգական էր և ցմահ։ Նրանք հռոմայեցիների կայսրից ստանում էին միմիայն նշանակներ»[17]։ Քանի հայկական թագավորությունը չէր վերացել, սատրապները

---

11 Նույն տեղում, էջ 80։

12 Նույն տեղում, էջ 83։

13 Անաստասիոս կայսեր 496 թվակիր մի հրամանագրում հիշատակվում են «հայկական (պետական) հարկերը» (Н. Адонц, նշվ. աշխ., էջ 116)։ Պրոկոպիոս Կեսարացին ցույց է տալիս, որ երբ 502 թ. պարսից արքա Կավատը պաշարել էր Մարտիրուպոլիսը, նրան ընդառաջ գնացին քաղաքի բնակիչները՝ Սոֆանենեի սատրապ Թեոդորոսի գլխավորությամբ և նրան վճարեցին «երկու տարվա պետական հարկերը» (Պրոկոպիոս Կեսարացի, էջ 192)։

14 «Սատրապ» և «սատրապություն» տերմինները, որպես վարչական շրջանի և նրա կառավարչի հորջորջում հանդիպում է նաև հայկական աղբյուրներում. «...ի մի ժողով կուտեցան... ամենայն սատրապք նախարարք և ազատք պետք և իշխանք...»։ Փաւստոս, Դ, 3։

15 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 190։ Հմմտ. նաև Հուստինիանոս կայսեր 31-րդ նովելլան։ Նույն տեղում, էջ 304։

16 Cod. Iust., De off. mag. mil., I, 29,5: Հակասության մասին տե՛ս Կ. Գյուտերբոկ, Հռոմեական Հայաստանը և հռոմեական սատրապությունները Դ—Զ դարերում, Վիեննա, 1914, էջ 45։ Նաև՝ Н. Адонц, նշվ. աշխ., էջ 43—44։

17 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 190։

ենթարկվում էին Արշակունիներին։ Անգեղտունը, օրինակ, Արշակունիների նստոցներից մեկն էր։ Այնտեղ էին գտնվում Արշակունի թագավորների գերեզմանները և պահվում արքունի գանձերը։ Բայց Արշակունիների վերացումից հետո սատրապները փաստորեն ինքնուրույն դարձան։ Նրանք ունեին իրենց սեփական զինված ուժերը։ Պրոկոպիոս Կեսարացին ցույց է տալիս, որ «հռոմեական զորքը երբևիցե օգնություն չի ցուցաբերել ո՛չ Հայոց թագավորին, ո՛չ էլ սատրապներին։ Պատերազմական գործերում նրանք ինքնուրույն էին»[18]։ Սատրապների զորքը հայերից էր կազմված։ Նույն Պրոկոպիոսը վկայում է, որ Զենոն կայսեր բարենորոգումներից հետո էլ, երբ փաստորեն վերացվեց սատրապների ժառանգական իշխանությունը, ընդհուպ մինչև Հուստինիանոս Ա կայսրը, սատրապություններում եղած զինված ուժերը բաղկացած էին «ոչ հռոմայեցիներից, այլ փոքրաքանակ հայերից, ինչպես ընդունված էր հնում»[19]։

Սատրապների կախումը Բյուզանդիայից արտահայտվում էր «նվերների» ձևով, որոնք բյուզանդական կայսրը ստանում էր իրեն հպատակ իշխանություններից։ Այդ նվերները կոչվում էին «պսակի ոսկի» (aurum coronarium)[20]. Սատրապները պարտավոր էին նաև կայսրությանը զորք մատակարարել և պաշտպանել Բյուզանդիայի սահմանները պարսիկների ասպատակություններից[21]։

Սատրապների սեփական զինված ուժեր ունենալու հանգամանքը Բյուզանդիայի համար թեև ձեռնտու էր, բայց ոչ ցանկալի։ Ձեռնտու այն իմաստով, որ նա ազատված էր իր սահմանները այս վայրերում պաշտպանելու հոգսից, և անցանկալի, քանի որ այդ զորքը կարող էր իրեն չենթարկվել։ Երբ 485 թ. Իլլոսն ու Լեոնտիոսը Զենոն կայսեր դեմ ապստամբություն բարձրացրին, սատրապությունների հիմնական մասն անցավ ապստամբների կողմը, մի բան, որ վկայում է սատրապությունների դժգոհության մասին բյուզանդական վարչության նկատմամբ։ Սատրապների ինքնուրույնության վերացման քաղաքականությունը, որ լայն ծավալ ստացավ Հուստինիանոս Ա կայսեր ժամանակ, ամենայն հավանականությամբ, սկսվել էր շատ ավելի վաղ, գուցե Զենոնից էլ առաջ, մի բան, որ առաջ էր բերել սատրապների դժգոհությունը Բյուզանդիայի նկատմամբ։ Զենոնին հաջողվեց ճնշել Իլլոսի և Լեոնտիոսի ապստամբությունը, որից հետո նա որոշեց հաշվեհարդար տեսնել նաև ապստամբությանը հարած սատրապությունների հետ։ «Երբ Զենոն կայսրը,— գրում է Պրոկոպիոս Կեսարացին,— ճնշեց Լեոնտիոսի և Իլլոսի ապստամբությունը, մի շատ թույլ և աննշան իշխանություն ունեցող սատրապի՝ Բալաբիտենե (Բալահովիտ) կոչվող երկրում թողեց իշխել, իսկ մնացած բոլորին, զրկելով իշխանությունից, չտվեց այն նրանց ցեղակիցներին, այլ, ինչպես հռոմեական մյուս իշխանություններում էր, դարձրեց ոչ ժառանգական՝ ըստ կայսեր ցանկության։ Բայց նրանց իշխանության տակ եղած զորքը բաղկացած էր ոչ հռոմայեցիներից, այլ փոքրաքանակ հայերից, ինչպես ընդունված էր հնում»[22]։

Պրոկոպիոսի այս վկայությունից պարզ երևում է, որ վեց սատրապու-

---

18 Նույն տեղում, էջ 191։

19 Նույն տեղում։

20 Codex Theodosianus, XII, 13, 6.

21 Н. Адонц, նշվ. աշխ., էջ 126։

22 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 191։

թյուններից միայն մեկը՝ Բալահովիտի սատրապությունը ռազմական տեսակետից շատ թույլ էր և, հավանաբար, նրա անզորության հանգամանքն էր պատճառը, որ նա չմիացավ Զենոնի դեմ բարձրացված ապստամբությանը։

Այսպիսով, Զենոնի հրամանով վերացվեց սատրապների իշխանության ժառանգական իրավունքը։ Սատրապը վերածվեց կայսրության կողմից նշանակվող մի անձնավորության։ Ամենայն հավանականությամբ Զենոնի օրոք սատրապությունները դարձան հարկատու[23]։ Սոփանենեի սատրապ Թեոդորոսը 502 թ. գնաց Կավատին ընդառաջ, նրան տանելով «երկու տարվա պետական հարկերը»[24]։

Նման իրավիճակը սատրապություններում հարատևեց մինչև Հուստինիանոս Ա կայսրը, որը վերջնական հարվածը հասցրեց հայերի ինքնուրույն իշխանության վերջին նշույլներին։

## 2. ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ

Բյուզանդական Հայաստանը կայսրության բաղկացուցիչ մասն էր, հետևաբար նրա կառավարման սիստեմը, օրենքները, տիրող սոցիալ-տնտեսական հարաբերությունները պետք է որ աստիճանաբար մուտք գործեին, տարածվեին նաև Հայաստանում։ Այդ բանը տեղի էր ունենում ոչ միայն իր բնականոն ընթացքով, այլև պետության ձեռք առած սիստեմատիկ միջոցառումներով ու վարած քաղաքականությամբ։ Այդուհանդերձ, տեղական ավանդույթները, օրենքները, սոցիալ-տնտեսական հարաբերությունները տեղում հարատևում էին, տարբեր շրջաններում տարբեր աստիճանով պահպանում իրենց կենսունակությունը, դժվարությամբ զիջելով իրենց դիրքերը։ Այստեղ, սակայն, պետք է ընդգծել մի կարևոր հանգամանք, որ բյուզանդական Հայաստանը կայսրության ձեռքն անցավ աստիճանաբար, մաս-մաս, հետևաբար նրա զարգացումը միօրինակ չընթացավ։ Մի շրջան, որ կարելի է զարգացման տեսակետից ըստ երևույթին, լրիվ բյուզանդականացած համարել, դա Փոքր Հայքն էր, որ վաղուց էր վերածվել բյուզանդական սովորական նահանգի։ Բյուզանդական Ներքին կամ Մեծ Հայքում, հարավում ընկած ինքնավար սատրապություններում սոցիալ-տնտեսական զարգացման առումով, համենայն դեպս նվաճման սկզբնական շրջանում, տիրապետող էին Արշակունիների պետության կարգն ու կանոնը, սոցիալ-տնտեսական հարաբերությունները, թեև և՛ Բյուզանդիայում, և՛ Հայաստանում զարգացումն ընթանում էր նույն ուղղությամբ՝ երկրի ֆեոդալականացման, ստրկատիրական հասարակական կարգերից ֆեոդալականին անցնելու, ֆեոդալական հասարակության հաղթանակի և ամրապնդման ուղղությամբ։

Խոսելով Բյուզանդական կայսրության սոցիալ-տնտեսական հարաբերությունների մասին, Հուստինիանոս Ա կայսեր նախորդող ժամանակաշրջանում,

---

23 Զենոնի՝ հայերին չվստահելու քաղաքականությունն արտահայտվեց մի այլ հարցում ևս։ Մինչ Զենոնը պալատական պահակախումբը բաղկացած էր 3500 հայերից։ Պրոկոպիոս Կեսարացին իր «Գաղտնի պատմության» մեջ ցույց է տալիս, որ սկսած Զենոնից այդ պահակախմբի մեջ մուտք գործեցին վախկոտ և պատերազմի հետ ոչ մի առնչություն չունեցող մարդիկ։ Բացառված չէ, որ Զենոնը հայերից բաղկացած այդ պահակախումբը լուծարքի ենթարկեց և ստեղծեց նորը։

24 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 192։

պետք է նկատի ունենալ, որ այդ հարաբերությունները նույնական էին բյուզանդական Հայաստանի ոչ բոլոր, այլ այն շրջաններում, որոնք վաղուց էին անցել կայսրության ձեռքը։ Բյուզանդական Մեծ Հայքում, Հայաստանի հարավային շրջաններում՝ սատրապություններում այդ հարաբերությունները մուտք էին գործում աստիճանաբար, բայց դժվար է ասել, որ նրանք, համենայն դեպս մինչև VI դ. ներառյալ, վերջնականապես տիրապետող դարձան։ Այդ իմաստով սորև խոսելով Բյուզանդիայում այս ժամանակաշրջանում տիրող սոցիալ-տնտեսական հարաբերությունների մասին, պիտի անել մի վերապահություն, որ նրանք բյուզանդական Հայաստանի տարբեր շրջաններում միանման չէին։

Հայկական աղբյուրների տեղեկությունները բյուզանդական Հայաստանի վերաբերյալ շատ աղքատիկ են և տիրող սոցիալ-տնտեսական հարաբերությունների մասին գաղափար կազմելու համար գլխավոր աղբյուրները մնում են բյուզանդականները։

Բյուզանդիայում դեռևս պահպանվել էին հելլենիստական միապետությունների տնտեսական, քաղաքական և մշակութային ավանդույթները, իսկ խոշոր հողատիրությունը Արևելահռոմեական կայսրությունը ժառանգել էր Հռոմից։

Ամենամեծ հողատերը կայսրն էր։ Հելլենիստական ժամանակաշրջանի թագավորական կոչվող հողերը (χώρα βασιλική) անցան բյուզանդական կայսրերին։ Նրանք հսկայական չափերի հողեր ունեին Եգիպտոսում, Ասիայի և Պոնտոսի դիոցեզներում, Միջագետքի, Օսրոենի, Ասորիքի, Կապադովկիայի պրովինցիաներում։ Այդ հողերը կոչվում էին fundi patrimoniales, հունարեն՝ ταμειακόν։ Սրանց կից գտնվող, բայց կայսեր չպատկանող հողերը կոչվում էին ἐλευθεριακόν (*ազատ հողեր*)։

Կայսեր պատկանող հողերի վրա սեփական տնտեսություն էր վարվում ստրուկների և կոլոնների միջոցով, այդ հողերը երկար ժամանակով կամ նույնիսկ առհավետ վարձակալվում էին, կամ վաճառքի առարկա դառնում։ Լայն տարածում էր գտել «էմֆիտևսիս» (ἐμφύτευσις) կոչված վարձակալական սիստեմը[25]։ Լքված կամ դժվար մշակելի հողերը լայն առանձնաշնորհումներով տրվում էին առանձին վարձակալողների։ Վերջիններս երկար ժամանակով ազատվում էին հարկերից, հողը աստիճանաբար դառնում էր նրանց սեփականությունը, նրանք կարող էին այն ժառանգություն թողնել, բայց սահմանված ժամկետից հետո պարտավոր էին հարկ վճարել։

Խնդրո առարկա ժամանակաշրջանում Բյուզանդիայում մեծ զարգացում էր ապրում խոշոր հողատիրությունը։ Խոշոր հողատերերը մեծ մասամբ պատկանում էին սենատորական դասին և կայսերական բարձրաստիճան պաշտոնյաներ էին։ Նրանց ընդարձակ հողերի վրա աշխատում էին ստրուկներ և կոլոններ, ինչպես նաև ազատ վարձակալողներ։

Փոքր Ասիայում, աշխարհագրական նպաստավոր պայմանների բերմամբ մեծ զարգացում էր ստացել խոշոր հողատերերի անասնապահությունը[26]։

---

[25] Corpus Juris Civilis, Novellae, Nov. VII, cap. 3.

[26] *Հուստինոս կայսեր օրոք (518—527) Փոքր Հայքի մեծատուններից մեկը՝ Թովման, այնքան հարուստ էր անասուններով, որ ապագա կայսր Հուստինիանոսին նվիրեց տասը հազար*

Ժամանակի ընթացքում խոշոր հողատերերը տիրանում էին շրջանի պետական-վարչական ֆունկցիաներին, իրենց ենթարկում ազատ գյուղացիությանը։ Խոշոր հողատիրությունը Բյուզանդիայում սերտորեն կապված էր շուկաների հետ, որովհետև հելլենիստական ժամանակաշրջանից մնացած քաղաքներն իրենց մարդաշատ բնակչությամբ զգում էին գյուղատնտեսական մթերքների և ապրանքների պահանջը[27]։

Եկեղեցին ևս խոշոր հողատեր էր, նրա հողատարածությունները կազմում էին ամբողջ կայսրության հողերի մեկ տասներորդ մասը[28]։ Աշխարհիկ և հոգևոր խոշոր հողատերերի միջև անընդհատ պայքար էր գնում և առաջինները տարբեր ձևերով աշխատում էին տիրանալ հոգևոր հողատերերի կալվածքներին։

Ստրկատիրական լատիֆունդիաներում լայնորեն օգտագործվող ստրկական աշխատանքը դարձել էր անարտադրողական։ Նման պայմաններում սկսվեց ամեն կերպ խթանվել, այսպես կոչված, կոլոնատի ինստիտուտը, գյուղատնտեսությամբ զբաղվող անազատ բնակչությունը ձեռք էր բերում որոշ առանձնաշնորհումներ՝ ստրկի վիճակի հետ համեմատած։

Բյուզանդիայում գյուղատնտեսական բնակչության մեջ ամենաբազմամարդը կոլոններն էին (հայկական սկզբնաղբյուրների շինականները[29] և մշակները)[30]։ Գոյություն ուներ կոլոնների երկու խումբ՝ ազատ կոլոններ (coloni liberi) և կցագրված կոլոններ (coloni adscriptitii)։ Ազատ կոլոններն ունեին սեփականություն։ Կցագրված կոլոնները պատկանում էին հողատերերին և ապրում էին հողատիրոջ կալվածքներում։ Հողատերն իրավունք չուներ վտարել կոլոնին, նա իրավունք չուներ նաև կալվածքը վաճառել առանց կոլոնների, կամ կոլոններին առանց հողի, բայց մի քանի կալվածքների տերը կարող էր նրանց մի կալվածքից մյուսը տեղափոխել։

Կոլոնները ծառայում էին բանակում միայն տիրոջ համաձայնությամբ, ըստ որում հողատերը պարտավոր էր իր ունեցած կոլոնների որոշ մասը տալ զինվորական ծառայության։

Կոլոնները և ընդհանրապես բնակչության անազատ տարրը տարբեր ճանապարհներով ազատության էին ձգտում։ Առաջին և ամենատարածված ձևը փախուստն էր։ Հնագույն փաստաթուղթը, որտեղ առաջին անգամ խոս-

---

ոչխար։ Տե՛ս Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին։ Բյուզանդական աղբյուրներ, գիրք Բ, «Կոստանդին Ծիրանածին», թարգմանությունը բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1970, էջ 172։ Ունենք փաստ (ճիշտ է, այն վերաբերում է VIII դարին), որ ոմն Ֆիլարետ ամնիացի ուներ 600 ցուլ, 100 զույգ եզ, 800 ձի, 80 ձիավարության ձի և ավանակ, 12 հազար ոչխար։ Բացի այդ, նա ուներ հողային լայնարձակ տարածություններ՝ 40 պրոաստիոն և բազմաթիվ ստրուկներ։

27 Եդեսիա քաղաքի խոշոր հողատերերի մասին բազմաթիվ վկայությունների կարելի է հանդիպել Իեշու Ստյունակյացի ժամանակագրության մեջ։ Տե՛ս *Н. В. Пигулевская,* Месопотамия на рубеже V—VI вв. Хроника Иешу Стилита как исторический источник, М.—Л., 1941, стр. 38.

28 Տե՛ս *М. В. Левченко,* Материалы для внутренней истории Восточно-Римской империи V—VI вв., Византийский сборник, М., 1945, стр. 87.

29 Տե՛ս Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 182։

30 «Մշակ» սկզբնական շրջանում «ստրուկ» է նշանակել։ Տե՛ս *С. Т. Еремян,* О рабстве и рабовладении в древней Армении, Вестник Древней Истории, 1950, № 1, с. 25։ Բայց խնդրո առարկա ժամանակաշրջանում նրանց իրավիճակը նման էր կոլոնների իրավիճակին։

վում է կոլոնների կախյալ վիճակի մասին, գրված է նրանց փախուստի դիմելու անհնարությամբ[31], 546 թ. հրապարակված Հուստինիանոս I կայսեր նովելլայում ստրուկների և կոլոնների փախուստը ձևակերպված է որպես «փախուստ երկրագործությունից» (ὡς φεύγοντα τὴν γεωργίαν), որի տակ սոցիալական խնդրը իմաստ է թաքնված։ Փախուստի էին դիմում հասարակության ոչ միայն վերոհիշյալ խավերը, այլև ազատ համայնական գյուղացիությունը։

Փախուստի հիմնական պատճառը սոցիալական ճնշումն էր, տեղական իշխանությունների անխնա կողոպուտն ու կեղեքումը։ Գյուղացիների հիմնական միջոցը, որով նրանք հակադրվում էին իշխողներին, դա փախուստն էր գյուղից[32]։ V—VII դդ. բյուզանդական օրենսգրքերում կարելի է հանդիպել բազմաթիվ օրենքների, որոնց նպատակն է թույլ չտալ գյուղացուն թողնել երկրագործությունը[33]։ Այս լույսի տակ պարզ է դառնում Մովսես Խորենացու Ողբի մեջ հանդիպող «Փախչողք ի ժառանգութենէ»[34] դարձվածքի իմաստը։ Մովսես Խորենացին նկատի ուներ աշխատավոր գյուղացիությանը, որը փախչում է երկրագործությունից, հրաժարվում գյուղատնտեսությամբ պարապել[35]։

Հուստինիանոսի վերոհիշյալ նովելլան հնարավորություն է տալիս պատկերացնելու, թե ազգաբնակչության ինչպիսի խավեր էին մտնում Խորենացու «ժառանգությունից փախչող» «ժողովրդականf» հասկացողության մեջ։ Այդ նովելլայում կախման մեջ գտնվող անձնավորություններն էին, ստրուկները, կոլոնները կամ կցագրված կոլոնները (δοῦλον, ἢ κολωνὸν ἢ ἐναπόγραφον հետևաբար Խորենացու «ժողովրդականքի» տակ հասկացվում են սոցիալական նույնպիսի պայմաններում ապրող մարդիկ։

Հասարակության ամենացածր աստիճանի վրա էին գտնվում ստրուկները։ Նրանք հիմնականում օգտագործվում էին տնային տնտեսության մեջ, պետական արհեստանոցներում[36] և մասամբ գյուղատնտեսության մեջ։ Ստրուկները, որոնք համարվում էին խոսող կենդանիներ, դեռևս VI դարում հիշատակվում են եզների, ոչխարների շարքում (βόας τυχὸν ἢ πρόβατα ἢ ἀνδράποδα)[37]։ ր կրագործությամբ պարապող ստրուկները սկզբնաղբյուրներում կոչված են "երկրագործական ստրուկներ" (ἀγροικικὰ ἀνδράποδα[38] կամ γεωργικὰ ἀνδράποδα)[39].

Ստրկության աղբյուրները բազմազան էին։ Նախ և առաջ նրանց բնական աճն էր. ստրուկի սերունդը օրենքի համաձայն շարունակում էր ստրուկ մնալ։ Երկրորդ աղբյուրը գերեվարությունն էր[40]։ Գերիներին մեծ մասամբ ստրկաց-

---

[31] „Codex Theodosianus", V, 17, 1.

[32] Տե՛ս *М. В. Левченко*, Материалы..., стр. 45.

[33] Nov. XVII, cap. 14; Nov. LXXX, praefatio; Ibid., cap. 2.

[34] Մովսես Խորենացի, Գ, 68։

[35] Խորենացու հիշյալ դարձվածքի իմաստի մասին տե՛ս Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934, էջ 167—169։

[36] „Codex Iustinianus", XI, 8, 5; XI, 8, 6.

[37] Novella XXXII, cap. I.

[38] Novella VII, cap. I.

[39] Novella VII, cap. 3; Novella CXX, cap. 1.

[40] Հուստինիանոս կայսրն իր LXXIV նովելլայում ստրկության առաջացման հիմնական պատճառը պատերազմն է համարում և նրանից բխող գերեվարությունը։

նում էին և վաճառքի հանում շուկաներում[41]։ Ստրկության այլ աղբյուրներ էլ կային։ Օրինակի համար պարտատերը իրավունք ուներ պարտքը չվճարած անձնավորությանը կամ էլ նրա երեխաներին ստրկացնել։ Այդ մասին ուղղակի վկայություն կա Հուստինիանոսի նովելայում[42]։ Ստրկավաճառությունը լայնորեն տարածված էր Փոքր Ասիայի, Եգիպտոսի և Կոստանդնուպոլսի շուկաներում։ Կազմված էր ստրուկների գները որոշող հատուկ սակագին[43], որն անփոփոխ մնաց բազում դարեր և իր արտահայտությունը գտավ հետագայի բազմաթիվ օրենսգրքերում[44]։

Ստրուկը ազատություն էր ստանում միայն տիրոջ ցանկությամբ, կամ եթե հոգևորական էր դառնում տիրոջ համաձայնությամբ[45]։

Փոքր Ասիայում, նաև բյուզանդական Հայաստանում ստրուկների և կոլոնների կողքին մեծ թիվ էր կազմում ազատ համայնական գյուղացիությունը (γεωργοί), որոնք հելլենիստական ժամանակաշրջանի թագավորին հարկատու «հողագործների» սերունդներն էին[46]։ Նրանք ապրում էին հիմնականում այն շրջաններում, որոնք հելլենիստական ժամանակաշրջանում դասական ստրկություն չէին ապրել, այն է Հայաստանում, Եգիպտոսում, Ասորիքում, Իսավրիայում, Թրակիայում, Իլլիրիայում[47]։

V դարում բյուզանդական կառավարությունը աշխատում էր պաշտպանել մանր գյուղացիական հողատիրությունը որպես հարկատու միավորի։ Հակառակ իր ինքնուրույնությանը ազատ համայնական գյուղացիությունը հարկերի հատուցման գործում անկախ չէր։ Ի տարբերություն կոլոնների, որոնց հարկն իրենց տերերն էին վճարում, գյուղական համայնքը հարկերի վճարման գործում սահմանափակված էր համապարտ երաշխավորությամբ, այսինքն ամբողջ համայնքը պարտավոր էր պետության կողմից սահմանված հարկերը վճարել անկախ այն բանից, որ գյուղացիների մի մասը հեռացել էր գյուղից, կամ հողերի մի մասը չէր մշակվում։ Գյուղը պարտավոր էր մշակել ամայացած հողերը և նրանց համար վճարել հարկ։ Հարկերի բաշխման գործում՝ համայնքի առանձին անդամների միջև պետությունը ոչ մի միջամտություն չէր գործադրում։ Համայնքը ինքն էր սահմանում իր յուրաքանչյուր անդամի վճարելիք հարկի չափը։

Բացի իրենց հողերից, ազատ համայնական գյուղացիները կարող էին մշակելու համար վարձակալել խոշոր և միջին հողատերերի, ինչպես նաև վանքապատկան հողերը։

Համայնքն իրենից մի կուռ ամբողջություն չէր։ Այստեղ կային և ունևոր,

---

41 Երբ ճնշվեց սամարացիների ապստամբությունը, գերիներից 20.000 երիտասարդներ և աղջիկներ ռաժին հանվեցին Բյուզանդիային ենթակա արաբ ցեղապետին, որը նրանց վաճառեց Պարսկաստանում և Արաբիայում։ Տե՛ս Malalae, Chronographia p. 44.

42 Novella CXXXVI, cap. 7.

43 Հուստինիանոսի օրենսգրքի համաձայն սովորական ստրուկն արժեր քսան դահեկան, արհեստավոր ստրուկը՝ երեսուն, նոտարը՝ հիսուն, բժիշկ ստրուկը՝ վաթսուն, ներքինին՝ հիսուն, իսկ արհեստավոր ներքինին արժեր յոթանասուն դահեկան։ Տե՛ս «Cod. Iust.», 6, 43—3 (531 թվակիր)։

44 Basil. XLVIII, I4,4,5; Epanagoga, XXXVII,8; Procheiron, 34, 11.

45 Novella CXXIII, cap. 17.

46 *М. В. Левченко,* Материалы..., стр. 28.

47 Նույն տեղում, էջ 28—29։

և աղքատ համայնականներ։ Ունևորների ձեռքում էր գտնվում գյուղի գործերի ղեկավարումը, հարկերը ժամանակին հավաքելու պարտականությունը, գյուղում կարգ ու կանոնի պահպանությունը։ Տվյալ ժամանակաշրջանում ազատ գյուղական բնակչությունն ամբողջ գյուղերով հանձնվում էր ուժեղ մարդկանց հովանավորությանը՝ պատրոնատին, հանձնելով նրան իր հողը, մի բան, որ վկայում է նրանց տնտեսական և իրավական ծանր գրության մասին։ Հողը տալով պատրոնին, գյուղացին ետ էր ստանում այն այս անգամ օգտագործման համար՝ բերքի մի մասը տալով պատրոնին որպես վճար։ Պատրոնի պաշտպանության տակ անցնող մարդիկ, ճիշտ է, կորցնում էին իրենց սեփականությունը, ապա նաև իրենց ազատությունը, բայց ազատվում էին հարկահավաքներից։ Պետությունը պայքարում էր այս երևույթի դեմ՝ իր հարկատու դասակարգի գոյությունը պահպանելու համար։

Առավել առանձնաշնորհյալ վիճակում էին գտնվում քաղաքներն ու քաղաքային բնակչությունը, մի բան, որ գալիս էր հելլենիստական ժամանակաշրջանից։

Քաղաքի բնակչության մեծամասնությունը պետության վերահսկողության ներքո գտնվող կորպորացիաների մեջ միավորված արհեստավորներ էին ինչպես և սևագործ բանվորներ, ստրուկներ կամ ազատություն ստացած ստրուկներ։ Քաղաքում կար ավագանի, որի ձեռքում էին գտնվում քաղաքի վարչատնտեսական պարտականությունները։ Ավագանու գլուխն էր կանգնած քաղաքապետը։ Նա կազմակերպում էր հարկերի հավաքումը և մայրաքաղաք ուղարկելու գործը, վարում ոստիկանական և իրավական պաշտոններ։ Քաղաքային բնակչությունը պետության կողմից ծանրաբեռնված էր բազմաթիվ պարհակներով։ Նա պարտավոր էր ջուր և հաց մատակարարել զորքին։ Շատ ծանր էր չորս տարին մեկ վճարվող, այսպես կոչված, «խրիսարգիրոն» հարկը։ Այն մտցրել էր դեռ Կոստանդին Ա կայսրը 314 թ. և որն իր գոյությունը պահպանեց երկար, մինչև Անաստասիոս կայսրը, որը այն վերացրեց 498 թվականին[48]։ Դրա փոխարեն Անաստասիոսը սկսեց գանձել, այսպես կոչված, «խրիստոտելիան», այսինքն բնահարկը վերածեց դրամահարկի, ընդ որում նա զրկեց քաղաքային ավագանուն հարկերը հավաքելու իրավունքից և յուրաքանչյուր քաղաքում հաստատեց, այսպես կոչված, վինդիկոսներին, այդ գործը անօրինելու համար[49]։

Բյուզանդիայի սոցիալ-տնտեսական հարաբերությունների առնչությամբ չի կարելի չհիշատակել, այսպես կոչված, «suffragium»-ը, որը մուտք էր գործել կյանքի բոլոր բնագավառները[50]։ Դա այն գումարն էր, որի դիմաց կարելի էր տիրանալ պետական ամեն մի պաշտոնի։ Այդ գումարը վճարող անձնավորությունը, հասկանալի է, անխնա և ամենադաժան կերպով կեղեքում էր իր հպատակներին՝ տվածի բազմապատիկը ետ ստանալու համար։ Պաշտոն գնելու այս կարգը ամենալայն չափեր ստացավ Հուստինիանոս Ա կայսեր ժա-

---

48 Հարկի ծանրության մասին վկայություն ունի պատմիչ Զոսիմոսը, ըստ որի ծնողները ստիպված վաճառում էին իրենց երեխաներին՝ հարկը վճարելու միջոցներ ձեռք բերելու համար տե՛ս Zosimi Historia nova, t.II, cap. 38, ed. Mendelssohn, Lipsiae, 1887, p. 96)։

49 Տե՛ս «Сборник документов по социально-экономической истории Византии», М., 1951, стр. 46.

50 Նրա մասին տե՛ս Н. Адонц, նշվ. աշխ., էջ 158—161։

մանակ։ 535 թ. հրապարակվեց մի նովելլա[51], որն ուղղված էր այդ կարգի դեմ։

Հուստինիանոսի մտահոգությունն, իհարկե, հպատակների վիճակի բարելավումը չէր, այլ իր գանձարանի վիճակը։ Նա ցույց էր տալիս, որ իր հպատակների նման կեղեքումը պատճառ է դառնում պետական հարկերի նվազեցմանը, որովհետև «այն ինչ պետք էր մտներ պետական գանձարանը, հոսում էր մասնավոր մարդկանց գրպանը»։

Հուստինիանոսը վախենում էր նաև ժողովրդական զանգվածների խռովություններից և ապստամբություններից[52], ինչպես նաև այն բանից, որ պետական ունեցվածքը՝ հողը, անցնում է մասնավորի ձեռքը[53]։

Նման պայմաններում քաղաքներում ապստամբություններ էին բռնկվում, իսկ գյուղերում գյուղացիները փախուստի էին դիմում[54]։

Հուստինիանոսը հրաման է արձակում՝ վերացնել այդ կարգը, պաշտոնների առուծախը, փորձում վերականգնել նախկին կարգը, ըստ որի իշխանավորները պաշտոնն ստանալու առթիվ վճարում էին չնչին մի գումար՝ այն նշանակների և թղթերի ձևակերպման համար, որ պետք է ստանային պետությունից պաշտոնի հետ միասին[55]։

Պաշտոնների առուծախ կար նաև բյուզանդական Հայաստանում։ Դա հաստատվում է այն փաստով, որ Հուստինիանոսի VIII նովելլայի վերջում, որտեղ մեկ առ մեկ թվարկված են կայսրության պրովինցիաների կուսակալների վճարելիք գումարների չափը, հիշատակված են նաև Առաջին Հայքի, Երկրորդ Հայքի և Մեծ Հայքի կուսակալները[56]։

Հուստինիանոսին չհաջողվեց վերացնել suffragium-ի արմատացած կարգը[57]։ Նրա մահվանից հազիվ տաս տարի անց, 574 թ. Տիբերիոս կայսրը ստիպված էր մի նոր օրենք հրապարակել՝ պետական պաշտոնները ստանալու նման կարգի դեմ (ինչպես դրանից քառասուն տարի առաջ Հուստինիանոսը), ելնելով այն բանից, որ ինքը «հոգ է տանում պրովինցիաների բարեկեցության, նրանց անվտանգության, արդարության մասին» և, որ կարևորն է, «պետական հարկերի անխափան գանձման մասին»[58]։

Անդադար պատերազմները, ներքին խռովությունները, բազում բարբարոսական պետություններին վճարվող տարեկան հսկայական գումարները՝ Բյուզանդիայի վրա ասպատակություններ չկատարելու համար, ֆինանսական

51 Novella, VIII.

52 Կապադովկիայի պրոկոնսուլին ուղղված նովելլայից (Novella XXX) պարզ է դառնում նրա երկյուղի պատճառը։ «Կապադովկիայում դրությունն այնպիսին է,— գրում է կայսրը,— որ պետական իշխանավորները անամոթաբար կողոպտում են հպատակներին և զարմանում ենք, թե ինչպես նրանք մինչև հիմա ի վիճակի եղան այդ բոլոր անարդարություններն ու ապօրինությունները տանել»։

53 Novella XXX, cap. 5։ «Պետական գրեթե ողջ ունեցվածքը (հողը),—գրում է նա,— մասնավոր դարձավ, նա պոկվում և հափշտակվում է ձիերի երամակների հետ միասին և ոչ ոք հանդես չի գալիս դրա դեմ, որովհետև նրանց բերանը ոսկով է փակվում»։

54 Novella VIII, praefatio.

55 Novella VIII.

56 Novella VIII, Notitia.

57 Պրոկոպիոս Կեսարացու «Գաղտնի պատմության» մեջ ցույց է տրվում, որ ինքը՝ Հուստինիանոսն էր մղում դեպի կաշառակերություն և հպատակների կեղեքում։

58 Novella CLXI, cap. 2.

ծանր վիճակ էին ստեղծել բյուզանդական պետության համար։ Նման պայմաններում միակ ելքը աշխատավոր ժողովրդի հարկային ճնշման ստասկացումն էր։ Չկա Հուստինիանոս Ա-ի կողմից հրապարակված և երկրի որևէ պրովինցիայի ղեկավարին ուղղված մի նովելա, որտեղ հարկերի կանոնավոր գանձման մասին խիստ հանձնարարություններ չլինեին[59]։

Վիճակը չփոխվեց նաև Հուստինիանոսի հաջորդների ժամանակ։ Հուստինոս II (565—578) կայսրը ստիպված էր խոստովանել, որ «գանձարանը դատարկ գտանք և պետությունը՝ պարտքերի մեջ թաղված»[60]։ Այսպիսի պայմաններում նորոգվում է հարկերը «կանոնավոր կերպով գանձելու» հին հարցը[61]։ Դրությունը նույնը մնաց նաև Տիբերիոսի (578—582) ժամանակ։ Աշխատավորների կեղեքումն ու աղքատացումը հասել էր այն աստիճանի, որ Տիբերիոսի խոստովանությամբ հպատակները ի վիճակի չէին վճարել պետական հարկերը[62]։

Հարկերի ծանր լուծը, տարերային աղետները, համաճարակները, պրովինցիաների պաշտոնեության կամայականությունները, դրան գումարած անվերջ պատերազմները, ստիպում էին աշխատավոր գյուղացիությանը փախուստի դիմել դեպի քաղաքները՝ օրավարձով իրենց գոյությունը մի կերպ քարշ տալու համար։ Նրանք հիմնականում հոսում էին մայրաքաղաք՝ Կոստանդնուպոլիս։ Կոստանդնուպոլսի քվեստորին ուղղված 539 թվակիր նովելլայում Հուստինիանոս Ա կայսրը մտահոգում էր, որ «մեր այս մեծ քաղաքը կորցրել է իր անդորրը՝ տարբեր մարդկանց այստեղ վխտալու հետևանքով, գլխավորապես երկրագործների, որոնք լքել են իրենց քաղաքները և երկրագործությունը»[63]։ Հուստինիանոսը ցույց է տալիս, որ նրանք կախյալ գյուղացիներ են[64] և կարգադրում ամենից առաջ զբաղվել գյուղացիների հարցով և նրանց ժամ առաջ գյուղ ուղարկել, որովհետև նրանց գյուղից հեռանալը վնաս է հասցնում երկրագործության և հեռացած գյուղացիների տերերին[65]։

Քաղաքային և գյուղական բնակչության համար շատ ծանր էր զորքի առկայությունը։ Պրոկոպիոս Կեսարացին բյուզանդական զինվորների մասին գրում է, թե «նրանք վախենում են պարսիկներից, բայց կողոպտում են գյուղացիներին»[66]։ Բնակչության համար պատուհաս էին ոչ միայն սեփական՝ բյուզանդական զորքերը, այլև Բյուզանդիային օգնության եկած որևէ դաշնակից զորք[67]։ Յուրաքանչյուր պրովինցիան պարտավոր էր նախօրոք պատրաստել այն բոլոր անհրաժեշտ միջոցները՝ ժամանելիք զորքին կերակրելու համար[68]։

---

[59] Novella XVII, cap. 7; Nov. XXV, cap. 5; Nov. XXVIII, cap. 5; Nov. XXX, cap. 7,8; Nov. XXIX, cap. 3; Nov. CIII, cap. 3; Nov. CXXXIV, cap. 2; Nov. CXLIV, cap. 2.
[60] Novella CXLVIII, praefatio.
[61] Novella CXLIX, cap. 2.
[62] Novella CLXIII, praefatio.
[63] Novella LXXX, praefatio.
[64] Novella LXXX, cap. 2.
[65] Ibid.
[66] «Պարսկական պատերազմի մասին», I, 9։
[67] Novella CXXX, cap. 8.
[68] Novella CXXX, cap. I.

Եթե նկատի ունենանք տասնամյակներ տևող անդադար պատերազմների թատերաբեմ դարձած Արևմտյան Հայաստանի վիճակը, դրա հետ պայմանավորված այդ տարածքի վրա զորքերի անդադար տեղաշարժերը, պարզ կդառնա աշխատավորների ծանր դրությունը՝ այդպիսի բանակների կերակրման պարտականությունը ավելանում էր զորքերի կամայականությունն ու կողոպուտը։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ

# ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ Ա-Ի ՎԱՐՉԱՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒ ՌԱԶՄԱԿԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԸ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՎ ՀԱՅԵՐԻ ԸՆԴՎԶՈՒՄՆԵՐԸ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ԴԵՄ

## 1. ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ՀԶՈՐԱՑՈՒՄԸ ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ Ա-Ի ՕՐՈՔ

Արևմտահռոմեական կայսրության կործանումը «բարբարոսների» կողմից խոր տպավորություն թողեց Արևելահռոմեական կայսրության վրա։ Նրա կայսրերը չէին կարողանում հաշտվել այն մտքի հետ, որ կայսրության մեծ մասը «բարբարոս» թագավորների ձեռքում է գտնվում և մտածում էին ամեն գնով վերականգնել նախկին Հռոմեական կայսրությունը։ Այդ իրագործելու նախապատրաստությունը սկսվել էր դեռևս Հուստինոս I-ի օրոք (518—527)։

Հուստինիանոս I-ը, թեև գահ բարձրացավ 527 թ., փաստորեն կառավարում էր Արևելահռոմեական կայսրությունը՝ սկսած 518 թվականից, իր հորեղբայր Հուստինոս I-ին կայսեր թագավորության ամբողջ ժամանակաշրջանում։ Հուստինիանոսը նպատակ էր դրել վերականգնել Հռոմեական կայսրության վաղեմի փառքն ու սահմանները, բայց դրա իրականացմանը ձեռնարկեց կայսեր ծիրանին հագնելուց հետո։

Հուստինիանոս I-ը (527—565 թ.) իր ժամանակի համար փայլուն կրթություն էր ստացել։ Գահ բարձրանալով 45 տարեկան հասակում, նա արդեն փորձված քաղաքագետ էր ու դիվանագետ։ Հուստինիանոսը ամուսնացավ Կոստանդնուպոլսի կրկեսի աշխատողի դուստր Թեոդորայի հետ, որը, դառնալով կայսրուհի, հանդես բերեց պետական գործչի անուրանալի հատկություններ։ Նա փրկարար դարձավ նույնիսկ իր ամուսնու համար, հատկապես 532 թ., «Նիկայի» հայտնի ապստամբության ժամանակ։

Հուստինիանոսի ներքին քաղաքականությունն աչքի էր ընկնում իր հետադիմությամբ։ Նա ամենածանր հարվածը հասցրեց Բյուզանդիայի քաղաքների դեմոկրատական հնամենի կազմակերպություններին՝ «դեմոսներին» (δῆμοι), արյան մեջ խեղդեց 532 թ. Կոստանդնուպոլսի դեմոսի ապստամբությունը, որից հետո խիստ սահմանափակեց նրա քաղաքական իրավունքները։ Եվ ընդհակառակը, նա առավել ևս ընդարձակեց քաղաքապետի իրավունքները։ Պրովինցիաներում կատարված ռեֆորմների նպատակն էր մի մարդու ձեռքում կենտրոնացնել քաղաքացիական և ռազմական իշխանությունը, և նրան առավել ևս կախման մեջ դնել կենտրոնական իշխանությունից։

Հուստինիանոսի կրոնական քաղաքականության խարիսխը, հպատակների հոգևոր միասնության մասին ցնորքն էր։ Կայսրն ուզում էր, որ երկրում գո-

յություն ունենա և տիրի միայն մեկ՝ «ուղղափառ» դավանանքը։ Նա չէր կարողանում հաշտվել այն մտքի հետ, որ կարող էին երկրում տարածված լինել նաև հեթանոսությունն ու տարբեր աղանդներ, միաբնակությունը։

Հեթանոսների դեմ Հուստինիանոսի մղած դաժան պայքարի արտահայտությունն էր Աթենքի դպրոցի գործունեության արգելումը[1]։ Աթենքի յոթ խոշորագույն գործիչներ՝ նշանավոր փիլիսոփաներ Դամասկիոս Ասորին, Սիմպլիկիոս Կիլիկեցին, Եվլամպիոս Փռյուգացին, Պրիսկիանոս Լյուդացին, Հերմիաս և Դիոգենես Փյունիկեցիք և Իսիդոր Գազացին ստիպված էին փախչել և ապաստան գտնել Պարսից Խոսրով արքայի մոտ[2]։

Ինչ վերաբերում է քրիստոնեական աղանդներին, ապա նրանց հանդեպ ուղղափառները տարբեր մոտեցում ունեին։ Ծայրահեղ ուղղափառները ոչ մի զիջում չէին ուզում անել նրանց։ Ուղղափառների և մի այլ, ավելի հեռատես խումբ, որին գլխավորում էր թագուհի Թեոդորան, հակված էր փոքր զիջումների գնով համաձայնության գալ «աղանդավորների» հետ, այսինքն վարում էր Զենոն և Անաստասիոս կայսրերի քաղաքականությունը։ Թեոդորայի գլխավորած խումբը շատ լավ էր տեսնում, որ Արևելքն է պետության հիմքը, որ պետք է լեզու գտնել միաբնակ Փոքր Ասիայի, Ասորիքի և Եգիպտոսի, պետության ամենահարուստ շրջանների հետ։

Հուստինիանոսի առավել աչքի ընկնող գործունեությունը ծավալվեց իրավունքի ասպարեզում։ Նա իր ժամանակի խոշորագույն իրավագետ Տրիբունիանոսի միջոցով կարգավորեց և կատարելության հասցրեց քաղաքացիական իրավունքը։ Հուստինիանոսի իրավագիտական գործը, որը հետագայում ստացավ Corpus Juris Civilis անունը, բաղկացած է չորս մասից. 1. Հուստինիանոսի կոդեքսը (Codex Justinianus), որի մեջ ի մի բերվեցին Հադրիանոս կայսրից (II դար) սկսած մինչև 534 թ. հրապարակված կայսերական օրենքները, 2. Դիգեստաները կամ Պանդեկտաները (Digestae, Pandectae), որն իրենից ներկայացնում է խոշորագույն իրավագետների գործի համադրությունն ու հռոմեական ամբողջ իրավագիտական մտքի ամփոփումը, 3. Ինստիտուցիաները (Institutiones), մի գործնական իրավունքի ձեռնարկ և վերջապես 4. Նշանավոր նովելլաները (Novellae)՝ 534 թ. հետո հրապարակված օրենսդրական 154 հրաման-կարգադրությունները։ Նովելլաները գլխավորապես վերաբերում են քաղաքացիական ու եկեղեցական կառավարման, ֆինանսական սիստեմին և Բյուզանդիայի սոցիալ-տնտեսական հարաբերությունների ուսումնասիրության համար անփոխարինելի աղբյուր են։ Միայն նովելլաներն են հունարեն, մնացած երեքը լատիներեն են։ Այս հանգամանքը պարզ վկայում է այն մասին, որ Հուստինիանոսը ցանկանում էր այն, թե ոչ, Արևելահռոմեական կայսրությունը վերածվում էր հունական կայսրության, նրա մեջ գլխավոր դերը խաղում էր հունական Արևելքը և ոչ Հռոմը։

Հուստինիանոսը շինարարական հսկայական գործունեություն ծավալեց։ Բացի տաճարներից, որոնց մեջ աչքի են ընկնում զարմանահրաշ սուրբ Սոֆիան Կոստանդնուպոլսում, պալատներից և այլ վարչական շենքերից, Հուստինիանոսը վիթխարի միջոցներ ծախսեց կայսրության բոլոր շրջաններում, այդ թվում և Հայաստանում պարիսպների, ամրոցների, պահակատեղիների կառուցման վրա,

[1] Ioannis Malalae Chronographia. p. 451.
[2] Agathiae Myrinaei Historiarum libri quinque, rec. *R. Keydell*, Berolini, 1967, p. 80.

որոնց նպատակն էր երկիրը պաշտպանել թշնամու հարձակումներից, կանխել կամ ճնշել ներքին խլրտումները։

Հուստինիանոս Ա-ի գրեթե քառասնամյա թագավորության ժամանակաշրջանը արտաքին թշնամիների դեմ մղված պատերազմների մի անվերջ շարան էր։ Այդ պատերազմները լոկ պաշտպանական չէին, այլ նախ և առաջ նվաճողական։

Հուստինիանոսը շարունակեց Պարսկաստանի դեմ դեռևս Հուստինոսի օրոք ծագած պատերազմը։ Հակառակ որ Անաստասիոս կայսեր ժամանակ կնքվել էր 30-ամյա հաշտություն, ընդհարումները երկու դարավոր ախոյանների միջև հազվադեպ չէին։ Դրա պատճառը գլխավորապես Բյուզանդական կայսրությունն էր։ Դեռևս Թեոդոսիոս կայսեր ժամանակ կնքված պարսկաբյուզանդական հաշտության պայմանագրով երկու կողմերին էլ արգելվում էր սահմանամերձ վայրերում ռազմական որևէ շինարարություն կատարելը[3], բայց Անաստասիոս կայսրը 507 թ. պարսկական ռազմական պատվար Մծբին քաղաքի դիմաց կառուցեց Դարա հզոր ամրոցը, որն իր անունով էլ կոչեց Անաստասիուպոլիս[4]։ Այդ քայլը պայմանագրի խախտում էր, բայց Պարսկաստանը, զբաղված լինելով երկրի արևելքում բարբարոսների դեմ մղած պատերազմով, չկարողացավ խանգարել դրան։ Հուստինիանոսը, գահ բարձրանալով, դարձյալ խախտեց հիշյալ պայմանագրի նույն կետը, 528 թ. հրամայելով Դարայի կայազորի պետ զորավար Բելիսարիոսին՝ Մծբինի մոտ, Մինդուոս վայրում կառուցել մի նոր ամրություն[5]։ Պարսից Կավատ արքան (488—531) ռազմական հզոր ուժ ուղարկեց այնտեղ և կարողացավ գրավել Մինդուոսը։ 531 թ. ապրիլին պարսկական զորքը Եփրատի ափով շարժվեց Ասորիքի վրա և Կալինիկում քաղաքի մոտ բյուզանդական զորքերին պարտություն մատնեց։ Բելիսարիոսը ետ կանչվեց Բյուզանդիոն։

531 թ. վախճանվեց պարսիկ Կավատ արքան, որի հաջորդ Խոսրով Անուշիրվանը (531—579) հաշտություն առաջարկեց։ Հուստինիանոսը սիրով ընդունեց այդ, քանի որ նպատակ ուներ ազատել իր ձեռքերը Արևելքում՝ ուշադրությունն ամբողջությամբ Արևմուտքի վրա կենտրոնացնելու համար։ 532 թ. երկու պետությունների միջև կնքվեց, այսպես կոչված, «հավիտենական» հաշտություն, որի համաձայն սահմանային փոփոխություններ չէին լինում, միայն Խոսրովի պահանջով Միջագետքի բյուզանդական զորահրամանատարի նստավայրը Դարայի փոխարեն դառնում էր Կոստանդինե քաղաքը, բացի այդ Հուստինիանոսը վճարում էր 110 կենտինար ոսկի՝ Կասպից դռների պահպանության համար[6]։

Հուստինիանոսը ձերբազատվելով Արևելքում, սկսեց հյուսիսային Աֆրիկայի (Լիբիայի) վանդալական թագավորության նվաճումը։

Վանդալական թագավորության անկումը հյուսիսային Աֆրիկայում հնարավորություն տվեց Հուստինիանոսին սկսելու Իտալիայի նվաճումը օստգոթերի ձեռքից։ 535 թ. հունիսին Հուստինիանոսի զորավար Մունդոսը գրավեց Դալմատիայի խոշոր նավահանգիստ Սալոնան, իսկ Բելիսարիոսը՝ Սիկիլիան։ Շարժվելով հարավային Իտալիայով, Բելիսարիոսը 536 թ. գրավեց Նեապոլիսը՝

---

3 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 167։

4 Նույն տեղում, էջ 23։

5 Նույն տեղում, էջ 30։

6 Նույն տեղում, էջ 61։ Մեկ կենտինարը հավասար է 100 լիտրի, մեկ լիտրը՝ 72 ոսկեդրամի։

տպա՝ Հռոմը, իսկ մի այլ զորավար՝ Հովհաննեսը՝ Արիմինոնը (Ռիմինին) և սպառնալիք ստեղծեց Ռավեննայի համար։ Այս շրջանում Իտալիայում մեծ դեր խաղաց հայազգի նշանավոր զորավար Նարսեսը։

Օստգոթերի թագավոր Վիտիգիսը փորձեց Բյուզանդիայի դեմ դաշնակից ունենալ ի դեմս պարսից արքայից արքայի և բանակցություններ վարելու համար 539 թ. Պարսկաստան դեսպանություն ուղարկեց։ Բայց 540 թ. սկսված պարսկաբյուզանդական պատերազմը էական փոփոխություն չմտցրեց բյուզանդաօստգոթական պատերազմի ընթացքի մեջ։ 540 թ. պաշարման մեջ առնվեց Ռավեննան և շուտով գրավվեց։ Գերի ընկած Վիտիգիսին, որպես թանկագին ավար, Բելիսարիոսը Կոստանդնուպոլիս բերեց։ Թվում է, թե պատերազմն ավարտված էր, բայց բյուզանդական վարչակարգից դժգոհ օստգոթերը թագավոր հռչակեցին շատ կարող մի մարդու, Տոտիլային (541), որը հաջորդ տարին սկսեց իր թագավորության ազատագրումը բյուզանդացիներից։ 546 թ. Տոտիլան գրավեց Հռոմը, 550 թվականին՝ Սիկիլիան և սկսեց պատերազմական գործողությունները հունական մայր ցամաքում։ 551 թ. նա գրավեց Սարդինիան և Կորսիկան։

Տոտիլայի հաջողությունները ստիպեցին Հուստինիանոսին լրջորեն նախապատրաստվել։ 552 թ. բյուզանդական բանակը Նարսեսի գլխավորությամբ ներխուժեց Իտալիա և Ռավեննայում միացավ Իտալիայում մնացած բյուզանդական զորքերին։ 552 թ. հունիսին Ապեններում, Տագինա կոչված վայրում Նարսեսի և Տոտիլայի միջև տեղի ունեցավ վճռական ճակատամարտը, որտեղ հաղթեց Նարսեսը։ Տոտիլան մահացու վերք ստանալով, շուտով վախճանվեց։ Նարսեսը զարգացնելով իր հաջողությունները, շուտով նվաճեց միջին Իտալիան, Հռոմը։ 552 թ. Կամպանիայում տեղի ունեցավ վերջին ճակատամարտը և օստգոթերի թագավորությունը դադարեց գոյություն ունենալուց։ 555 թ. Իտալիան ամբողջությամբ նվաճված էր բյուզանդացիների կողմից։ Նարսեսը դարձավ Իտալիայի փաստական փոխարքան։

Նվաճելով Իտալիան, Հուստինիանոսը պատերազմ սկսեց վեստգոթերի թագավորության դեմ՝ Իսպանիայում։ Զորավար Լիբերիոսը մի շարք հաղթանակներ տարավ։ Բայց նրա դեմ պայքարը սկսեց թագավոր Ատանագիլդը (554—567), որը վերջ տվեց բյուզանդական առաջխաղացմանը։ Հուստինիանոսի և վեստգոթերի թագավորի միջև հաշտություն կնքվեց։ Բյուզանդացիների ձեռքում մնաց Բետիկե նահանգը, բայց ոչ երկար ժամանակ։ VI դարի 70-ական թվականներին բյուզանդացիները ստիպված էին լքել Պիրենեյան թերակղզին։

Հուստինիանոսի՝ արևմուտքում վարած պատերազմների հետևանքով կայսրության տարածքը կրկնապատկվեց։ Դալմատիան, Իտալիան, հյուսիսային Աֆրիկան, Իսպանիայի հարավ-արևելքը, Սիկիլիան, Սարդինիան, Կորսիկան, Բալեարյան կղզիները կայսրության ձեռքում էին։ Միջերկրական ծովի գրեթե բոլոր ափերը կայսրության կազմի մեջ էին անցել։

532 թ. կնքված «հավիտենական» հաշտությունը տևեց ութ տարի։ Խոսրովի աչքից չէր վրիպում, որ այդ ընթացքում Բյուզանդիան իր ազդեցությունը տարածել էր Կովկասում և Ղրիմում, որ Հայաստանը և Լազիկան դարձել էին բյուզանդական նահանգներ։ Նրան դուր չէին գալիս նաև Բյուզանդիայի հաջողությունները Աֆրիկայում և Իտալիայում։ Նրա համար միանգամայն պարզ էր, որ Հուստինիանոսը երբ իր հարցերը լուծի Արևմուտքում, չի հապաղի խախտել

կնքված հաշտությունը։ Նրա համար զայրացուցիչ էր և այն, որ Հուստինիանոսը հաշտություն կնքելուց հետո էլ չէր դադարում ոտնձգություններ կատարել Պարսկաստանի դեմ։ Նա բանակցությունների մեջ էր մտել արաբ ցեղապետ Ալամունդարոսի (Ալ-Մունդիր) հետ, որպեսզի նա Խոսրովի դեմ ապստամբություն բարձրացնի[7]։ Դեռ ավելին, նա դիմել էր հոնների ղեկավարներին՝ նրանց կոչ անելով ասպատակել պարսից պետության շրջանները։

Խոսրովը մտադիր էր վերսկսել պատերազմը՝ ընդդեմ Բյուզանդիայի և երկու հանգամանք արագացրին նրա որոշումը։ 539 թ. Տիզբոն է ժամանում Իտալիայի գոթերի թագավոր Վիտիգիսի դեսպանությունը, որն առաջադրանք ուներ Բյուզանդիայի դեմ Պարսկաստանի հետ դաշինք կնքել։ Հենց այդ ժամանակ Տիզբոն ժամանեց և հայ ապստամբների պատվիրակությունը՝ Վասակի գլխավորությամբ։ Դիմելով պարսից արքային, հայերն իմիջիայլոց ասացին. «...Մենք այժմ եկել ենք ձեզ մոտ, մենք, ովքեր բոլորս վերածվել ենք ստրուկների ու փախստականների... Մեր նախնիների վերջին արքա Արշակը կամավոր կերպով իր իշխանությունից հրաժարվեց՝ հօգուտ հռոմայեցիների կայսր Թեոդոսի, այն պայմանով, որ իր բոլոր տոհմակիցները հավիտյանս անկախ պիտի ապրեն և ոչ մի դեպքում հարկատու չդառնան։ Մենք կարողացանք պաշտպանել սահմանվածը այնքան ժամանակ, մինչև որ դուք կնքեցիք այս շարաբաստիկ հաշտությունը[8], որը եթե մեկն անվաներ հասարակաց դժբախտություն, սխալված չէր լինի։ Որովհետև դրանից հետո, ով արքա, քեզ խոսքով բարեկամ, բայց գործով թշնամի (Հուստինիանոսը), չմտահոգվելով ո՛չ բարեկամների և ո՛չ էլ թշնամիների մասին, մարդկային ամեն ինչ խառնել է ու տակնուվրա արել։ ...Նա չէ՞ր, որ մեզ վրա սահմանեց հարկերի աննախընթաց գումար։ Նա չէ՞ր, որ մեր սահմանակից և անկախ ապրող ճանիրին ստրկացրեց, իսկ դժբախտ լազերի թագավորի վրա նշանակեց հռոմայեցի կառավարիչ... Նա արդեն կռահում է, որ կկարողանա արևմտականներին վերջնականապես իրեն հպատակեցնել, դրա համար էլ արդեն պատրաստվում է շարժվելու ձեր՝ արևելյաններիդ վրա, որովհետև իրեն արդեն մնում է պայքարել միայն ու միայն պարսկական պետության դեմ... Երբ դու շարժվես թշնամիների վրա, ոչ մի դիմադրության չես հանդիպի. մենք, հասկանալի է, կլինենք քո կողմում և տեղանքին քաջատեղյակ կառաջնորդենք քո զորքը։ Երբ այդ լսեց Խոսրովը,— վերջացնում է Պրոկոպիոս Կեսարացին,— հավանություն տվեց, հրավիրեց պարսից ամենաերևելիներին, հայտնի դարձրեց բոլորին Վիտիգիսի գործը և հայերի հաղորդածը. Նա քննարկման դրեց այդ հարցը, թե ինչ պետք է անեն։ Այնտեղ արտահայտվեցին բազմաթիվ թեր ու դեմ կարծիքներ, բայց ի վերջո որոշեցին գարնանը պատերազմ սկսել հռոմայեցիների դեմ։ Դեռ աշուն էր, Հուստինիանոս կայսեր ինքնակալության տասներեքերորդ տարին»[9]։

540 թ. գարնանը Խոսրով արքան մեծաթիվ զորքով մուտք գործեց Բյուզանդական կայսրության սահմանները։ Երեք օրվա ճանապարհ կտրելով, նա հասավ Զենոբիա քաղաքը, շրջանցեց այն և առաջ գնալով գրավեց Եփրատ գետի ափին գտնվող բյուզանդական Սուրոն ամրոցը։

Հուստինիանոսը մինչ այդ Արևելքի զորահրամանատարությունը, որ նախա-

---

7 Նույն տեղում, էջ 77։

8 Նկատի ունի 532 թ. «հավիտենական» կոչվող հաշտությունը։

9 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 88—85։

*պես մի մարդու՝* magister militum per Orientem-*ի ձեռքում էր գտնվում, բաժանել էր երկուսի, մինչև Եփրատ գետն ընկած շրջանը թողել էր Բելիսարիոս զորավարին, իսկ Եփրատի ձախ կողմն ընկած և մինչև պարսկական սահմանները ձգվող շրջանները՝ զորավար Բուզեսին։ Բայց քանի որ պարսկական հարձակման ժամանակ Բելիսարիոսը Իտալիայում էր գտնվում, Հուստինիանոս կայսրը Արևելքի ողջ զորահրամանատարությունը վստահեց Բուզեսին։*

*Խոսրովը գրավեց Անտիոքն ու կողոպտեց այն։ Անթիվ անհամար բնակչություն կոտորվեց, կենդանի մնացածներն էլ գերեվարվեցին։ Քաղաքի հրաշալի մարմարիոններ տարվեցին պարսից երկիրը, քաղաքն էլ կրակի մատնվեց։ Գերի քշվածներին Խոսրովը բնակեցրեց Տիզբոն քաղաքից ոչ հեռու գտնվող մի վայրում, որտեղ կառուցվեց նոր քաղաք և անվանվեց Խոսրովի Անտիոք*[10]*։*

*Հուստինիանոսը ստիպված, Խոսրովի մոտ դեսպանություն ուղարկեց՝ պատերազմին վերջ տալու առաջարկ անելով։ Կնքվեց համաձայնություն, ըստ որի Խոսրովը միանվագ պիտի ստանար հիսուն կենտինար ոսկի (360 հազար դահեկան) և այնուհետև տարեկան հինգ կենտինար, ընդ որում Կասպից դռների (Ճորա պահակի) պահպանության ողջ ծախսը ընկնում էր պարսիկների վրա։*

*Օգտվելով Խոսրովի Դարա ամրոցի վրա կատարած հարձակման փաստից, Հուստինիանոս կայսրը չեղյալ համարեց Խոսրովի և բյուզանդական դեսպանների միջև կնքված համաձայնագիրը։ Ձմռանը նա Իտալիայից Բյուզանդիոն կանչեց զորավար Բելիսարիոսին և 541 թ. գարնանը պարսիկների դեմ ուղարկեց։ Իտալիայից եկավ նաև Վալերիանոս զորավարը, որին Հուստինիանոսը հրամայեց գլխավորել «Հայաստանի զորքը»։*

*Բյուզանդապարսկական պատերազմից փորձեցին օգտվել Բյուզանդական կայսրությունից վասալական կախման մեջ գտնվող լազերը։ Նրանք կայսրության համար պատվարի դեր էին խաղում Կովկասի քոչվոր ժողովուրդների ասպատակությունների առջև, բայց կայսրությունից այդ բանի համար չէին ստանում որևէ փոխհատուցում։ Երբ Հուստինիանոսի ժամանակ Լազիկայում բյուզանդական զորք հաստատվեց, լազերն այդ բանն իրենց անկախության սպառնալիք համարեցին։ Նրանց դժգոհություն էին պատճառում և այդ զորքերի հրամանատար, ծագումով Աղձնիքից, Պետրոսի, ինչպես և Հովհաննես Ցիվոսի կամայականությունները։ Հովհաննեսը Լազիկայում Պետրա անունով ամրոց էր կառուցել, որը Լազիկայում բյուզանդական տիրապետության պատվարի դեր պիտի խաղար։ Նա այնտեղ, այսպես կոչված, «մոնոպոլիոն» հաստատեց, որի էությունը բացահայտում է Պրոկոպիոս Կեսարացին։ «Ինչ որ իրենց (իմա՝ բյուզանդացիներին) պետք չէ,— գրում է նա,— ստիպում են լազերին գնել, իսկ ինչ որ Լազիկան ունի նրանց համար պիտանի, ձևականորեն գնում են, բայց ինչ վերաբերում է գներին, այդ որոշում են տիրողները, և ոչ լազերը։ Այսպիսի ճանապարհով խլում են մեզանից (իմա՝ լազերից) բացի սննդամթերքից, նաև ամբողջ ոսկին՝ առևտրի բարեհնչուն անվան տակ»*[11]*։*

*Լազերը, ի վիճակի չլինելով տանել այդ բոլորը, որոշեցին անցնել պար-*

---

10 *Այդ քաղաքին և նրա հույն բնակիչներին Խոսրովը մեծ իրավունքներ շնորհեց։ Վերաբնակները կոչվեցին «արքայական» և ենթակա չէին ոչ մի իշխանավորի։ Եթե որևէ բյուզանդացու հաջողվեր փախչել Խոսրովի Անտիոք և եթե տեղի բնակիչներից մեկն ու մեկը նրան իրեն ազգական համարեր, ապա այդ փախստականի տերը, եթե անգամ պարսից մեծամեծներից լիներ, իրավունք չուներ նրան ետ ստանալու։*

11 **Պրոկոպիոս Կեսարացի.** *Պարսկական պատերազմի մասին, գիրք Բ, 15։*

սիկների կողմը։ Նրանք Խոսրով արքայից խնդրեցին, որ նա Լազիկան առնի իր հովանավորության ներքո, զորք ուղարկի այնտեղ, որովհետև, ասացին նրանք, Լազիկային տիրելը պարսիկների համար Բյուզանդիայի դեմ մղած պայքարում շատ ձեռնտու է։ Խոսրովը հավանություն տվեց նրանց դիմումին և խոստացավ օգնել։ Լազերի առաջնորդությամբ նա Վրաստանի վրայով մուտք գործեց Լազիկա, որտեղ նրան երկրպագության եկավ Լազիկայի թագավոր Գուբազ Բ-ը։ Խոսրովը պաշարեց Սև ծովի ափին գտնվող Պետրա ամրոցը, քանդեց պարսպի մի մասը, Հովհաննես Ցիբոսը մարտում սպանվեց, իսկ պաշտպանները հուսաբեկ, հանձնվեցին Խոսրովին։

Բելիսարիոսը և բյուզանդական զորքը, Լազիկայում տեղի ունեցած դեպքերին անտեղյակ, որոշեցին հարձակվել պարսից տիրույթների վրա Ասորիքում։ Նրանք դուրս եկան սահմանամերձ Դարա ամրոցից և շրջանցելով Մծբինը, հասան ու գրավեցին պարսկական Սիսավրանոն ամրոցը։

542 թ. գարնանը Խոսրով արքան Եփրատ գետի աջ ափով արշավեց դեպի Բյուզանդական կայսրություն։ Նա պաշարեց, բայց չկարողացավ գրավել Սերգիուպոլիս քաղաքը, և շրջանցելով այն, առաջ շարժվեց դեպի Եփրատեսիա (հնում՝ Կոմմագենե) կոչված երկիրը։ Բելիսարիոսն իր հերթին եկավ և ճամբարեց Եվրոպոս կոչված վայրում։ Նրա զորավարների թվում էին Դիոգենեսը և պատերազմի նախօրյակին հայերի կողմից սպանված հայոց իշխան Ակակիոսի որդին, հայազգի Ադոլիոսը, որոնք Բելիսարիոսի թիկնապահներն էին։ Ահա այնտեղ Խոսրովը Բելիսարիոսի մոտ է ուղարկում Վարդան անունով իր դեսպանին. կողմ անելով գտարբերանել պատերազմը։ Բանակցությունները արդյունք չտվեցին, Խոսրովը թողեց հեռացավ, անցնելով Եփրատ գետը, գրավեց Կալինիկում քաղաքը, նախապես հայտնելով Բելիսարիոսին, որ սպասում է բյուզանդական դեսպաններին հաշտություն կնքելու համար։

Խոսրով արքան Ատրպատականում սպասում էր բյուզանդացի դեսպաններին՝ Կոստանդիանոսին և եդեսացի Սերգիոսին. որոնք, սակայն, չէին ժամանում։ Բյուզանդիայում այն ժամանակները սաստիկ համաճարակ էր բռնկվել, որը տարածվեց նաև Պարսկաստանում։ Խոսրով արքայի կարգադրությամբ Պարսկահայաստանի զորահրամանատար Նաբեդեսը (Անահբեդ-Նահապետ) Հայոց կաթողիկոսին[12] բյուզանդական Հայաստանի զորահրամանատար Վալերիանոսի մոտ ուղարկեց բողոքելու դեսպանների հապաղման առթիվ։ Կաթողիկոսն իր հետ տարավ նաև իր եղբորը, որը բյուզանդացի զորահրամանատարին տեղեկացրեց Խոսրովի հաշտություն կնքելու ցանկության իրական դրդապատճառները (երկրում արքայի դեմ գահակալական կռիվներ էին բռնկվել, Խոսրովի բանակում համաճարակ էր տարածվել և այլն)։ Բյուզանդացիներն ուզեցին օգտվել այդ հանգամանքից։ Վալերիանոսը և զորավար Մարտինոսը կայսրից հրաման ստացան ներխուժել պարսից տիրապետության տակ գտնվող Հայաստան։ Վալերիանոսը ճամբարեց Կարինի մոտիկ մի տեղում։ Նրանց միացավ Ներսեհ Կամսարականը հայերից և սկանդինավացի վարձկան էրուլներից բաղկացած զորքով։ Մարտինոսը Իլդիգերի և Թեոկտիստոսի հետ ճամբարեց հարավային Հայաստանի Կիթառիճ վայրում։ Շատ չանցած, նրան միացան զորավարներ Պետրոսն ու Ադոլիոսը։ Հարավային Հայաստանի զորքերի

---

[12] Պրոկոպիոս Կեսարացին նրան անվանում է «Դուբիոսի (Դվինի) քրիստոնյաների եպիսկոպոս»։ Հավանաբար կաթողիկոս Քրիստափոր Ա Տիրառիճեցին (539—545)։

գլխավոր հրամանատարությունը գտնվում էր Սահակ Կամսարականի՝ Ներսես Կամսարականի եղբոր ձեռքում, խորձյանում կենտրոնացած էին Ցիլեմուբ և Բերոս զորավարների զորքերը։ Մի մեծ զորաբանակ էլ ճամբարեց Մարտիրոպոլսից ոչ հեռու գտնվող Ցիսոն ամրոցի մոտ։ Այսպիսով, Պարսկաստանի դեմ հարձակման անցնելիք բյուզանդական զորքերը, թվով երեսուն հազար, կենտրոնացած էին բյուզանդական Հայաստանում։

Բյուզանդացիները շարժվեցին Դվին քաղաքի վրա։ Ճանապարհին փորձելով գրավել Դվին տանող ճանապարհի վրա գտնվող Անգղ (Անգլոն) գյուղի բերդը, Ներսեհ Կամսարականը, համառ դիմադրության հանդիպելով, պարտություն կրեց ու սպանվեց, իսկ նրա զինվորները մեծ կորուստներ կրելով փախուստի դիմեցին։ Փախուստի դիմեցին բյուզանդացիների մյուս հրամանատարները ևս, որոնցից Ադոլիոսը նահանջի ժամանակ նույնպես սպանվեց։

544 թ. Խոսրով արքան դարձյալ ներխուժեց Միջագետք, նպատակ ունենալով գրավել Եդեսիա քաղաքը, բայց հակառակ հսկայական ջանքերին, այդ բանն իրեն չհաջողվեց։ Եդեսիայի քաղաքացիներից որպես փրկագին հինգ կենտինար ոսկի (36000 դահեկան) ստանալով, Խոսրովը նահանջեց պարսից երկիրը։

545 թ. վերջապես Տիզբոն ժամանեցին բյուզանդական դեսպանները, որոնք Խոսրովին քսան կենտինար ոսկի վճարելով, հինգ տարի ժամանակով զինադադար կնքեցին, որի ընթացքում պետք է ավելի լայն հողի վրա բանակցություններ վարվեին՝ կայուն հաշտության պայմանագիր կնքելու համար։

Թեև ապստամբելով բյուզանդական տիրապետության դեմ լազերը իրենց երկիրն էին հրավիրել պարսիկներին, այնուամենայնիվ պարսկական գերիշխանությունն էլ նրանց համար տանելի չէր։ Ամեն ինչի վրա բարդվեց և դավանանքի հարցը։ Լազերը քրիստոնյա էին, պարսիկները՝ զրադաշտական։ Ահա այս հարցում ևս լազերի և պարսիկների միջև ընդհարումների դուռ էր բացվել։ Խոսրովը շատ լավ էր հասկանում այդ բոլորը, դրա համար նա որոշել էր նվաճել նրանց երկիրը և վերացնել թագավորությունը։ Նա անհաջող փորձ արեց սպանելու լազերի թագավոր Գուբազ Բ-ին։ Ահա այդպիսի պայմաններում լազերը, իրենց թագավորի գլխավորությամբ 549 թ. ապստամբություն բարձրացրին պարսիկների դեմ, հիմնահատակ քանդեցին իրենց Սկանդա և Սարապանիս (Շորապանի) ամրոցները, որպեսզի պարսիկների ձեռքում պատվար չդառնան, և ստիպված դարձյալ դիմեցին Հուստինիանոսի օգնությանը։ Գուբազ Բ-ի հետ դաշնակցած բյուզանդական բանակը պաշարեց պարսիկների ձեռքում գտնվող ծովափնյա նշանավոր Պետրա ամրոցը։ Բյուզանդացիների և լազերի միացյալ ուժերին հաջողվեց Լազիկայի պարսից կայազորին պարտության մատնել և երկիրն ազատել նրանց տիրապետությունից։ Պարսիկների ձեռքում էին մնում մի քանի ամրոցներ, այդ թվում և Պետրան։

Հնգամյա զինադադարի ժամկետը լրանալու վրա էր, երբ Հուստինիանոս կայսրը Խոսրովի մոտ պատրիկ Պետրոսի գլխավորությամբ դեսպանություն ուղարկեց խաղաղություն կնքելու նպատակով։ Բանակցությունների ընթացքում բյուզանդական զորքը շարունակեց Պետրայի պաշարումը, որին օգնության էր հասել պարսից զորավար Մերմերոեսը (Միհր-Մար-Ռուի)։ Այստեղ էլ իր ռազմավարական տաղանդով փայլեց հայազգի Հովհաննես Գուզեսը, որի ջանքերով Պետրան վերջապես գրավվեց, թեև Հովհաննեսն իր մահկանացուն կնքեց ռազմի դաշտում։

Մերմերոեսը, իմանալով Պետրայի անկման մասին, շարժվեց դեպի Լազիկայի մայրաքաղաք Արքեոպոլիսը[13], սկսեց ողջ Լազիկայի աստիճանական նվաճումը։ Լազերի թագավոր Գուբազ Բ-ն ստիպված քաշվեց լեռները՝ սպասելով բյուզանդացիների օգնությանը։

Լազիկայում թեև պատերազմը շարունակվում էր, պարսից դեսպան Յազդվշնասպը Կոստանդնուպոլսում դեռ բանակցում էր խաղաղություն կնքելու համար։ 550 թ. լրացել էր հնգամյա զինադադարի ժամկետը, բայց հաշտության պայմանագիր չէր ստորագրվել։ Զինադադարի ժամկետից 18 ամիս անց, 552 թ. Բյուզանդիայի և Պարսկաստանի միջև կնքվում է մի նոր, հընգամյա զինադադար, որի ընթացքում պետք է, որ բանակցությունները շարունակվեին։ Նոր զինադադարի պայմանների համաձայն Բյուզանդիան Պարսկաստանին վճարում էր քսան կենտինար ոսկի (144.000 դահեկան), այդ տասնութ ամիսների համար ևս վեց կենտինար։

Միայն 561 թ. հիսուն տարի ժամանակով Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև հաշտություն է կնքվում։ Երկու ախոյաններն էլ բավական լուրջ զիջումների էին դիմում։ Խոսրովը հրաժարվում էր Լազիկայից, բայց պահում էր իր ձեռքում Սվանեթը և Իբերիան (Վիրքը)։ Status quo-ն պահպանվում էր Հայաստանում, Միջագետքում և Ասորիքում։ Բյուզանդիան պետք է Պարսկաստանին վճարեր տարեկան 300 հազար դահեկան։ Երկու կողմերը պարտավորվում էին սահմանամերձ շրջաններում նոր ամրություններ չկառուցել։

## 2. ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ Ա-Ի ՎԱՐՉԱՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒ ՌԱԶՄԱԿԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԸ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Պարսկաբյուզանդական պատերազմի սկզբնական շրջանում բյուզանդական Հայաստանի պաշտպանությունը դրված էր Հայաստանի դուքսերի և տեղական նախարարների՝ սատրապների վրա։ Վերջիններս, գտնվելով պարսկաբյուզանդական սահմանագլխին, ի վիճակի չէին կամ չէին ուզում դիմադրել պարսիկներին, որոնք հանդես էին գալիս Հայաստանը բյուզանդացիներից ազատագրելու նշանաբանով։ Ինչ վերաբերում է Հայաստանի կոմեսին, ապա նա էլ չուներ իր սեփական զինված ուժերը[14]։

Դեռ 527 թ. աշնանը Հուստինիանոսը սկիզբ դրեց բյուզանդական Արևելքի ռազմական վերափոխմանը, որի էությունն էր քաղաքացիական և ռազմական իշխանության միացումը։ Այդ միջոցառումները տարածվեցին նաև Հայաստանի վրա։ 528 թ. հրովարտակով ստեղծվեց ռազմական մի նոր նահանգ, որի մեջ մտան Պողեմոնյան Պոնտոսը, Առաջին և Երկրորդ Հայքերը, ինչպես նաև հարավային Հայաստանի սատրապությունները։ Նորակազմ նահանգը հանվելով Արևելքի զորավարի՝ magister militum per Orientem-ի իրավասությունից, ենթարկվեց նոր նշանակված զորավարին[15], որի պաշտոնա-

13 Մեգրելա-ճանիրեն՝ Զիխան-Քվիշա, վրացերեն՝ Ցիխե Գոջի քաղաքը, այժմ՝ Նաքալաքեի գյուղը։

14 Պրոկոպիոս Կեսարացի. էջ 190։

15 Զորավարը՝ magister militum, ռազմական ամենաբարձր աստիճանն էր Բյուզանդիայում։ Ամբողջ կայսրության մեջ կային ընդամենը հինգ զորավարներ. երկուսը՝ մայրաքաղաքում, երկուսը Արևմուտքում և մեկը՝ Արևելքում։ Նման բարձրաստիճան պաշտոնի ստեղծումը Հայաստանում մի անգամ ևս ընդգծում է Հայաստանին կայսրության տված մեծ նշանակությունը։ Տե՛ս Н. Адонц, նշվ. աշխ., էջ 135։

կան անվանումն էր magister militum per Armeniam et Pontum Polemoniacum et gentis։ Առաջինն այդ պաշտոնում նշանակվեց հայազգի Սիտտասը[16], որին տրվեց ռազմական մեծ ուժ։ Զորավար Սիտտասին հասցեագրված այդ հրովարտակում գրված էր հետևյալը. «Շնորհիվն աստուծո ստանալով հռոմայեցիների իշխանությունը, մենք, մղված հոգատարությունից և խոհեմ կշռադատելով գտանք, որ անհրաժեշտ է Հայաստանի, Պոլեմոնյան Պոնտոսի և ազգությունների[17] համար սույն հրովարտակով հիմնադրել հատուկ ռազմական ղեկավարի պաշտոնը։ Մենք քո պայծառափայլությանը, որն իր նախկին գործունեությամբ աչքի է ընկել, նշանակում ենք այդ պատասխանատու պաշտոնին։ Հայտնի պրովինցիաներից է Մեծ Հայքը, որը և Ներքնագույն է կոչվում, և ազգությունները (այն է՝ Անզիտենան, Ինգիլենան, Ասթիանենան, Սոֆենան, Սոֆանենան՝ Մարտիրուպոլիս քաղաքով և Բալաբիտենան)[18]. նաև Առաջին և Երկրորդ Հայքերը հանձնում ենք քո հոգատարությանը՝ նրանց դուքսերի հետ միասին, որով միանգամայն վերանում է կոմեսի պաշտոնը։ Քո տրամադրության տակ ենք դնում որոշ լեգեոններ՝ ոչ միայն նրանք, որոնք մենք նոր ենք հավաքագրում, այլև առանձնացնելով մայրաքաղաքի զորքերի կազմից, ինչպես և արևելյան ու այլ զորքերից...»[19]։

«Կայսրը,— գրում է պատմիչ Մալալասը,—(Սիտտասին) տվեց լեգեոններ երկու զորաբաժիններից՝ մայրաքաղաքի և Արևելքի։ Նա տեղացիներից սկրինիարիոսներ (դիվանի աշխատողների) զորակոչեց և կայսեր թույլտվությամբ նրանցից կազմեց ստրատելատական սկրինիարոսներ։ Նա կայսրից թույլտվություն խնդրեց զորակոչել տեղացիներին, որպես Հայաստանի վայրերին քաջագիտակ, մի բան, որ կայսրը թույլատրեց»[20]։

Հուստինիանոսի հրապարակած այս հրովարտակն ունեցավ այն հետևանքը, որ հայերը կորցրին իրենց ռազմական ինքնուրույնությունը, նրանց տարածքը ռազմական տեսակետից ենթարկվեց նոր նշանակված երեք դուքսերին, որոնց նստավայրերն էին Մարտիրուպոլիսը, Կիթառիճը և Արտալեսը[21]։

Հայաստանի ստրատեգը նստում էր Թեոդոսուպոլիս-Կարին քաղաքում, Կարնո գավառում, այնտեղ, որտեղ Հայաստանի՝ 385 թ. բաժանումից հետո իր նստավայրն էր դարձրել Հայոց արքա Արշակը։

Հուստինիանոս I-ը 536 թվականի մարտի 18-ին հրապարակեց իր 31-րդ նովելը՝ «Հայաստանի չորս արխոնտների նշանակման մասին»։ Այն հասցեագրված էր Արևելքի պրետորյան էպարքոս, երկիցս ապոհյուպատոս և պատրիկ Հովհաննեսին։ Նովելլայի ներածության մեջ Հուստինիանոսը սույն կարգադրության դրդապատճառ է համարում Հայոց երկրի «վատ վիճակում» լինելը և իր ձգտումը նրան «ներդաշնակություն տալ»։ «Այն ինչ թափթփված է և դես ու դեն ցրված,— գրում է կայսրը,— եթե պետք եղած կարգի բերվի և դա-

---

[16] Սիտտասի իսկական անունն էր Ուրսիկիոս։ Նա խոշորագույն ռազմական դեմքերից էր Բյուզանդիայում, առաջինը հայազգի գործիչների այն երկար ցուցակում, որոնք հետագայում փայլեցին Բյուզանդական կայսրության քաղաքական և ռազմական բոլոր բնագավառներում։ Տե՛ս E. Stein, Histoire du-Bas-Empire, t. II, p. 290.

[17] Նկատի ունի հարավային Հայաստանի սատրապությունները՝ նախարարությունները։

[18] Այսինքն՝ Անձիտը, Անգեղտունը, Հաշտյանքը, Ծոփքը, Ծոփք Շահունյացը և Բալահովիտը։

[19] Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, էջ 299։

[20] Տե՛ս Ioannis Malalae, Chronographia, p. 429—430.

[21] Տե՛ս Н. Адонц, նույն տեղում, էջ 139։

սավորվի՝ բոլորովին այլ տեսք կստանա։ Տգեղը գեղեցիկ կդառնա, վատը՝ լավ, այն, ինչ նախկինում ցրված էր և խառնիճաղանջ, ձև կստանա և որոշակիություն ձեռք կբերի։ Մենք ահա այդպիսի վատ դրության մեջ գտանք Հայոց երկիրը և որոշեցինք ընդհանուր ձևի բերել այն, որպեսզի բարեկարգ վիճակը նրան անհրաժեշտ հզորություն տա և պետք եղած կարգ ու կանոնը հաստատվի»[22]։

31-րդ նովելայի համաձայն բյուզանդական տիրապետության տակ գտնըվող ողջ Հայաստանը բաժանվում էր չորս Հայքերի։ «Մենք կազմակերպեցինք չորս Հայք,— գրում է Հուստինիանոսն իր հրովարտակում,— մեկը՝ Ներքնագույնը, որի մայրաքաղաքը կրում է մեր բարեպաշտ անունը[23], անցյալում Բաղանիս կամ Լեոնտոպոլիս։ Նրան մենք շնորհեցինք անթյուպատոսություն և նրա կառավարիչ նշանակեցինք պայծառափայլ Ակակիոսին... Ներքնագույն (Հայքին) մենք տալիս ենք հետևյալ քաղաքները. Թեոդոսուպոլիսը, որը նախկինում ևս նրա կազմում էր գտնվում, Սատալան, Նիկոպոլիսը, Կոլոնիան՝ վերցնելով այն այսպես կոչված Առաջին Հայքից, Տրապիզոնն ու Կերասունը՝ նախկին Պողեմոնյան Պոնտոսից։ Այսպիսով... կազմում ենք մեկ ամբողջական պրովինցիա՝ յոթ քաղաքով և նրանց շրջաններով»[24]։

Նախահուստինիանոսյան Առաջին Հայքի տարածքից կազմակերպվեց Երկրորդ Հայքը՝ Սեբաստիա մայրաքաղաքով։ «Մենք կազմակերպեցինք Երկրորդ Հայքը,— գրում է Հուստինիանոսը,— որ նախապես Առաջին (Հայք) էր կոչվում Սեբաստիա կենտրոնով։ Մենք նրան տվեցինք Սեբաստուպոլիս քաղաքը, որն անցյալում էլ նրա կազմում էր, դրա վրա ավելացրած նաև Կոմանան՝ վերցնելով այն անցյալում Պողեմոնյան Պոնտոս կոչվածից, Զելան՝ Հելենոպոնտոսից, նաև Բրիսան, այնպես որ այս պրովինցիայի կազմում կա հինգ քաղաք»[25]։

Նախկին Երկրորդ Հայքի տարածքից կազմվեց Երրորդ Հայքը։ «Այնուհետև կազմեցինք Երրորդ Հայքը, որ նախկինում Երկրորդ (Հայք) էր կոչվում։ Կենտրոնը հին, երևելի Մելիտենե քաղաքն է... Նրան տալիս ենք հետևյալ քաղաքները. Արկա, Արաբիսոս, Արիարաթիա, Մյուս Կոմանա (սա կոչվում է նաև Ոսկե Կոմանա), Կուկուսոս, որոնք և անցյալում էլ ուներ, և այսպիսով նրա կազմում կա վեց քաղաք»[26]։

Եվ վերջապես հարավային Հայաստանի կիսանկախ սատրապությունների նախարարությունների հողերից կազմակերպվեց Չորրորդ Հայքը։ «Մենք կազմակերպեցինք նաև Չորրորդ Հայքը,— գրում է կայսրը,— որ նախկինում պրովինցիայի կառուցվածք չուներ։ Նա բնակեցված լինելով տարբեր ազգություններով, կրում էր տարբեր բարբարոսական[27] անուններ՝ Ցոփանենե, Անզիտենե, Ցոփանե, Ասթիանենե, Բալաբիտենե և գտնվում էր սատրապների իշխանության ներքո... Մենք այստեղ ևս քաղաքացիական կառավարում հաստատեցինք,

---

22 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 303։
23 Այսինքն՝ Հուստինիանուպոլիս։
24 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 303։
25 Նույն տեղում, էջ 303—304։
26 Նույն տեղում, էջ 304։
27 Այսինքն՝ օտար։

քաղաքացիական արխոնտ նշանակելով, և նրան տվեցինք Մարտիրուպոլիս քաղաքն ու Կիթարիզոն ամրոցը»[28]։

31-րդ նովելլայի երկրորդ գլուխը նվիրված է Երրորդ Հայքի կառավարիչ նշանակելու հարցին։ «Այս բոլորից հետո մենք նպատակահարմար գտանք, որ Երրորդ Հայքի կառավարիչ նշանակենք մի հայտնի մարդու, որն արդեն երկար ժամանակ ծառայել է մեզ և արժանի է այդ մեծ և կարևոր պաշտոնին։ Այսպիսին մենք համարում ենք պայծառափայլ Թովմային, որը երկար ժամանակ պաշտոնավարել է Հայաստանում, բացի այդ նա օգտակար է և աղնվորեն է մեզ ծառայել ու ծառայում»[29]։ Խոսքը, ամենայն հավանականությամբ, հայտնի զինվորական գործիչ Հովհաննես Գուզեսի հայր Թովմայի մասին է[30], որ հաճախ է հիշատակվում պարսկաբյուզանդական պատերազմների առիթով։ Երրորդ Հայքի կառավարիչ Թովմայի լիազորությունները բավականին ընդարձակ էին։ «Քանի որ Երրորդ Հայքի կոմեսին մենք ոչ միայն քաղաքացիական, այլև ռազմական իշխանությամբ օժտեցինք,— գրում է Հուստինիանոսը,— ապա նրան են ենթարկվում նաև այդ (պրովինցիաներում) գտնվող զինված ուժերը։ Նա, որպես ռազմական ղեկավար, իրավունք ունի իր կողմից կարգադրություններ անելու նրանց, հոգ տանել և ապահովել նրանց մատակարարումը, քննել նրանց թույլ տված ապօրինությունները, թույլ չտալ, որ զինվորները բռնանան հպատակների վրա... Նա օժտված է այն բոլոր լիազորություններով, ինչ որ ռազմական ղեկավարները... Նա ոչ միայն քաղաքացիական գործերում իշխանություն ունի, այլև ռազմական։ Նա իրավասու է և զինվորական, և քաղաքացիական անձնավորություններին կարգադրություններ անելու, որպես միասնական իշխանության կրող...»[31]։

31-րդ նովելլան ավարտվում է մի կոչով՝ ուղղված Երրորդ Հայքի կոմեսին՝ կյանքի կոչելու սույն հրովարտակում առաջ քաշված կարգադրությունները, որպեսզի նա «ամեն ինչ անի, իր կողմից նույնիսկ հատուկ կարգադրություններ հրապարակելով, մեր սահմանած ամենամյա հարկերը հավաքելու համար»[32]։

Հուստինիանոսի համար ամենակարևորը հենց այդ հարկերի ժամանակին գանձելն էր, նա ամենից քիչ էր մտահոգված հայոց երկրի համար իսկապես բարվոք վիճակ ստեղծելու ցանկությամբ։ Նրա առաջնահերթ նպատակն էր կանոնավորել և ապահովել պետական հարկերի գանձումը։ Վերոհիշյալ նովելլայի վերջաբանում շատ հստակ կերպով ասված խոսքերը այդ բանի լավագույն ապացույցն են[33]։

31-րդ նովելլան վերջնական հարվածն էր հայոց ինքնուրույն վարչական իշխանության վերջին նշույլներին։ Հուստինիանոսն իր այս հրովարտակով վերջնականապես վերացրեց հայ նախարարների քաղաքական և ռազմական իշխանությունը։ Ամբողջ բյուզանդական Հայաստանի վրա տարածվեց կայսրության կառավարման սիստեմը։

---

28 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 304։

29 Նույն տեղում, էջ 305։

30 Н. Адонц, նշվ. աշխ., էջ 178։

31 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 306։

32 Նույն տեղում։

33 Տե՛ս Н. Адонц, նշվ. աշխ., էջ 198։

*Հուստինիանոսը համոզված էր, որ քաղաքացիական ռեֆորմները երկրում կապահովեն բազմազգ պետության միասնականությունը, պայմաններ կնախապատրաստեն երկիրը հռոմեականացնելու, բյուզանդականացնելու, կապահովեն պետության տնտեսական հզորությունը։ Սակայն երկրի անվտանգությունն այդպիսի միջոցառումներով ապահովելը նա քիչ էր համարում։ Կար արտաքին վտանգը ես։ Բյուզանդական հսկայածավալ կայսրությունը շրջապատված էր բազմաթիվ թշնամական պետություններով ու ժողովուրդներով, որոնց ավարառուական և կողոպտչական ներխուժումների առաջն առնել տարեկան որոշ գումար վճարելով նրանց միշտ չէ, որ հնարավոր էր։ Տվյալ ժամանակաշրջանում հիմնական վտանգը Սասանյանների հզոր աշխարհակալությունն էր։ Հուստինիանոսը հաճախ փորձում էր չեզոքացնել պարսկական վտանգը՝ նրա դեմ հոներին, արաբական ցեղերին գրգռելով, բայց միշտ չէ, որ այդ բանը հաջողվում էր կամ ցանկացած արդյունքը տալիս։*

*Պարսկական զորքերի անընդհատ ներխուժումները կայսրության արևելյան սահմանները Հուստինիանոսին ստիպեցին լուրջ մտածել նաև ամբողջ սահմանով մեկ պաշտպանական գիծ կառուցելու մասին։ Արևմտյան Հայաստանի Պարսկաստանին սահմանակից շրջանում սկսվեց մի այնպիսի կարևոր շինարարություն, որի նմանը դեռ չէր եղել։ Նախ և առաջ աշխատանքը ծավալվեց Միջագետքում։ Կարևոր ուշադրություն դարձվեց Դարայի վրա։ «Եթե որևէ փորձանք պատահի Դարա քաղաքին,— գրում է Պրոկոպիոս Կեսարացին,— որը հռոմեական պետության պատվարն է և բացեիբաց կանգնած է թշնամու երկրին դեմ հանդիման, ապա ազետն այդքանով չի վերջանալու, դրա հետ միասին սասանվելու է ողջ պետությունը»։*

*Պարսկական սահմանին մոտիկ գտնվող Ամիդ քաղաքի պարիսպն ու նախապարիսպը, որ նույնպես ավերակ դառնալու վտանգի առաջ էին կանգնած, կայսրն ամրացրեց նոր շինարարությամբ։ Դարայի և Ամիդի միջև գտնվում էին բյուզանդական մի շարք ամրոցներ, որոնք պատերազմի դեպքում մեծ դեր էին խաղում Բյուզանդական կայսրության սահմանների ապահովության համար։ Ահա այստեղ հսկայական շինարարություն ծավալվեց, որով «Միջագետքը պարսիկների համար դարձավ միանգամայն անմատչելի»[34]։*

*Լայն աշխատանք տարվեց Աբորրաս (Խաբուր) գետի ափին գտնվող Թեոդոսուպոլիս (Ռեսայնա) քա՛ղաք-ամրոցի խախտված պարիսպներն ամրացնելու ուղղությամբ։ Նրա վերակառուցմամբ, պատմիչի ասելով, կայսրը «կարողացավ կանգնեցնել պարսիկների ներխուժումները դեպի Միջագետք»[35]։*

*Կայսրը ուշադրություն դարձրեց նաև Ամիդից հարավ և Եդեսիայից արևելք գտնվող Կոստանդինե քաղաքն ամրացնելու ուղղությամբ։*

*Հսկայական աշխատանքներ տարվեցին նաև Հայաստանում[36]։ Պարսկաստանին սահմանակից շրջաններում կառուցվեց պաշտպանական երկու ամուր գիծ, որոնց մանրամասն նկարագրությունը տալիս է Պրոկոպիոս Կեսարացին իր «Կառուցումների մասին» աշխատության երրորդ գրքում։ Առաջին գիծը ձգվում է Դարայից մինչև Տրապիզոն։ Այդ գծի վրա կառուցվեցին կամ վերա-*

---

34 Պրոկոպիոս Կեսարացի, էջ *175*։

35 *Նույն տեղում, էջ 176*։

36 *Հուստինիանոսի Հայաստանում կատարած բերդաշինության մասին մանրամասն տե՛ս Н. Адонц, նշվ. աշխ., էջ 140—150*։

կառուցվեցին հետևյալ ամրոցները. Մարտիրուպոլիսը, Կիթառիճը, Արտալեսը, Թեոդոսուպոլիս-Կարինը, Հորոնոնը և Սանծաղը։ Թեոդոսուպոլիս-Կարինում նստում էր Հայաստանի ստրատեգը։ Մնացած հինգ քաղաք-ամրոցներում հաստատված էին հինգ դուքսերը։

Այս առաջին գծի թիկունքում էր գտնվում պաշտպանական երկրորդ գիծը, որի հիմնական կենտրոններն էին Մելիտենեն և Սատաղը։

Շինարարությունն սկսվեց նախ և առաջ սատրապությունների ամրապնդման ուղղությամբ՝ Ծոփքում։ Մեծ ուշադրության արժանացավ Մարտիրոպոլիս քաղաքը, որը գտնվում էր «թշնամիներին ամենից մոտ վայրում, որովհետև այստեղ հռոմայեցիների և պարսիկների սահմանը Նիմֆիոս գետն է։ Գետի մյուս ափին է գտնվում Արզանենե (Աղձնիք) երկիրը, որը դեռ վաղուց հպատակ էր պարսիկներին»[37]։

Հուստինիանոսը Մարտիրոպոլսի համար կառուցեց պարիսպ և ամուր նախապարիսպ[38]։

Հուստինիանոսը Ծոփքի պաշտպանության համար չբավարարվեց Մարտիրոպոլիսն ամրացնելով։ Նա այդ քաղաքից արևմուտք, մեկ օրվա ճանապարհ հեռավորության վրա գտնվող Ցեյսոն վայրում «անառիկ ամրություններ կառուցեց, կայազոր հաստատեց և այդպիսով երկիրը բարբարոսների համար միանգամայն անմատչելի դարձրեց»[39]։

Նման աշխատանքներ կատարվեցին նաև Կիթառիճում, որը ըստ Պրոկոպիոս Կեսարացու, գտնվում էր Հաշտյանք գավառում։ Հուստինիանոսն այնտեղ «հսկայական, միանգամայն անառիկ և բոլորովին նոր ամրոց կառուցեց։ Նա մշտահոս ջուր բերեց, բնակիչներին ամեն ինչով ապահովեց և... մյուս դուքսին բավականին մեծ կայազորով հաստատեց այստեղ։ Այդ ձևով ահա նա ապահովեց հայկական ցեղերի (իմա՝ Հարավային Հայաստանի սատրապությունների բնակչության—Հ. Բ.) անվտանգությունը»[40]։

Հարավային Հայաստանի Խորձյան գավառը, որտեղ կային իրար շատ մոտ գտնվող անչափ մարդաշատ բնակավայրեր, Բյուզանդական կայսրության համար շատ խոցելի էր այն պատճառով, որ նա պարսից երկրից սահմանազատող որևէ բնական պատնեշից՝ գետ, լիճ, լեռնաշղթա և այլն, զուրկ էր, այնտեղ որոշակի սահմանագիծ չկար, բացի այդ բնակչությունն էլ, որը լինելով գլխավորապես հայերից բաղկացած, մի մասը հպատակ էր բյուզանդական կայսեր, մյուսը՝ պարսից արքային։ Նրանք շատ մոտիկ հարաբերությունների մեջ էին միմյանց հետ, և նույնիսկ խնամիական կապեր էին հաստատում, առևտուր անում և միասին երկրագործությամբ զբաղվում։ «Այդ էր պատճառը,— գրում է Պրոկոպիոս Կեսարացին,— որ պարսից արքայի համար հռոմեական սահմաններն այստեղից անցնելը շատ դյուրին ու հեշտ գործ էր»[41]։ Հուստինիանոսը մեծ աշխատանք թափեց Խորձյանն անխոցելի դարձնելու համար։ Նա գավառի կենտրոնում գտնվող Արտալես[42] վայրը ամրագույն

---

37 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 192։
38 Նույն տեղում, էջ 192—193։
39 Նույն տեղում, էջ 193։
40 Նույն տեղում, էջ 193։
41 Նույն տեղում, էջ 194։
42 Այժմ՝ Էնգիրիս։ Տե՛ս Н. Адонц, նշվ. աշխ., էջ 44։

*պարիսպով շրջապատեց, դարձրեց անառիկ ամրոց, այնտեղ հաստատեց կայազոր՝ դուքսի գլխավորությամբ։*

*Դեպի հյուսիս՝ բյուզանդական Մեծ Հայքում, սահմանի վրա էր գտնվում պաշտպանական առաջին գծի խոշորագույն պատվարը՝ Թեոդոսուպոլիս-Կարին քաղաքը։ Դեռևս Թեոդոս Բ կայսրը այստեղ կառուցել էր ամուր ամրոց և իր անունով կոչել Թեոդոսուպոլիս։ Ըստ Պրոկոպիոսի, Թեոդոսուպոլիսը քաղաք դարձրեց Անաստասիոս կայսրը «պարսպի մեջ առնելով այն բլուրը, որի վրա էր գտնվում Թեոդոսի ամրոցը»*[43]*։ Կայսրն այն անվանեց Անաստասիուպոլիս, բայց, այնուամենայնիվ, «նրան չհաջողվեց ջնջել քաղաքի հիմնադրի՝ Թեոդոսի անունը»*[44]*։ Թեոդոսուպոլիսը մեծ ուշադրության արժանացավ նաև Հուստինիանոսի կողմից։ Քաղաքի պարիսպը թեև բավական ստվար էր, այնուամենայնիվ ցածր էր, մոտ երեսուն ոտնաչափ և թշնամու համար խոցելի։ Քաղաքը չուներ նաև նախապարիսպ, ոչ էլ խրամ։ Հուստինիանոսը բարձրացրեց Թեոդոսուպոլսի պարիսպը, ատամնաշարերը խտացրեց, քաղաքի շուրջը կառուցեց նախապարիսպ, ինչպես և փորել տվեց խրամ և Դարայի նման մի հուսալի ամրություն դարձրեց։ Բացի այդ, նա «այստեղ հաստատեց բոլոր զինված ուժերը և Հայքերի զորավարին* (magister militum per Armeniam et Pontum Polemoniacum et gentes)*, ու այնպես արեց, որ հայերը լինեն ավելի հզոր և այլևս չսարսափեն պարսկական հարձակումներից*[45]*։*

*Բիզանա-Վժանի մոտ գտնվող Ծումինա*[46] *վայրում մի նոր ամրոց կառուցվեց, որ կայսեր անունով կոչվեց Հուստինիանուպոլիս։ Շինարարություն տարվեց նաև Սատաղ քաղաքում, որը լինելով պարսից տիրապետության մոտիկ տեղում, բազմաթիվ բլուրներով շրջապատված հարթավայրում, խոցելի էր թշնամիների համար։ Հուստինիանոսը հիմնովին քանդել տվեց քաղաքի արդեն խախտված պարիսպը և կառուցեց նորը, բացի այդ կառուցեց և նախապարիսպ։*

*Մեծ ուշադրության արժանացավ Կոլոնիան, որի պարիսպը վերանորոգվեց։ Կայսրն այստեղ դիմեց մի այլ միջոցառման էլ, որին, ինչքան հայտնի է աղբյուրներից, այլ տեղերում չէր դիմել։ Նա տեղացի բնակչությանը դրամական միջոցներ տրամադրեց, որպեսզի իրենց ագարակներում նոր ամրություններ կառուցեն, կամ խախտվածները վերանորոգեն։ Հուստինիանոսը Կոլոնիայի շրջանում կառուցեց Բաբերդ ամրոցը (Բայբերդոն) և Արեոնը, վերականգնեց Լյուսիորմոնը, Լյուտարարիզոնը*[47]*, Գերմանոսի ֆոսատոնը*[48]*, վերականգնեց և նորոգեց նաև «Հայաստանի Սեբաստիա և Նիկոպոլիս քաղաքների պարիսպները, որոնք երկար ժամանակից խախտված լինելով, փլվելու վրա էին»*[49]*։*

*Մեծ աշխատանքներ տարվեցին Մելիտենեում, որ դեռևս Տրայանոս կայսեր օրոք քաղաքի իրավունք էր ստացել և Փոքր Հայքի մայրաքաղաք դարձել։*

---

43 Պրոկոպիոս Կեսարացի, *էջ 196։*

44 *Նույն տեղում։*

45 *Նույն տեղում, էջ 196—197։*

46 *Երզնկայի մոտ, այժմ՝ Ջիմին։ Եկեղյաց գավառի եպիսկոպոսի նստավայրը։*

47 *Բաբերդի մոտակայքում։ Տե՛ս* Н. Адонц, *նշվ. աշխ., էջ 147։*

48 *Ս. Տ. Երեմյանի ենթադրությամբ, Կարինից Կոլոնիա տանող ճանապարհի վրա էր գտնվում և նույնանում է VII դարի «Աշխարհացույցի» Փոսադուռն վայրի հետ (տե՛ս* Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ Աշխարհացույցի, էջ 88)։*

49 Պրոկոպիոս Կեսարացի, *էջ 195։*

Շնորհիվ այն բանի, որ Մելիտենեն բավական արագ զարգացավ և մարդաշատ դարձավ, բնակչությունն ստիպված դուրս եկավ քաղաքի պարիսպների սահմաններից և լայն շինարարություն ծավալեց դրսում։ Այնտեղ կառուցվել էին եկեղեցիներ, վարչական շենքեր, հրապարակ, խանութներ, սյունաշարքեր, բաղնիքներ, թատրոններ և այլն։ Դեռևս Անաստասիոս կայսեր օրոք սկսվել էր քաղաքի նոր, ավելի ընդարձակ պարսպապատումը, որը, սակայն, ավարտին չէր հասցվել։ Այն իրականացրեց Հուստինիանոսը, որը «Մելիտենեն դարձրեց Հայոց հզոր ամրություն և զարդ»[60]։

Միջագետքից, Ասորիքից և Հայաստանից բացի Հուստինիանոս կայսրն իր պետության սահմանները ապահովեց նաև Լազիկայի կողմից, որը նույնպես սահմանակից էր պարսից տերությանը։ Լազիկան Հուստինիանոսի օրոք, հայազգի Սիտտասի ջանքերով Բյուզանդիային հպատակ դարձավ։ Հուստինիանոսը նախ և առաջ ճանապարհաշինարարություն ձեռնարկեց երկրում, բազմաթիվ ամրոցներ կառուցեց և այնտեղ հաստատեց բյուզանդացի զինվորներից բաղկացած կայազորներ։ Ամենակարևոր բերդերից էր Հորոնոնը, որը, Պրոկոպիոս Կեսարացու ասելով, վերածվեց «խաղաղության պատվարի»։ Հորոնոնը դարձավ Ճանիքի դուքսի նստավայրը։

Պրոկոպիոս Կեսարացին համոզված էր, որ Հուստինիանոս կայսեր Հայաստանում տարած շինարարությունը լիակատար ապահովություն և անվտանգություն ստեղծեց նրա բնակիչների համար, որ կայսեր ողջ երկրի սահմաններում ստեղծած պաշտպանական ամուր գիծը «փրկեց կայսրությունը..., անհնարին դարձրեց բարբարոսների ոտնձգությունները երկրի վրա»։ Խոսելով Հայաստանում տարված բերդաշինության մասին, պատմիչը գրում է, թե կայսրը «չափազանց անապահով վիճակում ապրող հայերին արժանացրեց այժմյան կայուն անվտանգության»։

Ինչպես հետագա պատմությունը ցույց տվեց, այդ շինարարությունը ևս ի վիճակի չեղավ ապահովելու ընդհանրապես երկրի և մասնավորապես հայոց խաղաղ կյանքը։ Նոր պատերազմների ժամանակ պարսից զորքը նորից ոտնատակ էր անում բյուզանդական Հայաստանը և նոր արհավիրքներ պատճառում բնակչությանը։

## 3. ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ ԿԱՅՍԵՐ ՕՐԵՆՔՆԵՐԸ ՀԱՅՈՑ ԺԱՌԱՆԳԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԻ ՄԱՍԻՆ

Հուստինիանոսի վարչաքաղաքական և ռազմական վերափոխումները Հայաստանում կարող էին որոշ չափով կայունացնել կայսերական իշխանությունն այստեղ, ապահովել երկրի անվտանգությունն արտաքին թշնամուց, նախ և առաջ պարսկական։ Բայց բյուզանդական կայսեր համար դա բավական չէր։ Նրա գլխավոր մտահոգությունը Բյուզանդական կայսրության սահմաններում ապրող հայերի նիստուկացը, կենցաղը, կացութաձևը հռոմեականացնելն էր, նրանց հնարավորին չափ հեռացնելը պարսից տիրապետության տակ ապրող իրենց ազգակիցներից։ Բյուզանդական տիրապետության տակ գտնվող հայ ֆեոդալ-նախարարարները այն հիմնական ուժն էր, որն ընդդիմակայում էր

60 Նույն տեղում, էջ 196։

Բյուզանդիայի այդ քաղաքականությանը։ Ահա այդ նախարարությունների տեգի և դերի չեզոքացումն էր, որից պետք է սկսեր իր աշխատանքը բյուզանդական կայսրը։ Հայ նախարարների իրավունքների վերացումն սկսվել էր Հուստինիանոսից առաջ։ Նրանք զրկվել էին քաղաքական և ռազմական հզորությունից։ Բայց նրանք դեռևս տնտեսապես զորեղ էին։ Կայսրության համար առաջնակարգ խնդիր էր ահա հայ նախարարների այդ հիմքն էլ խարխլել։ Եվ Հուստինիանոսը դիմեց դրան՝ թեև բավական հեռվից։ Նա փորձեց խարխլել հայոց ժառանգական իրավունքը[51]։ Կայսեր կարգադրությունները նկատի ունեին բյուզանդական Հայաստանի ողջ հայությունը, բայց նրա հիմնական մտահոգությունը շարքային արհեստավորի կամ գյուղացու չնչին ունեցվածքի ժառանգման հարցը չէր, այլ խոշոր հողատերերի կալվածքների։

535 թ. հուլիսի 23-ին հրապարակվեց Հուստինիանոս կայսեր էդիկտը հայոց ժառանգական իրավունքի մասին։ «Մենք ցանկանում ենք,— գրում էր կայսրը հենց սկզբում,— հայերի վրա ևս ամբողջությամբ տարածել մեր օրենքները, տալ նրանց պատշաճ հավասարություն, ազատել նրանց նախկին անարդարությունից»։ «Նախկին անարդարության» տակ կայսրը նկատի ուներ հայոց ժառանգական իրավունքը, որի համաձայն ծնողներին ժառանգում էին միայն արու զավակները։ «Մենք վերջերս իմացանք,— գրում է կայսրը սույն էդիկտի առաջին գլխում,— նրանց մոտ գոյություն ունեցող բարբարոսական և կոպիտ մի օրենքի մասին, որ վայել չէ ո՛չ հռոմայեցիներին, ո՛չ էլ մեր պետության արդարության ոգուն, այն, որ ծնողներին ժառանգելու (իրավունք) ունեն միայն տղամարդիկ, բայց ոչ երբեք կանայք։ Այդ իսկ պատճառով սույն սրբազան օրենքով հրամայում ենք քո պայծառափայլությանը[52], որ ժառանգելու իրավունքը նույնը լինի, ինչպես թելադրում են հռոմայեցիների օրենքները, որ Հայաստանում ժառանգելու իրավունքը տարածվի և՛ տղամարդկանց, և՛ կանանց վրա»[53]։

Նոր օրենքի ամբողջ էությունը թաքնված է երկրորդ պարբերության մեջ. «Մենք ցանկանում ենք, որ... կանայք ևս իրավունք ունենան այսպես կոչված տոհմային կալվածքներից ժառանգություն ստանալու։ Իսկ եթե գտնվեն այնպիսիք, ովքեր հակառակ սովորութային ժառանգական իրավունքի, իրենց դուստրերին գրանցել են որպես ժառանգորդ, այդ դեպքում այդ կանայք և նրանցից ծնված երեխաները մասնակից թող դառնան տոհմային կայքի ժառանգմանը[54]։

Թեև հրովարտակը հրապարակվեց 535 թ. Հուստինիանոսը նրան հետադարձ ուժ տվեց։ «Մենք հրամայում ենք,— գրում է նա,— որ սույն օրենքը ուժի մեջ մտնի մեր բարեպաշտ թագավորության սկզբից հաշված[55] և այդ օրերից մինչև այժմ վախճանված մարդկանց ժառանգության հարցերը լուծել այս (Նոր) օրենքի համաձայն, բացառյալ այն դեպքերը, երբ հարցն արդեն լուծված է

---

51 Այդ մասին տե՛ս Н. Адонц, նշվ. աշխ., էջ 179 և հտ. նաև՝ Հ. Մանանդյան, Հուստինիանոսի նովելները հայերի ժառանգելու կարգի մասին։ «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության», հատ. Բ, Բ մասի նյութեր, Երևան, 1960։

52 Խոսքը, հավանաբար, Արևելքի պրետորյան պրեֆեկտ Հովհաննեսի մասին է։ Տե՛ս Н. Адонц, նշվ. աշխ., էջ 185։

53 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 300։

54 Նույն տեղում։

55 Այն է՝ 52 թ.։

և այս կամ այն կերպ որոշված։ Այդպիսի դեպքերում հրամայում ենք հարցը չվերանայել և թողնել ուժի մեջ»[56]։

Հայոց ժառանգական իրավունքն ուներ իր սոցիալ-քաղաքական խորը արմատները։ Նրա էությունն այն էր, որ հնարավորություն չտրվի պապենական ունեցվածքի փոշիացման, մանրացման ու կորստյան։ Խոսքը, իհարկե, մանր ժառանգության մասին չէ, այլ այն տոհմային կալվածքների (γενεαρχικὰ χωρία), որոնք գտնվում էին նախարարների ձեռքում և կազմում էին նրանց հզորության հիմնական աղբյուրը։ Հուստինիանոսի «կարգ ու կանոնից զուրկ» «բարբարոսական» օրենքով ու սովորույթով կառավարվող հայոց երկիրը «ձևի բերելու» վերամբարձ բառերի ետև թաքնված էր մի բան՝ կայսեր ձգտումն ու ջանքերը հայ նախարարների հողատիրության վրա հենված հզորության աղբյուրը ցամաքեցնել, որովհետև առանց դրան հնարավոր չէր «յուրացնել» Հայաստանը։ Պայքարելով նախարարների հողերի ամբողջականության դեմ, Հուստինիանոսն ուզում էր հարված հասցնել հողատիրության վրա հիմնված նախարարների հզորությանը[57]։

Հուստինիանոսը սույն հրովարտակը ուժի մեջ դնելով իր թագավորության սկզբից, 527 թ., բազում դժվարությունների առաջ կանգնեց։ 536 թ. մարտի 18-ին, այսինքն հաջորդ տարին, կայսրը ստիպված եղավ նորից անդրադառնալու այդ հարցին, ոչ միայն վերացնելու համար երկրում ծայր առած դըժգոհությունները, այլև միջամտելու հայոց ժառանգական իրավունքին վերաբերող մի շարք այլ հարցերի ևս։ Լույս աշխարհ եկավ Հուստինիանոսի 21-րդ նովելլան՝ հասցեագրված Հայաստանի փոխհյուպատոս հայազգի Ակակիոսին։ Հենց առաջին տողերից պարզ է դառնում կայսեր մտադրությունը։ «Հայերի մասին, որպեսզի նրանք ևս ամեն ինչում հետևեն հռոմայեցիների օրենքներին»։— «Ցանկանալով, որ Հայոց աշխարհում գործեն լավ օրենքներ,— գրում է Հուստինիանոսը,— և այնպես անել, որ այն ոչնչով չտարբերվի մեր պետությունից, մենք զարդարեցինք այն հռոմեական վարչաձևով, վերացրինք նրա նախկին անվանումները։ Մենք սովորեցրինք նրանց օգտվել հռոմեական կարգ ու կանոնից և կարգադրեցինք, որ նրանք (կառավարվեն) միայն այն օրենքներով, որոնք ընդունված են հռոմայեցիների մոտ։ Մենք որոշեցինք սույն օրենքով վերացնել նրանց այդ սխալը, որպեսզի, հակառակ իրենց բարբարոսական սովորույթին, ծնողներին, եղբայրներին և մնացած ազգականներին ժառանգելու իրավունք ունենան ոչ միայն տղամարդիկ, այլև կանայք»[58]։

Այսպիսով խոսքը ոչ միայն Հայոց ժառանգական իրավունքին էր վերաբերում, այլ ողջ Արևմտյան Հայաստանի բնակչության իրավական դրության արմատական վերափոխմանը, կայսերական օրենքների բացարձակ տիրապետության մասին Հայաստանում։ Այդ միտքը կրկնված է նույն հրովարտակի առաջին գլխում ևս, որտեղ ասված էր, որ «Հայաստանում գործող օրենքները ոչնչով չտարբերվեն հռոմայեցիների (օրենքներից)... բոլորի վրա հավասարապես թող տարածվեն մեր օրենքները»։ Հուստինիանոսին առաջին հերթին հուզում էր Հարավային Հայաստանի հարցը, որտեղ պահպանված էին ազգային ուժեղ ավանդույթները։ Կայսրության համար ահա կարևոր էր Հարավային

56 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 300։
57 Տե՛ս Н. Адонц, նշվ. աշխ., էջ 196։
58 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 301։

Հայաստանի սատրապությունների չեզոքացումը և երբ սույն հրովարտակում խոսք է լինում Հայաստանի «նախկին անվանումներ» ունեցող շրջանների մասին, հենց Չորրորդ Հայքն է նկատի առնվում։ 31-րդ նովելլայի առաջին գլխի 3-րդ պարբերության մեջ, որ վերաբերում է Չորրորդ Հայքի նախարարներին, հենց այդպես էլ հիշված է, որ նա անցյալում «կրում էր տարբեր բարբարոսական անուններ»։

31-րդ նովելան կանանց ժառանգություն ստանալու իրավունք վերապահելուց բացի, կարգադրում էր նաև, որ կանայք «առանց պռույգի չամուսնանան, և որպեսզի նրանք այսուհետև չգնվեն իրենց ապագա ամուսինների կողմից», թեև, ինչպես երևում է հայկական սկզբնաղբյուրներից, օժիտը տարածված էր հայոց մեջ։

Նոր օրենքը ուժի մեջ էր դրվում իր հրապարակման օրից, որովհետև, ինչպես գրում է Հուստինիանոսը «անցյալի վրա այն տարածելը ոչ թե կկարգավորեր հարցը, այլ ընդհակառակը առաջ կբերեր խառնաշփոթություն»։ Նախորդ տարում հրապարակված օրենքի հիման վրա ժառանգության վերաբերյալ կատարված գործարքները, համաձայն որոնց կանայք ևս ժառանգություն էին ստացել 527—536 թթ. ընթացքում վախճանվածների ունեցվածքից, չեղյալ հայտարարվեցին։

## 4. ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԸՆԴՎԶՈՒՄՆԵՐԸ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ԴԵՄ

387 թ. հետո, տիրանալով Արևմտյան Հայաստանին, Բյուզանդիան սկսեց քայլառքայլ վերացնել հայոց քաղաքական և տնտեսական ինքնուրույնությունը։ Հակառակ այն բանի, որ հայոց վերջին Արշակունի արքայի՝ Թեոդոս I-ի հետ կնքած պայմանագրի համաձայն հայերը կայսրությանը հարկատու չէին, Բյուզանդիան սկսեց հարկադրել նրանց։ V դարի կեսերից սկսվեցին և կրոնական հալածանքները։ Քաղկեդոնական (երկաբնակ) դավանանքը որդեգրելով, Բյուզանդիան սկսեց ճնշումներ գործադրել Քաղկեդոնի ժողովի որոշումները չընդունած հայերի նկատմամբ։ Այդ քաղաքականությունը չէր կարող հայերի մեջ դժգոհություն չառաջացնել։ Նրանց դժգոհությունը նախ և առաջ արտահայտվեց այն բանում, որ հայերը, ավելի որոշակի հարավային Հայաստանի նախարարություններ-սատրապությունները, մասնակցեցին պալատական գործիչներ Իլլոսի և Լեոնտիոսի՝ Զենոն կայսեր դեմ բարձրացրած ապստամբությանը, մի բան, որ, անկասկած, պատասխանն էր այդ քաղաքականության, որ վարում էր կայսրությունն այնտեղ։ Հետագայում, հատկապես Հուստինիանոսի ժամանակ, երբ Բյուզանդիայի համաձուլարար քաղաքականությունը գնալով սաստկացավ, հայ ժողովրդի ընդվզումներն ավելի սուր բնույթ ստացան։ 532 թ. Պարսկաստանի հետ կնքելով, այսպես կոչված, «հավիտենական» հաշտությունը, կայսրությունն իր ձեռքերն ազատեց և առանց վախի սկսեց տակն ու վրա անել իր տիրապետության տակ ապրող հայերի կյանքի բոլոր բնագավառները։ Բյուզանդական Հայաստանը դարձավ կայսրության սովորական մի նահանգ։ Հուստինիանոսն սկսեց ոչ միայն տնտեսապես կեղեքել նրան՝ հայերի վրա դնելով հարկային հսկայական բեռ։ Նա դիմեց ավելի սարսափելի քայլի։ Նա հայերից բաղկացած զինված ուժեր կազմելով, տանում էր իր լայնատարած երկրի ամենահեռավոր ծեգերը՝ կայսրության սահմանները արտաքին

թշնամուց պաշտպանելու համար։ Դրանով նա զրկում էր Հայաստանը մարտունակ տարրից, ապստամբական հնարավոր ելույթների առաջն առնում։ Շարքային ռազմիկների հետ միասին նա կայսրության հեռավոր անկյուններն էր ուղարկում հայ նշանավոր զորավարներին, որպեսզի նրանք տեղում չմնան և չկազմակերպեն կամ չգլխավորեն որևէ շարժում՝ ընդդեմ կայսրության։ Պրոկոպիոս Կեսարացին հանվանե հիշատակում է Հուստինիանոսի ժամանակ բյուզանդական բանակում ծառայող տասնյոթից ոչ պակաս հայ զորահրամանատարների, ներառյալ մեծ Ներսեսին[59]։ Նրանց մեծ մասն ընկավ մարտի դաշտում, պաշտպանելով, իհարկե, ոչ թե հարազատ ժողովրդի, այլ կայսրության շահերը։

Հուստինիանոսը Արևմտյան Հայաստանը կառավարում էր հայազգի կառավարիչներով, որոնք որպես կանոն պիտի ջանային ցուցաբերել իրենց հավատարիմ ծառայությունը կայսրության։ Սկզբում Հուստինիանոսը Հայոց իշխան էր նշանակել ոմն Համազասպի, որը, սակայն, ձգտելով անկախության, գաղտնի բանակցությունների մեջ էր մտել պարսիկների հետ։ Հուստինիանոսի մտերիմներից մեկը, հայազգի Ակակիոսը «Համազասպին զրպարտում է, մեղադրելով Հայաստանում չարագործություններ կատարելու և Թեոդոսուպոլիսն ու այլ քաղաքներ պարսիկներին հանձնելու մտադրության մեջ»[60]։ Ակակիոսը կայսեր համաձայնությամբ սպանում է Համազասպին և տիրանում նրա պաշտոնին, դառնալով Հայոց իշխան։

Ակակիոսը Պրոկոպիոսի տվյալներով «իր հպատակների համար ամենադաժան մարդը դարձավ. նա առանց որևէ պատճառի հափշտակում էր մարդկանց ունեցվածքը։ Նա հայերի վրա չորս կենտինար հարկ դրեց, մի բան, որ երբեք չէր եղել»[61]։ Սա արդեն լցրեց հայերի համբերության բաժակը։ 539 թ. ապստամբություն բռնկվեց, որի առաջին զոհը դարձավ հենց Ակակիոսը։ Ապստամբները կենտրոնացան սահմանամերձ Ցարանգիոն կոչվող վայրում։ Նրանց դեմ է ուղարկվում պատժիչ արշավախումբ՝ Սիտտասի գլխավորությամբ, որը դեռևս 528 թ. նշանակված էր Հայաստանի զորքերի գլխավոր հրամանատար, (magister militum per Armeniam)։ Սիտտասն ապստամբ հայերին խոստացավ միջնորդ դառնալ կայսեր առաջ ծանր հարկի վերացման համար, բայց նրանք չխաբվեցին։ Այդպիսի պայմաններում Սիտտասը փորձեց ապստամբների շարքերում պառակտում առաջացնել, կաշառել մի մասին, բայց անհաջող։ Սիտտասը որոշեց զենքի ուժով ճնշել ապստամբությունը, բայց դեռ գործի չանցած ապստամբության ղեկավարներից մեկի՝ Արտավան Արշակունու նիզակի զոհը դարձավ։

Կայսրը ապստամբ հայերի դեմ ուղարկեց զորավար Բուզեսին։ Նա նույնպես փորձեց խաղաղ միջոցներով դադարեցնել հայոց ապստամբությունը, բայց ապարդյուն, հատկապես այն բանից հետո, երբ նա չարանենգորեն սպանեց բանակցությունների համար իր մոտ ժամանած Հովհաննեսին, Արտավան Արշակունու հորը։ Դրանից հետո «հայերը հռոմայեցիների հետ համաձայնության գալու բոլոր հույսերը կտրեցին. ի վիճակի չլինելով պատերազմում պար-

---

[59] *P. Charanis*, Ethnic Changes in Seventh-Century Byzantium, Dumbarton Oaks Papers, No XIII, Washington, 1958, p. 31.

[60] Պրոկոպիոս Կեսարացի, էջ 80։

[61] Նույն տեղում։

տության մատնել կայսերական բանակը, գործունյա Վասակի գլխավորությամբ նրանք գնացին պարսից արքայի մոտ»[52]։

Վասակը Արտավան Արշակունու աներձագն էր, Հովհաննեսի փեսան։ Այն ինչ պատմեցին ապստամբ հայերը Խոսրով արքային[63], դա բյուզանդական տիրապետության տակ հեծող հայ ժողովրդի պատմությունն էր, նրա տանջանքների ու մաքառման, երկու հզոր ախոյանների միջև գտնվող ժողովրդի դաժան բախտի պատմությունը։

Ապստամբ հայերը դրդում են Խոսրովին խախտել 532 թ. հաշտության պայմանագիրը և պատերազմ սկսել Բյուզանդիայի դեմ, խոստանալով իրենց աջակցությունը։ 540 թ. գարնանը սկսվեց պարսկաբյուզանդական երկրորդ պատերազմը։ «Հավիտենական» հաշտությունը ութ տարվա կյանք ունեցավ։ Հայաստանը ոտնատակ էր արվում և մեկ, և մյուս ախոյանի զորքի կողմից։ Բյուզանդական տիրապետության տակ ապրող հայերը այդպիսի վիճակի ողջ մեղքը գցում էին Հուստինիանոս կայսեր վրա։ Նման պայմաններում 548 թ. Կոստանդնուպոլսում Հուստինիանոսի և նրա նշանավոր զորավար Բելիսարիոսի կյանքի դեմ դավադրություն է կազմակերպվում։ Կազմակերպողն էր Արշակ Արշակունի զորավարը, որը դավադրության մեջ ընդգրկեց կայսրությունից դժգոհ բազում մեծամեծների, այդ թվում և Սիտտասին սպանող նշանավոր Արտավան Արշակունուն, որն անցել էր Բյուզանդիա՝ ծառայության և վանդալների ձեռքից Աֆրիկան էր նվաճել։ Արշակ Արշակունին, ինչպես ցույց է տալիս Պրոկոպիոս Կեսարացին, նախքան դավադրության կազմակերպելը, ձերբակալվել էր պետության դեմ ոտնձգություններ կատարելու, նաև բացահայտ դավաճանության՝ պարսից արքա Խոսրովի օգտին հռոմայեցիների դեմ խռովություն բարձրացնելու փորձի համար»[64]։ Հուստինիանոսը նրա հանդեպ մեղմ էր վարվել, բայց դա չէր խանգարել, որ Արշակը նոր դավադրություն կազմակերպի։ Դավադրության իսկական դրդապատճառների մասին վկայում է Պրոկոպիոս Կեսարացին։ Նա բերում է այն խոսակցության բովանդակությունը, որ տեղի էր ունեցել Արշակ և Արտավան Արշակունիների միջև դավադրության նախօրեին։ Արշակ Արշակունին, դիմելով Արտավանին, ասել էր. «Հայրենիքը ամուր կապանքների մեջ է առնված, նրա վրա են դրված անօրինակ ծանր հարկեր... ամբողջ հարազատ ժողովուրդը ստրկացված է և ցրված ամբողջ հռոմեական երկրով մեկ»[65]։ Արտավանը համաձայնվում է մասնակցել դավադրությանը, որին հարում է նաև Խանարանգես անունով մի հայ։ Դավադրությունը, սակայն, մի քանի բյուզանդացիների մատնության պատճառով բացահայտվում է և նրա մասնակիցները ձերբակալվում են։ «Հուստինիանոս կայսրը,— գրում է Պրոկոպիոս Կեսարացին,— Արտավանին պաշտոնանկ արեց, բայց ուրիշ պատիժ չտվեց, ոչ էլ մնացածներին, այլ միայն բանտարկեց, այն էլ ոչ պետական բանտում, այլ պալատում»[66]։ Եվ դա, իհարկե, ոչ թե մարդասիրությունից դրդված, այլ որովհետև Արտավանը շատ հմուտ զորավար էր և կարող էր կայսրության դարձյալ պիտանի լինել, ինչ որ եղավ հետագայում։

---

62 Նույն տեղում, էջ 83։
63 Տե՛ս վերը, էջ 223։
64 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 234։
65 Նույն տեղում, էջ 235։
66 Նույն տեղում, էջ 238—239։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ՄԱՐԶՊԱՆԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ VI ԴԱՐՈՒՄ

## 1. ՕՏԱՐ ԼԾԻ ԾԱՆՐԱՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Տիզբոնի արքունիքը Հայաստանում իր տիրապետությունն ամրապնդելու նպատակով ամեն կերպ ջանում էր թուլացնել բյուզանդական քաղաքական և եկեղեցական ազդեցությունը։ Պարսկական պետական գործիչները միշտ կասկածանքով էին նայում հայ-բյուզանդական կրոնական ընդհանրությանը, որը նրանց միջև կարող էր առաջացնել նաև քաղաքական մերձեցում[1]։ Ուստի նրանք մեծ ճիգ ու եռանդ են գործադրում խորացնելու հայ-բյուզանդական դավանական պառակտումը, որն ավելի խորացավ VI դարում։

Հուստինիանոսի համաձուլարար քաղաքականությունը սկիզբ է դնում կայսրության նկատմամբ հայերի քաղաքական թշնամության, որը հետագայում վեր է ածվում անհաշտ ատելության[2]։

V դարի վերջերից Արևելքում ասորական եկեղեցին ներքին երկպառակումներից ու բյուզանդացիների հարատև ճնշումներից, հատկապես Հուստինոս Ա կայսեր՝ 518 թ. հետո միաբնակների դեմ ծավալած խստագույն հալածանքներից հետո, թուլացել և համարյա կորցրել էր իր ազդեցությունը։ Մարզպանական Հայաստանի քաղաքական հաջողությունների շնորհիվ բարձրացել էր Հայոց եկեղեցու հեղինակությունը ոչ միայն երկրի ներսում, այլև երկրից դուրս, հատկապես միաբնակ ասորիների շրջանում և այն աստիճան, որ եպիսկոպոսական ձեռնադրությունների համար նրանք դիմում էին Հայոց կաթողիկոսին, փնտրելով նրա հովանավորությունը։ Եթե պարսկական արքունիքը նպաստավոր էր համարում իր քաղաքական ազդեցության ոլորտներում գտնվող հայերի, հատկապես Հայոց եկեղեցու այս հեղինակության բարձրացումը և բարյացակամորեն էր վերաբերվում այդ երևույթին, ապա բյուզանդացիներին, ընդհակառակը, անհանգստացնում էր այդ, մանավանդ Հուստինիանոս Բ կայսեր (527) գահակալությունից հետո։ Կայսրը մի շարք միջոցներով փորձում է հայերին ճնշել նախ բյուզանդական Հայաստանում, ապա այդ ճնշումը այլ ուղիներով տարածել նաև հայերի մյուս հատվածի վրա. այդ արվում էր Հայոց եկեղեցին իր ազդեցության տակ գցելու համար։ Հայ եկեղեցին իր ինքնուրույնությունն ու իր ժողովրդի շահերը պաշտպանելու նպատակով գործնական քայլերի է դիմում. 554 թ. մարտի 29-ին, Դվինում, Ներսես Բ Բագրևանդեցի կաթողիկոսի (548—557) նախագահությամբ համա-

---

1 Տե՛ս Ե. Տեր-Մինասյան. Եղիշե, Վարդանանց պատմություն, Երևան, 1946, էջ 5։

2 Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 303։

ժողով է գումարվում[3], որին մասնակցում են Հայաստանի համարյա բոլոր եպիսկոպոսները, 35 նախարարներ, հասարակության այլ խավերի ներկայացուցիչներ, և նույնիսկ շինականներ[4]։ Այդ ժողովում նզովվում ու բանադրվում է ոչ միայն քաղկեդոնականությունը, այլև նեստորականությունը[5], որովհետև ժողովի մասնակիցները քաջ գիտակցում էին, որ հայ ժողովրդի ու եկեղեցու գոյության ինքնուրույնությանն սպառնացող վտանգ սպասվում է ոչ միայն Բյուզանդիայից, այլև Պարսկաստանից, որը նեստորական եկեղեցին իր հովանավորության տակ առնելով, փորձում էր դրա միջոցով հայ եկեղեցուն և ընդհանրապես հայերի ազդեցությունը հակակշռել և միշտ զուսպ վիճակում պահել։

Դվինի ժողովին մասնակցում էին նաև միաբնակ ասորիները՝ Հայոց Ներսես Բ (548—557) կաթողիկոսի կողմից եպիսկոպոս ձեռնադրված Աբդիշոյի գլխավորությամբ, որոնք հավատացած էին, որ հայ եկեղեցու օգնությամբ կհարվածեն ոչ միայն թշնամիներին, այլև կպահպանեն իրենց գոյությունը։ Հայոց կաթողիկոսին գրած դիմում-նամակում այդ միտքն են արտահայտում նրանք և խնդրում «որպէս որդիք, որ խնդրեն ի հարանց»։

554 թ. Դվինի ժողովում ամրապնդվեցին հայ ազգային եկեղեցու հիմքերը, և եկեղեցին հետագա դարերում զգալի դեր պիտի խաղար հայ ժողովրդի կրթության, լուսավորության և ազգային ոգու ու մշակույթի պահպանման գործում։ Դվինի ժողովը հիմնականում ուղղված էր Բյուզանդիայի դեմ և այդ նկատի ունենալով, պարսիկները հայ եկեղեցական գործիչներին սիրաշահելու ու նրանց այդ գործունեությունը քաջալերելու նպատակով, հայ ազնվականությունից վերցնում են երկրի հարկահանության ժառանգական իրավունքը և այն հանձնում եկեղեցուն[6]։ Ժողովը վերջնականապես մերժում է նեստորականությունը, դատապարտում քաղկեդոնականությունը որպես նեստորականություն և նզովում Քաղկեդոնի ժողովը[7]։ Վերջնականապես հիմք է դրվում հայկական ազգային եկեղեցու ինքնուրույն գոյությանը։ Այս ժողովում պաշտոնապես ընդունվում է հայկական տոմարը[8]։ Հայ-բյուզանդական հարաբերությունների վատթարացման վրա մեծապես ազդում է այն հանգամանքը, որ իրադարձությունները տեղի են ունենում մարզպանական Հայաստանում, որը գտնվում էր կայսրության թշնամի Պարսկաստանի տիրապետության տակ։ Պարսկական արքունիքը բոլոր հնարավոր միջոցներով հրահրում ու խրախուսում էր հայերի թշնամանքը Բյուզանդիայի դեմ։

Հայաստանում շարունակվող պարսկաբյուզանդական մրցակցության պայմաններում պարսկական տիրապետությունը «խաղաղասեր» և հանդուրժող չի եղել։ Պարսիկները հայերի վրա պարբերաբար գործադրել են կրոնական բռն-

3 Մ. Օրմանյան, *Ազգապատում*, հ. Ա, § 367, էջ 545 են։

4 *«Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 74։*

5 *Նույն տեղում։*

6 *Տե՛ս* «Православный палестинский сборник», т. XI, вып. I, СПб., 1892, стр. 191, Ն. Ակինյան, *Դունայ 572-ի ապստամբութիւն և յաջորդ տասնամեայ շրջանը. «Հանդէս ամսօրեայ», յունուար, 1913, էջ 74։* Լ. Մելիքսեթ-Բեկ, *Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հ. Ա, Երևան, 1934, էջ 41։*

7 Ե. Տեր-Մինասեանց, *Հայոց եկեղեցու յարաբերութիւնները ասորւոց եկեղեցիների հետ, էջմիածին, 1908, էջ 111—112։*

8 Մ. Օրմանյան, *նշվ. աշխ., 372, էջ 553 են, 383, 386, էջ 569—574։*

*նություններ և վարչական կամայականություններ։ Ցիզտիբուզիտի վկայաբանությունից երևում է, որ մոգերը Դվինում հաճախակի բորբոքել են կրակը, որը լարված կացություն է առաջացրել հայերի ու պարսիկների միջև*[9]*։ Ինչպես հաղորդում է Ասողիկը, Խոսրով Ա-ն Հայաստանում մարզպան է նշանակում Դենշապուհին, որը Ոշտունիքում կառուցել է տալիս ատրուշան և հայերին ստիպում երկրպագել կրակ, իսկ դիմադրողներից շատերը նահատակվում են։ Պարսիկ իշխանավորներն անբարոյական կյանք էին վարում, բռնաբարություններ կատարում, արատավորում հայ ընտանիքի պատիվը։ Դենշապուհը «շատացոյց» այդ շնամոլությունը*[10]*։ Հայաստանում այնքան էին ծանրացել պարսիկ պաշտոնյաների ճնշումները, որ Խոսրովն ստիպված փորձում է միջոցներ ձեռնարկել*[11]*։ Նրա այդ զգույշ քաղաքականությունը պայմանավորված էր 540-ական թվականների պարսկաբյուզանդական պատերազմական գործողությունների վերսկսումով։ Այդ պատերազմն ավարտվեց 562 թ. կնքված 50-ամյա հաշտության պայմանագրով, որով վերջ էր տրվում երկարամյա պատերազմներին, սահմանային փոփոխություն չառաջացնելով Հայաստանում։ Հայաստանը շարունակում էր բաժանված մնալ երկու նվաճող պետությունների միջև՝ պահպանվում էր 385 թ. հաստատված սահմանագիծը։ Տասը տարվա կյանք ունեցող այդ դաշնագրի կնքումով չվերջացավ Հայաստանի նվաճման շուրջ մղվող պարսկաբյուզանդական դարավոր մրցակցությունը։*

*564 թ. Խոսրով Ա-ն Հայաստանի մարզպան է նշանակում Սուրեն Ճիհովր-Վշնասպին։ Նրա օրոք խիստ սաստկանում են պարսկական հարստահարությունների ու կամայականությունները։ Տիզբոնի արքունիքը նոր մարզպանին օժտել էր կառավարման բարձր իշխանությամբ։ Նա հենվում էր երկու հազարանոց սպառազեն այրուձիի վրա, որն իր հետ բերել էր Պարսկաստանից։*

*Անտեսելով 484 թ. Նվարսակի պայմանագիրը՝ մարզպանը ծանրացնում էր հարկերն ու տուրքերը, ուժեղացնում վարչական ճնշումներն ու ամեն կերպ ձգտում վերացնել Հայաստանի ներքին ինքնավարությունը։ Նախարարների դիմադրությունն ընկճելու և նրանց ահաբեկելու համար նա դիմում է անգամ ոճրագործության՝ սպանում է սպարապետ Վասակի որդի Վարդան Մամիկոնյանի եղբորը՝ Մանուելին*[12]*։ Այդ մեծ հանդգնություն էր և միաժամանակ արհամարհանք հայերի զինվորական ուժի հանդեպ։*

*Բյուզանդիայի դեմ մղած պատերազմի ավարտից հետո փոխվում է Պարսկաստանի մինչ այդ վարած եկեղեցական հանդուրժող քաղաքականությունը հայերի և մյուս ժողովուրդների նկատմամբ։ Սասանյան արքունիքում կրկին իշխող է դառնում պարսկական ազնվականության ու հոգևորականության երբեմնի կրոնական անհանդուրժողականությունը*[13]*։ Խոսրով Ա-ն VI դարի 40-ական թվականներից կրոնական հալածանք է սկսում քրիստոնյաների դեմ Պարսկաստանում, իսկ 60-ական թվականներից՝ նաև մարզպանական Հա-*

---

9 *«Վարք և վկայաբանութիւնք սրբոց», հ. Բ, 1874, էջ 125։*

10 Ստեփաննոս Ասողիկ, *Պատմութիւն տիեզերական, Պետերբուրգ, էջ 84*

11 *«Վարք և վկայաբանութիւնք սրբոց», հ. Բ, էջ 127։*

12 Թեոփանես Բյուզանդացի, *էջ 448։*

13 Լեո, *Երկերի ժողովածու, Բ, էջ 199։*

յաստանում, Աղվանքում և Վրաց աշխարհում[14]։ Դրությունն առավել ծանրանում է, «երբ Խոսրով Ա արքան մոգերի դրդմամբ հրամայում է զրադաշտական կրոնափոխման ենթարկել իր բոլոր հպատակներին, առաջին հերթին՝ հայերին։ Նա ավերում է բազմաթիվ վանքեր ու եկեղեցիներ, շատերին ձերբակալում ու բանտարկում... Հրամայում է ատրուշաններ կառուցել ամբողջ պարսկական Հայաստանում, ամենից առաջ Դվինում»[15]։

Պարսկական արքունիքի հարկային, վարչական ու կրոնական ճնշումները բորբոքում են հայ հասարակության բոլոր խավերի՝ շինականների, ազնվականության ու հոգևորականության դժգոհությունը, նպաստում Հայաստանում նոր ազատագրական շարժման ծավալմանը։

Ապստամբությունը կազմակերպում և գլխավորում են Հովհաննես Բ Գաբեղենացի կաթողիկոսը (557—574) և սպարապետ Վարդան Մամիկոնյանը։ Նախքան զենքի դիմելը սկզբում նրանք փորձում են պարսկական սաստկացած ճնշումները վերացնել խաղաղ ճանապարհով՝ արյունահեղությունից խուսափելու համար։ Կաթողիկոսը նախարարների հետ հավատացնում է մարզպանին, որ իրենք հնազանդ են և, որպես պարսից արքայի հպատակներ, կենթարկվեն նրա բոլոր հրամաններին, բայց կրոնի հարցում իրենք միանգամայն ազատ են և հավատափոխ չեն լինի։ Նրանք մարզպանին ցույց են տալիս Վաղարշ թագավորի (484—488) հետ կնքած պայմանագիրը, ըստ որի հայերին կրոնական ազատություն էր երաշխավորվում։ Կաթողիկոսը և նախարարները պահանջում են անհապաղ դադարեցնել ատրուշանների կառուցումը Դվինում, պնդում, որ իրենք ավելի շուտ կմեռնեն, քան կրոնափոխ կլինեն։ Չնայած այդ բոլոր նախազգուշացումներին, մարզպանը, սպառնալով խիստ պատժով, շարունակում է ատրուշաններ կառուցել։

Կաթողիկոսի կոչով երկրի բոլոր կողմերից հավաքվում է մեծ բազմություն, ստեղծվում է տասը հազարանոց բանակ։ Մարզպանը մեկնում է Տիզբոն՝ Հայաստանում ստեղծված լարված կացության մասին պարսկական արքունիքին զեկուցելու և համապատասխան հրահանգ ստանալու։ Հայերը լավ հասկանում էին, որ պարսից բռնակալ արքան ոչ մի դեպքում չի ներելու իրենց ըմբոստությունը, ուստի շարունակում էին նախապատրաստվել ապստամբության։ Հայերի նախորդ ելույթները ցույց էին տվել, որ սոսկ սեփական ուժերով պարսկական մեծ տերության դեմ պայքարելն անհնար է։ Ուստի նրանք պատգամավորություն են ուղարկում և օգնություն խնդրում հարևան Վրաց աշխարհից և Աղվանքից, որոնք ևս այդ ժամանակ, ենթարկվելով պարսիկ նվաճողների ճնշումներին, նախապատրաստվում էին ապստամբության։ Վրաստանում ազատագրական շարժման գլուխ կանգնած էր Գուրգենը, իսկ Աղվանից աշխարհում՝ Շերոյեն։ Հայերը դիմում են նաև Բյուզանդիայի՝ Պարսկաստանի դարավոր թշնամու, օգնությանը։ Նրանց համագործակցությանը տրվում է գաղափարական հիմնավորում։ Զրադաշտական և պարսիկների բռնադատությանը ենթարկված հայերը օգնություն են խնդրում քրիստոնյա կայսրությունից, իսկ

---

14 Տե՛ս Ն. Ակինյան, Եղիշէ վարդապետ և իր «Պատմութիւնն Հայոց պատերազմի», մ. Բ, էջ 544—545, 690—701։

15 *Н. В. Пигулевская,* Сирийские источники по истории народов СССР. М.—Л., 1941, Иоанн Ефесский, стр. 109—111. Տե՛ս նաև՝ Հայկ Մելքոնյան, Ասորական աղբյուրներ, հատ. Ա, էջ 13։

Բյուզանդիան պաշտպանում է «իր կրոնակիցներին»[16]։ Իրականում, սակայն, նա հետապնդում էր իր շահերը և հայերին օգնում էր որոշ հանգամանքներից ելնելով։

Հուստինիանոս Ա կայսրը ծանր ժառանգություն էր թողել իր հաջորդներին՝ ընդարձակ սահմաններով, բայց ֆինանսական ու ռազմական տեսակետից ուժասպառ եղած մի պետություն, որը գտնվում էր սնանկացման և կործանման եզրին[17]։ Նրա հաջորդ Հուստինոս Բ-ն (565—578) հարկադրյալ հրաժարվում է արտաքին թշնամիներից դրամով փրկագին վճարելու իր նախորդի քաղաքականությունից, դադարեցնում դրամական նպաստի վճարումը պարսիկներին, արաբներին, ավարներին և հոներին։ Բայց այդ չի թեթևացնում Բյուզանդիայի դրությունը ո՛չ Արևմուտքում, ո՛չ էլ Արևելքում։ Այստեղ խիստ սրվում են հակասությունները Պարսկաստանի հետ մի շարք հանգամանքների հետևանքով[18], բայց գլխավորապես այն պատճառով, որ կայսրությունը որոշում է պարսիկներին այլևս չվճարել 562 թ. պայմանագրով նախատեսված ամենամյա 500 լիտր ոսկին[19]։

Պատերազմը դառնում է անխուսափելի. բայց կայսրությունը, զուրկ լինելով անհրաժեշտ քանակությամբ զինվորական ուժից, գործադրում է իր փորձված դիվանագիտությունը և Պարսկաստանի դեմ կազմակերպում հարձակողական մի ընդհանուր ճակատ. նախատեսվում է պարսիկներին ջախջախել Միջին Ասիայից՝ վաչկատուն ցեղերի և արևմուտքից՝ բյուզանդական բանակի հարձակումով։ Կայսրությունը որոշում է վրացիների, աղվանների, մասնավորապես հայերի ազատագրական շարժումը ևս ծառայեցնել իր քաղաքականությանը։

Պարսկաստանի դեմ ապստամբելու և Բյուզանդիայի հետ դաշինք կնքելու հարցերի առնչությամբ համերաշխություն չկար հայ ֆեոդալական շրջաններում[20]։ Այդ հանգամանքն զգալիորեն թուլացնում է հայ ֆեոդալական ուժերը, սրում երկպառակությունները՝ ծանր հարված հասցնելով ազատագրական շարժմանը։

Ապստամբության նախօրյակին ապահովության նպատակով հայերը Թեոդոսուպոլիս են տեղափոխում Դվինի գանձերը, դիվանը և կաթողիկոսարանի թանկարժեք սպասքը։ Այնուհետև բանակցություններ են տեղի ունենում կայսեր հետ։ Հայերը, ինչպես վկայում են ժամանակակից պատմիչներ Եվագրիոսը և Գրիգոր Տուրացին, այդ նպատակով երկու անգամ «գաղտնի դեսպաններ ուղարկեցին Հուստինոսի մոտ», «խնդրելու նրա բարեկամությունը»[21]։ Կոստանդնուպոլսում բանակցություններն ավարտվում են նրանով, որ 570 թ. սեպտեմբերի 1-ի և նոյեմբերի 13-ի միջև կնքվում է հայ-բյուզանդական դաշինք[22], որի համաձայն մարզպանական Հայաստանը ապստամբության հաղ-

---

16 «Византийские историки», СПб., 1860, Менандр Византиец, стр. 404.

17 *И. Успенский,* История Византийской империи, т. I, ч. 2, стр. 608. *М. В. Левченко,* История Византии, М.—Л., 1940, стр. 100. *Н. В. Пигулевская,* Византия и Иран на рубеже VI—VII веков, М.—Л., 1946, стр. 58.

18 *Иоанн Ефесский,* стр. 138. *Н. В. Пигулевская,* Ук. соч., стр. 58.

19 Հովհաննես Եփեսացի, *էջ 377—378։*

20 *Հ.* Մանանդյան, *Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, Երևան, 1934, էջ 297։*

21 *Евагр.* Церковная история, Птг., 1853, стр. 256.

22 Մ. Չամչեան, *Պատմութիւն Հայոց, հ. Բ, էջ 284 են։*

թանակից հետո դուրս էր գալու Պարսկաստանի տիրապետությունից և մըտնելու էր Բյուզանդիայի գերիշխանության տակ, հայերն ազատորեն կատարելու էին իրենց «եկեղեցական ծեսերը»։ Կայսրությունը երբեք տարով նրանց ազատելու էր ամեն տեսակ հարկից[23]։

Բյուզանդիայի դիվանագիտական ակտիվացումն ու գործնական քայլերն, իհարկե, չեն վրիպում պարսիկների ուշադրությունից։ Պարսկաստանի համար Մերձավոր Արևելքում ստեղծվել էր քաղաքական-ռազմական տեսակետից ուժերի միանգամայն աննպաստ փոխհարաբերություն։ Ուստի նա փորձում է կանխել պատերազմը։ Հուստինոս Բ-ին ներկայանում է Խոսրով Ա-ի դեսպան Սեբուխտը։ Լրացել էր 562 թ. կնքած պայմանագրի տասը տարին, և կայսրությունը պետք է պարսիկներին վճարեր ամենամյա 500 լիտր ոսկին։ Նախքան զենքի դիմելը պարսկական արքունիքն իր դեսպանի միջոցով ուզում էր վերջնականապես պարզել հիշյալ գումարի վճարման վերաբերյալ կայսրության մտադրությունը և իմանալ, թե ինչ դիրք է նա գրավելու մարզպանական Հայաստանի նկատմամբ[24]։

Կայսրությունը կտրականապես հրաժարվում է պարսիկներին վճարել պահանջված գումարը, պատճառաբանելով, որ դրամով գնված բարեկամությունը ստրկական է ու ամոթաբեր։ Հուստինոս Բ-ն, որը շատ լավ հասկանում էր Հայաստանի ստրատեգիական և տնտեսական նշանակությունը Պարսկաստանի համար, պարսիկների ուշադրությունը շեղելու նպատակով, նրանց դրամական պահանջին անմիջապես հակադրում է հայերի ազատագրական շարժումը, չնայած պարսիկ դեսպանը, ինչպես վկայում է պատմիչը, խուսափում է այդ մասին խոսելուց. «Կայսրը հարցրեց Սեբուխտին. արդյոք նա մտադիր չէ՞ խոսելու պարսիկներին պատկանող Հայաստանի մասին։ Սեբուխտը պատասխանում է, որ իր արքան տեղեկացել է այդ երկրում տեղի ունեցած ոչ մեծ խռովության մասին և որ նա այնտեղ ուղարկել է մի մարդու, որը կարող է վերջ տալ անհանգստությանը և կարգ հաստատել ամենուրեք։ Այդ ժամանակ Հուստինոսը բացահայտորեն ասում է, որ եթե պարսկահայերն անջատվեն պարսիկներից, ապա նա իր մոտ կընդունի նրանց և եթե որևէ մեկը նրանց ճնշի, կպաշտպանի նրանց որպես իր հավատակիցների, զորքով կմտնի Պարսկաստան, Խոսրովին կտապալի և նրա տեղ գահին կդնի մեկ ուրիշին»[25]։ Հուստինոս կայսեր այդ խրոխտ ու հանդուգն պատասխանը փաստորեն նշանակում էր պատերազմ հայտարարել պարսիկներին։

Բյուզանդիայի հետ դաշնակցությունը, նրա օգնության և պաշտպանության շռայլ խոստումները թևավորում ու խրախուսում էին հայերին՝ ավելի համարձակ ձեռնամուխ լինելու ապստամբությանը[26]։

Նոր ապստամբական շարժմանը չմասնակցելու համար Սյունիքի իշխանը՝ Վահանը, 571 թ. վաղօրոք առանձնացավ մարզպանական Հայաստանից և իբրև առանձին շահր, անմիջականորեն ենթարկվեց Ատրպատականի մայրաքաղաք Գանձակում նստող Քուստ-ի-կապկոհ սպայապետության փոխարքային, որի բանակատեղը Սյունիքին սահմանակից Փայտակարան քաղաքում էր։

---

23 Евагр, նույն տեղում։ Иоанн Ефесский, стр. 112, 190.

24 Միքայել Ասորի, էջ 260։

25 Менандр, էջ 404—405։

26 Նույն տեղում, էջ 429—430։ Տե՛ս Վ. Կ. Իսկանյան, Հայ-բյուզանդական դաշինքը Պարսկաստանի դեմ (VI դար), ՊԲՀ, 1963, № 4 (23), էջ 51—62։

Սասանյան արքունիքը մեծ գոհունակությամբ ընդունեց Վահան Սյունու այդ քայլը և Սյունիքին միացվեց սահմանակից Արցախ նահանգը, որի Հաբանդ գավառը (այժմ՝ Վարանդա) փոխադրեց իր կենտրոնը Վահանը և, ինչպես ցույց է տալիս Անանիա Շիրակացու «Աշխարհացույցը», այնուհետև Հաբանդ գավառը կոչվեց «Սիսական-ոստան», իսկ Սյունիքի ամբողջ շահրը-իշխանությունը սասանյան իշխանությունում հայտնի էր «Սիսական» անունով[27]։ Հայաստանի մնացյալ մասերից Սյունիքի իշխանության այս անջատված վիճակը տևեց գրեթե 70 տարի (571—640)։ Սասանյան արքունիքում նորից բարձրացել էր Սյունիքի քաղաքական կշիռը։ Սյունիքի իշխանի գերագույն հսկողության ներքո էին գտնվում Ճորա պահակը և Դարբանդի ամրությունները։ Սյունիքի զորամասերը՝ «սիսականցիները», մեծ համարում ունեին սասանյան արքունիքում[28]։

## 2. ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ 572 Թ. ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ ՍԱՍԱՆՅԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ԴԵՄ ԵՎ ՊԱՐՍԿԱԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Հայերի ընդդիմությունից և կայսրության հետ համագործակցելուց զայրացած Խոսրով Ա-ն մարզպանին տալիս է 15.000-անոց նոր զորք և հրամայում անպայման Դվինում ատրուշան կառուցել, իսկ դիմադրողներին անխնա ոչնչացնել։ Ապստամբությունը Հայաստանում դառնում է անխուսափելի և շուտով ընդունում համաժողովրդական բնույթ, որին մասնակցում են հասարակության բոլոր խավերը[29]։

Հայկական ապստամբական հեծյալ ու հետևակ զորքը, որի զորականների թիվն արդեն հասել էր 20.000-ի, սպարապետ Վարդան Մամիկոնյանի հրամանատարությամբ հարձակվում է Դվինում գտնվող պարսից զորախմբի վրա, ջախջախում, սպանում Սուրեն մարզպանին և նրանց մնացորդներին հալածում երկրի սահմաններից դուրս։ Մարզպանի գլուխն ուղարկվում է Թեոդոսուպոլիս՝ բյուզանդական արևելյան զորահրամանատար Հուստինիանոսին[30]։ Դվինի գրավմանը մասնակցում էր կայսերական օժանդակ զորքը[31]։ Պարս-

---

27 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացույցի», Երևան, 1963, էջ 70։*

28 *С. Т. Еремян,* Армения в VI—VII вв., «Очерки истории СССР III—IX вв.», М., 1958, стр. 219, его же, Сюния и оборона Сасанидами Кавказских проходов, «Известия Арм. ФАН», 1941, № 7.

29 *«Պատմութիւն Սեբէոսի», աշխատասիրությամբ Գ. Վ. Աբգարյանի, 1979, էջ 68։*

30 *Թեոփանես Բյուզանդացու վկայությամբ (էջ 448) հայերն ապստամբել են Վարդի և Վարդանի գործակցությամբ։ Մի շարք հայ մատենագիրների մոտ (Սամուել Անեցի, Վարդան Արևելցի, Ստեփանոս Օրբելյան) շարժման ղեկավարը նույնպես կոչված է «Վարդ», որը վրիպակ է և պետք է կարդալ Վարդան* (E. Stein, Studien zur Geschichte Buzantinischen Reches, *էջ 37)։ Սեբեոսից և այլ պատմիչներից հայտնի է, որ ապստամբությունը գլխավորել է Վարդան Մամիկոնյանը։ Սակայն ստույգ չէ Ասողիկի տեղեկությունը, թե Վարդանն է սպանել մարզպան Սուրենին (էջ 84)։ Անանիա Շիրակացու «Յաղագս հարցման եւ լուծման» աշխատության ութերորդ հարցման մեջ ասված է, որ մարզպանին սպանել է Զորակ Կամսարականը (տե՛ս Ա. Աբրահամյան, Շիրակացու մատենագրությունը, Երևան, 1944, էջ 228), որը, հավանաբար, եղել է սպարապետի մերձավոր գործակիցներից մեկը։*

31 Սեբեոս, *էջ 67։* Միխայել Ասորի, *էջ 260։*

կաստանի դեմ ապստամբական դրոշ են պարզում և հայերին միանում նաև՝ հարևան բախտակից ժողովուրդները՝ վրացիներն ու աղվանները[32]։

Մարզպանի սպանությունն իրականում ազդարարում էր ապստամբության սկիզբը և պարտավորեցնում կայսրությանը գործադրել հայերի հետ կնքած պայմանագիրը։ Հայերի հետ միացած բյուզանդական զինվորական ուժերը գործում են պարսիկների դեմ։ Բայց կայսրությունն ամենևին նախապատրաստված չէր պատերազմի և, բնականաբար, չէր կարող անհրաժեշտ քանակությամբ զորք տրամադրել ապստամբներին թշնամու հանդեպ հաղթանակն ապահովելու համար։

Ապստամբությունը և պարսկաբյուզանդական վերահաս պատերազմը խիստ սպառնալից են դարձնում Հայաստանի վիճակը։ Անխուսափելի են դառնում պարսկական ներխուժումները։ Կասկածից վեր էր, որ պարսկական բռնակալ արքայի անողոք դատաստանին առաջին հերթին ենթարկվելու էին ապստամբության կազմակերպիչները։ Շատ նախարարներ և հոգևորականներ, այդ թվում կաթողիկոսն ու սպարապետը, իրենց ընտանիքներով փոխադրվում են Կ. Պոլիս՝ պարսիկների վրիժառությունից խուսափելու և պայմանագրին համապատասխան օգնական զորք ստանալու՝ երկիրը թշնամու ասպատակություններից պաշտպանելու համար։ Հայ հոգևորականները, նախարարներն ու ազնվականները, որոնց թիվը, հավանաբար, հասնում էր մի քանի հարյուրի, «ընդունվեցին մեծ պատվով և ստացան կայսերական նվերներ ու պարգևներ»։ Կայսրությունը սիրաշահում է նաև Հայաստանում մնացած իր կողմնակից հայ ազնվականներին՝ ուղարկելով նրանց «շատ ոսկի ու աստիճաններ»։ Նման վերաբերմունքի նպատակն էր հայ աշխարհիկ և եկեղեցական ֆեոդալական խավերին ավելի սերտ կապել Բյուզանդիայի հետ։

Պայմանները նպաստավոր համարելով, Հուստինոս Բ-ն Կ. Պոլիս ժամանած հայերից պահանջում է քաղկեդոնականություն ընդունել։ Այսպիսով, դեռ չձերբազատված պարսիկների կրոնական հալածանքից, հայերը ենթարկվում են բյուզանդացիների դավանափոխության հարկադրանքին։

Կաթողիկոսը, որը չնայած մինչ այդ եռանդուն պայքար էր մղել քաղկեդոնականության դեմ, հայ հոգևորականության և ազնվականության հետ մեկտեղ ստիպված տեղի է տալիս ու հաղորդվում պատրիարքի հետ[33], որպեսզի երկիրը կայսրության զինվորական օգնությունից չզրկվի[34]։ Հուստինոս Բ-ն հայ-բյուզանդական եկեղեցական միաբանությանը պաշտոնական բնույթ տալու նպատակով, Կ. Պոլսում շուտով գումարում է եկեղեցական ժողով, որտեղ հայերը պաշտոնապես ընդունում են քաղկեդոնականությունը[35]։

Մարզպանական Հայաստանի հայերն ստանալով հույների հետ կայացված դավանական միաբանության լուրը, խիստ բովանդակությամբ նամակ են

[32] ა. ბოგვერაძე, ადრეფეოდალური ქართული სახელმწიფოები VI—VIII საუკუნეებში. Տե՛ս საქართველოს ისტორიის ნარკვევები, ტომი II, თბილისი, 1973, էջ 268 են։

33 *Иоанн Ефесский*, էջ 112։ Տե՛ս Հայկ Մելքոնյան, *Ասորական աղբյուրներ*, հատ. Ա, էջ 391—392։

34 Ե. Տեր-Մինասյանց, *Հայոց եկեղեցու հարաբերութիւնները ասորւոց եկեղեցիների հետ*, Էջմիածին, 1908, էջ 115, Մ. Օրմանյան, *Ազգապատում*, հատ. Ա, § 379, էջ 563—565։

[35] Narratio de rebus Armeniae (տե՛ս *Բանբեր Մատենադարանի*, № 6, 1962, էջ 127)։ Այս ժողովին, ըստ Փոտի, մասնակցել են 300 եպիսկոպոսներ և վարդապետներ (էջ 182), իսկ ըստ Վարդան Արևելցու՝ 150 եպիսկոպոսներ (էջ 115)։

գրում կաթողիկոսին՝ դատապարտելով ազգային եկեղեցու ավանդույթներին հակասող նրա գործարքը[36]։

Կայսրությունն այդ ժամանակ հայերի հանդեպ ստանձնում է նոր՝ դաշինքը լրացնող պարտավորություններ, որի մասին կարևոր և հետաքրքրական տեղեկություն է հաղորդում բյուզանդական հեղինակ Մենանդրոսը։ Հուստինոս կայսրը, գրում է նա, «գաղթած պարսկահայերին և իբերներին երդումով խոստացավ, որ ինքը կգործադրի իրենից կախված բոլոր միջոցները՝ նվաճելու այն երկիրը, որտեղ նրանք ծնվել են, իսկ եթե նա ի վիճակի չլինի պատերազմ մղելու մինչև վերջ, ապա ծայրահեղ դեպքում երբեք չի հանձնի ո՛չ ապստամբության հանցավորներին, ո՛չ էլ նրանց ազգականներին, մի խոսքով ոչ ոքի նրանցից, ովքեր կցանկանային մնալ Հռոմեական կայսրության իշխանության ներքո»[37]։

Այդ նոր պարտավորությունները կարևոր էին, որովհետև կայսրության հետ հաճախակի տեղի ունեցող հաշտության բանակցությունների ժամանակ պարսիկները պահանջում էին իրենց հանձնել ապստամբության ղեկավարներին՝ նրանց պարսկաբյուզանդական սահմանագլխում կախելու համար։

Կոստանդնուպոլսի արքունիքն այդ խնդրում կատարում է իր խոստումը։ Բյուզանդիա գնացած հայ ֆեոդալական ազնվականությունն ընդգրկվում է կայսրության զինվորական ծառայության մեջ և հայկական դնդերով, նրա ուժերի հետ համագործակցած, մասնակցում պարսիկների դեմ մղած պատերազմին։ Այդ եղանակով կայսրությունը միաժամանակ քաղկեդոնականությանը հարողների և բյուզանդական իշխանությունը կամ կողմնորոշումը ճանաչողների թիվը ավելացնում էր։ Մարզպանական Հայաստանում ծագած ապստամբությունն առիթ է դառնում պարսկաբյուզանդական պատերազմի, որը կարճատև ընդհատումներով տևում է քսան տարի։ Ռազմական գործողությունների գլխավոր թատերաբեմ են դառնում Միջագետքը և Հայաստանը։

572 թ. ամռան վերջին բյուզանդական արևելյան բանակի գլխավոր հրամանատար Մարկիանոսը, գալով Օսրոենի մարզը, զորք է հավաքագրում և հաջորդ տարվա վաղ գարնանն ամայացնում պարսիկներին ենթակա Աղձնիքը[38]։

Միաժամանակ պատերազմական գործողություններ են ծավալվում Հայաստանում, որը պարբերաբար և անխնա ասպատակում են թե՛ պարսիկները և թե՛ բյուզանդացիները։ Բայց պարսիկների առաջին արշավանքներն ընդհանուր առմամբ հաջող չէին։ Նախ, ինչպես հաղորդում է Սեբեոսը, Սուրեն մարզպանի սպանության տարում զորքով Հայաստան է ներխուժում զորավար Վարդան Վշնասպը, բայց մի տարի անց ստիպված հեռանում է։ Ապա 573 թ. արշավում է նշանավոր զորավար Միհրան Միհրևանդակը կամ Ջուբինը՝ 20.000-անոց զորքով, ունենալով թագավորի հրամանը՝ Հայաստանում սրի քաշել բոլոր տղամարդկանց, իսկ երկիրը հիմնովին ամայացնել։ Պարսիկների անօրինակ դաժանություններից սարսափած շատ հայեր թաքնվում են անառիկ ամրություններում կամ փախչում հեռավոր վայրեր[38ա]։

---

36 Иоанн Ефесский, էջ 112։ Տե՛ս Հայկ Մելքոնյան, նշվ. աշխ., էջ 392։

37 Менандр, էջ 426։

38 Ավելի ճիշտ՝ Քաղիրթ գետից արևելք գտնվող՝ Սասանյաններին ենթակա Arzanene-Արզնարզինը։

38ա Սեբեոս, էջ 70։

Մծբինի մոտ տեղի ունեցած ճակատամարտին իրենց զորքերով մասնակցում են բյուզանդական Մարկիանոս և Հայաստանի արևմտյան մասի Հովհան զորավարները։ Հայերին օգնում են վրացիները, աբխազները և աղվանների թագավոր Սարը (Շերոյե)։ Հարկ եղած դեպքում կայսրությունն հայկական, վրացական և աղվանական զորամասերը դուրս էր բերում երկրից և տանում Միջագետք։ Միհրանը ծանր պարտություն է կրում։ Անհաջող էր նաև պարսիկների հաջորդ արշավանքը։ Միհրանից հետո պարսկական զորքով Հայաստան է արշավում «Փիլիպոս, Սյունեաց տէրը», որը Խաղամախի դաշտում, ապա Վանանդի Ութմըսու գյուղի մոտ տեղի ունեցած ճակատամարտում պարտություն է կրում, բայց Հայաստանում մնում է յոթ տարի[39]։

Պարսիկների կրած պարտությունները ցույց են տալիս, որ հայ-բյուզանդական միացյալ զորքը գերազանցել է թշնամու ուժերին[40]։ Հայկական զորագնդերի գլուխ էր կանգնել Վարդան Մամիկոնյանը։ Ապստամբ հայերին էին միացել վրացիներն ու աղվանները[41]։ Պատերազմում գլխավոր ուժն էին հայկական զորագնդերը[42], որոնց աջակցում էր բյուզանդական օժանդակ զորքը։ Հայաստանում գտնվող բյուզանդական զորավարները ենթարկվում էին Վարդան Մամիկոնյանի գերագույն հրամանատարությանը։

Պատերազմական գործողություններն այնուհետև ընթանում են փոփոխակի հաջողությամբ։ Բյուզանդիայի վիճակը ծանրանում է և՛ Արևելքում, և՛ Արևմուտքում, որտեղ Բալկաններում սպառնում են սլավոններն ու ավարները։ Տիբերիոսը (578—582), որը կառավարում էր հիվանդ Հուստինոս կայսեր փոխարեն, Խոսրով Ա-ին վճարելով 45.000 ոսկի, կնքում է սկզբում միամյա, ապա եռամյա զինադադար (575—578), որը, սակայն, Հայաստանի վրա չէր տարածվում[43]։

Հայերի վիճակն է՛լ ավելի է ծանրանում, երբ 576 թ. վաղ գարնանը պարսից զորքերի գլուխ անցած Հայաստան է ներխուժում Խոսրով Ա-ն։ Սեբեոսի վկայությամբ, Միհրան Միհրևանդակի և Խոսրով Ա-ի արշավանքներն ուղղված էին Վարդան Մամիկոնյանի դեմ[44]։

Այդ ժամանակ կայսրությունն Արևելքում ուներ 120—150 հազարանոց բանակ[45]։ Սակայն այդ ուժերը պարսիկների արշավանքի սկզբում ցրված էին Փոքր Ասիայում, Հայաստանում և Միջագետքում։ Գարնանը Հայաստանում պարսիկների երևալն անակնկալ էր, դրա համար էլ բյուզանդական զորավարներ Կուրսի և Թեոդորոսի զորքը դեռևս ժողովված չէր[46]։ Բացի այդ, գլխավոր հրամանատար Հուստինիանոսին չէր հաջողվել իր ուժերը ժամանակին փոխադրել Հայաստան՝ թշնամու արշավանքի լուրն ուշ ստանալու պատճառով։

Խոսրով Ա-ն Արտազ-Բագրևանդ գավառների վրայով անցնում է բյուզանդական Հայաստան։ Չկարողանալով գրավել Թեոդոսուպոլիսը, Խոսրովը շարժ-

39 Նույն տեղում։ Պարսիկների պարտությունների մասին հաղորդում է նաև Հովհաննես Եփեսացին (տե՛ս *Иоанн Ефесский*, стр. 112).

40 Նույն տեղում, էջ 113—129։

41 Theoph. Chron., I, էջ 448։

42 Միքայել Ասորի, էջ 272։

43 Սեբեոս, էջ 68։

44 Նույն տեղում։

45 *Иоанн Ефесский*, էջ 127։ Տե՛ս Հայկ Մելքոնյան, նշվ. աշխ., էջ 423։

46 *Менандр*, էջ 411։

վում է դեպի Փոքր Հայք։ Պարսկական բանակը Փոքր Հայքում չի հանդիպում տեղական բնակչության դիմադրությանը։ «Փոքր Հայքի հարկատուները,— ասում է Մենանդրոսը,— ոչ միայն չլքեցին դաշտերը և չփախան, այլ ընդհակառակը, պարսկական զորքին պարեն մատակարարեցին»[47]։ Այդ հանգամանքը, անշուշտ, հետևանք էր բյուզանդական ճնշումների պատճառով հայերի մեջ ծագած դժգոհության։ Կայսրությունը պատերազմի պայմաններում իսկ շարունակում էր հայերին ենթարկել դավանական հալածանքի։ Տիբերիոս կայսեր օրոք Կ. Պոլսում գումարվում է հայ և հույն հոգևորականության նոր ժողով, որը դատապարտում է հայոց եկեղեցու դավանանքը[48]։

Խոսրովն այնուհետև շարժվում է դեպի Կապադովկիական Կեսարիա։ Պարսիկները Կապադովկիայում հանդիպում են բյուզանդական կենտրոնացված զորքի լուրջ դիմադրությանը և Կեսարիան գրավելու անհաջող փորձից հետո ստիպված շարժվում են Սեբաստիա-Մելիտենե քաղաքների ու Եփրատ գետի ուղղությամբ[49]։ Վարդան Մամիկոնյանն իր զորքով նույնպես անցնում է Եփրատը՝ Հուստինիանոսի ուժերին միանալու համար։ Բյուզանդական բանակը պարսիկների դեմ Կապադովկիական Կեսարիայի և Մելիտենեի մոտ մղած երկու ճակատամարտերում հաղթում է[50]։ Խոսրովն իր զորքի մնացորդներով անցնում է Եփրատը և Աղձնիքի վրայով հեռանում Պարսկաստան։ Հայկական և բյուզանդական միացյալ բանակն առաջ է շարժվում մինչև Սյունիք, Աղվանք և Ատրպատական։ Ողջ Հայաստանն անցնում է բյուզանդական տիրապետության տակ։ Կայսրությունը, սակայն, տարբեր վերաբերմունք է ցույց տալիս նրա բնակչությանը։ Բյուզանդական զորքը Հայաստանի արևելյան մասում գործում է բռնություններ ու դաժանություններ[51]։

Հայ հոգևորականությունն ստիպված դիմում է Տիբերիոս կայսրին՝ պահանջելով վերջ տալ այդ անօրինակ բռնություններին[52]։ Իսկ դրան հակառակ կայսրությունն իրեն կողմնակից հայ ֆեոդալական խավերին սիրաշահում է՝ տալով պարգևներ և զորք[53]։

Բյուզանդիան և Պարսկաստանը, կորցնելով հաղթանակ տանելու հույսը, ձեռնամուխ են լինում հաշտության բանակցություններին։ Բայց բանակցությունները դեռ չավարտված, Հայաստանում տեղի է ունենում պատերազմող կողմերի ուժերի հարաբերակցության անսպասելի փոփոխություն, ի վնաս կայսրության։

577 թ. աշնանը Տամ-Խոսրով զորավարն օգտվելով բյուզանդացիների անհոգությունից, և նրանց կեղեքումների պատճառով հայերի շրջանում ծագած դժգոհություններից, 30 հազար զորքով մտնում է Հայաստան և հանկարծակի հարձակվում Հուստինիանոսի 120 հազարանոց բանակի վրա ու խուճապի մատնում։ Երկու ճակատամարտերում՝ Բասենում և Բագրևանդում բյու-

---

47 Նույն տեղում։

48 Անանիա Շիրակացի, էջ 397։ Մ. Օրմանյան, նշվ. աշխ., § 390, էջ 579—581։

49 Иоанн Ефесский, էջ 113։ Տե՛ս Հայկ Մելքոնյան, նշվ. աշխ., էջ 425։

50 Նույն տեղում, էջ 113, 128։ Սեբեոս, էջ 68, 70։

51 Менандр, էջ 424, Միքայել Ասորի, էջ 273—274, հմմտ. Иоанн Ефесский, էջ 129։ Տե՛ս Հայկ Մելքոնյան, նշվ. աշխ., էջ 429։

52 Միքայել Ասորի, նույն տեղում։

53 Иоанн Ефесский, էջ 113։ Հայկ Մելքոնյան, նշվ. աշխ., էջ 431։

ղանդացիները ծանր պարտություն են կրում[54]։ Մարզպանական ողջ Հայաստանը նորից գրավում են պարսիկները։ Երբ Տամ-Խոսրովը խոստանում է Հայաստանում ատրուշան չկառուցել, պարսիկներին դիմադրող 20.000 բնակչությամբ հայկական մարզը դուրս է գալիս Բյուզանդիայի գերիշխանությունից և ենթարկվում Պարսկաստանին[55]։ Հայ-բյուզանդական համագործակցությունը և դաշինքը քայքայվում են։

Չնայած մարզպանական Հայաստանում ազատագրական շարժումը Պարսկաստանի դեմ դադարեց, բայց այն մեծ դեր խաղաց երկրի հետագա կյանքում։ Ապստամբությունը ոչ միայն նոր, հզոր հարված հասցրեց հայ ժողովրդի ազգային ինքնուրույնությանն սպառնացող պարսիկ նվաճողների ոտնձգություններին, այլև սրահպանեց ու ամրապնդեց նախորդ դարի ազատագրական պայքարի նվաճումները։

Այդ ժամանակ Բյուզանդիայի դրությունը ծանրացել էր նաև հյուսիսում։ Մոտ 100.000 սլավոններ անցել էին Դանուբը և բնակություն հաստատել Բալկաններում։ Տիբերիոս կայսրն ստիպված զինվորական զգալի ուժեր է տեղափոխում Բալկաններ։

577—578 թթ. ձմռանը բյուզանդական արևելյան բանակի գլխավոր հրամանատար է նշանակվում և Հայաստան ուղարկվում Մավրիկիոսը (Մորիկը), որը Տիբերիոսի մահից հետո դառնում է կայսր (582—602)։ Նա զինվորական մեծ ուժեր է հավաքագրում պարսիկների դեմ։ Տամ-Խոսրովը հեռանում է Հայաստանից։ Բայց թշնամի զորքերը շարունակում են ավերածություններ գործել, բնակչությանը սրի քաշել ու գերեվարել, շատ են տուժում հատկապես երկրի հարավային նահանգները։ 578 թ. բյուզանդացիներն անխնա ամայացնում են Աղձնիքը և 10.000 հայ բնակիչների վերաբնակեցնում Կիպրոս կղզում[56]։ Ամայացվում են նաև Հայաստանի մյուս շրջանները, հատկապես կենտրոնական գավառները։

590 թ. պարսկական բանակի՝ Վահրամ Չուբինի գլխավորած ապստամբությունը փոխում է 20-ամյա պատերազմի ընթացքը՝ հօգուտ Բյուզանդիայի։ Սասանյան արքունիքում միաժամանակ կազմակերպվում է դավադրություն Որմիզդ Դ արքայի (579—590) կնոջ եղբայրների՝ Վնդոյի և Վստամի գլխավորությամբ։ Որմիզդը զոհ է դառնում պալատական հեղաշրջման։ Գահակալում է նրա որդի Խոսրով Բ Փարվեզը (590—628), որը Մծբինի մոտ տեղի ունեցած ճակատամարտում ծանր պարտություն է կրում խռովարար զորավարից և իր կանանոցի հետ 30 թիկնապահների ուղեկցությամբ փախչում է Բյուզանդիա։ Վահրամ Չուբինը մտնում է Տիզբոն և իրեն հռչակում պարսից արքա։ Պարսկական գահի երկու հավակնորդները դիմում են կայսրության օգնությանը, յուրաքանչյուրը խոստանալով նրան տերիտորիալ ընդարձակ զիջումներ։ Մորիկ կայսրը պաշտպանում է օրինական արքային՝ Խոսրով Բ-ին, որին կայսրը տրամադրում է բյուզանդական, հայկական, վրացական և աղվանական զորամասեր[57]։ Այդ զորքի գլուխ է նշանակվում բյուզանդական արևելյան ուժերի գլխավոր հրամանատար Կոմենցիոլը, որին շուտով փոխարինում է հայազգի

54 Սեբեոս, էջ 71։

55 *Иоанн Ефесский*, 113, 130։ Հայկ Մելքոնյան, նշվ. աշխ., էջ 390, 424։

56 Նույն տեղում, էջ 113, 143, 146։ Տե՛ս Հայկ Մելքոնյան, նշվ. աշխ., էջ 390, 431, 436։

57 «Թովմայի վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն Տանն Արծրունեաց», Թիֆլիս, 1917, էջ 148—149։

Ներսեսը։ Հայաստանի բյուզանդական զորքի հրամանատարն էր Հովհան Մյուստակոնը, իսկ հայ նախարարական զորագնդերինը, որոնց քանակը հասնում էր 15.000 զինվորի, Մուշեղ Մամիկոնյանը։ Նրա հետ էին անվանի զորավար Սմբատ Բագրատունին («Բագմահաղթը») և Սասունի Խութեցի իշխանը[58]։ Կայսեր ուղարկած օգնական զորքերի ընդհանուր թիվը, ըստ հույն և արաբ պատմիչների, կազմում էր 60.000, իսկ Վահրամ Չուբինի՝ 40.000[59]։

Վահրամ Չուբինն այդ ժամանակ նախարարական զորագնդերին բյուզանդացիներից անջատելու և իրեն դաշնակից դարձնելու նպատակով Մուշեղ Մամիկոնյանին և նրա հետ եղած նախարարներին խոստանում է իր հաղթանակի դեպքում վերականգնել Հայոց թագավորությունն իր նախկին սահմաններում[60]։ Հայ զորականները վճռականորեն մերժում են առաջարկը։ Ատրպատականում տեղի ունեցած ճակատամարտում Վահրամ Չուբինի զորքը ջախջախվում է, իսկ ինքը փախուստի է դիմում, սակայն շուտով սպանվում է։

Խոսրով Բ Փարվեզը (590—628), վերահաստատվելով գահին, ճոխ պարգևներով վարձահատույց է լինում բյուզանդական ու հայկական զորքերին։

## 3. 591 Թ. ՊԱՐՍԿԱԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ

591 թ. Մորիկ կայսեր և Խոսրով Բ-ի միջև կնքվում է հաշտության պայմանագիր, որով վերջ է տրվում պարսկաբյուզանդական 20-ամյա պատերազմին։ Հայաստանում գծվում է երկու տերությունների նոր սահմանագիծ, որը որոշվում է շնորհիվ Անանիա Շիրակացու «Աշխարհացույցի»։ Հաշտության կնքման և նոր սահմանագծի հաստատման հարցը, ինչպես երևում է, քննարկվել է երկու անգամ. ա) Բյուզանդիայում Խոսրով Բ-ի գտնվելու ժամանակ տեղի ունեցած նախնական բանակցություններում. բ) Պարսկաստանում գահին նոր վերահաստատվելուց անմիջապես հետո վերջնականապես կնքված հաշտության պայմանագրով։

Խոսրովի առաջին նամակում (որ դեսպանությամբ ուղարկվել է բյուզանդական կայսեր Կիրկեսիոն քաղաքից), ոչ մի խոսք չկա հողային խնդրի վերաբերյալ, այն պարզ մի խնդրագիր է կայսրին՝ իրեն օգնելու գահին վերահաստատվելու համար, ինչպես հայրը որդուն։ Հիերապոլսից ուղարկված երկրորդ դեսպանությունը կայսեր և պալատականների առաջ արտասանած իր ճառում ցույց տվեց, թե Պարսկաստանը բյուզանդական օգնության դիմաց ինչ հողային զիջումներ է կատարելու Արևելքում, ինչպես և Հայաստանում։ «Մենք,— ասում է երկրորդ դեսպանության ներկայացուցիչը,— կվերադարձնենք ձեր Մարտիրուպոլիսը, անվճար կզիջենք Դարան, խոր գերեզմանում մենք կթաղենք պատերազմը, առանց որևէ հատուցման կհամաձայնենք հաշտության, կհրաժարվենք Հայաստանից, որի պատճառով պատերազմը հասավ մարդկանց վշտացնելու այդպիսի ուժի»[61]։ Թե ինչ էին խոստանում զիջել մարզպանական

---

58 Մ. Չամչյան, նշվ. աշխ., էջ 297։ Հայկական զինդերի պատկերավոր նկարագիրը տե՛ս Սեբեոս, էջ 77։

59 *Н. Пигулевская,* Византия и Иран..., стр. 163.

60 Սեբեոս, էջ 77—78։ Հմմտ՝ Թովմա Արծրունի, էջ 150։

61 *Theophil,* Simocatta, էջ 112։

Հայաստանից, հանվանե նշվում է կայսրին ուղարկած Խոսրովի պաշտոնական գրության մեջ, որի մասին հաղորդում է Սեբեոսը։ Խոսրովը, կայսրից խնդրվող օգնության փոխարեն խոստանում էր կայսրությանը զիջել Ասորեստանի կողմերը, մինչև Մծբին քաղաքը և Տանուտիրական իշխանության ներքո գտնվող Հայոց երկիրը «մինչև Այրարատ և Դվին քաղաքը, և մինչև Բզնունյաց ծովի եզրը և Առեստավանը. և Վրաց աշխարհի մեծ մասը, մինչև Տփղիս քաղաքը»[62]։ Մարզպանական Հայաստանի մեծ մասն անցնելու էր բյուզանդական տիրապետության տակ։

Մարզպանական Հայաստանում պարսիկների տերիտորիալ զիջումները կայսրությանն ավելի որոշակի են դառնում 591 թ. կնքված պայմանագրով։ Այդ մասին դժբախտաբար աղբյուրների տեղեկությունները աղքատիկ են և ընդհանուր։ Ըստ Narratio de rebus Armeniae գրության անանուն հեղինակի (VII դ.) Խոսրովը «ամբողջ Հայաստանը մինչև Դվին տվեց Մավրիկիոս կայսեր»[63]։ Խոսրովը հաստատվելով գահին, ասում է Սեբեոսը, «կատարեց կայսրին տված խոստումը։ Նա կայսրությանը հանձնեց ողջ Արուաստանը (մինչև Մծբին) և Հայոց երկիրը, որն իր իշխանության տակ էր. Տանուտիրական տունը[64] մինչև Հրազդան գետը, Կոտեից գավառը մինչև Գառնի ավանը և Բզնունյաց ծովի ափը, նաև Առեստավանը և Կոգովիտ գավառը, մինչև Հացյուն ու Մակու»։ Սեբեոսն ասում է, որ «կողմն Վասպուրական գնդին» Պարսից արքայի ծառայությանն էր և հայոց նախարարների մեծ մասը հույների բաժնում էին, իսկ պարսիկների բաժնում դրանք փոքր թիվ էին կազմում։ Խոսրովը զիջեց նաև Վրաց աշխարհի մեծ մասը՝ մինչև Տփղիս քաղաքը[65]։

Սեբեոսի մոտ Խոսրովի նախնական հողային խոստումների թվարկման և հետագա հանձնման մեջ, ինչպես երևում է, կար տարբերություն, բայց Պարսից արքան հիմնականում կատարել է խոստացածը։ Նոր սահմանագծի վերաբերյալ Սեբեոսի տեքստում կան անճշտություններ։ Նոր սահմանը կազմել է ոչ թե Հրազդանը, այլ ըստ մյուս աղբյուրների հավաստի տեղեկության, նրանից արևելք գտնվող Ազատ գետը[66]։ Սակայն սահմանագիծը անցնում է Հրազդանի և Սևանա լճի միջև։

---

62 Սեբեոս, էջ 84, հմմտ. Թովմա Արծրունի, էջ 148։

63 Տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 6, էջ 466։

64 Մինչև 591 թ. տանուտիրական իրավունքից օգտվող Տանուտիրական տուն, գունդ կամ երկիր կոչված տերիտորիալ միավորը բաղկացած էր Այրարատից, Տուրուբերանից (կամ Տարոնից) և Տայքից (Н. Адонц, նշվ. աշխ., էջ 131, 133—134)։ Հայաստանի նոր բաժանումից հետո Այրարատը, Տուրուբերանը և Տայքը կազմում են վարչական առանձին միավորներ։

65 Սեբեոս, էջ 84, հմմտ. Թովմա Արծրունի, էջ 152։ Վարդան Արևելցի, էջ 83, Սեբեոսի բնագրում կան փոքրիկ վրիպակներ, որոնք հեշտությամբ կարելի է սրբագրել և ուղղել (Հ. Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, Վիեննա, 1907, էջ 44)։

66 Հովհաննես Դրասխանակերտցի, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 67—68, 73, Narratio de rebus Armeniae, էջ 467։ Հմմտ. Արսեն Սափարացի, էջ 43։ Սեբեոսի կողմից Գառնիի, որպես նոր սահմանային բնակավայրի հիշատակումը ևս ցույց է տալիս, որ սահմանը կազմել է Ազատ գետը, որովհետև Գառնիի բերդը, ինչպես հայտնի է, գտնվում է այդ գետի աջ ափին, իսկ ինքը՝ Գառնին, մտել է ոչ թե Կոտայքի, այլ նրանից արևելք գտնված Ոստան Հայոց գավառի մեջ։ Սեբեոսի «Մինչև ցավանն Գառնի» դարձվածքից պետք է հետևեցնել, որ Գառնին չէր անցել Բյուզանդիային, իսկ քանի որ այն գտնվում է Ազատ գետի աջ ափին, նշանակում է այդ գետն իր վերին հոսանքում պարսկաբյուզանդական սահման չի կազմել։ Ճիշտ նշված է, որ Սեբեոսի մոտ «ց»(-մինչև) նախդիրով հիշատակված բնակավայրերը (Գառնի, Առեստ, Հացյուն,

Այդպիսով նոր սահմանագծի հյուսիսում սահման պետք է ընդունել ոչ թե Հրազդանը, այլ Ազատ գետը և սրա վերին հոսանքի աջ ափին գտնվող Գառնի ավանը։ Կոտայք գավառը դարձել է բյուզանդական, իսկ Ոստան Հայոց գավառը մնացել պարսկական։ Դրանցից հարավ, ըստ Սեբեոսի, Բյուզանդիային էր անցել Կոգովիտ գավառը և մինչև Վանա լիճը սահմանային կետեր էին Հացյունը[67], Մակուն և Առեստ ավանը, որոնք մնացել էին պարսիկներին։ Մակուն գտնվում էր Կոգովիտից հարավ-արևելք ընկած Արտազի (այժմյան՝ Մակու շրջան) արևմտյան մասում, որը Վասպուրականի գավառներից էր և մնացել էր պարսիկներին։ Նոր սահմանագիծն այնուհետև անցնում է Առեստ ավանով մինչև Ընձաքիսար լեռը, Վանա լճի արևելյան մասը թողնելով Պարսկաստանին։ Նրանից հյուսիս գտնվող գավառները (Տարոն, Բզնունիք, Խորխոռունիք, Հարք, Ապահունիք և այլն) կազմեցին նոր՝ Տուրուբերան անունով վարչատերիտորիալ միավորը և Այրարատի արևմտյան մեծ մասի հետ անցան Բյուզանդիայի տիրապետության տակ[68]։ Վասպուրականը և Մոկքը մնացին Պարսկաստանին։ Աղբյուրների տեղեկությամբ պարսկաբյուզանդական նոր սահմանագիծը Հայաստանում ընդհատվում էր Ընձաքիսար (կամ Կապուտ կող) լեռով, որը գտնվում էր Վասպուրականում՝ Վանա լճի հարավարևմտյան ափին։ Աղձնիքը ևս 591 թ. պայմանագրով անցել է Բյուզանդիային[69]։

Հայաստանի հետ նաև Վրաց աշխարհը բաժանվել էր Բյուզանդիայի և Պարսկաստանի միջև. այստեղ սահմանն անցնում էր Տփղիսի վրայով*։ Խոսրով Բ Փարվեզը, զիջելով Բյուզանդիային Հայաստանի, Վրաց աշխարհի և հյուսիսային Միջագետքի մեծ մասը, այնուամենայնիվ, նշված երկրների ամենակարևոր ռազմաստրատեգիական և տնտեսական նշանակություն ունեցող կետերը թողել է սասանյան աշխարհակալության սահմաններում։ Սկսած հյուսիսից, Բյուզանդիային անցել է Վրաց աշխարհը, առանց Ալանաց դռների և ռազմավիրական ճանապարհի (Արագվի գետի հովտում) և Վրաց բդեշխի ոստանի։ Հայաստանից կայսրությանն անցել է «Երկիր տանուտերական գընդին» կոչված տարածքը, այն է՝ Այրարատ նահանգը՝ առանց Դվինի ոստանի (Ոստան Հայոց գավառը), Տուրուբերան, Տայք և Աղձնիք նահանգները։ Մարզպանական Հայաստանից Սասանյան Իրանին մնում էին միայն վերոհիշյալ Դվինի ոստանը (որտեղ գտնվում էր Հայոց մարզպանի նստավայրը) և Վասպուրականի ու Մոկքի նահանգները։ Սասանյան Իրանին ենթակա այս մասը այնուհետև կոչվեց «Կողմն վասպուրական գնդի»։ Բացի այդ, այս երկրամասից արևելք գտնվում էր 571 թ. մարզպանական Հայաստանից անջատված Սյունիքը, որն Արցախի հետ միասին ժամանակավորապես դարձել էր առան-

---

Մակու) չեն անցել Բյուզանդիային, այլ մնացել են պարսիկների ձեռքում (Հ. Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 45)։

67 Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույցի», էջ 62։

68 Н. Адонц, նշվ. աշխ., էջ 230—235։

69 Հ. Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 46։

* Ս. Տ. Երեմյանը, ղեկավարվելով Անանիա Շիրակացու «Աշխարհացույցի» տվյալներով, լրիվ պարզել է 591 թ. սահմանագիծը։

ծին վարչական միավոր՝ «Սիւնիք» կամ «Սիսական» անունով[70]։ Մագիստրոսի նստավայրը Մավրիկիոսը փոխադրեց Շիրակաշատ ավանը, որն այնուհետև կոչվեց Մավրիկապոլիս (այժմ՝ Մաւրակ)[71]։

## 4. ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՄՈՐԻԿ ԿԱՅՍԵՐ ՕՐՈՔ

Հայաստանի նոր բաժանման ժամանակ նրա արևմտյան մասում իշխում էր բյուզանդական կարգը, իսկ նոր նվաճվածում՝ նախարարականը։ Կայսրությունը ձգտում էր Հայաստանի նոր նվաճած ընդարձակ հատվածում ևս իրականացնել բյուզանդական վարչական բաժանում, որին Մորիկ Կայսրը ձեռնամուխ է լինում Պարսկաստանի հետ պայմանագիր կնքելուց անմիջապես հետո։ Այդ մասին մանրամասն տեղեկություն է տալիս Հովհաննես Դրասխանակերտցին[72]։ Վերջինիս այս վկայությունը նոր վարչական բաժանման մասին աղբյուրների շարքում գրեթե միակն է[73], որի վերաբերյալ, սակայն, պատմագրության մեջ կատարվել են լուրջ և հիմնավոր դիտողություններ ու վերապահումներ, մատնացույց են արվել անճշտություններ ու սխալներ։ Մորիկ կայսեր կողմից Առաջին Հայքը Երկրորդ Հայք վերանվանելու մասին պատմիչի տեղեկությունը համապատասխանում է «Աշխարհացոյցի» տեղեկության։ Գոյություն ունեցող գրականության մեջ չեն հասկացվել այս փաստերը և համարել են, որ այն շփոթված է Հուստինիանոսի ռեֆորմների հետ[74]։ Ս. Տ. Երեմյանի ուսումնասիրությունները պատմաքարտեզագրական մեթոդով ցույց են տալիս Հովհաննես Դրասխանակերտցու տեղեկությունների ճշտությունը։ Նրանք ստուգվում են Անանիա Շիրակացու «Աշխարհացոյցի» տվյալներով, ինչպես նաև մոտ 600 թ. գրված Գևորգ Կիպրացու աշխատությունով[75]։

Ճիշտ պետք համարել նաև Դրասխանակերտցու այն վկայությունը, որ Երրորդ Հայքը՝ Մելիտենե կենտրոնով Մորիկ կայսրը վերանվանել է Առաջին Հայք, իսկ Երկրորդ Հայքը՝ Սեբաստիա կենտրոնով՝ Երրորդ Հայք։ Հուստինիանոս Ա-ի ժամանակ կազմակերպված Առաջին Հայք պրովինցիան Մորիկ կայսրը բաժանում է երկու մասի։ Հյուսիսային ծովափնյա մասը Տրապիզոն կենտրոնով անվանել է «Մասն Մեծ Հայոց», իսկ նրանից հարավ գտնվող Կարինի երկիրը՝ «Մեծ մասն մեծ Հայոց», կենտրոն ունենալով Կարին-Թեոդոսուպոլիս քաղաքը։ Այս «եպարքին» կամ պրովինցիան ճշտիվ համապատասխանում է «Աշխարհացոյցի» «Բարձր Հայք» նահանգին։

---

70 *С. Т. Еремян,* Армения в VI—VII вв. в кн. «Очерки истории СССР, III—IX вв.», М., 1958, стр. 225. 591 թ. սահմանագիծը նշված է Ս. Տ. Երեմյանի կազմած հետևյալ քարտեզներում՝ «Հայաստանը V—VII դդ.» (Ս. Տ. Երեմյան), Византийско-иранская граница IV—VI вв. Атлас истории средних веков. Второе изд. ГУГК, М., 1956, с. 5, карта 5а (Государства Закавказья в IV—VII вв.). Атлас истории СССР, ч. I. М., 1948, с. 5, карта 5б).

71 *С. Т. Еремян,* Армения в VI—VII вв., նշված գրքում։

72 Յովհաննէս Դրասխանակերտցի, *Պատմութիւն Հայոց*, Թիֆլիս, 1912, էջ 67—69։

73 Այս նույն հատվածը գրեթե կրկնում է Վարդան վարդապետը. տե՛ս նրա՝ «Հաւաքումն պատմութեան», Վենետիկ, 1862, էջ 59։

74 Տե՛ս Հ. Գելցեր, *Սկզբնաւորութիւնք բիւզանդական բանակաթէմերու դրութեան*, Վիեննա, 1903, էջ 19—20։ Հ. Հյուբշման, *Հին Հայոց տեղւոյ անունները*, 1907, էջ 49։ Н. Адонц. Նշվ. աշխ., էջ 66։

75 *Georgii Cyprii* Descriptio Orbis Romani, ed H. Gelzer, Lipsiae, 1893.

Վերջինից հարավ գտնվում էր Հուստինիանոս Ա-ի ժամանակ կազմված Չորրորդ Հայքը՝ Աշմուշատ (Արշամաշատ) կենտրոնով։ Մորիկ կայսրը որոշ փոփոխություններ է մտցնում։ Չորրորդ Հայքի Անգեղ տուն գավառը նա առանձնացնում է և մնացյալ տարածքը կազմում է Չորրորդ Հայքը՝ Դադիմոն կենտրոնով, իսկ Անգեղտուն (Ինգիլենե) գավառը Տիգրանակերտ կամ Նփրկերտ գավառի հետ միացնում է կայսրության անցած Աղձնիքի բդեշխության տարածքին։ Նոր պրովինցիան կոչվում է, ըստ երևույթին «Մեծ Ծոփք» և համապատասխանում է «Աշխարհացույցի» «Աղձնիք» նահանգին։ Կենտրոնն էր Մարտիրուպոլիսը կամ Նփրկերտը։ Այս քաղաքը կոչվեց «Յուստինիանուպոլիս»։ Այս «Մեծ Ծոփքից» հարավ գտնվում էր «Վերին Միջագետք» պրովինցիան։

Չորրորդ Հայքը՝ Դադիմոն կենտրոնով կոչվեց «Չորրորդ Յուստինիանիա», սակայն արաբական նվաճումներից հետո VII դարի կեսերին նորից կոչվեց «Չորրորդ Հայք»։ Այստեղ ռազմական ուժերի կենտրոն էր Հաշտյանք գավառի Կիթառիճ ամրոցը, ոչ հեռու պարսկաբյուզանդական սահմանագծից։ Այնուհետև սովորություն է դառնում Բյուզանդիայի իշխանության տակ գտնվող Չորրորդ Յուստինիանեին Չորրորդ Հայք անունը տալ, ինչպես այդ երևում է Թեոփանեսի, Ստեփանոս Տարոնացու և այլ պատմիչների երկերից։

591 թ. բաժանման հետևանքով Բյուզանդիային անցած հայկական հողերը՝ «Երկիր տանուտիրական գնդին» կոչված, ստանում են վարչական նոր բաժանում։ Այրարատ նահանգը (ըստ «Աշխարհացույց»-ի ամբողջովին անցնում է կայսրության, բացի Հայոց մարզպանի ոստանից՝ Դվին մայրաքաղաքով, որը կոչվում էր «Ոստան Դըւնոյ»։ Ըստ նոր բաժանման, Այրարատ նահանգը կոչվում է «Ներքսագոյն Հայք» կամ «Կողմն Դվին քաղաքի» և Ազատ գետով բաժանում է կայսրությանն անցած Այրարատը։ «Ներքսագոյն Հայք» պրովինցիայի կենտրոնը պիտի դառնար Մավրիկապոլիսը (Շիրակաշատ ավանը), որտեղ այնուհետև նստում էր Արևելքի մագիստրոսը։

Այրարատից հարավ գտնվում էր «Աշխարհացույցի» Տուրուբերան (կամ «Տաւրոյբերան») նահանգը, որը դարձավ առանձին պրովինցիա՝ «Մեծ Հայք» անունով։ Այս անունով գիտեն Տուրուբերան նահանգը նաև ուշ շրջանի արաբական ու պարսկական աղբյուրները։ Բյուզանդիային անցած մարզպանական Հայաստանի հողերից պիտի հիշել Տայք նահանգը, որը մնաց նույն տարածքում և կոչվեց «Խորագոյն Հայք»։ Վերջինիս կենտրոնը պիտի լիներ Բանակը (վրաց. Բանա)։

Ինչպես տեսնում ենք, Մորիկ կայսրը կայսրությանն անցած Հայաստանի մասը ենթարկել է վարչական նոր բաժանման և հետևողականորեն շարունակել Հուստինիանոսի ռեֆորմներն ավելի ընդարձակ սահմաններով՝ նախարարական կարգը ոչնչացնելու և երկիրը վարչականորեն կայսրության հետ ձուլելու համար։

Հայաստանում Մորիկ կայսեր անցկացրած ռազմական միջոցառումներից ամենակործանարարը հայ զինական ուժը երկրից պարբերաբար դուրս բերելու և այն կանխամտածված կերպով ոչնչացնելու նրա նենգ ծրագիրն էր։

Պարսկաստանի դեմ տարած հաղթանակից հետո կայսրության համար Արևելքում այս ժամանակաշրջանում այլևս ոչ մի վտանգ չկար։ Բայց նրա դրությունը դարձյալ խիստ ծանր էր Բալկաններում, որի վրա պարբերաբար հարձակվում էին ավարներն ու սլավոնները։ Միայն 577 թ. Բալկաններ ներ-

խուժած սլավոնների թիվը հասնում էր 100 հազարի։ 581 թ. սլավոնները հարձակվում են Թրակիայի վրա, իսկ 588-ին արդեն մոտենում են Կ. Պոլսին[76]։ Բյուզանդական քաղաքականության ծանրության կենտրոնը դառնում է Արևմուտքը, ուր պարսիկների դեմ պատերազմի ավարտից անմիջապես հետո կայսրությունը տեղափոխում է իր արևելյան զորամասերը[77]։ Նրան անհրաժեշտ էին զինվորական մեծ ուժեր։ Մորիկը զինվորներ է հավաքագրում բազմաթիվ ցեղերից ու ժողովուրդներից։ Սրա բանակում կային հոներ, լանգոբարդներ, բուլղարներ, բայց օտարներից գերակշռողը հայերն էին[78]։ Կայսրությունը Բալկաններում մղած այդ պատերազմներում, որոնք մարդկային հսկայական զոհեր էին խլում, լայնորեն օգտագործում է նաև նախարարական հետևակ ու հեծյալ գնդերը՝ սաստկացող բյուզանդական ճնշումների դեմ ծավալվող հայ ազատագրական շարժումները կանխելու և իր տիրապետությունը Հայաստանում ամրապնդելու համար։ Նման քաղաքականությունը հանգեցնում էր Հայաստանի ապառազմականացման։ Մորիկ կայսրն այդ խնդրի իրականացմանը մասնակից է դարձնում Խոսրով Բ արքային։ Մորիկ կայսրը խնդիր է դնում բնաջնջել հայ զինվորական ուժը և դրանով ´զրկել հայերին այն դերից, որ նրանք խաղում էին պարսկաբյուզանդական հարաբերությունների մեջ, իսկ անհրաժեշտության դեպքում՝ դյուրությամբ հաղթահարել նրանց դիմադրությունը և ապահովել իր տիրապետությունը։

Հայաստանն ապառազմականացնելու ծրագիրը և դրա գործադրման եղանակը շարադրված են այն նամակում, որն, ըստ ավանդության, Մորիկը գրել է Խոսրով Բ արքային. «Մի խոտոր և անհնազանդ ազգ կա մեր մեջ և պղտորում է։ Բայց ես իմը ժողովեմ և Թրակիայում զումարեմ, իսկ դու քոնը ժողովիր և հրամայիր արևելք տանել։ Եթե նրանք մեռնեն, ապա կմեռնեն մեր թշնամիները և եթե սպանեն, մեր թշնամիներին կսպանեն, և մենք խաղաղությամբ կապրենք։ Որովհետև, եթե դրանք իրենց երկրում մնան, մենք հանգիստ չենք լինի»[79]։ Վարելով այս քաղաքականությունը, Մորիկն օգտվում է Պարսկաստանի թուլացումից և Խոսրովի հետ ունեցած բարեկամությունից։ Երկու մեծ տերությունների անհապաղ ձեռնամուխ են լինում հայերի զինվորական ուժի բնաջնջման այդ ահավոր ու զարհուրելի ծրագրի իրագործմանը[80]։ Այդ գործում աչքի է ընկնում հատկապես Մորիկ կայսրը։ Նրա հրամանով երկրում պարբերաբար անց են կացվում զորահավաքներ, կազմակերպվում են հայ հեծյալ և հետևակ գնդեր, որոնք հայ իշխան-զորավարների հրամանատարությամբ անմիջապես փոխադրվում են Թրակիա։

Հայաստանում զորահավաքը կրում է զանգվածային բնույթ[81]։ Կայսրության վարչական ու ռազմական միջոցառումներին զուգընթաց Հայաստանում ուժեղանում է նաև հարկային ճնշումը, որը երկրում բյուզանդական կեղեքման

---

76 *М. В. Левченко,* История Византии, М.—Л., 1940, стр. 101—103.

77 *Ф. И. Успенский,* История Византийской империи, т. I, стр. 625, 633—634.

78 *P. Charanis,* նշվ. աշխ.՝ The Armenians in the Byzantine Empire, էջ 17—18։

79 «Ազգ մի խոտոր և անհնազանդ են, ասէ, կան ի միջի մերում և պղտորեն։ Բայց ե՛կ, ասէ, ես զիմս ժողովեմ և ի Թրակէ գումարեմ, և դու զքոյդ ժողովէ և հրամայէ յԱրևելս տանել։ Զի եթէ մեռանին՝ թշնամիք մեռանին, և եթէ սպանանեն՝ զթշնամիս սպանանեն, և մեք կեցցուք խաղաղութեամբ։ Զի եթէ դոքա յերկրի իւրեանց լինիցին՝ մեզ հանգչել ոչ լինի» (Սեբեոս, էջ 86)։

80 Նույն տեղում, էջ 86—87։

81 Նույն տեղում, էջ 90։

անբաժան ուղեկիցն էր։ Կայսրությունն այդ ժամանակներում պատերազմներ էր մղում գրեթե իր բոլոր սահմաններում և, բնականաբար, դրամական մեծ միջոցների կարիք ուներ։

Հայաստանի զինվորական ուժի ոչնչացման գործում Մորիկ կայսրից ետ չէր մնում Խոսրով արքան, որը նույնպես իրեն ենթակա նախարարների հեծյալ ու հետևակ գնդերը հավաքում և ուղարկում էր Մարաստանի ու Բակտրիայի կողմերը։

Հետևելով նախորդ կայսրերին՝ Մորիկը փորձում է Հայաստանում քաղկեդոնականություն տարածել, հայոց եկեղեցին միացնել բյուզանդականին՝ այն իր քաղաքական նպատակներին ծառայեցնելու, կայսրության տիրապետությունը Հայաստանում գաղափարապես ամրապնդելու համար։ Քաղկեդոնական բռնադատությունն ավելի է ուժեղանում Մորիկ կայսեր օրոք[82]։ Հայերին ավելի խիստ միջոցներով էին հարկադրում ընդունելու քաղկեդոնականությունը։

Կոստանդնուպոլսում գումարված ժողովի առթիվ գրության անանուն հեղինակը հաղորդում է. երբ Մուշեղ Մամիկոնյանը Խոսրով Բ-ի գահին վերահաստատվելու տարում վերադառնում է Կոստանդնուպոլիս, Մորիկը նրան առաջարկում է հաղորդվել քաղկեդոնական ծեսով, ինչպես այդ իր ժամանակին արել են Վարդան Մամիկոնյանը և նրա հետ գնացածները 572 թ.։ Հայ զորավարը հրաժարվում է կատարել կայսեր պահանջը, պատճառաբանելով, որ նախորդներն այդ արել են կամ անգիտության կամ էլ վախի պատճառով։ Կայսրը նրա խորհրդով հրամայում է Կ. Պոլսում եկեղեցական ժողով գումարել՝ հայոց բոլոր եպիսկոպոսների և կաթողիկոս Մովսես Բ Եղվարդեցու (574—604) մասնակցությամբ։ Կայսրությունը վերջինիս ճանաչելու էր ամբողջ երկրի կաթողիկոս, եթե նա ընդուներ քաղկեդոնականությունը և աթոռը Դվինից փոխադրեր Հայաստանի բյուզանդական մասը։ Բայց Մորիկի սպասելիքները չիրականացան։ Կաթողիկոսը կտրականապես հրաժարվեց ենթարկվել կայսեր հրամանին, հայտարարելով. «Ես չեմ անցնի Ազատ գետը, չեմ ուտի փռան հացը և չեմ խմի ջրախառն տաք գինի»[83]։

591 թ. գումարված Կ. Պոլսի եկեղեցական ժողովը, որին մասնակցում էին 160 եպիսկոպոս, այդ թվում 21-ը՝ հայ[84], վերստին հաստատում է Քաղկեդոնի դավանական սկզբունքները։ Մովսես կաթողիկոսի ուղարկած պատվիրակները՝ Գրիգոր և Վրթանես վարդապետները, եռանդուն պաշտպանում են հայոց դավանանքը, բայց հաջողություն չունենալով, վերադառնում են՝ նզովելով ժողովը[85]։

Գրիգորի անձնավորությունը մեզ հայտնի չէ, իսկ Վրթանես Քերթողը՝ Քըչկան մականունով, «Տերանց նուիրակ և շարսաղար» պատվանունով այն հայտ-

82 Տե՛ս Սեբեոս, էջ 91։

83 "Narratio de rebus Armeniae", էջ 466—467։

84 Տե՛ս «Православный палестинский сборник», 1874, стр. 230. Եկեղեցական ժողովին, ըստ Վարդան Արևելցու, մասնակցել են 25 հայ եպիսկոպոս (էջ 115), որոնք գլխավորապես Հայաստանի բյուզանդական մասից էին։

85 Անանիա Շիրակացի, Պատմութիւն, տե՛ս Ա. Գ. Աբրահամյան, Անանիա Շիրակացու Մատենագրությունը, Երևան, 1944, էջ 397։ Հմմտ. «Սամուէլի քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», Վաղարշապատ, 1893, էջ 76։ Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, Երևան, 1961, էջ 49։

նի վարդապետն է, որը Մովսես Բ Եղվարդեցի կաթողիկոսի օգնականն էր, իսկ նրա մահից հետո՝ երեք տարի Դվինի կաթողիկոսական աթոռի տեղապահը (604—607)։ Արևմտյան Հայաստանի «Սորմենայ ստրատելատէ եւ Հայոց զաւրավարէ» Վրթանես վարդապետին ուղղված մի գրությունից պարզվում է, որ նա եղել է կաթողիկոսի պատվիրակ[86]։ Քաղկեդոնականությունը մերժող եպիսկոպոսներին եկեղեցական ժողովում գլխավորել էին Բասենի Մանասե և Հովհաննես Ամատունեաց ու այլ եպիսկոպոսներ[87]։

Մովսես կաթողիկոսը և նրա կողմնակից եպիսկոպոսները դատապարտում են եկեղեցական ժողովի որոշումը և վճռականորեն հրաժարվում ընդունել քաղկեդոնական դարձած հայ եպիսկոպոսներին[88]։ Կաթողիկոսական աթոռը մարզպանական Հայաստանում էր և ազատ՝ կայսրության կամայականություններից։ Մորիկը, հանդիպելով Մովսես Բ Եղվարդեցու անհաշտ ու եռանդուն դիմադրությանը, Հայաստանի բյուզանդական մասում հակաթոռ կաթողիկոս է նշանակում Հովհաննես Բագարանցի եպիսկոպոսին (590—610)[89], որի աթոռանիստ է դառնում Ավան գյուղաքաղաքը՝ պարսկաբյուզանդական սահմանագլխում՝ Երևանից հյուսիս, Դվինից ոչ շատ հեռու։ Երկրի պարսկական մասում կաթողիկոս է մնում Մովսես Եղվարդեցին[90]։

Հակաթոռությունը պառակտում է Հայոց եկեղեցին, երկպառակություններ սերմանում հոգևորականության շրջանում և ջլատում նաև հայերի ազատագրական պայքարը քաղկեդոնական եկեղեցու և բյուզանդական տիրապետության դեմ[91]։ Հայոց եկեղեցու ներսում բորբոքվում է մի ներքին սուր պայքար, որը հանգում է կատաղի ընդհարումների ու դաժան հալածանքի։ Այդ մասին տեղեկություն կարելի է քաղել Հայաստանի ստրատելատ և զորավար Սորմենի ու Դվինի կաթողիկոսական աթոռի տեղապահ Վրթանես Քերթողի միջև եղած նամակագրությունից[92]։

Հովհաննես Բագարանցին համակերպվել էր Մորիկի եկեղեցական քաղաքականությանը և նրա ձեռքին դարձել մի կույր գործիք հայ եկեղեցու դեմ մղած պայքարում՝ ի վնաս իր երկրի ու ժողովրդի շահերի։ Պատահական չէ, որ Մորիկը միջոցներ չէր խնայում Ավանի նոր եկեղեցու և կաթողիկոսարանի կառուցման համար։ Իզուր չէ, որ Հովհաննեսը ժողովրդի կողմից չի ճանաչվել կաթողիկոս[93]։

Դվինի կաթողիկոսական աթոռը եռանդագին շարունակում է պայքարը Բյուզանդիայի և հայ քաղկեդոնական հոգևորականության դեմ՝ հայոց անկախ եկեղեցու պահպանման համար։

---

86 «Գիրք թղթոց», Թիֆլիս, էջ 90—92։

87 «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 109։ Համտ. Մ. Օրմանյան, Ազգապատում, Կ. Պոլիս, 1912, էջ 580։

88 Narratio de rebus Armeniae, էջ 467։

89 Տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, Կ. Պոլիս, 1912, հ. Ա, § 389, էջ 577—579 և § 435, էջ 649—650։

90 Սեբեոս, էջ 91։

91 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 73։

92 «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 90—98։

93 Ուխտանէս, Պատմութիւն Հայոց, Բ, էջ 63, համտ. Մ. Օրմանյան, Ազգապատում, § 389, էջ 577—579։

## 5. ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԲՅՈՒԶԱՆԴԻԱՅԻ ԵՎ ՍԱՍԱՆՅԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ԴԵՄ

Հայաստանում պարսկական և բյուզանդական ճնշումների սաստկացումը ժողովրդի մեջ առաջացնում է խոր դժգոհություն, խթանելով ազատագրական շարժումն օտարերկրյա տիրապետության դեմ։ Դժգոհությունը նախ արտահայտվում է զորքի մեջ։ Հայ զորավարներն ու զինվորները փորձում են դիմադրավել կայսրության զորահավաքներին, խուսափել Թրակիայում մղվող արյունահեղ և կործանարար պատերազմին մասնակցելուց։ Այսպես՝ Սմբատ Բագրատունու և Սահակ Մամիկոնյանի գլխավորած երկու հայ գնդերի ճակատագրի մասին է պատմում Սեբեոսը։ Հատկանշական է, որ այդ գնդերը միևնույն ճանապարհով չէին ուղարկվել։ Սահակի գունդը գնաց Սեբաստիայով, իսկ Սմբատինը՝ Խաղտիքով։ «Սմբատ հասեալ ի Խաղտիս՝ բռնանայ,— գրում է Սեբեոսը,— քանզի երկեաւ զաւրն ի ճանապարհի, ոչ կամեցեալ երթալ ի տեղին յայն զհետ թագաւորին խնդրոյ»[94]։ Պատմիչը չի նշում հայ հեծյալ գնդի՝ կայսեր հրամանին չենթարկվելու և երկու գնդերը միևնույն ճանապարհով չուղարկելու պատճառները։ Սմբատ Բագրատունու գունդը, հավանաբար, նախատեսված էր Խաղտիքի Տրապիզոն նավահանգստից նավերով ուղարկել Թրակիա, ինչպես իրոք արվում է զինվորներին հնազանդեցնելուց և Կոստանդնուպոլիս տանելուց հետո։ Սահակ Մամիկոնյանի գունդը հասնում է Կ. Պոլիս։ Նրա հետագա բախտի մասին աղբյուրները լռում են, բայց բացառված չէ, որ նա Թրակիա է ուղարկվել, քանի որ Հայաստանում հավաքագրած զորքն այդ ժամանակներում, որպես կանոն, ուղարկվել է Թրակիա՝ ավարների և սլավոնների դեմ պատերազմելու։

Սմբատ Բագրատունին հանդիսացել է իր ժամանակի նշանավոր զորավար և քաղաքական գործիչ։ Հայաստանի անկախության համար մղած անձնվեր պայքարի համար նա փառաբանվել է միջնադարյան պատմիչների կողմից, մասնակցել բազմաթիվ պատերազմների՝ «ի Հայս, ի Յոյնս, ի Պարսիկս»[95]։ Նա լավ էր հասկացել Հայաստանում կայսրության վարած ապառազմականացման քաղաքականության կործանարար բնույթը հայերի համար։ Նրա հեծյալ գնդի ելույթը հենց մի փորձ էր՝ հակադրվելու դեպի հայկական զինական ուժերի սիստեմատիկ տեղափոխման ու ոչնչացման բյուզանդական նենգ քաղաքականությանը։ Կայսեր շտապ միջամտությունը, սակայն, արգելակում է դեպքերի հետագա ծավալումն ու խորացումը[96]։ Կայսրության շռայլ խոստումներն օգնում են հնազանդեցնելու հայ զինվորներին։

Հայ հեծյալ գնդի ելույթը կարևոր նշանակություն ունեցավ։ Նա յուրատեսակ ազդանշան էր Հայաստանում բյուզանդական տիրապետության դեմ հայ ազատագրական շարժման ծավալման համար։ Ժամանակի հայրենասեր առաջադեմ գործիչները հանգում են այն գաղափարին, որ կայսրության բազմակողմանի կեղեքումներից ազատագրվելու համար անհրաժեշտ է թոթափել բյուզանդական լուծը և երկրում վերականգնել սեփական իշխանությունը։ Շուտով Հայաստանում նախապատրաստվում է մի խոշոր ապստամբություն, որի կազ-

---

94 Սեբեոս, էջ 92։

95 Ուխտանէս, Պատմութիւն Հայոց, հ. Բ, Վաղարշապատ, 1871, էջ 56։

96 Սեբեոս, էջ 92։

մակերպիչը և ղեկավարը դառնում է զինվորական ասպարեզից հեռացված Սըմբատ Բագրատունին։ Բյուզանդական գերիշխանության դեմ մղվող պայքարն ընդունում է ազատագրական շարժման բնույթ։ Ապստամբները գտնում էին, որ լավ է մնալ և մեռնել իրենց երկրում, քան մեռնել Թրակիայում[97]։ Հայոց թագավորական գահի վերականգնումով նախարարները, հավանաբար, հույս ունեին վերահաստատել նաև իրենց երբեմնի ֆեոդալական ինքնուրույն և ինքնիշխան դրությունը, որից զրկվել էին Հուստինիանոսի ռեֆորմների հետևանքով։ Բայց նախարարների միջև միաբանություն չկար և նրանցից ոմանք կայսրին տեղեկացնում են Հայաստանում տեղի ունեցող անցուդարձի մասին[98]։

Սմբատ Բագրատունու՝ նախարարներին համախմբելու ջանքերն ապարդյուն են անցնում։ Երկրի ֆեոդալական մասնատվածությունը, նախարարների երկպառակությունները և իրենց սեփական ուժերի հանդեպ ունեցած անվստահությունը խանգարում են ապստամբության բռնկմանը։ Կայսրությունն իր հերթին առանց ժամանակ կորցնելու միջամտում է դեպքերին։ Սմբատ Բագրատունին իր յոթ այլ գործակիցների հետ հատուկ հրովարտակով կանչվում է Կ. Պոլիս։ Այնտեղ կայսրը Սմբատին ու մյուսներին դատի է տալիս։ Դատարանը քննում է գործը և դատավճիռ կայացնում՝ նրանց մերկացնել և գցել կրկես՝ գազաններից հոշոտվելու համար[99]։

Մորիկ կայսրը հայ մեղադրյալներին աքսորում է մի հեռավոր կղզի, այնուհետև Սմբատին տրիբունի (լեգեոնի հրամանատարի) պաշտոնով ուղարկում Աֆրիկա՝ զինվորական ծառայության[100]։ Սմբատ Բագրատունին Աֆրիկայից փախչում, անցնում է Սասանյան Իրան, ապա՝ Հայաստան[101]։

---

97 Նույն տեղում։

98 Նույն տեղում։

99 Սեբեոսը խիստ պատկերավոր է նկարագրում կրկեսի հետ կապված պատմությունը, որը բանահյուսական զրույցի բնույթ ունի։ Սմբատը մերկ, սոսկ անդրավարտիքով նետվում է կըրկես, ուր նրա վրա նախ բաց են թողնում մի արջ, որը, սակայն, հայ իշխանի բռունցքի հարվածից տապալվում է գետին։ Սմբատն այնուհետև կատաղի մենամարտի է բռնվում ցուլի հետ, պոկում նրա եղջյուրները և ոտի մի կճղակն ու փախուստի մատնում։ Վերջապես դուրս է գալիս առյուծը։ Երբ վերջինս հարձակվում է Սմբատի վրա, նրան հաջողվում է՝ բռնելով ամեհի գազանի ականջից, հեծնել վրան և սեղմելով կոկորդը՝ խեղդել։ Հիացած հանդիսականների ու կայսրուհու պահանջով կայսրը ներում է շնորհում հայ դյուցազնին, որի պատվին արքունիքում տրվում է ճոխ խնջույք (Սեբեոս, էջ 93)։ Թեոփիլակտոս Սիմոկատան բոլորովին այլ կերպ է նկարագրում կրկեսի տեսարանը. ըստ նրա, երբ հավաքվում են հանդիսականները՝ դիտելու արյունալի հանդեսը, կայսրն անսպասելիորեն ներումն է շնորհում դատապարտվածներին։

100 Սեբեոս, էջ 93։

101 Պետք է ենթադրել, որ Սմբատ Բագրատունին Աֆրիկայից (այժմյան Թունիս և Տրիպոլիտանիա) Միջերկրական ծովով փախել է դեպի Իտալիա, ապա հյուրընկալվել սլավոնական ցեղերի մոտ։ Ահա այս ժամանակ Կիևի հնագույն թաղամասում՝ Դնեպրի աջ ափին, Սմբատ Բագրատունին հիմնել է բնակավայր, որը հիշատակվում է Կոստանդին Ծիրանածինի (913—920 և 945—959 թթ.) «Յաղագս ազգաց» աշխատության 9-րդ գլխում՝ «Սամբատաս» (Σαμβατάς) անունով։ Անշուշտ, այս անունը պիտի կապել Սմբատ Բագրատունու հետ և ոչ թե Լևոն V Հայկազն (813—820) կայսեր որդու՝ Սմբատի հետ, ինչպես կարծում են ոմանք։ Հետազոտողները հանգում են այն եզրակացության, որ «Սամբատասը» պետք է հիմնված լինի Մորիկ կայսեր ժամանակներում և այս ավանդությունը Կիևի հիմնադիր երեք եղբայրների (Կիի, Շչեկի, Խորիվի) մասին թափանցել է Հայաստան և ձուլվել Տարոնում գոյություն ունեցող հայկական ավանդության հետ, որը մտել է Հովհան Մամիկոնյանի «Պատմութիւն Տարօնոյ» երկում։ Սամբատասի տեղում շուտով բարձրացավ Կիև վաճառաշահ քաղաքը՝ Կիևյան Ռուսիայի քաղաքական, տնտեսական և մշակութային կենտրոնը (տե՛ս *С. Т. Еремян*, Века повествуют о дружбе (К 1500-летию города Киева), газета «Коммунист», 27 мая, 1982 г.).

Կայսրությունը հետևողականորեն շարունակում է իր ապառազմականացման քաղաքականությունը Հայաստանում։ Նախարարները Թրակիայում և այլուր ապստամբում են կայսեր դեմ և իրենց ենթակա զորքով անցնում մարզպանական Հայաստան[102]։

Ապստամբությանը մասնակցում էին Ատատ Խոռխոռունի, Սամվել Վահևունի, Սահակ Մամիկոնյան, Ստեփանոս Սյունի, Կոտիտ Ամատունի, Թեոդորոս Տրպատունի ու այլ նախարարներ՝ երկու հազար հեծելազորով[103]։ Հետաքրքիր է մի կարևոր փաստ, որ ապստամբության մեջ 385 թ. սահմանագծից արևմուտք գտնվող Հայաստանից ոչ մի նախարար չկար. շարժման մասնակիցները 591 թ. նոր պայմանագրով կայսրությանը անցած Հայաստանի պարսկական մասի նախարարներն էին։ Այդ հանգամանքը թերևս պետք է բացատրել Հուստինիանոսի ռեֆորմներով, որոնք խիստ թուլացրել էին երկրի արևմտյան՝ բյուզանդականացված մասի դիմադրողականությունը։

Խոսրով Բ Փարվեզը վարում է երկդիմի քաղաքականություն։ Իրեն ցույց տալով կայսեր բարեկամ՝ նա միաժամանակ փորձում է օգտվել բյուզանդական տիրապետության դեմ Հայաստանում ծագած դժգոհությունից և երբ տեսնում է, որ նրանք փախել են կայսրից, ընդունում է նրանց մեծարանքներով և բազում պարգևներ տալիս[104]։

Պարսկաբյուզանդական առերևույթ բարեկամական հարաբերությունների ետևում, բնական է, չէին վերացել հակասությունները։ Խոսրովը դժգոհ էր, որ հարկադրված Բյուզանդիային էր զիջել Հայաստանի մեծ մասը և զրկվել նրա հարուստ եկամուտներից, մասնավորապես նախարարական զինական ուժերից։

Արևմտյան Հայաստանի ապստամբ նախարարներն ունեին ընդամենը երկու հազար հեծելազոր, որով, իհարկե, անիմաստ էր միաժամանակ դիմադրել բյուզանդացիներին ու պարսիկներին։ Նրանք անցել էին երկրի արևելյան մասը ոչ թե պարսիկներին ենթարկվելու, այլ նոր ուժեր հավաքագրելու համար։ Հույս չունենալով հաղթանակի հասնել սոսկ իրենց ուժերով, նախարարները նպատակ էին դրել պարսկական ու բյուզանդական տիրապետությունից ազատվել հոների հետ դաշնակցելու միջոցով[105]։

Հյուսիսային Կովկասում հաստատված անասնապահ քոչվոր հոներն իրոք մեծ ուժ էին։ Նրանց վարձում և օգտագործում էին ինչպես Պարսկաստանը, այնպես էլ նրա դեմ ապստամբած անդրկովկասյան ժողովուրդները։ Չնայած հոների նպատակն ավարառությունն էր, բայց որոշ նախարարներ, ինչպես երևում է, դեռևս շարունակում էին հուսալ, թե նրանց օգնությամբ կարելի է թոթափել պարսկաբյուզանդական տիրապետությունը Հայաստանում։

595 թ. սկսած այս ապստամբությունը միակն էր միջնադարյան հայ ազատագրական շարժումների պատմության մեջ, որ միաժամանակ ուղղված էր թե բյուզանդական և թե պարսկական տիրապետությունների դեմ Հայաստանում։

Խոսրով Բ-ն անմիջապես փոխում է իր քաղաքականությունը, դուրս գալիս նախարարների դեմ և նույնիսկ դիմում կայսեր օգնությանը։ Մորիկի հրա-

---

102 Սեբեոս, էջ 86—87։

103 Նույն տեղում։

104 Նույն տեղում, էջ 88։

105 Նույն տեղում։

մանով Հայաստանում գտնված բյուզանդական զորքը՝ Հերակլի[106] գլխավորությամբ, Նախճավանի մոտ միանում է պարսիկներին և շարժվում ապստամբների դեմ։ Մորիկը և Խոսրովը միաժամանակ պատգամավորություն են ուղարկում նախարարների մոտ՝ առաջարկելով առանց արյունահեղության հնազանդվել, խոստանալով ներումն շնորհել։ Տեղի ունեցող բանակցություններն իրենց դերն են խաղում ապստամբության քայքայման գործում։

Մամակ Մամիկոնյանը, Կոտիտ Ամատունին, Ստեփանոս Սյունեցին և այլ նախարարներ ենթարկվում են Պարսկաստանին։ Ատատ Խոռխոռունին և Սամվել Վահևունին իրենց զորքերով գնում են Աղվանք՝ անցնում Կուր գետը և բանակում նրա ձախ ափին, բայց հոներից ակնկալված վարձկան զորք չստանալով ի վերջո, ենթարկվում են կայսրությանը։ Վերջինիս կողմն է անցնում նաև Թեոդորոս Տրպատունին։ Այսպիսով ապստամբությունն ավարտվեց առանց արդյունքի, քանի որ սոսկ սեփական ուժերով հնարավոր չէր մարտնչել պարսկաբյուզանդական միացյալ զինվորական գերազանց ուժերի դեմ։

Կայսրությունն այդուհետ ևս հետևողականորեն շարունակում է Հայաստանից զինվորական ուժը դուրս բերելու և ոչնչացնելու քաղաքականությունը։ Թրակիայում մղված պատերազմներում իր գնդով հատկապես աչքի է ընկնում Ատատ Խոռխոռունին և կայսրից ստանում պատրիկի բարձր աստիճան ու պարգևներ։ Սեբեոսը հետևյալ կերպ է նկարագրում նրա կյանքի հետագա իրադարձությունները. Մորիկն այս զորավարին իր յոթանասուն զինականների հետ կանչում է արքունիք, մեծարում շքեղ ընդունելությամբ և տալով ոսկյա ու արծաթյա շատ գանձ հրամայում է վերադառնալ Թրակիա։ Սակայն ճանապարհին, անշուշտ, վտանգավոր պատերազմից ազատվելու համար, նա որոշում է ապստամբել և անցնել պարսից արքայի կողմը։ Իր մարդկանց հետ նավ նստելով, ինչպես կարծում են, Սև ծովի նավահանգիստներից մեկի, թերևս Տրապիզոնի վրայով[107], նա մտնում է Հայաստան և այնտեղ բյուզանդական զինվորների հետ տասնութ ընդհարում ունենալուց հետո, մարդկանց նվազած թվով, հասնում է Նախճավան։ Արևմտյան Հայաստանի զորահրամանատարը զորքով նրան պաշարում է մի բերդում, բայց Խոսրով Բ-ն, լսելով այդ մասին, օգնական զորք է ուղարկում պաշարվածներին։ Բյուզանդացիներն ստիպված հեռանում են։ Պարսկական արքունիքն Ատատ Խոռխոռունուն ընդունում է մեծարանքով, տալիս գանձ և ռոճիկ է նշանակում։ Այս դեպքերից մի տարի անց (602), երբ Մորիկին փոխարինում է Փոկաս կայսրը, հայ զորավարը որոշում է նորից մտնել բյուզանդական ծառայության, բայց Խոսրովը, լսելով այդ մասին, հրամայում է կապել նրա ոտքերն ու ձեռքերը և «բրախ սպանանել»[108],

Հայաստանն ապառազմականացնելու նպատակով Խոսրով Բ-ն բազմաթիվ նախարարական ընտանիքների տեղահանում է և վերաբնակեցնում Պարսկաստանում։ Գագիկ Մամիկոնյանը, Պապ Բագրատունին, Խոսրով Վահևունին, Վարդան Արծրունին, Մամակ Մամիկոնյանը, Ստեփանոս Սյունեցին, Կոտիտ

---

106 Այս զորավարը ծագում էր Հայաստանից և բյուզանդական ապագա կայսեր՝ Հերակլ Ա-ի (610—641) հայրն էր։ Նա մինչ այդ մասնակցել էր Պարսկաստանի դեմ մղված պատերազմին, իր զորքով մի շարք հարձակումներ ձեռնարկել հարավային Հայաստանի վրա և հաղթել։

107 Ղ. Ալիշան, Հայապատում, Վենետիկ, 1901, էջ 215, ծան. 3։

108 Սեբեոս, գլ. Լ, էջ 105։

Ամատունին և այլ նախարարներ կանչվում են Պարսկաստան[109]։ Նրանք բոլորն էլ իրենց մահկանացուն կնքեցին այդ օտար երկրում։

Հայաստանում նախարարները դարձյալ զենքի են դիմում՝ կայսրության ռազմական կործանարար միջոցառումներին դիմագրավելու համար։ Ապստամբությունը գլխավորում են Վահևունի սեպուհները՝ Սամվելը, Սարգիսը, Վարազ-Ներսեհը, Ներսեսը, Վահրամը և Թեոդորոս Տրպատունին[110]։ Պատմիչն ապստամբության պատճառը չի նշում, բայց, ինչպես իրավամբ ենթադրում են, Վահևունի նախարարները ևս, որոնք շարժման մեջ խաղում են ղեկավար դեր, պետք է ենթարկված լինեն երկրից դուրս գալու բռնադատությանը[111]։ Ապստամբությունն սկսվում է նրանով, որ նախարարները որոշում են նախ սպանել կուրատորին՝ հույժ առելի դարձած բյուզանդական բարձրաստիճան պաշտոնյային։ Սակայն կուրատորը, որը հիվանդ լինելով, այդ ժամանակ բուժվում էր Կարինի մոտ գտնվող Եկեղիա (Եղեգիս) ջերմուկում, ինչ-որ տեղից լուր ստանալով դավադրության մասին, փախչում է քաղաք և ազատվում։ Նախարարների ուշացած հարձակումը նպատակին չի հասնում։ Ձեռք բերելով հարուստ ավար, նրանք հեռանում են ամրացված Կորդվաց աշխարհը։ Հայոց այս նոր ապստամբությունը, ի տարբերություն նախորդի, սահմանափակվում է սոսկ Արևմտյան Հայաստանով, ընդգրկում սահմանափակ թվով նախարարների, ուղղվում միայն բյուզանդական տիրապետության դեմ, բայց աչքի է ընկնում զինված պայքարի արտակարգ սրությամբ ու տոկունությամբ։

Ապստամբները, հասնելով Կորդվաց լեռները, Դանիելի կամրջով անցնում են Տիգրիսի վտակ Ջերմ (Արևելյան Տիգրիս) գետը և, ամրանալով մի ամրոցում, ավերում են նրա հետ կապող հաղորդակցության բոլոր միջոցները։ Նրանք քանդում են կամուրջը և դիրքեր գրավում կիրճում։

Կայսրությունը, մի կողմ թողնելով խաղաղ ճանապարհով ապստամբներին հնազանդեցնելու իր նախկին քաղաքականությունը, դիմում է զենքի ուժին՝ Հայաստանում բոլոր նախարարներին ահաբեկելու և նրանց հետագա ելույթները խափանելու համար։ Կայսրը նրանց դեմ անմիջապես զորք է շարժում ժամանակի նշանավոր զորավարներ Համազասպ Մամիկոնյանի և Հերակլի հրամանատարությամբ։ Սեբեոսը, որը Հայաստանում կայսրության դեմ տեղի ունեցած երկու ապստամբությունների վերաբերյալ միակ տեղեկություն հաղորդող պատմիչն է, հետագա իրադարձությունները նկարագրում է՝ հետևյալ կերպ. արշավող բյուզանդացիներն սկզբում չեն կարողանում անցնել Ջերմ գետը և հուսալքված որոշում են վերադառնալ։ Այդ ժամանակ, սակայն, նրանք պատահաբար հանդիպում են մի անցորդ քահանայի, որը մահվան սպառնալիքի տակ նրանց ցույց է տալիս հարմար գետանցը։ Բյուզանդական զորքն անցնում է գետը և տեղի է ունենում արյունահեղ մի ճակատամարտ, որի ժամանակ «չարաչար լինէր կոտորածն»[112]։ Ապստամբները անօրինակ արիությամբ են մարտնչում բյուզանդական գերազանց ուժերի դեմ։ Բայց դա նրանց կողմից հուսահատ դիմադրություն էր, և ի վերջո բյուզանդացիները ասպառէին

109 Նույն տեղում, էջ 94։

110 Նույն տեղում։

111 Ա. Այպօյաճեան, Պատմութիւն հայ գաղթականութեան, Գահիրէ, 1941, էջ 150—151։

112 Սեբեոս, էջ 89։

վնոսաչ»[113]։ Մարտում քաջաբար զոհվում են նաև Ներսեսը, Վստամը և Սամվելը, որոնք մեծ թվով թշնամի էին ոչնչացրել։ Բյուզանդացիները գրավում են ամրոցը։ Կայսրությունը դաժան դատաստան է տեսնում կենդանի մնացած ապստամբ նախարարների հետ։ Սարգիսը և Վարազ-Ներսեհն այլոց հետ տարվում են Կարին ու գլխատվում։ Նրանք մահապատժի ժամանակ ևս ցուցաբերում են ոչ միայն անվախություն, այլև անօրինակ մարդասիրություն։ Գլխատման պահին Վարազ-Ներսեհը, որը երիտասարդ էր, ասում է Սարգսին, որ վիճակ գցեն, թե ով իրենցից առաջինը մահապատժի ենթարկվի։ Իսկ Սարգիսը պատասխանում է, որ ինքը ծեր է և աղաչում է իրեն թույլ տալ առաջինը մեռնել, որպեսզի ինքը չտեսնի նրա մահը[114]։ Իրոք, սկզբում գլխատվում է ծերունին, ապա Վարազ-Ներսեհը։ Միայն Թեոդորոս Տրպատունուն է հաջողվում փախչել պարսից թագավորի մոտ, որը, սակայն, հրամայում է նրան կապոտել ու հանձնել բյուզանդացիներին։ Վերջիններս նրան տանջամահ են անում։

Դաժան հաշվեհարդարը ապստամբ նախարարների և նրանց կողմնակիցների հետ և հայ ֆեոդալական ուժերի անխնա ոչնչացումը միմյանց հետ սերտորեն կապված իրադարձություններ էին, Հայաստանում կայսրության կողմից անցկացվող ապառազմականացման քաղաքականության կոնկրետ գործադրման եղանակներ։

Նախարարներն ապստամբությունների արյունահեղ ճնշումից հետո դադարեցնում են դիմադրությունը և ակամա հաշտվում երկրում պարսկաբյուզանդական զինվորական ձեռնարկումների հետ։ Նվաճողներն այնուհետև ավելի համարձակ են իրագործում հայ զինական ուժը Հայաստանից դուրս բերելու և իրենց թշնամիների դեմ մղած պատերազմներում օգտագործելու միջոցով ոչնչացնելու նենգ ծրագիրը։ Նորանոր հրամաններ են գալիս Հայաստան՝ նոր զորահավաքների մասին։

Հայաստանում ապառազմական քաղաքականության իրագործման հետևանքով մի ամբողջ հիսնամյակ դադարում են հայ ազատագրական շարժումները բյուզանդական և պարսկական տիրապետության դեմ։

## 6. ՍԱՍԱՆՅԱՆ ԵՎ ՎԱՂԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԴՐԱՄՆԵՐԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ III—VI ԴԴ.

Հայ Արշակունիները դրամ չեն կտրել և դրամի պահանջը նախկինի պես ապահովում էին Իրանը, Հռոմը, ապա՝ Բյուզանդիան։

Պարթև Արշակունիների անկումը և Սասանյանների հաստատումն Իրանում արտացոլվեց դրամային շրջանառության մեջ։ Չնայած Սասանյաններն իրենց տոհմի առաջին իսկ գահակալի՝ Արտաշիր I-ի (224—241) թագավորության տարիներից, ի տարբերություն պարթև Արշակունիների, սկսեցին թողարկել բոլորովին նոր պատկերագրության դրամներ, սակայն այդ վաղսասանյան դրամները դեռևս շատ չնչին էին ամենուրեք իշխող հռոմեական դենարների համեմատ։ Հետագայում հետզհետե ծավալվեց սասանյան դրամների թողարկումը, որոնք IV—VI դդ. իշխեցին ոչ միայն բուն Իրանում, այլև Հայաստանի ու հարևան երկրների ապրանքափոխանակության մեջ։ Հիրավի,

113 Նույն տեղում։

114 Նույն տեղում։

*եթե վերջին պարթև Արշակունիների օրոք Իրանի դրամակշռային սիստեմը կորցրել էր իր որոշիչ դերը միջազգային առևտրում, ապա Սասանյանների ժամանակ այն վերականգնվեց։ Իրանի և Հռոմի դարավոր մրցակցությունն ակընբախ է դառնում նաև Հայաստանի դրամային շրջանառության ոլորտում նրանց ունեցած դրամների հարաբերակցությամբ։ Տնտեսական կյանքի հայկական կենտրոններում, Իրանի հետ կապված առևտրի շնորհիվ, սկսում են թափանցել սասանյան պատկերատիպի արծաթյա դրամներ։ Ընդհանուր առմամբ սասանյան տիրակալության դրամակշռային սիստեմի մասին կարելի է դատել նրանց ոսկյա, արծաթյա ու պղնձյա դրամներով։ Սասանյան ոսկյա դրամները խիստ հազվագյուտ են։ Հայկական աղբյուրներում սասանյան ոսկե դրամը հայտնի է «դահեկան» անունով, որով և դիտվում է ավանդական կապը նախահելլենիստական շրջանից հայտնի ոսկյա դրամային միավորի անվանման հետ*[115]*։*

*Սասանյան դահեկանը թողարկվել է սկզբում հռոմեական աուրեուսի կշռաչափով՝ 8,19 գ. քաշով, որը հետագայում զգալիորեն նվազեց։ Սակայն կարևոր է այն իրողությունը, որ սասանյան ոսկե դրամը Իրանում և Հայաստանում գործնական նշանակություն չի ունեցել և մնացել է առավելապես իբրև հաշվային միավոր։ Հայաստանում, Վրաստանում և Աղվանքի պատմական տարածքի վրա սասանյան ոսկյա դրամներ չեն գտնվել։*

*Հազվագյուտ են նաև սասանյան պղնձյա դրամները։ Վերջիններիս մասին փաստեր չկան։ Համենայն դեպս ո՛չ Դվինի ավերակների մոտ՝ երեսնամյա հնագիտական պեղումներից և ո՛չ էլ Հայաստանում, թեկուզ պատահաբար, սասանյան պղնձյա դրամներ չեն հայտնաբերվել։ Պղնձյա դրամներ Սասանյանները թողարկել են խիստ սահմանափակ։ Պղնձյա դրամը կոչվել է «դանգ», որի խոշոր միավորը ունեցել է մոտ 16 գրամ քաշ։ Թանգարաններում պահվող նմուշները վկայում են, որ սասանյան դանգերի ձուլվածքում պղնձից բացի եղել է նաև անագի ու արճիճի խառնուրդ։*

*Հայաստանի քաղաքներում, ինչպես և Արևելքում, ամենատարածված սասանյան դրամը եղել է արծաթյա դրախման, որը և հանդիսացել է Սասանյանների դրամակշռային սիստեմի հիմնական միավորը։ Վաղ շրջանում սասանյան դրախման թողարկվել է 3,55—3,88 գրամ քաշով, հիմք ունենալով Պարսքում եղած արծաթյա դրամի կշիռը։ Հետագայում, III դարի 30-ական թվականներից, սասանյան դրախման պարունակել է մոտ 4 գրամ արծաթ, որով և հավասարվել է միջազգային շուկայում դարեր ի վեր ընդունված ատտիկյան դրախմային*[116]*։*

*Այդ փոփոխությունը նպաստել է անցյալից մնացած արծաթյա դրամների հետ հատ հաշվով սասանյան դրախմաների համատեղ ընդունելությանը։ Ի հակադրություն պղնձի խառնուրդով և սխեմատիկ պատկերագրությամբ թողարկված ուշպարթևական դրամների, Սասանյանները շատ բարձր էին պահում իրենց արծաթյա դրամի որակը։ Այդ հանգամանքը մեծապես բարձրացրել էր սասանյան դրախմայի արժեքը միջազգային առևտրում։ Բացի դրանից, Սասանյանների հաստատման այս շրջանում, արժեզրկվել էին կայսերական*

---

115 *Я. А. Манандян,* О торговле и городах Армении, стр. 171.

116 Lexikon der Alten_Welt, Artemis, Zürich-Stuttgart, 1965, էջ 774։

Հռոմի արծաթյա դրամները, որոնց մեջ զուտ արծաթի պարունակությունը կտրուկ չափ նվազել էր։ Միջազգային շուկայում նպաստավոր պայմաններ էին ստեղծվել սասանյան դրախմաների տարածման համար։

Հայաստանում գտնված ամենավաղ սասանյան դրամը վերաբերում է III դարի առաջին կեսին։ Այն Սասանյան Արտաշիր I-ի (224—241) դրամն է՝ արքայի կիսանդրիով և համապատասխան մակագրությամբ։ Գտնվել է Գառնիում, հեթանոսական ամրոցի՝ 1963 թ. պեղումների ժամանակ։

Հայաստանում գտնվել են նաև Սասանյան Շապուհ (241—272) և Շապուհ II (310—379) արքաների արծաթ դրամները՝ նրանց պատկերներով ու գրություններով[117]։

III դարի վերջերից արդեն նկատելիորեն փոխվել էր Հայաստանի և հարևան երկրների դրամային շրջանառության կազմը։ Հետզհետե վերանում էին իրենց դարն ապրած պարթևական ու հռոմեական դրամները և առավել առատանում ապարեզ մտած սասանյան դրախմաները։

Զարգացման այս տենդենցը պարզորոշ դիտվում է Աղվանքում, Կաբալա ամրոցից ոչ հեռու, III դ. վերջին թաղված դրամային գանձի պարունակությամբ՝ պարթևական, հռոմեական (I—II դդ.) և սասանյան արծաթ դրամներ։ Սասանյան դրամները բոլորն էլ հատվել են III դ. վերջերին՝ Վառահրան II-ի (274—291) գահակալության տարիներին։ Ջնայած հին ու նոր դրամների միջև ժամանակի ավելի քան 150 տարվա ընդհատում է նկատվում, բայց այդ չի խանգարել, որ դրանք ծառայեն առևտրական փոխանակության պահանջներին։ Գանձի կազմը բացահայտում է մի այլ հանգամանք. արդեն III դարի վերջին սասանյան դրամները գերակշռություն էին ձեռք բերել շրջանառության մեջ։ Պարթևական և հռոմեական դրամները գանձում ներկայացված են հատ ու կենտ նմուշներով, մինչդեռ սասանյան դրամները՝ մոտ երկու հարյուրի չափով։ Այդ հարաբերությունը պատահական չէ, այլ օրինաչափ արտացոլումն այն իրավիճակի, որ տիրել է նաև Հայկական լեռնաշխարհի հյուսիսարևելյան մասում, III դարի վերջին։ Սակայն պատահականություն չէ նաև պարթևական ու հռոմեական արծաթ դրամների առկայությունը սասանյան դրամների հոծ զանգվածում, թեև նվազ թվով։ Այդ նշանակում է, որ III դարի վերջին դրանք դեռևս դուրս չէին եկել շրջանառությունից[118]։

IV դ. վերջերին դրամաշրջանառության մեջ տեղ-տեղ կիրառվել են ուշհռոմեական դրամներ, որոնց հոսքը, թեկուզ և թույլ, բայց եղել է։ Այդ մասին է վկայում Երևանում գտնված արծաթյա դրամների մի գանձ, որի մեջ պահպանվել են Թեոդոսիոս 1 (379—395), Հոնորիոս (393—425) և Վալենտինիանոս III (425—455) կայսրերի պատկերներով ուշհռոմեական արծաթ դրամները[119]։

Ի տարբերություն Սասանյանների, Հռոմի կայսրությունն իր մայրաքաղաքին հաստատուն դարձրեց ոսկե դրամների թողարկումը, որը շարունակվեց

117 Հայաստանի պատմության պետական թանգարանի (այսուհետև՝ ՀՊԹ) դրամներ № 1066, 1110, 1116, 1141—1143, 1223։

118 *В. В. Кропоткин,* Новые находки римских монет в СССР (дополнение к «Своду археологических источников», Институт Археологии АН СССР, «Нумизматика и эпиграфика», т. VI, М., 1966, стр. 74; *К. В. Голенко,* Заметки об обращении римских монет в Закавказье. ВДИ, 1974, № 4, № 65.

119 *Е. А. Пахомов,* Монетные клады Азербайджана, 1, Баку, 1926, № 51.

*նաև բյուզանդական շրջանում։ Հայկական շուկաներում լայնորեն տարածված են եղել Կոստանդնուպոլսում թողարկված ոսկե դրամները։ Ուշհռոմեական և վաղբյուզանդական ոսկեդրամը կոչվում էր սոլիդ* (solidus) *և կշռում էր 4,55 գրամ։ Առևտրի միջոցով Արևելյան Հռոմեական կայսրությունից հայկական քաղաքներն էին թափանցում սոլիդի* 1/2 *ու* 1/3 *կշռամասերը ներկայացնող սիմես* simes *(2,274 գրամ) և տրիենս* triens *(2,516 գրամ) կոչված ոսկե դրամային միավորները*[120]*։ Ոսկու և արծաթի փոխանակությունը կատարվում էր 1։14 հարաբերությամբ*[121]*։ Առանձին օրինակներով V—VI դդ. ոսկե դրամների հայտնաբերումը Հայաստանում հնարավորություն է ընձեռում ենթադրելու, որ վաղբյուզանդական սոլիդները թափանցել են հայկական շուկաները արտաքին առևտրի միջոցով։ Այսպես, Դվին քաղաքի ավերակներում գտնվել են ոսկե դրամներ Թեոդոսիոս II (408—450) և Լևոն I (457—474) կայսրերի պատկերներով, դրվագված Կոստանդնուպոլսում*[122]*։ Նմանօրինակ ոսկե դրամներ են հայտնաբերվել Աշտարակի և Կոտայքի շրջաններում*[123]*։ Հոնորիոս կայսեր պատկերով (393—425) ոսկե դրամներ են գտնվել Հովհաննավանքում և Կարսի շրջանում*[124]*։ Նույն Հովհաննավանքում գտնվել է նաև Ցուլիոս Նեպոսի (475) ոսկե դրամը*[125]*։ Դիլիջանի շրջանում նույնպես գտնվել է Թեոդոսիոս II կայսեր ոսկե դրամը*[126]*։ Սրանք, անշուշտ, պատահականություններ չեն։*

*Կոստանդնուպոլսում կտրված վաղբյուզանդական ոսկյա դրամներ առանձին օրինակներով գտնվել են Հայաստանին մերձավոր Վրաց աշխարհում, հատկապես նրա արևելյան շրջաններում։ Դրանցից հիշարժան են հայաքնակ Բոլնիս Խաչենում*[127]*, ինչպես նաև Թելավում, Գորիում, Մցխեթում գտնված ոսկե դրամները՝ թողարկված Թեոդոսիոս I (379—395), Թեոդոսիոս II (408—450) և Լևոն I (457—474) կայսրերի իշխանության տարիներին*[128]*։ Այս ժամանակներին վերաբերող ոսկյա կամ արծաթյա իրեր չեն գտնվել։ Այդուհանդերձ, իրանական արծաթին զուգընթաց վաղբյուզանդական ոսկու շրջանառությունը Հայաստանում, թեկուզ և չնչին չափով, միանգամայն հավանական է։ Հայաստանի աշխարհագրական դիրքը կարևոր նշանակություն ուներ Արևելքի և Արևմուտքի միջև կատարվող ապրանքափոխանակության համար։ Պատահական չէ, որ 408—409 թթ. Իրանի և Բյուզանդիայի միջև կնքված պայմանագրի համաձայն միջազգային առևտուրը կատարվում էր երեք կենտրոններում՝ Մծբին, Կալլինիկում և Արտաշատ քաղաքներում։*

*Արտաշատում, ինչպես միշտ, հանգրվանում էին տարբեր երկրներից ժամանած առևտրական քարավանները։ Հնագիտական պեղումները հաստատեցին, որ Արաքսի ափին IV դարի առաջին կեսից Արտաշատի մոտ բարձրացել էր Դվին քաղաքը, որը որպես V—VII դդ. արհեստների ու առևտրի խոշոր կենտ-*

---

120 *Fr. Schrotter*, Wörterbuch der Münzenkunde, 642. *А. Н. Зограф*, Античные монеты, М.—Л., 1951, стр. 54 (Материалы и исследования по Археологии СССР, № 6).

121 *Fr. Schrotter*, *նշվ. աշխ., էջ 890։*

122 *ՀՊԹ, 14450, 17173/1։*

123 *ՀՊԹ, 17168, 14520։*

124 *ՀՊԹ, 16039, 16149։*

125 *ՀՊԹ, 17168։*

126 *ՀՊԹ, 14459։*

127 *В. В. Кропоткин*, Клады римских монет на территории СССР, «Свод археологических источников», Г4-4, М., 1961, № 1570.

128 *Նույն տեղում, №№ 1625, 1630, 1663, 1666, 1592, 1578։*

*րոն, ժառանգել էր Արտաշատի դերը՝ տարանցիկ ապրանքափոխանակության գործում։ Այդ ժամանակներին է վերաբերում բյուզանդական պատմիչ Պրոկոպիոս Կեսարացու այն հիշատակությունը, որ Դվինի շուրջ «մարդաշատ գյուղերը բնակեցված են եղել առևտրականներով։ Հնդկաստանից, հարևան Վիրքից ու պարսիկների և նույնիսկ հռոմեացիների հպատակության ներքո գտնըվող գրեթե բոլոր տեղերից այստեղ են բերվել ապրանքներ, որոնցով նրանք առևտուր են արել»[129]։ Հետևաբար ուշհռոմեական և վաղբյուզանդական ոսկյա դրամների թափանցումը Հայաստան՝ IV—V դդ. կարող էր կատարվել ինչպես կայսրությունից Հայաստան, այնպես էլ Հայաստանից կայսրություն գնացող քարավանային առևտրի շնորհիվ։ Չնայած տարբեր բնույթի կրոնական պատկերների, որոնք դրոշմված էին բյուզանդական ոսկյա և սասանյան արծաթյա դրամների վրա, մեկը՝ քրիստոնեության խաչի նշանով, մյուսը՝ զրադաշտության ատրուշանի, այդ պատկերները ապրանքադրամական գործարքների կատարմանը չէին խանգարում։ Գործնական ապրանքափոխանակության պահին գաղափարական նկրտումները նահանջում էին։ Վաղբյուզանդական դրամները Հայաստանում լայն տարածում չեն ունեցել և IV—VI դդ. վերաբերող գանձերի բացակայությունը յուրովի արտացոլումն է այդ վիճակի։ Շրջանառության մեջ գերիշխողը մնում էր սասանյան արծաթե դրամը և այդ առավելությունը բացարձակ դարձավ հատկապես V—VII դարերում։*

*Շապուհ II (383—338), Վառահրան V (420—499), Պերոզ (457—483), Կավատ (483—531), Ջամասպ (497—499) Սասանյան թագավորների պատկերներով արծաթ դրամների հայտնաբերումները Հայաստանում հազվադեպ չեն։ Այդ առումով ուշագրավ են VII դարի գանձերը։ Առավել հայտնի են երկու խոշոր գանձեր, որոնցից մեկը գտնվել է Շիրակում (Լենինական)[130], իսկ մյուսը՝ Այրարատում (Դվին)[131]։*

*Միջազգային առևտրի համար Հայաստանի աշխարհագրական դիրքը և նրա քաղաքային կյանքի զարգացումն այնտեղ V—VII դդ. միանգամայն հնարավոր են դարձնում տեղական կերտվածքի սասանյան դրամների թողարկումը։ Պահլավերեն* ARM *համառոտագրությունը Հայաստանին վերագրելու միտքըն արծարծել է Ֆ. Պարուկը և այդ կարծիքը պատմական և լեզվական առումով մինչև օրս առարկության տեղիք չի տվել[132]։ Դեռևս հռոմեական տիրապետության ժամանակ, կայսերական դրամների վրա «Հայաստան» անունը երբեմն հիշատակվում էր լատիներեն՝* ARM*։ Ավանդաբար նույնը կարող էին անել Սասանյանները Հայաստանում՝ թողարկվող իրենց դրախմաների վրա պահլավերեն համապատասխան կրճատ գրությամբ երկրի անվանումը արտահայտելու համար[133]։ Վիրքում ևս VI դ. վերջերից թողարկվում էին սասանյան պատկերագրության դրախմաներ։*

---

129 *Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, 5, «Բյուզանդական աղբյուրներ», Ա., Պրոկոպիոս Կեսարացի, թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հ. Բարթիկյանի, Երևան, 1967, էջ 142։*

130 *М. И. Камера, К. В. Голенко,* Ленинаканский клад сасанидских и византийских монет (1956 г.). Византийский временник, т. XIX, стр. 172—193.

131 *Х. А. Мушегян,* Денежное обращение Двина по нумизматическим данным. Ереван, 1962, стр. 122—138.

132 *D. S. Furdoontee*, Paruck, Sassanian coins, Bombey, 1924, p. 138, 261:

133 *M. Mochizi*, Etudes de Numismatique Iranienne les Sassanides, I, Tehran, 1972։

Դրանց թվին են պատկանում մի խումբ դրամներ, որոնց վրա կա քրիստոնեական խաչ նշանը[134]։ Այս վերջին խմբի դրամները (առանց վրացերեն գրերի) կարող էին թողարկվել, ինչպես նկատել է Ե. Ա. Պախոմովը, նաև Հայաստանում[135]։

VI դ. վերջերին Անդրկովկասում զգալիորեն տարածվում են Դվինում թողարկված սասանյան դրախմաները, որոնք շրջանառության մեջ են մտնում Սասանյան Որմիզդ IV արքայի գահակալության երրորդ տարվանից սկսած (մ. թ. 581/82 թվականից)։ Ե. Ա. Պախոմովի կարծիքով Դվինից բացի այդ նույն տեղանունով սասանյան դրամներ կարող էին թողարկվել Պարտավում, ինչպես նաև անդրկովկասյան վաճառաշահ այլ քաղաքներում[136]։ Դրախմաներ էին թողարկվում Նախճավանում, որի անունը պահլավերեն կրճատ ձևով արձանագրված, պահպանվել է Խոսրով I Անուշիրվանի (531—579) երրորդ տարվանից մինչև Հազկերտ III-ի (632—651) գահակալության յոթերորդ տարին (638) թողարկված արծաթյա դրամների վրա։

Հայկական շուկաներում կովկասյան թողարկման սասանյան դրախմաները շրջանառության մեջ էին Պարսքից, Խորասանից, Խուժաստանից ու Իրանի տարբեր ծայրերից բերված արծաթյա դրամների հետ, որոնցով և կատարվում էր ապրանքափոխանակությունը։ VI դարի վերջերից, այդ հոսանքին համընթաց, Հայաստան են թափանցում նաև բյուզանդական ոսկյա ու արծաթյա դրամներ, որոնք առավել չափով տարածվեցին Սասանյանների մայրամուտին։

Դրամագյուտերը վկայում են, որ առևտուրը Հայաստան էր բերում Հուստինիանոս (527—565), Տիբերիոս (578—582), Փոկաս (602—610) կայսրերի պատկերներով, ոսկու լիարժեք պարունակությամբ սոլիդներ[137]։ Դրանցից բացի և անհամեմատ ավելի շատ հայկական քաղաքներում տարածվում էին Հերակլի ու նրա գահաժառանգների՝ ծանր քաշի արծաթյա դրամները՝ կրկնակի միլիարիսները, որոնք, ինչպես առանձին, այնպես էլ ամբողջական գանձերի ձևով հաճախ են հանդիպում Հայաստանում և նրա հարևան երկրներում։

VII դարի գանձերի մեջ քիչ չեն այնպիսիները, որոնք վկայում են սասանյան ու բյուզանդական արծաթյա դրամների համատեղ շրջանառությունը Հայաստանում և հարևան երկրներում։ Դրանցից են Դվինում, Լենինականում և Թբիլիսիում VII դարի առաջին կեսին թաղված սասանյան ու բյուզանդական դրամներից բաղկացած գանձերը[138]։ Ուշագրավ է, որ այդ գանձերում եղած բյուզանդական դրամների մեծ մասը Հերակլի կայսրության (610—641) տարիներին թողարկված ծանր քաշի (կրկնակի) միլիարիսներ են։

Մեզ հայտնի են Երևանի նահանգում, Էջմիածնի ու Իգդիրի շրջաններում գտնված բյուզանդական գանձերը, որոնք պարունակում են Հերակլի (610—641) և նրա երկու որդիների՝ Հերակլ-Կոստանդինի ու Հերակլեոնի պատկեր-

---

134 *Д. Капанадзе,* Грузинская нумизматика, М., 1955.

135 *Е. А. Пахомов,* Монеты Азербайджана, 1, Баку, 1953, стр. 11—12.

136 *Е. А. Пахомов,* О сасанидских знаках. Доклады АН Азербайджанской ССР, т. I, № 1, Баку, 1945, стр. 45—46.

137 *ՀՊԹ, դրամագիտության բաժին, № 13950, 14354, 14410, 14968։*

138 ПМК, 1, № 59, *Х. А. Мушегян, նշվ. աշխ.,* 122—238, *М. И. Камера, К. В. Голенко, նշվ. աշխ.,* 172—193, *В. В. Кропоткин,* Клады византийских монет на территории СССР, № 365, 375.

*ներով արծաթյա դրամներ[139]։ Ծանր քաշի բյուզանդական արծաթ դրամներից բաղկացած գանձեր են գտնվել Աշտարակի շրջանի Կոշ գյուղում[140], Շամշադինում[141], Ստեփանավանում[142], ընդ որում վերջիններիս մեջ Հերակլի դրամներից բացի կան նաև Կոստանդ II (641—668) կայսեր պատկերով արծաթյա դրամներ։ Դրանք տարածված են եղել ոչ միայն Հայաստանում, այլև Վիրքում[143]։*

*Բյուզանդական արծաթյա դրամների շրջանառությունը Հայաստանում ամենուրեք տարածված սասանյան դրախմաների հետ առանձին դժվարություն չէր հարուցում առևտրական գործարքներում, եթե նկատի ունենանք, որ բյուզանդական արծաթյա դրամներն իրենց յուրաքանչյուր միավորի քաշով երկու անգամ ծանր էին սասանյան դրախմաներից։ Հետևաբար փոխանակությունը հատ հաշվով կարող էր կատարվել 1 : 2 հարաբերությամբ։ Այլ կերպ՝ մեկ բյուզանդական արծաթյա կրկնակի միլիարիսը կարող էր ընդունվել սասանյան երկու դրախմայի փոխարեն։*

*Հարկ է նկատել, որ Հերակլ կայսեր և նրա գահաժառանգ որդիների պատկերներով արծաթյա դրամները քրիստոնեական Արևելքում ամենատարածվածն էին արաբական արշավանքների նախօրյակին։ Հերակլի ու նրա անմիջական հաջորդների դրամները սասանյան ինքնակալության կործանումից հետո էլ մնացին գերիշխող շրջանառության մեջ՝ սասանյան դրախմաների հետ միասին։*

---

139 ПМК, I, № 68, 69.
140 ПМК, III, № 794.
141 ПМК, VI, № 1577.
142 ПМК, VI, № 17501.
143 ПМК, 1, № 53, 67.

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՎ ՊԱՐՍԿԱԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՎԵՐՋԻՆ ՓՈՒԼԸ

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀԱԿԱՄԱՐՏՈՂ ՏԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՋԵՎ VII ԴԱՐԻ ՍԿԶԲՆԵՐԻՆ

Հայաստանը VII դարի առաջին տասնամյակներում կրկին դարձել էր պարսկաբյուզանդական պատերազմական գործողությունների թատերաբեմ։ Իրանում չորս դար գահակալած Սասանյան դինաստիան, որը հոգեվարքի մեջ էր, վերջին ճիգերն էր գործադրում մնալու քաղաքական ասպարեզում։ Սասանյան ռազմաֆեոդալական բռնապետությունը, որի համար դարեր շարունակ կեցության հիմնական նախապայմաններից էին նվաճված երկրների թալանը և տարբեր ձևերով կորզվող եկամուտները, նվաճողական պատերազմներ մղելով, կարողացավ որոշ ժամանակով երկարաձգել իր մայրամուտը[1]։ Այդ միջոցին Սասանյանների ճիգերը, համընկնելով Բյուզանդական կայսրության ծանր վիճակի հետ, կարճ ժամանակով հաջողություններ բերեցին նրանց։

Մավրիկիոս կայսեր (582—602) սպանությունից հետո, օգտվելով Փոկասի (602—610) դեմ բռնկված ապստամբություններից, Խոսրով Փարվեզը (Ապրուէզ, Ապրվեզ), (590—628) պատերազմ է սկսում Բյուզանդիայի դեմ, պատրվակ բռնելով, որ ինքը վրեժխնդիր է լինում Մավրիկիոսի համար[2], որին նա իր «բարերարն» էր հռչակել[3]։ Այս պայքարում մեծ տեղ էր տրվում Հայաստանը նվաճելու խնդրին, որը մեծ կարևորություն էր ներկայացնում ոչ միայն տնտեսական, այլև ռազմաստրատեգիական տեսակետից[4]։

Պատերազմական գործողությունները նախ ծավալվում են հյուսիսային Միջագետքում։ Պարսկական զորքը, ինչպես հաղորդում է Սեբեոսը, Խոսրով

---

1 Սասանյանների վերջին պատերազմների բնույթի մասին տե՛ս *Н. В. Пигулевская*, Византия и Иран на рубеже VI—VII вв., М.—Л., 1946, стр. 197—198; *З. В. Удальцова*, Внутреннее и внешнее положение империи во второй половине VI—VII вв. (տե՛ս «История Византии», М., 1967, т. I), стр. 362.

2 Յովհան Մամիկոնեան, Պատմութիւն Տարօնոյ, աշխ. Աշ. Աբրահամյանի, Երևան, 1941, էջ 163, Թովմա Արծրունի, էջ 89, Միքայել Ասորի, էջ 284. Chronique de Michel le Syrien Editée pour la première fois et traduite en francais J.-B. Chabot, t. II, Paris, 1963, էջ 371—372:

3 *Г. Ласкин*, Ираклий. Византийское государство в первой половине VII в., Харьков, 1889, стр. 4; *А. И. Колесников*, Иран в начале VII века, «Палестинский сборник», вып. 22(85), Л., 1970, стр. 78—84.

4 Համտ. *H. Moss*, The Formation of the East Roman Empire, 330—717 (տե՛ս The Cambridge Medieval History, v. IV, Cambridge, 1966, այսուհետև՝ CMH), էջ 29։

Փարվեզի գլխավորությամբ շարժվելով արևմուտք, հասնում է պարսկաբյուզանդական սահմանին գտնվող Դարա քաղաքը և պաշարում այն[5]։ Այս ժամանակ կայսր Փոկասն իր զորավարներից Գերմանին ուղարկում է՝ հնազանդեցնելու բյուզանդական զորավար Ներսեսին[6], որն ապստամբելով, իր զորքով եկել և փակվել էր Ուռհայում (Եդեսիա)։ Ներսեսն օգնություն է խնդրում Խոսրովից, որը չի հապաղում օգտվել ստեղծված իրավիճակից և շտապում է Եդեսիայի ուղղությամբ։ Ծանապարհին Կոստանդինե[7] քաղաքի մոտ ճակատամարտ է տեղի ունենում պարսիկների և հույների զորքերի միջև, որտեղ վերջիններս պարտվում են[8]։

Փոկասի ուղարկած զորքի մի մասը պարտություն կրեց Կոստանդինե քաղաքի մոտ, իսկ մյուս մասը պաշարեց Եդեսիա քաղաքը։ Մյուս ճակատամարտը տեղի է ունենում Եդեսիայի պատերի տակ, որտեղ Խոսրով Փարվեզը վրա հասնելով, ջարդում է քաղաքը պաշարող բյուզանդական պատժիչ զորքը, որից միայն քչերին է հաջողվում փախուստի դիմել[9]։ Խոսրովի հրամանով քաղաքի դռները բաց են անում[10]։ Ներսեսը մի տղայի թագավորական հանդերձանք է հագցնում, գլխին պսակ դնում և դուրս բերում Խոսրով Փարվեզի մոտ, ասելով, թե դա Մավրիկիոս կայսեր որդի Թեոդոսն է։ Խոսրովը մեծ խնդությամբ ընդունում է այդ տղային, այնուհետև իր հետ վերցնելով, վերադառնում է՝ թագավորական պատիվներ տալով նրան[11]։

Բյուզանդիայի դեմ պարսկական զորքերի հաջողությունները պայմանավորված էին կայսրության համար ստեղծված ծանր վիճակով։ Մավրիկիոս կայսեր սպանությունից հետո կայսրության ներսում քաղաքացիական պատերազմ էր բռնկվել, ինչպես նաև, օգտվելով պարսկաբյուզանդական վերսկսված պատերազմից, Բյուզանդիայի վրա վերստին սկսել էին հարձակվել սլավոններն ու ավարները, որոնց ներխուժումները հատկապես ծավալվել էին VII դ. առաջին քառորդում[12]։

---

5 Սեբեոս, էջ 107։ Ն. Մառը նշում է, որ VII դ. սկզբների պարսկաբյուզանդական պատերազմները նկարագրելու համար կարևոր նշանակություն ունի Սեբեոսի աշխատությունը, որը ժամանակին գնահատել էին Ջ. Բյուրին, Ա. Պերնիցը և այլ գիտնականներ (*Gibbon*, The History of the Decline and Fall of the Roman Empire, ed. by *J. B. Bury*, t. V, London, 1898, Appendix I, էջ 498; *A. Pernice*, L'Imperatore Eraclion, Saggio di storia bizantina, Florencia, 1905, էջ 57—58, տե՛ս *Н. Марр*, Антиох Стратиг. Пленение Иерусалима персами в 614 г. (исследование и перевод), «Тексты и разыскания по армяно-грузинской филологии», кн. IX, СПб., 1909, стр. 1):

6 Ըստ Մ. Չամչյանի, «որդի Հայկազինն Ներսեհի բասենցւոյ» («Պատմութիւն Հայոց», հ. Բ, էջ 308)։

7 Համապատասխանում է Tellā de-Mauzelat քաղաքին (տե՛ս *E. Honigmann*, Die Ostgrenze des Byzantinischen Reiches, Bruxelles, 1935, S, 4 և հետ.)։

8 *Theophanis Chronographia*, recensvit Carolus de Boor vol. I, Lipsiae, 1883. Hildesheim, 1963), էջ 292։

9 Սեբեոս, էջ 107։

10 Նույն տեղում։

11 Նույն տեղում, Աղբյուրները տարբեր ձևով են նշում Թեոդոսի մասին (Theoph. Chron., I, էջ 291, Georg. Cedr., I, էջ 709—710 և այլն)։ Թեոդոսը մահապատժի էր ենթարկվել Կոստանդնուպոլսից դուրս, իսկ մայրաքաղաքում լուրեր էին տարածվում, որ նա փախել էր։ Խոսրովը մի միաբնակ պատրիարքի հրամայում է «Կեղծ-Թեոդոսին» օծել որպես թագավոր, որն այնուհետև մեկնում է գրավելու իր կարծեցյալ հոր գահը (տե՛ս «История Византии», т. I, стр. 362):

12 «История Византии», հ. Ա, էջ 348, 355, 360։

*Կայսերական ռազմական ուժերն արևելյան ուղղությամբ կենտրոնացնելու նպատակով Փոկասը ավարների հետ խաղաղության դաշինք է կնքում, ավելացնելով նրանց վճարվող տարեկան հարկը։ Այդպիսով, նա հնարավորություն է ստանում Եվրոպայից Միջագետք տեղափոխել իր զորքերը, որոնց մի մասը ուղարկում է պարսիկների, իսկ մյուս մասը Ներսեսի դեմ։ Ներսեսն ընկնում է ծանր վիճակի մեջ և ստիպված հեռանում Հիերապոլիս (Մամբիկ, այժմ՝ Մեմբիճ) քաղաքը, որն Ուռհայից հեռու չէր։ Դարա տանող ճանապարհին՝ Արսամոնի մոտ բյուզանդական զորքը մարտի է բռնվում պարսկական զորքի հետ և պարտվում է*[13]*։*

*Դարայի պաշարումը տևում է մեկ տարի ու կես (604—606 թթ. միջև)*[14]*, որից հետո պարսիկները, փորելով քաղաքի պարսպի հիմքերը, գրավում են այն*[15]*, իսկ բնակիչներին սրի քաշում։ Թալանելով քաղաքը և առնելով ավարը, պարսկական զորքը վերադառնում է Տիզբոն*[16]*։*

*Պարսիկների հեռանալով Ներսեսի վիճակը խիստ բարդացավ։*

*Բյուզանդական զորքի հրամանատար Դոմենտիոլի խոսքին հավատալով՝ Ներսեսը հանձնվում է, սակայն այնուհետև ենթարկվում է մահապատժի*[17]*։*

*Մինչ դեպքերը ծավալվում էին հյուսիսային Միջագետքում, Խոսրով Փարվեզը ուղարկում է Հայաստան մի այլ զորախումբ՝ Ջուվան Վեհի գլխավորությամբ, որը 605 թ. սկզբին գալով Այրարատ, ձմեռում է Դվինում*[18]*։ Կայսերական զորքը հասնում է Եղվարդ գյուղաքաղաքը։ Գլխովին ջարդելով պարսից զորքը (Ջուվան Վեհը սպանվում է)՝ կայսերական զորքը վերադառնում է Հոռոմոց Մարգ կոչվող բանակատեղին՝ Շիրակի դաշտում։ Հույները պարսից ճամբարից իրենց հետ տանում են ողջ ավարը*[19]*։*

*Հաջորդ տարին, երբ պարսկական հիմնական ուժերը դեռևս պատերազմում էին Դարայի դեմ, պարսկական այլ զորք է գումարվում և ուղարկվում Հայաստան՝ Դատոյեանի գլխավորությամբ։ Այս անգամ հունաց զորքը տեղավորվում է Շիրակի դաշտավայրում գտնվող Շիրակավան գյուղի մոտ։ Պարսկական զորքը վրա է հասնում և ճակատամարտը տեղի է ունենում Գետիկ*[20] *գյուղի մոտ։ Երբ պարսիկները պատրաստվում էին մարտի, շրջանի բնակչությունը հավաքվում է Արգինա ամրոցում և ճակատամարտի ժամանակ թիկունքից հարվածում է նրանց ճամբարին, բավական ծանր կորուստներ պատճառելով։ Այ-*

---

13 *Theoph. Chron.*, I, *էջ 292*։

14 *Г. Ласкан, նշվ. աշխ., էջ 7*, Լեո, *նշվ. աշխ., էջ 239*, Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 142, հմմտ. Н. В. Пигулевская, նշվ. աշխ., էջ 193—194*։

15 *Տե՛ս նաև՝ Theoph. Chron.*, I, *էջ 293, Georg. Cedr.*, I, *էջ 711*,

16 Սեբեոս, *էջ 107*։

17 *Theoph. Chron.*, I, *էջ 292—293, հմմտ. Georg. Cedr.*, I, *էջ 710—711*, Սեբեոս, *էջ 73, տե՛ս նաև՝* Г *Ласкин, նշվ. աշխ., էջ 6—7*; «Очерки по истории Византии,» под ред. и с предисл. В. Бенешевича, вып. 1, СПб., 1912, стр. 46.

18 Սեբեոս, *էջ 107—108։ Կ. Թումանովը պարսկական զորքերի Հայաստան ներխուժման սկիզբն է համարում 607 թ.* (СМН, стр. 604): *Այնինչ նրանց ներխուժումները պետք է տեղի ունենային 604—606 թթ. միջև (տե՛ս* Լեո, *էջ 232—239*, Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 142), երբ պարսկական հիմնական զորամասերը գործում էին հյուսիսային Միջագետքում։*

19 Սեբեոս, *էջ 108*։

20 *Այն գտնվում էր Ախուրյան գետի աջ ափին, Արգինայից ոչ հեռու, Ականից դաշտում։ Այս տեղերում (Շիրակի գավառում) այդ անունով իրար մոտ գտնվող երեք գյուղ կար դեռևս XX դ. սկզբին՝ Վերին Գետիկ, Միջին Գետիկ, Ստորին Գետիկ (տե՛ս* Հ. Էփրիկյան, *Բնաշխարհիկ բառարան, հ. Ա, Վենետիկ, 1903—1905, էջ 514)։*

*նուամենայնիվ, պարսիկները հաղթում են[20]։ Հույները փախուստի են դիմում, կրելով մեծ կորուստներ։ Պարսիկ զինվորները խիստ հաշվեհարդար են տեսնում տեղի բնակչության հետ և այնուհետև հեռանում Ատրպատական[21]։*

*Հայաստանում պարսկաբյուզանդական ճակատամարտերը հաջորդում էին մեկը-մյուսին։ Հերթական արշավանքի ժամանակ պարսկական զորքի գլուխ անցած Հայաստան է գալիս Սենիտամ Խոսրովը։ Հունական զորքն ամրանում է Ծաղկոտն գավառի Անգղ գյուղի մոտ, որի միջով հոսում է Արածանի գետը։ Հունաց զորավարն էր բյուզանդական ծառայության մեջ գտնվող Թեոդոս Խոռխոռունին, որը հայ խոշոր նախարարական տան ներկայացուցիչ էր։ Հունաց զորքը պարտվում է, որի մեծ մասը կոտորվում է, իսկ Թեոդոսը կենդանի մնացածների հետ ամրանում է Անգղ գյուղի բերդում։ Առավոտյան պարսիկները պատգամավոր են ուղարկում, առաջարկելով հույներին իրենց ունեցվածքով հեռանալ այնտեղից։ Երրորդ օրը հույները բացում են բերդի դռները, իսկ իրենք հեռանում համաձայն պայմանի։ Սակայն Սենիտամ Խոսրովը թույլ չի տալիս Թեոդոսին հեռանալ, պատճառաբանելով, որ այդ կարող է անել միայն պարսից արքան։ Խոսրով Փարվեզը սիրով ընդունում է Թեոդոս Խոռխոռունուն և ծառայության վերցնում։ Սակայն որոշ ժամանակ անց արքան նրան կասկածում է նենգության մեջ և սպանել տալիս[22]։*

*Սենիտամ Խոսրովն այնուհետև բերդակալ նստեցնելով Անգղում, շարունակում է Հայաստանի նվաճումը։ Պարսիկները բավական խորացել էին Հայաստանի արևմտյան շրջանները և հաջորդ ճակատամարտը հույների հետ տեղի ունեցավ Բասենի կողմերում, ուր վերջիններս պարտություն կրեցին[23]։*

*Այս երեք արշավանքների ընթացքում պարսկաբյուզանդական սահմանագիծը Հայաստանում բավական տեղաշարժվում է դեպի արևմուտք, պարսիկների ձեռքն են անցնում «զԱնգղի և զԴայլատուս[24], զԵրգինայ, և ի Դարային[25] զքաղաքն Ծխնկերտի»[26] բերդաքաղաքները։*

*Խոսրով Փարվեզը մի առ ժամանակով հանգիստ է տալիս իր զորքերին[27], սակայն, այնուհետև մինչև արևմուտքում պատերազմական գործողությունները վերսկսելը, նա ստիպված է լինում կարճ ժամանակով իր ուշադրությունը բևեռել Իրանի արևելյան երկրամասերն ասպատակող վաչկատուն ցեղերի վրա, որոնց Սեբեոսը «քուշաններ» է անվանում[28], չնայած վերջիններս արդեն քաղաքական ասպարեզից հեռացել էին[29]։ Դրանց դեմ կռիվը գլխավորելու գործը պարսից արքան հանձնարարում է Սմբատ Բագրատունուն։*

---

21 Սեբեոս, *էջ 108—109*։

22 *Նույն տեղում, էջ 109*։

23 *Նույն տեղում*։

24 *Նույնանուն լճի ափին գտնվող ամրոց*։

25 *Ստ. Մալխասյանցը կարծում է, որ այն պետք է համապատասխանի հյուսիսային Միջագետքում գտնվող Դարային* («История епископа Себеоса», перев. Ст. Малхасянца, Ереван, 1939, стр. 164, прим. 125): *Ս. Տ. Երեմյանի կարծիքով այն պետք է համապատասխանի Դարունքին, որի մոտերքը պետք է փնտրել Ծխնկերտը*։

26 Սեբեոս, *էջ 110*։

27 *Նույն տեղում*։

28 *Նույն տեղում, էջ 101*։

29 *Ինչպես նշված է, այս ժամանակ Սասանյանների թշնամիներն այստեղ ոչ թե քուշաններն էին, այլ հեփթաղները և նրանց ցեղակիցները* (*Б. И. Маршак*, К вопросу о восточных противниках Ирана в V в., «Страны и народы Востока», № 10, 1971, стр. 58—66, *տե՛ս Б. Ставиский*, Кушанская Бактрия, М., 1977, стр. 132).

Սմբատ Բագրատունին այն հայ զորավարներից էր, որոնք Հայաստանում օտար տիրապետության հաստատմամբ ստիպված էին լինում հայոց հեծելազորի գլուխն անցած ծառայելու այդ բռնակալ տերություններին, մասնակցելով նրանց շահերի համար մղվող պատերազմներին[30], գլխավորելով հայոց այրուձին դրանց ծայրամասային երկրամասերում։ Մավրիկիոս կայսեր ժամանակ ծրագրային բնույթ էր ստացել Հայաստանը ռազմական ուժից զրկելու քաղաքականությունը[31]։ Ինչպես երևում է Խոսրով Բ-ին Մավրիկիոս կայսեր գրած նամակի բովանդակությունից[32], Հայաստանը շարունակում էր պահպանել իր ռազմական ուժը, որը հակամարտող պետություններին հանգիստ չէր տալիս և որի հետ նրանք չէին կարող հաշվի չնստել։

Հայ ժողովուրդը շարունակում էր աննկուն պայքար մղել օտար նվաճողների դեմ։ Նրա զավակները պայքարում էին թե՛ հայրենիքում և թե՛ հեռավոր օտար պետությունների ծայրամասերում։ Այդպես էր Հայաստանի բյուզանդական մասում, ուր Վահևունի սեպուհները և Թեոդորոս Տրպատունին գլխավորեցին կայսրության դեմ բռնկված ապստամբությունը, որը Մավրիկիոս կայսրը խեղդեց արյան մեջ։ Հայ զորավար Ատատ Խոռխոռունու ապստամբության դրդապատճառը և նրա ողջ վարքագիծն ու վախճանը[33] պերճախոս վկայությունն էին օտար լծի անտանելիության, լիներ դա բյուզանդական, թե պարսկական։ Հայերն ապստամբական շարժում էին ծավալել նաև Պարսկաստանում, որտեղ նրանցից ոմանք գնացին միանալու Խոսրովի դեմ ապստամբած նրա քեռուն՝ Վստամին։

Այս պարագաներում VI դ. վերջում Խոսրով Փարվեզը Սմբատ Բագրատունուն կարգել էր Վրկանի մարզպան, նրան սիրաշահելու համար տալով իր հոր՝ Որմիզդ Դ-ի կամարը և սուսերը[34]։ Սկզբնական ժամանակաշրջանում Սմբատ Բագրատունին զբաղված է եղել Պարսից արքայի դեմ բռնկված ապստամբությունները ճնշելով՝ Ամաղում, Ռոյեանում, Ջրճանում և Տապարիստանում[35]։ Այնուհետև Սմբատը կարգավորում է իրեն վստահված մարզպանության գործերը և, որ կարևորն է, լուսավորական գործունեություն է ծավալում[36] առաջներում այդ կողմերը գերեվարված և մայրենի լեզուն մոռացած հայերի շրջանում[37]։

---

30 Սեբեոս, էջ 53—54։ Նույնիսկ միևնույն նախարարական տան անդամները կռվում էին երկու թշնամի պետությունների ռազմական ուժերի կազմում։ Օրինակ՝ Վարազ-Շապուհ Արծրունին Սմբատ Բագրատունու հրամանատարության տակ կռվում էր Իրանի արևելքում՝ քուշվորների դեմ, իսկ Արծրունյաց նահապետ Սահակի որդի Վասակը, որի մասին սորև կնշվի, բյուզանդացիների բանակում կռվում էր պարսիկների դեմ (Սեբեոս, էջ 66, 78)։

31 Լեոն այս ծրագրի մասին գրում է, որ այն հայ ժողովրդի կենսական շահերի տեսակետից կարելի է անվանել դժոխային (Հ. Բ, էջ 227)։ Տե՛ս նաև՝ Ն. Ակինյան, Սեբիոս եպիսկոպոս Բագրատունեաց եւ իւր Պատմութիւն ի Հերակղ, «Մատենագրական հետազոտություններ», Հ. Բ, Վիեննա, 1924, էջ 42։

32 Սեբեոս, էջ 86—87։

33 Նույն տեղում, էջ 104—105։ Լեո, Հ. Բ, էջ 30։ *P. Goubert*, Byzance avant l'Islam Paris, t. I, 1951, էջ 206—208։

34 Սեբեոս, էջ 96։

35 Այս շրջաններն ընկած էին Կասպից ծովից հարավ և հարավ-արևելք (տե՛ս *В. В. Бартольд*, Историко-географический обзор Ирана, Соч., т. VII, М., 1971, стр. 124, 216, 217 и др.).

36 Սեբեոս, էջ 97։

37 Վրկան գերեվարված քրիստոնյաների մասին տե՛ս Н. Марр, Аркаун, Монгольское

Միշտ չէր, որ հաջողությունները Սմբատի կողմն էին։ Նա պարսկական զորավար Շահր Վահրիճի հետ Կոմշ երկրի (անտիկ հեղինակների՝ Կոմիսենե)[38] Խեկևանդ գյուղի մոտ պարտություն կրեց «դեղումք» ցեղի զորքի կողմից, որի շարքերում էին նաև Ամատունի իշխան Կոտիտի սպանությունից վրդովված հայ զորականները, որոնք մինչև այդ միացել էին Խոսրովի դեմ ապստամբած Վըստամին։ Սակայն հաջորդ տարին Սմբատը խոշոր հաղթանակ է տանում Տապարիստանում, որի համար Խոսրովը նրան իր գոհունակությունն է հայտնում հրովարտակով և մեծարում իր տերության բոլոր նախարարներից ամենից բարձր պատվով, բազում նվերներ է ուղարկում, իսկ նրա որդուն՝ Վարազտիրոցին կարգում է «ի մատռուակութեան»[39]։

Հատկանշական է, որ պարսից արքան պարսկաբյուզանդական ռազմական գործողությունների ժամանակ, որոնք ընթացել էին Միջագետքում և Հայաստանում, Սմբատ Բագրատունուն հայոց այրուձիով հեռու էր պահում իր հայրենիքից՝ նրան «վստահելով» Իրանի հեռավոր ծայրամասերի պաշտպանությունը քոչվորների ներխուժումներից և նրանց միացած ապստամբներից։ Իսկ Միջագետքում և Հայաստանում կայսերական զորքերի դեմ մղված ռազմական գործողությունների ընթացքում Խոսրովի զորքերը գլխավորում էին պարսից զորավարները։ Արևմտյան ճակատում միայն նշված զինադադարի ժամանակ Խոսրով Փարվեզը որոշել էր Սմբատ Բագրատունուն ուղարկել Հայաստան[40]։ Այդ իրադրության մեջ պարսից արքայի նման որոշումը պատահական չպետք է լիներ։ Սմբատի Հայաստան ուղարկվելն, ամենայն հավանականությամբ, կապված էր բյուզանդացիների դեմ պարսիկների նախապատրաստվող հաջորդ արշավանքների հետ։ Այդ է վկայում նաև Խոսրով Փարվեզի վարած քաղաքականությունը դավանանքի բնագավառում։ Իսկ Սմբատը, անկախ Խոսրովի ծրագրերից, բուռն գործունեություն է ծավալում Դվինում, ջանալով քիչ թե շատ կարգի բերել երկրի գործերը։

Սմբատ Բագրատունին Հայաստանում եղել է 606 թ. վերջերից մինչև 608 թ. գարունը[41]։ Հայաստանում, հատկապես, եկեղեցական գործերը կարգավորելու համար Սմբատ Բագրատունին նախապես թույլտվություն էր խնդրել Խոսրով Փարվեզից։ Նա գիտեր, որ Մովսես Բ Եղվարդեցի կաթողիկոսը (574—604) մահացել էր, ուստի և արքայի հետ համաձայնեցրել էր նոր կաթողիկոս ընտրելու հարցը։ Դվինում, մինչև Սմբատ Բագրատունու ժամանելը, 606 թ. ժողով էր հրավիրվել, որի ժամանակ կաթողիկոսի ընտրություն չէր կայացել, այլ մի քանի կանոններ էին մշակվել՝ ուղղված, հատկապես, քաղկեդոնականությանը հարած հոգևորականների դեմ[42]։

---

название христиан в связи с вопросом об армянах халкедонитах. «Византийский временник», т. XII, 1906, стр. 48—50.

38 Ն. Ադոնցը Մովսես Խորենացու հիշատակած «Կոշմ» անունը (Բ, 28 և 68), համեմատելով Սեբեոսի հաղորդման հետ, իրավամբ, համադրում է անտիկ հեղինակների հիշատակած «Կոմիսենե» պատմաաշխարհագրական անվան հետ (Н. Адонц, նշվ. աշխ., էջ 440)։

39 Սեբեոս, էջ 99։

40 Նույն տեղում, էջ 100։

41 Տե՛ս Մ. Օրմանյան, 409, 424։ Հմմտ. Մ. Ակինյան. Կյուրիոն կաթողիկոս վրաց, Վիեննա, 1910, էջ 160—161։ Լեո, հ. Բ, էջ 284։

42 «Գիրք թղթոց», էջ 146—148, Լեո, հ. Բ, էջ 284։ Ակինյան, նշվ. աշխ., էջ 149, տե՛ս նաև՝ Н. Адонц, նշվ. աշխ., էջ 333։

Սմբատ Բագրատունին 607 թ. ձեռնարկեց նոր կաթողիկոսի՝ Աբրահամ Ա Աղբաթանեցու ընտրությանը[43], Դվինի 606 և 607 թթ. ժողովների նպատակն էր հաստատուն պահել հայ միաբնակ եկեղեցու անկախությունը բյուզանդական եկեղեցու պառակտիչ ազդեցությունից, որն Արևմտյան Հայաստանում հաստատել էր երկրորդ կաթողիկոսական աթոռը՝ քաղկեդոնական Հովհաննես Բագարանցու գլխավորությամբ[44]։

Դվինի 607 թ. կաթողիկոսական ընտրություններին մասնակցում էր Հայաստանի բյուզանդական մասում գտնվող՝ Բասենի եպիսկոպոս Մանասեն։ Դավանանքային հարցն ավելի էր սրվում վրաց Կյուրիոն կաթողիկոսի (599—616) գործունեության (606—608) պայմաններում, որը հանգեցրեց վրաց եկեղեցու անջատմանը հայոց եկեղեցուց (608)։ Սմբատ Բագրատունու և հայոց հոգևորականության ճիգերը Կյուրիոնին ետ պահելու քաղկեդոնականությունից, համընկնում էին պարսից արքունիքի շահերին, քանի որ Վիրքը դավանանքով մերձենում էր Բյուզանդիային։ Այդ ցայտուն երևում է Աբրահամ Ա Աղբաթանեցի կաթողիկոսի (607—610)՝ Կյուրիոնին գրած նամակից[45]։

VII դ. առաջին տասնամյակներում պարսկաբյուզանդական պատերազմների հետևանքով, ինչպես նշում է Լեոն, Բյուզանդական կայսրության ասիական մասում քաղկեդոնական աղգաբնակչությունն ընկնում էր Պարսկաստանի տիրապետության տակ, ուստի Կյուրիոնը, որպես ճարպիկ քաղաքագետ, իր պատասխանում մատնանշում էր, որ արքայից արքան նաև հոռոմների տերն է, և ոչ թե այնպես, ինչպես գրում է Աբրահամ Աղբաթանեցին՝ թե նրանք ուրիշ թագավորություն են[46]։

Սմբատ Բագրատունին Դվինում ձեռնամուխ է լինում սուրբ Գրիգոր մայր եկեղեցու վերակառուցմանը[47]։ Սակայն շուտով նա ետ է կանչվում Պարսկաստան՝ արևելքում և արևմուտքում ռազմական գործողությունների վերսկսման հետևանքով։ Վերադառնալուն պես արքան, բացի պարգևներից, շնորհում է նրան «Խոսրով Շում» տիտղոս-պատվանունը և կրկին ուղարկում Իրանի արևելյան երկրամասերը՝ գլխավորելու պայքարը ներխուժող վաչկատուն ցեղերի դեմ։

## 2. ՊԱՐՍԿԱԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՎԵՐՍԿՍՈՒՄԸ։ ԽՈՍՐՈՎ II ՓԱՐՎԵԶԻ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԴԱՎԱՆԱՆՔԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Խոսրով Փարվեզը չէր կարող արևմտյան ճակատում վերսկսել ռազմական գործողությունները, քանի դեռ ապահով չէր իր պետության թիկունքն արևելքից։ Սմբատ Բագրատունուն այդպիսի շտապողականությամբ Հայաստանից ետ կանչելը և նորից բազում պատիվների արժանացնելը պայմանավորված էր Պարսկաստանի համար նրանից սպասվող այն խիստ առաքելությամբ, որ-

---

43 Սեբեոս, էջ 100։ Ստեփանոսի Սիւնեաց եպիսկոպոսի Պատմութիւն տանն Սիսական, Մոսկվա, 1861, էջ 71—73։

44 Սեբեոս, էջ 91։ Մ. Օրմանյան, § 389։

45 «Գիրք թղթոց», էջ 165, տե՛ս նաև՝ Լեո, հ. Բ, էջ 237։

46 «Գիրք թղթոց», էջ 167, տե՛ս Լեո, նույն տեղում։

47 Վարդան Մամիկոնյանի 572 թ. գլխավորած ապստամբության ժամանակ այն այրել էին պարսիկները (տե՛ս Սեբեոս, էջ 68։ Տե՛ս նաև՝ Լեո, հ. Բ, էջ 236, Ն. Ակինյան, նշվ. աշխ., էջ 155)։

պիսին էր հայոց այրուձիով քոչվորների դեմ մղելիք պայքարի գլխավորելը։ Կրկին հայոց այրուձին իր հայրենիքից դուրս կենաց և մահու պայքարի էր ելնում օտարի շահերի համար։ Սմբատ-Խոսրով Շումի հետ իրենց գնդերով գնում են նաև բազմաթիվ հայ նախարարներ, որոնց թվում էին՝ Վարազ-Շապուհ Արծրունին, Սարգիս Տայեցին, Արտավազդ, Վստամ և Համայակ Ապահունիները, Մանուել Ապահունյաց տերը, Վռամ Գողթնեաց տերը, Սարգիս Դիմաքսյանը, Սարգիս Տրպատունին[48]։

Սմբատ-Խոսրով Շումը պարտություն և փախուստի է մատնում քոչվորների զորքը, իսկ ինքը բանակ է դնում Ապր Շահրի Տոս[49] գավառում[50]։ Սակայն սրանով չեն ավարտվում հայոց այրուձիի մաքառումները, առջևում նոր փորձություններ էին սպասվում։ Պարտված քոչվորներն օգնություն են խնդրում խաքանից, որը 30 հազարանոց զորք է ուղարկում։ Սրանք պարտության են մատնում պարսից զորքին, որի հրամանատարն էր պարսիկ իշխան Դատոյեանը։ Պարսից զորքի պարտության պատճառն այն էր, որ Դատոյեանը անտեսեց Սմբատ-Խոսրով Շումի խորհուրդը՝ խույս տալ ճակատամարտից։ Քոչվորներն ասպատակ սփռելով, հասան մինչև Հրև և Ասպահան գավառները և այնուհետև վերադարձան իրենց բանակատեղին։ Այս պարտության պատճառները պարզելու համար Խոսրով Փարվեզը այնտեղ է ուղարկում մի ոմն գլխավոր նախարարի՝ Շահրապն Բանդակ անունով։ Վերջինս արդարացնում է Սմբատ Բագրատունուն, իսկ Դատոյեանին կապանքներով տանում արքայի դուռը, որտեղ նրան մահապատժի են ենթարկում։ Պարսկաստանի կենսական շահերը պահանջում էին ինչ գնով էլ լիներ արևելքից կասեցնել քոչվորների ներխուժումները։ Ուստի նոր զորք է գումարվում և Սմբատ Բագրատունու գլխավորությամբ նորից ուղարկվում նրանց դեմ[51]։ Սմբատը պարտության է մատնում քոչվորներին և նրանց զորքը ետ մղում մինչև Բահլ Շահաստան քաղաքը[52]։ Այսպիսով, պարսից արքան միաժամանակ կարող էր իր պետության թիկունքն արևելքից ապահով զգալ և ռազմական ուժերը կենտրոնացնել արևմտյան ուղղությամբ։

Խոսրովը պատվիրում է Խոռեամին, որ նրանց, ովքեր պատրաստակամություն կհայտնեն ծառայելու, ընդունի խաղաղությամբ, իսկ ովքեր կդիմադրեն՝ ոչնչացնի[53]։

607/8—610 թթ. ընթացքում պարսկական զորքերը Միջագետքում և Ասորիքում գրավում են Եդեսիա, Ամիդ, Թելա, Ռաշայն, Մարդե և Անտիոք քա-

---

48 Սեբեոս, էջ 101։

49 Այժմ Ֆիրդուսի քաղաքը։

50 Սմբատը իրեն աթոռանիստ է ընտրում Խոռխո քաղաքագյուղը (Սեբեոս, էջ 101)։

51 Սեբեոս, էջ 102։

52 Սեբեոսը պատմում է, թե ինչպես քոչվորների արքան լուր է ուղարկում Սմբատին, որ միտք չունի ոչնչացնել իրենց զորքերը։ Սմբատը մենամարտում արքային պարտության է մատնում, իսկ վերջինիս զորքն այդ տեսնելով փախչում է։ Սմբատ-Խոսրով Շումի զորքը հետապնդում է նրանց մինչև Բահլ Շահաստան։ Հաղթանակած զորքը շատ բերդեր է գրավում և այնուհետև վերադառնում ու կանգ է առնում Մարգ կամ Մարգոռո գավառում։ Երբ հաղթանակի լուրը հասնում է Խոսրով Փարվեզին, նա տոնական արարողություններ է կատարում, իսկ Սմբատ-Խոսրով Շումի որդուն՝ Վարազտիրոցին, ի նշանավորումն նրա հոր ցույց տված քաջագործությունների, նստեցնում է զարդարված փղի վրա և կոչում Ջավիտեան Խոսրով։

53 Նույն տեղում, էջ 110։

ղաքները[54]։ Այս ժամանակաշրջանում պարսկական մի զորք՝ Աշտատ Յեզտայարի գլխավորությամբ մտնում է Հայաստան և շարժվում դեպի երկրի արևմտյան սահմանը[55]։ Բյուզանդական զորքը հավաքվում է Բասեն գավառում, որտեղով այդ ժամանակ անցնում էր պարսկաբյուզանդական սահմանագիծը։

Ճակատամարտը տեղի է ունենում Դու և Որդորու գյուղերի միջև ընկած դաշտում։ Բյուզանդացիները խիստ պարտություն են կրում և հալածվում մինչև «քաղաքն Սատաղացւոց»։ Պարսիկները բանակ են դնում Կարին քաղաքի շուրջը և շարունակում կռիվը։ Ապա պաշտպանների շարքերից դուրս է գալիս Թեոդոս կոչեցյալը և ասում, թե ինքն է նրանց թագավորը։ Կարինի գլխավորները դուրս են գալիս քաղաքից և, համաձայնության գալով, քաղաքը հանձնում են պարսից ծառայության[56]։ Աշտատ Յեզտայրն այնտեղ կայազոր թողնելով, գրավում է Հաշտենից գավառի Կիթառիճը[57]։ Դրան հաջորդում է Սատաղ, Առաստիա և Նիկոպոլիս քաղաքների գրավումը, որից հետո պարսից զորքը վերադառնում է Պարսկաստան։ Այնուհետև Կարին գավառից հույներին և, ըստ երևույթին, նաև հունադավան հայերին հալածում է մի այլ պարսկական զորավար՝ Շահեն պատգոսպանը։ Այս անգամ պարսիկները դաժան են վարվում Կարինի բնակիչների հետ։ Խոսրովի հրամանով նրանց վերաբնակեցնում են Պարսկաստանի սահմանները («յԱհմատան շահաստանի»)։ Նրանց մեջ էր նաև հայ քաղկեդոնիկ կաթողիկոս Յովհանը՝ «հանդերձ ամենայն սպասիւք եկեղեցւոյն»։ Նա ճանապարհին վախճանվում է և թաղվում Ավան գյուղում, իր կառուցած եկեղեցում[58]։

Պարսկական զորքը նվաճելով Հայաստանի բյուզանդական մասը, սկսում է ներխուժել նաև կայսրության փոքրասիական տիրույթները։ 609/10 թ. պարսից զորքը գրավում է Կապադովկիայի Կեսարիան։ Քաղաքի քրիստոնյա բնակչությունը հեռանում է քաղաքից, իսկ հրեաները «հնազանդեցան ի ծառայութիւն»[59]։ Այստեղ պարսիկները ոճրագործություն են կատարում՝ դաժանորեն սպանելով Արծրունյաց նահապետ Սահակի որդուն՝ Վասակին[60]։

Այս ժամանակ Բյուզանդիայում գահընկեց է արվում և սպանվում Փոկասը։ Կայսերական գահն անցնում է Հերակլին (610—641)[61]։ Կայսրության վի-

[54] Սեբեոս. էջ 111, հմմտ. *Theoph. Chron.*, I, p. 293—294, 296 *Georg. Cedr.*, I, p 711, *Michel le Syrien*, II, էջ 379 և 400, տե՛ս նաև *Ю. Кулаковский*, К критике известий Феофана о последнем годе правления Фоки, «Византийский временник,» т. 21, вып. 1—2, Птг., 1914, стр. 1—14; *Н. В, Пигулевская*. Նշվ. աշխ., էջ 196, *V. Grumel*, Traite d'Etudes Byzantines, I, La Chronologie, Paris, 1958, էջ 246։

[55] Սեբեոս, էջ 111։

[56] Նույն տեղում։

[57] Ձեռագրում Ջիթառիճ է, որը Ստ. Մալխասյանցն ուղղում է Ջիթառիճ, սակայն հետևելով Նորայր Բյուզանդացուն, նա ենթադրում է, որ ամենից ճիշտը Կիթառիճն է։ Ճիշտը այդ է։

[58] Սեբեոս, էջ 112։

[59] Նույն տեղում։

[60] Նույն տեղում։ Այս հատվածն է նշում Յու. Կուլակովսկին, ցույց տալու համար, թե ինչպես հրեաներն, անցնելով պարսիկների կողմը, թուլացնում էին տեղացիների դիմադրությունը (*Ю. Кулаковский*, К критике..., стр. 4).

[61] *Theoph. Chron.*, I, p. 296, Georg. Cedr. I, p. 712. Թեոփիլակտոսը նշում է, որ Հերակլի հոր՝ Հերակլի հայրենի քաղաքը Հայաստանում էր (*Theophilactus Symocatta*' III, p. 1.1): Սեբեոսը վերջինիս հիշատակում է Սամվել Վահեւնու և իր զինակիցների առաջին ապստամբության ճնշման առնչությամբ։ Գառնիցը գրում է, որ Հերակլ զորավարը «նոտեր ի Հայաստան երկիր» (էջ 88)։

ճակը բավական ծանրանում էր[62], ուստի Հերակլը փորձում է անմիջապես խաղաղություն խնդրել Խոսրովից։ Սակայն Խոսրովը չի ուզում լսել այդ մասին, պատճառաբանելով, որ իրական կայսրը Մավրիկիոսի «որդի Թէոդոսն» է և, վերցնելով ուղարկված գանձերը, առանց պատասխան ուղարկելու, հրամայում է սպանել Հերակլի պատգամավորներին[63]։ Կայսրն անձամբ զորքի գլուխն անցած գալիս, բանակ է դնում Կապադովկիայի Կեսարիա քաղաքի շուրջը։ Այնուհետև պաշարումը հանձնարարելով իր կուրատորներից մեկին, ինքը վերադառնում է մայրաքաղաք։ Քաղաքի պաշարումը տևում է մոտ մեկ տարի, որը ծանր է անդրադառնում պարսկական զորքի վրա։ Հաջորդ տարվա ամռանը պարսիկներն այրում են քաղաքը և կոտորելով իրենց հետապնդող բյուզանդական զորքը, մտնում են Հայաստան, որտեղ և ձմեռում են[64]։

Խոսրով արքան զորապետ Շահենին շտապ կանչում է արքունիք և հրամայում արշավել Արևմուտք։ Շահենն ամռանը նորից հասնելով Կարին, այնտեղից հարձակվում է Մելիտենեի վրա, որը գրավելով, հանձնում է պարսից ծառայության, իսկ ինքը գնում, միանում է Պիսիդիայում գտնվող Խոռեամի զորքին[65]։

Հերակլ կայսրը դիմում է տարբեր միջոցների՝ պարսիկների դեմ պատերազմելու համար։ Նա Փիլիպիկոս անունով մի երեցի գլխավորությամբ զորք է ուղարկում Արևելք[66]։ Վերջինս արշավում է Կապադովկիայի Կեսարիայի վրա, այնտեղից անցնում Հայաստան և գալով Այրարատ գավառը, բանակում Վաղարշապատ քաղաքի մոտ[67]։ Խոսրով արքան իր հերթին սուրհանդակների միջոցով շտապեցնում է պարսկական զորքին՝ ամենայն արագությամբ հասնել բյուզանդացիների զորքին և ոչնչացնել այն։ Պարսիկները շտապ գալիս են Այրարատ և ճամբար դնում Արաքսի ափին, պատրաստվելով հաջորդ առա-

---

62 Տե՛ս G. Ostrogorsky, History of the Byzantine State, Oxford, 1956, p. 79—129, «История Византии», հ. Ա, էջ 364։

63 Սեբեոս, էջ 113։ Հերակլի այդ քայլը Միքայել Ասորին նշում է Խոսրովի գահակալության 21-րդ տարում (Michel le Syrien, II, էջ 400), այսինքն՝ 611 թ.։

64 Սեբեոս, նույն տեղում։

65 Սեբեոս, էջ 113։ Ստ. Մալխասյանցը թերևս վրիպում է, նշելով, որ Շահեն պատգոսպանի հետ կապված անցքը Կարինի կապակցությամբ այստեղ կրկնություն է (Սեբեոս..., Ե., 1939, էջ 189, ծան. 54)։ Սեբեոսը մինչ այս հատվածը նշում էր, որ Շահենն անցել էր Կարին քաղաքի կողմերը, իսկ Դվինի ոստանը որպես մարզպան էր եկել Շահրայենպետը, այնուհետև Շահենը գնացել, գրավել էր Կապադովկիայի Կեսարիա քաղաքը։ Իսկ այս հատվածում Շահենի հետ կապված անցքերին զուգահեռ նշում է, որ Շահրայենպետի փոխարեն Դվինի ոստանը որպես մարզպան է գալիս Պարսեանպետ Պարշնազդատը, ապա՝ Նամգարուն Շոնազպը, ապա՝ Շահրապղականը, ապա՝ Ճոռճ Վեհանը։ Շահրապղականը և Ճոռճ Վեհանը ավելի ուշ են եղել, քանի որ քսանական թվականներին նրանք կռվել են Հերակլի դեմ։

66 Սեբեոս, էջ 114։

67 Ինչպես հաղորդում է Սեբեոսը, Փիլիպիկոսը Մավրիկիոս կայսեր փեսան էր, զորավար, սակայն հանկարծ որոշել էր մտնել վանք՝ նվիրվել եկեղեցու ուխտին և դառնալ քահանա (Նույն տեղում, էջ 81)։ Վ. Բեննեշևիչը գրում է, որ Փիլիպիկոսի արշավանքը Հայաստան ստիպեց Շահենին 615 թ. վերադառնալ Քաղկեդոնից (Նշվ. աշխ., էջ 47)։ Սակայն, ըստ Սեբեոսի, Շահենը Պիսիդիայի կողմերում, մոտ 612/13 թթ. (հմմտ. Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 146) միացավ Խոռեամի զորքին և Փիլիպիկոսն այս ժամանակ էր, որ սկսեց արշավել։ Սեբեոսի այն տեղեկությունից, որ պարսից զորքը երկար ճանապարհ անցնելով, շատ հոգնել էր, իսկ զինվորներից շատերն էլ մեռել էին ճանապարհին, կարելի է ենթադրել, որ պարսից զորքը գալիս էր հեռվից, այսինքն՝ արևմուտքից՝ Պիսիդիայից։

*վոտյան սկսելու ռազմական գործողությունները։ Սակայն Փիլիպիկոսը նույն գիշեր անցնում է Արագածի հյուսիսային լանջերին գտնվող Նիգ գավառը, իսկ այնտեղից Շիրակով և Վանանդով, Կարին քաղաքի մոտով նահանջում Բյուզանդիայի սահմանները։ Ի վիճակի չլինելով հետապնդելու նահանջող բյուզանդական զորքին, պարսից զորքը հանգիստ է առնում և այնուհետև շարժվում Միջագետք[68]։ Այդ ժամանակ Հերակլն իր եղբոր՝ Թեոդոսի հետ մեծ զորքով գալիս է Ասորիք, փորձելով գրավել Անտիոք քաղաքը։ Օրոնտես գետի վրա գտնվող «Ասագն Անտիոք» քաղաքի մոտ ճակատամարտ է տեղի ունենում։ Երկու կողմերն էլ մեծ կորուստներ են կրում, սակայն պարսիկներին հաջողվում է փախուստի մատնել հույներին[69]։ Այնուհետև թեժ ճակատամարտ է տեղի ունենում Կիլիկիա տանող լեռնանցքի մոտ («Դրունք Կիլիկիոյ»)։ Այստեղ հույները ժամանակավոր հաջողության են հասնում, սակայն, այնուհետև, ստիպված փախուստի են դիմում։ Համալրում ստանալով, պարսիկները գրավում են Տարսոն քաղաքը և իրենց ենթարկում ողջ Կիլիկիան[70]։*

*Կիլիկիայից վերադառնալով, պարսկական զորքը հաջորդ տարին՝ 614 թ., արշավում է Երուսաղեմի վրա և 19 օր տևած պաշարումից հետո գրավում այն։ Քաղաքի բնակչության զգալի մասը սրի է քաշվում, ողջ մնացածներից շատերին գերեվարում են։ Վերջիններիս մեջ էին նաև Երուսաղեմի պատրիարք Զաքարիան[71] և խաչափայտը։ Երկար տանջանքներից հետո նրանք հայտնում են խաչի տեղը։ Պարսիկները գտնում են «խաչափայտը», որի վրա, ըստ ավանդության, խաչել էին Հիսուսին։ Այն ավարառված ոսկու և արծաթի հետ միասին ուղարկում են իրենց արքային[72]։*

*Խոսրովն այնուհետև հրաման է արձակում ազատել գերիներին, վերականգնել քաղաքը, ամեն մեկին կարգել իրեն տեղը, իսկ հրեաներին դուրս քշել քաղաքից։ Քաղաքի երիցապետ է նշանակվում Մոդեստոսը[73]։ Հայերը, ինչպես նշում է Ն. Մառը, ակտիվ մասնակցում էին Երուսաղեմի ճակատագրի հետ կապված դեպքերին և այդ առումով հետաքրքրական է Կոմիտաս կաթողիկոսի և պատրիարք Մոդեստոսի նամակագրությունը։ Մոդեստոսը պարսիկների պատճառած ավերածություններից հետո դիմել էր նաև հայերին։*

*Պարսիկները 615—616 թթ. գրավում են Եգիպտոսի Ալեքսանդրիա քաղաքը[74]։*

*608—615/6 թթ. պարսկաբյուզանդական պատերազմական գործողությունների արդյունքն այն եղավ, որ Խոսրով Փարվեզը Միջագետքում, Ասորիքում,*

---

68 Սեբեոս, *էջ 114*։

69 *Նույն տեղում։ Այս տարիների ընթացքում պարսիկները Միջագետքում և Ասորիքում զգալի թվով քաղաքներ գրավեցին* (*Theoph. Chron.*, I, *էջ 300*, *Georg. Cedr.*, I, *էջ 715*; *Г. Ласкин, նշվ. աշխ., էջ 74*։ *В. Бенешевич, նշվ աշխ., էջ 47*)։

70 Սեբեոս, *էջ 115*։

71 *Theoph. Chron.*, I, *էջ 301*, *Georg. Cedr.*, I, *էջ 715*։

72 Սեբեոս, *էջ 115—116*; Յովհան Մամիկոնեան, *էջ 279*, *Michel le Syrien*, II, *էջ 400*, Մ. Չամչյան, *Պատմութիւն Հայոց, հ. Բ, էջ 324*, Մովսես Կաղանկատվացի, *էջ 99—100*, Մեսրոպ ծ. վ. Գ. Գրիգորեան, *«Դիտողութիւններ եւ սրբագրութիւններ Սեբեոսի պատմագրոց բնագրին վերայ», Վիեննա, 1973, էջ 60—71*։

73 Սեբեոս, *էջ 116*։ *Н. Марр,* Антиох Стратиг (исследование), стр. 48. Ն. *Մառը հատկապես նշում է, որ Սեբեոսն ամենից բանիմաց աղբյուրն է Երուսաղեմի վրա կատարված պարսից արշավանքի մասին*։

74 *Theop. Chron.* I, p. 301., *Georg. Cedr.*, I, p. 715, *Г. Ласкин, նշվ. աշխ., էջ 36*, *Н. В. Пигулевская նշվ. աշխ., էջ 203 և այլ*։

Հայաստանում, Փոքր Ասիայում, Պաղեստինում և Եգիպտոսում տիրացավ ընդարձակ տարածքների։ Ստեղծված իրադրության մեջ սասանյան արքունիքը պետք է գործ ունենար նվաճված երկրների այլադավան բնակչության հետ։ Մի դեպքում օգուտ քաղելով հրեաների և քրիստոնյաների փոխադարձ թշնամանքից, մյուս դեպքում՝ իրար հակադրելով քրիստոնյա կրոնին պատկանող, սակայն տարբեր ուղղությունների հարող եկեղեցիները, սասանյան արքունիքը փորձում էր ամրապնդել իր նվաճումները։ Խոսրով Փարվեզը նվաճված երկրների քրիստոնեական եկեղեցիների ժողով է հրավիրում Տիզբոնում՝ դավանաբանական վեճերը «կարգավորելու» նշանաբանով[75]։

Այդ ժողովը տեղի է ունեցել 615/616 թ.[76]։ Խոսրովի հրամանով Տիզբոն էին ժամանել բազմաթիվ քրիստոնյա հոգևորականներ, որոնց թվում նաև Երուսաղեմից գերված Զաքարիա պատրիարքը, Ալեքսանդրիայից գերեվարված իմաստասերներ[77], նեստորական և քաղկեդոնական եպիսկոպոսներ և ուրիշներ։ Հայաստանից ժողովին ներկա էին Կոմիտաս Մամիկոնյան[78] և Մատթեոս Ամատունի եպիսկոպոսները։ Խոսրովը ժողովում վերահսկողներ է նշանակում Սմբատ-Խոսրով Շում Բագրատունուն և արքունի բժշկապետ Գաբրիելին[79]։

Առաջին հավաքի ժամանակ, որը տեղի ունեցավ արքունի դահլիճում, ժողովականների միջև խիստ տարաձայնություններ ծագեցին։ Այդ հայտնի է դառնում Խոսրովին, և նա հրամայում է չանդրադառնալ բազմաթիվ աղանդներին, այլ քննարկել միայն Նիկիայի (325), Կոստանդնուպոլսի (381), Եփեսոսի (431) և Քաղկեդոնի (451) ժողովների դավանությունների հարցը։ Կոմիտաս Մամիկոնյանը և Մատթեոս Ամատունին հայ եկեղեցու դավանությունը քննում և համեմատում են երեք «տիեզերական» ժողովների և Քաղկեդոնի դավանության հետ։ Կարծիք են հայտնում նաև Զաքարիա հայրապետը և Ալեքսանդրիա քաղաքից գերեվարված իմաստասերները։ Վիճաբանություններից հետո մերժվում է Քաղկեդոնի ժողովի դավանությունը, ճշմարիտ են ճանաչվում միայն առաջին երեք տիեզերական ժողովների վճիռները։ Այնուհետև

---

75 Լեոն նշում է, որ Խոսրով Փարվեզը սկսեց խառնվել քրիստոնյաների դավանաբանական վեճերի մեջ, քանի որ այդ պետական անհրաժեշտություն էր (նշվ. աշխ., հ. Բ, էջ 247)։

76 Ե. Տեր-Մինասյանը սկզբում համամիտ լինելով այլ հետազոտողների հետ, գտնում էր, որ Տիզբոնի ժողովը տեղի է ունեցել 615/6թ. (E. Ter-Minasian. Die armenische Kirche in ihren Beziehungen zu den syr. Kyrchen, Leipzig. 1904, էջ 62—65): Այնուհետև գիտնականը հայտնեց այն կարծիքը, որ այդ եղել է 613 թ. (տե՛ս «Արարատ», 1907, էջ 3—16, հմմտ. Н. Адонц, նշվ. աշխ., էջ 295, ուր նշված է 612 թ.)։ Սակայն Մ. Օրմանյանը նշում է, որ երկու տարբեր ժողովներ են եղել՝ մեկը, ըստ նեստորական աղբյուրների 612/613 թ., նեստորական կաթողիկոս ընտրելու արգելքը վերացնելու նպատակով, մյուսը՝ 615/16 թ.՝ Տիզբոնում (հմմտ. Ն. Ակինյան, Կիւրիոն կաթողիկոս վրաց, էջ 163, Լեո, հ. Բ, էջ 247) նեստորականների, իբրև քաղկեդոնական հույների կողմնակիցների, հանդեպ խստություններ ցույց տալու նպատակով (տե՛ս Մ. Օրմանյան, §՝438—439)։ 612 թ. ժողովի մասին տե՛ս Հ. Գ. Մելքոնյան, Ասորական աղբյուրներ, հ. Բ, Ասորիներն ու հայերը և Սասանյան տիրապետությունը (V—VII), էջ 606—607 (ձեռագիր)։

77 Այս ծանրակշիռ փաստարկ է, որ Տիզբոնի ժողովը տեղի է ունեցել պարսիկների կողմից Ալեքսանդրիան գրավելուց հետո։

78 Ըստ Սեբեոսի Կոմիտասը (610—628) հաջորդից Աբրահամ Աղբաթանեցուն (Յովհան հակաթոռ կաթողիկոսի մահվան տարին՝ 610 թ.)։ Մ. Օրմանյանը կարծում է, որ 613 թվականից Կոմիտասը գլխավորել է հայոց եկեղեցու եպիսկոպոսներին, սակայն պաշտոնապես կաթողիկոս է ձեռնադրվել Տիզբոնի ժողովից հետո (Մ. Օրմանյան, Ազգապատում, § 441)։

79 Սեբեոս, էջ 149։

*խոսրովը հրաման է արձակում՝ «եթե ամենայն քրիստոնեայք, որ ընդ իմով իշխանութեամբս են՝ հաւատ դՀայոցն կալցին»[80]։*

*Ժողովի այս որոշումը բխում էր Սասանյանների քաղաքական շահերից. քանի որ, բացի այլ հանգամանքներից, 451 թ. Քաղկեդոնի ժողովում որոշվել էր, որ-արևելքի եպիսկոպոսները վեճերի դեպքում կարող էին ուղղակի դիմել Կոստանդնուպոլսի պատրիարքին[81], իսկ դա նաև նշանակում էր, որ արևելյան եկեղեցիների թեմերն ընդգրկվում էին կայսրության քաղաքականության ոլորտը, որին հաջորդելու էր դրանց եկեղեցական համայնքներին պատկանող տարածքների զավթումը։ Պարզ է, որ Սասանյանները չէին կարող հանդուրժել նման վիճակը և խոսրովը հանդես եկավ հայոց եկեղեցու (որը մերժողական դիրք էր գրավել բյուզանդականի հանդեպ) «հովանավորի» դերում՝ իր քաղաքական ծրագրերն իրականացնելու նպատակով[82]։*

*Սասանյանների տիրապետության վերջում զրադաշտականությունը ստիպված էր ինքը պաշտպանել իր գոյությունը, քանի որ պետությունը, որի հետ այն սերտորեն կապված էր, անկում էր ապրում[83]։ Իրանում լայնորեն տարածվել էին տարբեր աղանդները։ Մանիքեականությունը, հատկապես Միջին Ասիայում, նոր հետևորդներ էր գտել[84]։ Ավելի ազդեցիկ էր քրիստոնեության տարածումը. հատկապես նեստորական եկեղեցու եպիսկոպոսությունները սփռված էին ամբողջ երկրով և աղբյուրները լի են պատմվածքներով այն՝ պարսիկների մասին, որոնք բարձր դիրք էին գրավում, սակայն քրիստոնեություն ընդունեցին և նույնիսկ նահատակվեցին նոր կրոնի համար[85]։ Սասանյանների տիրապետության վերջին շրջանում տեղի է ունենում միաբնակ քրիստոնեության աճ, հիմնականում ի հաշիվ նեստորականության[86]։ Դրան զգալի չափով պետք է նպաստեր Տիզբոնի ժողովի որոշումը, որտեղ այլ դավանանքների հետ մեկտեղ մերժվեց նեստորականությունը[87] և ճիշտը համարվեց հայ միաբնակ եկեղեցու դավանությունը։ Նեստորական դավանանքի երկրորդ պլան մղվելն ուներ իր պատճառները։ Այն, ճիշտ է, հակադրվում էր բյուզանդական եկեղեցուն, սակայն տարածվելով Ասորիքից դուրս, փաստորեն, առևտրական, կոսմոպոլիտ խավի դավանանք էր դարձել, որն ազգային երանգը կորցնելով, Իրանում խիստ*

---

80 *Նույն տեղում, էջ 151։*

81 *Г. Ласкин, նշվ. աշխ., էջ 10։*

82 *Այս որոշումը հատկապես Հայաստանի համար այն նշանակությունն ունեցավ, որ, ինչպես նշում է Հ. Աճառյանը, հայ եկեղեցու դիրքը մեծացավ ու զորացավ։ Կոմիտասը, վերադառնալով Հայաստան, պաշտոնապես կաթողիկոս է ընտրվում և ձեռնարկում եկեղեցիների շինության ու բարենորոգմանը։ Հ. Աճառյանը այդ իրադարձության արդյունք է համարում Հռիփսիմեի տաճարի կառուցումը (618), Երուսաղեմի Մոդեստոս պատրիարքի՝ Կոմիտասին ուղղված դիմումը օգնության մասին, Աղվանից Ուխտանես կաթողիկոսի ձեռնադրումը Կոմիտասի կողմից (Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հ. Բ, Երևան, 1944, էջ 644)։ Դրանց պետք է գումարել նաև երկու միաբնակ ասորի եպիսկոպոսների՝ Պետրոսի և Մարութայի՝ Կոմիտասի մոտ Դվին գալը (616 կամ 617 թթ.), որը ոչ թե հակասում է Տիզբոնի ժողովի 616 թ. կայանալուն, ինչպես գրում է Ե. Տեր-Մինասյանը («Այսպես կոչված պարսից ժողովը», «Արարատ», 1907, էջ 3—16), այլ խոսում է դրա օգտին (տե՛ս նաև՝ Մ. Օրմանյան, § 446)։*

83 *Р. Фрай, նշվ. աշխ., էջ 325։*

84 *Նույն տեղում։*

85 *Н. В. Пигулевская, նշվ. աշխ., էջ 236 և հետ. Р. Фрай, նշվ. աշխ., էջ 325։*

86 *Р. Фрай, նույն տեղում։*

87 *Ն. Ադոնցը նշում է, որ VI—VII դդ. սահմանագլխին հականեստորականությունը վեր էր ածվել հակաքաղկեդոնականության (Н. Адонц, նշվ. աշխ., էջ 295)։*

հակադրվում էր զրադաշտականությանը։ Իսկ հայոց եկեղեցին, լինելով խիստ ազգային, թշնամական այնպիսի դիրք էր ընդունել բյուզանդական եկեղեցու հանդեպ, որ այս ժամանակաշրջանում Սասանյաններն ստիպված են լինում հաշվի նստել դրա հետ։ Սակայն դարեր շարունակ Հայաստանը հարստահարող ու կործանող Սասանյան Պարսկաստանի այս քաղաքականությունը Հայոց եկեղեցու հանդեպ վկայությունն էր պարսկական պետության խորը ճգնաժամի՝ քաղաքական, սոցիալ-տնտեսական և զրադաշտական դավանանքի գաղափարախոսության բնագավառներում[88]։

618/619 թ. պարսկական զորքը հասնում է Բոսֆորի ափերը և գրավում Քաղկեդոնը[89]։ Հերակլը, տեսնելով, որ իր թագավորությունը կործանման եզրին է կանգնած, բանակցություններ է վարում պարսից զորավարի հետ։ Հերակլի դեսպաններն այնուհետև նվերներով մեկնում են Խոսրով Փարվեզի մոտ և հանձնում նրան սինկլիտի անունից կազմված նամակը։ Խոսրովն ընդունում է նվերները, սակայն դեսպաններին չի արձակում և զորքին հրամայում է նավերով անցնել «ի Բիւզանդիա» (այսինքն Բյուզանդիոն՝ Կոստանդնուպոլիս)։ Ծովային մարտում պարսիկները խայտառակ պարտություն են կրում և ստիպված են լինում վերադառնալ[90]։

Չնայած ծովային ճակատամարտի այդպիսի ելքին, կայսրության վիճակը շարունակում էր վատթարանալ, քանի որ պարսիկները գրավել էին Եգիպտոսը[91], Ասորիքը և Կիլիկիան, իսկ սլավոններն ու ավարները՝ Բալկանյան թերակղզին[92]։ Այս ծանր ժամանակաշրջանում Հերակլ կայսրը նույնիսկ ուզում էր մայրաքաղաքը տեղափոխել Կարթագեն, սակայն փոթորկի հետևանքով խորտակվում են նախօրոք ուղարկված կայսերական գանձերով բեռնված նավերը։ Կոստանդնուպոլսի բնակչության, ինչպես և Սերգիոս պատրիարքի դիմադրությունը թույլ չտվեց կայսրին իրագործելու իր մտադրությունը[93]։ Ստեղծված վիճակում Հերակլը մի շարք միջոցառումներ է անցկացնում, որոնք հնարավորություն են ընձեռում կայսրությանն ամրապնդել իր դիրքերը և անցնել հակահարձակման։

## 3. ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՎ ՀԵՐԱԿԼ ԿԱՅՍԵՐ ՊԱՐՍԿԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ

Բյուզանդական կայսրությունը փրկելու համար Հերակլ կայսրը վերստեղծեց մարտունակ բանակ, հիմնականում հենվելով Փոքր Ասիայից[94] հավաքագրված ռազմական ստորաբաժանումների վրա։

---

88 Տե՛ս Է. Լ. Դանիելյան, *Հայ եկեղեցու նկատմամբ Խոսրով Փարվեզի վարած քաղաքականությունը*, ՊԲՀ, 1981, № 4, էջ 195—200։

89 Սեբեոս, էջ 122։

90 Նույն տեղում, էջ 123։

91 Այդ ծանր հարված էր կայսրության համար, քանի որ այն զրկվում էր կենսական նշանակություն ունեցող իր հիմնական շտեմարանից («История Византии», т. I, стр. 364):

92 Նույն տեղում. Տե՛ս նաև В. Беневшевич, նշվ. աշխ., էջ 48. Տե՛ս նաև Ch. Diehl Histoire du Moyen Age, էջ 144.

93 Նույն տեղում։

94 Այնտեղ սկսվել էր ռազմավարչական կարգի ռեֆորմի անցկացումը, որի արգասիքն էր փոքրասիական բանակաթեմերի ստեղծումը ստրատեգոսների գլխավորությամբ (տե՛ս G. Ostrogorsky, նշվ. աշխ., էջ 83—98, տե՛ս «История Византии», т. I, стр. 365):

Հերակլը նաև արտաքին ակտիվ քաղաքականություն վարեց իր պետության վիճակը բարելավելու համար։ Նա կայսրության համար խիստ ծանր պահին, մեծ գումար վճարելով, զինադադար է կնքում ավարների հետ, հնարավորություն ստանում իր զորամասերը տեղափոխելու Ասիա[95], իսկ որոշ ժամանակ անց ռազմական դաշինք է կնքում խազարների հետ[96]։

Այս ժամանակաշրջանում Հերակլի ռազմական ռեֆորմի շնորհիվ բյուզանդական բանակում մեծանում է ոչ միայն հեծելազորի նշանակությունը, որն այդքան անհրաժեշտ էր արևելյան ժողովուրդների հետ կռվելիս, այլև թեթև զինված աղեղնաձիգ ջոկատների[97]։ Մինչև արշավանք սկսելը Հերակլը վերցնում է նաև բյուզանդական եկեղեցում կուտակված գանձերը։ Այս բոլոր միջոցառումները նրան հնարավորություն են տալիս անցնելու հակահարձակման[98]։ Կայսրը «Խաչափայտի» Տիզբոն տանելու հանգամանքն օգտագործեց Պարսկաստանին «սրբազան պատերազմ» հայտարարելու համար[99]։

622 թ. Հերակլը գալիս է Կապադովկիայի Կեսարիա քաղաքը[100]։ Նա մտադրվում է Հայաստանի վրայով արշավել դեպի Տիզբոն։ Պարսկական ջոկատը, որը գտնվում էր Կիլիկիայում, սպառնալով գրավել փոքրասիական շրջանները, փորձում է կասեցնել Հերակլի զորքի առաջընթացը։ Սակայն տեղի ունեցած ճակատամարտում պարսկական ջոկատը չարաչար պարտվում է[101]։ 623 թ. գարնանը Հերակլը Հայաստանի վրայով անցնում է Ատրպատականի Գանձակը[102]։ Նրա երթուղին Պոնտոսի, Փոքր Հայքի, Թեոդոսուպոլիս-Կարինի, Վանանդի ու Շիրակի վրայով անցնում էր Դվին, ապա Նախիճավան, այնտեղից՝ Ատրպատականի Գանձակ[103]։

Հետապնդելով Խոսրովին, որը հասել էր մինչև Դաստակերտ (Բաղդադի մոտ), կայսրը գրավում է Գանձակը և այնտեղից շարժվում Թեբարմայս քաղաքի վրա[104]։ Քաղաքը գրավելուց հետո կայսրն այն կրակի է մատնում այն-

---

95 Նույն տեղում։

96 Նրանց հետ Բյուզանդիան համագործակցել էր 589 թ.՝ Սասանյանների դեմ մղված պայքարում, որից հետո երեք տասնամյակ նրանց մասին տեղեկություն չկա (*М. И. Артамонов*, История хазар,М., 1962, стр. 139).

97 «История Византии», т. I, с. 24.

98 Նույն տեղում, *Ch. Diehl*, Histoire du Moyen Age, էջ 145։

99 *Ch. Diehl*, նշվ. աշխ.։

100 Սեբեոս, էջ 124։ Հերակլի այս արշավանքի քննությունը տե՛ս նաև՝ *N. Baynes* The First Campaign of Haraclius against Persia, "English Historical Revue„ vol. 19, h 1904:

101 *Georg. Pisid.. Exped. Pers*, II, 357. *Г. Ласкин*, նշվ. աշխ., էջ 45, "История Византии", հ. Ա, էջ 365, 509, ծան. 25։

102 Սեբեոս, էջ 124։

103 Հերակլ կայսեր պարսկական արշավանքների երթուղիները մանրամասն քննել է Հ. Մանանդյանը (տե՛ս *Я. А. Манандян*, Маршруты персидских походов Ираклия. "Византийский временник„ III, 1950, стр. 133—153, հայ. թարգմ. տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Բ, մ. Բ, Հերակլ կայսեր պարսկական արշավանքների ընթացուղիները (մարշրուտները), Երևան, 1960, էջ 141—172)։ Վաստակաշատ գիտնականը նշում է, որ քանի որ ըստ Սեբեոսի և Թովմայի Դվինը, Նախճավանը և Ուրմիա քաղաքները գրավված և ավերված են եղել, ուրեմն կարելի է ենթադրել, որ դրանք դիմադրություն են ցույց տվել (Նույն տեղում, էջ 145—146)։

104 *Theoph. Chron.*, 1, էջ 307—308։ Ըստ Վ. Մինորսկու Թեբարմայսը նույն Շիզն և Թախտ-ի Սուլեյմանն էր (տե՛ս V. Minorsky. Roman and Byzantine Campaigns in

տեղ գտնվող տաճարի հետ մեկտեղ[105]։ Խոսրովը միջոցներ է ձեռնարկում՝ փրկելու վիճակը։ Նա շտապ ետ է կանչում արևմուտքում գտնվող զորքերը[106], իսկ ինքը հավաքում է իր գանձերն ու պատրաստվում փախուստի[107]։

Հերակլը շարունակում է հետապնդումը, սակայն տեղեկանալով, որ Խոսրովին օգնության շտապող զորքը Խոռեամի (Շահր-Վարազ-Ռազմիոզան) գլխավորությամբ հասել էր Մծբին քաղաքը, իր զորքով հեռանում է Փայտակարան[108]։ Կայսրն այդտեղից գնում է Ուտիք և գրավում Պարտավը[109]։ Այնուհետև բյուզանդական զորքը ճամբար է դնում Տրտու գետի ափին գտնվող Դյուտական գյուղի մոտ[110]։ Խոսրովը հրամայում է իր զորավարին՝ Շահր-Վարազին, փակել Հերակլի ճանապարհը[111]։ Շահր-Վարազն իր զորքով գալիս և ճամբար է դնում «Միւս Տիգրանակերտի» մոտ[112]։ Շահր-Վարազի զորքը գալով Պարսկաստանից, անցնում է Այրարատի ծայր հարավում գտնվող Շարուրի դաշտով, Սյունիքի՝ Վայոց ձոր, Գեղարքունի, Սոդք գավառներով, և այնուհետև Փառիսոս-Գարդմանով։ Շահր-Վարազը նպատակ է ունեցել կանխել Հերակլի զորքերի տեղաշարժը դեպի Հայաստանի և Վրաց աշխարհի սահմանները[113]։ Այս նույն ժամանակ Թիկունքից վրա է հասնում նաև Շահեն պատգոսպանի զորքը, որը ճամբար է դնում Կուր գետի ձախափնյա մասում Խաչենագետ և Գարգառ գետերի միջև գտնվող Տիգրանակերտ ավանում[114]։ Շահենի զորքը, տեղավորվելով Տիգրանա-

---

tropatene. Reprinted from the BSO AS, I 1944, XI 2, էջ 248—249)։

105 Սեբեոսի մոտ այս մանրամասնությունները չկան։ Նա միայն գրում է, որ բյուզանդական զորքը Հերակլի գլխավորությամբ Գանձակում կործանում է «Հրատին մեծի» բագինը, որը կոչվում էր «Վշնասպն» (Սեբեոս, էջ 124)։ Իսկ Թովման նշում է, որ բացի Գանձակից ավերվել էին նաև Համադանը և Մայը (Թովմա Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունյաց, Թիֆլիս, 1917, էջ 159)։

106 Հ. Մանանդյանը նշում է, որ Խոսրովը Շահր-Վարազին կանչեց Ասորիքից (նշվ. աշխ., էջ 145)։ Իսկ Գ. Լասկինը կարծում է, որ Շահր-Վարազը մնացել էր Բոսփորի ափին։ Ուրեմն, ըստ նրա, Շահր-Վարազն այդտեղից էր գալիս։ Ինչևիցե, նա արևմուտքից էր գալիս։

107 Սեբեոս, էջ 124։

108 Նույն տեղում, էջ 125։ Հ. Մանանդյանը, քննելով Թեոփանեսի հաղորդումը պարսիկ ռազմագերիների մասին (Theoph. Chron., I, էջ 308), նշում է, որ Գանձակից Փայտակարան տանող ճանապարհին Հերակլը ենթարկվեց պարսիկների հաճախակի հարձակումներին ու կորցրեց բոլոր գերիներին (Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 149), իսկ Գ. Լասկինը նշել է, որ կայսրն այդ գերիներին ազատ արձակեց, որպեսզի իր կողմը գրավի պարսկական պետության բնակիչներին (նշվ. աշխ., էջ 51)։

109 Մովսես Կաղանկատվացի. էջ 149—150։ Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 150։ Մինչ այդ Խոսրովի հրամանով Աղվանքի իշխանները թողել էին Պարտավը և ամրացել իրենց ամրոցներում (Մովսես Կաղանկատվացի, էջ 149—150)։

110 Նույն տեղում։ Տե՛ս նաև՝ Լեո, հ. Բ, էջ 252։

111 Բյուզանդական զորքի դեմ Աղվանքում կռվեց նաև (624) Շահրապղականի գլխավորած պարսկական զորքը, որը, ինչպես նշում է Մովսես Կաղանկատվացին, «նոր զօր անուանեն»։ Մովսես Կաղանկատվացի, էջ 150։ Նույն տեղում պատմիչը նշում է, որ Հերակլի դեմ կռվեց նաև մեկ այլ պարսից հրամանատար՝ Գրանիկ Սաղար անունով։

112 Սեբեոս, էջ 125։

113 Նույն տեղում։ Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 152։ Հերակլի բանակում գտնվում էին լազերից, «աբազգներից» (ափխազ) և իբերներից կազմված դաշնակից զորամասեր։ Լազերը ու աբազգիները, ինչպես նշում է պատմիչը, թողեցին Հերակլի բանակը (Theoph. Chron., I, էջ 309—310)։

114 Սեբեոս. էջ 125։ Ի տարբերություն այս Տիգրանակերտի, Սեբեոսը նախորդը կոչեց «Միւս Տիգրանակերտ»։ Տիգրանակերտ գավառի մասին մանրամասն տե՛ս Մակար եպիս. Բարխուտարեանց, Արցախ, Բաքու, 1895, էջ 20, 22, 28։

*կերտում, պետք է կտրեր Հերակլի ճանապարհը դեպի արևելք և հարավ*[115]։

*Կայսրը չի ընդհարվում Շահր-Վարազի զորքի հետ, որը գտնվում էր քիչ հեռավորության վրա՝ «Միւս Տիգրանակերտում», այլ, պարտության մատնելով Շահենի զորքը, Սյունիքի վրայով անցնում է Նախճավան*[116]։

*Շահենի ջախջախված զորքի մնացորդները, Շահր-Վարազի զորքին միացած հետապնդում են կայսրին, որն անցնում է Երասխ գետը և բանակում Վրնջունիս ավանի մոտ*[117]։ *Պարսից զորքը չի հասցնում անցնել գետը, ու Հերակլը առանց դիմադրության հանդիպելու հասնում է Ապահունիք*[118] *և բանակ դնում Աղի ավանի հարևանությամբ գտնվող Հրճմունք գյուղի մոտ*[119]։ *Պարսից զորքը հասնելով, բանակատեղի է ընտրում Աղիովիտը։ Շահր-Վարազը վեց հազար զինվորով գնում է Արճեշ գավառը և դարանակալում, որպեսզի գիշերով հարձակվի Հերակլի բանակի վրա*[120]։ *Շահր-Վարազն Արճեշից հինգ հարյուր հոգիանոց մի ջոկատ է ուղարկում Աղի։ Հերակլն իր ճամբարից զորք է ուղարկում, որը գալիս է, և ջարդում այդ ջոկատը։ Միայն մի ձիավորի է հաջողվում անցնել Արճեշ և պատմել պատահածի մասին*[121]. *Շահր-Վարազը դրան չի հավատում։ Այդ ժամանակ վրա է հասնում Հերակլի զորքը և, շրջապատելով քաղաքը երեք կողմից, ջարդում է պարսից ընտրյալ գունդը։ Շահր-Վարազին մի կերպ հաջողվում է փախչել Աղիովիտում բանակած իր հիմնական զորքի մոտ*[122]։

*Կայսրն Արճեշից գնում է Մարտիրուպոլիս (Տիգրանակերտ), այնուհետև Ամիդ*[123], *բյուզանդացիներին հետապնդող Շահր-Վարազի զորքը կրկին անհաջողության է մատնվում*[124]։

*Ամիդից Հերակլի զորքն արշավում է Սամոսատի և Գերմանիկեի վրայով դեպի Կիլիկիայի Ադանա քաղաքը, այնուհետև անցնում է Սարա (Սարոս) գետը։ Կայսերական և պարսկական զորքերը բախվում են։ Շահր-Վարազի ուժասպառ եղած զորքը պարտվում և ստիպված վերադառնում է։ Հերակլը գնում է Սեբաստիա*[125], *իսկ այնտեղից Պոնտոս, որտեղ և անցկացնում է 625—626 թթ. ձմեռը*[126]։

*Մինչ Հերակլի բանակը Փոքր Ասիայի հյուսիսարևելյան մասերում էր, պարսից զորքը Շահր-Վարազի գլխավորությամբ 626 թ. առաջին կեսում հակահարձակման է անցնում և ավարների խաքանի հետ ունեցած նախնական*

---

115 Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 152*։

116 Սեբեոս, *էջ 125*։

117 *Նույն տեղում*։

118 *Ըստ Հ. Մանանդյանի կայսեր երթուղին անցնում էր Խոյ-Նվարսակ-Արտազ-Որդսպու, այնուհետև Բագրևանդով անցնող ճանապարհով (նշվ. աշխ., էջ 154)*։

119 Սեբեոս, *էջ 125*։

120 *Նույն տեղում*։

121 *Նույն տեղում։ Համտ.* Theoph. Chron., I, *էջ 311*, Georg Cedr., I, *էջ 724*։

122 Սեբեոս, *էջ 126*։

123 *Theoph. Chron.*, I, *էջ 312* *Georg. Cedr.*, *էջ 725*.

124 Սեբեոս, *էջ 126*։

125 *Theoph. Chron.*, I, *էջ 312—314*, *Georg. Cedr.*, I, *էջ 725—726*.

126 Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 160։ Արճեշից մինչև Պոնտոս ընկած Հերակլի անցած ճանապարհից Սեբեոսը հիշատակում է միայն Կեսարիան (էջ 94)։ Հերակլի երթուղու այս հատվածը մանրամասն քննել է նաև Գ. Լասկինը (նշվ. աշխ., էջ 52)*։

պայմանավորվածության համաձայն շարժվում է Կոստանդնուպոլսի վրա և կանգ առնում Քաղկեդոնի մոտ[127]։ Սակայն, տեսնելով ավարների պարտությունը, որոնք շտապողականություն ցուցաբերելով գրոհել էին ծովից, պարսիկները ավարառեցին Քաղկեդոնի մերձակա շրջանները[128]։ Պարսիկների հեռանալու պատճառը պետք է լիներ նաև այն, որ խազարները դաշն կնքելով բյուզանդացիների հետ, սկսում են իրենց ներխուժումները Անդրկովկաս։

Խոսրով Փարվեզի հիմնական ծրագիրն էր՝ Կոստանդնուպոլսի համար ստեղծած սպառնալիքով հարկադրել կայսեր՝ հեռանալ Արևելքից[129], սակայն ջանքերն ապարդյուն անցան։ Հերակլը, գնալով Լազիկա, այնտեղից դեսպանների միջոցով դաշինք է կնքում խազարների հետ[130]։

626 թ. խազարները ներխուժելով Դերբենդից և ավերածություններ գործելով, գալիս, պաշարում են Տփղիսը[131]։ Կայսրը, թողնելով լազերի հողը, միանում է նրանց[132]։ Հերակլի ճանապարհը Տրապիզոնից դեպի Տփղիս անցնում էր Փասիս-Ռիոն գետի հոսանքով տարածվող երկրամասով, այսինքն Կողքիսով[133]։

Երբ կայսրը եկավ Վիրք (Քարթլի), վրաց իշխան Ստեփանոսը ոչ միայն հրաժարվեց աջակցել կայսրին, այլև դուրս եկավ նրա դեմ[134]։ Տփղիսի պաշարման ժամանակ նա խիզախորեն գլխավորում էր պաշարվածների ուժերը[135]։

Տփղիսի պաշարումը ոչինչ չտվեց հույներին ու խազարներին։ Պաշարվածները[136] նույնիսկ ծաղրուծանակի ենթարկեցին խազարների թագավորին։ Հերակլը վերցնելով իր հետ 40.000-անոց հեծելազոր, գնում է հարավ, դեպի Պարսկաստան։ Հերակլը Տփղիսից գալիս է Գարդաբան (Գարդման) և ճամ-

---

[127] *Theop Chron.*, I, էջ *315*, *Georg. Cedr.*, I, էջ *727—729*։

[128] *Theoph Chron.*, I, էջ *316*։ "История Византии", т. I, стр. 366.

[129] Նույն, *հ. Բ, էջ 253*։

[130] Մովսես Կաղանկատվացի, *էջ 151*։

[131] *Այս անցքերի մանրամասն նկարագրությունը տե՛ս* Մովսես Կաղանկատվացի, *էջ 153—156*։ *С. Т. Еремян.* Походы Ираклия и падение владычества Сасанидов в Закавказье, «История СССР с древнейших времен до образования древнерусского государства», ч. III—IV, М.—Л., 1939, с. 164—168.

[132] *Theoph. Chron.*, I, *էջ 316*։ *Տե՛ս նաև Հ.* Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 162*։

[133] *Ю. Кулаковский,* История Византии, III. стр. 75. *Հ. Մանանդյանը ենթադրում է, որ Ջուանշերի («Համառոտ պատմություն Վրաց», Վենետիկ, 1884, գլ. 15, էջ 96—97) հաղորդման մեջ Հերակլի արշավանքի կապակցությամբ Բզնունիքի հիշատակությունը պետք է համապատասխանի Գեորգ Կիպրացու* Bizana-*ին* (Georgii Cyprii Descriptio orbis Romani. ed. H. Gelzer. 1890, *էջ 78*)։ *Ըստ այդմ գիտնականը ենթադրում է, որ կայսրը Տրապիզոնից Տփղիս անցել է Երզնկայով (Վիզանայով-Վժան), Կարինով, Վանանդով և Շիրակով (Հ.* Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 164)*։ *Ջուանշերի հաղորդումը պետք է հավաստի լինի, սակայն այն միաժամանակ վերաբերում է Հերակլի տարբեր տարիների արշավանքներին՝ 624 թ., երբ Արճեշից Մարտիրոպոլիս գնաց ոչ թե Բոստաքենդով, ինչպես ենթադրում է Հ. Մանանդյանը (նշվ. աշխ., էջ 156), այլ Վանա լճի հյուսիսային ափին գտնվող Բզնունիքով, և 626 թ., երբ Տրապիզոնից գալով Փոյթ, այնուհետև Տփղիս է գալիս Վարդ-Ցիխե-Սվերի-Շորապան-Սուրամ ճանապարհով*։

[134] *Е. С. Такайшвили,* Источники грузинских летописей, Три хроники. «Сборник материалов для описания местностей и племен Кавказа», вып. 28, Тифлис, 1900, (*այնուհետև*՝ СМОМПК), стр. 132—133.

[135] *Ստեփանոսը սպանվում է խազարների հաջորդ արշավանքի ժամանակ*։

[136] *Նրանց օգնության է հասնում Խոսրովի կողմից ուղարկված Շահրապղականի գլխավորած մի շոկատ* (Մովսես Կաղանկատվացի, *էջ 156*)։

բար է դնում Խուզաշեն վայրում, այդտեղից էլ գնում է Բերդուջ[137]։ Թողնելով Գարդմանը, կայսրն անցնում է Լալ[138], այնուհետև՝ Շիրակ[139]։

Սեբեոսը նշում է, որ կայսրն անցավ Նախճավան քաղաքով[140]։ Հերակլի երթուղին անցել է Նոր-Շիրական գավառով[141], այսինքն Ուրմիա լճի արևմտյան ափով[142], որտեղ գտնվում էր Նախճավան բնակավայրը (այժմ՝ Նախիջևան-Թեփե, չշփոթել Արաքսի հովտի Նախճավանի հետ)՝ Ուրմիա քաղաքից դեպի հյուսիս-արևելք[143]։ Ռոճ-Վահանը, հետապնդելով կայսրին, գալիս է Նոր-Շիրականի Նախճավան քաղաքը, որտեղից մինչև կհասներ բյուզանդախազարական զորաբանակին, այն արդեն անցել էր Ատրպատականի ծայրամասում գտնվող Զարասպ լեռան մյուս կողմը և մտել պատմական Ասորեստանի տարածքը (Նինվեի ավերակների վայրում)։ Հերակլի բանակը 627 թ. դեկտեմբերի ընթացքում պարտության է մատնում պարսկական զորքը[144]։

628 թ. հունվարին Տիզբոնի արվարձաններում գտնվող պալատները թալանվեցին ու այրվեցին Հերակլի զինվորների կողմից։ Պարսից մեծամեծները, տեսնելով պայքարի անհուսալիությունը, 628 թ. փետրվարի 28-ին հեղաշրջում են կատարում՝ գահընկեց անում և սպանում Խոսրովին, տեղը նստեցնելով նրա որդուն՝ Կավատ Շերոյեին (628 թ.) և խաղաղություն խնդրում Հերակլից, որը ընդունում է։ Երկու տերությունների միջև հաշտության պայմանագիր է կնքվում[145]։

Այս ժամանակ Հայաստանի բյուզանդական մասում իշխանության ներկայացուցիչն էր Մժեժ Գնունին։ Պարսկաստանն այլևս ի վիճակի չէր իր գերիշխանության տակ պահելու Հայաստանի մյուս մասը, քանի որ պարսից արքունիքում տեղի ունեցող գահակալական չընդհատվող փոփոխությունները, որոնք արգասիք էին երկրում տիրած ընդհանուր ճգնաժամի, հնարավորություն չէին տալիս շահնշահերին ակտիվ արտաքին քաղաքականություն վարելու։

---

137 Բերդուջ-Ձորագետ (այժմ՝ Դեբեդ) գետահովտում Սմբատի կողմից հիշատակվող «Սոփիոս» վայրը, ուր ըստ պատմիչի, Հերակլը կանգ առավ, քարե խաչ կանգնեցրեց և եկեղեցու հիմք դրեց, համապատասխանում է հայկական աղբյուրների Ձորոփոր գավառում գտնվող Վախուշտիի՝ «Վրաստանի աշխարհագրությունում» հիշատակվող Սոփա վայրին (տե՛ս С. Т. Еремян, Заметки к тексту «Хроники Сумбата», «Известия» общ. наук Арм. ФАН, № 9(14), 1941, стр. 27—30)։

138 СМОМПК, вып. 28, էջ 127—128, 132, (այժմ՝ Լալի գյուղ Իջևանի շրջանում)։

139 Իսկ Հ. Մանանդյանը նշում է, որ Տփղիսից կայսրը սկզբից ուղևորվում է դեպի արևմուտք՝ այժմյան Ախալցիխե քաղաքը, կամ էլ Ախալքալաքի մոտերքը (նշվ. աշխ., էջ 166)։

140 Սեբեոս, էջ 95։

141 Տե՛ս С. Т. Еремян, Очерк истории СССР (III—IX вв.), М., 1958, стр. 227.

142 Հ. Մանանդյանը կայսեր ճանապարհը ցույց է տալիս Ուրմիայի արևելյան ափով (նշվ. աշխ., էջ 169)։

143 Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույցի», էջ 72։

144 Սեբեոս, էջ 126։

145 629 թ. կայսրը «Խաչափայտը» վերադարձնում է Երուսաղեմ։ Ն. Մառն այն հետազոտողների կարծիքին է, որոնք գտնում են, որ խաչը Երուսաղեմ է վերադարձվել մարտի 21-ին և այդ օրը չպետք է շփոթել սեպտեմբերի 14-ի «Խաչվերաց» եկեղեցական տոնի հետ (Н. Марр, Антиох Стратиг, Пленение Иерусалима Исследование) էջ 5, (перевод), էջ 65։ Խաչի գերեվարումը և վերադարձը քրիստոնյա աշխարհում մեծ տպավորություն էր թողել ժամանակակիցների վրա։ Հատկապես այդ վերաբերում է հայ ժողովրդին։ Ն. Մառը նույն տեղում նշում է, որ մի քանի հայկական ավանդույթներ (Ծիծառնեայ խաչի, Հացյունյաց խաչի և այլ) կապվում են դրա հետ։

*Թվում է, թե պարսից արքունիքը վերջին ճիգերն էր գործադրել Հայաստանի մնացած մասը իր ազդեցության ոլորտում պահելու, այնտեղ որպես մարզպան[146] ուղարկելով Սմբատ-Խոսրով Շում Բագրատունու որդուն՝ Վարազտիրոցին։ Վերջինս փորձեց ինքնուրույն իշխել, սակայն երկրում ստեղծված բարդ իրավիճակը նրան ստիպում է հեռանալ Բյուզանդական կայսրության սահմանները[147]։*

*Այսպիսով, վաղ ֆեոդալական դարաշրջանում Հայաստանը պարբերաբար երկու մարտնչող պետությունների ռազմական գործողությունների թատերաբեմ էր դարձել, որը խիստ բացասաբար էր ազդում երկրի ճակատագրի վրա։ Երկրի բաժանումները մրցակից պետությունների միջև չէին կարող իրենց բացասական կնիքը չդնել Հայաստանի սոցիալ-տնտեսական հարաբերությունների վրա, քանի որ, բացի այլ հանգամանքներից, կտրվում էին տնտեսական ու քաղաքական կապերը տարբեր շրջանների միջև և այս հանգամանքն ավելի էր խորացնում երկրի ֆեոդալական մասնատվածությունը։ Սա իր հերթին քաղաքական տեսակետից կործանարար էր երկրի համար, քանի որ ֆեոդալական տները տարբեր կողմնորոշում ունենալով, կենաց ու մահու կռիվ էին մղում միմյանց դեմ։ Պարսկաբյուզանդական հակամարտության ավարտով Հայաստանը չէր ազատվում պատերազմների և ասպատակությունների թատերաբեմ լինելուց։ Կարճ ժամանակ անց Հայաստանն սկսեց ենթարկվել Արաբական թերակղզուց դուրս եկած վաչկատուն ցեղերի ասպատակություններին, որոնց հետևելու էր խալիֆայության տիրապետության ծանր լուծը։*

---

146 *Տե՛ս И. А. Орбели,* Багаванская надпись 639 г. и другие армянские ктиторские надписи VII века, «Христианский Восток», II, вып. 1, СПб., 1913, стр. 114, 129.

147 Նույնը, *էջ 128, 132։*

# ԲԱԺԻՆ Գ

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՐԱԲԱԿԱՆ ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՆԵՐՔՈ ԵՎ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՅՔԱՐԸ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ VII-IX ԴԱՐԵՐՈՒՄ

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆՈՒԹՅՈՒՆԸ VII ԴԱՐԻ 30—90-ԱԿԱՆ ԹԹ.

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԱՐԱԲԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ

*VII դարի առաջին կեսում Մերձավոր Արևելքում տեղի ունեցան անցքեր, որոնք պետք է ստանային համաշխարհային պատմական նշանակություն։ 630-ական թվականներին առաջացած արաբական խալիֆայությունը ձեռնարկեց ծավալուն նվաճումներ և շուտով դարձավ միջնադարյան աշխարհի հզոր տերություններից մեկը, որը պիտի տնօրիներ նաև Հայաստանի և հայ ժողովրդի ճակատագիրը։*

*Արաբական խալիֆայության երևան գալու նախօրեին Հայաստանում կատարվել էր մի շատ կարևոր փոփոխություն։ Եթե V—VI դդ. քաղաքական առաջնության համար Մամիկոնյանների հետ մրցում էին Սյունյաց իշխանները, ապա VI դ. վերջերին ու VII դ. սկզբին Սյունյաց իշխանները ասպարեզից դուրս եկած լինելով, Մամիկոնյանների անմիջական մրցակիցները դարձան վերելք ապրող Բագրատունիները, որոնք ձգտելով առաջնության, սկսեցին վճռական դեր խաղալ երկրի քաղաքական կյանքում։*

*Հայաստանի երկու հատվածներում էլ (պարսկական ու բյուզանդական) քաղաքական անկայուն վիճակ էր տիրում։ 628 թ. պարսկական Հայաստանի մարզպան էր դարձել Վարազտիրոց Բագրատունին, որը մեծ հեղինակություն ուներ։ Նրա օրոք Հայոց սպարապետ էր Թեոդորոս Ռշտունին։ Սասանյան Իրանը քայքայվել էր, և 628 թ. Խոսրով Փարվեզի մահից հետո 4 տարում իրար էին հաջորդել մոտավորապես 10 անզոր արքաներ, իսկ Հազկերտ Գ (632—652) զուրկ էր հեղինակությունից։ Նման պայմաններում Հայաստանը, Ատրպատականը և այլ նահանգներ վայելում էին քաղաքական ինքնուրույնություն։*

*Սակայն Ատրպատականի մարզպան Խոռոխ Որմզդի և բյուզանդական Հայաստանի կառավարիչ (Հայոց իշխան) Մժեժ Գնունու սադրանքների հետևանքով Վարազտիրոց Բագրատունին թողեց Դվինը և հեռացավ արևմուտք*[1]*, իսկ պարսկական Հայաստանում իշխանության տեր մնաց Թեոդորոս Ռշտունին։ Այս դեպքերը տեղի ունեցան մոտավորապես 634 թ. Կարնո ժողովից (633) հետո, Մժեժ Գնունու սպանությունից (635) առաջ։*

*633 թ. իսլամի դրոշի տակ միավորված արաբները ներխուժեցին Պաղես-*

---

[1] Սեբեոս, *էջ 132—133։*

տին, ապա՝ Միջագետք։ 637 թ. տեղի ունեցավ Կադիսիյյայի ճակատամարտը, որին մասնակցեցին Սյունյաց Գրիգոր իշխանը՝ 1000, և Մուշեղ Մամիկոնյանը՝ 3000 ռազմիկներով[2]։ Սասանյան զորքը պարտություն կրեց և Տիզբոնն ընկավ արաբների ձեռքը, որից հետո Հայաստանի արևելյան նահանգները լրիվ կտրվեցին Սասանյան Իրանից։

Ինչ վերաբերում է բյուզանդական Հայաստանին, ապա այնտեղ Մժեժ Գնունուն 635 թ. հաջորդեց Դավիթ Սահառունին, որը, սակայն, 639-ին հեռացվեց իշխանությունից։ Թեոդորոս Ռշտունին դրության տեր դառնալով, 639 թ. իրար կցեց Հայաստանի պարսկական ու բյուզանդական մասերը, միավորեց երկիրը, որը դարձավ ինքնուրույն իշխանապետություն։ Նա ոչ միայն Հայոց իշխան էր, այլև սպարապետ ամբողջ Հայաստանում։ Նստավայրն էր Ռշտունյաց գավառի Աղթամար կղզին, որը շենացրեց և ապաստան դարձրեց ամեն տեսակ հավանական հարձակումների դեմ[3]։

Այնուհանդերձ Ռշտունյաց տիրոջ նկատմամբ հայ նախարարների տրամադրությունները այնքան էլ բարյացակամ չէին և նրան սոսկ հանդուրժում էին որպես իշխան Հայոց ու սպարապետ, բայց պաշտոնապես նա դեռ չէր համարվում Հայոց իշխան (պատրիկ)։ Բյուզանդական իշխանությունն, ըստ էության, խախուտ էր Հայաստանում և հայ նախարարները լրիվ վայելում էին իրենց ներքին ինքնավարությունը։

Ահա այսպիսին էր իրադրությունը, երբ երևան եկան արաբները, որոնց նվաճումներին նպաստեցին նաև որոշ արտաքին ազդակներ։ Պարսկաստանն ու Բյուզանդիան երկարատև պատերազմներից թուլացել էին, իսկ Ասորիքի, Պաղեստինի, Վերին Միջագետքի ու Եգիպտոսի քրիստոնյա ազգաբնակչությունը (միաբնակ), զզված կայսրության կրոնական նեղմիտ քաղաքականությունից, չդիմադրեց նոր նվաճողներին և որոշ դեպքերում նույնիսկ օժանդակեց նրանց առաջընթացին։

636 թ. Խալիդ իբն ալ-Վալիդ զորավարը Յարմուքի (Հորդանանի վտակ) ափերի մոտ ջախջախեց բյուզանդական զորքը, որի շարքերում կռվում էր նաև մի հայկական զորախումբ, իսկ հայազգի Վահան զորավարը գլխավոր հրամանատարն էր[4]։

Արաբներն սկզբում բարյացակամ վերաբերմունք ցուցաբերեցին Պաղեստինի ու Ասորիքի քրիստոնյա ժողովուրդների նկատմամբ։ Նույնիսկ Երուսաղեմի հայերը, որոնք Հուստինիանոս Ա-ի հալածանքներից փախել էին, արաբների օրոք վերադարձան։ Սակայն նվաճումներից որոշ ժամանակ անց այդ վերաբերմունքն արմատապես փոխվեց։

Ասորիքից արաբներն անցան Եփրատը՝ Վերին Միջագետքը նվաճելու նպատակով։ Այստեղ գտնվող բյուզանդական զորքը դիմադրելու ցանկություն բոլորովին չուներ, քանի որ արաբական զորքերն արդեն նվաճել էին Ստորին Միջագետքը (Իրաք) և Ասորիքը, Վերին Միջագետքի ասորի ազգաբնակչությունը դեմ չէր արաբների հաղթական առաջընթացին։

Ըստ ասորական աղբյուրների, այս հուսահատական դրության մեջ Եդեսիայում նստող բյուզանդական զորապետ Հովհանը գնաց Կիննասրին (Հալեպի շրջան)՝ արաբներին տարեկան հարյուր հազար դահեկան հարկ վճարելու

2 Նույն տեղում, էջ 137։

3 Նույն տեղում, էջ 134։

4 Theophanis Chronographia, ed. C. de Boor. I, p. 338:

*պատրաստակամություն հայտնելու, պայմանով, որ արաբները մուտք չգործեին երկիրը։ Հերակլ կայսրը պաշտոնանկ արեց Հովհանին և նրա փոխարեն նշանակեց Պտղոմեոս անվամբ մեկին[5], սակայն շուտով արաբական զորքը մտավ Վերին Միջագետք։*

*639 թ. Իյադ իբն Ղանմի հրամանատարության տակ արաբներն անցան Եփրատը։ Իրար ետևից ընկան Կալինիկումը (արաբ. Ռակկա), Ուռհան (Եդեսիա), Սամոսատը, Մծբինը (արաբ. Նասիբին) և Սինգարը (Շնգար), որոշ չափով դիմադրեցին միայն Դարան և Թելլա Մաուզելաթը[6]։*

*Դրանից հետո արաբները մտան Մեծ Հայքի սահմանները։ Առանց դիմադրության ընկան Ամիդն ու Նփրկերտը (արաբ. Մայաֆարկին)։ Իյադին ենթարկվեցին Աղձնիքը, Կորճայք նահանգի Կորդուք, Տմորիք և Վասպուրականի Անձևացիք գավառները։ Վերջինիս իշխանը (Բաթրիկ ազ-Ջաուազան) հնազանդություն հայտնեց Իյադին, որը վերահաստատեց նրա իշխանությունը։ Այս դեպքերը կատարվեցին հիջրի 19 թ. Մուհառամ ամսին (հունվար, 640)[7]։*

*Իյադի հիշյալ հաջողությունների ժամանակ բյուզանդացիք մի վերջին փորձ կատարեցին Վերին Միջագետքը ետ գրավելու համար։ Հարձակումը կատարվեց երկու կողմից։ Մի մասը հայազգի Դավիթ զորավարի (Դավիթ Հայկազն) հրամանատարությամբ Հայաստանի կողմից ներխուժեց Միջագետք, իսկ մյուսը՝ Վալենտին զորավարի գլխավորությամբ առաջ շարժվեց մերձեփրատյան շրջանների վրայով։ Իմանալով այդ մասին, արաբները հարձակվեցին ու ոչնչացրին վերջինիս զորամասը։ Հայազգի Դավիթը տեսնելով, որ արաբների հիմնական ուժերը պայքարում են Վալենտինի դեմ, համարձակորեն ներթափանցեց Միջագետք։ Ըստ ասորի պատմիչի, Դավթի և նրա զորամասում գտնվող ասորի զորավար Տիտոսի միջև հարաբերությունները լարվեցին, որը նպաստեց արաբների հաջողությանը։*

*Իյադ իբն Ղանմը, որն այդ ժամանակ Ասորիքում էր, վերադարձավ և հարձակվեց Դավթի զորամասի վրա։ Այստեղ Տիտոսը դավաճանեց Դավթին և արաբների դեմ մենակ թողեց նրա հայկական զորամասը։ Դավիթ Հայկազնը և նրա գրեթե բոլոր հայ ռազմիկներն ընկան արաբների դեմ կռվում[8]։*

*Թեոդորոս Ռշտունին, լսելով արաբների ներխուժման մասին, շտապել էր փակել Ձորա պահակի (Բաղեշի) լեռնանցքը, բայց արաբները շատ արագ էին շարժվում։ Իյադ իբն Ղանմը Ձորա պահակից անցավ հյուսիս ու ներխուժեց Տարոն, որտեղ առաջին անգամ դիմադրության հանդիպեց։ «Տարոնի պատմության» մեջ տրված է այս դեպքերի նկարագրությունը։ Տարոնի իշխան Տիրան Մամիկոնյանն ութ հազարանոց զորքով դուրս եկավ արաբների տասնութ հազարանոց զորքի դեմ, սակայն պարտվեց[9]։*

5 *Н. В. Пигулевская*, Византия и Иран на рубеже VI—VII вв. стр. 288.

6 *Վերին Միջագետքի դյուրին նվաճմանը նպաստեցին տեղական բյուզանդական զորքերի միջև գոյություն ունեցող երկպառակությունները։ Զորքի մեջ կային ոչ միայն հույներ, այլև հայեր ու ասորիներ, որոնց միջև տեղ գտած թշնամությունը քայքայեց բանակը։*

7 *Beladsori*, p. 176.

8 *Н. В. Пигулевская, նշվ. աշխ., էջ 287—288։*

9 Յովհան Մամիկոնեան, *Պատմութիւն Տարօնոյ, Երևան, 1941, էջ 285—286։ «Տարոնի պատմության» մեջ հիշված այն փաստը, թե պարտությունն Անձևացյաց Սահուռ իշխանի դավաճանության պատճառով էր, անհավանական չէ, քանի որ, ինչպես նշվեց ըստ IX դարի արաբ պատմիչ Բալաձուրիի վկայության, Անձևացյաց (Ջավազան) տերը մի տարի առաջ հնազանդվել էր Իյադին։*

Բալաձուրին վկայում է, որ Իյադը հասավ Խլաթ և այնտեղ նրան հպատակություն հայտնեց Խլաթի իշխանը (Մամիկոնյան)։ Խլաթից նա շարժվեց դեպի Կարնո կողմերը՝ Թթու ջուրք (ալ-Այն, ալ-Համիդա), բայց շուտով վերադարձավ Բաղեշ։ Արաբ պատմիչի այս տեղեկությունն արշավողների վերադարձի մասին փաստորեն վերաբերում է միայն Իյադին, որովհետև մնացած զորքը շարունակեց արշավանքը դեպի Աղիովիտ, այնտեղից Կոգովիտ և ապա՝ Դվին։ Մայրաքաղաքը բացարձակապես անպաշտպան էր, քանի որ ոչ ոք չէր կարողացել պաշտպաններին նախապես տեղեկացնել։ Իսկ Թեոդորոս Ռշտունին գտնվում էր Նախճավանում[10]։

Երեք հայ իշխաններ՝ Թեոդորոս Վահևունին, Խաչյան Առավեղյանը և Շապուհ Ամատունին քանդեցին Մեծամորի կամուրջը և հասնելով Դվին, տեղյակ պահեցին քաղաքացիներին եղելության մասին[11]։ Այգեկութի ժամանակ էր և դաշտում գտնվող ժողովուրդն ապաստանեց քաղաքի պարիսպներից ներս։ Արաբներն իրենց հետ վերցրել էին Մոկաց Վարդիկ իշխանին, որը, հավանաբար, Անձևացյաց իշխանի նման, հնազանդություն էր հայտնել Իյադ իբն Ղանմին (639 թ. կամ 640-ի սկզբում)։ Արաբները անցան Մեծամորից այն կողմ և Դվինի շրջակայքի գյուղերը կողոպտելուց հետո բանակ դրեցին Խոսրովակերտ անտառի եզերքին։ Նրանք հոկտեմբերի 5-ին, հինգշաբթի օրը, հարձակվեցին անպաշտպան Դվինի վրա և պարիսպների վրա գտնվող փոքրաթիվ պաշտպաններին ծխով ու նետաձգությամբ ետ մղեցին, բարձրացան պարիսպների վրա և ներս խուժելով, բաց արեցին քաղաքի դռները։ Քաղաքի գրավումը տեղի էր ունեցել ուրբաթ օրը՝ հոկտեմբերի 6-ին։ Դվինը կողոպտվեց, բնակիչներից շատերը կոտորվեցին, մի մասն էլ՝ Սեբեոս պատմիչի վկայությամբ 35 հազար մարդ, գերի տարվեց։ Թեոդորոս Ռշտունին արաբական զորամասին դիմադրություն ցույց տվեց Կոգովիտ գավառում, բայց պարտվեց, իսկ արաբները թեթև վնասներ կրելով վերադարձան Աղձնիք։

Երկրում զգացվում էր ուժեղ իշխանություն ստեղծելու անհրաժեշտությունը և նորընտիր Ներսես Գ Տայեցի (641—661) կաթողիկոսը հայ նախարարների անունից դիմեց Հերակլի հաջորդ Կոստանդ կայսրին և խնդրեց, որ Թեոդորոս Ռշտունին պաշտոնապես ճանաչվի «Հայոց իշխան»։ Կայսրը նրան տվեց «զօրավարութիւն» «հանդերձ պատրկութեան պատուով»։ Հայաստան ուղարկվեց նաև հունական զորք՝ Պռոկոպ զորավարի հրամանատարությամբ։ Ըստ ասորի պատմիչի, Թեոդորոս Ռշտունին և Պռոկոպը 642—3 թ.[12] Աղձնիքի վրայով մտան Վերին Միջագետք և ուժեղ հարձակումով հասան մինչև Բատնա-Սերուգ, որը գտնվում է Եդեսիայից հարավ-արևմուտք, «նրանք կողոպտեցին այդ քաղաքը, վերցրին ինչ որ ցանկանում էին և վերադարձան իրենց երկիրը»[13]։

Արաբները Հայաստանին մոտեցան նաև Ատրպատականի կողմից։ 639—641 թթ. նրանք նվաճեցին Ատրպատականը, որի կազմում էր Մեծ Հայքի Պարսկահայք նահանգի դաշտային մասը։ Արաբները 643 թ. նվաճեցին նաև մարզ-

---

10 Սեբեոս, էջ 138։

11 Նույն տեղում։ Ղևոնդ, գլ. Գ։ Տե՛ս նաև՝ Լեո, հ. Բ, էջ 315—316։

12 Այս արշավանքների մասին տե՛ս Հ. Մանանդյան, Արաբական արշավանքները Հայաստանում, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Բ, Բ մասի նյութեր, Երևան, 1960, ինչպես նաև՝ *H. Thoptschian*, Armenien vor und während der Araberzeit. Zeit für arm. phil., Marburg, 1903, S. 60—71.

13 Chronique de Denys de Tell Mahré, IV, p. 6—7.

պանական շրջանում Հայաստանի մաս կազմող «Մարաց աշխարհը» և ապա մտան Արաքսի հովիտը, ասպատակեցին Գողթնը, Նախճավանը։ Այստեղ նրանք բաժանվեցին երկու մասի։ Մի մասն իր ավարի հետ վերադարձավ Ատրպատական, իսկ մյուսը՝ մտավ Արտազ գավառը։ Երբ Հայոց իշխանի և Պռոկոպի զորքերը Կոգովիտ գավառում էին, Թեոդորոս Ռշտունին ուզեց հակահարված տալ արաբներին, սակայն հույն զորավարը ոչ միայն չհամաձայնեց այս ծրագրին, այլև թշնամանեց Հայոց իշխանին։ Վերջինս առանձին հարձակվեց արաբների զորամասի վրա և որոշ վնասներ պատճառելով ետ քաշվեց Վասպուրականի Գառնի գավառը։ Հույները (ըստ Ղևոնդի՝ 60 հազար հոգի) Կոգովիտի և Մարդուցայքի (Մարդաստան) սահմանների վրա բախվեցին արաբների հետ և չարաչար պարտություն կրեցին[14]։

Այս պարտությունից որոշ ժամանակ անց Հայաստան եկավ մի հույն պաշտոնյա (կամ զորավար)՝ Թումա անունով, որը, հավանաբար, Պռոկոպի դրդմամբ առանց կայսերական հրամանի ձերբակալեց Թեոդորոս Ռշտունուն և տարավ Կոստանդնուպոլիս։ Սակայն Հայոց իշխանը պատվով ընդունվեց կայսեր կողմից և արդարացվեց, իսկ Թուման պաշտոնազուրկ արվեց։ Կոստանդնուպոլսի արքունիքում Թեոդորոսը հանդիպեց Վարազտիրոց ասպետին, որը Հերակլ կայսեր դեմ կազմակերպած դավադրության պատճառով աքսորվելուց հետո նոր էր վերադարձել։ Ինչպես երևում է, նա որոշ ծրագիր էր հղացել Հայաստանի ապագա քաղաքական կյանքի վերաբերյալ[15]։ Նա առանց կայսերական հրամանի փախավ Հայաստան և հաստատվեց Տայքում։ Կայսրը, լսելով այդ մասին, հրամայեց ձերբակալել Վարազտիրոցին, սակայն նա կարողացավ համոզել, որ ինքը ոչ մի վատ մտադրություն չուներ և կայսրն ընդառաջելով Հայոց նախարարների ցանկությանը, նրան կարգեց իշխան Հայոց՝ տալով կուրապաղատ տիտղոսը և արծաթե գահ։ Սակայն հենց այդ ժամանակ խորհրդավոր պայմաններում հանկարծակի մեռավ Վարազտիրոցը։

Կայսրը Հայաստան ուղարկեց Թեոդորոս Ռշտունուն (մոտ. 649 թ.)։ Պատմիչն ավելացնում է, որ կայսրը նրան տվեց իշխանությունն, արդեն առանց հաշվի առնելու հակառակորդ նախարարների տրամադրությունները[16]։

## 2. ԹԵՈԴՈՐՈՍ ՌՇՏՈՒՆՈՒ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ։ 654 Թ. ԱՐԱԲԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔԸ

Թեոդորոս Ռշտունու վերադառնալուց հետո դրությունը մեծ չափով փոխվել էր Հայաստանի հարավն շրջաններում։ Աղձնիքին տիրանալուց հետո արաբները Հաբիբ իբն Մասլամայի գլխավորությամբ 640-ական թթ. ժամանակավորապես նվաճեցին Չորրորդ Հայքը և նույնիսկ փորձեցին գրավել Կամախ բերդը Բարձր Հայքում։ Ատրպատականում արդեն վերջնականապես հաստատված արաբները ձգտում էին ներխուժել Հայաստան։

Հայերի համար ստեղծված օրհասական այդ ժամանակաշրջանում բյուզանդական կայսրը նորից առաջ քաշեց քաղկեդոնականության հարցը, Հայաստան ուղարկելով Դավիթ Բագավանցի վարդապետին։ Դվինում ժողով գու-

---

14 «Պատմութիւն Ղևոնդեայ, մեծի վարդապետի Հայոց», Պետերբուրգ, 1887, էջ 8։

15 Սեբեոս, էջ 143—144։

16 Նույն տեղում, էջ 145, տե՛ս նաև՝ Լեո, հ. Բ, էջ 317։

մարվեց (մոտ 649 թ.) Ներսես կաթողիկոսի և Թեոդորոս Ռշտունու գլխավորությամբ։ Հայերը չընդունեցին Կոստանդ կայսեր առաջարկն ու կրկին պաշտպանեցին միաբնակ դավանանքը[17]։ Սակայն Դվինի ժողովի մերժողական պատասխանը (դավանության թուղթ), որն ամբողջությամբ բերված է Սեբեոսի պատմության մեջ, որոշ նկատառումներով չուղարկվեց կայսեր։

650 թ. ամռանը Ատրպատականից արաբական մի զորամաս ներխուժեց Հայաստան՝ ասպատակելու նպատակով[18]։ Այն բաժանվեց երեք խմբի. մեկը Այրարատով անցավ հյուսիս-արևմուտք մինչև Տայք, մյուսը՝ դեպի Վասպուրական («սեպհական ոգիին կողմանս»), իսկ երրորդը՝ դիմեց Աղվանք։

Երկրորդ խումբը հարձակվեց «Հէրևան»-ի բերդի[19] վրա, բայց հաջողություն չունեցավ, իջավ Կոգովիտ և բանակ դրեց Արծափ բերդի դիմաց։ Բերդի պաշտպանները Դարույնքի ամրոցի Բագրատունիներից օգնություն խնդրեցին։ Վարազ Սահակի որդի Սմբատ Բագրատունին միայն քառասուն ռազմիկ կարողացավ ուղարկել։ Պաշարող արաբները նկատելով այն անցքը, որով բերդում պաշարվածները ել ու մուտ էին անում, նույն տեղից ներս մտան և գրավեցին բերդը (օգոստոսի 8-ին, կիրակի օրը)։ Արաբները շատ գերիներ էին հավաքել Արծափ բերդի առջև և ցանկանում էին կոտորել նրանց, սակայն հանկարծակի վրա հասավ Թեոդորոս Ռշտունին իր զորամասով և ոչնչացրեց երեք հազար զինվոր, այդ թվում նաև Օսման և Օկբա զորապետերին։

Ինչպես երևում է պատմիչների վկայություններից, այդ ժամանակ Հայաստանում բյուզանդական զորք չկար։ Կայսրությունը լքել էր հայերին, վերջիններս միայն իրենց ուժերով ի վիճակի չէին դիմակայել արաբներին ու ապահովել Հայաստանի անկախությունը, արաբներին դիմադրելն այլևս իմաստ չուներ։ Քաղաքական ճիշտ կողմնորոշումն այդ ծանր պայմաններում ճակատագրական նշանակություն պետք է ունենար հայերի համար[20]։ Հեռատես պետական և զինվորական գործիչ Թեոդորոս Ռշտունին, հաշվի առնելով ստեղծված իրավիճակը և ուժերի փոխհարաբերությունը, կողմնորոշվեց դեպի խալիֆայությունը, մանավանդ որ բյուզանդացի զորավար Պռոկոպը հաշտության

---

17 «Միաբնակ դավանանք» ասելով չպետք է հասկանալ «եվտիքյան ուսմունքը», որը միաբնակության ծայրահեղ թևն էր և դավանում էր, որ Քրիստոսը միայն աստված էր, իսկ «մարդկային բնությունը» նրա մեջ համարյա աննշան է։ Հայ եկեղեցին այդ թևին չէր պատկանում, այլ դավանում էր Եփեսոսի երրորդ տիեզերական ժողովում ընդունված Կյուրեղ Աղեքսանդրիացի հայրապետի այդ հարցում տված հետևյալ ձևակերպումը. «Մի բնութիւն բանին մարմնացելոյ»։

18 Ղևոնդ, էջ 11—12։

19 Գ. Վ. Աբգարյանը «յԵրևան» տեղանունը, ըստ Մատենադարանի № 1343 ձեռագրական պատառիկի և № 2639 ձեռագրի ուղղում է «ի Հէրևան» և այն մեկնում «Հէր և անդ» հաստատված համարելով Հ. Մանանդյանի կարծիքը «Երևան» անունը «Հեր»-ով փոխարինելու մասին (Հ. Մանանդյան, Հայաստանի գլխավոր ճանապարհները, Երևան, 1936, էջ 146, Գ. Վ. Աբգարյան, «Երևանի» բերդի հնագույն հիշատակությունը, «Լրաբեր հաս. գիտ.», 1972, № 8, էջ 30—31, Սեբեոս, էջ 145, 314, ծ. 512)։ Է. Լ. Դանիելյանը ենթադրում է, որ «Հէրևան» բերդը համապատասխանում էր Ասողիկի հիշատակած Հերեան-ին (Դավիթ Անհաղթի ծննդավայրը), որը գտնվում էր Հարք գավառում (տե՛ս ՊԲՀ, 1982, № 2, էջ 106 և հտև.)։

20 Այս մասին մանրամասն տե՛ս Լեո, հ. Բ, էջ 322 և հետ., նաև՝ Բ. Առաքելյան, Հայաստանը արաբական տիրապետության առաջին շրջանում և հայերի պայքարն անկախության համար։ Արմֆանի գիտական ժողովածու, 1940, էջ 65 և հետ. Նույնի՝ ժամանակագրական դիտողություններ, «Լրաբեր հաս. գիտ.», № 1 (6), 1941, էջ 61 և հետ։

դաշինք էր կնքել արաբների հետ՝ Հայաստանը մենակ թողնելով արաբների դիմաց։

Թեոդորոս Ռշտունին Հայրենիքի ներքին ինքնուրույնությունը պահպանելու նպատակով բանակցություններ վարեց Ասորիքի և Վերին Միջագետքի հզոր կուսակալ Մուավիայի հետ, որն Օսման խալիֆայի օրոք (644—656) բարձր հեղինակություն ուներ։ 652 թ. նրանց միջև պայմանագիր կնքվեց, ըստ որի Հայաստանը երեք տարի ժամկետով ազատվեց արաբներին հարկ վճարելուց, որից հետո պետք է վճարեր այնքան, որքան կամենար։ Հայերին իրավունք տրվեց ունենալ 15 հազարանոց հեծելազոր, որի ծախսերը պետք է հայ նախարարները հոգային։ Հայոց հեծելազորը, բացի Ասորիքից, ուր որ խալիֆայությունը պահանջեր, պարտավոր էր գնալ կռվելու։ Հայաստանի բերդերում չէին լինելու արաբական կայազորներ, սակայն եթե հույները հարձակվեին, արաբները հայերի պահանջով պարտավոր էին զորք ուղարկել[21]։

Սա առաջին քաղաքական պայմանագիրն էր, որ հայերը կնքեցին արաբական խալիֆայության հետ[22]։ Թեոդորոս Ռշտունու կնքած պայմանագիրը մի համարձակ քաղաքական քայլ էր, որի նպատակն էր ճանաչելով արաբական խալիֆայության ձևական գերիշխանությունը՝ ապահովել Հայաստանի ինքնուրույնությունը։

Տեղեկանալով կնքված պայմանագրի մասին, Կոստանդ կայսրը փորձեց ստիպել հայերին հրաժարվել արաբների հետ լեզու գտնելու քաղաքականությունից և Ռշտունուն հրավիրեց Կարին՝ բանակցությունների։ Նա պատրաստ էր որոշ զիջումների, սակայն Ռշտունյաց տերը չհամաձայնվեց բանակցել նրա հետ։ Ըստ Սեբեոսի, Կոստանդ կայսրը 653 թ. 100 000 զորքով եկավ և կանգ առավ Դերջան (Բարձր Հայք) գավառում[23]։ Այստեղ նրան դիմավորեց Մուավիայի դեսպանը, զգուշացնելով, որ եթե մտնի Հայաստան, ապա արաբները զենքով կդիմավորեն նրան։ Սակայն կայսրը շարունակեց իր ճանապարհը և հասավ Կարին։

Այդ ժամանակ հայ նախարարները և հոգևորականությունը բաժանված էին տարբեր կողմնորոշում ունեցող երկու խմբի[24]։

Թեոդորոս Ռշտունու նոր քաղաքականությունը պաշտպանում էին նրա փեսան՝ Համազասպ Մամիկոնյանը, Սյունյաց Հրահատ իշխանը, մի քանի այլ

21 Սեբեոս, էջ 164։

22 Բալաձուրին վկայում է, որ Իյադ իբն Ղանմը Խլաթի տիրոջը (Մամիկոնյան) նույնպես տվել էր նրա հողատիրական իրավունքները հաստատող երաշխավորագիր, սակայն դա առանձին նախարարի տրված պայմանագիր էր (Beladsori, p. 199):

23 Սեբեոս, էջ 165։

24 Խմբավորումները կազմավորվել էին դեռևս Եզր կաթողիկոսի օրոք (630—641), երբ նա գնալով Կարին, ընդունեց միակամությունը (Քրիստոս երկու բնություն ունի, բայց մեկ կամք)։ Եզրի Դվին վերադարձից հետո մայրաքաղաքում այլևայլ տրամադրություններ կային։ Զիջումներին կողմնակից եկեղեցականներին առընթեր կար չափավոր ուղղության տեր նախարարների ու հոգևորականների խումբ, որը գլխավորում էր սպարապետ Թեոդորոս Ռշտունին։ Իսկ զիջումներին ընդդիմադիր խմբավորումը Հովհան Մայրավանեցու գլխավորությամբ բացարձակապես ժխտող դիրք գրավեց։ Սակայն Ներսես կաթողիկոս Տայեցու ժամանակ (641—661) նախկին չափավոր խմբավորումն արդեն ընդդիմադիր վերաբերմունք ուներ քաղկեդոնականության նկատմամբ՝ նոր հայրապետի ցուցաբերած զիջումներին։

մանր նախարարներ, ինչպես նաև Վրաց և Աղվանից իշխանները։ Բյուզանդական կողմնորոշում ունեցող նախարարներն՝ ընդհակառակը, հակադրվում էին Թեոդորոս Ռշտունու քաղաքական գծին։ Դրանք էին Մուշեղ Մամիկոնյանը, Բագրատունյաց իշխանները, և մանավանդ Ներսես Տայեցի կաթողիկոսը, որոնք միասին գնացին Կարին՝ դիմավորելու Կոստանդ կայսրին։ Կոստանդը 20 հազար զորքով առանց դիմադրության հանդիպելու շարունակում էր խորանալ Հայաստանի տարածքը, քանի որ նրա հետ էին հիշյալ նախարարները, մյուս կողմից՝ ըստ Թեոդորոս Ռշտունու կնքած պայմանագրի, Հայաստանում արաբական զորք չկար։ Հայոց իշխանը ստիպված քաշվել էր իր նստավայրը՝ Աղթամար։

Դվինում կայսրը Մուշեղ Մամիկոնյանին կարգեց «իշխան Հայոց հեծելոց», որպեսզի նրան հակադրի Թեոդորոս Ռշտունուն, որին նա իշխանությունից զրկել էր։ Փաստորեն Հայաստանը բաժանվել էր երկու թշնամի խմբավորումների։ Թեոդորոս Ռշտունու կողմնակիցները ամրացել էին իրենց բերդերում, իսկ հակառակ խմբավորման ղեկավար Մուշեղ Մամիկոնյանը կայսրից ստանալով երեք հազարանոց զորք, հարձակվեց Վասպուրականի վրա[25]։ Կոստանդ կայսրը զորք ուղարկեց նաև Սյունիք, Աղվանք և Վիրք, սակայն առաջին երկուսը Վասպուրականի նման դիմադրեցին և բյուզանդական զորքն ասպատակելուց հետո վերադարձավ Դվին։

Կայսեր գլխավոր նպատակներից մեկը հայերին քաղկեդոնական ծեսի պարտադրումն էր։ Այս հարցում ևս Ներսես Տայեցին զիջող գտնվեց և Դվինի ս. Գրիգոր մայր տաճարում ոչ միայն հայ եկեղեցականներն ընդունեցին երկաբնակ ուսմունքը, այլև հույն երեցը հունարեն պատարագ մատուցեց, որտեղ կայսեր հետ հաղորդություն ընդունեցին Ներսես կաթողիկոսը և հայ եպիսկոպոսները։ Եպիսկոպոսներից մեկը համարձակորեն դիմադրեց, բայց ի վերջո զիջեց[26]։

Հեռանալով Դվինից, կայսրը բյուզանդական զորքը թողեց Հայաստանում՝ Մավրիանոսի գլխավորությամբ[27]։ Հակառակ այս զորքի առկայությանը, Ներսես Տայեցին չմնաց ո՛չ Դվինում, ո՛չ էլ իր կիսավարտ ձեռակերտ Զվարթնոցում, այլ ստիպված, Կոստանդնի հետ հեռացավ ու հաստատվեց իր ծննդավայր Տայքի Իշխան գյուղում։

Հենվելով 652 թ. դաշնագրի վրա, Թեոդորոս Ռշտունին օգնական զորք պահանջեց Մուավիայից և ստացավ յոթ հազարանոց մի զորամաս։ Նա հարձակվեց հույների վրա և մինչև Տրապիզոն հալածեց նրանց։ Ապա գնաց Դամասկոս և ոչ միայն վերահաստատվեց որպես Հայոց իշխան, ստանալով ոսկեթել դրոշ, այլև գերագույն իշխանությունը Վրաց, Աղվանից երկրների վրա, մինչև Ճորա պահակը, այսինքն այն երկրամասի, որը հետագայում դարձավ Արմինիա ոստիկանությունը։

Երկրի խառնակ վիճակը ստիպեց հայ նախարարներին ողջախոհ լինել և քաղաքական երկու խմբավորումների («Իշխանքն Հայոց որ ի Յունաց եւ որ ի Տաճկաց կողմանէ) ներկայացուցիչները՝ Համազասպ և Մուշեղ Մամիկոնյաններն իրենց համախոհներով նախարարաց ժողով գումարեցին և որոշեցին երկ-

25 Սեբեոս, էջ 166։

26 Ենթադրվում է, որ այդ եպիսկոպոսը պատմագիր Սեբեոսն է եղել (Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, հ. Ա, Երևան, 1944, էջ 392)։

27 Սեբեոս, էջ 168. Beladsori, p· 199.

րի իշխանությունն ու պաշտպանությունը հանձնել նախարարներին ըստ գավառների, քանի որ Հայոց իշխան Թեոդորոս Ռշտունին ծանր հիվանդացել էր և քաշվել Աղթամար։

Սակայն բյուզանդական զորքը Մավրիանոսի գլխավորությամբ նստել էր Այրարատում և, բնականաբար, հույների ներկայությունը չէր կարող վրիպել արաբների ուշադրությունից։ 654 թ. Օսման խալիֆան հրամայեց Մուավիային զորք մտցնել Հայաստան, Վիրք և Աղվանք։ Սա ուղարկեց զորավար Հաբիբին 6 (կամ 8) հազար զորքով, որը հավաքել էր Վերին Միջագետքի ու Ասորիքի արաբներից[28]։

Հաբիբն առաջին հերթին դիմեց դեպի Կարնո քաղաք, որի բնակիչները գիմադրեցին, սակայն շուտով հանձնվեցին գլխահարկ տալու կամ հեռանալու պայմանով։ Իրոք բնակիչների մի մասը (հավանաբար հույները և մասամբ հայերը) լքեց և հեռացավ Փոքր Ասիա։ Հաբիբը շուտով Մուավիայից ստացավ նաև 2 հազարանոց օգնական զորք, որը նա բնակեցրեց Կարինում։

Լսելով, որ «Արմինիակուսի Բաթրիկը» այսինքն Արմենիակների բանակաթեմի (տվյալ դեպքում, հավանաբար, Հայաստանում բյուզանդական զորքերի) հրամանատարը զորք է հավաքել արաբների դեմ, Հաբիբը Օսման խալիֆայից օգնական ուժեր խնդրեց։ Օսմանի հրամանով Հայաստան ուղարկվեց Սալմանը՝ 6 հազար զորքով։ Սակայն Հաբիբի և Սալմանի միջև թշնամությունն այն աստիճան լուրջ կերպարանք ստացավ, որ Օսմանը հրամայեց Սալմանին թողնել Հայաստանը և գնալ Աղվանքն ու Ծորա երկիրը (մերձկասպյան շրջաններ) նվաճելու։

Երբ Հաբիբը Կարնո քաղաքից հասավ Մարդաղի, նրան ընդառաջ եկավ Խլաթի պատրիկը, ակներևաբեն Տարոնի իշխան Մուշեղ Մամիկոնյանը, որի ձեռքում կար Իյադ իբն Ղանմի տված պայմանագիրը։ Այստեղից Հաբիբն ուղղվեց Հարք գավառի կողմերը, ապա իջավ Խլաթ և այնտեղից շարժվեց Վանա լճի հյուսիսային կողմերով։ Նրա մոտ եկավ Մոկաց իշխանը, որը նույնպես հրաշխավորագիր ստացավ իր իշխանությունը և տիրույթները պահպանելու վերաբերյալ։ Հայաստանի նախարարները Հաբիբին դիմադրություն ցույց չտվեցին, քանի որ դեռ երկու տարի առաջ նրանք ընդունել էին խալիֆայության գերիշխանությունը։ Իրար ետևից Հաբիբին ենթարկվեցին Ապահունիքի, Արճեշի (Աղիովիտի), Շիրակի, Աշոցքի, Բագրևանդի և Տայքի տերերը։ Դվինը և Սյունիքը սկզբում դիմադրեցին, բայց շուտով անձնատուր եղան։

Դիմադրեց նաև Մավրիանոսը, որը Դվինի մոտ պարտություն կրեց և հեռացավ Վրաց աշխարհի կողմերը։

Առանց դիմադրության հանձնվեց Վրաց աշխարհը։ Աղվանքը նվաճեց Սալմանը, որը հասավ մինչև Ծորա պահակը (Ջողա երկիրը) և այնտեղ էլ սպանվեց։

Սակայն ինչքան էլ որ հայ նախարարները խուսափում էին ընդհարումներից, Հաբիբն առիթ էր որոնում ճնշելու նրանց, մանավանդ այն նախարարներին, որոնք մի տարի առաջ Կոստանդ կայսրին ընդառաջ էին գնացել։ Հայ պատմիչի արտահայտությամբ՝ «անողորմ դահիճ» Հաբիբը[29] նրանցից մեկին՝ Արտավազդ Դիմաքսյանին, մահապատժի ենթարկեց Արուճում։

---

[28] Beladsori, p. 197—201.

[29] Սեբեոս, էջ 174։

Հաբիբը Դվինի բնակիչներին երաշխավորագիր էր տվել հետևյալ բովանդակությամբ. «Սա է գիրը Հաբիբ իբն Մասլամայի Դվինի բնակիչներին՝ քրիստոնյաներին, զրադաշտականներին ու հրեաներին, ներկաներին ու բացականերին, առ այն, որ ես երաշխավորում եմ ձեր անձերը, ինչքը, եկեղեցիները, տաճարները և քաղաքի պարիսպները։ Դուք ապահով եք, իսկ մենք պարտավոր ենք այս ուխտին հավատարիմ լինել ինչքան ժամանակ որ դուք հավատարիմ կլինեք, և կվճարեք գլխահարկն ու հողահարկը։ Վկա է Ալլահը և նա բավական է որպես վկա։ Կնքել է Հաբիբ իբն Մասլաման»[30]։

Հայաստանի նվաճումն ավարտելուց հետո Հաբիբն իր հետ Ասորիք տարավ Թեոդորոս Ռշտունուն։ Մի քանի տարի հետո նա մահացավ Դամասկոսում, մարմինը բերվեց Հայաստան և թաղվեց հայրենի Ռշտունիքում։

Թեոդորոս Ռշտունին հայկական միջնադարի ամենամեծ քաղաքական դեմքերից էր։ Հայկական անկախ պետականությունը համարելով հայ ժողովրդի բարօրության գլխավոր երաշխիքը, նա ամեն միջոցի դիմեց, սկսած ռազմական հանդուգն քայլերից մինչև դիվանագիտական ամենանուրբ ձեռնարկումները՝ այդ նվիրական նպատակին հասնելու համար։

Թեոդորոս Ռշտունու կերպարն արտացոլվեց հայկական հերոսական վեպի (Սասնա ծռեր) մեջ, որպես քեռի Թորոս կամ Թևաթորոս։ Վեպում տրված է Թեոդորոս Ռշտունու քաղաքական իմաստությունը[31]։

Նա իր գործունեությունն սկսեց որպես սպարապետ մարզպանական Հայաստանում, ապա, Հայոց իշխան Դավիթ Սահառունու անկումից հետո, օգտվելով Սասանյան Պարսկաստանի և Բյուզանդիայի ջախջախումից, միավորեց Հայաստանի պարսկական և բյուզանդական հատվածները։ Շնորհիվ նրա համառ պայքարի, Հայկական լեռնաշխարհը մեծ չափով վերականգնեց իր ներքին քաղաքական ինքնավարությունը։ Նրա անմիջական հաջորդների ժամանակ Հայաստանը մնաց կիսանկախ իշխանապետություն, բարգավաճ տնտեսությամբ և մշակութային բարձր մակարդակով։

## 3. ՄԵԾ ՀԱՅՔԻ ՎԵՐԱՄԻԱՎՈՐՈՒՄԸ ԵՎ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ VII ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԿԵՍՈՒՄ

Թեոդորոս Ռշտունու Ասորիք գնալուց հետո նախարարները Ներսես կաթողիկոսի գլխավորությամբ Հայոց իշխան ընտրեցին Թեոդորոսի փեսա Համազասպ Մամիկոնյանին[32]։

Նրա իշխանության տարիները (654—661) խաղաղության և բարգավաճման մի շրջան կազմեցին։ Արաբական զորքերը քաշվել էին Հայաստանից և արդեն որոշ ժամանակ անց Հայաստանը դուրս եկավ խալիֆայության ձևական հպատակությունից ու հարեց Բյուզանդիային։ Սրա հետևանքով տուժեցին Հաբիբ իբն Մասլամայի հետ գերի տարված 1775 հայերը, որոնց գրեթե բոլորին արաբները դաժանորեն սպանեցին[33]։

---

[30] Տե՛ս Beladsori, c. 200.

[31] «Սասնա ծռեր» (Մ. Աբեղյան և Կ. Մելիք Օհանջանյան), Երևան, 1936, հատ. Ա, Ներածություն, էջ ԺԳ—ԺԴ։

[32] Սեբեոս, էջ 174։

[33] Տե՛ս Լեո, հ. Բ, էջ 328։

656 թ. սպանվեց Օսման խալիֆան և 5 տարի արաբական խալիֆայությունը ներքին կատաղի պայքարի թատերաբեմ դարձավ, որի շնորհիվ Հայաստանը բոլորովին ապահով մնաց արաբական հարձակման վտանգից։

Ներսես կաթողիկոսն ավարտեց Վաղարշապատի մոտ իր կառուցած հոյակապ տաճարի՝ Զվարթնոցի շինարարությունը և նրա կողքին կաթողիկոսական պալատ շինեց։ Այս ժամանակ ականավոր գիտնական Անանիա Շիրակացին (610—685) Ներսես Գ-ին հաջորդած Անաստաս կաթողիկոսին (661—667) ներկայացրեց իր կազմած գիտությունների համակարգը, որոնց մեջ էր նաև «Աշխարհացույց»-ը և նրան կից երկրաչափությունը։

Ցանկանալով քաղաքական կայուն վիճակ ստեղծել, Ներսես Տայեցին դիմեց Կոստանդ կայսրին և խնդրեց ճանաչել Համազասպ Մամիկոնյանի իշխանությունը։ Կայսրը հաստատեց նրան Հայոց իշխան, նվիրեց արծաթե գահ և տվեց կյուրապաղատ տիտղոսը։ Պատիվներ ստացան նաև նշանավոր նախարարները, իսկ Հայոց զորքին դրամական պարգևներ ուղարկվեցին[34]։

Համազասպ Մամիկոնյանի կախումը Բյուզանդիայից զուտ ձևական բնույթ էր կրում, քանի որ Հայաստանում չկար բյուզանդական զորք, իսկ հարկատու լինելու մասին ոչինչ հայտնի չէ։ Նրա իշխանության տարիներին Հայոց զորքի սպարապետն էր Վարդ Ռշտունին (Թեոդորոսի որդին)[35]։

Թեև Հայաստանի բյուզանդական և պարսկական մասերի միաձուլումը կատարվել էր դյուրին և անաղմուկ, այնուամենայնիվ Սյունիքը Արցախի հետ միասին, ըստ երևույթին, որոշ ժամանակ դեռ պահպանեց իր ինքնուրույնությունը, թեկուզ ձևականորեն։ Սեբեոսի Պատմության մեջ Թեոդորոս Ռշտունու և Մուավիայի միջև բանակցությունների մասին խոսելիս Հայաստանը (Հայք) և Սյունիքն առանձին են հիշատակվում։ Արաբների արշավանքի մասին խոսելիս նույնպես պատմիչը նշում է, որ արաբները կողոպտեցին Հայոց երկիրը, Աղվանքը և Սյունիքը։ Համազասպ Մամիկոնյանի իշխանության տարիներին Սյունյաց իշխանությունը Արցախի հետ վերջնականապես միացավ Հայաստանին։ Հայ պատմիչը հիշում է, որ նախապես Սյունյաց իշխանները բաժանվել էին (Հայաստանի մարզպանությունից) և իրենց հարկային դիվանը փոխադրել Ատրպատական, սակայն Սասանյան Իրանի կործանումից հետո նրանք նորից միացան Հայաստանին[36]։

Մեծ Հայքի միջնաշխարհի վերամիավորումը մեծագույն նշանակություն ունեցավ Հայաստանի թե՛ քաղաքական, թե՛ տնտեսական զարգացման համար։ Արհեստական սահմանները հայկական երեք հատվածների միջև խանգարում էին երկրի բնականոն զարգացմանը և նրանց վերացումը հնարավորություն տվեց հայկական գավառները Հայոց իշխանի հովանավորության տակ համախմբելու, ինչպես նաև ճանապարհ բացեց ներքին և արտաքին առևտրի աշխույժ զարգացման համար։

Խալիֆայական իշխանությանը տիրանալուց անմիջապես հետո Օմայան-

---

[34] Սեբեոս, էջ 175։

[35] Նա, ըստ Ղևոնդի, իր ցանկության հակառակ գնացել էր կռվելու հույների համար, բայց մի ճակատամարտի ժամանակ անցնելով արաբների կողմը, հույներին մեծ վնասներ էր պատճառել։

[36] Սեբեոս, էջ 67—68, 175։ Կադիսիյյայի ճակատամարտում Գրիգորի սպանվելուց հետո Սյունիքի իշխան դարձավ Հրահատը, որը Հաբիբի արշավանքի ժամանակ պետք է վախճանված լիներ և Սյունյաց իշխանն էր Հովհանը (Ստ. Օրբելյան, էջ 52—53)։

ների առաջին խալիֆա Մուավիան հրովարտակով դիմեց հայերին, պահանջելով, որ համաձայնվեն հպատակվել և հարկ վճարել։ Հայաստանում Ներսես կաթողիկոսի գլխավորությամբ ժողով գումարվեց, որին մասնակցեցին նախարարներն ու իշխանները։ Իր կյանքի վերջում Ներսես կաթողիկոսն արդեն երես էր դարձրել հույներից և ժողովը միաձայն ընդունեց արաբների առաջարկը[37]։

Հայոց իշխան Համազասպ Մամիկոնյանը մահացել էր և Ներսես կաթողիկոսն ու նախարարները խնդրեցին Մուավիային՝ պատանդ ուղարկված Գրիգոր Մամիկոնյանին (Համազասպի եղբորը) կարգել Հայոց իշխան[38]։ Նոր խալիֆան անմիջապես կատարեց հայերի խնդրանքը և բազում մեծարանքներով[39] Գրիգորին ուղարկեց Հայաստան, տալով նրան իշխանության պաշտոնը։

Ալի խալիֆայի դեմ պայքարի տարիներին (656—661) Մուավիան նախընտրել էր Կոստանդ Բ կայսեր հետ 658—659 թթ. հաշտություն կնքել, սակայն խալիֆայական իշխանությանը տիրանալով (661), խախտեց հաշտության պայմանները և սկսեց հարձակումը Բյուզանդիայի դեմ։

Խալիֆայության և Բյուզանդիայի միջև մղվող կատաղի գոտեմարտ տեղի էր ունենում Փոքր Ասիայում[40], ուստի Հայաստանը զերծ մնաց թե՛ մեկի և թե՛ մյուսի քաղաքական ճնշումից։ Երկու տասնամյակից ավելի Հայաստանը վայելեց խաղաղություն և քաղաքական ինքնավարություն։ Գրիգոր Մամիկոնյանի օրոք Հայաստանի կախումը խալիֆայությունից արտահայտվում էր լոկ տարեկան 500 դահեկան (ոսկեդրամ) չնչին հարկի վճարմամբ։

VII դարի երկրորդ կեսում Հայոց իշխանին ենթակա էին Մեծ Հայքի հիմնական նահանգները՝ Այրարատ, Սյունիք, Արցախ, Վասպուրական, Մոկք, Տուրուբերան, Տայք և Գուգարքի Տաշիր գավառը, ինչպես նաև Աղձնիք ու Կորճայք նահանգների լեռնային մասերը, իսկ Բարձր Հայքն ու Չորրորդ Հայքը արաբներն իրենց ձեռքում էին պահում որպես ռազմագիտական տեսակետից կարևոր դիրք ունեցող վայրեր՝ Բյուզանդիայի դեմ մղված պայքարում։

Գրիգոր Մամիկոնյանն իրեն նստավայր ընտրեց Արուճ ավանը, որտեղ կառուցեց մի փառավոր տաճար և կողքին իշխանական պալատ։ Նրա իշխանության տարիները Հայաստանի համար խաղաղ շինարարության ժամանակաշրջան էին։ 680 թ., երբ մեռավ Մուավիան և խալիֆայության մեջ նորից երկպառակությունները ծայր առան, Հայաստանը, Վիրքը և Աղվանքը դադարեցին հարկ վճարել[41] և ստացան լիակատար անկախություն։

Սակայն, բացի արաբական խալիֆայությունից և Բյուզանդիայից, Հայաստանին, Վիրքին և Աղվանքին սպառնում էին նաև խազարները։ Գրիգոր Մամիկոնյանն ու Սահակ կաթողիկոսը (677—703) և Աղվանից իշխան Վարազ-Տրդատը (669—699) մի համարձակ ծրագիր մշակեցին՝ խազարներից և նրանց ցեղակից հոներից սպառնացող վտանգը չեզոքացնելու համար։ Իսրայել եպիսկոպոսի գլխավորությամբ պատվիրակություն ուղարկվեց, որի նպա-

37 Լեո, հ. Բ, էջ 329։

38 «Պատմութիւն Յովհաննու կաթողիկոսի», Երուսաղեմ, 1867, էջ 114։

39 Ղևոնդ, էջ 14։

40 Տե՛ս Լեո, հ. Բ, էջ 330։

41 Նույն տեղում։

տակն էր հոների երկրում քրիստոնեություն տարածել[42]։ 682 թ. փետրվարին պատվիրակությունը ժամանեց Վառաչան։ Թվում էր, թե հայ-աղվանական պատվիրակությունը հասավ իր նպատակին՝ հոների թագավոր Ալփ Իլիթվերն իրեն հայտարարեց քրիստոնյա[43]։ Սակայն խազարները, փաստորեն, չհետևեցին նոր կրոնին, նույնիսկ 685 թ. մի ավերիչ արշավանք կազմակերպեցին դեպի Աղվանք և նրանց դեմ կռվում զոհ գնաց նաև Հայոց իշխան Գրիգոր Մամիկոնյանը[44]։ Նրան հաջորդեց նախարարների կողմից ընտրված Աշոտ Բագրատունին (686—689), որին Հայոց իշխանի պաշտոնում կարիք չզգացվեց հաստատելու կայսրության կամ խալիֆայության կողմից։

Հայոց իշխանը երկրի գերագույն տիրակալն էր, որին ենթարկվում էին բոլոր նախարարները, ինչպես նաև սպարապետն ու կաթողիկոսը։ Նա դիվանագիտական հարաբերությունների մեջ էր մտնում և դաշինք կնքում արաբական խալիֆայության, Բյուզանդիայի կամ խազարների հետ։

VII դարի երկրորդ կեսի գրեթե բոլոր իշխանները նախ ընդունվել էին Հայաստանի նախարարների կողմից և միայն հետագայում ստացել Բյուզանդիայի կայսեր կամ արաբ խալիֆայի հաստատումը։ Այս ժամանակաշրջանում միայն Ներսեհ Կամսարականն էր, որ, ինչպես կտեսնենք, ուղղակի Հուստինիանոս Բ կայսեր կողմից նշանակվեց։

Աշոտ Բագրատունու իշխանության գլուխ անցնելու ժամանակ արմատապես փոխվեց միջազգային իրադրությունը։ 685 թ. խալիֆա դարձավ Աբդ ալ-Մալիքը, իսկ Բյուզանդիայում գահին տիրացավ Հուստինիանոս Բ-ն։ Թե՛ խալիֆայության մեջ և թե՛ Բյուզանդիայում առաջացել էր բարդ իրադրություն, ուստի երկու պետությունները պայմանագիր[45] կնքեցին, որի համաձայն Կիպրոսը, Հայաստանը և Վիրքը գտնվելու էին համատեղ իշխանության ներքո[46]։ Սակայն որոշ ժամանակ անց Հուստինիանոս կայսրը Հայաստան ուղարկեց Լևոնտիոս զորավարին, որը նվաճեց և հարկատու դարձրեց նաև Վիրքն ու Աղվանքը[47]։ Պատմիչն ակներևաբար Հուստինիանոսի ձեռքով կատարվածը վերագրում է նրա զորավարին։

Աշոտ Բագրատունու նստավայրն էր Դարույնքը, որտեղ կառուցել էր մի եկեղեցի։ Որպես անկախ տիրակալ նա հարկատու չէր ո՛չ խալիֆայությանը, ո՛չ էլ Բյուզանդիային։ Բյուզանդական արշավանքից հետո տեղի ունեցավ արաբների հարձակումը Ատրպատականի կողմից։ Նրանք Արաքսի հովտով

---

42 «Մովսիսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի», Մոսկվա, 1860, էջ 196—205։

43 *С. Т. Еремян*, Моисей Каланкатуйский о посольстве албанского князя Вараз-Трдата к хазарскому хакану Алп Илитверу. Записки Инст. Востоковедения АН СССР, вып. VII, 1939 стр. 129—155, հատկապես էջ 137։

44 Ստեփանոս Տարոնեցի Ասողիկ, էջ 100։ Բ. Առաքելյան, Հայաստանը արաբական տիրապետության առաջին շրջանում և հայերի պայքարն անկախության համար։ Արմֆանի գիտական ժողովածու, Երևան, 1940, էջ 93։

45 VII դարի երկրորդ կեսում խալիֆայությունը մեծ չափով նեղվում էր ծագումով անհայտ մի մարտունակ ժողովրդի «մարդաիտների» հարձակումներից, որոնք տարածվել էին մինչև Չորրորդ Հայք։ Այնուամենայնիվ Բյուզանդիան ինչպես անհրաժեշտ էր չհովանավորեց նրանց և նույնիսկ ընդառաջելով արաբների պահանջներին, հեռացրեց նրանց Կիլիկիայի և հյուսիսային Ասորիքի մերձեփրատյան կողմերից (արաբները կոչում են ջարաջիմա)։

46 «Ժամանակագրութիւն Միխայէլի Ասորւոյ», Երուսաղէմ, 1871, էջ 326։

47 Theophanis Chronographia, I, p. 363:

մտան Հայաստան և ասպատակեցին Խրամը, Ջուղան և Խոշակունիքը։ Հայոց իշխանը Դարույնքից եկավ Արաքսի հովիտը և կոտորեց ասպատակողներից շատերին, կենդանի մնացածները խորամանկության դիմեցին։ Նրանք իրենց ավարը թողեցին դաշտում, որպեսզի հայկական զորքը նրանով զբաղվի, սակայն Աշոտ Բագրատունին փոքրաթիվ մարդկանցով հետապնդեց նրանց, բայց սպանվեց նրանց կողմից[48]։ Արաբական զորքն այնուհետև Հայաստանից դիմեց Վիրք, սակայն այնտեղ պարտություն կրեց[49]։

Ցանկանալով օգտվել Աբդալլահ իբն ալ-Զուբայրի հուժկու ապստամբությունից, որը սպառնում էր տապալել Օմայանների գահը, Հուստինիանոս կայսրը 689 թ. մեծ զորքով հարձակվեց Հայաստանի վրա։ Նրա զորքը երեք մասի բաժանվեց և նվաճեց Հայաստանը, Վիրքն ու Աղվանքը, որոնցից ամեն մեկի վրա նշանակեց նոր իշխաններ։ Հուստինիանոսը Հայոց իշխան նշանակեց Ներսեհ Կամսարականին (689—693)։ Նրա իշխանության օրոք կառուցվել է Թալինի եկեղեցին։

Ներսեհ Կամսարականին հաջորդեց Սմբատ Բյուրատյան Բագրատունին, որի օրոք տեղի ունեցավ Հայաստանի վերջնական նվաճումը արաբների կողմից[50], որը երկրի տնտեսական և մշակութային զարգացմանը մեծ հարված հասցրեց և մոտավորապես մեկ ու կես դար արգելակեց նրա բնականոն զարգացումը։

VII դարում նկատվող քաղաքական, տնտեսական և մշակութային նշանակալից զարգացումն արգելակվեց։ Հայոց իշխանը (Հայոց պատրիկը), որն ինքնիշխան էր, և, ըստ էության, ընտրովի տիրակալ, դարձավ խալիֆայության ներկայացուցիչ, արաբ կառավարիչներին (ոստիկաններին) ենթակա մի պաշտոնյա։ Դանդաղեց տնտեսական զարգացումը և տուժեց առևտուրը, իսկ շինարարական աշխատանքներն այնպիսի վիճակում էին, որ այդ մեկուկես դար տևող ժամանակաշրջանում կառուցվել են փոքրաթիվ ճարտարապետական հուշարձաններ։ Մշակութային կյանքի անկման հետ մեծ չափով կասեցվեց մատենագրության բուռն ծաղկումը։

## 4. ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԸ ԵՎ ՀՈՂԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՁԵՎԵՐԸ VII ԴԱՐՈՒՄ

VII դարի Հայոց իշխանապետությունը գլխավորում էր Հայոց իշխանը, որը ժառանգաբար չէր իշխում։ Հայոց իշխան տիտղոսը ծագել է նախքան VII դարը և տարբեր շրջաններում այլևայլ բովանդակություն է ունեցել[51]։

639 թ. Թեոդորոս Ռշտունին միավորելով Հայաստանի պարսկական ու բյուզանդական մասերը, միաժամանակ նոր բովանդակություն տվեց Հայոց

48 Ղևոնդ, էջ 17—18։

49 Դրասխանակերտցի, էջ 53։

50 Բ. Առաքելյան, *Ժամանակագրական դիտողություններ*, «Տեղեկագիր Հաս. գիտ.», 1 (6), Երևան, 1941, էջ 66—71։

51 Ա. Տեր-Ղևոնդյան, *Հայոց իշխան տիտղոսի ծագումը և Հայոց տերությունը VII դարում*, «Բանբեր Երևանի համալսարանի», 1969, 1։ Հայոց իշխանը կրում էր պատրիկ ու կուրապաղատ անվանումները։ Հայոց իշխանի կամ պատրիկի իշխանությունը և կամ ընդհանրապես Հայոց իշխանապետությունը պատմիչի մոտ կոչվում է «Հայոց աշխարհի իշխանութիւն»։ Հայոց պատրիկ Համազասպ Մամիկոնյանն ուներ «զիշխանութիւնն Հայոց աշխարհիս» (Սեբեոս, էջ 174)։

իշխանի պաշտոնին[52]։ Այդ ժամանակվանից մինչև դարի վերջը Հայոց իշխանը սուկ ձևականորեն կապված էր Բյուզանդիայի կամ էլ հետագայում արաբական խալիֆայության հետ և, ըստ էության, անկախ տիրակալ էր։

Սեբեոսի այն խոսքերը, թե Հայոց իշխան Թեոդորոս Ռշտունին խալիֆայի ներկայացուցչից ստացավ ոսկեղեն հանդերձներ ու ոսկեթել դրոշ, նշանակում է Հայաստանի միանգամայն ինքնուրույն լինելը նրա իշխանության օրոք։ Կարճ ժամանակով Հայոց իշխան դարձած Վարազտիրոց Բագրատունին կայսրից ստացել էր թագ ու գահ[53]։ Արծաթե գահ ստացավ նաև Համազասպ Մամիկոնյանը։

Իշխան կամ պատրիկ կոչված Հայաստանի տիրակալներն, ըստ երևույթին, ավատական տիրույթների նկատմամբ նախարարների ունեցած իրավունքները տնօրինելու իշխանություն չունեին։ Թեև հստակ տեղեկություններ չունենք այն մասին, թե Հայոց իշխանը դրամ է կտրել, սակայն VII դարում Հայաստանում կային տեղական փողերանոցներ (Դվինում ու Նախճավանում), որտեղ թողարկված սասանյան տիպի դրամները հասել են մեզ[54]։

Հայոց իշխանից հետո երկրում երկրորդ հեղինակությունը կաթողիկոսն էր։ Հայոց եկեղեցին այնպիսի կարևոր դեր ուներ երկրի կառավարման գործում և այնպես էր միահյուսվել երկիրը կառավարող ուժերի հետ, որ չի կարելի պատկերացնել Հայաստանի պետական կարգը, առանց նկատի ունենալու կաթողիկոսի և ընդհանրապես եկեղեցու դերը երկրի քաղաքական կյանքում։ Հայոց իշխաններն ու սպարապետները հաճախ էին ձգտում իրենց ազդեցությանը ենթարկել կաթողիկոսներին, և այդ հողի վրա հակամարտություն էր ծագում աշխարհիկ ու հոգևոր պետերի միջև։ Դրա լավագույն օրինակն է Ներսես կաթողիկոս Տայեցու և Հայոց իշխան Թեոդորոս Ռշտունու միջև տեղի ունեցող պայքարը 640—50-ական թվականներին։

Նախարարներն այդ ժամանակաշրջանում մեծ իրավունքներ էին վայելում և նրանց մասնակցությունը երկրի քաղաքական կյանքում բազում առիթներով շեշտել են պատմիչները։ Հաճախադեպ էին նախարարաց ժողովները, որոնք երկրի քաղաքական կյանքի կարևորագույն հարցերն էին լուծում։ Ուշագրավ է մոտավորապես 653 թ. գումարված նախարարաց ժողովը, որի կարևորագույն հարցերն էին հաշտության հաստատումը երկու հակառակորդ խմբակցությունների միջև և երկրի հարկային հարցերի լուծումն ու հարկապահանջ պաշտոնյաների նշանակումը։ Այսպիսի ժողովներում էր, որ ընտրվում էին հայոց իշխանները, որոնք հետո Բյուզանդիայի կայսեր կամ խալիֆայի հաստատումն էին ստանում։ Նախարարները մասնակցում էին նաև եկեղեցական ժողովներին, որոնք, ըստ էության, եկեղեցա-նախարարական բնույթ են կրում։

Դվինի Դ ժողովի (648) կանոնները կարևոր են VII դարում եկեղեցական հողատիրության հարցերի ուսումնասիրության համար։ Ժողովին ներկա էին Ներսես կաթողիկոս Տայեցին, Հայոց իշխան և սպարապետ Թեոդորոս Ռըշ-

---

52 Սեբեոս, էջ 169։

53 Նույն տեղում, էջ 144։ Հետաքրքիր է, որ Գրիգոր Մամիկոնյանի տիկինը կոչվում էր դշխո՝ թագուհի («դշխոյն Հեղինէ զտիկինն Հայոց Մեծաց»)։ Մովսես Կաղանկատուացի, Պատմութիւն, 1860, հ. Բ, լը։

54 *Е. Пахомов,* О сассанидских монетных знаках, ДАН Аз. ССР, стр. 44—46.

տունին, նախարարներ և 17 եպիսկոպոս, որոնք հականե հանվանե հիշված են։ Նախարարները հավաքվում էին նույնիսկ զուտ եկեղեցական հարցեր լուծելու։ Երբ Աբրահամ կաթողիկոսի դեմ ամբաստանություններ էին ծագել, հարցը քննելու համար հավաքվեցին Հայաստանի եպիսկոպոսներն ու նախարարները[55], որոնք աթոռազուրկ արեցին նրան և նոր քահանայապետ ընտրեցին Եզրին։

Հայոց իշխանին ենթակա էր սպարապետը, իսկ երբեմն իշխանն անձամբ վարում էր նաև սպարապետի պաշտոնը։ Հայկական այրուձին թեպետ մարզպանական շրջանում 30 հազար ձիավորից էր բաղկացած, սակայն VII դարում, ըստ երևույթին, նրա թիվը պակասել էր։ Հայոց իշխան Թեոդորոս Ռշտունու և Ասորիքի արաբ կառավարիչ Մուավիայի միջև 652 թ. կնքված պայմանագրում Հայաստանի այրուձին 15 հազար է հիշվում[56]։ Դեռ նախորդ դարի վերջերին, երբ բյուզանդապարսկական պատերազմների ժամանակ հույները նվաճել էին Հայաստանի մեծ մասը, Հովհան պատրիկի տնօրինության տակ եղած հայկական այրուձին այսպես է նկարագրվում. «հանդեսի ներկայացան 15 հազարի չափ հեծյալներ, նախարարների յուրաքանչյուր գունդ ըստ հարյուրավորների, հազարավորների, ըստ իրենց դրոշների»[57]։ Հայոց զորքի զինանշանը և դրոշը արծվանիշ էր, Հայոց իշխանապետության պաշտոնական զինանշանը՝ արծիվը քանդակված էր կաթողիկոսանիստ Զվարթնոցի տաճարի խոյակների վրա։

VII դարում գուցե գոյություն է ունեցել նաև հազարապետի պաշտոնը։ Ստեփանոս Ասողիկը վկայում է, որ Դավիթ Սահառունին հազարապետ էր Հայաստանի պարսկական մասում և միայն հետագայում նա դարձավ Հայոց իշխան հունական հատվածում[58]։

Հայոց իշխանապետությունն ընդգրկում էր Հայկական լեռնաշխարհի նահանգների զգալի մասը և տարածվում Արցախից մինչև Ծոփք ու Կարնո կողմերը և Տաշիրից ու Տայքից մինչև Հայկական Տավրոսի լեռնաշղթան։ Հայաստանի մայրաքաղաքը պաշտոնապես Դվինն էր, սակայն, ըստ էության, Հայոց իշխանը շատ քիչ դեպքերում էր նստում քաղաքամայր Դվինում։ Ամեն մի Հայոց իշխան և որոշ կաթողիկոսներ անպաշտոն կերպով նոր նստավայրեր էին ընտրում։ Թեոդորոս Ռշտունին նստում էր Աղթամարում, Համազասպ և Գրիգոր Մամիկոնյանները՝ Արուճում, Աշոտ Բագրատունին՝ Դարույնքում և այլն։ Նույնիսկ Ներսես կաթողիկոս Տայեցին Դվինի փոխարեն իր աթոռը հաստատեց Վաղարշապատի Արեգ դռնից արևելք, որտեղ այդ նպատակով կառուցվեցին ս. Գրիգոր փառահեղ եկեղեցին (Զվարթնոց), պալատը և այլ շինություններ։

Հայաստանում VII դ. կենտրոնական ուժեղ իշխանության բացակայության պայմաններում նախարարները բացարիկ ինքնուրույնություն էին վայելում։ Արաբ պատմիչ Բալազուրին Հայաստանում բյուզանդական տիրապետության շրջանի մասին խոսելիս ավելացնում է, որ այդ ժամանակ երկրի տերերը նման էին «կալվածատեր (բաժնեկալվածային) թագավորների» (մուլուք

---

55 Սեբեոս, էջ 98։

56 Նույն տեղում, էջ 140։

57 Նույն տեղում, էջ 38։

58 Ասողիկ, էջ 86։ Գուցե այս արտահայտությունը մարզպանի իմաստով է օգտագործված։ Տե՛ս *И. А. Орбели,* Избранные труды, Ереван, 1963, стр. 396—398.

ալ-Թավաիֆ)[59]։ Նախարարական տիրույթներն առանձին անկախ միավորներ էին, և յուրաքանչյուր նախարարության ուժը որոշվում էր նրա ունեցած հեծյալ ռազմիկների թվով[60]։ Ամբողջ VII դարում նախարարական տիրույթներն անձեռնմխելի էին և ոչ մի տիրակալ չէր կարող որևէ նախարարի ժառանգական իրավունքից զրկել կամ մեկի տիրույթը ուրիշին պարգևել։

Արշակունյաց թագավորության անկումից հետո սկիզբ առած փոփոխությունները, որոնք այլակերպել էին Հայաստանի նախարարական տիրույթների քարտեզը, VII դարում էլ ավելի խորանալով, նոր ձև հաղորդեցին նախարարական կալվածքներին։ Հայկական լեռնաշխարհի ամենահզոր նախարարներն այդ ժամանակ Մամիկոնյաններն էին, որոնց տիրույթները տարածված էին երկրի տարբեր մասերում։ Արշակունյաց օրոք նրանց ունեցած Տարոն (ինչպես նաև Տայք) գավառից բացի, V դարում նրանք ձեռք էին բերել Լուսավորչի տան կալվածքները, ինչպես նաև Աղբիանոսի տան և Մանդակունիների հողերը։ VII դարում նրանք արդեն Այրարատի Արագածոտն գավառում եւս իշխում էին, որտեղ կառուցեցին Արուճը և այն ժամանակավորապես նստավայր դարձրին։ Հայոց իշխան Գրիգոր Մամիկոնյանի շինարարական գործունեությունն Արուճում վկայում է այն մասին, որ նա կամենում էր ամուր կերպով հաստատվել Այրարատում և շքեղ տեսք ու պաշտոնական ճանաչում տալ իր նստավայր ավանին։ Ահա այսպիսի լայնատարած կալվածքներն էին, որ Մամիկոնյանների հզորության տնտեսական հիմքը դարձան և նրանց հնարավորություն տվեցին Հայաստանում գերիշխող դիրք ձեռք բերել։

Տուրուբերան նահանգում VII դարում դեռ գոյություն ունեին Խոռխոռունիները, Ապահունիներն ու Աբրահամյանները, իսկ Գնունիներ կային, բացի Աղիովիտ գավառից, նաև Այրարատում։ Վասպուրականում դեռ V դարից Արծրունիները տիրում էին ինչպես հինավուրց Աղբակ գավառի, նույնպես և Մարդպետական հողերին, որոնք VII դարում էլ ավելի հզորացան։ Ռշտունիները VII դարում արդեն տիրակալում էին Վանա լճի արևելքում գտնվող տարածքներին, մանավանդ Հայոց Ձոր և Տոսպ գավառներում ու Վան քաղաքում։ Այս երկու հզոր նախարարությունների կողքին դեռևս իրենց գոյությունը պահպանում էին Անձևացիները, Տրպատունիները, Պալունիները, Տրունիները, Ակեացիները և ուրիշներ։

Խոշոր փոփոխություններ էին կատարվել Այրարատում։ Արշակունիների արքունի տիրույթները դեռևս V դարում իրենց մեջ բաժանել էին մի քանի նախարարություններ։ Նախ մեծ չափով ուժեղացել էին Կամսարականները, որոնք դեռ Արշակունիների օրոք իշխում էին Շիրակ և Արշարունիք գավառներում։ VI—VII դդ. Կամսարականները ձեռք բերեցին Աբեղյանք, Գաբեղյանք, Բասեն, Հավնունիք, Վանանդ և Աշոցք գավառները, նստավայր ունենալով Մարմետը (Երվանդաշատ), ապա տարածվեցին նաև Արագածոտն, որտեղ նրանց էր պատկանում Թալինը։ Շիրակի կողմերում իշխում էին Դիմաքսյանները, ինչպես նաև Սահառունիները, որոնց ձեռքում էր Մրեն ավանը։ VII դարում Այրարատի հյուսիսային մասերում հիշվում են հին ու նոր նախարարական տներ՝ Վարաժնունիները՝ Հրազդանի ափին, Գնթունիները՝ Նիգ գավառում, իսկ VII

---

59 Այս արտահայտությունն օգտագործվում է Թույլ իշխանության ժամանակ տիրող գավառական անկախությունների իմաստով։

60 Սեբեոս, էջ 150։

դարի կեսերին Առավեղյան և Առավանյան տներն են հիշվում, որոնց տիրույթների վայրը ստույգ հայտնի չէ։

Վերոհիշյալ դարերում ուժեղ հոսանք կար դեպի Այրարատ նահանգը։ Բացի Մամիկոնյաններից և դեռ նրանցից էլ առաջ այստեղ էին հաստատվել Բագրատունիները՝ գալով Սպեր գավառից։ Համենայն դեպս V—VII դդ. Բագրատունիներն ամուր կերպով հաստատված էին Կոգովիտ գավառում, մանավանդ նրա Դարույնք ամրոցում և վճռական դեր էին խաղում երկրի քաղաքական կյանքում՝ ձգտելով Հայոց իշխանի պաշտոնին։ Այրարատի Արագածոտն գավառում հաստատվել էին նաև Ամատունիներն ու Գնունիների մի ճյուղը։ Սյունիքում շարունակում էր իշխել հինավուրց իշխանական տունը։ Սյունիքի հետ սերտորեն կապված էր Արցախը, ուր իշխում էր տեղական իշխանական տունը։ Տաշիր և Ձոր (Ձորոփոր) գավառները պատկանում էին Տաշրացի նախարարական տոհմին։

Մեծ փոփոխություններ էին կատարվել արևմտյան երկու նահանգներում՝ Ծոփք (Չորրորդ Հայք) և Կարնո կողմ (Բարձր Հայք)։ Ծոփքում հինավուրց նախարարական տները Հուստինիանոսի բարենորոգումներից հետո քայքայվել էին և VII դարի պատմիչը նրանց մասին խոսելիս արդեն անորոշ ձևով գրում է. «Իշխանք և զաւրք Չորրորդն կոչեցեալ Հայոց»[61], Կարնո կողմի նախարարությունները նույնպես թուլացել էին, այնուամենայնիվ, VII դարում նրանք համեմատաբար ավելի բարվոք վիճակում էին և Սեբեոսի Պատմության մեջ հականե-հանվանե հիշվում են Սպերացիք (Բագրատունիք), Մանանաղայք, Դարանաղայք, Կարնացիք (Արշակունիք) և Եկեղյաց իշխաններ[62]։

VII դ. հայոց եկեղեցին բավական ընդարձակել էր իր տիրույթները։ Նա կալվածքներ ուներ Հայաստանի բազմաթիվ գավառներում, որոնք ենթակա էին եպիսկոպոսական աթոռներին (վիճակներին)։ Կալվածքներ ունեին նաև վանքերը։ Դվինի հայրապետանոցը բազմաթիվ գյուղեր ուներ Այրարատ նահանգում։ Հովհաննես Դրասխանակերտցին վկայում է, որ Արամոնք գյուղը «սեփական էր տան կաթողիկոսարանին»[63], բացի դրանից կաթողիկոսարանի դաստակերտներից հիշվում են Արտաշատը, Կավակերտը, Հոռոմոց մարգը[64]։

Հայաստանում նախարարական կարգերի համաձայն եկեղեցական պաշտոնները և, հավանաբար, կալվածքները դարձել էին նաև եկեղեցական հոգևորականների ժառանգական սեփականությունը, թեև քրիստոնյա երկրներում եկեղեցին ընդհանրապես այդ մերժում էր։ Այս երևույթը տարածված ձևով գոյություն ուներ Հայաստանում նաև VII դարում և Կ. Պոլսի Տրուլլյան ժողովում 692 թ., որպես բացասական երևույթ հատկապես նշվում է, որ հայ եկեղեցու մեջ հին հրեական սովորությամբ եկեղեցականները ժառանգաբար ընտրվում էին նույն ընտանիքներից[65]։ Ժառանգաբար ընտրվելով նույն եկեղեցական պաշտոնում, ընտանիքի տարբեր անդամները կարողանում էին ժառանգաբար տիրել նաև եկեղեցական կալվածքներին[66]։

61 Նույն տեղում, էջ 142։

62 Նույն տեղում։

63 «Պատմութիւն Յովհաննու կաթողիկոսի», Երուսաղեմ, 1867, էջ 133։

64 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 142։

65 Н. Адонц, Նշվ. աշխ., էջ 368։

66 Համենայն դեպս, VII դարում կաթողիկոսական աստիճանն այլևս ժառանգական չէր, ինչպես IV դարում։

Ըստ Դվինի Դ ժողովի Ը կանոնի, գյուղական քահանայի (եկեղեցու ժառանգավորի) տրամադրության տակ եղած հողամասը նա կարող էր տնօրինել, թողնել իր ժառանգորդներից որևէ մեկին՝ եթե որդեգրեր նրան։ Եկեղեցականը իր շարժական գույքը (կայք) կարող էր վաճառել կամ կտակել ում կամենար[67]։

Ժառանգականության սկզբունքն (կանոն Զ) այնքան ուժեղ էր, որ եթե նույնիսկ հոգևորականը, լքելով եկեղեցական պաշտոնը, հեծելազորում էր ծառայում, ապա գավառի եպիսկոպոսը կամ վարդապետը նրան զրկելով շնորհներից (իրավունքներից), կարող էր նրա կալվածքը շնորհել արժանավոր ազգականներից մեկին՝ վերջինիս քահանայացնելուց հետո[68]։ VII դարում եկեղեցական կալվածքների վիճակը և նախարարների վերաբերմունքը դրանց նկատմամբ պարզ ձևով արտահայտված է Դվինի Դ ժողովի Թ կանոնում[69]։

Եկեղեցական կալվածքների ուռճացումը հակամարտություն էր ստեղծում եկեղեցու և նախարարների միջև։ Նախարարները երբեմն ձգտում էին իրենց հայեցողությամբ տնօրինել վանքերն ու կալվածքները[70]։ Դվինի վերոհիշյալ ժողովի Ժ կանոնը արձանագրում է այս փաստը և պահանջում, որ վանքերի ու եկեղեցու տեսչությունը հանձնեն առաջնորդներին։

VII դ. հայ շինականի կախումը հողատիրոջից դեռևս չէր խորացել։ Նա ուներ իր սեփականությունը (հող և այլն)։ Դվինի ժողովի Ը կանոնը զգուշացնում է եկեղեցականներին, որ եթե թույլտվություն ունենան իրենց տրամադրության տակ եղած եկեղեցապատկան հողերը վաճառելու, ապա կարող են եկեղեցականներին վաճառել և ոչ թե շինականներին[71], որոնք, ինչպես պարզ երևում է այս կանոնից, կարող էին հողեր գնել որպես անձնական սեփականություն։

Հայ շինական դասակարգի մեջ արդեն առաջացել էր մի բարեկեցիկ միջին խավ՝ «թուանիկ»։ Այս ունևոր խավի մասին խոսվում է Աղվենի ժողովի Դ կանոնում, որտեղ VI—VII դդ. հայ գյուղացու վիճակի և նրա խավերի մասին հետաքրքրական պատկեր է տրված. «Քահանային ժողովրդի կողմից տալու կարգը այսպես է լինելու. ունևորը (թուանիկ) պետք է տա չորս. գրիվ ցորեն, վեց գրիվ գարի, տասնվեց փաս քաղցու, իսկ նա, ով հացաաակավ է, դրա կեսը պետք է տա. ինչ վերաբերում է գինուն, թող տա այնքան, որչափ կարող է։ Վար ու ցանք և այգի չունեցողից չպետք է առնեն...»[72]։

Այսուհանդերձ, VII դարում նախարարները ձգտում էին ոչ միայն շինականներին, այլև մանր եկեղեցականներին իրենցից կախման մեջ գցել և սահմանափակել նրանց իրավունքները։

Սակայն ծառայությունն ու ստրկությունը տվյալ դեպքում վերաբերում էին ոչ թե բուն շինականներին, այլ, առաջին հերթին, ագարակների մշակներին։ Նախարարների անմիջական սեփականությունը հանդիսացող դաստակերտներում (ագարակներում) աշխատող մշակներն արդեն VII դարում հողին ամրացված երկրագործներ էին, որոնք մեծ չափով կախման մեջ էին հողա-

---

67 «Կանոնագիրք Հայոց», աշխ. Վ. Հակոբյանի, Բ, Երևան, 1971, էջ 206—207։

68 «Կանոնագիրք Հայոց», Բ, էջ 205։

69 Նույն տեղում, էջ 210։

70 Նույն տեղում, Բ, էջ 210։

71 Նույն տեղում, էջ 208։

72 Մովսէս Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի, 1860, էջ 66 (աշխ. թարգմ. Վ. Առաքելյանի), Երևան, 1969; էջ 66։

տեր իշխաններից։ Այս ժամանակներում ագարակների մշակների թիվը փոքր էր և, հավանաբար, մասամբ օտար ծագում ունեին (գերի ստրուկներ)։

Անանիա Շիրակացու «Յաղագս հարցման և լուծման» աշխատության մեջ հետաքրքիր է 21-րդ հարցումը։ «Ներսեհ Կամսարականը սասանյան զորքի հետ Բահլի (Բալխ) կողմերում ունեցած հաղթանակից հետո բերում է մեծ թվով գերիներ, որոնց մի մասը Պարսկաստանում պարգևում է մի քանի մեծամեծների, մնացած մեծ մասը նվիրում Հրահատ եղբորը, ապա Վաղարշապատի Մայր վանքին, իսկ իրեն մնում է 570 գերի։ Ահա այս գերիներին (ստրուկներ) բնականաբար, աշխատեցնում էին ոչ միայն պալատներում, այլև ագարակների մշակներ էին դարձնում և այսպիսի ագարակներ ունեին թե՛ նախարարները և թե՛ եկեղեցին։ Շեներում (գյուղերում) ապրող շինականները (գեղջուկները), թեև իրավականորեն տարբերվում էին ագարակներում ապրող մշակներից, այնուամենայնիվ, նրանք կրում էին հարկերի ամբողջ ծանրությունը։ Հողահարկը երկրում գանձվող հարկերի հիմնական մասն էր կազմում և, ամենայն հավանականությամբ, բնահարկի ձևով էր գանձվում։ Այնուհանդերձ Սասանյան Խոսրով Ա Անուշիրվանի օրոք հողահարկի գոնե մի մասը դրամով էր գանձվում և հավանական է, որ VII դարի Հայաստանում ևս այս կարգը շարունակվում էր։ Հայաստանում հողահարկի համար օգտագործվող «հաս»[73] արտահայտությունը համապատասխանում է խարագին (արաբ. խարաջ)։

Հայաստանում VII դ. կարևոր հարկատեսակներից էր գլխահարկը, որի համար, հավանաբար, օգտագործվում էր «սակ» բառը, թեև այն միաժամանակ ընդհանրապես ամբողջ հարկերն էր ընդգրկում։ Գլխահարկը (պարս. գեզիտ, արաբ. ջիզիա) գանձվում էր ռամիկներից, շինականներից, արհեստավորներից ու վաճառականներից, որոնք հարկատու դասեր էին։ Վաճառվող ապրանքներից և վաճառականներից գանձվում էր նաև մաքս՝ բաժ[74]։ Կարծիք է հայտնվել, որ շինականները պարտադիր ձրի աշխատանքի պարտավորություն ունեին[75], իսկ բացի դրանից ամբողջ ժողովուրդը որոշ պարտավորություններ ուներ եկեղեցու նկատմամբ, որին վճարում էր տասանորդ պտղի։

Հայոց իշխանապետությանը վճարվող այս տուրքերը հավաքելու համար Հայոց իշխանը կամ նրա բացակայության դեպքում հենց նախարարները նշանակում էին հարկապահանջներ («հարկապահանջս ոսկւոյ եւ արծաթոյ»)։

Շինականների և նրանց վճարած հարկերի մասին խոսելիս չպետք է մոռանալ, որ VII դարում և ընդհանրապես վաղ միջնադարում մեծ թիվ էին կազմում գյուղացիական ազատ համայնքները, որոնք կախման մեջ չէին որևէ նախարարից, այլ ենթարկվում էին ուղղակի երկրի տիրակալին, վճարելով սոսկ արքունի հարկերը և չունենալով ոչ մի պարհակ գավառի ավատատեր իշխանի նկատմամբ։

---

73 Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 131—132 և հետ.։

74 Նույն տեղում, էջ 205, 207—208, 216։

75 Նույն տեղում, էջ 208—211։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՅՔԱՐԸ ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅԱՆ ԼԾԻ ԴԵՄ

## 1. ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅԱՆ ԼԾԻ ՀԱՍՏԱՏՈՒՄԸ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ VIII Դ. ԱՌԱՋԻՆ ԿԵՍՈՒՄ

*Արաբական խալիֆայությունը վերջնականապես ձևավորվեց Աբդ ալ-Մալիք (685—705) ամիրապետի օրոք։ Վերջ տրվեց ապստամբություններին և ստեղծվեց արաբական միաձույլ պետություն, որի մայրաքաղաքը դարձյալ Դամասկոսն էր։ Իր հզորության գագաթնակետին գտնվող Օմայան խալիֆայությունն ի վիճակի էր վերսկսելու ժամանակավորապես ընդհատված պայքարը Բյուզանդիայի դեմ։*

*Հուստինիանոս Բ կայսեր 689 թ. հարձակումն արդեն խախտումն էր Աբդ ալ-Մալիքի հետ կնքված դաշնագրի, ուստի վերջինս հենց որ ամրապնդեց իր դիրքերը, զենքն ուղղեց Բյուզանդիայի դեմ։ Փոքր Ասիայում Սեբաստուպոլիսի մոտ հույներին պարտության մատնելուց հետո նա իր եղբորը՝ Մուհամմադին, 693 թ. նշանակեց Հայաստանի, Ատրպատականի և Ջազիրայի (Վերին Միջագետք) փոխարքա։ Սակայն Հայաստանն այդ ժամանակ գտնվում էր Բյուզանդիայի ազդեցության տակ, իսկ Հայոց իշխանն էր Սմբատ Բագրատունին, որը, տեսնելով բյուզանդացիների անզորությունը, նույն տարում հպատակություն հայտնեց արաբներին[1]։ Հայաստանի արևմտյան որոշ շրջանները մնում էին կայսրության սահմաններում, իսկ խալիֆայության իշխանությունը երկրում դեռևս հաստատուն չէր[2]։*

*695 թ. Հուստինիանոս կայսրն իր հակառակորդներից ձերբակալվեց և աքսորվեց Խերսոն (Ղրիմ)։ Նոր կայսր Լեոնտիոսը (695—698) անզոր էր արաբների դիմաց։ 695 թ. Մուհամմադը մտավ Չորրորդ Հայք ու շատերին գերեվարեց[3]։*

*698 թ. նոր գահակալած կայսր Ապսիմարոսը (Տիբերիոս) զորք ուղարկեց Մեծ Հայքի կողմերը, որին Սմբատ Բագրատունին լուրջ դիմադրություն ցույց տվեց, սակայն պարտվեց[4]։*

*Արաբական զորքը շուրջ 699 թ. ասպատակեց հայկական գավառները, սակայն մեծ հաջողության չհասավ, իսկ որոշ բերդեր, ինչպես Սևանա կղզին, պաշարված վիճակում երկար դիմադրեցին[5]։*

---

[1] *Theophanis Chronographia*, I, p. 366;

[2] *Տե՛ս А. Тер-Гевондян.* Армения и арабский халифат, Ереван, 1977, стр. 72.

[3] *Theophanis Chronographia*, I, 368.

[4] Ղևոնդ, *էջ 19։ Տե՛ս А. Тер-Гевондян, նշվ. աշխ., էջ 73։*

[5] Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 119,* Մովսես Կաղանկատվացի, *էջ 257։*

701 թ. Մուհամմադը կատարեց իր մեծ արշավանքը դեպի Հայաստան[6]։ Նա մտավ առաջին հայկական նահանգը՝ Մոկք (Ջերմաձոր), որի լեռնային ամրոցներում էին ապաստանել հայերը։ Չկարողանալով նվաճել ամրոցները, նա բարեկամական խոստումներով խաբեց պաշարվածներին և ցած իջեցնելուց հետո՝ մեծ կոտորած սկսեց և շատերին գերեց։

701 թ. արշավանքն աղետալի դարձավ Հայաստանի համար։ Մուհամմադը որոշել էր երկիրը հրի ու սրի մատնելով, վերջնականապես հնազանդեցնել։ Ամրոցներում ապաստանածներին խաբեությամբ կամ այլ միջոցներով ձեռք գցելուց և կոտորելուց հետո արաբ զինվորները կողոպտում էին հայկական բնակավայրերը, նաև վանքերը[7]։

Մուհամմադն առաջ խաղաց և հասավ մինչև պաշարված Սևանա կղզին, բայց թողնելով այն, դիմեց Արևելք։ Նրա բացակայության ժամանակ հայերը պաշարելով Դվինում գտնվող արաբներին, որոնք թվով 62 հազար էին, բյուզանդացիների օգնությամբ կոտորեցին նրանց։ Ուտիքի կողմերից վերադառնալով, Մուհամմադը գրավեց Սևանա կղզին և պաշտպաններից շատերին կոտորեց։ Նա հարձակվեց հայերի ու բյուզանդացիների վրա և հաղթելով նրանց՝ երկիրը նվաճեց[8]։

Հայաստանը, ինչպես նաև Վիրքը, Աղվանքը, Մերձկասպյան շրջաններն ու Ձողա երկիրը (Դարբանդ), 701 թ. լրիվ նվաճվեցին և վերածվեցին մեկ՝ Արմինիա նահանգի։ Հայաստանի նվաճումն արաբների կողմից իսկական աղետ էր երկրի համար։ Արմինիայի առաջին ոստիկան (կառավարիչ) Աբդալլահի[9] խստությունների մասին խոսում են թե՛ հայ և թե՛ օտար արաբ պատմիչները։ Նա ծանր հարկեր էր դրել և նույնիսկ կրոնական հալածանքներ էր սկսել։ Դեռ նախքան նրա գալուստը Մուհամմադ իբն Մրուանը Սահակ կաթողիկոսին ու, հավանաբար, Հայոց իշխան Սմբատ Բագրատունուն գերի էր տարել Դամասկոս։ Աբդալլահ ոստիկանը ծրագիր էր մշակել պարզապես ոչնչացնել հայ նախարարական տոհմերը։

701 թ. դեպքերի մասին IX դարի արաբ պատմիչ Խալիֆա իբն ալ-Խայյաթը գրում է, որ 82 (701—702) հիջրի թվականին Աբդ ալ-Մալիք խալիֆան իր եղբորը՝ Մուհամմադին ուղարկեց Հայաստան, որի բնակիչները նրա դեմ ապստամբել էին, սակայն նա պարտության մատնեց նրանց և վերջիններս հաշտության պայմանագիր խնդրեցին և կնքվեց այն։ Նա կառավարիչ նշա-

---

[6] Ղևոնդ, գլ. Ե, հմմտ. *Ibn al-Athir*, IV, p. 84.

[7] Բագրևանդի ս. Գրիգորի վանքում վանականների ձեռքով արաբ ռազմիկներից մեկին սպանած լինելու սուտ մեղադրանքով արաբները տանջեցին վանականներին ու կողոպտեցին վանքի հարստությունները (Ղևոնդ, գլ. Է)։

[8] Մովսես Կաղանկատվացի, էջ 257։ Թեոփանեսը գրում է, որ մոտավորապես այն ժամանակ (702) Վահան իշխանը, որ «Ցոթդեկյան» էր կոչվում, Չորրորդ Հայքն արաբներին հանձնեց։ *Theophanis Chronographia*, I, p. 366.

[9] Հովհաննես Դրասխանակերտցին սրան բնորոշում է որպես «այր ժանտ, ժպիրհ և ապերասան»։ Ըստ Խալիֆա իբն ալ-Խայյաթի և Իբն ալ-Ասիրի, առաջին ոստիկանը կոչվում էր Աբու Շայխ իբն Աբդալլահ, իսկ ըստ Քուֆիի՝ Ուբայդալլահ (Աբդալլահ) իբն Աբու Շայխ։ Խալիֆա իբն ալ-Խայյաթը վկայում է, որ հաջորդ տարում (702) Աբդ ալ-Մալիք խալիֆան կրկին Հայաստան ուղարկեց Մուհամմադին, և նա հաշտության դաշինք է կնքում բնակչության հետ, որը պայմանավորվում է հարկեր վճարել։ Մուհամմադը Հայաստանում նշանակում է Աբու Շայխ իբն Աբգալլահ ալ-Ղանավիին և Օմար իբն Սաադի ալ-Ղանավիին, սակայն բնակիչները երկուսին էլ սպանում են («The History of Khalifah Ibn Khayyat», Vol. 1—2., 1967. p. 288—290).

նակեց Նաբիհ իբն Աբդալլահ ալ-Անազիին, սակայն նրանք դավաճանելով սպանեցին նրան։

Արաբ կառավարչի սպանության մասին վկայում են նաև X դարի պատմիչ Քուֆին և XIII դարի պատմիչ Իբն ալ-Ասիրը։ Սակայն հայկական աղբյուրները ոչ մի տեղեկություն չունեն այդ մասին։ Արաբ պատմիչները, հավանաբար, ավելի ուշ կատարված դեպքը (ոստիկանի սպանությունը) առաջ են բերում (701)։

Արդեն Դամասկոսից Հայաստան վերադարձած Սմբատ Բագրատունին տեղեկանալով ոստիկանի ծրագրին, 703 թ. նախարարից ժողով հրավիրեց (հավանաբար Կոգովիտ գավառի Դարույնք ամրոցում), որին մասնակցեցին Աշոտ իշխանի որդին՝ Սմբատը, Թեոդորոս Ռշտունու որդին՝ Վարդը, Սմբատ Բագրատունու եղբայր Աշոտը և այլ նախարարներ[10]։ Ժողովականները չկարողանալով որևէ ելք գտնել, ի վերջո որոշեցին երկրից հեռանալ և ապաստանել Բյուզանդիայի կողմերում[11]։

Հայ նախարարներն իրենց հեծյալ ռազմիկների հետ դիմեցին դեպի Արաքսի հովիտը և անցնելով Ուղեռ սահմանները, հասան Ակոռի մեծ ավանը։ Նախճավանում գտնվող արաբական 8 հազարանոց կայազորն իմանալով այսպիսի մեծ խմբի տեղաշարժի մասին, հետապնդեց, բայց անմիջապես չհարձակվեց, երևի նպատակ ունենալով բոլորին գերի վերցնել։ Հայերը, երբ լսեցին, որ արաբները հետապնդում են, անցան Արաքսը և բանակ դրեցին Վարդանակերտ ավանում[12]։ Արաբները հետևեցին նրանց։ Հայ նախարարները պատգամավոր ուղարկեցին նրանց մոտ, համոզելու, որ չհետապնդեն իրենց, քանի որ իրենց բոլոր կալվածքներն ու ունեցվածքը թողնում ու հեռանում են։ Սակայն արաբները չհամաձայնվեցին և հայերն ամրացրին Վարդանակերտը։ Առավոտյան գնդերը դասավորելով, հայերի երկու հազարանոց զորքը նախահարձակ լինելով մեծ ջարդ տվեց արաբներին։ Ցրտաշունչ գիշերին դրսում մնացած արաբներն ի վիճակի չգտնվեցին դիմադրել և անխնա կոտորվեցին, իսկ հայերի սրից ազատվածներն իրենց գետը գցեցին, սակայն բարակ սառույցը կոտրվեց և նրանք ջրահեղձ եղան։ Նրանցից միայն երեք հարյուր մարդ ազատվելով, ապաստան խնդրեց Վանանդի կողմերից մեկի հայ իշխանուհուց՝ տիկին Շուշանից, որն աղերսանքներով դիմեց նրանց հետապնդող հայ զորական Սմբատին (Աշոտի որդի) և խնդրեց չկոտորել նրանց։ Շուշան իշխանուհին վեհանձնորեն կապել տվեց թշնամի վիրավորների վերքերը, նույնիսկ գրաստ տրամադրեց և ուղարկեց խալիֆա Աբդ ալ-Մալիքի մոտ։

Հաղթանակած հայ նախարարները Վարդանակերտում ավար վերցրած արաբական ընտիր երիվարներից ընծա ուղարկեցին Բյուզանդիայի կայսրին, ավետելով իրենց հաղթությունը։ Կայսրը կուրապաղատության աստիճան շնորհեց Սմբատ Բագրատունուն։ Սմբատը և իր հետ եղած նախարարները որոշեցին հաստատվել Տայք նահանգում։ Սմբատն ամրացավ Տայքի հյուսիսում գտնվող Թուխարք ամրոցում։

---

10 Հայտնի չէ, թե այս նախարարական գաղտնի ժողովին արդյոք ներկա էին Մամիկոնյանները, Սյունիները կամ համաստղականները։ Անուհանդերձ դեպքերի հետագա ընթացքից երևում է, որ մասնակիցների թիվը մեծ է եղել։

11 Ղևոնդ, էջ 24։ Բ. Առաքելյան, Հայերի ազատամարտությունը արաբական լծի դեմ 703 թվականին («Լրաբեր հաս. գիտ.», 1941, № 5—6, էջ 55—63)։

12 Ղևոնդ, էջ 12։ J. Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam, p. 244—245.

Ապստամբությունը տարածվել էր Հայաստանի շատ նահանգներում։ Հայերն սպանեցին ոստիկան Աբդալլահին։ Արաբները հարձակվել էին Վասպուրականի վրա և առաջացել մինչև Ուշտունիք։ Այստեղ Դուկանք գյուղի մոտ հայերն ու արաբներն ընդհարվեցին։ Հայերը կոտորեցին արաբներին և միայն 380 արաբ կարողացան ճողոպրել ու ապաստանել գյուղի եկեղեցում։ Չկարողանալով եկեղեցին գրավել, հայերը կամեցան այն հրկիզել։ Սակայն Վասպուրականի Սմբատ իշխանն այդ բանը թույլ չտվեց։ Վերջիվերջո հայերը կարողացան նրանց մի կերպ դուրս բերել և կոտորել բոլորին։

Ապստամբությունը հաջող ելք ունեցավ նաև Վանանդում։ Կամսարական իշխանը վրդովված արաբ զորավար Օքբայի (Ուկբա) ապատակություններից. Վանանդի ազատների հեծյալ գնդով հարձակվեց ու սրի քաշեց նրա ամբողջ զորամասը։ Օքբան փախավ Ասորիք ու խալիֆայից պահանջեց նոր զորք՝ խեղդելու հայերի ըմբոստ շարժումը։ Հավանաբար, այս դեպքերի ժամանակ էր սպանվել արաբ կառավարիչը։

X դարի արաբ պատմիչ Քուֆիի երկում վկայություն կա, որ տեղի ունեցավ մեծ ճակատամարտ արաբական զորքի, որն ուղարկվել էր Հայաստան՝ ապստամբությունը ճնշելու, և հայ ապստամբների միջև, որոնց թիվը 100 հազար էր։ Հայերը հաղթեցին ու կոտորեցին արաբներին, վերցնելով նրանց ունեցվածքն ու զենքերը[13]։ Սա արձագանքն է Վարդանակերտի ճակատամարտի, որն այնքան աղմուկ էր հանել իր ժամանակին, գուցե և մասամբ Վանանդի ու Ուշտունիքի դեպքերի։

Ըստ Ղևոնդի, Աբդ ալ-Մալիքը Հայաստանը հանդարտեցնելու գործը հանձնարարեց Մուհամմադին, այսինքն իր եղբորը, որին հանձնված էր հյուսիսային փոխարքայությունը (Արմինիա, Ատրպատական, Վերին Միջագետք և սահմանային գոտի)։

Վերահաս վտանգը կանխելու համար հայ նախարարները խալիֆայի մոտ ուղարկեցին Հայոց կաթողիկոս Սահակ Ձորափորեցուն՝ մի քանի եպիսկոպոսների ուղեկցությամբ։ Պատվիրակությունը հանդիսավոր կերպով հասավ Աղձնիքի կողմերը և ապա դիմեց Խառան, ուր կաթողիկոսը հիվանդացավ ու վախճանվեց։ Ըստ Ղևոնդի, Սահակ կաթողիկոսը հայերի խնդրանքը գրավոր ձևով շարադրել էր և երբ Մուհամմադը հասավ Խառան, նրան հանձնեցին հայերի խնդրագիրը[14]։ Զգալով, որ խստությունները կարող են վատ հետևանք ունենալ, Մուհամմադը գոհացրեց հայերի պահանջները, և հրաման գրով ետ ուղարկեց հայկական պատվիրակությունը։ Միաժամանակ նա մեծ զորքով եկավ Հայաստան՝ հսկելու նպատակով։

705 թ. խալիֆա դարձավ Վալիդը (Վլիթ), իսկ Բյուզանդիայի աքսորյալ կայսր Հուստինիանոսը նորից տիրացավ իր գահին։ Արաբները թեև դեռևս արյունահեղություն չէին գործել Հայաստանում, բայց ամեն կերպ հսկում էին հայ նախարարներին։ Այդ ժամանակ Հուստինիանոսը, անհանգստացած, բյու-

---

[13] *Kufi*, Kitab al-futuh, Hyderabad, 1970, VI, p. 294.

[14] Խնդրվում էր ապահովել երկրի խաղաղ վիճակը, իսկ փոխարենը հայերը պետք է հավատարմորեն վճարեին հարկը (Ղևոնդ, էջ 30)։ Թվում է, թե Մուհամմադի հրաման գիրը սոսկ կրոնական ազատության մասին է, և այն, փաստորեն գոհացնում էր միայն Հայոց եկեղեցուն, իսկ նախարարների հանդեպ խալիֆայությունը դեռ չփոխեց նրանց ոչնչացնելու քաղաքականությունը (А. Тер-Гевондян, նշվ. աշխ., էջ 77)։

*զանդական օգնական զորքերով Հայաստան ուղարկեց Սմբատ Բագրատունուն, սակայն վերջինս Վանանդի Դրաշպետ գյուղի մոտ պարտություն կրեց և նորից հեռանալով հաստատվեց Եգերաց Փույթ (Փոթի) քաղաքում։*

*Արաբ պատմիչ Քուֆին վկայում է (ակներևորեն ակնարկելով այս ճակատամարտը), որ ապստամբներին պատժելու համար Հայաստան եկած Մուհամմադ իբն Մրուանը սաստիկ ճակատամարտի բռնվեց հոռոմների (ռում) և հայերի (արման) հետ։ Քիչ էր մնում, որ արաբները պարտվեին, սակայն հրաշքով կարողացան հաղթել հակառակորդին*[15]։

*Արաբական իշխանությունները առիթը բաց չթողեցին, որպեսզի 703 թ. ապստամբության վրեժը լուծեն հայ նախարարներից, որոնցից մեկը՝ Սմբատ Բագրատունին այս անգամ նույնիսկ բյուզանդական զորք էր բերել Հայաստան։ Մուհամմադ իբն Մրուանը հրաման ստանալով խալիֆայից, կարգադրեց Նախճավանում նստող զորավար Կասիմին (Կասմ), որ խաբեությամբ իր մոտ հրավիրի հայ նախարարներին իբրև այրուձիի հաշվառում կատարելու և ռոճիկ (հռոգ) վճարելու համար։*

*Նախարարները չկասկածելով, իրենց հեծյալների հետ ժամանեցին Նախճավան։ Հայ պատմիչների մեծ մասը վկայում է, որ արաբները բռնի զինաթափ անելով նրանց, ստիպեցին մտնել Նախճավանի ու Խրամի եկեղեցիները և ապա հրկիզեցին։ Սակայն ըստ Քուֆիի, արաբ զորավարը համոզեց, որ մտնեն եկեղեցիները՝ հավատարմության երդում տալու, ապա ավելացնում է. «Սակայն երբ իմացավ, որ բոլորը հավաքվել են եկեղեցիներում, դռները նրանց վրա փակել տվեց և ներսում եղածների հետ միասին նավթի կրակով վառեցին։ Այդ եկեղեցիները մինչև օրս կոչվում են վառվածներ (մուհտարիկա)»։ Հետաքրքրական է նշել, որ այս մասին, այսինքն՝ հավատարմության երդում տալու համար եկեղեցիները մտցնելը, պատմում են նաև հայ վարքագրական աղբյուրները և Հայսմավուրքը*[16]։

*Խալիֆա իբն ալ-Խայյաթը, խոսելով 84 (703) հիջրի թվականի դեպքերի մասին, այսպես է նկարագրում արյունալի իրադարձությունները։ «Դա կրակի տարին էր. բանն այն է, որ հոռոմների փախչելուց հետո Մուհամմադը ուղարկեց Զիյադ իբն ալ-Ջառահին և Հուբայրա իբն ալ-Աարաջ ալ-Խադրամիին և վառեց (մարդկանց) տաճարներում, եկեղեցիներում և շեներում։ Հրկիզումը տեղի ունեցավ Նախճավանում (Նաշավա) և Վասպուրականի այլ գավառներում»*[17]։

*Հովհաննես Դրասխանակերտցին հետևյալ ձևով է նկարագրում այս ողբալի դեպքը. «Արաբները եկեղեցիների փայտակերտ ծածկը հրկիզեցին և վառվող գերանների հետ շիկացած կղմինդրը թափվեց նախարարների ու հեծյալների գլխին և ծխախառն հուրը ողջակեզ արեց նրանց»*[18]։

*Մեծամեծ նախարարներին նախապես դուրս բերեցին և շղթայակապ բանտարկելուց ու տանջելուց հետո ոսկի ու արծաթ պահանջեցին, խոստանալով ազատ արձակել, սակայն բազում հարստություն խլելուց հետո նրանց ևս սպանեցին։ Դրանց մեջ էին Բագրատունի տոհմից Աշոտի որդի Սմբատը,*

---

[15] *Kufi*, Kitab al-futuh, VI, p. 295.

[16] *«Լիակատար վարք և վկայաբանութիւն սրբոց», Ա, Վենետիկ, 1810, էջ 190։ «Սոփերք Հայկականք», ԺԳ, Վենետիկ, 1854, էջ 63։ «Յայսմաւուրք», մարտ 28։*

[17] The History of Khalifah ibn Khayyat, p. 291.

[18] Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 125։*

Արծրունիներից Գրիգորն ու Կորյունը, Ամատունիներից Վարազ-Շապուհն ու նրա եղբայրը։ Այս գազանային արարքը, որի մասին վկայում են ոչ միայն հայ, այլև արաբ, բյուզանդացի և ասորի պատմիչները, որոշ չափով թուլացրեց Հայաստանի նախարարական տներն ու ռազմական ուժը և Ղևոնդի արտահայտությամբ հայերը «անպաշտպան ոչխարների նման գայլերի ձեռքը մատնվեցին»։

Այսուհանդերձ ապստամբությունն ունեցավ իր նշանակությունը, ստիպելով Օմայաններին փոխել իրենց վերաբերմունքը Հայաստանի նկատմամբ։ Նույն Վալիդ խալիֆան, որի իշխանության առաջին ամիսներին (705 թ. ուշ աշնանը) տեղի էր ունեցել վերոհիշյալ ողբերգությունը, նոր ոստիկան նշանակեց Աբդ ալ-Ազիզին (706—709) ու նրա միջոցով երդմնագիր տվեց հայ նախարարներին, ճանաչելով նրանց հողատիրական ժառանգական իրավունքները[19]։

Արաբական տիրապետության ժամանակաշրջանում, շնորհիվ այդ պայմանագրերի, հայ հողատեր նախարարներն ունեին այնպիսի իրավունքներ, որոնք խալիֆայության այլ նահանգների քրիստոնյա հողատերերը գրեթե չունեին։ Իհարկե, Ասորիքում, Միջագետքում, Եգիպտոսում կամ Անդալուսում (Սպանիա) նույնպես կային շատ քրիստոնյա հողատեր իշխաններ, սակայն վերջիններիս առջև հաճախ կրոնափոխության հարցն էր ծառանում, մի երևույթ, որ Հայաստանում խաղաղ պայմաններում հազվադեպ էր։ Պատահական չէր, որ հայ նախարարների ժառանգական իրավունքների նկատմամբ այս գիջող վերաբերմունքը, որ արդյունք է որոշակի պայմանների, շատ խալիֆաներ և ոստիկաններ հազիվ էին հանդուրժում։

Նոր ոստիկանը կոչ արեց վտարանդի հայ նախարարներին՝ վերադառնալ հայրենիք, խոստանալով նրանց հին ժառանգական տիրույթները։ Հայ նախարարները՝ Սմբատ կուրապաղատ Բագրատունու գլխավորությամբ տեղեկանալով Աբգ ալ-Ազիզի կոչի մասին, համաձայնեցին վերադառնալ[20]։

Վտարանդի նախարարների վերադարձով[21] նորից ամրապնդվեց Հայկական լեռնաշխարհը։ Մեծ Հայքի Միջնաշխարհը նորից ժառանգաբար կառավարվում էր հայ նախարարների ձեռքով որպես ղեկավար և միավորիչ օղակ ունենալով Հայոց իշխանին ու սպարապետին։

Բացի արևմուտք փախած նախարարներից, վերադարձան նաև Դամասկոս գերի տարված բազմաթիվ նախարարներ, որոնցից պատմիչների մոտ ուշա-

---

[19] Ղևոնդ, գլ. Ժ, հմմտ. *Ibn-Hauqal*, Opus Geographicum, II, p 343. Սամուել Անեցին նույնպես տեղեկություն ունի նման պայմանագրի մասին, ըստ որի Հայաստանը կարող էր ազատ կերպով դավանել քրիստոնեությունը այն պայմանով, որ ամեն մի տուն վճարեր չորս դրամ և բնահարկի տեսակներ, իսկ քահանաներից, ազատներից ու հեծյալներից հրամայեց հարկ չառնել։ Վերջինիս հիշատակումը հիմք է տալիս ենթադրելու, որ հայկական այրուձիի մասին ևս խոսված է եղել բուն պայմանագրում, ըստ որի պետք է որ նրա թիվը որոշված լիներ (ինչպես այլ աղբյուրներից երևում է) 15 հազար, իսկ նրա ստանալիք տարեկան ռոճիկը (գումարը) հարյուր հազար դրամ (դիրհեմ)։

20 Ղևոնդ, գլ. Ժ։

21 Ղևոնդը նախարարների վերադարձի թվականը չի նշում, բայց հիշում է, որ Փույթում նրանք մնացին 6 տարի։ Դրանից նա եզրակացնում է, որ դա կատարվել է 712 թ. (Մարկվարտ. Հայ Բագրատունեաց ճիւղագրութիւնը, Վիեննա, 1913, էջ 25)։ Սակայն, եթե նկատի ունենանք, որ Աբդ ալ-Ազիզի օրոք էր դա կատարվել՝ այսինքն՝ 706—709 թթ., ապա կարելի է նաև ենթադրել, որ Ղևոնդի հիշած վեց տարիները վերաբերում էին նրանց՝ ընդհանրապես Եգերաց կող-

դրության է արժանացել Վահան Գողթնացին[22]։ Գողթն գավառի իշխան Խոսրովը զոհվել էր Նախճավանի ողբալի դեպքերի ժամանակ, իսկ որդին՝ դեռատի Վահանը, գերի էր տարվել Դամասկոս և մահմեդական դաստիարակություն ստանալուց հետո, արքունի դիվանում դպիր էր նշանակվել, ստանալով արաբական Վահաբ անունը։ Երբ Օմար խալիֆան (717—720) ներում շնորհեց հայ գերիներին, մահմեդականացած Վահանը ցանկացավ նրանց հետ վերադառնալ հայրենիք։ Մեծ դժվարություններով նա կարողացավ վերադառնալ Գողթն և ոչ միայն վերստին դավանեց իր նախնիների քրիստոնեական հավատը, այլև ամուսնացավ Սյունյաց իշխանի դստեր հետ։ Այս բոլորն արաբները որոշ ժամանակ հանդուրժեցին և միայն շատ հետո, երբ նորից խստություններ սկսվեցին, Վահանը նահատակվեց արաբների կողմից։

Սմբատ Բագրատունու իշխանության այս երկրորդ մասը թեև խաղաղության շրջան էր Հայաստանի համար, սակայն ինքը՝ Սմբատը, որպես Հայոց իշխան, քիչ հեղինակություն էր վայելում և պատահական չէ, որ նրա անունը շատ քիչ են հիշատակում այս շրջանի մատենագիրները։

Ինչքան թույլ էր Հայոց իշխանի հեղինակությունը, այնքան ուժեղ էր Արմինիայի ոստիկան Աբդ ալ-Ազիզի դիրքը։ Սրա օրոք Արմինիայի վարչական կենտրոնը վերջնականապես դարձավ Դվինը, որը վերակառուցվեց նրա ձեռքով[23]։

Այս ժամանակ Վալիդը, ըստ Ղևոնդի, լսելով հայերի բողոքները, Մուհամմադին հրովարտակով իր մոտ կանչեց և նրա փոխարեն Արմինիայի, Ատրպատականի և Ջազիրայի փոխարքա նշանակեց իր եղբորը՝ Մասլամա իբն Աբդ ալ-Մալիքին։ Սա որոշ ընդմիջումներով իշխեց 709—732 թթ.։ Բացի վերոհիշյալ երեք երկրամասից նրան էր ենթարկվում նաև Կիննասրինը (հյուսիսային Ասորիք) և սահմանային ամրությունների գոտին։ Նրա հիմնական դերը ռազմական գործունեությունն էր, իսկ իր ձեռքի տակ եղած երկրների ներքին վարչական գործերին մասնակցություն չուներ[24]։

Այս ժամանակ էլ Հայաստանում տիրող քաղաքական տրամադրություններն արտահայտվեցին նորից կրոնական քողի տակ՝ հակաքաղկեդոնական պայքարի ձևով, ինչպես այդ տեղի էր ունեցել երկու դար առաջ՝ Խոսրով Անուշիրվանի օրոք։ Մինչև VII դարի սկիզբը Հայոց կաթողիկոսի իրավասությունը

---

մերը մնալու ժամանակաշրջանին, այսինքն՝ 703 թ., հաշվելով, որ նրանք կարող էին վերադարձած լինել 709 թ.։

22 Տե՛ս «Վահան Գողթնացու վարքը», «Սոփերք Հայկականք», ժԳ։

23 Ղևոնդ, էջ 36։ Աբդ ալ-Ազիզը հիշվում է Մովսես Կաղանկատվացու պատմության մեջ (Մովսես Կաղանկատվացի. էջ 159) որպես «իշխան տաճկաց», որը նստում էր Պարտավում։ Հայտնի է, որ Պարտավը ոստիկանի նստավայր չէր այդ ժամանակ և, ըստ երևույթին, Պարտավի վերանորոգումն Աբդ ալ-Ազիզի ձեռքով առիթ է տվել նման ենթադրության։ Նրա օրոք Աղվանքում կրոնական հալածանք է ծավալվում և նույնիսկ նահատակում են քրիստոնյաներին։ Այստեղ հիշված հայոց 161 (712) թ. առիթ է տվել ուսումնասիրողներին ենթադրելու, որ խոսքը վերաբերում է ուրիշ ոստիկանի՝ Օմար իբն Աբդ ալ-Ազիզին, որն իշխել է 717—720 թթ. (Հ. Նալբանդյան, Արաբ ոստիկանները Հայաստանում, «Լրաբեր հաս. գիտ.», 8, 1956, էջ 109)։ Աբդ ալ-Ազիզից հետո հիշվում են ոստիկաններ, որոնք որևէ նշանակալից գործ չեն կատարել, ինչպես Ադի իբն ալ-Քինդին (715—717), Օմար իբն Աբդ ալ-Ազիզը և այլն։

24 Այս է պատճառը, որ հայկական աղբյուրները (Ղևոնդ, Ասողիկ) նրա մասին խոսում են որպես մի ոմն զորավար «Մսլիմ»։ Սա խալիֆայության պատմության մեջ նշանավոր դարձավ Բյուզանդիայի և խազարների դեմ իր մղած երկարատև պայքարով։

տարածվում էր ոչ միայն Հայաստանի, այլև Աղվանքի ու Վիրքի վրա։ Արաբական առաջին արշավանքների նախօրեին Վիրքն արդեն վերջնականապես հարել էր Քաղկեդոնի դավանանքին, դրանից մեկ դար հետո Աղվանքը նույնպես անջատողական ձգտումներ ցուցաբերեց։ Աղվանից Ներսես կաթողիկոսն իր կողմը գրավելով Աղվանից նախկին իշխան Տրդատի տիկնոջ՝ Սպրամին, հարել էր քաղկեդոնականությանը և փորձում էր ստիպել Հայոց եկեղեցուն հավատարիմ եպիսկոպոսներին ընդունել այն[25]։ Վերջիններս դիմեցին Հայոց կաթողիկոսի օգնությանը։ Եղիա կաթողիկոսը (703—717) գործադրեց ամենավճռական և կտրուկ միջոցները։ Նա գնաց Պարտավ և Աղվանից իշխանի համաձայնությամբ շղթայակապ Դամասկոս ուղարկեց Ներսեսին և Սպրամ տիկնոջը։

Ներսեսի փոխարեն Եղիան Աղվանից կաթողիկոս ձեռնադրեց Սիմեոնին։ Այսպիսով, աղվանական եկեղեցին նորից ենթարկվեց հայոց եկեղեցուն։ Հովհաննես կաթողիկոս Օձնեցին (717—728) ավելի առաջ գնաց հակաքաղկեդոնական պայքարի հարցում։ Հայ մատենագրության մեջ մանրամասն պատմվում է, թե ինչպես Օձնեցին գնաց Դամասկոս՝ խալիֆայի (հավանաբար Օմարի՝ 717—727) մոտ[26]։

Հովհաննես Օձնեցու և Օմայան խալիֆայի տեսակցության բուն դրդապատճառները որոշ չափով բացահայտվում են նրանց միջև տեղի ունեցած խոսակցությամբ։ Դամասկոսի տիրակալն առաջարկել էր կաթողիկոսին՝ խնդրել ինչ որ կամենա, իսկ Օձնեցին խնդրում է երեք բան՝ դավանանքի ազատություն տալ քրիստոնյաներին, չստիպելով հավատափոխ լինել, հարկերից ազատել եկեղեցին ու եկեղեցականներին և պաշտամունքի ու արարողությունների ազատություն տալ քրիստոնյաներին՝ խալիֆայության բոլոր կողմերում[27]։

Հայոց կաթողիկոսը Դամասկոսից վերադառնալուց հետո խզեց բոլոր հարաբերությունները հույների հետ և վճռական պայքար ծավալեց քաղկեդոնականության դեմ։ Նա վերացրեց նույնիսկ հունական ծեսից հայ եկեղեցու մեջ մտած բոլոր նորամուծությունները։

Դամասկոսից վերադառնալուց հազիվ մեկ տարի անց՝ 719 թ. Օձնեցին հրավիրեց Դվինի եկեղեցական ժողովը։ Եկեղեցական զանազան հարցերի հետ հատուկ կանոններ էին ընդունվել պավլիկյան աղանդավորների հետ չհաղորդվելու մասին։ Հայոց կաթողիկոսը որոշել էր նպաստավոր պայմաններից օգտվելով, պայքարել հայ եկեղեցու բոլոր հակառակորդների դեմ և ուժեղացնել նրա ներքին կազմակերպությունը։ Նրա ջանքերով հավաքվեցին տիեզերական և հայ եկեղեցու բազմաթիվ կանոններ, որոնց ամբողջությունը կոչվեց «Կանոնագիրք Հայոց»։ Նրան է վերագրվում նաև «Գիրք թղթոց» ժողովածուի կազմումը։

Սակայն Հովհաննես Օձնեցու գործունեության ամենաուշագրավ քայլը հայ-ասորական միության ստեղծումն էր։ Նրա նախաձեռնությամբ գումար-

---

25 Մովսես Կաղանկատվացի, էջ 235—244։

26 Ղևոնդ Վարդապետ, էջ 58—59։

27 Կիրակոս Գանձակեցի. Պատմութիւն Հայոց, էջ 68։ Ըստ երևույթին արար հարկահաններն այնքան չէին հարգում եկեղեցին հարկերից ազատելու սկզբունքը։ Մ. Օրմանյանը հավանական է գտնում, որ Օմար խալիֆայի կողմից հայ գերիների արձակումը կարող էր Օձնեցու միջնորդությամբ եղած լինել (Մ. Օրմանյան, Ազգապատում, Ա, Պեյրութ, 1959, էջ 824)։

վեց հայ և ասորի (հակոբիկ) եկեղեցիների միացյալ ժողով[28]։ Սա նախապես պետք է տեղի ունենար Աղձնիքի Արզն քաղաքում։ Սակայն Արմինիայի ոստիկան Վալիդը թույլ չտվեց, որ ժողովը տեղի ունենա իր իշխանության սահմաններից դուրս և ժողովատեղի ընտրվեց Ապահունիք գավառի Մանազկերտ քաղաքը[29]։ Ժողովին ներկա էին Հայոց կաթողիկոսը՝ 23 եպիսկոպոսով և 8 վարդապետով, իսկ ասորվոց կողմից՝ 6 եպիսկոպոս։ 726 թ. կայացած այս ժողովի հիմնական առանցքն էին կազմում դավանաբանական այն հարցերը, որոնք պտտվում էին Քաղկեդոնի որոշումների շուրջ։ Ժողովը նզովեց և մեկընդմիշտ մերժեց հույն եկեղեցու որդեգրած երկաբնակ վարդապետությունը։

Հայ և ասորի եկեղեցիների միացյալ ժողովը և նրանց ընդունած հակաքաղկեդոնական խիստ որոշումները խալիֆայության կազմում ապրող Բյուզանդիայի սահմանամերձ երկու ժողովուրդների քաղաքական կողմնորոշման արտահայտությունն էին գաղափարական քողի տակ։ Եթե Եղիա Արճիշեցին ապահովել էր հայ-աղվանական եկեղեցական միությունը, ապա Հովհաննես Օձնեցին գլուխ բերեց հայ-ասորական դաշինքը, միշտ հանդես գալով հակաքաղկեդոնական դիրքերից[30]։

Եզիդ Բ (720—724) խալիֆայի ժամանակ և Հիշամի (724—744) իշխանության առաջին տարիներին Հայաստանի վիճակն ավելի վատթարացավ։ Եզիդը, որն ընդհանրապես հպատակ քրիստոնյա ժողովուրդների նկատմամբ անբարյացակամ էր, Հայաստանում խոզասպանության հրաման տվեց, մեծ վնաս հասցնելով անասնապահությանը։

Արմինիայի Հարիս (հայ. Հերթ) ոստիկանի օրոք (724—725) Հայաստանում, ինչպես նաև խալիֆայության այլ նահանգներում ընդհանուր աշխարհագիր կատարվեց։ Հայ պատմիչների վկայությունից պարզվում է, որ Հարիս ոստիկանը հարկերը խիստ ավելացրեց։ Ինչպես երևում է, երդահարկի փոխարեն ժողովուրդը պարտավոր էր գլխահարկ վճարել[31]։

Տնտեսական այս ճնշման հետ տեղի են ունեցել նաև քաղաքական խլրտումներ։ Մոտավորապես այս տարիներին է, որ Վահան Գողթնացու սպանությունը կատարվեց արաբների ձեռքով։ Դավիթ Ա (728—741) կաթողիկոսի աթոռակալության առաջին տարիներին Դվինի հայրապետանոցի նկատմամբ

---

28 Մանրամասն տե՛ս Ե. Տեր-Մինասյանց, *Հայոց եկեղեցու հարաբերությունները ասորվոց եկեղեցիների հետ*, Էջմիածին, 1908, էջ 173։

29 *Michel le Syrien*, II. p. 492—500. Ե. Տեր Մինասյան, *Մանազկերտի 726-ի ժողովի վեց ասորի եպիսկոպոսները և Խոսրովի Թարգմանչի հիշած երկու ասորական վանքերը*, «Պատմաբանասիրական հետազոտություններ», Երևան, 1971, էջ 59—64։

30 Աղբյուրներում կան որոշ ակնարկներ Մանազկերտի ժողովին հայ նախարարների մասնակցության մասին։ Ստեփանոս Սյունեցու գործունեության մասին պատմելիս պատմիչները հիշում են, որ նա վեճի մեջ մտավ ոմն երկաբնակ Սմբատ ասպետի հետ։ Հստակ չէ, թե այս երկաբնակ անձնավորությունը Հայոց իշխան Սմբատ Բագրատունին էր՝ թե ոչ։ Այսուհանդերձ հավանական է, որ այդ ժողովին ներկա լիներ Հայոց իշխան Սմբատը։ Ասողիկը պարզ կերպով վկայում է, որ Մանազկերտի ժողովը տեղի ունեցավ Սմբատի իշխանության ժամանակ (Մովսես Կաղանկատվացի. էջ 256)։ «Պատմութիւն նահանգին Սիսական, արարեալ Ստեփանոսի Օրբելեանի», 1910, էջ 134 (Մատենադարան Ձեռ. 1831, էջ 367 բ։ Ասողիկ, էջ 103)։

31 Մովսես Կաղանկատվացի, էջ 258։ Հ. Նալբանդյան, *Արաբների հարկային քաղաքականությունը Հայաստանում* (Լրաբեր հաս. գիտ., 12, 1954, էջ 77—78)։

ճնշումն այնքան էր անտանելի դարձել, որ կաթողիկոսը ստիպված էր թողնել մայրաքաղաքը և գնալ, հաստատվել իր ծննդավայրում՝ Կոտայք գավառի Արամոնս գյուղում։

Կատաղի բնույթ էր ընդունել պայքարը խազարների դեմ, որը գլխավորում էին Արմինիայի ոստիկանները։ 722—732 թթ. փոխնիփոխ Արմինիայի ու Ատրպատականի փոխարքայի պաշտոնում իրար հաջորդեցին ալ-Ջառահը և Մասլաման։ Մասլամայի կողմից նշանակված Հարաշին ետ մղեց խազարների հարձակումը։

Խազարների դեմ մղվող մարտերը արաբներին ստիպեցին նորից հրաժարվել խստություններից։ Սմբատ Բագրատունու մահից հետո քաղաքական կյանքում հանդես եկավ Վասակի որդի Աշոտը, որը ենթադրվում է, թե Սմբատի թոռն էր։

732 թ. Արմինիայի, Ատրպատականի ու Ջազիրայի փոխարքա նշանակվեց Մրուան իբն Մուհամմադը։ Գալով Դվին, նա հրավիրեց Հայաստանի նախարարներին և հանդիսավոր ձևով Աշոտ Բագրատունուն նշանակեց Հայոց իշխան (պատրիկ)[32]։ Աշոտը շուտով մեծ հեղինակություն ձեռք բերեց և բացառիկ դիրք գրավեց ոչ միայն երկրում, այլև նրանից դուրս։ Սովորաբար Հայոց իշխանը ենթակա լինելով Արմինիայի ոստիկանին, նրա միջնորդությամբ էր միայն հարաբերության մեջ մտնում խալիֆայի հետ։ Սակայն Աշոտ Բագրատունին անձամբ բանակցությունների մեջ մտավ Հիշամ խալիֆայի հետ, կարողացավ մեղմել տալ Հայաստանի նկատմամբ եղած որոշ խստությունները։ Նրա՝ Հայոց իշխան նշանակվելուց առաջ երեք տարի Հայոց այրուձին ռոճիկ (խածիթայ) չէր ստացել և այդ պետք է բացասաբար անդրադառնար Հայաստանի ռազմիկ ուժի մարտունակության վրա։ Հայոց իշխանը ոչ միայն կարողացավ վերականգնել տալ Հայոց այրուձիի հին իրավունքը, այլև ստացավ անցած երեք տարիների ռոճիկը՝ տարեկան 100 հազար դիրհեմ։

Խալիֆայության նման վերաբերմունքը պայմանավորված էր խազարների դեմ պատերազմում արաբների ունեցած դժվարություններով, որի համար Հայոց այրուձին խիստ հարկավոր էր արաբներին։ Այս դեպքերից անմիջապես հետո Մրուանն իր հետ վերցրեց Հայոց այրուձին՝ Աշոտի գլխավորությամբ, դիմեց խազարների կողմերը և մեծ հաղթանակներ տարավ[33]։ Հաղթական վերադարձի ճանապարհին Մրուանը կանգ առավ Պարտավում, որտեղ բաժանեց գերիներին և ավարը՝ բաժին հանելով նաև Հայոց Աշոտ պատրիկին ու նախարարներին։

Աշոտ Բագրատունու բարձրացումը մեծ գժգոհություն առաջ բերեց Մամիկոնյանների մեջ, որոնց մասնակցությունը երկրի քաղաքական կյանքում բավական սահմանափակվել էր։ Հայոց իշխանի պաշտոնը փաստորեն ժառանգաբար անցել էր Բագրատունիներին և նույնիսկ սպարապետությունը չէր տրվում Մամիկոնյաններին, քանի որ Աշոտ Բագրատունին այս գործակալությունն էլ իր վրա էր վերցրել։ Մամիկոնյան Գրիգոր և Դավիթ նախարարները խիստ դժգոհ դիրք բռնեցին Հայոց իշխանի դեմ և այդ մասին տեղեկացավ

32 Ղևոնդ, էջ 112։

33 *R. Grousset*, Histoire de l' Arménie des origines à 1071, Paris, 1947, p. 315—317.

նաև Մրուան փոխարքան։ Սա հրամայեց ձերբակալել երկու եղբայրներին և ուղարկել Հիշամ խալիֆային, որը և նրանց աքսորեց Եմեն։

747 թ. Խորասանում ծագեց Աբու Մուսլիմի ապստամբությունը, որից հետո Օմայյան խալիֆայության մեջ ծայր առան խռովություններ և տևեցին մինչև այդ խալիֆայական տան անկումը։ Հայաստանը նույնպես ալեկոծվեց այս տարիներին և ծայր առավ մի շարժում, որը, ըստ էության, շատ խայտաբղետ էր։

Հայ նախարարների մի խումբ, աքսորից վերադարձած Գրիգոր ու Դավիթ Մամիկոնյանների գլխավորությամբ, պայքար սկսեց Հայոց իշխան Աշոտ Բագրատունու դեմ, իսկ վերջինս գնաց Ասորիք՝ թե՛ օգնություն խնդրելու, թե՛ օգնելու Մրուան Բ-ին, որը կռվում էր Օմայյանների թշնամիների դեմ[34]։

Աշոտ Բագրատունու բացակայության ժամանակ Մամիկոնյանների խմբակցությունը կարողացավ համոզել Արմինիայի ոստիկան Իսհակ իբն Մուսլիմին, որպեսզի սպարապետ նշանակվի Գրիգոր Մամիկոնյանը։ Սակայն Մրուան խալիֆան անմիջապես Իսհակին հրաման ուղարկեց՝ ձերբակալել ու բանտարկել Գրիգորի եղբորը՝ Դավթին, որն ըմբոստ գործունեություն էր ծավալել։ Դավիթը Մրուանի հրամանով մահապատժի ենթարկվեց, իսկ Աշոտը վերահաստատվելով Հայոց իշխան, նորից իր վրա վերցրեց սպարապետությունը։

Օմայյանների և նրանց թշնամիների միջև պայքարն է՛լ ավելի սրվեց։ Հայ նախարարներն օգտվելով առիթից, որոշեցին ապստամբել։ Նրանք ստիպեցին Աշոտ Բագրատունուն միանալ այս շարժմանը և բոլորը միասին ուխտեցին մինչև վերջ հավատարիմ լինել։

Սակայն Գրիգոր Մամիկոնյանը կապ հաստատեց Բյուզանդիայի կայսր Կոստանդին Կոպրոնիմոսի հետ, որն այդ տարիներին, հավանաբար, ձգտում էր օգտագործել հայերի ըմբոստ տրամադրությունները։ Հայ նախարարներն իրենց ընտանիքներով ամրացան Տայքի կողմերը, ապավինելով Պոնտոսի բյուզանդական զորքերին։ Տեսնելով այս վիճակը, Հայոց իշխանը մի քանի նախարարների հետ վերադարձավ Բագրևանդ և սկսեցին գործակցել արաբների հետ։ Առիթից օգտվելով, Գրիգոր Մամիկոնյանը գիշերով հարձակվեց և գերի վերցնելով Աշոտին, իր սպանված եղբոր՝ Դավթի ծառաների ձեռքով կուրացրեց նրան։ Գրիգոր Մամիկոնյանը վերադարձավ Կարնո քաղաք և այնտեղ մահացավ։ Երկու խոշոր նախարարական տների միջև պայքարը թուլացրեց հայերի ապստամբությունը և քայքայեց այն[35]։ Կուրացած Աշոտ Բագրատունին հեռացավ քաղաքական ասպարեզից։

Այդ ժամանակ խռովահույզ վիճակում էր ամբողջ Արմինիան։ Ոստիկան Իսհակ իբն Մուսլիմի դեմ ապստամբել էր Դարբանդի կառավարիչ Մուսաֆիրը, որը ձգտում էր Արմինիայի ոստիկան դառնալ։ Այս իրադրության մեջ հայ նախարարները Հայոց իշխանի պաշտոնը հանձնեցին Մուշեղ Մամիկոնյանին[36]։

Ապստամբության ժամանակ հստակորեն ի հայտ եկավ Հայաստանում երկու քաղաքական խմբավորումների խոր հակասությունը։ Մամիկոնյանների խմբավորումը որպես ընդդիմադիր ուժ, կողմնակից էր զենքի միջոցով ազատվել կեղեքումներից և խալիֆայության ծանր լծից, ձգտելով հենվել Բյուզան-

---

34 Ղևոնդ, էջ 119։

35 Նույն տեղում, էջ 124։

36 Ն. Ադոնց, Քաղաքական հոսանքները հին Հայաստանում, «Պատմական ուսումնասիրություններ», Պարիս, 1948, էջ 35—37։

դիայի օժանդակության վրա։ Սրան հակառակ, Բագրատունիներն անօգուտ համարելով հուսահատ պայքարը հզոր խալիֆայության դեմ, ձգտում էին զիջումների միջոցով ստեղծել տանելի գոյավիճակ, քանի որ արտաքին օժանդակության իրական հույս չկար։

Շինականները բոլոր ապստամբությունների ժամանակ ընդհանրապես միացել են Մամիկոնյանների խմբավորմանը, սակայն նրանք ևս ունեին իրենց ձգտումները։ Ապստամբ շինականները, ռամիկները Պոնտոսի կողմերում թեև միացել էին Գրիգոր Մամիկոնյանի զորքին, բայց ընդվզելով պայքարում էին ոչ միայն խալիֆայության, այլև անմիաբան նախարարների դեմ[37]։

747—750 թթ. ապստամբությունն իր արձագանքը գտավ նաև Հայաստանի Սասուն գավառում, որը Օմայյանների օրոք գտնվում էր Արմինիա նահանգից դուրս՝ Ջազիրայի կազմում։ Ըստ VIII դարի ասորի պատմիչի[38], սելևկյան 1062 (750—751) թվականին Նփրկերտում (Մայֆարկաթ) նստող արաբ կառավարիչը հարձակվեց «լեռան» Խույթ (Կուլաբ) գավառի վրա և ձերբակալեց մեծամեծներին ու 7 հոգու սպանեց։ Հարևան Փիս (Փսանք) գավառում լեռնականներն ինքնապաշտպանության դիմեցին՝ առաջնորդ ընտրելով Հովհանին (Հովհան՝ որդի Դավդայի), որը կազմակերպեց նրանց ռազմական ուժերը։ Նփրկերտի կառավարիչը հաստատվելով Խույթ բերդում, կողոպտում էր շրջակա գյուղերը, սակայն Հովհանը հարձակվելով կոտորեց նրա զոկատները և նրան էլ սպանեց։ Արաբները դավաճանների միջոցով փորձեցին բռնել ու սպանել Հովհանին, բայց չհաջողվեց։

Վերջապես սելևկյան 1063 (752) թվականին Հյուսիսային նահանգների փոխարքա Աբդալլահ իբն Մուհամմադը (Աբու Ջաաֆար), որի նստավայրն էր Խառանը, Հովհանին ճանաչեց որպես լեռան կառավարիչ։ Սակայն Սալիհ իբն Սալիհ կոչված մի արաբ զորավար հարձակվեց Հայաստանի վրա (պատմիչը նկատի ունի Սասուն հայկական գավառը), ձերբակալեց Հովհանին և այլ լեռնականների։ Հովհանը լուր հասցնելով Աբդալլահին, կարողացավ փրկվել մահվանից ու գնալ Խառան, ապա ազատեց ձերբակալված լեռնականներին ու վերադարձավ լեռը (Սասուն)։

Մոտավորապես 749—752 թթ. տեղի ունեցած այս ապստամբությունը այն նշանակությունն ունեցավ, որ հետագայում Սասուն-Խույթ լեռնաստանը աստիճանաբար պոկվեց Ջազիրայից ու միացավ Արմինիա նահանգին և գտնըվելով անմիջականորեն բուն Հայաստանի կազմում (Հայոց իշխանի տնօրինության տակ), դարձավ Տարոնի Բագրատունիների մի տիրույթը։

## 2. 774—775 ԹԹ. ՄԵԾ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ

Օմայան խալիֆայության անկումով փաստորեն արաբական պետությունը դադարեց գոյություն ունենալուց և նրա փոխարեն ծնունդ առավ Աբբասյանների խալիֆայությունը (750—1258), որը համամահմեդական պետություն էր։ Աբբասյանները խալիֆայության մայրաքաղաքը տեղափոխեցին Բաղդադ, որը գտնվում էր Տիգրոնից փոքր հեռավորության վրա։

---

37 Ղևոնդ, էջ 123։ Կարծվում է, որ սրանք պավլիկյաններ էին։

38 *Denys de Tell Mahré*, p. 46—49: Ա. Տեր Ղևոնդյան, *Սասունի 749—752 թթ. ապստամբությունը խալիֆայության դեմ* (ՊԲՀ, 1971, 3, էջ 196—202)։

Աբբասյան խալիֆայությունն Օմայանից ավելի բարձր մակարդակի վրա գտնվող պետական կազմակերպություն էր և նահանգների շահագործումն ու քաղաքական ճնշումն ավելի կազմակերպված և նենգ միջոցներով էր իրականացվում։ Այդ ժամանակաշրջանում և մանավանդ VIII դարի երկրորդ կեսին (առաջին Աբբասյանների օրոք) հարկային կեղեքումներն առավելագույն չափերի էին հասել, արյունաքամ անելով խալիֆայության բոլոր նահանգները։

Աբբասյանների իշխանության հաստատմամբ է՛լ ավելի ծանրացավ հայ ժողովրդի վիճակը, սաստկացավ քրիստոնյաների հալածանքը։

Աբու-ալ-Աբբաս ալ-Սաֆֆահի (Արյունարբու) ժամանակ (750—754) նրա եղբայրը՝ Աբու Ջաաֆարը, նշանակվեց Արմինիայի, Ատրպատականի, Ջազիրայի, Մոսուլի և սահմանային ամրությունների գոտու փոխարքա, իսկ Արմինիայի ոստիկան դարձավ Մուհամմադ իբն Սուլը[39]։ Աբբասյանների՝ իշխանությանը տիրանալու ժամանակ ամբողջ Արմինիան խառը վիճակում էր[40]։ Աբու Ջաաֆարն անձամբ եկավ Հայաստան՝ Մրուան Բ-ի օրոք ծագած ապստամբությունը ճնշելու և անցյալ տարիներին չմուծված հարկերը հավաքելու[41]։ Նա հարկ էր պահանջում նույնիսկ մեռյալների փոխարեն, որոնք կենդանության օրոք չէին վճարել հարկերը։ Գլխահարկը ոչ թե ըստ երդի էր գանձվում, այլ ըստ անձի, այն էլ ամենախիստ ձևերով, առիթ տալով սարսափելի չարաշահումների։

Հեռանալով Հայաստանից, Աբու Ջաաֆարը Արմինիայի ոստիկան նշանակեց Եզիդ իբն Ուսայդ Սուլամիին (752—754)[42]։ Սա Հայոց իշխան նշանակեց Սահակ Բագրատունուն (752—770), սպարապետ դարձավ Սմբատ Բագրատունին (752—775)։

Հայկական հեծելազորի վիճակն այս տարիներին շատ ծանր էր, քանի որ խալիֆայությունը չէր վճարում սահմանված տարեկան ռոճիկը և պարտավորեցնում էր հայ նախարարներին՝ իրենց միջոցներով հոգալ նրա ծախսերը[43]։

Բյուզանդիայի Կոստանդին Կոպրոնիմոս կայսեր օրոք, 752 թ. բյուզանդական զորքը գրավեց Կարնո քաղաքը և նրա հայ բնակիչներին տարավ արևմուտք։ Ըստ Բալազուրիի, բյուզանդական զորքը քաղաքը գրավել էր որոշ տեղացի հայերի օժանդակությամբ[44]։ Եզիդ իբն Ուսայդը վերագրավեց Կարնո քաղաքը, որտեղից նորից փախան հայ բնակիչներից շատերը։ Նա քաղաքը բնակեցրեց արաբ գաղթականներով և պարտավորեցրեց հայերին հոգալ նրանց պարենավորումը։ Եզիդն ամուսնացավ խազարների խաքանի քրոջ հետ, որը շուտով մահացավ և խազարները կասկածելով, թե նրան սպանել են, ասպատակեցին Շիրվանն ու Վիրքը[45]։

Աբու Ջաաֆար ալ-Մանսուր (754—775) խալիֆան Արմինիայի ոստիկան

---

39 Beladsori. p. 209.

40 Հայաստանում իշխում էր Մուշեղ Մամիկոնյանը, որն առանց հայ նախարարների կողմից էր Հայոց իշխան ընտրված, իսկ Դարբանդի կողմերում իշխում էր առանց Մուսաֆիրը։ Վերջինիս դեմ պայքարեց ոստիկան Մուհամմադը (Yaqubi, II, p. 358):

41 Ղևոնդ, էջ 128։

42 Beladsori, p. 205.

43 Ղևոնդ, էջ 128—129։

44 Beladsori, p. 199.

45 Ղևոնդ, էջ 132։

նշանակեց Հասան իբն Կահթաբային (754—759), որի դեմ ապստամբեցին Կախեթի ծանարները, սակայն նրանց շարժումը ճնշվեց[46]։

Այդ տարիներին Վասպուրականի Արծրունիներն արյունահեղ ընդհարումներ ունեցան Ատրպատականի կողմից ասպատակող ավազակախմբերի հետ։ Վասպուրական մտավ Սուլայման հրոսակը, որին դիմադրեցին Սահակ և Համազասպ Արծրունի եղբայրները, բայց սպանվեցին։ Երրորդ եղբայրը՝ Գագիկը, օգնության հասավ, սակայն թշնամիները փախուստի դիմեցին։ Հետագայում նրան հաջողվեց իր եղբայրների վրեժը լուծել և սպանել Սուլայմանին։

Գագիկի դեմ պայքարի դուրս եկան բազմաթիվ արաբ զորավարներ։ Գագիկն ապաստանեց Նկան ամրոցը, որտեղից նա ասպատակությունների մի շարք սկսեց Ատրպատականի դեմ։ Սակայն Մուսա զորավարը խաբեության միջոցով կարողացավ ձերբակալել նրան[47]։

Եզիդ իբն Ուսայդը կրկին ոստիկան նշանակվելով (759—769), հարկերն այնքան ծանրացրեց, որ Հայոց իշխան Սահակ Բագրատունին և Տրդատ կաթողիկոսը քանիցս բողոքեցին[48] Մանսուր խալիֆային, որը ետ կանչեց նրան և փոխարենը նշանակեց Բաքարին[49], բայց դրությունը չփոխվեց։

768 թ. Սիոն կաթողիկոսը եկեղեցական ժողով հրավիրեց Պարտավում[50], որին մասնակցեցին Հայոց իշխան Սահակը, մի քանի անվանի նախարարների հետ[50]։ Սահակ Բագրատունին շուտով մահացավ (մոտ 772—773 թթ.)[51] որից հետո Հայոց իշխանի իրավասությունները ինքնաբերաբար անցան սպարապետ Սմբատ Բագրատունուն։

Ծանր հարկերը և անլուր կեղեքումը հայ ժողովրդին հասցրին հուսահատության եզրին։ Դժգոհ երկիրը միակ ելքը տեսնում էր ապստամբության մեջ, թեև ժամանակը բոլորովին հարմար չէր իր հզորության գագաթնակետին գտնվող Աբբասյան խալիֆայության դեմ նման հանդուգն շարժում ձեռնարկելու։ Ի տարբերություն 747 թ. ապստամբության, 774 թ. սկիզբ առնող շարժմանը հարեց հայ նախարարների մեծամասնությունը և նախարարական տների միջև խիստ հակամարտությունն այստեղ արտահայտություն չգտավ։

Շարժումն սկսվեց Շիրակի Կումայրի գյուղից։ Արտավազդ Մամիկոնյանը գնացել էր Դվին, ոստիկանից սպառազինություն խնդրելու իր գնդի համար, ինչպես ընդունված էր այդ ժամանակ։ Նա ստացել էր զրահ ու սաղավարտներ և ամեն տեսակ սպառազինություն, որով զինել էր իր ռազմիկներին։ Արտավազդն իր պահանջը պատճառաբանում էր նրանով, որ ինքը գնալու էր խալիֆայության թշնամիների դեմ կռվելու։ Սպառազինելով իր գունդը, նա եկավ Կումայրի, և ինչպես նախապես ծրագրել էր, հարձակվեց գլխավոր հարկահանի վրա և խլելով նրանից հավաքված հարկերը, դժգոհ նախարարների մի խմբի հետ հեռացավ Սամցխե։

Արտավազդի այդ հանդուգն քայլի լուրը հասավ Դվին։ Ոստիկանը բազմամարդ զորքով հետապնդեց Արտավազդին։ Հետապնդողներն Արտավազդի գնդի ետևից դեպի արևմուտք երկար ճանապարհ գնալուց հետո, հասան

46 *Yaqubi*, II, p. 372.

47 Ղևոնդ. էջ 133—135։

48 Ղևոնդ. էջ 136։

49 Յաումեր, Ժամանակագրություն Հայաստանի ոստիկաններու, Վիեննա, 1933, էջ 9—10։

50 «Կանոնագիրք Հայոց», հրատ. Ա. Ղլտճյան, 1913, էջ 166։

51 Մ. Չամչյան, Պատմութիւն Հայոց, Բ, էջ 418։ Ասորի պատմիչը վկայում է, որ սելևկյան 1084 (772—773) թվականին Մեծ Հայքի պատրիկը սպանվեց։ *Denys* de Tell *Mahré*, p. 148.

*Սամցխե գավառը (այժմյան Ախալցիխեի կողմերը)։ Կիրճերը բռնելով, շրջապատեցին նրան և պետական հարկերի մի մասը խլեցին, իսկ ապստամբները հեռացան Հայկական լեռնաշխարհից։ Նրանք ապաստանեցին Եգերաց երկիրը[52]։*

*Ի պատասխան ապստամբության, ոստիկան Հասանն է՛լ ավելի խստություններ գործադրեց։ Արաբ հարկահաններն ամենայն դաժանությամբ ավելացնում էին հարկերի չափը և կանխիկ վճարով տուրքերի քանակն այնքան էր ավելացել, որ այլևս արծաթ մետաղ չէր մնացել երկրում՝ նրանց պահանջը գոհացնելու համար։*

*Խստություններն ավելի գրգռեցին դժգոհ տրամադրությունները և շարժումը կրեց համընդհանուր բնույթ՝ թիրախ դարձնելով անհագ հարկապահանջներին։ Շարժումը գլխավորեց Հրահատ կոմսի որդի Մուշեղ Մամիկոնյանը, որն իր շուրջը հավաքելով մի խումբ նախարարների, ապստամբության պատրաստվեց։ Առաջին քայլն արվեց Տարոնում, ուր արաբ պաշտոնյաները մտնելով Մուշեղի տոհմական կալվածքները, արյան վրեժ էին պահանջում Արտավազդի ձեռքով սպանված արաբների համար։ Մուշեղի ջոկատը կոտորեց այդ արաբներին և ինքն էլ իր ընտանիքի հետ հեռացավ Տարոնից, հաստատվելով Արտագերս անառիկ ամրոցում[53]։ Մուշեղը երկու հարյուր ռազմիկներով հարձակվեց արաբ հարկահան Աբու Մջուրի (Աբումճուր) ու նրա ընկերակիցների վրա և բոլորին ոչնչացրեց։ Այս դեպքն այնպես ոգևորեց տառապյալ ժողովրդին, որ ամեն կողմից Մուշեղին էին դիմում բոլոր դժգոհները՝ ստվարացնելով ապստամբների շարքերը։*

*Արաբներն ընդհանուր հարձակման անցան այս վտանգավոր շարժման դեմ։ Նախ երկու հարյուր արաբներ Մուշեղ Մամիկոնյանի դեմ հարձակվելու համար դուրս եկան Կարնո քաղաքից և կանգ առան Բագրևանդի Խարս գյուղի այգեստաններում։ Մուշեղը սակավաթիվ ռազմիկներով, գիշերով հարձակվեց նրանց վրա և իրարանցում առաջացրեց արաբների մեջ, որոնք պարտվեցին ու փախան։ Նա հավաքելով զենքերն ու ռազմական ավարը, զինեց իր շուրջը հավաքված ապստամբներին և նորից վերադարձավ Արտագերս ամրոցը։*

*Երկրորդ հարձակումն արաբները կատարեցին Դվինի կողմից, որտեղ Մուշեղի հաղթանակները մեծ իրարանցում էին առաջ բերել։ Հասան ոստիկանը Դվինում գտնվող արաբական կայազորը հանձնեց Աբու Նաջիբ (Աբունճիբ) զորավարին։ Չորս հազար ընտիր հեծյալներից բաղկացած այս զորքը արքունի պողոտայով գնաց դեպի արևմուտք և կանգ առավ Բագրևանդ գավառի Բագավան գյուղում։ Ըստ Ղևոնդի, Մուշեղը վրա հասավ իր զորաջոկատով և բազում հարվածներ հասցնելով թշնամուն՝ փախուստի մատնեց։ Հայերն արաբական զորքի մնացորդներին հալածեցին մինչև Արուճ ավանը, սպանվել էր նաև զորավար Աբու Նաջիբը։ Այս անգամ ևս Մուշեղն Արտագերս վերադարձավ հարուստ ավարով, որը նրան անհրաժեշտ էր իր շուրջը հավաքվածներին զինելու համար։ Արաբական գնդի մնացորդները Դվին հասնելով, խուճապ առաջացրին իրենց դիմավորող արաբների մեջ, որոնք ողբով ու լացով լցրին մայրանիստ*

52 Լեո, հ. Բ, էջ 401։

53 Ղ. Ալիշան, *Այրարատ*, Վենետիկ, 1890, էջ 524։

*քաղաքի փողոցները։ Արաբներն այնպես էին սարսափած, որ փակվեցին Դվինում ապավինելով նրա հզոր պարիսպներին*[54]*։*

*Մուշեղի հաղթանակները ոտքի հանեցին Հայաստանը և ապստամբության գաղափարն այնքան էր ոգևորել մարդկանց, որ շատերը կարծում էին, թե Աբբասյան խալիֆայության վախճանը հասել էր։ Երևան եկավ մենակյաց մի անապատական (մոնոզոն), որը գուշակում էր, թե հասել է Հայոց թագավորության վերականգնման ժամանակը*[55]*։*

*Խանդավառությունն այն աստիճանի հասավ, որ ապստամբության կողմնակիցները կարողացան իրենց հետ տանել նաև Հայոց սպարապետ Սմբատ Բագրատունուն, որի միանալը, բնականաբար, մեծ չափով կարող էր այս շարժման վարկը բարձրացնել ժողովրդի աչքին։ Նախարարաց ժողով հրավիրվեց՝ ապստամբելու հարցը քննարկելու համար։ Որոշվեց ապստամբություն բարձրացնել Աբբասյանների դեմ, ուխտ դնելով կռվել ու մեռնել միասին։*

*Սակայն ապստամբությունն ուներ նաև հակառակորդներ, որոնցից առաջինը պետք է հիշատակել Սահակ Բագրատունու որդի Աշոտին։ Իր տրամադրություններով Աշոտ Բագրատունու կողմը հակված Ղևոնդ պատմիչը մանրամասն հիշում է նրա խոսքերը հայ նախարարներին։ Աշոտը խորհուրդ էր տալիս չտարվել ոգևորված քարոզիչների անխոհեմ կոչերով, քանի որ բազմագլուխ վիշապը՝ արաբական խալիֆայությունը, իր հզորության գագաթնակետին էր գտնվում։ Նա հիշեցնում էր, որ խալիֆայության ռազմական ուժի դիմաց անզոր էր նույնիսկ հզոր Բյուզանդիան ու զարմանում էր, թե ո՞ւմ վրա են հույս դրել ապստամբները, զգուշացնելով, թե վերջիվերջո ապստամբներին վիճակվելու էր փախստական դառնալ և ապաստանել Բյուզանդիայի կողմերը։*

*Հավանաբար Աշոտ Բագրատունու ազդեցությանը ենթարկվելով, նախարարների մի մասը չեզոք դիրք բռնեց։ Համազասպ Արծրունին իր եղբայրների ու ռազմիկների հետ քաշվեց Վասպուրականի ամուր վայրերը։ Աշոտի որդի Վասակ Բագրատունին Ամատունի և Տրունի իշխանների հետ ամրացավ Դարույնք ամրոցում և Մակուի արևելյան կողմերում։ Ղևոնդի արտահայտությամբ նրանք դուրս էին գալիս պարեն ճարելու և նորից փակվում իրենց ամրոցներում։ Ըստ երևույթին ապստամբությանը չէին մասնակցել նաև Սյունյաց իշխանները, որոնց անունը չի հիշատակվում ապստամբության ընթացքում։*

*774—775 թթ. ձմեռը նպաստավոր էր հայ ապստամբների համար, որոնք արդեն ուժեղ դիրք ունեին կենտրոնական Հայաստանում՝ Այրարատի և Տուրուբերանի մեծ մասում*[56]*։ Սմբատ Բագրատունու և Մուշեղ Մամիկոնյանի շուրջը մեծ զորք էր հավաքվել, որի զգալի մասը եկել էր, հավանաբար, հեծելազորից, քանի որ սպարապետն ինքն էր գլխավորում ապստամբությունը։ Մեծ թիվ էին կազմում նաև շինականները, որոնք փախչելով ծանր հարկերից, եկել էին միանալու Մուշեղ Մամիկոնյանին։ Ապստամբ զորքն արդեն ուներ հինգ*

---

54 Լեո, հ. Բ, էջ 402։

55 Ղևոնդ, *գլ. լզ։*

56 *Ըստ VIII դ. ասորի պատմիչի վկայության սելևկյան* 1085 (774—775) *թ. Չորրորդ Հայքում տեղի ունեցավ խալիֆայության հարկային լծի դեմ ժողովրդական ապստամբություն, որը, բնականաբար, 774—775 թթ. մեծ ապստամբության արձագանքն էր։* Denys de Tell *Mahré*, p. 161, 172, Լ. Մելիքսեթ-Բեկ, *Չորրորդ Հայքի գյուղացիական ապստամբության հարցի շուրջը («Հրաբեր հաս. գիտ.», 1948, 2, էջ 45—58)։*

հազար ռազմիկ, և նրա ղեկավարները ձեռնարկեցին վճռական ռազմական գործողություններ։ Նրանք հարձակվեցին Կարնո քաղաքի վրա և ամբողջ ձմեռն այն պաշարել էին խրամատներով։ Աշտարակներ կառուցեցին և բաբաններով փորձեցին պարիսպում ճեղք առաջացնել, սակայն հաջողություն չունեցան և միայն քարանետ մեքենաներով ռմբակոծում էին քաղաքը, մեծ վնաս պատճառելով արաբ ռազմիկներին։ Կարնո քաղաքի գրավումը մեծ հարված կլիներ Աբբասյան խալիֆայությանը, որի համար այս քաղաքը ռազմական բացառիկ նշանակություն ուներ Բյուզանդիայի դեմ մղած պայքարում, իսկ մյուս կողմից քաղաքի գրավումով հայ ապստամբներն իրենց թիկունքում կունենային Բյուզանդիան։ Դվինի արաբական կայազորը, որը գլխավորն էր երկրում, կարողացավ միայն ասպատակել ապստամբներին միացած մի քանի գյուղեր՝ Պտղունք, Թալին, Կողբ և այլն և որոշ վնասներ պատճառել դրանց։

775 թ. գարնանը Մանսուր խալիֆան Խորասանի կողմերից 30 հազար հեծյալներից բաղկացած զորք ուղարկեց՝ Ամր իբն Իսմայիլ զորավարի հրամանատարությամբ ապստամբությունը ճնշելու։ Արաբական զորքը եկավ Ասորիքի կողմից, Աղձնիքի վրայով մտավ Բզնունիք և մեծ զգուշությամբ տեղավորվեց Խլաթում։ Այստեղ գտնվող արաբներից նա տեղեկացավ հայոց զորքի թվի, սպառազինության ու մարտունակության մասին և թե ովքեր էին նրա զորագլուխները և ինչպիսի հարաբերության մեջ էին միմյանց հետ[57]։

Թշնամու մեծաթիվ զորքի ներխուժումը Հայաստան՝ փոխեց չեզոք դիրք բռնած նախարարների տրամադրությունները, որոնք արդեն ելք չէին տեսնում, քան ապստամբներին օգնելը, եթե ոչ բացահայտ, գոնե գաղտնի միջոցներով։ Աշոտ Բագրատունին, որն այդ ժամանակ Խլաթ քաղաքում էր, հայ ապստամբ նախարարներին նամակով հայտնեց արաբական զորքի գալուստը, և խորհուրդ տվեց անմիջապես ուժերը միացնելով, գալ և կանգնեցնել թշնամու առաջխաղացումը, մանավանդ որ չեզոք դիրք բռնած վերոհիշյալ բոլոր նախարարները և Համազասպ Արծրունին իր եղբայրներով, Ամատունիներն ու Տրունիները և Վասակ Բագրատունին արդեն կողմնակից էին զինված ապստամբության, քանի որ թշնամին սպառնում էր բոլորին։ Սակայն ապստամբները չհավատացին Աշոտ Բագրատունու անկեղծությանը և չուզեցին թողնել Կարնո քաղաքի պաշարումը։

Համազասպ Արծրունու շուրջը համախմբված նախարարների խմբավորումը որոշել էր գրավել արաբների ձեռքում գտնվող Արճեշը, որի համար բացի Արծրունիներից, Ամատունիներից, օգնության կանչեցին նաև Վասակ Բագրատունուն։ Սրանց գնդերը հավաքվեցին Բերկրի քաղաքում, որտեղից պետք է ընթանային դեպի Արճեշ։ Սակայն այս գնդերը վատ էին սպառազինված, նրանց մի մասն էլ անզեն ու անփորձ աշխարհազորայիններից էր բաղկացած։ Բացի դրանից զորագլուխները տեղյակ չէին թշնամու իսկական ուժին, և երբ Արճեշից մարդ եկավ հայտնելու, որ արաբները մեծաթիվ զորք են պատրաստում, Համազասպ Արծրունին հավատ չընծայեց նրան, և հրամայեց իր զորքին առաջ խաղալ դեպի Արճեշ։

Արճեշի արաբներն անմիջապես տեղեկացրին Ամրին, որ հայ նախարարների զորքը մոտենում է, իսկ արաբ զորավարն իր զորքով եկավ ու դարան մտավ Արճեշի մերձակայքում։ Երբ հայերը սկսեցին հարձակումը, արաբները

57 Լեո, հ. Բ, էջ 404։

դուրս գալով թաքստոցից, հարձակվեցին նրանց վրա և մեծ վնաս հասցրին անփորձ աշխարհազորայիններին, որի մի մասը ջրահեղձ եղավ Վանա լճում։ Ռամիկներից սպանվեց 1500 զինվոր, իսկ նախարարներից չորս հոգի, երեքը՝ Ամատունի, մեկը՝ Ուրծա տոհմից։ Հայոց զորքի մնացորդները նահանջեցին մինչև Տայ գյուղը[58]։ Այս ճակատամարտը տեղի ունեցավ 775 թ. հրոտից ամսի 4-ին (15 ապրիլ), շաբաթ օրը։

Պարտությունն արմատապես փոխեց իրադրությունը Հայաստանում։ Եթե մինչ այդ հայ ապստամբները Մուշեղ Մամիկոնյանի և սպարապետի գլխավորությամբ գերակշռությունն իրենց ձեռքում էին պահում, ապա Արճեշի աղետից հետո զգուշությամբ շարժվող Ամրի զորքը համարձակ կերպով առաջ խաղաց արքունի պողոտայով և կանգ առավ Արձնի գյուղի մոտ։

Կարնո քաղաքի արաբական կայազորը, որն ամբողջ ձմեռը պաշարված էր և սովի սպառնալիքի առջև արդեն պատրաստվում էր հանձնվել հայերին, Արճեշի աղետի լուրն առնելով հրաժարվեց հանձնվելուց։ Հայ ռազմիկները հուսալքված վիճակում թողեցին քաղաքի պաշարումը. Նրանց առջև երկու հնարավորություն կար, հեռանալ, անցնել Բյուզանդիայի կողմերը՝ ազատվելով թշնամու վերահաս հարվածից կամ իր ժողովրդի հետ դիմադրել ու մեռնել[59]։ Հայ ռազմիկներն ընտրեցին երկրորդ ճանապարհը և թեև թշնամուց շատ քիչ էին թվով, առանց տատանվելու Կարնո քաղաքից Բասենի վրայով գնացին Բագրևանդ։ Հայոց հինգ հազարանոց զորքը և ռամիկ աշխարհազորականները հասնելով Արձնի գյուղի մոտերքը, անցան Արածանի գետը և բանակ դրեցին թշնամու դիմաց։

Բախտորոշ ճակատամարտը տեղի ունեցավ հաջորդ օրը՝ արևածագին։ Արաբները ոչ միայն թվով շատ ավելի էին հայերից, այլև լավ սպառազինված, իրենց ճամբարում ունենալով նույնիսկ զենքեր նորոգող ու պատրաստող արհեստավորներ։ Սկզբում հայկական զորքն իր բոլոր ուժերը հավաքելով հարձակվեց թշնամու վրա և մեծ ջարդ տվեց արաբներին, բայց թշնամու թվական գերակշռությունն իր դերը խաղաց և Ամրի զորքն ընդհանուր հարձակման անցնելով հայերի դեմ՝ նեղ դրության մեջ դրեց թե՛ հեծյալներին և թե՛ հետևակին։ Օրհասական րոպեին նահատակության պատրաստվող ռազմիկներն իրար քաջալերում էին այսպիսի խոսքերով. «Քաջությամբ մեռնենք մեր աշխարհի և մեր ազգի համար, և թող մեր աչքերը չտեսնեն մեր սրբարանների և մեր Աստուծո փառաբանման վայրերի ոտնակոխ լինելն ու պղծվելը... այլ թշնամիների սուրը թող նախ և առաջ մեր դեմ ուղղվի, ապա թող անեն ինչ կկամենան»։ Ապա մաղթանքներով զոտեպնդված նրանք այնպիսի հարձակում գործեցին թշնամու վրա, որ ճակատամարտին մասնակից արաբները հետագայում պատմել են, թե ինչպես իրենց թվում էր, որ հայերի հետ մասնակից էր հրեշտակների բազմությունը, որոնք մարդկային կերպարանքով երևացել էին հայկական բանակի շարքերում։ Բանն այն էր, որ հայ եկեղեցականները մարտիկներին քաջալերելու նպատակով ավետարաններով, մոմերով ու խնկամաններով ընթանում էին զորքի հետ, հոգեպես զորավիգ կանգնելու նրան և պայքար մղելու[60]։ Դա մի անձնազոհ հերոսամարտ էր զորեղ թշնամու դեմ։ Ի վերջո հայ ռազմիկների շարքերը նոսրացան և շատերն ընկան հե-

58 Նույն տեղում, էջ 405։

59 Նույն տեղում, էջ 405—406։

60 Նույն տեղում, Բ, էջ 406—407։

րոսի մահով։ Երեք հազար մարդ զոհվեց։ Ընկան ապստամբության ղեկավար Մուշեղ Մամիկոնյանը, հայոց սպարապետ Սմբատ Բագրատունին և Սահակ Բագրատունին, Մամիկոնեից տեր Մանուելը, Վահան Գնունին և շատ ուրիշներ, թե՛ նախարարներից և թե՛ ռամիկ ժողովրդից։ Զոհվածների թիվն այնքան մեծ էր, որ Ղևոնդ պատմիչի արտահայտությամբ, թաղելու համար բավական հող չկար, այլ բացօթյա վայրում ընկած մնացին արևի ու փոշու, անձրևի ու մրրիկի տակ։

Արձնիի (Բագրևանդ) ճակատամարտը, որը տեղի ունեցավ 775 թ. Հրոտից ամսի 14-ին (ապրիլի 25), նշանավորում էր ժողովրդի ազատասեր ոգին, նրա ձգտումը ելք գտնելու իր ծանր վիճակից։

Ճակատամարտից հետո արաբներն ասպատակ սփռեցին Բագրևանդ գավառում և նրա շրջակայքում, կողոպտելով ավանները, վանքերն ու եկեղեցիները, գերեվարելով քահանաներին ու վանականներին (մոնոզոններին), որոնց համարում էին ապստամբության գրգռողներ ու ղեկավարներ։ Ապա նրանք դիմեցին անառիկ ամրոցներում ապաստանած իշխաններին և երդման գիր տալով, համոզեցին իջնել բերդերից ու հպատակություն հայտնել։

Մի քանի ամիս անց մեռավ Մանսուր խալիֆան։ Նա այնքան ատելի էր դարձել բոլորի համար, որ արաբ պատմիչների վկայությամբ նրա համար հարյուր գերեզման փորվեց և բոլորովին այլ փոսում թաղվեց, որովհետև համոզված էին, որ դժգոհ ժողովուրդը պիտի պղծի նրա գերեզմանը[61]։ Ղևոնդ պատմիչը նույնպես պատմում է մի հայ քահանայի տեսիլքը, որը ժողովրդի ցասման արտահայտությունն էր. հայ նախարարների խոշտանգման վայրում նա տեսնում է մի վիհ, որի մեջ կրակ կար, իսկ բերանին երկաթե դուռ։ Երկու զինվորներ բերելով Մանսուրին, բացում են դուռը և կրակի բոցերի մեջ գցելով նրան, վերստին փակում։

Հայ ժողովրդի ազատագրական պայքարի ամենափառավոր դրվագներից մեկը հանդիսացող այս հուժկու ապստամբությունը, որը միաժամանակ ցնցեց ամբողջ խալիֆայությունը[62], ողբերգական վախճան ունեցավ։ Դա օտար լծի և հարկային կեղեքիչ քաղաքականության դեմ բռնկված մի շարժում էր, որը միաժամանակ ձգտում էր վերականգնելու հայկական անկախ պետականությունը։ Սակայն պարտությունը շատ ծանր հետևանքներ ունեցավ Հայաստանի համար։ Ապստամբության ճնշումից հետո խալիֆայությունն անմիջապես դիմեց խիստ միջոցների։ Մի քանի ամիս անց Մանսուր խալիֆայի մահվանից հետո նրան հաջորդեց Մահդին (775—785), որը հայտնի դարձավ իր համեմատաբար մեղմ քաղաքականությամբ։ Այդ ժամանակ Հայոց իշխան էր նշանակվել Սահակ Բագրատունու որդին՝ Աշոտը[63], որի իշխանության տարիները (775—781) համեմատաբար խաղաղ անցան։ Արմինիայի կառավարիչ Օսմանի օրոք (782—785) Հայոց իշխան նշանակվեց Տաճատ Անձևացին, որը երկար տարիներ բյուզանդացիների հետ կռվել էր արաբների դեմ, ապա արաբ-

[61] *Ph. Hitti*, History of the Arabs, London, 1958 p. 294.

[62] *Ի. Պ. Պետրուշևսկին գրում է. «Այս վիթխարի շարժումը, որը համընկնում էր Միջին Ասիայում Մուկաննայի և Վոկանում կարմրադրոշների գյուղացիական ապստամբություններին, սաստիկ վախեցրեց Մահդի խալիֆային, ստիպելով հարկերը թեթևացնել» (տե՛ս И. П. Петрушевский,* в кн.: «Всемирная история», т. III, М., 1957, стр. 139).

[63] **Սամվել Անեցի,** *էջ 88։*

*ների կողմն անցել և մեծ հուշակ էր վայելում*[64]*։ Սպարապետ նշանակվեց Բագարատ Բագրատունին։ Սակայն Հայոց իշխանի և Արմինիայի ոստիկանի միջև գոյություն ունեցող հակամարտությունն այնքան սրվեց, որ Օսմանը 785 թ. խազարների դեմ պայքարի պատրվակով Հայոց իշխան Տաճատին, սպարապետ Բագարատին և Ներսեհ Կամսարականին հրավիրեց Դարբանդի կողմերը և հանձնարարեց ամբողջ ամառն անցկացնել Քերան կոչված վատառողջ դաշտում, ուր (հավանաբար հիվանդություններից) վախճանվեցին Տաճատը, Բագարատը, Ներսեհը և ուրիշներ։*

*Այդ տարիներին սրվեցին խալիֆայության և Բյուզանդիայի միջև տեղի ունեցող պատերազմական գործողությունները, որոնք ընթանում էին մասամբ Մեծ Հայքի արևմտյան կողմերում։ Արմինիա ոստիկանությունն արաբական խալիֆայության համար ռազմական առաջնակարգ նշանակություն ուներ՝ Բյուզանդիայի և խազարների դեմ մղած երկարատև պայքարի ընթացքում։*

*Բյուզանդիայի արևելյան նահանգները նվաճելուց հետո, արաբները թեև կանգ առան Տավրոսյան լեռնաշղթայի առջև, սակայն երկու հզոր պետությունների միջև ոչ մի որոշակի սահման չգծվեց։ Երեք հարյուր տարուց ավելի գոյություն ունեցավ սահմանային ամրությունների մի երկար գոտի (արաբ. սուղուր), որի բերդերն ու քաղաքներն անընդհատ ձեռքից ձեռք էին անցնում։*

*Միջերկրականի ափերից մինչև Կարնո քաղաք ընկած տարածությունն, ըստ արաբական աղբյուրների, երկու մասի էին բաժանվում՝ Ասորիքի սահմանային ամրությունների և Վերին Միջագետքի սահմանային ամրությունների շրջանները*[65]*։ Վերջինիս մաս էր կազմում Մեծ Հայքի արևմտյան սահմանային ամրությունների գոտին։*

*Ասորիքի սահմանային ամրությունների (սուղուր) գոտին ընդգրկում էր Կիլիկիան, որի կարևորագույն քաղաքն էր Տարսոնը։ Մյուս կարևոր քաղաքներն էին՝ Ադանա, Մոփսուեստիա (Մամեստիա) և Անարզաբա։*

*Վերին Միջագետքի սահմանային ամրությունների գոտին*[66] *ընդգրկում էր նախկին բյուզանդական Երրորդ Հայքը, ինչպես նաև Սամոսատի մերձակա եփրատյան շրջանները։ Գլխավոր քաղաքը Մելիտինեն էր, որը շրջապատված էր Տարենտե, Սոզոպետրա (արաբ. Զիբաթրա) և Հիսն Մանսուր ամրոցներով և Գերմանիկե (Մարաշ) քաղաքով։*

*Վերին Միջագետքի սահմանային գոտու հետ սերտորեն կապված էին Մեծ Հայքի արևմտյան այն գավառները, որոնք երկու հզոր պետությունների միջև արյունահեղ գոտեմարտի թատերաբեմ դարձան։ Դրանք էին Բարձր Հայքի արևմտյան գավառները (Մուզուր, Եկեղյաց, Դարանաղի և այլն) և մանավանդ Արածանիից հյուսիս ընկած գավառները։ Այս գավառներում արաբների հարձակումները հասնում էին մինչև Կամախ, որի վիճակը շատ հեղհեղուկ էր*[67]*։*

*Արաբաբյուզանդական սահմանային անվերջ ընդհարումները*[68] *Հայաստանի համար ճակատագրական նշանակություն ունեցան։ Փոքր Հայքի, Բարձր*

---

64 *Տաճատ Անձևացու մասին տե՛ս Ա. Тер-Гевондян, նշվ. աշխ., էջ 110—111 և հետ.։*

65 *E. Honigmann*, Thughur, Enc. of Islam, IV, 1929, p. 738—739.

66 *Beladsori*, p. 183—192.

67 *Բյուզանդիայի տիրապետության տակ գտնվող հայկական գավառներն արաբների մոտ հաճախ ձևով կոչվում էին «Բիլադ ալ-Արման» (Հայոց երկիր)։ Ibn Haugal*, Opus Geographicum, II, p. 343.

68 *E. Honigmann*. Die Ostgrenze des Byzantinischen Reiches, S. 39—43.

Հայքի ու Ծոփքի բազմաթիվ գավառներ քարուքանդ եղան և տնտեսական ծայրահեղ քայքայման հասան։ Երկու հզոր ախոյանների այս ընդհարումներին մասնակցում էին բազմաթիվ հայ ռազմիկներ, մանավանդ Բյուզանդիայի կողմից, որը ոչ միայն օգտագործում էր Հայաստանից փախած հայ ռազմիկներին, այլև ջանք չէր խնայում հիմնահատակ կործանելու այս շրջանների բոլոր ամրոցներն ու քաղաքները։

VII դարի կեսից մինչև հաջորդ դարի կեսը տևող երկարատև պատերազմները խալիֆայությանը համոզեցին, որ արաբաբյուզանդական սահմանային գոտու վրա արաբ ազգաբնակչության ներկայությունը մի անհրաժեշտություն էր։ Ասորիքի և Վերին Միջագետքի (Աղձնիք) սահմանամերձ գավառներում արաբական ցեղեր կային դեռ VII դարից։ Խալիֆայությունն անհրաժեշտ գտավ Հայաստանի արևմտյան գավառները ևս բնակեցնել արաբ տարրով և այդ իրագործեց Աբբասյան խալիֆա Հարուն ալ-Ռաշիդը։

**774—775 թթ.** ապստամբության պարտությունը ճակատագրական հետևանքներ ունեցավ։ Թեև այս շարժումը ճնշելուց հետո Աշոտ Բագրատունու և Տաճատ Անձևացու իշխանության տասը տարիների ընթացքում Աբբասյանները բացահայտ խստություններ չկիրառեցին, սակայն Հարուն ալ-Ռաշիդի խալիֆայության (785—809) առաջին տարիներին վիճակը շատ ողբալի դարձավ[69]։ Դրությունը հատկապես ծանր էր այն պատճառով, որ հայ նախարարները VIII դարի երկրորդ կեսում (մինչև IX դարի սկիզբը) զրկված էին հարկերը հավաքելու իրավունքից և հայկական գավառներում շրջում էին արաբ հարկահանները, որոնք ամեն տեսակ կամայականություններ էին գործում, ամենուրեք ոսկի և արծաթ որոնելով՝ լինի նախարարների դղյակներում, վանքերում կամ այլուր[70]։

Հարուն ալ-Ռաշիդն իր իշխանության հենց սկզբում ուղարկեց Խուզայմա իբն Խազիմ-ալ-Տամիմիին, որպես Արմինիայի ոստիկան։ Սա Դվինում իրեն ընդառաջ եկող Արծրունի երեք եղբայրներին ձերբակալեց և բանտում պահելուց հետո առաջարկեց մահմեդականություն ընդունել։ Ընդունեց միայն Մեհրուժանը, իսկ Համազասպն ու Սահակը նահատակվեցին[71]։ Խուզայման Դվինի կաթողիկոսարանի կալվածքներից խլեց երեք գյուղ, բայց Հովսեփ Ա Փառպեցի կաթողիկոսը (795—806) համառ պայքարից հետո երկու գյուղ ետ վերցրեց[72]։

Արմինիայի ոստիկան Սուլայմանը (788—790) իրեն նստավայր ընտրեց Պարտավը, որն այդ օրվանից Դվինի հետ միասին Արմինիայի ոստիկանի երկրորդ նստավայրը դարձավ, բայց պետք է ընդգծել, որ Դվինը երբեք չկորցրեց իր նշանակությունը։

Հարունի իշխանության առաջին տարիներին 774—775 թթ. ապստամբության պարտության ողբերգական հետևանքներն ակներև դարձան։ Մամիկոնյանների, ինչպես նաև Կամսարականների և այլոց քաղաքական ասպարեզից վերանալը խոշոր փոփոխություններ առաջացրեց Հայաստանի քաղաքական

---

69 *M. Ghazarian*, Armenien unter der Arabischen Herrschaft, Marburg, 1903, S 65—68.

70 Հ. Նալբանդյան, *Արաբների հարկային քաղաքականությունը Հայաստանում*, № 12, 1954, էջ 79—82։

71 Ղևոնդ, էջ 162։

72 Դրասխանակերտցի, էջ 63։

կյանքում։ Նախ և առաջ Մեծ Հայքի հարավարևմտյան կողմերում և առաջին հերթին Տուրուբերանում այլևս չէր մնացել ոչ մի ուժեղ նախարարական իշխանություն և Աղձնիքի կողմից եկող արաբական ցեղերի համար ճանապարհը բաց էր դեպի Հայաստանի խորքերը թափանցելու։

Արաբ ցեղերի գաղթն սկսվեց Հարուն ալ-Ռաշիդի օրոք[73]։ Շայբանի ցեղը վաղուց հաստատվել էր Աղձնիքում մինչև Կորճայք, իսկ Տաղլիբը՝ Մոսուլի շրջակայքում։ Արձնում և Բաղեշում հաստատվեցին Ջուրարիկները։ Հարունի օրոք Սուլայմ ցեղը (Կայսի մի ճյուղը) եկավ և հաստատվեց Վանա լճի հյուսիսարևմտյան կողմերում՝ Ապահունիք և Հարք գավառներում և հայերին հայտնի դարձավ «Կայսիկ» անվամբ։ Ըստ երևույթին նույն Սուլայմ ցեղից էին նաև Ջահհաֆյաններն ու Բերկրիի Ութմանիկները։ Կարնո քաղաքի, ինչպես նաև Դվինի արաբները որոշակի ցեղի չէին պատկանում, այլ տարբեր ժամանակներում զանազան կողմերից էին հավաքվել։ Արաբ ռազմիկ ցեղերը հաստատվեցին ընդհանրապես այն շրջանում, որն արաբ մատենագիրների մոտ կոչվում է Չորրորդ Արմինիա։

Արաբական ցեղերի հաստատումը Հայաստանում[74] պատճառ դարձավ հայ նախարարական ուժերի արտագաղթին դեպի Փոքր Ասիա։ Այս շարժումն Օմայանների օրոք մասնակի բնույթ էր կրում, սակայն Աբբասյանների ժամանակ դարձավ զանգվածային։ Հարունի իշխանության ծանր տարիներին Շապուհ Ամատունին իր որդու և հեծյալների հետ գաղթեց արևմուտք[75]։ Արաբ գաղթականները հայ նախարարներից բռնությամբ հողեր էին խլում։ Ութմանիկ արաբները ստիպեցին Աղիովիտի Գնունիներին հեռանալ և նրանց փոխարեն իրենք հաստատվեցին Վանա լճի հյուսիսարևելյան անկյունում (Բերկրի)։

Հայաստանի պատմության համար աննախընթաց զանգվածային արտագաղթը սկիզբ առավ Աբբասյանների օրոք։ Այսպիսով, իրար զուգադիպեցին երկու աղետալի երևույթ՝ հայերի արտագաղթը և օտար (արաբ) տարրի հաստատվելը Մեծ Հայքի նույնիսկ Միջնաշխարհում։ Արաբ խալիֆաները Տուրուբերանի ու Բարձր Հայքի որոշ գավառներում հաստատելով արաբ տարրը, և զանգվածային արտագաղթի պատճառ դառնալով, մի այնպիսի վերք առաջացրին Հայկական լեռնաշխարհի սրտում, որը դարեր շարունակ անհնար եղավ բուժել։ Արաբ տարրի ներկայությունը Հայաստանի հողի վրա հիմք դարձավ օտար քաղաքական միավորների (ամիրությունների) գոյացման համար, որոնք մեծ չափով դժվարացրին հայկական կենտրոնաձիգ պետության ստեղծումը և ամրապնդումը Բագրատունյաց ժամանակաշրջանում, մանավանդ նրան հաջորդող դարերում։

---

73 *Yaqubi*, II, p. 426.

74 *Մանրամասն տե՛ս* Ա. Տեր-Ղևոնդյան, *Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում, Երևան, 1965, էջ 58—66։*

75 Ղևոնդ, *էջ 168—169։ Համամ Ամատունու անունով Համամաշեն (այժմ՝ Համշեն) է կոչվել այն վայրը, ուր հաստատվել է Շապուհի հետ գաղթող հայությունը։ Տե՛ս* Ն. Ադոնց, *Բագրատունյաց փառքը, «Պատմական ուսումնասիրություններ», Փարիզ, 1948, էջ 38։ Տե՛ս նաև* *С. Т. Еремян.* Армения под властью арабов, в книге: «История СССР с древнейших времен до образования древнерусского государства», части III—IV, М.—Л., 1939, стр. 310.

## 3. ՊԱՅՔԱՐ ՆԵՐՔԻՆ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ՀԱՄԱՐ IX ԴԱՐԻ ԱՌԱՋԻՆ ԿԵՍՈՒՄ

*785 թ. դեպքերից հետո, երբ սպանվեցին Հայոց իշխան Տաճատ Անձևացին, սպարապետ Բագարատ Բագրատունին և ուրիշներ, մի քանի տարվա անորոշ շրջան սկսվեց Հայաստանում, սակայն շուտով ասպարեզում երևաց Աշոտ Բագրատունին՝ Մսակեր մականունով[76]։ Նրա մասին առաջին տեղեկությունը վերաբերում է 790-ական թթ. սկզբին, Աղիովիտում Ութմանիկ ցեղի արաբների հաստատման հետևանքով Գնունիների, Աշոտ Մսակերի օժանդակությամբ, Տայքի կողմերը հեռանալու առիթով[77]։ Ակներևորեն այդ ժամանակ Աշոտ Մսակերը[78] Հայաստանի գահերեց իշխանն էր, բայց որպես Հայոց իշխան պաշտոնապես չէր ճանաչված Աբբասյան խալիֆայության կողմից։*

*Բագրատունիների տիրույթներն ընդգրկում էին Մեծ Հայքի Միջնաշխարհի մեծ մասը։ Աշոտ Մսակերը մոր կողմից լինելով Մամիկոնյան, ժառանգական իրավունքի հիման վրա տիրացավ Տարոնին։ Նա Կամսարականների մնացորդներից գնեց [79] նաև Շիրակ և Արշարունիք գավառները, որոնց տանուտերը՝ Ներսեհ Կամսարականը 785-ին սպանվել էր Դարբանդի մոտ։*

*Այսպիսով, Բագրատունիների տիրույթները հյուսիսում սահմանակից էին Ջավախքին, հարավում հասնում էին մինչև Վերին Միջագետք, իսկ Արևմուտքում մտնում էին արաբաբյուզանդական սահմանային ամրությունների գոտու մեջ[80]։*

*Այսչափ ընդարձակ կալվածքների տիրանալուց հետո Աշոտը 804 թ. պաշտոնապես ճանաչվեց Հայոց իշխան։ Նա իր նստավայրը[81] Դարույնքից տեղափոխեց Բագարան, որն այդ ժամանակվանից դարձավ հայոց իշխանների նոր նստավայրը։ Աշոտի եղբայր Շապուհը ստանձնել էր սպարապետության գործակալությունը։*

*VIII դարի երկրորդ կեսին Աբբասյանների բիրտ քաղաքականության հետևանքով բազմաթիվ հին նախարարական տներ (Մամիկոնյան, Կամսարական, Ամատունի, Ռշտունի, Անձևացի, Գնունի և այլն) գրեթե վերացան։ Դրանից օգտվեցին նախ Բագրատունիներն ու Արծրունիները, և ապա՝ մասամբ արաբական ավատական իշխանությունները՝ ամիրությունները Հայաստանում[82]։*

*Բագրատունիները տարածվեցին ամբողջ Արմինիա կուսակալության մեջ*

---

76 *Ասողիկը նրան Մսակեր է կոչում,* Ասողիկ, *էջ 106։*

77 Վարդան, *էջ 106։*

78 *Նա հակահարված տվեց քայքայվող հայ նախարարական տներին փոխարինելու եկող արաբական ցեղերին և իր տիրույթներին կցեց վերոհիշյալների կալվածքները։*

79 Ասողիկ, *էջ 106։*

80 *Բագրատունիները կարողացան հաստատվել նաև Վասպուրականի Մոկաց նահանգում։ Նրանց մի ճյուղը դեռ մնում էր իրենց հինավուրց կալվածք Սպերում։ Աշոտ Մսակերի Շապուհ եղբոր որդի Աշոտը, Թեոփիլոս կայսեր կողմից Սպերի իշխան էր նշանակված։ Ըստ Վարդան պատմիչի, Աշոտը վերականգնել էր նաև Կամախը և այնտեղ բնակեցրել իր ընտանիքը։ Հիշյալ վայրն ավելի հավանական է փնտրել Տայքում, որի Կալմախ* (Վարդան, *էջ 105) ամրոցում 775 թ. հետո ապաստանել էին Բագրատունիները։ Տե՛ս* С. Т. Еремян, *նշվ. աշխ., էջ 310։*

81 *Ասողիկի արտահայտությամբ՝ արքունիքը (էջ 106)։ Որոշ աղբյուրներ նրան նույնիսկ կոչում են թագավոր («Մանր ժամանակագրություններ», Երևան, 1956, Բ, էջ 204)։*

82 Մովսես Կաղանկատվացի, *էջ 263։*

և բացի Հայաստանից, հաստատվեցին նաև Վիրքում[83]։ 775 թ. դեպքերից հետո, Սմբատ Բագրատունու եղբայր Վասակը, որը, հավանաբար, մասնակցել էր Արճեշի ճակատամարտին, իր որդիների հետ ապաստանեց Տայքի ու Կղարջքի կողմերը[84]։

Վասակի որդի և Աշոտ Կույրի թոռ Ատրներսեհի Կղարջքում հաստատվելու մասին այլափոխված ձևով ակնարկում է նաև վրաց պատմական ավանդությունը («Վրաց տարեգրությունը»)։ Ատրներսեհ (Աշոտ) Կույրի եղբորորդի Ատրներսեհը, որի հայրը Բագրատունի էր և Հայաստանում իշխան էր եղել, գալով Կղարջք, վրաց Արչիլ իշխանից[85] ստանում է կալվածք և այնտեղ հաստատվում։ Ըստ Յ. Մարկվարտի և Ն. Ադոնցի, Վարդան պատմիչի և վրաց տարեգրության փաստերը նույն անցքերին են վերաբերում, ընդ որում Վարդանը հստակ կերպով վկայում է, որ Աշոտ Կույրի որդի Վասակից են սերել վրաց Բագրատունի թագավորները։ Խոսելով Աշոտ (Հայոց իշխան, 732—748) Կույրի մասին, նա գրում է. «Սմա լինին երկու որդիք՝ Սմբատ-նախնի թագաւորացն հայոց և Վասակ՝ սկիզբն թագաւորացն վրաց, որոյ որդի—Ատըրներսեհ»[86]։

Հայաստանում բացի Բագրատունիներից ուժեղացան նաև Արծրունիները՝ Վասպուրականում[87], Սյունեցիք՝ Սյունիքում[88] և հարակից գավառներում, Արցախի իշխանները՝ Արցախում։

Արցախի իշխան Սահլ Սմբատյանը, որին արաբ պատմիչները կոչում են «հայազգի Սահլ, որդի Սմբատի» (Սահլ իբն Սինբաթ ալ-Արմանի) մեծ հեղինակություն և ուժ ուներ։ Նա 821 թ. Ամարասը ասպատակող արաբներին մեծ ջարդ տվեց և ազատեց գերեվարած ժողովրդին[89]։

Ինչ վերաբերում է Հայաստանում հաստատված արաբ գաղթական ամիրներին, ապա նրանք շուտ ենթարկվեցին տեղական ավատական կարգերին և սկսեցին պայքարել հենց Աբբասյանների դեմ։ IX դարի սկզբին հանդես եկավ Ջահհաֆ կոչված մի ամիր, որն ամուսնացած լինելով 775-ին սպանված Մուշեղ Մամիկոնյանի դստեր հետ, իրեն համարում էր Մամիկոնյանների կալվածքների ժառանգորդ[90], սակայն ոչ միայն Տարոնում, այլև Արշարունիքում հողեր խլելու նրա ձգտումը Աշոտ Մսակերի դիմադրության հետևանքով անհաջողության մատնվեց։ Ջահհաֆն իր որդու՝ Աբդ ալ-Մալիքի հետ գրավեց

---

83 Տե՛ս Լեո, հ. Բ, էջ 429։

84 Նրանից առաջ Սմբատ Բյուրատյան Բագրատունին 703 թ. ապստամբության ժամանակ հաստատվել էր Տայքի հյուսիսում գտնվող Թուխարք ամրոցում։

85 Նկատի ունենալով, որ Արչիլ իշխանը, ըստ Ղևոնդ պատմիչի, սպանվել է 786 թ., ուսումնասիրողները եզրակացնում են, որ Վասակի եղբորորդիների գաղթը պետք է տեղի ունեցած լիներ 775—786 թթ.։ Ատրներսեհի որդի Աշոտը (մեռ. 826) դարձավ վրաց իշխան, կայսրից ստանալով նաև կուրապաղատ տիտղոսը և իշխում էր Կղարջքից մինչև Տփղիս։ Սրա օրոք վրաց Բագրատունիները տիրապետող դիրք գրավեցին Վիրքում։

86 Վարդան, էջ 112։

87 Վասպուրականի Արծրունիներին իր հետ կապելու համար Աշոտ Մսակերը Հռիփսիմե դստերն ամուսնացրել էր Գագիկ Արծրունու որդի Համազասպ իշխանի հետ։ Արդեն այդ ժամանակ Արծրունիները տիրում էին Արտազից մինչև Ռշտունիք։

88 IX դարի սկզբին Սյունյաց նոր նահապետ Վասակի օրոք այս հինավուրց նախարարական տունը նորից հզորացավ։

89 Մովսես Կաղանկատվացի, էջ 374։

90 Վարդան, էջ 105։

Դվինը՝ 813 թ.։ Մամուն խալիֆան ի վիճակի չլինելով անմիջապես ճնշել այդ շարժումը, նախ Աբդ ալ-Մալիքին ճանաչեց Արմինիայի ոստիկան, ապա շուտով ուրիշ ոստիկան ուղարկեց՝ Թահիրին[91]։ Աբդ ալ-Մալիքը նրան պաշարեց Պարտավում, բայց պարտվեց և հնազանդություն հայտնեց։ Առիթից օգտվելով Շապուհ Բագրատունին զորքով դիմեց Դվին, որտեղ նստում էր Աբդ ալ-Մալիքը։ Սակայն բնակիչները հարձակվեցին Աբդ ալ-Մալիքի վրա և սպանեցին նրան[92]։ Սրանից հետո Ջահհաֆը չքացավ քաղաքական ասպարեզից և Աշոտ Մսակերը լրիվ տիրապետող դիրք ստացավ Հայաստանի քաղաքական կյանքում։

Աշոտ Մսակերի մահվանից հետո նրա երկու որդիները՝ Բագարատն ու Սըմբատը ժառանգեցին նրա իշխանությունը։ Բագարատը դարձավ իշխան Հայոց, իսկ Սմբատը ստանձնեց սպարապետությունը[93]։ Աշոտ Մսակերի և նրա որդիների հեղինակությունը մեծ էր ոչ միայն Հայաստանում, այլև Վիրքում և Աղվանքում[94]։

Բաբեկի գլխավորած հակաարաբական շարժումն Ատրպատականում և, մյուս կողմից, Բագրատունիների հզորացումը Հայաստանում, ստիպեց Աբբասյան խալիֆաներին ավելի ողջախոհ քայլերի դիմել։

Նման պայմաններում Աբբասյան խալիֆային մնում էր միայն ճանաչել հայ Բագրատունիների գերիշխանությունն Արմինիայում։ Բագարատ Բագրատունին ստացավ «իշխանաց իշխան»[95] տիտղոսը[96], որը ցույց էր տալիս նրա գերագահությունը ոչ միայն Հայաստանի, այլև Վրաց ու Աղվանից նախարարների նկատմամբ։ Բագարատը ձգտում էր ստանալ նաև Արմինիայի ոստիկանի (կառավարչի) պաշտոնը։ Նա միջամտեց նաև եկեղեցական գործերին։

Հովհաննես Ովայեցի կաթողիկոսի (833—855) ընտրության ժամանակ Բագարատը հակառակվեց և հրամայեց նրան քաշվել Այրից վանքը[97]։ Միայն ընդհանուր ժողովի կողմից Հովհաննես Ովայեցու անբասիր ճանաչվելուց հետո իշխանաց իշխանը զիջեց և թույլատրեց նրան իր պաշտոնին անցնել[98]։

Բագարատը սեր ուներ գիտության և դպրության նկատմամբ։ Իր հոր՝

---

91 Ռ. Ֆասմեր, Ժամանակագրութիւն Հայաստանի ոստիկաններու, Վիեննա, 1933, էջ 57. Yaqubi, II, p. 462.

92 «Նիւթեր Աղուանից Պատմութեան», Արարատ, Վաղարշապատ, 1897, էջ 162։

93 Ասողիկ, էջ 106—107։

94 Վիրքում իշխում էր հայ Բագրատունիների մի ճյուղը, իսկ Աղվանքի եկեղեցին ենթակա էր հայ եկեղեցուն։ Հայ Բագրատունիների հեղինակությունը տարածվում էր նույնիսկ Վերին Միջագետքի ամիրների վրա։ Երբ Ամիդի մեծ եկեղեցին այրվեց, ամիրները դիմեցին Բագարատ Բագրատունուն և նրանից ստացան օժանդակություն՝ 3000 զուզա (դիրհեմ) և մեծ քանակությամբ փայտ (Վ. Տոմաշեկ, Սասուն և Տիգրիսի աղբերաց սահմանները, Ազգ. մատ., ԻԱ, Վիեննա, 1896, էջ 26)։

95 Tabari, III, 1408: Բագարատը նստավայր ընտրեց Խլաթը։ Նա իր հորից ժառանգել էր մեծ մասամբ նրա կալվածքների հարավային մասը (Տարոնն ու շրջակա գավառները մինչև Նիմշաթի կողմերը), իսկ եղբայրը՝ Սմբատը՝ հյուսիսային մասը (Կոգովիտից մինչև Սպեր, կենտրոն ունենալով Բագարանը)։

96 Տիտղոս բառը պայմանականորեն ենք գործածում։

97 Դրասխանակերտցի, էջ 148։

98 Մ. Օրմանյան, Ազգապատում, Կ. Պոլիս, 1912, էջ 930—931։ Լեոն այս փաստը նշում է, ցույց տալու համար Բագարատի հեղինակության մեծության աստիճանը (Հ. Բ, էջ 489)։

Աշոտի օրոք, Հայաստան այցելած ասորի Նանա[99] սարկավագին նա պատվիրեց գրել Հովհաննու Ավետարանի մեկնությունը։ Նանան այն գրեց նախ ասորերեն, ապա թարգմանեց արաբերենի և այդպես ներկայացրեց իշխանաց իշխանին, որը քաջ տեղյակ էր այդ լեզվին։ Հետագայում այս արաբերեն մեկնությունը թարգմանվեց հայերեն։

IX դարի առաջին կեսում և մանավանդ Բագարատի իշխանության տարիներին (826—850) Հայաստանը վերստացել էր իր ներքին ինքնավարությունը, թեև իշխանաց իշխանը պարտավոր էր տարեկան հարկերը կանոնավոր կերպով ուղարկել խալիֆայություն[100]։ Հետաքրքրական է նշել, որ այս շրջանում հայկական գավառներում հարկերը հավաքվում էին հենց հայ նախարարների հսկողության տակ և ոչ թե արաբ հարկահանների ձեռքով։ Հարուն ալ-Ռաշիդի մահվանից (809) հետո վերջ գտան այն հարստահարությունները, որոնք VIII դարի երկրորդ կեսում սովորական երևույթ էին դարձել։ Հայ նախարարներն արդեն ինքնավար էին իշխում իրենց գավառներում և, ըստ արաբ պատմիչ Բալաձուրիի, նրանք արհամարհում էին Արմինիայի ոստիկանի հրամանները և եթե թույլ ոստիկաններ էին գալիս, նույնիսկ հրապարակորեն անարգում էին նրանց[101]։

Դեռ Աշոտ Մսակերի իշխանության վերջին տարիներին հանդես եկավ Ջահհաֆի եղբորորդին՝ Սևադան[102], որը բախվեց Աշոտ Մսակերի ու Շապուհի հետ։

Սակայն Սևադան իր գործունեության ընթացքում, դաշնակից ունենալով որոշ հայ նախարարների[103], հիմնականում պայքարում էր արդեն թուլացող խալիֆայության դեմ։ Սևադայի շուրջն էին համախմբվել սպարապետ Սմբատ Բագրատունին ու Սյունյաց իշխանները։

Աբբասյաններն իրենց ներկայացուցիչների միջոցով փորձեցին սիրաշահել Սևադային և խոստացան Արմինիայի ոստիկանի պաշտոնը[104]։ Սակայն վերջինս մերժեց և դիմեց զինված ապստամբության։ Խալիդ ոստիկանը Հայոց կաթողիկոս Դավիթ Կակաղեցուն բանագնաց ուղարկեց ապստամբների մոտ, որոնք, սակայն, անդրդվելի մնացին։ Խալիդը հայտնեց ապստամբներին, որ նրանք չկասկածեն, թե ինքը ցանկանում է տիրանալ հայ նախարարներին պատկանող գավառներին[105]։ Ո՛չ հայ նախարարները, ո՛չ էլ Սևադան չհրաժար-

---

99 Վերին Միջագետքի կողմից IX դ. սկզբներին Հայաստան եկավ երկաբնակ ասորի քարոզիչ Թեոդորոս Աբուկուրան, որը Հայոց իշխան Աշոտին համոզելու միջոցով ձգտում էր երկաբնակ վարդապետությունն արմատավորել ամբողջ երկրում (Վարդան, էջ 107—108)։ Աշոտ Մսակերը հրավիրեց միաբնակ ասորի եկեղեցականների, որպեսզի բանավեճի մեջ մտնեն նրա հետ։ Եկավ Նանա սարկավագը, որը հակաճառելով Թեոդորոսին, հերքեց նրա փաստարկները և ստիպեց հեռանալ Հայաստանից (Ն. Ակինյան, Թեոդորոս Աբուկուրա և Նանա Ասորի, Վիեննա, 1922)։

100 Հ. Նալբանդյան, Արաբների հարկային քաղաքականությունը Հայաստանում, 1954, էջ 83—84։

101 Beladsori, էջ 210—211,

102 Yaqubi, էջ 464։

103 Նա ամուսնացել էր հզորացող Բագրատունիների տոհմից Արուսյակ (Դրասխանակերտցի, էջ 64) անունով մի իշխանուհու հետ և լավ հարաբերությունների մեջ էր Սմբատ սպարապետի հետ։

104 Yaqubi, էջ 464։

105 Դրասխանակերտցի, էջ 64։ Խալիդն Աղձնիքում տիրույթներ ուներ։

*վեցին իրենց նպատակից, որը Աբբասյանների լծի թոթափումն էր։ Խալիդը Դվինի քաղաքից զորք ուղարկեց և Հրազդանի ափին Կավակերտի մոտ հաղթեց ապստամբներին։ Սպանվեց Սահակ Սյունին, իսկ Սևադան ու Սմբատը փախան[106]։ Սևադան դիմեց Սյունիք և հաստատվելով Ծղուկ գավառի Հինավուրց Շաղատ ավանում, ասպատակեց շրջակա գավառները։ Սյունյաց իշխաններից Վասակը նրա ասպատակություններին վերջ տալու այլ միջոց չգտնելով, դիմեց Բաբեկին, որի օգնությամբ Հեռացրեց Սևադային[107]։*

*IX դարի սկզբին Ատրպատականում ծնունդ առած խուրրամյան կոչված աղանդավորական շարժումը ծավալվեց իրանական տարրերով բնակեցված այս երկրամասում, որն ընդվզեց խալիֆայության շահագործման դեմ և իբրև գաղափարական զենք օգտագործեց խուրրամյան վարդապետությունը։*

*817 թ. խուրրամյան շարժման գլուխ կանգնեց Բաբեկը (Բաբան) և Ատրպատականի ապստամբությունը ծավալվեց ու մեծ վտանգ դարձավ խալիֆայության համար։ Աբբասյան խալիֆաներ Մամունի և Մուտասիմի զորավարները իրար ետևից պարտվում էին Բաբեկի զինված ջոկատներից[108]։*

*Այդ տարիներին Փոքր Ասիայում մի մեծ ապստամբություն էր ծագել՝ Թոմա զորավարի գլխավորությամբ։ Մամուն խալիֆան ամեն կերպ օգնել էր Թոմային (Թովմա Գազիրացի) և նրա շնորհիվ ապստամբը կարողացավ մեծ վնասներ հասցնել Բյուզանդական կայսրությանը։ Թեոփիլոս կայսրն իր հերթին դաշնակցեց Բաբեկի հետ՝ ընդդեմ խալիֆայության։ Բյուզանդացիք գրոհեցին Ասորիքը, մեծ վնասներ հասցնելով արաբներին։*

*Բաբեկի շարժման կենտրոն Բադդը (Ատրպատականում) անմիջականորեն հարևան էր հայկական երկու լեռնային նահանգների՝ Սյունիքին և Արցախին։ Երբ Սևադայի դեմ կռվելու համար Սյունյաց Վասակ իշխանը հրավիրել էր Բաբեկին, սա փոխարենը որոշ հավակնություններ հանդես բերեց Սյունիքի նկատմամբ։ Բաբեկը կնության առավ Վասակի աղջկան և նրա մահվանից հետո ուզեց որպես ժառանգորդ տիրանալ Սյունիքին։ Սյունյաց իշխանները դիմադրեցին և Բաբեկը հարձակվեց հայկական գավառների վրա, ասպատակեց Գեղարքունի գավառը, 15 հազար մարդ կոտորեց ու քանդեց Մաքենացոց հռչակավոր վանքը[109]։*

*Մուտասիմ խալիֆան հսկայական զորքով Բաբեկի դեմ ուղարկեց Աֆշին զորավարին։ Բաբեկը կարողացավ համոզել Թեոփիլոս կայսրին՝ հարձակվելու խալիֆայության վրա և բյուզանդացիք ասպատակեցին Հայաստանը, սակայն պարտություն կրելով նահանջեցին։ Բաբեկը 837 թ. չարաչար պարտվեց Աֆշինից և փախավ Արցախի կողմերը։ Արցախի իշխան Սահլ Սմբատյանը Բաբեկին բռնելով, հանձնեց արաբների ձեռքը[110], որոնք նրան մահապատժի ենթարկեցին։*

---

106 *Նույն տեղում, էջ 64—65։*

107 Ստ. Օրբելյան, *էջ 158։ Այդ տարիներին Սյունիքում հայտնվեց ևս մի Ջահհաֆյան՝ Աբլհերթը (Վարդան, էջ 109), որը չորս հազարով ասպատակեց Սյունիքը, բայց Բարգեն Սյունին հաղթեց և փախցրեց նրան։*

108 *Yaqabi*, p. 463.

109 Ստ. Օրբելյան, *էջ 159։ Ստեփանոս Աբլասադը Բաբեկին կանչել էր Արցախ, որը հարձակվելով, քարուքանդ արեց բազմաթիվ գավառներ և վերջապես հարձակվեց Գորգալ բերդի վրա, որտեղ ապաստանել էին նրա կոտորածներից փախածները։ Չկարողանալով բերդը գրավել (այդ չհաջողվեց նաև իր զորավար Ռոստոմին), Բաբեկը վերադարձավ Ատրպատական* (Կաղանկատվացի, *էջ 263—264)։*

110 Իբն ալ-Ասիր, *էջ 245։*

IX դարի առաջին կեսում Աբբասյան խալիֆայության խառն վիճակը նըպաստեց ոչ միայն Հայաստանի, այլև բազմաթիվ այլ երկրների ներսում նոր խմորումների առաջացմանը, որոնք բոլորն էլ ինքնավարության էին ձգտում[111]։

Մութավաքքիլ խալիֆան (847—861) բիրտ միջոցների դիմեց՝ խալիֆայության մասնատման առաջն առնելու համար։ 850 թ. Արմինիա ուղարկված Աբու Սաիդ ոստիկանը պետք է վերջ տար Հայաստանի ներքին ինքնավարությանը և իր հարկահաններին սփռելով ամբողջ երկրում՝ հարկերն հավաքեր առավելագույն չափով։ Աղձնիքի կողմերում՝ Ջորա պահակի մոտերքը նոր ոստիկանին դիմավորեց իշխանաց իշխան Բագարատ Բագրատունու ուղարկած պատվիրակությունը, որը նրան հանձնեց հայ նախարարների հկողության տակ հավաքված հարկերը, որպեսզի նրա հարկահանները շահատակություններ չկատարեին Հայաստանում։

Տեսնելով Հայաստանի նախարարների կուռ համախմբվածությունը, Աբու Սաիդը ձևացրեց, թե եկել է սոսկ հարկերը տանելու։ Աբու Սաիդը վերադարձավ Սամառա մայրաքաղաքը[112], իր հետ տանելով Հայաստանում հաստատված արաբների բողոքագրերը՝ հայ նախարարների, մանավանդ, Բագարատ Բագրատունու և Աշոտ Արծրունու դեմ, ամբաստանելով նրանց որպես Աբբասյան խալիֆայության թշնամիների։

Նախքան Հայաստանից հեռանալը Աբու Սաիդը հարկահավաքության գործը հանձնեց Մուսա իբն Զուրարային։ Սա թեև ամուսնացած էր Բագարատի քրոջ հետ, այնուամենայնիվ նրա և իշխանաց իշխանի փոխհարաբերությունները խիստ լարված էին։ Արքունի հարկերը պատճառ բռնելով, Մուսան ներխուժեց Տարոն և բանակ դրեց Բագարատի ձմեռանոց քաղաքի (հավանաբար Մուշի) առջև, իր գնդերը հովտում դասավորելով ռազմի պատրաստ վիճակում[113]։

Իշխանաց իշխանը անպատրաստ վիճակում լինելով, օգնության կանչեց Աշոտ Արծրունուն, որը իր զորքը հավաքեց և Արծրունյաց 16 իշխանների հետ միասին շարժվեց դեպի Տարոն։ Բագարատի և Աշոտի միացյալ զորքն այնպիսի ջարդ տվեց թշնամուն, որ մինչև Բաղեշ հալածեց նրան և պաշարեց քաղաքը։ Հայերը Բաղեշի պաշարումը վերացրին, միայն ընդառաջելով Մուսայի կնոջ՝ Բագարատի քրոջ թախանձանքին։ Մուսան շուտափույթ գուժկան ուղարկեց արքունիք՝ կատարված դեպքերի մասին հաղորդելու համար։

Բացի Մուսայից, Աբու Սաիդը հատուկ ծրագրով Հայաստան էր ուղարկել նաև Ալային, որը մշտապես տեղում էր մնալու և զբաղվելու էր լրացուցիչ հարկերի հավաքման գործով։ Նրան հանձնարարված էր առաջին հերթին ընկճել Վասպուրականը, հարկերը վերցնելով առավելագույն չափով։ Նա մտավ Աղբակ գավառը և այնտեղից ասպատակ սփռեց Վասպուրականի տարբեր կողմերը։ Ապա անցավ Անձևացյաց գավառը, որտեղից ևս ավար վերցրեց, պատճառաբանելով, որ հեծելազորի կարիքների համար է։ Ալայի ավազակային ասպատակություններին սահման դնելու համար որպես վերջին փորձ Աշոտ Արծրու-

---

111 Աբբասյաններն ուզեցին ամրապնդել իրենց իշխանությունն, օգտագործելով թուրք ստրուկ ռազմիկներից բաղկացած պահակազորքը, սակայն սրանց կամայականությունններն է՛լ ավելի բարդացրին դրությունը։

112 Թովմա Արծրունի, էջ 107—108։ Այն, Բաղդադից հետո՝ 836—892 թթ. խալիֆայության մայրաքաղաքն էր։

113 Այս ժամանակներում Տարոնում, Սասունում և Վասպուրականում տեղի ունեցած անցքերի մանրամասն շարադրանքը տե՛ս Լեո, հ. Բ, էջ 437—447։

նին գրավոր դիմեց նրան, հիշեցնելով, որ արքունի հարկերը հավաքելու անվան տակ կողոպտելն ու գերեվարելը նրա իրավասությունների մեջ չեն մտնում, և եթե նպատակը հարկեր հավաքելն էր, ապա պետք էր ընդունված ձևով կանգ առնել մի քաղաքում և շրջակայքի իշխանները կբերեին բոլոր գյուղերի հարկերը։

Ալան առանց պատասխանելու Աշոտի այս զգուշացմանը, շարունակեց կողոպտել երկիրը և վերջապես կանգ առավ Արճուճք գյուղի մոտ։ Այնժամ Արծրունյաց իշխանը պատրաստեց իր զորքը և հարձակվեց նրա վրա։ Հայերը կոտորեցին Ալայի հրոսակախումբը, սպանելով նաև նրա եղբորը, իսկ մնացածներին հալածեցին մինչև Բերկրի։

Այս բոլորից հատկապես անհանգստացած էին Աղձնիքում հաստատված արաբները, որոնք հարավային Հայաստանում կատարվող այս անցուդարձի մեջ վտանգ էին տեսնում իրենց և ընդհանրապես հայկական հողերի վրա հաստատված արաբական ցեղերի համար։ Նրանց կանայք ողբ ու կոծով դիմեցին Սամառայի արքունիք, ամբաստանելով Վասպուրականի ու Տարոնի իշխաններին, որպես ապստամբների, որոնք մերժում են վճարել արքունի հարկը և կոտորում են արաբներին։

Ըստ Թովմա Արծրունու, 851 թ. Մուտավաքքիլ խալիֆան մեծ պատրաստությամբ նորից Հայաստան ուղարկեց ոստիկան Աբու Սաիդին, որը, սակայն, ճանապարհին մեռավ։ Փոխարենը խալիֆան ուղարկեց նրա որդուն՝ Յուսուֆին՝ զորքով հանդերձ, և խոստացավ տալ նրան ապստամբ հայ իշխանների տիրույթներն ի ժառանգություն, եթե Յուսուֆը նրանց շղթայակապ բերեր Սամառա։ Վերջինս ներխուժեց Հայաստան Ատրպատականի կողմից և մտավ նախ՝ Վասպուրականի Աղբակ գավառը, կամենալով առաջին հերթին թուլացնել Արծրունիներին։ Նա ասպատակ սփռեց շրջակա գավառները և միաժամանակ իր մոտ հրավիրեց Աշոտ Արծրունուն, սակայն վերջինս քաջ գիտենալով նրա մտադրությունը՝ չգնաց, մանավանդ որ այդ մասին նրան հայտնել էին ծանոթ արաբները։ Հավաքելով իր մերձավորներին ու ռազմիկներին, Աշոտը հեռացավ Մարդաստանի և Զարահավանի (Հավկից ձոր) կողմերը և այնտեղից ոստիկանին ուղարկեց մի նամակ՝ թանկարժեք քարերի հետ միասին, որը տարավ իր մայրը՝ Հռիփսիմե տիկինը (Բագարատ Բագրատունու քույրը)։ Ոստիկանը վերցնելով ընծաները և մի քանի պատանդներ, հեռացավ Վասպուրականից ու գնաց Բզնունիք՝ Խլաթ քաղաքը։

Հաստատվելով քաղաքի միջնաբերդում, Յուսուֆը սուրհանդակներ ուղարկեց, հատուկ նամակով իր մոտ հրավիրելով Բագարատ Բագրատունուն։ Նա հավաստիացնում էր, որ նպատակ ունի Բագարատին իր փոխարեն նշանակել Արմինիայի ոստիկան, պատճառաբանելով, որ ինքը սաստիկ ձմռան և սառնամանիքի պատճառով ստիպված է վերադառնալ արքունիք։ Բագարատը, որն արդեն պահանջում էր այդ պաշտոնը[114], սուրհանդակների հետ գնաց Խլաթ, Բագրատունի իշխանների ու եկեղեցականների շքախմբի ուղեկցությամբ։ Սակայն Յուսուֆը նենգորեն ձերբակալել տվեց թե՛ Բագարատին, թե՛ ընկերակցող Բագրատունիներին և ուղարկեց Սամառա, իսկ ինքը վերցնելով իր հետ եղած Վասպուրականի պատանդներին, եկավ Տարոնի Մուշ քաղաքը՝ ձմեռելու։ Տարոնում նա ասպատակ սփռեց և գերեվարելով ժողովրդին, մի մասին որպես

[114] Tabari, IX, p. 187.

ստրուկ ուղարկեց վաճառելու Ասորիք և այլ կողմեր, իսկ մյուս մասը պահեց իր մոտ, Մուշ քաղաքում, ստիպելով տաժանակիր աշխատանքներ կատարել։ Նեղվելով սաստիկ ցրտից, նա որջացավ Մուշում և սպասում էր գարնան, որպեսզի իրագործի իր հիմնական առաջադրանքը՝ Հայաստանի մեծամեծ իշխաններին գերեվարել և նրանց փոխարեն արաբ պաշտոնյաների (գործավարս) նշանակել, գրավել հայերի բոլոր ամրոցներն ու կալվածները և այնտեղ տեղավորել արաբ ռազմիկների՝ ընտանիքներով հանդերձ։

Բագարատի գերեվարումից հետո նրա որդիները՝ Աշոտն ու Դավիթը (Արքայիկ) ոտքի հանեցին ու զինեցին Խույթի ու Սասունի լեռնականներին, որոնք հայտնի էին իրենց խիստ բարքերով ու խիզախությամբ։ Ապստամբ լեռնականների գլուխ կանգնեց Հովնան Խութեցին՝ Թոռնիկ Բագրատունու որդին։ Խութեցիք թեթևազեն էին և իրենց ձեռքում միշտ ունեին աշտեներ։ Ապստամբների բազմությունը լեռներից հանկարծակի իջավ դաշտ ու հարձակվեց Մուշ քաղաքի վրա, կոտորեց բոլոր արաբներին և ազատ արձակեց Վասպուրականի պատանդներին։ Յուսուֆը թաքնվեց Բագարատի կառուցած սուրբ Փրկիչ եկեղեցու գմբեթի ներսում, սակայն հենց տեղում հայ ռազմիկներից մեկը աշտեով սպանեց նրան[115]։

852 թ. ծմռան ապստամբությունը ոգևորել էր ոչ միայն հայ իշխաններին, այլև Աղձնիքի Մուսա իբն Զուրարային, որը միացավ հայ նախարարներին[116]։

Սասունում ու Տարոնում կատարվող այս պատմական դեպքերն իրենց արտացոլումն են գտել հայկական «Սասնա ծռեր» (Սասունցի Դավիթ) հերոսական վեպում, որի կենտրոնական հերոսի՝ Դավթի և գլխավոր կերպարներից Ձենով Օհանի (Հովնան Խութեցի) պատմական նախատիպերը հենց այս ապստամբության ղեկավարներն էին[117]։

Յուսուֆի սպանությունն ահազանգ եղավ ապստամբություն ծավալվելու Հայաստանում, Վիրքում և Աղվանքում։ Մուտավաքքիլ խալիֆան 852-ի գարնան տարբեր նահանգներից զորքեր հավաքեց և հրամանատար նշանակեց ծագումով թուրք Բուղա կոչված վայրագ զորավարին։ Բանակի զորապետերին պատվիրեց. «Ելեք Հայոց աշխարհի վրա՝ սովով ու սրով և գերեվարությամբ, երկրի իշխաններին, կողմնակալ տերերին, կուսակալներին, ազատներին և ազատորդիներին կապանքների մեջ փութով մեզ հասցրեք և ապա դուք տիրեցեք երկրին՝ բնակության համար և թող այդ երկիրը ժառանգություն լինի ձեզ և ձեր որդիներին»[118]։

Բուղան Մոսուլի ճանապարհով եկավ Աղձնիք և առաջին հերթին հարձակվեց Արզնիի ու Բաղեշի տեր Մուսայի վրա, որին պատասխանատու էր համարում Յուսուֆի սպանության համար։ 30 հազար մարդ Աղձնիքում կոտորելուց և շատերին գերեվարելուց ու որպես ստրուկ վաճառելուց հետո, Բուղան նրան

---

115 Այս ապստամբության մասին մանրամասն հաղորդում է նաև Իբն ալ-Ասիրը (Իբն ալ-Ասիր, էջ 157)։

116 Նույն տեղում։ Մանազկերտի կողմերում հաստատված կայսիկները չմիացան հայերին, այլ ընդհակառակը ձգտում էին օգնել Յուսուֆին։ Սևադան իմանալով հայ իշխանների ապստամբության մտադրությունը, խորհուրդ էր տվել Յուսուֆին հեռանալ Հայաստանից (Tabari, IX, էջ 187)։

117 «Սասնա ծռեր», Ա, Երևան, 1936, Ներածություն, էջ 13—20։

118 Մուտավաքքիլը նույնիսկ նախօրոք ավանների ու գյուղերի կալվածագրեր էր տվել իր զորավարներին առավել ևս քաջալերելու նպատակով։

*վեց եղբայրների հետ շղթայակապ ուղարկեց Մուտավաքքիլի մոտ[119]։ Երկրորդ զոհը դարձավ Խույթ-Սասունը, որտեղ գերի բռնվեցին Բագարատի երկու որդիները՝ Աշոտն ու Դավիթը, ինչպես նաև ապստամբության ղեկավար Հովնան Խութեցին։ Բուղան ասպատակ սփռեց Հայկական Տավրոսի լեռնային գավառներն ու գյուղերը, բնակչության մի մասին կոտորեց, մնացածին գերեվարեց։ Աշոտին ու Դավթին ինչպես նաև Հովնան Խութեցուն ուղարկեց Մուտավաքքիլի մոտ, ինքը Խլաթի վրայով ուղղվեց Վասպուրական։ Իր զորքի մի մասը տալով Ժիրաք (Զիրաք) զորավարին, ուղարկեց Ռշտունիք, իսկ ինքը զորքի հիմնական մասով գնաց Աղբակ... Ապահոմիք, նպատակ ունենալով հյուսիսից ու հարավից պաշարել Աշոտ Արծրունուն։*

*Զիրաքի զորամասն ասպատակեց Ռշտունիքն ու Մոկաց նահանգը, որոնք թեև չդիմադրեցին, այնուհանդերձ շատերին կոտորեց ու գերեվարեց։ Գերի տարվող բազմությանն ազատելու համար արաբական զորքի վրա հարձակվեցին երկու եղբայրներ, որոնցից մեկի անունը Շապուհ էր։ Սրանք բռնել էին մի կիրճի բերանը և հովիվների օգնությամբ շփոթություն առաջացրել՝ քարեր գլորելով արաբների վրա։ Նրանց հաջողվեց ազատել գերիներին և թաքցնել ապահով վայրերում։ Զիրաքն իր ձեռքն ընկած հայ ռազմիկներին գերեվարում էր կամ առաջարկում կրոնափոխ լինել [120]։ Այնուհետև Զիրաքը հասավ մինչև Վան Տոսպ և հրկիզեց Արտամետի մեծ եկեղեցին։*

*Բուղան Վասպուրական մտավ Վանա լճի հյուսիսային կողմից։ Նրան օգնում էին Հայաստանում հաստատված արաբական ցեղերը՝ կայսիկները և ութմանիկները, որոնք նրան ցույց էին տալիս երկրի ճանապարհները[121]։ Արծրունյաց Աշոտ իշխանն իր մերձավորների հետ ամրացավ Թոռնավան գավառի Նկան անառիկ ամրոցում։ Արաբական զորքը նրան հետապնդելով, եկավ պաշարեց ամրոցը, իսկ զորքի բազմությունը գերյալների հետ միասին տեղավորվեց Ղոկորուատ ավանում։*

*Մի քանի օրից հետո Բուղան մեծ հարձակում գործեց բերդի վրա, սակայն Նկան. ամրոցն անառիկ մնաց, Բուղան շարունակեց պաշարումն առավել ևս նեղելով պաշարվածներին։*

*Նեղ դրության մատնված Վասպուրականի իշխանները՝ Վահան ու Մուշեղ Արծրունիները և ուրիշներ, հավաքվելով Աշոտ Արծրունու մոտ, ելք էին որոնում և մտածում գյուղեր ու ագարակներ առաջարկել Բուղային, պատրաստակամություն հայտնելով նաև վճարել հավելյալ հարկեր և նույնիսկ տալ պատանդներ։ Ինչպես երևում է, Աշոտ Արծրունին անդրդվելի էր մնացել և ահա նրան շրջապատող իշխանները գաղտնի բանակցություններ սկսեցին պաշարողների հետ, ուղարկելով պատգամավոր։ Նրա տարած գրության մեջ իշխանները համաձայնվում էին նույնիսկ անձնատուր լինել, միայն թե կարողանային իրենց կալվածքները պահպանել։ Նրանք պատրաստ էին նաև Աշոտ Արծրունուն հանձնել Բուղային։ Իմանալով՝ այս գաղտագողի բանակցությունների մասին,*

---

119 Թովմա Արծրունի, էջ *125*։

120 *Այսպես վարվեց, օրինակ, Ապուսահակ Վահևունու հետ, որին ջանաց համոզել կրոնափոխ լինել, սակայն նա հաստատ մնաց իր քրիստոնեական հավատի մեջ և դառնալով նահատակ, պայքարի խորհրդանշան դարձավ։ Թովմա Արծրունին մանրամասն պատմելուց հետո նրա նահատակությունը, նշում է, որ Հայաստանի վրա հասած մեծ արհավիրքի ժամանակ նա առաջին նահատակը դարձավ (*Թովմա Արծրունի, *էջ 128—130)*։

121 *Նույն տեղում, էջ 131*։

*Աշոտ իշխանը փորձեց զգաստացնել հիշյալ իշխաններին, բայց հաջողության չհասնելով, հուսահատ իջավ ամրոցից և անձնատուր եղավ։ Արաբները գերի վերցրին Աշոտ, Գրիգոր և Վահան Արծրունիներին, ինչպես նաև այլ Արծրունի իշխանների և, ուղտերի վրա կապած, ուղարկեցին Սամառա՝ Ատրպատականի ճանապարհով։*

*Այս դեպքերի ժամանակ Բուղայի ճամբարում էր Հայոց սպարապետ Սմբատ Բագրատունին, որը Բագարատի գերությունից հետո ստանձնել էր նաև Հայոց իշխանի պարտականությունները և համարվում էր «Հայոց տերը» (սահիբ ալ-Արման)*[122]*, այսինքն Հայաստանի կառավարիչ։ Նա ամեն կերպ ձգտում էր լեզու գտնել վայրագ զորավարի հետ և ի պաշտոնե մասնակցում էր նրա ձեռնարկած ավերիչ արշավանքներին։ Նա գտնվում էր խիստ ծանր դրության մեջ և նույնիսկ Բագրատունիներին հակակրող Թովմա Արծրունի պատմիչի վկայությամբ, փորձում էր փրկել գերյալներին*[123]*։*

*Բուղան մնաց Հայաստանում որպես ոստիկան 852—855 թթ. և անխնա ասպատակեց ոչ միայն Հայաստանը, այլև Վիրքը։ Սակայն Հայաստանում անընկճելի էր մնում Վասպուրականը, որի Աշոտ իշխանի գերեվարումից հետո այս նահանգը բոլորովին չհանդարտվեց։ Աշոտին և այլ իշխաններին տանող կարավանը Հայաստանից դեռ դուրս չէր եկել, երբ նրանց վրա հարձակում գործեցին հայերը՝ գերյալներին փրկելու նպատակով։ Թեև մի քանիսը փրկվեցին, բայց իրենք՝ հարձակվողները գերի ընկան։ Բուղան փորձեց նրանց հավատափոխ անել, բայց ոմանք, ինչպես Գեորգ Ակեացին և Խոսրով Գաբայեղենը, մերժելով՝ նահատակվեցին։*

*Բուղան պատերազմեց նաև Վասպուրականի նոր տիրոջ՝ Գուրգենի (Աշոտի եղբոր) դեմ, որը լեռնային վայրերում էր ամրացել։ Արաբական 15 հազարանոց զորքն ուղղվեց դեպի Որսիրանք գավառը, ուր ապաստանել էր Գուրգեն Արծրունին Վասպուրականի մեծամեծների և ազատների բազմության հետ։ Նրա զորքը բանակ էր դրել Թուա գյուղի վերևում, Արյան լճի մոտ։ Այստեղ էր հավաքվել Աղբակի, Զարեհավանի, Ակեի և այլ գավառների բազմահազար գյուղացիությունը։ Գուրգեն իշխանն իր մոր՝ Հռիփսիմե տիկնոջ միջոցով փորձեց հաշտության եզր գտնել արաբ զորավարի հետ, լրացուցիչ հարկեր վճարելու պատրաստակամություն հայտնելով։ Բուղան Հռիփսիմե տիկնոջը պատվով պահելով իր մոտ, զորք պատրաստեց Գուրգենի դեմ կռվի՝ Ջավ գետի ափին։ Սակայն միաժամանակ սուրհանդակ ուղարկեց, հրավիրելով Գուրգենին աներկյուղ ու անկասկած գալ արաբական ճամբարը, համոզելով, որ իր նպատակն էր Աշոտի փոխարեն նրան նշանակել Վասպուրականի իշխան։ Գուրգենը չհավատալով այս խոստմանը, փորձեց ստուգել նրա ճշտությունը, բայց արաբներն այնպիսի համառությամբ էին պնդում, թե վատ նպատակ չունեն, որ Գուրգենն ի հեճուկս նախարարների թախանձանքներին, ընդառաջեց թշնամուն։*

*Հենց որ Գուրգենը հեռացավ ճամբարից, արաբներն սկսեցին հարձակման պատրաստվել։ Հայերի հսկիչ կետերը նկատեցին թշնամու դրոշների ծածա-*

---

122 *В. Минорский,* История Ширвана и Дербенда X—XI вв., М., 1963, стр. 5, *(արաբ. բնագիր)։*

123 *Այսպիսի մի փորձ կատարեց նա Նկանի դեպքերից հետո և կարողացավ Բուղայի մոտ միջնորդելով, Վասպուրականի գերյալների մի մեծ խումբ փրկել արաբների ձեռքից և ազատ արձակել։*

նումն ու ղենքերի փայլը և աճապարանքով կարողացան ետ դարձնել Գուրգեն իշխանին։ Այս բոլորից հետո Գուրգենը նորից փորձեց լեզու գտնել արաբների հետ, նույնիսկ կալվածքներ խոստանալով նրանց, բայց ապարդյուն։

Արդյունքի չհասնելով, Գուրգենը դասավորեց հայկական զորքն իր 30-ից ավելի զորավարների հետ մեկտեղ, որոնց մեջ էին Արծրունի, Գնունի, Գաբրիկ, Ամատունի, Վարաժնունի, Ընտրունի, Ակեացի, Վահևունի, Անձևացի և այլ տոհմերից զորականները։ Հայ ռազմիկներին քաջալերում էին ճամբարում գտնվող քահանաները։ Հայկական զորքն ինը հարյուր ռազմիկներով ուժգին հարձակմամբ խոյացավ թշնամու վրա և մինչև մայրամուտ մարտնչելով, կոտորեց արաբներին։ Արաբները 1800 զոհ տալով և բազում վիրավորներ թողնելով, փախան մինչև Ատրպատականի սահմանները։

Բուղան նորից խորամանկության դիմեց։ Նախ հրաման տվեց, որ այլևս ոչ ոքի ունեցվածքից չզրկեն և չգերեվարեն։ Ապա հատուկ հրովարտակով և 15 հազար զորքով երկու զորավարների ուղարկեց Գուրգեն իշխանի մոտ, հրավիրելով նրան իր բանակը։ Անորոշ դրությունից ճարահատ Արծրունի իշխանը գնաց Բուղայի մոտ և ընդունվեց մեծ պատիվներով։ Գուրգեն Արծրունին հռչակվեց Վասպուրականի իշխան։ Սակայն, երեք օր անց Բուղան մի կեղծ նամակ ցույց տվեց Գուրգենին, Մուտավաքքիլ խալիֆայի կնիքով, որը հրամայում էր անհապաղ ձերբակալել Գուրգենին։ Արծրունյաց իշխանը երկաթե կապանքների մեջ, ուղտի վրա ուղարկվեց Սամառա։ Նրա ետևից կամավոր գերության գնաց նաև Հռիփսիմե տիկինը։

Վասպուրականի ուժերը ցրվեցին և ամեն մի նախարար իր ռազմիկների հետ ամրացավ լեռնային բերդերում, իսկ արաբ զորապետերն իրենց ընտանիքների հետ հաստատվեցին երկրի դաշտային մասերում և հողերը չափում ու բաժանում էին իրենց միջև։ Սա արաբ տարրի Հայաստանում հաստատման մի նոր ալիք էր, որը փորձում էր հողերի ու ամրոցների տեր դառնալ։ Սակայն այս վիճակը երկար չտևեց և հենց որ Բուղան հեռացավ Հայաստանի հյուսիսային կողմերը, Վասպուրականում վերսկսվեց դիմադրողական շարժումը։

Վասպուրականից հեռանալով, Բուղան հրամայեց գերյալներին վաճառել, իսկ մի մասին իր հետ տարավ Դվին՝ ձմեռն այնտեղ անցկացնելու մտադրությամբ։ Արաբներն ասպատակեցին նաև Հայոց մայրաքաղաքի շրջակա գավառները և գերիներին բերեցին Դվին։ Գերյալներին առաջարկում էին հավատափոխություն կամ մահ։ Շատերը մերժեցին հավատափոխության նվաստացումը և ընդունեցին մահը, որոնց մեջ էին «Ատոմյան վկաները» (նրանց զորավարի՝ Ատոմի անունով)[124]։

Հաջորդ տարվա գարնանը Բուղան իր ուշադրությունը սևեռեց Սյունյաց երկրի վրա, թեպետև նրա իշխաններն, ըստ երևույթին, չէին մասնակցել ապստամբությանը, նա հրամայեց ձերբակալել Վասակ իշխանին և եղբորը՝ Աշոտին։ Վասակն ապաստանեց Գարդմանի Կորիճ իշխանի մոտ, բայց վերջինս վախենալով թշնամուց, Վասակին հանձնեց։ Ձերբակալվեց նաև նրա եղբայրը՝ Աշոտը։

Հյուսիսային Հայաստանը ևս հպատակեցված համարելով Բուղան դիմեց Տփղիսի կողմերը, որի Իսհակ իբն Իսմայիլ ամիրը դեռ վաղուց ըմբոստ դիրք էր բռնել, Բուղան հրամայեց բոլոր հայ նախարարներին իրենց գնդերով ներ-

---

124 Թովմա Արծրունի, էջ 171—172։

կայանալ, սակայն շատերը, մանավանդ արևելյան նահանգների տերերը քաշվեցին իրենց անմատչելի բերդերը, և միայն Սմբատ սպարապետն էր, որը ստիպված եղավ հետևել արաբ զորավարին և նրա հետ գնաց Տփղիսը պաշարելու։ Չկարողանալով գրավել քաղաքը, Բուղան փորձեց Սմբատի միջոցով ազդել Տփղիսի բերդապահ զորքի վրա, որը խուժերի հայերից էր բաղկացած, բայց հաջողության չհասավ։ Վերջապես արաբները վառած կուպր նետելով, հրկիզեցին փայտաշեն քաղաքը և Իսհակ ամիրը գերի ընկավ ու գլխատվեց։ Այստեղից Բուղան դիմեց Կախեթ[125], ծանարների երկիրը, սակայն այս լեռնական ցեղերը Բուղայի զորքին սաստիկ ջարդ տվեցին։ Խոստումների միջոցով լեռնականներին ծուղակը գցելու Բուղայի բոլոր փորձերն ապարդյուն անցան և մեծ վնասներ կրելուց հետո, արաբները հեռացան այս կողմերից։ Բուղան ընդհանրապես չկարողացավ հյուսիսային հեռավոր լեռնոտ շրջանները թափանցել։ Նրա ասպատակություններից զերծ մնացին նաև Կղարջքի Բագրատունիները։

Կախեթից Բուղան ուղղվեց դեպի Գարգարացոց դաշտը և իջավ Պարտավ քաղաքը, սակայն դարձյալ խուսափելով շարժվել դեպի հյուսիսային կողմերը՝ Կուրից հյուսիս, մտավ Հայաստանի արևելյան կողմերը՝ Ուտիք-Արցախ լեռնաշխարհը։ Ձերբակալվեցին Գարդմանի Կտրիճ իշխանը, Խաչենի Ատրներսեհն իր հոր՝ Սահլ Սմբատյանի հետ, լեռնային Ուտիքի Սևորդիների Ստեփանոս Կոն իշխանը։ Սակայն հարավային Արցախի Եսայի Աբու Մուսե իշխանը լուրջ դիմադրություն ցույց տվեց արաբ զորավարին։ Ծանարների հաղթանակը ոգևորեց թե՛ Արցախի, և թե՛ Վասպուրականի լեռնականներին, որոնք ոտքի կանգնեցին նվաճողների դեմ։ Լեռնային Քթիշ (Գտիչ) ամրոցում հավաքվեցին Եսայի իշխանի ոչ միայն զորքը, այլև շրջակա գավառների ժողովուրդը։ Մոտ մեկ տարի արաբները պաշարեցին Քթիշը և 28 հարձակումներից հետո չկարողացան գրավել այն։ Քարակույտեր ու պարիսպներ կանգնեցրին Քթիշի շուրջը, բայց արաբների ամեն մի գրոհը հայ ռազմիկները ետ էին մղում և ցած գլորում թշնամուն։

Բուղան դիմեց բանակցությունների, բայց Եսայի իշխանը համաձայնվեց առանձին պատգամավորություն ուղարկել խալիֆայի մոտ, և միայն վերջինից ապահովություն խոստացող պատասխան (երաշխավորագիր) ստանալուց հետո իջավ իր ամրոցից և բոլորի հետ, բայց ոչ շղթայակապ, գնաց Սամառա։

Արաբներին չհաջողվեց վերջնականապես ընկճել Հայաստանը։ Դեռ այն ժամանակ, երբ Բուղան պաշարում էր Քթիշ ամրոցը, Վասպուրականում նոր ապստամբություն ծագեց, որի գլուխն էր կանգնած Ապուջափր Արծրունին, իսկ նրան օգնում էր քեռորդին՝ Սահակ Ապումկդեմը։ Ապստամբներին ոգևորել էր Բուղայի կրած ծանր պարտությունը ծանարների երկրում ու Արցախում և նրանք իրենց չորս հազարանոց զորքով (հեծյալ և հետևակ) սկսեցին իրենց ռազմական գործողությունները Ծուաշ և Թոռնավան գավառներում։ Այդ ժամանակ Հայաստանի գլխավոր հարկահան Աբրահամը (Իբրահիմ) հրաման ստացավ դուրս գալ Վասպուրականի դեմ։ Գալով Բերկրի, նա օգնություն ստացավ քաղաքում հաստատված Ութմանիկ արաբական ցեղի արաբներից, որոնք

---

125 Ըստ «Վրաց տարեգրության», Սմբատ Բագրատունին հարաբերության մեջ էր մտել ծանարների հետ, խորհուրդ տալով նրանց դիմադրել Բուղային։ Histoire de la Géorgie, I, SPb, 1849, p. 226—267 (տե՛ս Г. Г. Мкртумян, Борьба халифата за овладение главными кавказскими проходами, ՊԲՀ, 1975, № 2, էջ 209—214)։

խողաղբերք գյուղում էին։ Սկզբում Սահակ Ապումկդեմը սաստիկ ջարդ տվեց արաբներին և փախցրեց, սակայն ինքը շուտով սպանվեց։ Փոխվեց կռվի ընթացքը։ Այնուհանդերձ Ապուշափր Արծրունին իր ռազմիկների հետ քաջաբար կռվեց և կարողացավ կանգնեցնել թշնամու հարձակումը։

Սահակ Ապումկդեմի սպանությունը ժամանակավորապես թուլացրեց Վասպուրականի ռազմիկների եռանդը և նրանք ցրվեցին, իսկ Իբրահիմը նրանց հալածեց մինչև Ռշտունիք։

Այդ ժամանակ ասպարեզ իջավ Գուրգեն Ապուպելճ Արծրունի իշխանը, որը դեռ Բուղայի Վասպուրականում կատարած ասպատակության ժամանակ հեռացել էր Բագրևանդ, ապա անցել Սպեր լեռնային հեռավոր գավառը՝ Իշխանիկ Բագրատունու մոտ։ Ապա Սմբատ սպարապետը նրան վերցրեց իր զորքի մեջ։ Լսելով Վասպուրականում տիրող դրության մասին, Գուրգենն աճապարեց Վասպուրական, գրավեց Սրինգ և Ջղմար ամրոցները և դարձավ Վասպուրականի իշխան։ Գուրգենն իր զորագնդերով կանոնավոր շրջում էր բոլոր այն գավառները, որտեղ Բուղան արաբներ էր թողել, և կոտորելով բոլորին, Վասպուրականը մաքրեց թշնամիներից։

Բուղան նախքան Հայաստանից հեռանալը մի վերջին փորձ արեց խեղդելու այս ապստամբությունը և ուղարկեց մի արաբ զորավարի, որը Բերկրիի ութմանիկներին իր հետ վերցնելով, ճակատեց Հայոց ձորի Որոտք գյուղում, Արունթունի (Երվանդունի) գավառի մոտ։ Գուրգենը փոքրաթիվ ուժերով երկար դիմադրեց թշնամու գրոհներին։ Վերջապես նա կոտորեց ու փախուստի մատնեց արաբներին։ Դրանից հետո այլևս արաբները չհետապնդեցին Վասպուրականի ապստամբներին։ Հաջող ապստամբությունը Վասպուրականում, ինչպես նաև Հայաստանի մյուս մասերում վկայում է այն մասին, որ Բուղայի արշավանքը, թեև շատ վնաս պատճառեց Հայաստանին, այնուամենայնիվ, արյունարբու զորավարը հեռացավ Հայաստանից՝ չկարողանալով ճնշել ապստամբությունը։ Նա ստիպված եղավ ճանաչել Գուրգենին որպես Վասպուրականի իշխան, անգամ նվիրեց իշխանական սուսեր, թանկարժեք գոտի և ընտիր երիվարներ[126]։

855 թ. Սամառա գերի տարված Սմբատ Բագրատունու փոխարեն Հայոց իշխան և սպարապետ դարձավ որդին՝ Աշոտ Բագրատունին, որն այդ դժվարին պայմաններում կարողացավ հաշտության եզր գտնել տարբեր ուժերի միջև։

Վասպուրականի ապստամբության հաջող ելքը բարենպաստ հետևանքներ ունեցավ Հայաստանի համար։ Ի չիք դարձնելով արաբների ձեռք առած բոլոր միջոցառումները, որոնց նպատակն էր ճնշել ու ընկճել Հայաստանը, փաստորեն վերականգնվեց Հայաստանի ներքին ինքնավարությունը, որը գոյություն ուներ IX դարի առաջին կեսում, նախքան Բուղայի ներխուժումը։

Սակայն Աբբասյան խալիֆայությունը դեռևս ուժեղ էր, և Մուտավաքքիլ խալիֆան ուշի-ուշով հետևում էր Հայաստանում կատարվող դեպքերին։ Նա Սամառայում գերի տարված հայ իշխանների դատ կազմակերպեց, առաջարկելով նրանց կրոնափոխություն կամ մահ։ Դժվարին կացության մեջ գտնվող հայ նախարարներն ընկճվեցին և Թովմա Արծրունու արտահայտությամբ «Սիրեցին զփառս մարդկան առաւել քան զփառս Աստուծոյ»[127]։ Խորհրդակցելով,

126 Թովմա Արծրունի, էջ 198։
127 Նույն տեղում, էջ 157։

նրանք այն եզրակացության հանգեցին, որ անհրաժեշտ է գոնե առերես ընդունել խալիֆայի հրամանը, ներքուստ պահպանելով քրիստոնեական հավատը։

Արծրունյաց պատմիչ Թովման այստեղ առիթը չի կորցնում նորից ի հայտ բերելու իր թշնամությունը Բագարատ Բագրատունու նկատմամբ, նրան համարելով առաջին աստվածուրաց, և կորստյան շավիղը լայն բացող[128], որի օրինակին հետևեցին մյուս իշխանները։ Ի վերջո առերես կրոնափոխ եղան Աշոտ և Վասակ Արծրունիները, Սյունյաց Վասակ ու Աշոտ եղբայրները և ընդհանրապես գերեվարված նախարարների մեծամասնությունը։

Այսուհանդերձ գերի տարվածների մի մասը դիմադրեց և նախընտրեց մահը։ Դրանց մեջ էին Արծրունյաց Հովհաննես եպիսկոպոսը, հոգևորականների հետ, ինչպես նաև Սմբատ Բագրատունին իր քրոջ՝ Հռիփսիմե տիկնոջ հետ, Սասունի ապստամբության ղեկավար Հովնան Խութեցին, Ստեփանոս Կոնը և Գրիգոր Արծրունին։ Հայ պատմիչների մոտ Սմբատ Բագրատունու այս քայլը դիտվում է իբրև մի միջոց, որով նա կամենում էր իր մեղքերը քավել և ջնջել թշնամու հետ գործակցելու արատը, որի համար էլ ավանդական պատմագրությունը նրան Խոստովանող անունն է տվել։ Նրանք նահատակվեցին Մուտավաքքիլի իշխանության վերջին տարիներին։

Նախքան այս դեպքերը, դեռևս 857 թ. հայ նախարարներն աստիճանաբար սկսել էին վերադառնալ հայրենիք։ Բագարատ Բագրատունին այլևս չվերադարձավ Հայաստան։ Աշոտ Արծրունին վերադարձի թույլտվություն ստացավ, սակայն որոշ ժամանակ մնաց Միջագետքում, քանի որ մասնակցում էր խալիֆայության մղած պատերազմներին։ Իր փոխարեն նա հայրենիք ուղարկեց որդուն՝ Գրիգոր-Դերենիկին, որպես Վասպուրականի իշխան, որի համար վերջինս պաշտոնական հրովարտակ ստացավ խալիֆայից։ Գուրգեն Ապուպելճը ոչ մի դիմադրություն չցուցաբերեց հայրենիք վերադարձած իշխանին, այլ քաշվեց իր սեփական ամրոցները։ Սակայն, երբ գերությունից վերադարձավ նաև Աշոտի եղբայր Գուրգեն Արծրունին, սա նախ հարձակվեց Գուրգեն Ապուպելճի Սրինգ և Ջղմար բերդերի վրա, բայց հետո առաջարկեց նրան միատեղ ապստամբել Աշոտի ու Դերենիկի իշխանության դեմ և Վասպուրականն իրենց միջև բաժանել։

Գուրգեն Ապուպելճը չհամաձայնեց և հեռանալով Վասպուրականից, գնաց Կարին, որպեսզի այնտեղից անցնի արևմուտք՝ Բյուզանդիայի Միքայել կայսրին իր ծառայությունն առաջարկելու։ Կարնո քաղաքի Բշիր և Ջքրի քաղաքապետերը ձերբակալեցին Գուրգենին և ուղարկեցին Հայոց իշխան Աշոտ Բագրատունուն։

Այդ ժամանակ գերությունից վերադարձան նաև Սյունյաց Վասակ իշխանն իր եղբոր՝ Աշոտի և այլոց հետ։ Վասակը դարձավ Սյունյաց իշխան և վերստին դավանեց քրիստոնեական հավատը[129]։

Աշոտ Բագրատունու իշխանության տարիներին (855—862) արաբ ոստիկանները քիչ էին գալիս Հայաստան։ Հայտնի է միայն, որ Բուղան իր փոխարեն նշանակել էր Իբրահիմին, իսկ մոտավորապես 857 թ. երկրորդ անգամ Արմինիայի ոստիկան նշանակվեց Մուհամմադ իբն Խալիդը։ Աշոտը դեռ գտնվում էր նեղ դրության մեջ, որի հետևանքով նա ստիպված եղավ արաբների ձեռքը հանձնել ոչ միայն Գուրգեն Ապուպելճին, այլև հրամայեց փնտրել

128 Նույն տեղում, էջ 159։

129 Ստ. Օրբելյան, էջ 172։

*ու գտնել Սամառայից փախած Բագրևանդի իշխան Գրիգոր Մամիկոնյանին, որը հայրենիք էր վերադարձել։ Սակայն գտնվեց նրա դիակը։*

*Այսուհանդերձ ակներև էր այն փաստը, որ արաբական տիրապետության շրջանը մոտենում էր իր վախճանին։ Աբբասյան խալիֆայության քայքայումը, Բյուզանդիայի առաջխաղացումը Փոքր Ասիայում, ինչպես նաև հայ ժողովրդի համառ պայքարն անխուսափելիորեն հանգեցրին Հայաստանի անկախության վերականգնմանը։*

*861 թ. Թուրք զորապետերի ձեռքով սպանվեց Մութավաքքիլ խալիֆան և արաբական խալիֆայությունն անմիջապես սկսեց քայքայվել։ 862 թ. Աշոտ Բագրատունին դարձավ «իշխանաց իշխան Հայոց և Վրաց»[130], որից հետո իշխեց որպես անկախ տիրակալ, դառնալով հիմնադիրը Բագրատունյաց թագավորության։*

---

130 Ստեփանոս Տարոնեցի, Ասողիկ. *էջ 136, 158։*

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՎԵՑԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ԻՐԱՎԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ VIII Դ.—IX Դ. (ԱՌԱՋԻՆ ԿԵՍ)

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ, ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԸ ԵՎ ՀՈՂԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՁԵՎԵՐԸ

*Այս ժամանակաշրջանում Հայաստանն Արմինիա մեծ նահանգի մասն էր կազմում, իսկ վերջինս խալիֆայության (Օմայան և Աբբասյան) հյուսիսային փոխարքայության մեջ էր, որը պետության հինգ փոխարքայություններից մեկն էր։ Հյուսիսային փոխարքայության մեջ մտնում էին բացի Արմինիայից նաև Ատրպատականը, Ջազիրան (Վերին Միջագետք), Սահմանային ամրությունների (սուղուր) երկու շրջանները (Ջազիրայի սահմանային ամրություններ և Ասորիքի սահմանային ամրություններ՝ Կիլիկիա)։*

*Արաբ պատմիչների ու աշխարհագրագետների մեծ մասը ավանդական ձևով Արմինիան բաժանում է չորս մասի։ Ըստ այս ձևական բաժանման Առաջին Արմինիան ընդգրկում էր Շիրվանն, Աղվանքն ու Դարբանդը, Երկրորդ Արմինիան՝ Վիրքը, Երրորդ Արմինիան՝ նախկին պարսկական Հայաստանը, իսկ Չորրորդ Արմինիան՝ նախկին բյուզանդական Հայաստանը։ Իրականում այդպիսի վարչական բաժանում գոյություն չուներ։ Սակայն կան արաբ մատենագիրներ (Յակուբի), որոնք Արմինիան երեք մասի են բաժանում՝ Հայաստան, Վիրք (Ջուրզան) և Առան ու Դարբանդ։*

*Իրականում Արմինիան վարչականորեն հետևյալ բաժանումներն ուներ. 1. Բուն Հայաստանը, 2. Վիրքը, 3. Աղվանքը, 4. Շիրվանը և 5. Դարբանդը*[1]*։ Սակայն ոչ մի ժամանակ այս երկրները վարչականորեն լրիվ չմիաձուլվեցին և նրանցից յուրաքանչյուրը միշտ էլ մնաց որպես առանձին վարչական և էթնիկ միավոր։*

*Հայաստանը չուներ արաբների կողմից մտցված վարչական նոր բաժանումներ, այլ հնուց ի վեր գոյություն ունեցող միավորները՝ գավառները, կառավարում էին հին նախարարական տները։ Հայաստանի բոլոր կարևոր բաղկացուցիչ մասերն արաբ մատենագրության մեջ հիշատակված են ինչպես՝ Սիսաջան (Սիսական), Խաչին (Խաչեն), Սիրաջ (Շիրակ-Արշարունիք), Բաղրաուանդ (Բագրևանդ-Կոգովիտ), Բասին (Բասեն), Թայր, Թայզ (Տայք), ալ-Բակ (Աղբակ), Բասֆուռջան (Վասպուրական), Մուքս (Մոկս), Բաջունայս, Բահունայս (Ապահունիք), Թարուն (Տարոն), ալ-Ջաուազան (Անձևացիք), Սանասինա (Սանասունք)։*

---

[1] *А. Тер-Гевондян,* Армения и арабский халифат, стр. 157—160.

Վարչական և տնտեսական տեսակետից Հայաստանի գլխավոր քաղաքը՝ Դվինն (Դաբիլ) էր Արմինիայի ոստիկանի նստավայրը։ Ռազմական մեծ նշանակություն ունեին Կարնո (Կալիկալա) քաղաքն ու Արշամաշատը (Շիմշաթ),- որոնք մասամբ բնակեցվեցին արաբ ռազմիկներով։ Բյուզանդիայի դեմ ռազմական պայքարի հենակետեր էին նաև Ճապաղջուր (Ջաբալ ջուր) և Բալու ամրոց ավանները։ Տեղական վարչական նշանակություն ունեին որոշ քաղաքներ՝ Նախճավան, Մանազկերտ, Խլաթ, Մուշ և այլն, ինչպես նաև նախարարական մեծ տների նստավայր ամրոց ավանները՝ Դարույնք, Հաղամակերտ, Ոստան (Ռշտունյաց), Շաղատ և ուրիշներ։

Թեև Հայաստանի գլխավոր քաղաքը և ոստիկանի (ինչպես նաև կաթողիկոսի) նստավայրը Դվինն էր, սակայն Հայոց իշխանի նստավայրը մնում էր իր կալվածքներում, իսկ քանի որ գրեթե բոլոր Հայոց իշխանները Բագրատունիներ էին, ապա նրանց ոստան Դարույնքը դարձել էր Հայաստանի համար մի յուրահատուկ վարչական կենտրոն։ Այդ դերը IX դ. կատարում էր Բագարանը։

Հայաստանը շարունակում էր կառավարել Հայոց իշխանը։ Նա արաբների կողմից կոչվում էր «բաթրիկ» կամ «բաթրիկ ալ-Արման», որը բառացիորեն համապատասխանում է հայկական ձևին։ Հունարենում նմանապես Հայոց իշխանը կոչվում էր Հայաստանի իշխան (արխոն) կամ Հայաստանի պատրիկ։

Հայոց իշխանի նշանակումը որոշ արարողությամբ էր կատարվում, խալիֆայի ներկայացուցիչ ոստիկանը կամ փոխարքան գալիս էր Դվին և այնտեղ հավաքված նախարարներին հայտարարում, թե ով էր լինելու Հայոց իշխան, վերջինիս նվիրում էր ճոխ ընծաներ՝ ոսկեթել զգեստներ և ընտիր նժույգներ։ Արաբ պատմիչ Թաբարիի վկայությամբ[2], Աղվանքի հայազգի իշխան Սահլ Սմբատյանը խալիֆայից ստացել էր պատրիկության թագ։ Նման թագ ստանում էր Հայոց իշխանը, որին տրվում էր նաև իշխանության ոսկեթել դրոշ[3]։

Հայոց իշխանի գործակալությունը, որը VII դարի վերջից արդեն հիմնականում դարձավ Բագրատունի տոհմի ժառանգական պաշտոնը, նախարարական Հայաստանի ներքին կազմակերպության հիմնական օղակն էր։ Արաբները թեև թողեցին ավատական Հայաստանի ներքին կառուցվածքը, սակայն մասամբ սահմանափակեցին Հայոց իշխանի իրավունքները։ Եթե Հայոց իշխանին համեմատենք սասանյան ժամանակաշրջանի Հայոց մարզպանի հետ, կտեսնենք, որ վերջինս ավելի բարձր դիրք գրավող անձնավորություն էր, քանի որ ուղղակիորեն արքայից արքային էր ենթարկվում։ Հայոց իշխանն անմիջականորեն ենթարկվում էր ոստիկանին և ոչ խալիֆային։ Վերջինիս նա դիմում էր միայն ոստիկանի դեմ բողոքելու կամ որևէ բացառիկ դեպքում։

Որպես երկրի կառավարիչ նա խալիֆայության առջև պատասխանատու էր նախարարների գործունեության համար։ Հայաստանի հարկերը հավաքելու գործում նա էր հիմնական դեմքը, թեև որոշ շրջաններում արաբ հարկահաններն էին անձամբ հավաքում հարկերը։ Հայոց իշխանը պարտավոր էր ապահովել Հայոց այրուձիի մասնակցությունը խալիֆայության մղած կռիվներին և սպարապետի հետ միասին պետք է ներկա լիներ կովի դաշտում։ Սակայն այս բոլոր հարցերում Արմինիայի ոստիկանն իրավունք ուներ միջամտելու և իր կամքը թելադրելու։

---

[2] *Tabari*, IX, p. 54

[3] **Սեբեոս**, էջ 146։ *J. Laurent*, L'Arménie entre Byzance et l'Islam, p. 106—107.

Հայոց իշխանին ենթակա էին Հայաստանի բոլոր նախարարները և առաջին հերթին սպարապետը, ինչպես նաև կաթողիկոսը։ Երբեմն Հայոց իշխանը միաժամանակ լինում էր նաև զորքի սպարապետ, իսկ մյուս կողմից որոշ սպարապետներ Հայոց իշխանի բացակայության կամ մահվան դեպքում կառավարել են երկիրը։ Կաթողիկոսները (արաբ. ջաալիկ) երկրի քաղաքական կյանքում իրենց վայելած հեղինակությամբ Հայոց իշխանից ետ չէին մնում։ Նրանց ձեռքում էր մեծ դատավորության գործակալությունը։ Ուստի այս երեք գործակալությունները՝ Հայոց իշխանը, սպարապետությունը և մեծ դատավորությունը (կաթողիկոս) Հայաստանի կառավարման համակարգի հիմնական օղակներն էին։

Հայոց իշխանը, ինչպես նաև Աղվանից ու Վրաց իշխանները և Շիրվանի ու Դարբանդի ամիրները ենթակա էին Արմինիայի ոստիկանին[4]։ Արաբական տիրապետության շրջանում հայերը Արմինիայի արաբ կառավարիչներին տարբեր անուններով են կոչել։ Ղևոնդի մոտ հիշվում են հրամանատար, ազգապետ և զորավար բառերը, Թովմա Արծրունու մոտ՝ վերակացու, մեծ հազարապետ և նույնիսկ մարզպան և այլն։ Դրա պատճառն այն էր, որ իրենք՝ արաբները, որևէ հատուկ բառ չունեին խալիֆայության նահանգների կառավարիչների համար, նրանց կոչում էին մերթ «ամիր» (իշխան), մերթ «վալի» (կառավարիչ), կամ էլ «ամիլ» (գործակալ) և այլն[5]։

Ոստիկան, ինչպես և ամիրապետ՝ խալիֆա («արաբ կառավարիչ») նշանակությամբ առաջին անգամ օգտագործվել է Բագրատունյաց թագավորության ժամանակաշրջանում՝ Հովհաննես Դրասխանակերտցու Պատմության մեջ։

Դվինի բարձրադիր միջնաբերդում ոստիկանն ուներ իր պալատը, որն արաբ աշխարհագրագետների երկերում կոչվում էր «իշխանության տուն» (դար ալ-իմարա)[6]։ Միջնաբերդի դիմաց գտնվում էր կաթողիկոսական թաղամասը, ուր դեռ V դարի երկրորդ կեսից հաստատվել էր Հայոց կաթողիկոսարանը։ Այս թաղամասում էր գտնվում կաթողիկոսական պալատը և Դվինի Մայր տաճարը, որոնք երկուսն էլ կառուցված էին նախքան արաբական տիրապետության հաստատումը։

VIII դարի II կեսում Արմինիայի ոստիկանն ունեցավ երկրորդ նստավայրը՝ Պարտավը, Աղվանքի մայրաքաղաքը։ Այնուհանդերձ Դվինը երբեք չդադարեց ոստիկանի նստավայր լինելուց, այլ մինչև արաբական տիրապետության վախճանը մնաց Արմինիայի ոստիկանի երկու նստավայրերից մեկը[7]։

Արմինիայի արաբ ոստիկանին ենթակա էին ոչ միայն Հայոց, Աղվանից և Վրաց իշխանները և Շիրվանի կառավարիչը, այլև ռազմագիտական նշանակություն ունեցող սահմանային ամրությունների գոտու (սուղուր) զինվորական կառավարիչները։ Դրանք էին Կովկասում Դարբանդը (արաբ. Բաբ ալ-Աբվաբ), իսկ Հայաստանում Կարնո քաղաքն ու Շիմշաթը։ Արաբ պատմիչները հաղորդում են Բաբ ալ-Աբվաբի կառավարիչների անունները, որոնք ուղղակիո-

---

4 Ոստիկան բառը պահլավերենից փոխառյալ է և վաղ միջնադարում նշանակել է թագավորին մերձավոր վստահելի անձնավորություն, կամ պաշտոնյա։

5 Ա. Տեր-Ղևոնդյան, Դիտողություններ «ոստիկան» բառի մասին, ՊԲՀ, 1962, № 4, էջ 243—248։

6 *Istakhri*, Bibl. Geogr. Arab., I, d. 188.

7 *А. Тер-Гевондян*, նշվ. աշխ., էջ 157։

րեն կապված էին Արմինիայի ոստիկանի հետ, քանի որ խազարների դեմ պայքարը վերջինիս գլխավոր մտահոգություններից մեկն էր։

Հայաստանում Կարնո քաղաքը և Շիմշաթը ինքնուրույն միավորներ էին Աբբասյանների օրոք։ Կարնո քաղաքը (Կալիկալա) և նրան շրջապատող որոշ բերդեր ենթակա էին արաբ զորավարին, որին նշանակում էր Արմինիայի ոստիկանը։ Քաղաքում կային մեծ թվով զորքեր։

Նույնպիսին էր վիճակը նաև Շիմշաթում, որը վարչականորեն առանձին շրջան էր համարվում։ Արաբ պատմիչները վկայում են, որ Շիմշաթի շրջանի (որպես սահմանային գոտու) ազգաբնակչությունը IX դարում ազատվեց հողահարկ (խարաջ) վճարելու պարտավորությունից և միայն տասանորդ էր տալիս[8]։ Շիմշաթի շրջանն իր Ճապաղ ջուր (Ջաբալ ջուր) և Բալու ամրոցներով ուներ առանձին արաբ զինվորական կառավարիչ։

Արմինիայի ոստիկանի հիմնական պարտականությունը երկրի հնազանդեցումն ու պաշտպանությունն էր։ Արմինիան խալիֆայության մյուս նահանգներից տարբերվում էր նրանով, որ միաժամանակ սահմանակից էր խալիֆայության երկու գլխավոր ախոյաններին՝ Բյուզանդիային ու խազարներին։ Պատահական չէ, որ հայ պատմիչները Արմինիայի ոստիկաններից շատերի մասին խոսելիս նրանց հիշատակում են լոկ որպես զորավարների, իսկ նրանց կառավարիչ լինելու հանգամանքը չեն հիշում[9]։

Արմինիայի ոստիկանի կողքին կային նաև այլ պաշտոնյաներ, որոնք գոյություն ունեին խալիֆայության բոլոր նահանգներում։ Դրանք էին գլխավոր հարկահանը և փոստի վերատեսուչը։ Առաջինի (սահիբ ալ-խարաջ) ձեռքի տակ գործում էին բազմաթիվ հարկահաններ, որոնք ժողովրդի ատելության առարկան էին։ Փոստի վերատեսուչը (սահիբալ-բարիդ) հետևում էր Երկրի իրադրությանը և հսկում ոստիկանի գործունեության վրա, նրա ամեն մի քայլի մասին փոստի միջոցով հաղորդում խալիֆային։

Մինչև այժմ հայագիտությանը հայտնի Արմինիայի ոստիկանների ցուցակներում պետք է տարբերել երկու խումբ. առաջինը՝ Բուն Արմինիայի ոստիկաններն էին, իսկ երկրորդը՝ Արմինիայի, Ատրպատականի և Ջազիրայի փոխարքաները։ Աբբասյանների օրոք (որոշ շրջանում) փոխարքային ենթարկվում էին հաճախ միայն Արմինիան և Ատրպատականը։ Փոխարքաները նշանակվում էին հիմնականում Օմայան և Աբբասյան խալիֆայության տներից կամ արքունի մերձավորներից։ IX դարի առաջին կեսում փոխարքայության պաշտոնն արդեն ձևական բնույթ էր կրում։

Արաբական տիրապետությունը Հայաստանում հասարակական նոր կարգեր չմտցրեց, քանի որ դեռ արաբական նվաճումից շատ առաջ երկիրը ֆեոդալական զարգացման ուղիով էր ընթանում։ Արաբական խալիֆայության մեջ ձևականորեն բոլոր հողերը մահմեդական տերության սեփականությունն էին։ Սակայն իրականում կային նաև բուն արքունի կամ պետական տիրույթներ, որոնք ամբողջովին խալիֆայությանն էին պատկանում, այսինքն արքունի գանձարանին։ Շատ երկրներում արաբները պետական սեփականություն դարձրին նախկին արքունի (մանավանդ բյուզանդական և իրանական) հողերը, ինչպես նաև այն հողատեր իշխանների կալվածքները, որոնք կռվել էին արաբների դեմ կամ հեռացել երկրից։

---

[8] *Beladsori*, p. 184.

[9] Տե՛ս Ղևոնդ, էջ 102։

Հայաստանում արաբների նվաճման հենց սկզբից գոյացան պետական կամ արքունի կալվածքներ։ Հայաստանը նվաճող Մուհամմադ իբն Մրուանը ձեռք գրեց Վանա լճի վրա և արգելելով ազատ ձկնորսությունը, արաբ վերակացու նշանակեց, որի գերն էր հսկել ձկնորսության վրա և հավաքված հասույթը հասցնել Օմայան արքունիք։ Վանա լիճը Մուհամմադից հետո ժառանգաբար մնաց նրա որդուն, որը վարում էր Հյուսիս փոխարքայի պաշտոնը։ Նրանից հետո այն անցավ Աբբասյաններին[10]։

Հայաստանում կային խալիֆայական գանձարանի (բայտ ալ-մալ) տնօրինության տակ գտնվող պետական հողեր։ Խուզայմա իբն Խազիմ ոստիկանի կողմից Դվինի կաթողիկոսարանից բռնագրավված Արտաշատ, Կավակերտ և Հոռոմոց մարգ գյուղերն իրենց ագարակներով հանդերձ պետականացվել էին։ Թեև հիշյալ գյուղերից վերջին երկուսը կաթողիկոսը համառ պայքարով կարողացավ ետ ստանալ, այնուամենայնիվ գյուղերից մեկը մնաց և, ըստ երևույթին, դա միակը չէր Հայաստանում, որ պատկանում էր պետական գանձարանին։

Խալիֆայությունը բռնագրավում էր նաև ապստամբած նախարարների հողերը, մի երևույթ, որը լայնորեն կիրառվեց 774—775 թթ., մեծ ապստամբությունից հետո, բռնագրավված հողերը տրվեցին արաբ գաղթականներին՝ զինվորական ծառայության դիմաց։ Այսպես Գնունիների հողերը տրվեցին ութմանիկներին, Ապահունիների կալվածքները՝ կայսիկներին և այլն։ Ըստ երևույթին, հիշյալ արաբներն այդ հողերը ստացել էին որպես պայմանական տիրույթներ, որոնք արաբները կոչում էին իկթա, սակայն նրանք իրենց դիրքերն ամրապնդելով, ժառանգաբար էին տիրում ստացած հայկական հողերին։ Նման պայմաններով արաբ ռազմիկները որպես պարգև հողեր էին ստացել նաև Կարինում։

Արաբ ոստիկանները հարմար առիթը օգտագործում էին հայ նախարարներից նոր գյուղեր բռնագրավելու համար։ 852 թ. երբ Բուղան Նկան ամրոցն էր պաշարել, ներսում գտնվող Աշոտ Արծրունին ստիպված էր նրան գյուղեր ու ագարակներ առաջարկել՝ պաշարումը վերացնելու համար։ Արքունի և պետական տիրույթները Հայաստանում տարածությամբ մեծ չէին, երկրի հողերի մեծ մասը գտնվում էր հայ նախարարների ձեռքում։

Արաբ խալիֆաները հողի նկատմամբ ունեին սեփականատիրական գերագույն իրավունք և համաձայն այդ սկզբունքի, հայ նախարարները պարտավոր էին իրենց հողատիրական իրավունքների հաստատումն ստանալ նրանցից։ Օմայանների տիրապետության կես դար տևող ժամանակաշրջանում բացի Հայաստանից հեռացած իշխանների տիրույթների գրավումից մենք չգիտենք արաբական իշխանությունը ճանաչած հայ նախարարական տների հողատիրական ժառանգական իրավունքներից զրկվելու դեպքեր։ Դրեթե նույնն էր նաև Աբբասյանների վերաբերմունքը խաղաղ պայմաններում։ Սակայն ապստամբության դեպքում հայ նախարարը կարող էր զրկվել իր հողատիրական իրավունքներից, իսկ սովորական պայմաններում ստանում էր իր ժառանգական հողատիրական իրավունքների գրավոր հաստատումը։

Պետք է նշել, որ հայ նախարարների կալվածատիրական իրավունքների պահպանումը միայն պայքարի միջոցով էր հաջողվել, ինչ վերաբերում է խալիֆայության բռնած դիրքին, ապա նա միշտ էլ ձգտել է սահմանափակել

10 Իբն ալ-Ասիր, էջ 62։

այդ հողատիրական ժառանգական իրավունքները։ Հենց առաջին արաբ ոստիկան Աբդալլահի մշակած ծրագիրը՝ փաստորեն հայ նախարարական տները և զինական ուժը ոչնչացնելու նպատակն էր հետապնդում։ 703 թ. ապստամբությունը և նրան հաջորդող դեպքերը ստիպեցին Օմայաններին՝ Աբդ ալ-Ազիզ ոստիկանի օրոք պաշտոնապես ճանաչել հայ նախարարների հողատիրական իրավունքները։

Նախարարական տների հողատիրական իրավունքները հաստատող պայմանագրերը հանդիսավոր արարողությամբ էին հանձնվում մանավանդ հզոր իշխանական տներին։ Թովմա Արծրունին նկարագրում է, թե ինչպես Բուղան հանդիսավոր արարողությամբ Գուրգէն Արծրունուն հռչակեց (թեև այս դեպքում խաբելու նպատակով) իշխան Վասպուրականի։ Բուղան նախ ուղարկել էր մի գրություն, որով ճանաչվում էր Գուրգենի իրավունքները հայրենի երկրի վրա։ Երբ Գուրգենը գալիս է ոստիկանի բանակատեղին, նրա առջևից տանում էին Արծրունիների զինանշանն ու դրոշը։ Ոստիկանը նրա գլխին՝ իշխանական թագ է դնում և արքունիքից բերված զգեստներ գցում նրա ուսին, սուր է կապում մեջքին և նստեցնում զարդարված ջորու վրա։ Առջևից ու ետևից տանում էին զարդարված ու զենքերով սպառազինյալ նժույգներ։ Լսվում էին փողերի ձայնը, թմբուկների զարկերը և երաժշտական այլ գործիքների հնչյուններ։ Սպառազեն զինվորներ, վարոցավորներ ու սակրավորներ կարգ էին պահպանում՝ ետ պահելով ամբոխին, և, ապա ի լուր բոլորի, ոստիկանը հայտարարում է, թե Վասպուրականի իշխանությունը տրվեց Գուրգեն Արծրունուն, իր նախորդի փոխարեն[11]։

Պաշտոնապես պայմանական համարված, բայց, ըստ էության, մեծ մասամբ ոչ պայմանական ժառանգական հողատիրությունից բացի կային նաև գանձագին հողեր, որոնք արաբների կողմից միլք (մուլք)[12] (սեփականություն) էին կոչվում։ Հողատիրության այս ձևն ընդլայնվում է Աբբասյանների օրոք և այնքան խոր արմատներ գցում, որ վաճառվում էին նույնիսկ պետության կողմից բռնագրավման ենթակա հողերը։ Այսպես, 774—775 թթ. ապստամբությունից հետո Կամսարականների հողերը, որոնք ըստ սովորության, հավանաբար, կարող էին ոստիկանի կողմից բռնագրավվել և կամ տրվել արաբ գաղթականներին, դրամով գնեց Աշոտ Մսակերը[13]։ Եկեղեցական հողերը, ձևականորեն բռնագրավման ենթակա չէին, այդ իսկ պատճառով Խուզայմա ոստիկանն իր բռնագրավումը ձևակերպելու համար, առաջարկում էր կաթողիկոսին վաճառել վերոհիշյալ Արտաշատ, Կավակերտ և Հոռոմոց մարդ գյուղերն իրենց ագարակներով։

Արաբական տիրապետության ժամանակաշրջանն իր վայրիվերումներով և հողատիրության ձևերի առանձնահատկություններով փոփոխեց Հայաստանի հողային տիրույթների քարտեզը։ Այդ փոփոխությունները կատարվեցին առավելապես Աբբասյանների ժամանակաշրջանում, երբ հայ իշխաններին հողերից զրկելու ձգտումը որոշակիորեն դրսևորվեց։

Նախկինում ամենազոր և հարուստ հողատեր իշխանները՝ Մամիկոնյան-

---

11 Թովմա Արծրունի, էջ 150։

12 Միջնադարում մուլք է կոչվել նաև ընդհանրապես ամեն մի ժառանգական կալվածք։ Ըստ այնմ միլք (մուլք) էին հին հայ նախարարների հողային տիրույթները։

13 «Ստեփաննոս Տարոնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական», էջ 106։

ները, իրենց տիրույթների մեծ մասը կորցրին և արդեն IX դարում նրանց սահմանները տարածվում էին միայն Բագրևանդ գավառում։

Շատ արագ ծավալվեցին Բագրատունիները, որոնք եթե VIII դարի սկզբին բացի Սպեր գավառից տիրույթներ ունեին, միայն Կոգովիտը Այրարատ նահանգում, ապա մեկ դար հետո նրանց էին պատկանում հարավում՝ Տարոնը, Շիմշաթը, Մոկքը, իսկ հյուսիսում՝ Արշարունիք, Արագածոտն, Շիրակ, Աշոցք և նույնիսկ Ոստան գավառն Այրարատում։ Օգտվելով առիթից, նրանք կարողացան թույլ չտալ, որ արաբական իշխանությունները խիստ թուլացած Մամիկոնյանների, Կամսարականների և այլոց հողերն արաբ գաղթականներին պարգևեն։ Այն նոր տիրույթների համար Աբբասյաններից հաստատում (կալվածագիր) ստանալով, Բագրատունիները կարողացան գերիշխող դիրք գրավել Հայաստանում, հասնելով մինչև գերագույն իշխանության։ Բագրատունիներին ենթակա էին Այրարատի բոլոր մանր իշխանական տները, ինչպես Գնթունիները, նաև Տաշիրի ու Վանանդի իշխանները։

Քայքայված իշխանական տների հաշվին իրենց տիրույթներն ընդարձակեցին նաև Արծրունիները և արդեն IX դարի սկզբին նրանք Վասպուրականի մեծ մասի տերն էին։ Ռշտունիների հողերը նրանց էին անցել դեռևս նախորդ դարի կեսերին, իսկ 774—775 թթ. ապստամբությունից հետո տիրեցին նաև Ամատունիների հողերին։ Արծրունիների մի ճյուղը նույն դարում հաստատվեց նաև Անձևացյաց գավառում։ Այսպիսով, գրեթե ամբողջ Վասպուրականը դարձավ Արծրունիների տիրույթը և եթե մնացին մանր իշխանական տներ, ապա դրանք ենթակայի կախյալ վիճակում էին, ինչպես՝ Ամատունիների ու Գնունիների մնացորդները, Ընտրունի, Ապահունի, Քաջբերունի, Հավնունի, Վահևունի, Ակեացի, Գաբայեղյան, Մուրացյան, Անձևացի, Հարմացի, Գունդսաղար և այլ իշխաններ։

Սյունյաց իշխաններն իրենց տիրույթներն ընդարձակեցին, իջնելով Արաքսի հովիտը, որտեղ տիրացան գողթնացի իշխանների հողերին, ինչպես նաև Նախճավան գավառին։ Դեռ նախորդ դարերից կարևոր դիրք ունեցող Արցախի (Խաչեն) իշխաններն առավել հզորացան IX դարում։

Նախարարական տիրույթներին աղընթեր հայ եկեղեցին ևս ուներ իր կալվածները։ Վաղ միջնադարում ամեն մի եպիսկոպոսական վիճակ ուներ իր որոշակի հողային տարածությունները, որոնք մեծ մասամբ կառավարվում էին գյուղական հոգևորականության կողմից։ IV—VIII դդ. եկեղեցական վիճակների թիվն ավելացավ։ Եթե IV դարում մի քանի վիճակ է եղել, ապա VI դարում մոտ երկու տասնյակ եպիսկոպոսական վիճակներ կային[14]։ VIII դարի եպիսկոպոսական վիճակների թվի մասին որոշակի պատկերացում է տալիս Մանազկերտի հայ-ասորական եկեղեցական ժողովի մասնակից հայ եպիսկոպոսների ցուցակը, որը պահպանել է պատմիչ Միքայել Ասորին[15]։ Ցուցակում Հովհան Օձնեցի կաթողիկոսից հետո հիշվում են 31 եպիսկոպոսներ և նրանց գավառները (վիճակները)։ Սրան համապատասխանում է Ուխտանեսի ցանկը ուր 30 եպիսկոպոսական վիճակ է հիշված[16]։ Երկու ցուցակներում էլ հիշված են Հարքի, Մամիկոնյան, Տայքի, Բագրատունյաց, Տարոնի, Սասունի, Արծրունյաց, Սյունյաց, Գարդման և այլ վիճակներ։ Հայաստանի կենտրոնում

---

14 *Н. Адонц*, նշվ. աշխ., էջ 429—433։

15 *Michel le Syrien*, II, p. 497—498.

16 Ուխտանես, Պատմութիւն Հայոց, Վաղարշապատ, 1871, էջ 100։

*կար Նախճավանի ու Մարդպետականի առանձին եպիսկոպոսական վիճակը[17], իսկ Գուգարքը ենթակա էր Այրարատի (Ոստանի) վիճակին։*

*Սակայն VIII—IX դդ. կարևոր փոփոխություններ կատարվեցին եկեղեցական հողատիրության մեջ։ Այս շրջանի մասին խոսող պատմիչները եպիսկոպոսական վիճակներին պատկանող և գյուղական հոգևորականությանը ենթակա հողերը այլևս չեն հիշատակում։ Բանն այն է, որ այդ հողերն աստիճանաբար անցել էին վանքերին, որոնք հզորանում էին։*

*VIII դարում դեռևս վաղ միջնադարից գոյություն ունեցող վանքերի կողքին առաջանում են նորերը։ Արաբ պատմիչ Բալազուրին հիշում է Սյունիքում «Բաժակների վանքը» (Դայր ալ-Ակդահ), որը մեծ հեղինակություն ուներ այս նահանգում[18]։ Սևանի ավազանում հատկապես հայտնի էր Մաքենյաց (Մաքենոցաց, Մաքենոց) վանքը, որը պատմիչը կոչում է «մեծ մաքենացւոց մայրաքաղաքն»[19]։ Այն թեև հիմնահատակ կործանվեց Բաբեկի կողմից, այսուհանդերձ վերականգնվեց ու շարունակեց ծաղկել։ Աղբակում հայտնի էին Աղբակի սուրբ Խաչ (Արծրունիների տապանատուն) և Վարագա վանքերը[20]։ Տարբեր վայրերում առաջացած վանքերը ձեռք էին բերում ընդարձակ տիրույթներ և հատուկ ուշադրություն էին դարձնում իրենց տնտեսությանը, ոռոգելի դարձնում անջրդի հողերը, որի վկայությունն է Ուխտատուր. վանականի՝ Թալինի Մայր տաճարի ՄԼԲ (783) թվականի վիմագիր արձանագրությունը, ուր հիշվում է ջուր բերելու (ջրանցք անցկացնելու) մասին[21]։*

*Հայ եկեղեցու այս վիճակը անհանգստացնում էր Արմինիայի կառավարիչներին (ոստիկան), որոնք առիթ էին որոնում վանքերից և նույնիսկ Դվինի հայրապետանոցից որևէ կալված կամ ունեցվածք խլելու։ Բուղայի արշավանքի ժամանակ արաբները Վարագա վանքի միաբաններին հարկատու էին դարձրել[22], մինչդեռ իրավականորեն եկեղեցական վանական կալվածները ապահարկ էին։ Սուլայման ոստիկանի տեղակալը (788—790)[23] Եսայի Եղիպատրուշեցի կաթողիկոսի օրոք պահանջեց եկեղեցական ունեցվածքների ու սպասքների ցուցակը կազմել և ինչ կամեցավ խլեց։ Եսայուն հաջորդած Ստեփանոս Դվնեցի կաթողիկոսը մեծ կաշառքով հազիվ կարողացավ ետ ստանալ եկեղեցապատկան գյուղերը։ Մեծ տիրույթներ ուներ Դվինի հայրապետանոցը, որին պատկանում էին Արամոնս, Արտաշատ, Կավակերտ, Հոռոմոց մարգ և այլ գյուղեր Այրարատում։*

*VIII—IX դդ. առավել հստակ ձևավորվեց հայ հոգևորականությունը։ Այս շրջանից սկսած հոգևորականն այլևս չէր կարող թողնել եկեղեցական ծառայությունը՝ զինվորական ասպարեզ մտնելու համար, և շեշտվեց կուսակրոն հոգևորականության դերը։*

*Բացի պետական, պարգևական, սեփականատիրական (նախարարական),*

---

17 Թովմա Արծրունի, *էջ 128։*

18 *Beladsori*, p. 211.

19 *«Պատմութիւն Մովսեսի Կաղանկատուացւոյ», էջ 375։ Մայրաքաղաքն օգտագործված է մետրոպոլիտության իմաստով։*

20 Թովմա Արծրունի, *էջ 200, 228։*

21 Գարեգին Հովսեփյան, *Քաղուեք հայ հնագրութեան, Շողակաթ, Վաղարշապատ, 1913, էջ 176,* *J. Laurent*, L'Arménie entre Byzance et l'Islam, p. 207—209.

22 Թովմա Արծրունի, *էջ 214։*

23 Ղևոնդ, *էջ 160—170։*

գանձագին և եկեղեցական հողերից կային նաև գյուղական համայնքին պատկանող ազատ հողեր, որոնք հարկ էին վճարում ուղղակի պետական գանձարանին։

## 2. ՇԻՆԱԿԱՆՆԵՐԻ ՎԻՃԱԿԸ: ՀԱՐԿԵՐԸ

Ինչպես հողատիրության ձևերի, այնպես էլ շինականի իրավական վիճակի մեջ արաբական տիրապետությունը ոչ թե ուղղակիորեն, այլ անուղղակի ճանապարհով փոփոխություններ մտցրեց։ Արաբը նոր տնտեսաձև չէր կարող բերել, այլ ընդհակառակը, ինքն իր նվաճած երկրներից շատ բան ընդօրինակեց, այսուամենայնիվ, արաբական տիրապետության ծանր շրջանը ցնցեց Հայաստանը և ազդեց առաջին հերթին հիմնական արտադրողի՝ շինականի կյանքի գոյավիճակի վրա։

Նախկինի նման գյուղացիության մեծամասնությունը կազմում էին գյուղական համայնքներում ապրող շինականները, սակայն վերջիններիս վիճակը որոշ փոփոխությունների էր ենթարկվել։ Արաբների կեղեքիչ քաղաքականությունը և ապստամբություններին հետևող նրանց ասպատակությունները անապահով վիճակի մեջ էին դրել հայ շինականին, և նա հովանավորություն էր փնտրում ուժեղ իշխանների մոտ։ Բացի դրանից, ավելի անապահով էր նրա վիճակը նաև այն պատճառով, որ ծանր հարկերը նրան ամեն րոպե գցում էին արաբ հարկահանների ձեռքը։ Այս բոլորի հետևանքով հայ շինականն աստիճանաբար առավել կախման մեջ ընկավ թե՛ տեղական և թե՛ օտար իշխաններից։

Կար նաև ազատ շինականների մի փոքրաթիվ շերտ, որը ենթակա և հարկատու լինելով պետությանը, կախված չէր ֆեոդալ հողատերերից և իրեն պատկանող հողակտորներին տիրում էր ժառանգաբար, ուստի այդպիսի շինականները կոչվում էին «հայրենատէրք»։

Բացի շինականի հիմնական զանգվածից, որ արդեն որոշ կախման մեջ էր, կային ագարակների մշակներ, որոնք, բնականաբար, մեծ չափով կախման մեջ էին հողատեր իշխաններից և մոտենում էին ճորտային վիճակին։ Կարծիք կա, որ ագարակների մշակներն իրենց ծագումով ստրուկներ էին, որոնք պատերազմների ժամանակ գերեվարության և այլ ճանապարհներով բերվում էին և ամրացվում հողին։

Հայ իշխանները, որոնք մասնակցում էին արաբական խալիֆայության՝ խազարների և այլոց դեմ մղված պատերազմներին, իրենց հետ բերում էին ստրուկներ, այսպես, Հայոց իշխան և սպարապետ Աշոտ Բագրատունին Օմայան Մրուան փոխարքայի հետ խազարների դեմ մղված կռվում հաղթելուց հետո, ստացավ բերված գերիների մի մասը՝ «ծառաներ ու աղախիններ»[24], այսինքն ստրուկներ ու ստրկուհիներ, որոնց բաժանեց նաև Հայաստանի երևելի իշխաններին։ Ստրուկներ ունեին ոչ միայն նախարարները, այլև եկեղեցին։

Ստրկությունը մեծ չափերով տարածված էր Օմայան խալիֆայության մեջ։ Ասորիքում, Արաբիայում և այլ երկրներում, որպես հետևանք նվաճումների ժամանակ կատարված գերեվարության, նվաճող արաբ զորավարները հարյուր հազարներով գերիներ էին բերում։ Այսպես էր եղել, օրինակ, հյու-

24 Տե՛ս Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 87—89, 135—137 և հետ.։

սիսային Աֆրիկայի կամ Միջին Ասիայի նվաճումից հետո և այս գերիների զգալի մասը ստրուկ էր դարձել։ Բացի գերեվարությունից, ստրուկներ էին ձեռք բերվում նաև ստրկավաճառության միջոցով։ Ամեն մի Օմայան իշխանի համար հազար ստրուկ ունենալը շատ սովորական երևույթ էր։

Ըստ մահմեդական իրավագիտության (ֆիկհ, շարիաթ) ոչ միայն մահմեդականը չէր կարող ստրուկ դառնալ և վաճառվել, այլև քրիստոնյան, եթե պայմանագրով խալիֆայության հպատակ էր (զիմմի)։ Սակայն, երբ ապստամբություն էր ծագում, այս կարգը խախտվում էր։ 640 թ. արշավանքի ժամանակ Հայաստանը դեռևս նվաճված չէր և, ըստ Սեբեոսի վկայության, արաբները 35 հազար գերի տարան Ասորիք։ Հայաստանը հպատակեցնելուց հետո ամեն մի ապստամբության ժամանակ արաբները գերի էին տանում Ասորիք կամ Միջագետք և այնտեղ մեծ մասամբ ստրկացնում։ 850 թ. ապստամբությունը ճնշելուց հետո Բուղան Հայաստանից մի քանի անգամ գերյալների կարավաններ ուղարկեց խալիֆայության մայրաքաղաք՝ Սամառա։

Գերի տարված ռամիկ տղամարդիկ օգտագործվում էին թե ռազմական ծառայության մեջ՝ առավելապես դումակում և թե ծանր աշխատանքներում, իսկ կանայք դառնում էին հարճեր։ VII դարի վերջում Հայաստանի վերջնական նվաճման ժամանակ Սիսականի պատրիկի գերի տարված դուստրն ամուսնացել էր Ուսայդ ալ-Սուլամի զորավարի հետ, և նրանից ծնված որդին՝ Եզիդ իբն-Ուսայդը Աբբասյանների օրոք Արմինիայի ոստիկան դարձավ։

Արաբական խալիֆայության մեջ բազմահազար ստրուկների մեծամասնությունը (իսկ ստրկուհիները գրեթե ամբողջովին) տնային ստրուկներ էին, ընդ որում հարճից ծնված տղան դառնում էր հոր ժառանգորդը։ Այն ստրուկները, որոնք դառնում էին ռազմիկներ (մամլուք), առաջ գնալով բարձր աստիճանների էին հասնում։

Ահա այս հարցում Հայաստանն արմատապես տարբերվում էր խալիֆայության այլ երկրներից, և հակառակ տիրող ավատական կարգերի արևելյան բնույթին, Հայաստանը, կարելի է ասել, «արևելյան» ստրկություն չունեցավ։ Հայաստանի քրիստոնեական եկեղեցին թույլ չտվեց, որ արևելյան մահմեդական աշխարհին բնորոշ ստրկությունը տարածվի Հայաստանում։

Արաբական նվաճումների հենց սկզբնական շրջանից նվաճված ժողովուրդների հետ կնքված հպատակության դաշնագրերում, լինեն դրանք Վերին Միջագետքում, թե Հայաստանում կամ Վիրքում, արաբների առաջին և գլխավոր պահանջը միշտ ջիզյան (գլխահարկ) էր[25]։

Աբդ ալ-Մալիք խալիֆայի օրոք (685—705) հարկային սիստեմը կազմակերպվեց և ձևավորվեց։ Ջիզյան, որը մինչ այդ սոսկ հարկ էր նշանակում, վերջնականապես գլխահարկի իմաստ ստացավ, իսկ խարաջը՝ հողահարկի[26]։ Գլխահարկը ծանրացվեց, իսկ հողահարկը պարտադիր դարձավ բոլորի համար՝ թե քրիստոնյաների, հրեաների ու հեթանոսների, թե մահմեդականների։ Բացի դրամական հարկից, գանձվում էր բնահարկ, որի չափի մասին Հայաստանում Սամուել Անեցին գրում է. ամեն տնից 3 մոդ (մոտավորապես 2 փութ) մաղած ցորեն, մեկ ձիատոպրակ, մեկ պարան և մեկ ձեռնոց[27]։

---

[25] *Beladsori*, p. 174, 200, 201.

[26] *Ph. Nitti*, History of the Arabs, London, 1958, p. 171.

[27] Սամուել Անեցի, *Վաղարշապատ, 1893, էջ 82*։

*Օմայան Հիշամ խալիֆայի օրոք[28] գլխահարկը, որը մինչ այդ գանձվում էր ըստ երդի (տան, գերդաստանի), դարձավ ըստ շնչի (ըստ գլխի), մեծապես ծանրացնելով հայ շինականի վիճակը։*

*Սակայն ոչ մի ժամանակ հարկերն այնպիսի անտանելի չափերի չէին հասել, ինչպես Աբբասյանների օրոք։ Նահանգներում նրանց վարած քաղաքականության մասին խոսելիս, պատմիչների տեղեկությունները գլխավորապես հարկային կեղեքումների շուրջն են պտտվում։*

*Ղևոնդ պատմիչի այն խոսքերը, թե Մահմեդը իր հետևորդներին կտակել էր «կերեք երկրի ընտրյալների միսը և խմեցեք հզորների արյունը»[29], շատ լավ կարող է բնորոշել հենց աբբասյան ժամանակաշրջանի հարկային քաղաքականությունը։*

*Ղևոնդի որոշ ակնարկներից երևում է, որ գլխահարկն ըստ շնչի գանձելու սկզբունքը հետևողականորեն և խիստ կերպով կիրառվել է հենց առաջին Աբբասյան Աբուլ-Աբբասի ժամանակից սկսած[30]։ Նրա եղբայրը՝ Արմինիայի, Ատրպատականի և Վերին Միջագետքի փոխարքա Աբու Ջաաֆարը, անձամբ շրջում էր Հայաստանի գավառներում, հարկ պահանջում նույնիսկ մեռածների համար և կապարե կնիք էր կախում վճարողների պարանոցից[31]։*

*Գլխահարկը վճարում էին չափահաս քրիստոնյաները, ընդ որում կանայք լրիվ ազատված էին։ Հոգևորականները սկզբունքորեն նույնպես ապահարկ էին, սակայն հարուստ վանականներից երբեմն վերցնում էին գլխահարկ, բացի դրանից մերթ ընդ մերթ կողոպտում էին վանքերը։ Երեխաներն ու ծերերը ազատված էին, ինչպես նաև կույրերը, լուսնոտները, խեղագարները, հաշմանդամները, ստրուկները։ Գլխահարկը պարտավոր էին վճարել չափահաս և առողջ տղամարդիկ։*

*Ըստ մահմեդական իրավագիտության, գլխահարկի չափն էր մեկից չորս դինար՝ ոսկեդրամ օգտագործող երկրների համար (Եգիպտոս, Ասորիք), իսկ արծաթ դրամ (դիրհեմ) օգտագործող երկրների համար (Միջագետք, Իրան և մասամբ Հայաստան) պետք է մեկ դինարը մոտավորապես 12 դիրհեմ հաշվեին։ Հաճախ գլխահարկը նշանակվում էր ըստ վճարողի նյութական վիճակի։ Քրիստոնյա հասարակությունը բաժանվել էր երեք խմբի. հարուստները վճարում էին 48 դիրհեմ, միջակները՝ 24, իսկ աղքատները՝ 12[32]։ Հայաստանի համար մենք չունենք գլխահարկի ընդհանուր գումարի մասին տեղեկություններ, սակայն Ժ. Լորանը ենթադրաբար հաշվելով գտնում է, որ Հարունի օրոք վճարված 13 միլիոն դիրհեմի 9 միլիոնը գլխահարկ է։*

*Գլխահարկը պետք է վճարվեր տարին մեկ անգամ և քրիստոնյա (ոչ մահմեդական) հպատակը պարտավոր էր այն անձամբ վճարելու հարկահան պաշտոնյային։ Գլխահարկը լինում էր միայն դրամական։*

*Հարկերն ըստ շնչի գանձելու սկզբունքը քայքայում էր հայ շինականի նահապետական գերդաստանը, որն աստիճանաբար տրոհվեց մանր միավորների։ Քայքայված մանր տնտեսություններն առանձին-առանձին շատ թույլ*

---

28 Հ. Նալբանդյան, *Արաբների հարկային քաղաքականությունը Հայաստանում՝ «Լրաբեր հաս. գիտ.», 1954, № 2, էջ 77—79։*

29 Ղևոնդ, *էջ 125։*

30 *Նույն տեղում, էջ 127։*

31 Հ. Նալբանդյան, *Արաբների հարկային քաղաքականությունը Հայաստանում, էջ 79—80։*

32 *Sե՛ս Abu Yusuf*, Kitab al-kharaj, p. 69.

*էին, հետևաբար ազատ երկրագործն ակամայից կախման մեջ էր ընկնում հողատեր նախարարից։*

*Հարուն ալ Ռաշիդի իշխանության տարիներին (786—809) Արմինիա ոստիկանությունը վճարում էր 13 միլիոն դիրհեմ (արծաթ) տարեկան հարկ։ Բնականաբար այդ հսկայական գումարի կեսից ավելին բուն Հայաստանն էր վճարում, քանի որ ըստ տարածության նա էր ամենախոշոր միավորը ոստիկանության մեջ։*

*Աբբասյանները ոչ միայն մեծ չափով ավելացրել էին հարկերը (մանավանդ հողահարկը), այլև առաջնակարգ նշանակություն էին տալիս դրամական հարկին, որի հետևանքով ոսկու և արծաթի ճգնաժամ ստեղծվեց։ Պատմիչները պարզ գրում են՝ «հատաւ գիւտ արծաթոյ յաշխարհէս Հայոց»[33]։ Շինականն արծաթ ձեռք բերելու համար բնականաբար ստիպված էր վաշխառուներին դիմել և ի վերջո չդիմանալով անտանելի վիճակին, ապաստանում էր լեռներն ու քարայրերը և կամ ապստամբում, սպանելով առաջին հերթին հենց արաբ հարկահաններին։*

*Կիրառվում էր նաև մարդահարկը (խաշար, պարտադիր ձրի շինարարական աշխատանք)։ Եզիդ իբն Ուսայդ ոստիկանը (752—754) Կարնո քաղաքը Բյուզանդիայից վերագրավելուց հետո, քանդված պարիսպները բնակիչներին վերակառուցել տվեց մարդահարկի միջոցով։ Նվաճված ժողովուրդները պարտավոր էին տալ նաև պարենատուրք, այսինքն կերակրել արաբական կայազորներին և օթևան տալ զինվորներին։*

*Եկեղեցականները թեև տեսականորեն հարկերից ազատ էին[34], սակայն իրականում նրանք պարտավոր էին պարբերաբար ընծաներ տալ ոստիկաններին, այլապես նրանց բացեիբաց կողոպտում էին։ Ըստ Ղևոնդ պատմիչի, Սուլայման ոստիկանի օրոք նրա փեսան՝ գլխավոր հարկահան Իբն Դոկեն (հավատուրաց հույն) Դվինի հայրապետանոցի հոգևորականներին հավաքում և պահանջում է իրեն հանձնել եղած հարստությունը։ Նրա առջև դիզում են անչափ հարստություն[35], որից նա ցանկացածը հափշտակում է։ Աբբասյանները հաճախ հրաժարվում էին վճարել Հայոց հեծելազորին հատկացված տարեկան ռոճիկը և պարտավորեցնում էին հայ նախարարներին իրենց միջոցներով պահել հայկական հեծյալ զորամասերը։*

*Ամենասարսափելին այն էր, որ VIII դարի երկրորդ կեսում արաբ հարկահաններն անձամբ էին շրջում հայկական գավառներում և օրինական ու ապօրինի միջոցներով կողոպտում շինականներին։ Արաբ հարկահաններն իրենց թույլ էին տալիս ամեն տեսակ կամայականություններ։ Այդ երևույթի մասին վկայում է արաբ մատենագիր Աբու Յուսուֆը։ Խալիֆայության մեջ կիրառվում էր նաև հարկերը կապալով տալու սիստեմը, որը նույնպես չարաշահումների առիթ էր տալիս։*

*Արմինիայի տարեկան հարկի ու նրա չափերի մասին հաղորդումներ կան մի քանի արաբ մատենագիրների մոտ, իսկ հայ պատմիչներից միայն Սամուել Անեցին է որոշ տեղեկություններ տալիս։*

*IX դ. աշխարհագրագետ Իբն Խորդադբեհը վկայում է, որ Արմինիան տա-*

---

33 Ղևոնդ, էջ *139*։

34 Սամուել Անեցի, էջ *82*։

35 Ղևոնդ, էջ *169*։

րեկան վճարում է 4 միլիոն դիրհեմ[36]։ Դարի վերջին ու X դարի սկզբին ստեղծագործող Իբն ալ-Ֆակիհը նշում է, որ այն 2 միլիոն 33 հազար 985 դիրհեմ է[37], իսկ X դարի սկզբի աշխարհագրագետ Կուդաման հիշում է Արմինիայի համար 4 միլիոն և Տարոն երկրամասին՝ 100 հազար դիրհեմ[38], ուստի ընդհանուրը կազմում է 4 միլիոն 100 հազար դիրհեմ։ Վերջինս նախքան ամբողջ խալիֆայության հարկերի ցուցակը հիշելը զգուշացնում է, որ դա 204 (819—820) հիջրի թվականի հարկացուցակն է։ Արմինիայի տարեկան հարկը, բնահարկի հետ միասին հիշում են X դարի մատենագիր Ջահշիյարին[39] ու XIV դարի հայտնի պատմիչ Իբն Խալդունը[40], ընդ որում նշվում է, որ դա Հարուն ալ-Ռաշիդի (786—809) շրջանի հարկացուցակն է։ Այս ցուցակում Արմինիայի տարեկան հարկը 13 միլիոն դիրհեմ է։

Հարկավ այս բոլոր տեղեկությունները վերաբերում են միայն աբբասյան ժամանակաշրջանին։ Ուստի կարելի է ենթադրել, որ Մանսուր և Հարուն ալ-Ռաշիդ խալիֆաների օրոք Արմինիայի տարեկան հարկը 13 միլիոն դիրհեմ էր։ Մամունի օրոք դա իջավ 4 միլիոն 100 հազարի, իսկ Իբն ալ-Ֆակիհի հիշած 2 միլիոն 33 հազար 985 դիրհեմը, հավանաբար, կարճ ժամանակով (գուցե Մամունի վերջին տարիներին կամ երկու հաջորդների՝ Մուտասիմի (833—842) և Վասիկի (842—847) օրոք վճարված հարկագումար է։ Մուտավաքքիլի ժամանակ (847—861) հարկերը նորից բարձրացան և գուցե այս շրջանին է վերաբերում Իբն Խորդադբեհի հիշած 4 միլիոնը։

Հայաստանի տուրքերի մի մասը վճարվում էր բնահարկի ձևով։ Օմայան ժամանակաշրջանում բնահարկի հիմնական տեսակը ցորենն էր։

X դարի արաբ մատենագիր Ջահշիարիի հարկացուցակում Հայաստանը աբբասյան ժամանակաշրջանում որպես բնահարկ տալիս էր «մահֆուրա» գորգեր՝ քսան հատ, գունազարդ (ռակմ) գործվածքեղեն՝ հինգ հարյուր ութսուն կտոր, աղած, մշակված ձուկ՝ տաս հազար ռաթլ (լիտր), տառեխ՝ տաս հազար ռաթլ, բազեներ՝ երեսուն հատ, ջորիներ՝ երկու հարյուր հատ[41]։

Ջահշիարիի այդ հարկացուցակում բնահարկի մեջ առաջինը հիշվում է 20 գորգը, որը մահֆուրա էր կոչվում։ Արաբ մատենագիրների որոշ տվյալներից երևում է, որ մահֆուրա էին կոչվում Կարնո քաղաքում պատրաստված գորգերը և դրա համար էլ առանձին մատենագիրներ քաղաքը հիշատակում են այդ անունով։ Հայկական գորգագործությունն ընդհանրապես կապված է եղել Կարին քաղաքի հետ, որի գորգերն այնքան հռչակված էին, որ ըստ արաբ աշխարհագրագետ Յակուտի վկայության, արևելյան ժողովուրդների մոտ խալի (գորգ) բառը Կարին քաղաքի արաբական ձևից՝ Կալիկալայից է առաջացել։

Հայկական գորգերի հռչակը տարածված էր ամբողջ խալիֆայության մեջ, հաճախ հայ իշխանավորները աբբասյան խալիֆաներին թանկարժեք գորգեր էին ուղարկում որպես ընծա։

Չափազանց հետաքրքրական է բնահարկի մեջ գործվածքեղենի հիշատա-

---

36 Bibl. Geogr. Arab., VI, p. 124.
37 Bibl. Geogr. Arab., V, p. 297.
38 Bibl. Geogr. Arab., VI, p. 249.
39 *Jahshiyari*, Bibl. Arab. Hist. und Geogr., I, 182a.
40 *Ibn Khaldoun*, Kitab al-Ibar, Bulaq, 1284 (1867), I, p. 151.
41 *Jahshiyari*, Bibl. Arab. Hist. und Geogr., I, p. 182a.

կումը։ Արաբերեն բնագրում օգտագործված «ռակմ» բառը, ըստ երևույթին, օգտագործվում է հայկական աղբյուրների մեջ հիշատակված ոսկեթել ու դունազարդ դիպակի իմաստով։ Ջահշիարիի ցուցակում կտոր բառի դիմաց Իբն Խալդունը (որը նույն ցուցակը տալիս է փոքր տարբերությամբ), ռաթլ (լիտր) արտահայտությունն է օգտագործում։ Ուստի կտոր արտահայտությունը պետք է համարել որոշ քանակությամբ կերպաս՝ զգեստ կարելու համար, որը մոտավորապես մեկ ռաթլ (լիտր) ծանրություն պետք է ունենար։

Գորգերի և գործվածքեղենի հիշատակումը խնդրո առարկա սույն ցուցակում մի անգամ ևս վկայում է, որ արաբական տիրապետության ժամանակաշրջանում արհեստագործության այս երկու ճյուղերը զարգացած վիճակում էին։

Ցուցակում հիշվում են ձկան երկու տեսակ, որոնցից յուրաքանչյուրից սաս հազարական ռաթլ էր վերցվում։ Ջահշիարին հիշատակում է «աղած, մշակված ձուկ» արտահայտությունը, ապա տարեխը, որն առանձնահատուկ հռչակ ուներ արաբական խալիֆայության մեջ և կոչվում էր Թիրրիխ։

Հայաստանից վերցված տարեկան երեսուն բազեն բնականաբար անհրաժեշտ էր որսորդության համար։ X դարի մատենագիր Մասուդին բազեների մասին խոսելիս հիշում է, որ Հայաստանում դրանք սպիտակ են լինում՝ «ձյունի առատության պատճառով»։ Հայտնի էր նաև Հայաստանի ջորին, որի բուծմամբ հատկապես նշանավոր էր Անձևացյաց գավառը։ Արաբ պատմիչների վկայությունները Հայաստանի ջորիների տոկունության ու ճկունության մասին, հասկանալի են դարձնում, թե ինչու բնահարկի ցուցակում որպես տարեկան հարկ հիշված է նաև երկու հարյուր ջորի։

Աբբասյան ժամանակաշրջանի բնահարկը թեև պակաս էր դրամական հարկի արժեքից, այնուամենայնիվ բավական մեծ գումար էր կազմում[42]։

## 3. ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԻՐԱՎԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՆԵՐՔՈ

Խալիֆայության տիրապետության շրջանում անհավասարությունը հասարակության մեջ արտահայտվում էր ոչ միայն շինականի և ընդհանրապես ռամիկի ու ստրուկի շահագործմամբ, այլև այն անիրավահավասարությամբ, որին ենթակա էր ոչ մահմեդական (այլակրոն) ազգաբնակչությունը և դրա մասն էր կազմում նաև հայ ժողովուրդը։

Խալիֆայությունը և ընդհանրապես մահմեդական երկրները միջին դարերում, չունեին կազմավորված օրենսգիրք (Դատաստանագիրք), ոչ էլ խստորեն ընդունված օրենսդրություն, ուստի իրավական հարցերում առաջնորդվում էին մահմեդական իրավագիտությամբ (ֆիկհ), որը հիմնականում կազմավորվել էր VIII դարի երկրորդ և IX դարի առաջին կեսում։ Մահմեդական իրավագիտության աղբյուրները համարվում են Ղուրանը և Մուհամմադին վերագրվող ավանդությունները, որոնք իրականում մեծամասնությամբ կազմավորվել էին նվաճումներից հետո նվաճված երկրներում, իրենց մեջ ընդունելով հռոմեաբյուզանդական և իրանական մշակույթների (հատկապես իրավական ավանդությունների) որոշ ժառանգություն։ Այս հիմքի վրա մահմեդական հո-

42 Ա. Տեր-Ղևոնդյան, Հայաստանի բնահարկը արաբական ժամանակաշրջանում, «Լրաբեր հաս. գիտ.», 1969, № 2։

գևորական իրավագետները (ֆակիհ) զարգացրին իրավագիտությունը (իր չորս դպրոցներով՝ մազհար), որը համարվում է մահմեդականության օրենքը (շարիա, շարիաթ)։

Մահմեդական իրավագիտությունը հասարակության մեջ դասակարգային բաժանում գրեթե չի ճանաչում։ Նրա համար չկան ազատներ և անազատներ, այլ կա հետևյալ եռակի բաժանումը՝ մահմեդականներ, ոչ մահմեդականներ և ստրուկներ։

Ոչ մահմեդականների՝ զիմմիների (քրիստոնյաներ, հրեաներ, զրադաշտականներ, հեթանոսներ) իրավական վիճակը ընդհանուր գծերով էր ձևակերպված իրավագիտության մեջ։ Թեև տեսականորեն որոշ տարբերություն կար Ս. Գրքի ժողովրդի (ահլ ալ-քիտաբ), այսինքն քրիստոնյաների ու հրեաների և զրադաշտականների ու ընդհանրապես հեթանոսների միջև, այսուհանդերձ վերջին հաշվով նրանք բոլորը նման իրավիճակ ունեին։

Ոչ մահմեդականներն ընդհանուր առմամբ կոչվում էին հովանավորյալ ժողովուրդ (զիմմի կամ ահլ ալ-զիմմա)։ Նվաճման ժամանակ հպատակություն հայտնած և որոշ պարտավորություններ ստանձնած ժողովուրդները վայելում էին մահմեդականների «հովանավորությունը»։

Զիմմի հպատակների իրավունքներն[43] ունեին քաղաքական, եկեղեցական և քաղաքացիական բովանդակություն։

Արմինիայի, Վերին Միջագետքի (Ջազիրա), Ասորիքի կամ Եգիպտոսի կառավարիչները կարող էին միայն մահմեդական լինել, թեև հիշյալ երկրներում հիմնականում ապրում էր քրիստոնյա ազգաբնակչություն (հայ, ասորի, ղպտի)։

VIII դարում, երբ դեռ արաբական խալիֆայությունը նոր էր կազմավորվում, տեղական քրիստոնյա ժողովուրդներին մասամբ թույլ էր տրվում վարչական կյանքին մասնակցելու։ Սակայն արդեն VIII դարի առաջին կեսում Օմայյաններն սկսեցին սահմանափակել քրիստոնյա (ասորի և ղպտի) պաշտոնյաների իրավունքները։ Օմար Բ խալիֆան, որը հայտնի էր իր կրոնական մոլեռանդությամբ, ըստ պատմիչների վկայության, շեշտում էր այն պարագան, որ միայն մահմեդականը պետք է իշխող լինի, իսկ ոչ մահմեդականը երբեք բարձր դիրք չպետք է ունենա հասարակության մեջ։ Իրոք, նրա ժամանակ Եգիպտոսում շատ ղպտի (եգիպտացի քրիստոնյա) պաշտոնյաներ փոխարինվեցին արաբներով։ Օմայյանների օրոք պետական պաշտոնները հանձնըվում էին հիմնականում միայն արաբներին, իսկ քանի որ արաբները որոշ պաշտոնների նկատմամբ հակում չունեին, դրա հետևանքով քրիստոնյաները դեռ որոշ չափով պահպանում էին իրենց դիրքը։ Սակայն Աբբասյանների ժամանակ, երբ ամեն մի մահմեդական անկախ ցեղային ծագումից, կարող էր բարձր պաշտոն ստանալ, քրիստոնյաներն առավել ևս դուրս մղվեցին պետական պաշտոններից։

Հայաստանը որպես քրիստոնյա երկիր, թեև շատ բանով նման էր Միջագետքին, Ասորիքին ու Եգիպտոսին, այսուհանդերձ ուներ նաև իր առանձնահատկությունները։ Քրիստոնյա հայը, չէր կարող լինել Արմինիայի ոստիկան, բայց բուն Հայաստանի կառավարիչը (Հայոց իշխան) նշանակվում էր միշտ հայ իշխաններից և դա ընդունված երևույթ էր[44], թեև խալիֆաները ձգտում էին

[43] *Abu Yusuf*, Kitab al-kharaj, Bulaq, 1302 (1884), p. 68—69 A. Tritton, The Caliphs and their non-moslem Subjects, London, 1930, p. 5—8.

[44] *A. Fattal*, Le statut legal des non musulman en pays d'Islam, Beyrouth, 1958, p. 297—298.

երբեմն վերացնել հայերի այդ իրավունքը՝ ուշացնելով նոր Հայոց իշխանի նշանակումը, այսուհանդերձ այդ պաշտոնը մնում էր հայերի ձեռքում։ Հայը կարող էր լինել նաև ոստիկանի տեղակալը (Բաթրիկ ալ-Բաթարիկա), ինչպիսին էր Բագարատ Բագրատունին։ Նույնը պետք է ասել նաև սպարապետի և հայկական գնդերի մասին, որոնք միշտ էլ մնացին ի հեճուկս խալիֆայության բոլոր փորձերի, որոնք ձեռնարկվում էին հայկական այրուձին ոճիկից զրկելու, քայքայելու և ցրելու նպատակով։ Այս բոլորի հիմքն այն էր, որ Հայաստանում պահպանվել էր հողատեր (ֆեոդալ) դասը[45]։

Արաբական խալիֆայության մեջ կային մի քանի ազգային եկեղեցիներ՝ ասորի նեստորականների (Նստավայրը Բաղդադում), ասորի Հակոբիկների, հունադավան Մելքիտների, Մարոնիների, հայկական և ղպտի (Ալեքսանդրիայի աթոռը) եկեղեցիները։ Այս եկեղեցիների պետերը (կաթողիկոս կամ պատրիարք) եկեղեցական ժողովի կողմից ընտրվելուց հետո ընդհանրապես պետք է իրենց հաստատումն ստանային Օմայան, ավելի ուշ Աբբասյան խալիֆաների ներկայացուցիչներից։ Հաճախ խալիֆաներն (կամ կառավարիչները) անձամբ միջամտում էին և արգելում որևէ պատրիարքի ընտրությունը։

Այսպիսի վիճակում էր նեստորականների կաթողիկոսը, որի ընտրությունը եպիսկոպոսների կողմից սոսկ ձևական էր և խալիֆան անձամբ էր նշանակում նրան։

Եգիպտոսում Ալեքսանդրիայի պատրիարքները նշանակվում էին տեղի արաբ կառավարիչների կողմից, որոնք մեծ մասամբ նախապատվությունը տալիս էին միայնակ թեկնածուներին, թեև կաշառք ընդունելու կամ միջամտության դեպքում երբեմն բացառություն էին անում՝ նշանակելով մելքիտ (երկաբնակ) թեկնածուի։

Հայոց կաթողիկոսի ընտրության հարցում նույնպես արաբ ոստիկանները երբեմն ձգտում էին միջամտել, բայց քանի որ Հայաստանում գոյություն ուներ Հայոց իշխանը, որը միջնորդ էր խալիֆայական իշխանությունների ու հայ ժողովրդի միջև, ապա ոստիկանի դերն այս դեպքում սահմանափակվում էր։ Արաբ ոստիկանները շատ հազվադեպ էին միջամտում Հայոց կաթողիկոսի ընտրությանը, ինչպես, օրինակ, Սուլայման ոստիկանը, միջնորդեց, որպեսզի Սիոն Բավոնացին ընտրվի կաթողիկոս՝ 767 թ., քանի որ նա Սիոնի նկատմամբ բարձր համարում ուներ դեռ այն ժամանակվանից, երբ վերջինս Աղձնիքի (Սասուն ու Նփրկերտ) եպիսկոպոսն էր եղել[46]։ Բայց հայտնի չէ մի դեպք, երբ ոստիկանը կամ այլ արաբ իշխանավոր, արգելեր կամ խափաներ որևէ հայ կաթողիկոսի ընտրությունը։ Իսկ Հայոց իշխանն արդեն վճռական ձայն ուներ կաթողիկոսի ընտրության հարցում։

Ընդհանուր առմամբ Հայոց կաթողիկոսը Հայաստանին վերաբերող քաղաքական և այլ հարցերի առթիվ միջնորդում էր նույնիսկ խալիֆայի առջև։ Օրինակ, Հովհան Օձնեցու անձամբ բանակցելը խալիֆայի հետ, կամ Սահակ Ձորափորեցու բանակցելու համար Խառան գնալը հենց այս նպատակով էր։ Լինում էին դեպքեր, երբ Արմինիայի ոստիկանները Հայաստանի սպարապետի կամ իշխանների հետ վեճի ժամանակ կաթողիկոսի միջնորդությանն էին դիմում ինչպես, օրինակ, Հոլ ոստիկանը խնդրել էր Դավիթ Կակաղեցուն՝ միջա-

---

45 Նույն տեղում։

46 Դրասխանակերտցի, էջ 136։

մտելու, որպեսզի Սևադայի հետ ապստամբած Սմբատ Բագրատունին և այլ նախարարներ հրաժարվեն իրենց մտադրությունից։

Մյուս կողմից Հայոց կաթողիկոսն իր ժողովրդի միակ ներկայացուցիչը չէր խալիֆայության առջև (քանի որ կար Հայոց իշխանը), ինչպես ասորի նեստորականների պատրիարք կաթողիկոսն էր, կամ Եգիպտոսի ղպտիների պատրիարքը։ Վերջիններս զրկված լինելով քաղաքական ինքնուրույնությունից (քանի որ վաղուց կորցրել էին իրենց տեղական ֆեոդալներին), իրենց կրոնապետերի մեջ տեսնում էին նաև իրենց քաղաքական պետին։ Այս առումով նեստորականների կաթողիկոսը, որ նստում էր Բաղդադում, մեծ հեղինակություն էր վայելում։ Պաշտոնապես Աբբասյանների աչքում նա համարվում էր խալիֆայության բոլոր քրիստոնյաների ամենահեղինակավոր կրոնապետը, և իր հաստատումն ստանում էր անձամբ խալիֆայից։

Ըստ մահմեդական իրավագիտության, քրիստոնյաներն իրավունք չունեին կառուցել նոր եկեղեցիներ, կամ հները նորոգել։ Սակայն այստեղ կային որոշ նրբություններ, որոնք կարելի էր յուրովի մեկնաբանել, ըստ օրվա տիրակալի վերաբերմունքի։ Օմայյաններն ու Աբբասյանները թեև երբեմն քանդում էին եկեղեցիները, սակայն երբեմն էլ թույլ էին տալիս նորերը կառուցել։ Այս հարցում իշխում էր կամայականությունը։

Հայաստանում նույնպես նոր եկեղեցիներ կառուցելը սկզբունքորեն արգելված էր, սակայն գիտենք եկեղեցիներ կառուցելու առանձին դեպքեր, իսկ քանդման դեպքերը, ըստ երևույթին, նույնպես եզակի են եղել Հայաստանում։

Եկեղեցական արարողությունների համար էլ խալիֆայությունը սահմանափակումներ էր դրել։ Արգելված էր քաղաքների միջով խաչերով ու սրբապատկերներով եկեղեցական թափորների անցնելը, եկեղեցիներում կոչնակներ հնչեցնելը, ճանապարհների վրա և այլ վայրերում խաչեր կանգնեցնելը և այլն։ Սակայն սրա հետ մեկտեղ մահմեդական որոշ իրավագետների մոտ այն կարծիքը կար, որ մահմեդական տիրակալներն ընդհանրապես չպետք է միջամտեն քրիստոնյաների կրոնական ծիսակատարություններին ու սովորություններին, եթե դրանք վնաս չեն բերում մահմեդական համայնքին։ Եթե խաչը կամ սրբապատկերը եկեղեցում կամ նրա կալվածքներում էին զետեղվում, ապա իշխանությունները չէին միջամտում։

Եկեղեցիների ու վանքերի նկատմամբ կամայականություններ արաբները գործադրում էին նաև Հայաստանում, մանավանդ ապստամբությունների և ընդհատումների ժամանակ, երբ արաբները տարբեր առիթներով ներխուժում էին հայկական վանքերը և կողոպտում։

Հայերի, ասորիների և ղպտիների քաղաքական իրավազուրկ վիճակի ու նրանց եկեղեցիների նեղ դրության հետևանքով այդ ժողովուրդները քաղաքացիական խիստ սահմանափակ իրավունքներ ունեին։ Հասարակ ժողովուրդը, լինի քաղաքներում թե գյուղերում, իր վրա էր զգում խտրականության ամբողջ ծանրությունը։

Օրենքի առջև քրիստոնյան մահմեդականի հետ բոլորովին հավասար չէր ոչ միայն հարկերի տեսակետից (գլխահարկ էր վճարում), այլև հասարակական վայրերում մահմեդականից ցածր պետք է նստեր և այլն։

Դատարանում քրիստոնյայի վկայությունը մահմեդականի դեմ չէր ընդունվում։ Ոչ մահմեդականին թույլատրվում էր մահմեդականի համար վկայել միայն բացառիկ դեպքերում, օրինակ՝ եթե հեռավոր վայրում մահամերձ

մահմեդականն իր կտակի համար չէր ունենում մահմեդական վկաներ, ապա նա կարող էր դիմել քրիստոնյային։ Մահմեդական կինը կարող էր ամուսնանալ միայն մահմեդական տղամարդու հետ, իսկ մահմեդական տղամարդը կարող էր քրիստոնյա կին ունենալ։ Եթե քրիստոնյա ծնողներից որևէ մեկը մահմեդականություն ընդուներ, երեխաները մահմեդական էին համարվում։ Մահմեդականի սպանության համար քրիստոնյան մահապատժի էր ենթարկվում, բայց հակառակը մեծ մասամբ չէր լինում։ Արյան գին վճարելու դեպքում քրիստոնյային սպանող մահմեդականը պակաս էր վճարում, քան մահմեդականին սպանող քրիստոնյան (սպանության դեպքում տուժող կողմը կարող էր պահանջել արյան վրեժ կամ արյան գին)։

Ամեն մի պատեհ առիթով հավատուրացության պահանջը սովորական երևույթ էր Աբբասյանների համար։ 754 թ. Արմինիայի ոստիկան Խուզայման Արծրունի Համազասպ և Սահակ իշխաններին առանց որոշակի մեղադրանքի (հավանաբար կասկածի հիման վրա) հավատուրացության կամ մահվան երկընտրանքի առջև դրեց և Արծրունի իշխանները չուրանալով իրենց հավատը, տանջամահ արվեցին[47]։

Քրիստոնյաները պարտավոր էին նաև հատուկ զգեստներ ունենալ, որպեսզի տարբերվեն մահմեդականներից։ Որոշ զգեստներ կային, որ քրիստոնյան չպետք է հագներ, գլխին մահմեդականի ապարոշ չպետք է կրեր, ձիու վրա թամբով չպետք է նստեր, մեջքին կապեր հատուկ գոտի։ Մուտավաքքիլը հրաման տվեց, որ քրիստոնյաները դեղին զգեստներ հագնեն և գլուխներին նույնպես դեղին ապարոշ կապեն։ Նա նույնիսկ քրիստոնյաներին արգելեց ձի նստել։

Հայերի, ասորիների և ղպտիների իրավազուրկ վիճակը Աբբասյանների օրոք ապստամբության էր մղում նրանց։ Հայաստանում ծագած ապստամբություններից թեև առաջին երեքը (703, 747—750, 774—775) արյան մեջ խեղդվեցին, սակայն չորրորդը (850—852) վերջնականապես չճնշվեց և երկիրը կարողացավ պահպանել իր ինքնուրույնությունը։

Այս և նման փաստերի բազմակողմանի համեմատության միջոցով հնարավոր է դառնում քիչ թե շատ հստակ պատկերացում կազմել հայ ժողովրդի քաղաքական, իրավական, եկեղեցական վիճակի և մշակութային կյանքի դառնությունների, ինչպես և այն համառ ազատագրական պայքարի մասին, որը մղեց հայ ժողովուրդը արաբ նվաճողների դեմ և որի տրամաբանական վախճանն էր հայ պետականության վերականգնումը Աբբասյան խալիֆայության թուլացումից հետո՝ ի դեմս Բագրատունյաց թագավորության։

## 4. ՔԱՂԱՔՆԵՐԸ, ԱՐՀԵՍՏՆԵՐԸ ԵՎ ԱՌԵՎՏՈՒՐԸ VII—IX ԴԱՐԵՐՈՒՄ

Բյուզանդապարսկական 591 թ. և հատկապես 629 թ. պայմանագրերի կնքումից հետո Հայաստանն ապրեց համեմատաբար խաղաղ պայմաններում, որոնք մերթ ընդ մերթ ընդհատվում էին պատերազմներով, սակայն վերստին հաստատված խաղաղությունը տևեց մինչև VII դ. վերջը։ Այդ խաղաղ ժամանակաշրջանում Հայաստանում նպաստավոր պայմաններ ստեղծվեցին տարանցիկ առևտրի հետագա զարգացման համար։

47 Ղևոնդ, 42էս։

Արևելքի և Արևմուտքի՝ Հնդկաստանի, Իրանի, Բյուզանդիայի և Միջերկրականի ավազանի միջև առևտուրը մեծ մասամբ կատարվում էր երկու ճանապարհով՝ Հայաստանի և Վերին Միջագետքի վրայով։ Արաքսի հովտի միջով անցնող մայրուղու վրա հիմնական առևտրական կենտրոնը Դվինն էր, իսկ Վերին Միջագետքում այդպիսին էր Մծբինը։ Այդ քաղաքների վրայով տանում էին Հնդկաստանից և այլ կողմերից բերված ապրանքներ՝ մետաքս, թանկարժեք ակնեղեն, ոսկեղեն, համեմունք և գորգեր։ Սակայն Վերին Միջագետքը 572—591 և 602—629 թթ. պարսկաբյուզանդական պատերազմներից անհամեմատ ավելի էր տուժել, քան Հայաստանը և այդ բացասաբար էր ազդել առևտրի զարգացման վրա։ Բացի դրանից VII դարում Վերին Միջագետքը պայքարի թատերաբեմ դարձավ արաբների և բյուզանդացիների միջև։

Հայաստանը համեմատաբար ավելի նպաստավոր պայմաններում էր VII դարում, մանավանդ 652 թ. կնքված պայմանագրից հետո, մինչև 689 թ. երկիրը վայելում էր խաղաղություն և հայոց իշխանապետությունն ըստ էության չեզոք պետության դիրք էր գրավել Բյուզանդիայի և խալիֆայության միջև։ Շնորհիվ այս չեզոք դիրքի, ամբողջ VII դարում Իրանից Փոքր Ասիա ընթացող մայրուղին (որը ճյուղ տալով հասնում էր Տրապիզոն) ոչ միայն պահպանեց իր գոյությունը, այլև մեծապես աշխուժացավ։

Անանիա Շիրակացու թվաբանական հարցերից մեկում հետաքրքիր է նկարագրված Իրանից Հայաստան եկող առևտրական ճանապարհը. մի վաճառական Բահլում ձեռք է բերում արքունի (շահուար) մարգարիտներ և վաճառում է, անցնելով Գանձակ քաղաքը, ապա մտնում Հայաստան և մաս առ մաս վաճառում Նախճավան և Դվին քաղաքներում, ապա հասնում է Շիրակ[48]։ Արևելքից բերվում էին նաև այլ ակնեղեններ։

Մաքսերը գանձվում էին ոչ միայն երկրից երկիր, այլև քաղաքից քաղաք ապրանք տեղափոխելու դեպքում։ Անանիա Շիրակացու թվաբանական խնդիրներից մեկում ասված է, որ մի վաճառական մոտ երեք քաղաքում բաժ (մաքս) վճարելուց հետո 2376 դահեկանից իրեն մնում է 11 դահեկան։ Նման հարցադրումներն ինչքան էլ որ պայմանական լինեն, այնուամենայնիվ իրականության հետ ինչ որ կապ պետք է ունենան։

Առևտրի և ընդհանրապես տնտեսական կյանքի զարգացումը զգալի դարձավ մանավանդ Հայաստանի տարբեր հատվածների միավորումից հետո։ VII դարում առևտրի զարգացման մասին որոշ գաղափար են տալիս նաև Դվինում գտնված դրամները, որոնց առատությունն այդ հարյուրամյակում ուշադրություն է գրավում։ Սասանյան և բյուզանդական դրամներ են գտնվել, որոնք պատկանում են V—VII դարերին։ Սակայն եթե երկարատև պեղումների ընթացքում առաջին երկու դարերում թողարկված հազիվ երկու տասնյակ դրամ է գտնվել, ապա VII դարից գտնվել է երեք հարյուրից ավելի դրամ։ Նման բացառիկ առատությունն, անկասկած, վկայում է այդ դարաշրջանում դրամական շրջանառության ծավալի մասին։

Վաճառականների խավը VII դարում արդեն կարևոր տեղ էր գրավում և Սեբեոսի պատմության մեջ նախարարների ու եկեղեցականների հետ համատեղ հիշվում է որպես հեղինակություն վայելող խավ։ Կոստանդ կայսեր

---

48 «Вопросы и решения вардапета Анании Ширакаци», издал и перевел И. А. Орбели, Птг., 1918, стр. 18.

*հարձակման ժամանակ, երբ Թեոդորոս Ռշտունու համախոհներն իրենց գանձերով ապաստանեցին ամրոցները, այնտեղ էին ամբողջ երկրի՝ եկեղեցու, իշխանների և վաճառականների գանձերը*[49]։

*Հայաստանի առևտրական ուղիների մասին ընդհանուր պատկերացում է տալիս հայագիտության մեջ «Մղոնաչափք» խորագրով հայտնի աշխատությունը։ Դրանում արտացոլված է VII դարի առևտրական ուղիների պատկերը։*

*«Դվինից Կարին 200 մղոն է, Կարինից Փոսադուռն՝ 100, այնտեղից Կողոնիա՝ 90...։ Դվինից Խլաթ 170 մղոն է, այնտեղից Քղիմար՝ 80, այնտեղից Ուռհա՝ 180, այնտեղից Եփրատ գետ՝ 40, այնտեղից Դամասկոս՝ 120, այնտեղից Թափոր լեռը՝ 90, այնտեղից Երուսաղեմ՝ 100։ Դվինից Բերդկունք 60 մղոն է, այնտեղից Պարտավ՝ 160, այնտեղից Կասպից ծով՝ 90։ Դվինից Նախճավան 70 մղոն է, այնտեղից Գանձակ Շահաստան՝ 120, այնտեղից Տիզբոն՝ 370, այնտեղից Ակողա (Քուֆա)՝ 70, այնտեղից Բարա՝ այնտեղից Պարսահայան ծով՝ 20։ Գանձակից Նինվե 120 մղոն է, այնտեղից Մծբին՝ 120, այնտեղից Ուռհա՝ 150։ Նախճավանից Արտավետ (Արտևատ)՝ 200 մղոն է, այնտեղից Վարդանակերտ՝ 70, այնտեղից Փայտակարան՝ 60, այնտեղից Կասպից ծով՝ 60։ Դվինից Կողբ 50 մղոն է, այնտեղից Կոտագեղն՝ 120, այնտեղից Տփղիս՝ 140, այնտեղից Հունարակերտ՝ 70, այնտեղից Պարտավ՝ 100»*[50]։

*Հիշյալ ճանապարհների մեջ հատկապես կարևոր էր Արաքսի հովտով ընթացող «Արքունի պողոտան», որը գալով Պարսկաստանից ու Ատրպատականից մտնում էր Հայաստան և անցնելով Նախճավան, Դվին և Կարին քաղաքներով, հասնում էր Փոսադուռն, որտեղից մտնում էր Հունաց աշխարհը՝ Բյուզանդիա։*

*Ահա այս առևտրական միջազգային մայրուղու վրա էին զարգանում VII դարի Հայաստանի քաղաքները՝ թե հին և թե նոր։ Հին քաղաքներից զարգանում էր հատկապես Դվինը, մասամբ և Վաղարշապատը։ Դվինում VII դարում վերակառուցվել է Մայր տաճարը և, հավանաբար, նաև կաթողիկոսական պալատը։ Քաղաքի զարգացման մասին են վկայում նաև հնագիտական պեղումների արդյունքները։ Քաղաքի շերտագրության մեջ հատուկ տեղ ունի VI դարի II կեսից VIII դարի I կեսը հասնող հնագիտական շերտը, որն ընդգրկում է ամբողջ VIII դարը և զարգացման հատուկ շրջան է։ Ուշագրավ են նաև Վաղարշապատում VII դ. կառուցված ճարտարապետական հուշարձանները՝ Հռիփսիմեի և Գայանեի տաճարները, ինչպես նաև Վաղարշապատի մերձակայքում վեր խոյացող Զվարթնոցը։*

*Այս ժամանակ առաջանում և զարգանում էին նաև այլ քաղաքատիպ ավաններ՝ Արուճը, Բագարանը, Շիրակաշատը (Մավրիկապոլիս), Թալինը, Երևանը և Մարմետը (Երվանդաշատ)։ Որպես նոր կազմավորվող քաղաքատիպ ավան հիշատակության արժանի է Արուճը։ Արաքսի հովտով անցնող մայրուղին հասնում էր Կարնո քաղաքը, որը հայտնի էր իր հարստությամբ*[51]։

*VII դարի արհեստների ուսումնասիրման համար գլխավոր աղբյուրը հնագիտական պեղումներն են և մասամբ մատենագրական տվյալները։ Դվինի*

---

49 Սեբեոս, *էջ 142։*

50 *«Շիրակացու մատենագրությունը», Երևան, 1944, էջ 355։*

51 Սեբեոս, *էջ 153։*

երկարամյա պեղումները[52] հարուստ նյութեր են տալիս դարբնության, խեցեգործության և այլ արհեստների մասին։ Հայտնաբերվել են այս շրջանին վերաբերող երկաթե իրեր, մեծ քանակությամբ զենքեր և այլն։ Գտնվել են որոշ քանակությամբ պղնձե զարդեր՝ օղեր, ապարանջաններ։ Ոսկե և արծաթե իրեր քիչ են հայտնաբերվել, այնուհանդերձ մատենագրական տեղեկություններ կան ոսկե և արծաթե ամանների և թանկարժեք մետաղներով զարդարված հագուստների ու զրահների մասին։

Անանիա Շիրակացին իր խնդիրներից մեկում նկարագրում է արծաթագործի աշխատանքը, թե ինչպես մի սկուտեղից (հավանաբար արծաթե) ձուլվում են տարբեր ամաններ, թաժակներ և այլն։

Խեցեգործության մասին բավական լավ պատկերացում են տալիս Դվինի պեղումների արդյունքները։ Դվինի բրուտանոցներն արտադրել են բազմատեսակ ամաններ, խողովակներ, կղմինդրներ, աղյուսներ և այլն։ Քաղաքն այդ ժամանակ ուներ իր ջրմուղի ընդարձակ ցանցը՝ կավե խողովակներից պատրաստված, որով ջուրը բերվում էր հեռավոր վայրերից և ապա տարածվում ամբողջ քաղաքում։

Դվինն ուներ նաև ապակեգործության արհեստանոցներ, որտեղ բազմատեսակ ապակի էր արտադրվում։ Դվինի վաղ միջնադարյան ապակին դեռ անտիկ ժամանակի կնիքն է կրում և Ասորիքի ու Միջագետքի ապակեգործության հետ սերտ կապ ունի։ Ոստայնագործության և գորգագործության մասին ունենք մատենագրական տեղեկություններ։

VII դարում Հայաստանի տնտեսական զարգացումն արդյունք էր այն յուրահատուկ պայմանների, որոնց մեջ գտնվում էին արևելյան որոշ երկրներ՝ Սասանյանների անկումից և Բյուզանդիայի թուլացումից մինչև արաբական խալիֆայության կայունացման միջև ընկած ժամանակահատվածում (630-ական թթ. մինչև դարի վերջը)։ Նման իրադրությունը, բացի Հայաստանից, նպաստեց նաև ուրիշ արևելյան երկրների տնտեսական զարգացմանը, օրինակ, Սողդ (Սոգդիանա)երկիրը Միջին Ասիայում նույնպես բուռն զարգացում ապրեց, որի լավագույն վկայությունն են հնագիտական պեղումների հարուստ արդյունքները Փենջիքենդում (Տաջիկստան)։ Այստեղից էր անցնում Չինաստանից Իրան և ապա Հայաստան ընթացող առևտրական կարևոր մայրուղին, որի վրայով բերվում էր մետաքս և այլ ապրանքներ։

Դրությունն արմատապես փոխվեց արաբական տիրապետության շրջանում, երբ երկիրն ընդհանրապես տնտեսական անկում ապրեց։

Հարկային ծանր լուծը մեծ չափով ծանրացրեց Հայաստանի ազգաբնակչության մեծամասնությունը կազմող գյուղացիության վիճակը հատկապես VIII դարի երկրորդ կեսում։ Որոշ նահանգներ գրեթե ամայացան։ Ասորի պատմիչը վկայում է, որ Չորրորդ Հայքը (Ծոփք) նախապես հոծ բնակչություն է ունեցել, խաղողի այգիներ և բազմատեսակ պտղատու ծառեր։ Սակայն իր օրոք (գրել է 775 թ.) այդ նահանգն ամայացել է և մեծ չափով պակասել բնակչությունը[53]։ Ըստ նրա՝ Աբբասյանների իշխանության սկզբում այնպիսի

52 Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, Ա, Երևան, 1952, էջ 85—152, Բ, 1982, էջ 10—88։ Ա. Քալանթարյան, Դվինի նյութական մշակույթը VI—VII դդ., Երևան, 1970, էջ 17—26։

53 Denys de Tell Mahré, p. 12.

սով էր տարածվել, որ Չորրորդ Հայքի բնակչությունը փախչում էր Ասորիք[54]։

Մեծ հարված կրեց նաև Հայաստանի վրայով կատարվող տարանցիկ առևտուրը, որի մայրուղին գալով Իրանից անցնում էր Արաքսի հովտով ու Կարնո քաղաքով հասնում Տրապիզոն[55]։ Արաբաբյուզանդական պատերազմների հետևանքով այս ճանապարհը գրեթե փակվեց, թեև պետք է նշել, որ նրա փոխարեն կար խալիֆայության ներսում գործող և մասամբ նաև Դարբանդի վրայով դեպի արևելյան Եվրոպա ընթացող ճանապարհը՝ հատկապես IX դ. առաջին կեսում։

Երկրի տնտեսական անկման և տարանցիկ առևտրի տուժելու հետևանքով դանդաղեց Հայաստանի քաղաքների զարգացումը։ Հ. Մանանդյանն ընդգծում է, որ Հայաստանի քաղաքներն այս շրջանում ռազմավարչական կենտրոններ դարձան[56]։ Իհարկե վաղ միջնադարյան քաղաքի զարգացումը, որն սկիզբ էր առել VII դարում, ընդհատվեց, այսուհանդերձ դա չի նշանակում, որ քաղաքների զարգացումը լրիվ դադարեց, այլ պարզապես դանդաղեց։

Որոշ զարգացում ապրեց քաղաքամայր Դվինը (Դաբիլ), որի մասին վկայում են հնագիտական պեղումների արդյունքները[57]։ Դարի սկզբին, ինչպես վկայում է Ղևոնդը, նրա պարիսպները վերակառուցվեցին, քաղաքն ավելի ընդարձակվեց, քան նախկինում էր, ամրացվեց դռներով և պարսպի շուրջը ջրով լցված խրամատ անցկացվեց[58]։ Դվինի միջնաբերդը կառավարչի (ոստիկան) նստավայրն էր, և այնտեղ էր գտնվում փողերանոցը։

Շատ կարևոր քաղաք էր նաև Կարինը (Թեոդոսուպոլիս, Կալիկալա), որը ռազմագիտական մեծ նշանակություն ուներ, որպես Բյուզանդիային դիմադրող մի ամրոց։ Դեռևս Հուստինիանոս I-ի օրոք կառուցված ամրակուռ պարիսպները հաճախ էին ավերվել ու վերակառուցվել։ Մանսուր խալիֆայի օրոք (754—775) վերականգնվել էին նրա պարիսպները[59], իսկ Մուտասիմ խալիֆան (833—842) 500 հազար դիրհեմ ծախսեց քաղաքի ամրությունները վերակառուցելու նպատակով[60]։

Հայաստանի այլ քաղաքները՝ Մուշ, Խլաթ, Մանազկերտ, Արճեշ, Բերկրի, Վան, Նախճավան, Բագարան և այլն ռազմավարչական կարևոր կենտրոններ էին։ Թովմա Արծրունու մոտ հիշվում են Խլաթի ու Ոստանի միջնաբերդերը։ Երբ Դավիթ Արամոնեցի կաթողիկոսը (728—741), նեղվելով Դվինի արաբական իշխանություններից, հեռացավ ու հաստատվեց իր ծննդավայր Արամոնս գյուղում՝ կառուցեց գեղեցկահարմար եկեղեցի ու կողքին վայելուչ տուն (հայրապետանոց)[61]։ Հայոց իշխանաց իշխան Բագարատ Բագրատունին Մուշ քաղաքում կառուցեց սուրբ Փրկիչ բարձրաբերձ եկեղեցին, որի համար ծախսեց 300 հազար դիրհեմ[62]։

---

54 Նույն տեղում, էջ 54։

55 *Манандян*. О торговле и городах Армении, стр. 194.

56 Նույն տեղում, էջ 196։

57 Կ. Ղաֆադարյան, *Դվին քաղաքը և նրա պեղումները*, Ա, Երևան, 1952, էջ 209, Բ, Երևան, 1982, էջ 96—99։

58 Ղևոնդ, էջ 36։

59 Նույն տեղում, էջ 130։

60 *Beladsori*, p. 199.

61 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 134։

62 Թովմա Արծրունի, էջ 120։

Սակայն ամենահետաքրքրականն այն է, որ արհեստները համեմատաբար քիչ էին տուժել այս ժամանակի տնտեսական անկումից։ Հնագիտական պեղումները վկայում են, որ խեցեգործությունը[63] և ապակեգործությունը[64] շարունակում էին զարգանալ նաև այս շրջանում։ Արաբ պատմիչ Յակուբին (IX դ.) վկայում է, որ Հիշամ խալիֆայի (724—743) պատվերով պատրաստվում է հայկական մետաքս[65], իսկ գորգագործությունն այնքան զարգացած էր, որ իբրև բնահարկի տեսակ գորգեր էին ուղարկվում արքունիք[66]։

Արաբ հայտնի մատենագիր Ջահիզը (IX դ.) խոսելով խալիֆայության մեջ արտադրվող ապրանքների մասին, հիշատակում է, որ «լավագույն կահավորանքը (ֆարշ), ամենաթանկն ու ամենաշքեղը հայկական միրիզզա (այծի մազե գործվածք) կարմիր (կիրմիզ) փայլուն կահավորանքն է»[67]։ Կահավորանք (ֆարշ) տվյալ դեպքում նշանակում էր գորգեր, ծածկոցներ ու բարձեր։ Հիշվում է, որ Մուտավաքքիլ խալիֆայի (842—861) օրոք հայ նախարարները ինչ որ հարց լուծելու համար բարձրատիճան պաշտոնյային կաշառելու նպատակով որպես ընծա Սամառա են ուղարկում բացառիկ շքեղ վրան՝ գորգերով, բարձերով[68]։

Հայաստանի արտաքին առևտրի Տրապիզոն նավահանգիստն ընթացող մայրուղին թեև խափանվեց, այսուհանդերձ ընդարձակածավալ խալիֆայության տարբեր նահանգների հետ գոյություն ունեին առևտրական հարաբերություններ։ Հայաստանում հայտնաբերվել են խալիֆայության տարբեր նահանգներում թողարկված դրամներ, սկսած Շաշից (Միջին Ասիայում) մինչև Իֆրիկիա (Հյուսիսային Աֆրիկա)[69]։ Կային նաև առևտրական կապեր արևելյան Եվրոպայի հետ, որի լավագույն վկայությունն է Արմինիա մակագրությամբ բազմաթիվ դրամների գյուտն այդ կողմերում[70]։

Հայաստանը խալիֆայության այլևայլ նահանգների հետ տարբեր տեսակի ապրանքներ էր փոխանակում։ Ջահիզը վկայում է, որ Հայաստանից ու Ատրպատականից արտահանվում էին՝ թաղիքներ, թամբեր, գորգեր, նուրբ փսիաթներ, գոտիներ և բուրդ[71], որոնք բնականաբար տեղական արտադրանքներ էին և միաժամանակ գաղափար են տալիս տեղի արհեստների մասին։

Հայաստանի առևտրական ճանապարհներից ամենակարևորն էր «արքունի պողոտան»[72], որ գալով Իրանից, Դվինի վրայով հասնում էր Կարնո քաղաք և ապա Սև ծով (Տրապիզոն)։ Մի ուրիշ ճանապարհ գնում էր Դվինից Խլաթ, ապա՝ Բաղեշի վրայով Սիրիա և Իրաք։ Ըստ արաբ աշխարհագրագետների Դվինից Պարտավ 7 կայան (սիքքա) էր, Պարտավից Դարբանդ (Բաբ ալ-Աբուաբ)՝ 15 կայան։ Դվինից Նախճավան 20 փարսախ էր, Նախճավանից Մա-

63 Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, Ա, էջ 209։

64 Հ. Ջանփոլադյան, Դվինի միջնադարյան ապակին, Հայաստանի հնագիտական հուշարձաններ, 7, Երևան, 1974, էջ 12։

65 *Yaqubi*, II, 328.

66 *Bibl.* Arab. Hist. und Geogr., I, 182a.

67 *Jahiz*, Kitab al-tabassur bi-l-tijara, Dimashq, 1932, p. 16.

68 *Tannukhi*, Mishwar al-muhadara, Damashg, 1930, h. 31—32.

69 *Х. Мушегян*, Денежное обращение Двина по нумизматическим данным, Ереван, 1962, стр. 50.

70 Նույն տեղում, էջ 48—49։

71 *Jahiz*, Kitāb al-tabassur bi-l-tijara, p. 28;

72 Նույն, էջ 140։

յանդ նույնպես 20 փարսախ[73]։ Հայաստանի և խալիֆայության բոլոր ճանապարհները գտնվում էին փոստի (բարիդ) դիվանի վերահսկողության տակ։ Հայաստանում օգտագործում էին ձիեր, ջորիներ և նույնիսկ ուղտեր՝ նամակների տեղափոխման համար։ Խալիֆայության տարբեր նահանգների հետ գոյություն ունեցած առևտրական կապերի վկայությունն են Դվինում հայտնաբերված արաբերեն կնիքները[74]։ Հավանաբար հայ վաճառականները ևս օգտագործում էին արաբատառ կնիքներ։

## 5. ԴՐԱՄԱԿԱՆ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ VIII—IX ԴԴ.

Սասանյանների իշխանության կործանումից և արաբական տիրապետության հաստատումից հետո, դրամական շրջանառությունը Հայաստանում թևակոխեց իր զարգացման նոր փուլը, որը բնորոշվում է անցյալում եղած սասանյան և վաղ բյուզանդական դրամների սպառմամբ ու արաբատառ դրամների տարածմամբ։ Խալիֆաթի ստեղծման սկզբնական շրջանում արաբական իշխանությունները չվերացրին նվաճված երկրներում ստեղծված դրամաշրջային սիստեմները, այլ առևտրի պահանջները բավարարելու համար օգտվեցին նրանցից։ Չնայած Սասանյանների գերիշխանությունը պաշտոնապես վերացել էր, բայց նրանց անցյալում թողարկած դրամները շրջանառությունից չէին հանվել։ Բացի այդ, VII գ. երկրորդ կեսին թողարկվեցին սասանյան և բյուզանդական դրամների ընդօրինակությամբ արաբական դրամներ, որոնք հայտնի են, այսպես կոչված, արաբասասանյան և արաբաբյուզանդական անուններով։ Օմայան փոխարքաները հիմք ընդունելով վերջին Սասանյաններից Որմիզդ II-ի (579—590) և առավելապես Խոսրով Փարվեզի (590—628), Հազկերտ III-ի (632—651), դրախմաների պատկերագրությունը, թողարկում էին դրանց նման, բայց արաբատառ դրամներ։

Արաբասասանյան դրամների թե՛ պատկերների և թե՛ գրությունների ձևավորումները բազմազան են։ Շրջանառության մեջ դրանք երկար մնացին Խորասանում, Բուխարայում և հատկապես Թաբարիստանում։ Հայկական շուկաներում արաբասասանյան դրամները լայն տարածում չեն ունեցել և Հայաստանի դրամային տնտեսության համար բնորոշ չեն եղել։ Սասանյան դրամների ընդօրինակություններով թողարկված արաբական դրամները ծագել են բուն Իրանի կենտրոնական ու արևելյան նահանգներում՝ Խորասանի, Ջեբալի, Խուժաստանի (Խուզիստանի), Ֆարսի, Կերմանի, Սագաստանի (Սեյստանի) վաճառաշահ քաղաքներում[75]։

Ինչ վերաբերում է արաբաբյուզանդական դրամներին, ապա դրանք ևս հանդես են եկել պատկերների ու գրությունների տարբեր ձևավորումներով։ Սկզբում թողարկում էին անցյալում տարածված Հուստինիանոս II-ի և Սոֆիայի (565—578) պատկերներով պղնձյա դրամներ, որոնց վրա արաբերենով նշված էր փողերանոցի տեղանունը։ Այնուհետև թողարկվեցին կայսր Հերակլի, ինչպես նաև նրա գահաժառանգների պատկերներով ու լատինատառ արձանագրություններով դրամներ։

---

[73] *Ibn Khordadhbeh*, Bibl. Geogr. Arab. VI, c. 122;

[74] *А. Калантарян*, Раннесредневековые буллы Двина, Ереван, 1982, стр. 46—49.

[75] *J. Walker*, A Catalogue of the Arab-Sassanian coins, London, 1941, p. 3—168.

Պղնձյա դրամներից բացի թողարկվում էին նաև ոսկյա դրամներ։ Ի տարբերություն խաչի նշանով բյուզանդական ոսկյա դրամների, արաբական իշխանությունները խաչի փոխարեն դրոշմում էին միայն մի ուղղահայաց դիծ։ Այդօրինակ ոսկյա դրամների վրա թողարկման վայրը չէր հիշատակվում[76]։ Միանգամայն որոշակի է այն իրողությունը, որ մինչև VIII դ. սկիզբը խալիֆաթի տիրապետության տակ գտնվող երկրներում զուտ արաբական դրամներ չեն թողարկվել։ Տարբեր կշռային չափերով թողարկված արաբասասանյան ու արաբաբյուզանդական դրամները չէին կարող նպաստել պետական հարկերի գանձմանը, դրամահաշվային գործարքների հստակ կատարմանը և ապրանքափոխանակության պահանջներին, քանի որ դրանք շրջանառության մեջ ընդունվում էին կշռաքով։

Ողջ խալիֆաթի համար միասնական դրամային սիստեմի ստեղծումը կատարվեց խալիֆ Աբդ ալ-Մալիքի հատուկ ռեֆորմով, հիջրայի 77 (696/97) թ.։ Սահմանվեց որոշակի կշռային չափերով և նոր ձևավորմամբ զուտ արաբական դրամների թողարկման կարգ։ Խալիֆաթն ստեղծեց իր սեփական դրամակշռային սիստեմը, որը շուրջ երեք հարյուր տարի իշխեց միջազգային ապրանքադրամական հարաբերություններում։ Որոշվեց դրամներ թողարկել ոսկուց (դինար, 4,25 գ.), արծաթից (դիրհեմ, 2,97 գ.) և պղնձից (3—5 գ. քաշով)։

Ի տարբերություն նախկին դրամների, արաբական խալիֆաթի դրամները թողարկվում էին առանց պատկերների, բացառապես արաբատառ արձանագրություններով՝ քաղված մահմեդական «սուրբ գրքի»՝ «Ղուրանի» սուրեթներից։ Ոսկյա վաղ արաբական դրամները Հայաստանում և հարևան երկրներում տարածված չեն եղել։ Դրանք տարածվել են խալիֆաթի կենտրոնական նահանգներում (Սիրիա-Իրաք, Եգիպտոս) և իսպանական շրջաններում։ Հայաստանում և հարևան երկրներում մասսայական տարածում են ունեցել արծաթյա դրամները, որոնք Աբդ ալ-Մալիքի դրամային ռեֆորմից հետո թողարկվում էին ոչ միայն արաբական տիրապետության կենտրոնական մասերում, այլև Հայաստանում ու Օմայաններին ենթակա մյուս երկրներում։

Հայաստանում օմայան դրամներ թողարկվել են արաբական դրամների ծագման առաջին տարիներից։ Հայաստանում կտրված ամենավաղ օմայան արծաթ դրամը[77] վերաբերում է հիջրայի 81 (մ. թ. 700—701) թվականին։

Հարկ է նկատել նաև, որ Օմայան հարստության արծաթյա դրամները թողարկվում էին առանց խալիֆի կամ որևէ պաշտոնական անձի անունը նշելու։ Սակայն, որպես կանոն, միշտ արձանագրվում էր թե որտեղ և երբ է դրրվագված տվյալ դրամը։

Տվյալները ցույց են տալիս, որ Հայաստանում և նրան մերձավոր անդրկովկասյան շրջաններում, որոնք մտնում էին Արմինիա վարչական միավորի մեջ, Օմայանները դրամներ են թողարկել մոտ 50 տարի (հիջրայի 81 մինչև 131 թ. մ. թ. 700 (701—748/49 թ.)։

Օմայանների և ապա՝ Աբբասյանների օրոք թողարկված արաբատառ բոլոր դրամները, որոնց վրա արձանագրված է, որ ծագել են Արմինիայում, վերաբերում են բուն Հայաստանին և դուրս են եկել առավելապես Դվինի փողե-

---

[76] *J. Walker*, A Catalogue of the Arab-Byzantine and post-reform Umaiyad coins London, 1956, p. 42, pb. VIII;

[77] Այն պահվում է Բեռլինի թանգարանում, տե՛ս *Nützel*, Königliche Museen zu Berlin, Katalog der Orientalischen Münzen, I, Berlin, 1898, S. 67, № 304, taf. IV;

*րանոցից։ Այդ նույն սկզբունքով էլ խալիֆաթի բոլոր այն դրամները, որոնց վրա հիշատակված է Արմինիայի մեջ մտնող Առանի անունը, ամենայն հավանականությամբ, թողարկվել են այդ շրջանի տնտեսական խոշոր կենտրոնում՝ Պարտավ քաղաքում։*

*Հետագայում, եթե Արմինիայի անունով թողարկվել են դրամներ, ինչպես Պարտավում կամ Հարունաբադում, ապա դրամի վրա հատուկ ձևով նշվել է այդ մասին, ցույց տալու համար այն տարբերությունը, որ կա տվյալ արտակարգ օրինակների և ընդհանուր թողարկվող արմինիական դրամների միջև*[78]*։*

*Դվինի հնագիտական պեղումների շնորհիվ հայտնաբերվել են արաբատառ օմայան պղնձյա դրամներ, որոնք տալիս են վաղ արաբական ժամանակներին վերաբերող կարևոր վկայություններ։ Պարզվում է, որ Դվինում օմայան պղնձյա դրամները մեծ մասամբ թողարկվել են ողջ Արմինիայի անունով։ Այդ կարգի պղնձյա դրամների բացակայությունը բուն Հայաստանից դուրս և դրանց առատությունը Դվինում, մի ավելորդ անգամ փաստում է, որ խալիֆաթի՝ Արմինիա նահանգի անունով դրամների թողարկման գլխավոր կենտրոնը իրոք եղել է Դվինը։ Հայտնի է, որ պղնձե դրամը սովորաբար տեղական շուկայի սահմաններից դուրս չէր անցնում։ Հետևաբար, զարմանալի չէ, որ Դվինի օմայան ֆելսերը ի հայտ են գալիս հենց Դվինի ավերակներում։ Ազնիվ մետաղներից (ոսկի, արծաթ) կտրված դրամները առևտուրը դուրս էին բերում միջազգային ասպարեզ և հեռանում իրենց ծագման վայրերից։ Այդ տեսակետից էլ պատահական չէ, որ Դվինում կտրված օմայան արծաթյա դրամները գտնվել են Հայաստանից շատ հեռու, Եվրոպայի արևելյան և հյուսիսային երկրներում*[79]*։*

*Տեղական կտրվածքի դրամներից բացի, VIII դ. առաջին կեսին Հայաստանի դրամային շրջանառությունը լիցքավորվել է նաև խալիֆաթի կենտրոնական նահանգներում՝ Իրաքում, Ջազիրայում, Ջեբալում և Ադրբեջանում թողարկված դրամներով։ Այդ մասին են վկայում մի կողմից Դվինի հնագիտական պեղումների շնորհիվ գտնված օմայան դրամները, մյուս կողմից՝ Անդրկովկասում հայտնաբերված դրամագիտական նյութերը։ Դվինի կենտրոնական թաղամասում ի հայտ են եկել օմայան ֆելսեր, որոնք թողարկվել են Սիրիայի Դամասկոս, Հիմս, Կիննասրին քաղաքներում*[80]*։*

*Ասորիքից Հայաստան բերված ֆելսերը կարող են վկայել VIII դ. հայասորական անմիջական կապերի մասին։ Տնտեսական և քաղաքական անմիջական հարաբերությունների առկայությունը դրամները փաստում են նաև Հայաստանի և Իրաքի համար։ Այդ մասին է խոսում Թալինի Աշնակ գյուղում հայտնաբերված VIII դ. 30-ական թվականներին վերաբերող գանձը*[81]*։ Նրա կազմում եղած բացառապես օմայան դիրհեմները թողարկվել են մեծ մա-*

---

78 *Р. Р. Фасмер,* Монеты Саджидов, Известия общества обследования и изучения Азербайджана, 1927, № 5, с. 37. *А. А. Быков,* Дяйсам ибн Ибрахим эл-Курди и его монеты. «Эпиграфика Востока», 1955, вып. XX, с. 14—15. **Խ. Մուշեղյան,** *Դվինի մի քանի դրամների մասին, ՀՍՍՀ ԳԱ պատմության թանգարան, աշխատությունների ժողովածու, V, Երևան, 1959, էջ 113—131 և այլ։*

79 *Х. А. Мушегян,* Денежное обращение Двина по нумизматическим данным, Ереван, 1962, с. 154—166.

80 *«Հայաստանի պատմության պետական թանգարան», № 10678, 11810, 11995, 12395։*

81 *Նույն տեղում, № 17430։*

սամբ Տիգրիսի ստորին հոսանքին մոտ գտնվող Վասիթ քաղաքում։ Դրանց հետ միասին առանձին օրինակներով Հայաստան են թափանցել արծաթյա դիրհեմներ՝ Պարսից ծոցի իրանական քաղաքներից, մասնավորապես Սուքմին ալ-Ահվազից և Քերմանից[82]։ Սիրիական ծագում ունեցող օմայան դրամների շրջանառությունը Հայաստանում հայտնի է նաև այլ վկայություններով[83]։

Իրաքում թողարկված դրամների թափանցումը Անդրկովկաս պարզորոշ երևում է Գանձակում գտնված գանձից, որի կազմի 44,4 %-ը Վասիթ քաղաքում դրվագված օմայան արծաթյա դրամներ են։

Այդուհանդերձ, դրսից բերված օմայան դրամներ Հայաստանում դեռևս սակավաթիվ են, որը հնարավորություն չի ընձեռում դատելու նրանց լայն տարածման մասին։

---

82 Նույն տեղում։

83 Նույն տեղում։

ԴԼՈՒԽ ՏԱՍՆՅՈԹԵՐՈՐԴ

# ՊԱՎԼԻԿՅԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ VII—IX ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ՊԱՎԼԻԿՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ

*Հայաստանում և Բյուզանդիայում միջնադարյան հակաֆեոդալական շարժումների թվում ամենահզորն ու ազդեցիկը պավլիկյան շարժումն էր։ Ծագելով 7-րդ դարի կեսերին Արևմտյան Հայաստանում, այն տարածվեց Բյուզանդական կայսրության ողջ արևելքում, թափանցեց նաև Արևելյան Հայաստան և մի քանի դար լարված վիճակում պահեց շահագործող դասակարգերը, պետությունն ու եկեղեցին[1]։ Բյուզանդական կայսրության կողմից ժամանակ առ ժամանակ Թրակիա բռնագաղթեցված աղանդավորներն իրենց ազատասիրական գաղափարները տարածեցին նաև Թրակիայում, պարարտ հող նախապատրաստելով հետագայում բռնկված դասակարգային շարժումների համար։*

---

[1] *Վերջին տասնամյակներում պավլիկյանների վերաբերյալ մեզանում և արտասահմանում լույս են տեսել բազմաթիվ գիտական հոդվածներ և մենագրություններ։ Այդ աշխատանքի սկիզբը դրեց 30—40-ական թվականներին բելգիացի հայտնի բյուզանդագետ Անրի Գրեգուարը, հանդես գալով պավլիկյանների պատմության, աղբյուրագիտության և այլ հարցերին նվիրված մի շարք հոդվածներով։ Աղանդավորներին նվիրված նոր և նորագույն գործերից ստորև նշում ենք առավել կարևորները։* *H. Grégoire*, Les sources de l'histoire des Pauliciens. Bulletin de l'Académie royal de Belgique, Classe des Lettres, 5ème serie, t. XXII, 1936; *Նույնի,* Pour l'histoire des églises Pauliciennes. Orientalia Christiana Periodica, vol. XIII, No 3—4, Roma, 1947; Հ. Բարթիկյան, *Պավլիկյան շարժման մի քանի աղբյուրների գնահատման շուրջը, Տեղեկագիր, № 6, 1957։* Նույնի, *Պավլիկյան համայնքի կազմակերպության հարցի շուրջը, ՊԲՀ, № 3, 1958։ Նույնի,* Еще раз о происхождении имени «Павликиане», *«Լրաբեր հաս. գիտությունների» № 2, 1973։ Նույնի,* О павликианах после павликиан. „Античная древность и средние века», сборник 10, Свердловск, 1973; *Նույնի, Պավլիկյան շարժման գաղափարախոսությունը, Լրաբեր, № 8, 1979. F. Scheidweiler*, Paulikianerprobleme, "Byzantinische Zeitschrift, Bd. 43, No 1—2, 1950; *M. Loos*, Le mouvement Paulicien à Byzance. "Byzantinoslavica„, No XXIV, fasc. 2, Praha, 1963; No XXV, fasc. 1, 1964; I. 'Αναστασίου, οἱ Παυλικιανοι. 'Η ἱστορία καὶ ἡ διδασκαλία των ἀπὸ τῆς ἐμφανίσεως μέχρι τῶν νεωτέρων χρόνων, Ἀθῆναι, 1959; *Р. М. Бартикян*, Источники для изучения истории павликианского движения, Ереван. 1961. *Е. Э. Липшиц*. Очерки истории византийского общества и культуры. VIII-первая половина IX в. Москва-Ленинград, 1961; *Nina Garsoïan*, The Paulician Heresy. A Study of the Origin and Development of Paulicianism in Armenia and the Eastern Provinces of the Byzantine Empire, Paris, 1967; Ա. Տ. Մելիք-Բախշյան, *Հայաստանը 7—9 դարերում, Երևան, 1968։* Ե. Գ. Տեր-Մինասյան, *Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից, Երևան, 1968։ P. Lemerle*, L'histoire des Pauliciens d'Asie Mineure d'après les sources grecques, "Travaux et Mémoires", 5, 1973.

որոնցից ամենանշանավորը բոգոմիլությունն էր։ Այդ ազատասիրական գաղափարները ամենատարբեր ճանապարհներով տարածվեցին Արևմտյան Եվրոպայում, հատկապես Իտալիայում և Հարավային Ֆրանսիայում, նպաստելով ալբիգոյանների, կաթարների և այլ աղանդավորական շարժումների գաղափարախոսության ձևավորմանը։

Պատահական չէ, որ պավլիկյան շարժումը ծագեց Արևմտյան Հայաստանում։ Այստեղի բնակչությունը, ինչպես նշվեց, ենթարկվում էր բյուզանդական իշխանությունների ծանր ու բազմապիսի ճնշումներին։ Դեռևս Զենոն կայսեր օրոք (474—491) սկսվեց հարավարևմտյան Հայաստանի նախարարությունների ինքնուրույնության վերացումը։ Դրա հետ մեկտեղ Բյուզանդիան սկսեց արմատապես խախտել հայոց վաղեմի ժառանգական իրավունքը։ Քաղաքական ճնշման զուգընթաց գնալով ուժեղացավ նաև տնտեսականը։ Բյուզանդիայի տիրապետության տակ գտնվող հայերի վրա դրվեց հարկային աննախընթաց ծանր բեռ։ Արևմտյան Հայաստանում ավելի մեծ ծավալ ստացան հայադավանության սահմանափակումներն ու հալածանքները։ Բյուզանդական եկեղեցին ջանքեր էր թափում արմատախիլ անել միաբնակությունը և տարածել քաղկեդոնականությունը։ Այդ նպատակին հասնելու համար նա օգտագործում էր Արևմտյան Հայաստանում հաստատված քաղկեդոնիկ եպիսկոպոսությունները։ 680 թ. գումարված Տրուլլի եկեղեցական ժողովի ընդունած որոշումների մեջ մեծ թիվ են կազմում այն կանոնները, որոնք ուղղված են հայադավանության դեմ։ Այդ որոշումների տակ ստորագրել են Արևմտյան Հայաստանի տասից ավելի եպիսկոպոսներ[2]։

Այս բոլորը չէր կարող հայ բնակչության մեջ իշխող կարգերի դեմ խոր դժգոհություն չառաջացնել, դժգոհություն, որն իր արտահայտությունն էր գտնում տարբեր ձևերով։ Աշխատավոր խավերի դժգոհությունը է՛լ ավելի էր սրվում նաև այն պատճառով, որ հոգևորականների քարոզած գաղափարները և գործած արարքները սուր հակասության մեջ էին գտնվում միմյանց նկատմամբ։ Նույն Տրուլլի եկեղեցական ժողովում ընդունված կանոններից շատ պարզ երևում է, որ հոգևորականները զբաղված էին փործատներ պահելով, վաշխառությամբ, նրանք քահանա կամ նույնիսկ եպիսկոպոս էին ձեռնադրում, հաղորդություն էին տալիս դրամով, մասնակցում թատերական ներկայացումներին կամ ձիարշավներին և այլն[3]։

Այս բոլորից դժգոհ Արևմտյան Հայաստանի աշխատավոր ժողովուրդը ընդվզեց կայսրության և նրա եկեղեցու ֆեոդալական շահագործման դեմ և այդ ընդվզումը VII դարի կեսերին հանդես եկավ պավլիկյանների դրոշի ներքո։

Աղբյուրների տվյալների հիման վրա կարելի է պարզ պատկերացում կազմել, որ պավլիկյան շարժման մասնակիցները որպես կանոն պատկանում

---

[2] *Mansi*, Sacrorum Conciliorum nova et amplissima Collectio, t. XI, col. 988: Ժողովի 95-րդ կանոնը ուղղված է Պողոս Սամոսատցու աղանդի (պավլիանիտների) դեմ։ Բացառված չէ, որ նկատի ունի հենց այդ ժամանակները հանդես եկած պավլիկյաններին, որոնք հետագա շրջանում սխալմամբ նույնացվում էին պավլիանիտների հետ։

[3] *Mansi*, t. XI: Նման բովանդակությամբ կանոններ ընդունվեցին և Երկրորդ Նիկիական ժողովում (787), որն ապացույցն է այն բանի, որ վիճակը չէր փոխվել։ Տե՛ս *Mansi*, t. XIII, col. 421 sq.

էին աշխատավոր խավերին, հատկապես աշխատավոր գյուղացիությանը[4]։ Բայց հակառակ շարժման միանգամայն աշխարհիկ բնույթին ու դրդապատճառներին, հասկանալի պատճառներով այն հանդես եկավ կրոնական քողի տակ։ «Այն բոլոր ընդհանուր բնույթ կրող հարձակումները,— գրում է Ֆ. էնգելսը,— որ կատարվում էին ֆեոդալիզմի և ամենից առաջ եկեղեցու դեմ, ինչպես նաև հեղափոխական, հասարակական և քաղաքական բոլոր ուսմունքները, միաժամանակ նաև աստվածաբանական հերետիկոսություններ պետք է լինեին։ Տիրող հասարակական հարաբերությունների վրա հարձակումը հնարավոր դարձնելու համար անհրաժեշտ էր հեռացնել սրբության այն շղարշը, որով սքողված էին այդ հարաբերությունները»[5]։

Պավլիկյան շարժմանը վերաբերող և պահպանված տեղեկությունները հանդիպում են աղանդավորների հակառակորդների գրչին պատկանող երկերում։ Աղանդավորների գրած աշխատությունները չեն պահպանվել, թեև հայտնի է, որ այդպիսիք եղել են։ Նրանց կորստյան միակ և հիմնական պատճառը նման գրքեր պահող մարդկանց նկատմամբ իշխանությունների ձեռք առած դաժան միջոցներն էին։ Օրենքով սահմանված էր, որ նման գրքեր պահող անձնավորությունները ենթակա են մահապատժի[6]։ Հայկական և բյուզանդական ժամանակագրություններում և այլ կարգի աշխատություններում արտացոլված են պավլիկյան շարժման առանձին դրվագները միայն։ Աղանդի ամբողջ պատմությունը սկզբից մինչև 869—870 թթ. գրել է հույն վանական Պետրոս Սիկիլիացին[7]։ Նրա երկը, թեև գրված է «ուղղափառության» դիրքերից, աղանդավորների նկատմամբ մեծ ատելություն տածող հեղինակի կողմից, այնուամենայնիվ անգնահատելի արժեք է ներկայացնում, այն պարզ պատճառով, որ շարադրված է փաստական հարուստ նյութի հիման վրա։ Նրա հեղինակը օգտագործել է հենց պավլիկյանների գրչին պատկանող երկեր, որոնց ծանոթացել է աղանդավորների մայրաքաղաք Տեֆրիկեում (Տիվրիկե), երբ 869 թ. Վասիլ I կայսեր հանձնարարությամբ 9 ամիս եղել է այդ քաղաքում։ Նա, ի միջի այլոց, օգտագործել է պավլիկյանների խոշորագույն աղանդապետ Սերգիոսի նամակները, որոնցից առանձին մեջբերումներ է կատարել իր պատմական երկում։

Մինչև օրս բազմաթիվ կարծիքներ են արտահայտվել պավլիկյան անվան նշանակության մասին։ Դրա շուրջ եղած վեճերը գալիս են դեռ միջնադարից, պավլիկյանների ժամանակներից։ Ուղղափառ հեղինակներից ոմանք անունը կապում են սամոսատցի Կալինիկեի որդիների՝ Պողոսի և Հովհաննեսի անունների հետ, որ սկզբում իբր եղել է Պավլոհաններ (Παυλοϊωάννοι), որը

---

[4] Աշխատավոր խավերին էր պատկանում պավլիկյան շարժման խոշորագույն աղանդապետը՝ Սերգիոսը, որ մինչև իր մահը աշխատում էր որպես հյուսն։

[5] Ֆ. էնգելս, Գյուղացիական պատերազմը Գերմանիայում, Երևան, 1940, էջ 46։

[6] *Р. М. Бартикян*, Источники для изучения истории павликианского движения, Ереван, 1961, стр. 136.

[7] Բննական բնագիրը տե՛ս *Ch. Astruc*, *W. Conus-Wolska*, *J. Gouillard*, *P. Lemerle*, *D. Papachryssanthou*, *J. Paramelle*, Les sources grecques pour l'histoire des Pauliciens d'Asie Mineure, "Travaux et Mémoires" du Centre de Recherche d'Histoire et Civilisation byzantines, No 4, Paris, 1970, p. 7—67: Պետրոս Սիկիլիացու երկի ռուսերեն թարգմանությունը տե՛ս *Р. М. Бартикян*, Источники для изучения истории павликианского движения, Ереван, 1961, с. 117—150։ Հայերեն թարգմանությունը՝ Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա, հատ. 1, Երևան, 1981, էջ 743—760։

*հետագայում դարձել է «Պավլիկյաններ»* (Παυλικιανοί)։ *Ուրիշները պավլիկյան անունը կապում էին կին աղանդավոր առասպելական Կալլինիկեի որդու՝ Պողոսի անվան, կամ էլ VIII դարի առաջին կեսին ապրած պավլիկյան աղանդապետ Գեգնեսիոսի հայր Պողոս Հայի անվան հետ։*

*Ամենից հավանականն այն է, որ պավլիկյան անունը կապ ունի Պողոս առաքյալի անվան հետ և պավլիկյան նշանակում է Պողոս առաքյալի հետեվորդ, առաքյալ, որը պավլիկյանների շրջանում ամենամեծ հեղինակությունն էր վայելում։ Պավլիկյան շարժման բոլոր աղանդապետները սովորություն ունեին ստանալ ավելադիր անուններ, որոնք ոչ այլ ինչ էին, քան Պողոս առաքյալի աշակերտների անունները, նրանք իրենց համայնքները կոչում էին Պողոս առաքյալի հիմնադրած համայնքների անուններով։ Դրանով նրանք ուզում էին ընդգծել իրենց կապը Պողոս առաքյալի, վաղ քրիստոնեական համայնքների հիմնադրի հետ։ Այդ միտքը հաստատվում է դեպքերի ժամանակակից Փոտ պատրիարքի ուղղակի ցուցումով, թե պավլիկյաններն իրենց համարում են Պողոս առաքյալ անվան կրողներ*[8]։

## 2. ՊԱՎԼԻԿՅԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ VII Դ. ԵՐԿՐՈՐԴ ԿԵՍԻՆ ԵՎ VIII ԴԱՐՈՒՄ

*Պավլիկյան շարժումը առաջացել է Արևմտյան Հայաստանի Մանանաղի գավառում, որը հետագայում դարձավ թոնդրակյան շարժման կարևոր կենտրոններից մեկը*[9]։

*Հերակլիոս կայսեր թոռ Կոստանդինի (641—668) օրոք, ցույց է տալիս Պետրոս Սիկիլիացին, Մանանաղի գյուղում հանդես եկավ ոմն «հայազգի Կոստանդին»՝ հիմնադիրը դառնալով պավլիկյան վարդապետության և շարժման*[10]։ *Նա իր շուրջը համախմբեց իշխող կարգերից դժգոհ մարդկանց, որոնք գլխավորապես հայեր էին*[11]։ *Ուղղափառ հեղինակները ջանք են թափում պավլիկյանությունը ներկայացնելու որպես նույն մանիքեությունը, բայց պավլիկյանները մերժում էին դա, աշխատում սահմանազատվել մանիքեցիներից։ Կոստանդին Հայը չէր ընդունում մանիքեական գրքերը, նրա վարդապետությունն ամբողջությամբ հիմնված էր Ավետարանի և Պողոս առաքյալի թղթերի վրա, որոնք, սակայն, ինքը յուրովի էր մեկնաբանում և իմաստավորում*[12]։

*Կոստանդին Հայը, հիմնադիրը դառնալով պավլիկյան շարժման, սկիզբ դրեց մի սովորույթի, որը որդեգրեցին նրա բոլոր հաջորդները։ Ըստ այդ սովորույթի, աղանդապետը պետք է ստանար վերադիր անուն՝ Պողոս առաք-*

---

8 *Հարցի մասին մանրամասն տե՛ս* Р. М. Бартикян. Еще раз о происхождении имени «Павликиане», *«Լրաբեր հաս. գիտ.», № 2, 1973,* с. 85—90

9 Արիստակես Լաստիվերտցի, *Պատմություն, գլ. 23։ Պետրոս Սիկիլիացին վկայում է, որ Մանանաղին մինչև իր ժամանակները (870) «մանիքեցիներ» (իմա՝ պավլիկյաններ) է սնում։*

10 *Աղբյուրները տալիս են պավլիկյան շարժման ընդամենը վեց աղանդապետի անուն, որոնցից հայ են համարվում Կոստանդինը (VII դարի կես), Գեգնեսիոսը և նրա եղբայր Թեոդորոսը (VIII դարի առաջին կես), Գեգնեսիոսի որդի Զաքարիան և Վահանը (VIII դարի վերջ, IX դարի սկիզբ)։ Ինչպես անունն է վկայում հայ էին նաև պավլիկյանների սպարապետներ Կարբեասը (Կարպիս-Կարապետ) և նրա ազգական նշանավոր Խրիսոխիրը։*

11 *Հակառակ այն բանի, որ հետագայում պավլիկյան շարժմանը մասնակից դարձան հայերից բացի և այլ ժողովուրդների ներկայացուցիչներ, աղանդավորների հիմնական զանգվածը հայերից էր բաղկացած։*

12 *«Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 752—753։*

յալի աշակերտներից մեկի անունը, իսկ հիմնադրած պավլիկյան համայնքները կոչեր Պողոս առաքյալի հիմնադրած համայնքներից որևէ մեկի անունով։ Ինքը՝ Կոստանդինն ստացավ Սիլվանոս վերադիր անունը։ Որոշ ժամանակ Մանանաղիում գործելով, Կոստանդին-Սիլվանոսը հաստատվեց Կոլոնիայի (այժմ՝ Կոյլի Հիսար) մոտ գտնվող Կիբոսսա ամրոցում, որտեղ հիմնադրեց պավլիկյան մի համայնք, որը կոչեց Մակեդոնիա (Պողոս առաքյալի աշակերտ Սիլվանոսի հիմնադրած Մակեդոնիա համայնքի անունով)[13]։ Կիբոսսայում Սիլվանոսը գործեց ամբողջ քսանյոթ տարի, իր շուրջը համախմբելով իշխող կարգերից ու ֆեոդալական շահագործումից դժգոհ ժողովրդական զանգվածներ։ Կոստանդին-Սիլվանոսի գործունեությունը անհաբեկում է բյուզանդական կառավարությանը։ Կայսեր կարգադրությամբ Կոստանդնուպոլսից Կոլոնիա է ուղարկվում Սիմեոն անունով մի պալատական, որը ձերբակալում է աղանդապետին և նրա համախոհներից շատերին, աղանդապետին տանում է Կոլոնիայի բերդի հարավային կողմը և հրամայում նրա աշակերտներին քարկոծել իրենց ուսուցչին։ Աշակերտները հրաժարվում են։ Բայց Կոստանդին-Սիլվանոսի աշակերտներից մեկը, Հուստոս անունով, իրականացնում է Սիմեոնի հրամանը և քարի հարվածով սպանում իր ուսուցչին[14]։ Ահա այսպիսի վախճան ունեցավ պավլիկյան շարժման հիմնադիրը։

Աղանդապետին մահապատժի ենթարկելուց հետո պալատական Սիմեոնը կայսեր կարգադրությամբ մեծ ջանքեր թափեց «դարձի բերելու» աղանդապետի աշակերտներին, բայց նրանք «անդարձ մնացին, գերադասելով աղանդավոր մեռնել, քան թե զղջմամբ ստտծո գութը շարժել և հավիտենական փրկության արժանանալ», գրում է Պետրոս Սիկիլիացին[15]։ Բայց աղանդավորներին քննելու ընթացքում տեղի ունեցավ անսպասելին։ Պալատական Սիմեոնը համոզվում է պավլիկյան գաղափարախոսության ճշմարտացիությանը։ Նա «աստվածաբանական դաստիարակության անհաղորդ լինելով,— բացատրում է Պետրոս Սիկիլիացին,— դեռ ավելին՝ լինելով թեթևամիտ, ուսավ այդ կործանարար աղանդը»[16]։ Վերադառնալով մայրաքաղաք, Սիմեոնը զեկուցեց կայսեր իր գործունեության մասին, բայց երեք տարի անց ծածուկ հեռանալով Կոստանդնուպոլսից, ժամանում է Կիբոսսա, հավաքում Կոստանդին-Սիլվանոսի աշակերտներին, և դառնում նրա «վատթարության ժառանգորդը», այսինքն աղանդապետ։ Իր նախորդի հաստատած կարգի համաձայն նա իրեն վերանվանեց Տիտոս, Պողոս առաքյալի աշակերտներից մեկի անունով և երեք տարի գլխավորեց շարժումը։ Սակայն ինչպես Կոստանդին-Սիլվանոսի, Սի-

---

13 Կոլոնիան հենց այդ ժամանակաշրջանի բյուզանդական փաստաթղթերում համարվում է Հայաստանի քաղաք։ Տրուլլի եկեղեցական ժողովում (680) մասնակցում էր «Հայաստանի Կոլոնիայի եպիսկոպոսը» ἐπίσκοπος Κολωνίας Ἀρμενίας. Mansi, t. XI, col. 616, 680։ Հետագայում, հատկապես IX դարում, Կոլոնիան հիշվում է որպես պավլիկյան շարժման կենտրոններից մեկը։ Տե՛ս В. Васильевский—П. Никитин, Сказания о 42 Аморийских мучениках, Записки Императорской Академии наук, серия VIII, том VII, № 2, СПб., 1905.

14 Պետրոս Սիկիլիացու տվյալներով Կոստանդին-Սիլվանոսի քարկոծման վայրը աղանդապետի գերեզմանի վրա կուտակված քարերից կոչվեց Սորոս (σωρός)։ «Սորոս» հունարեն նշանակում է «քարակույտ», «կույտ», ամենայն հավանականությամբ, ժողովրդական ստուգաբանություն է։ «Սորոսի» մեջ թաքնված է հայկական «ձոր» բառը, ինչպիսիք շատ կան Հայաստանի տեղանունների մեջ։

15 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», հ. 1, էջ 754։

16 Նույն տեղում, էջ 754—755։

մեոն-Տիտոսի համար էլ վերոհիշյալ Հուստոսը ճակատագրական դեր է խաղում։ Սիմեոնի և Հուստոսի միջև բանավեճ էր ծագել Պողոս առաքյալի կողոսացիներին ուղղված թղթի մի նախադասության մտքի առթիվ. «Զի նովաւ հաստատեցաւ ամենայն ինչ որ ինչ երկինս և որ ինչ յերկրի, որ երևին և որ ոչն երևին, եթէ աթոռք, եթէ տէրութիւնք եթէ պետութիւնք, եթէ իշխանութիւնք. ամենայն ինչ նովաւ և ի նոյն հաստատեցաւ»[17]։ Խոսքը պավլիկյանների աստվածաբանական դուալիզմին՝ Բարի և Չար աստվածների գոյության հարցին էր վերաբերում, այն հարցին, թե աշխարհի արարիչն ով է, երկնային աստվածը, թե սատանան։ Համաձայն չլինելով Սիմեոն-Տիտոսի տվյալ նախադասության տված բացատրությանը, Հուստոսը, իբրև թե ճշմարտությունն իմանալու մտադրությամբ, դիմում է Կոլոնիայի եպիսկոպոսին, և նրան տեղյակ պահում ոչ միայն պավլիկյանների աղանդապետի մասին, այլև պավլիկյան համայնքի, որն իր առաջին աղանդապետ Կոստանդին-Սիլվանոսի մահից հետո, անցել էր խոր ընդհատակ։ Եպիսկոպոսը առանց հապաղման զեկուցում է Հուստինիանոս II կայսեր (685—695, 705—711 թթ.), որը հրամայում է հարցաքննել նրանց և աղանդից չհրաժարվողներին ողջակեզ անել։ Ինչ որ և տեղի ունեցավ։ Աղանդապետ Սիմեոն-Տիտոսը և շատ ուրիշ պավլիկյաններ խարույկի վրա կնքեցին իրենց մահկանացուն։

Հակառակ բյուզանդական կառավարության փորձերին՝ հենց խանձարուրում խեղդելու պավլիկյան շարժումը, նրան այդ բանը չի հաջողվում։ Կայսրության տարբեր շրջաններում բռնկվում են աղանդի նորանոր օջախներ։ Շարժումը մուտք է գործում նաև Արևելյան Հայաստան և, հավանաբար, նաև Աղվանք։ Այնքան հուժկու է դառնում պավլիկյան շարժումը VIII դարի սկզբում, որ Հայոց կաթողիկոս Հովհան Օձնեցին անհրաժեշտ է գտնում առանձին ճառ գրել պավլիկյանների և նրանց ուսմունքի դեմ[18], անվանարկել նրանց վարդապետությունը, ժողովրդական զանգվածներն աղանդից հեռու պահելու մտահոգությամբ։ Պետք է ենթադրել, որ Ներսես III կաթողիկոսի և հատկապես Հովհան Օձնեցու նախորդ Եղիա կաթողիկոսի օրոք Բյուզանդական կայսրության սահմաններում հալածվող պավլիկյանները ստիպված եղան անցնել սահմանը և ապաստանել արաբական տիրապետության տակ գտնվող Հայաստանում։ Արաբները դեռևս շարժման սկզբնական շրջանում դեմ չէին օգտագործելու պավլիկյաններին՝ ընդդեմ Բյուզանդական կայսրության։ Հովհան Օձնեցու տվյալներով, պավլիկյանները Ներսես կաթողիկոսի մահից հետո «խուսեալք չոգան ղօղեցին յոլորտս ուրեք աշխարհիս մերոյ»[19] և այն բանից հետո, երբ արաբները զորավիգ կանգնեցին աղանդավորներին, վերջիններս «ի դաբանամտութեան իւրեանց սողեալ յորջից յաշխարհամէջս և ի ժողովրդաբնակս համարձակեցան յարձակել տեղիս... Ուրանօք ի միասին ընթացեալ կուտեցին ամենայն ուրեք, որպէս անգեղք աշխարհաց ի նեխաշաղիղ ինչ գէշ»[20]։

Շարժումն ահաբեկում է նաև Աղվանից հոգևոր և աշխարհիկ պետերին։ Շահագործող դասակարգերն արդեն դիմում են որոշակի միջոցառումների։ Աղվանից Միքայել (702—737) կաթողիկոսի ժամանակ, 702—705 թվական-

17 «Թուղթ առ Կողոսացիս», Ա, 16։
18 «Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ, Մատենագրութիւնք», էջ 46—60։
19 «Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ Մատենագրութիւնք», էջ 51։
20 Նույն տեղում։

ների միջև Աղվանից իշխան և Գարդմանից տեր ապոհյուպատ պատրիկ Շերոյի և սպարապետ Վարազ-Գրիգոր պատրիկի հրամանով, ամենայն հավանականությամբ, Պարտավ քաղաքում գումարվում է ժողով, «յաղագս բարեկարգութեան աշխարհիս և ուղղափառութեան հաւատոյս»։ Ջանազան աղանդների և հերձվածների շարքին հիշատակվում են նաև պավլիկյանները[21]։

Սակայն իշխող դասակարգերի համար պավլիկյանների հարցը գնալով բարդանում էր։ Շարժմանն են հարում նորանոր զանգվածներ։ Հովհան Օձնեցին ստիպված է պավլիկյանների հարցը քննության դնել Դվինի 719 թ. եկեղեցական ժողովում և այնտեղ նրանց դեմ ընդունվում է մի կանոն՝ 32-րդը, որի հիմնական նպատակն էր թույլ չտալ, որ շարժումը է՛լ ավելի ծավալվի Հայաստանում։ «Ոչ է պարտ ի չարաղանդ մծղնէիցն տեղիս, որ կոչին պոլիկեանք, ուխել ումեք և կամ յարել և խաւսակից լինել, և երթեւեկութիւն առնել, այլ ամենևին հեռանալ ի նոցանէ, գարշել և ատել զնոսա. զի որդիք սատանայի են և լուցկիք յաւիտենական հրոյն, և ատարացեալ են ի սիրոյ կամաց Արարչին։ Եթէ ոք իցէ, որ յարեսցի ի նոսա, և ի սիրելութիւն և ի բարեկամութիւն եկեսցէ, պարտ է զայնպիսին խոշտանգել, և ծանր պատուհաս ի վերայ դնել, մինչև զգաստասցին և առողջասցեն ի հաւատս։ Ապա եթէ դարձեալ ի նմին գտցին վերստին, զայնպիսին հրամայեմք ամենևին հատանել և արտաքս ընկենուլ իբրև զժանգ ախտս յանդամոց եկեղեցւոյ Քրիստոսի»[22]։

Դրությունը նույնն էր և բյուզանդական Հայաստանում։ Սիմեոն-Տիտոսի և նրա հավատարիմ աշակերտների մահապատժից հետո, վերապրած պավլիկյանները ոմն հայազգի Պողոսի գլխավորությամբ ապաստան են գտնում Պոնտոսում։ Պողոս հայը ուներ Գեգնեսիոս և Թեոդորոս անուններով երկու որդի։ Նրանցից ավագին՝ Գեգնեսիոսին, վերանվանելով Տիմոթեոս՝ Պողոս առաքյալի աշակերտներից մեկի անունով, հռչակում է պավլիկյանների աղանդապետ։ Այս հողի վրա երկու եղբայրների միջև գժտություն է առաջանում։ Թեոդորոսն ինքն է ցանկանում արժանանալ այդ պատվին, բայց հաջողություն չի ունենում։ Երկու եղբայրների միջև ծագած հակառակությունը հարատևեց մինչև նրանց կյանքի վերջը։

Իսավրական հարստության կայսրերը, առաջին հերթին Լևոն III-ը (717—741) և Կոստանդին V-ը (741—775) որոշ չափով փոխում են իրենց նախորդների քաղաքականությունը պավլիկյանների նկատմամբ, ելնելով, իհարկե, առաջին հերթին իրենց քաղաքական և պետական շահերից։ Պավլիկյանները կարող էին ժամանակավորապես դառնալ իրենց դաշնակիցները պատկերամարտության հարցում՝ վանականության դեմ մղած իրենց պայքարում, ինչպես նաև ռազմական օգնություն ցուցաբերել կայսրության արտաքին թշնամիների դեմ մղված պայքարում։ Գեգնեսիոս-Տիմոթեոսը հրավիրվում է Կոստանդնուպոլիս, հանձնվում պատրիարքի դատին, բայց վերջինս բավարարվում է նրան ասել տալով պավլիկյանությունից ուրացման բանաձևերը և կայսեր հրամանով ազատ արձակվում։ Աղանդապետը, վերադառնալով Պոնտոս, այնուամենայնիվ չի մնում այնտեղ, այլ իր աշակերտների գլուխն անցած ապաստանում է պավլիկյան շարժման բնօրրանը՝ Մանանաղի։

---

21 «Սամուէլի քահանայի Անեցւոյ», Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 286։

22 «Կանոնագիրք Հայոց», Ա, աշխատասիրությամբ Վազգեն Հակոբյանի, Երևան, 1964, էջ 534—535։

Գեղնեսիոս-Տիմոթեոսը ուներ Զաքարիա անունով մի որդի և մի որդեգիր՝ Հովսեփին։ Աղանդապետի մահից հետո պավլիկյան շարժման մեջ ճեղքվածք է առաջանում։ Ոմանք աղանդապետ էին ճանաչում Զաքարիային, մյուսները՝ Հովսեփին։ Նրանց միջև թշնամությունն այն աստիճան սրվեց, որ Զաքարիան քարի հարվածով քիչ էր մնացել սպաներ Հովսեփին։ Պավլիկյանների շարքերում այդ թշնամությունն ու հակամարտությունը, ինչպես ցույց է տալիս Պետրոս Սիկիլիացին, կար Զաքարիայից և Հովսեփից առաջ էլ, և բխում էր շարժման մասնակիցների դասակարգային և էթնիկական տեսակետից ոչ միակուռ լինելուց։ Հակառակ այդ բոլորին, պավլիկյան շարժումը արաբաբյուզանդական սահմանի վրա գնալով ծավալվում էր, ընդգրկելով նորանոր շրջաններ։ Ահա այս ժամանակ է, որ աղանդը իր դասակարգային բնույթից բացի ստանում է նաև ժողովրդաազատագրական պայքարի բովանդակություն։

Փիլիպպիկոս կայսեր հալածանքների հետևանքով պավլիկյան շարժումը մուտք էր գործել նաև Մելիտինե և Չորրորդ Հայք։ VIII դ. կեսերին այդ սահմանամերձ շրջաններում, նաև Թեոդոսուպոլսի-Կարինում կային բազմամարդ պավլիկյան համայնքներ։ Նրանց գոյությունն այնտեղ պատահական չէր. Արաբները պավլիկյանների ռազմունակ տարրին ուզում էին օգտագործել Բյուզանդիայի դեմ և այդ իսկ պատճառով նրանց բնակեցնում էին հենց նշված սահմանամերձ շրջաններում։ Բայց հակառակ այն բանի, որ մինչև VIII դարի սկիզբը, պավլիկյանների և արաբների միջև ստեղծվել էր համեմատաբար սերտ կապ, որի հիմքում ընկած էր միասնական պայքարը Բյուզանդական կայսրության դեմ, այդ կապը շատ շուտով թուլացավ և պավլիկյանները խալիֆայության դաշնակիցներից դարձան նրա թշնամիները։ Դրա հիմնական պատճառը, ամենայն հավանականությամբ, 725 թ. արաբների որդեգրած հարկային դաժան քաղաքականությունն էր, որ ամբողջությամբ ծանրանում էր աշխատավոր խավերի ուսերին։ Եվ երբ Հայաստանում 748 թ. Գրիգոր Մամիկոնյանը, օգտվելով արաբական խալիֆայության ներսում բռնկված գահակալական պայքարից, ապստամբություն բարձրացրեց, պավլիկյանները որոշեցին մասնակցել դրան։ Այն ժամանակ, երբ հայ ապստամբների զորքը գտնըվում էր Պոնտոսում, նրան հարեցին այնպիսի մարդիկ, որոնց VIII դարի հայ պատմիչ Ղևոնդը անվանում է «որդիք յանցանաց»։ «Եւ ամենայն որդիք յանցանաց,— գրում է նա,— երթեալք խառնէին ի գունդ ապստամբութեանն, որք ոչ ճանաչէին զերկիւղն Աստուծոյ և ոչ զահ իշխանաց և ոչ զպատիւ ծերոց, այլ իբրև այլազգի և օտարացեալ ասպատակ սփռեալ գերէին զեղբարս և զազգակիցս իւրեանց և բազում աւարառութիւնս առնէին, խոշտանգանաւ և գանիւք տանջանս ածեալ ի վերայ եղբարց իւրեանց»[23]։

Ղևոնդի այս արժեքավոր տեղեկություններից կարելի է հանգել մի շարք կարևոր եզրակացությունների։ Նախ և առաջ կասկածի ենթակա չէ, որ «որդիք յանցանաց» հայեր են, նրանք չունեն աստծո վախը և չեն ենթարկվում ոչ հոգևոր, և ոչ էլ աշխարհիկ իշխանություններին։ Հայ իրականության մեջ VIII դ. կեսերին այդպիսիք կարող էին լինել միայն պավլիկյանները։ Այդ հաստատվում է նաև բյուզանդական աղբյուրների տվյալների հիման վրա։ Պետրոս Սիկիլիացին ցույց է տալիս, որ Գեղնեսիոս-Տիմոթեոսի մահից հետո, որ տեղի ունեցավ Մանանաղիում, նրա հաջորդները՝ Հովսեփ-Եպափրոդիտոսը և Զաքարիան, Մանանաղիի պավլիկյանների գլուխն անցած, փորձում են գաղտ-

23 «Ղևոնդեայ Մեծի վարդապետի Հայոց պատմութիւն», ՍՊԲ., 1887, էջ 123։

նի փախչել արաբական տիրապետությունից, անցնել սահմանը և ապաստանել Պոնտոսում։ Պետրոս Սիկիլիացին նշում է նաև, որ արաբներն իմանալով այդ մասին, հալածում են պավլիկյաններին և սարսափելի ջարդ տալիս Զաքարիայի հետևորդներին։ Հազիվհազ փրկվում է Հովսեփն իր կողմնակիցներով, անցնում բյուզանդական սահմանը և ապաստանում Պոնտոսի էպիսպարիս վայրում։ Հասկանալի է, որ Ղևոնդի հիշատակած «որդիք յանցանաց» և Հովսեփի գլխավորած պավլիկյանները միևնույն անձնավորություններն են։

Պոնտոսի էպիսպարիս բնակավայրի պավլիկյանները մեծ պատվով են ընդունում իրենց մոտ ապաստան գտած համատակիցներին։ Բայց իշխող դասակարգերի վերաբերմունքը նրանց նկատմամբ բոլորովին այլ էր։ Ղևոնդը գրում է, որ «յանցանաց որդիների» ապստամբությանը հարելու հետևանքով վերջիններս ղեկավարների միջև ապստամբության հետագա ընթացքի հարցում անհամաձայնություն է առաջանում։ «Յաղագս որոյ,— գրում է Ղևոնդը,— իշխան Աշոտ... և ոմանք ի նախարարացն ընդ նմա, կամէր միաբանել ընդ որդիսն Իսմայէլի»[24]։

Այսպիսի իրավիճակում հայ նախարարներին մնում էր շարունակել արաբների գործը պավլիկյանների նկատմամբ։ Պոնտոսի էպիսպարիսում ապաստանած Հովսեփին և նրա գլխավորած պավլիկյաններին հալածանքի է ենթարկում ոմն «բարեպաշտ արխոնտ»։ Նրան Պետրոս Սիկիլիացին անվանում է Կրիկորակես (Կրիկորիկ), որը, ամենայն հավանականությամբ, նախարար Գրիգոր Մամիկոնյանն[25] էր։

Այս բոլորն ընդգծում են պավլիկյան շարժման ոչ միայն դասակարգային, այլև ժողովրդաազատագրական բնույթը։

Խալիֆայության ներսում բռնկված գահակալական կռիվները փորձեց օգտագործել նաև Բյուզանդական կայսրությունը, ավելի ճիշտ՝ հայ նախարարների ապստամբությունը արաբների դեմ ու Բյուզանդիայի միաժամանակյա հարձակումը խալիֆայության վրա, ամենայն հավանականությամբ, նախօրոք կազմակերպված և համաձայնեցված էին։ Ղևոնդի ասելով հայ ապըստամբները «երթեալք ապաստանէին յամուրս յաշխարհին Տայոց... և ապաստանեալք առնել ի զօրս արքային Յունաց որք էին ի կողմանս Պոնտոսի... քանզի էր ի մէջ նոցա ուխտ խաղաղութեան հրամանաւ կայսերն Կոստանդնի»[26]։ Կոստանդին V Իսավրացին 752 թ. հարձակվեց և գրավեց սահմանամերձ երկու նշանավոր քաղաք-ամրոցներ՝ Մելիտենեն և Թեոդոսուպոլիս-Կարինը։ Այդ գործին մեծապես նպաստեց նշված քաղաքների հայ և ասորի բնակչությունը[27]։ Կարին գավառի հայությունը խնդրեց կայսրից իրեն Բյուզանդիա տեղափոխել, ազատվելու արաբական ծանր լծից։ Կայսրը տվեց իր համաձայնությունը և հայերը «թողին զերկիր ծննդեան իւրեանց»[28] և գնա-

---

24 «Ղևոնդեայ Մեծի վարդապետի Հայոց պատմութիւն», էջ 123։

25 Տե՛ս *Р. М. Бартикян,* К вопросу о павликианском движении в первой половине VIII в., Византийский Временник, т. VIII, 1956, с. 127.

26 Ղևոնդ, էջ 122—123։

27 Nicephori Patriarchae Constantinopolitani Antirrheticus adv. Const. Copr. *Migne*, Patrologia graeca, t. 100, col. 508—509; Georgii Monachi Chronicon, ed. C. de Boor, Lipsiae, 1904 p. 763.

28 Ղևոնդ, էջ 129։ Հմմտ. Տեառն Միխայէլի Ասորւոց պատրիարքի ժամանակագրութիւն, Երուսաղէմ, 1871, էջ 348։ Նաև *Michel le Syrien* Chronique, ed. *J.-B. Chabot*, Paris,

ցին կայսեր հոաէրկ։ Դրանից հետո, համոզված լինելով, որ չպիտի կարողանա քաղաքը երկար պահել իր ձեռքում, Կոստանդին V-ը հիմնահատակ խորտակում է Թեոդոսուպոլիս-Կարինի պարիսպները և հայ ու ասորի բնակիչներին գաղթեցնում Թրակիա, բավարարելով նրանց կարիքները[29]։ Մինչ այդ կայսրը Թրակիայում հատուկ շինարարություն է ձեռնարկել՝ գաղթականներին բնակեցնելու համար։ Այս գաղթեցման վերաբերյալ շատ արժեքավոր են Թեոփանես Խոստովանողի տեղեկությունները։ Նա ցույց է տալիս, որ Կոստանդին V-ի գաղթեցրածները Թրակիայում տարածեցին պավլիկյան աղանդը[30]։ Այս փաստը վկայում է, որ VIII դ. կեսերին պավլիկյան մեծահոծ համայնքներ կային Կարին գավառում և Մելիտենեում և որոշում է պավլիկյան առաջին համայնքների հանդես գալու ժամանակը Եվրոպայում։ Ահա այս պավլիկյանները, որոնք գաղթեցվել էին մի երկրամաս, որտեղ մոտ դարուկես առաջ, Մավրիկիոս կայսեր օրոք, բնակեցվել էին իրենց ազգակիցները[31], նպաստավոր հող գտնելով, ժամանակի ընթացքում աճեցին ու իրենց գաղափարները տարածեցին տեղի ժողովուրդների մեջ և հող նախապատրաստեցին միջնադարյան մի նոր հուժկու դասակարգային շարժման՝ բոգոմիլության հանդես գալուն։

Եթե պավլիկյանները, տեղափոխվելով բյուզանդական կայսրության սահմանները, ուզում էին ազատվել արաբական ծանր լծից, ապա Բյուզանդիայի համար նրանց տեղափոխումը բոլորովին այլ նպատակներ էր հետապնդում։ Կայսրության նպատակն էր իր երկրի հյուսիսային սահմանի վրա բնակեցնել ռազմունակ մի տարր, օգտագործելու համար արտաքին թշնամու դեմ։ Ստեփանոս Նախավկայի վարքից իմանում ենք, որ 762 թվականին Թրակիայում կար հայ պատկերամարտներից բաղկացած մի զորամաս[32] (στῖφος τῶν Ἀρμενίων), ամենայն հավանականությամբ այն հայ պավլիկյաններից, որոնք մի քանի տարի դրանից առաջ Կոստանդին V-ը գաղթեցրել էր այնտեղ։

## 3. ՊԱՎԼԻԿՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆԸ

Պավլիկյան շարժման գաղափարախոսությունը մի ժամանակաշրջանի արգասիք չէ։ Պահպանված նյութերն արտացոլում են պավլիկյան գաղափարախոսությունն իր վերջնական ձևավորման ժամանակաշրջանում, այն է՝ IX դարում։ Բայց և այնպես դժվար չէ նկատել այն ամենը, ինչ պավլիկյան գա-

---

901, t. II, p. 518, 523; Agapius (Mahboub) de Menbidj, Histoire Universelle, editée et traduite par *A. Vasiliev*, Patrologia Orientalis, t. VIII, fasc. 3, p. 531: *Հայերի և ասորիների մի նոր գաղթեցման մասին Թրակիա Կոստանդին V-ի որդի Լևոն IV-ի կողմից, հիշում է Միքայել Ասորին. «Եւ Լևոն առաքեաց զօր ի Միջագետս, և տարան զքրիստոնեայսն՝ Հայս և Ասորիս ուղղափառս (իմա՝ միաբնակներին—Հ. Բ.) և բնակեցոյց ընդ ինքեան ի Թրակիա»։ Ժամանակագրութիւն Տեառն Միխայէլի Ասորւոց պատրիարքի, Երուսաղեմ, էջ 354։*

[29] Nicephori Archiepiscopi Constantinopolitani Opuscula historica, ed. *C. de Boor* Lipsiae, 1880, p. 220. De rebus post Mauricium gestis, *Migne*, Patrologia graeca, t. 100, col. 693.

[30] Theophanis Chronographia, ed. C. *de Boor*, t. I, Lipsiae, 1883, p. 429.

[31] Սեբեոս, *գլ. 13։*

[32] Vita Sancti Stephani Junioris et Martyri, *Migne*, Patrologia graeca, t. 100, col. 1071—1086: *Տե՛ս Նաև՝ Հ. Բարթիկյան, Հայ-բյուզանդական նոթեր, «Լրաբեր հաս. գիտ.», 7—8, 1960, էջ 320։*

ղափարախոսության մեջ մուտք է գործել նախորդած աղանդավորական շարժումներից։

Պավլիկյան շարժման մասնակիցների դասակարգային և էթնիկական բազմազանությունը, որն իր արտահայտությունը գտավ շարժման ներսում ժամանակ առ ժամանակ հանդես եկող պայքարում, արտացոլվեց նաև պավլիկյան գաղափարախոսության զանազան հոսանքների մեջ։ Փոտ պատրիարքը նրանց վարդապետության մասին գրելիս, հաճախ նշում է այդ տարբեր ուղղությունների մասին և ցույց տալիս, որ պավլիկյան գաղափարախոսությունը «բազմաճյուղ» է (πολυσχιδὴς γὰρ ἡ πλάνη)[33]։

Պավլիկյանների առաջին և գլխավոր թեզն այն էր, որ գոյություն ունի երկու աստված՝ Բարի և Չար։ Պավլիկյաններն ասում էին, թե «միայն մի բան է մեզ բաժանում հռոմներից, այն, որ մենք մեկ աստված ենք համարում երկնային հորը, որն այս աշխարհում իշխանություն չունի, այլ կունենա այն ապագայում, և մի այլ աստված, արարիչն աշխարհի, որն ունի այս աշխարհի իշխանությունը։ Իսկ հռոմները միևնույն աստծուն համարում են և հայր երկնային, և արարիչ ամբողջ աշխարհի»[34]։ Ինչ տեսանելի է (βλεπόμενον) ասում էին պավլիկյանները, այն Չարի ստեղծածն է, Բարի աստծուն է վերաբերում այն, ինչ բանականության է վերաբերում (νοούμενον) և անտեսանելի է (ἀόρατον)[35], «Բարի աստվածը զգայական ոչինչ չի ստեղծել»[36]։ Աղանդապետ Սերգիոսը դրա հիման վրա նախնական մեղսագործությունը, որ մարդկությունը ժառանգել է Ադամից, «բարեգործություն» էր համարում, նա մեղսագործություն էր համարում իր վարդապետությունից հեռանալը կամ այն չընդունելը[37]։

Չար աստծուն, որ իշխում է տեսանելի աշխարհում և միաժամանակ մարդկանց արարիչն է, պավլիկյաններն անվանում էին Սատանա[38]։ Այս հարցում հայկական աղբյուրները համերաշխ են բյուզանդական աղբյուրներին։ Գրիգոր Մագիստրոսն իր մի թղթում, խոսելով պավլիկյանների մասին, ցույց է տալիս, որ համաձայն նրանց վարդապետության Մովսես մարգարեն Սինա լեռան գագաթին ոչ թե աստծուն տեսավ, այլ սատանային[39], հասկանալի է, այս աշխարհի արարչին, չար աստծուն, հետևաբար այն բոլոր պատգամները, որ Մովսեսն ստացավ այդ աստծուց, այն է տասնաբանյան, սատանայի պատգամներն էին։ Իրենց թեզը հաստատելու համար պավլիկյանները դիմում էին Նոր կտակարանի հեղինակությանը, որտեղ գրված է, թե Քրիստոս

---

33 Photii Patriarchae Constantinopolitani, Sermo II Contra Manichaeos, ***Migne***, Patrologia graeca. t. 102, col. 93.

34 *J. Friedrich*, Der ursprüngliche bei Georgios Monachos nur theilweise erhaltene Bericht über die Paulikianer, Sitzungsberichte der philosophisch-philologischen und der historischen Classe der k. b. Akademie der Wissenschaften zu München, Heft I 1896, S. 70—81: *Ռուսերեն թարգմանությունը տե՛ս Р. М. Бартикян*, Источники..., с 197—207։ *Համեմ. նաև՝ Պետրոս Սիկիլիացու մոտ. «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 748։*

35 Photii Sermo Contra Manichaeos, col. 152, 165.

36 Photii Sermo II, col. 93.

37 *«Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 766։*

38 *J. Ficker*, Eine Sammlung von Abschwörungsformeln, Zeitschrift für Kirchengeschichte, Bd. XXVII, S. 453.

39 *«Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 168։*

մարդկանց դիմելով ասել է, թե «Դուք ի հօրէ ի սատանայէ եք, և ցանկութիւնս հօրն ձերոյ կամիք առնել»[40]։ Նրանք մարդկային մարմինը Չարի ստեղծագործություն էին համարում, դրանով իսկ մերժում էին հարությունն ի մեռելոց, գտնում, որ մարդ աշխարհում իր գործած մարմնական մեղքերի համար պատասխանատու չէ, քանի որ մարմինը Չարի արարչագործությունն է[41]։ Պավլիկյանները երկնային աստծո արարչագործություն էին համարում միայն երկու բան՝ արեգակը և մարդկային հոգին, ընդունում ութ երկնքի գոյությունը, որոնցից յոթը ստեղծել է երկնային աստվածը, որոնց վրա էլ բազմած է։ Պավլիկյանների պատկերացմամբ ութերորդ երկինքը ամենից ցածն է գտնվում, այն մարդկանց համար տեսանելի է, և այս աշխարհի արքա սատանան է՝ ստեղծել[42]։

Եվթիմիոս Զիգաբենոսը իր «Զրահ ուղղափառության» աշխատության մեջ մեսալյաններին (մծղյաններին) վերաբերող գլխում, որտեղ հիշում է նաև «հայերին» և «պավլիկյաններին», ի միջի այլոց գրում է, որ աղանդավորների վարդապետության համաձայն աստված մարդկային բնությունը չարին է ծառայեցրել։ Դրա հիման վրա աղանդավորները գտնում էին, որ նրանց բոլոր արարքները անդատապարտելի են և պատժի ենթակա չեն, հետևաբար մեղքերի դատ ու դատաստան չի լինելու։ Զիգաբենոսի ասելով աղանդավորները ուժեղ կռվան ունեն առ աստված թե «Դու մեր բնությունը ծառայեցրիր դևերին, իսկ ծառաները պարտավոր են կատարել այն, ինչ տերերն են հրամայում»[43]։

Պահպանվել է Փոտ պատրիարքի մի շատ արժեքավոր վկայությունը, թե պավլիկյանների ասելով՝ «մշակելի հողերը, տները, ագարակները» (ἀγροί) Չար աստծու արարչությունն է»[44]։

Ասվածը վկայում է պավլիկյան աղանդի միանգամայն աշխարհիկ բնույթի մասին։ Սոցիալական անհավասարությունն ու ճնշումը, աշխատավոր խավերի կեղեքումն ու աղքատացումը, նրանց հողազրկումը, վերջապես աշխարհում տիրող անօրինականությունն ու անարդարությունը չէր կարող պավլիկյանների մեջ այն համոզմունքը չստեղծել, որ այդ բոլորը Բարի աստծո գործը լինել չէր կարող։ Այդ էր պատճառը, որ պավլիկյանները պայքար էին մղում այդ անհավասարության դեմ, համոզված լինելով, որ պայքարում են Չար աստծո արարչագործության, նրա հաստատած կարգ ու կանոնի դեմ, որ իրենց պայքարը կմոտեցնի այն օրը, երբ աշխարհում կտիրի Բարի աստվածը՝ երկնայինը։

Շարժման դասակարգային բնույթը պարզվում է և Հովհան Դամասկացու (ճիշտ է, մեսալյանների վերաբերյալ) արձանագրած մի փաստից, համաձայն որի աղանդավորները սիրով էին ընդունում իրենց տերերից փախած

---

[40] «Աւետարան ըստ Յովհաննու», Ը, 44։

[41] Photii Contra Manichaeos, *Migne*, Patrologia graeca, t. 103, col. 1408.

[42] Joannis Orthodoxi disputatio cum Manichaeo, *Migne*, Patrologia graeca, t. 96, col. 1329; Photii Sermo II, col. 85,93; Euthymii monachi Contra Phundagiatas, *Migne*, Patrolizia graeca, t. 131, col. 57.

[43] Euthymii monachi Zigabeni Orthodoxe fidei Dogmatica Panoplia, *Migne*, Patrologia graeca, t. 130, col. 1277.

[44] Photii Sermo II Contra Manichaeos, *Migne*, Patrologia graeca, t. 102, col. 113.

*ստրուկներին (ծառաներին), սիրով էին ընդունում իրենց դիմող «մեղավորներին», չպահանջելով ապաշխարության որևէ գումար*[45]։

*Պավլիկյաններն ընդունում էին Քրիստոսին, դեռ ավելին, նրանք իրենց էին ճշմարիտ քրիստոնյա համարում, իսկ բյուզանդացիներին արհամարհաբար անվանում էին հռոմներ*[46]։ *Հովհան Օձնեցին իր ճառում գրում է. «Եւ զանուանն իւրեանց (այսինքն՝ պավլիկյանների) զաղտախինս յանդգնեցան կախել զայնցանէ (այն է՝ քրիստոնյաների), որ զերկնից բարութեանցն բուռն հարեալ ունիցին յուսով»*[47]։ *Բայց ընդունելով Քրիստոսին, պավլիկյանները նրա ծրնունդը բացատրում էին յուրովի և ոչ ինչպես պաշտոնական եկեղեցին։ Պավլիկյանների պատկերացմամբ Քրիստոսը Բարի աստծո, երկնային աստծո որդին էր և ոչ երկրային՝ արարիչ աստծու։ Քրիստոսը երկնային աստծո մի հրեշտակն էր, որ օգնեց նրան ընդունելու մարդկությանը։ Քրիստոս իջավ երկընքից, ծնվեց մի կնոջից (Մարիամից), քարոզեց մարդկանց, որ իրենց արարիչը ոչ թե երկնային աստվածն է, այլ երկրայինը, որը և բնակվում է նրանց մեջ, ապա խաչվեց, հարյավ ի մեռելոց և համբարձավ*[48]։ *Աղանդավորներն իրենց վարդապետությունը՝ Քրիստոսի՝ երկնքից իջած լինելու մասին հաստատում էին Պողոս առաքյալի թղթերով, որտեղ, ի միջի այլոց, գրված է. «Առաջին մարդն՝ յերկրէ հողեղէն, իսկ երկրորդ մարդն Տէր յերկնից... և որպէս զգեցաք զպատկեր հողեղինին, զգեցցուք և զպատկեր երկնաւորին»*[49]։ *Այստեղ պետք է նշել, որ պավլիկյանները, ինչպես և այլ աղանդավորներ, արևին Քրիստոս էին համարում և կոչում։*

*Քանի որ պավլիկյանները Քրիստոսին համարում էին երկնային աստուծո հրեշտակը, ապա պարզ է, որ նրանք չէին կարող ընդունել Մարիամին որպես աստվածածին։ Նրանք գտնում էին, որ Քրիստոսը իր մարմինը իր հետ բերեց երկնքից, իսկ Մարիամը նրա համար սոսկ «խողովակի» դեր կատարեց, որի միջով անցավ Քրիստոս*[50], *որ Մարիամը Քրիստոսի «ծննդից» հետո Հովսեփից ուրիշ երեխաներ էլ ունեցավ*[51]։

*«Աստվածաշունչ» գրքերից պավլիկյաններն ընդունում էին միայն Նոր կտակարանը, բացառյալ Պետրոս առաքյալի երկու տիեզերական թղթերը։ «Նրանք անգիր գիտեն Ավետարանն ու Առաքյալը,— գրում է Պետրոս Սիկիլիացին,— տղամարդիկ և կանայք, քաղաքացիներ և գյուղացիներ։ Նույնիսկ կարելի է ապշել,— շարունակում է նա,— տեսնելով, թե ինչպես նրանց մոտ գտնվող դրամագին ստրուկ սկյութացիները (իմա՝ սլավոնները) նույն գրքերից են ճառում, թեև չեն էլ կարողանում մաքուր հունարեն խոսել»*[52]։ *Ավետարանի հիման վրա պավլիկյանները մի գիրք էին կազմել, որն անվա-*

---

[45] Joannis Damasceni monachi et presbyteri Hierosolymitani De haeresibus compendium, *Migne*, Patrologia graeca, t. 94, col. 733.

[46] *«Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 748։ Հմմտ.* Georgii Monachi Chronicon, p. 721: *Սրանից կարելի է հանգել այն կարևոր եզրակացության, որ պավլիկյաններն էթնիկապես սահմանազատվում էին հույներից։*

[47] *«Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ Մատենագրութիւնք», էջ 50։*

[48] *Տե՛ս Р. М. Бартикян,* Источники..., с. 202.

[49] *«Ա. Թուղթ առ Կորնթացիս», ԺԵ, 47։*

[50] *Р. М. Бартикян*, Источники..., с. 205—207.

[51] *«Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 749։*

[52] Petri Siculi, Sermi I, II, III adversus Manichaeos etiam Paulicianos, *Migne*, Patrologia graeca, t. 104, col. 1336.

նում էին «Ջորություն»[53]։ Փոտ պատրիարքի ասելով, պավլիկյանների մեծամասնությունը մերժում էր նաև Ղուկասի ավետարանը[54], հավանաբար այն պատճառով, որ նա սրբացնում է մարգարեներին[55]։ Պավլիկյանները մերժում էին Հին կտակարանն ամբողջությամբ, այն համարում էին սատանայի ստեղծագործություն[56], մարգարեներին անվանում ավազակներ և մոլորեցնողներ[57], չարի արարչություն և չարի սպասավորներ[58], որոնց քարոզածը Ջար աստծուց է ներշնչված[59]։

Բացի Նոր կտակարանից, աղանդավորները սուրբ էին համարում իրենց խոշորագույն աղանդապետ Սերգիոս-Տյուքիկոսի թղթերը, որոնցից մեզ հայտնի են մի քանիսից առանձին հատվածներ միայն, որոնց հանդիպում ենք Պետրոս Սիկիլիացու «Պավլիկյանների պատմության» մեջ։ Այդ թղթերից մեկն ուղղված է Կոլոնիայի պավլիկյաններին, մի ուրիշը՝ ոմն Լևոն Մոնտանացուն[60]։ Ավելի ուշ շրջանի «ուղղափառ» հեղինակների տվյալներով, Սերգիոս-Տյուքիկոսը աղավաղել էր Սուրբ Գիրքը և հատկապես Մատթեոսի ավետարանը, քրիստոնեական ողջ վարդապետությունը Հոր, Որդու և սուրբ Հոգու մասին[61]։

Աղբյուրները որևէ ծանրակշիռ բացատրություն չեն տալիս պավլիկյանների՝ Պետրոս առաքյալի հանդեպ տածած ատելության և թշնամության վերաբերյալ։ Գուցե պատճառն այն է, որ Պետրոսը համարվում էր եկեղեցու՝ որպես հիմնարկության խորհրդանիշ և վեմ հավատո։ Համենայն դեպս մի փաստ կա, որից կարելի է հանգել այդպիսի եզրակացության։ Գեորգ Վանականի «Ժամանակագրության» էսկուրիալի տարբերակում գրված է, որ իր մկրտության ժամանակ Քրիստոսը տեսավ Պետրոս առաքյալին, որը ներկայացել էր մարդկանց՝ տալու վանականի սքեմն ու հանդերձանքը և որ դրա համար է,— գրում է նա,— որ պավլիկյանները ատում են նրան[62]։ Այս փաստը մի անգամ ևս ընդգծում է պավլիկյան շարժման դասակարգային բնույթը։ Վանականները շահագործող տարր էին հասարակության մեջ, և այդ պատճառով պավլիկյանների ատելության առարկան։

Պավլիկյանները մերժում էին եկեղեցին, որը համարում էին «դևերի կացարան» (κατοικητήριον δαιμόνων), [63] ինչպես և հոգևորականների դասը։ Պետրոս Սիկիլիացու ասելով, պավլիկյանները նրանց անունից անգամ խոր-

---

53 *G. Fischer*, Eine Sammlung von Abschworungsformeln, S. 454.

54 Photii Sermo II, col. 108—109.

55 *Նույն տեղում*, col. *116*։

56 Photii Sermo Contra Manichaeos, *Migne*, Patrologia graeca, t. 103, col. 132.

57 *«Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 749*։

58 Photii Sermo Contra Manichaeos, col. 129.

59 Photii Sermo II, col. 97.

60 *«Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 766*։

61 Euthymii Zigabeni Confutatio et eversio impiae et multiplicis exsecrabilium Massalianorum sectae, qui et Phundaitae et Bogomili, *Migne*, Patrologia graeca, t. 131, col. 41.

62 *Р. М. Бартикян*, Источники..., с. 199—200.

63 Euthymii Zigabeni Confutatio et eversio impiae et multiplicis exsecrabilium Massalianorum sectae, qui et Phundaitae et Bogomili, Migne, Patrologia graeca, t. 131, col. 45

շում էին։ Իրենց հավաքատեղիները պավլիկյաններն անվանում էին փոխաբերաբար «կաթողիկե եկեղեցի» կամ աղոթարան[64], իրենց հոգևորականներին՝ «ուղեկիցներ» և «նոտարներ», որոնք «ոչնչով չէին տարբերվում մնացած մարդկանցից ոչ հագուստով, ոչ էլ ապրելակերպով»[65]։ Պավլիկյանները չէին ընդունում սրբերին, հետևաբար և սրբապատկերները[66], պատկերապաշտներին կռապաշտ էին անվանում[67]։ Նրանք մերժում էին մկրտության և հաղորդության հոգևոր խորհուրդները[68]։ Եթե Քրիստոսին համարում էին երկնային աստուծո որդի, որ ոչինչ չունի այս աշխարհից, սատանայի աշխարհից, ապա պարզ է, որ չի կարելի նրա հետ հաղորդվել հացով ու գինով, մկրտվել ջրով, որոնք այս աշխարհի արարիչ սատանայի ստեղծագործությունն են։ Հաղորդության հացն ու գինին նրանք սովորական հաց ու գինի էին համարում[69], սրբությունից զուրկ։

## 4. ՊԱՎԼԻԿՅԱՆ ՀԱՄԱՅՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ

Պավլիկյանները կազմակերպված էին տերիտորիալ համայնքների ձևով։ Աղբյուրները հիշատակում են IX դարի 30-ական թվականներին գոյություն ունեցող պավլիկյան վեց համայնք։ Նրանց թիվը հետագայում, մինչև նույն դարի 70-ական թվականները, անկասկած, ավելացավ։ Առաջին համայնքը Կիբոսսան էր՝ Կոլոնիայի մոտ, որին աղանդավորներն անվանում էին Մակեդոնիա*։ Այն հիմնադրվել էր VII դարի երկրորդ կեսին, պավլիկյան շարժման հիմնադիր Կոստանդին-Սիլվանոսի կողմից։ Բացի Կոստանդինից, հետագայում այնտեղ էր քարոզել ու վարդապետել նաև Սիմեոն-Տիտոսը։ Երկրորդ համայնքը Մանանաղին էր, որ հիմնադրվել էր Գեգնեսիոս-Տիմոթեոսի կողմից, VIII դարի առաջին կեսին։ Գեգնեսիոսը այն անվանել էր Աքայա, Պողոս առաքյալի հիմնադրած համայնքի անունով[70]։ Մեզ հայտնի է մի համայնք ևս, որ հիմնադրել էր Հովսեփ-Եպափրոդիտոսը։ Այն կոչվում էր Փիլիպպեց-

---

64 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 750, 757։

65 Georgii Monachi Chronicon, p. 724: Հմմտ. «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 773։

66 Հմմտ. *Mansi*, Saccorum Conciliorum nova et amplissima Collectio t. XIII, col 157, 181. Պավլիկյանները մերժում էին և խաչը։ Բայց կան և տվյալներ, որոնց համաձայն աղանդավորները հիվանդանալիս իրենց վրա էին դնում փայտե խաչը, իսկ առողջանալուց հետո ջարդում այն, վառում կամ տրորում (տե՛ս «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 773)։

67 «Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ Մատենագրութիւնք», էջ 46—47։

68 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 749, 757, 772։

69 Photii Sermo Contra *Manichaeos*, col. 173; Euthymii Monachi venerabilis coenobii Peribleptae liber, *Migne*, Patrologia graeca, t. 131, col, 56.

70 Պատահական չէ, որ Գեգնեսիոս-Տիմոթեոսի հիմնադրած համայնքը կոչվել է Աքայա։ Պողոս առաքյալի աշակերտ Տիմոթեոսը իր ուսուցչի կողմից հենց իսկական Աքայա համայնքի վերակացու էր նշանակվել։ Տե՛ս «Գործք առաքելոց», ԺԹ, 22։

* Կոլոնիայի համայնքը Մակեդոնիա կոչվելու պատճառը Պողոս առաքյալի հետևյալ խոսքերն էին. «Եւ ելեալ ի Տրովադայ՝ դէպ ուղիղ գնացաք ի Սամոթրակէ և վաղիւ անդր ի Նոր քաղաք, եւ և անտի ի Փիլիպպուս, որ է առաջին վիճակ Մակեդոնացւոց՝ քաղաք Կողովնիա» (ԺԶ, 11—12)։ Հմմտ. *H. Grégoire*, Les sources de l'histoire des Pauliciens. Bulletin de l'Académie Royal de Belgique, Classe des Lettres, 5-ème série, t. XXII, 1936, p. 103, n. 1.

վոց, բայց աղբյուրները չեն տալիս նրա տեղադրությունը։ Սերգիոս-Տյուքիկոսն անձնապես հիմնադրել է երեք համայնք. Կողոսացվոց համայնքը՝ Արգաուս-Արգովանում, Եփեսացվոց համայնքը՝ Մոպսուեստիայում և Լավոդիկեցվոց համայնքը՝ Պոնտոսի Կինոխորիոն կոչվող ավանում։ Վերոհիշյալ երեք համայնքների մասին վկայում է ինքը՝ Սերգիոս-Տյուքիկոսը իր մի թղթում, որից քաղվածքներ է արել Պետրոս Սիկիլիացին իր «Պավլիկյանների պատմության» մեջ[71]։

Պավլիկյան շարժումը գլխավորում էր աղանդապետը, աղանդի գաղափարական ղեկավարը։ Աղանդապետի պաշտոնն ընտրովի էր և նրա ընտրության գործում մասնակից էին դառնում ոչ բոլոր աղանդավորները, այլ վերջիններիս ղեկավար կորիզը, որոնք կոչվում էին սինեկդեմոսներ (ուղեկիցներ)[72]։ Սինեկդեմոսներին անմիջականորեն ենթարկվում էին Պետրոս Սիկիլիացու խոսքերով «ավելի ստորադաս ստանում հոգևորականներ, որոնց նոտար են անվանում»[73], և սրանք իրենց հերթին նշանակվում էին սինեկդեմոսների կողմից[74]։ Նոտարների և սինեկդեմոսների պարտականությունն էր պավլիկյան գաղափարների ճշգրիտ կիրառումն ու տարածումը։

Բացի սինեկդեմոսներից ու նոտարներից, աղանդապետն ուներ նաև աշակերտների մի խումբ, որոնք աղբյուրներում կոչված են «աստատներ»: Պետրոս Սիկիլիացին նրանց համարում է աղանդապետի, տվյալ դեպքում Սերգիոսի աշակերտները[75], իսկ պատրիարք Փոտը՝ Սերգիոսի աշակերտներից ամենաերևելիները[76]։ Աստատների մասին մեզ հասած տեղեկությունները չնչին են, բայց եղածից կարելի է գալ այն եզրակացության, որ ի տարբերություն սինեկդեմոսների և նոտարների, որոնք գլխավորապես գաղափարական հարցերով էին զբաղված, աստատները պավլիկյանների թշնամու դեմ զինված պայքարի կազմակերպողներն էին, այսինքն գլխավորապես գործնական աշխատանքով էին զբաղված։

Բացի աղանդապետից, պավլիկյան շարժումն ուներ նաև զինված ուժերի իր ղեկավարը, համենայն դեպս IX դարից սկսած։ Զինված ուժերը գլխավորում էր ոչ թե աղանդապետը, այլ սպարապետը[77] (τῆς ὁπλιτικῆς δυνάμεως ὁ ἄρχων)։ Նա շատ մեծ ուժ ու կշիռ ուներ պավլիկյան համայնքի ներսում ծագած բազում հարցերի լուծման գործում։ Աղանդապետ Սերգիոսն ու սերգիոսականները Վահանից ու վահանյաններից ուժեղ էին այն պատճառով, որ զինված ուժերի հրամանատարը «հավատքով» սերգիոսական էր[78]։ Սերգիոսը վերջին աղանդապետն էր, պավլիկյան շարժման գաղափարական ղեկավարը։ Նրանից հետո հանդես եկած Կարբեասն ու Խրիսոխիրը աղանդապետներ չէին,

---

71 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 768։

72 Սինեկդեմոս են կոչված «Գործք առաքելոցում» (ԺԹ, 30) Պողոս առաքյալի աշակերտները։ Այստեղ էլ պավլիկյանները ջանացել են նմանվել իրենց պատրոնին։

73 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 768։

74 Սերգիոսի բազմաթիվ սինեկդեմոսներից հայտնի են հետևյալ վեցի անունները՝ Միքայել, Կանակարիս, Հովհաննես, Թեոդոտոս, Վասիլ և Զոսիմոս։

75 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 768։

76 Р. М. Бартикян, Источники для изучения истории павликианского движения, с. 193.

77 Նույն տեղում, էջ 192։

78 Նույն տեղում։

այլ զինված ուժերի ղեկավարներ, սպարապետներ։ Նրանց պաշտոնը նույնպես ընտրովի էր և դրան մասնակցում էին բոլոր աղանդավորները[79]։

## 5. ՊԱՎԼԻԿՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՀԶՈՐԱՑՈՒՄԸ ՍԵՐԳԻՈՍ-ՏՅՈՒՔԻԿՈՍԻ ՕՐՈՔ։ ՍԵՐԳԻՈՍ-ՎԱՀԱՆՅԱՆ ՊԱՅՔԱՐԸ

*Գրիգոր Մամիկոնյանի հալածանքներից հետո պավլիկյան շարժման ղեկավար Հովսեփ-Եպափրոդիտոսը ստիպված փախուստի էր դիմել Պիսիդիայի Անտիոք քաղաքը, որտեղ մոտ երեք տասնամյակ վարդապետել է պավլիկյան ուսմունքը և այդ նահանգում պավլիկյան շարժման մի կարևոր կենտրոն հիմնել։*

*Հովսեփ-Եպափրոդիտոսի մահից հետո պավլիկյան շարժման ղեկավար է դառնում ոմն Վահան։ Բայց մի քանի տարի անց պավլիկյանների շրջանում հանդես է գալիս Սերգիոս (Սարգիս) անունով մեկը, որին վիճակված էր դառնալու պավլիկյան շարժման ամենակարկառուն աղանդապետն ու գաղափարախոսը։*

*Սերգիոսը ծնվել էր Անկյուրայի շրջանում։ Բյուզանդական հեղինակները, և ամենից առաջ Պետրոս Սիկիլիացին ոչ մի աղանդապետի նկատմամբ այնքան անզուսպ չեն, ինչքան Սերգիոսի, ոչ մեկի հասցեին այնքան լուտանքներ չեն թափում, ինչքան նրա։ Դա ապացույց է Սերգիոսի՝ պավլիկյանների շրջանում հիրավի խոշոր դեմք լինելուն։*

*Ահա թե ինչպես է ներկայացված աղանդապետ Սերգիոսը Պետրոս Սիկիլիացու երկում։ Դրյուինոս անունով մեկը, գրում է բյուզանդացի պատմիչը, «... մի որդի ունեցավ, սատանայի պաշտպան Սերգիոսին, ով շատերին գառներից գայլ դարձրեց և նրանցով ցրիվ արեց Քրիստոսի հոտերը։ Սերգիոսին, գառան կերպարանքով սարսափելի գայլին, ով խորամանկորեն իրեն առաքինի ներկայացրեց և այդ ձևով շատերին խաբեց։ Սերգիոսին, Քրիստոսի խաչի թշնամուն, բերանն անաստվածության, Աստվածածնի և բոլոր սրբերի հայհոյիչին։ Սերգիոսին, Քրիստոսի առաքյալների թշնամուն, մարգարեներին ատողին, Սուրբ Գրքից խորշողին, դեպի առասպելներն ու կեղծիքը դիմողին։ Սերգիոսին, Քրիստոսին ատողին, եկեղեցու թշնամուն, «որ զորդին Աստուծոյ առ ոտն եհար, և զարիւն նորոյ ուխտին խառնակ համարեցաւ և զհոգին շնորհաց թշնամանեաց»[80]։ Սերգիոսին, ով իրեն մխիթարիչ[81] էր համարում և Տյուքիկոս կոչում և իր աշակերտների կողմից երկրպագվում որպես սուրբ հոգի»[82]։ Այդուհանդերձ Պետրոս Սիկիլիացին չի ուրանում, որ Սերգիոսը անչափ զարգացած ու կարդացած մարդ էր։*

*Սերգիոսը մինչև պավլիկյան աղանդին հարելը աստվածաբանությամբ չէր զբաղվել, անգամ ավետարաններին ծանոթ չէր։ Պավլիկյան աղանդին հետևող մի կնոջ հարցին, թե ինչու չի ընթերցում ավետարանը, Սերգիոսը պատասխանել էր, թե դա հոգևորականների գործն է, և ոչ աշխարհականների։ Բայց, երբ այդ կինն իրեն ասաց, որ դա ճիշտ չէ, պետք է կարդալ ավետարանները, քանի որ հոգևորականները կեղծում են աստծու խոսքը, ավե-*

---

79 *Նույն տեղում, էջ 195։*

80 *«Թուղթ առ Երրայեցիս», էջ 29։*

81 *Հովհաննես ավետարանում մխիթարիչ է կոչվում սուրբ հոգին։*

82 *«Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 759։*

տարանների աստվածների իսկական միտքը չեն հասցնում հավատացյալներին, նպատակ ունենալով հավատացյալ ժողովրդից ճշմարտությունը թաքցնել, դրա վրա ահա, Սերգիոսը հետաքրքրվում է, համոզվում պավլիկյան կնոջ ասածներին և շատ չանցած Պետրոս Սիկիլիացու խոսքերով, նա իրեն ներկայացրեց, որպես «պայծառ ճրագ, լուսավոր աստղ, փրկության առաջնորդ»[83]։ Նա ստացավ Պետրոս առաքյալի աշակերտ Տյուքիկոսի անունը և եռանդուն գործունեություն ծավալելով, նորանոր զանգվածներ մասնակից դարձրեց աղանդին, Պետրոս Սիկիլիացու ասելով՝ «շատերին ուղղափառ հավատքից հեռացրեց»[84]։

Սերգիոս-Տյուքիկոսի և Վահանի միջև շուտով ծագում են տարաձայնություններ, որոնք գնալով արյունահեղության պատճառ են դառնում։ Աղանդապետ Հովսեփ-Եպափրոդիտոսի անմիջական հաջորդը Վահանն էր։ Ինչպես կարելի է եզրակացնել Պետրոս Սիկիլիացու տվյալներից, Վահանը քարոզում էր Հովսեփի վարդապետությունը և մշտապես պավլինում էր իր ուսուցչի հեղինակությանը[85], այնինչ Սերգիոսը, ելնելով ըստ երևույթին ժամանակի պահանջից, նոր գաղափարներ էր ներմուծել պավլիկյան վարդապետության մեջ, մի բան, որ պատճառ դարձավ պավլիկյան շարժման՝ երկուսի տրոհվելուն։ Պիտի ենթադրել, որ շարժումը ժամանակի ընթացքում ունեցել է ճյուղավորումներ, քանի որ դեռ VIII դարի սկզբներից շարժման ներսում առկա էին երկպառակություններ Գեգնեսիոս-Տիմոթեոսի և Թեոդորոսի, ինչպես և նույն դարի կեսերին գործած աղանդապետներ Հովսեփ-Եպափրոդիտոսի և Զաքարիայի միջև։ Պետրոս Սիկիլիացին ցույց է տալիս, որ նման պայքարը աղանդապետների միջև դրանից առաջ էլ գոյություն ուներ և հիմնականում գաղափարախոսության էր վերաբերում[86]։

Պավլիկյան աղանդին մասնակից էին լինում աշխատավոր բնակչության ամենատարբեր խավերը, տարբեր ժողովուրդների ներկայացուցիչներ[87]։ Այս հանգամանքը չէր կարող չանդրադառնալ շարժման վրա։ Սերգիոս-Վահանյան վեճը էլ ավելի խորացրեց այդ պայքարը և IX դարի սկզբում պավլիկյան շարժումը տրոհվում է երկու մասի։ Ովքեր հարեցին Սերգիոսին, կոչվեցին սերգիոսականներ, իսկ ովքեր Վահանին՝ վահանյաններ։

Սերգիոսը 801 թ. սկսած 34 տարի գլխավորեց պավլիկյան շարժումը, հասցնելով այն աննախընթաց հզորության, նա հսկայական դեր խաղաց պավլիկյան համայնքների ամրապնդման գործում, համառ պայքար մղեց՝ ընդդեմ շահագործող դասակարգերի։ Պետրոս Սիկիլիացին իր աշխատության մեջ քաղվածաբար բերում է Սերգիոսի մի քանի նամակները՝ պավլիկյան գրականության մեզ հասած միակ նմուշները։ «Ես հոգնել եմ, գրում էր Սերգիոսը,— Արևելքից Արևմուտք և Հյուսիսից Հարավ, իմ ծնկների վրա Քրիստոսի Ավետարանը քարոզելով»։ Նա պավլիկյան համայնքներ կազմակերպեց

83 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 764։

84 Նույն տեղում, էջ 763։

85 Վահանը հպարտանում էր, որ ինքը ուսուցանում է պավլիկյան վարդապետությունն այնպես, «ինչպես սկզբից սովորեցրել էր» Հովսեփ-Եպափրոդիտոսը։ Տե՛ս «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 767։

86 Նույն տեղում, էջ 758։

87 Վահանը Հայաստանից էր, Սերգիոսը՝ Փոքր Ասիայից։ Այս հանգամանքը ցույց է տալիս, որ երկու աղանդապետները գլխավորեցին շարժման աշխարհագրական և էթնիկական նմաստով երկու տարբեր հատվածներ։

Պոնտոսում (Կինոխորիոնի համայնքը), Մոպսուեստիայում, Արգաուսում, որտեղ և երկար տարիներ վարդապետել է։ Նիկեփոր I կայսեր ժամանակ, այսինքն Սերգիոսի գործած շրջանում, պավլիկյան խոշոր համայնքներ կային Փռյուգիայում և Լիկաոնիայում։ Հիշյալ կայսեր ժամանակ պավլիկյաններն սկսեցին ազատ գործել և «շատերը կործանվեցին նրանց անօրեն գաղափարներից»[88]։

## 6. ՊԱՎԼԻԿՅԱՆՆԵՐԻ ՀԱԼԱԾԱՆՔՆԵՐԸ IX ԴԱՐԻ ԱՌԱՋԻՆ ԿԵՍԻՆ

Իսավրացիների և նրանց նախորդող կայսրերի կողմից աղանդավորների դեմ ընդունված օրենքներն իրենց ուժը չկորցրին նաև հետագայում։ Փոտ պատրիարքի Կանոնագրքում պավլիկյանների առնչությամբ ասված է, որ նրանք ենթակա են մահապատժի, նրանց ունեցվածքը՝ բռնագրավման։ Աղանդավորները իրավունք չունեին կտակ թողնելու, նրանց երեխաները՝ ժառանգություն ստանալու[89]։ Ուժի մեջ էր նաև երկրորդ նիկիական եկեղեցական ժողովի կանոնը, որտեղ ասված էր, որ մանիքեական (իմա՝ պավլիկյանական) գրքեր ունեցողը, և դրանք կրակի տրվելու համար չհանձնողը, պատժի է ենթակա[90]։ Հրապարակ են գալիս բազմաթիվ գործեր՝ հակաճառություններ, ուրացման բանաձևեր և այլ գրվածքներ՝ ուղղված առհասարակ աղանդավորների դեմ, ինչպիսիք են Հովհան Դամասկացու, Մեթոդիոս, Նիկեփոր, Փոտ պատրիարքների և այլոց գործերը։ Վերջինս Կոստանդնուպոլսի Մեթոդիոս պատրիարքի հիշատակին գրած շարականում, նույնիսկ աղոթում էր աստծուն՝ փրկել աշխարհը ամեն տեսակի աղանդներից[91], բայց և սպառնում[92] Քրիստոսի խոսքերով. «բայց զթշնամիսն իմ զայնոսիկ, որ ոչն կամէին զիս թագաւորել ի վերայ նոցա, ածէք այսր և սպանէք առաջի իմ»[93]։

Բյուզանդական կայսրությունը պավլիկյանների դեմ օրենքներ հրապարակելով չբավարարվեց։ IX դարից սկիզբ առան դաժան և տմարդի հալածանքները, որոնք, հենց իրենց՝ բյուզանդական հեղինակների ասելով, պատճառ դարձան կայսրությունը փորձությունների ենթարկելու։

Նիկեփոր կայսեր հաջորդ Միքայել I Ռանգաբեն (811—813) և Լևոն V Հայկազնը (813—820), Պետրոս Սիկիլիացու ասելով, «տեսնելով, որ աղանդը վարակել է քրիստոնյաների մեծ մասին, հռոմեական պետության բոլոր շրջանները հրաման ուղարկեցին՝ որով այդ պիղծ աղանդի կողմնակիցներին կոտորում էին»[94]։ Միքայել I-ը նախ և առաջ մահապատժի հրաման արձակեց Փռյուգիայում և Լիկաոնիայում ապրող պավլիկյանների վերաբերյալ։ Բայց դատավճիռը նա ի կատար չածեց, որովհետև Նիկեփոր պատրիարքը հուսով էր, որ հնարավոր կլինի նրանց ուղղափառության գիրկն ընդունել, բայց, Թեո-

---

[88] «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 738։

[89] Photii Patriarchae Constantinopolitani Syntagma canonum, *Migne*, Patrologia graeca, t. 104, col. 869 (tit. XII, cap. 2).

[90] *Նույն տեղում*, tit. XII, cap. 3:

[91] Photii Patriarchae Constantinopolitani Carmina, I, Sticheron in sanctum Methodium Constantinopolitanum, *Migne*, Patrologia graeca, t. 102, col. 577.

[93] Photii Sermo Contra Manichaeos, col. 176.

[93] Ղուկաս, *ժԹ*, 27։

[94] «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 767։

փանեսի ասելով «այդ մոլորությամբ հափշտակվածների համար զղջալն անհնարին բան էր»[95]։ Հակառակ դրան, Միքայել կայսրը պավլիկյաններից «շատերին սրակոտոր արեց»[96]։ Հալածանքները տարածվեցին նաև Արմենիակների բնակաթեմում։ Նեոկեսարիայի եպիսկոպոս Թովման և էքսարքոս Պարակոնդակեսը, այսինքն հոգևոր և աշխարհիկ իշխանությունները, պավլիկյանների կոտորած կազմակերպեցին։ Բայց աղանդապետ Սերգիոսի «աստատներ»[97] կոչված աշակերտները, ինչպես և Կինոխորիոնի[98] աղանդավորները սպանում են վերոհիշյալ երկու անձնավորություններին, որից հետո աստատները փախչում են Մելիտենե[99], այսինքն անցնում են արաբական տերության սահմանները։ Մելիտենե է գալիս նաև աղանդապետ Սերգիոսը։ Նրանց ընդունողը Մելիտենեի ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ-Ակթան էր, որ աղանդավորների բնակության համար հատկացրեց Արգաուս (այժմ՝ Արգովան) քաղաքը՝ Մելիտենեի մոտ։ Հենց այստեղից էլ պավլիկյանները սկսեցին ասպատակել Բյուզանդական կայսրության սահմանամերձ շրջանները[100]։

Սերգիոս-Տյուքիկոսը 835 թ. Արգաուսում սպանվում է ոմն Ցանիոնի կողմից։ Բացառված չէ, որ նրա սպանությունը բյուզանդական իշխանություններն են կազմակերպել։ Աղանդապետի մահից հետո պավլիկյանները նոր աղանդապետ չընտրեցին, հավանաբար, համոզված լինելով, որ նման լարված իրադրության պայմաններում այդ հարցը կարող էր ներքին նոր վեճի ու պայքարի առիթ ծառայել։ Սերգիոսի «ուղեկիցներից» (սինեկդեմոս) Թեոդոտոսը իր ուսուցչի մահից հետո շատ աշխատեց և վերացրեց սերգիոսականների և վահանյանների միջև գոյություն ունեցող սուր հակամարտությունը։ «Հակառակության և ոչ մի հիմք չկա սերգիոսականների և վահանյանների միջև,— համոզում էր նա իր աղանդակիցներին,— բոլորն էլ մինչև մեր ուսուցչի՝ Սերգիոսի հանդես գալը միևնույն հավատքն էինք դավանում»[101]։ Թեոդոտոսը, ինչպես և Սերգիոսի մյուս «ուղեկիցները» այնուհետև հավասարապես ղեկավարեցին շարժումը[102]։

Բյուզանդիայում մնացած պավլիկյանները, ի պատասխան կայսրության՝ իրենց նկատմամբ ձեռնարկած հալածանքների, մասնակից են դառնում Թովմա Գավիրացու ապստամբության՝ ընդդեմ կենտրոնական իշխանության։ Ապստամբի խայտաբղետ զորքերի մեջ էին գտնվում և նրանք, «ովքեր բաժանում էին Մանիի պիղծ մոլորությունը»[103]։

---

95 Նույն տեղում, էջ 739։

96 Նույն տեղում։

97 Հավանաբար հայերեն «հաստատ» բառից (պինդ, ամուր, ճշմարիտ, հունարեն՝ ἑδραῖοι, հմմտ. Պողոսի Ա թուղթ առ Կորնթացիս, ԺԵ։ «Եղբարք իմ սիրելիք, հաստատուն եղերուք, անշարժ կացէք, առաւել լերուք ի գործ Տեառն յամենայն ժամ»)։ Աստատները աղանդապետ Սերգիոսի անվանի (λογάδες) աշակերտներն էին, որոնք պետք է, որ հաստատուն լինեին իրենց ուսուցչի պատգամներին։

98 Կինոխորիոնը տեղադրվում է ժամանակակից Մահալա-Կալեսի-ում, Նեոկեսարիայի (Նիքսար) մոտ։ Տե՛ս H. *Grégoire*, Pour l'histoire des églises Pauliciennes, Καινοχώριον, du Pont, Episparis en Φαναρίᾳ. Orientalia Christiana Periodica, vol. XIII, No 3—4, Roma, 1947, p. 513.

99 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 768։

100 Նույն տեղում։

101 Նույն տեղում։

102 Նույն տեղում, էջ 767։

103 Genesij Regum, ex recognitione *Caroli Lachmani*, Bonnae, 1834, p. 33.

Պավլիկյանների մասնակցությունը կայսրության դեմ ուղղված մի ապստամբության, որի ղեկավարն էր աղանդավորական գաղափարների հետ ոչ մի առնչություն չունեցող մեկը, բացահայտում է պավլիկյանների շարժման դասակարգային բնույթը, ցույց տալիս, որ աղանդավորները միշտ պատրաստ էին մասնակցելու ամեն մի շարժման, որն ուղղված էր տիրող կարգերի դեմ[104]։

Թովմա Գաղիրացու ապստամբության ճնշումից հետո պավլիկյանների հալածանքները կայսրության սահմաններում շարունակվեցին նոր ուժով։ Թեոփիլոս կայսրը (829—842) դաժան հալածանքների ենթարկեց պավլիկյաններին, նրանց բանտ նետեց և մահապատժի ենթարկեց[105]։ Թեոփիլոսի կին Թեոդորա կայսրուհու ժամանակ (842—856) հալածանքներն ստացան աննախընթաց ծավալ։ Կայսրուհին որոշեց ինչ գնով էլ լինի վերջնականապես լուծել աղանդավորների հարցը Բյուզանդիայի սահմաններում։ Դրա համար նա մի պատժիչ արշավախումբ կազմակերպեց, որը գլխավորեցին հայտնի զինվորականներ Լևոն Արգիրոսը, Անդրոնիկոս Դուկասը և Սուդալիսը։ Նրանց ծրագրի մեջ էր մտնում արևելքի պավլիկյաններին դարձի բերելը, հակառակ դեպքում բնաջնջելը։ Հազարավոր պավլիկյաններ ցցահան եղան, սրի քաշվեցին կամ ծովահեղձ արվեցին։ Աղբյուրների չափազանցված տվյալների համաձայն Թեոդորայի այդ պատժիչ արշավախումբը կոտորեց շուրջ հարյուր հազար պավլիկյանների, գրավեց նրանց ունեցվածքը[106]։ Թեոփանեսի Շարունակողը ցույց է տալիս նաև, որ նման տմարդի վերաբերմունքը կայսրության համար բազում աղետների պատճառ դարձավ[107]։ Պավլիկյաններն իրենց կյանքը փրկելու համար ստիպված էին միջոցներ ձեռք առնել, կազմակերպել իրենց պաշտպանությունը և գոյության պայքար մղել։ Դեռ ավելին, նրանք դաշինք կնքեցին կայսրության ոխերիմ թշնամու՝ Արաբական խալիֆայության հետ։

Թեոդորայի հազարավոր զոհերի մեջ էր Անատոլիկոն բանակաթեմի զորավար Թեոդոտոս Մելիսենոսի պրոտոմանդատոր Կարբեասի հայրը, որ պավլիկյան գաղափարներ էր դավանում։ Կարբեասը ծառայում էր պավլիկյանների գլխավոր կենտրոններից մեկում՝ Կոլոնիա քաղաքում, որ Անատոլիկոն բանակաթեմի կազմում էր գտնվում[108]։ Իմանալով իր հոր սպանության մասին, Կարբեասը, որ նույնպես պավլիկյան էր, հինգ հազար աղանդավորների գլուխն անցած ապաստան է գտնում Մելիտենե քաղաքի ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ-Ակթայի մոտ, որտեղից էլ գնում է ամիրապետի մոտ։ Աղանդավորները սիրալիր ընդունելություն են գտնում և դաշինք կնքում ամիրապետի հետ՝ ընդդեմ Բյուզանդական կայսրության։ Կարբեասը դառնում է պավլիկյանների զինված ուժերի հրամանատարը։ Նրա օրոք Բյուզանդիայից արաբական տիրապետության տակ անցնող աղանդավորների թիվն այնքան մեծ էր, որ Կար-

---

104 *Е. Э. Липшиц*, Павликианское движение в Византии в VIII и первой половине IX в., Византийский Временник, т. V, 1952, с. 64.

105 Acta Sancti Macarii episcopi monasterii Pelecetі, Analecta Bollandiana, t. XVI, Bruxelles, 1897, p. 159.

106 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 787—788։

107 Նույն տեղում, էջ 787։

108 *В. Васильевский, П. Никитин*, Сказания о 42 Аморийских мучениках, с. Г 29: Կոլոնիան հետագայում կազմեց առանձին բանակաթեմ։ Նրա կազմում էր գտնվում պավլիկյանների մայրաքաղաք Տեփրիկեն։

բեասը ստիպված նոր քաղաք է հիմնադրում՝ Տեփրիկեն, որը դառնում է պավլիկյանների մայրաքաղաքը։ Պավլիկյաններն ասում էին, որ հենց Տեփրիկեից է դուրս գալու «Տիրոջ օրենքն ու խոսքը»[109]։ Ահա այստեղից Կարբեասը, դաշնակցած Մելիտենեի ամիրայի, ինչպես և Տարոնի ամիրա Ալի իբն Յահյա ալ-Արմանիի հետ[110] սկսում է երկարատև և արյունալի մի պայքար կայսրության դեմ, որը շարունակվելու էր նաև իր մահվանից հետո։

## 7. ՊԱՎԼԻԿՅԱՆՆԵՐԻ ԶԻՆՎԱԾ ՊԱՅՔԱՐԸ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ԴԵՄ

Արաբապավլիկյան միացյալ ուժերի դեմ 856 թ. դուրս եկավ բյուզանդական հայազգի զորավար Պետրոնասը, Թեոդորա կայսրուհու եղբայրը, որ Թրակեսիոն բանակաթեմի զորավարն էր։ Նրա արշավանքն ավելի գերեվարական, ավարառուական բնույթ էր կրում և հիմնականում Սամոսատի և Տեփրիկեի շրջանում էր տեղի ունենում։ 859 թ. արաբապավլիկյան միացյալ ուժերի դեմ դուրս է գալիս բյուզանդական զորքը՝ պատանի կայսր Միքայել III-ի և նրա մորեղբայր՝ կեսար Վարդասի գլխավորությամբ։ Բյուզանդացիները նախ և առաջ որոշում են պաշարել և գրավել Սամոսատ քաղաքը, բայց չարաչար պարտության են մատնվում։ Գերի ընկնելուց հազիվ է փրկվում Միքայել III-ը։ Այս մարտում քաջագործությամբ փայլեց պավլիկյան Կարբեասը, որի ձեռքն անցան բյուզանդական շուրջ հարյուր բարձրաստիճան հրամանատարներ[111]։ Այս միջոցին Լուլվա բերդի բնակիչները ապստամբում են բյուզանդացիների դեմ և քշում իրենց կառավարչին։

860 թ. Միքայել կայսրը իմանալով, որ արաբներն ու պավլիկյանները նորից են հարձակվել կայսրության վրա, շուրջ քառասուն հազարանոց զորքով, որ գլխավորապես թրակացիներից ու մակեդոնացիներից էր բաղկացած, դուրս է գալիս հակառակորդի դեմ։ Փոքր Ասիայի հյուսիսից շարժվելով, նա գրավեց Դազիմոն բերդը՝ Սեբաստիայի շրջանում և ճամբարեց Կելարիոն կոչված խոտառատ դաշտում։ Այստեղ ճակատամարտ տեղի ունեցավ, որտեղ Միքայել III-ը դաժնյալ պարտություն կրեց, դիմեց փախուստի և ապաստանեց Անզեն կոչված բարձունքի վրա։ Հենց այստեղ էլ եկավ և նրան պաշարեց Մելիտենեի ամիրան։ Կայսրը, օգտվելով հակառակորդի ճամբարում ծագած պարենային դժվարություններից, կարողացավ մի կերպ փախուստի դիմել և փրկվել։ Նույն տարվա ամառային արշավանքի ժամանակ Կարբեասը, արաբ պատմիչ Տաբարիի ասելով, ձեռք բերեց հինգ հազար գերիներ։ Նույն քանակությամբ գերիներ ձեռք բերեց և Ալի իբն Յահյա ալ-Արմանին[112]։

Ռազմական գործողություններն իրենց գագաթնակետին հասան 863 թ., երբ Մելիտենեի ամիրա Օմարը արշավանքի դուրս եկավ Բյուզանդական

---

[109] Petri Siculi Sermo I Contra Manichaeos, *Migne*, Patrologia graeca, t. 104, col 1327.

[110] «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 783։ Այս հայազգի ամիրային հիշում են Հովհաննես Դրասխանակերտցին («Ալի Արմանի»), Սամուել Անեցին, Ասողիկը, Վարդան Արևելցին («Ալի Արմնի», «Ալի որդի Յահյէի», «Ալի որդի Վահէի» ձևերով)։

[111] «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 789։

[112] *А. А. Васильев.* Византия и арабы. Политические отношения Византии и арабов за время Аморийской династии, СПб., 1900, с. 195.

կայսրության սահմանները։ Ավարի առնելով Արմենիակների բանակաթեմը, Օմար ամիրան հասավ մինչև Սև ծովի ափը, գրավեց ծովափնյա Ամիսոս (այժմ՝ Սամսոն) քաղաքը։ Միքայել III կայսրը նրա դեմ ուղարկեց զորավար Պետրոնասին, Թրակեսիոն բանակաթեմի զորավարին։ Վճռական ճակատամարտը տեղի ունեցավ 863 թ. սեպտեմբերի 3-ին՝ Արմենիակների և Պափլագոնիայի բանակաթեմերի սահմանի վրա, Պոսոն վայրում, Գյուրին կոչված հովտում, Հալիս գետից արևմուտք։ Պետրոնասին հաջողվեց շրջապատել ամիրային։ Հյուսիսից հարձակման անցան Արմենիակների, Բուկելլարների, Կոլոնիայի և Պափլագոնիայի բանակաթեմերի զորավարներն իրենց զորքերով, հարավից Անատոլիկոնի, Օպսիկիոնի և Կապադովկիայի զորավարները և Սելևկիայի ու Խարսիանոնի կլեյսուրարխները։ Ինքը՝ Պետրոնասը Թրակեսիոն բանակաթեմի զորքերով, կայսերական չորս գնդերով և Թրակիայի ու Մակեդոնիայի բանակաթեմերի զորքերով հարձակման անցավ արևմուտքից։ Արաբական աղբյուրների տվյալներով այդ ճակատամարտին մասնակցեց բյուզանդական հիսուն հազար զինվոր։ Ամիրա Օմարը սպանվեց այդ ճակատամարտում, իսկ նրա բանակը գլխովին ջախջախվեց։ Մի փոքր զորամասով կարողացավ փրկվել ամիրայի որդին, որը, սակայն, ի վերջո գերի ընկավ[113]։

Պոսոնի ճակատամարտը շրջադարձային նշանակություն ունեցավ բյուզանդաարաբական դարավոր հակամարտության մեջ։ Բյուզանդացիներին արդեն հաջողվեց երկարատև պարտություններից հետո ի վերջո իրենց ձեռքը վերցնել պայքարի նախաձեռնությունը։ Նրանք կարողացան ժամանակի ընթացքում վերագրավել անցյալում կորցրած բազմաթիվ շրջաններ։

Կարբեասի մահից հետո (863) պավլիկյանների զինված ուժերը գլխավորից նրա զարմիկն ու փեսան՝ Խրիսոխիրը, որը նույնպես ծառայում էր բյուզանդական բանակում և ուներ սպաթարի աստիճան։ Նա ևս վաղուց աչքի էր ընկել իր աղանդավորական հայացքներով։ Պատահական չէ, որ նույնիսկ Փոտ պատրիարքը երկու նամակ է ուղարկել նրան՝ ջանալով հեռու պահել աղանդից։ Բայց տեսնելով, որ իր ջանքերն ապարդյուն են, ստիպված եղավ մի երրորդ նամակ գրել, որտեղ նրան որակում է որպես «մարդակերպ օձ»[114]։

Խրիսոխիրի օրոք պավլիկյանների ռազմական հզորությունը հասնում է ամենաբարձր աստիճանին։ Խրիսոխիրի գլխավորությամբ այդ զորքը արշավանքի ժամանակ հասավ մինչև Նիկիա և Նիկոմեդիա։ Նա մուտք գործեց նաև Թրակեսիոն բանակաթեմի՝ Հովհաննես Աստվածաբանի թեմը, որի եկեղեցին իր ձիերի համար ախոռի և ձեռք բերված ավարի պահեստի վերածեց։

869 թ. Վասիլ I Մակեդոնացի կայսրն արշավեց Խրիսոխիրի դեմ, բայց հաջողություն չունեցավ։ Վերադառնալով մայրաքաղաք, նա մտավ իր կառուցած Հրեշտակապետաց եկեղեցին և պաղատեց աստծուն՝ իրեն արժանացնի տեսնելու Տեֆրիկեի կործանումը։ Հենց այդ ժամանակ էր, որ Վասիլ I-ը Պետրոս Սիկիլիացուն Տեֆրիկե ուղարկեց գերի ընկած զորահրամանատարների փոխանակության գործն ապահովելու, բայց և լրտեսելու, պավլիկյանների ծրագրերն իմանալու համար։ Վասիլ I-ին մտահոգում էր այն, որ պավլիկյանները սերտ կապեր էին հաստատել Բուլղարիայի հետ, որտեղ իրենք ունեին մեծահոծ աղանդակիցներ։ Բուլղարիան այն ժամանակ, Բորիս I թագավորի

113 Նույն տեղում, էջ 199 և հտ.։

114 Photii Patriarchae Constantinopolitani, Epistolarum libri tres, Liber tertius, *Migne*, Patrologia graeca, t. 102, col 933—945.

օրոք (866) նոր էր քրիստոնեություն ընդունել և կայսրությունը շատ էր մտահոգված, որ նորաստեղծ բուլղարական եկեղեցին կարող է աղանդավորների ազդեցության տակ ընկնել։

Պետրոս Սիկիլիացին Տեփրիկե, Խրիսոխիրին բերեց Վասիլ I-ի նամակը, որտեղ կայսրը կոչ էր անում նրան՝ «...բավարարվել ձեռք բերածով, ստանալ իրենից ոսկի, արծաթ և հանդերձներ, վերացնել քրիստոնյաների գերեվարությունն ու կոտորածը։ Սակայն անհավատը,— գրում է բյուզանդական պատմիչ Գենեսիոսը,— շընդառաջեց խաղաղարար խոսքերին և կայսրին պատասխանեց այսպես. «Ո՛վ կայսր, եթե կամենում ես մեզ հետ հաշտություն կնքել, հրաժարվի՛ր Արևելքի վրա ունեցած քո իշխանությունից և տիրի՛ր Արևմուտքի վրա, ահա այդ դեպքում կխաղաղվենք քեզ հետ, հակառակ դեպքում կջանանք քեզ գահընկեց անել»[115]։

Պետրոս Սիկիլիացին Տեփրիկեում մնաց ինն ամիս։ Նրա առաքելությունը թեև պավլիկյանների և կայսեր հաշտությամբ չպսակվեց, այնուամենայնիվ, պատմության համար ունեցավ շատ ավելի շոշափելի արդյունք։ Պետրոս Սիկիլիացին Տեփրիկեում մանրամասն ծանոթացավ պավլիկյանների պատմության ու գաղափարախոսությանը, նրանց գրվածքներին, և այդ բոլորը նրա համար նյութ ծառայեցին շարադրելու «Պավլիկյանների պատմությունը»[116]։ Աղանդապետ Սերգիոսի նամակներից նրա կատարած քաղվածքները հավատաքննության խարույկից փրկված պավլիկյան գրականության միակ նմուշներն են։

Պետրոս Սիկիլիացին Տեփրիկեում տեղեկացավ, որ պավլիկյաններն իսկապես կապեր են հաստատել Բուլղարիայի հետ, որ նրանք որոշել են իրենց գործիչներին ուղարկել այնտեղ «...մարդկանց ուղղափառ հավատքից պոկելու և իրենց պիղծ աղանդի կողմը քաշելու համար»[117]։ Ահա այդ է պատճառը, որ Պետրոս Սիկիլիացին իր «Պավլիկյանների պատմությունը» ձոնել է Բուլղարիայի արքեպիսկոպոսին, որին կոչ է անում զգուշանալ պավլիկյաններից։ Փոտ պատրիարքը ևս մտահոգված էր քրիստոնեությունը նոր ընդունած բուլղարների վիճակով։ Նա ևս ցույց է տալիս, որ Մանիի աշակերտները, այսինքն պավլիկյանները, հսկայական աշխատանք են տարել Բուլղարիայում և զգալի հաջողությունների են հասել «ամբարշտության որոմը» բուլղարների մեջ սերմանելու գործում։ Վերջիններս, Փոտի ասելով, սկսել էին խորշել և փարշել աստծու քահանաներից[118], ծաղրուծանակի էին ենթարկում եկեղեցու խորհուրդները։

Պետրոս Սիկիլիացին Խրիսոխիրի պատասխանը Վասիլ I-ին հանձնեց 870 թվականին։ Կայսրը համոզվեց, որ հնարավոր չէ խաղաղ միջոցներով լուծել պավլիկյանների հարցը։ Օգտվելով արաբական խալիֆայության մեջ ծագած խռովություններից, այն հանգամանքից, որ թուլացած խալիֆաթը ի վիճակի

115 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 783։

116 Մինչև Պետրոս Սիկիլիացին, պավլիկյանների մասին առանձին երկ գրել էր Կոստանդնուպոլսի պատրիարք Նիկեփորը (806—815) և ներկայացրել կայսրին։ Տե՛ս Nicephori Constantinopolitani Vita, *Migne*, Patrologia graeca, t. 100, col. 69. Այս գրվածքը, սակայն, չի պահպանվել։

117 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 745—746։

118 Photii Patriarchae Constantinopolitani Epistolarum libri tres, *Migne*, Patrologia graeca, t. 102, col. 725.

չէր տվյալ դեպքում օգնության հասնել պավլիկյաններին, նա նախապատրաստություն տեսավ և 871 թ. գարնանը զորքի գլուխն անցած արշավանքի դուրս եկավ պավլիկյանների դեմ, որոնց գլխավորում էր խիզախ Խրիսոխիրը։ Վասիլ I-ը Տեֆրիկեի մոտ չարաչար պարտություն կրեց։ Քիչ էր մնացել նա գերի ընկներ Խրիսոխիրի ձեռքը, բայց նրան փրկեց Թեոփիլակտոս Աբաստակտոսը, ապագա կայսր Ռոմանոս I Լակապենոսի հայրը։ Վասիլ կայսրը իր վրեժն առավ՝ Տեֆրիկեի մոտ գտնվող պավլիկյան մի քանի բերդեր ավերելով, որոնցից հիշված են Աբարան, Սպաթեն և Կոպտոսը։

Հաղթանակից թևավորված Խրիսոխիրը, 872 թ. իր զորքերով նորից արշավեց Բյուզանդական կայսրության վրա և հասավ մինչև Անկյուրա քաղաքը։ Վասիլ I-ն այս անգամ որոշեց անձամբ չարշավել պավլիկյան սպարապետի դեմ և ուղարկեց իր փեսային՝ բյուզանդական զորքերի սպարապետ Քրիստափորին։ Վերջինս սկսեց հետապնդել պավլիկյան զորահրամանատարին մեկ մղոն հեռավորության վրա։ Բյուզանդական զորահրամանատարի տրամադրության տակ էին գտնվում կայսրության արևելյան երկու խոշոր բանակաթեմերի՝ Արմենիակների և Խարսիանոնի զորքերը։ Խրիսոխիրը կանգ առավ Խարսիանոն բանակաթեմի Ագրանա կոչված վայրում, իսկ բյուզանդական զորքը՝ Սիբորոն կոչված տեղում։ Արշալույսին բյուզանդացիները հարձակման անցան։ Պավլիկյանները դիմեցին փախուստի և բազում զոհեր տալով հասան Վաթիռիաքս վայրից երեսուն մղոն հեռավորության վրա գտնվող Կոստանդնի լեռը։ Այստեղ Խրիսոխիրն սպանվեց, վրա հասած զորավարները կտրեցին պավլիկյան սպարապետի գլուխը և շտապեցին ընծա ուղարկել Վասիլ I-ին[119]։ Վասիլը երեք նետ գամեց Խրիսոխիրի գանգին, այդ ձևով վրեժ առնելով իր բազում անհաջողությունների համար։

Նույն տարին գրավվեց Տեֆրիկեն և պավլիկյանների բազում քաղաք-ամրոցներ։ Տեֆրիկեի անկումը պատճառ դարձավ, որ մի շարք այլ քաղաքներ և ամրոցներ առանց կռվի հանձնվեն Վասիլ I-ին, այդ թվում և Տարանտան (այժմ՝ Դերենդե) և Լոկանան, որի տերն էր հայազգի Քուրդիկը[120]։ Տեֆրիկեի գրավման առթիվ Կոստանդնուպոլսում հանդիսավոր շքերթ կազմակերպվեց, որի նկարագրությունը պահպանել է Կոստանդին Ծիրանածինը՝ Վասիլ I-ի թոռը[121]։

Պավլիկյանների պարտությանը նպաստեցին մի քանի հանգամանքներ։ Ամենից առաջ այն, որ աղանդավորներն այս վերջին դրվագում ստիպված էին կայսրության դեմ միայնակ մարտնչել։ Արաբական խալիֆայությունը մի քանի պատճառներով նրանց օգնության չհասավ։ Ոչ միայն խալիֆայության ներսում բռնկված հակամարտություններն այդ բանն անելու հնարավորություն չտվեցին[122], այլև այն իրողությունը, որ արաբները պարզապես չուզեցին օգնած լինել աղանդավորներին և նրանց թողեցին բախտի քմահաճույքին։ Փոտ պատրիարքը արաբների նման վերաբերմունքը բացատրում է պավլիկյանների՝ ավարառությամբ ձեռք բերած անչափ հարստության պատճառով արաբների

---

119 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 785։

120 Տե՛ս «Բյուզանդական աղբյուրները հայերի և Հայաստանի մասին», գիրք Բ, Կոստանդին Ծիրանածին, էջ 68։

121 Նույն տեղում, էջ 138—139։

122 *А. А. Васильев*, Византия и арабы. Политические отношения Византии и арабов за время Македонской династии, с. 25.

ապրած նախանձով[123]։ Պետրոս Սիկիլիացին, սակայն, ցույց է տալիս, որ նրանց միջև այդ լարված վիճակը գոյություն ուներ ավելի վաղ։ Նա գրում է, որ Կարբեասը Տեֆրիկեն կառուցեց, որպեսզի հեռու լինի Մելիտենեի արաբներից[124]։ Այդ բոլորի հիմնական և ակնառու պատճառը պավլիկյան շարժման սոցիալ-դասակարգային բնույթն էր, նրանց պայքարի վտանգավորությունը նաև արաբական խալիֆայության համար, ինչպես և պավլիկյանների անկախություն ձեռք բերելու ձգտումը։

Պավլիկյանների պարտության պատճառներից մեկն էլ աղանդավորների սոցիալական և էթնիկական խայտաբղետությունն էր։ Երկու հարյուրամյակի ընթացքում պավլիկյան աղանդին հարեցին դասակարգային տարբեր շերտերի և տարբեր ազգությունների ու դավանանքի ներկայացուցիչներ։ Այդ բանը չէր կարող իր կնիքը չդնել շարժման վրա, չխախտել նրա միասնությունը։ Գենեսիոս պատմիչը վկայում է, որ 871 թ. արշավանքի ժամանակ, այսինքն դեռևս այն ժամանակ, երբ Վասիլ I-ը պավլիկյաններից պարտություն էր կրում, Տեֆրիկեի բազմաթիվ աղանդավորներ դասալիք էին լինում և անցնում կայսեր կողմը, կամ էլ Ասորիքի խորքերն էին փախուստի դիմում։ Այդ դասալքության պատճառով, գրում է Գենեսիոսը, Տեֆրիկեն քիչ էր մնացել մարդաթափ լիներ[125]։

Վերջապես պավլիկյան շարժման պարտության պատճառներից մեկն էլ տվյալ ժամանակաշրջանում Բյուզանդական կայսրության հզորացումն էր։ Վասիլ I կայսրը, հիմնադիր դառնալով մակեդոնական հարստության, խոշոր միջոցառումներ իրականացրեց երկրի տնտեսական և ֆինանսական վիճակի բարելավման, զինված ուժերի ամրապնդման համար։

Պավլիկյան շարժման ճնշումից և նրանց կենտրոն Տեֆրիկեի ու այլ քաղաք-ամրոցների ավերումից հետո պավլիկյաններն իսպառ չվերացան։ Նրանք քաշվեցին լեռնային անառիկ վայրերն ու կլեյսուրները և դեռ երկար ժամանակ պահպանեցին իրենց գոյությունը։ Պավլիկյանների մի մասը ապաստան գտավ իր վաղեմի դաշնակիցներ արաբների մոտ, ամենից առաջ Մելիտենեում և Չորրորդ Հայքում, որտեղից, Վասիլ I-ի մահից հետո, վերջինիս որդի Լևոն VI-ի օրոք վերադարձան Բյուզանդական կայսրության սահմանները։ Նրանցից ոմանք ծառայության մեջ մտան բյուզանդական բանակում և մասնակցեցին կայսրության պատերազմներին արտաքին թշնամիների դեմ[126]։ Աղանդավորների մի մասն էլ ապաստան գտավ արաբական տիրապետության տակ գտնվող Արևելյան Հայաստանում, որտեղ տվյալ ժամանակաշրջանում լայն տարածում էր գտել պավլիկյաններին գաղափարակից թոնդրակյան շարժումը։ Եթե ոչ ծագման, համենայն դեպս նրա հետագա զարգացման գործում պավլիկյանները պետք է որ մեծ դեր խաղացած լինեին[127]։ Եթե նկատի ունենանք այն հանգամանքը, որ հայ եկեղեցին և իշխող դասակարգերը

---

123 *Р. М. Бартикян*, Источники для изучения истории пав. движения, с. 195.

124 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 768—769։

125 Նույն տեղում, էջ 782։

126 Նույն տեղում, էջ 797։

127 Պավլիկյանների՝ թոնդրակեցիների հետ ունեցած կապերի մասին տե՛ս *К. Н. Юзбашян*. Тондракитское движение в Армении и павликиане, Известия АН АрмССР, № 9, 1956, с. 31—44; *Р. М. Бартикян*, Движение тондракитов в Византии, Вестник Общественных наук АН АрмССР, 1980, № 9.

թոնդրակեցիների հալածանքները ձեռնարկեցին միայն IX դարի 70—80-ական թվականներից սկսած[128], ապա պարզ է դառնում, որ դա տեղի ունեցավ պավլիկյանների պարտությունից և նրանց՝ Արևելյան Հայաստան անցնելուց հետո։

Եթե IX դարի վերջում պավլիկյաններն իրենց բնօրրանում՝ բյուզանդական Հայաստանում վերացան, նրանք դեռ երկար գոյատևեցին Թրակիայում, որտեղ դեռևս VIII դարի կեսերից գոյություն ունեին աղանդավորների բազմամարդ համայնքներ։ Թրակիայում նրանց կենտրոնը Ֆիլիպպուպոլիս (այժմ՝ Պլովդիվ՝ Բուլղարիայում) քաղաքն էր։ Ողջ Ֆիլիպպուպոլիսը, գրում է պատմիչ Աննա Կոմնենոն, գլխավորապես պավլիկյաններով էր բնակեցված[129]։

---

128 Տե՛ս *А. Г. Иоаннисян*, Движение тондракитов в Армении (IX—XI вв.), «Вопросы истории», № 10, 1954 с. 103.

129 «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», էջ 807։ Թրակիայի պավլիկյաններն իրենց գոյությունը պահպանեցին ընդհուպ մինչև XIX դարը։ Ժամանակի ընթացքում նրանք մոռացան իրենց լեզուն, ձուլվեցին բուլղարների հետ, հակառակ, որ միշտ էլ առանձին համայնք էին կազմում և հարաբերության մեջ չէին մտնում ուղղափառ բուլղարների հետ։ XIX դարի սկզբում նրանք ընդունեցին կաթոլիկությունը։

## ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

# ՎԱՂ ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԻ ԲՆՈՒՅԹՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

*Վաղ ֆեոդալիզմի դարաշրջանը հայ ժողովրդի պատմության մեջ նշանավորվեց մշակութային կյանքի էական փոփոխություններով և շրջադարձերով, որոնք որակապես փոխեցին երկրի հոգևոր ու նյութական մշակույթի բնույթն ու կերպարը։ Այդ շրջադարձերը վճռական դեր խաղացին հայ ժողովրդի ավելի քան հազարամյա կյանքի ընթացքում, հիմք դնելով միջնադարյան աշխարհայեցողությանը և մշակույթին՝ իր բոլոր դրսևորումներով։*

*Արդեն IV—V դարերում ձևավորվող նոր, ֆեոդալական արտադրահարաբերություններին համապատասխան, սկսեցին արմատական փոփոխություններ կատարվել գաղափարական վերնաշենքում։ 301 թ. տեղի ունեցավ երկրի հոգևոր կյանքը հեղաշրջող իրադարձությունը. Հայաստանն ընդունեց քրիստոնեությունը որպես պետական կրոն։ Հին հեթանոսական կրոնի՝ նրա գաղափարախոսության և ինստիտուտների, դիցաբանության ու արվեստի դեմ ծավալված բուռն պայքարում գերիշխող դիրքեր նվաճեց հայոց եկեղեցին, որը և ստանձնեց երկրի հոգևոր-գաղափարական, մշակութային կյանքի ղեկավարի մենաշնորհը։ Ֆեոդալական հասարակարգի նեցուկը դարձած եկեղեցին լծվեց նոր իշխող դասերի, աշխարհիկ և հոգևոր իշխանների սոցիալ-տնտեսական ու քաղաքական շահերի պաշտպանության գործին ինչպես երկրի ներսում, այնպես և արտաքին թշնամիների դեմ մղվող պայքարում։*

*Հայ պետականության համար ճգնաժամային IV—V դարերի սահմանագլխին ծավալված հոգևոր մշակույթի անկախացման և ազգային համախմբման ընթացքին նոր թափ հաղորդելու նպատակով ձեռնարկվեց մինչ այդ անգիր հայոց լեզվին ազգային-պետական բնույթ ու դեր հաղորդելու՝ ազգային գրերի ստեղծման գործը, որը 405 թ. տվեց իր փայլուն արդյունքը։ Հայ ժողովրդի հանճարեղ զավակ Մեսրոպ Մաշտոցի (361—440) ստեղծած գրերը բացեցին մեծ հեռանկարներ հոգևոր մշակույթի, առաջին հերթին գրականության և գիտության զարգացման համար, հնարավորություն ընձեռելով բացահայտելու կուտակված հոգևոր լիցքը և մտավոր կարողությունները։ Գրերի գյուտը երկրորդ հեղաշրջիչ իրադարձությունն էր ժողովրդի կյանքում, որը լիովին փոխեց երկրի մշակութային պատկերը և հոգևոր մթնոլորտը։*

*Ազգային գիրը հիմք հանդիսացավ բուն հայկական հոգևոր մշակույթի ստեղծման համար, կանխեց ուծացման և հարևան նվաճողական տերությունների կողմից կլանման վտանգը։ Գրերի ստեղծմանն անմիջապես հաջորդած հզոր լուսավորական շարժումը՝ Մեսրոպ Մաշտոցի և Սահակ Պարթևի գլխավորությամբ, իր շարքերում համախմբելով ժողովրդի բոլոր խավերի տաղան-*

դավոր ուժերը, պատմական ամենակարճ, անհավատալի սեղմ ժամանակամիջոցում առաջ բերեց մայրենի լեզվով բազմաբովանդակ մի գրականություն՝ ինքնուրույն և թարգմանական, որը լեզվի ճոխությամբ ու մաքրությամբ, մտքի խորությամբ ու հարստությամբ ըստ արժանվույն դարձավ հետագա դարերի համար դասական մի ժառանգություն՝ «ոսկեդարյան գրականություն»։ Այդ գրավոր հարուստ մշակույթի ստեղծմանը եռանդուն մասնակցություն ունեցան մաշտոցյան դպրոցի, իսկ այնուհետև «հունաբան» ուղղության ներկայացուցիչները։ V—VI դդ. ընթացքում ստեղծված հայ գրականությունը՝ իր բազմատեսակ գրական սեռերով (ճառագրություն, վարքագրություն, սրբախոսություն, խրատական երկեր, մեկնություն, ջատագովություն, հայրախոսություն և այլն) պատմագրությունը, փիլիսոփայությունը, քերականությունը, ճարտասանությունը դարձան այն հիմնաքարերը, որոնց վրա բարձրացավ հայ միջնադարի հոգևոր մշակույթի շենքը։ Այն ոչ միայն իր լավագույն նմուշներով, այլև ամբողջովին դուրս եկավ ազգային շրջանակներից և ձեռք բերեց համամարդկային պատմամշակութային նշանակություն։

Նշված ժամանակամիջոցում ստեղծված բազմաբովանդակ մատենագրության մեջ առանձնահատուկ տեղ է գրավում պատմագրությունը։ V դարի հայ հեղինակներ Կորյունի, Ագաթանգեղոսի, Փավստոս Բուզանդի, Խորենացու, Եղիշեի, Փարպեցու երկերը մեծ արժեք են ներկայացնում Հայաստանի պատմության, նրա քաղաքական և սոցիալ-տնտեսական կյանքի, մշակույթի ուսումնասիրության համար։ Միաժամանակ նրանք կարևոր սկզբնաղբյուր են հարևան ժողովուրդների պատմությունը հետազոտելու առումով, քանի որ հարուստ տեղեկություններ են պարունակում Վրաստանի, Աղվանքի, ողջ Կովկասի, ինչպես նաև Պարսկաստանի, Միջին Ասիայի, Բյուզանդիայի և Ասորիքի վերաբերյալ։ Նույն արժանիքներով են օժտված նաև հաջորդ շրջանի՝ VII—VIII դարերի պատմիչներ Սեբեոսի, Մովսես Կաղանկատվացու և Ղևոնդի երկերը։

Գիտական մեծ արժեք են ներկայացնում վաղ միջնադարյան հայ փիլիսոփայական, մաթեմատիկական, տիեզերագիտական, քերականական մտքի հուշարձանները։ Դրանց շարքում իրենց լայն հնչեղությամբ, ժամանակի գաղափարական կյանքի ճշգրիտ արտացոլքով և համաշխարհային գիտական մտքի պատմությանը բերած ավանդով առանձնանում են ականավոր փիլիսոփաներ և գիտնականներ Եզնիկ Կողբացին, Դավիթ Անհաղթը և Անանիա Շիրակացին։ Նրանց երկերում արտացոլված է ոչ միայն հայ իրականության գաղափարական երևույթները և բնագիտական մտքի նվաճումները, այլև իր պարզորոշ դրսևորումն է գտել Մերձավոր Արևելքի ու Միջերկրականի ավազանի երկրներում հեթանոսությունից քրիստոնեության անցման դարաշրջանի գաղափարախոսությունը, անտիկ աշխարհից վաղ միջնադարի մշակույթին անցած փիլիսոփայական և բնագիտական տարբեր տեսություններն ու գաղափարները։

Ժամանակաշրջանի հայ գրավոր մշակույթի առաջացման ու զարգացման բարդ պրոցեսը չի ընթացել հարթ ու խաղաղ ճանապարհով։ Իշխող վերնաշենքում հստակ ուրվագծվել են երկու ուղղություն՝ կրոնական և աշխարհիկ, որոնք պայքարել են միմյանց դեմ և ազդել իրար վրա, երբեմն մոտենալով, բայց երբեք չձուլվելով իրար։ Հոգևոր-կրոնական ուղղությունը դպրության մեջ առավել ցայտուն դրսևորվել է ջատագովական և հայրախոսական երկերում, եկեղեցու գաղափարախոսությանը անմիջականորեն ծառայած մատենագրության մեջ։ Աշխարհիկ ուղղությունը, որն ավելի շատ կապված էր անտիկ, հելլենիս-

տական մշակույթի հետ, իր վառ արտահայտությունն է գտել փիլիսոփայական գրականության մեջ։ Այդ ուղղության ամենախոշոր ներկայացուցիչն է ականավոր փիլիսոփա, իր ոգով ու բովանդակությամբ աշխարհիկ փիլիսոփայական գիտության հիմնադիր Դավիթ Անհաղթը, իսկ բնագիտության ասպարեզում՝ Անանիա Շիրակացին, որոնց շնորհիվ հայ գիտական միտքը իր ձևավորման շրջանում կապվեց անտիկ աշխարհի փիլիսոփայության ու գիտության հետ և իր բարերար ազդեցությունն ունեցավ միջնադարի՝ կրոնից համեմատաբար անկախ գիտության զարգացման վրա։

Աշխարհիկ ուղղության ձևավորման գործում զգալի դեր է խաղացել V—VII դարերում հունաբան դպրոցի ջանքերով առաջ եկած թարգմանական գրականությունը։ Անտիկ փիլիսոփաների և գիտնականների՝ Արիստոտելի, Պլատոնի, Փիլոն Ալեքսանդրացու, Դիոնիսիոս Թրակացու, Պորփյուրի և մյուսների երկերի հմուտ թարգմանությունները բարերար ազդեցություն են ունեցել հայ ինքնուրույն գրականության վրա, բեղմնավորելով այն անտիկ աշխարհի գիտության մի շարք գաղափարներով, նպաստել են հայ մտավոր մշակույթի աշխարհիկ ուղղության ինքնուրույնացմանն ու հարստացմանը։ Հին հայերեն թարգմանությունների շնորհիվ անտիկ շրջանի որոշ հեղինակների ստեղծագործություններ հայերենի միջոցով են մտել համաշխարհային գրականության մեջ, քանի որ նրանց բնագրերը չեն պահպանվել։

Այս երկու ուղղությունների հետ միասին առաջացել է իշխող գաղափարախոսությանն ընդդիմադիր ժողովրդական ուղղությունը, որն իր ամենավառ արտահայտությունն է գտել աղանդավորական շարժումների գաղափարախոսության մեջ։ Ժողովրդական զանգվածների ձգտումներն ու հույզերը արտահայտող ամենաուժեղ դրսևորումն էր պավլիկյան հակա-եկեղեցական-հակաֆեոդալական շարժման գաղափարաբանությունը, որը զարգանալով Հայաստանի արևմտյան նահանգներում այնուհետև տարածվեց Բյուզանդական կայսրության տարբեր մասերում։ Այդ ուղղության գաղափարաբանությունը նույնպես տոգորված էր կրոնական ոգով և պայքարում էր կրոնական դրոշի տակ, բայց իր ոգով ու էությամբ ուղղված էր իշխող կրոնական ուսմունքի և ֆեոդալական դասերի ուժեղացող կեղեքման և հոգևոր մշակույթի դեմ։

Արմատական փոփոխություններ և շրջադարձեր են կատարվել նաև հայ ճարտարապետության, քանդակագործության, մանրանկարչության և որմնանկարչության, երաժշտության, թատրոնի, կիրառական արվեստների զարգացման ասպարեզում։ Հոգևոր և նյութական մշակույթի այս բնագավառներում ևս ստեղծվել են դարակազմիկ նշանակություն ունեցող արժեքներ, որոնք ազգային արվեստի զարգացման համար խաղացել են վճռական դեր։ Անշուշտ, լայնորեն օգտագործվել են ժողովրդական հնամենի ավանդույթները, անտիկ շրջանից եկող շինարարական արվեստի, քանդակագործության, երգարվեստի, կերպարվեստի ավանդական որոշ ձևերն ու եղանակները, սակայն այդ ավանդույթները վերամշակվել են նոր պայմաններին, նոր կրոնի ու եկեղեցական մտայնության պահանջներին համապատասխան։ Տեղական ճարտարապետական ավանդույթները, համադրվելով Ասորիքի, Փոքր Ասիայի և Միջագետքի վաղ քրիստոնեական պաշտամունքային կառույցների տարրերի հետ, V—VII դարերում ստանալով նոր ընթացք, առաջացրին տարբեր տիպի քաղաքացիական կառույցներ՝ ամրոց-դղյակներ, պալատական շենքեր, բազիլիկ, նաև գմբեթավոր բազիլիկ տաճարներ, ի վերջո մարմնավորվեցին խաչաձև-կենտրոնագմ-

բեթ ուրույն մի կառույցի տիպի մեջ (Էջմիածնի Մայր տաճար, Ավանի և ս. Հռիփսիմեի եկեղեցի), որն այնուհետև տարածվեց Հայաստանով մեկ և Անդրկովկասի հարևան քրիստոնեական երկրներում։ Վաղ ֆեոդալական դարաշրջանի հայկական ճարտարապետության գլուխգործոցը եղավ Զվարթնոց փառահեղ տաճարը, որը միաժամանակ աչքի է ընկնում քանդակագործական հարդարանքի ճոխությամբ ու հարստությամբ։ Ճարտարապետության, կիրառական արվեստների, երաժշտության մեջ առավել ցայտուն է դրսևորվել պայքարը հեթանոսական մշակույթի, գաղափարների և սիմվոլիկայի դեմ և շեշտված միտումը՝ ծառայել եկեղեցու կարիքներին, նրա գաղափարական ազդեցության հաստատման գործին։ Այս բոլոր փոփոխությունները ու շրջադարձերը նոր էջ բացեցին հայ ճարտարապետության ու արվեստի պատմության մեջ։ Նյութական մշակույթի ասպարեզում ձեռք բերած նվաճումները եւ հիմք հանդիսացան ողջ միջնադարի համար։ Բնականոն զարգացման հետևանքով ճարտարապետությունն ու արվեստը իրենց ուրույն ոճով և ձևերով վերելք ու ծաղկում ապրեցին զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանում, համընդհանուր մշակույթի մեջ մտնելով որպես հայ ժողովրդի գեղարվեստական հանճարի ավանդ։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՈՒԹԵՐՈՐԴ

# ՀԱՅՈՑ ԳՐԻ ԵՎ ԴՊՐՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՆԱՎՈՐՈՒՄԸ

## 1. ԳՐԵՐԻ ԳՅՈՒՏԸ

*Գրերի գյուտն իր բացառիկ և մնայուն նշանակությամբ հանդիսացավ հայ ժողովրդի մշակութային ստեղծագործության ամենախոշոր և ամենափառավոր իրողությունը, որն իր մեծ և բազմակողմանի դերը կատարում է դարեր շարունակ։ IV դարի վերջերին հայկական գրերի ստեղծումը դարձել էր անհետաձգելի անհրաժեշտություն։ Հայկական գրերն անհրաժեշտ էին դպրոց, դպրություն ստեղծելու, նոր առաջացած կրոնական, ֆեոդալական գաղափարախոսության ձևավորումը և հաղթանակը ապահովելու համար։*

*Գիրը և գրականությունը պետք է միջոց դառնային վաղ ֆեոդալական մշակույթն իր տարբեր բնագավառներով ստեղծելու և զարգացնելու և այդ ամենով հայ ժողովրդի քաղաքական, կրոնագաղափարական և մշակութային ինքնությունը պահպանելու համար։*

*Հայ գրի դպրության անհրաժեշտության գիտակցությամբ համակված էին ինչպես Հայոց թագավոր Վռամշապուհը, նույնպես և երկրի հոգևոր առաջնորդ Սահակ Պարթևը։ Հայ գրերը լեզվահնչունական կատարյալ համապատասխանությամբ և ճշտությամբ ստեղծեց հայ ժողովրդի հանճարեղ զավակ Մեսրոպ Մաշտոցը (361—440)։ Մաշտոցը «կարճազատ» Վարդանի որդին էր, Տարոն գավառի Հացեկաց գյուղից[1]։ Այդ ժամանակ Հայաստանում, ինչպես հելլենիս-*

---

1 Կորյուն, *Վարք Մաշտոցի, հրատ. և թարգմ. Մ. Աբեղյանի, Երևան, 1941, Մաշտոցի «Մեսրոպ» անունը հանդիպում է ոչ թե նրա կենսագիր Կորյունի մոտ, այլ Խորենացու Պատմության և «Պատմութիւն սրբոյն Ներսեսի Պարթևի» («Սոփերք Հայկականք», Ձ, Վենետիկ, 1853, էջ 83, 110) գրվածքում։ Մ. Էմինը ենթադրում է, որ Մաշտոցը ծագում էր Մամիկոնյանների նախարարական տոհմից (տե՛ս* «Исследования и статьи», Н. О. Эмина, М., 1896, *էջ 206)։ Լեոն կարծում է, որ «Որդի Վարդանայ» նշանակում է զավակ «անազատ անվանվող գյուղական դասակարգի» (Հ. Ա, էջ 679)։ Հ. Աճառյանը կարծում է, որ Բուզանդը «կարճազատ» բառով նշանակում է դասակարգային կալվածատիրական մի աստիճան և այդ բառը պիտի ծագած լինի «կարճ»՝ «փոքր, համառոտ» և «ազատ»՝ «ազնվական» բառերից, ուստի և նշանակում է «փոքր ազատ, երկրորդական կամ աննշան ազնվական»։ Հ. Աճառյանն այնուհետև հետևություն է անում. Մաշտոցը ազնվական չէր, բայց կարող էր լինել «կարճազատ» (տես Հ.* Աճառյան, *Հայոց գրերը, 1968, էջ 72, 87)։ Իսկ Հ. Մանանդյանը գտնում է, որ չնայած... Անանուն ժամանակագրության մեջ ասվում է, որ «Մեսրովբ Եռանէլի ի Հացեկաց Տարաւնոյ, յազատ տանէ»։* Ա. Աբրահամյան, *Անանիա Շիրակացու մատենագրությունը, Երևան, 1944, էջ 389), սակայն դրա մասին տեղեկություն չեն տալիս ոչ Կորյունը, ոչ էլ Փարպեցին և հետևելով Փավստոսի մի վկայության, որ Հացեկացն անվանված է «կարճազատների» գյուղ (Գ, ժԹ), նշում է, որ Մաշտոցը «արտոնյալ այն ազատ գյուղացիների դասից էր, որոնք պարտավոր էին ծառայել ռամիկ հեծելազորքի շարքում» (Հ.* Մանանդյան, *Նշվ. աշխ., էջ 248)։*

տական ժամանակաշրջանում, դեռևս նախկինի պես կրթությունը հունարեն էր, չնայած նրան, որ ուսուցումը և եկեղեցական արարողությունները տարվում էին նաև ասորերեն։ Պատանի Մաշտոցը կրթությունն ստացել էր Տարոնում, «հելլենական դպրութեամբ»[2]։

Մեսրոպ Մաշտոցը գիտեր հունարեն, պարսկերեն և ասորերեն, իսկ վրացերենի վրա, ինչպես նշում է Հ. Աճառյանը, գոնե այնչափ գաղափար ուներ, որ կարողացավ կազմել վրացերեն այբուբենը[3]։

Կրթությունն ավարտելուց հետո Մաշտոցը Տարոնից գալիս է Վաղարշապատ և ծառայության անցնում արքունի դիվանում՝ Առավանի հազարապետության օրոք իբրև զինվոր և գրագիր[4]։ Սակայն Մաշտոցը կարճ ժամանակ մնաց արքունի ծառայության մեջ։ Կորյունը գրում է, որ Մաշտոցը «տեղյակ ու հմուտ էր աշխարհական կարգերին» և «իր զինվորական արվեստով սիրելի էր դարձել իր զորականներին»։ Այնուամենայնիվ նա նախընտրեց հոգևորականի կյանքը[5]։ Մաշտոցն իր աշակերտների հետ միասին գնում է Գողթան գավառ և այնտեղ զբաղվում քարոզչությամբ[6]։

Այս քարոզչական գործունեության ժամանակ Մեսրոպ Մաշտոցը դժվարությունների հանդիպեց մայրենի լեզվով եկեղեցական գրքեր չլինելու պատճառով և «միտքը դրեց մի հնարք գտնել, հայոց լեզվի համար տառեր ստեղծել» և աշխատանքի անձնատուր լինելով՝ զանազան փորձերով չարչարվում էր[7]։

Գողթան գավառից 393 թ. Մաշտոցը վերադառնում է Այրարատ և ներկայանում կաթողիկոս Սահակ Պարթևին, որը հավանություն է տալիս Մեսրոպի մտահղացմանը՝ ստեղծել հայերեն գիր, դպրոց, դպրություն և եկեղեցական արարողությունները կատարել հայերեն։ Այս առթիվ գումարվում է հատուկ ժողով, որին բացի Սահակից ու Մեսրոպից ներկա էին նաև Հայոց բոլոր եպիսկոպոսները։ Ժողովականները որոշում են «Հայ ժողովրդի համար նշա-

---

2 Փարպեցի, Ա, ժ։ Լեոն գտնում է, որ Մաշտոցն ուսումն առել է Ներսես կաթողիկոսի բացած դպրոցներից մեկում։ Հ. Աճառյանը քննելով եղած աղբյուրները գալիս է այն եզրակացության, որ «Մեսրոպը Ներսեսի աշակերտը չի եղած, իսկ իր ուսուցչի անունը հայտնված չէ մեզ» («Հայոց գրերը», էջ 75)։

3 Հ. Աճառյան, Հայոց գրերը, էջ 78—79։ Գիտնականը,—մերժելով Ն. Ակինյանի այն կարծիքը, թե Մեսրոպի կրթության «հելլենիստական շրջանը» անցել է Անտիոքում, ավելի հավանական է համարում ենթադրել, որ նա իր կրթությունը ստացել է Տարոնում, ս. Կարապետի հռչակավոր վանքում (Նույն տեղում, էջ 75)։

4 Կորյուն, Գ, էջ 36—37, Ղազար Փարպեցի, Ա, ժ։ Հ. Աճառյանը նշում է, որ Մեսրոպը դիվանադպիր էր Առավան անունով անձի հազարապետության ժամանակ («Հայոց գրեր», էջ 79—80)։ Հ. Մանանդյանը ենթադրում է, որ Կորյունի նախնական բնագրում մատնանշված է եղել, որ Մաշտոցը ծառայել էր Հայոց Խոսրով թագավորի արքունիքում Առավան հազարապետի ձեռքի տակ (տե՛ս Я. А. Манандян, Месроп Маштоц и борьба армянского народа за культурную самобытность. Ереван, 1941, стр. 12: Տե՛ս նաև նրա «Քննական տեսություն», հ. Բ, մ. Ա, էջ 250)։ Ա. Մուշեղյանն ապացուցում է, որ Առավան հազարապետը նույն ինքը Վահան Մամիկոնյանն էր՝ սպարապետ Վասակ Մամիկոնյանի եղբայրը։ Հետազոտողը ենթադրում է, որ Մեսրոպ Մաշտոցը ծնվել է 356 կամ 357 թ. («Լրաբեր հաս. գիտ.», 1983, № 7, էջ 75)։

5 Կորյուն, էջ 39։ Հ. Աճառյանը նշում է, որ Մեսրոպն արքունական դիվանագրիի պաշտոնումն էլ իր ուսումը շարունակեց այս կամ այն ձևով և, ինչպես Կորյունն է ցույց տալիս, նա սովորեց, «թե զինվորական արվեստը և թե կրոնական գիտությունները («Հայոց գրերը», էջ 80)։

6 Խորենացի, Գ, խէ։ Մանրամասն տե՛ս Հ. Աճառյան, նշվ. աշխ., էջ 89—90։

7 Խորենացի, Գ, խէ (աշխ. թարգմ., էջ 285)։ Հ. Աճառյան, նշվ. աշխ., էջ 98—99։

*նագրեր հորինել»[8]։ Այս մասին Սահակ Պարթևը և Մեսրոպ Մաշտոցը տեղեկացնում են Վռամշապուհ թագավորին։ Աբել անունով մի քահանա թագավորին հայտնել էր, որ ասորի եպիսկոպոս Դանիելի մոտ կան հայերեն նշանագրեր։ Վռամշապուհը Դանիելի մոտ է ուղարկում իր պալատականներից մեկին՝ Վահրիճին, որն ստանալով «դանիելյան» նշանագրերը, դրանք ուղարկում է Վաղարշապատ[9]։*

*Սահակը և Մաշտոցը թագավորի կարգադրությամբ մանուկներ հավաքեցին և մոտ երկու տարի նրանց սովորեցնում էին «դանիելյան» նշանագրերով[10], բայց փորձը ցույց տվեց, որ այդ նշանագրերը պակասավոր են և չեն կարող ճշտությամբ արտահայտել հայերենի վանկերն ու հնչյունները։ Մեսրոպ Մաշտոցի և Սահակ Պարթևի առաջ նորից ողջ լրջությամբ ծառացավ հայերեն նշանագրեր ստեղծելու խնդիրը։*

*Այս անգամ Վռամշապուհ արքայի կարգադրությամբ Մաշտոցը մի քանի աշակերտներով մեկնում է ժամանակի կրթական կենտրոնները՝ Ամիդ, Եդեսիա[11]։ Եդեսիայում Մեսրոպ Մաշտոցը հնարում է հայերեն լեզվի նշանագրերը։ Այնտեղից նա իր օգնականների հետ գնում է Սամոսատ, որտեղ Հռոփանոս հույն հմուտ գրչի աջակցությամբ վերջնականապես ձևավորվում և գծագրվում են նշանագրերը[12]։ Մաշտոցը նորաստեղծ հայկական այբուբենի 36 տառերին անուններ է տալիս և դասավորում հունական այբուբենի օրինակով[13]։ Իր աշակերտներ Հովհան Եկեղեցացու և Հովսեփ Պաղնացու հետ միասին Մաշտոցը ձեռնարկում է «Աստվածաշնչի» թարգմանությունը, սկսելով Սողոմոնի առակների գրքից։ Հայերեն գրված առաջին բառերն էին՝ «Ճանաչել զիմաստութիւն եւ զխրատ, իմանալ զբանս հանճարոյ»[14]։ Այսպիսով, հայերեն գրերի ստեղծման մեծ ու տքնաջան աշխատանքն ավարտվում է 404/5 թվականին[15]։*

---

8 Կորյուն, *էջ 42։*

9 *Ըստ Կորյունի, այդ տեղի է ունեցել Վռամշապուհի հինգերորդ տարում, այնուհետև երկու տարի դրանցով ուսուցանել են մանուկներին, և նորից՝ նշված հինգերորդ տարում Մաշտոցը գնացել է Անտիոք (Կորյուն)։ Մարկվարտը ենթադրում է, որ «ամս երկուս»-ն անհրաժեշտ է ուղղել, «ամիսս երկուս»* (Մարկվարտ, *Պատմութիւն հայերէն նշանագրերու, էջ 26, ծան. 1), իսկ, ըստ Հ.* Աճառյանի, *Կորյունի մոտ առաջին «հինգերորդը» անհրաժեշտ է ուղղել «երրորդ»* (Հ. Աճառյան, *«Երկու ուղղում Կորյունի մեջ», Տեղեկագիր ԱրմՖանի, 1941, 1 (6), էջ 169—170)։ Տե՛ս նաև* Մ. Աբեղյան, *Նշվ. աշխ., էջ 80—83։*

10 *Նույն տեղում։ Հ. Աճառյանը դանիելյան տառերի մասին ենթադրություն է արել, որ դրանք «ուրիշ բան չէին, եթե ոչ ինչ-որ արամեական հնացած տառեր», որոնք թյուրիմացաբար ներկայացվել էին որպես հայերեն տառեր «արամեական և արամյան (հայ) բառերի շփոթությունից»* (Հ. Աճառյան, *«Երեք հարց Մեսրոպյան այբուբենի շուրջը», «Էջմիածին», 1946, օգոստոս-հոկտեմբեր, էջ 38—39)։*

11 *Մանրամասն տե՛ս* Հ. Աճառյան, *Հայոց գրերը, էջ 115—127։*

12 Կորյուն, *էջ 48։ Տես* Հ. Աճառյան, *Հայոց գրերը, էջ 135։ Մաշտոցը հանդիպում է նաև Թեոդորոս Մոփսուեստացուն՝ Նեստորիոսի ուսուցչին (տե՛ս* Ն. Ադոնց, *«Անծանոթ էջեր Մաշտոցի և նրա աշակերտների կյանքից ըստ օտար աղբյուրների», «Հանդէս ամսօրեայ», 1925, 5—12)։*

13 *Նույն տեղում։*

14 *Նույն տեղում, Ը, էջ 50։*

15 *Տե՛ս* Հ. Աճառյան, *Հայոց գրերը, էջ 399։ Ն. Ադոնցը և Հ. Մանանդյանը եկել են այն եզրակացության, որ Մեսրոպ Մաշտոցի հայկական նշանագրերի գյուտը տեղի է ունեցել Վռամշապուհի թագավորության հինգերորդ կամ վեցերորդ տարում, այն է՝ 392—393 թթ.* (Ն. Ադոնց, *Մաշտոց և աշակերտք նորին, էջ 230,* Հ. Մանանդյան, *Քննական տեսություն... հ. Բ, մ. Ա, էջ 266)։ Ավելի ճիշտ կլիներ ասել, որ այս թվականներին սկսվել է Մաշտոցի գործունեությունը հայերեն գրերի ստեղծման բնագավառում, որն ավարտվել է 404/405 թթ.։*

Հայ նորագյուտ նշանագրերով վերադարձող Մեսրոպ Մաշտոցին Երասխ գետի ափին մեծ շուքով դիմավորեցին Վռամշապուհ թագավորը, Սահակ Պարթևը և երկրի այլ մեծամեծներ, որտեղից հանդիսավորությամբ ուղևորվեցին դեպի Վաղարշապատ մայրաքաղաքը։ Ժողովուրդն իր մեծ զավակին ընդունում է ցնծությամբ[16]։

## 2. ԴՊՐՈՑ: ԿՐԹՈՒԹՅՈՒՆ

Մեսրոպ Մաշտոցն իր աշակերտներով սկսում է «թարգմանել և սովորեցնել»։ Ամենից առաջ հարկավոր էր ուսուցիչներ պատրաստել, Սահակ Պարթևը և Մեսրոպ Մաշտոցը Վաղարշապատում հիմնեցին առաջին վարդապետարանը՝ բարձրագույն դպրոցը։ Պետք էր միաժամանակ և՛ թարգմանել, և՛ գրել, և՛ ուսուցանել։ Այդ բարդ ու պատասխանատու գործն ամբողջությամբ ընկնում է Մաշտոցի ու նրա աշակերտների ուսերին։ Բոլորին համակել էր հայրենասիրական այդ մեծ գործը։ Հայերեն նշանագրեր ստեղծելուց հետո Մեսրոպ Մաշտոցը, ինչպես ասում է Խորենացին, «բոլոր գավառներում դպրոցներ հիմնեց և պարսից բաժնի բոլոր կողմերը սովորեցրեց, բացի հունական մասից»[17]։ Առաջին հերթին դպրոցներ հիմնվեցին երկրի կենտրոնում՝ Այրարատում[18]։

Գիտության և լուսավորության կենտրոն է դառնում մայրաքաղաք Վաղարշապատը։ Այստեղ ուսուցիչներ էին պատրաստվում, որոնք այնուհետև ուղարկվում էին Հայաստանի տարբեր գավառները։ Նրանցից մեկն էր նաև Մաշտոցի կենսագիր Կորյունը։ Վաղարշապատում կրթություն են ստանում ոչ միայն հոգևորականները, այլև նախարարներն ու ազատները։ Ինքը՝ Սահակ Ա-ն, հատուկ ուշադրություն է նվիրում իր Սահակդուխտ դստեր որդու՝ հռչակավոր Վարդան Մամիկոնյանի կրթությանը[19]։ Պատրաստվում էր մայրենի լեզվով կրթված երիտասարդների սերունդ, որն ավելի լավ էր գիտակցելու իր հայրենիքի ծանր վիճակը և պատրաստ էր լինելու կրծքով պաշտպանելու այն։ Կաթողիկոսը ղեկավարում էր Այրարատի ռազմական տեսակետից կարևոր կետերում տեղավորված հայկական «կայենական զորքերի» ուսուցման գործը։ Ինքը՝ Մաշտոցը, թողնելով Վաղարշապատը, հեռանում է երկրի առավել խուլ ու հետամնաց շրջանները՝ գրագիտություն տարածելու։

Այս ժամանակից սկսած հայ ժողովուրդը ձեռք է բերում մի հզոր զենք, որի օգնությամբ դարեր շարունակ պաշտպանում է իր ինքնուրույնությունն ու ազգային մշակույթը[20]։ Հայերեն գիրն ու դրա հիմքի վրա ստեղծվող գրականությունը նաև զորեղ միջոց են դառնում քրիստոնեական կրոնը և գաղափարախոսությունը Հայաստանում ամրակայելու գործում։ Մեսրոպն իր Տիրայր Խորձենացի և Մուշեղ Տարոնացի աշակերտների հետ վերստին ուղևորվում է Գողթան, բայց այս անգամ դպրոցներ ու մենաստաններ հիմնելու։ Այստեղ նրան օգնության են գալիս տեղի իշխան Շաբաթը (Շամբիթ) և նրա որդի Գիտը

16 Կորյուն, էջ 55։ Հ. Աճառյան, Հայոց գրերը, էջ 162—167։

17 Խորենացի, Գ, ծզ (աշխ. թարգմ., էջ 294)։

18 Առաջին վարդապետարանը բացվեց Վաղարշապատում՝ Հայրապետարանի մոտ (Հ. Աճառյան, Հայոց գրերը, էջ 170), այս տարիներին պիտի դպրոցներ բացվեին Վաղարշապատի շուրջը գտնվող գյուղերում, առաջին հերթին Օշականում, ապա Փարպիում, Աշտարակում, Աղցքում, Բյուրականում և այլուր։

19 Նույն տեղում։

20 Я. А. Манандян, նշվ. աշխ.։

(Գյուտ)[21]։ Գողթան գավառից հետո Մեսրոպ Մաշտոցն անցնում է Հարևան Սյունյաց աշխարհը, որտեղ նույնպես դպրոցներ է բացում։ Մինչև օրս պահպանվել է Գողթան գավառում Մեսրոպ Մաշտոցի լուսավորական գործունեության վայրերից մեկը՝ Մեսրոպավանը կամ Մսրվանիսը, որն այսօր ևս ուխտատեղի է շրջակա գյուղերի հայ ազգաբնակչության համար։

Մեսրոպ Մաշտոցի այս գործունեությունն ընթանում էր քաղաքական նպաստավոր պայմաններում։ Նոր գահ բարձրացած Թեոդոսիոս Բ կայսրն իր նախորդի՝ Արկադիոսի պես ձգտում էր չխախտել խաղաղության պայմանները Սասանյան Իրանում թագավորող Հազկերտ Ա-ի հետ։

Հաստատված խաղաղությունը օգտակար եղավ նաև հայկական գրերի և կրթության տարածման համար։ Շուտով Մաշտոցը գործունեություն է ծավալում նաև Հայաստանի Բյուզանդիային ենթակա մասում[22]։ Եթե Հայաստանի Սասանյանների տիրապետության անցած մասում հայոց արքունիքը հովանավորում էր այդ մեծ նախաձեռնությանը, ապա բյուզանդական Հայաստանում թագավորական իշխանությունն արդեն գոյություն չուներ, իսկ կայսերական զորքերի հրամանատար Անտիոքոս ստրատեգը թեև սիրալիր ընդունեց Մաշտոցին, բայց թույլ չտվեց առանց Թեոդոսիոս Փոքր[23] կայսեր համաձայնության հայկական դպրոցներ հիմնել։ Միայն Կոստանդնուպոլիս գնալուց և անձամբ կայսեր ու պատրիարք Ատտիկոսի (405—425) հետ տեսակցելուց հետո (420—422 թթ. միջև[24]) Մաշտոցը բյուզանդական Հայաստանի դպրոցներում հայերեն ուսուցանելու պաշտոնական թույլտվություն ստացավ։

Ատտիկոս պատրիարքն իր նամակում հայտնում էր Սահակ Պարթևին, որ «մեր ինքնակալ Ավգուստոսի հրամանով քեզ իրավունք է տրվում ուսուցանել մեր կողմի (Հայաստանը), իսկ բորբորիտոնների աղանդը կամ հավանության բեր կամ հալածիր քո վրեժակից»։ Ապա տեղեկացնում էր, որ «Քո ուղարկած Մեսրոպին ձեռնադրեցինք եկղեսիաստիկոս»[25], այսինքն՝ անդամ ուղղափառ եկեղեցու։

Երբ Մեսրոպ Մաշտոցն իր աշակերտներով, երիտասարդ Վարդան Մամիկոնյանի հետ միասին Բյուզանդիա գնալիս, անցան բյուզանդական Հայաստանի Կարին և Դերջան գավառներով, տեղական բնակչությունը՝ հոգևորականները, իշխաններն ու «գավառացիները» մեծ հանդիսավորությամբ դիմավորեցին նրան։ Թեոդոսիոս Բ կայսրը հրամայեց, որ Մեսրոպ Մաշտոցին մեծարեն ըստ արժանվույն և նրան շնորհեց «ակումիտ» ('ακοιμήτης, որը նշանակում է «տքնող, հսկող»), իսկ Սահակ Պարթևի թոռանը՝ Վարդան Մամիկոնյանին «ստրատելատ» կոչումները[26]։ Իր աշակերտների աջակցությամբ Մաշտոցը «Հայոց կես ազգի համար, որ հոռոմների թագավորի իշխանության տակ էր», հայկական դպրոցներ է հիմնում[27]։

---

21 Հ. Անառյան, Հայոց գրերը, էջ 174։

22 Մանրամասն տե՛ս Հ. Անառյան, Հայոց գրերը, էջ 196—219։

23 Կայսրը, ըստ Խորենացու, դժգոհ էր Սահակ կաթողիկոսից, որ նա, արհամարհելով հույն գիտնականներին, «ինչ-որ ասորիների մոտ էր որոնել իմաստության գյուտը» (Գ, ծէ, տե՛ս նաև Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 273—274)։

24 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 275։

25 Խորենացի, Գ, ծէ (աշխ. թարգմ., էջ 300)։

26 Կորյուն, էջ 64։

27 Նույն տեղում։

Վերադառնալով Հայաստան հռոմեական մասից, Մեսրոպ Մաշտոցն իր աշակերտների մի մասի հետ կրկին գնաց Գողթան գավառը և այս անգամ ևս նրան օգնեց Շաբաթի (Շամբիթի) որդի Գյուտը, որն այն ժամանակ Գողթան գավառի իշխանն էր[28]։ Այնուհետև Մեսրոպ Մաշտոցը վերադառնում է Վաղարշապատ[29]։

Հայ գրերի գյուտից հետո եկեղեցական գրքերի հետ մեկտեղ թարգմանվում են անտիկ աշխարհի հեղինակների լավագույն երկերը։ Մեսրոպ Մաշտոցը և Սահակ Պարթևը չէին կարող չմասնակցել «տիեզերական եկեղեցին» քննադատողների՝ «հերետիկոսների» դեմ ուղղված պայքարին, որն սկսել էր Բյուզանդական կայսրությունը։ Կոստանդնուպոլսից վերադարձող թարգմանիչները հայրենիքում գտան Մեծն Սահակին ու Մեսրոպին Տարոնի Աշտիշատում, հանձնեցին թղթերը և Եփեսոսի ժողովի (431 թ.) կանոնները, սահմանված վեց կանոն, այլև Ս. Գրքի ստույգ օրինակները[30]։ Այնուհետև «Մեծ Սահակը և Մեսրոպն ընդունելով (Բիբլիայի օրինակը), նորից թարգմանեցին մի անգամ շտապովի թարգմանվածը, նրանց հետ միասին նորից հորինելով ու նորոգելով»[31]։

Հայերեն գիրն ու գրականությունն ստեղծելուց հետո այս շարժման մեջ են ընդգրկվում եղբայրակից վրացիներն ու աղվանները, որոնք նույնպես հոգ տարան իրենց նշանագրերն ունենալու։ Ինչպես հաղորդում է Կորյունը, Մեսրոպ Մաշտոցը սկսեց «նշանագրեր հորինել վրաց լեզվի համար։ Գրեց, կարգավորեց և, ինչպես հայտնի է, հարդարեց ու, իր լավագույն աշակերտներից մի քանիսին հետը վերցնելով՝ ներկայացավ թագավորին, որի անունն էր Բակուր[32], և երկրի եպիսկոպոսին, որի անունը Մովսես էր... Եվ նա իր արվեստն առաջադրելով՝ խրատեց, հորդորեց նրանց, և ապա բոլորն հանձն առան նրա խնդրածը կատարել։ Եվ գտնվեց վրացերեն լեզվի թարգման մի մարդ, որն անվանվում էր Ջաղա և որը գրագետ ու ճշմարտահավատ մարդ էր։ Այնուհետև վրաց արքան հրամայեց իր իշխանության զանազան կողմերից և խառնիճաղանջ գավառներից հավաքել տղաներ և հանձնել վարդապետներին»[33]։ Կորյունը ցույց է տալիս, թե ինչ նշանակություն ունեցավ վրաց ժողովրդի համար վրացերեն գրերի հորինումը. «Նրանց, որ այնքան առանձին և բաժանված լեզուներից ժողովվեցին, մեկ աստվածային պատգամներով կապեց, դարձրեց մեկ ազգ, մեկ Աստծու փառաբանիչներ»[34]։ Մաշտոցը նման առաքելությամբ մեկնում է նաև Աղվանք։ Կորյունը գրում է. «Այդ ժամանակ եկավ, հանդիպեց նրան մի քահանա մարդ, ազգով աղվան, որի անունը Բենիամին էր։ Եվ նա (Մաշտոցը) հարցափորձ արեց և քննեց աղվաներեն լեզվի բարբարոս բառերը, ապա վերնապարգև կորովի իր սովորությամբ նշանագրեր հորինեց և Քրիստոսի տված շնորհքի ներգործությամբ կշռադատեց, կարգավորեց և հաստատեց... Եվ Մաշտոցը գնաց իջավ նրանց աշխարհը և, հասնելով թագավորական տեղերը, տե-

28 Խորենացի, Գ, կ։

29 Կորյուն, էջ 65։

30 Խորենացի, Գ, կա (աշխ. թարգ., էջ 339)։

31 Նույն տեղում։

32 Բակուրը (416—429) Պետրոս Իբերի հայրն էր, տե՛ս «Житие Петра Ивера», изд. Н. Марра. Православный Палестинский сборник, 47 вып. СПб., 1896, էջ 82—83, տե՛ս Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 271։

33 Կորյուն, էջ 62—63։ Համա. Խորենացի, Գ, ծդ։

34 Կորյուն, էջ 65։ Հ. Աճառյանը նշում է, որ Մեսրոպ Մաշտոցը վրաց գրերը հորինել է 408 թ. («Հայոց գրերը», էջ 179—182, 339, 387)։

*սավ աղվանների սուրբ եպիսկոպոսին, որի անունը Երեմիա էին ասում, և նրանց թագավորին, որի անունն Արսվաղ էր, որոնք բոլոր ազատանիների հետ միասին մեծ խնդությամբ ընդունեցին նրան Քրիստոսի անվան համար։ Ապա երբ նրանք հարցրին՝ նա բացատրեց, թե ինչի համար է եկել։ Եվ նրանք, երկուսը միասին, եպիսկոպոսը և թագավորը, հանձն առան ընդունել դպրությունը։ Նրանք հրաման տվեցին նաև, որ իրենց իշխանության գավառներից ու տեղերից դպրության արվեստի համար բազմաթիվ տղաներ բերեն և հավաքեն, հարմարավետ ու պատեհ տեղերում մաս-մաս տեղավորեն դպրոցներում և նրանց ապրուստի համար կարգեն թոշակներ»*[35]։

*Հայաստանում Վռամշապուհի օրոք սկսված և այնուհետև ծավալված լուսավորական լայն շարժումը, որն իրականացվում էր Մեսրոպ Մաշտոցի և Սահակ Ա կաթողիկոսի գլխավորությամբ, պսակվում է նրանով, որ հայ ժողովուրդը վերջնականապես ստեղծում է իր ինքնուրույն մշակութային աշխարհը։ Սասանյան Իրանի տիրող վերնախավը բավական ուշ հասկացավ, որ հայերի, վրացիների և աղվանների այս մեծ շարժումը, ճիշտ է, նպաստում էր նրանց հեռացմանը դավանակից Բյուզանդիայից, բայց առաջին հերթին սատարում էր այդ ժողովուրդների ինքնագիտակցության զարգացմանն ու հակապարսկական տրամադրությունների ուժեղացմանը*[36]։

*Հազկերտ Բ-ի (439—457) գահ բարձրանալուն պես սկսվեց Սասանյանների համաձուլարար քաղաքականությունը, որի առաջին քայլն էր լինելու ոչնչացնել հայերի, վրացիների և աղվանների ինքնուրույնությունը։ Սակայն այդ քաղաքականությունը դատապարտված էր ձախողման։*

*Մեսրոպ Մաշտոցը սոսկ տառերի գյուտարար չի եղել. նա նաև հիմնադիրն է հայ դպրոցի գրականության՝ արձակի և չափածոյի ու հայկական երաժշտության։ Մեզ հասած նրա բանաստեղծական քերթվածքներում դրսևորվում է մեծ քաղաքացին և մտածողը։ Նրան ամենից առաջ հետաքրքրում էր իր ժողովուրդը, իր հայրենիքը։ Մեսրոպ Մաշտոցի կյանքի և գործունեության գերագույն խորհուրդը իր ժողովրդին ծառայելն էր մեծագույն նվիրումով, նրան լուսավորելը, նրա ինքնության պահպանելը։ Տարիների տքնանքով հորինելով, մշակելով ու կիրառելով հայոց այբուբենը, զարգացնելով հոգևոր առաջընթացի, ազգային մշակույթի ստեղծման ու պահպանման անփոխարինելի զենքը՝ մեր հուրհրատող մայրենի լեզուն, Մեսրոպ Մաշտոցը իրական հնարավորություն ընձեռեց հայ ժողովրդին՝ մշակույթի համաշխարհային գանձարանը մուծել իր հանճարի գոհարները։*

---

35 *Նույն տեղում, էջ 68—70։ Խորենացին խոսելով այս նույն անցքերի մասին, ավելացնում է, որ Մեսրոպը Բենիամին թարգմանչի և Սյունիքի Անանիա եպիսկոպոսի «օգնությամբ ստեղծեց նշանագրեր՝ գարգարացիների կոկորդային, կոպիտ, խժական, բեկբեկուն լեզվի համար» (Գ, ծդ, աշխ. թարգմ., էջ 294)։ Գարգարացիների հիշատակությունը վկայում է այն մասին, որ Աղվանքում մի ժամանակ գրանց զբաղեցրած տարածքում գերիշխող բնակչությունը ներկայացված է եղել վայնախյան (չեչենոինգուշական) ցեղին պատկանող գարգարացիներով, որոնց խոսվածքը դարձավ աղվանից գրական լեզվի հիմքը (տե՛ս* *С. Т. Еремян,* Идеология и культура Албании III—VII вв.: «Очерки» истории СССВ, III—IX вв.», М., 1958, стр. 327)։

36 Ս. Տ. Երեմյան, *Մեսրոպ Մաշտոց (ծննդյան 1600-ամյակի առթիվ) «Լենինյան ուղիով», 1962, 5, էջ 16։*

## 3. ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒ: ՔԵՐԱԿԱՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

*Հայոց լեզուն աշխարհի հնագույն լեզուներից է։ Անցած լինելով զարգացման երկար ու ձիգ ուղի՝ այն աչքի է ընկնում ճոխությամբ ու մշակվածությամբ։ Վիթխարի է նրա դերը հայ ժողովրդի կյանքի բոլոր բնագավառներում, գոյության բոլոր ժամանակներում։*

*Իր հույժ հարուստ պատմությամբ, կառուցվածքային բնորոշ ու ինքնատիպ իրողություններով հայոց լեզուն մեծ հետաքրքրություն է ներկայացնում նաև գիտության համար, որպես գիտական հետազոտությունների անգնահատելի ու անսպառ աղբյուր։*

*Պատմահամեմատական ուսումնասիրություններով պարզված է, որ հայերենը ծագումով պատկանում է հնդեվրոպական ընտանիքի լեզուների շարքին։ Երբ սկզբնավորվեց պատմահամեմատական լեզվաբանությունը, և հայերենը ևս ընդգրկվեց դրա ուսումնասիրման ոլորտը, գիտնականներից ոմանք կարծում էին, թե դա հնդեվրոպական լեզուների մեջ մտնում է որպես իրանյան ճյուղի լեզու։ Այդ վարկածը բխում էր հայերենում գոյություն ունեցող իրանյան փոխառությունների առատությունից։ Դեռ պարզ չէր այդ փոխառությունների բնույթը, և դրանք դիտվում էին որպես ծագումնային բուն տարրեր։ Հայերենի ազգակցական բնույթի ճիշտ որոշման խնդրում մեծ դեր խաղացին ականավոր գիտնական Հյուբշմանի աշխատությունները։ 1875 թ. հրապարակած «Հնդեվրոպական լեզուների շրջանում հայերենի գրաված դիրքի մասին» մեծարժեք հոդվածում Հյուբշմանն անհերքելի փաստերով ապացուցեց, որ իրանյան տարրերը հայերենում առկա են իբրև փոխառություններ, և հնդեվրոպական ընտանիքում հայերենն ուրույն ճյուղ է ու միջին դիրք է գրավում բալթիասլավոնական և իրանյան ճյուղերի միջև։ Մի շարք գիտնականների (Ա. Մեյե, Հ. Աճառյան և ուրիշներ) հետագա հետազոտություններն առավել ևս հիմնավորեցին այդ տեսակետը։*

*Նույնիսկ այն գիտնականները, որոնք գտնում են, թե հայերենը խաչավորված ու խառնածին լեզու է, շեշտում են, որ այն ունի ուժեղ չափով շեշտված հնդեվրոպական նկարագիր*[37]*։*

*Հայոց լեզու հասկացությունը լայն է թե՛ պատմական, թե՛ կացութային (ստատիկ) առումով։ Պատմականորեն տարբերվում են դրա հին, միջին և նոր, կամ աշխարհաբարյան շրջանները (աշխարհաբարը՝ արևելյան և արևմտյան ճյուղերով, սրանք էլ իրենց հերթին ներկայանում են տարբեր փուլերով)։ Հայերենի զարգացման այդ երեք շրջաններից գիտությանը հայտնի են 60-ից ավելի բարբառներ, որոնք, անշուշտ, բոլորը չեն։*

*Հայոց լեզվի պատմության հին շրջանն ընդգրկում է հին հայերենը, որի գրավոր արտահայտությունը հետագայում կոչվում է նաև* **գրաբար**: *Հին հայերենը ծառայել է իբրև ընդհանուր հաղորդակցման միջոց հայ ժողովրդի համար նրա ձևավորման ժամանակներում և հետագա դարերում։ Սակայն, որպես լեզվական նյութ, այն գալիս է ավելի հեռավոր ժամանակներից՝ մինչև էթնիկական լեզվի աստիճանին բարձրանալը անցնելով տոհմային ու ցեղային շրջաններով։ Դրա հիմքում ընկած է հայասաարմենական ցեղային միության լեզուն։ Լեզվի կառուցվածքային իրողությունների քննությունը ցույց է տալիս,*

---

37 Տե՛ս Գ. Ա. Ղափանցյան, *Հայոց լեզվի պատմություն. Հին շրջան*, Երևան, 1961, էջ 11։

*որ բազմաթիվ օրենքներ ձևավորվել ու գործել են շատ հին ժամանակներում, և դրանց մի զգալի մասը հետագայում իր տեղը զիջել է հաստատվող այլ օրենքների։ Կտրելով երկար ուղի՝ լեզուն աստիճանաբար զարգացել է, յուրացվել հայ ժողովրդի կազմի մեջ մտնող այլ ցեղերի կողմից, ընդլայնել իր ֆունկցիաները և պետականության հիմնադրման շրջանում հսկայական դեր է կատարել ժողովրդի ու երկրի միասնականացման գործում։ Խիստ ուշագրավ է Ստրաբոնի վկայությունը Արտաշեսի ու Զարեհի կողմից երկրի սահմանների ընդլայնման ու լեզվի տարածման մասին, թե ինչպես այդ սահմաններում, բոլորը միալեզու եղան»[38]։ Այդ էլ հենց վաղուց արդեն ձևավորված հայ էթնիկական լեզվի տարածումն էր։*

*Հայ էթնիկ լեզուն ձևավորման ընթացքում զարգացել է հիմնականում իր իսկ ներքին օրինաչափությունների ծավալումով, ապա նաև ժողովրդի կազմում ընդգրկվող այլևայլ ցեղերի լեզուների բառամթերքի որոշ մասի, թերևս և այլ տարրերի օգտագործմամբ։ Այնուհետև, որպես ձևավորված լեզու այն կրել է նաև շատ լեզուների ազդեցությունը, որը դրսևորվում է փոխառությունների ձևով։ Հայերենն իր հերթին, ազդել է այլ լեզուների վրա։*

*Հին հայերենի մասին մենք այժմ պատկերացում ենք կազմում ըստ վաղ միջնադարյան հարուստ մատենագրության։ Բայց ի՞նչ էր դրա նախագրային վիճակը։ Այս հարցն առավել չափով վերաբերում է հեռավոր ժամանակների, քանի որ գրային շրջանին անմիջապես նախորդող ժամանակաշրջանի տարբերությունները շատ մեծ չէին կարող լինել։ Այս խնդրում խիստ կարևոր է և շոշափելի արդյունք է տալիս պատմահամեմատական մեթոդի կիրառումը։ Սակայն հիշյալ մեթոդով եթե հնարավոր է պարզել կառուցվածքային շատ իրողություններ, ապա չափազանց դժվար է բացահայտել լեզվի ավելի կատարյալ պատկերը։*

*Այս բացը որոշ չափով լրացվում է ժողովրդական բանահյուսության՝ մեզ հասած բեկորների լեզվի ուսումնասիրությամբ։ Հենց դրանք էլ ներկայացնում են մեր լեզվի պատմության նախագրային շրջանի մի մասը, որ անվանվում է վիպասանական հայերեն[39]։ Այդ թանկագին գանձերի համար պարտական ենք Մովսես Խորենացուն, որը գրի է առել ու պահպանել 12 հատված (մեկական հատված էլ պահպանել են Ագաթանգեղոսը և Գր. Մագիստրոսը)։ Պատմահայր Մովսես Խորենացին, Գողթան երգիչների երգած երգերը գրի է առել նույնությամբ, իսկ դա առանձնապես կարևոր է լեզվի ուսումնասիրության առումով։ Ինչպես երևում է բովանդակությունից, այդ երգերը հյուսված են մեր թվականությունից առաջ։ Մինչև գրի առնվելը դրանք անցել են դարերի միջով և, անշուշտ, լեզվական առումով ևս որոշ փոփոխությունների են ենթարկվում, բայց ամենևին էլ չեն կորցրել իրենց հիմնական ժողովրդական էությունը, լեզվական բնորոշ հատկանիշները։ Համեմատությունը ցույց է տալիս, որ վիպասանական հայերենը կառուցվածքային հիմնական տարրերով ընդհանուր է հին հայերենի հետ և կրում է շեշտված ժողովրդական կնիք։ Քերականական կառուցվածքը կանոնավոր է, թեև կան փոքրիկ շեղումներ։ Լեզվին մի առանձին երանգ են հաղորդում ժողովրդական ոճային հնարները, ինչպիսիք են բառերի*

---

38 *Հմմտ.* Հ. Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Ա, Երևան, 1944, էջ 116։*

39 *Հմմտ.* Հ. Աճառյան, *Հայոց լեզվի պատմություն, II մաս, Երևան, 1951, էջ 65—76։*

փաղաքշական-նվազական կազմությունները ու երանգավորումները՝ **կարմրիկ**, **եղեգնիկ**, **աչկունք**, հաճախ էլ համապատասխան ածանցումը հանդիպում է կրկնակի ձևով, որն առավել ընդգծում է փաղաքշական երանգը, ինչպես՝ պատանեկիկ, տղեկիկ։ Խոսքն արտահայտիչ ու տպավորիչ են դարձնում կրկնությունները, ինչպես՝ «**Երկնէր** երկին, **երկնէր** երկիր, **երկնէր** և ծովն ծիրանի... **ընդ եղեգան փող ծուխ ելանէր**, ընդ եղեգան փող բոց ելանէր...», «Տեղ ոսկի **տեղայր**... **տեղայր** մարգարիտ...» և այլն։ Ազատ ու ճկուն է նախադասության անդամների շարադասությունը։ Այս հատկանիշները դարեր շարունակ պահպանվել են հայ ժողովրդական խոսքի մեջ և ավելի ծավալվել միջին հայերենում ու շատ բարբառներում։ Հետաքրքրական պատկեր ունի բառապաշարը։ Ինչպես ցույց է տվել Հ. Աճառյանը, այնտեղ կան և բուն հնդեվրոպական, և փոխառյալ, և ծագումով անհայտ բառեր, այդ տարբեր շերտերի մեջ առանձին վերցված գերակշռող են հնդեվրոպական բնիկ բառերը (եղած բոլոր բառերի 45 տոկոսը)[40]։ Ժողովրդական բանահյուսության այս հատվածների լեզուն շատ բան է ասում հին հայերենի՝ երբեմնի կենդանի, խոսակցական լեզու լինելու իրողության մասին։

Հայոց լեզվի համար էական նշանակություն ունեցան գրերի գյուտը և դպրության սկզբնավորումը։ Մեսրոպ Մաշտոցի և Սահակ Պարթևի գլխավորած հզոր գրական շարժումը մեծ դեր խաղաց հայերենի զարգացման գործում։ Այսպիսով, դրա մշակումն սկսում է ծավալվել նաև գրավոր ճանապարհով, ընդլայնվում են դրա ֆունկցիաները, հաղորդակցման անմիջական բանավոր միջոց լինելու հետ նա սկսում է ծառայել նաև գրավոր խոսքի արտահայտմանը. դառնում է գրավոր լեզու, արձանագրվում նախ թարգմանական և ապա ինքնուրույն գրքերում ու իբրև լեզվական ամբողջական համակարգ ավանդվում հետագա սերունդներին։

Հասկանալի է, որ գրավոր լեզուն չէր կարող ստեղծվել միանգամից, առանձին անհատների ջանքերով, չէր կարող ունենալ արհեստական բնույթ։ Այն ձևավորվել է ժամանակի ընթացքում հայ էթնիկական լեզվի «բնական» նյութից։ Մեր առաջին թարգմանիչներն ու մատենագիրներն իրենց մեծ գործը կատարել են ժողովրդի համար իբրև հաղորդակցման միջոց ծառայող կենդանի լեզվով, որը հենված էր երկրի վարչաքաղաքական կենտրոնի (Արարատյան նահանգ) խոսվածքների վրա։ Առանց կենդանի լեզվի անհնարին կլիներ դպրության սկզբնավորումը։ Մյուս կողմից գրի ու գրականության տարածումն ապարդյուն կլիներ, եթե գրավոր լեզուն չլիներ այս կամ այն չափով ընդհանուր ու հասկանալի հայ ժողովրդի համար։

Մեզ հասած առաջին իսկ գրավոր հուշարձաններն աչքի են ընկնում լեզվի հարստությամբ ու կանոնավորությամբ։ Այդ բացատրվում է նրանով, որ մինչև գրական ստրիճանի բարձրանալը լեզուն դարերի ընթացքում ժողովրդի բերանում ենթարկվել էր տևական մշակման և, բացի դրանից, դրա կատարելագործմանը մեծապես նպաստել են նաև բանավոր թարգմանությունները, որոնք հատկապես 4-րդ դարի ընթացքում քրիստոնեության տարածման համար կատարվում էին մինչև հայ դպրության սկզբնավորումը։

Հայ հին գրավոր լեզուն, իր հերթին, երկար ճանապարհ է անցել և տարբեր ժամանակներում ու ամեն տեսակի դրսևորումներում տառացիորեն նույն

---

[40] Հ. Աճառյան, Հայոց լեզվի պատմությունը, II մաս, Երևան, 1951, էջ 75։

վիճակը չունի։ Գործածվելով մատենագրության մեջ ու մշակվելով այդ ճանապարհով, անցնելով զանազան ուղղությունների բովով, ինչպես նաև որոշ չափով արտացոլելով բանավոր լեզվում տեղի ունեցած փոփոխությունները՝ այն իր ներսում բաժանվում է տարբեր փուլերի և ուղղությունների։ Հայագիտությունն ընդհանուր գծերով նախ այն բաժանում է մեսրոպյան և հետմեսրոպյան փուլերի։ Ժամանակագրական առումով սահմանագիծն ընդունվում է 460 թվականը։

Մեսրոպյան հայերենի այլ անվանումն է՝ «ոսկեդարյան հայերեն»[41]։

Մեսրոպյան հայերենով մեզ հասել է 41 գործ, որոնք գերազանցապես թարգմանական են և մասամբ՝ ինքնուրույն։ Դրանք վերաբերում են 50—60 տարվա ժամանակամիջոցի և լեզվի հիմնական կողմերով ընդհանուր են, սակայն ոճական տեսակետից ունեն տարբերություններ, որոնց հիման վրա էլ հետագայում գիտնականների կողմից բաժանվել են 4 ուղղությունների կամ դասերի[42]։ Դրանք են՝ ա) Եզնիկյան, բ) Եփրեմյան, գ) Կյուրեղյան, դ) Ագաթանգեղյան։ Երկրորդ և երրորդ դասերի գործերն ամբողջովին թարգմանական են, առաջին դասի մեջ ինքնուրույն է Եզնիկի աշխատության բնագիրը, չորրորդ դասի մեջ՝ Ագաթանգեղոսի, Կորյունի և Փավստոսի երկերի բնագրերը։ Այս դասերը ոճաբանորեն բնորոշվում են այսպես. «Եզնիկյանը բոլորից կանոնավորը, ճիշտը, հստակը, արվեստավորն ու գեղեցիկն է. Եփրեմյանը ամենից պարզն ու հասարակը, Կյուրեղյանը ներկայացնում է բարբխառն ոճ և բռնում է երկուսի միջին տեղը. Ագաթանգեղյանը պերճ, բազմազարդ, մթին ու հաճախ անկանոն»[43]։

Մեսրոպյան հայերենի տարբերությունները հետմեսրոպյանի համեմատությամբ գերազանցապես արտահայտվում են բառերի ու դարձվածքների գործածության, բառակազմության միջոցների գործադրման և մասամբ էլ քերականական ձևերի կիրառության մեջ[44]։

Նման տարբերությունները, սակայն, խոր անջրպետ չէին ստեղծում ու խզում չէին առաջացնում ամբողջ հին գրավոր լեզվի մեջ։ Եվ բնական է, որ մեսրոպյան հայերենը դիտվում է որպես հին գրավոր լեզվի ամենաբնորոշ դրսևորումներից մեկը. չէ՞ որ հենց դրանով է սկսվում գրավոր լեզուն։

Հայ հին մատենագրությունը գնալով դառնում է բազմաժանր, ընդլայն-

---

41 Հայոց լեզվի գիտական ճանաչումը և այսպիսի շրջաբաժանումը պատկանում է Վիեննայի Մխիթարյան միաբանության հայագետներին։ Նախ այն հայտնի դարձավ Գաթրըճյանի և Գարագաշյանի շանքերով, անցյալ դարի քառասնական թվականներին։ Նրա մասին գրվեցին շատ ուսումնասիրություններ, որոնցով վեր հանվեցին հայ գրավոր լեզվի պատմության շղթայի այդ օղակի առանձնահատկությունները։ Մեր ժամանակներում այդ բոլորի ամփոփումը տվել են Ն. Ակինյանը և Հ. Աճառյանը։ Տե՛ս Ն. Ակինեան, Դասական հայերենը և վիեննական Մխիթարեան դպրոցը, Վիեննա, 1932, Հ. Աճառյան, Հայոց լեզվի պատմություն, II մաս, Երևան, 1951, էջ 76—93։

42 Հմմտ. Նորայր Բիւզանդացի, Կորիւն վարդապետ և նորին թարգմանութիւնք, Տփղիս, 1900, էջ 16—35։ Հ. Աճառյան, Հայոց լեզվի պատմություն, II մաս, էջ 77—84։

43 Հ. Աճառյան, նույն տեղում, էջ 78։

44 Մեսրոպյան հայերենում չեն գործածվել հետագայում շատ տարածված որոշ բառեր (արփի, սազարթ, սեռ, փարթամ, փեթակ, քանակ և այլն), շատ նախածանցներ ընդհանրապես չեն եղել որպես այդպիսիք (րաղ, բաց-, գեր-, դեր-, ենթ և այլն)—անի վերջածանցով անուններ չեն կազմվել, ան—ժխտական ածանցն ունեցող բառերը չէին ընդունում—ել վերջածանցը, ի լծորդության բայերը անորոշ դերբայի մեջ չէին ցուցաբերում իրենց համապատասխան ի խոնարհիչը և այլն։

վում է թեմատիկ ընդգրկումը, սկզբնավորվում, ձևավորվում կամ տարբերակվում են գիտության տարբեր բնագավառներ, և այս բոլորի հետևանքով լեզվի մեջ առաջանում են զգալի փոփոխություններ։

Ետմեսրոպյան գրական հայերենի փոփոխությունները երևան են գալիս տարբեր ուղղություններով, այն է՝ լեզվի ներքին օրենքների ծավալումով ու դրանց արտացոլումով գրական նպատակադրված միջամտությամբ և նոր ազդեցություններով։ Ընդլայնվում են դրա բառակազմական հնարավորությունները, հարստանում բառապաշարը, ստեղծվում են նոր տերմիններ, տեղի են ունենում իմաստային փոփոխություններ, քերականական օրենքների որոշ տեղաշարժեր և այլն։ Շարունակվում են լեզվական որոշ ազդեցությունները։

Գրական նպատակադրված միջամտության խնդրում շատ բնորոշ է հունաբան դպրոցի դերը։ Ետմեսրոպյան շրջանում հունարենից փիլիսոփայական և այլ կարգի գիտական գործեր թարգմանելիս թարգմանիչ գիտնականները հունարենի օրենքների օգտագործումով ու պատճենումով ստեղծում էին բառակազմական ու քերականական ձևեր և այդպիսով նոր տեսք տալիս գրավոր խոսքին։ Գրավոր լեզվի մեջ այդ ուղղությունն այնքան որոշակի էր, որ ճանաչվել է հունաբան հայերեն անվանումով[45]։ Հունաբան դպրոցի ներկայացուցիչների կողմից հունարեն լեզվի քերականական կառուցվածքին հատուկ որոշ կարգեր (կատեգորիաներ) մեխանիկորեն փոխադրվեցին հայերենի մեջ (սեռը առանձին խոսքի մասերում, երկակի թիվը և այլն)։ Առանձնապես մեծ տարբերություններ առաջ եկան բայերի խոնարհման մեջ։ Դրանք օտար էին հայերենի ոգուն և երբեք չէին կարող մերվել նրա քերականական կառուցվածքին, քանի որ էապես չէին բխում հայ ժողովրդի լեզվամտածողական իրական վիճակից։ Այս ուղղությամբ հունաբան դպրոցի գործադրած ջանքերը միանգամայն ապարդյուն էին և մեր լեզվի հաջորդ շրջաններում դրանից հետք անգամ չմնաց։

Սակայն սխալ կլիներ պնդել, թե հունաբան դպրոցը հայոց լեզվի մեջ դրական դեր չունեցավ։ Քերականական նորամուծությունները համարժեք չէին բառակազմական նորամուծություններին։ Բառակազմության հարցերում արժեքավոր գործ կատարվեց. ստեղծվեցին բազմաթիվ նոր բառեր ու գիտական շատ տերմիններ, որոնք ժամանակի պահանջները բավարարելուց բացի, զգալի մասով գործածվում են և այսօր (ենթակա, մակբայ, տրամաբանություն, տրամագիծ, քերականություն և այլն). այժմ դրանց նմանակությամբ կազմվում են ուրիշները։ Հունաբան դպրոցի ներկայացուցիչները, հունարենի օրինակով, բայց հիմնականում հայկական լեզվական նյութով, ստեղծեցին մի շարք նախածանցներ, որոնց կարիքը որոշակիորեն զգում էր հայոց լեզուն, որը հա-

---

45 Հունաբան դպրոցի և հունաբան հայերենի մասին տե՛ս Յ. Մանանդեան, Յունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները, Վիեննա, 1928։ Հ. Աճառյան, Հայոց լեզվի պատմություն, II մաս, էջ 142—168։ Գ. Ջահուկյան, Քերականական և ուղղագրական աշխատությունները հին և միջնադարյան Հայաստանում, Երևան, 1954։ Ա. Մուրադյան, Հունաբան դպրոցը և նրա դերը հայերենի քերականական տերմինաբանության ստեղծման գործում, Երևան, 1971։ С. С. Аревшатян, Формирование философской науки в древней Армении (V—VI вв.), Ереван, 1973.

բուստ լինելով վերջածանցներով, ընդհակառակն, աղքատ էր նախածանցներով։ Հունաբան հայերենում երևան եկած նախածանցների մեծ մասը մեր արդի լեզվում գործուն է և կարևոր դեր է կատարում նոր բառեր կազմելու գործում (ինչպես արտ,—գեր, ենթ—, ներ—, ստոր—, վեր—, փոխ—և այլն)։ Պետք է նշել նաև շատ բառերի վերաիմաստավորումը և գիտական հասկացությունների արտահայտման համար դրանց հատուկ օգտագործումը։

Որոշակիորեն նկատելի է, որ լեզվի գրավոր և բանավոր դրսևորումները զարգացման տարբեր ընթացք են ունեցել։ Սակայն այդ չի նշանակում, թե դրանք լիովին անջրպետված են եղել։ Հասկանալի է, դպրության սկզբնավորման շրջանում լեզվի բանավոր և գրավոր արտահայտությունների միջև շատ շոշափելի տարբերություններ չէին կարող լինել, իսկ եղածները մեծ մասամբ պիտի լինեին ոճական, խոսքի բովանդակությունից բխող ձևակերպումների, բառագործածության ու նման այլ կողմերով։ Սա վերաբերում է ընդհանուր լեզվին և ոչ տեղական բարբառներին։ Գրավոր լեզուն կիրառվում էր մատենագրության մեջ և ուսուցվում դպրոցներում։ Նրա օրենքների ամբողջական համակարգի ամրապնդումը հետզհետե ավանդականության ուժ էր ստանում և մատենագիրները սերնդե-սերունդ, գերազանցապես հենվում էին V դարի մատենագրության լեզվի վրա։ Պարզ է, որ այդպիսի պայմաններում գրավոր լեզվի զարգացումն զգալիորեն կաշկանդվում էր։ Եվ այդ է պատճառը, որ ավելի ուշ ժամանակներում ստեղծված գրավոր հուշարձանների մեջ կան այնպիսիները, որոնց լեզուն մեծ չափով հիշեցնում է V դարի մատենագիրների երկերի լեզուն։

Բանավոր լեզուն ժողովրդի բերանում դարեդար ենթարկվում է փոփոխությունների ու իր որակով աստիճանաբար սկսում է տարբերվել գրավոր լեզվից։ Տարբերությունները հետզհետե մեծանում ու խորանում են, և գալիս է մի ժամանակաշրջան, երբ հին հայերենի գրավոր ու բանավոր դրսևորումները գիտակցվում են իբրև լեզվական տարբեր որակներ։ Գրավորը դիտվում է գրոց լեզու, գրաբար. բանավորը՝ աշխարհիկ լեզու, աշխարհաբար: IX—X դդ. արդեն մեր մատենագրության մեջ ուղղակիորեն այդպիսի տարբերակող գնահատում է տրվում դրանց։ Բնորոշ են Համամ Արևելցու, իսկ այնուհետև Հովհ. Դրասխանակերտցու հիշատակումները ժողովրդական խոսակցական լեզվի մասին՝ ի տարբերություն գրաբարի։

Դեպի ժողովրդական կենդանի լեզուն հակված առանձին մատենագիրներ ազատ վարվելով՝ դուրս էին գալիս գրավոր լեզվի շրջանակներից և տեղի տալիս իրենց դարաշրջանին հատուկ լեզվական իրողություններին։ Եվ, այդպիսով, այսօր մենք որոշ գաղափար ենք կազմում ժամանակի խոսակցական լեզվի ու դրա փոփոխությունների մասին։ Այս տեսակետից խիստ բնորոշ է VII դարի մատենագիր Հովհան Մամիկոնյանի «Պատմութիւն Տարօնոյ» երկի լեզուն։ Իհարկե, հիշյալ երկը գրված է գրաբար անվանվող լեզվով, սակայն այնտեղ դյուրությամբ կարելի է նկատել ժամանակի խոսակցական լեզվի բազում բնորոշ կողմեր, լեզվի որակական փոփոխությունը ներկայացնող շատ երևույթներ, ժողովրդական լեզվամտածողության ոգի։

Սակայն նույնը չի կարելի ասել, թեկուզ, նույն դարաշրջանում ապրած մեծահռչակ մաթեմատիկոս Անանիա Շիրակացու երկերի կամ հաջորդ դարի պատմիչ Ղևոնդի աշխատության լեզվի մասին։ Սրանք, մասնակի տարբերություններով հանդերձ, ավելի խստությամբ են պահպանում գրավոր լեզվի կանոնները և չունեն Հ. Մամիկոնյանի երկի լեզվի ընդգծված բնականությունը։

*VII—VIII դդ. վերաբերող լեզվական այս տարբերությունն ավելի է խորանում հետագա դարերում։*

*Հունաբան դպրոցի հետ սերտորեն կապված են հայ քերականագիտության սկզբնավորումը և հայոց լեզվի գիտական ուսումնասիրության փորձերը։ Սակայն այդ բնավ չի նշանակում, թե հայ մտավորականությունը մինչ այդ չի հետաքրքրվել դրանով։ Հայ գրերի գյուտը և դպրության սկզբնավորումը շատ բան են ասում այդ մասին։ Գրերի ստեղծումը մասնագիտական առումով հաջողությամբ կարող էր իրագործվել, մի կողմից՝ այլ լեզուների գոյություն ունեցող այբուբենների բնույթի, հորինվածքային սկզբունքների իմացությամբ ու հաշվառումով և, մյուս կողմից՝ հայոց լեզվի հնչյունական համակարգի խորազնին ուսումնասիրությամբ ու քաջ պատկերացումով։ Գրերի գյուտը ցույց է տալիս, որ նրա հանճարեղ հեղինակը՝ Մեսրոպ Մաշտոցը, մեծ խորաթափանցությամբ հետազոտել է ժամանակի հայերենի հնչյունները, պարզել դրանց համակարգը և դրան համապատասխան ստեղծել գրերը։*

* * *

*Բուն առումով հայ քերականագիտությունն սկզբնավորվում է Դիոնիսիոս Թրակացու «Արվեստ քերականության» աշխատության հայերեն թարգմանությամբ, որն, ամենայն հավանականությամբ, տեղի է ունեցել V դ. երկրորդ կեսին։ Թրակացու քերականությունը գրվել է մ. թ. ա. II—I դդ. սահմաններում և կարևոր դեր խաղացել ոչ միայն հունարենի, այլև բազմաթիվ լեզուների քերականագիտության մշակման ասպարեզում։ Հայ ձեռագրերի հարուստ ժառանգության մեջ պահպանվել է նրա թարգմանական բնագիրը, նրա շուրջը միջնադարում ստեղծվել է մեկնողական հարուստ գրականություն։ Նոր ժամանակներում և մեր օրերում այդ երկին և նրա հայերեն թարգմանությանը նվիրվել են մի շարք հետազոտություններ[46]։*

*Թրակացու գործի թարգմանությունը նշանակալից երևույթ էր հայ մշակութային կյանքում։ Դրանով ոչ միայն հնարավորություն էր ընձեռվում մայրենի լեզվով ծանոթանալու ամենամշակված քերականության օրինակին, այլև լիովին գիտակցելու քերականական ուսմունքի դերը և նրա հանդիպադրումով արժեքավորելու հայոց լեզվի կառուցվածքային առանձնահատկությունները։ Նրանից եկող շատ տերմիններ, հասկացություններ և նույնիսկ սահմանումներ նույնությամբ կամ որոշ փոփոխումներով լայնորեն գործածվում են արդի քերականագիտության մեջ։ Բայց ոչ միայն այդ։ Հայերեն թարգմանությունը որոշակի արժեք է ներկայացնում նաև ժամանակի հայերենի մի շարք առանձնահատկությունների արտացոլմամբ։ Թեև այն գրված է հունարենի համար, սակայն, ինչպես ցույց են տալիս նորագույն հետազոտությունները, նրանում տեղ են գտել նաև հայերենի մի շարք առանձնահատկություններ[47], և*

---

[46] Grammaire de Denis de Thrace par M. L. CH Girbled, Paris, *Н. Адонц*, Дионисий Фракийский и армянские толкователи, Птг., 1915, Գ. Ջահուկյան, *Քերականական և ուղղագրական աշխատությունները հին և միջնադարյան Հայաստանում, Երևան, 1954։ Նա հրատարակել է նաև՝* Դավիթ Քերական, *Մեկնություն քերականին, «Բանբեր մատենադարանի», հ. 3, 1956։* Ա. Մուրադյան, *Հունաբան դպրոցը և նրա դերը հայերենի քերականական տերմինաբանության ստեղծման գործում, Երևան, 1971։*

[47] *Տե՛ս* Գ. Ջահուկյան, *նշվ. աշխ., էջ 61—76։*

*այդպիսով թարգմանությունը տեղ-տեղ ստացել է փոխադրության բնույթ։ Այդ ճանապարհով հայերենի իրողությունները դառնում էին գիտական քննության առարկա. դրանով դուռ էր բացվում հայոց լեզվի գիտական ուսումնասիրության համար։ Այս հանգամանքն ավելի ցայտուն է երևում մեկնողական գրականության մեջ։*

*Թրակացու քերականության վերաբերյալ V—IX դդ. (դրանից հետո էլ մինչև VII—XIV դդ.) գրվել են բազմաթիվ մեկնություններ, որոնցից այս կամ այն չափով մեզ են հասել Դավթի, Մովսեսի, Անանուն մեկնիչի, Ստեփաննոս Սյունեցու, Համամ Արևելցու գործերը[48]։ Դրանք թեև բոլորը չեն, սակայն որոշակի պատկերացում են տալիս նշված ժամանակաշրջանում հայ իրականության մեջ ծավալված քերականագիտական-մեկնողական գրականության վերաբերյալ։ Այդ երկերի արժեքն ամենից առաջ այն է, որ դրանք գրեթե ինքնուրույն քերականության դեր են կատարել։ Ճիշտ է, մեկնությունները տարբեր կողմերից բացահայտում էին Թրակացու քերականության դրույթներն ու կանոնները, բայց, միաժամանակ, ուղղված էին դրանց լույսի ներքո հայոց լեզվի կառուցվածքային երևույթները դիտելու և սովորողներին ըմբռնել տալու նպատակին։*

*Բացատրության նյութը Թրակացու քերականությունն էր, ուստի մեկնիչներն այդ շրջանակներում իրենց երկերը պիտի շարադրեին որոշ կաշկանդվածությամբ, բայց նրանք ավելի ազատ էին, քան թարգմանիչը, քանի որ աշխատանքի բնույթը նրանց հնարավորություն էր ընձեռում հանդես բերելու իրենց ըմբռնումներն ու մոտեցումը։ Այդ երկերի արժեքը բարձրացնում է նաև ցուցադրվող այն նյութը, որը ներկայացնում է ժամանակի հայերենի կառուցվածքային իրական առանձնահատկությունները։ Այստեղ այդ կողմն ավելի ցայտուն է, քան «Քերականության» հայերեն թարգմանության մեջ։ Բացատրություններ տալիս մեկնիչները հաճախ դիմում էին հայերենի փաստերին ու ցույց տալիս համապատասխան կամ համանման երևույթները։ Այստեղ մենք գտնում ենք բնորոշ օրինակներ ոչ միայն ընդունված գրավոր լեզվից, այլև բարբառներից։ Հայոց լեզվի պատմության և մասնավորապես պատմական բարբառագիտության համար թանկարժեք տեղեկություններ կան տարբեր մեկնիչների երկերում։ Իբրև նմուշ հիշենք Անանուն մեկնիչի վկայությունն այն մասին, թե ինչպես միևնույն բաղաձայնը գրավոր լեզվում ու բարբառներում հանդես էր գալիս տարբեր արտասանությամբ[49] կամ՝ մի շարք բարբառների հիշատակումը Ստեփաննոս Սյունեցու կողմից։ Սյունեցին (մահ. 735 թ.) մայրաքաղաք Դվինում ընդունված («ոստանիկ») լեզվի հետ թվում է 7 գավառաբարբառ՝ Կորճեքի, Տայքի, Խութի, Չորրորդ Հայքի, Սպերի, Սյունիքի և Արցախի[50]։ Այս տեղեկությունները պետք է ստույգ համարել, քանի որ այդ բարբառների գրաված դիրքն ու անվանումը համապատասխանում են պատմական Հայաստանի ազգագրական աշխարհագրական բաժանմանը։*

---

48 Դրանց հրատարակված բնագրերը տե՛ս Ն. Ադոնց, նշվ. աշխ., էջ 77—287։ Նույն տեղում զետեղված է նաև Գրիգոր Մագիստրոսի մեկնությունը։

49 Նույն տեղում, էջ 149։

50 Նույն տեղում, էջ 187։

*Քերականագիտական-մեկնողական երկերն ունեցել են և՛ գործնական, և՛ տեսական նշանակություն։ Դրանք օգտագործվել են դպրոցներում ու գրչության օջախներում և միաժամանակ հող են նախապատրաստել ինքնուրույն քերականությունների ստեղծման համար։*

*Քերականագիտության և դրան համադրված այդ ճյուղերի զարգացումը կարևոր նշանակություն ունի լեզվի մշակման գործում։ Սակայն լեզվի զարգացման մեջ գլխավորը դրա ներքին բարեշրջությունն է՝ սեփական օրենքների ծավալումով, դրա էությունից բխող, ժողովրդի կյանքն ու մտածողությունն արտացոլող փոփոխություններով։*

ԴԼՈՒԽ ՏԱՍՆԻՆՆԵՐՈՐԴ

# ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## 1. ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՆԱՎՈՐՈՒՄԸ: ԹԱՐԳՄԱՆԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Հայ գրականությունն սկզբնավորվում է V դարի առաջին կեսին, գրերի գյուտից անմիջապես հետո, Մեսրոպ Մաշտոցի, Սահակ Պարթևի և նրանց անմիջական աշակերտների ջանքերով։*

*Հայ գրերի գյուտի առաջին շարժառիթը քրիստոնեական կրոնի հիմնական սկզբունքների՝ մայրենի լեզվով տարածումն էր և եկեղեցական պաշտամունքի կատարումը՝ բոլորի համար պարզ ու մատչելի հայերենով։ Այդ պատճառով իսկ գրերի գյուտից անմիջապես հետո Մաշտոցի առաջին գործն է դառնում Աստվածաշնչի հայերեն թարգմանությունը։ Կորյունի վկայությամբ Մեսրոպ Մաշտոցը և Սահակ Պարթևը հայաբարբառ, հայերենախոս են դարձնում հնգամատյանը, Սողոմոնի առակները, Դավթի սաղմոսները, մարգարեությունները, առաքյալների թղթերը. Ավետարանը, Հովհաննեսի հայտնությունը[1], այսինքն՝ ամբողջ Աստվածաշունչը։ Վերջինիս զուգահեռ թարգմանվել են նաև եկեղեցական աղոթքները, որոշ թվով հոգևոր երգեր, որոնք ընդունված են եղել քրիստոնեական եկեղեցում։ Դրանց մի մասը, հավանաբար, թարգմանված է եղել հայերեն բերանացի՝ մինչև գրերի գյուտը, քանի որ ժամերգությունը բերանացի էր կատարվում[2-3]։*

*Աստվածաշնչի հայացումը և ժամանակի խոսակցական հայերենով ուսուցումն ու լայն տարածումը մեծ հեղաշրջում է առաջացնում հայ կյանքի ու մտածողության մեջ։ «Մարդիկ կապվում էին մի նոր աշխարհայեցողության և ավանդության հետ, որ օտար էր, բայց բազմաթիվ ոգևորված անձանց բերանով միանգամից Հայաստանի բոլոր կողմերում քարոզվելով, սկսում էր թափանցել նաև ժողովրդի մեջ»[4]։*

*Հեթանոսությունն սկսում է տեղի տալ քրիստոնեության առջև, հին ավանդական բանահյուսությանը զուգահեռ երևան են գալիս Հին կտակարանի ավանդական զրույցները, որոնք իրենց նոր հավատալիքներով կապվում են Հայաստանի հետ, տեղայնանում։ Բայց Աստվածաշունչը լուրջ ազդեցություն է գործում հատկապես գրավոր ավանդության վրա և այն էլ ոչ միայն կրոնական բովանդակությամբ ու գաղափարախոսությամբ, այլև ձևով, մասնավորապես՝ լեզվով։*

*Աստվածաշնչի լեզուն սկզբից իսկ բոլոր գրողների համար դառնում է*

---

1 Կորյուն, *Վարք Մաշտոցի*, էջ 57։

2-3 Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, հ. 1, Երևան, 1944, էջ 88։

4 *Նույն տեղում*, էջ 90։

օրինակելի. այն իր քերականությամբ, բառապաշարով, դարձվածքներով ու բանաձևերով հին գրականության գրեթե բոլոր ժանրերի համար ձեռք է բերում դասական չափանիշի արժեք։

Հայ առաջին թարգմանիչները՝ Սահակ Պարթևն ու Մաշտոցը թարգմանիչների մի ամբողջ սերունդ են պատրաստում։ Իրենց աշակերտների մի խումբը ուղարկում են Եդեսիա՝ ասորերենում հմտանալու, ասորի սուրբ հայրերի երկերը թարգմանելու, մյուս խումբը՝ Կոստանդնուպոլիս՝ եկեղեցական գրականությանը ծանոթանալու, հունարենից նոր թարգմանություններ կատարելու և նախորդ թարգմանությունները (հատկապես Աստվածաշնչի) հունարենի սռույգ բնագրի հետ համեմատելու։

Մի քանի տասնամյակի ընթացքում ասպարեզ են մտնում թարգմանիչների նոր սերունդներ, որոնք ձեռնամուխ են լինում աստվածաբանական, դավանաբանականմեկնողական, ընդհանուր եկեղեցու մեջ ընդունված եկեղեցական գրականության գրեթե բոլոր տեսակի երկերի թարգմանությանը։ Նրանց շնորհիվ V դարում ստեղծվում է հայկական թարգմանական ճոխ գրականությունը, միաժամանակ և հայ նորաստեղծ գրականության մեջ մշակվում է թարգմանական գործի կայուն ավանդույթ, որը զարգանում է հետագա դարերում։

Աստվածաշնչից, եկեղեցական աղոթքներից ու օրհներգություններից զատ V դ. հայոց եկեղեցու կարիքները բավարարելու համար սկսում են թարգմանել գրեթե բոլոր կրոնական գրվածքները, որոնք լայն ճանաչում ու տարածում ունեին ընդհանուր քրիստոնեական եկեղեցու մեջ։ Եկեղեցական գրականության անդրանիկ տեսակներից էին **թուղթը**, **կանոնը** և **ճառըը**, որոնք հիմնականում հետապնդում էին գործնական նպատակներ։

**Թուղթ** կամ **նամակը**, որ իբրև գրական տեսակ երևան էր գալիս տակավին Նոր կտակարանում՝ առաքյալների անունով, հետագայում դառնում է եկեղեցու հայրերի կամ միմյանց, կամ հասարակությանն ու համայնքներին ուղղած բարոյական, խրատական, եկեղեցական-կրոնական խնդիրներ բովանդակող գրվածք։ Այդ թղթերում արդեն երևան են գալիս եկեղեցու հայրերի առաջադրած կանոնները՝ նվիրված քրիստոնեական պաշտամունքին, ծեսերին, եկեղեցական պաշտոնյաներին։ Կանոններ են մշակվել և հրապարակվել նաև եկեղեցական ժողովների կողմից։

Եկեղեցական գրականության գործնական տեսակներից կարևոր տեղ է գրավում **ճառըը**, որի նպատակն էր կենդանի ու պատկերավոր խոսքով Աստվածաշնչի համապատասխան ընթերցվածը հավատացյալներին խրատով հաղորդելն ու բացատրելը։ Հետագայում այդ պարզ քարոզները զարգացվելով Հարտասան հոգևորականների կողմից հռետորական արվեստով, վերածվում են **ճառերի**, նպատակ ունենալով ունկնդիրներին բացատրել քրիստոնեության հիմունքները՝ քարոզելով պահք, ապաշխարություն, աղոթք ու մենակեցություն, բարեգործություն և այլն[5]։

V դ. հունարենից ու ասորերենից հայերեն են թարգմանվում վերոհիշյալ գրական տեսակներից Անտիոքի եպիսկոպոս Իգնատիոս Աստվածազգյացի, Զմյուռնիայի եպիսկոպոս Պողիկարպոսի թղթերը, Բարսեղ Կեսարացու, Փիլոն Աղեքսանդրացու, Գրիգոր Աստվածաբանի, Գրիգոր Սքանչելագործի, Դիոնի-

---

5 Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 94։

սիոսի, Կյուրեղ՝ Աղեքսանդրացու, Տիմոթեոս Կուզի և այլոց ճառերը։ V դարի հայ թարգմանիչների առջև, բացի գործնական գրական տեսակներից կար նաև քրիստոնեական տեսական, բանավիճային, մեկնողական ծավալուն գրականություն, որ սկզբնավորվել էր եկեղեցու հայրերի կողմից II դարից ի վեր՝ գնոստիկյան աղանդի, հեթանոսության և հուդայականության դեմ մղած գաղափարաբանական համառ ու անզիջում պայքարում։

Գրական այդ տեսակներից են ջատագովությունները և հակաճառությունները։ Առաջինները, ուղղված լինելով տարբեր աղանդների և հեթանոսության դեմ, պաշտպանում են քրիստոնեությունը՝ դրանց հարձակումներից։ Հետագայում, հատկապես IV դարում, երբ քրիստոնեությունը դառնում է պետական կրոն և հովանավորվում է իշխողների կողմից, քրիստոնեության ջատագովները պաշտպանողական դիրքերից անցնում են հարձակողականի՝ իրենց հակառակորդներին գաղափարապես պարտության մատնելու միտումով։

Նրեան է գալիս հերքման, հանդիմանության, հակաճառության գրական տեսակը։ Գրական այդ տեսակների երկերից մեզ հասած ամենանշանավոր հայերեն թարգմանությունը հույն փիլիսոփա և ճարտասան Արիստիդես Աթենացու «Ջատագովությունն» է, կատարված V դ. կեսերին։ Քրիստոնեական գրականության մեջ, III—V դդ. առանձնապես ծաղկում է մեկնաբանությունը, այսինքն՝ Աստվածաշնչի խոսքերի, երբեմն էլ դժվարիմաց տեղերի բացատրությունը։ Այս եղանակը, որ սկզբնավորել էին հույն փիլիսոփաները, տակավին հին աշխարհում կրոնական առասպելները բացատրելիս, հետագայում քրիստոնյաները որդեգրում են Աստվածաշնչի նկատմամբ և ստեղծում մեկնողական հարուստ գրականություն։ Հայ առաջին թարգմանիչները, մասնավորապես Սահակ Պարթև կաթողիկոսն ու Եղնիկ Կողբացին թարգմանել են Աստվածաշնչի շատ մեկնություններ։ Նույն՝ V դ. թարգմանվում են Հովհան Ոսկեբերանի, Կյուրեղ Աղեքսանդրացու, Եփրեմ Ասորու, Հին կտակարանի առաջին մեկնիչի՝ Փիլոն Եբրայեցու (մ. թ. ա. I—մ. թ. I դդ.) և այլոց աշխատությունները։ Այդ մեկնությունների հիման վրա ձևավորվում և որոշվում են եկեղեցու սկզբունքները, առաջ է գալիս քրիստոնեական աստվածաբանությունը, պարզվում և հաստատվում է դավանանքը, բայց այդ ուղղությամբ վեճերը չեն դադարում։ Այդ վեճերի հիման վրա զարգանում է տեսական-դավանաբանական հարուստ գրականություն՝ ժամանակի փիլիսոփայությանը լավ տիրապետող եկեղեցու նշանավոր հայրերի ջանքերով։ Այդ գրականությունը կոչվում է պատրիստիկա, կամ հայրաբանություն, որից դարձյալ մեծ թվով թարգմանություններ են կատարվել հայերեն[6]։

Եկեղեցական գրականության նշանավոր ստեղծագործություններից բացի, V դ. թարգմանվում են նաև փիլիսոփայական, ճարտասանական, քերականական և պատմագիտական երկեր։ Դրանցից են՝ Արիստոտելի, Պրոկլի, Թեովնի, Պորփյուրի փիլիսոփայական աշխատությունները, Դիոնիսիոս Թրակացու «Քերականությունը», Եվսեբիոս Կեսարացու «Ժամանակագրությունը», «Եկեղեցական պատմությունը» և շատ ուրիշների գործեր։

Ուշագրավը, սակայն, այն է, որ հայ գրականության սկզբնավորման շրջանում, կրոնաեկեղեցական, փիլիսոփայական, ճարտասանական, քերականական ու պատմագիտական աշխատությունների թարգմանություններին զուգահեռ

---

6 Նույն տեղում, էջ 95։

թարգմանվում են նաև պատմագեղարվեստական կամ զուտ գեղարվեստական, կիսակրոնական և աշխարհիկ բովանդակությամբ գրական երկեր, որոնք հայ գեղարվեստական ինքնուրույն գրականության ձևավորման գործում իրենց որոշակի դերն են խաղացել։

Դրական նման երկերից են ամենից առաջ վարքերն ու վկայաբանությունները, որոնք, լինելով եկեղեցու սրբացած հայրերի կենսագրությունները, քրիստոնեական հավատի համար նահատակվածների պատմություններ, օժտված են և՛ պատմական իրականության արտացոլման, և՛ գեղարվեստական, հատկապես բանահյուսական ստեղծագործության հատկանիշներով[7]։ Դրանք այս տեսակներն այնքան սիրված են եղել հայերի մեջ, որ միևնույն ստեղծագործությունն ունեցել է մեկից ավելի թարգմանություններ։

Վարքերի ու վկայաբանությունների հայերեն հնագույն թարգմանությունները վերաբերում են V դարին, կատարված Աբրահամ Խոստովանողի և ուրիշների ձեռքով։ Այս ավանդույթը շարունակվել է նաև հետագայում, և սրբախոսական այդ երկերից կազմվել են «Վարք սրբոց», «Վարք հարանց», «Ճառընտիրք», «Յայսմաւուրք» անուններով ժողովածուները[8]։

Բնույթով շատ ուշագրավ է V դարի հույն հեղինակ Նոնոսի «Մեկնութիւնք Գրիգորի Աստուածաբանի հինգ ճառից» երկի թարգմանությունը, որտեղ Գրիգորի կրոնական ճառերում օգտագործված հին հունական առասպելների և զանազան զրույցների բացատրությամբ փաստորեն ծանոթություններ ու գիտելիքներ են տրվում հայ հին մատենագիրներին ու ընթերցողներին՝ հունական առասպելաբանության մասին։

Աշխարհիկ տարրերի գերակշռությամբ է հատկանշվում Բարսեղ Կեսարացու «Վեցօրեայք» կոչված ճառերի թարգմանությունը՝ աշխարհի աստվածաշնչյան վեցօրյա արարչագործության մասին։ Այն բույսերի և կենդանիների վերաբերյալ տված բնագիտական իր բացատրություններով ու տեղեկություններով մի յուրահատուկ բնագիտական տեղեկատու է հանդիսացել հայ հին մատենագիրների համար։ Միևնույն նպատակն է հետապնդել նաև II—III դդ. Ալեքսանդրիայում հորինված «Բարոյախոս» («Ֆիզիոլոգ») խորագրով ժողովածուն, որտեղ տարբեր զրույցների ձևով բնագիտական, հաճախ ֆանտաստիկ տեղեկություններ են տրվում իրական և երևակայական կենդանիների տարբեր հատկությունների ու բնավորության վերաբերյալ։

Սակայն այդ զրույցներն իրենց վերջում կցված բարոյախրատական մեկնություններով դառնում են գեղարվեստական յուրահատուկ ստեղծագործություններ, ստանում առակների բնույթ և հետագայում հիմք ու աղբյուր ծառայում առակների ժանրի զարգացման համար։

Հայ հին թարգմանությունների մեջ իր զուտ աշխարհիկ բովանդակությամբ աչքի է ընկնում Կեղծ-Կալիսթենեսի «Պատմութիւն վարուց Աղեքսանդրի» գեղարվեստական երկը, հորինված Ալեքսանդր Մակեդոնացու, նրա արշավանքների շուրջը եղած գրքային հին տեղեկությունների, առասպելների ու զրույցների հիման վրա։ Այն շատ սիրված է եղել հնում, թարգմանվել է տարբեր լեզուներով, V դարում՝ նաև հայերեն։

---

7 Տե՛ս Մ. Աբեղյան, Հայ գեղարվեստական արձակի սկզբնավորումը, Երևան, 1971, էջ 53 և հտն.։

8 Տե՛ս Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 107։

Այսպես, մինչև V դ. սկզբները հունարեն և ասորերեն ստեղծված եկեղեցական, մասամբ և աշխարհիկ հարուստ գրականության թարգմանությունների շնորհիվ հայ առաջին թարգմանիչներն իրենց հայրենիքն են փոխադրում ժամանակի գրեթե բոլոր կարևոր գրական տեսակները՝ համապատասխան գրավոր սանդղագործություններով և հայ նորաստեղծ գրականության մեջ հիմք դնում թարգմանական հարուստ ավանդույթին։ Դրանով հայ առաջին հեղինակները ոչ միայն հաղորդակցվում են իրենց ժամանակի միջազգային գրական հարուստ մշակույթին, այլև ստեղծում անհրաժեշտ բոլոր նախադրյալներն ազգային ինքնուրույն մատենագրության ձևավորման և զարգացման համար։ Բացի այդ, հին գրական մի շարք կարևոր հուշարձանների հայերեն թարգմանությունները, ինչպես Արիստիդեսի «Ջատագովությունը», Եվսեբիոս Կեսարացու «Ժամանակագրությունը», Իրենեոսի «Ցույց առաքելական քարոզութեան»-ը, Հերմես Եռամեծի «Սահմանքը» և այլ երկերի, որոնց հունարեն բնագրերը հետագայում կորել են, հայերեն թարգմանությունների շնորհիվ փրկվել են կորուստից և ձեռք բերել միջազգային պատմամշակութային նշանակություն։

## 2. ՀԱՅ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ

Հայ գիրն ու գրականությունը նպատակամիտված էին առաջին հերթին տարածելու նոր կրոնի գաղափարախոսությունը և բավարարելու եկեղեցու կարիքները։ Եվ, քանի որ հայ առաջին հեղինակները եկեղեցականներ էին, բնականաբար, գրականությունն սկզբնական շրջանում պետք է տոգորված լիներ քրիստոնեական-կրոնական ոգով ու գաղափարախոսությամբ, օժտված այն նույն ոճով ու գրելաձևով, գրական տեսակներով, որ ընդունված էր ընդհանուր քրիստոնեական գրականության մեջ։ Հետևելով հանդերձ օտար գրական ավանդներին, հայ առաջին հեղինակների երկերն իրենց բովանդակությամբ խիստ ազգային էին, կապված իրենց միջավայրի և դարաշրջանի իրական պայմանների ու որոշակի պահանջների հետ, ուստի իշխող դասերն իրենց շահերին համընթաց արտահայտում էին նաև երկրի ու ժողովրդի ընդհանուր շահագրգռությունները[9]։ Վերջինս պայմանավորված էր նաև գրապատմական մի կարևոր հանգամանքով։ Մինչև հայ գրի ու գրականության սկզբնավորումը, վաղ միջնադարյան Հայաստանի գրազուրկ աշխարհիկ հասարակության հոգևոր սնունդն էր ազգային ավանդական բանահյուսությունը՝ իր հին առասպելներով, վեպերով, քնարական-ծիսական երգերով՝ օժտված հեթանոսական կենսուրախ աշխարհայեցությամբ։

Քրիստոնեությունն իր ճգնավորական ոգով, երկրային կյանքի ուրացությամբ և երկնային հանդերձյալ կյանքի քարոզով հակադրվում էր անգիր բանահյուսության հեթանոսական-աշխարհիկ ոգուն ու կենսուրախ տրամադրություններին։ Հետևաբար, երբ V դարի առաջին կեսերից սկզբնավորվում է հայ գրականությունը, այն սկզբից իսկ սահմանազատվում է անգիր բանահյուսությունից և զարգանում իր ուրույն ճանապարհով։ Սակայն այդ սահմանազատումը գրական ոչ բոլոր տեսակների մեջ է երկար տևում։ Հենց V դարի կեսերին, երբ սկիզբ է առնում հայ ինքնուրույն պատմագրությունը, հայ առաջին պատմագիրներից շատերը (Ագաթանգեղոս, Փավստոս Բուզանդ, Մովսես Խո-

9 Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 113—114։

բենացի) Հայրենի պատմությունը շարադրելիս, մեծ չափով օգտագործում են հին առասպելները, ավանդական վեպերը, վիպական երգերն ու զրույցները, որով հին վիպական բանահյուսությունը ներթափանցում է հայ նորաստեղծ գրականության ոլորտը, կազմելով պատմագրության կարևոր բաղադրիչը։ Հին վիպական բանահյուսության լայն օգտագործումը պատմագրության մեջ պայմանավորված էր ոչ միայն պատմական վավերական սկզբնաղբյուրների սակավությամբ, այլև այն հիմնական ոգով ու գաղափարախոսությամբ, որով տոգորված էր ավանդական բանահյուսությունը։

Հայ ժողովրդի ճակատագիրը, պատմական հանգամանքների բերումով, իր ծագման վաղնջական ժամանակներից եղել է սեփական գոյության և ինքնության պահպանության համար օտարների դեմ մղված մի չընդհատվող պայքար, որն իր արտացոլումն է գտել նրա ծագումնաբանական առասպելից սկսած («Հայկ և Բել») մինչև ուշ շրջանի հերոսավեպն ու վիպապատմական երգերը։

Օտարների դեմ մղած ազգային ինքնապաշտպանության պայքարի այս գաղափարախոսությունը, որի վրա խարսխվում էին հայ հին պատմականացած առասպելները, վեպերն ու վիպական երգերը, միանգամայն համահնչուն էր V դարի նորաստեղծ հայ գրականության հեղինակների՝ հայ ազգի, եկեղեցու, երկրի, լեզվի ինքնության ու անկախության համար Սասանյան Իրանի և Բյուզանդիայի դեմ ուղղված մաքառման գաղափարախոսությանը։ Ուստի և հայ առաջին պատմագիրները լայն չափերով օգտվում են հին վիպական ավանդությունից, իբրև նորօրյա պայքարի ասպարեզում բնավ չհնացող մի մշտական զինանոցից։ Վիպական ավանդությունն էլ մաքառման իր ոգին էր ներդնում հին գրականության մեջ և մեծապես նպաստում դրա գաղափարաբանական նպատակամիտմանը։

Հայ ինքնուրույն գրականությունն սկզբնավորել են առաջին թարգմանիչներ Մեսրոպ Մաշտոցը, Սահակ Պարթևը, Եզնիկ Կողբացին, Կորյունը. այն ծաղկել, բարգավաճել է ամբողջ V դարի ընթացքում։

**Մեսրոպ Մաշտոցը** *(357 կամ 361—440)* ոչ միայն հայ գրերի ստեղծողն էր, այլև հայ թարգմանական մեծահարուստ գրականության, ինչպես նաև հայ ինքնուրույն գրականության սկզբնավորողը։ Ինքնուրույն գրականության բնագավառում Մաշտոցի հեղինակած երկերից մեզ են հասել գրական երկու տեսակ՝ ճառեր և հոգևոր երգեր՝ շարականներ։ Մաշտոցի աշակերտ ու կրտսեր զինակից Կորյունը վկայում է, որ իր խոսքը ողջ երկրով տարածելու համար Մաշտոցն սկսեց գրել «հաճախագույն, դյուրապատում» ճառեր[10]։

Խոսքը վերաբերում է «Յաճախապատում ճառք»[11] վաղ միջնադարյան ճառերի ժողովածուին, որը երկար ժամանակ վերագրվում էր Գրիգոր Լուսավորչին։ Սակայն բանասիրությունը հավաստի տվյալներով պարզել է, որ դրանք Գր. Լուսավորչին չէին կարող պատկանել և որ դրանց հավանական հեղինակը Մեսրոպ Մաշտոցն է[12]։

---

10 Կորյուն, Վարք Մաշտոցի, էջ 79։

11 Սրբոյ հօրն մերոյ երանելւոյն Գրիգորի Լուսաւորչի «Յաճախապատում ճառք լուսատրք», առաջաբանով, համեմատություններով և ծանոթություններով Ա. Տեր-Միքայելյանի, Վաղարշապատ, 1894—96։

12 Տե՛ս «Հայկական աշխատասիրությունք հայագետ Պ. Ֆետտերի», թարգմ. Յ. Տաշյան, Վիեննա, 1895։ Տե՛ս նաև՝ Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 119—120։

Ենթադրվում է, թե «Յաճախապատումը» հորինվել է մոտավորապես 420-ական թվականներին և դրա մեջ գրավոր կերպով ամփոփվել են Մաշտոցի տարիներ շարունակ ժողովրդին ու վանականներին բերանացի քարոզած ճառերը։ Դրանք հիմնականում ունեն հոգևոր խրատների բովանդակություն, նպատակամղված են հավատացյալների մեջ քրիստոնեական առաքինի կյանքի պայմանների՝ սիրո, հեզության, գթության, բարեգործության, բարոյական անաղարտության, չարագործությունից ու անառակությունից զերծ մնալու գաղափարների արմատավորմանը։

Քրիստոնեական բարոյական սկզբունքներ քարոզելուց զատ, ճառերի հեղինակը երբեմն անդրադառնում է նաև հասարակական հարաբերություններին՝ տերերի և ծառաների, իշխողների և ենթակաների հակասություններին, խռովություններին, դրանք նա համարում չարիք, ճնշվածներին քարոզում հեզություն ու հնազանդություն, իսկ կեղեքող-հարստահարիչներին՝ գթություն և ողորմածություն՝ կեղեքվողների նկատմամբ։ Իսկ եթե անիրավ իշխանավորներն անուղղելի են, ապա հեղինակը նրանց սպառնում է աստծո բարկությամբ և հանդերձյալ կյանքի պատիժներով։

«Յաճախապատում» ճառերն օժտված են հռետորական արվեստին յուրահատուկ գեղարվեստական խոսքի հատկանիշներով՝ պատկերավոր փոխաբերություններով, ասույթներով, համեմատություններով, հակադրություններով և այլն։

Մեսրոպ Մաշտոցի անունով մեզ են հասել «Ապաշխարության կարգի» բազմաթիվ հոգևոր երգեր, որոնց մեջ իրենց գեղարվեստական արժանիքներով առանձնանում են «Ողորմեայի» շարականները։ Դրանք, լինելով հայ եկեղեցական քնարերգության ինքնուրույն անդրանիկ նմուշներ, պատմագեղարվեստական առումով առանձնակի արժեք են ստանում։

Ծով կենցաղոյս հանապազ զիս ալեկոծէ,
Մրրկեալ ալիք թշնամին ինձ յարուցանէ,
Նաւապետ բարի, լեր անձին իմոյ ապաւէն։

**Սահակ Պարթևից** (մեռ. 439 թ.) մեզ են հասել կանոնները, թղթեր ու հոգևոր երգեր։ Լինելով կաթողիկոս և հիմնականում զբաղվելով եկեղեցու վարչական գործերով ու բարեկարգությամբ, բնական է, որ նրա թողած գրական ժառանգությունը ևս ծառայած լիներ այդ նույն նպատակին։ Սահակ Պարթևի անունով հայտնի են 55 կանոններ[13], որոնց մեջ սահմանված են եկեղեցու պաշտոնյաների պարտականություններն ու իրավունքները, նրանց և ժողովրդի հարաբերությունը, նրանց եկամուտներն ու հասույթները։

Կանոններն ընդհանրապես, իբրև հին գրական տեսակ, հետամտում են գործնական նպատակներ և զերծ են գեղարվեստական հատկանիշներից։ Սահակ Պարթևի կանոնները, սակայն, ունեն կուլտուր-պատմական կարևոր արժեք։ Դրանք առաջին հայ ինքնուրույն կանոնախմբերից են, ուր երևան են գալիս V դարի առաջին կեսի հայ իրականության բնորոշ գծերը (դպրոցների հիմնադրում և ուսման կազմակերպում, հին, խոտելի սովորույթների դատա-

---

13 Տե՛ս «Կանոնագիրք Հայոց», Ա, աշխատասիրությամբ Վ. Հակոբյանի, Երևան, 1964, «Կանոնք սրբոյն Սահակայ Հայոց հայրապետի, գլուխք ԾԵ», էջ 363 և հտն.։

պարտում, մանկահասակներին ծնողների կամքով բռնամուսնության արգելում և այլն) ժամանակի համար խիստ առաջադիմական էին և կարևոր։

Սահակ Պարթևի անունով պահպանվել են մի շարք շարականներ, որոնց մեջ աչքի են ընկնում Ավետարանի բովանդակությունն ամփոփող երգերը, որոնց նպատակն է եղել Ավետարանի ուսուցումը երգերով։ Դրանք աչքի են ընկնում ծայր աստիճան պարզությամբ, զգացմունքների խորությամբ և վիպականությամբ, և իրավամբ համարվում են վիպական հոգևոր երգեր[14]։

V դարի հայ առաջին հեղինակների թվում պատմական իր բացառիկ տեղն ու նշանակությունն ունի Եզնիկ Կողբացին։ Լինելով Սահակի և Մաշտոցի անմիջական աշակերտն ու առաջին սերնդի թարգմանիչներից մեկը, նա հմուտ է եղել ոչ միայն հունարեն ու ասորերեն լեզուներին և Սահակ Պարթևի հետ միասին կատարել է բազմաթիվ բնագրերի թարգմանություններ, այլև եղել է նշանավոր մտածող ու քաջահմուտ ժամանակի գիտությանը։ Այդ է վկայում նրանից մեզ հասած միակ ինքնուրույն երկը՝ «Գիրք ընդդիմութեանց» խորագրով, որը գրականության մեջ ընդհանրացել է ու տարածվել «Եղծ աղանդոց» անունով[15]։ Եզնիկի այդ երկը ժանրային բնույթով հակաճառություն է կամ հանդիմանություն՝ ուղղված քրիստոնեական սկզբունքներին ու գաղափարախոսությանը հակադիր կամ «ոչ ուղիղ» ուսմունքների դեմ։ Այն բաղկացած է չորս մասից. առաջինը, որ կոչվում է «Եղծ աղանդոց հեթանոսացն», ուղղված է հեթանոսական կրոնների, տարրապաշտության, բազմաստվածության և մասնավորապես հայ ժողովրդական սնոտիապաշտական հավատալիքների դեմ։ Երկրորդը՝ «Եղծ քէշին պարսից» (պարսից կրոնի հերքումը) ուղղված է ժամանակի հայոց քրիստոնեական կրոնի ամենավտանգավոր ուսմունքներից մեկի՝ զրադաշտականության, մասնավորապես այդ կրոնի առասպելների, երկարմատ (դուալիստական) հավատալիքների, դրանց տրամաբանական հակասությունների դեմ։

Երրորդ մասում, որ կոչվում է «Եղծ կրօնից յունաց իմաստնոցն», Եզնիկը փորձում է հերքել հույն հեթանոս փիլիսոփաների, մասնավորապես պյութագորյանների, պլատոնականների, պերիպատետիկների, ստոիկյանների և էպիկուրյանների ուսմունքները, քննադատելով նրանց՝ քրիստոնեական սկզբունքներին և աստվածաշնչյան տվյալներին անհարիր գաղափարներն ու տեսակետները։

Վերջին՝ չորրորդ մասը կոչվում է «Եղծ աղանդոյն Մարկիոնի». այստեղ Եզնիկը համառոտակի ներկայացնելով մ. թ. II դարի նշանավոր գնոստիկ Մարկիոնի՝ քրիստոնեական եկեղեցու դեմ ուղղված աղանդավորական ուսմունքի սկզբունքները, անցնում է դրանց քննադատմանն ու հերքմանը։

Այս չորս խումբ ընդդիմական ուսմունքների դեմ ուղղված Եզնիկի հակաճառությունները ու քրիստոնեական սկզբունքների ջատագովությունները ապացույցն են պատմական այն իրողության, որ V դարի կեսերի հայոց եկեղեցու և քրիստոնեական գաղափարախոսության նկատմամբ լուրջ վտանգ են ներկա-

---

14 Մ. Աբեղյան, նշվ. աշխ. էջ 494։

15 «Եզնըկայ Կողբացւոյ Բագրևանդայ եպիսկոպոսի Եղծ աղանդոց», ի Վենետիկ, 1826։ Տե՛ս նաև՝ Եզնիկ Կողբացի, Եղծ աղանդոց (Աղանդների հերքումը), աշխարհաբար թարգմանությունը, ներածությունը և ծանոթագրությունները Ա. Ա. Աբրահամյանի, Երևան, 1970։ Eznik de Kolb, De Deo, Edition critique du texte arménien par L. Mariès, et C. Mercier, Patrologia orientalis, t. XXVIII fasc. 3, Paris, 1959:

յացրել թե՛ հին հույն փիլիսոփաների ու գնոստիկյան աղանդավորների ուսմունքները, թե՛ հեթանոսական հավատալիքները և թե՛ մանավանդ զրադաշտական կրոնը, որը գաղափարական վտանգից բացի, Սասանյան Իրանի ձեռքին մի լուրջ զենք էր Հայաստանի քաղաքական վերջնական հպատակեցման և ազգային համաձուլման համար։ Եվ պատահական չէ, որ Եզնիկի երկը գրվել է, ինչպես կարծում են, 441—449 թթ. միջև, այսինքն՝ Վարդանանց հերոսամարտի գաղափարական նախապատրաստման շրջանում, երբ գումարվում է նաև Արտաշատի հայտնի ժողովը (449), Հազկերտ Բ-ի թղթին ուղղած զրադաշտական կրոնի մերժման ու հերքման իր նշանավոր պատասխանի մշակմամբ։ Ժողովին մասնակցել է նաև Բագրևանդի Եզնիկ եպիսկոպոսը, որին, իրավամբ, նույնացնում են Եզնիկ Կողբացու հետ։ Եզնիկի երկն առաջին տեսական-բանավիճային ինքնուրույն աշխատությունն է հայ գրականության մեջ, որով սկզբից իսկ հիմք է դրվում տեսական-փիլիսոփայական երկերի ժանրին։ Պատմական այդ ընդհանուր արժեքից բացի, «Եղծ աղանդոցը» գրված էր մտքի փայլուն ու հեռևողական տրամաբանությամբ, բանավիճային-ճարտասանական կենդանի ոճով ու եղանակով, գեղարվեստական խոսքի մակարդակի հասնող պատկերավոր, պարզ ու գունեղ լեզվով, որով այն դարձել էր դասական ու օրինակելի թե՛ ժամանակակիցների և թե՛, մանավանդ, գալիք գրական սերունդների համար։ Եզնիկի երկը քրիստոնեական աստվածաբանության սկզբունքների իր փայլուն պաշտպանությամբ (մեկ բարի էություն՝ ընդդեմ տարրապաշտության, բազմաստվածության, դուալիստական աշխարհայացքի, հոգու և մարմնի քրիստոնեական ըմբռնում, մարդակենտրոն աշխարհայացք և մարդու անձնիշխանությունը և նրանից ծագող չարիքն ու մարդու եղերական վիճակը) հայ նորաստեղծ գրականության մեջ փաստորեն հաստատում է քրիստոնեական աստվածաբանության և միջնադարյան քրիստոնեական աշխարհայացքի ամբողջական տեսությունը, իսկ Եզնիկ Կողբացին դառնում մեղանում դրանց առաջին և հիմնարար տեսաբանը[16]։

Եզնիկի երկն, իր տեսական-փիլիսոփայական խոշոր արժեքից զատ, ունի նաև աղբյուրագիտական կարևոր արժեք։ Այն թանկարժեք վկայություններ է պարունակում հայ հին ժողովրդական հավատալիքների, զրադաշտական կրոնի և առասպելների, ինչպես նաև գնոստիցիզմի, Մարկիոնի աղանդի գաղափարաբանական հիմունքների վերաբերյալ։

## 3. ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Հայ ինքնուրույն գրականության մեջ V դարի կեսերին, Մաշտոցի և Սահակի անմիջական աշակերտների կողմից հիմք է դրվում մատենագրության մի նոր ճյուղի՝ պատմագրության, որը հենց նույն հազարամյակի ընթացքում արագ զարգանալով, հարատևում է հայ գրականության ողջ ընթացքում մինչև XVIII դար, կազմելով հայ հին գրականության զորեղ և առավել կարևոր բաղադրիչը։

Պատմագրությունը, գրական այլ տեսակների նման ևս հենվում էր ժամանակի միջազգային, հնից եկող հելլենիստական, մասնավորապես բյուզանդական ու ասորական գրականության ավանդների վրա, բայց դրա արագ զար-

---

16 Տե՛ս Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 132։

գացումն ու բարգավաճումը հայ նորաստեղծ գրականության մեջ պայմանավորված էր պատմական մի կարևոր անհրաժեշտությամբ, որ առաջ էր բերել գրերի գյուտը։ Դա ազգային ինքնաճանաչման և ինքնահաստատման այն զորեղ միտումն էր, որ գրերի գյուտից հետո անհրաժեշտաբար պարտավորեցնում էր հայ առաջին հեղինակներին ճանաչել ու ճանաչելի դարձնել սեփական ազգը ինքն իրեն, իր պատմական անցյալին, իր ստեղծած մշակույթին, եկեղեցուն, թագավորական ու նախարարական տների պատմությանը։ Եվ քանի որ մինչև գրերի գյուտը հայոց պատմության գլխավոր սկզբնաղբյուրն օտար գրավոր աղբյուրներում եղած թռուցիկ հիշատակություններն էին, մանավանդ ազգային հին բանավոր ավանդությունն էր իր պատմականացած առասպելներով, աշխարհիկ ու կրոնական զրույցներով, վեպերով ու վիպերգերով, ապա, բնականաբար, հայ նորաստեղծ պատմագրությունը մեծ չափով օգտվում է բանավոր ավանդությունից, ինչպես և ականատեսների վկայությունից, հանգամանք, որն իր անջնջելի կնիքն է դնում պատմագրական երկերի վրա։ Այստեղից էլ առաջ են գալիս հայ հին պատմագրության երկու կարևոր հատկանիշները. մեկը՝ նրա պատմագիտական կողմն է, հայ և հարևան ազգերի մասին իր պատմական մեծարժեք նյութով և արժեքավոր վկայություններով, մյուսը՝ նրա գրական-գեղարվեստական հատկությունը՝ արտահայտված գեղեցիկ ձևերով, գեղարվեստական խոսքի հարուստ տարրերով, պատկերավոր լեզվով, ճարտասանական ու բանաստեղծական հնարանքներով, քնարական զեղումներով։ Այս վերջին հանգամանքը պայմանավորված էր նաև պատմիչների հատուկ միտումով՝ պատմության միջոցով սերունդներին դաստիարակել հայրենասիրական, բարոյական, կրոնական որոշակի գաղափարներով[17], որին մեծապես նպաստում էր գեղարվեստական խոսքի ներգործուն ուժը։

Ուշագրավը, սակայն, այն է, որ հայ պատմագրությունը սկզբնավորվում է V դարում հայոց կյանքում տեղի ունեցած մեծագույն իրադարձության՝ հայ գրերի գյուտի պատմության և գյուտի հեղինակ Մեսրոպ Մաշտոցի կենսագրության շարադրմամբ։ Դա Մաշտոցի անմիջական աշակերտ և կրտսեր գործընկեր Կորյուն վարդապետի «Վարք Մաշտոցի» երկն է[18], գրված մոտավորապես 443 թ., Մաշտոցի մահից հետո, Մաշտոցի մյուս աշակերտ, կաթողիկոսի տեղապահ Հովսեփի հանձնարարությամբ։ Կորյունի երկը ձևով և հորինվածքով թեպետ հարում է վարքագրությանը, բովանդակությամբ, սակայն, պատմագրական անփոխարինելի աղբյուր է հայ գրի, դպրոցի, կրթության ու գրականության սկզբնավորման մասին, գրված ականատեսի կողմից և ունի միանգամայն ճշմարտապատում վավերագրի արժեք։ Ե՛վ Մաշտոցի կյանքի ու մշակութային գործունեության, և՛ գրերի գյուտի պատմության, և՛ հայ գրականության սկզբնավորման վերաբերյալ Կորյունի «Վարք Մաշտոցի»-ն միակ ժամանակակից և վավերագրական սկզբնաղբյուրն է, որից հետագայում օգտվել են մեր մյուս պատմիչ գրողները։

V դարի հայ պատմագրության հաջորդ և մեծածավալ երկը՝ Ագաթանգե-

---

17 Տե՛ս Մ. Ավդալբեգյան, նշվ. աշխ., էջ 198։

18 Երկի լրիվ վերնագիրն է. «Պատմութիւն վարուց և մահուան առն երանելւոյ սրբոյն Մաշթոցի վարդապետի մերոյ թարգմանչի, ի Կորիւն վարդապետէ յաշակերտէ նորին»։ Տե՛ս Կորյուն, Վարք Մաշտոցի՝ բնագիրը ձեռագրական այլ ընթերցվածներով, թարգմանությամբ, առաջաբանով և ծանոթություններով ի ձեռն պրոֆ. դ-ր. Մանուկ Աբեղյանի, Երևան, 1941։



1. Աղց. Արշակունիների դամբարանը 4-րդ դ. հատակագիծ և կտրվածք



2. Աղց. Դանիելը առյուծների գբում



3. Աղց. աղյուս նոչերոււի բարձրաքանդակով



4. Քասաղ. եռանավ բազիլիկա, 4-րդ դ. հատակագիծ



5. Քասաղ. եռանավ բազիլիկա, հարավային ճակատ, 4-րդ դ.



6. Քասաղ. եռանավ բազիլիկա, հարավային ճակատի արևելյան շքամուտքի քանդակը



7. Տեկորի տաճարի ընդհանուր տեսքը հարավ-արևմուտքից, 5-րդ դ.



8. Տեկորի տաճարի շքամուտքի արձանագրությունը, 5-րդ դ.



9. Երերույքի բազիլիկայի արևմտյան ճակատը, 5-րդ դ.



10. Թալին. քառակոթող Գրիգոր Լուսավորչի և Խոզագլուխ Տրդատի պատկերներով, 6-րդ դ.



11. Թալին. քառակոթող ավետարանիչի պատկերով, 6-րդ դ.



12. Դվին. թևավոր խաչ (պեղումներից).



13. Արդվի. կոթող դամբարանի կողքին




14. Զովունի. երկհարկ դամբարանի հատակագիծը, 5-րդ դ.



15. Ջրադաշտական կրակարան Էջմիածնի տաճարում



16. Դվին, բազիլիկայի հատակագիծը, 5-րդ դ.



17. Մաստարա. տաճարի ընդհանուր տեսքը արևելքից



18. Օձուն. մահարձան-հուշարձանի տեսքը արևելքից



19. Օձուն. Հուշարձանի բարձրաքանդակներից



20. Օձուն. Հուշարձանի բարձրաքանդակներից



21. ՕՁՈՒՆ. Որմնասյան բարձրաքանդակներից



22. ՕՁՈՒՆ. Տաճարի արևելյան ճակատը



23. Դվին. ջրմուղի պարզարան



24. Ավան. տաճարի արևմտյան ճակատը



25. Դվին. բազիլիկայի խճանկարի մի հատված



26. Իրինդ. եկեղեցու ընդհանուր տեսքը հարավից, 7-րդ դ.



27. Արթիկ. տաճարի ընդհանուր տեսքը հարավ-արևմուտքից, 7-րդ դ.



28. Ագարակ. եկեղեցու տեսքը արևելքից



29. Աշտարակ. Կարմրավոր եկեղեցու ընդհանուր տեսքը
հարավ-արևելքից



30. Պտղնի. տաճարի ընդհանուր տեսքը հարավից



31. Պտղնի· հարավային պատուհանի պսակի բարձրաքանդակները



32. Պտղնի հյուսիսային ճակատի քիվի վրա քանդակված սափորների շարքը



33. Աղուդի. կոթողի ընդհանուր տեսքը



34. Հռիփսիմե. տաճարի ընդհանուր տեսքը հարավ-արևելքից. 618 թ.



35. Զվարթնոց. տաճարի և քաղաքացիական շինությունների ավերակները (նկ. օդից)



36. Զվարթնոց. տաճարի վերակազմությունը (ըստ Թ. Թորամանյանի)



37. Զվարթնոց. քանդակազարդ բեկորներ



38. Զվարթնոց. վարպետի բարձրաքանդակ



40. Դվին. գինու մառանի մնացորդ, 5-րդ դ.



41. Կավե փոքրիկ անոթ ավետարանիչի պատկերով.
5—6-րդ դդ.



42. Դվին. պնակ մոզայիկ ապակի



43. Զովունի. վիմագիր արձանագրություն, 6-րդ դ.



47. Դվին. ապակյա գավաթ



48. Արծաթե դրամ, Սասանյան Շապուհ արքայի դիմանկարով, գտնված Դվինում



49. Արծաթե դրամ, Սասանյան Խոսրով 2-րդ Փարվեզ արքայի դիմանկարով (241—272) գտնված Դվինում



50. Արծաթե դրամ, բյուզանդական Հերակլ կայսեր (610—641) և գահաժառանգի պատկերներով գտնված Դվինում



51. Դվին. կավանոթ՝ տափաշիշ, 6-րդ դ.



52. Դվին. կավանոթներ, 6-րդ դ.



53. Դվին. կավանոթ, 6-րդ դ.



55. Դվին. կավե թաս՝ պատրաստված կաղապարով



56. Արաբական արծաթե դրամ, թողարկված Հայաստանում 703 թ.



57. Արաբական դրամ, 796 թ. գտնված Դվինում



58. Արաբական արծաթ դրամ, գտնված Դվինում



59. Արաբական արծաթ դրամ, թողարկված Հայաստանում 778 թ.



62. Մովսես Խորենացի, Սահակ Բագրատունի և ձեռագրի ստացող Կարապետ վարդապետ
(14-րդ. դ. ձեռագրից)



66. Դավիթ Անհաղթի պատկերը (13-րդ դ. ձեռագրից)



68. Դվին. Արշակունյաց գահասրահի հատակագիծը (վերակազմությունը ըստ Կ. Գ. Ղաֆադարյանի, ճարտարապետ Գ. Քոչոյանի)



69. Դվին. Կաթողիկոսական պալատի ավերակները



70. Արուճ. պալատի հատակագիծ,
ըստ Վ. Հարությունյանի



71. Եղվարդ, Եռանավ բազիլիկա, 5-րդ դ.



72. Դվին. կաթողիկոսական պալատը (վերակազմությունը Վ. Հարությունյանի)

73. Աշտարակ. եռանավ բազիլիկա, 5—6-րդ դ.



74. Տեկորի տաճար (հատակագիծ), 5-րդ դ.



75. Էջմիածին. տաճարի հատակագիծը, 5-րդ դ.



76. Մաստարա. տաճարի հատակագիծը, 6-րդ դ.




77. Ագարակ. Խաչաձև եկեղեցու հատակագիծ



78. Ավան. տաճարի հատակագիծ, Զ-րդ դ.



79. Հռիփսիմե տաճարի հատակագիծը, 618 թ.



80. Մրեն. տաճարի հատակագիծը, 639—640 թթ.



82. Բագարան. տաճարի հատակագիծը, 624—631 թթ.



83. Ալաման. եկեղեցու հատակագիծը և կտրվածքը, 637 թ.



84. Թալին. Ներսեհ Կամսարականի կառուցած եկեղեցու հատակագիծը և կտրվածքը, 7-րդ դ.



85. Ծոփք. եկեղեցու խոյակ, 5-րդ դ.

86. Արթիկ. տաճարի հատակագիծը, 7-րդ դ.



87. Արուճ. տաճարի հատակագիծը. 7-րդ դ.



88. Թալին. տաճարի հատակագիծը, 7-րդ դ.



89. Թալին. տաճարի ընդհանուր տեսքը հյուսիս-արևելքից, 7-րդ դ.




90. Իրինդ. բազմաբսիդ եկեղեցու հատակագիծը, 7-րդ դ.



91. Լմբատ. եկեղեցու տեսքը հարավ-արևելքից, 7-րդ դ.



92. Զվարթնոց. զամբյուղաձև խոյակ, 7-րդ դ.



93. Զվարթնոց. Հովհանի դիմաքանդակը, 7-րդ դ.



94. Զվարթնոց տաճարի հատակագիծը, 643—662 թթ.



95. Զվարթնոց տաճարի և պալատական շենքերի վերակազմությունը (ըստ Ստ. Մնացականյանի)



96. Երերույք. Եռանավ բազիլիկայի տեսքը հարավ-արևելքից, 5-րդ դ.



97. Երերույք. Հարավային ճակատի արևելյան շքամուտքը, 5-րդ դ.



98. Դվին. կաթողիկոսական պալատի խոյակ, 7-րդ դ.



99. Զվարթնոց. Արծվաքանդակ խոյակ. 7-րդ դ.



100. Սիսավան. Կոճազատ իշխանի դիմաքանդակը, 7-րդ դ.



101. Օձուն. Հուշարձանի բարձրաքանդակներից



102. Օձուն. Հուշարձանի բարձրաքանդակներից



103. Արուճ. ընդհանուր տեսքը հարավ-արևելքից



104. Լմբատ. որմնանկարի հատված, 7-րդ դ.



105. Դվին. խճանկար, վերակազմությունը Ա. Պատրիկի



106. Երուսաղեմ. Հայկական խճանկարներից մեկը, 6-րդ դ.



107. Էջմիածնի ավետարանի փղոսկրյա կազմը, 6-րդ դ.



108. Երուսաղեմ. Խճանկար զոհվածների գերեզմանի վրա, հայերեն արձանագրությամբ



109. Էջմիածնի ավետարանի վերջում փակցված մանրանկար, 6—7-րդ դդ.



110. Էջմիածնի ավետարանի վերջում փակցված մանրանկար, 6—7-րդ դդ.



111. Թալին. քառակող կոթող, 6-րդ դ.



112. Փարոս. (Արթիկի շրջան), քառակող կոթող, 7-րդ դ.



113. Դվին. Ռուշապյան խոյակ, 7-րդ դ.



**114. Դվին. այգեկութի տեսարան, 6-րդ դ.**

*ղոսի «Պատմութիւն Հայոց»-ն է[19], որ պատմական մի ամբողջական ժամանակաշրջան ընդգրկելու առումով թերևս առաջին հայոց պատմությունն է, որպիսի իմաստով հասկացել են նաև հնում (Ղ. Փարպեցի)։ Եթե հայ առաջին պատմագրական երկը՝ Կորյունի «Վարք Մաշտոցի»-ն նվիրված էր V դարի հայոց խոշորագույն մշակութային երևույթի՝ գրերի գյուտի և Մաշտոցի գործունեության պատմությանը, ապա Ագաթանգեղոսի երկը՝ III—IV դդ. Հայաստանի դարձյալ կրոնամշակութային կյանքի մեծագույն երևույթներից մեկի՝ հայոց քրիստոնեական դարձի, եկեղեցու հիմնադրման և երկու խոշորագույն կրոնաքաղաքական գործիչների՝ Գրիգոր Լուսավորչի ու Տրդատ Գ-ի կյանքի ու գործունեության պատմությանը։ Այսինքն՝ հայ հին պատմագրությունն սկզբնավորվում էր ամենից առաջ իբրև ազգային մշակույթի պատմություն։*

*Ագաթանգեղոսի պատմությունը բաղկացած է ընդարձակ առաջաբանից և երեք մասից։*

*Առաջին մասն, որ կոչվում է «Վարք և պատմութիւն սրբոյն Գրիգորի», նվիրված է Գրիգոր Լուսավորչի և Խոսրովի որդի Տրդատ թագավորի մանկության ու պատանեկության վիպական պատմությանը, Հռիփսիմյանց կույսերի նահատակությանը։ Երկրորդ մասը, որ կոչվում է «Վարդապետութիւն սրբոյն Գրիգորի» կրոնական մի ընդարձակ տրակտատ է՝ նվիրված քրիստոնեական եկեղեցու գաղափարների քարոզին։ Իսկ երրորդ մասում («Դարձ փրկութեան աշխարհիս Հայաստան ընդ ձեռն առն սրբոյ նահատակի») պատմվում է հայերի քրիստոնեություն ընդունելու, հեթանոսական մեհյանների կործանման, Գրիգորի տեսիլի և էջմիածնի տաճարի հիմնադրման, նահատակված կույսերի համար վկայարաններ շինելու, Գրիգորին Կեսարիայում կաթողիկոս ձեռնադրելու և այլնի մասին։*

*Ագաթանգեղոսի պատմության հեղինակի հարցը հայագիտության ցարդ չպարզված խնդիրներից է։ Նրա հեղինակն իրեն համարում է ծագումով Հռոմ քաղաքից, լատիներեն և հունարեն սովորած մի մարդ, որը ծառայության է մտել հայոց Տրդատ թագավորի պալատում և նրա հրամանով շարադրել է հիշյալ պատմությունը։ Այսինքն՝ նա իրեն համարում է իր նկարագրած անցքերի ժամանակակից և ականատես։*

*Բանասիրությունը, սակայն, պարզել է, որ Ագաթանգեղոսի պատմությունը գրված է ոչ թե IV դարում հունարեն, այլ V դարի կեսերին՝ հայերեն, որ նրա հեղինակը կամ խմբագրողը դեպքերին ժամանակակից և ականատես չէ, այլ V դարի անձ, մեծապես օգտվել է Կորյունի «Վարք Մաշտոցի» երկից, և «Ագաթանգեղոս» ոչ թե հատուկ անուն է, այլ մակդիր, ծագած հունարեն ագաթոս (լավ, բարի) և անգելոս (լրաբեր, ավետաբեր) բառերի բարդությունից, որ նշանակում է ավետաբեր, նման հունարեն նույն բառին հոմանիշ եւանգելոս-ին (ավետող)։ Հետևաբար՝ «Ագաթանգեղայ պատմութիւն» նշանակում է պատմություն ավետաբերի։ Իսկ այդ ագաթանգեղոս-ավետողը Հայաստանում եղել է Գրիգորը, և «Ագաթանգեղոսը» եղել է նրա սկզբնական մականունը, որ հետագայում փոխարինվել է «Լուսավորիչ» բառով։ Բացի այդ, Ագաթանգեղոսի*

---

*19 «Ագաթանգեղայ պատմութիւն Հայոց», աշխատասիրությամբ Գ. Տեր-Մկրտչյան և Ստ. Կանայանց, «Պատմագիրք Հայոց», հ. 1, գիրք 2, Տփղիս, 1909։ Նաև աշխարհաբար թարգմանությունը. Ագաթանգեղոս, Պատմություն Հայոց, աշխարհաբար թարգմանությունը ներածականով ու ծանոթություններով Արամ Տեր-Ղևոնդյանի, Երևան, 1983։*

պատմության առաջաբանում (Հատվ. 16)[20] նշված է, որ Հայաստանում Ավետարանը քարոզողի՝ ս. Գրիգորի կյանքի ու գործունեության մասին եղել է մի գրվածք, որից օգտվել է պատմության հեղինակը։ Իրավացիորեն եզրակացվել է, որ V դարում ս. Գրիգորի մասին եղել է մի վարք, նրա կյանքի մի համառոտ պատմություն, «պատմական արժեք ունեցող մի երկ, որից օգտվել է հեղինակն իր գործը խմբագրելիս»[21]։

Բացի Գրիգորի վարքից, Ագաթանգեղոսի պատմության համար սկզբնաղբյուր են ծառայել նաև Գրիգոր Լուսավորչի, Հռիփսիմյանց կույսերի վկայաբանությունները, Լուսավորչի վարդապետությունը, տեսիլը, ինչպես նաև «Պարսից պատերազմ» ժողովրդական վեպի ցիկլից Խոսրովի և Տրդատի մասին եղած վիպական զրույցները։

Ծագումով թեպետ տարբեր, բայց առնչությամբ ու բովանդակությամբ այդ բոլոր սկզբնաղբյուրներն այս կամ այլ կերպ վերաբերել են Գրիգոր Լուսավորչին ու Տրդատին, որը և հիմք է ծառայել պատմության V դարի հեղինակին կամ խմբագրողին՝ դրանց հիման վրա հյուսելու իր երկը, որի համար օժանդակ աղբյուրներ են ծառայել նաև այլ գրվածքներ։

Արդյունքը եղել է Ագաթանգեղոսի ամբողջական պատմությունը, որը, սակայն, V դարում հորինվելուց հետո, ինչպես երևում է հին մատենագրական աղբյուրներից ու Ագաթանգեղոսի այլալեզու թարգմանություններից, ենթարկվել է մասնակի խմբագրումների ու հապավումների։

Ագաթանգեղոսի պատմությունը հյուսված լինելով տարբեր բնույթի աղբյուրների հիման վրա, ունի տարբեր մակարդակի պատմամշակութային արժեք։ Պատմական բացառիկ արժեք ունի Ագաթանգեղոսի երկի երրորդ՝ վերջին մասը («Դարձ փրկութեան աշխարհիս Հայաստան»), որտեղ շարադրված է Հայաստանում քրիստոնեության տարածման և հայ եկեղեցու սկզբնավորման ու հաստատման նշանավոր իրադարձությունների պատմությունը։ Այստեղ թանկարժեք վկայություններ կան հին Հայաստանի տեղագրության, նախարարական կարգի, հայ դիցաբանության ու հեթանոսական կրոնի, պաշտամունքային վայրերի, ինչպես նաև երկրի ներքին սոցիալական կյանքի վերաբերյալ։ Թեպետ գրքի մյուս մասերը, մասնավորապես Գրիգոր Լուսավորչի վարքն ու Հռիփսիմյանց կույսերի վկայաբանությունը հորինված են ընդհանուր վկայաբանական կաղապարներով, այդուհանդերձ դրանք Գրիգոր Լուսավորչի կենսագրության, Հայաստանում քրիստոնեական կրոնի տարածման սկզբնական շրջանի հանգամանքների ուսումնասիրման առումով ունեն պատմական կարևոր նշանակություն։

Ագաթանգեղոսի երկը Հայաստանի պատմության մի կարևոր ժամանակաշրջանի համար ունեցած իր աղբյուրագիտական անփոխարինելի արժեքից բացի, ունի նաև գրական-գեղարվեստական նշանակալից արժեք։ Ձևավորված լինելով հայ գրականության սկզբնավորման շրջանում և ներառնելով ժամանակի վիպական բանահյուսությունից ամբողջական հատվածներ, վարքաբանական-վկայաբանական գրականության ձևերն ու արտահայտչամիջոցները, Ագաթանգեղոսի պատմության հեղինակը կամ խմբագրողն իր երկի նյութը ենթարկել է պատմագեղագիտական որոշակի հորինվածքով հյուսված պատմության[22]։ Այն

20 «Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց», Տփղիս, 1909, էջ 13։

21 Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 160։

22 Մ. Ավդալբեգյան, նշվ. աշխ., էջ 201։

*իր աշխույժ տրամախոսություններով, ճոխ ու կենդանի ոճով, միմյանց կապակցված և իրար հաջորդող հրաշապատումներով ու զրույցներով, անգամ երկար ու ձիգ աղոթքներով ու վարդապետությամբ շատ սիրված ու կարդացված է եղել և լիովին ծառայել իր բուն նպատակին՝ քրիստոնեության ջատագովությանը՝ ընդդեմ հեթանոսության[23]։ Այդ նույն նպատակով հեղինակը կերտել է իրենց գաղափարին նվիրված ուժեղ կերպարներ, հանձին Գրիգոր Լուսավորչի, Տրդատի, Հռիփսիմեի, Գայանեի, օժտել նրանց անգամ առասպելական հատկանիշներով։ Այս իմաստով էլ Ագաթանգեղոսի երկը նաև գրական նշանակալից հուշարձան է և իր կարևոր տեղն ունի հայ գեղարվեստական արձակի սկզբնավորման պատմության մեջ։*

Փավստոս Բուզանդի *«Պատմութիւն Հայոց»[24] երկը բացառիկ տեղ և արժեք ունի հայ պատմագրության մեջ։ Այն Ղազար Փարպեցու վկայությամբ, Ագաթանգեղոսի պատմությունից հետո երկրորդ հայոց պատմությունն էր[25], գրված, հավանաբար, V դարի կեսերին։*

*Թե ով է եղել Փավստոս Բուզանդը, հայտնի չէ։ Կարծիքներ են հայտնվել, թե նա եղել է հույն կամ ասորի, և քանի որ նրա գրած պատմությունը վերաբերում է IV դարի դեպքերին, ուստի ենթադրել են, թե նա IV դարի հեղինակ է, գրել է հունարեն կամ ասորերեն, իսկ հետագայում՝ V դարում, նրա պատմությունը թարգմանել են հայերեն։ Այդ կարծիքներն այժմ հնացած են և արժեք չունեն։ Արդի հայագիտության մեջ ընդունված տեսակետ է, որ Փավստոս Բուզանդը, անկախ իր անվան ձևից, եղել է հայ, հայրենասեր, իր պատմությունը գրել է գրերի գյուտից հետո՝ V դարում։ Այդ են վկայում նրա պատմության լեզուն ու ոճը, որոնք իրենց պարզությամբ, բնականությամբ պատկանում են V դարի մաշտոցյան շրջանի դասական հայերենին։ Այդ լեզվի քերականական անկանոնությունները, ռամկաբանությունները, կրկնությունները, բառային կուտակումները վկայում են այն մասին, որ հեղինակը ժողովրդի հասարակ խավին պատկանող մարդ է և նրա լեզուն V դարի խոսակցական հայերենն է[26]։*

*Բուզանդի պատմությունն ընդգրկում է IV դարի 65 տարվա մի ժամանակաշրջան՝ սկսած Տրդատի որդի և հաջորդ Խոսրով Կոտակից, մինչև Հայաստանի բաժանումը Սասանյան Իրանի և Հռոմի միջև, այսինքն՝ 319—385 թվականները[27]։ Ժամանակագրական առումով Բուզանդի երկը շարունակվում է այնտեղից, ուր վերջանում է Ագաթանգեղոսի պատմությունը։ Բուզանդի երկը*

---

23 *Տե՛ս* Մ. Աբեղյան, *նշվ. աշխ., էջ 163։*

24 *«Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց ի չորս դպրութիւնս», Վենետիկ, 1832։*

25 *«Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան», աշխատասիրությամբ Գ. Տեր-Մկրտչյան և Ստ. Մալխասյանց, Տփղիս, 1904, էջ 1, 3, 4։*

26 *Մանրամասն տե՛ս* Ստ. Մալխասյանց, *Ուսումնասիրություն Փավստոս Բուզանդի պատմության, «Հանդես ամսօրյա», Վիեննա, 1896, նաև՝* Փավստոս Բուզանդ, *Պատմություն հայոց, թարգմանությունը, ներածությունը և ծանոթագրություններն ակադ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1968, էջ 5—61։*

27 *Բուզանդի պատմությունը բաժանվում է վեց դպրությունների կամ գլուխների, որոնցից, սակայն, մեզ են հասել չորսը, առաջին երկու գլուխները չկան. պատմությունն սկսվում է 3-րդ դպրությունից և ավարտվում 6-րդով։ Բանասերներից ոմանք (Ստ. Մալխասյանց և ուրիշներ) գտնում են, որ առաջին երկու դպրություններն սկզբից իսկ գոյություն չեն ունեցել, և Բուզանդի երկը մեզ է հասել ամբողջությամբ։ Ուրիշներն էլ, հակառակը, պնդում են, որ այն սկզբնապես բաղկացած է եղել 6 դպրությունից, որոնցից առաջին երկուսը մեզ չեն հասել։*

փաստորեն առաջին փորձն էր հայ պատմագրության մեջ՝ գրելու իրադարձություններով լի մի ժամանակաշրջանի ամբողջական պատմությունը, իր ամենաբազմազան կողմերով։ Գրավոր աղբյուրների բացակայության պայմաններում, բնականաբար, Բուզանդը պետք է դիմեր բանավոր ավանդությանը։

V դարում ապրող մարդկանց հիշողության մեջ ավանդաբար շարունակել են պահպանվել IV դարի պատմական անցուդարձերի վերաբերյալ շատ հուշապատումներ, որոնցից, անշուշտ, օգտվել է Փավստոս Բուզանդը։ Բայց նա ամենից շատ օգտվել է IV դարի պատմական անձանց և նրանց արարքների շուրջ հյուսված ժողովրդական աշխարհիկ ու կրոնական զրույցներից, լեգենդներից, վեպերից, անգամ երգերից և դրանց հիման վրա գրել իր պատմությունը։

Բուզանդի երկն իր բնույթով բաժանվում է երկու խմբի՝ կրոնաեկեղեցական և աշխարհիկ պատմությունների։ Երբ նկատի ենք առնում, որ Բուզանդի ժամանակ՝ V դարում, հայոց մտավոր-քաղաքական կյանքի հիմնական միտումներն էին ազգային սեփական եկեղեցու ուժեղացումն ու անկախացումը հունաասորական եկեղեցիների ազդեցությունից, իսկ մյուս կողմից՝ ազգային-քաղաքական աշխարհիկ ինքնագիտակցության զարգացումը երկրի անկախության համար մղվող պայքարում, ապա տեսնում ենք, որ Բուզանդի գիրքը, լինելով հայոց առաջին ամբողջական պատմությունը, սկզբից իսկ իր մեջ միավորում և զարգացնում է դարաշրջանի այդ զույգ միտումները՝ եկեղեցականն ու ազգային-քաղաքականը, որոնք այդ գրքում կամ զուգահեռ են ընթանում, կամ միահյուսվում են իրար[28]։

Եկեղեցական պատմություններն սկսվում են Գրիգոր Լուսավորչի և նրա որդի Արիստակեսի մահով, ապա պատմվում է Վրթանեսի և հաջորդ կաթողիկոսների, հայ, հույն և ասորի տարբեր կրոնավորների մասին, որոնց մեջ կենտրոնական տեղ են գրավում Ներսես Մեծի կյանքն ու եկեղեցաշեն ծավալուն գործունեությունը։ Պատմության այս մասերը թեպետ հաճախ հրաշապատում ձևով են շարադրված, բայց անգնահատելի արժեք են ներկայացնում հայ եկեղեցու պատմության համար։ Այնտեղ արտացոլված են վաղ ֆեոդալական Հայաստանի եկեղեցական և իշխող աշխարհիկ դասերի հակամարտությունը, ճրգնավորական կենցաղը, անարժան հոգևորականների նկատմամբ ծաղրն ու պարսավանքը, Ներսես Մեծ կաթողիկոսի ազգային ինքնուրույն եկեղեցի ունենալու ձգտումը և ընդդիմությունը քրիստոնեական վարք ու բարքից շեղվող իշխանավորներին։

Փավստոս Բուզանդի պատմության մեծագույն մասն են կազմում, սակայն, աշխարհիկ պատմությունները, որոնք հիմնականում պտտվում են հայոց Արշակունի թագավորների և Մամիկոնյան սպարապետների անունների և արարքների շուրջը։ Այդ պատմությունները կազմում են մի ամբողջություն, մի մեծ ավանդավեպ, որն անկախ է կրոնաեկեղեցական զրույցներից և կոչվում է «Պարսից պատերազմ»[29]։ Վերջինիս հիմնական բովանդակությունն է կազմում հայ Արշակունի թագավորների և Մամիկոնյան սպարապետների մղած հաղթական կռիվները Սասանյան Իրանի դեմ։ Բուզանդի պատմության մեջ առկա են նաև բազմաթիվ պատմակենցաղային զրույցներ, որոնք խիստ բնորոշ են ֆեո-

28 Տե՛ս Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 170։
29 Տե՛ս Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 171 և հտն.։

դալական կենցաղին, բարքերին ու հոգեբանությանը։ Դրանցից են ազնվականների և թագավորի հարաբերությունները, երբեմն հակամարտությունները ու պայքարը, աշխարհական ու եկեղեցական իշխանությունների հակասությունները, զանազան բռնություններ և դավեր ներկայացնող զրույցներն ու պատմությունները, որոնք ունեն պատմաճանաչողական մեծ արժեք՝ վաղ ֆեոդալական Հայաստանի ներքին կյանքի ու կենցաղի մասին կենդանի պատկերացում կազմելու համար։

Թեպետ ժողովրդական բանավոր ավանդության հիման վրա գրված լինելու և պատմական կոնկրետ ժամանակագրության բացակայության հանգամանքները նվազեցնում են Բուզանդի երկի պատմական ստույգ վավերականությունը, բայց կուլտուր-պատմական և գրական-գեղարվեստական նշանակությամբ այն ունի բացառիկ արժեք։ Նախ՝ Բուզանդի պատմությամբ պահպանվել և մեզ է հասել վաղ միջնադարյան ժողովրդական մի ամբողջական հերոսավեպ, որի հարուստ միջադեպերը ժամանակագրորեն մոտ լինելով իրենց հիմք ծառայած պատմական իրողություններին և հորինված լինելով դրանց անմիջական ազդեցությամբ, արտացոլել ու պահպանել են IV դարի Հայաստանի դրամատիկական իրադարձություններով լի ներքին կյանքի և օտար նվաճողական նկրտումների ու ոտնձգությունների դեմ մաքառումների այնպիսի պատկերներ, պատմական փաստեր ու իրողություններ, կրքեր ու շահագրգռություններ, որոնք պատմական այլ աղբյուրներում նման ձևով գրեթե չեն հանդիպում։

Ժողովրդական վեպից և առհասարակ բանավոր ավանդությունից ազատ ու անկաշկանդ օգտվելու հանգամանքը հնարավորություն է ընձեռել Բուզանդի՝ մի կողմից իր ներկայացրած կրոնական ու քաղաքական գործիչներին (Ներսես, Տիրան, Արշակ, Փառանձեմ, Պապ, Վասակ, Մուշեղ, Մանվել, Մեհրուժան, Շապուհ) բարձրացնել գեղարվեստական, կենդանի կերպարների աստիճանի, նրանց արարքները պատճառաբանել մարդկային կոնկրետ կրքերով ու շահագրգռություններով, մյուս կողմից՝ այդ կերպարներին, նրանց կատարած արարքներին հաղորդել իր դասի և դարաշրջանի հասարակական մտայնության համապատասխան գաղափարայնություն։ Իդեալականացված հերոսների փայլուն օրինակներ են Ներսես Մեծը և Մուշեղ Մամիկոնյանը։ Թեպետ այս երկու կերպարների իդեալական գծերը սերում են ժողովրդական վեպից, բայց Բուզանդի գրչի տակ դրանք ավելի են մշակվում, կատարելագործվում և գաղափարականացվում։ Բուզանդը, հանձին Ներսես Մեծի, ստեղծել է եկեղեցական խոշորագույն գործչի գեղարվեստական իդեալականացված կերպար, սկսած նրա անթերի արտաքինից, վերջացրած կրոնաբարոյական անզիջում սկզբունքայնությամբ և իր դավանանքին անձնազոհ նվիրումով։

Մուշեղ Մամիկոնյանն իր քաջությամբ, ազնվությամբ, ասպետությամբ, Արշակունի թագավորներին իր տիրասեր նվիրվածությամբ դարձել է Բուզանդի հայրենասիրության իդեալի կրողը։

Թեպետ այս զույգ իդեալականացված հերոսները զոհվում են Արշակունի թագավորների ձեռքով, Ներսեսը՝ Պապի, իսկ Մուշեղը՝ Վարազդատի, թեպետ Բուզանդի պատմության շատ էջերում խստորեն դատապարտված են Արշակունի թագավորների շատ թերություններ, այդուհանդերձ Բուզանդի ապրած ժամանակաշրջանում՝ V դարում, երբ վերացել էր Արշակունիների թագավորական հարստությունը, երբ Մեծ Հայքի զգալի մասը ենթակա էր Սասանյան Իրանին,

Արշակունի բնիկ տերերի նկատմամբ եղած սերն ու նվիրվածությունը Բուզանդի նույն այդ գրքում դառնում է անընդհատ կրկնվող ու փայփայվող գաղափար և հնչում իբրև սերունդներին ուղղված ինքնուրույն պետականության ու հայրենիքի անկախության վերականգնման ու պահպանման մի նորիմաստ պատգամ։ Հետևաբար, Բուզանդի երկը եթե ոչ իր ժամանակագրությամբ և նկարագրվող անցքերի ու անձանց ճշգրիտ ու վավերական պատմականությամբ, ապա գեթ վաղ ֆեոդալական Հայաստանի պատմական կյանքի տարբեր կողմերի հարուստ նկարագրություններով, պատմական անձնավորությունների գեղարվեստական կերպավորմամբ ու գաղափարականացմամբ, իր ընդհանուր պատմափիլիսոփայական-գեղագիտական սկզբունքներով բացառիկ երևույթ է հայ հին պատմագրության ու գեղարվեստական մտքի զարգացման պատմության մեջ։

**Մովսես Խորենացին** հայ դասական պատմագրության հիմնադիրը և հին գրականության առաջին մեծահռչակ ներկայացուցիչն է։

Նրա գրական-ճարտասանական հեղինակությունն այնքան մեծ է եղել սերունդների աչքում, որ իրավամբ հորջորջվել է «Քերթողահայր»։ Ծնվել է մոտավորապես 410—415 թթ. միջև, եղել է Սահակի և Մեսրոպ Մաշտոցի կրտսեր աշակերտներից։ Մոտավորապես 435 թ. Սահակն ու Մաշտոցը մի խումբ աշակերտների, այդ թվում Մովսես Խորենացուն ուղարկում են ժամանակի գիտության և քրիստոնեական եկեղեցու խոշոր կենտրոններից մեկը՝ Ալեքսանդրիա, ուսանելու։ Նրանք նախ գնում են Եդեսիա, ապա Պաղեստին, որից հետո անցնում են Եգիպտոս՝ Ալեքսանդրիա։ Այստեղ Խորենացին հմտանում է հունարենին, խորանում ժամանակի քերթողական, ճարտասանական և քերականական արվեստների ուսումնասիրության մեջ, սովորում փիլիսոփայություն, ծանոթանում հունական հարուստ գրականությանն ու առասպելաբանությանը, կատարելագործվում եկեղեցական կրթության ու գրականության մեջ, դառնում ժամանակի գիտություններին ու արվեստներին տիրապետած հմուտ և «ինքնացեալ» (ինքնուրույն) գիտնական։

Ալեքսանդրիայից վերադառնալիս Խորենացին ընկերների հետ անցնում է Իտալիա, լինում Հռոմում, անցնում Հունաստան՝ Աթենք, որից հետո Բյուզանդիայի վրայով վերադառնում են Հայաստան։ Նրանք գալիս են հայրենիք 440 թ. հետո, երբ արդեն վախճանված էին նրանց ուսուցիչներ Սահակն ու Մաշտոցը։ Լինելով հունական գիտության և քաղաքակրթության կողմնակիցներ՝ Խորենացին և իր ընկերները հայրենիքում, որոշ ժամանակ հավանաբար ենթարկվել են պարսկական կողմնորոշում ունեցող տգետ հոգևորականների արհամարհանքին ու հալածանքին։ V դարի վերջին տասնամյակներում գրած մի դավանաբանական թղթից երևում է, որ Խորենացին այդ ժամանակ եղել է եպիսկոպոս և արդեն հռչակված՝ «Քերթողահայր» մականունով[30]։

Խորենացին հունարենից կատարել է բազմաթիվ թարգմանություններ, որոնց մասին, սակայն, որոշակի վկայություններ չեն պահպանվել։ Միակ կողմնակի վկայությունը թերևս Ստեփանոս Տարոնեցու այն խոսքերն են, թե «Գյուտ կաթողիկոսի ժամանակ էր Մեծ փիլիսոփոսն Հայոց Մովսէս, որ զճարտասանական արուեստի գործ առնու ի Հայս»[31]։ Իրավամբ հավաստվել է, թե «Գիրք պի-

30 Տե՛ս «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 22։

31 «Ստեփանոսի Տարոնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական», ՍՊԲ, 1885, էջ 79։

տոյից» ճարտասանական արվեստի ձեռնարկի հայերեն թարգմանությունը պատկանում է Մովսես Խորենացուն։

Մովսես Խորենացու և առհասարակ հայ պատմագրության գլուխգործոցը նրա «Պատմութիւն Հայոց»-ն է[32], գրված մոտավորապես 470—80-ական թվականներին, իշխան Սահակ Բագրատունու պատվերով։ Այն բաղկացած է երեք գրքից. առաջինը՝ «Ծննդաբանութիւն Հայոց Մեծաց», հիմնականում նվիրված է հայոց առասպելական նախնիների՝ Հայկի, Արամի, Արա Գեղեցիկի, Տիգրանի, Վահագնի վիպական պատմություններին, որոնք դիտված են իբրև հնագույն ժամանակների Հայոց պատմություն։ Երկրորդ գիրքը՝ «Բան միջակ պատմութեան մերոց նախնեաց», սկսվում է Ալեքսանդր Մակեդոնացուց, անցնում պարթևների թագավորությանը, ապա Հայաստանում Արշակունիների հարստության հաստատմանը և հասնում մինչև Գրիգոր Լուսավորչի ու Տրդատի մահը։ Երրորդ գիրքը՝ «Աւարտաբանութիւն մերոց հայերենեաց», ընդգրկում է IV—V դդ. հայոց պատմությունը մինչև Սահակի ու Մաշտոցի մահը և եզրափակվում Խորենացու հանրահայտ ողբով, նվիրված իր ժամանակի Հայաստանի քաղաքական, սոցիալ-տնտեսական և բարոյական ծանր կացությանը։

Խորենացու երկը հայոց առաջին համակարգված պատմությունն է, որ սկսվում է հայ ժողովրդի ծագման ժամանակներից և հասնում մինչև V դարի կեսերը, այսինքն՝ Խորենացու ապրած տարիները։ Այդ պատմությունը գրված է հայ և օտար բազմաթիվ գրավոր ու բանավոր աղբյուրների քննական օգտագործման հիման վրա։ Հայոց նախնական ժամանակների պատմությունը հյուսելիս, նա ելել է ժամանակի քրիստոնեական գրականության ամենահեղինակավոր սկզբնաղբյուրից՝ Աստվածաշնչից, սկսել է Ադամից, հասել մինչև Նոյ, տվել Նոյի երեք որդիների՝ Սեմի, Քամի և Հաբեթի ազգաբանությունը, և հայերի ծագումը կապել Հաբեթի տոհմի հետ, ազգաբանական հետևյալ հերթագայությամբ. Հաբեթ, Գամեր, Թիրաս, Թորգոմ, Հայկ (հայերի նախնի), Արամանյակ, Արամայիս, Ամասիա, Գեղամ, Հարմա, Արամ, Արա Գեղեցիկ։

V դարում, մինչև Խորենացին, հայ մատենագիրների մեջ ընդունված է եղել հայ ազգի ծագումը կապել աստվածաշնչյան անուններին, Խորենացին խորացնում է այդ տեսակետը և ժամանակի հայացքով ու ըմբռնումով վերջնականապես հիմնավորում այն։

Հայ ազգի ծագման և նշանավոր նախնիների ու թագավորների (Տիգրան, Երվանդ, Արտաշես, Արտավազդ) պատմությունը գրելիս Խորենացու հիմնական աղբյուրներն են եղել ասորի Մար Աբաս Կատինայի պատմությունը և Խորենացու ժամանակ հարատևող ավանդական երգերն ու զրույցները։

Խորենացին, սակայն, նախորդ պատմիչների նման նույնությամբ չի օգտվել ժողովրդական բանավոր աղբյուրներից։ Ոչ միայն ժողովրդական, այլև հայ, հույն և ասորի գրավոր աղբյուրներից օգտվելու դեպքում էլ նա նույնությամբ չի օգտագործում դրանք, այլ քննադատական որոշակի վերաբերմունքով ու վերագնահատմամբ։ Ժողովրդական բանահյուսությունից, մասնավորապես առասպելներից օգտվելու ժամանակ Խորենացին դրանց նկատմամբ ցուցաբե-

[32] «Մովսեսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», աշխատասիրությամբ Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս, 1913։ Նաև՝ աշխարհաբար թարգմանությունը, Մովսես Խորենացի, Պատմություն հայոց, թարգմանությունը, ներածությունը և ծանոթագրությունները ակադ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1940 և 1968։

րում է անտիկ ժամանակներից եկող Եվհեմերյան մեկնության եղանակը, աստվածներին և հերոսներին համարելով երբեմնի ապրած և գործած իրական անձինք, հետագայում միայն աստվածացած ու հերոսացած։ Այդ նույն հայացքով էլ նա առասպելները համարում է իրականության, ճշմարտության այլաբանված պատմություններ, որոնք «զճշմարտութիւն իրացն ինքեանս այլաբանաբար ունեն թագուցեալ»։ Ուստի նա այդ առասպելները մեկնաբանում է, իր հայացքով ճըշգըրտում, դեն նետում հրաշապատում ու անիրական-առասպելաբանականը և ճարտասանական ոճով ու ճաշակով վերամշակում։ Այդպես է վարվում նաև գրավոր սկզբնաղբյուրների հաղորդած այն տվյալների հետ, որոնք նախ չեն համապատասխանում աստվածաշնչյան դրույթներին և ապա անտրամաբանական են։ Անկախ այն հանգամանքից, թե որքանով էր նման դեպքերում Խորենացին իրավացի, էականը, սակայն, այն էր, որ նա իր ժամանակի գիտական մտայնության ու ճաշակի համապատասխան քննական ոգի ու մոտեցում է ցուցաբերում անցյալի առասպելական ու պատմական փաստերի, դրանց մասին եղած հաղորդումների նկատմամբ և նույն ոգով շարադրում իր պատմությունը։ Սա նշանակալից նորություն էր հայ պատմագրության մեջ, որ բերում էր Մ. Խորենացին, որը և հետագայում դարձավ կայուն ավանդույթ։ Խորենացու մուծած հաջորդ խոշոր նորությունը հայոց պատմության ժամանակագրության մշակումն էր, հայ թագավորների ու տիրակալների ժամանակագրական հաջորդության կարգի ստեղծումը, որ նա դրել է իր պատմության սկզբից մինչև վերջ՝ պարսից կամ հռոմեական թագավորների իշխանության տարիներին համապատասխան։ Մեծ և մանրախույզ քննություններ են պահանջվել Խորենացուց հայ թագավորների ժամանակագրությունը վերականգնելու համար։ Եվ եթե այսօր դրա մեջ սխալներ են նկատվում, ապա պատճառը Խորենացու օգտագործած աղբյուրներն են ու նրա ժամանակի ընձեռած սահմանափակ հնարավորությունները։ Կարևորն այն է, որ պատմության առաջին կանխապայմանը նա համարել է ժամանակագրությունը։ «Ոչ է պատմութիւն ճշմարիտ առանց ժամանակագրութեան»[33],— Խորենացու այս խոսքերը դառնում են գալիք պատմագիրների համար յուրատեսակ պահանջ ու պատգամ, որին հետագայում հետևում են նրանք։

Հաջորդ և մեծագույն նորությունն այն է, որ Խորենացին, ինչպես ինքն է նկատում, անհնարինը դարձրել է հնարավոր, այսինքն՝ հայոց պատմության բացակայության պայմաններում ստեղծել է հայոց առաջին ամբողջական պատմությունը, սկզբից մինչև իր ժամանակները։ Նրա պատմության տարբեր մասերն ունեն տարբեր պատմամշակութային արժեք։ Պատմության առաջին գիրքն ու երկրորդ գրքի մի մասը, հորինված լինելով ժողովրդական բանավոր ավանդությունից սերող սկզբնաղբյուրների հիման վրա, ներառել են հայոց նախասկզբնական պատմության մեծարժեք հիշողություններ՝ Հայկին, Արամին, Արա Գեղեցկին, Վահագնին, Տորք Անգեղին նվիրված հայոց հնագույն առասպելները, Տիգրանին, Երվանդին, Արտաշեսին, Արտավազդին, վիշապներին ու վիշապազուններին վերաբերող հայոց անդրանիկ առասպելաբանական վեպը՝ «Վիպասանքը», որոնց միակ ու ամբողջական աղբյուրը մեզ համար այսօր մնում է Խորենացու պատմությունը։ Առանց Խորենացու պատմության այդ հատվածների,

---

33 «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», աշխատասիրությամբ Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս, 1913, Բ գիրք, 2 բ։

*հայ ժողովուրդը զուրկ կմնար իր հնագույն մշակույթի այդ մեծարժեք ժառանգությունից։*

*Եթե հայոց պատմության այնպիսի կարևոր շրջաններ, ինչպիսիք են քրիստոնեության տարածումը Հայաստանում, գրերի գյուտը, IV դարի պատմությունը մինչև Հայաստանի երկու մասի բաժանվելը, որոնց անդրադարձել է Խորենացին, առկա էին Ագաթանգեղոսի, Կորյունի, Բուզանդի երկերում, ապա Հայաստանի երկու մասի բաժանվելուց (385) հետո մինչև V դարի առաջին կեսի Հայաստանի քաղաքական իրադարձությունների պատմության համար Խորենացու երկը մնում է առաջին և լավագույն սկզբնաղբյուրը։ Խորենացու պատմությունն ամբողջությամբ վերառած եղել է և այսօր էլ մնում է հայ պատմագրության ամենահեղինակավոր երկը, որին հետագայում հետևել են հայ պատմագիրները, հին շրջանի պատմության համար մեծ վստահությամբ օգտվելով նրանից։ Անկախ XIX դարում Խորենացու պատմության նկատմամբ բորբոքված քննական պատմագիտության և բանասիրության կասկածանքներից, հերքում-հաստատումներից, Խորենացու շատ վկայություններ ու հավաստումներ հետագայում, մանավանդ մեր օրերում, հաստատվեցին նյութական մշակույթի նորագյուտ ու անհերքելի ապացույցներով։*

*Խորենացու երկն իր պատմագիտական վիթխարի արժեքից բացի, ունի նաև գրական-գեղարվեստական ու գաղափարական այնպիսի արժանիքներ, որոնք շուրջ 1400 տարի այն դարձրել են հայ հասարակության ընթերցանության ամենասիրված գիրքը։ Վերջինիս ամենաառաջին արժանիքը՝ հեղինակի ջերմ ու առինքնող հայրենասիրությունն է, որ ակնբախ է նրա ամբողջ պատմության մեջ։ Հայրենասիրությունը Խորենացու համար ոչ թե սին ու սնապարծ գաղափար է, այլ անցյալի պատմական անցքերի ու անձանց կերպավորման գեղագիտական սկզբունք, որ եթե մի կողմից արդյունք էր հեղինակի հելլենական գեղագիտական ճաշակի ու կրթության, ապա մյուս կողմից՝ պայմանավորված էր V դարի երկրորդ կեսի հայ պատմական իրականության կոնկրետ դրդումներով՝ ազգային անկախության վերականգնման ու ազգային շահերի պաշտպանության հասարակական ձգտումներով։ Իրեն ժամանակակից և գալիք հայ սերունդներին ազատության, հայրենիքի բարգավաճման գաղափարներով տոգորելու, ոգեշնչելու նպատակով՝ ճարտասանական արվեստի տարբեր եղանակներով նա վերակերտում է պատմական անձանց կերպարներն ու արարքները, դարձնում քաղաքական օրինակելի գաղափարակիրներ՝ տիպական հանգամանքներում։ Այդպիսիք են Խորենացու վերակերտած Հայկի, Արամի, Տիգրանի հայրենասիրական կերպարներն ու նրանց կատարած հայրենանվեր գործերը։ Մեծ քերթողահայրը հայոց այդ հեթանոս մեծերին կերպավորել է ոչ թե իր ժամանակին ընդունված քրիստոնեական սրբախոսական գրականության եղանակներով, այլ հունական ճարտասանական արվեստի սկզբունքներով, որոնք միանգամայն համահունչ էին իր կերպավորած հերոսների բնույթին։*

*Խորենացին մեծ վարպետ է բանաստեղծական նկարագրությունների ու պատկերների։ Հայկի ժողովրդական պարզ ու անսեթևեթ պատումը նա ենթարկել է բանաստեղծական մի այնպիսի անթերի վերամշակման, որն այսօր իսկ հիացնում է ընթերցողին։ Այդպիսի բանաստեղծական վերամշակման ճոխ արտահայտություններ են Արա Գեղեցիկի, Տիգրան Մեծի, Արտաշեսի վիպական պատումները։ Բանաստեղծական ընդարձակ պատկերներով են հատկանշվում տեղանքների և ճակատամարտերի շատ նկարագրություններ, որոնցից անջնջելի*

տպավորություն են թողնում Այրարատյան դաշտի և Վաղարշապատի, Երվանդակերտի, Շամիրամակերտի, Ջիրավի ճակատամարտի երփներանգ ու նկարկին պատկերները։

Խորենացին իր պատմությունը կերտել է ոճական բազմապիսի հնարանքների կիրառությամբ, ոճական այս կամ այն եղանակը միշտ բխեցնելով նկարագրվող նյութի բնույթից։ «Նրա ոճը,— գրել է Աբեղյանը,—ինչքան էլ հաճախ զարդարուն ու պերճ է, բայց ընդհանուր առմամբ շատ պարզ, մեկին է, թեթև, շատ կանոնավոր ու դյուրին միանգամայն և ախորժելի, երբեք չոր ու ցամաք։ Առհասարակ նրա ոճի մեջ չկա շինծուություն և սեթևեթանք, այլ ամեն ինչ նրա գրչի տակից բխում է բնականորեն։ Զգացվում է, որ նա ապրում է իր գրածը, և այդ է հենց ազդում ու գրավում և նույնիսկ հմայում. ընթերցողը համակվում է նրա զգացումով»[34]։

Եղիշե—V դարի Հայաստանի ռազմաքաղաքական կյանքում տեղի ունեցած ամենացնցող իրադարձության՝ Վարդանանց պատերազմի առաջին ականատես պատմիչն ու բանաստեղծորեն անմահացողն է Եղիշեն։ Նրա կենսագրության մասին սակավ տեղեկություններ կան։ Ըստ հին ավանդության՝ նա եղել է Վարդան Մամիկոնյանի զինվորն ու քարտուղարը, ականատեսն ու վկան Ավարայրի հերոսամարտի և դրան նախորդող ու հաջորդող բոլոր իրադարձությունների։ Հերոսամարտից հետո նա թողել է զինվորական գործը, դարձել կրոնավոր մենակյաց Մոկաց աշխարհում և այնտեղ էլ գրել է իր հռչակավոր «Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին» երկը[35], «Արարածոց» (Ծննդոց) գրքի մեկնությունը և այլ աշխատություններ։ Եղել է ժամանակի կրթված և գիտուն մտավորականներից, պարապել իմաստասիրությամբ, գիտություններով, արժանանալով «Վարդապետ» կոչման։ Վախճանվել է Ռշտունիքի ծովեզրյա մի այրում ճգնելիս, մոտ 480—485 թվականներին։

«Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին» երկն ընդգրկում է V դարի երկրորդ քառորդից սկսած՝ Արշակունյաց հարստության անկումից հետո մինչև 464—465 թթ. հայոց պատմությունը, երբ տեղի է ունենում դարի ամենանշանավոր իրադարձությունը՝ Ավարայրի ճակատամարտը՝ Եղիշեի խոսքերով և լայն առումով ասած՝ «Հայոց պատերազմը»՝ իր բոլոր հետևանքներով։ Եղիշեի երկի բուն բովանդակությունը հենց այդ պատերազմն է կամ հայերի 451 թ. մեծ ապստամբությունը Սասանյան Իրանի սոցիալ-տնտեսական և ազգային ու կրոնական համաձուլման ստրկացուցիչ քաղաքականության դեմ։ Եղիշեն, լինելով այդ ապստամբության ջերմեռանդ մասնակիցը, ամբողջ հոգով նվիրված Վարդանանց անձնազոհ նախաձեռնումներին և իր պատմությունը գրելով կատարված դեպքերից անմիջապես հետո ու դրանց թարմ տպավորության ներքո, պատմական անցուդարձերն ու անձանց վերարտադրել է հոգեռանդ կրքով. զգացմունքայնությամբ, բանաստեղծական խոր ներշնչանքով ու անմիջականությամբ։

Բացի այդ, ելնելով թեմայի բնույթից, Վարդանանց հերոսամարտը դիտելով իբրև հավատի համար մղված պատերազմ, Եղիշեն, ինչպես իրավամբ նկատված է մեր բանասիրության մեջ, իր պատմությանը տվել է վկայաբանական երանգավորում, հակադիր անձանց (Վարդան, Վասակ և այլք) օժտել

34 Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 288—289։

35 «Եղիշեի Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին. ի լոյս ածեալ բաղդատութեամբ ձեռագրաց», աշխատութեամբ Ե. Տէր-Մինասեան, Երևան, 1957։

զրականի ու բացասականի ծայրահեղ բևեռացրած հատկանիշներով. և այդ կատարված է որոշակի նպատակադրմամբ,— «որպեսզի շարունակ կարդաս, լսելով առաքինի անձանց քաջությունը և հետ կացածների վատթարությունը»[36]։

Եղիշեի երկի այս բացահայտ գեղարվեստական հատկանիշներն ու միտումնավորությունը հիմք են տվել որոշ հայագետների՝ թերագնահատելու նրա առարկայական պատմագիտական արժեքը։ Բայց, ինչպես իրավացիորեն նկատել է Մ. Աբեղյանը, Եղիշեի երկն իր բանաստեղծական գեղեցիկ ձևով հանդերձ «ամենից առաջ պատմություն է, V դարի մեծ ռազմական գործի՝ «Հայոց պատերազմի» պատմությունը, և Եղիշեն ինքը պատմիչ է... մեծ վարպետ և իր գործին լուրջ վերաբերվող»[37]։

Եղիշեի երկի առաջին և կարևոր պատմագիտական արժեքը նկարագրվող իրադարձությունների պատմական ճշմարտացիությունն է։ Լինելով ականատեսն ու վկան պատկերվող անցուդարձերի, շատ դեպքերի մասնակից, Եղիշեն Վարդանանց պատերազմի հարուցման պատճառների, ընթացքի և հետևանքների միակ ժամանակակից հեղինակն է, որի փաստերն ու վկայությունները պատմականորեն միանգամայն ստույգ են և արժանահավատ։

Հաջորդ, նույնքան կարևոր պատմագիտական արժանիքը, որ հմտորեն բացահայտել է Մ. Աբեղյանը, եղելությունների պատճառների ճիշտ ու բազմակողմանի որոշումն է։ Եղիշեն պատմաբանի հմտությամբ կարողացել է բացահայտել Վարդանանց պատերազմի գրեթե բոլոր էական և երկրորդական դրդապատճառները։ Առաջին և հիմնական պատճառը Եղիշեն համարում է կրոնագաղափարախոսականը, այն, որ Հայաստանում Արշակունիների իշխանության վերացումից հետո Սասանյան Իրանը, որի իշխանությունը վարվում էր պետական կրոնի՝ զրադաշտականության օրենքներով, «բազում անգամ մարտնչում էր նրանց դեմ, ովքեր նրանց օրենքներով չէին առաջնորդվում»։ Բայց երբ գահ է բարձրանում Հազկերտ Բ-ն, նա, իր չար ու անխաղաղասեր բնավորության պատճառով նորոգում և սաստկացնում է հալածանքը քրիստոնեության դեմ, սկզբում պարսից պետության սահմաններում, ապա նաև այդ պետության հպատակ բոլոր ազգերի նկատմամբ։ Ուշագրավն այն է, որ Եղիշեն շատ լավ է պատկերացրել հպատակ ազգերի մեջ զրադաշտական կրոնի տարածման քաղաքական ու սոցիալական այն իրական շահախնդրությունները, որ փայփայել են Սասանյան Իրանի իշխող աշխարհիկ և կրոնական վերնախավերը։ Եթե հպատակ ազգերի հավատափոխումը մի կողմից կամրապնդեր Իրանի քաղաքական իշխանությունն ու ազդեցությունը նրանց նկատմամբ՝ ընդդեմ հույների, ապա մյուս կողմից՝ կընդլայներ զրադաշտական հոգևորականության իրավունքներն ու ազդեցության ոլորտները, որոնք դարձյալ կնպաստեին Սասանյան Իրանի քաղաքական ու գաղափարական ազդեցության տարածմանը։ Ահա նման լայն պատմագիտական ըմբռնումով է Եղիշեն պարսիկների տեսակետով կրոնագաղափարախոսական դրդումները համարում հիմնական կանխապատճառը։

Հայերի նկատմամբ հավատափոխման քաղաքականությունը գործնականորեն իրականացնելու առաջին քայլը Եղիշեն համարում է պարսիկների կող-

---

36 «Եղիշեի Վարդանանց պատմությունը», Թարգմանությամբ, ներածական ուսումնասիրությամբ և ծանոթագրություններով Ե. Տեր-Մինասյանի, Երևան, 1946, էջ 14։

37 Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 298։

մից հայկական այրուձին Հայաստանից հեռացնելը, այսինքն՝ ռազմականապես հայերի դիմադրողականության թուլացումը։ Իսկ սա պատճառ է դառնում հայ ազատանու լուրջ դժգոհության, մանավանդ, որ օտար աշխարհում պարսիկները հայոց զորքին նեղելով, փորձում են նրան հավատափոխություն պարտադրել։

Հաջորդ լուրջ սոցիալական պատճառը, որ հարուցում է հայոց աշխարհի բոլոր խավերի ու դասերի դժգոհությունը, Սասանյան Իրանի կողմից Հայաստանում կիրառվող հարկային նոր ծանր քաղաքականության՝ աշխարհագրի կիրառումն է և տեղական ինքնավարության իրավունքներից հայերին զրկելը։

Եվ երբ այս բոլորին հաջորդում է պարսից արքունիքից հայերին ուղղված հավատափոխման թուղթը, ողջ հայ ժողովրդի դժգոհությունը հասնում է իր գագաթնակետին։

Ահա այն քաղաքական, կրոնական, սոցիալ-տնտեսական պատճառները, որ պատմաբանի հմտությամբ արծարծել է Եղիշեն, պատճառներ, որոնք հարուցել են V դարի հայոց մեծ ապստամբական շարժումը պարսիկների դեմ։ Եվ Եղիշեն միանգամայն ճիշտ է ըմբռնել այդ ապստամբության համաժողովրդական բնույթը, այն անվանելով «Հայոց պատերազմ»։

Եղիշեն դարձյալ պատմաբանի հայացքով է ընդհանրացրել ու գնահատել Հայոց պատերազմի հետևանքները։ Թեպետ ապստամբությունն իր կորուստներով ծանր է նստում հայերի վրա, բայց ապստամբությունից հետո պարսից արքունիքն իրավունք է վերապահում հայերին ազատ դավանելու քրիստոնեությունը, եկեղեցականներին՝ ազատ վարելու իրենց իշխանությունը, բռնի հավատափոխվածներին՝ վերադառնալու իրենց նախկին հավատին։ Կարևոր էր մանավանդ այն, որ թեթևացվում էին սահմանված ծանր հարկերը և հայոց հեծելազորի արքունական պարտավորությունները, ազատ թե շինական, եկեղեցական թե աշխարհական ետ են ստանում լքված կամ բռնագրավված իրենց ունեցվածքը։ Այսինքն՝ վերացվում են այն բոլոր պատճառները, որոնք հարուցել էին հայերի ապստամբությունը։ Եղիշեի երկն իր պատմագիտական մեծ արժեքով հանդերձ մի սքանչելի գրական-գեղարվեստական հուշարձան է ոչ միայն հայ միջնադարյան, այլև իր ժամանակի համաշխարհային գրականության մեջ։ Այն՝ պատմական ստույգ անձանց և անցուդարձերի վրա կերտած «քնարական վիպասանություն է», գործողությունների տրամաբանական զարգացմամբ, պատմական անձանց գեղարվեստական կերպավորմամբ, նրանց բնավորության գծերի միտումնավոր չափազանցումներով, գույների խտացումներով, հոգեբանական վերլուծումներով, քնարական անկրկնելի զեղումներով, գրված սրտի ջերմությամբ ու մոլեգին, բայց ազնիվ կրքով։ Պատմության նման բանաստեղծականացումը պայմանավորված էր թե այդ պատմության բնույթով և թե նրա գաղափարական որոշակի նպատակադրումով։ Եթե V դարի նախորդ պատմագիրներն իրենց երկերով գաղափարապես զինվում էին և նախապատրաստվում Սասանյան Իրանից սպասվող վտանգի դեմ, ապա V դարի կեսերին այդ վտանգը դառնում է իրական, գաղափարական պայքարը Ավարայրի հերոսամարտով վերածվում է ռազմական պայքարի։ Ավարայրում հերոսաբար ընկնում են ապստամբության ղեկավարը՝ Վարդան Մամիկոնյանը և շատ նշանավոր նախարարներ, Պարսկաստան են տարվում և նահատակվում կաթողիկոսի տեղապահ Հովսեփը ու մի քանի անվանի եկեղեցականներ, Պարսկա-

տանում երկարատև բանտարկության են դատապարտվում մի խումբ հայ նախարարներ։

Ահա այս նոր իրադրության՝ զինված հերոսական մաքառման, այդ պայքարում նահատակված հերոսների, այդ պայքարը լքած ու դավաճանած Վասակի և համախոհների դրամատիկական ու հերոսական դրվագներով հատկանշվող պատմության վիպողն է դառնում Եղիշեն։ Այդ պատմությունն ինքնին բանաստեղծական էր իր հերոսականությամբ ու դրամատիզմով, իսկ հերոսամարտն իր հետևանքներով՝ խիստ ուսանելի։

Եթե Եզնիկ Կողբացին «Եղծ աղանդոց»-ով տեսականորեն ու գաղափարապես նախապատրաստում էր զինված պայքարը Սասանյան Իրանի դեմ, ապա Եղիշեն, լինելով այդ զինված պայքարի մասնակիցն ու բանաստեղծորեն վերակերտողը, այդ պայքարում ընկածների անձնազոհ օրինակով ժամանակակից և գալիք բոլոր սերունդներին ներշնչում է ազատության, հայրենասիրության, սխրանքի ոգին և, ընդհակառակն՝ ատելությամբ տոգորում դավաճանության ու բռնության նկատմամբ։ Սա Եղիշեի երկի գաղափարական բուն նպատակն է, որը շուրջ մեկուկես հազարամյակ իր արժանի քննությունն է բռնել, դառնալով հարյուրավոր սերունդների հայրենասիրության և ազատության ոգեշունչ աղբյուր։

Խորհրդանշական է Եղիշեի ընդգծած բանաձևը՝ «Մահ ոչ իմացեալ մահ է, մահ իմացեալ՝ անմահութիւն է»։

**Ղազար Փարպեցին** V դարի վերջին և նշանավոր պատմագիրն է, ծնված մոտավորապես 443 թվականին՝ Արագածոտն գավառի Փարպի գյուղում։

Նախնական կրթությունն ստացել է Վրաց աշխարհում՝ Աշուշա բդեշխի տանը, Վահան Մամիկոնյանի հետ միասին։ Վերջինիս մորաքույրը Աշուշա բդեշխի կինն էր և Աղան Արծրունու քույրը։ Հետագայում Ղազարը ուսումը շարունակել է Վահան Մամիկոնյանի քեռու՝ Աղան Արծրունու մոտ, որը եղել է կրոնավոր. նրա շնորհիվ էլ Ղազարը կրոնավոր է դարձել։ Ուսումը կատարելագործելու համար Ղազարին ուղարկում են Բյուզանդիա՝ Կոստանդնուպոլիս, որտեղ նա հմտանում է հունարենին, ուսումնասիրում եկեղեցական նշանավոր հայրերի գրվածքները։ Հայրենիք վերադառնալուց հետո երկու տարի անց է կացնում Սյունիքում՝ Մովսես կրոնավորի մոտ, իսկ երբ 485 թ. Վահան Մամիկոնյանը դառնում է Հայաստանի մարզպան և նորոգել տալիս Վաղարշապատի Կաթողիկե եկեղեցին, Սյունիքից իր մոտ է հրավիրում իրեն մտերիմ Ղազարին և այնտեղ վանահայր կարգում։

Սկզբում նրան հովանավորում էին Վահան Մամիկոնյանը և Կամսարական իշխանները, սակայն մի քանի տարի անց նախանձող ու հակառակորդ եկեղեցականներից ամբաստանվում է, կորցնում նախկին հեղինակությունը, հալածվում, գնում է Ամիդ քաղաքը և լսելով նորանոր զրպարտություններ իր մասին, գրում է հռչակավոր «Թուղթը»՝ ուղղված Վահան Մամիկոնյանին։

Փարպեցու այդ «Թուղթը», որը կրում է «Մեղադրութիւն ստախօս աբեղայից» խորագիրը[38], գրապատմական մի նշանավոր հուշարձան է V դարի երկրորդ կեսի Հայոց պատմության, մասնավորապես եկեղեցական դասի և հասարակական-քաղաքական հոսանքների ու հարաբերությունների մասին, միա-

38 «Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և Թուղթ, աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեան և Ստ. Մալխասեանց, Տփղիս, 1904։

ժամանակ և զորեղ մի ամբաստանագիր՝ ուղղված ժամանակի տգետ հոգևորականության դեմ։

Այդ թղթից պարզվում է, որ V դ. երկրորդ կեսին Հայաստանում գոյություն են ունեցել հասարակական-քաղաքական երկու հակադիր հոսանքներ՝ ազգային-հայկական և պարսկական կողմնորոշումներով, որոնց միջև մղվել է սուր պայքար։ Ինչպես գտնում են, այդ պայքարը, որ ծավալվել է Մաշտոցի ժամանակ հունասերների և նրանց հակառակորդների միջև, V դարի երկրորդ կեսին սաստկանում է, վերածվելով հոմական գիտությունը սիրող ազգայինների և պարսկասերների կռվի[39]։ Իրանական արքունիքն ամեն կերպ աշխատել է Հայաստանում զորացնել պարսկասերների հոսանքը՝ ընդդեմ հունասերների, իր ազդեցությունն ամրապնդելու նպատակով։ Փարպեցին, իբրև հունական կրթություն ստացած մարդ հալածվել է իր հակառակորդներից՝ պարսկական կողմնորոշում ունեցող հոգևորականներից։ Նրա թղթից պարզվում է, որ ոչ միայն ինքն է հալածվել, այլև բազմաթիվ նշանավոր հոգևորականներ, որոնց թվում Մովսեսը (Խորենացի), Խոսրովիկ Թարգմանիչը և ուրիշներ։ Ղազարին մեղադրել են նաև աղանդավորության, մասնավորապես մծղնե (մեսալյան) աղանդին հարելու մեջ, հանգամանք, որ վկայում է, թե V դարի երկրորդ կեսին այդ աղանդը Հայաստանում հայոց պաշտոնական եկեղեցու համար վտանգ է ներկայացրել։

Փարպեցու թուղթը, հավանաբար, ազդել է Վահան Մամիկոնյանի վրա. վերջինս եա է կանչել Փարպեցուն և պատվիրել գրել հայոց պատմությունը, տալով անգամ այդ պատմության ծրագիրը, այն է՝ սկսել այնտեղից, որտեղ կանգ է առել Փավստոս Բուզանդը և նկարագրել հոգևոր ու աշխարհիկ գործիչների սխրագործությունները, որպես օրինակ գալիք սերունդներին։

Ղազար Փարպեցու «Պատմութիւն Հայոց» երկը բաղկացած է երեք մասից կամ դրվագից։ Առաջին դրվագն սկսվում է Հայաստանի երկու մասի բաժանումից և հասնում մինչև Արշակունյաց թագավորության անկումը և Սահակի ու Մաշտոցի մահը։ Այստեղ, ինչպես նկատված է, ստույգ է միայն պարսից և հայոց թագավորների հաջորդության կարգը, մինչդեռ պատմական դեպքերի մասին հաղորդումները, մեծ մասամբ հիմնված լինելով բանավոր ավանդված տվյալների վրա, հաճախ շփոթ են և հակասական։

Երկրորդ դրվագի բովանդակությունը Վարդանանց պատմությունն է, գրեթե դեպքերի նույն հաջորդությամբ, ինչ Եղիշեի երկում։ Այդ բացահայտ նմանությունները ցույց են տալիս, որ Փարպեցին օգտվել է Եղիշեից, իսկ տարբերությունները, հավանաբար, բխում են Փարպեցու լսած բանավոր հաղորդումներից։ Երրորդ դրվագի նյութն է Վարդանանց պատերազմին հաջորդող երեսունհինգամյա ժամանակաշրջանի հայոց պատմությունը, մասնավորապես՝ պարսից արքունիքի կողմից հայ ազնվականության մեջ տարվող բաժանարար քաղաքականությունը և հատկապես՝ Սասանյան Իրանի դեմ Վահան Մամիկոնյանի և Վահանյանների ապստամբության և հաղթական պայքարի պատմությունը։ Այս դրվագն իր պատմական հավաստիությամբ ու հարստությամբ Փարպեցու պատմության ամենաարժեքավոր մասն է։

Ճիշտ է, Փարպեցու երկը գրված լինելով մարզպան Վահան Մամիկոնյանի պատվերով, տոգորված է Մամիկոնյան տոհմի և, մանավանդ, Վարդանի ու

39 Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 318։

Վահանի սխրագործությունների փառաբանությամբ, այդուհանդերձ, այդ երկը գրված չէ սոսկ Վահան Մամիկոնյանի տոհմային ինքնասիրությունը շոյելու նպատակով։ Մամիկոնյանների դրվատումը պայմանավորված էր պատմական այն նշանակությամբ ու վճռական դերով, որ ունեին նրանք հայ Արշակունիների օրոք և հատկապես V դարի Սասանյան Իրանի դեմ մղված զինված հերոսական մաքառումների ժամանակ։ Փարպեցին պարզապես շնորհիվ իր ճարտասանական բացառիկ ձիրքի, կենդանի ու շարժուն իրադրությունների մեջ է կարողացել ներկայացնել պատմական անցքերն ու անձանց, իսկ դրանցից նշանավորներին՝ Վարդան և մանավանդ Վահան Մամիկոնյաններին օժտել է այնպիսի տիպական-հերոսական գծերով, որպիսիք բնորոշ էին նրանց իրական պատմական արարքներին։

Փարպեցու Պատմությունը ոչ միայն կարևոր սկզբնաղբյուր է, այլև գրական մի ակնառու երկ, ուր գեղեցիկ ձևով վերարտադրված է ժամանակի պատմական իրականությունը։

## 4. ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ։ ՎԻՊԱԿԱՆ-ՀԵՐՈՍԱԿԱՆ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆ

Հայաստանում քրիստոնեության տարածման առաջին դարերում նոր կրոնի համար մարտնչած անձանց արարքների հիման վրա և քրիստոնեական սրբախոսական գրականության չափանիշներով արդեն V դարում սկիզբ են առնում հայ ինքնուրույն վարքերն ու վկայաբանությունները։ Դրանց անդրանիկ նմուշներն են Գրիգոր Լուսավորչի վարքն ու Հռիփսիմյան կույսերի վկայաբանությունը, որոնք առկա են արդեն հիշատակված Ագաթանգեղոսի «Հայոց պատմության» մեջ։ Վկայաբանական անդրանիկ նմուշներից է նաև Թադեոս առաքյալի և Սանդուխտ կույսի վկայաբանությունը, ձևված մի հին ավանդության հիման վրա։ Ըստ այդմ՝ Թադեոս առաքյալը գալիս է Հայաստան և Հայոց Սանատրուկ թագավորին քրիստոնեություն քարոզում։ Շատերն են դառնում քրիստոնյա, այդ թվում նաև Սանատրուկի գեղանի դուստրը՝ Սանդուխտը։ Սանատրուկի հրամանով նահատակում են քրիստոնյաներին, նաև Թադեոս առաքյալին և Սանդուխտ կույսին։ Բայց քրիստոնեությունը խոր արմատներ է նետում։ Եվ ըստ այդ վկայաբանության՝ հայոց եկեղեցու հիմնադիրն է դառնում Թադեոս առաքյալը, որի անունով և հայոց հայրապետական աթոռը հետագայում կոչվում է «Աթոռ սրբոյ առաքելոյն Թադէոսի»[40]։

Այս, ինչպես նաև Բարդուղիմեոս առաքյալի ավանդությունն ու վկայաբանությունը նպատակ են ունեցել առավել վաղեմիացնել հայ եկեղեցու սկզբնավորումը և այն կապել Քրիստոսի առաքյալների անվան հետ։ Եվ այդ հատկապես V դարում, երբ քրիստոնեական աշխարհում սկսվել էին պատրիարքական աթոռների գերադասության և դրանց հնության փառասիրական վեճերը[41]։

Այդ վաղ շրջանի վկայաբանությունների մեջ իր գրական-գեղարվեստական և գաղափարական արժեքով բացառիկ տեղ է գրավում Շուշանիկի վկայաբանությունը[42]։ Այն, Սանդուխտ կույսի և Հռիփսիմեի վկայաբանություններից հետո երրորդ կին նահատակին նվիրված պատումն է, որի հերոսուհին օժտված

---

40 Տե՛ս «Սոփերք Հայկականք», Ը, Վենետիկ, 1853, էջ 9—97։

41 Տե՛ս Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 341—342։

42 Տե՛ս «Սոփերք Հայկականք», Թ, Վենետիկ, 1853, էջ 10, 47, 49—65։

է բնավորության ավելի բարդ ու հարուստ գծերով, քան իր նախորդները և հանդես է բերված ընտանեկան-կենցաղային հանգամանքներում՝ ամուսնացած կնոջ, մոր բարդ ու դրամատիկական հարաբերություններով բնորոշվող իրադրություններում։

Շուշանիկը դուստրն է Վարդան Մամիկոնյանի, թոռը՝ Սահակ Պարթևի, կինը՝ վրաց հայտնի Աշուշա բդեշխի որդու՝ Վազգենի։ Վերջինս պարսիկներից արտոնություններ ստանալու ակնկալությամբ ուրանում է քրիստոնեական կրոնը, ընդունում զրադաշտություն, երկրորդ կին է առնում մի պարսկուհու և փորձում այդ հավատին դարձնել կնոջը՝ Շուշանիկին ու իր զավակներին։ Շուշանիկը հոգեկան ծանր տառապանքներ է ապրում, առանձնանում, աղոթքներով ապավինում աստծուն և խզում իր ամուսնական կապերը Վազգենի հետ։ Վերջինս տարբեր միջոցներով՝ համոզմամբ, հորդորով, ծեծով, խոշտանգումով, շղթայակապ բանտարկությամբ, քաղցով ու ծարավով աշխատում է ընկճել Շուշանիկին և հավատափոխ անել, սակայն ապարդյուն։ Շուշանիկը համբերությամբ տարիներ շարունակ կրում է բոլոր տանջանքներն ու տառապանքները, հոգով մնում աննկուն, հաստատ իր քրիստոնեական հավատին ու հայրենական ավանդույթներին և այդպես տառապելով էլ մահանում։

Շուշանիկի վկայաբանությունը թեպետ կերտված է սրբախոսական գրականության պարտադիր կաղապարով, բայց նրա հերոսուհին իր տառապանքներով ու աննկուն կամքով խիստ հուզիչ է ու ազդեցիկ, բարձրացված գեղարվեստական կերպարի աստիճանի։ Շուշանիկը Հռիփսիմեի և Սանդուխտի նման ոչ թե սոսկ վկայուհու տիպար է, այլ, ինչպես իրավացիորեն նկատված է՝ «հայ գաղափարական կնոջ միջնադարյան իդեալ»[43], որի կերպարում առաջին անգամ հայ գրականության մեջ մարմնավորվել է նաև կնոջ ազատագրման գաղափարը[44]։

Գրերի գյուտի շնորհիվ առաջացած V դարի գրական հզոր շարժման բերումով գրի են առնվում և գրականության մեջ են ներթափանցում հայ հին վիպական հարուստ բանահյուսության բազում նմուշներ, որոնք որոշակի վերամշակման ենթարկվելով պատմիչ-գրողների կողմից, ներձուլվում են նրանց պատմագրական երկերին և կազմում դրանց կայուն բաղադրիչը։ Ուշագրավն այն է, որ գրավոր ավանդված հայ վիպական բանահյուսության այդ նմուշները բնորոշվում են շեշտված պատմականությամբ։ Պատճառն, անշուշտ, այն է, որ մեր հին պատմիչները բանավոր ավանդությունն օգտագործելով իբրև պատմական սկզբնաղբյուր, դիմել են պատմական ավանդություններին, զրույցներին, երգերին ու վեպերին, զանց առնելով վիպական ընդհանուր բնույթ ունեցող ստեղծագործությունները, որոնք հայոց պատմության համար արժեք չէին կարող ներկայացնել։ Վիպապատմական բանահյուսության այդ նմուշներից են Մովսես Խորենացու Հայոց պատմությամբ ավանդված Հայկի, Արամի, Արա Գեղեցիկի, Վահագնի, Անգեղյա Տորքի պատմականացած առասպելները, Տիգրանի, Երվանդի, Արտաշեսի, Արտավազդի վիպական ցիկլերը, որոնք անխախտ վկայություններ են հայ հին ու հարուստ բանավոր ավանդության գոյության վերաբերյալ։ Հիշյալ բանահյուսական ստեղծագործություններն իրենց պատմական հիմքով և հիշողություններով սերում են վաղնջական ժա-

43 Մ. Ավդալբեգյան, նշվ. աշխ., էջ 158։

44 Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 354։

մանկներից և հասնում մինչև մեր թվականության II դարի պատմական անցուդարձերը։

Բանահյուսական այդ ստեղծագործությունների իրենց բնույթով հին առասպելներ են և առասպելաբանական վեպ (Խորենացու մոտ՝ վիպասանք), որոնք պատմատիպաբանական առումով կազմում են հայ վիպական բանահյուսության պատմական զարգացման առաջին երկու փուլը[45]։ Այդ զարգացումն ու տիպաբանական փոփոխությունները շարունակվում են նաև հետագայում։

Մեր թվականության առաջին հարյուրամյակներին, մասնավորապես III—V դդ., հայ վիպական բանահյուսությունը թևակոխում է իր զարգացման նոր շրջանը։ Այս շրջանի վիպական բանահյուսության կարևոր արգասիքները հատվածաբար պահպանվել են Ագաթանգեղոսի, Բուզանդի, Խորենացու, հետագայում նաև Սեբեոսի, Հովհան Մամիկոնյանի և այլոց պատմագրական երկերում։

Եթե վիպական նախորդ երկու շրջանների բանահյուսության մեջ գերիշխող էին առասպելներն ու առասպելաբանական տարրերը՝ պայմանավորված վաղ անցյալի հասարակական կյանքի ու մտածողության զարգացման համեմատաբար ցածր մակարդակով, ապա այս երրորդ շրջանում, որ պատմականորեն համընկնում է Հայաստանում վաղ ֆեոդալական հարաբերությունների ձևավորման ու հաստատման ժամանակաշրջանին, վիպական բանահյուսության մեջ գերակշռում է իրականության ռեալիստական-պատմական ընկալումը։ Այստեղ, անշուշտ, նշանակալից դեր է խաղացել նաև այդ բանահյուսության նմուշները գրառող, օգտագործող և որոշ չափով վերամշակող քրիստոնյա պատմիչների արհամարհական վերաբերմունքը հին հեթանոսական-առասպելական հավատալիքների նկատմամբ, և նրանք վիպական զրույցներն ու երգերն օգտագործելով իբրև պատմական սկզբնաղբյուրներ, հավանաբար զանց են առել գրանցում եղած առասպելաբանական տարրերը։ Չպետք է մոռանալ նաև այն, որ այս շրջանի վիպապատմական բանահյուսության նմուշները, գրառվելով իրենց հիմք ծառայած պատմական իրադարձություններից ոչ շատ ժամանակ անց, չեն հասցրել ենթարկվել բանահյուսական տևական վերամշակման, ուստի և աչքի են ընկնում խիստ պատմականությամբ և իրականության ռեալիստական ընկալումով։ Այս նոր շրջանի վիպապատմական բանահյուսության նյութն է կազմում Հայաստանի III—IV դդ. ներքին ու արտաքին կյանքի պատմական իրականությունն իր բազմազան կողմերով ու վայրիվերումներով։

Վաղ ֆեոդալական Հայաստանի արտաքին ու ներքին կյանքում տեղի ունեցած քաղաքական և սոցիալ-պատմական նշանակալից իրադարձությունները հիմք են ծառայել զանազան պատմական ավանդությունների, երգերի, զրույցների, որոնք հյուսվում են ժամանակի իշխող վերնախավի երկու նշանավոր տոհմերի ներկայացուցիչների՝ հայոց Արշակունի թագավորների և Մամիկոնյան սպարապետների անունների և արարքների շուրջը, սերունդների և դեպքերի հաջորդականության սկզբունքով։ Առաջ է գալիս հայկական ժողովրդական երկրորդ վեպը (առաջինը՝ Խորենացու Հայոց պատմության մեջ պահպանված «Վիպասանք» անունով առասպելաբանական վեպն էր), որի առանցքն էին կազմում Սասանյան Իրանի դեմ Արշակունյաց Հայաստանի մղած դարավոր կռիվները։ Ելնելով վեպի բուն թեմատիկայից և Փավստոս Բուզանդի ակնարկներից,

45 Տե՛ս Մ. Աբեղյան, Երկեր, Ա, Երևան, 1966։

Մ. Աբեղյանն այդ ավանդական հերոսավեպն անվանում է «Պարսից պատերազմ»[46]։

«Պարսից պատերազմ» վեպը բաժանվում է վիպական մի քանի ցիկլերի կամ ճյուղերի՝ թագավորների և սպարապետների անուններով։ Դրանք են՝ «Խոսրով Մեծ և Տրդատ», ուր պատմվում է Մամիկոնյան եղբայրների Հայաստանում ապաստանելը, Սասանյանների հաղթանակը Իրանում, պարթև Անակի դավաճանությամբ Հայոց թագավոր Խոսրովի սպանությունը, Արտավազդ Մամիկոնյանի օժանդակությամբ Խոսրովի որդի Տրդատի փախուստը երկրից, հունաց կողմերում մեծանալը, քաջագործությունները, հռոմեացիների օգնությամբ Հայաստան գալն ու հոր գահը ժառանգելը։ «Խոսրով Կոտակ և Վաչե» ցիկլում, որ նախորդի հետ կապվում է հոր և որդու հաջորդությամբ, պատմվում է Տրդատի որդի Խոսրովի և Արտավազդի որդի Վաչե Մամիկոնյանի թագավորության և սպարապետության, Խոսրովակերտ անտառի տնկման, հյուսիսական ազգերի դեմ մղած հաղթական կռիվների, պարսիկների՝ Հայաստանի վրա արշավելու և չարաչար պարտության, Աղձնիքի Բակուր բդեշխի դավաճանության, Վաչեի սպանության և Խոսրովի մահվան մասին։ Հաջորդ ցիկլը՝ Խոսրով Կոտակի որդի Տիրանի վեպն է, որը վիպական մի գեղեցիկ ամբողջություն է։ Այստեղ պատմվում է Հայր Մարդպետի խարդավանքով Ռշտունի և Արծրունի նախարարական տների կոտորածը, Արտավազդ և Վասակ Մամիկոնյանների կողմից՝ կոտորված նախարարական տան շառավիղների փրկումը, երկպառակությունը Տիրանի և իր այդ զորավարների միջև, մի ձիու պատճառով Տիրանի կուրացումը պարսից Վարազ-Շապուհի կողմից՝ Փիսակի դավաճանությամբ, Տիրանի գերեվարումը Իրան, հռոմեացիների օգնությամբ հայերի կռիվը պարսիկների դեմ, հաղթանակը, Տիրանի ազատագրումը և նրա որդի Արշակի թագավորումը։

Տիրանի վեպին հաջորդում է «Արշակի և Պապի, Վասակի և Մուշեղի» վիպական-հերոսական ցիկլը՝ բաղկացած փոքրիկ, բայց ամբողջություն կազմող առանձին միավորներից, որոնք տարբեր բովանդակությամբ ու բնույթի վիպական աքանչելի պատումներ են հերոսության, հավատարմության ու հայրենասիրության, դավաճանության ու խարդավանքի, տոհմային-ընտանեկան հարաբերությունների, հագեցված դրամատիզմի ու հերոսականության շեշտված տարրերով։ Դրանցից են Արշակի և Ներսեսի, Արշակի և Շապուհի, Վասակի և Շապուհի, Գնելի և Փառանձեմի, Պապի և Մուշեղի պատումները, որոնք իրենց բազմաբնույթ բովանդակությամբ հանդերձ «Պարսից պատերազմ» հերոսավեպի գաղափարական իմաստի ողջ ծանրությունն են կրում իրենց մեջ։

Վեպի վերջին ցիկլը Մանուելի ճյուղն է։ Այստեղ պատմվում է Մանուելի և եղբոր պարսից գերությունից ազատվելը, Բատ Սահառունուց սպարապետության ետ խլումը, Վարազդատին կռվով երկրից հալածելն ու եղբոր՝ Մուշեղի, սպանության վրիժառությունը։ Այնուհետև Մանուելը բարեկամանում է պարսիկների հետ, բայց Մերուժան Արծրունու քսությամբ կոտորում պարսիկ Սուրենի զորքը, որի հետևանքով նորից բորբոքվում են հայ-պարսկական ավանդական կռիվները։ Կռիվներից մեկի ժամանակ սպանվում է դավաճան Մերուժանը և վերջ է դրվում պարսից պատերազմին։ Մանուելը թագավորեցնում է

46 Վեպի մանրամասն ուսումնասիրությունը տե՛ս Մ. Աբեղյան, Երկեր, Ա, էջ 181—302։ Տե՛ս նաև՝ Գ. Գրիգորյան, Հայ ժողովրդական վիպերգերը և պատմական երգային բանահյուսությունը, Ա. Հին շրջան, ՀՍՍՀ ԳԱ հրատ., Երևան, 1972, գիրք Բ, Միջնադար, 1981։

*Պապի որդի Արշակին, յոթ տարի փառքով իշխում և ապա խաղաղությամբ մահանում։*

*Այս է «Պարսից պատերազմ» վեպի բովանդակության համառոտ ուրվագիծը։*

*Վեպի տարբեր ցիկլերում հանդես եկող հայոց և պարսից թագավորները, սպարապետներն ու իշխանները պատմական ստույգ անձնավորություններ չեն, այլ իրենց իրական-պատմական նախատիպերի հիման վրա կերտված վիպական-գեղարվեստական կերպարներ, որոնք թեպետ պահպանել են շատ որոշակի պատմական գծեր, բայց վիպասանների ու գուսանների կողմից ենթարկվել են հերոսացման, միտումնավոր չափազանցումների և առհասարակ ավանդական բանահյուսության զարգացման ընդհանուր օրինաչափությունների։*

*«Պարսից պատերազմը» լինելով միջնադարյան տիպիկ հերոսավեպ, անդրադարձրել է վաղ ֆեոդալական Հայաստանի կյանքի ու կենցաղի շատ բնորոշ կողմեր՝ դասակարգային հարաբերություններ և ընդվզումներ, տիրոջ և ծառայի կամ ֆեոդալի ու վասալի հարաբերություններ, պատերազմներ, ավարառություն, զինվորական ծառայություն, որսորդություն և այլն։ Բայց վեպի բուն նպատակն է ներկայացնել հայերի և պարսիկների մղած պարբերական ու երկարատև կռիվները, հատկապես այդ կռիվներում հայերի անպարտելիության և հերոսացման սևեռուն գաղափարը, որ ընկած է ամբողջ վեպի հիմքում։ Այդ կռիվներում միշտ էլ հաղթում են հայերը, իսկ եթե երբեմն էլ պարտվում են, ապա՝ ժամանակավորապես, բայց ի վերջո հայերն են հաղթանակող դուրս գալիս։*

*Վիպական չափազանցումն առանձնապես դրսևորվում է պատերազմների և հայերի հաջողության ու հաղթանակների նկարագրություններում։ Միայն պարսից Շապուհ թագավորն անձամբ իր կամ իր զորավարների առաջնորդությամբ 28 արշավանք է ձեռնարկում հայերի դեմ, հանելով մոտ 26 ու կես միլիոն զորք։ Հայերը բոլորին էլ կոտորում են, և միայն Շապուհն ու իր զորավարներն են միաձի ճողոպրելով փախչում-ազատվում։*

*Վիպական նման չափազանցումների նպատակն է ցույց տալ հայերի քաջությունն ու հերոսությունը՝ թվով անհամեմատ գերազանց թշնամիների նկատմամբ։ Քաջության ու հերոսության գաղափարին է հարում նաև վիպական հերոսների տիրասիրությունը, իրենց բնիկ տերերին, այսինքն՝ Արշակունի թագավորներին անձնազոհ նվիրվելու և հավատարիմ մնալու գաղափարը, որը դարձյալ գերիշխող է ողջ վեպում։ Տիրասիրությունը և տիրադավության դատապարտումը վեպում որքան էլ պայմանավորված է ֆեոդալական ժամանակաշրջանի բարոյախոսությամբ, այդուհանդերձ հայրենի ինքնուրույն պետականության և անկախության նվիրման գաղափարն է դա, որին սրբությամբ հետևում են վիպական հերոսները, մանավանդ Մամիկոնյան սպարապետները և այն բացահայտ քարոզում իրենց ենթականերին։ Երբ Շապուհից խաբված և ցմահ բանտարկության դատապարտված Հայոց Արշակ թագավորն ինքնասպան է լինում, ապա տարիներ անց հայոց զորքը Մուշեղի գլխավորությամբ պարսիկների դեմ կռվելիս, յուրաքանչյուր հայ զինվոր մահացու հարված հասցնելով թշնամուն, կրկնում է միևնույն բանաձևը՝ «Առ, քեզ Արշակ» կամ «Արշակ թագավորին մատաղ եղիր»։ Մեռած-գնացած թագավորի նկատմամբ հայ*

զինվորների այս տիրասիրությունը հարուցում է անգամ պարսից Շապուհ թագավորի զարմանքն ու հիացմունքը։

Վիպական հերոսների տիրասիրության գաղափարին է հարում նաև թագավորի անձի անձեռնմխելիության գաղափարը, որի կրողներն են վեպում կենտրոնական հերոսներ Մուշեղն ու Մանուելը։ Թագավորի անձի անձեռնմխելիությունը հին և ընդհանրական սովորույթ էր, որ սերում էր օծված և աստվածացված միապետի անձի պաշտամունքից։ Բայց այդ հնամենի գաղափարը այս վաղ միջնադարյան վեպում ունի բոլորովին այլ հնչերանգ, այն վիպասանների համար միջոց է ծառայել սիրված հերոսներին կերպավորելու ասպետական առաքինությամբ, շեշտելու նրանց ավանդական հարգանքն ու պատվախնդրությունը թագավորի անձի նկատմամբ, լինի այն հայրենի, թե օտար։ Երբ Մուշեղը պատերազմի դաշտում հաղթում է Աղվանից Ուռնայր թագավորին, չի սպանում նրան, այլ հալածելով, նիզակի կոթով զարկում է նրա գլխին և ասում. «Շնորհակալ եղիր, որ թագավոր մարդ ես, գլխիդ թագ ես կրում. ես թագավոր մարդու չեմ սպանի, մինչև անգամ եթե շատ նեղն էլ ընկնեմ»[47]։ Եվ թույլ է տալիս Ուռնայրին գնալու իր երկիրը։

Նույն կերպ է վարվում և Մուշեղի եղբայր Մանուելը՝ Մուշեղին սպանող Վարազդատ թագավորի նկատմամբ։ Երբ պատերազմի դաշտում Մանուելի զավակները, հալածելով պարտված Վարազդատին, կամենում են սպանել նրան, Մանուելը կանչում է զավակներին. «Է՛ հե՜յ, տիրասպան մի լինեք»[48]։ Եվ հալածելով նրան, հեռացնում են Հայոց աշխարհի սահմաններից։

Վեպում զարգացրած և գեղարվեստորեն մարմնավորված այս բոլոր գաղափարները ծառայում են մեկ ընդհանուր, միասնական նպատակի. մարտնչել ու մեռնել հայրենի երկրի և այդ երկիրն ու նրա անկախությունը մարմնավորող սեփական թագավորի համար և չթողնել «անգամ մի կուրու չափ գետին Հայոց երկրից օտարել»։ Այդ է պատճառը, որ Մանուել Մամիկոնյանը մահվան մահճում ողբում է իր բնական մահը, ափսոսում, որ պատերազմի դաշտում չի ընկել քաջությամբ, չի մեռել հայրենի երկրի, բնիկ Արշակունի տերերի, կանանց ու զավակների և առհասարակ բովանդակ ժողովրդի համար, այլ մեռնում է վատթար մահով, անկողնում պառկած։ Այդպես ափսոսում է և Մուշեղ Մամիկոնյանը, երբ Վարազդատը խնջույքի ժամանակ նենգությամբ սպանում է նրան. «Երանի թե այս մահը ձիու վրա ինձ հասներ»,— ասում է նա մեռնելիս[49]։

Հերոսը դարձյալ մահվան համար չէ, որ ցավում է, այլ որ ճակատամարտում չի ընկել քաջությամբ։

Հայրենասիրական այս գաղափարների կենդանի մարմնացումներն են վեպում Մամիկոնյան սպարապետները, մասնավորապես Վասակը, Մուշեղը, Մանուելը, որոնք և դառնում են վեպի գլխավոր հերոսներ։

Մամիկոնյան սպարապետները գաղափարականացված հերոսներ են, օժտված քաջության, անվեհերության, ասպետական վեհանձնության, ազգային պատվախնդրության, հայրենիքի նկատմամբ անսահման նվիրումի իդեալականացված հատկանիշներով։

Վասակ սպարապետը Պարսկաստանում Արշակ թագավորի հասցեին ուղղած մի թեթև վիրավորանքի համար տեղնուտեղը սպանում է պարսից ար-

47 Փավստոս Բուզանդ, Պատմություն Հայոց, Երևան, 1968, V դպրություն, գլուխ Դ։

48 Փ. Բուզանդ, Պատմություն Հայոց, V դպրություն, գլուխ Լէ։

49 Նույն տեղում, գլուխ Լե։

քունի ախոռապետին, արժանանալով անգամ Շապուհի հիացմունքին։ Նույն Վասակը, Արշակի հետ խաբեությամբ գերվելով Շապուհ արքայից, հերոսին վայել խրոխտ և նվաստացուցիչ պատասխաններ է տալիս պարսից արքայի հարցումներին, բնավ չերկյուղելով սպառնացող մահապատժից։ Վասակի որդի Մուշեղը, կռվում գերելով Շապուհի կանանց, չի թողնում դիպչել նրանց պատվին, այլ ասպետական մեծահոգությամբ վերադարձնում է Շապուհին, որը, հիանալով այդ վեհանձնությամբ, Մուշեղի պատկերը սպիտակ ձիու վրա դրվագել է տալիս իր գինու գավաթին և ամեն անգամ խմելիս, հիշում Մուշեղին՝ ասելով՝ «Ճերմակաձին գինի արբցէ»։

Թշնամու կողմից հայ հերոսների առաքինությունների նման գնահատումները մեծապես նպաստում են հերոսների իդեալական հատկանիշների բացարձակացմանը, հետևաբար և գեղարվեստական արդարացմանը։

Ազատ և անկախ հայրենիքի վեհ գաղափարը, որի համար անձնազոհ մաքառում են վիպական հերոսները, վեպում գտել է բացառիկ խորհրդանշական գեղարվեստական կերպավորում։ Դա պարսից Շապուհի կողմից Հայոց Արշակ թագավորին հայրենի հող ու ջրով փորձելու միջադեպն է, որի իմաստն այն է, որ հայրենի հող ու ջրի վրա մարդ իրեն զգում է ազատ, զորեղ և հպարտ, մինչդեռ օտար հողում նա հլուհնազանդ ստրուկ է՝ օտարի կամակատար։

Այս խորհրդանշական միջադեպը վեպում արծարծված հայրենիքի ազատության ու անկախության մաքառման միասնական գաղափարի պատկերավոր իմաստավորումն է, հայրենիքի (հայրենի հող ու ջրի) գեղարվեստական յուրօրինակ արժեքավորումը։

V դարից հետո հայ վիպական բանահյուսությունը ենթարկվում է նորանոր փոխակերպումների։ Հայկական միասնական ու անկախ պետականության վերացման հետևանքով, պատմական նորանոր իրադարձությունների ազդեցությամբ «Պարսից պատերազմ» ժողովրդական հերոսավեպն սկսում է աստիճանաբար կորցնել իր միասնականությունը. նրանից մնում են միայն առանձին միջադեպեր և շարունակում են պահպանվել ու հարատևել երկրի այն կողմերում, որտեղ շահագրգռված են եղել տվյալ զրույցներով։ Դրանցից, օրինակ, Անդոկի և Բաբիկի զրույցը շարունակել է գոյատևել Սյունիքում, իսկ Մուշեղ Մամիկոնյանի, Դեմետր և Գիսանե եղբայրների, հյուսիսային ցեղերի դեմ Տրդատի մղած կռիվների մասին զրույցները՝ Տարոնում։ IV դարի նշանավոր գործիչ Մուշեղ Մամիկոնյանի մասին հորինված վիպական զրույցները նույն հերոսի անունով փոխանցվում են հետագա դարերին, կերպարանափոխվելով ու նորոգվելով՝ VII դարում ավանդվում են Սեբեոսի, ապա մեկ հարյուրամյակ անց՝ Հովհան Մամիկոնյանի կողմից, հարակցված արդեն պատմական նոր անձանց ու իրադարձությունների։ Մուշեղի վեպը, որ «Պարսից պատերազմի» կարևոր բաղադրիչներից էր, VII—VIII դդ. տեղայնանում է Տարոնում, հարակցվում Գայլ Վահանի և հաջորդների զրույցներին, կորցնում իր համազգային բնավորությունը, դառնում տեղական վեպ և կոչվում նոր անունով՝ «Պատերազմ Տարօնոյ»[50]։

Այս նոր վեպի գրեթե բոլոր դրվագները, անկախ դրանց գրական ավանդումից, բուն ժողովրդական են և ունեն բանահյուսական ծագում։ Գայլ Վա-

50 Այս վեպի հանգամանալից քննությունը տե՛ս Մ. Աբեղյան, Երկեր, Ա, էջ 303—324։

Հանի և նրա հաջորդների՝ Ամրատի, Տիրանի և մյուսների վիպական կերպարներում ու արարքներում անդրադարձված են V դարի պատմական նշանավոր գործիչներ Վարդան և Վահան Մամիկոնյանները և պարսիկների դեմ նրանց վարած կռիվների արձագանքները։ «Տարոնի պատերազմի» վիպական ընդհանուր ոգին գրեթե նույնանում է «Պարսից պատերազմի» հետ, այն է՝ կռիվ պարսիկների դեմ, որ վերջանում է միշտ հայերի հաղթանակով։ Տարբերությունն այն է, որ եթե «Պարսից պատերազմում» կռիվները մղվում էին բովանդակ Հայաստանի անկախության համար, ապա «Տարոնի պատերազմում» այդ կռիվները մղվում են սոսկ հանուն Տարոնի անկախության։ Այստեղ հին հերոսավեպի համազգային ոգին, պատմական հետագա դեպքերի ազդեցությամբ նեղացել, կապվել է սոսկ Տարոնի և Սասունի իշխողների՝ Մամիկոնյանների տեղական անկախության գաղափարի հետ, և նախկին համազգային վեպը դարձել է տեղական վեպ։ Բացի այդ, «Տարոնի պատերազմում» մտել են նոր մոտիվներ ու գաղափարներ, որպիսիք չկան «Պարսից պատերազմում»։ Նոր վեպում առաջնակարգ տեղ է գրավում ռազմական խորամանկությունը, որի շնորհիվ հայերը միշտ չարաչար խաբում և հաղթող են դուրս գալիս թվով միշտ գերազանց պարսիկների նկատմամբ։ Այստեղ իսպառ բացակայում է թշնամու նկատմամբ նախկին վեպում եղած ասպետական վեհանձնությունը, և մեծ տեղ է գրավում փոխադարձ ծաղրը, անարգանքն ու արհամարհանքը հատկապես մարտերի ժամանակ։ Այս փոփոխությունները ևս պայմանավորված են վիպական ոգու նեղացմամբ, ռազմական ուժերի սահմանափակմամբ, հետևաբար և՝ ասպետական ոգու կորստով։

Պատմական և քաղաքական փոփոխությունների հետևանքով զգալիորեն փոխվել է նաև վեպի հիմնական կոնֆլիկտը։ «Տարոնի պատերազմում» պարսիկների հիմնական ձգտումն է հպատակեցնել Մամիկոնյաններին, հարկատու դարձնել նրանց, քանդելով նրանց կրոնական սրբավայրը՝ սուրբ Կարապետ վանքը։ Այսինքն՝ վեպի գլխավոր կոնֆլիկտն է դառնում հարկահանությունը և հարկի պատճառով ապստամբելն ու պարսիկներին չենթարկվելը։

## 5. ԴԱՎԱՆԱԲԱՆԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

V դարի կեսին քրիստոնեական աշխարհում բորբոքվում են դավանաբանական վեճերը Քրիստոսի մարդկային և աստվածային բնության շուրջը։ Վեճերը ծայր էին առել տակավին V դ. երկրորդ քառորդից, հատկապես Ալեքսանդրիայի և Անտիոքի եկեղեցական երկու հռչակավոր դպրոցների միջև։ Ալեքսանդրիայի դպրոցը, հետևելով Աստվածաշնչի այլաբանական մեկնության եղանակին, գտնում էր, որ Քրիստոսի մեջ աստվածային և մարդկային բնությունները միաձուլված են «անայլայլելի և անխառն» կերպով և կազմում են մեկ էություն, որի մեջ առաջնայինը աստվածայինն է։ Անտիոքի դպրոցը, ընդհակառակը, Քրիստոսի մեջ շեշտում էր մարդկային բնությունը, մարդ, որ աստվածացել է, հետևաբար ունի երկու բնություն՝ մարդկային և աստվածային[51]։

Այստեղից էլ առաջ են գալիս քրիստոնեական դավանաբանության տեսական երկու ուղղությունները՝ միաբնակությունը և երկաբնակությունը։ 431 թ.

51 Տե՛ս Ն. Տեր-Մինասյան, Ընդհանուր եկեղեցական պատմություն, հ. 1, Էջմիածին, 1908, էջ 311—332։

գումարված Եփեսոսի եկեղեցական ժողովում հաղթող է հանդիսանում Կյուրեղ Աղեքսանդրացու մի բնության վարդապետությունը։ Սակայն մեկ քսանամյակ անց՝ 451 թ., երբ հայերն Ավարայրում պաշտպանում էին իրենց երկրի և ժողովրդի ազատությունը, տեղի է ունենում Քաղկեդոնի ժողովը, որն իր դավանաբանական վճիռներով մերժում է տիեզերական նախկին ժողովներում (Նիկիայի՝ 325 թ. և Եփեսոսի՝ 431 թ.) հիմք դրված և հաստատված դավանանքի սկզբունքները և փաստորեն ընդունում երկաբնակությունը։ Արևելքի քրիստոնեական որոշ եկեղեցիներ, այդ թվում նաև հայկականը, որ հետևում էր եկեղեցական նախկին ժողովների մշակած դավանաբանական ուղղությանը, չեն ընդունում Քաղկեդոնի ժողովի սահմանած դավանանքը։ Դրա հիման վրա խզում է առաջանում հռոմեաբյուզանդական և արևելյան՝ եգիպտական, ասորական, հայկական եկեղեցիների միջև։ Այդ խզումն ավելի է խորանում և վերածվում հակասության, ապա և դավանաբանական սուր պայքարի V դարի վերջերին և հատկապես VI դարում, երբ դավանաբանական խնդիրներն ու վեճերը կորցնում են իրենց տեսական-կրոնական իմաստը և վերաճում մեծ պատրիարքությունների իրավասությունների ու գերիշխանական նկրտումների, ապա և ազգային-պետական ու քաղաքական շահախնդրությունների։

Ընդհանուր եկեղեցու դավանաբանական պառակտման նկատմամբ անտարբեր չի մնում Հայոց եկեղեցին։ V դարի վերջին տասնամյակներին Հայոց կաթողիկոս Հովհան Մանդակունին արդեն հանդես է գալիս ընդդեմ երկաբնակության։ Սկսվում է պայքար երկաբնակության և քաղկեդոնականության դեմ, առաջ է գալիս այդ պայքարն արտացոլող գրականություն[52]։ Այդ գրականության սկիզբը դրվում է եգիպտական միաբնակության պարագլուխ, երկաբնակության և Քաղկեդոնի ժողովի մոլի հակառակորդ Տիմոթեոս Կուզի «Հակաճառության» հայերեն թարգմանությամբ[53], կատարված 480—484 թվականներին։ Այն տեսական կարևոր զենք էր հայ եկեղեցականների ձեռքին՝ նեստորականության և քաղկեդոնականության դեմ մաքառելու համար։ Գրեթե նույն ժամանակներում է գրվել Մովսես Խորենացու դավանաբանական թուղթը, նվիրված միաբնակության և երկաբնակության խնդրին և ուղղված երկաբնակության դեմ, ի պաշտպանություն միաբնակության։ Տիմոթեոս Կուզի «Հակաճառության» և Խորենացու թղթի ազդեցությամբ V դարի վերջին, կաթողիկոս Հովհան Մանդակունին գրում է իր նշանավոր «Ապացույցը»[54]՝ ընդդեմ Քաղկեդոնի ժողովի և երկաբնակության, հանգամանք, որ վկայում է Հայոց եկեղեցու վնհապետի, հետևաբար և Հայոց եկեղեցու գրաված հակաքաղկեդոնական որոշակի դիրքը, միաժամանակ և միաբնակության վարդապետության դավանանքը՝ տակավին V դ. վերջերին։

VI դ. սկզբներին, Անաստաս կայսեր (491—518) մահից հետո քաղկեդոնականությունը Բյուզանդական կայսրության մեջ դառնում է պարտադիր պաշտոնական դավանանք և կայսրերի ու պատրիարքների համար միջոց է ծառայում՝ կայսրության գաղափարաբանական միասնության ամրապնդման։ Հայերի համար ևս «դավանության խնդիրն ստանում է ազգային քաղաքական

52 Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, գիրք Ա, 1944, էջ 355։

53 «Տիմոթէոսի եպիսկոպոսի Աղեքսանդրեայ Հակաճառութիւն առ սահմանեալսն ի ժողովոյն Քաղկեդոնի», ի լոյս ընծայեալ աշխատութեամբ Կարապետ ծ. եպիսկոպոսի և Երուանդ վարդապետի, Էջմիածին, 1908։

54 «Գիրք հաւատոյ», Էջմիածին, 1914, էջ 130։

նշանակություն»։ Բյուզանդական քաղաքական ազդեցությունից զերծ մնալու և ազգային միասնությունը պահպանելու համար անհրաժեշտ էր դավանանքով տարանջատվել Բյուզանդիայից։ Այդ ձեռնտու էր նաև Սասանյան Իրանին, որն օգտվելով դավանաբանական վեճերից, հովանավորում էր նեստորականներին և հանդուրժողական դիրք գրավում հակաքաղկեդոնական արևելյան քրիստոնյաների նկատմամբ, նրանց լրիվ անջրպետելու համար բյուզանդական ազդեցությունից։ Բացի այդ, հայ հոգևորականության հիմնական նպատակն է դառնում հայոց ինքնուրույն և անկախ եկեղեցու ստեղծումը և պահպանությունը բյուզանդական եկեղեցու գերիշխանական ձգտումներից։ Այս հակասական շահերի հետևանքով՝ VI դարում ծայրահեղորեն սրվում են քաղկեդոնականության վերաբերյալ վեճերն ու բախումները, քաղկեդոնականների կողմից ծայր են առնում անգամ հալածանքներ, որոնք և հայերի մեջ առաջ են բերում դավանաբանական պայքարի հարուստ գրականություն[55]։ Հորինվում են մեծաթիվ գրվածքներ քաղկեդոնականության և նեստորականության դեմ, մանավանդ, երբ հայ եկեղեցին VI դ. սկզբին Բաբկեն կաթողիկոսի օրոք մերժում է նեստորականությունը, իսկ Ներսես Բ կաթողիկոսի ժամանակ (548—551) Քաղկեդոնի ժողովն ու Հռոմի Լևոն պապի դավանաբանական թուղթը՝ տոմարը։

Կազմվում են ժողովածուներ՝ կրոնադավանաբանական վիճաբանությունների համար պատրաստի ձեռնարկներ ունենալու նպատակով։ Դրանցից նշանավոր է «Գիրք թղթոց» ժողովածուն[56], որն ընդգրկում է 98 թղթակցություն, գրված գլխավորապես V—IX դդ., և ուղղված է հիմնականում հայոց եկեղեցու դավանության, անկախության և միասնականության պաշտպանության նպատակին։

Մյուս կարևոր ժողովածուն «Կնիք հավատոյ» գիրքն է[57], կազմված VII դարում, Կոմիտաս կաթողիկոսի ժամանակ (615—628)։ Այդտեղ հավաքված և զետեղված են եկեղեցու ուղղափառ հայրերի գրվածքներից տարբեր հատվածներ, որոնք պատրաստի նյութ են ծառայել հայոց եկեղեցու դավանությունը հեղինակավոր խոսքով հիմնավորելու և պաշտպանելու համար[58]։

## 6. ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆ

Հայ հին բանաստեղծությունը, մասնավորապես հոգևոր երգը, սկիզբ առնելով V դ., շարունակում է զարգանալ նաև հաջորդ հարյուրամյակներում։ VII դարից մեզ է հասել Կոմիտաս կաթողիկոսի գրած «Անձինք նուիրեալք» սկզբնատողով մի ծավալուն ներբող, նվիրված Հռիփսիմյանց կույսերի նահատակության թեմային։ Թեպետ թեման հին է, սիրված և ավանդական, սակայն հեղինակը չի գնացել թեմայի վերապատմման ճանապարհով, այլ այն վերակերտել է նորովի և յուրովի, բանաստեղծական առանձին պատկերների շարքով, այն էլ ոչ թե նահատակության եղերերգությամբ, այլ մի հաղթական ցնծությամբ, պայմանավորված կույսերի՝ աշխարհի ունայնության գիտակ-

55 Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, I, էջ 359—360։

56 «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901։

57 «Կնիք հաւատոյ ընդհանուր սուրբ եկեղեցւոյ յուղղափառ և Ս. հոգէկիր հարցն մերոց դաւանութեանց, յաւուրս Կոմիտաս կաթողիկոսի համահաւաքեալ», հրատարակություն Կարապետ եպիսկոպոսի, Էջմիածին, 1914։

58 Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, I, էջ 362։

ցությամբ, երկնային հավերժական ճշմարտության համար իրենց մաքառման և անձնազոհ նվիրումի գաղափարներով։

Կոմիտասը նվիրյալ կույսերին և մանավանդ Հռիփսիմեին ներկայացրել է մարմնական չքնաղ գեղեցկությամբ, որին սիրահարվում են ոչ միայն մարդիկ, այլև հրեշտակները.

Գեղեցկութիւնք մարմնաւոր պայծառութեան ձերոյ
Յիմարեցոյց զԹագաւորն և պակեան հեթանոսք.
Ի գեղ սքանչելի աստուածատուր կուսանացն՝
Տարփացեալ զուարթունք ընդ մարդկան տօնիցին։

Այդ գեղեցկության համար կռիվ է սկսվում հավատավոր կույսի և հեթանոս Թագավորի միջև։ Բոլոր կույսերը միաբան իբրև ռազմիկներ դուրս են գալիս հեթանոս կռովի տղամարդկանց բազմության դեմ և իրենց հավատով զինված՝ հաղթում նրանց.

Թուլացան կորովիք հաստաձիգ աղեղանց,
Եւ տկար կանայքն վառեցան զինու.
Թագաւորն պերճացեալ զօրութեամբ և փառօք՝
Ի մանուկ ի կուսէն պարտեալ ամաչէր։

Այդ հաղթության շնորհիվ կույսերն արժանանում են երկնային պսակի, դառնում փրկության զոհեր և երկնում են քրիստոնյա Հայաստանը։

«Անձինք նուիրեալքը» իր շեշտված քնարականությամբ, գեղարվեստական ձևով ու պատկերներով հայ հոգևոր բանաստեղծության ընտիր նմուշներից է և տակավին VII դ. նշանավորում է հայ բանաստեղծության զարգացման մի նոր ու բարձր մակարդակ։

Հայ բանաստեղծությունը, սակայն, միայն հոգևոր թեմաների վրա չի զարգանում։ Մովսես Կաղանկատվացու «Աղվանից պատմությամբ» ավանդվել է VII դ. մի աշխարհիկ բանաստեղծություն՝ գրված Դավթակ Քերթող ճարտասան բանաստեղծի կողմից։ Բանաստեղծությունը կոչվում է «Ողբք ի մահն Ջևանշէրի մեծի իշխանին»՝ գրված Աղվանքի Ջևանշեր իշխանի՝ իր բարերարյալներից մեկի կողմից դավադրաբար պարտեզում սպանվելու առիթով[59]։

Դավթակի «Ողբը» գրված է հունական ճարտասանական արվեստի կանոններով, սկզբնամասում նույնիսկ հունական դիցաբանությունից վերցրած համեմատություններով՝ բաղկացած հայկական այբուբենի տառերով սկսվող մեծ մասամբ քառատող տներից։ Այն բնույթով դամբանական ողբ է, ուր սկզբում սպանվածի գովքն է արվում, ապա պատմվում է եղերական իրադարձությունը, որին հաջորդում է մարդասպանի հասցեին ուղղված ազդու անեծքների շարքը, իսկ վերջում՝ հանգուցյալից հետո մնացողների՝ հարազատների ու ժողովրդի անմխիթար վիճակը, աշխարհի փառքի և կյանքի ունայնությունը.

Գլորեցաւ վէմն կենդանի և հզօր,
Եւ պարիսպն ամրութեան խորտակեցաւ.
Աշտարակն բանաւոր տապալեցաւ,
Եւ ցանկն շինութեան խրամատեալ քակեցաւ։

59 «Պատմութիւն Աղուանից արարեալ Մովսիսի Կաղանկատուացւոյ», ի լոյս ընծայեաց Կ. Վ. Շահնազարեան, Փարիզ, 1860, Ա հատ., էջ 354 և հտն.։

*Ահա թե փոխաբերության ինչ շարքով է անձնավորել Դավթակը Ջևանշեր իշխանի կորստի ահագնությունը․*

*Կամ՝ ահա եղեռնագործին ուղղված անեծքներից մեկը․*

*Ձեռն որ ձգեցաւ ի սպանանել զտէրն,*
*Եւ ոտք որ կոխեցին զհրաշալի պատկերն,*
*Ուրկածին ախտիւն եռացմամբ փօսացեալ*
*Ցաւեսցին ի նա ցեցք չարակեղ խոցոտմամբ։*

*Դավթակի «Ողբը» գրված է բանաստեղծական զգացումով, քնարական տխուր, երբեմն բուռն զեղումներով, պատկերավոր կենդանի ոճով, բովանդակությանը համապատասխանող տաղաչափական ձևերի օգտագործմամբ*[60]։

*Դավթակի «Ողբը» Կոմիտասի «Անձինք նուիրեալքի» հետ միասին մի կողմից վկայում են հայ հոգևոր ու աշխարհիկ բանաստեղծության վերելքը VII դարում, մյուս կողմից՝ իրենց մեջ արծարծած մարդկային փառքի ու կյանքի ունայնության մոտիվներով պատմականորեն հիմք են դնում աշխարհի ունայնության երգի, որը հետագայում կարևոր տեղ է գրավում ուշ միջնադարյան հայ քնարերգության մեջ։*

## 7. ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ VII—VIII ԴԱՐԵՐՈՒՄ

*V դարի պատմագրության բուռն զարգացմանը VI դարում հաջորդում է պատմագրական երկերի իսպառ բացակայության մի ժամանակաշրջան։ VI դարն, առհասարակ, գրականության զարգացման առումով շատ բանով մնում է մութ ու անորոշ։ Ղազար Փարպեցու պատմությունից հետո միակ նշանավոր պատմագրական երկը, որ գրվել է VII դ. երկրորդ կեսին՝ Սեբեոսի պատմությունն է*[61]։ *Թե ով է եղել այդ պատմության հեղինակը՝ ստույգ հայտնի չէ։ Միակ հավաստի վկայությունը, որ գտնում ենք այդ գրքում, այն է, որ դրա հեղինակը եղել է պարսից Խոսրով (Ապրուեզ) արքայի (590—628) արքունիքում, Զինաստանի դեսպանից լսել նրա երկրում պատմվող Մամիկի ու Կոնակի զրույցը, և իր նկարագրած VII դ. պատմական դեպքերի մեծ մասի ժամանակակիցն է*[62]։

*Սեբեոսի պատմությունը, ըստ վերջին հրատարակության, բաղկացած է 52 գլխից, որոնցից առաջին վեցը (Ա-Զ), սկսած Հայկի և Բելի առասպելից մինչև Արշակունյաց հարստության անկումը Հայաստանում, ըստ որոշ բանա-*

---

60 *Տե՛ս Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, I, էջ 373։*

61 *Սեբեոսի Պատմությունն ունեցել է մի քանի հրատարակություն, որոնցից լավագույնները երկուսն են. մեկը՝ Ստ. Մալխասյանցի «Սեբէոսի եպիսկոպոսի պատմութիւն», բաղդատութեամբ ձեռագրաց, հանդերձ առաջաբանիւ և ծանոթութեամբ, Երևան, 1939. մյուսը՝ Գ. Աբգարյանի «Պատմութիւն Սեբեոսի», Երևան, 1979. քննական-բաղդատական բնագիրն է, ընդարձակ և մանրակրկիտ ծանոթություններով, առաջաբանով, ուսումնասիրություններով և հավելվածներով։*

62 *Բանասիրության մեջ Սեբեոսի պատմության հեղինակին նույնացրել են 646 թ. Դվինի ժողովին մասնակցած Բագրատունյաց Սեբեոս եպիսկոպոսի հետ։ Սակայն Գ. Աբգարյանն իր «Սեբեոսի պատմությունը» և «Անանունի առեղծվածը» գրքում (Երևան, 1965) և հետագա այլ ուսումնասիրություններում (տե՛ս նրա «Պատմութիւն Սեբէոսի», հավելված Ա, էջ 371 և հտն.) ցույց է տալիս, որ Սեբեոսի պատմությունը հին ձեռագրերում եղել է անհեղինակ և միայն XIX դարի առաջին կեսին բանասեր Հովհ. Շահխաթունյանն է ինչ-ինչ հիմունքներով այն վերագրել Սեբեոս եպիսկոպոսին, որ և հետագայում ընդունվել է հայագիտության մեջ։*

*սերների պատկանում է ոչ թե Սեբեոսի պատմության հեղինակին, այլ նրանից դարեր հետո ապրած մեկ այլ անանուն պատմիչի, որ հետագայում կցվել է Սեբեոսի երկին և վերագրվել նրան[63]։ Պատմության մնացած 46 գլուխներում, մանավանդ «Մատեան ժամանակեան», այսինքն՝ ժամանակակից պատմություն-կոչված մասում մանրամասն շարադրված են VI—VII դդ. Հայաստանում և հարևան երկրներում կատարված պատմական նշանավոր իրադարձությունները։ Հարևան մեծ պետությունների ենթակա հիշյալ ժամանակաշրջանի Հայաստանի պատմությունը Սեբեոսի երկում ներկայացված է այդ նույն տերությունների՝ Սասանյան Իրանի, Բյուզանդիայի, ապա և արաբների ռազմական-քաղաքական փոխհարաբերությունների պատմության լայն տեսադաշտի վրա, որի շնորհիվ այն ձեռք է բերում կարևոր սկզբնաղբյուրի արժեք ոչ միայն Հայաստանի, այլև VI—VII դդ. Առաջավոր Ասիայի պատմության համար ընդհանրապես։ Բավական է թեկուզ նշել, որ Սեբեոսի պատմության մեջ արձագանք են գտել համաշխարհային պատմական նշանակություն ունեցած այնպիսի իրադարձություններ, որպիսիք են՝ Երուսաղեմի գրավումը պարսիկների կողմից (614), Խոսրով Ապրուեզի և Հերակլ կայսեր (610—641) միջև մղված պարսկաբյուզանդական պատերազմները, արաբների պատմական ասպարեզ իջնելն ու առաջին արշավանքները, Սասանյան հարստության անկումը և այլն[64]։*

*Իր այս ընդհանուր պատմագիտական արժեքից բացի, Սեբեոսի երկն առանձնապես կարևոր է VI—VII դդ. հայոց պատմության համար, իբրև նկարագրվող դեպքերին մերձավոր ժամանակակցի և ականատեսների հաղորդումների վրա շարադրված առաջնակարգ սկզբնաղբյուր։ Այնտեղ պատմական ստույգ շատ փաստերի հիման վրա ներկայացված է Հայաստանի քաղաքական, սոցիալ-տնտեսական, իրավական վիճակը, երկու մեծ տերությունների՝ Իրանի և Բյուզանդիայի, հետագայում նաև արաբների հետ ունեցած փոխհարաբերությունները, վերջիններիս վերաբերմունքը հայերի նկատմամբ։ Ուշագրավ է Մորիկ կայսեր (582—602) ամբաստանագիրը հայերի մասին, ուղղված պարսից թագավորին՝ հայ իշխանների և զորքի ուժերը ջլատելու, նենգորեն հայրենի երկրից հեռացնելու և հեռավոր երկրներում իրենց թշնամիների դեմ կռվի հանելու ու ոչնչացնելու մասին։ Նույնքան ուշագրավ է բյուզանդական կայսրերի կողմից քաղկեդոնականությունը հայերին պարտադրելու քաղաքականու-*

63 *Սեբեոսի պատմության հիշյալ հատվածի՝ Անանուն հեղինակին պատկանելու վարկածն առաջին անգամ հայագիտության մեջ արծարծել է Ք. Պատկանյանը՝ 1862 թ., որն ունեցել է իր բազմաթիվ հետևորդները։ Եղել են նաև Անանունի հատվածը Սեբեոսի պատմության հետ նույնացնող բանասերներ, որոնցից վերջինն է Ստ. Մալխասյանցը (տե՛ս նրա «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», Երևան, 1939, էջ Ե—ՁԱ, Անանունի խնդրի կապակցությամբ եղած կարծիքների մասին անհրաժեշտ տեղեկություններով)։ Գ. Աբգարյանը կրկին վերաքննելով այդ խնդիրը, բանասիրական նոր տվյալներով ու փաստարկներով հաստատում է Ք. Պատկանյանի տեսակետը և գտնում, որ հատվածի Անանուն հեղինակը, հավանաբար, ապրել է XI—XII դարերում և այդ հատվածը հետագայում է միակցվել Սեբեոսի պատմությանը (տե՛ս Գ. Աբգարյան, «Սեբեոսի պատմությունը» և Անանունի առեղծվածը, էջ 30—133, նաև՝ «Պատմութիւն Սեբէոսի», աշխատասիրությամբ Գ. Աբգարյանի, Հավելված Բ, էջ 386—390)։ Բայց ուշագրավն այն է, որ Գ. Աբգարյանն իր այդ կազմած Սեբեոսի պատմության քննական-բաղդատական բնագրում Անանունի հատվածը դարձյալ հրատարակել է Սեբեոսի պատմության հետ, իբրև մեկ ամբողջություն, պատմությունը նույնպես թողել է իր իսկ հերքած Սեբեոսի անվամբ, լայն տարածում և ավանդության արժեք ստացած բնագրից ու հեղինակի անունից չշեղվելու համար։*

64 *Տե՛ս «Պատմութիւն Սեբէոսի», աշխատասիրությամբ Գ. Վ. Աբգարյանի, էջ 5։*

թյունը, մասնավորապես Մորիկ կայսեր՝ Ավանում հիմնել տված հակաթոռ քաղկեդոնական կաթողիկոսության, կամ Կոստանդնի (642—668) մեծ բանակով Հայաստան մտնելու ու Ներսես կաթողիկոսին Դվինում բռնությամբ Քաղկեդոնի ժողովն ընդունել տալու փաստերը։

Հայկական ուժերը ջլատելու, հայերին բարոյալքելու բյուզանդապարսկական քաղաքականության դեմ իրենց ուժերն են համախմբում, մաքառում կամ դիվանագիտական խոհուն քաղաքականություն վարում հայ ազնվականության հեռատես և շրջահայաց ներկայացուցիչները։ Նրանցից են Թեոդորոս Ռշտունին և Սմբատ Բագրատունին, որոնք Սեբեոսի պատմության մեջ հանդես են բերված գեղարվեստական-վիպական գծերով և տպավորիչ մանրամասներով։ Այստեղ տեղ է գտել նաև «Պարսից պատերազմ» ցիկլից Մուշեղի մասին վիպական պատումը՝ պարսից Խոսրովի հետ զուգակցված, որ փոխարինել է հին վեպի հայոց Պապ թագավորին։ Սեբեոսի պատմության մեջ Մուշեղի պատումը հին վեպի նորոգված տարբերակն է, VII դ. պատմական անցուդարձերից խիստ ազդված[65]։

Ղևոնդ պատմագիր—Հայաստանում արաբական տիրապետության առաջին մեկուկես հարյուրամյակի՝ VII—VIII դդ. պատմիչն է Ղևոնդը։ Նրա մասին կենսագրական տվյալներ չեն պահպանվել։ Հայտնի է միայն, որ եղել է հոգևորական՝ վարդապետ, իր Պատմությունը[66] գրել է իշխան Շապուհ Բագրատունու հրամանով, ապրել է VIII դարում, որովհետև նրա նկարագրած պատմական անցուդարձերը հասնում են մինչև 788 թվականը, և Պատմության վերջին մասերը գրել է իբրև իր նկարագրած դեպքերի ժամանակակից։

Ղևոնդի Պատմության առաջին երեք գլուխներում պատմվում է առաջին երեք խալիֆների օրոք Պաղեստինում, Ասորիքում, Իրանում, ինչպես նաև Հայաստանում կատարված արաբական արշավանքների, Դվինի գրավման ու ավերման, Թեոդորոս Ռշտունու՝ արաբների դեմ մղած կռիվների մասին։ Այնուհետև Ղևոնդը ներկայացնում է արաբական գերիշխանության տակ գտնըվող Հայաստանի վիճակը, սկսած Մուավիայի խալիֆայությունից (661—680) մինչև Հարուն-ալ-Ռաշիդի (786—809) տիրապետության առաջին տարիները, մեկառմեկ հիշատակում արաբ ամիրապետներին՝ իրենց իշխանության տարիներով։ Այստեղ նկարագրվում են այն ավերածությունները, որ գործել են Հայաստանում մի կողմից՝ արաբներն ու հույները, մյուս կողմից՝ խազարները, ապա նաև արաբների հարկային ծանր քաղաքականությունը և դրանց դեմ բորբոքված ժողովրդական ապստամբությունները։ Ղևոնդի երկն արժանահավատ և շատ կարևոր աղբյուր է մասնավորապես VIII դ. Հայաստանում արաբների գործած խժդժությունների, սոցիալական կեղեքումների, դրանց դեմ հայ նախարարների կազմակերպած դիմադրության ու ապստամբական կռիվների վերաբերյալ, որ Ղևոնդը պատկերել է սրտի կսկիծով ու ցավով, պատմական իրականության խոր զգացողությամբ։ Ղևոնդն իբրև պատմիչ լավ է ըմբռնել արաբ տիրապետողների՝ հայ ազնվականության զանգվածային բնաջնջման քաղաքականության իմաստը, որ վարում էին տակավին նախորդ դարերում բյուզանդական կայսրերը։ Վերջիններիս փոխարինած արաբ խալիֆաները այդ քաղաքականությանն են ձեռնարկում արդեն VIII դ. սկզբից։ Ղևոնդը Վլիթ

---

65 Տե՛ս Մ. Աբեղյան. Հայոց հին գրականության պատմություն, I, էջ 397։

66 «Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց», ՍՊԲ, 1887։

(Վալիդ Ա, 705—715 թթ.) ամիրապետին վերագրած հետևյալ մտքերի ու նպատակադրման մեջ բացահայտում է այդ քաղաքականության բուն իմաստը. «Նա (Վլիթը) իր իշխանության առաջին տարում մտադիր էր վերացնել Հայոց աշխարհից նախարարական տոհմերը... որովհետև, ասում էր նա, միշտ արգելք և վտանգավոր են եղել մեր իշխանության համար»[67]։ Հայերի դիմադրությունը կոտրելու, երկիրն իսպառ նվաճելու և ստրկացնելու քաղաքական այդ թելադրանքով էր պատճառաբանված արաբների կողմից Նախճավանի և Խրամի եկեղեցիներում հայ նախարարների ողջակիզումը կամ Մուսե ամիրապետի օրոք՝ (785—786)՝ Խազմ ոստիկանի կողմից Դվինում հայ նախարարների կոտորածը, որ սրտակեղեք ցավով նկարագրում է Ղևոնդը։ Դրան ավելացրած նաև այն անհռելի ծանր հարկերը, որ դնում էին արաբները հայերի վրա, ծայր աղքատության ու թշվառության հասցնելով Հայոց աշխարհի բնակչությանը, երբ «ոչ ոք իր ունեցվածքի տերը չէր», և «մնացել էին իրենց գույքից զուրկ, մերկ, բոբիկ և սովամահ»[68]։

Պատմիչը հանգամանալից պատմում է, որ այս անլուր բռնությունների և տնտեսական-սոցիալական կեղեքումների դեմ դիմադրական և անհավասար ապստամբական կռվի են ելնում հայ ազնվականությունն ու ժողովուրդը՝ «լավ համարելով քաջությամբ մեռնել, քան կրել օտարի լուծը»[69]։

Ղևոնդի նկարագրած հայոց պատմության այս ծանր ժամանակաշրջանի հետ է առնչվում Վահան Գողթնացու վկայաբանությունը։ Արաբների գործադրած քաղաքական բռնություններին ու սոցիալական կեղեքումներին ուղեկցել է նաև բռնությունը խղճի ազատության նկատմամբ։ Նոր բարձրացող և արաբական արշավանքների միջոցով արագ տարածվող իսլամը քրիստոնյաներին հաճախ պարտադրվում էր բռնությամբ, պատճառելով նահատակության բազմաթիվ դեպքեր։ Դրանցից են Ղևոնդի պատմության մեջ նկարագրված Համազասպ և Սահակ Արծրունի եղբայրների՝ չարչարանքով սպանությունը Դվինում[70]։ Հավատի ու խղճի համար կատարվող այս նահատակությունները պարարտ հող են հանդիսացել արաբական տիրապետության շրջանում վկայաբանական գրականության զարգացման համար։ Հիշյալ Համազասպ և Սահակ Արծրունիների մասին հորինվել է նաև առանձին վկայաբանություն («Վկայաբանութիւն սրբոց իշխանացն Համազասպայ և Սահակայ նախարարացն Հայոց ի տանէ Արծրունեաց»)[71]։ Նման վկայաբանություններից է նաև Վահան Գողթնացու մասին եղած պատումը, որ մեզ է հասել ձեռագրական բազմաթիվ օրինակներով և տարբեր վերամշակումներով, որոնցից տպագրվել է երկու խմբագրություն. մեկը կոչվում է «Ողբք վասն չարեացն աշխարհիս Հայոց և վկայաբանութիւն սրբոյն Վահանի Գողթնացւոյ», մյուսը՝ «Պատմութիւն անցից ի հարաւային ազգէ ի վերայ Հայոց և վկայաբանութիւն սրբոյն Վահանայ որդւոյ Խոսրովի Գողթան տեառն»[72]։

Այդ վկայաբանության հեղինակն է Երաշխավորի վանքի կրոնավոր կամ վանահայր Արտավազդը, անձամբ ծանոթ Վահան Գողթնացուն, որին նա սիրով

67 «Պատմութիւն Ղևոնդեայ...», էջ 31։
68 Նույն տեղում, էջ 168։
69 Նույն տեղում, էջ 149։
70 Նույն տեղում, էջ 151—152։
71 Տե՛ս «Սոփերք Հայկականք», ԺԹ, Վենետիկ, 1854, էջ 61—80։
72 Նույն տեղում, էջ 61—91։

ընդունել և հովանավորել է իր վանքում նրա հուսահատ թափառումների ժամանակ[73]։ Վկայաբանության հեղինակի անձամբ ծանոթությունն իր հերոսին և նկարագրվող դեպքերին ժամանակակից լինելը պատմական առանձին կարևորություն և արժեք են հաղորդում այդ վկայաբանությանը։

Վերջինս սկսվում է արաբական բռնությունների մասին մի դառնագին ողբով, որին հաջորդում է հայ նախարարների ու զորապետների բնաջնջումը արաբների կողմից, Նախճավանի և Խրամի եկեղեցիներում նրանց ողջակիզումը, ապա և նրանց ընտանիքների անդամների գերեվարումը Դամասկոս։ Այդ գերի տարված երեխաներից մեկն է նաև Գողթնի տեր Խոսրով իշխանի որդի Վահանը, որին չորս տարեկան հասակում արաբները դարձնում են մահմեդական, անունը փոխում Վահագ։ Վահանն իր ընդունակության շնորհիվ լավ կրթություն է ստանում, խորամուխ լինում իսլամական վարդապետության մեջ, հասնում արքունի դիվանադպրի պաշտոնին։ Երբ Օմար խալիֆայի ժամանակ բոլոր գերված հայերին ազատ են արձակում, Վահանն իմանալով իր ազգությունը, խնդրում է իրեն ևս ազատել և թույլ տալ վերադառնալ հայրենիք։ Մեծ դժվարությունների և խոստումների գնով նրան հաջողվում է վերադառնալ Գողթն, ուր և սկսում է ապաշխարել իր ուրացության համար և իրեն համարել քրիստոնյա։ Յուրայինները նրան ամուսնացնում են, բայց նրա մեջ զորանում է քրիստոնեական բարեպաշտության եռանդը, սկսում է հոգեկան ծանր ողբերգություն ապրել իր ծածուկ քրիստոնեության և ուրացության համար։ Ուզում է հեռանալ Կոստանդնուպոլիս, չի հաջողվում։ Արաբներն, իմանալով նրա մահմեդականությունից հրաժարվելը, սկսում են հալածել և հետապնդել նրան։ Յուրայինները, վախենալով այդ հետապնդումներից, լքում են նրան։ Վահանը Վաղարշապատում հանդիպում է կաթողիկոսին, վերջինս, ուրիշներին չվնասելու համար, խորհուրդ է տալիս նրան քաշվել անապատ և ապաշխարել։ Վահանը Շիրակի մի մենաստանում վեց ամիս ապաշխարում է, բայց կրոնավորներն իմանալով նրա ով լինելը, վախից հեռացնում են մենաստանից։ Գնում է մի այլ հեռավոր և սակավամարդ անապատ, շարունակում ճգնել ու աղոթել։

Վահանը հուսահատված այդ ամենից, վճռում է ամիրապետից խնդրել, որ թույլ տա բացահայտ պաշտելու քրիստոնեությունը։ Ճանապարհին նա այցելում է տարբեր վանքեր, այդ թվում նաև Արծկեի Երաշխավորի անապատը, հանդիպում նրա առաջնորդ Արտավազդին, սիրով ընդունվում նրանից։ Վերջապես նա հասնում է խալիֆայի նստավայրը՝ Ռուծափ, մեծ դժվարությամբ կարողանում խալիֆային հայտնել իր մտադրությունը։ Աշխատում են նրան տարբեր խոստումներով համոզել ետ կանգնելու իր մտադրությունից, բայց նա հաստատ է մնում իր որոշմանը և նահատակվում 737 թվականին։

Վահան Գողթնացու այս պատումը, որ հորինված է վիպական մանրամասներով ու վկայաբանական մոտիվներով, գեղարվեստորեն արտացոլել է Հայաստանի պատմական դաժան իրականությունը արաբական խալիֆայության տիրապետության շրջանում։ Վահան Գողթնացու կերպարը խտացնում է խղճի, համոզմունքի, գաղափարի ազատության համար մաքառող մտավոր մեծ կարողություններով օժտված անհատի ողբերգությունը։ Այդ ողբերգությունն ավելի է խորանում, երբ օտարից ստրկացած հայրենի հասարակության տարբեր ներ-

---

73 Հանգամանորեն տե՛ս Մ. Աբեղյան. Հայոց հին գրականության պատմություն, I, էջ 462—463։

կայացուցիչները երկյուղից խուսափում, խորշում են նրանից, նույնիսկ հալածում, զրկում նրան անգամ իր սեփական հայրենիքում տառապելու հնարավորությունից։ «Նա հալածվում է և իր խղճից, և արաբացոց տերությունից, և հայ հասարակությունից։ Նա ուզում է ապրել, մարդավարի ապրել իր հայրենիքում, իր սեփական համոզմունքով, բայց չի կարողանում»[74]։

Եվ նա զոհ է գնում այդ հոգեկաշկանդ իրականությանը։

---

74 Մ. Աբեղյան. *Հայոց հին գրականության պատմություն*, I, էջ 462։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ

# ԻՐԱՎՈՒՆՔ ԵՎ ԴԱՏԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ

## 1. ԻՐԱՎՈՒՆՔԻ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

*Ֆեոդալական արտադրական սեփականության և դասային հարաբերությունների զարգացումը, կյանքի նյութական պայմանների խոր փոփոխությունները Հայաստանում հիմք հանդիսացան իրավունքի և վերնաշենքային այլ հաստատությունների էական բարեշրջման համար՝ ձևավորվեց ֆեոդալական իրավունքը։ Այն կյանքի կոչվեց ֆեոդալական արտադրական ու հասարակական հարաբերությունները կարգավորելու և պաշտպանելու համար։ Քրիստոնեական կրոնի հաղթանակով տիրապետող աշխարհիկ իրավունքի կողքին երկրում ծնվեց եկեղեցական կանոնական իրավունքը։ Արդեն IV դարում կանոնական և աշխարհիկ իրավունքների գոյությունը Հայաստանում անժխտելի իրողություն էր։*

*Հայաստանի քաղաքական պայմանները միանգամայն անհավասար հնարավորություններ ստեղծեցին այդ իրավունքների գոյության և զարգացման համար։ Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև երկրի բաժանվածությունը, հայ պետականության անկումը, աշխարհիկ օրենսդրից՝ Հայոց արքայից, զրկված լինելը էապես խանգարեցին հայ պետական աշխարհիկ իրավունքի զարգացմանն ու հարատևմանը։ Մինչդեռ նույն քաղաքական պայմանները ընդհակառակը՝ խթան ծառայեցին կանոնական իրավունքի զարգացման համար։*

*Հայ կանոնական իրավունքի հիմնական աղբյուրն էր Հայոց Կանոնագիրքը*[1]*։ Քրիստոնեություն ընդունած ժողովուրդների կանոնական իրավունքի զարգացումը խարսխվեց Ս. Գրքի՝ Հին և Նոր կտակարանների, եկեղեցական ավանդույթների և առաքելական կանոնների վրա։*

*Դեռևս IV դարում հայ հոգևորականությունը, իր իրավական գործունեությունը հարմարեցնում էր երկրի քաղաքական, տնտեսական ու հասարակական պայմաններին, մշտապես հենվելով երկրի մարմնավոր տերերի վրա և պաշտպանելով նրանց շահերը։*

*Զարգացող կրոնական իրավունքն ընդունեց արտահայտության որոշակի ձևեր։ Կանոնական ակտերն ստանում էին պատվիրանների, սահմանումների, որոշումների, ծիսարանների, կանոնների կամ օրենքների ձև։ Անսովոր էր կանոնական ակտեր ընդունող իրավազոր մարմինների և անձանց շրջանը։ Այդպիսի իրավասությամբ օժտված էին ընդհանրական եկեղեցու տիեզերական, տեղական և ազգային ժողովները, նրանց երևելի առաջնորդները, որոնց ըն-*

---

1 *«Կանոնագիրք Հայոց», Ա, Երևան, 1964, Բ, Երևան, 1971, աշխատասիրությամբ Վ. Հակոբյանի։ Այսուհետև՝ ԿՀ, Ա կամ Բ գիրք, նշելով կանոնախմբի անունը և կանոնը։*

դունած կանոնախմբերը ճանաչվում և կիրառվում էին Հայաստանում, դիտվում իբրև հայ կանոնական իրավունքի աղբյուր և վավերագրվում նրա կանոնագրքում։ Պատահական չէ, որ «Կանոնագիրք Հայոց»-ում առաջին հերթին հաջորդաբար վավերագրվեցին «Առաքելականք», «Երկրորդ առաքելական (Կղեմես)» և «Հարանց հետեւողաց» կանոնախմբերը։ Ի դեպ, վերջինս հայտնի չէ մյուս ժողովուրդների կանոնական իրավունքին և ճանաչվում է իբրև հայկական միջավայրում ստեղծված կանոնախումբ[2]։

Ընդհանրական եկեղեցու իրավական սահմանումներից հայ եկեղեցին ընդունել և իր համար պարտադիր է ճանաչել երեք տիեզերական ժողովների՝ Նիկիայի (325), Կոստանդնուպոլսի (381) և Եփեսոսի (431), վեց արտաքին տեղական ժողովների՝ Անկյուրիայի—(314), Կեսարիայի, Նեոկեսարիայի (315), Լավոդիկիայի (365), Գանգրայի (340—370), Անտիոքի (341) և Սարդիկայի (344—347) կանոնախմբերն օրինականացվել են Հայոց կանոնագրքում և ունեցել են գործնական նշանակություն։

Հայոց եկեղեցին, հետևելով ընդհանրական եկեղեցու օրինակին, յուրացնում էր նաև քրիստոնեական աշխարհի երևելի ու հեղինակավոր, գլխավորապես՝ հունական եկեղեցու հայրերի անվամբ եղած կանոնները, այն հայրերի, որոնք գործել են մինչև Քաղկեդոնի ժողովը։

«Կանոնագիրք Հայոց»-ում վավերագրված են հայ կանոնական իրավունքի համար արժեքավոր կանոնախմբեր, որոնց թվում՝ Բարսեղ Կեսարացու (մահ. 379 թ.) և Կյուրեղ Աղեքսանդրացու (մահ. 444 թ.) վավերական կանոնախմբերը, ինչպես նաև Աթանաս Աղեքսանդրացուն (մահ. 373 թ.), Սևանտոս եպիսկոպոսին (ծննդյան և մահվան տարեթվերն անհայտ են), Եպիփանին (մահ. 403 թ.) և Գրիգոր Նազիանզացուն (մահ. 389 թ.) վերագրված անվավերական կանոնախմբերը։ Թեև նշված չորս հայրերին վերագրված կանոններն աղբյուրագիտական տեսակետից վավերական չեն, բայց քանի որ դրանք տեղ են գտել «Կանոնագիրք Հայոց»-ում ու գործել Հայաստանում, ուստի բարձրանում է դրանց նշանակությունն իբրև հայկական աղբյուրների։

Բարսեղ Կեսարացու անվամբ մեզ հասել է երկու կանոնախումբ՝ 51 և 272 կանոններով։ «Կանոնագիրք Հայոց»-ի Ա գրքում տեղ գտած «Կանոնք Բարսղի առ Ամփիլոքոս» կանոնախումբն ընդհանուր է մեր և օտար եկեղեցիների համար։ Սակայն նույն կանոնագրքի Բ գրքում տեղ է գտել նաև Բարսեղ Կեսարացուն վերագրված 272 կանոններից բաղկացած «Վասն պէս-պէս եւ բիւրապատիկ ախտից» կանոնախումբը, որպիսին հայտնի չէ մյուս ժողովուրդների կանոնական իրավունքին։ Վ. Հակոբյանի ծանրակշիռ հետազոտությունը համոզում է, որ այն ստեղծվել է հայկական միջավայրում և ունի հայկական ծագում[3]։ Պարզված է, որ այդ կանոնախումբը պարունակում է հայ իրավունքի տարբեր ճյուղերին վերաբերող հարյուրից ավելի կանոններ։

Հարկ է նշել, որ օտար աղբյուրների կողքին անգնահատելի է հայ ազգային-եկեղեցական կանոնախմբերի նշանակությունը հայ իրավունքի պատմության հետազոտման գործում։ Դրանք բաժանվում են. ա) ազգային-եկեղեցական ժողովների կողմից ընդունված կանոնախմբերի՝ Աշտիշատի (354), Շահապիվանի (447), Դվինի չորրորդ (648), Դվինի հինգերորդ (719), Պարտավի

---

2 Ն. Մելիք-Թանգյան: *Հայոց եկեղեցական իրավունքը*, Ա, Շուշի, 1903, էջ 480։

3 ԿՀ, Բ գիրք, տե՛ս Վ. Հակոբյանի *ներածականը*, էջ LXV—LXVIII:

(768), Աղվենի (V դ.) և բ) հայ հոգևոր առաջնորդների կանոնների։ Վերջիններիս մեջ դասվում են. «Հարանց հետևողաց», Թադէոս և Փիլիպպոս առաքյալներին վերագրված, Գրիգոր Լուսավորչի, Սահակ Պարթևի, ս. Ներսեսին վերագրված կանոնները։

Հայտնի է, որ Հայաստանում ազգային-եկեղեցական ժողովներին, սկսած IV դարի 50—60-ական թվականներից, մասնակցել են երկրի տերերը։ Այդ ժողովներն ի թիվս դավանական հարցերի, կարգավորում էին նաև ժամանակաշրջանի հուզող առանձին աշխարհիկ-իրավական հարաբերությունները։

Նշված օտար և ազգային կանոնախմբերը հնարավորություն են ընձեռում ուրվագծելու հայ ընտանեկան, քրեական, քաղաքացիական իրավունքների կարևոր ինստիտուտները, պատկերացում կազմելու այն մասին, թե ինչպես էր հայ եկեղեցին իրականացնում «գործակալութեան մեծի դատավորութեանն»[4] գործունեությունը, ինչպես թագավորության գոյության, նույնպես և պետականությունից զրկվելու ողջ շրջանում։

Նշված ազգային օտարածին կանոնախմբերը դարեր շարունակ իրենց գոյությունը պահպանեցին մեկուսի, մշտապես ոչնչացման և աղավաղման վտանգի պայմաններում։ Եվ ահա Հովհաննես Օձնեցի կաթողիկոսը (717—728) գիտական բարեխղճությամբ մեկ հավաքածուի մեջ ամբողջացրեց այդ կանոնախմբերը և ստեղծեց իրավաբանական պատմական մի կոթող՝ «Կանոնագիրք Հայոց» ժողովածուն, որն առաջին «Corpus juris canonici»-ին էր համաշխարհային պատմության մեջ, հարյուր տարի կանխելով Իսիդորոս Մերկատորի կանոնական ժողովածուն։

Օձնեցու ստեղծած Կանոնագիրքն ամփոփում էր 24 կանոնախումբ։ Սերունդները շարունակեցին Հովհաննես Օձնեցու գործը և արդեն X դարում կանոնախմբերի թիվը Հայոց կանոնագրքում հասցվում է 40-ի[5]։

Մեծ է եղել «Կանոնագիրք Հայոց»-ի քաղաքական դերն ու նշանակությունը հայ ժողովրդի կյանքում՝ հայ իրավունքի հետագա զարգացման համար։

Հայ իրավունքի, մասնավորապես ընտանեկան հարցերի ծիսարանն է «Մաշտոցը»։ Պատմական վկայությունների համաձայն հայոց ծիսարանն ստեղծվել է V դարում։ «Մաշտոցը» արդարացիորեն որակվել է իբրև «մի տեսակ եկեղեցական օրենսգիրք»[6]։ Միայն Մաշտոցյան մատենադարանում ձեռագիր Մաշտոցների թիվն անցնում է 700-ից, որոնք ընդօրինակված են X և հաջորդ դարերում։ Ցավոք, առ այսօր մենք չունենք նրա գիտական-քննական հրատարակությունը։ «Մաշտոցի» մի քանի տասնյակ հնագույն ձեռագրերի ուսումնասիրությունը հանգեցնում է այն եզրակացության, որ Հայոց կանոնագրքի նման այն կրել է նկատելի փոփոխություններ և ունի մի շարք խմբագրություններ։ Ծիսարան «Մաշտոցի» նշանն ու պսակն օրհնելու, ապաշխարանք նշանակելու ու վերացնելու և բազում այլ կանոններն անփոխարինելի արժեք են ներկայացնում հայ ընտանեկան, քրեական և ընդհանրապես կանոնական իրավունքի պատմության հետազոտման համար։

V և հաջորդ դարերի ամուսնական, քաղաքացիական և քրեական իրավահարաբերությունների մասին առանձին արժեքավոր նյութեր են պարունակում հայ եկեղեցու պաշտոնական գրությունների ժողովածու՝ «Գիրք թղթոցը», ինչ-

4 «Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութիւն Հայոց», Ի Վենետիկ, 1832, էջ 36։

5 Մանրամասն տե՛ս Վ. Հակոբյանի հետազոտությունը, ԿՀ, Բ գիրք, էջ VII—XVIII։

6 Վ. Բաստամյանց. Մխիթար Գոշի Դատաստանագիրք Հայոց, Վաղարշապատ, 1880, էջ 14։

պես և V—X դդ. պատմագրական, եկեղեցական բանավիճային և հրապարակախոսական գրականությունը, որոնք օժանդակ աղբյուր են հայ իրավունքի պատմության մշակման համար։

Պատմական վկայությունների համաձայն հայ թագավորներն իրականացրել են երկրի գերագույն օրենսդրի իրավասությունն, ընդունել են օրենքներ, հրամաններ, հրովարտակներ և այլ ակտեր, որոնցով կարգավորել են զանազան հասարակական հարաբերություններ։

Խորենացին մի առիթով նշում է, որ Հայոց Արշակ թագավորը երկրում «շատ բարեկարգություններ մտցրեց»[7]։

Հայ թագավորների օրենսդրական գործունեությունը հավաստում են նաև Ագաթանգեղոսը, Բուզանդը, Եզնիկ Կողբացին և ուրիշներ։ Ագաթանգեղոսը նշում է, որ Տրդատ Գ-ն հրամաններ ու հրովարտակներ էր ընդունում, ուղղված նոր կրոնի հավատացյալների, իսկ ապա՝ հեթանոսական աստվածներ երկրպագողների դեմ։ Բուզանդը, խոսելով Հայոց արքա Խոսրով Կոտակի թագավորության շրջանի մասին, նշում է, որ նրա ժամանակ Հայաստանում «ծաղկեալ էին իրաւունք և արդարութիւն»։ Արշակ Բ-ի առնչությամբ պատմիչը թվարկում է դատարանների իրավասության հանձնված մի շարք քաղաքացիական, քրեական, ընտանեկան վեճերի կամ գործերի տեսակները, ապա դժգոհությամբ ամփոփում է. «Դատ չկայր, և իրաւունք ումեք յարաքունուստ ոչ ելանէին»[8]։ Ուրեմն, Բուզանդի վկայություններից երևում է, որ Խոսրովի և Արշակի օրոք Հայաստանում գործում էին պետական օրենքներ, իսկ դատարանները հարկադրում էին հարգել ու գործադրել դրանք։

Պետական օրենքների գործողությունը Հայաստանում V դարում վկայում են Եզնիկ Կողբացին և Ղազար Փարպեցին։ Եզնիկն ասում է. «Ընդէ՞ր օրէնք ի թագաւորաց դնիցին, և սաստք ի յիշխանաց, և պատիժք ի դատաւորաց. ո՞չ ապաքէն վասն կարճելոյ չարեացն... Իսկ եթէ տեսանեմք՝ թէ թագաւորն զիւրոց օրինաց վրէժս պահանջէ, և պահանջմամբ վրիժուցն զվնասն կարճէ, և դատաւորն զգողն և զավազակն պրկէ և քերէ, վասն վնասակարութեանն ի միջոյ բառնալոյ»[9]։ Ուշադրության արժանի է նաև Փարպեցու այն վկայությունը, ուր նա տալիս է արքունիքի իրավական գործունեության նկարագիրը Վռամշապուհ Հայոց արքայի օրոք. «ասորի և յոյն գրով վճարէին յայնժամ զգործ թագաւորաց Հայոց, արքունի դպիրք զվճռոցն և զհրովարտակացն»[10]։

Բերված վկայությունների համաձայն IV դ. Հայաստանում զարգացած էր օրենսդրությունը, պետական օրենքներով կարգավորվում ու պաշտպանվում էին հասարակության անդամների բազմապիսի անձնական, գույքային, ամուսնական և այլ հարաբերությունները։

Անժխտելի փաստ է, որ հայ աշխարհիկ օրենքները գործել են նաև VI դ. բյուզանդական Հայաստանում, Հուստինիանոսի օրոք։ Այդ հանգամանքը հաստատվում է Հուստինիանոս կայսեր «Հայոց ժառանգական իրավունքի մասին» էդիկտով և 21-րդ նովելլայով։ Այդ են վկայում դրանցից քաղված հատկապես հետևյալ արտահայտությունները. «Հայոց աշխարհում գործեն լավ օրենքներ»,

7 Մովսես Խորենացի. աշխ. թարգմ., էջ 160—161։

8 «Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութիւն Հայոց», ի Վենետիկ, 1832, էջ 7, 106—107։

9 «Եզնկայ վարդապետի Կողբացւոյ Եղծ աղանդոց». Թիֆլիս, 1914, էջ 42—43։

10 «Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան». Թիֆլիս, 1907, էջ 27։

«Հայաստանում գործող օրենքները ոչնչով չտարբերվեն հռոմայեցիների օրենքներից», «Բոլորի վրա հավասարապես թող տարածվեն մեր օրենքները»։ Բերված քաղվածքները վկայում են, որ նվաճված Հայաստանում գործում էին հայկական օրենքներ։ Հուստինիանոսը չէր թաքցնում իր դիտավորությունները։ Նա ցանկանում էր բեկանել հայկական օրենքների գործողությունը ենթակա Հայաստանում. «Մենք ցանկանում ենք հայերի վրա ևս ամբողջությամբ տարածել մեր օրենքները», «որպեսզի նրանք ևս ամեն ինչում հետևեն հռոմեացիների օրենքներին», որպեսզի «նրանք կառավարվեն միայն այն օրենքներով, որոնք ընդունված են հռոմեացիների մոտ»[11]։

Ակնհայտ է, որ նշված ժամանակաշրջանում Հայաստանում գործում էին աշխարհիկ օրենքներ. գուցե և աշխարհիկ դատաստանագիրք։ Ամենայն հավանականությամբ, դա գիտության մեջ «Ասորական» կամ «Ասորահռոմեական» որակված դատաստանագիրքն էր, որը IV—VI դդ. հուշարձան է[12]։

Հայկական ձեռագրերում այդ Դատաստանագիրքը վերնագրված է. «Աւրէնք յաղթող թագաւորաց քրիստոնէից՝ Կոստանդինոսի, եւ Թէոդոսի եւ Լեւոնի թագաւորաց հռոմայեցւոց», իսկ ասորականում՝ «Օրենք ժողովրդոց որ հրամայված է հռոմայեցիների և ասորիների գործունեության համար»[13]։ Դիտելի է, որ այդ վերնագրերն արմատապես տարբեր են։ Ասորականում նշված են այն ժողովուրդները, որոնց համար ընդունվել է այն։ Հայկական վերնագրում և առանձին հոդվածներում նշված բյուզանդական երեք կայսրերի անունները (Կոստանդիանոս Մեծ՝ 306—337 թթ., Թեոդոս Բ՝ 408—450 թթ., Լևոն Ա՝ 454—474 թթ.) թելադրում են Դատաստանագիրքը կապել նրանց անվան ու ժամանակի հետ։ Տրամաբանական է կարծել, որ հայկական խմբագրությունը չէր ունենալու նշված խորագիրը, եթե Դատաստանագիրքն ընդունված լիներ ոչ թե IV—V դդ., այլ VII—VIII դդ. կամ ավելի ուշ դարերում։

Դատաստանագրքի հայկական խմբագրության օրինակներում բյուզանդական կայսրերին վերագրված հոդվածների թիվը խիստ աննշան է՝ ընդամենը ութ, որը բավարար հիմք չէր Դատաստանագրքի վերնագրում նշելու նրանց անունները։ Այս բացահայտ հակասությունը մտածելու տեղիք է տալիս։ Իրոք Կոստանդիանոսի անունով Դատաստանագիրքը բովանդակում է ընդամենը երեք հոդված (17, 42, 43), Լևոնի անունով՝ չորս (44, 45, 46 և 73), իսկ Թեոդոսի անունով՝ միայն մեկը՝ 53-րդ հոդվածը։ Եթե այս թվին ավելացվեն այն մի քանի հոդվածները, որոնք բերվում են առանց բյուզանդական կայսեր անունը հոդվածներում նշելու, բայց որոնք աղերսվում են Հուստինիանոսի հայտնի էդիկտի և 21-րդ նովելլայի հետ, կարող ենք արձանագրել, որ Դատաստանագրքի հայկական խմբագրությունն ունի բյուզանդական օրենսդրության շերտ, սակայն այդ շերտի տեսակարար կշիռը շատ փոքր է, եթե նկատի ունենանք, որ Դատաստանագիրքը բովանդակում է 152 հոդված։

Դատաստանագրքի հայկական խմբագրության մյուս հոդվածների քննական վերլուծությունը, դրանց համեմատումը հայ պատմիչների, հատկապես

---

11 Պրոկոպիոս Կեսարացի, աշխ. Հ. Բարթիկյանի, Երևան, 1967, էջ 300—302։

12 Տե՛ս Ս. Հ. Հովհաննիսյան. «Ասորական» կամ «Ասորահռոմեական» կոչված Դատաստանագրքի աղերսը հայ իրավունքի հետ, ՊԲՀ, 1970, № 2։ «Ասորական Դատաստանագիրք», լույս ընծայեց Ա. Ղլտճյան, Էջմիածին, 1917։ Հոդվածները բերվում են այս հրատարակությունից։

13 *K. Bruns und E. Sachau*, Syrisch-römisches Rechtsbuch aus dem fünften Jahrhundert, Leipzig, 1880;

Փավստոս Բուզանդի ասույթների և վաղ ֆեոդալական շրջանի հայ կանոնական իրավունքի նորմերի հետ հանգեցնում է այն կարծիքին, որ Դատաստանագիրքն իր ծանրակշիռ հիմքով ունի տեղական, հայկական ծագում։ Այն ունի երկու շերտ՝ նախաֆեոդալական (նախաքրիստոնեական) և վաղ ֆեոդալական (նոր կրոնի գաղափարախոսության որոշակի դրոշմով)։

Դատաստանագրքի առանձին հոդվածներով՝ ժառանգման, ծառա-աղախինների և նրանց տերերի, ամուսնության, ամուսնալուծության, ամուսինների գույքային հարաբերությունների նորմավորումն այնպիսին է, ինչպիսին մեզ հայտնի է Հայոց կանոնագրքից և օտար աղբյուրներից։ Այսպես, Դատաստանագրքի համաձայն ծնողների ունեցվածքի նկատմամբ դուստրը եղբոր հետ հավասար ժառանգման իրավունք ունի, մի կարգ, որ հայերի համար սահմանվել է Հուստինիանոսի 21-րդ նովելայում։ Կամ՝ Շահապիվանի կանոնների ուժով արգելված էր մոտիկ ազգականների ամուսնությունը մինչև երրորդ աստիճանը ներառյալ, նույնը՝ ըստ Դատաստանագրքի։

Այնուհետև Դատաստանագրքի հայկական խմբագրությունը և կանոնագիրքը չեն կարգավորում հոգևոր ազգակցության կապակցությամբ պսակն արգելելը, եկեղեցական պսակը դիտում են իբրև պարտադիր ձև, մինչդեռ Դատաստանագրքի ասորական խմբագրությունում բաց են թողնված պսակի եկեղեցական կարգին վերաբերող բառերը։ Վերջինիս պատճառն այն է, որ Բյուզանդիայում եկեղեցական պսակը պարտադիր ձև է հռչակվել Լևոն Զ-ի օրենքով միայն 893 թ.։ Այս կարևոր հանգամանքները ևս լրացուցիչ հավաստում են մեր Դատաստանագրքի հայկականացած լինելը։

«Աւրէնք յաղթող թագաւորացի» սահմանումները հարազատ են նաև հայոց պատմիչների հաղորդումներին։ Ըստ Բուզանդի, Արշակ Բ-ն երկկին էր (Օլիմպիա, Փառանձեմ)։ Դատաստանագրքի 12 և 74 հոդվածները՝ «այր ոք, եթե ունի Բ կին» արտահայտությամբ, հաստատում էն երկկնության իրավունքի գոյությունը Հայաստանում։ Արշակն այդպես վարվելով առաջնորդվում էր երկրում գործող օրենսդրությամբ։ Այդ իրավանորմը վավերագրված է Դատաստանագրքում։

Մանդակունին՝ «Վասն անօրէն թատերաց դիւականաց» ճառում հորդորում էր խուսափել անվայելուչ խաղերից և թատրոն գնալուց[14]։ Կարծես թե այդ պահանջի արձագանքն է Դատաստանագրքի 11-րդ հոդվածը, ուր ասված է՝ «Որդիք ընդ հաւր իւրեանց ոչ ունին իշխանութիւն մտանել ի թէատրոնն»։ Եզնիկ Կողբացին, խոսելով չար գործերի կամածին լինելու և մեղավորներին պատժելու մասին, այն իրավական միտքն է հայտնում, որ «Հայրը դաժան որդուն, որպես մահապարտի, դատավորներին է հանձնում»։ Թվում է, որ Եզնիկը նկատի է ունեցել Դատաստանագրքի 110-րդ հոդվածը, ուր ասված է՝ «Որ անարգի յորդոյ իւրոյ, կամ թէ այլ անօրինութիւն գործէն որդիքն, վասն անարգանացն իշխանութիւն ունի հայրն տանել զնոսա առաջի դատաւորի, իսկ վասն չար գործոյ զոր առ օտար մարդիկ, ոչ տայ նմա հրաման բամբասել զորդիս իւր առաջի դատաւորի»։ Կամ՝ Եզնիկն ասում է. «այլքն ամենեքեան զիւրաքանչիւր զանցան իւր զանարգանաց վրէժս պահանջեն՝ կամ անձամբ կամ իշխանօք»[15]։ Իսկ Դատաստանագրքի համաձայն՝ «Եթէ... ոչ ունի սպանեալն հայր

14 «Տեառն Յովհաննու Մանդակունւոյ Հայոց հայրապետի ճառք», ի Վենետիկ, 1836, էջ 125։

15 «Եզնըկայ վարդապետի Կողբացւոյ եղծ աղանդոց», Թիֆլիս, 1914, էջ 43։

կամ եղբայր կամ այլ մերձաւորս, խնդրել զարիւնն ոչ ունին իշխանութիւն ձեռամբ իւրեանց սպանանել, այլ տանել զնա առ դատաւորս, որք ունին իշխանութիւն խնդրել զվրեժ» (Հոդ. 105)։ Իսկ եթե կատարվել է այլ հանցանք, ստացվում է, որ անձամբ պատժելու իրավունք էր վերապահված։

Ուղղակի ապացույցներ չեն պահպանվել այն մասին, որ «Աւրէնք յաղթող թագաւորացն» եղել է վաղ ֆեոդալական Հայաստանի Դատաստանագիրքը։ Վերոհիշյալ փաստերը, սակայն, անուղղակիորեն հավաստում են այդ։ Ուշագրավ է նաև, որ Դատաստանագրքի և Հայոց կանոնագրքի նորմերը լրացնում են միմյանց, կազմելով մեկ միասնություն։ Եթե Դատաստանագիրքը նորմավորել է աշխարհականների աշխարհիկ-իրավաբանական բազմապիսի հարաբերությունները (բացառյալ կանոնական նորմերով կարգավորվող հարաբերություններից), ապա Կանոնագիրքը գլխավորապես նորմավորում էր կանոնաիրավական հարաբերությունները։

Սովորութական իրավունքի, որպես օժանդակ աղբյուրի, տեսակարար կշռի և նշանակության մասին մեր պատկերացումները սահմանափակ են։ Հավանաբար, դրա նշանակությունը մեծ է եղել հեթանոսական Հայաստանում, առավել սահմանափակ՝ ֆեոդալական շրջանում, քանզի սովորութական իրավունքի այն նորմերը, որոնք հակասում էին կանոնական իրավունքին, չէին կարող պահպանել իրենց գոյությունը։ Այսպես, արգելվեցին, հավանաբար, սովորութաիրավական ծագում ունեցող հարճությունը, մերձավոր ազգականի, երկու քույրերի, հարսի հետ տագոր ամուսնանալու անգիր իրավունքը, կնոջ ամլության պատճառով երկրորդ կին ունենալը և այլն։ Վերահաստատվեցին կամ պահպանվեցին՝ նշանի և հարսանյաց հանդեսի սովորութական ծեսերը, հարսանյաց տոնախմբությանը հրավիրվածների ընծայատար մասնակցությունը, վարձանքը (տուայրը), օժիտը (պռոյգը), ամուսինների բաժան գույքային իրավունքները և այլն։ Վերջիններիս սովորութաիրավական ծագումը հաստատված է «Աւրէնք յաղթող թագաւորացի» երկու հոդվածներում։ Այնտեղ կարդում ենք. «Յիւրաքանչիւր յաշխարհս ըստ սովորութեան բերին կանայք զպռոյգն և այրքն տան զվարձանս՝ առաւել կամ պակաս...» (Հոդվ. 45), իսկ 52 հոդվածն օրինականացնում էր ամուսնանալիս պռոյգի և տուայրի չափն առանց թղթին հանձնելու սովորութական սահմանելով՝ «Լինի այս ըստ նոմոսի (իմա՝ օրենքի), և ըստ սովորութեան երկրին»։

Իրավունքի օժանդակ աղբյուր են նաև հայ և օտար պատմիչների երկերը։ Հայ պատմիչներից Ագաթանգեղոսի, Բուզանդի, Խորենացու, Եղիշեի, Փարպեցու, Կաղանկատվացու և այլոց երկերը հետաքրքրական նյութեր են պարունակում առանձին հասարակական հարաբերությունների իրավական կարգավորման մասին։ Նույնը վերաբերում է ասորական, բյուզանդական և արաբական որոշ պատմիչների գործերին։

## 2. ԻՐԱՎՈՒՆՔԻ ԱՌԱՆՁԻՆ ՃՅՈՒՂԵՐԸ

Իրավունքի առանձին ճյուղերի ստորև բերվող բաժանումը պայմանական է։ Դարաշրջանի իրավունքը հասարակական հարաբերությունները նորմավորում էր ընդհանրապես, առանց առանձին ճյուղերի համակարգման, կամ՝ խառը ձևով։ Իրավահայտ աղբյուրների համապատասխան նորմերը համակարգելով

իրավունքի առանձին ճյուղեր են կազմում քաղաքացիական, ընտանեկան, քրեական և դատավարական իրավունքները[16]։

Քաղաքացիական իրավունք—Հայոց կանոնագրքի և «Աւրէնք յաղթող թագաւորացի» այն նորմերի համակցությունը, որով կարգավորում էին գույքային-հարաբերությունները, կազմում էր քաղաքացիական իրավունքը։ Քաղաքացիական իրավունքը կարգավորում և պաշտպանում էր արտադրության ու սպառման միջոցների, ինչպես նաև ծառա-աղախինների նկատմամբ սեփականատիրական հարաբերությունները։ Հասարակության անհավասար դասային ու գույքային դրությունն իր կնիքն էր դնում նրանց գույքային իրավունքների ծավալի ու ներգործության իրավական միջոցների վրա։

Քաղաքացիական հարաբերությունները հիմնականում կարգավորվում էին աշխարհիկ իրավունքի նորմերով և միայն մասամբ՝ կանոնական օրենսդրությամբ։ Կանոնագրքի հետազոտությունը համոզում է, որ աշխարհականների գույքային հարաբերությունների նորմավորումը չի եղել կանոնական իրավունքի խնդիրը։ Վերջինիս լոկ առանձին նորմերն էին կարգավորում այդ հարաբերությունները։ Մինչդեռ նրանք եկեղեցու և հոգևորականության սեփականության իրավունքները նորմավորում էին ջանասիրաբար (տե՛ս Անկյուրիայ՝ ԺՁ, Գանգրայի՝ Է, Ը, Անտիոքի՝ ԻԳ, ԻԴ, Սահակի՝ ԾԳ, ԾԴ, Դվինի 4-րդ ժողովի՝ Ը կանոնները և այլն)։

Քաղաքացիական իրավունքի սուբյեկտներ էին ամենքը, ծննդյան օրից, բայց իրենց քաղաքացիական իրավունքներն ու պարտականություններն իրականացնում էին հասնելով որոշակի տարիքի։ Լրիվ անգործունյա էին մանկահասակները՝ 1—8 տարեկան երեխաները և փոքրահասակները։ Սահմանափակ գործունյա էին ճանաչված 13—24 տարեկան աղջիկները և 15—24 տարեկան տղաները։

Քաղաքացիական լրիվ գործունակություն սկսվում էր 25 տարեկանից։

Չափահասները լինում էին լիիրավ, սահմանափակ իրավասությամբ և հիմնականում իրավազուրկ։ Լիիրավ սուբյեկտ էին իշխող դասակարգի բոլոր ներկայացուցիչները՝ թագավորը, իշխաններն ու նախարարները, քաղաքի ու գյուղի ազատները, եկեղեցին և հոգևոր դասի բոլոր անդամները։

Սահմանափակ իրավունքներ ունեին շահագործվող շինականները, կարճազատները՝ քաղաքացիական գործերում, անձնական և հատկապես անշարժ գույքի տնօրինման ժամանակ։

Հասարակության ամենաիրավազուրկ անդամներն էին ծառա-աղախինները, որոնք հաճախ հանդիսանում են առուծախի, նվիրատվության, պառյգի (օժիտի) և այլ պայմանագրերի առարկա։

Իրավահարաբերության հիմնական օբյեկտներն էին նյութական բարիքներն ու արժեքները, ժառանգման, առուծախի, նվիրաբերված ինչքը և ստացվածքը։ Երկրում լայնորեն տարածված էին որոշակի գումարի և կամ գույքի փոխատվությունը և գրավ դնելը։

Քաղաքացիական իրավահարաբերությունների ամենատարածված ձևերը զանազան գործարքներն էին, որոնք կնքվում էին կողմերի կամքով ու հա-

---

[16] *А. Г. Сукиасян,* Общественно-политический строй и право Армении в эпоху раннего феодализма (III—IX вв.), Ереван, 1963, стр. 451—494.

ճությամբ, գրավոր կամ բանավոր, բայց վկաների մասնակցությամբ։ Սահակ Պարթևի ԾԳ կանոնում ասված է. «Որք զմարդկան աւանդս կամ պարտս հոգան եւ աշխատութիւն կրեն, ըղձանալով թե ե՞րբ վճարիցեն, եւ թէ դէպ լինիցի փոքր ինչ ծախել, գիր առնեն եւ վկայս կացուցանեն, և երդումն...»։ Այդ առթիվ բազում ապացույցներ կան[17]։

«Աւրէնք յաղթող Թագաւորացը» պատշաճ կարևորություն է տալիս հայցային վաղեմությանը։ Դատաստանագիրքը սահմանում էր վաղեմության ժամկետներ, որոնց ընթացքում պարտավոր կողմը պետք է կատարեր պահանջը։ Եթե գնված ծառան փախչում էր, ապա գնորդը պարտավոր էր վեց ամսվա ընթացքում գտնել նրան և վերադարձնել նախկին տիրոջը, ետ ստանալով իր վճարածը։ Միամյա և քսանամյա վաղեմության ժամկետներ էր սահմանված գյուղը, տունը գրավով վաճառելիս՝ գնորդից այն ետ վերադարձնելու համար, 30-ամյա ժամկետ՝ պարտքը պարտապանից ետ պահանջելու համար և այլն։

Դարաշրջանի իրավունքի կենտրոնական առարկան մասնավոր սեփականությունն էր։ Օրենքի գերագույն նպատակն էր իրավական միջոցներով առավելագույն չափով պաշտպանել սեփականատիրոջ իրավազորությունը սեփականության և տիրապետման, օգտագործման և տնօրինման հարցերում։ Այդ իրավունքը վավերացնում և պաշտպանում էր նախարարների, իշխանների ու ազատների սեփականության արտադրության հիմնական միջոցները, հատկապես հողի, ինչպես նաև արտադրողների՝ ծառա-աղախինների նկատմամբ. Դատաստանագրքի ուժով նախարարը կամ իշխանը ձևականորեն իրավունք չուներ սպանելու ծառա-աղախիններին, բայց նրանց իրավունքները ոչնչով սահմանափակված չէին այդպիսիններին ցանկացած այլ պատժի ենթարկելու (29 հոդ.), վաճառելու և գնելու, գրավ դնելու խնդրում (22 հոդ.)։ Սեփականատերն իր ունեցվածքի նկատմամբ օժտված էր տիրապետման, օգտագործման և տնօրինման ոչնչով չսահմանափակված իրավազորությամբ։

Աղբյուրների համաձայն մասնավոր սեփականության իրավունքի օբյեկտ էին «ինչքը», «ստացուածը», «իրքը»։ Այդ տերմինները լայնորեն գործածված են Հայոց կանոնագրքում և «Աւրէնք յաղթող Թագաւորաց»-ում։ Նրանք բոլորն էլ արտահայտում են նյութական արժեքի հավաքական գաղափար[18]։ Ինչքը բաժանվում էր երկու տեսակի՝ շարժականի և անշարժի։ Ժառանգական սեփականությունը հայտնի էր «հայրենիք», «մայրենիք» (մորից ժառանգած), «պարգևականք» և «գանձագինք» (արծաթագինք) անուններով։ Այդ անունները հուշում էին սեփականության ծագման աղբյուրը կամ եղանակը։ Անշարժ ինչքի սեփականության իրավունքը զավակներին փոխանցվում էր զանազան փոր-

---

17 Եղիշե, Վարդանանց պատմությունը, Երևան, 1958, էջ 84, 202—203։ Եղիշեի՝ «Ջնջեց որդեգրության գիրը» արտահայտությունը վկայում է, որ նրա ժամանակ որդեգրության համար պատրաստվում էր գիր և այն կնքվում մատանու վրա փորագրված կնիքով՝ իբրև ստորագրություն։ Ի դեպ, որդեգրման գրավոր կարգը սահմանված էր նաև «Աւրէնք յաղթող Թագաւորացի» 99-րդ հոդվածով, ուր մասնավորապես ասված է. «Հարկ է առաջի դատաւորին տալ զորդեգիրն գրով և նորին գիտությամբ»։

18 Տե՛ս Եղիշե, նույն տեղում, էջ 78, էջ 457։ Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934, С. Т. Еремян, Опыт периодизации истории Армении эпохи феодализма, «Вопросы истории», 1951, № 7. Ս. Հ. Հովհաննիսյան, Մայրենիք սեփականության իրավունքը ավատական Հայաստանում, «Լրաբեր հաս. գիտ.», 1970, № 8։

ծարքների միջոցով՝ ըստ օրենքի և ըստ կտակի ժառանգման, նվիրատվության և այլ իրավական եղանակներով։

Դարաշրջանի կանոնական և աշխարհիկ օրենսդրությունները հատուկ ուշադրություն են նվիրել սեփականության իրավունքի պաշտպանությանը։ Հայոց կանոնագրքում տասնյակ նորմեր են նվիրված եկեղեցու և հոգևորականների ինչքային իրավունքների պաշտպանությանը։ Եկեղեցական ինչքը օտարելի չէր։

Գանգրայի ժողովը (կան. Է, Ը) նզովում էր եկեղեցու ունեցվածքի դեմ ոտնձգություն անող աշխարհականներին և հոգևորականներին։ Այլ ժողովների կանոնները պահանջում էին հոգևորականների (եպիսկոպոսների, քահանաների և այլոց) ինչքը պարզորոշ սահմանազատել եկեղեցու սեփականությունից՝ ամեն կարգի չարաշահումներից ու թյուրիմացություններից զերծ մնալու համար։ Եկեղեցական ինչքը հափշտակողները կամ վաճառողները ենթակա էին դատ ու դատաստանի։

Օրենքը ծայր աստիճան անողոք էր ազատի սեփականության դեմ հանցավոր ոտնձգություն (գողություն) թույլ տվողների նկատմամբ։

«Աւրէնք յաղթող թագաւորացը» կարգավորում էր պարտավորությունների հետևյալ առանձին տեսակները. առուծախը, փոխառությունը, նվիրատվությունը, վարձակալությունը, պահատվությունը, վնաս պատճառելուց ծագող պարտավորությունները։

Մանրամասն մշակված էին առուծախի կանոնները, քանի որ առուծախի առարկա կարող էր լինել ցանկացած շարժական ու անշարժ ինչքը։

Ի տարբերություն այլ պարտավորությունների, Դատաստանագիրքն առավել հանգամանորեն կարգավորում էր փոխատվության պայմանները։

Այդ կարգի հոդվածների մեծ մասում խոսվում է դրամը վաշխով (տոկոսով կամ շահով) տալու մասին, ըստ որում առաջին հերթին նկատի են առնվում վաշխառուների շահերը։ Վաշխի նվազագույն և առավելագույն չափը Դատաստանագրքում սահմանված չէ և դրանով լայն ասպարեզ էր բացվում վաշխառուի կամայականության համար։

Փոխառուի պարտքի վերադարձումը վաշխով ապահովվում էր նյութական զանազան արժեքների գրավով և գրավականով, երրորդ անձի երաշխավորությամբ։ Գրավի առարկա էր դառնում փոխառու պարտապանի ակնեղենը, ոսկին և արծաթը, տունը, դրախտը (այգին, պարտեզը), հողը, անասունը և այլն։ Պայմանագիրը կնքվում էր գրավոր, որով կողմերը սահմանում էին կողմերի իրավունքներն ու պարտականությունները, մասնավորապես, պարտքի և վաշխի վերադարձման ու վճարման պայմանները, կարգը և ժամկետները, որոնց խախտումը սովորաբար, պարտապանի համար առաջացնում էր ծանր ու նյութաիրավական հետևանքներ։ Պարտատերը կարող էր վաճառել իր մոտ գրավ դրված ինչքը (Դատաստանագիրք, հոդվ. 131)։

Փոխառության պայմանագրի ապահովման եղանակ էր նաև երրորդ անձի երաշխավորությունը։ Նա պարտականություն էր ստանձնում վերադարձնելու պարտքը, եթե պարտապանը դրժի պարտավորության կատարումը (Դատաստանագիրք, հոդվ. 135)։

Փոխառության պայմանագրի առավել էական պայմաններից էր փոխառված գումարի և վաշխի վերադարձման ժամկետի սահմանումը, որտեղ առավելապես իր կամքը թելադրողի դերում հանդես էր գալիս փոխատու-վաշխառուն։

Պարտապանից վաշխը կարող է գանձվել գրամով, եթե գրավ է դրվել հողը, այգին՝ նրանց մուտքից, եթե անասուն է՝ նրանց կիթը և ծինը, իսկ եթե գրավի առարկան աղախինն է՝ նրա աշխատանքով գոյացած վաստակից։

Դատաստանագիրքը ժառանգման իրավունքին նվիրում է մի քանի տասնյակ հոդվածներ, մի հանգամանք, որն արդեն իսկ ցույց է տալիս, թե որչափ մեծ նշանակություն էր տրվում սեփականության իրավունքի փոխանցման այս կարգին։

Մահացածի սեփականությունը ժառանգներին կարող էր փոխանցվել երկու եղանակով. առանց կտակի՝ օրենքի ուժով և կտակով։

Առանց կտակի ժառանգման իրավունք ունեին առաջին հերթին մահացածի հայրական գծով ամենամերձավոր ազգականները՝ ծնողները, զավակները (տղա, աղջիկ)։ Զավակներից նախապատվությունը տրվում էր արու որդիներին։ Անզավակ հանգուցյալի ինչքը ժառանգում էին մերձավոր ազգականները։ Դատաստանագրքում ասված է նաև՝ «Իսկ եթէ մերձաւորն ազգն հատեալ է, որ է հայրենին, կանանց ազգն յայնմ հետէ մերձենան եւ այսպէս լինի»։

Կանացի գծով ժառանգելու իրավունքը համապատասխանում է Հուստինիանոսի «Հայոց ժառանգական իրավունքի մասին» էդիկտի 21-րդ նովելային։

Անհրաժեշտ է սակայն, նկատել այն կարևոր հանգամանքը, որ այս նորամուծությունը վերաբերում էր միայն առանց կտակի ժառանգմանը, այսինքն՝ ժառանգական ունեցվածքի հետմահու փոխանցման միայն մի եղանակին, այն չէր տարածվում երկրորդ եղանակի՝ կտակի վրա։ Այստեղ կտակարարն ազատ էր, նա կարող էր իր գույքը կտակով փոխանցել իր դուստրին և նրա զավակներին, եթե հայրը չուներ արու զավակ։ Այդ են հաստատում նաև հայ պատմիչները։ Այսպես, Խորենացին վկայում է, որ Գնել Արշակունին իր մոր պապից՝ Գնել Գնունուց, ստացել էր Շահապիվանը, իսկ Սահակ Պարթևն իր բոլոր կալվածքներն ու ունեցվածքը տվեց ու հաստատեց իր միակ դստերն ու նրա զավակներին՝ արու որդի չունենալու պատճառով։

Դատաստանագիրքը որոշակի դեպքերում զրկում էր որդիներին ու դուստրերին՝ ժառանգելու իրավունքից, որոնց ծնողները խախտել էին մերձավոր ազգականների հետ չամուսնանալու օրենքը, այն է՝ եղբոր կնոջ, կնոջ քրոջ, ինչպես նաև եղբոր դստեր, մորաքրոջ, հոր կնոջ և հոր աղախնի հետ։ Եթե առաջին երկուսի հետ ամուսնանալը տեղի է ունեցել թագավորի թույլտվությամբ, ապա նրանց որդիները պահպանում էին ծնողներին ժառանգելու իրավունքը, իսկ նշված մյուս չորս դեպքերում իրավախախտում գործած հանգուցյալի ինչքը փոխանցվում էր «տուն գանձուց թագաւորին»։ Դատաստանագրքին հայտնի էր ժառանգման իրավունքի ևս մեկ սահմանափակում, այն է՝ պսակով ամուսնացած կնոջից ծնված երեխաները անպսակ ամուսնացած կնոջից ծնված երեխաների նկատմամբ ունեին հայրական ունեցվածքը ժառանգելու նախապատվության իրավունք (74-րդ հոդվ.)։

Ժառանգությունը փոխանցվում էր նաև կտակով։ Կտակը մահացողի գրավոր, պատշաճ կարգով վավերացված կարգադրությունն էր իր գույքի հետմահու տնօրինման վերաբերյալ։ Դրա հիման վրա նրա ունեցվածքը սեփականության իրավունքով փոխանցվում էր կտակագրում նշված ժառանգին կամ ժառանգներին, սովորաբար ավագ որդուն, բայց եթե ողջ էր մահացածի հայրը կամ պապը, ապա՝ նրանց (հոդվ. 3 և 7).

Հայրն իրավունք ուներ իր իշխանությունից ազատել անհնազանդ որդուն և զրկել նրան ժառանգությունից։

Դատաստանագրքի օրենսդրությանը հայտնի էր կտակարարի կամքի սահմանափակման ևս մի դեպք։ Այն վերաբերում էր ծառաներին կտակով ազատություն շնորհելուն։ Դատաստանագրքի 16-րդ հոդվածի համաձայն կտակարարը կարող էր ազատել ոչ բոլոր ծառաներին, այլ միայն մի մասին՝ չորսից երկուսին, տասից հինգին, տասից մինչև երեսուն ծառաներից՝ «զմին յերիցն, թողուլ եւ յեռեսունէն ցհարիւրն զմին ի չորիցն կարող է թողուլ»։ Իսկ եթե մահացողը կտակով ազատություն էր շնորհում իր բոլոր ծառաներին՝ «մնան ամենեքեան ծառայ ժառանգացն»։

Դատաստանագիրքը մի շարք իրավանորմեր էր վավերագրում կանանց ժառանգական իրավունքների վերաբերյալ, որոնք, համենայն դեպս, ի տարբերություն Հուստինիանոսի վերոհիշյալ հարցապնդման, հաստատում են կանանց որոշակի ժառանգական իրավունքների գոյության փաստը։ Սահմանված ընդհանուր դրույթն այն էր, որ եթե մահացողը չուներ արու որդիներ, դուստրն էր ժառանգում հոր ինչքը։ Ժառանգությունը կտակով որդիներին փոխանցելիս, պահանջվում էր դստերը տալ նրան հասանելիք բաժինը՝ միով միոյն զբաժինս իւրեանց, որ լինի յերից մասանց ընչիցն՝ մի մասն (1-ին հոդվ.)։

Օրենսգիրը կարգավորել է նաև կնոջ պառյգը կտակով և անկտակ ժառանգելու հարցերը։ Սահմանված է, որ եթե մահանում է ամուսնացած անզավակ կինը և չի թողնում կտակ, նրա պառյգի կեսը փոխանցվում է հորը։ Իսկ եթե կնոջ հայրը կենդանի չէ, կինն իր պառյգը կարող է կտակել ում կամենա (50-րդ հոդվ.)։ Այդ իրավունքը նա չունի, եթե կենդանի են նրա հայրը կամ պապը (70-րդ հոդվ.)։

Հոգևորականների ժառանգական իրավունքները կարգավորվել են կանոնական նորմերով։ Հոգևորականներին սեփականության իրավունքով պատկանող ինչքը կարող էր փոխանցվել նրանց զավակներին՝ որդիներին ու թոռներին։ Ավելին, Դվինի 4-րդ ժողովի Ը կանոնի համաձայն հոգևորականը կարող էր որդեգրել իր ազգականի որդուն՝ նրան իր սեփականության ժառանգորդ դարձնելու նպատակով։ Անժառանգ մահացած հոգևորականի ինչքը անցնում էր եկեղեցուն։

**Ընտանեկան իրավունք**—Կանոնական իրավունքի հաղթանակով ընտանեկան հարաբերությունները Հայաստանում կարգավորվեցին երկու տիպի օրենսդրությամբ, աշխարհիկ և կանոնական։ Կանոնական իրավունքը նորմավորեց նշանադրությունը, պսակադրությունը, ամուսնալուծությունը և մասամբ ամուսինների գույքային հարաբերությունները։ Ընտանիքի անդամների գույքային հարաբերությունները, խնամակալությունը, հոգաբարձությունը և որդեգրումը շարունակեցին կարգավորել աշխարհիկ օրենսդրության նորմերով՝ «Աւրէնք յաղթող թագաւորացն»-ով[19]։

Ընտանեկան իրավունքը բնութագրվում էր հաստատուն սկզբունքներով՝ չեշտված դասակարգային մոտեցմամբ, ըստ որի իշխող դասակարգերի ներկայացուցիչներին շնորհվում էին առավել իրավունքներ, քան ծառա-աղախիններին։ Վերջիններիս ամուսնության գույքային և այլ իրավունքները պայմանա-

---

19 **Ս. Հ. Հովհաննիսյան**, Ամուսնա-ընտանեկան իրավունքը վաղ ավատական Հայաստանում IV—IX դդ., Երևան, 1976, էջ 84—89։

վորված էին նրանց տերերի կամքով, սեռերի անհավասարությամբ, ըստ որի կնոջն ընտանիքում վերապահվում էին ավելի նվազ իրավունքներ, քան տղամարդուն՝ ամուսնության, ամուսնալուծության և գույքային հարաբերություններում, դավանանքի հողի վրա սահմանված խտրականությամբ, ըստ որի արգելված էր հավատացյալի բարեկամական և ամուսնական հարակցությունը հեթանոսների, այլադավանների և աղանդավորների հետ, ամուսնությունն օրինականացվում էր պսակադրությամբ, սահմանելով, որ առանց եկեղեցական պսակի չկա ամուսնություն, սահմանված էր մենամուսնությունը։

Ընտանիքն իրականացնում էր որոշ ֆունկցիաներ, որոնցից կարևորագույնն էին սերնդի վերարտադրությունը, հայրական տոհմի կամ ծխի պահպանումն ու զարգացումը։ Ընտանիքի երկրորդ կարևոր ֆունկցիան՝ տնտեսականն էր։ Ինքնուրույն տնտեսական միավոր կազմելու նպատակը իշխող դասերի համար շահագործումն էր, իսկ աշխատավոր և ընչազուրկ բնակչության համար ուներ սպառողական նշանակություն։

Ընտանեկան իրավունքով կարգավորվող կարևոր հարաբերություններից էր նշանադրությունը, որն իրականացվում էր սովորութային իրավունքով ու ծեսերով։ Նշանադրության ժամանակ ծնողների համաձայնությունը չէր դիտվում իբրև անհրաժեշտ պայման։ Ավելին, Սահակ Պարթևի ԻԷ և Ներսես կաթողիկոսի և Ներշապուհ Մամիկոնեից եպիսկոպոսի ԻԴ կանոնները խստիվ պատվիրում էին խափանել ծնողների բռնադատությունը։ Նշանադրության պարտավորության ոտնահարումը մեղավոր կողմի համար ունենում էր գույքային-իրավական հետևանքներ։ Եթե հրաժարվողը փեսացուն է, նա զրկվում է հարսնացուին հանձնած նյութական արժեքներից, իսկ եթե աղջիկը՝ նա պարտավոր էր փեսացուին վերադարձնել ստացածի կրկնապատիկը (տե՛ս «Ավրէնք յաղթող թագաւորացի» 57 և 58 հհ.)։

Ընտանեկան իրավունքի կարևորագույն ինստիտուտը պսակադրությունն էր։ Այն ամուսնության օրինականացումն էր, որը մշակվել է հայ կանոնական իրավունքի ուժեղ ազդեցությամբ՝ ի հակակշիռ հարսանյաց հանդեսով ամուսնանալու հեթանոսական կարգի։

Սահմանելով պսակը սրբությամբ և քահանայի օրհնությամբ եկեղեցում օրինականացնելու կարգը, մշակվեցին համապատասխան ծիսական կանոններ, որոնք օրենսդրորեն ամրապնդվեցին ծիսարան «Մաշտոցում»։ Այսպիսի իրավական բարեշրջությունների հետևանքով հարսանյաց հանդեսը, որ մի ժամանակ ամուսնության փաստի վավերացման պետականորեն ճանաչված սովորութաիրավական հաստատություն էր, պսակադրության կարգի հաղթանակով, կորցրեց իր վաղեմի իրավական նշանակությունը և վերածվեց եկեղեցական պսակը տոնախմբությամբ նշանավորելու ժողովրդական ծեսի։

Պսակադրության համար սահմանված էին հետևյալ պայմանները[20]՝ մենամուսնություն, ամուսնական չափահասություն, ամուսնացողների փոխհաճություն, ծնողների (խնամակալ-հոգաբարձուների), իսկ ծառա-աղախինների համար նրանց տերերի համաձայնություն, ազգակցական և խնամիական չհասություն, դավանակցություն կամ կրոնակցություն։

---

20 Վ. Բաստամեան, *Ամուսնությունը ըստ Հայոց եկեղեցական իրավաբանության*, «Փորձ», 1880, № 6—7, 8—9, 11—12, 1881, № 4, 8—9։ 1894, Ն. Մելիք-Թանգյան, *Հայոց եկեղեցական իրավունքը*, Բ գիրք, Շուշի, 1905, Ա. Ղլտճյան, *Հայ հին իրավունք, ընտանեկան իրավունք*, Ալեքսանդրապոլ, 1903։

Մենամուսնությունը վաղուց ի վեր հաստատված կարգ էր հայ կանանց համար։ Կանոնական և պատմական աղբյուրները հնարավորություն են տալիս պնդելու, որ V դարից ոչ ուշ օրենսդրությունը մենամուսնությունը պարտադիր էր հռչակում նաև ազատ տղամարդկանց համար, թեև այդ կարգը նրանց կողմից հաճախ խախտվում էր։

Ամուսնական չափահասության համար հիմք էր ընդունվել արբունքին «ի չափ հասակի» հասնելը։ Խորենացու և Զենոբ Գլակի վկայությունների համաձայն 12 տարեկան հասակը III—IV դդ. դիտվել է իբրև արբունքի հասնելու, հավանաբար նաև ամուսնության նվազագույն տարիք[21]։

Հայոց կանոնագիրքը և «Աւրէնք յաղթող թագաւորացը» արգելում էին առանց տերերի համաձայնության ծառա-աղախինների ամուսնությունը, այն վավերական չէր համարվում։ Ծառայի հետ ամուսնացած ազատ կինը ենթակա էր աղախնության վիճակի (տե՛ս 75 և 76 հհ.)։

Արենակցական և խնամիական չհասության հարցն առավել կարգավորվածների թվին էր պատկանում։ Մերձավոր ազգականների ամուսնությունն արգելելուն հայոց եկեղեցու հոգևոր հայրերն անդրադարձել են Աշտիշատի, Շահապիվանի, Դվինի 4-րդ ժողովներում և այլն։ Ըստ սահմանված կարգի արգելված էր ներառյալ երրորդ աստիճանի ազգականների ամուսնությունը։ 768 թ. Պարտավում կայացած ժողովի որոշմամբ՝ «Յայսմհետէ ի չորրորդ զարմ մի իշխեսցէն ամուսնութեամբ զուգիլ» այսինքն՝ մեկ աստիճանով խստացվեց արգելքը։ Շահապիվանի որոշումներին միանգամայն համապատասխան են «Աւրէնք յաղթող թագաւորացի» 54, 55 և 56 հոդվածների սահմանումները։ Խնամիական չհասության մասին ընդունված կանոնների համաձայն արգելված էր ամուսնանալ կնոջ մոր, կնոջ քրոջ հետ, երկու եղբայրների ամուսնությունը երկու քույրերի հետ։

Քրիստոնեությունը Հայաստանում պետական կրոն ճանաչելուց մի քանի տասնամյակ հետո կրոնակից լինելը ճանաչվեց իբրև պսակադրության անհրաժեշտ պայման՝ «ճշմարիտ կրոնի» բոլոր հավատացյալների համար։ IV—VII դդ. ընթացքում արգելվեց ամուսնությունը հեթանոսների, հրեաների, քաղկեդոնականների և զանազան աղանդավորականների ու հերձվածողների հետ։

Նշված բոլոր պայմանների ոտնահարման դեպքերում սահմանվում էին ներգործության տարբեր իրավական միջոցներ, մասնավորապես, ամուսնությունը ճանաչվում էր անվավեր, նզովվում էին մեղավորները, պաշտոնազրկությամբ էին սպառնում պսակն օրինականացրած քահանային, ենթարկում ապաշխարանքի, տուգանքի և այլն։

Մարդու և կնոջ ամուսնական միությունը հռչակվեց ցմահ պարտականություն։ Նոր կտակարանի համաձայն միայն ամենակարող մահը կարող էր նրանց բաժանել։ Միակ ընդունելի պատճառ համարվեց ամուսնական դավաճանությունը (պոռնկությունը)։ Այս սահմանափակումները, սակայն, կյանքում հաջողություն չունեցան։ Բուզանդը նշում է, որ «IV դ. երկրորդ կեսին կաթողիկոս

---

21 Այդ են վկայում Մաշտոցյան Մատենադարանի № 953 և մի շարք այլ ձեռագրերի, ինչպես և Բարսեղին վերագրված «Վասն պէսպէս կանոնախմբի ԺԽԹ կանոնի բովանդակությունները։ Մանրամասն տե՛ս Ս. Հ. Հովհաննիսյան. Պսակադրության իրավական կարգավորումը վաղ ֆեոդալական Հայաստանում, ՊԲՀ, 1972, № 1։

Ներսես Պարթևի ահից ոչ ոք չէր համարձակվում Հայոց աշխարհում մեկի կինը խլել և թողնել իր կնոջը, ուրիշ կին առնել չէր համարձակվում»[22]։

IV—V և հատկապես հաջորդ դարերում, նշված երկու հիմքերից բացի կանոնական օրենսդրությամբ օրինականացվեցին ամուսնալուծությամբ ամուսնության դադարման մի քանի դրդապատճառներ՝ ամուսիններից մեկի երկարամյա անհայտ բացակայությունը (Դվինի 645 թ. ժողով), բորոտությունը, դիվահարությունը և գոնջությունը, կախարդությունը, կնոջ ամլությունը և ամուսնու անկարողությունը։

Ամուսինների գույքային իրավունքների մասին նշվում է, որ ամուսնությունը չէր ստեղծում ինչքի նկատմամբ ամուսինների ընդհանուր սեփականության իրավունք։ Մինչև ամուսնությունը և ամուսնության ընթացքում ամուսիններից մեկի միջոցներով կամ այլ իրավական հիմքով ձեռք բերված ինչքը ճանաչվում էր տվյալ ամուսնու անբաժան սեփականությունը։ Կինն իր բաժինքի (պռոյգի), ամուսնության ժամանակ ստացած ընծաների, ժառանգության և նվիրատվության կարգով ստացած գույքի սեփականատերն էր, ինչպես նաև նրա աղախիններից ծնված զավակների և իբրև բաժինք բերված անասունների ծինի կեսի տերը։ Մյուս կեսը պատկանում էր ամուսնուն (տե՛ս Շահապիվանի Դ և Ե կանոնները)։

Բաժան սեփականության իրավունքի կարգը տարածվում էր նաև ծնողի և զավակի գույքային հարաբերությունների վրա։ Ծնողի կենդանության օրոք զավակը ծնողի գույքի նկատմամբ սեփականության իրավունքներ չուներ և ընդհակառակը (տե՛ս «Աւրէնք յաղթող Թագաւորացի», 6, 11 և այլ հհ.)։ Ծնողը զավակի գույքն առանձնացնում էր իր հայեցողությամբ՝ դստեր բաժինքը (պռոյգ) և այլն։

Դարաշրջանի օրենսդրությամբ կարգավորված իրավական հաստատություններից էին որդեգրությունը, խնամակալությունը և հոգաբարձությունը, որոնք սերտորեն կապված էին սեփականության հարաբերությունների հետ և ծառայում էին իշխող դասակարգի սեփականատիրական շահերին, որպեսզի այդ սեփականությունը փոխանցվի իրավական զավակ որդուն՝ հանուն որդեգրողի ծխի անմարության։ Որդեգրության գիրը, որը հաստատվում էր կնիքով, հիշատակում է Եղիշեն[23], իսկ Դվինի 4-րդ ժողովի Ը կանոնով սահմանվում է անզավակ հոգևորականի որդեգրման իրավունքը, իր ունեցվածքը որդեգրվածին փոխանցելու միտումով։

Դատաստանագրքի 99 և 115 հհ. օգտագործում են «մանուկ» բառը՝ որից բխում է հաջորդ պայմանը՝ որդեգրությունը թույլատրվում էր միայն անչափահասների նկատմամբ, «որ յազատութեան են ծնեալ»։ Եթե որդեգրությունը չի կատարվել դատավորի, իշխանի կամ թագավորի առջև՝ «չէ ճշմարիտ գիրն վասն այսր» (99 հոդվ.)։ Այս նորմն ընդունվել է Հայոց թագավորության անկումից առաջ։ Տրամաբանական է ենթադրել, որ հետագայում թագավորին կարող էր փոխարինել իշխանավորը, ինչպես արձանագրել է Եղիշեն։

Փոքրիշատե կարգավորված աշխարհիկ-իրավական հաստատություններից էր նաև խնամակալությունը և հոգաբարձությունը։ Կանոնական իրավունքը,

22 Բուզանդ, նշվ. աշխ., էջ 229։

23 Եղիշե, Վարդանանց պատմությունը, աշխատասիրությամբ Ե. Տեր-Մինասյանի, էջ 84, 202—203։

ըստ էության, չի նորմավորել այս հարաբերությունը, հավանաբար, այն պատճառով, որ դրա գլխավոր նպատակը որբերի ինչքային շահերի պաշտպանությունն էր։ Դատաստանագիրքը նորմավորում էր «տիուքն մանկագոյն», «որբ տղայոց» կամ «որբոց» հոգաբարձությունը, որը սահմանվում էր աղջիկների նկատմամբ մինչև 12, իսկ տղաների՝ մինչև 14 տարեկան հասակը։ Դատաստանագիրքը հոգաբարձություն նշանակելու իրավունքը վերապահում էր թագավորին («ոյք հոգաբարձուք լինին եղեալ ի թագաւորէ՝ վերայ ընչից որբոց») և տեղի դատավորին։ Հոգաբարձու նշանակելիս նախապատվությունը տրվում էր ազգականներին։ Հոգաբարձուի գլխավոր պարտականությունն էր՝ «զինչ տղայոցն պահեսցէն անսզալ», մինչև երեխաների չափահաս դառնալը։ Նա ինչքային բնույթի գործողությունների և գործարքների համար հաշվետու էր դատավորին (տե՛ս 8 հոդվածը)։ Հոգաբարձուն երեխաների նկատմամբ իրականացնում էր նաև ոչ գույքային բնույթի պարտականություններ՝ կնունքը, սնուցումը, դաստիարակությունը։ Երբ հոգաբարձության պարտականությունը դրվում էր ոչ ազգականի կամ հոգաբարձուի վրա, կամ ինչպես ասված է 5 հոդվածում՝ «տան վարձս նոցա ըստ պատշաճին»։ Վարձի չափը և վճարման կարգը սահմանված էր Դատաստանագրքի 142 հոդվածով։

**Քրեական իրավունք**—Հանցագործությունը տարածված հասարակական չարիք էր վաղ ֆեոդալական աշխարհում, ինչպես և Հայաստանում։ Երկրի սոցիալ-տնտեսական պայմանները, դասակարգային ու կրոնական հակամարտությունները, մասնավոր սեփականության այլասերող ազդեցությունը, այդ սեփականության պաշտպանության անհրաժեշտությունն անխուսափելի էին դարձնում հասարակական հարաբերությունների քրեաիրավական նորմավորումը[24], որոշակի արարքները հանցագործություն որակելն ու պատժելը։

Նշված իրավահայտ աղբյուրները չէին տալիս հանցագործության բնորոշումը։ Նրանք նորմավորում էին հանցագործության առանձին տեսակները և նրանց պատժելիությունը։ Հայ պատմիչների երկերում (Բուզանդ, Խորենացի, Կողբացի և ուրիշներ) հանդիպում են առանձին մտքեր, ուր խոսվում են հանցագործությունների տարբեր տեսակների, նրանց տարածվածության և ծնող պատճառների մասին։ Եզնիկ Կողբացու կարծիքով չարիքների կամ հանցագործությունների արարիչը մարդն է, նրա անհնազանդությունը, ենթարկվելու և չենթարկվելու նրա իրավունքը։ «Նախանձն է չարիքի սկիզբը, իսկ նախանձը մարդուն առավել պատվելուց է, չարիքն էլ՝ անհնազանդությունից», որ մարդը «իրավամբ պատիժ պիտի կրի իր կատարածների դիմաց, որովհետև կամովին է հակվում սովորելու այնպիսի բաներ, որոնցից ցանկացած դեպքում կարող է հեռանալ[25]։ Հանցագործություններ ծնող պատճառների՝ Եզնիկի պատկերացումը համապատասխանում է իր ժամանակի հասկացություններին։ Բնականաբար նա չէր կարող բացահայտել հանցագործությունների սոցիալական, դասային, դասակարգային և տնտեսական պատճառները, անհավասարությունը, շահագործումը և այլն։

Իրավահայտ աղբյուրները հանցագործության սուբյեկտ էին ճանաչում մարդուն, դատելով որոշ տեղեկություններից, սկսած 15 տարեկան հասակից։

---

24 Իրավունքի այս ճյուղը հանգամանորեն հետազոտված է Ա. Թ. Թովմասյանի մենագրության մեջ։ Տե՛ս նրա «Հին և միջնադարյան հայ քրեական իրավունք», հ. Ա, Երևան, 1962, հ. Բ, Երևան, 1977։

25 Տե՛ս Եզնիկ Կողբացի, նշվ. աշխ., էջ 35—36։

Հաստատված կարգի համաձայն անձը քրեական պատասխանատվության էր ենթակա դիտավորությամբ և անզգուշությամբ գործած հանցանքի համար, սակայն նորմերը տարբերել են և դիտավորյալ սպանությունն անզգույշ սպանությունից, դիտավորությամբ գործած հանցանքը՝ պատահականորեն հանցանք գործելուց։ Կանոնագիրքը տարբերում էր նաև կանխամտածված արարքն ուրիշի հրահրման ազդեցությամբ գործած հանցանքից։ Կանոնները դիտավորյալ սպանության համար պատժում էին ավելի խիստ, քան անզգույշ սպանության համար։ Այսպիսով՝ անձին քրեական պատասխանատվության ենթարկելիս վճռական նշանակություն է տրվել նրա մեղքին ու մեղավորությանը, մեղքի դրսևորման ձևերին (դիտավորության և անզգուշության)։

Հանցավոր արարքներն ուղղվում էին ընդհանուր և կոնկրետ օբյեկտների դեմ։ Հանցագործության ընդհանուր օբյեկտ էր իշխող դասակարգի ընդհանրական շահը տվյալ պատմաշրջանում։ Բազմազան էին հանցագործության անմիջական (կոնկրետ) օբյեկտները Հայոց կանոնագրքի և «Աւրէնք յաղթող թագաւորացի» համաձայն։ Եթե կատարվում էին գողություն, հափշտակություն, ավազակություն և այլ գույքային հանցագործություններ, կաշառակերություն, ապա նրանց անմիջական օբյեկտը անձի ինչքային իրավունքի ոտնահարումն էր։ Եթե կատարվում էր լրտեսություն, դավաճանություն, ապստամբություն, արքայասպանություն՝ վտանգվում էր երկրի քաղաքական շահը և եթե հանցագործությունն ընդունում էր հավատուրացության, հեթանոսական սովորությունների հետևելու, կախարդության, հավատից շեղվելու և աղանդավորական շարժումներին հետևելու դրսևորում, ապա այն ուղղվում էր կրոնի դեմ։ Եթե կատարվում էր սպանություն, մարմնական վնասվածք, բռնություն, բռնաբարություն, ամուսնական անհավատարմություն և այլն, ապա վտանգվում էր որոշակի օբյեկտը՝ մարդու կյանքը, առողջությունը, անձի անձեռնմխելիությունը, պատիվը, ազատությունը և այլն։

Դարաշրջանի օրենքները հետապնդել և խիստ պատիժների են ենթարկել նաև հանցակիցներին։ Առանձնապես անողոքաբար պատժվում էին այն հավատացյալները, որոնք հանցակից էին դառնում աղանդավորականներին կամ հերձվածողներին՝ մծղնեականներին, պավլիկյաններին և այլոց (տե՛ս Անկյուրիայի՝ ԻԵ, Նեոկեսարիայի՝ Թ, Շահապիվանի՝ ԺԳ, Ի և այլ կանոնները)։

Բազմազան են եղել պատժի ձևերը, որոնք կիրառվել են հանցավոր արարքներ կատարած անձանց նկատմամբ։ Նշված իրավահայտ աղբյուրները հավաստում են, որ պատիժն ընդունում էր դասակարգային բնույթ։ Այդ նշանակում է, որ նույն հանցանքը գործած ազատն ու շինականը կամ ծառա-աղախինը ենթարկվում էին տարբեր պատիժների։ Այդ բանն առանձնապես ցայտուն է արտահայտված Շահապիվանի կանոններում, որոնք թույլ էին տալիս ազատի հանդեպ որոշված մարմնական պատիժը փոխարինել տուգանքով՝ «Ապա թէ ազատ է եւ ի գողենոյ չերթայ՝ Ճ դրամ տուգան տացէ գողեացն» (տե՛ս Ե և այլն կան.)։ Հաշվի առնելով հանցագործության բնույթն ու հասարակական վտանգավորությունը, Հայոց կանոնագիրքն ու «Աւրէնք յաղթող թագաւորացը» սահմանում էին զանազան պատիժներ։ Այսպես, Հայոց կանոնագրքի համաձայն նախատեսվում էին հետևյալ պատիժները. ապաշխարանք (իր տարբեր ձևերով), տուգանք, մարմնական պատիժներ (ծեծ, ճակատին աղվեսադրոշմ դնելը, ջիլեր կտրելը, ուրկանոց, գողենոց ուղարկելը), մահապատիժ, եկեղեցական կարգից և քահանայական պաշտոնից զրկելը, բանադրելը (քրիս-

տոնեական եկեղեցուց հեռացնելը), նզովելը (եկեղեցու հետ ամեն կարգի հարաբերություններից զրկելը)։ Միանգամայն իրավական էին «Աւրէնք յաղթող թագաւորացով» սահմանված պատիժները։ Դրանք են. մահապատիժ, աքսոր, տուգանք, որոշակի պատվից (պաշտոն զբաղեցնելու իրավունքից) զրկելը, վնասը բազմապատիկ հատուցում (տե՛ս 34, 63, 69, 118, 119, 120, 122 և այլ հոդվածները)։ Ուշագրավ փաստ է, որ նշված իրավահայտ աղբյուրները բանտարկությունն իբրև պատժաչափ չեն նախատեսում։ Հայ պատմիչները հավաստում են, որ պատիժներն ընդունել են այլ ձևեր՝ կուրացնելը, կախաղան բարձրացնելը, անդամհատելը, ունեցվածք բռնագրավելը, ուրկանոց աշխատանքի ուղարկելը և այլն։

Այժմ առանձին հանցագործությունների մասին։ Նշված իրավահայտ աղբյուրները պետական հանցագործության կոնկրետ տեսակների ու պատժելիության մասին զարմանալիորեն կոնկրետ իրավանորմեր չեն պարունակում, թեև, ինչպես վկայում են հայ պատմիչները (Բուզանդ, Խորենացի և ուրիշներ), դավաճանությունը, դավադրությունը, ապստամբությունը և լրտեսությունը տարածված հանցատեսակներ էին հայոց պետականության գոյության շրջանում։ Հավանաբար նման ծանր հանցագործություններ հետապնդելն ու մեղավորներին պատժելը կատարվել է բացառապես պետության՝ արքայի կամահայեցողությամբ։ Այդպես են վարվել հայոց արքաները նախարարների, նրանց ողջ տոհմի հետ, երբ նրանք ապստամբել են կամ դավադրություն կազմակերպել արքունիքի դեմ։ Այդպիսիները դատապարտվում էին մահվան, բնաջնջվում էր նրանց ողջ ընտանիքը, իսկ նրանց ունեցվածքը բռնագրավվում էր յարքունիս։

Կանոնական նորմերով և աշխարհիկ օրենքներով անողոքաբար հետապնդվել են իշխանների, նախարարների, ազատների և եկեղեցու սեփականության դեմ ուղղված հանցավոր ոտնձգությունները։ Գույքային հանցագործությունները դրսևորվում էին գողության, ավազակության, կողոպուտի, գույքի ոչնչացման, դիակողոպտության և այլ ձևերով։ Հայոց կանոնագիրքը մի շարք նորմեր է նվիրել այդ հանցագործությունների պատժելիությանը։

Հետաքրքրական է նշել, որ գողերին պատժելու հարցում «Աւրէնք յաղթող թագաւորացի» սահմանումները միանգամայն հարազատ էին Հայոց կանոնագրքին։ Գողը, ավազակը, հափշտակողը ենթակա էին մահապատժի, մանավանդ երբ հանցագործությունը կատարվում էր գիշերով (հոդ. 118)։ Շեշտված դասակարգային բնույթ ուներ 119 հոդվածը. «Մարդիկք, որ գողանան... մահապարտք են»։

Մահապատիժ սահմանելով գողության, մարդասպանության, կույսին և ամուսին չունեցող կնոջը հափշտակելու և այլ հանցագործությունների համար, Դատաստանագիրքը միաժամանակ պայքարում էր այդ հանցանքների համար ինքնադատաստանի միջոցով մահապատժի դեմ, սահմանելով, որ առանց թագավորի և դատավորի հրամանի արգելվում է գողին, մարդասպանին սպանելը (տե՛ս 29, 104 հհ.), իսկ 105 հոդվածը պայքարում էր արյան վրեժի դեմ, վավերագրելով,-որ սպանվածի հայրը կամ եղբայրները ինքնադատաստանի իրավունք չունեն, մեղավորին պետք է պատժի դատավորը։ Երբ Արշակ Բ-ն սպանել է տալիս եղբայրասպան Տիրիթին, նա գործում է Դատաստանագրքի պահանջներին լիովին համապատասխան։

Նշված կանոնական նորմերը եկեղեցու սպասքի կողոպուտի, մարդկանց վաստակն ու շինվածքները հրկիզելու, դիակողոպուտի համար սահմանում էին

*զանազան պատիժներ։ Պատիժները մեղմացվում էին, երբ անձր ետ էր կանգնում հանցավոր ուղուց, խոստովանում էր իր մեղքերը։ Իբրև կանոնական պատիժներ, սահմանվում էին նզովք, երկարամյա ապաշխարանք և այլն։ Ծանր ու մեծ վրդովմունք առաջացնող հանցագործություն էր դիակողոպուտը*[26]*։*

*Հայոց կանոնագիրքն առանձնապես հարուստ է կրոնական հանցագործությունների դեմ ուղղված նորմերով։ Հետաքրքրական է նշել, որ «Աւրէնք յաղթող Թագաւորացը» ոչ մի նման հոդված չէր պարունակում։ Կանոնագիրքը հետապնդում և անողոքաբար պատժում էր աստվածուրացությունը, կախարդությունը (դյութությունը, վհուկությունը, թովչությունը), աստծուն հայհոյելը, հեթանոսական պաշտամունքին և արգելված սովորություններին հետևելը, աղանդավորականությունը, հերձվածողությունը, սուտ երդումը, հոգևորականի երդումը աշխարհիկ ատյանում և այլն (տե՛ս Առաքելականք՝ ԺԵ, Լուսավորչի՝ ԺԲ, ԻԷ, ԺԷ, Շահապիվանի՝ Ը, Թ, Ժ, ԺԹ, Ի և այլ կանոնները)։ Այդ արարքների համար սահմանվում էին զանազան պատիժներ՝ քահանան պաշտոնազրկվում և մերժվում էր եկեղեցուց, աշխարհականները նզովվում, տուգանվում, ուղարկվում էին ուրկանոց՝ ծանր աշխատանքով մեղքը քավելու և այլն։*

*Հարուստ և բազմազան են անձի դեմ ուղղված հանցագործությունները՝ սպանությունը, մանկասպանությունը, ծառային սպանելը, մարմնական վնասվածքներ հասցնելը, ծեծն ու բռնությունը, արվամոլությունը և այլն։ Այդ արարքները հետապնդող առանձին նորմեր նախատեսվել են նաև «Աւրէնք յաղթող Թագաւորացում» (տե՛ս 26, 72, 114 հոդվածները և այլն)։ Նրանք նույնպես աչքի են ընկնում դասակարգային մոտեցումով ու բովանդակությամբ։ Այդ նորմերն անպատիժ էին թողնվում (կամ մեղմ պատիժներ սահմանում) շինականների և, հատկապես, ծառա-աղախինների կյանքի, սեռական անձեռնմխելիության, արժանապատվության դեմ ուղղված հանցավոր գործողությունները, մինչդեռ վերջիններս ենթարկվում էին ծանրագույն պատիժների, եթե նրանք նման արարքներ էին կատարում իրենց տերերի կամ ազատների դեմ։*

*Ի վերջո նշելի է, որ հիշյալ իրավահայտ աղբյուրները նորմավորել են նաև՝ կաշառակերության, հասարակական կարգի խախտման, հարբեցողության (ծիսակատարությունների խանգարում և այլն), արդարադատության դեմ ուղղված (սուտ վկայություն), սեռական անողջախոհության (արյունապղծություն, կնոջ առևանգում և այլն) պատժելիության հարցերը։*

**Դատարան և դատավարություն**—*Հետազոտվող դարաշրջանում Հայաստանում գործում էր երկու տիպի դատարան՝ աշխարհիկ և հոգևոր։ Եթե առաջինի գոյությունը պատմական մեծ վաղեմիություն ուներ, ապա հոգևոր դատարանների ծագումն աղերսված էր նոր կրոնի ու կանոնական իրավունքի հաղթանակի հետ։ Նշված փաստը հավաստում են իրավահայտ աղբյուրները և հայ պատմիչների երկերը։*

*Աշխարհիկ դատարաններ գործում էին Հայաստանի քաղաքներում, գավառներում, խոշոր ավաններում (շեներում)։ Դատավորներին նշանակում էին տվյալ վայրի տերերը։ Այդ պատվին արժանանում էին ուսյալ մեծատոհմիկ ազնվականները։ Դատավորի պաշտոնը՝ ազատանու դասային արտոնությունն էր։ Դատավորները մարմնավոր իշխանությունների կողմից արժանանում էին բարձր պատիվների։ Օրինակ՝ Գահնամակի համաձայն Արշակունիների արքու-*

---

26 **Եզնիկ Կողբացի**, *նշվ. աշխ., էջ 14—15։*

նիքում քսաներորդ բարձր զբաղեցնելու պատիվը պատկանում էր Բասենի դատավորին։ Գավառներում և խոշոր շեներում դատավորի պաշտոնն զբաղեցնում էին երեելի ազատները։ Դա անվիճելի փաստ է, որը հաստատվում է Շահապիվանի ժողովի ԺԶ կանոնի՝ «Ազատ ոք ի դատաւորաց» արտահայտությամբ։

Աշխարհիկ դատարանների կառուցվածքի մասին, դժբախտաբար, քիչ բան է մեզ հայտնի՝ նյութերի սակավության պատճառով։ Շահապիվանի ԺԶ և Ի կանոններից երևում է, որ դատավորները բաժանվում էին երկու կարգի՝ ավագ դատավորներ և դատավորներ։ Այդ բաժանումն ինքնանպատակ չէր։ Հավանաբար ավագ դատավորի պաշտոնն ստեղծված էր լուծելու համար երկրի պաշտոնյաների՝ իշխանների և ազնվականների միջև ծագած վեճերը, իսկ դատավորներինը՝ ազատների ու շինականների, ինչպես նաև ծառա-աղախինների միջև ծագած վեճերը։ Երկրի գերագույն դատավորը Հայոց արքան էր, նրա բացակայության դեպքում՝ մարզպանը, հազարապետը և այլն։ Այսպես՝ Կորյունի և Եղիշեի վկայությամբ Վարդանանց պատերազմից առաջ Հայաստանի հազարապետ Վահան Ամատունին զբաղեցնում էր բարձրագույն մարմնավոր պաշտոնը և, հավանաբար, բարձրագույն կամ ավագ դատավորն էր[27]։

Հիմք ընդունելով «Աւրէնք յաղթող Թագաւորացի» մի շարք հոդվածներում հանդիպող՝ «Դատաւոր տեղւոյն», «Դատաւորք ի քաղաքի» արտահայտությունները, կարելի է կարծել, որ գավառներում և խոշոր շեներում նշանակված էր մեկ դատավոր, իսկ քաղաքներում՝ մեկից ավելի։

Աշխարհիկ դատավորի մասին հարցի սուր պատասխանն ափսոսանքով իր «Ողբում» տվել է Մովսես Խորենացին, ասելով՝ «Դատաւորք տմարդիք, սուտք, խաբողք, կաշառառուք, անընտրողք իրաւանց, անհաստատք, հակառակողք»[28]։

Ինչպիսի կոնկրետ գործեր էին քննում աշխարհիկ դատարանները։ Այդ հարցի վրա որոշ լույս է սփռում Բուզանդի Պատմության այն դրվագը, ուր նա խոսում է Արշակավանի շինարարության մասին։ Այդ գործերը վերաբերում էին քաղաքացիական, քրեական և ընտանեկան իրավունքներին, այն է՝ փոխառությունը, գողությունը, ավազակությունը, մարդասպանությունը, արյունապղծությունը, ստախոսությունը, խաբեությունը, գանձագողությունը, գռփողությունը, կողոպուտը, հափշտակումը, ամուսնալուծությունը։ «Աւրէնք յաղթող Թագաւորացի» համաձայն աշխարհիկ դատարաններին ենթակա էին քաղաքացիական իրավահարաբերություններից ծագած հետևյալ վեճերը՝ ըստ օրենքի և ըստ կտակի ժառանգման, տերերի և ծառա-աղախինների միջև ծագած անձնական և գույքային, առուծախի, նվիրատվության, գրավի, փոխառության, երաշխավորության, վնաս պատճառելուց և այլ հարաբերություններից ծագող վեճերը։ Ընտանեկան վեճերից դատարանին ենթակա էին ընտանեկան հարաբերություններից ծագած գույքային վեճերը, մասնավորապես՝ բաժինքի և վարձանքի կապակցությամբ, ինչպես և որդեգրության, խնամակալության հարաբերությունները։

Ուրեմն, հանցավորին, որպես կարգ, դատարանի միջոցով պատժելու կողքին գործում էր նաև ինքնադատաստանի իրավունքը։ «Աւրէնք յաղթող Թագաւորացը» այդ իրավունքը չէր նախատեսում։ Դրա համաձայն հանցավորներին պատժելը դատարանի իրավազորությունն էր։ Ավելին, ըստ 29 հոդվածի, «Մարդ

27 Կորյուն, Վարք Մաշտոցի, Երևան, 1941, էջ 92։
28 Խորենացի, նշվ. աշխ., էջ 364։

որ չունի հրաման ի թագաւորէ կամ դատաւորէ սպանանէ զոք գող կամ մարդասպան կամ ղմահապարտ ծառայ՝ ինքն մեռանի յօրինացն»։

Աշխարհիկ դատարանները գործը քննում էին կողմերի, հանցագործություն կատարած անձի մասնակցությամբ, լսում էին նրանց բացատրությունները, հարցաքննում վկաներին։ Դատավարությունը բանավոր էր, մայրենի լեզվով, անմիջական, տարվում էր մրցակցության սկզբունքի համաձայն։ Դատական գործը հաճախ շահում էր նյութապես զորեղ կողմը՝ կաշառատվության և դատավորի վրա ներգործության այլ միջոցներ գործադրելով։ Դատավարության կողմն իրավունք ունէր լիազորելու մեկին «փոխան իւր խօսել եւ առնել իրաւունս ինչ»։ Վկաներին հարցաքննելուց առաջ դատավորը նրանցից պահանջում էր երդվել (տե՛ս «Աւրէնք յաղթող թագաւորացի» 23, 96 և 97 հոդվածները)։

Քննելով գործը, դատարաններն արձակում էին գրավոր հրամաններ կամ վճիռներ՝ ըստ երկրում գործող աշխարհիկ օրենքների։

Դրականապես ոչինչ հնարավոր չէ ասել այն մասին, թե ինչ կարգով և ով էր քննում կամ բեկանում անօրինական վճիռները և եղե՞լ է արդյոք վճիռների վերաքննության վերադասության կարգ։ Այս տեսակետից ուշադրության արժանի է Հուստինիանոսի 31-րդ նովելան, որը տարածվում էր բյուզանդական Հայաստանի վրա։ Այն մասնավորապես նորմավորում էր ստորադաս դատարանների վճիռները վերադաս ատյանին բողոքարկելու խնդիրը։ Այնտեղ ասված է. «Մենք կարգադրեցինք, որ մինչև 500 դահեկան գումարի բողոքարկման հարցերով չդիմեն երջանիկ (Կոստանդնուպոլսին), այլ մերձակա սպեկտաբիլային արխոնտներին։ Այդ իսկ պատճառով մենք սահմանում ենք, որ Սեբաստիա, Առաջին Հայքի արխոնտին, այն է՝ անթյուպատոսին, ուղղվեն բողոքարկումները Երկրորդ Հայքից, իսկ մինչև վերոհիշյալ գումարի չափով բողոքարկումները Չորրորդ Հայքից՝ Մելիտենե Երկրորդ Հայքի կոմեսին»[29]։

Աշխարհիկ դատարանների վճիռների հարկադիր կատարումն ապահովում էին իշխանները կամ տեղական իշխանությունները։

Հոգևոր դատարանները Հայաստանում ստեղծվեցին IV դարի ընթացքում։ Սահմանելով վարքագծի նոր տիպի պարտավորիչ նորմեր հավատացյալների համար, հոգևոր դասը պիտի ստեղծեր հարկադրանքի համապատասխան մարմիններ՝ հոգևոր ատյաններ կամ դատարաններ՝ կանոնական նորմերի գործադրումը կյանքում ապահովելու համար։ Առանց եկեղեցական դատարանի և դատավարության կանոնական իրավունքները չէին ունենա իրական ուժ, չէին ապահովի կանոնական պարտականությունների կատարումը։

Կանոնական դատավարության ձևը որոշվեց կանոնական իրավունքի բնույթով։ Սկզբնական շրջանում հոգևոր դատարանները նպատակ ունեին լուծելու հոգևորականների միջև ծագած անձնական և գույքային վեճերը։ Ներսես Պարթև կաթողիկոսն ընդարձակեց հոգևոր ատյանների դատական իրավասությունը՝ ի հաշիվ աշխարհիկ դատարանների, ամուսնալուծության գործերում ճանաչելով առաջինի իրավասությունը։ Պապ թագավորը վերացրեց Ներսեսի այդ նորամուծությունը և ամուսնալուծության գործերի քննությունը վերահանձնեց աշխարհիկ դատարաններին։ Պապ թագավորի մահից հետո նորից

29 Պրոկոպիոս Կեսարացի, «Բյուզանդական աղբյուրներ», աշխատասիրությամբ Հ. Բարթիկյանի, Երևան, 1967, էջ 305։

*ընդարձակվում է եկեղեցու դատական իրավասությունը։ V դարի 40—50-ական թվականներին՝ եկեղեցուն դատական իրավասությունից զրկելու փորձ կատարեց պարսիկ Դենշապուհը։ Այդ առթիվ Եղիշեն ասում է. «Եւ եա չարագոյն հինգերորդն, քանզի որ հազարապէտն էր աշխարհին՝ իբրեւ զհայր վերակացու համարեալ էր աշխարհականացն քրիստոնէից, գրգռեաց յարոյց զամբաստանութիւն ի վերայ նորա, եւ հանեալ զնա ի գործոյն՝ փոխանակ նորա պարսիկ ած յաշխարհն, եւ մեւս ևս մոգպէտ դատաւոր աշխարհին, զի եկեղեցւոյ փառս աղաւաղեսցեն»։*

*Եկեղեցու դատավորական իրավունքը մոգպետին հանձնելու դիտավորությամբ պարսիկները ցանկանում էին ծանր հարված հասցնել եկեղեցուն և պայմաններ ստեղծել երկրի ներքին հարաբերություններին լայնորեն միջամըտելու գործին։*

*Հոգևոր ատյանները բաժանվում էին դատական երեք աստիճանի՝ ա) կաթողիկոսական՝ խորհրդակից եպիսկոպոսներով և շրջիկ հոգևորականներով, բ) եպիսկոպոսական՝ թեմում ծագած կանոնական գործերը քննելու, գ) քորեպիսկոպոսական՝ գավառներում ծագած կանոնաիրավական հարցերը լուծելու համար*[30]*։*

*Հիշյալ հոգևոր պաշտոնյաները նախագահում էին համապատասխան եկեղեցական ատյաններում և քննում էին նրանց իրավասության ենթակա գործերը։ Նրանք իրավասու չէին քննելու աշխարհիկ դատարաններին ենթակա քաղաքացիական և քրեական գործերը։*

*IV—V դդ. կեսերին քորեպիսկոպոսը պիտի լիներ անկաշառ և ոչ արծաթասեր, պիտի շրջեր տեղի երեցների և սարկավագների մասնակցությամբ՝ ծագած իրավախախտումներին և վեճերին լուծում տալու համար։ Հավանաբար V դարի կեսերից նրանց դատավարական իրավունքները փոխանցվում էին ուսյալ վարդապետներին, որոնք, ի տարբերություն քորեպիսկոպոսների, կանոնական իրավունքի գիտակներ էին։ Այդ բանում համոզում են Շահապիվանի կանոնները քահանային, աշակերտին և աշխարհականին նզովելը կամ բանադրելը, բանադրվածին բանադրությունից ազատելը՝ ճանաչում են վարդապետի իրավունք։*

*Վարդապետը հարցաքննում էր կողմերին, լսում գործին տեղյակ քահանաների և սարկավագների կարծիքը, փորձում կողմերին հաշտեցնելու միջոցով հարթել վեճը։ Եթե կողմերը չէին հաշտվում, եկեղեցական ատյանը, ղեկավարվելով բացառապես կանոնական իրավունքի նորմերով, կայացնում էր համապատասխան վճիռ։ Հոգևոր դատարանն իրավունք չուներ ղեկավարվելու աշխարհիկ իրավունքի նորմերով։*

*Քորեպիսկոպոսի և վարդապետի վճռից դժգոհ հոգևորականն ու աշխարհականն իրավունք ունեին բողոքելու այն եպիսկոպոսական դատարանին, որը հսկողություն էր սահմանում թեմում լուծված վեճերի օրինականության նկատմամբ։ Եպիսկոպոսական ատյանը կարող էր վերանայել ստորին կամ վարդապետական ատյանի վճիռը, ուղղել սխալը և նոր վճիռ արձակել՝ ղեկավարվելով կանոնական իրավունքի պահանջներով։*

---

30 Ն. Մելիք-Թանգյան, նշվ. աշխ., էջ 211—215։

Ինչպես ցույց են տալիս գրավոր վկայությունները, կաթողիկոսական ատյանը թերևս չուներ գործերի իր ենթակայությունը։ Այդ ատյանն առավելապես զբաղվում էր հոգևոր և դավանական վեճերով, իսկ երբեմն էլ՝ ամուսնության և ամուսնալուծության հարցերով։

Ըստ Շահապիվանի կանոնների, դատարանն ամուսնալուծության գործի հետ լուծում էր նաև ամուսինների գույքային իրավունքների հարցը։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆՄԵԿԵՐՈՐԴ

# ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆ

## 1. ՀԱՅ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՄՏՔԻ ՍԿԶԲՆԱՎՈՐՈՒՄԸ

Միջնադարյան հայ հոգևոր մշակույթի բաղկացուցիչ մասն է կազմում «այն ժամանակաշրջանի «գիտությունների մայրը»՝ փիլիսոփայությունը։ Գիտության այս բնագավառը, որը տարբեր դասակարգերի ու հասարակական խավերի աշխարհայացքի խտացած արտահայտությունն է, սերտորեն կապված էր ժամանակի գաղափարական հակամարտությունների և օտար նվաճողների դեմ մղվող ազատագրական պայքարի հետ։ Այդ է պատճառը, որ V դարի սկզբից՝ հայոց գրերի գյուտից հետո, սոցիալ-քաղաքական բարդ պայմաններում, մյուս գիտությունների հետ միասին իր զարգացման ուղին բռնեց նաև փիլիսոփայությունը։ Սկզբից աստվածաբանական գրականության հետ միախառնված, իսկ դարի երկրորդ կեսին՝ արդեն ինքնուրույն հարցակարգով, փիլիսոփայությունն ապրեց աննախադեպ վերելք և ստեղծելով հետագա զարգացման ամուր հիմքեր, դարձավ հայ ֆեոդալական հասարակության գաղափարական վերնաշենքի անբաժան մասը։

Վաղ-ֆեոդալական շրջանի հայ փիլիսոփաների երկերը հնագույնն են Սովետական Միության ժողովուրդների պատմության մեջ և կարևոր աղբյուր են ինչպես Հայաստանի, նույնպես և հարևան երկրների հասարակական մտքի և հոգևոր մշակույթի պատմությունը լուսաբանելու համար։

Հին Հայաստանը, որը մտնում էր հելլենիստական աշխարհի կուլտուրական ազդեցության շրջանակի մեջ, մեծ չափով ընկալել էր հունական փիլիսոփայության գաղափարները, իսկ հունարենը ընդունվել էր հայկական վերնախավի կողմից՝ որպես գիտության լեզու։

Հեթանոսական Հայաստանի հայ (Տիրան Քերական, Արտավազդ Բ, Ողյումպ) և այլազգի հեղինակների (Մետրոդոր Սկեպսացի, Ամֆիկրատ Աթենացի, Բարդածան) ստեղծագործությունները, որոնք, ամենայն հավանականությամբ, նվիրված պետք է լինեին կրոնափիլիսոփայական, պատմական և ճարտասանական հարցերին, ընդհանուր առմամբ կազմում են հայ փիլիսոփայական մտքի նախապատմությունը։ Նույն շրջանին են վերաբերում նաև հունական աշխարհում իր գործունեությունը ծավալած IV դարի անվանի հայ ճարտասան և մանկավարժ Պարույր Հայկազնի (Պրոերեսիոսի) երկերը, որոնք նույնպես չեն պահպանվել։

Հայ փիլիսոփայական գիտության կազմավորումը սկսվում է գրերի գյուտից անմիջապես հետո, ֆեոդալական հարաբերությունների և քրիստոնեական ուսմունքի ու եկեղեցու ամրապնդման պայմաններում։ Այդ հանգամանքը

վճռական նշանակություն ունեցավ հայ միջնադարյան փիլիսոփայության բնույթի ու բովանդակության համար։ Որպես ֆեոդալական հասարակության գաղափարախոսություն, այն միջնադարյան էր իր էությամբ։ Սակայն անհրաժեշտ է շեշտել, որ հայ փիլիսոփայական միտքն ուներ ուշագրավ առանձնահատկություններ, որոնք բնորոշ էին վաղ-միջնադարյան հայ մշակույթին ընդհանրապես։ Հին Հայաստանը մոտ III մ. թ. ա.—III մ. թ. դդ. ընթացքում շփվում էր հելլենիստական աշխարհի քաղաքակիրթ ազգերի՝ հույների, հռոմայեցիների, հրեաների, ասորիների և այլոց մշակույթի հետ, և երբ հայոց գրերի գյուտից հետո արագ թափով սկսեց ձևավորվել հայ գիտական միտքը, հին աշխարհի գիտության, հելլենիստական քաղաքակրթության մի շարք նվաճումներ հեշտությամբ ընկալվեցին ձևավորվող հայ ֆեոդալական հասարակության կողմից, կրելով, իհարկե, եկեղեցու գաղափարական ազդեցության կնիքը։

Իր ձևավորման արդեն սկզբնական փուլում հայ փիլիսոփայությունը հանդես եկավ տվյալ շրջանի համար բնորոշ երկու ուղղություններով։ Մեկը հայոց եկեղեցու գաղափարական շահերին իր ուժերն ի սպաս դրած քրիստոնեական ուղղությունն էր՝ ջատագովությունը և հայրախոսությունը (ապոլոգետիկա և պատրիստիկա), իսկ մյուսը աշխարհիկ փիլիսոփայական հոսանքը՝ նորպլատոնականությունը։ Վերջինս մասնակցում էր ֆեոդալական գաղափարախոսության ձևավորմանը, չխզելով իր կապը անտիկ աշխարհի գիտության հետ։ Այս երկու փիլիսոփայական հոսանքներից զատ կար նաև ռամիկների ու շինականների, շահագործվող խավերի ձգտումներն արտահայտող մի ուղղություն, որը տարբերայնորեն դրսևորվում էր աղանդավորական շարժումների գաղափարախոսության մեջ՝ անապատականների, մծղնեականների, այնուհետև պավլիկյանների ուսմունքներում։ Այդ հոսանքը, սակայն, չստացավ փիլիսոփայական գիտական ձևավորում և նրա մասին պահպանված կցկտուր տեղեկություններն արտահայտված են միայն իշխող գաղափարախոսության հետևորդների քննադատական աստւյթներում, որոնք, անշուշտ, անաչառ չեն։

Հայ փիլիսոփայական մտքի ձևավորման գործում նշանակալից դեր խաղացին V—VI դդ. կատարված թարգմանությունները, դրանց թվում առաջին հերթին Աստվածաշնչի թարգմանությունը։ Սահակ Պարթևի, Մեսրոպ Մաշտոցի և նրանց աշակերտների կողմից թարգմանված Ս. Գիրքը ազդեց հայ մտավոր կյանքի համարյա բոլոր բնագավառների վրա։ Բանն այն է, որ Աստվածաշունչն իր բովանդակությամբ, իր հանրագիտարանային բնույթով շոշափում էր հասարակական գիտակցության գրեթե բոլոր ձևերը՝ բարոյագիտությունը, փիլիսոփայությունը, իրավունքը, գեղարվեստական գրականությունը, հասարակական-քաղաքական միտքը, պատմագրությունը և այլն։ Հասկանալի է, որ նրա ազդեցությունն առավել ուժեղ պետք է դրսևորվեր այն գիտության մեջ, որը ձևավորում և արտահայտում էր ֆեոդալական իշխող դասերի աշխարհայացքը, այսինքն՝ փիլիսոփայությունը և դրա հետ սերտորեն կապված աստվածաբանությունը։ Սակայն Աստվածաշնչի և առհասարակ կրոնի խոր կնիքը կրում էր ոչ միայն իշխող ֆեոդալական գաղափարախոսությունը. այն ակնհայտ է նաև աղանդավորական շարժումների գաղափարախոսության ոլորտում, որը նույնպես ելնում էր Ս. Գրքից, բայց հակադրվում էր պաշտոնական եկեղեցու դավանաբանությանը։ Քրիստոնեական ուսմունքը, աստվածաբանական դրույթները որոշակի ձևով ազդում էին փիլիսոփայական մտքի նաև աշխարհիկ

ուղղության, Հին հռոմական ժառանգության հետ կապված նորպլատոնակա-նության ու բնափիլիսոփայության վրա։

Հայ փիլիսոփայության ձևավորումը տեղի էր ունենում, երբ Հայաստանը բաժանված էր Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև և հայ ժողովուրդը մաքառում էր իր ինքնության պահպանման և օտար տիրապետությունից ազատագրվելու համար։ Ողջ հասակով ծառացել էր ազգային ինքնապաշտպանության, հոգևոր անկախության, մասնավորապես ժողովրդի ներքին դիմադրության կազմակերպման խնդիրը։ Այդ հանգամանքը, ինչպես և իր պետականությունը կորցրած երկրի հասարակական, քաղաքական և մշակութային կյանքում հայոց եկեղեցու դերը էական նշանակություն են ունեցել նաև փիլիսոփայական մտքի զարգացման գործում։

Այդ ժամանակների գաղափարական պայքարը ինչպես երկրի ներսում, նույնպես և արտաքին թշնամիների դեմ դրսևորվում էր կրոնական ուսմունքների գոտեմարտի ձևով։

Աստվածաշնչի, դրա Հին և Նոր կտակարանների թարգմանությունը, բացի հայոց եկեղեցու համար ունեցած կարևոր նշանակությունից, հսկայական ազդեցություն ունեցավ հին Հայաստանի, նաև ողջ հայ միջնադարի մտավոր կյանքի բոլոր բնագավառների վրա։ Անշուշտ, այն իր խոր կնիքը դրեց ժամանակաշրջանի բոլոր գրողների ու գիտնականների մտայնության վրա, որոնք համարյա անխտիր տոգորված էին կրոնական ոգով։

Հայ փիլիսոփայական մտքի ձևավորման գործում զգալի նշանակություն ունեցան Հին և Նոր կտակարաններին նվիրված մեկնողական երկերի թարգմանությունները։

Ավագ և կրտսեր թարգմանիչները V դարի առաջին կեսին հրապարակ հանեցին հռչակավոր եկեղեցական մեկնիչներ Բարսեղ Կեսարացու, Հովհան Ոսկեբերանի, Եփրեմ Ասորու, Աթանաս Ալեքսանդրացու, Գրիգոր Աստվածաբանի, Կյուրեղ Աղեքսանդրացու և ուրիշների գործերի հայացված մի հարուստ գրադարան։

Մեկնողական գրականության հետ սերտորեն առնչվում էր ջատագովությունը, որի նպատակն էր պաշտպանել քրիստոնեական ուսմունքը հեթանոսական կրոնի և աշխարհայացքի հետևորդների հարձակումներից, փիլիսոփայորեն հիմնավորել քրիստոնեությունը և արդարացնել, «ջատագովել» այն մյուս կրոնների դեմ մղած պայքարում։ Հին հայ թարգմանիչները այդ նպատակով իրականացրել են նաև ճանաչված ջատագովներ Արիստիդես Աթենացու, Հիպպոլիտի, Մեթոդիոս Ողիմպիացու, Եպիփան Կիպրացու և այլոց երկերի թարգմանությունները։ Ջատագովների գրվածքներում առավել ցայտուն է դրսևորվել քրիստոնեության փիլիսոփայությունը, որը հակադրվում էր անտիկ շրջանի աշխարհիկ փիլիսոփայական ուսմունքներին, մանավանդ մատերիալիստական և աթեիստական ուղղություններին։ Հունական ջատագովների ճանապարհով են ընթացել նաև առաջին հայ մտածողներ Մեսրոպ Մաշտոցն ու Եզնիկ Կողբացին։

## 2. ԶԱՏԱԳՈՎՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ։ ՄԱՇՏՈՑ ԵՎ ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑԻ

Ժամանակագրական առումով հայ փիլիսոփայական մտքի առաջին ձևավորված ուղղությունը հանդիսացավ զատագովությունը, որը բավական տարածված էր մյուս քրիստոնեական երկրներում։ Հայաստանում այդ ուղղության հիմնադիրն էր մեծ գիտնական ու լուսավորիչ, մտածող, հայոց գրերի ստեղծող Մեսրոպ Մաշտոցը (361—440)։ Նորագյուտ հայերեն տառերով Մաշտոցի կողմից գրված առաջին նախադասությունը՝ «Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ...», բնաբան ու խորհրդանիշ հանդիսացավ V դարի ողջ լուսավորական շարժման, ինչպես և փիլիսոփայական մտքի զարգացման համար։

Մաշտոցի փիլիսոփայական հայացքներն իրենց բնույթով ու գաղափարական միտումներով դուրս չեն գալիս աստվածաբանական հարցադրումների ոլորտից։ Մաշտոցը մերժում է մյուս կրոնները, հեթանոսությունը, ապացուցելով քրիստոնեական ուսմունքի «ճշմարտացիությունը»։ Նա քննադատում է և բազմաստվածությունը, և տարրապաշտությունը, և կրոնափիլիսոփայական դուալիզմը, փառաբանելով միակ աստծուն որպես «էութիւն անսկիզբն, մշտնջենաւորութիւնն անսահման, ճշմարտութիւն անփոփոխ»[1], «որ անբաւն է և անքնին, և ոչ կարեն կարծել միտք, և ոչ քննել խորհուրդք, որում ոչ բաւէ իմաստութիւն հոգևոր զօրացն և ոչ գիտութիւն որդւոց մարդկան»[2]։ Այդ անսկիզբն, անսահման, անփոփոխ և անճանաչելի էությունը, ինքն աննյութ, գերագույն բարի էակ լինելով, սկիզբ է տալիս ողջ աշխարհին՝ կենդանի և անկենդան, նյութական և իմացական։ Նա ամեն ինչի արարիչն է, «անպատճառ, որ ամենեցուն պատճառ է»[3], և «վասն բարերար կամաց իւրոց արարիչ արարածոց անուանի»[4], «աղբիւր է ամենայն բարեաց և կենդանութիւն»[5]։ Այսպիսով, փիլիսոփայության հիմնական հարցը Մեսրոպ Մաշտոցը, իրեն յուրահատուկ աստվածաբանական ձևով, լուծում է իդեալիզմի դիրքերից, այդ լուծումը դարձնելով իր փիլիսոփայական հայացքների հիմքը։

Մաշտոցը յուրովի է ներկայացնում չորս էլեմենտների տեսությունը։ Ըստ Մաշտոցի նյութական աշխարհն աստծո արարչագործության արդյունք է։ Նախապես ստեղծելով տարրերը, աստված այնուհետև ստեղծում է նրանցից ամեն ինչ։ «Ի չորից նիւթոց արար (աստուած) զարարածս և յօրինեաց զերևելիս և զաներևոյթս, և անտի զմարմինս կազմեաց ի ցամաքէ, ի խոնաւոյ, ի ջերմոյ և ի ցրտոյ»[6]։ Այդ չորս հատկությունների կրողները այն տարրերն են, որոն-

---

[1] «Յաճախապատում ճառք սրբոյ հօրն մերոյ երանելւոյն Գրիգորի Լուսաւորչի», Վաղարշապատ, 1894—96, ճառ Ա, էջ 1։ Ապացուցված կարելի է համարել, որ «Յաճախապատում» ճառերը պատկանում են ոչ թե Գրիգոր Լուսավորչին, այլ Մեսրոպ Մաշտոցին։ Տե՛ս Պ. Ֆետտեր, Հայկական աշխատութիւնք, թարգմ. Յ. Տաշեան, Վիեննա, 1895, Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, հ. 1, Երևան, 1944, էջ 119—126։

[2] Ճառ Ա, էջ 3։

[3] Ճառ Ա, էջ 1։

[4] Ճառ Բ, էջ 14։

[5] Ճառ Ե, էջ 39։

[6] Ճառ ԺԴ, էջ 174։

*ցից կազմվում է ամեն մի մարմին. «յերկնէ և յերկրէ, և ի ջրոյ և յօդոյ զկեանս ամենեցուն յօրինեաց»*[7]։

*Մաշտոցի աշխարհայացքն ունի մարդակենտրոն բնույթ։ Ամբողջ աշխարհը՝ անկենդան, բուսական և կենդանական, աստված ստեղծել է «ի պետս մարդկան»։ Նույն նյութից՝ չորս տարրերից ստեղծելով և մարդու մարմինը, աստված «շնչեաց ի նա հոգի կենդանի և անմահ, մտաւոր և բանաւոր։ Եւ խառնեաց զհոգևորն ընդ մարմնաւորն... զի լիցի տեսուչ արարչին արարածոց»*[8]։

*Սակայն մարդը, այդ գերագույն արարածը, ի տարբերություն արարչի, մահկանացու և փոփոխելի է. մարմնով նա կապված է նյութական աշխարհի, իսկ հոգով՝ աննյութ աստվածային էության հետ։*

*Մարդը, ըստ Մաշտոցի, ճանաչում է աշխարհը հինգ զգայարանների և բանականության միջոցով, որով օժտել է նրան աստված իր նմանությամբ։ Ճանաչումն սկսվում է զգայությունից և բարձրանում է դեպի միտքը, որն ընդհանրացնում է զգայարանների հաղորդած տեղեկությունները և խորամուխ լինում իրի կամ երևույթի էությանը։ Սակայն, ըստ Մաշտոցի, ճանաչման բարձրագույն աստիճանը հավատն է, որի միջոցով ընկալվում է «աստվածային» ճշմարտությունը։*

*Մաշտոցի շոշափած գաղափարները զարգացվեցին և ավելի հանգամանորեն քննարկվեցին նրա աշակերտ ու զինակից, հայ ջատագովական ուղղության ամենակարկառուն ներկայացուցիչ* Եզնիկ Կողբացու *(մտ. 380—450) կողմից։*

*V դարի 40-ական թվականներին Կողբացին գրեց մի փիլիսոփայական-աստվածաբանական գործ, որն այժմ հայտնի է «Եղծ աղանդոց» կամ «Գիրք ընդդիմութեանց» անվամբ*[9]*։ Եզնիկը եռանդուն մասնակցություն է ունեցել հայոց գրականության ու գիտության հիմնադրմանը, մասնակցել է Աստվածաշնչի և այլ գործերի թարգմանությանը։ Նրա, ինչպես և Մաշտոցի այլ աշակերտների ջանքերով հունարենից թարգմանվել են բազմաթիվ աստվածաբանական ու մեկնողական գործեր։*

*Եզնիկ Կողբացին բանավիճում է հայոց եկեղեցու գաղափարախոսությանը խորթ կամ հակադիր ուսմունքների ներկայացուցիչների հետ, սկսած անտիկ շրջանի հույն փիլիսոփաներից, վերջացրած իր ժամանակակից պարսից զրադաշտական ուսմունքի և տարբեր քրիստոնեական աղանդների հետևորդներով։ Ընդ որում իմաստասիրական տեսությունները և ուսմունքները նա նույնպես անվանում է «աղանդ» կամ «կրօնք փիլիսոփայից»։ Եզնիկը հանդես է գալիս հայ իշխող դասերի դիրքերից, իսկ քաղաքական նպատակասլացությամբ նրա գործն ուղղված է Հայաստանի արտաքին թշնամիների՝ Սասանյան Իրանի ագրեսիայի դեմ։ Այդ առումով Եզնիկը շարունակում է իր ուսուցչի՝ Մեսրոպ Մաշտոցի գիծը և գաղափարական հակահարված տալիս արտաքին թշնամիներին, հատկապես պարսից զավթիչներին, որոնք կրոնի քողի տակ ձգտում էին գաղափարաբանական ասպարեզում ևս տարածել իրենց գերիշխանությունը Հայաստանի վրա։ Եզնիկի գործը մեծապես նպաստեց հայոց եկեղեցու գաղափարական հիմքերի ամրապնդմանը և դրանով իսկ օգնեց V—VI դարերի ազատագրական շարժումների տեսական հիմնավորման գործին, ազատագրական*

---

7 *Նույն տեղում։ Մաշտոցը նույնացնում է երկինքը կրակի հետ, հետևելով այն հին պատկերացմանը, որի համաձայն երկինքը կազմված է «ի հրոյ թաղկեալ»։*

8 *Ճառ Դ, էջ 28։*

9 *«Եզնկայ Կողբացւոյ Եղծ աղանդոց», Թիֆլիս, 1914։*

շարժումներ, որոնք իրենց ձևով նմանվում էին կրոնական պատերազմների՝ հանուն «սեփական հավատքի» հաղթանակի ընդդեմ «մոլորյալների» կամ «անհավատների», իսկ երկրի ներսում վեր էին ածվում սոցիալական պայքարի՝ իշխող եկեղեցու ներկայացուցիչների և «որումն սերմանող» աղանդավորների միջև։

Եզնիկը հետևողական իդեալիստ է։ Նրա փիլիսոփայությունը ենթարկված է քրիստոնեական ուսմունքի հիմնավորմանն ու փառաբանմանը։ Պատասխանելով փիլիսոփայության հիմնական հարցին և հերքելով մազդեականությանը բնորոշ կրոնաիդեալիստական դուալիզմը, նա խոսում է մեկ բարի էության մասին, որը մշտնջենավոր ու անքնին է. «Ոչ ոք է առաջին քան զնա, և ոչ ոք է յետոյ նման նորա, և ոչ ընկեր հաւասար նորին, և ոչ էութիւն հակառակ նմա, և ոչ գոյութիւն ընդդիմակաց»[10]։ Լինելով առաջնային, հավերժական, աննյութ էություն, ասում է Եզնիկը, աստված իր բարի կամքով ստեղծում է նյութական աշխարհը, կենդանիներին ու բույսերը, մարդուն և առհասարակ ողջ բնությունը։ Աստված «ածն ի չգոյէ ի գոյ զչգոյսն, և եցոյց յոչնչէ զչէսն», այսինքն՝ բոլոր գոյացությունները նա ստեղծել է ոչնչից, անէությունից։ Հենց այդ է աստծու հիմնական տարբերությունը նյութական և կենդանական աշխարհից. նա անարար է, առաջնային և ինքն արարիչ, իսկ մնացած ամեն ինչ ստեղծված է նրա կողմից և երկրորդային է։

Պաշտպանելով քրիստոնեական ուսմունքի այդ ելակետային դրույթը՝ Եզնիկն սկսում է հերքել, «եղծել» բոլոր այն փիլիսոփայական ու կրոնական ուսմունքները, որոնք հակասում կամ տարբերվում են քրիստոնեական սկզբունքից։ Որպես ամենակարևորն ու վտանգավորը քննադատության կրակի տակ է առնում հին հունական մատերիալիստ փիլիսոփաների այն միտքը, որի համաձայն նյութը կամ հավերժական է, կամ էլ միշտ գոյություն է ունեցել աստծու հետ հավասար։ Նա մերժում է ստոիկյան և էպիկուրյան ուսմունքները, որոնք հելլենիստական աշխարհում առավել տարածված մատերիալիստական ուսմունքներն էին։ Բայց միաժամանակ Եզնիկը մերժում է նաև պլատոնական, պյութագորյան և պերիպատետիկյան ուսմունքները։ Վերջիններս իդեալիստական լինելով, մեկ բարի աննյութ էության կամ աստվածության սկզբունքը պաշտպանելով հանդերձ, որպես հեթանոսական «կրօնք փիլիսոփայից» մերժվում են Եզնիկի կողմից լոկ այն պատճառով, որ տարբերվում են քրիստոնեական անհատականացված արարիչ-աստծուց։

Եզնիկի գործում զգալի տեղ է գրավում պարսից զրադաշտական կրոնի քննադատությունը, որը, ինչպես հեղինակի, նույնպես և նրա համախոհ-ժամանակակիցների համար հույժ հրատապ մի խնդիր էր։ Այն դուրս էր գալիս զուտ դավանաբանական-կրոնական վեճերի ոլորտից ու կրում էր որոշակի քաղաքական երանգ։ Պարսիկները Եզնիկի օրոք իրենց զավթողական քաղաքականությունը զուգորդում էին Հայաստանում քրիստոնեությունը հետապնդելու, դրա փոխարեն զրադաշտականությունն արմատավորելու հետ։ Այդ պատճառով էլ Եզնիկի «պարսից քեշին» եղծը հետապնդում էր ոչ միայն տեսական կամ աստվածաբանական նպատակներ։ Այն առաջին հերթին ծառայում էր քաղաքական պայքարի ու գաղափարական-մշակութային գոտեմարտի շահերին և ուներ արտաքին թշնամու ոտնձգություններին դիմագրավելու որոշակի միտումներ։

---

[10] «Եղծ աղանդոց», գիրք Ա, գլ. 1, էջ 6։

Եզնիկը սուր քննադատության է ենթարկում և մերժում զրադաշտական ուսմունքի հիմնական դրույթը՝ աշխարհի բարի և չար մասերի դուալիստական բաժանումը, այդ ուսմունքին հակադրելով մեկ բարի էության մոնիստական, քրիստոնեական սկզբունքը։ Իր այդ տեսակետն ապացուցելու նպատակով Եզնիկը քննարկում է նախախնամության, հոգու և մարմնի, բանականի ու նյութականի, կամքի ազատության և այլ հարցեր, որոնց շարադրման ընթացքում հերքում է ոչ միայն պարսից կրոնը, այլև իր բացասական, քննադատական վերաբերմունքն է ցուցաբերում տարբեր քրիստոնեական, հայոց եկեղեցու կազմավորվող դավանաբանությունից շեղվող լուծումների նկատմամբ։ Կտրականապես մերժելով չարի ի բնե հավերժ գոյությունը՝ Եզնիկը նախ քննադատում է պարսից կրոնի դուալիստական դրույթը, և ապա հույն փիլիսոփաների տեսակետը, որոնք չարի աղբյուրը տեսնում էին նյութական աշխարհի մեջ։ Ըստ Եզնիկի, բնության մեջ՝ նյութական և կենդանական աշխարհում ի բնե բարի կամ չար բան գոյություն չունի։ Դրանց բարությունն ու չարությունը մարդկանց համար օգտակար կամ վնասակար, օգտագործելի կամ ոչ պիտանի լինելն է։ Նյութը չար չէ, ոչ էլ բարի. այն ստեղծված է աստծո կողմից մարդուն ի վայելումն, իսկ աստծու ստեղծած և ոչ մի նյութ, իր, կենդանի, բույս չի կարող չար լինել։

Քննադատելով հույն մատերիալիստ-փիլիսոփաներին՝ Եզնիկը ժխտում է նյութի անարարար կամ աստծուն հավերժակից լինելու մատերիալիստական գաղափարը։ «Զաշխարհս նմա մշտնջենաւորակից դնել անհնարին անպարշտութիւն է»[11]։ Եթե այդպես լիներ, ասում է Եզնիկը, ապա աստված կնմանվեր մարդկանց, ստեղծելով իրերը առկա նյութից։ Աստծու հիմնական հատկանիշն այն է, որ նա ոչնչից նախ ստեղծում է նյութը՝ չորս տարրերը, իսկ այնուհետև դրանցից՝ ողջ աշխարհը։

Մարդը նույնպես ստեղծված է աստծո կողմից, ընդ որում նրա հոգին արարիչն ստեղծել է ոչնչից, իսկ մարմինը՝ չորս տարրերից։ Մարմնականը, ըստ Եզնիկի, չար չէ ըստինքյան։ Եթե այդպես լիներ, ապա կստացվեր, որ աստծու կողմից ստեղծված մարդկային էության մի մասը պիտի տանջի մյուսին։ Սակայն ո՞րն է չարի աղբյուրը, ինչո՞ւ մարդ իր ողջ կյանքի ընթացքում չարի ու բարու երկընտրանքի առջև ենթարկվում է բարոյական փորձության։ Բանն այն է, որ աստված իր բարի կամքով տվել է մարդուն նաև անձնիշխանություն, կամքի ազատություն, որպեսզի նա ինքը մերժի չարը և ընտրի բարին։ Բայց մարդու դժբախտությունը հենց այդ՝ նրա կողմից ի չարը գործադրվող ազատությունն է։

Առաջ քաշելով կամքի ազատության սկզբունքը, Եզնիկը միաժամանակ մերժում է ֆատալիզմը, ճակատագրապաշտությունը։ Ընդունելով աստվածային նախախնամությունը, նա գտնում է, որ աստված, ճիշտ է, կանխագետ է, բայց նա չի կանխորոշում մարդու արարքները, և մարդիկ, իրենց ազատ կամքով, ընտրություն են կատարում չարի ու բարու միջև և պատասխանատու են իրենց արարքների, վարք ու բարքի համար։ Իր բարի գործերով մարդ պետք է հաճոյանա աստծուն և անհաշտ պայքար մղի չարի դեմ։ Այդ տեսակետը պաշտպանելով, Եզնիկը հաղորդում է նրան սոցիալ-քաղաքական որոշակի իմաստ, արտահայտելով պարսից լծի դեմ համաժողովրդական ապստամբության նախ-

---

11 «Եղծ աղանդոց», գիրք Գ, գլ. 6, էջ 145։

օրեին ծագած տրամադրությունները։ Ըստ Եզնիկի, ամեն մի մարդ, ինչպես և ամեն մի ժողովուրդ, իր երջանկության դարբինն է։ Եթե, օրինակ, ավազակներն ասպատակում են երկիրը կամ թշնամիները նվաճում են այն, ապա չպետք է դա վերագրել նախախնամությանը և հնազանդվել զավթիչներին. հարկավոր է պայքարի ելնել, զորք գումարել և դուրս նետել թշնամուն հայրենի հողից[12]։

Կամքի ազատության, նախախնամության, մարդկային հոգու հատկությունների բնութագրման հարցերում Եզնիկը կարողացավ խուսափել ավգուստինյան ֆատալիզմի և պելագյան «ազատակամության» ծայրահեղություններից և պաշտպանեց «ուղղափառ» սկզբունքը, որը մարդկային կամքի ազատությունը զուգորդում էր աստվածային նախախնամության հետ, այդ հարցում ևս խորացնելով «Հաճախապատում ճառերում» արծարծված գաղափարները։

V դ. երկրորդ կեսին ջատագովությունը հետզհետե սկսում է իր դիրքերը զիջել մի նոր հոսանքի՝ նորպլատոնականությանը, որը լայնորեն տարածված էր հունական աշխարհում։

Նորպլատոնականությունը, որպես փիլիսոփայական մտքի առանձին ուղղություն, չէր կարող միանգամից ետ մղել ջատագովությունը։ Այն դանդաղ թափանցում էր հայ գաղափարական կյանքի տարբեր ոլորտները, աստիճանաբար ետ մղում ջատագովությունը, ընդ որում, երբ արդեն պարզ դարձավ, որ Ավարայրի հերոսամարտի և պարսից զավթիչների դեմ հայերի հետագա պայքարի շնորհիվ քրիստոնեության դիրքերին այլևս լուրջ վտանգ չի սպառնում։ Երկրի գաղափարական կյանքում տեղի ունեցող փոփոխությունների համար այդ ժամանակամիջոցում առավել բնութագրական է անվանի պատմիչ և մտածող Եղիշեի աշխարհայացքը, 450—460-ական թվականներին նրա ծավալած գրական գործունեությունը ցուցադրում է նորպլատոնական հայացքների սաղմնավորումը քրիստոնեական՝ դեռևս մարտնչող ջատագովության գերիշխանության պայմաններում։

Եղիշեի գրչին, բացի «Վասն Վարդանայ և հայոց պատերազմին» երկից, պատկանում են նաև մի շարք մեկնողական ու քարոյախոսական ստեղծագործություններ՝ «Մեկնութիւն արարածոց», «Վասն հոգւոց մարդկան», «Մեկնութիւն Յեսուայ և Դատաւորաց», «Յաղագս միանձանց», «Յայլակերպութիւնն Քրիստոսի» և այլն։

Որպես V դարի կեսի հայ ազատագրական շարժման գաղափարախոս, Եղիշեն իր հիմնական երկում հանդես է գալիս ջատագովության դիրքերից։ Հերքելով պարսիկ զավթիչների մազդեականությունը և ապացուցելով քրիստոնեական կրոնի «ճշմարտությունն» ու գերազանցությունը այլ կրոնների, մանավանդ զրադաշտականության մազդեական տարբերակի հանդեպ, Եղիշեն Եզնիկ Կողբացու անմիջական ժառանգորդն ու շարունակողն է։ Որպես ծավալված ազատագրական պայքարի ժամանակակից ու ականատես, Եղիշեն ոչ միայն հիմնավորեց այդ պայքարի անհրաժեշտությունը՝ քրիստոնեության և հայրենիքի (նա նույնացնում է այդ հասկացությունները) պաշտպանության դիրքերից, այլև արդարացրեց այն որպես ապստամբության և մազդեական ագրեսիայի հանդեպ հետագա տևական ընդդիմադրության գաղափարախոս։ Հեղինակի խոր հայրենասիրությունը, միանգամայն հասկանալի պատճառներով, ունի կրոնական զգեստավորում, որը, սակայն, չի կարող սքողել նրա իսկական

12 «Եղծ աղանդոց», գիրք Բ, գլ. 15, էջ 113։

դեմքը՝ որպես մի քաղաքական մտածողի և փիլիսոփայի, որի նպատակն է կրոնաքաղաքական, ազգային անկախության գաղափարի պաշտպանությունը։

Հետևելով Եզնիկին, Եղիշեն քննադատում և մերժում է պարսից կրոնի դուալիզմը, որն ընդունում է երկու աստվածների՝ բարի Ահուրամազդի և չար Ահրիմանի գերիշխանությունը։ Եղիշեն մերժում է և այն դրույթը, որ աշխարհը նույն երկու աստվածներից իբր բաժանված է երկու տեսակի՝ չար ու բարի արարածների, քանզի ըստ Եղիշեի միակ բարի արարչից ոչ մի չար ու արատավոր բան առաջ գալ չի կարող։ Աշխարհում, իրոք, կան հակադրություններ, բայց դրանք հավասարակշռվում և համագոյակցվում են աստծո կողմից։ Միասնական աստվածային էությունը հանդես է գալիս որպես ողջ տիեզերքի ստեղծող, որի հիմքում ընկած են չորս տարրերը՝ հուրը, օդը, ջուրը և հողը։ Դրանց տարբեր զուգակցումներից է կազմվում նյութական աշխարհը։ Այդ տարրերը գտնվում են անվերջանալի հակամարտության մեջ, որը և աշխարհի հավերժության պատճառն է[13]։

Եղիշեն, սակայն, իր փիլիսոփայության մեջ չի սահմանափակվում ջատագովության խնդիրներով։ «Վարդանանց պատմության» ավարտից հետո (մտ. 465) նրա հայացքներում աստիճանաբար տեղի է ունենում փոփոխություն, որը կյանքի մայրամուտին մոտեցնում է նրան նորպլատոնական փիլիսոփայության։ Այդ ժամանակամիջոցում գրված նրա ստեղծագործությունների («Մեկնութիւն արարածոց», «Յաղագս միանձանց», «Վասն հոգւոց մարդկան» են) վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ ժամանակ առավել տարածված փիլիսոփայական ուղղություններից մեկը՝ նորպլատոնականությունը, սկսել էր իր համար ուղի հարթել նաև հայ իրականության մեջ, թեպետ և ենթարկված քրիստոնեական իմաստասիրության պահանջներին։

Եղիշեի մոտ հանդիպում են ոչ միայն նորպլատոնականության նախորդների, ինչպես, օրինակ, Փիլոն Ալեքսանդրացու և Հերմես Եռամեծի երկերից կատարված քաղվածքներ, այլև տեսակետներ, որոնք վկայում են նրա՝ նորպլատոնականության սիստեմին ծանոթ լինելու մասին։ Այսպես, իր մտքերին անհրաժեշտ քրիստոնեական ձևավորում տալով, Եղիշեն, նորպլատոնականության հիմնադիր Պլոտինի հետևողությամբ, զարգացնում է մի դրույթ, որի համաձայն մերժվում է աստծո անձնական բնությունը և նա ներկայանում է որպես մի գերագույն էություն, որի նկատմամբ կիրառելի չեն ոչ մի տեսակի սահմանումներ։ Որպես միասնական աննյութ էություն, աստված չունի զգայական աշխարհի հետ և ոչ մի զուգահեռ ու նմանություն, որովհետև անկերպարան և սահմանումից զերծ, նա հավերժ է՝ ժամանակից զատ և անսահման՝ տարածությունից դուրս, որակից ու քանակից ազատ[14]։

Աստվածային էության նման ըմբռնումը թեպետ և շատ ընդհանուր գծեր ունի քրիստոնեական աստվածաբանության հետ, սակայն միաժամանակ էապես տարբերվում է նրա հիմնական դրույթներից, նախ և առաջ նրանով, որ մերժում է աստծո անձնավորացումը, և երկրորդ՝ անանցանելի անջրպետ է առաջացնում աստծո և նրա ստեղծագործության՝ աշխարհի միջև, որը հանդես է գալիս որպես աստվածայինի ամենաստորին դրսևորում։ Դրա հետևանքով

13 Տե՛ս Եղիշէ, Վասն Վարդանայ և հայոց պատերազմին. քննական բնագիր և ներածությունը Ե. Տեր-Մինասյանի, Երևան, 1957, էջ 34—35։

14 Տե՛ս Եղիշէ, Մատենագրութիւն, Վենետիկ, 1859, էջ 306, նաև՝ Լ. Խաչիկյան, Եղիշեի «Արարածոց մեկնութիւն» աշխատությունը, 1945, էջ 166 (մեքենագիր)։

Եղիշեի, ինչպես և խորհրդապաշտորեն տրամադրված նորպլատոնականների մոտ անհետանում է աստվածային էության տիեզերաբանական ապացուցումը, որը լայնորեն կիրառվում է քրիստոնյա ջատագով-փիլիսոփաների կողմից։ Եթե Եզնիկ Կողբացու մոտ բնությունը, իրերը, արարածները չեն կարող չար լինել, որովհետև ստեղծված են ամենաբարի աստծո կամքով, ապա իր կյանքի երկրորդ շրջանում աշխարհից քաշված միանձն Եղիշեի մոտ այդ դրույթը ենթարկվում է վերանայման՝ նորպլատոնականության դիրքերից, դրանից բխող ծայրահեղ ասկետականության կողմերով հանդերձ։ Նյութական աշխարհը Եղիշեի համար նույնքան չարի աղբյուր ու մարմնացում է, որքան և Պլոտինի համար։ Աշխարհն ըստ Եղիշեի, լի է չարությամբ և տառապանքով, և այդ ամենի պատճառն է «ստոր նյութը», որի հետ մարմնական շղթաներով կապված է հակադիր, վերին ու երկնային բնություն ունեցող հոգին[15]։

Եղիշեն առանձին ուժով շեշտում է ոգու և նյութի, աստվածայինի և երկնայինի հակադրությունը։ Մարդը այդ երկու հակադրությունների զուգակցումն է։ Տվյալ դրույթը ելակետային նշանակություն ունի Եղիշեի մարդաբանության, ինչպես և նրա բարոյագիտության համար։ Մարմնական բանտից հոգին ազատագրելու համար կրքերի սանձահարում, ամենայն զգայականից ազատ ոգու վերասլաց թռիչք, աստվածայինի զննում և միաձուլում նրա հետ՝ ահա նորպլատոնականների հետքերով ընթացող քրիստոնյա Եղիշեի իդեալը։ Նյութական կեղևի թոթափումը և հոգու մերձեցումը աստծուն, մարմնականից հրաժարվելու և մեռցնելու միջոցով հոգևոր երանության և «աստվածանմանության» նվաճում, այս ամենը չափազանց մոտ ու հարազատ է նորպլատոնականների «փիլիսոփայական մահացմանը», նրանց ասկետական բարոյագիտությանը։ Հնարավորին չափ հարմարեցնելով նորպլատոնականության դրույթները քրիստոնեական բարոյականությանը, Եղիշեն յուրովի նպաստում է անտիկ փիլիսոփայության գաղափարների ներթափանցմանը և իր ավանդն է մուծում հայ փիլիսոփայական մտքի կազմավորման գործում։ Եղիշեն իր հայացքների հիմնական բովանդակությամբ չի տարբերվում քրիստոնեական փիլիսոփայության հետևորդներից, իր ուսուցիչներ Մաշտոցից և Եզնիկից։ Սակայն նրա՝ անտիկ աշխարհի վերջին մտածողների՝ նորպլատոնականների գաղափարական զինանոցին դիմելու հանգամանքը ընդլայնում է այդ շրջանի հայ փիլիսոփայական մտքի շրջանակները և ազդարարում ջատագովության միահեծան գերիշխանության մոտալուտ ավարտը Հայաստանում։

V դարի վերջին քառորդում քրիստոնեական ուղղությունն ունեցել է մի շարք հետևորդներ, ինչպես, օրինակ, Հովհան Մանդակունին և Մամբրե Վերծանողը, VI դարում՝ Պետրոս Սյունեցին, VII դարում՝ Դավիթ Հարքացին և մանավանդ Հովհան Մայրավանեցին (Մայրագոմեցին)։ Վերջինս, պաշտպանելով հանդերձ պաշտոնական դավանաբանության հիմնական դրույթները և գտնվելով Եզնիկ Կողբացու գաղափարական ուժեղ ազդեցության ներքո ջատագովական ուղղության մեջ թարմ հոսանք մուծեց, հիշեցնելով իշխանավորներին ու հայոց հոգևոր պետերին վաղ քրիստոնեական դեմոկրատական գաղափարները։ Անհավասարությունը, հարուստների և աղքատների առկայությունը, ասում է Մայրավանեցին, անհաճո են աստծուն, որը մարդկանց ստեղծել է

[15] Եղիշէ, Մատենագրութիւն, էջ 375։ Տե՛ս նաև՝ С. С. Аревшатян, Формирование философской науки в древней Армении (V—VI вв.), Ереван, 1973, стр. 121—131.

ավատ և հավասար։ Պետք է զսպել հարուստների անհագուրդ ախորժակը, որոնք հղփանում են աղքատների արյունը ծծելով։ Պատահական չէ, որ Մայրավանեցու հայացքները համահնչուն էին նույն դարում ծավալված պավլիկյան աղանդավորական շարժման գաղափարախոսությանը։ Միաժամանակ զարմանալի չէ, որ Մայրավանեցին իր հայացքների համար հալածվեց եկեղեցական իշխանությունների կողմից[16]։

Քրիստոնեական ուղղության, նրա պաշտոնական, պահպանողական թևին է պատկանում նաև կաթողիկոս Հովհան Օձնեցին (717—728) ինչպես և ականավոր գիտնական Ստեփաննոս Սյունեցին (մհ. 735), որը ավելի հայտնի է որպես վաղ միջնադարի քերականագիտական մտքի ներկայացուցիչ և փիլիսոփայական երկերի (Գրիգոր Նյուսացու, Նեմեսիոս Եմեսացու և Դիոնիսիոս Արեոպագացու) հմուտ թարգմանիչ։

## 3. ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ԵՎ ԳԻՏԱԿԱՆ ԵՐԿԵՐԻ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ: ՀՈՒՆԱԲԱՆ ԴՊՐՈՑԸ ԵՎ ՆՐԱ ԴԵՐԸ ՀԱՅՈՑ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Վաղ ֆեոդալիզմի շրջանում քրիստոնեական, ջատագովական ուղղությանը զուգընթաց առաջացել և իր վերելքն էր ապրում աշխարհիկ ուղղությունը։ Արտահայտելով հայ հասարակության իշխող դասերի առաջադիմական թևի գաղափարական ձգտումները՝ այն շարունակում էր հայկական միջնադարի պայմաններում անտիկ փիլիսոփայության և բնագիտության գիծը։ Հայ հասարակության որոշ շրջաններում քրիստոնեություն ընդունելուց հետո էլ ուժգին ձգտում և հետաքրքրություն կար հին հունական՝ բարձր մակարդակի հասած հոգևոր մշակույթի նկատմամբ։

Մինչև V դարի 60-ական թվականները կրոնամեկնողական, հայրախոսական (patristica) և պատմական երկերի թարգմանությունները, ինչպես և նույն բնույթի հայ հեղինակների ինքնուրույն ստեղծագործությունները, հիմնականում բավարարում էին հայ մշակույթի գործիչների առաջին սերնդի հոգևոր պահանջմունքները։ Այդ երկերը լիովին արտահայտում էին ներքին ու արտաքին հակառակորդների դեմ մղած գաղափարական պայքարի էությունը։ Սակայն ակներև է, որ V դարի առաջին կեսի թարգմանական գրականությունն իր բովանդակությամբ և գաղափարական ուղղվածությամբ միակողմանի բնույթ էր կրում։ Եվ այն չէր կարող բավարարել նոր սերնդի պահանջները, որն արդեն գործ ուներ նոր հակառակորդների հետ։ Սասանյան արքունիքը, հանդիպելով հայ հասարակության բոլոր խավերի կատաղի դիմադրությանը, 50-ական թվականներից հետո հրաժարվեց հայերին հավատափոխ անելու, զրադաշտականություն տարածելու իր ծրագրից։ Եվ այդ իրավիճակում, արդեն Բյուզանդական կայսրության սադրանքներով, սկսեցին գլուխ բարձրացնել Քաղկեդո-

16 Երկար ժամանակ Հովհան Մայրավանեցու ճառերը վերագրվում էին Հ. Մանդակունուն. այդ իր արտահայտությունն է գտել նաև վենետիկյան երկու հրատարակություններում՝ «Տեառն Յովհաննու Մանդակունւոյ ճառք», առաջին տպ.՝ 1836, երկրորդը՝ 1860։ Ապացուցված պետք է համարել այն դրույթը, որ այդ ճառերից «Խրատ վարուց» հատվածը, ինչպես և «Կնիք հաւատոյ» ժողովածուն պատկանում են Հ. Մայրավանեցուն։ Տե՛ս Կ. Տեր-Մկրտչյան, Հովհան Մանդակունի և Հովհան Մայրագոմեցի, «Շողակաթ», Վաղարշապատ, 1913, էջ 92—100, ինչպես նաև՝ Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, հ. 1, Երևան, 1944, էջ 358—363։

նի ժողովի որոշումների կողմնակիցները, սկսեցին թեժանալ միաբնակների և երկաբնակների վեճերը Քրիստոսի բնության շուրջը։ V դարի 50—70-ական թվականներին ողջ քրիստոնեական աշխարհը ներգրավվեց այդ կատաղի վեճերի մեջ և բաժանվեց երկու թշնամացող կողմերի։

Հայ գաղափարախոսները, հասկանալի է, չէին կարող չորոշել իրենց դիրքը այդ՝ արտաքուստ վերացական բնույթ ունեցող հարցի նկատմամբ։ Այն ուներ հեռուն գնացող քաղաքական հետևանքներ. քաղկեդոնականությունը դառնում էր բյուզանդական արքունիքի քաղաքական ճնշման լծակներից մեկը, ազգային եկեղեցիները Կ. Պոլսի պատրիարքին և առհասարակ թեոկրատական սկզբունքներով կառուցված կայսրությանը ենթարկելու մի նոր միջոց։ Այդ վեճերին մասնակցելու, սեփական դիրքերը պաշտպանելու համար անհրաժեշտ էր ունենալ փիլիսոփայական լուրջ պատրաստություն, իմանալ իմացաբանության և տրամաբանության ուսմունքները, փիլիսոփայության և կրոնի պատմությունը, վիճաբանության ու ճարտասանության կանոնները և մի շարք այլ գիտություններ ու արվեստներ։ Աշխարհիկ գիտությունները և աշխարհիկ կրթությունը դիտվում էին արդեն ոչ որպես պերճանք և «արտաքին», հեթանոսական մշակույթի հանդեպ ցուցաբերվող ինչ-որ կասկածելի մի հակում, այլ անհրաժեշտ հենարան բազմապիսի աստվածաբանական խնդիրների հիմնավորման ու մեկնաբանման համար, որոնց շուրջ ծագած վեճերը տասնամյակ առ տասնամյակ ստանում էին ավելի սուր բնույթ։ Այս պատճառներն իսկ սրեցին փիլիսոփայական և այլ աշխարհիկ գիտական գրականության ստեղծման հարցը։

Այդ խնդրի իրագործմանը ձեռնամուխ եղան Մաշտոցի կրտսեր աշակերտները՝ սկսած V դարի 60-ական թվականներից։ Եթե նրանց ուսուցիչների սերունդը հիմնականում սահմանափակվում էր աստվածաբանական-իմաստասիրական խնդիրներով, հայ եկեղեցական գրականության ստեղծմամբ և գլխավորապես կրոնադավանաբանական երկերի թարգմանությամբ, ապա աշակերտների կրտսեր սերունդը, հիմնականում արդեն ազատ լինելով այդ անհրաժեշտությունից, նոր իրավիճակում հայացքը դարձրեց նաև աշխարհիկ գրականության ու գիտության հուշարձանների վրա։ Աշխարհիկ, բուն գիտական երկերի ստեղծման և այլ լեզուներից նման ստեղծագործությունների թարգմանության համար անհրաժեշտ էր ընդլայնել գրաբարի բառապաշարը, հարստացնել այն հատուկ մասնագիտական տերմիններով և առհասարակ գիտական լեզվին անհրաժեշտ դարձվածքներով ու հասկացություններով։ Դրանով հունաբան դպրոցի հետևորդները ձգտում էին հայ դպրության մեջ ներմուծել անտիկ գիտության ու փիլիսոփայության նվաճումները և մղում տալ հայրենի աշխարհիկ գիտության զարգացմանը։

Անհրաժեշտ է նշել հունաբան դպրոցի գործունեության մի կարևոր առանձնահատկությունը, որը բնորոշում է հունաբաններին և բացատրում այդ դպրոցի դերն ու բարեբար ազդեցությունը հայ գիտության և հատկապես փիլիսոփայության հետագա զարգացման վրա։ Բանն այն է, որ հունաբանները, լինելով անտիկ գիտության քաջատեղյակ մարդիկ, ի տարբերություն նախորդ թարգմանիչների և գրողների, հետևում էին այլ ծրագրի, իսկ թարգմանությունների ընտրության ու կատարման ընթացքում կիրառում էին այլ սկզբունքներ։ Նրանք լավատեղյակ էին անտիկ աշխարհում մշակված և վաղ միջնադարում ընդունված գիտությունների դասակարգմանը։ Ըստ այդ դասակարգման, մարդ-

կայի՝ն գիտությունը բաժանվում է բանական և գործնական արվեստների՝ իրենց հին առումով։ Բանական արվեստն իր հերթին բաժանվում էր քերականության, ճարտասանության և փիլիսոփայության (տրամաբանության կամ դիալեկտիկայի)։ Հետագայում որոշ փոփոխություններով և շրջանակների նեղացումով բանական արվեստի այս մասը դարձավ միջնադարյան կրթության եռյակի հիմքը։ Փիլիսոփայությունը, որն այդ դասակարգման կենտրոնում էր, իր հերթին բաժանվում էր երկու մասի՝ տեսական և գործնական փիլիսոփայության։ Տեսական փիլիսոփայությունը ընդգրկում էր բնաբանությունը (ֆիզիկան), մաթեմատիկան և բնազանցությունը (մետաֆիզիկան, հետագայում՝ աստվածաբանությունը)։ Մաթեմատիկան իր հերթին բաժանվում էր չորս բաղկացուցիչ մասերի՝ թվաբանության, երաժշտության, երկրաչափության և աստղաբաշխության, որից առաջացավ միջնադարյան կրթության, այսպես կոչված, քառյակը։

Համադրելով այս հին դասակարգումը հունաբան դպրոցի արտադրանքի հետ, մենք տեսնում ենք, որ հունաբանները հետևողականորեն կիրառել են այն իրենց գործունեության մեջ և, ելնելով գիտության ամենախոշոր առաջին բաժանումից, որի մեջ ընդգրկվում էին քերականությունը, ճարտասանությունը և փիլիսոփայությունը, նախ ձեռնամուխ են եղել հայերեն քերականության ստեղծմանը, մի գիտություն, որը դիտվել է կրթության նախապայման և առաջին անհրաժեշտ աստիճան։

Եվ ահա հունաբան ուղղության գործիչները 460—70-ական թվականներին առաջին հերթին թարգմանում են հին հունարեն քերականության կարկառուն ներկայացուցիչ Դիոնիսիոս Թրակացու «Քերականական արվեստ» երկը, որն իր ոճով, լեզվով ու բառապաշարով մի նոր երևույթ էր հայոց գրականության համար, այնուհետև Աֆթոնիոսի և Թեոն Ալեքսանդրացու ճարտասանական երկերը («Գիրք պիտոյից» և «Յաղագս ճարտասանական կրթութեանց»)։

Դրանից հետո, արդեն շոշափելի բառապաշար կուտակած, կարելի էր մտածել փիլիսոփայական գործեր թարգմանելու և ստեղծելու մասին։ Սկզբում նրանք վերցնում են թարգմանության համար համեմատաբար ավելի հեշտ և քրիստոնյա ընթերցողի համար սրտամոտ հեղինակի երկեր։ Փիլիսոփայական թարգմանական գրականության հնագույն շերտին են պատկանում հելլենիստական աշխարհի ականավոր դեմքերից մեկի, I դարի խոշորագույն փիլիսոփա Փիլոն Եբրայեցու երկերի հայերեն թարգմանությունները՝ կատարված 470—480-ական թվականներին։ Նրա գրչին պատկանող շատ գործեր պահպանվել են միայն հայերեն թարգմանությամբ։ Օրինակ, «Յաղագս նախախնամութեան», «Վասն լինելութեանն», «Լուծմունք ելից», «Յաղագս բան ունել և անասուն կենդանեացդ» և այլ երկեր։ Դրանցից բացի նույն ժամանակ հայերեն թարգմանվեցին Փիլոնի և այլ՝ հունարեն բնագրերով մեզ հասած երկերը։ Հայ փիլիսոփայության և գրականության մեջ Փիլոնը զգալի հետք է թողել։ Փիլոնի գործերը թարգմանելիս հունաբաններն ստեղծում են բազմաթիվ նոր հայերեն տերմիններ, բայց դրանք դեռ այն նեղ մասնագիտական տերմինները չեն, որոնք պետք են իմացաբանական, տրամաբանական և բնափիլիսոփայական խնդիրներով զբաղվելու համար։ Այդ երկերն իրենց բնույթով ու բովանդակությամբ և՛ փիլիսոփայական են, և՛ աստվածաբանական։ Դրանք հիմնականում նվիրված են Աստվածաշնչին, նրա Հին կտակարանի այլաբանական փիլիսոփայական մեկնաբանությանը, որն ընդունելի էր քրիստոնյա գաղափա-

բախոսների համար։ Այդ պատճառով նրա երկերը լայնորեն տարածվեցին ողջ քրիստոնեական աշխարհում։

Փիլոնի գործերի, ինչպես նաև 480-ական թվականներին կատարված Երանոսի ու Տիմոթեոս Կուզի դավանաբանական գրվածքների թարգմանությունները, դրանց բովանդակած բազմաթիվ փիլիսոփայական տերմինները հնարավոր են դարձնում կատարելու երրորդ քայլը, այսինքն՝ բարձրանալու աշխարհիկ գիտությունների եռյակի վերին աստիճանը։ Այդ ժամանակվանից է, որ հունաբաններն իրենց հայացքը դարձնում են դեպի բուն տրամաբանական գիտությունը, իսկ Ալեքսանդրիայում ու Աթենքում ուսած հունաբանների համար դրա ճանաչված ու լավագույն երկերը Արիստոտելի ստեղծագործություններն էին։

Սակայն մինչև Արիստոտելի բուն գործերի թարգմանությանն անցնելը, հունաբան դպրոցի գործիչները կատարում են ևս մի նախնական քայլ։ Այդ ժամանակ բավականին տարածված էր հայտնի նորպլատոնական փիլիսոփա Պորփյուր Փյունիկեցու «Ներածութիւն ստորոգութեանցն Արիստոտելի» երկը, որը գնահատվում էր որպես իսկական ներածություն կամ մուտք՝ Արիստոտելի տրամաբանությունը և առհասարակ փիլիսոփայական գիտությունն ուսումնասիրելու համար։ Հենց դրանից էլ 490-ական թվականներին հունաբան դպրոցի ներկայացուցիչներն սկսում են փիլիսոփայական տրամաբանական երկերի իրենց թարգմանությունը, որը հնագույնն է մասնագիտական փիլիսոփայական թարգմանությունների շարքում։ Այդ ժամանակ կատարվում է ամենավճռական քայլը, փիլիսոփայական մասնագիտական տերմինաբանության ստեղծման ուղղությամբ։ Բազմաթիվ տերմիններ, որոնք չկային հայերենում և որոնց բացակայությունը հնարավոր չէր դարձնում այդ գիտության զարգացումը Հայաստանում, առաջին անգամ ստեղծվում են Պորփյուրի թարգմանության ընթացքում։

Ունենալով արդեն որոշակի հաջողություն և փիլիսոփայական մասնագիտական տերմինների անհրաժեշտ մասնագիտական բառապաշար, հունաբանները հնարավոր համարեցին ձեռնամուխ լինել Արիստոտելի երկերի և դրանց նվիրված մեկնությունների թարգմանությանը։ 490-ական թվականներին թարգմանվեցին Արիստոտելի «Ստորոգութիւնք» («Կատեգորիաներ») և «Յաղագս մեկնութեան» («Մեկնաբանության մասին») երկերը։ Այստեղ օգտագործվեց նախորդ տասնամյակներում ստեղծված քերականական, ճարտասանական և հատկապես փիլիսոփայական ողջ տերմինաբանությունը։ Եվ, քանի որ դա լիովին չէր կարող բավարարել Արիստոտելի երկերի բարդ ու հարուստ բառապաշարի փոխադրմանը, դրանց թարգմանության ընթացքում ստեղծվեցին տասնյակ նորանոր մասնագիտական տերմիններ։ Հայերեն փիլիսոփայական բառապաշարն այնքան հարստացավ, որ դրա միջոցով արդեն կարելի էր արտահայտել ցանկացած վերացական միտք ու գաղափար, թարգմանել մյուս ավելի հեշտ հեղինակներին և ստեղծել տրամաբանական, իմացաբանական ինքնուրույն երկեր։ Դրանից հետո առանձին դժվարություն չէր ներկայացնում Արիստոտելի երկերին նվիրված մեկնությունների թարգմանությունը կամ անտիկ փիլիսոփաների հետքերով գնացող նորպլատոնականների երկերի հայացումը։

Արիստոտելից հետո 490—500-ական թվականներին թարգմանվում են հայտնի նորպլատոնական Յամբլիխոսին վերագրվող երկու ընդարձակ մեկնություններ՝ նվիրված «Ստորոգութիւնք» և «Յաղագս մեկնութեան» երկերին, որոնք

ամբողջությամբ ընդգրկում են մեկնվող աշխատությունների բնագրերը։ Սակայն պետք է շեշտել, որ սկզբնական շրջանում այդ անսովոր և արհեստական հայերենով լույս ընծայվող աշխատությունները, հավանաբար, հասկանալի էին լինում առավելապես հունական կրթություն ստացած մտավորականներին, որոնք աստիճանաբար ընտելանում էին նոր տերմիններին ու դարձվածքներին։

Անտարակույս, սկզբնական շրջանում չափազանց դժվար պետք է լիներ այդ նորաստեղծ բառապաշարով ինքնուրույն փիլիսոփայական երկեր գրելը։ Որոշ ժամանակ էր հարկավոր այդ մասնագիտական լեզուն ու տերմինները մարսելու համար։ Ուստի, հավանաբար, հունական կրթություն ստացած իմաստասերների համար ավելի դյուրին պետք է լիներ իրենց գործերը նախապես գրել վաղուց կայունացած և միջազգային նշանակություն ունեցող հունարենով և ապա թարգմանել դրանք հայերեն, օգտագործելով նախորդ թարգմանություններում ստեղծված բառերը, շտկել անհաջողները և ստեղծել նորերը։ Որ հենց այդ ճանապարհով են գնացել հունաբան դպրոցի գործիչները, վկայում է Դավիթ Անհաղթի ստեղծագործությունը։ Նրա երկերի պահպանված հունարեն և հայերեն տարբերակները, ինչպես ապացուցել են Ն. Ադոնցը և Հ. Մանանդյանը, վկայում են, որ իրոք մասնագիտական փիլիսոփայական այնպիսի երկեր, ինչպես «Սահմանք իմաստասիրութեան», Արիստոտելի «Անալիտիկայի» ու «Կատեգորիաների», նաև Պորփյուրի «Ներածության» հմտալից մեկնությունները Դավիթ Անհաղթը շարադրել է նախ հունարեն՝ VI դարի առաջին կեսին, իսկ այնուհետև դրանք թարգմանվել են հայերեն, հավանաբար, հեղինակի հըսկողությամբ կամ մասնակցությամբ։

Հունաբան դպրոցի խոշորագույն նվաճումներից էր նաև հռչակավոր հույն իմաստասեր, անտիկ փիլիսոփայության կարկառուն ներկայացուցիչ Պլատոնի երկերի թարգմանությունը՝ կատարված VI դարի սկզբում[17]։ Հունաբանները, մեծ մասամբ իրենց կրթությունն ստանալով Ալեքսանդրիայում, նորպլատոնականության այդ խոշորագույն կենտրոնում և հարելով նորպլատոնական ուղղությանը, կանգ չառան ոչ մի դժվարության առաջ և հայ ընթերցողին տվեցին իրենց հոգևոր հոր՝ Պլատոնի երկերի՝ «Տիմեոսի», «Եվտիփրոնի», «Մինոսի», «Սոկրատի պաշտպանության» և «Օրենքների» հմուտ թարգմանությունները։

Պորփյուրի, Արիստոտելի և Պլատոնի երկերի թարգմանությունների շնորհիվ և հատկապես Դավիթ Անհաղթի աշխատություններով հայ գիտական գրականությունը, առաջին հերթին փիլիսոփայությունը մասնագիտանում ու աշխարհականանում է իր էությամբ ու բովանդակությամբ։ Այդ երկերը, հիմնականում նվիրված լինելով գոյաբանության, իմացաբանության, տրամաբանության, մասամբ նաև հասարակագիտության ու բարոյագիտության խնդիրներին, հայ իրականության մեջ դառնում են փիլիսոփայական գիտությունների զարգացման համար հաստատուն հիմք՝ համապատասխան հարուստ ու ճկուն տերմինաբանությամբ և բարձրացնում հայ փիլիսոփայական միտքը իր ժամանակի զարգացած ազգերի գիտության մակարդակին։

Հունաբան դպրոցի թարգմանությունների կարևորագույն ու մեծ մասը կազմող փիլիսոփայական գրականությունը կոչված էր զինելու հայ մտավորականներին գաղափարական գոտեմարտում, մի գրականություն, որն իր համա-

---

17 Տե՛ս Ս. Արևշատյան, Պլատոնի երկերի հայերեն թարգմանության ժամանակը, «Բանբեր Մատենադարանի», հ. 10, Երևան, 1971։

կողմանի և համապարփակ բնույթով պատասխանում էր գաղափարական վեճերում ծագող քաղաքական, դավանաբանական, բնագիտական և բարոյագիտական բազմապիսի կնճռոտ հարցերի[18]։

## 4. ԱՇԽԱՐՀԻԿ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՄՏՔԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Թարգմանությունների միջոցով հայ գիտնականներն սկսեցին արագորեն յուրացնել անտիկ ժառանգությունը։ Այդ ընթացքում ծնվեցին և աշխարհիկ մտավոր ուղղությանը հետևող հայ քերականների ու մտածողների առաջին ինքնուրույն ստեղծագործությունները։ Դրանց թվին են պատկանում Դավիթ Քերականի, Մովսես Քերթողի և Անանունի՝ V դարի վերջին քառորդում գրված մեկնությունները՝ նվիրված Դիոնիսիոս Թրակացու «Քերականությանը»[19]։

Հին հայ մտածողների և թարգմանիչների այդ խմբի հայացքները գտնվում էին հելլենիստական գիտության ուժեղ ազդեցության տակ։ Հայ մշակույթի և փիլիսոփայության աշխարհիկ ուղղության ձևավորման ընթացքում հելլենիստական այդ ավանդույթները զգալի վերելք էին ապրում, խթանելով միաժամանակ նաև ինքնուրույն փիլիսոփայական մտքի զարգացմանը։ Արվեստաբանական և գրականագիտական որոշ խնդիրներ ընդգրկող հին քերականության և ճարտասանության բնույթը հնարավորություն ընձեռեց հունաբան դպրոցի արդեն առաջին գործիչներին իրենց մեկնողական աշխատություններում արծարծել արվեստի էության սեփական ըմբռնումները, արտացոլել հայկական միջավայրի գեղագիտական պատկերացումները և գեղարվեստի զարգացման միտումները։ Այդ մեկնությունները չափազանց նշանակալից ու արժեքավոր են որպես աշխարհիկ գիտափիլիսոփայական բովանդակություն ունեցող առաջին երկեր, որոնք դուրս են գալիս քրիստոնեական փիլիսոփայության շրջանակներից, թեև որոշ գաղափարներ դրանց մեջ հարմարեցված են հայոց եկեղեցու շահերին։

Դիոնիսիոս Թրակացին և նրա հայ մեկնիչները սահմանում են քերականությունը որպես մի արվեստ, որը պատկանում է գիտության բնագավառին։ Սակայն էական տարաձայնությունը Դիոնիսիոսի ու նրա հայ մեկնիչների միջև սկսվում է այն կետից, երբ սահմանվում է թե ինչպիսի գիտություն է այն։ Դիոնիսիոսը ելնում է էմպիրիկ սկզբունքից և գտնում, որ քերականությունը փորձի վրա հիմնված գիտություն է[20], մինչդեռ հայ մեկնիչների ամբողջ խումբը քերականության և առհասարակ արվեստի սահմանման հարցում ելնում է հակադիր՝ ռացիոնալիստական սկզբունքից։ Օրինակ, ըստ Դաւիթ Քերականի, փորձը կամ հմտությունը բնութագրվում է որպես «անկար սովորութիւն՝ ըստ նմանութեան երթալոյ անասնոց ի սովորական տեղիսն»[21], մինչդեռ արվեստը հենվում է բանականության վրա և այդ պատճառով կարիք ունի «առաւել գի-

---

18 Հունաբան դպրոցի գործունեության և գրական արտադրանքի մասին մանրամասն տե՛ս Հ. Մանանդյան, Հունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները, Վիեննա, 1928։ Նաև՝ *С. С. Аревшатян,* Формирование философской науки в древней Армении (V—VI вв.), Ереван, 1973.

19 Տե՛ս *Н. Адонц,* Дионисий Фракийский и армянские толкователи, Птг., 1915.

20 Նույն տեղում, էջ CXXIX. Տե՛ս նաև՝ *А. А. Адамян,* Эстетические воззрения средневековой Армении, Ереван, 1955, стр. 24—52.

21 Դաւիթ Քերական, Մեկնութիւն քերականին, հրատ. Գ. Ջահուկյանի, «Բանբեր մատենադարանի», հ. 3, 1956, էջ 247։

տութեան»։ Այդ ռացիոնալիստական սկզբունքն իր ցայտուն արտահայտությունն է գտել **Մովսէս Քերթողի** մոտ, որը մերժելով Դիոնիսիոս Թրակացու էմպիրիզմը, պնդում է, որ արվեստի աղբյուրը բանականությունն է, և որ արվեստ ստեղծողը միտքն է[22]։

Նույն ռացիոնալիստական գիծը դրսևորվում է հայ քերականների մոտ նաև արվեստի դասդասման հարցում, որն էապես տարբերվում է հին հունական մտածողների դրույթներից։ Բաժանելով արվեստը բանական և գործնական մասերի, Դավիթ Քերականը ստորաբաժանում է դրանք երեք տեսակի՝ «բարի», «չար» և «միջակ»։ Ըստ Քերականի, բանական արվեստի բարի տեսակն է «գիրք ինչ և կամ երգք հոգևորք», չար՝ «թովչութիւնք և կախարդութիւնք», միջակ՝ «մրմունջք և նմանք նոցին»[23]։ Նրա համար ընդունելի է միայն «բարի» արվեստը, որն զբաղվում է եկեղեցուն անհրաժեշտ գրական և երաժշտական երկերի ստեղծմամբ։ Քերականը մերժում է, այսպես կոչված, «միջակ» արվեստը, որն ընդգրկում է հոգևոր բովանդակություն չունեցող քնարերգությունը, երաժշտությունն ու պարարվեստը, մերժում է որպես անօգուտ, թեև նշում է, որ դրանք վնասակար չեն։ Հասկանալի է, որ ավելի ևս մերժելի է «չար» արվեստը, հեթանոսական ավանդույթների հետ կապված թովչությունն ու կախարդությունը։

Զնայած Դավիթ Քերականի, Մովսես Քերթողի և այլ մեկնիչների աշխարհիկ մտածելակերպին, նրանց հայացքներում դրսևորվում է քրիստոնեական Հայաստանում իշխող արվեստի և գրականության գնահատման եկեղեցականաստվածաբանական եկակետը։ Նման գնահատության հիմքում ընկած օգտակարության չափանիշը բխում է առաքինության քրիստոնեական հասկացողությունից։ Դավիթ Քերականի ու նրա համախոհների համար հելլենիստական գեղագիտությունն ստեղծագործական վերամշակման ենթարկվեց երկրի յուրահատուկ հասարակական-քաղաքական պայմաններին համապատասխան։

Հունաբան դպրոցի ականավոր ներկայացուցիչներից էր նաև պատմահայր **Մովսէս Խորենացին**, որի գրչին բացի «Հայոց պատմությունից» պատկանում են «Պիտոյից գրքի», «Ալեքսանդր Մակեդոնացու վարքի» ինչպես և, ամենայն հավանականությամբ, Փիլոն Եբրայեցու և Թեոն Ալեքսանդրացու թարգմանությունները։ «Պիտոյից գրքի» մեջ կան մի շարք ինքնուրույն հատվածներ, որոնք մուծված են շարադրանքի մեջ թարգմանչի կողմից և հիմք են տալիս խոսելու նաև նրա գեղագիտական հայացքների մասին։

Մովսես Խորենացու աշխարհայացքում հելլենական կրթությունն ու աշխարհիկ մտածելակերպը զուգորդվում են քրիստոնեական գաղափարախոսության հետ, ինչպես այդ տեսանք Դավիթ Քերականի մոտ։ Մ. Խորենացին քրիստոնեական միաստվածության դիրքերից քննադատում է հեթանոսական կրոնը, մարդկանց երևակայության արդյունք հայտարարելով հեթանոսական աստվածներին։

Իր սոցիալ-քաղաքական հայացքներով Խորենացին հանդես է գալիս որպես հաղթանակած ֆեոդալիզմի գաղափարախոս։ Ավատատիրությունը, դասային նվիրապետությունը նրա համար անխախտ են և բնական, աստծո կողմից սահմանված։ Սակայն ամենաբնորոշն ու նորը Խորենացու հայացքներում

---

22 Տե՛ս *Н. Адонц*, Дионисий Фракийский..., стр. 161. *Ա. Ադամյան*, նշվ. աշխ., էջ 41։
23 **Դաւիթ Քերական**, *Մեկնութիւն քերականին*, էջ 244։

այն է, որ «Հայոց պատմությունը» շարադրելիս նա բացահայտում է իր՝ էությամբ աշխարհիկ պատմափիլիսոփայական և սոցիալ-քաղաքական կոնցեպցիան։ Այն տոգորված է բարձր հայրենասիրական պաթոսով և ազգային անկախության գաղափարով։ Խորենացին առաջինը շարադրելով Հայաստանի և հայերի ամբողջական ու սիստեմատիկ պատմությունը՝ սկսած հնագույն ժամանակներից մինչև V դարի կեսերը, այն ուղղակի ծառայեցրել է իր պատմափիլիսոփայության հիմնական գաղափարներին։

Իր խոսքը Խորենացին անմիջականորեն ուղղում է իր ժամանակակիցներին և կոչ անում հետևել քաջ նախնիների օրինակին։ Հայրենասիրությունը և հայրենիքի անկախության համար անձնազոհությունը ամենաբարձր առաքինություններն են, որ պետք է ունենան Հայաստանի ոչ միայն երևելի այրերը, այլև ողջ ժողովուրդը։ Այդ է ազատության և պետական անկախության վերականգնման երաշխիքը։

Մովսես Խորենացին զարգացրել է պետության գլուխ կանգնած թագավորի իդեալական կերպարի գաղափարը։ Այդպիսի իդեալական գահակալ նա համարում էր Տիգրան Մեծին։ Խոսելով Տիգրան Մեծի մասին՝ Խորենացին ողջ խորությամբ բացահայտում է ազգային սուվերենության իր ըմբռնումները, առաջ քաշելով այն չորս անհրաժեշտ հատկանիշները, որոնցով օժտված պետք է լինեն անկախ պետությունը, թագավորական իշխանությունը և թագավորի անձնավորությունը։

Ամենից առաջ, ըստ Խորենացու, թագավորը պետք է լինի իմաստության, տիրողականության և արիության ամենակատարյալ տիպար, որովհետև այդ հատկանիշները երաշխիք են այն նպատակների իրականացման, որոնց համար գոյություն ունի պետությունը։ Երկրորդ, այդպիսի թագավորի ղեկավարած պետությունը պետք է իր կարևորագույն նպատակն ունենա բոլոր հողերի տիրապետումն ու պաշտպանությունը, որոնք բնակեցված են տվյալ ժողովրրդի կողմից կամ առաջ պատկանել են նրան, այդ հողերի վրա իրականացնի գերագույն իշխանություն և ապահովի բնակչության անվտանգությունը օտարերկրյա ոտնձգություններից։ Երրորդ, այն ժամանակվա պատկերացումներին համապատասխան, Խորենացին սուվերենության հասկացողության մեջ ներառնում է այլ ենթակա ժողովուրդների նկատմամբ իշխանության իրագործում և «օրինական» հարկահանություն, որը հարստացնում է պետության գանձարանը, նպաստում երկրի տնտեսական կյանքի ծաղկմանն ու նրա բնակիչների հարստացմանը։ Եվ, վերջապես, չորրորդ կարևոր հատկանիշը ռազմական հզորության ամրապնդումն է, որը պետական սուվերենության ապահովման երաշխիքն է, բանակի, նրա սպառազինման նկատմամբ մշտական հոգատարությունը, ռազմական հմտության և մարտական բարձր ոգու ապահովումը թագավորի առաջնակարգ խնդիրն ու պարտականությունն են։ Ըստ Խորենացու այդպիսի հատկանիշներով օժտված եղել է Տիգրան Մեծը, որը և գործել է դրանց համապատասխան։

Հայաստանի քրիստոնյա թագավորներից և ոչ ոք չարժանացավ Խորենացու այնպիսի գնահատականներին ու գովեստներին, որպիսին նա տվել է հին հայկական պետության ծաղկման շրջանի հեթանոս թագավորներին։ Տվյալ դեպքում հարցի կրոնական կողմը ետ է մղվում և առաջնակարգ նշանակություն է ստանում այս կամ այն թագավորի անմիջական ներդրումը անկախ հայկական պետության ստեղծման, նրա սուվերենության ամրապնդման գործում։

Իսկ երբ Խորենացին դառնում է իր ժամանակաշրջանին, երևան է գալիս հոգևոր իշխանության մեծարման, նրան աշխարհիկ իշխանությանը հակադրելու հակումը։ Երբեմն, ինչպես վերջին Արշակունիների օրոք, եկեղեցական իշխանությունը նույնիսկ հանդես է գալիս թագավորական իշխանության պաշտպանի և խնամակալի դերում։ Սակայն Խորենացին պատկանում էր հոգևորականության այն թևին, որը շուտ գիտակցեց թագավորական տան վերացման կործանարար լինելը երկրի ապագայի, ինչպես և եկեղեցու համար։

Բացահայտելով իր պատմափիլիսոփայությունը և սոցիալ-քաղաքական ըմբռնումները՝ Խորենացին նպատակամետ շարադրանքով ընթերցողին մոտեցնում է արդիականությանը, ցույց տալիս ստեղծված իրավիճակի անտանելի ծանրությունը և օտար լծի դեմ անհաշտ պայքարի անհրաժեշտությունը՝ հանուն Հայաստանի պետական անկախության վերականգնման։ Իր երկը նա ավարտում է հուշակավոր ողբով, որն արտահայտում է ոչ միայն հայրենիքի դառն ճակատագրի, Հայոց թագավորության անկման հետևանքով ստեղծված իր հայրենակիցների աղետալի վիճակի համար հեծող հայրենասերների վիշտը, այլև այդ թագավորության, ազգային անկախության վերականգնման երազանքը։

Մովսես Խորենացին առաջինն էր հայ մտածողներից, որ հանդես եկավ որոշակի պատմաքաղաքական գաղափարների համակարգով և դրանով իսկ հին հայկական իմաստասիրության մեջ դրեց շեշտված աշխարհիկ միտումներ ունեցող սոցիալ-քաղաքական մտքի պատմափիլիսոփայության հիմքերը։

Մովսես Խորենացու աշխարհիկ մտածելակերպը ցայտուն դրսևորվում է նաև նրա գեղագիտական հայացքներում, նրա արվեստի փիլիսոփայության մեջ։ «Պիտոյից գրքի» ընդմիջարկություններում Խորենացին պաշտպանում է իրականության ճշմարտացի արտացոլման գաղափարը և առաջնակարգ նշանակություն է տալիս արվեստի դաստիարակչական դերին։ Արվեստի օբյեկտն է, ըստ Խորենացու, կյանքի ճշմարտությունը, որն արտահայտվում է խաղի, արտասանության և կերպարի արտաքինի միջոցով։ Արվեստը, ինչպես և փիլիսոփայությունը, օգնում են մարդուն գտնելու չարից փախչելու և բարուն հասնելու միջոցներն ու ճանապարհները։ Ճշմարտացի արվեստը, ասում է Խորենացին, տալիս է մարդուն հոգեկան բավարարություն, հաճույք և միաժամանակ հանդիսանում է կյանքի ճանաչման միջոց, մինչդեռ կեղծ արվեստը մոլորեցնում է մարդկանց և վնաս հասցնում հասարակությանը։ Արվեստի բովանդակազրկման պատճառը Խորենացին համարում է նահանջը կյանքի ճշմարտությունից։ Նա բարձր է գնահատում հունական ողբերգությունը, մասնավորապես մեծ ողբերգու Եվրիպիդեսի վարպետությունը, որն իր ճշմարտացի արվեստի ուժով ներգործում է մարդկանց զգացմունքների վրա՝ վեհ գաղափարների և ազնիվ բնավորությունների դաստիարակման նպատակով։ Արվեստը պետք է օգտագործի հուզական ներգործության իր ուժը չարի մերկացման և բարու քարոզման նպատակով։ Մովսես Խորենացու առաջավոր գեղագիտական սկզբունքները, ռեալիստական արվեստի պաշտպանությունը և նրա կարևոր հասարակական ֆունկցիայի ճանաչումը դրական դեր խաղացին հայ էսթետիկական մտքի հետագա զարգացման գործում։

## 5. ԴԱՎԻԹ ԱՆՀԱՂԹԻ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆԸ

Հայ փիլիսոփայական մտքի աշխարհիկ ուղղության ամենակարկառուն ներկայացուցիչը հունաբան դպրոցի ականավոր գործիչ Դավիթ Անհաղթն էր (V—VI դդ.)։ Նրա ստեղծագործությունը վճռական դեր խաղաց փիլիսոփայական գիտության ձևավորման գործում։ Նրա երկերում իշխում է անտիկ մտածողության ոգին և ցայտուն կերպով դրսևորվում են սերտ կապերը հին հունական փիլիսոփայության գանձարանի հետ[24]։ Չնայած այն բանին, որ Ալեքսանդրիայում ուսում ստացած Դավթի փիլիսոփայության ակունքները գտնվում էին հին հունական և հելլենիստական աշխարհում, այդ աշխարհի շատ գաղափարներ Դավթի կողմից ներմուծվելով հայ իրականության մեջ, գտան այստեղ պարարտ հող և միահյուսվեցին հաղթանակած քրիստոնեական գաղափարախոսության հետ։ Բանն այն է, որ արիստոտելիզմի և նորպլատոնականության ուսմունքները վարպետորեն իրար զուգակցող Դավթի գործերում կատարվում էր շրջադարձ անտիկ, հեթանոսական աշխարհայացքից դեպի միջնադարյանը, քրիստոնեականը։

Դավթի փիլիսոփայությունը պատկանում է նորպլատոնականության այն ուղղությանը, որն իշխում էր V—VI դդ. Ալեքսանդրիայում։ Այն կարելի է բնորոշել որպես նորպլատոնականացված արիստոտելիզմ, իդեալիստական հիմքի վրա Պլատոնի, Արիստոտելի և Պյութագորասի ուսմունքները իրար միահյուսող, բայց և բնագիտությունը, մաթեմատիկային և տրամաբանությանը մեծ տեղ հատկացնող, իր ժամանակի համար առաջավոր մի ուղղություն, որին հատուկ էին մատերիալիստական հակումներ։ Այդ հակումներն առավել ցայտուն դրսևորվում էին իմացաբանության և տրամաբանության բնագավառներում, առանձնացնելով Ալեքսանդրիայի դպրոցը նորպլատոնականության այլ դպրոցներից։

Ըստ Դավթի, բոլոր գոյացությունների սկիզբն ու պատճառը աստված է։ Նա հետևում է աստծո գոյության տիեզերաբանական (կոսմոլոգիական) ապացուցման եղանակին, որն առաջադրել էր Արիստոտելը. «Թեև աստվածայինն ինքնին անճանաչելի է,— բացատրում է Դավիթը,— սակայն տեսնելով նրա կողմից ստեղծված իրերն ու արարածներին, ինչպես և աշխարհի կանոնավոր շարժումը, մենք ճանաչում ենք աստծուն մտածողությամբ ու բանականությամբ։ Անտեսանելին հեշտությամբ ճանաչվում է այն բանի միջոցով, որը տեսանելի է»[25]։ Թեև Դավիթը չի բաժանում նորպլատոնական տեսակետը աստծո անմիջական հայեցման մասին, սակայն նա ընդհանուր առմամբ դուրս չի

---

24 Դավիթ Անհաղթի փիլիսոփայական երկերն են՝ «Սահմանք իմաստասիրութեան», «Վերլուծութիւն ներածութեանն Պորփիւրի», «Մեկնութիւն ի վերլուծականն Արիստոտելի» և «Մեկնութիւն Ստորոգութեանցն Արիստոտելի»։ Դրանց հեղինակային պատկանելության հիմնավորումը մանրամասն տե՛ս Ս. Արևշատյան, Դավիթ Անհաղթի ժառանգությունը նոր լուսաբանությամբ, «Բանբեր Մատենադարանի», հ. 9, Երևան, 1969։

25 Դավիթ Անհաղթ, Սահմանք իմաստասիրության, քննական բնագիրը, թարգմ. գրաբարից ռուսերեն, առաջաբանն ու ծանոթագրությունները Ս. Ս. Արևշատյանի, Երևան, 1960, էջ 16։ Դավթի փիլիսոփայության մասին մանրամասն տե՛ս *В. К. Чалоян*, Философия Давида Непобедимого, Ереван, 1946. Նույնի՝ Հայոց փիլիսոփայության պատմություն, Երևան, 1975. *С. С. Аревшатян*, Формирование философской науки в древней Армении, Ереван, 1973. Տե՛ս նաև՝ Դավիթ Անհաղթ, Երկեր, թարգմանությունը, առաջաբանը և ծանոթագրությունները Ս. Ս. Արևշատյանի, Երևան, 1980, էջ 42։

գալիս նորպլատոնականության շրջանակներից։ Ըստ նրա, աստծո ճանաչումը հնարավոր է աստվածային ստեղծագործություններից՝ բնությունից դեպի ինքը արարիչ բարձրանալու ճանապարհով։ Բարձրանալու առաջին աստիճանը նյութական իրերի ճանաչումն է, որը և կազմում է զգայական ճանաչման աստիճանը։ Առանց այդ աստիճանի անհնար է ճանաչել աշխարհը։ Երկրորդ աստիճանն զբաղվում է գոյաձևերի ճանաչմամբ, որը նյութական է ըստ իրի, բայց աննյութ է ըստ գաղափարի։ Այս աստիճանում ճանաչվում են իրերի կերպարանքները, վերացարկված նրանց նյութական մարմնից։ Իրենց բովանդակությամբ իրերի ձևերը նյութական են, նրանք չեն կարող գոյություն ունենալ առանց նյութի, ինչպես օրինակ, եռանկյունին կամ քառակուսին, սակայն ճանաչելիս միտքը անջատում է նրանց նյութից։ Այստեղ անցում է կատարվում ճանաչման զգայական աստիճանից դեպի բանականը։ Իսկ վերջին երրորդ աստիճանում տեղի է ունենում էության ճանաչումը, որն աննյութ է «և՛ իրականորեն, և՛ ըստ գաղափարի, ինչպես աստվածը; հրեշտակը, բանականությունը, հոգին»[26]։

Այսպիսով, ըստ Դավթի, աստծո ճանաչման ընթացքում մարդը ճանաչում է նաև բնությունը, և սկսելով նյութական գոյերից, անցնելով իրերի աննյութ ձևերի ըմբռնման միջով, հասնում է աստվածային կեցության՝ այդ բացարձակ աննյութ աշխարհի ընկալմանը, որով և ավարտվում է ճանաչման պրոցեսը։

Ճանաչման այդ աստիճաններին համապատասխան Դավիթը դնում է գիտությունների դասակարգման և աստիճանական ուսումնասիրության հարցը, սկզբից բնագիտության, որն զբաղվում է նյութական իրերի ուսումնասիրմամբ, այնուհետև՝ մաթեմատիկայի՝ մարմինների աբստրակտ ձևերի, և հետո միայն աստվածաբանության (մետաֆիզիկայի) ուսումնասիրման հարցը, որը զբաղվում է աննյութ աշխարհի ճանաչմամբ։

Աստծո գոյության տիեզերաբանական ապացուցման եղանակը, որը հաստատում է աստվածային կեցությունը նրա ստեղծագործության, այսինքն բնության ճանաչման միջոցով, հանգեցնում է Դավթին ոչ միայն մարդուն շրջապատող աշխարհի՝ այդ «անառարկելի, անկասկած գոյացության» ռեալականության ընդունմանը, որը գոյություն ունի նրա գիտակցությունից անկախ, այլև այդ աշխարհի ճանաչման հնարավորությունը և անհրաժեշտությունը։

Դավիթը հետևողականորեն բացահայտում է ագնոստիկների և ռելյատիվիստների, սկեպտիկների և սոփեստների պնդումների անհեթեթությունը, որոնք ժխտում էին աշխարհի ճանաչման հնարավորությունը և այդ կապակցությամբ փիլիսոփայության՝ որպես գիտության գոյության իրավունքը։ Այդ մտածողների թվին էր պատկանում առաջին հերթին հին հունական փիլիսոփա սկեպտիկ Պիհռոնը, որի դեմ և ուղղված է Դավթի «Սահմանք իմաստասիրության» երկը։ Քննադատելով իր հակառակորդին՝ Դավիթը պնդում է, որ գոյերն սկզբունքորեն ճանաչելի են, և այն տեղեկությունները, որ տալիս են մեզ մեր զգայարաններն ու նրանց վրա հենվող բանականությունը, բավարար են աշխարհը ճանաչելու համար։

Ռելյատիվիզմի հետևորդները պնդում են, թե ճանաչումն առհասարակ անհնարին է՝ գոյերի մշտական շարժման ու փոփոխման պատճառով։ Դավիթը հեր-

---

26 Դավիթ Անհաղթ, Սահմանք իմաստասիրության, Երևան, 1960, էջ 12։

քում է նրանց պատճառաբանությունները, ասելով, որ գույներն իսկապես շարժվում ու փոփոխվում են, սակայն դրանց ճանաչումը հնարավոր է, որովհետև գույների մասին եղած գիտությունը՝ «փիլիսոփայությունը վերաբերում է ոչ թե մասնավորին, որը գտնվում է շարժման մեջ, այլ ընդհանուրին, որը չի փոփոխվում և միշտ լինում է միևնույնը»[27]։ Գույների շարժման փոփոխման ճանաչման միջոցով փիլիսոփայությունը կարող է ըմբռնել այն, ինչ որ նրանցում անփոփոխ ու հավերժ է, այսինքն՝ հասնել իրի էության և տալ դրա սահմանումը։

Դավիթն առանձին արծարծում է սահմանման հարցը, որի հետ նա անմիջականորեն կապում է փիլիսոփայության առարկայի, խնդրի և էության սահմանումը։ Այդ հարցին սկեպտիցիզմի դեմ մղած իր պայքարում Դավիթը մեծ նշանակություն է տալիս։ Ըստ Դավթի, այն առարկան, որը չի ենթարկվում սահմանման, հնարավոր չէ ճանաչել։ «Եթե որևէ մեկը ցանկանում է մտածել և խորհել մի որևէ իրի մասին, նա նախ և առաջ պետք է իմանա այդ իրի բնությունը, այսինքն՝ նրա սահմանումը»[28], որովհետև ըստ Դավթի, հնարավոր չէ որևէ բան ճանաչել, եթե այն հնարավոր չէ սահմանել։

Գիտական մեծ հետաքրքրություն է ներկայացնում այն հանգամանքը, որ սահմանումը, որպես տրամաբանական կատեգորիայի առաջացում, Դավիթը բացատրում է մարդկանց կենսական, գործնական կարիքներով։ Հողային հարաբերությունները, ըստ Դավթի, հենց այն աղբյուրն են, որից և բխել, իսկ այնուհետև դարձել է տրամաբանության սեփականություն սահմանումի գաղափարը։ «Անհրաժեշտ է գիտենալ,— ասում է նա,— որ սահմանումն առաջ է եկել գյուղերի և ագարակների սահմաններին նմանվելուց, որովհետև մեր նախնիները, երկու ծայրահեղություններից՝ ավելորդությունից ու պակասությունից խուսափելու համար, ստեղծեցին սահման դնելը, որպեսզի վայելեն իրենց ունեցածը և ձեռք չտան ուրիշինը։ Ահա այդպես է և սահմանումը, որը սահմանագծելով տվյալ առարկան, զատում է նրան այլ իրերից»[29]։ Այսպիսով, սահմանման տրամաբանական կատեգորիան Դավիթը դուրս է բերում ոչ թե մտածողությունից, այլ օբյեկտիվ իրողությունից, հողային հարաբերություններից։ Մատերիալիստորեն է նա լուծում նաև տարբեր գիտությունների ծագման հարցը, բացատրելով այն մարդկանց նյութական պահանջներով[30]։

Աշխարհի ճանաչման և դրա շնորհիվ աստծուն մոտենալու լավագույն միջոցը, ըստ Դավթի, փիլիսոփայական գիտությունն է։ Ճանաչման պրոցեսն ընթանում է երկու ճանապարհով, և ըստ այդմ էլ այն ունի երկու ձև՝ զգայական և բանական։ Մի ձևից մյուսին հասնելու համար ճանաչումն անցնում է հինգ իրար նախապատրաստող աստիճաններ։ Ճանաչման առաջին և ստորին աստիճանը զգայությունն է, այնուհետև հաջորդաբար գալիս են երևակայությունը, կարծիքը, խոհականությունը և բանականությունը։ Զգայությունը, երևակայությունը և չհիմնավորված կարծիքը տալիս են փորձնական, էմպիրիկ գիտելիքներ։ Երևակայությունը, հիմնավորված կարծիքը և խոհականությունը հիմք են ծառայում արվեստի համար։ Միայն խոհականությունն է տալիս գիտական գիտելիք, մակացություն, իսկ բանականությունը, որը ճանաչման վերջին և բարձ-

---

27 Անդ։

28 Անդ, էջ 22։

29 Անդ, էջ 36։

30 Անդ, էջ 152։

բազուն աստիճանն է, հանդիսանում է ամենաստույգ և մարդկանց կատարելագործման համար ամենակարևոր գիտության՝ փիլիսոփայության հիմքը։

Խոսելով մարդու ճանաչողական ընդունակությունների մասին՝ Դավիթը որոշակիորեն զատում է իրարից ճանաչման պրոցեսի զգայական ու բանական աստիճանները։ Զգայությունն ու երևակայությունը, ըստ Դավթի, տալիս են էմպիրիկ, մասնակի գիտելիքներ գոյերի մասին։ Իսկ խոհականությունն ու բանականությունը կազմում են ճանաչման ավելի՛ բարձր՝ ռացիոնալ ձևը, որն ըմբռնում է գոյերի էությունը, իրերն ընդհանուր առմամբ։ Ճանաչման բոլոր ձևերն ու աստիճանները Դավթի իմացաբանական սիստեմում գործ ունեն մարդու գիտակցությունից դուրս գտնվող արտաքին աշխարհի ընկալման ու ճանաչման հետ։ Նրանց բովանդակությունը կազմվում է օբյեկտիվ ու ռեալ գոյություն ունեցող իրերի և երևույթների հատկություններն ու էությունը արտացոլող տվյալներից։ Նման ըմբռնումն, անշուշտ, Դավթի իմացաբանության մատերիալիստական բնույթի վկայությունն է, որը պատահական չէր նորպլատոնականության Ալեքսանդրյան դպրոցի սան Դավթի համար, մի դպրոց, որտեղ Պլատոնի իդեալիստական փիլիսոփայությունից բացի, մեծ ազդեցություն ուներ պերիպատետիզմը, Արիստոտելի ուսմունքը՝ իր հիմնականում մատերիալիստական իմացաբանությամբ և տրամաբանությամբ։

Դավիթը գտնում է, որ մարդուն հատուկ է փիլիսոփայել գլխավորապես գոյերի ու իր վարքի մասին։ Եվ այդ պատճառով նա բաժանում է փիլիսոփայությունը երկու մասի՝ տեսական, որն զբաղվում է օբյեկտիվ գոյություն ունեցող իրերի ճանաչմամբ, և գործնական, որի նպատակն է մարդկային հոգին հասցնել կատարելության, արդարության ու բարուն։ Բացի դրանից, ըստ Դավթի, փիլիսոփայության նման բաժանման մյուս հիմքն այն է, որ ինքը՝ հոգին, ունի երկու բնույթի հատկություններ՝ ճանաչողական ու կենդանական։ Ճանաչողական հատկությունները վերը նշված զգայությունը, երևակայությունը, կարծիքը, խոհականությունը և բանականությունն են, որոնց շնորհիվ և կատարվում է աշխարհի ճանաչումը և որոնց զարգացմանը ծառայում է տեսական փիլիսոփայությունը։ Իսկ հոգու կենդանական հատկություններն են՝ կամքը, ընտրողությունը, ցանկությունը, ցասումը և համաձայնությունը, որոնցով զբաղվում է գործնական փիլիսոփայությունը։ Նրա նպատակն է առաքինացնել մարդուն, զսպել կրքերը, հաղթահարել ցասումն ու ցանկությունը։ Փիլիսոփայության նպատակն է տանել մարդուն դեպի ճշմարտությունը և սովորեցնել՝ ինչպես խուսափել արատներից ու չարությունից։ Իսկական փիլիսոփան, ըստ Դավթի, «նա չէ, ով շատ բան գիտե, և նա չէ, ով շատ բաների մասին կարող է դատել, այլ նա, ով վարում է մաքուր և անարատ կյանք»[31]։ Գիտությունն ինքնանպատակ չէ, այն պետք է ծառայի մարդկային հոգու կատարելացմանը, օգնի մարդուն ընտրել բարին և մերժել չարը։ Բարին, ըստ Դավթի, բարձր է ճշմարտությունից, և պետք է կարողանալ արդարության ու բարու համար երբեմն մեղանչել ճշմարտության դեմ, որովհետև ամեն մի ճշմարտություն բարի չէ։ Փիլիսոփայության նպատակն է միշտ խուսափել չարից և պատրաստել հոգին՝ նրա զնդանից, մարմնից ազատվելուն։ Մարդն օժտված է կամքի ազատությամբ և հավասարապես հակված է ինչպես դեպի չարը, նույն-

31 Անդ, էջ 140։

պես և դեպի բարին։ Փիլիսոփայությունը հենց ցույց է տալիս չարից խուսափելու և բարուն հասնելու ուղիները։

Այդպիսին են Դավիթ Անհաղթի փիլիսոփայական կոնցեպցիայի հիմնական գծերը։ Հատունանալով Ալեքսանդրիայի նորպլատոնական դպրոցի գաղափարական ազդեցության տակ, մի ուղղություն, որը ձգտում էր անտիկ, հեթանոսական փիլիսոփայությունը հաշտեցնել ու ձուլել քրիստոնեության հետ, Դավիթը հայ իրականության մեջ իր գաղափարներով համահնչում էր ավատատերերի այն շրջանի տրամադրություններին, որը քրիստոնեությունն ընդունելով, չէր ուզում երես դարձնել անտիկ մշակույթից և ձգտում էր համալրել քրիստոնեական գաղափարախոսությունը հեթանոս հին աշխարհին հատուկ գիտությամբ։ Այդ առումով հունաբան դպրոցի ողջ գործունեությունը նպաստում էր այդ հասարակական պահանջի իրականացմանը։ Դավիթ Անհաղթի փիլիսոփայության ընդունմանն ու տարածմանը Հայաստանում նպաստում էր նրա նորպլատոնական հայացքների իդեալիստական սինկրետիզմը, որը բավարարում էր ոչ միայն հայ ավատատիրության աշխարհիկ գաղափարախոսությանը, այլև քրիստոնեական արդեն հաղթանակած ուսմունքի կարիքներին։ Այդ տեսակետից լիովին հասկանալի է դառնում այն հանգամանքը, որ Դավթի փիլիսոփայական ժառանգությունն այդքան հաստատորեն մտավ հայ փիլիսոփայության պատմության մեջ և մեծ ազդեցություն գործեց միջնադարյան Հայաստանի մտածողների ու գաղափարախոսների վրա։ Դավթի փիլիսոփայությունը, ինչպես և հունաբան դպրոցի ողջ արտադրանքը միջնադարյան հայ փիլիսոփայության աշխարհիկ հիմքը դնելով, մեծապես ազդեց հայ ֆեոդալական մշակույթի և հատկապես պրոֆեսիոնալ փիլիսոփայական մտքի հետագա զարգացման վրա։

## 6. ԲՆԱՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՃՇԳՐԻՏ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ։ ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ

Հայ փիլիսոփայական մտքի աշխարհիկ ուղղությանն է պատկանում նաև անվանի մաթեմատիկոս, տիեզերագետ և մանկավարժ **Անանիա Շիրակացին** (610—685), որը հանդիսանում է բնական, ճշգրիտ գիտությունների հիմնադիրը Հայաստանում և բնագիտական ուղղության հիմնադիրը հայ միջնադարյան փիլիսոփայության մեջ։ Ճիշտ է, Անանիա Շիրակացու մոտ քրիստոնեական ոգին դրսևորվում է ավելի ուժգին, քան ասենք, V—VI դդ. հունաբան դպրոցի գործիչների մոտ, և նա փաստորեն ձգտում է հելլենական գիտության նվաճումները մոտեցնել եկեղեցական դրույթներին՝ դրանց հիմնավորումը տալու համար, բայց այնուամենայնիվ, չնայած իր անհետևողականությանը, նա հանդես է գալիս որպես բնական գիտելիքների և բնափիլիսոփայության խոշորագույն ներկայացուցիչը վաղ ֆեոդալական Հայաստանում։ Շատ հաճախ Անանիա Շիրակացին իր գործերում դիմում է Աստվածաշնչին, համաձայնեցնում իր մտքերը Ս. Գրքի դրույթների հետ, բայց չի խորշում «բարի արտաքին» փիլիսոփաներից, հին հունական հեթանոս գիտնականներից, եթե նրանց տեսակետները այս կամ այն չափով կարելի է հարմարեցնել եկեղեցու գաղափարներին։ Իսկ երբեմն էլ նա լռելյայն անց է կացնում այնպիսի դրույթներ տիեզերագիտական, բնափիլիսոփայական հարցերում, որոնք տարբերվում են

եկեղեցու կողմից ընդունված պաշտոնական դրույթներից և պաշտպանում է անտիկ գիտության առաջադեմ տեսակետներն ու գաղափարները։

Անանիա Շիրակացին փիլիսոփայության հիմնական հարցը լուծում է հօգուտ աստծո՝ գերբնական աննյութ էության, առաջնության։ Աստված, ըստ Շիրակացու, լինելով անսկիզբ ու անարար, ստեղծել է ողջ տիեզերքը, երկիրն ու Երկինքը, կենդանական ու բուսական աշխարհը ի վայելում իր գերագույն ստեղծագործության՝ մարդու։ Իր գոյության պատճառը աստված կրում է ինքն իր մեջ, ի տարբերություն նյութական աշխարհի գոյերի, որոնց լինելության պատճառն իրենցից դուրս՝ աստծո մեջ է։ Եվ այդ գերագույն աննյութ էակը հնարավոր չէ ճանաչել, «Նրա էությունը չի ըմբռնվում (մարդկային) բանականությամբ, չի սահմանվում խոսքով, և նա է սկիզբն ու արարիչը բոլոր նյութական (զգալի) և հոգևոր (իմանալի, աննյութ) գոյերի»[32]։ Աստծո գոյության մասին մարդ կարող է իմանալ նրա ստեղծագործության, այսինքն՝ բնության ճանաչման միջոցով։ Ինչպես տեսնում ենք, Շիրակացին ևս հետևում է աստծո գոյության տիեզերաբանական ապացուցման եղանակին, մի եղանակ, որն աստծո առաջնությունն ու առհասարակ գոյությունն ապացուցելու համար պարտադիր է դարձնում բնության ճանաչումը։

Շիրակացին զարգացնում է հին հունական փիլիսոփայության մեջ տարածված ուսմունքը չորս տարրերի մասին։ Համաձայն այդ տեսության, ողջ տիեզերքը գոյացել է չորս էլեմենտներից՝ կրակից, օդից, ջրից և հողից։ Թեև այդ չորս տարրերը, ըստ Շիրակացու, իրենք առաջ են եկել «անսկիզբն սկզբից», այսինքն՝ աստծուց, սակայն դրանց հետագա գոյությունը և դրանցից բաղկացած աշխարհի զարգացումը տեղի է ունենում բնականորեն՝ շնորհիվ այդ էլեմենտների համագործակցության։ Տարրերը համագործակցում են ընդհանուր հատկությունների միջոցով. այսպես, կրակին հատուկ է ջերմությունն ու չորությունը, օդին՝ ջերմությունն ու խոնավությունը, ջրին՝ խոնավությունն ու ցրտությունը, հողին՝ ցրտությունն ու չորությունը։ Կապվելով իրար հետ ընդհանուր հատկանիշներով, տարրերի մշտական համագործակցման ու փոխներգործման միջոցով ստեղծվում է նյութական իրերի աշխարհը, իր ողջ բազմազանությամբ։ Այդ ճանապարհով առաջացող իրերը ձեռք են բերում նոր հատկություններ, պահպանում իրենց գոյությունը որոշ ժամանակ, իսկ երբ իրի մեջ գործող ներքին կապող ուժերը թուլանում են, իրը ոչնչանում է, բայց նրա նյութական սուբստրատը սկիզբ է տալիս նոր իրի գոյության։ Աշխարհը հավերժ է, «որովհետև գոյացումը անէացման սկիզբն է, իսկ անէացումը իր հերթին՝ գոյացման սկիզբը։ Եվ այս անվնաս հակադրության շնորհիվ աշխարհը ստանում է իր հավերժությունը»[33]։

Բնությունը մարդու կողմից ճանաչվում է, ըստ Շիրակացու, երկու ձևով՝ զգայական և բանական։ Մեծ նշանակություն ունի ճանաչման առաջին, զգայական ձևը, որն անմիջականորեն կապվում է նյութական գոյերի հետ և ընկալում նրանց հատկությունները։ Ճանաչման այդ ձևն իրականացվում է զգայարանների միջոցով և հաղորդում է ճանաչող մարդուն ամենաճշգրիտ և հուսալի տեղեկություններ, թեև երբեմն կարող է և սխալվել։ Զգայության սխալ-

32 Անանիա Շիրակացի, *Տիեզերագիտություն*, 1940, էջ 3։

33 Ա. Շիրակացի, *Տիեզերագիտություն, էջ 31 («զի լինելութիւն իցէ սկիզբն ապականութեան, և ապականութիւն դարձեալ անդրէն իցէ սկիզբն լինելութեան։ Զի այսմ անվնաս հակառակութենէ աշխարհ առցէ զանեղութիւն»)։*

ները լրացնում է բանականությունը, որը ճանաչման երկրորդ, ավելի բարձր ձևն է։ Հենվելով զգայարանների վրա՝ բանականությունը կարողանում է ըմբռնել իրի էությունը, իմանալ ոչ միայն դրա ներկա վիճակը, այլև անցյալն ու ապագան։ Սակայն բանական ձևը զորեղ է միայն զգայականի հետ զուգակցված, քանի որ բանականությունը կախման մեջ է գտնվում զգայարաններից։

Որպես բնագետ-փիլիսոփա Անանիա Շիրակացին մեծ տեղ է տալիս փորձին, իրերի և երևույթների դիտմանն ու զննությանը, որով և տարբերվում է նախորդ հայ փիլիսոփաներից։

Անանիա Շիրակացին արծարծում է մեծ մասամբ բնափիլիսոփայական հարցեր և դրանց լուծման ընթացքում դրսևորում իր աշխարհայացքը։ Նա պաշտպանում է անտիկ աշխարհում և քրիստոնեական տիեզերագիտության մեջ տարածված գեոցենտրիզմի, երկրակենտրոնության ուսմունքը։

Ըստ Շիրակացու, երկիրը շրջապատող վերին հրեղեն երկինքը, որը բաղկացած է ամենամաքուր կրակից, ընդգրկում է ամբողջ աշխարհը։ Գեոցենտրիզմի տեսությունը, որը քրիստոնեական եկեղեցու հայրերը վերցրել էին արիստոտելյան-պտղոմեոսյան սիստեմից, պարունակում էր արդեն «առաջին շարժիչի»՝ աստծո գոյության գաղափարը։ Սակայն այդ տեսության ամենաէական մասը նրա ուսմունքն էր երկրի գնդաձևության մասին, որը, դժբախտաբար, եկեղեցու հայրերի մեծ մասը չընդունեց։ Միայն մի քանի, առավել լուսավորյալ վաղքրիստոնեության ներկայացուցիչներ, ինչպիսիք էին՝ Հովհան Փիլոպոնը, Բարսեղ Կեսարացին, ընդունում էին երկրի գնդաձևության տեսությունը։ Անանիա Շիրակացին պատկանում է այդ հեղինակների թվին։ Ի տարբերություն եկեղեցու կողմից այդ ժամանակ ընդունված Կոզմաս Ինդիկոպլևստի (Հնդկաչու) հետադիմական տեսության, որը քարոզում էր երկրի տափակության սկզբունքը, Շիրակացին պաշտպանում է արիստոտելյան, պտղոմեոսյան ուսմունքը։

Երկրի ձևի հետ սերտորեն կապված էր հակոտնյաների՝ անտիպոդների հարցը, այսինքն՝ հին փիլիսոփաներին ու գիտնականներին շատ զբաղեցնող այն հարցը, թե կա՞ արդյոք կյանք, կա՞ն մարդիկ երկրի հակառակ կողմի վրա, որովհետև ինքնըստինքյան հարց է ծագում՝ ինչպիսի՞ն է այդ մյուս կողմը, եթե առհասարակ այն գոյություն ունի։ Երկրի գնդաձևության ուսմունքի հետևորդը, բնականաբար, պետք է հետևողական լինելու համար ընդուներ հակոտնյաների գոյությունը, մինչդեռ քրիստոնեական տիեզերագիտությունը չէր ընդունում այդ տեսակետը, մերժում էր մարդկանց և առհասարակ կենդանի էակների գոյությունը երկրի մյուս կողմի վրա, որովհետև այդ կապված էր, նախ, երկրի գնդաձևության ընդունման հետ և, երկրորդ, հակասում էր Ս. Գրքի այն դրույթին, թե երկիրը հաստատված է ջրերի վրա։

Շիրակացին, որպեսզի մեղանչած չլինի իր գիտական համոզմունքների դեմ և միաժամանակ համաձայնեցնի գիտությունն իր քրիստոնեական խղճի հետ, ասում է, որ նա մի ժամանակ «ընդունում էր հակոտնյաների գոյությունը», բայց կարծելով, որ «այդ համապատասխանում է Աստվածաշնչին»։ Այս հարցն այնքան էր զբաղեցնում նրան, որ նույնիսկ երազում մտածում էր դրա մասին, և երազում էլ գտավ լուծումը. ինքը Արևը պատասխանեց նրա հարցին, ասելով, որ երկրի մյուս կողմը, երկրի տակը կենդանիներ և մարդիկ չկան, «իսկ այնտեղ ես (Արևս) լույս եմ տալիս սարերին և ձորերին և անկեն-

դան կիրճերին»[34]։ Այսպիսով, Շիրակացին ի վերջո մերժում է Հակոտնյաների գոյությունը, որովհետև, ինչպես պարզվում է, դա չի համապատասխանում Ս. Գրքին, բայց շարունակում է պաշտպանել այն կարծիքը, որ գիշեր ժամանակ արևն անցնում է երկրի մյուս կողմը և լուսավորում է անմարդաբնակ սարերն ու ձորերը։ Նման ելք գտնելով՝ Շիրակացին չի վերանայում երկրի գնդաձևության տեսությունը, գտնելով, որ այդպիսի լուծումը հարմար է և կրոնի, և գիտության համար։

Ջգտելով բնական պատճառներով բացատրել երկնային մարմինների հատկությունները, Շիրակացին ծաղրում է քաղդեացի աստղագետներին, «որոնք լուսատուների և համաստեղծությունների մեջ արարիչներ տեսան և համարեցին նրանց աստվածներ»։ Հեթանոսական սնահավատությունների և հակագիտական աստրոլոգիական պատկերացումների քննադատությունն զգալի տեղ է գրավում Շիրակացու ժառանգության մեջ։ Այդ հարցը Շիրակացու, ինչպես և նրա գաղափարական նախորդ Եզնիկ Կողբացու մոտ, ենթարկված է կամքի ազատության խնդրին։ Բայց, ի տարբերություն Կողբացու, Շիրակացին աստրոլոգիան՝ աստղահմայությունը, մարդկանց կյանքը երկնային մարմինների հետ կապելն ու գուշակությունններ անելը, ինչպես և առհասարակ ֆատալիզմը քննադատում է ոչ թե աստվածաբանության, այլ բնագիտության ու բնափիլիսոփայության տեսանկյունից՝ քննադատության ընթացքում շարադրելով իր աստղաբաշխական, տիեզերագիտական հայացքները։

Անանիա Շիրակացու բնափիլիսոփայության, նրա բնագիտական հայացքների արժեքավոր կողմն այն է, որ նա կանգնած էր իր ժամանակի գիտության առաջավոր դիրքերում, շարունակում էր հելլենիստական մշակույթի գիծը վաղ միջնադարյան Հայաստանի պայմաններում։ Ճիշտ է, Շիրակացու բնագիտական հայացքների վրա զգացվում է քրիստոնեական աշխարհայացքի կնիքը, մի բան, որն անխուսափելի էր միջնադարի հեղինակների համար, սակայն, այդուհանդերձ, նա կարողացավ զուգակցել գիտությունն ու հավատը այնպիսի եղանակով, որ զգալի տեղ թողեց բնական ու ճշգրիտ գիտելիքների համար։

Հայ բնագիտական և բնափիլիսոփայական մտքի զարգացման համար մեծ նշանակություն ունեցան հին հունական և վաղ քրիստոնեական հեղինակների գործերի թարգմանությունները, կատարված V—VII դարերում։ Առաջին հերթին այստեղ պետք է նշել IV դարի հույն գիտնական, անվանի եկեղեցական հեղինակ Բարսեղ Կեսարացու «Մեկնութիւն վեցօրեայ արարչութեանն» երկի հայերեն թարգմանությունը, որը կատարվել է V դարի 30—40-ական թվականներին, հավանաբար Եզնիկի կողմից։ Այդ գործից են օգտվել շատ ու շատ հայ հեղինակներ՝ սկսած Եզնիկ Կողբացուց, քաղելով այնտեղից և իրենց տիեզերագիտական, և կենսաբանական, և աշխարհագրական ու այլ բնագիտական տեղեկությունները։ Արժեքավոր էր նաև Արիստոտելին վերագրվող «Յաղագս աշխարհի» երկի թարգմանությունը։

Շիրակացուց հետո բնագիտական ուղղությունը հարստանում է երկու արժեքավոր երկերի թարգմանությամբ։ Դրանք Նեմեսիոս Եմեսացու «Յաղագս բնութեան մարդոյ» և Գրիգոր Նյուսացու «Յաղագս մարդոյ կազմութեան» բնափիլիսոփայական մարդակազմական երկերն են, որոնք 712 թ. թարգմա-

34 Նույն տեղում, էջ 13։

նում է անվանի գիտնական Ստեփաննոս Սյունեցին։ Այս երկերի թարգմանության շնորհիվ ստեղծվում և հղկվում են հայ բժշկագիտական ու բնափիլիսոփայական բազում տերմիններ, որոնք հետագայում լայնորեն տարածվում են միջնադարյան գիտական գրականության մեջ։ Ստեփաննոս Սյունեցին գրում է նաև ինքնուրույն գիտական աշխատություններ, հատկապես նշելի է Թրակացու «Քերականության» մեկնությունը։

Սյունեցու գրական վաստակի մեջ առանձնահատուկ տեղ է գրավում Կեղծ-Դիոնիսիոս Արեոպագացու երկերի թարգմանությունը։ 716—717 թթ. Սյունեցին, Դավիթ Հյուպատի աշխատակցությամբ, թարգմանում է Արեոպագացու «Ցաղագս երկնային քահանայապետութեան», «Ցաղագս եկեղեցական քահանայապետութեան», «Յաղագս աստուածայնոց անուանց», «Յաղագս խորհրդականի աստուածաբանութեան» ծավալուն երկերը և տասը թղթեր։

Ստեփաննոս Սյունեցու թարգմանությունները հարստացրին հայ փիլիսոփայական, բնագիտական և աստվածաբանական գրականությունը և ավելի ճոխացրին դրա տերմինաբանությունը։

V—VIII դարերի հայ փիլիսոփաների ինքնուրույն երկերը և թարգմանությունները հայ միջնադարյան գրականության ու գիտական մտքի ամենափայլուն նվաճումներից են։ Մաշտոցյան և հունաբան դպրոցների մեծագույն երախտիքը հայ մշակույթի զարգացման գործում այն է, որ նրանք հայ գիտական միտքը բարձրացրին ժամանակի առաջավոր գիտության մակարդակին։

Վաղ միջնադարում հայ մտածողներն ու գիտնականները, հենվելով գլխավորապես հելլենիստական և վաղ քրիստոնեական շրջանի գիտության նվաճումների վրա, ստեղծեցին ինքնատիպ և մեծարժեք երկեր՝ փիլիսոփայության և բնագիտության տարբեր մարզերում, ամուր հիմքեր ստեղծելով հայ տեսական մտքի և հատկապես փիլիսոփայության հետագա զարգացման համար։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ԲՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

## 1. ՏԻԵԶԵՐԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

*Վաղ միջնադարյան հայ գիտությունը V—VII դդ. զարգանում էր՝ չխզելով իր կապն անտիկ գիտության առաջադեմ ավանդույթների հետ։*

*Անտիկ գիտության ժառանգության մեջ առաջատար էր փիլիսոփայության ընդհանուր համակարգում հանդես եկող տիեզերագիտությունը։ Անդրադառնալով աշխարհագրական և տիեզերագիտական հայացքների զարգացմանն անտիկ դարաշրջանում, կարելի է նշմարել այն հիմքը, որը նախադրյալներ ստեղծեց դրանց զարգացման համար վաղ միջնադարյան Հայաստանում։ Անտիկ գիտության ընդհանուր տեսական հիմունքների զարգացման մարզում կարևոր տեղ էին գրավում կոսմոգոնիական հայացքները հին Հունաստանում։ Կոսմոգոնիական և աշխարհագրական տեսությունները, հանդես գալով փիլիսոփայության ընդհանուր համակարգի մեջ, պայմանավորեցին տիեզերագիտության առաջացումը։ Գիտության այդ բնագավառի զարգացման խնդրում նշանակալից դեր խաղաց Արիստոտելը (մ. թ. ա. 384—322 թթ.). Նա գիտականորեն հիմնավորեց երկրի գնդաձևության գաղափարը։*

*Երկրի, որպես տիեզերական մարմնի, ուսումնասիրությունը հանգեցրեց աստղագիտության զարգացմանը[1], որն առավել ցայտուն արտահայտվեց Եվդոքսոս Կնիդացու (մ. թ. ա. 406—355), Արիստարքոս Սամոսացու (մ. թ. ա. 320—250), Ապողոնիոս Պերգացու (մ. թ. ա. 250—205), Հիպպարքոսի (մ. թ. ա. 160—125 թթ.), Պլինիոս Ավագի (23—79 մ. թ.) և Կլավդիոս Պտղոմեոսի (մոտ 83—168 թթ.) աշխատություններում։*

*Տիեզերքի կառուցվածքի մասին արիստոտելյան-պտղոմեոսյան համակարգի հիմքում ընկած էր երկրակենտրոն աշխարհընկալումը, որը պյութագորականների պատկերացման[2] և Արիստարքոս Սամոսացու հին արեգակնակենտրոն համակարգի[3] հետ համեմատած հետադիմական էր։ Իսկ միջնադա-*

---

[1] *Տիեզերագիտական հին և նոր սխեմաների մասին տե՛ս H. Alfven*, How should We Approach Gosmology?—В сб.: «Вопросы физики и эволюции космоса», посвященном 70-летию академика В. А. Амбарцумяна, Ереван 1978, էջ 9—37։

[2] *Վ. Ի. Լենինը գրելով Տիեզերքի կառուցվածքի վերաբերյալ պյութագորականների պատկերացման մասին, ըստ որի դրա կենտրոնում կրակն էր, նշում է. «Սակայն այդ կրակը նրանց մոտ արեգակը չէր» (В. И. Ленин*, Философские тетради, М., 1973, стр. 224).

[3] *Տե՛ս G. Abetti*, The History of Astronomy, London, 1954, էջ 34—35, *И. Н. Веселовский*, Кеплер и Галилей, "Историко-астрономические исследования. вып. XI, М., 1972, стр. 25.

րում, լինելով հարմարեցված տիրող դասակարգի գաղափարախոսությանը, այն, նույնիսկ, ինչ-որ չափով արգելակում էր գիտության առաջընթացը։ Սակայն Տիեզերքի կառուցվածքի մասին Արիստոտելի և Պտղոմեոսի տեսության առավել նշանակալից մասն էր երկրի և տիեզերական այլ մարմինների գնդաձևության գաղափարը, որը նախադրյալներ ստեղծեց դրանց վերաբերյալ գիտությունների զարգացման համար[4]։

Վաղ միջնադարում տիեզերագիտական գիտելիքների ընդհանուր տեսական հիմունքների զարգացման մակարդակի չափանիշը անտիկ գիտության նվաճումների յուրացման աստիճանն էր։ Հայ իրականության մեջ տիեզերագիտական հայացքները, որոնց հիմքում ընկած էր Երկրի և տիեզերական մյուս մարմինների գնդաձևության գաղափարը, առավել ցայտուն դրսևորվել են V դարում Դավիթ Անհաղթի երկերում և Գյուտ կաթողիկոսի նամակում, իսկ VII դարում Անանիա Շիրակացու աշխատություններում[5]։

Հին հայկական փիլիսոփայության աշխարհիկ ուղղության հիմնադիրն իրավամբ համարվում է Դավիթ Անհաղթը։ Հետևելով անտիկ գիտության ավանդույթներին, մեծ մտածողն իր փիլիսոփայական երկերում լայնորեն համադրում էր գիտելիքների տարբեր բնագավառներից եկող դրույթները։ Դավիթ Անհաղթը բուն փիլիսոփայական խնդիրների հետ մեկտեղ անդրադարձել է նաև տիեզերագիտական կարգի որոշ դրույթների, որոնք մեծ արժեք ունեն վաղ ֆեոդալական դարաշրջանի բնափիլիսոփայական մտքի ձևավորման պատմությունն ուսումնասիրելու համար։

Բնության երևույթների գիտական մեկնաբանման ձգտումն այն առաջադիմական սկզբունքն էր, որն ակնբախ էր անտիկ դարաշրջանի և Հայաստանի հունաբան դպրոցի գիտնականների հետազոտություններում։ Ինչպես նշել է Հ. Մանանդյանը, հունաբան դպրոցի ներկայացուցիչների գործերը «լինելով առանձնահատուկ մի երևույթ մեր հնագույն մատենագրության, այնուհետև դարեր շարունակ ազդել են թե հայ մտքի և թե հոգևոր մշակույթի վրա»[6]։

Բնության զարգացման ուսումնասիրության առաջին աստիճանի վրա գիտնականները դնում էին տարրերի առաջացումը և դրանց փոխազդեցությունը։ Հին մտածողները գտնում էին, որ նյութական աշխարհի հիմքում ընկած էին չորս տարրեր՝ կրակ, օդ, ջուր, հող։ Արիստոտելն իր հերթին հանգամանորեն անդրադառնում է այդ խնդրին[7]։ Անդրադառնալով իմաստասիրության սահմանմանն ըստ Արիստոտելի, Դավիթ Անհաղթը նույնպես բոլոր իրերի հիմքը համարում էր չորս տարրերը[8]։ Իսկ մեկ այլ տեղ նշել է. «Մարմինը բաղկացած է չորս տարրերից, որի պատճառը գիտե բնափիլիսոփան»[9]։ Իր հերթին

---

4 *Մանրամասն տե՛ս* Э. Л. Даниелян, «Космография» («Культура раннефеодальной Армении (IV—VII вв.)», *(հեղինակների կոլեկտիվ)*։ Ереван, 1980, стр. 204 *գրքում)*։

5 *Նույն տեղում*։

6 Հ. Մանանդյան. *Հունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները, Վիեննա, 1923, էջ 3*։

7 *Aristotle*, On the Heavens, with an English transl. by W. K. Guthrie, L.-Cambr. Mass., 1939, III. 3 *(այսուհետև՝* De coelo), Аристотель, Метафизика, ред. В. Ф. Асмус, М., 1976, I. 3. 984a.

8 Դավիթ Անհաղթ, *Սահմանք իմաստասիրութեան, համահավաք քննական բնագիրը, թարգմանությունը գրաբարից ռուսերեն, առաջաբանը և ծանոթագրությունները Ս. Ս. Արևշատյանի, Երևան, 1960, էջ 94 (աշխարհաբար թարգմանությունն այստեղ և այսուհետև Ս. Ս. Արևշատյանի)*։

9 *Նույն տեղում, էջ 52*։

*Գյուտը, որը Դավիթ Անհաղթի ժամանակակիցն էր, մեծ նշանակություն տալով բնական գիտություններին, դրանց իմացությամբ էր պայմանավորում նյութական աշխարհի ճանաչումը, որի հիմքում նա նույնպես ընկած էր համարում չորս տարրերը։ Իր նամակում, ուղղված Աղվանից թագավոր Վաչեին (մինչև 461/2 թթ.), նա գրում էր. «Խոսքը ի վիճակի չէ չորս նյութից կազմված աշխարհը ներկայացնել։ Եվ այս ամենքին չի վիճակվում, այլ նրանց է բաժին ընկնում, որոնք ջանասիրաբար զբաղվեցին գիտություններով, այսինքն՝ թվաբանությամբ, երկրաչափությամբ, աստղաբաշխությամբ, բժշկությամբ...»[10]։*

*Արիստոտելի այն դրույթը, թե տարրերն առաջացել են միմյանցից, Դավիթը տրամաբանորեն փորձում է հետևյալ կերպ բացատրել. «Չէ որ եթե դու ասում ես ջուրն առաջանում է կրակից, դրանով իսկ դու ընդունում ես արդեն, որ սկզբից գոյություն ուներ կրակը, իսկ եթե ասում ես, որ ջրից առաջանում է օդը, դրանով ասում ես, որ ջուրն ավելի առաջ է գոյություն ունեցել։ Կա մի բան, որ գտնվում է մեջտեղում, այսինքն չի պատկանում ոչ մի ձևով գոյություն չունեցող բաների թվին, բայց նա ինքը գոյություն չունի, այլ գտնվում է այդ երկու ծայրամասերի մեջտեղում, որը կոչվում է հնարավորությամբ գոյություն ունեցող»[11]։*

*Արիստոտելը գտնում էր, որ տարրերի հակառակ հատկությունների առկայությամբ էր պայմանավորված անընդհատ առաջացումը և ոչնչացումը տիեզերքում[12]։*

*Արիստոտելի տարրերի տեսության հիման վրա Անանիա Շիրակացին բնափիլիսոփայական տեսանկյունից նոր և կարևոր դրույթներ արծարծեց[13]։ Դա հունաբան դպրոցին պատկանող գիտնականների և մտածողների բարձր մակարդակի վկայությունն է. հիմքում ունենալով անտիկ գիտության նվաճումները՝ նրանք զբաղվում էին ոչ թե անտիկ գաղափարների լոկ կոմպիլյացիայով, այլ ստեղծագործաբար մշակելով դրանք իրենց հետազոտություններում, ավելի խորացնում էին։ Այդ է ապացուցում Անանիա Շիրակացու այն ընդհանրացնող թեզը, ըստ որի նա հստակ ձևակերպել է նյութական աշխարհի գոյության գաղափարը՝ պայմանավորված հակադրությունների միասնությամբ ու պայքարով[14]։*

*Տիեզերագիտության բնագավառում անտիկ գիտության հիմնական նվաճումը՝ Տիեզերքում գտնվող մարմինների գնդաձևության գաղափարը, ինչպես*

10 *«Մովսեսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի», Թիֆլիս, 1912, էջ 31* (Մովսես Կաղանկատվացի, *Պատմություն Աղվանից աշխարհի, թարգմ. Վ. Առաքելյանի, Երևան, 1969, էջ 17), տե՛ս* Է. Լ. Դանիելյան, *V դարի տիեզերագիտական մի պատառիկ, «Լրաբեր հաս. գիտ.», № 12, 1975, էջ 100։*

11 Դավիթ Անյաղթ, *Վերլուծութիւն «Ներածութեանն» Պորփիւրի, համահավաք քննական բնագիրը, թարգմանությունը գրաբարից ռուսերեն, առաջաբանն ու ծանոթագրությունները Ս. Ս. Արևշատյանի, Երևան, 1976, էջ 142։*

12 De coelo, III, 2: *Ընդհանուր մեթոդոլոգիական տեսանկյունից հետաքրքրական է Դավիթ Անհաղթի հետևյալ միտքը, «ժամանականքն ապականութեան գոն արարչականք, իսկ բաղկացականքն՝ բաղկացութեանն»* (Դավիթ Անյաղթ. *«Վերլուծութիւն «Ներածութեանն» Պորփիւրի», էջ 130), («ժամանական հատկանիշները ապականության արարիչներ են, իսկ բաղկացական հատկանիշները՝ գոյացման»)։*

13 *Տե՛ս* Է. Լ. Դանիելյան, *Արիստոտելի տարրերի տեսությունը և Անանիա Շիրակացու «Տիեզերագիտությունը», ՊԲՀ, 1971 № 2, էջ 217—222։*

14 Անանիա Շիրակացի, *Տիեզերագիտութիւն և տոմար, աշխատությամբ Աշ. Աբրահամյանի, Երևան, 1940, էջ 31։*

նշվեց, արտահայտվել է Դավիթ Անհաղթի երկերում, Գյուտ կաթողիկոսի նամակում և Անանիա Շիրակացու աշխատություններում։

Դավիթ Անհաղթը քաջ տեղյակ էր Տիեզերքում գտնվող մարմինների գնդաձևության տեսակետին։ Նա աստղագիտության մասին հետևյալն է ասել. «Իսկ աստղաբաշխությունը ստեղծել են քաղդեացիները, որովհետև անամպ և մշտապես ջինջ երկինքը նրանց թույլ էր տալիս զննել աստղերի շարժումը... Աստղաբաշխության առարկան երկնային մարմիններն են, իսկ ինքը՝ աստղաբաշխությունը փիլիսոփայության առարկան է... Աստղաբաշխությունը, որպես նյութ ունի երկնային մարմինները, իսկ որպես նպատակ ոչ թե նման մարմիններ ստեղծելը, այլ նրանց շարժումները ճանաչելը... Աստղաբաշխությունը հարակից է գնդաձև մարմինների մասին գիտությանը. և նրանք տարբերվում են իրարից, որովհետև աստղաբաշխությունն առաջանում է երկնային մարմինների շարժման մասին եղած գիտելիքներից, իսկ գնդաձև մարմինների մասին գիտությունը զբաղվում է բոլոր գնդաձև մարմիններով և դրանց բաժանումով, որովհետև խոսում է գնդաձև մարմինների զանազան հատումների մասին»[15]։

Դավիթ Անհաղթը, հիշատակելով գնդաձև մարմինների մասին գիտությունը, անտարակույս նկատի ուներ գիտելիքների այն բնագավառը, որի մասին Արիստոտելը մանրամասն խոսել է «Երկնքի մասին» աշխատությունում։

Ուսումնասիրելով երկրակենտրոն ուսմունքից բխող Տիեզերքի սահմանափակության վերաբերյալ դրույթը, Արիստոտելը գալիս է այն եզրակացության, որ ամենից բնական շարժումը կատարվում է շրջանագծում գնդաձև մարմնի կողմից և այնուհետև ամփոփում է. «Մարմինը, որը պտտվում է շրջանագծում, պետք է գնդաձև լինի»։ Այստեղից, ըստ Արիստոտելի, հետևում է. «Ամբողջ երկինքը և առանձին աստղերը գնդաձև են, քանի որ գունդն ամենից օգտակար ձևն է տեղում կատարվող շարժման համար»։ Գնդաձև մարմինների մասին գիտության հիմնարար դրույթը հետևյալ կերպ է ձևակերպել Արիստոտելը. «Այն, ինչ շփվում է գնդաձև (մարմնի) հետ, գնդաձև է հանդիսանում, և նույնը (կարելի է ասել) այն մարմինների մասին, որոնք կենտրոնին մոտ են գտնվում, քանզի գնդաձև (մարմնով) շրջապատված և դրա հետ բոլոր կետերում շփվող մարմինները նույնպես պետք է գնդաձև լինեն... Եթե երկնային մարմիններից մեկը գնդաձև է, ապա պարզ է, որ մյուսները նույնպես գնդաձև են»[16], Հիմք ընդունելով այս դրույթը և ելնելով տարրերի տեսությունից՝ Արիստոտելը գտնում էր, որ գնդաձև մարմինների մասին գիտության հիմնական առանցքն էր Երկրի գնդաձևության գաղափարը։

Հետաքրքրական են Դավիթ Անհաղթի հաղորդած տեղեկությունները Արեգակի, Երկրի և Լուսնի համեմատական չափերի մասին։ Նա գրում է. «Անհավասիկ արևը, որը երկրից բազմապատիկ ավելի մեծ է, մենք տեսնում ենք մեկ թիզ մեծությամբ»։ Մի այլ տեղ նա գրում է. «Ապացուցական դատողությանը ենթակա է այն ամենը, ինչ ճշմարիտ է, թեպետ և աներևակայելի, օրինակ, երբ ասում են, թե Արեգակը անհամեմատ ավելի մեծ է, քան Երկիրը,

---

15 Դաւիթ Անյաղթ, Սահմանք իմաստասիրութեան, էջ 38, 94, 132, 134։

16 De coelo, II 1, 4, 8, 11: Տե՛ս Է. Լ. Դանիելյան, Հայ բնափիլիսոփայագիտական մտքի ակունքների մոտ, «Լենինյան ուղիով», 1980, № 5, էջ 92—96։

իսկ Երկիրը՝ քան Լուսինը, թեև Արեգակը մեկ ոտնաչափ մեծությամբ է մեզ երևում։ Եվ ահա, թեև սա աներևակայելի է, բայց ճշմարիտ է»[17]։

Ճիշտ պատկերացնելով Արեգակի, Երկրի և Լուսնի համեմատական չափերը, ինչպես նաև աստղագիտությունը՝ որպես գիտություն երկնային մարմինների շարժման վերաբերյալ, համադրելով գնդաձև մարմինների մասին գիտության հետ, Դավիթ Անհաղթն անկասկած գիտեր, որ դրանք գնդաձև են։ Իր ժամանակակից Գյուտի հայացքների մասին ինչ-որ չափով պատկերացում տվող պատառիկը նույնպես վկայում է, որ V դ. հայ գիտությունը շարունակում էր անտիկ գիտության առաջադեմ ավանդույթները։ Նա գրում է. «Մեծ ու սարսափելի ահ ընկավ իմ սիրտը, որն ավելի բարձր է, քան երկինքների երկինքը և ավելի խոր է, քան վարի կիսագունդը»։ Հետաքրքրական է, որ Գյուտը, խոսելով որոշ երկնային մարմինների մասին, աստվածներ չհամարելով դրանք, նկարագրում է դրանց արտաքին հատկանիշները։ Նա գրում է, որ Լուսինը «Տարվա մեջ տասներկու անգամ վիժած, խիստ ժանգոտ, մանգաղաձև, կիսագունդ...», իսկ արեգակը «շեղագնաց է, թյուրընթաց... հույները իրավացիորեն սրան Ապոլոն կոչեցին»[16]։

Տիեզերքի կառուցվածքի մասին Արիստոտելի երկրակենտրոն ուսմունքից, որի ռացիոնալ հատիկն էր երկրի գնդաձևության գաղափարը, բխում և հիմնավորում էին հետևյալ դրույթները. տարրերի տեսությունը, նյութական աշխարհի սահմանափակությունը և ամբողջականությունը, գոյի անսահմանությունը, մարմինների բնույթը և շարժումը, Երկրի ձևը և դրա դիրքը Տիեզերքում, հակոտնյաների գաղափարը։ Նշված որոշ դրույթների առկայությունը Դավիթ Անհաղթի աշխատություններում հնարավորություն է տալիս եզրակացնելու, որ նրա նշած տիեզերագիտական դրույթների հիմքում ընկած էր Երկրի գնդաձևության գաղափարը։

Անանիա Շիրակացին իր տիեզերագիտական հայացքներում խիստ հետևողական է Երկրի և տիեզերական մարմինների գնդաձևության հարցում[19]։

Արիստոտելը, ապացուցելով, որ տիեզերական մարմինները գնդաձև են, այնուհետև մեծ ուշադրություն էր նվիրում Երկրի գրաված դիրքին Տիեզերքում։ Նա գրում է. «Երկիրը և երկինքը միևնույն կենտրոն ունեն, որովհետև ծանր մարմինները նույնպես շարժվում են դեպի Երկրի կենտրոնը»[20]։ Իսկ Շիրակացին գրում է. «Եւ քանզի երկիրս չորեքկուսի ի միջոցի երկնի կառուցաւ, ոչ թողլ տայ ամա երկին իւրով երագութեամբն ի ներքին կիսագունդն խոնարհել»[21]։ Այս դրույթը որոշ չափով արտացոլում է Էմպեդոկլեսի կարծիքը, որը բերում է Արիստոտելը. «Մյուսները համաձայն են Էմպեդոկլեսի հետ, որ երկնքի արագ շարժումն է... որը խանգարում է Երկրի շարժմանը»[22]։ Սակայն Արիստոտելն այս կարծիքի հետ համաձայն չէ»[23]։

---

17 Դաւիթ Անյաղթ, Վերլուծութիւն «Ներածութեանն» Պորփիւրի, էջ 38։ Դաւիթ Անյաղթ, Մեկնութիւնն ի վերլուծականն Արիստոտէլի, համահավաք քննական բնագիրը, թարգմանությունը գրաբարից ռուսերեն, առաջաբանն ու ծանոթագրությունները Ս. Ս. Արևշատյանի, Երևան, 1967, էջ 82։

18 Կաղանկատվացի, էջ 25, 31—32 (աշխ. թարգմ., էջ 13, 17—18)։

19 Անանիա Շիրակացի, էջ 9—14։

20 De coelo, II, 14:

21 Անանիա Շիրակացի, էջ 9։

22 De coelo, II, 13։

23 Նույն տեղում։

*Արիստոտելի ու Էմպեդոկլեսի կարծիքների քննությունը ցույց է տալիս, որ Անանիա Շիրակացին կարծես թե սինթեզում է դրանք և երկրի գրաված դիրքը Տիեզերքում բացատրում ինչպես երկնքի շարժումով, նույնպես և տարրերի կշռային հարաբերակցության տեսանկյունից, ընդ որում, կրակի շարժումը փոխարինելով օդային զանգվածների շարժումով[24]։*

*Նշված է, որ Տիեզերքի կենտրոնում հողմի շնորհիվ Երկրի գրաված դիրքի մասին եղած տեսակետը մինչև Նյուտոնի տեսության հանդես գալն ավելի ռեալ է եղել և միջնադարյան եվրոպական գիտության մեջ կրել է «Հողմերի տեսություն» անվանումը[25]։*

*Անանիա Շիրակացին քննադատում է աստղագուշակությունը և ցույց տալիս աստղային երկնքի ուսումնասիրության կարևորությունը ճանապարհորդությունների և եղանակը կանխագուշակելու համար։ Այս առումով կարևոր են նրա հաղորդումները Կենդանակերպի, Ծիր Կաթինի և Խեցգետնի համաստեղության մասին[26]։*

*Շիրակացու աշխատությունում Ծիր Կաթինի մասին եղած հաղորդման մեջ առավել հետաքրքրական է այն հատվածը, որտեղ նա գրում է. «Բարի փիլիսոփաները դրա մասին ասել են, որ այն կուտակված թույլ և ուժեղ աստղերի բազմություն է, որոնց լույսը ոչ որոշակի տեսանելիության հետևանքով միանման է ընկալվում»[27]։ Այստեղ արտացոլվել է մեծ մտածող ատոմիստ Դեմոկրիտի տեսությունը[28], որի հիմքում Տիեզերքի՝ բազմաթիվ աշխարհներից կազմված լինելու պատկերացումն էր։*

*Եղանակի կանխագուշակության կապակցությամբ հետաքրքրական է հետևյալ հատվածը Շիրակացու աշխատությունից, ուր նա գրում է, որ Մսուրը իրենից ներկայացնում է աստղերի ինչ-որ կույտ, որն ամպանման է երևում։ «Այն,— շարունակում է Շիրակացին,— գտնվում է Խեցգետնու պատյանի մոտ, և դրա հարևանությամբ գտնվում են երկու աստղեր՝ մեկը հարավից, իսկ մյուսը՝ արևմուտքից, որոնք կոչվում են Իշուկներ։ Եվ եթե պարզ եղանակին վեր նայես և հանկարծ Մսուրը չի երևա, իսկ թույլ՝ Իշուկներ կոչվող աստղերը կերևան, ապա այդ ամպամածության առաջանալու նշան է։ Երբ Մսուրը մթնած է, իսկ աստղերը նման են մեկը մյուսին, այդ անձրևի կանխագուշակում է»[29]։*

*Հետաքրքրական է համեմատությունը Պլինիոսի երկի հետևյալ հատվածի հետ, ուր նա գրում է. «Խեցգետնի* (Cancer) *համաստեղությունում երկու փոքր աստղեր են գտնվում, որոնք կոչվում են Իշուկներ* (Aselli)*։ Դրանց միջև փոքր ամպ կա, որը կոչվում է Մսուր* (Praesepio)*։ Երբ լավ եղանակին այդ*

---

24 *Տե՛ս Э. Л. Даниелян,* Армянские космографические труды VII века о строении Вселенной, Ереван, 1978, с. 33.

25 *А. Г. Абрамян, Г. Б. Петросян,* Анания Ширакаци, Ереван, 1970, стр. 75։ Համտ. Բ. Թումանյան, *Երկրակենտրոն և արևակենտրոն սիստեմները Հայաստանում, Երևան, 1973, էջ 63—64։*

26 *Նեյգեբաուերը նշում է, որ կենդանակերպի* (Zodiac) *մասին պատկերացումը բաբելացիների մոտ ստեղծվել է մ. թ. ա.* V—IV *դդ. О. Нейгебауер*, Точные науки в древности, М., 1968, стр. 11), *իսկ այլ հեղինակներ նշում են մ. թ. ա.* YIII*դ.* (*G. Abetti, նշվ. աշխ. էջ 14, P. Doig*, A Concise History of Astronomy, London, 1950, *էջ 4—5*)։

27 Անանիա Շիրակացի, *Տիեզերագիտություն, էջ 37—38։*

28 «Материалисты древней Греции», М., 1955, *էջ 114*; *С. Я. Лурье*. Демокрит. Тексты, переводы, исследования, М., 1970.

29 Ա. Գ. Աբրահամյան, *Անանիա Շիրակացու մատենագրությունը, Երևան, 1944, էջ 307։*

*ամպը դադարում է երևալ, ապա հետևում է ուժեղ փոթորիկ, սակայն, եթե այդ երկու աստղերից հյուսիսայինը ծածկված լինի մառախուղով, ապա հարավային քամի կլինի, իսկ եթե հարավայինը՝ (ծածկված լինի մառախուղով), ապա քամին կլինի հյուսիսից»*[30]։

*Պլինիոսը ներկայացրել է, ըստ երևույթին, ոչ իր դիտարկումների արդյունքները, այլ այն տեղեկությունները, որոնք արգասիք էին ավելի ցամաքային կլիմա ունեցող վայրերում կատարված դիտարկումների։ Ուրեմն այստեղ Պլինիոսի աղբյուրը եղել են բաբելոնացիների դիտարկումները՝ կատարված Միջագետքում։ Իսկ Անանիա Շիրակացին, հետևելով խեցգետնի համաստեղության մասին անտիկ աշխարհից հասած տեղեկություններին, դրանց ավելացնում է իր սեփական դիտարկումների արդյունքները։*

*Անանիա Շիրակացին աստղային երկնքով կողմնորոշվելու մասին գրում է. «Դիոդորոս Սամոսացին մեզ պատմում է Հնդկաստանի մասին, որ այնտեղից Լիմերիկոն երկիր նավարկողները Ցուլի (համաստեղությունը) տեսնում են երկնքի մեջտեղում, իսկ Բազումքինը՝ ընդ մեջն կեռեայ»*[31]։

*Անանիա Շիրակացին հետաքրքրական տեղեկություններ է հաղորդում Լուսնի ազդեցության հետ կապված մակընթացությունների ու տեղատվությունների, ինչպես նաև «աստղային երկնքի հետ կապված» երկրաշարժերի մասին*[32]։

*Շիրակացու աղբյուրը երկրաշարժերի պատճառի մասին կարող էր լինել Պլինիոս Ավագի երկը։ Պլինիոսը բերում է բաբելոնացիների տեսությունը, ըստ որի Երկրի մակերևույթի վրա ճեղքվածքներն առաջանում են «աստղերի ուժից», սակայն միայն այն երեք «աստղերի», որոնց նրանք վերագրում են ամպրոպները։ Դրանք էին՝ Սատուրնը, Յուպիտերը և Մարսը*[33]։

*Անանիա Շիրակացու տիեզերագիտական աշխատություններում ամփոփված են վաղ միջնադարյան Հայաստանի բնափիլիսոփայական մտքի նվաճումները։*

## 2. ՏՈՄԱՐ

*Ինչպես այլ երկրներում, նույնպես և Հայկական լեռնաշխարհում, հնագույն ժամանակներում օգտագործվել է լուսնային օրացույց։ Հայկական մի շարք ձեռագրերում տեղեկություններ կան այն մասին, որ ժամանակի երկար պարբերությունները հաշվվել են լուսնամիսներով*[34]*։ Անանիա Շիրակացին էլ Անդ-*

---

[30] *Pliny*. Natural History, With an English transl., in ten volums by N. Rackham, London, 1950, vol. V, XVIII, LXXX, 353:

[31] Ա. Գ. Աբրահամյան, *Անանիա Շիրակացու մատենագրությունը, էջ 337։ Ինչպես հայտնի է, Ցուլի համաստեղության ամենավառ աստղը Ալդեբարանն է, որն իր օրական շարժման մեջ հետևում է «Բազումք» խումբ կազմող աստղերին։ Այժմ պարզված է, որ բռնկվող աստղերի ամբողջական թիվը Բազումքի շրջանում պետք է 1000 ավելի լինի (տե՛ս В. А. Амбарцумян, Л. В. Мирзоян, Э. В. Парсамян, О. С. Чавушян,* Вспыхивающие звезды в Плеядах, IV, препринт, № 6, Ереван, 1973).

[32] Անանիա Շիրակացի, *Տիեզերագիտություն, էջ 14, 43։*

[33] Plin. Nat. Hist., II. XVIII. 82, LXXXI, 191—192։ *Հնում հայտնի մոլորակները արեգակի հետ միասին աստղեր էին անվանվում։*

[34] *Վերջին տարիներս Գեղամա և Վարդենիսի լեռներում հայտնաբերվեցին աստղագիտական բնույթի ժայռապատկերներ (մ. թ. ա. II—I հազարամյակ)։ Դրանցից մի քանիսի վրա պատկերված սկավառակի շուրջը եղած ճառագայթների քանակը համընկնում է լուսնային ամսվա տևողությունում պարունակված օրերի քանակին։*

րեսս Բյուզանդացու տոմարի մեկնության մեջ նշում է, որ այդ շրջանում ամսանուններ չեն օգտագործվել, այլ ամիսները կրել են համարներ (ըստ տարվա մեջ ունեցած դրանց կարգի) և որ դրանք հաշվել են գարնանային գիշերահավասարից։

Լուսնային օրացույցը, տարեսկզբին արագ տեղափոխության պատճառով, գործածության համար անհարմար է, մանավանդ այնպիսի ժողովուրդների համար, որոնք նստակյաց կյանք են վարում և հիմնականում զբաղվում են գյուղատնտեսությամբ։ Այդպիսիների օրացույցը պետք է արտացոլի տարվա եղանակները, գյուղատնտեսական այս կամ այն բնույթի աշխատանքի գոնե մոտավոր պահը։ Եվ ահա բավական վաղ շրջանից Հայկական լեռնաշխարհում լուսնային օրացույցը փոխարինվում է լուսնաարեգակնային օրացույցով։

Հայաստանի պատմության թանգարանում պահպանվում է մի գոտի օրացույց, որը գտնվել է Սանահինում և մոտ երեք հազարամյա պատմություն ունի։ Դրա մանրամասն ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ բաբելացիների նման մեզ մոտ ևս լուսնաարեգակնային տարին կազմված է եղել 12 լուսնային ամիսներից և ժամանակ առ ժամանակ մտցվել է 13-րդ ամիս, որպեսզի տարեսկիզբը գարնանային գիշերահավասարի օրից շատ չհեռանա։

Մեր թվականությունից դեռևս շատ առաջ (հավանաբար առաջին հազարամյակի կեսերին) Հայաստանում օգտագործվել է արեգակնային օրացույց։ Հայերը, տիրապետելով աստղագիտական հարուստ գիտելիքների, կարողացան կազմել օգտագործման համար բավական հարմար օրացույց, որը շատ առավելություններ ուներ լուսնային, լուսնաարեգակնային և նույնիսկ ժամանակակից հռոմեական արեգակնային օրացույցի նկատմամբ։

Հայկական արեգակնային օրացույցը կազմված էր 12 ամսից՝ 30-ական օրով և լրացուցիչ ամսից՝ 5 օրով։ Ահա այդ ամիսները։

| | | | |
|---|---|---|---|
| 1 Նավասարդ | 30 օր | 7 Մեհեկան | 30 օր |
| 2 Հոռի | 30 օր | 8 Արեգ | 30 օր |
| 3 Սահմի | 30 օր | 9 Ահեկան | 30 օր |
| 4 Տրե | 30 օր | 10 Մարերի | 30 օր |
| 5 Քաղոց | 30 օր | 11 Մարգաց | 30 օր |
| 6 Արաց | 30 օր | 12 Հրոտից | 30 օր |
| | | Ավելյաց | 5 օր |

Նավասարդ բառացի նշանակում է «Նոր տարի», «ավելյացը» այդպես է կոչվում՝ ավելացած 5 օրերի պատճառով։ Մնացած ամիսների անունները կապված են եղանակի, գյուղատնտեսական աշխատանքների ու հեթանոսական աստվածների անունների հետ։

Հին հայկական տոմարում[35] ամսաթվերն ունեցել են հատուկ անուններ,

35 Տոմար բառն առաջացել է հունարեն τομάριον-ից։ Այդպես էին մի ժամանակ անվանում այն մատյանը, ուր հիշատակված էին տարվա ամիսները, օրերը և առևտրական ու քաղաքացիական տարբեր անձնավորությունների անուններ և այլն։ Հայոց տոմարի մասին մանրամասն տե՛ս Հ. Ս. Բադալյան, Օրացույցի պատմություն, Երևան, 1970։

և, ըստ երևույթին, ոչ թե ամսաթիվն անվանվել է ամսվա մեջ դրա ունեցած հերթական համարով, այլ իր անունով[36]։

Ամսօրերի անունները կապված են Հայաստանի հեթանոսական աստվածների մեհյանների, սրբացված լեռների, սրբազան վայրերի անունների հետ[37]։ Իսկ «ավելյաց» օրերն էլ կրում են անզեն աչքով երևացող հինգ մոլորակների անունները։

Զնայած հայկական արեգակնային օրացույցը եգիպտականի տիպի է, սակայն մեզ մոտ տասնօրյակներ (դեկադաներ) չեն օգտագործվել։

Շաբաթվա գաղափարը հայկական արեգակնային օրացույցում թերևս մտել է շատ ավելի ուշ ժամանակաշրջանում, քան ինքը՝ այդ օրացույցը։ Շաբաթվա օրերն անվանվում են շաբաթվա մեջ դրանց ունեցած կարգով (բացի ուրբաթից, որ նշանակում է «նախապատրաստվել» և շաբաթից, որը «հանգիստ» է նշանակում, կիրակին էլ փոխարինել է միաշաբաթին՝ ի պատիվ Քրիստոսի հարության և անվանումը նշանակում է «տիրոջ օր»)։

Շատ վաղ ժամանակներից հայերն օրը բաժանել են 12 ցերեկային և 12 գիշերային ժամերի։ Դրանցից յուրաքանչյուրն ունեցել է իր հատուկ անունը, որի հիմքում ընկած է օրվա տվյալ ժամանակահատվածի լուսավորության աստիճանը[38]։

Ինչպես այլ ժողովուրդների, նույնպես և հայերի մոտ սկզբում ցերեկը և գիշերը առանձին-առանձին էին բաժանված 12-ական մասի, ընդ որում գիշերվա ու ցերեկվա մասերն իրար հավասար են եղել միայն գարնանային ու աշնանային գիշերահավասարի օրերին։ Նման բաժանումը չէր կարող բավարարել ժամանակի ճշգրիտ չափման օրեցօր աճող պահանջները։ Մասնավորապես դրա անհարմարությունը ակնբախ դարձավ, երբ ցերեկվա պահերը ցույց տվող արեգակնային ժամացույցների կողքին հանդես եկան ավելի հարմար ու համեմատաբար ճշգրիտ, այլ սկզբունքով գործող ժամացույցներ (ավազի, ջրի, կրակի)։

---

36 Այդ անուններն են՝

| | | |
|---|---|---|
| 1 Արեգ | 11 Երեզական | 21 Գրգուռ |
| 2 Հրանդ | 12 Անի | 22 Կորդուիք |
| 3 Արամ | 13 Պարխար | 23 Ծմակ |
| 4 Մարգար | 14 Վանատուր | 24 Լուսնակ |
| 5 Ահրանք | 15 Արամազդ | 25 Ցրոն (կամ Սփյուռ) |
| 6 Մազդեղ | 16 Մանի | 26 Նպատ |
| 7 Աստղիկ | 17 Ասակ | 27 Վահագն |
| 8 Միհր | 18 Մասիս | 28 Սիմ |
| 9 Ձոպաբեր | 19 Անահիտ | 29 Վարագ |
| 10 Մուրց | 20 Արագած | 30 Գիշերավար |

Ավելյաց օրերի անունները՝

| | | |
|---|---|---|
| 1 Լուծ | 5 Փառազնոտ | 5 Ծկրավորի |
| 2 Եղջերու | 4 Արտախուր | |

37 Տե՛ս Ս. Տ. Երեմյանի քարտեզը՝ Հայկական ամսօրերի անուններին նվիրված սրբազան վայրերը նախաքրիստոնեական Հայաստանում, Հ. Ս. Բադալյանի նշվ. աշխատությունում։

38 Ցերեկային ժամերն էին՝ այգ, ծայգ, ծայրացյալ, ճառագայթյալ, շառավիղյալ, երկրատես, շանթակող, հրակաթ, հուրփայլյալ, թաղանթյալ, առաղոտ, արփող։ Գիշերվա ժամերը՝ խավարուկ, աղջամուղջ, մթացյալ, շաղավոտ, կամավոտ, բավական, հավաթափյալ, գեղակ, լուսաճեմ, առավոտ, լուսափայլ, փայլածու։

Օրը 24 հավասար մասի բաժանելը գիտական գրականության մեջ առաջին անգամ հանդիպում է հույն գիտնական Պտղոմեոսի (մոտ. 83—168) աշխատություններում։ Որ հայերն ուշ դարերում են անցել օրը հավասար մասերի բաժանելուն, դա կասկածից վեր է։ Թե երբվանի՞ց է այդ անցումը կատարվել, այդ հարցը բավական առեղծվածային է թեկուզ այն պատճառով, որ մեզ հասած սկզբնաղբյուրները չեն ընդգրկում հայ ժողովրդի կազմավորումից հետո եղած ողջ ժամանակաշրջանը։ Մենք այդ ձեռագրերի հիման վրա կարող ենք միայն նշել առայժմ հայտնի նվազագույն սահմանը։

Մատենադարանում պահպանվում են IV դարի հռչակավոր տոմարագետ Անդրեաս Բյուզանդացու աշխատությունների բազմաթիվ ընդօրինակություններն ու մեկնությունները, որոնցում մասնավորապես պարունակվում է գիշերվա ու ցերեկվա տևողությունների բոլորակ։ Դրա ուսումնասիրությունը հանգեցնում է այն համոզման, որ Հայաստանում արդեն IV դարում օրը բաժանված էր 24 հավասար մասերի։

Որպես արեգակնային օրացույց օգտագործողներ, հայերն օրվա սկիզբը համարել են առավոտյան արևածագը։ Որոշ ձեռագրերում կան նշումներ, որոնցից հետևում է, որ օրը սկսվել է արևամուտից։ Սակայն դրանք հիմնականում կամ բառացի թարգմանություններ են, և կամ գրված են այն գաղթավայրերում, ուր այդ երկրի ժողովուրդը ղեկավարվել է այլ տոմարով ու օրն էլ սկսվել է երեկոյից։

Օրվա սկիզբը առավոտյան արևածագից (կամ երեկոյան՝ արևամուտից) հաշվելը բավական դժվարություններ էին հարուցում տարվա տարբեր օրերին դրանց սկսելու պահի ուշ կամ շուտ հասնելու հետևանքով։ Այդ բանն ավելի զգալի էր աշխարհագրական մեծ լայնություններում։ Ժամանակի չափման համեմատաբար ավելի ճշգրիտ գործիքների հանդես գալն անխուսափելի դրություն է ստեղծում։ Եվրոպական մի շարք երկրներ անցնում են օրը գիշերվա կեսից սկսելուն։ Այն հետզհետե մուտք է գործում նաև Հայաստան և լայնորեն տարածվում հատկապես գիտական գրականության մեջ։

Հեթանոսական շրջանի հայկական տոմարի և, հատկապես, դրա սկզբնավորության մասին շատ քիչ տեղեկություններ են մեզ հասել։ Մովսես Խորենացու վկայությամբ Արտաշես թագավորի օրոք (189—160 թ. մ. թ. ա.) հայկական օրացույցը հիմնական կարգավորման է ենթարկվել։ Շիրակացին էլ հայոց ամսանունները կապում է հայ առասպելական նախահայր Հայկի զավակների (ուստրերի ու դուստրերի) անունների հետ։

Հայկական արեգակնային տարին պարունակում էր 365 օր, այսինքն՝ մոտ $^1/_4$ օրով պակաս իրական տարուց։ Դա նշանակում է, որ 1460 տարի անցնելուց հետո առաջանում էր մեկ տարվա տարբերություն։ Որոշ հիմքեր կան ենթադրելու, որ 1460 տարվա ընթացքում առաջացած այդ մեկ տարվա սխալն ուղղվում էր 1461 տարին հաշվի մեջ չմտցնելով, այն համարելով «նահանջից նահանջ»։ 1461-ամյա այդ պարբերաշրջանը հայ մատենագրության մեջ հայտնի է «Հայկական շրջան» կամ «Հայկեա շրջան» տերմիններով։ Որոշ հեղինակների կարծիքով 428 թվականին (երբ Նավասարդի 1-ը համընկել էր հռոմեական տոմարի օգոստոսի 11-ի հետ) լրացել էր Հայկյան երկրորդ պարբերաշրջանը։ Որից էլ ստացվում է, որ հեթանոսական հայկական դարաշրջանը (կամ այլ կերպ՝ բուն հայոց թվականը) հաշվվել է 2493 թվականից (մ.

*թ. ա.), այն կապելով հայերի առասպելական նախահայր Հայկի կողմից ասորեստանցիների Բելին սպանելու պահի հետ։*

*Հայկական արեգակնային օրացույցի շարժական լինելը որոշ դժվարություններ է առաջացնում (տարեսկզբի տեղափոխման պատճառով)։ Այս օրացույցով մշտապես խախտվում են ոչ միայն ամիսների ու տարվա եղանակների որոշակի համապատասխանությունները, այլև իր ժամանակին մեծ կարևորություն ունեցող եկեղեցական տոների ու ծիսակատարությունների ժամկետները։ Այդ հանգամանքը հատկապես դժվարություններ է հարուցում քրիստոնեությունը Հայաստանում տարածվելուց հետո։ Բանն այն է, որ քրիստոնեական եկեղեցին պահանջում էր եկեղեցական տոները կատարել միմիայն որոշակի օրերի։ Մասնավորապես զատկի տոնը որոշվել էր կատարել գարնանային գիշերահավասարից հետո եկող լիալուսնի առաջին կիրակի օրը։ Հայաստանում ժամանակի չափման նման մեթոդի առկայությունը և դրան ներկայացվող պահանջները բոլորովին այլ էին, որի պատճառով և հաճախ խառնաշփոթություն էր առաջանում։ Ինչպես քրիստոնեական կրոն ընդունած մյուս երկրներում, այնպես էլ Հայաստանում, վերոհիշյալ տոները ժամանակին կատարելու համար օգտագործվում էին 19-ամյա, 95-ամյա, իսկ 352 թվականից՝ Անդրեաս Բյուզանդացու կազմած 200-ամյա աղյուսակները։*

*555 թ. Դվին քաղաքում տեղի ունեցած եկեղեցական ժողովում որոշվում է Անդրեաս Բյուզանդացու կազմած աղյուսակների վերջանալուց հետո կազմել նոր աղյուսակներ և սահմանել տարեթվերի հաշվման նոր դարաշրջան՝ «Հայոց Մեծ թվականը», որի սկիզբը համարվում է «Քրիստոսի ծննդյան էրայի» 552 թ. հուլիսի 11-ը։ Դրա պատճառն այն էր, որ Անդրեաս Բյուզանդացու ՇԼԲ (532) աղյուսակները գործածելիս այլ ազգերի նման, մեզ մոտ տարեսկիզբն ընդունել են այդ աղյուսակների գործածման առաջին օրը (թութի 1-ը), որը հուլյան տոմարով համընկնում է օգոստոսի 29-ին։ Դրանից հետո հայկական օրացույցը շարունակում է մնալ հին հայկական տոմարի սկզբունքով՝ «շարժական» և 552 թ. տարեմուտն էլ համընկնում էր հուլիսի 11-ին։*

*Հայոց Մեծ թվական մտցնելուց հետո էլ հայկական օրացույցը մնում է «շարժական»։ Տոմարական խառնաշփոթություններից խուսափելու նպատակով Անանիա Շիրակացին կազմում է այդ տոմարի ու հռոմեական օրացույցի համապատասխանության ՇԼԲ (532)-ամյա աղյուսակներ[39]։*

*Հայկական ու հռոմեական տոմարների տարեսկիզբները չհամընկնելու պատճառով դրանցից յուրաքանչյուրի մեկ տարին ընկնում է մյուսի երկու (իրար հաջորդող) տարվա մասերի հետ։ Այդ երկու տոմարների զուգակցության համար պետք է ղեկավարվել հետևյալ կանոնով։ Եթե հաշվումները կատարվում են 552—1320 թթ. համար, ապա տվյալ տարվա Նավասարդի 1-ից դեկտեմբերի 31-ը եղած օրերի դեպքում հռոմեական թվականից հայկականն ստանալու համար պետք է հանել 551, իսկ հունվարի 1-ից Նավասարդի 1-ը եղած օրերի համար՝ 552։ 1320 թ. երկու տոմարների տարեսկիզբները համըն-*

39 *532=4×7×19։ 4-ը նահանջ տարիների տարբերությունն է, 7 տարի տարբերությամբ նույն ամսաթվերին կկրկնվեին շաբաթվա օրերը, եթե նահանջ տարիներ չլինեին, իսկ 19 տարի տարբերությամբ տարվա նույն օրերին կրկնվում են լուսնի փուլերի հասակները։ Այսինքն՝ 532 տարի հետո նույն հաջորդականությամբ կկրկնվեին շաբաթվա օրերը և լուսնի փուլերի հասակները։ Հետևապես 532-ամյա պարբերությամբ կկրկնվեին զատկի և եկեղեցական բոլոր շարժական տոները։*

կան. և հենց այդ տարում էլ գոյանում է հայոց լրացուցիչ մեկ տարին, քանի որ մի տարվա Նավասարդի 1-ը հունվարի 1-ին էր, իսկ հաջորդ տարվա Նավասարդի 1-ը՝ այդ նույն թվականի դեկտեմբերի 31-ին։ Ուստի և 1320 թ. հետո վերոհիշյալ 551-ի և 552-ի փոխարեն պետք է հանել 551-ի տեղ՝ 550, իսկ 552-ի տեղ՝ 551։

VII դարում, Անաստաս կաթողիկոսի հանձնարարությամբ, Անանիա Շիրակացին կազմում է «անշարժ» տոմարի նախագիծ, որը դժբախտաբար չի գործածվում, քանի որ կաթողիկոսի մահից հետո դրանով ոչ ոք չի զբաղվում։ Լայն է եղել Անանիա Շիրակացուն հետաքրքրող հարցերի շրջանակը։ Իր աշխատություններում բացի ընդհանուր տիեզերագիտական և աշխարհագրական հիմունքները շարադրելուց Անանիա Շիրակացին անդրադարձել է աստղագիտության մի շարք գործնական կիրառությունների (մասնավորապես նավագնացության ժամանակ կողմնորոշվելու համար և օրվա ժամը որոշելիս)։ Տվել է Հայաստանի միջին լայնության համար ստվերաչափ կազմելու կանոնը։ Կազմել է լուսնի ծննդի ու լրման 19-ամյա պարբերության աղյուսակներ։

Անանիա Շիրակացին իր աշխատություններում հաճախ է մեկնաբանել հայկական աստղագիտական տերմինները, որոնք մեծ արժեք են ներկայացնում հայ աստղագիտության պատմության համար։

Մեծ կարևորություն ունեն Անանիա Շիրակացու մաթեմատիկական աշխատությունները։ Նա մաթեմատիկան համարում էր «բոլոր գիտությունների մայրը»։ Շիրակացու մաթեմատիկական աշխատություններն ամփոփող դասագիրքը փաստորեն աշխարհում մեզ հասած թվաբանական դասագրքերից ամենահինն է։ Այդ դասագրքից միայն առանձին մասեր են մեզ հասել։ Նրանց մեջ են մտնում գումարման, հանման ու բազմապատկման, հակադարձ մեծությունների աղյուսակները, մի շարք խնդիրներ, խրախճանականներ և այլն։ Բացի դրանցից, կա երկու աղյուսակ, որոնցում օգտագործված թվերը հիշեցնում են թվաբանական ու երկրաչափական պրոգրեսիաները։ Շիրակացու աշխատություններում հանդիպում են ինչպես մեկ համարիչով, այնպես էլ կանոնավոր կոտորակներ, որոնց համարիչը 60-ից փոքր ցանկացած թիվ է, իսկ հայտարարը՝ 60-ի ամբողջ աստիճաններ։

Դասագրքում բերված խնդիրներն ու դրանց պատասխանները հանգեցնում են այն եզրակացության, որ դրանց լուծումները կատարվել են տարբեր, մասնավորապես կեղծ դրության ու ինվերսիայի (տվյալների տեղափոխության) եղանակներով։ Սակայն կան նաև այնպիսիները, որոնք եգիպտական ու հունական մինչ այդ հայտնի եղանակներով դժվար կամ անհնար է լուծել։

Շիրակացու կազմած խրախճանական խնդիրների մի մասը սրամտորեն կազմած լինելու և բովանդակության հետաքրքրականության պատճառով մինչ այժմ էլ որոշ փոփոխություններով պահպանվել է հայ ժողովրդի բանահյուսության մեջ։

Անանիա Շիրակացու մեզ հասած աշխատություններից գիտական հետաքրքրություն են ներկայացնում նաև թանկարժեք քարերին, չափ ու կշիռներին, ֆիզիկայի ու օդերևութաբանության տարբեր հարցերին վերաբերող ուսումնասիրությունները։ Նա բերում ու բացատրում է քամու, անձրևի, ձյան, կարկուտի, ծիածանի առաջացման պատճառները։ Նրան հայտնի էր, որ լույսի տարածման արագությունը շատ ավելի մեծ է, քան ձայնինը։ Արժեքավոր տեղեկություններ է հայտնում ոչ միայն Հայաստանում, այլև նրա հետ առևտրական

*և այլ գործարքներով կապված տարբեր երկրներում օգտագործված չափման միավորների և դրանց զուգակցությունների մասին։ Դրանք տրված են այնպիսի մանրամասներով, որ հնարավորություն են տալիս այդ մեծություններն արտահայտել ժամանակակից չափ ու կշռի միավորներով, մի բան, որը մեծ կարևորություն ունի մատենագրական, մանավանդ քաղաքական ու տնտեսական հարցերի լուծման համար։*

*Անանիա Շիրակացին կազմել է ակուստիկայի բնագավառում իր ժամանակի չափանիշով առաջավոր ուսմունքը ներկայացնող «տասնորդական աղյուսակի» հայկական տարբերակը, որով մեծապես հարստացրել է հայ երաժշտագիտությունը՝ ձայների, ձայնամիջոցների և ձայնաշարերի կազմությանը վերաբերող նոր գաղափարներով։ Հորինել է նաև «քաղցրալուր» շարականներ։*

*Մատենադարանի ձեռագրերում պահպանվել են բազմաթիվ տոմարական ու աստղագիտական բոլորակներ, որոնց տվյալներից երևում է, որ այդ ժամանակներում մեզ մոտ որոշվել են գիշերվա ու ցերեկվա տևողությունները տարվա տարբեր ամիսներին, գիշերը Լուսնի լույս տալու տևողությունը, Լուսնի ընթացքը (մասնավորապես Լուսնի ու Արեգակի անկյունային հեռավորությունն ամսվա տարբեր օրերին), Արեգակի տեսանելի շարժումը զոդիակի համաստեղություններով և այլն։ Բավական հիմքեր կան ենթադրելու, որ հայ հեղինակները (հատկապես Շիրակացին) կատարել են ինքնուրույն դիտումներ և օգտվել դիտողական ու չափողական գործիքներից։*

*Վերադառնալով «անշարժ» տոմարի հարցին՝ պետք է նշել, որ հայ իրականության մեջ այն մտցվեց 532-ամյա առաջին պարբերաշրջանի վերջանալուց հետո՝ 1084 թ., Հովհաննես Իմաստասերի (Սարկավագ) կողմից։*

*Հեղինակը տարեսկիզբը, որն այդ տարի ընկնում էր փետրվարի 29-ին, տեղափոխեց օգոստոսի 11-ին, աշխատելով այն նմանեցնել Մեսրոպ Մաշտոցի ու նրա աշակերտների՝ 428 թ. օգտագործած տարեմուտին։ Սարկավագադիր տոմարով 4 տարին մեկ լինում էր նահանջ, և այդ տարում ավելյաց ամիսը 5-ի փոխարեն ունենում էր 6 օր*[40]*։*

*Սարկավագադիր թվականից մեր թվականով տարին ստանալու համար անհրաժեշտ է վարվել հետևյալ կերպ. եթե դեպքը տեղի է ունեցել օգոստոսի 11-ից դեկտեմբերի 31-ն ընկած ժամանակամիջոցում՝ սարկավագադիր թվա-*

---

40 *Սարկավագադիր տոմարի ամիսները հռոմեական ամիս-ամսաթվերի հետ ստացան հետևյալ համապատասխանությունը։*

*Փակագծերում գրված թվերը վերաբերում են նահանջ տարիներին։*

| | |
|---|---|
| *Նավասարդ* | *օգոստոսի 11—սեպտեմբերի 9* |
| *Հոռի* | *սեպտեմբերի 10—հոկտեմբերի 9* |
| *Սահմի* | *հոկտեմբերի 10—նոյեմբերի 8* |
| *Տրե* | *նոյեմբերի 9—դեկտեմբերի 8* |
| *Քաղոց* | *դեկտեմբերի 9—հունվարի 7* |
| *Արաց* | *հունվարի 8—փետրվարի 6* |
| *Մեհեկան* | *փետրվարի 7—մարտի 8 (7)* |
| *Արեգ* | *մարտի 9 (8)—ապրիլի 7 (6)* |
| *Ահեկան* | *ապրիլի 8 (7)—մայիսի 7 (6)* |
| *Մարերի* | *մայիսի 8 (7)—հունիսի 6 (5)* |
| *Մարգաց* | *հունիսի 7 (6)—հուլիսի 6 (5)* |
| *Հրոտից* | *հուլիսի 7 (6)—օգոստոսի 5 (4)* |
| *Ավելյաց* | *օգոստոսի 6 (5)—օգոստոսի 10։* |

կանին ավելացնել 1083։ Իսկ եթե դեպքը տեղի է ունեցել հունվարի 1-ից օգոստոսի 11-ն ընկած ժամանակամիջոցում՝ գումարել 1084։

Հայոց Փոքր թվականն մոտ 200 տարի օգտագործվել է հյուսիսարևելյան հայաբնակ վայրերում։

1084 թվականից, մի այլ տոմարագետ՝ Ստեփանոսը, ևս կազմեց «անշարժ» տոմար։ Նա փաստորեն շարունակեց հին օրացույցը, միայն թե 4 տարին մեկ մտցնելով լրացուցիչ օր։ Ստեփանոսի կազմած տոմարը, չնայած իր որոշակի առավելությանը, տարածում չստացավ։

## 3. ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔԱՐՏԵԶԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Հայաստանում ֆեոդալական հասարակարգի զարգացումը հետևանք չէր «բարբարոսների» ներխուժումների, ինչպես այդ եղավ Արևմուտքում, այլ արդյունք էր երկրի ներքին զարգացման։ Այս երևույթն իր կնիքն է դնում հայկական վաղ ֆեոդալական ժամանակաշրջանի մշակույթի զարգացման վրա։ Այս ժամանակաշրջանի Հայաստանում մենք չենք տեսնում ընդհատում կամ հետադիմություն երկրի մշակութային երևույթների բնագավառում։ Ընդհակառակն, ձևավորվող վաղ ֆեոդալական հայկական մշակույթը հանդիսանում է նախաֆեոդալական ժամանակաշրջանի՝ հայկական ուշ հելլենիստական մշակույթի անմիջական օրինաչափ շարունակությունը։ Սրանով է բացատրվում այն հանգամանքը, որ IV—VII դդ. հայկական մշակույթն իր բոլոր դրսևորումներով հանդես է գալիս իբրև մի ամբողջականություն, իբրև ներդաշնակ միահյուսումն հայ ժողովրդի նախորդ ժամանակաշրջանների նյութական ու հոգևոր մշակույթի զարգացման[41]։

Այս ժամանակաշրջանում Հայաստանում իր ծաղկման շրջանն ապրող հունաբան դպրոցի ներկայացուցիչները մեծ ուշադրություն էին նվիրում հունահելլենիստական գիտական ու գրական ժառանգությանը։

Վաղ միջնադարյան Հայաստանի աշխարհագրության և քարտեզագրության անզուգական հուշարձան է Անանիա Շիրակացու «Աշխարհացույց»-ը։

«Աշխարհացույց»-ի հիմնական մասն է կազմում Հայաստանի, Կովկասի և Սասանյան Իրանի աշխարհագրական նկարագրությունը։ «Աշխարհացույց»-ը այս առումով բոլորովին ինքնուրույն և ինքնատիպ երկ է։ Գիտության մեջ արմատացած է այն կարծիքը, թե «Աշխարհացույց»-ը աշխարհագրության ձեռնարկ է եղել միջնադարյան Հայաստանում։ Այդ ճիշտ պետք է լինի զարգացած միջնադարի համար, սակայն արդյո՞ք այդպես էր սկզբնական շրջանում, VII դարում դժվար է պնդել։

Անանիա Շիրակացին ընդհանուր առմամբ իր «Աշխարհացույց»-ում հետևվում է Պտղոմեոսի «Աշխարհագրության ձեռնարկ» երկի շարադրության հաջորդականությանը[42], սակայն նա իր ժամանակաշրջանի ծնունդն էր և Պտղո-

---

[41] *С. Т. Еремян,* Раннефеодальная культура Армении, в книге «Очерки истории СССР. III—IX вв.» М., 1958, стр. 228. *Տե՛ս նաև՝* «Культура раннефеодальной Армении (IV—VII вв.)», Ереван, 1980, стр. 7—8.

[42] *Տե՛ս Claudii Ptolemaei*, Geographia, ed. Carolus Müllerus, voluminis primi, paris secunda, Parisiis, 1901. *Վերջերս հրատարակվել է Պտղոմեոսի «Աշխարհագրության» տեքստը քարտեզներով, որ պիտի լավագույնը համարել.* Claudii Ptolemaei Geographiae, edit. J. Fischer, I-IV, Leyden, 1932.



Երկրագունդն ըստ Անանիա Շիրակացու (610—685 թթ.)
«Աշխարհացույցի» վերակազմությունը Ս. Տ. Երեմյանի

մեոսից իր ձրկի մեջ թողնում է միայն այն տվյալները, որոնք համապատասխանում էին նաև իր ապրած ժամանակաշրջանին և ջանում է նոր նյութերով համաձայնեցնել այն իր ժամանակվա վիճակին։ Արևմտյան Եվրոպան և Աֆրիկան՝ Լիբիան, ավելի ճիշտ, Արևմտյան Հռոմեական կայսրության տարածքները հեռու էին «Աշխարհացույց»-ի հեղինակի հետաքրքրության տեսադաշտից, այստեղ ուժեղ էին անտիկ գրականության ավանդույթները, ուստի և այս մասում նա բավական հարազատ է Պտղոմեոսի և նրա վրա հենվող Պապպոս Աղեքսանդրացու շարադրանքին։ Սակայն ավելի է հեռանում նրանից, երբ անդրադառնում է հարավարևելյան Եվրոպային, ավելի ճիշտ՝ Արևելյան Հռոմեական կայսրության տարածքի եվրոպական մասին և հատկապես Հունաստանին։ Այստեղ նա աշխատում է որոշ պատմական փաստերով կապ գտնել հայ ժողովրդի և հույների պատմական անցյալի մեջ։ Բնորոշ է այս տեսակետից Փոքր Ասիայի նկարագրությունը, որը նա անվանում է «Միջերկրեայք»։ Այստեղ Անանիա Շիրակացին տալիս է Փոքր Ասիայի վարչական-քաղաքական բաժանման այն պատկերը, որը գոյություն ուներ VI—VII դդ.։ Պտղոմեոսի երկից մնացել են միայն այն փաստերը, որոնք շարունակում էին գոյատևել Փոքր Ասիայի բյուզանդական իրականության պայմաններում։ Անանիա Շիրակացին խոսում է այնպիսի վարչական բաժանումների մասին, ինչպիսիք են՝ Օնորիան, Էլինոպոնտոսը, Առաջին Հայքը, Երկրորդ Հայքը և այլն, որոնք Պտղոմեոսի և Պապպոս Աղեքսանդրացու ժամանակներում գոյություն չունեին։ Պտղոմեոսի բնագրից շատ քիչ բան է մնացել ասիական Սարմատիայի և Կողքիսի նկարագրության մեջ, իսկ Մեծ Հայքի, Վիրքի և Աղվանքի մասին շարադրված է բոլորովին նոր նյութերի և իրավիճակի հիման վրա։ Միաժամանակ շատ հետաքրքիր է, որ Մեծ Հայքին հաջորդող՝ «Յաղագս Ասորւոց» վերնագիրը կրող հատվածը համարյա ամբողջովին հարազատ է մնացել Պտղոմեոսի բնագրին։ Այս բացատրվում է նրանով, որ նախարարական ժամանակաշրջանի հելլենիստական Ասորիքը, Եգիպտոսի հետ միասին, մնում էր իբրև անտիկ հասարակարգի և մշակույթի ավանդույթների ամենամեծ պաշտպան։ Հռոմեական ժամանակաշրջանի Ասորիքից նրա քաղաքական-վարչական բաժանման տեսակետից շատ քիչ բան էր փոխվել նաև բյուզանդական ժամանակաշրջանում։ Ասորիքից հետո, երբ խոսվում է Միջագետքի մասին, կարելի է համոզվել, որ Պտղոմեոսի տվյալները չէին համապատասխանում «Աշխարհացույց»-ի ժամանակաշրջանի իրականությանը, և Անանիա Շիրակացին, փաստորեն, տալիս է բոլորովին նոր շարադրանք։

Մեծ Հայքից, Վիրքից, Աղվանքից և «Սարմատիայից» հետո «Աշխարհացույց»-ի լավագույն և ամենաինքնատիպ բաժինն է «Յաղագս Պարսից» հատվածը, որտեղ հեղինակը մի կողմ է թողնում Պտղոմեոսին և տալիս է բոլորովին ինքնուրույն մի բաժին՝ Սասանյան Իրանի քաղաքական-վարչական բաժանումը։

Սասանյան Իրանի «Երանշահր»-ի կազմի մեջ են ցույց տրված 385 թ. բաժանումից և 428 թ. Արշակունյաց հարստության վերացումից հետո Հայաստանում և Անդրկովկասում գոյություն ունեցող քաղաքական բաժանումները։ Մեծ Հայքի փոխարեն ցույց է տրված «Արմն, որ է Հայք», այսինքն՝ մարզպանական Հայաստանը, որը «Վարջան, որ է Վիրք» և «Ռան, որ է Աղուանք» մարզպանությունների հետ մտնում էր «Քուստի-Կապ-կոհ» երկրամասի մեջ։

Ինչպես մյուս բաժինները, «Յաղագս Պարսից» հատվածը ևս նյութ դարձավ Մարկվարտի «Էրանշահր» կապիտալ մենագրության[43]։

Բաղդատությունը Պտղոմեոսի շարադրության սիստեմի հետ հանգեցնում է այն եզրակացության, որ Անանիա Շիրակացին նյութը շարադրում է հետևյալ քարտեզների սահմաններում։

Առաջին քարտեզը, որը բոլոր քարտեզների համառոտ հանրագումարը պիտի լիներ, «Աշխարհացույց տիեզերաց»-ն է, որի քարտեզագրման հաջող փորձը կատարել է Ք. Պատկանյանը[44]։ Այս քարտեզն, արտաքուստ նման լինելով Պտղոմեոսի քարտեզին, իր մանրամասնություններով, սակայն, տարբերվում է դրանից։ Աշխարհագրագիր Ֆիշերի հետևությամբ պիտի կարծել, թե այդ տարբերությունն առաջացել է նրանից, որ «Աշխարհացույց»-ի հեղինակը ղեկավարվել է Ագաթոդեմոնի աշխարհի քարտեզով։

Ինչպես Պտղոմեոսը, այնպես էլ Անանիա Շիրակացին Եվրոպայի երկրները բաժանում է երկու մասի՝ արևմտյան և արևելյան։ Պտղոմեոսի մոտ այդ սահմանազատումն արևմտյան մասում է թողնում Իտալիան՝ իր Սարդինիա, Կորսիկա և Սիցիլիա կղզիներով, իսկ դրանցից արևելք գտնվող Դալմատիան ընկնում է արևելյան մասում։ «Աշխարհացույց»-ում այդ սահմանագիծն անցնում է մոտավորապես միջօրեականի 18-րդ աստիճանով, որը համապատասխանում է Արևմտյան և Արևելյան Հռոմեական կայսրությունների 395 թ. բաժանման գծին։

Այդպիսով, «Աշխարհացույց»-ում երկրորդ քարտեզն ընդգրկում էր Արևմտյան Հռոմեական կայսրության եվրոպական մասը։ «Սիկիլիա Մեծ կղզի»-ն նկարագրելուց հետո «Աշխարհացույց»-ի հեղինակը նշում է «Արդ զայս կարգ ի բուն հանելով՝ դարձցուք ի հիւսիսի, ի մնացեալ մասնէն Օվկիանոսի և Անծանօթ երկրի, այլ աշխարհատող զԵւրոպիա ածցուք ի հարաւ կոյս մինչև զՅունաց ծովն»։

«Աշխարհացույց»-ի երրորդ քարտեզն ընդգրկել է Արևելյան Հռոմեական կայսրության եվրոպական մասը, ներառյալ եվրոպական Սարմատիան՝ «բնաշխարհ Եւրոպիայ Սարմատացւոց աշխարհին», «Տաւրական ցամաքակղզին, այսինքն՝ զՔեռոսն», «Թրակացւոց աշխարհն», Մակեդոնիան և Էլլադան։ Սրանով վերջանում է «Առաջին հատածն», այսինքն՝ Եվրոպայի մայր ցամաքը և ապա սկսվում է «Երկրորդ հատածն աշխարհիս», այսինքն՝ Աֆրիկան՝ Լիբիան, որը կազմում էր առանձին՝ չորրորդ քարտեզը և հանդիսանում էր Պտղոմեոսի՝ Աֆրիկայի չորս քարտեզների համառոտությունը։

Եթե Հայաստանից հեռու գտնվող Եվրոպայի և Լիբիայի համար «Աշխարհացույց»-ի հեղինակը բավարարվում էր երեք համառոտ քարտեզներով, ապա իր հայրենիքի և նրան շրջապատող երկրների համար նա օգտագործում է Պտղոմեոսի մոտ գոյություն ունեցող քարտեզների տախտակները։ Այդ տեսակետից ուշագրավ է, որ Պտղոմեոսի Asiae tabula prima-ն ճշտիվ համապատասխանում է «Աշխարհացույց»-ի «Միջերկրեայք» կոչված հատվածին։ XV

---

[43] *J.Markwart*, Eranschahr nach der Geographie des Ps. Moses Xorenaci, Berlin, 1901;

[44] *Տե՛ս «Աշխարհացոյց է դարու», էջ 6, «Քարտէս Պտղոմէոսի»։* *К. П. Патканов.* Армянская география VII века, СПб., 1877. L. Fischer. Pappus und die Ptolemauskarten Ztschr. d. Gesell, f. Erdkunde zu Berlin, 1919, S. 336—358;

*դարի տպագրությամբ մեզ հասած այդ քարտեզը*[45] *լրիվ գաղափար է տալիս, թե ինչ էր իրենից ներկայացնում նրա հայերեն փոփոխված ընդօրինակությունը։ Բնորոշ է, որ Անանիա Շիրակացին օգտագործել է Պտղոմեոսի քարտեզի սխեման, ներմուծելով Փոքր Ասիայի բյուզանդական ժամանակաշրջանի քաղաքական-վարչական բաժանումը և կցելով նրան նաև Կիպրոս կղզու նկարագրությունը։ Փոքր Ասիայի նկարագրությունն «Աշխարհացոյց»-ում վերջանում է հետևյալ բառերով. «Ահա կատարեցան Միջերկրեայք կոչեցեալք»։ Վերջինս «Աշխարհացոյց»-ի հինգերորդ քարտեզը պիտի լինի։ Վեցերորդ քարտեզը պիտի համապատասխաներ Պտղոմեոսի* Asiae tabula secunda-*ին և բովանդակելու էր «Աշխարհ Ասիոյ Սարմատացւոց» բաժինը։*

*Յոթերորդ քարտեզն է Պտղոմեոսի* Asiae tabula tertia-*ն, որի* XV—XVII *դդ. եվրոպական տպագիր մի քանի ընդօրինակություններ մեզ հասել են*[16]*։ Այդ քարտեզների զննությունը ցույց է տալիս, որ իրոք Անանիա Շիրակացին ճշտիվ պահպանել է Պտղոմեոսի քարտեզի շրջանակները և այդ քարտեզը պարունակող երկրամասերի նկարագրության հաջորդականությունը.* Colchidis—*Կողքիս,* Iberiae—*Վիրք,* Albaniae—*Աղուանք,* Armeniae Maioris—*Մեծ Հայք*[47]*։*

*Վերջացնելով այս բաժինը՝ Անանիա Շիրակացին գրում է. «Ահա կատարեցան ամենայն Հայք»*[48]*, որ պիտի նշանակի, թե սրանով վերջանում է այս քարտեզը և սկսվում է հետևյալը։ Այս ենթադրությունն ավելի ակնհայտ է դառնում, եթե հաշվի առնենք Պտղոմեոսի տեղեկությունները* Asiae tabula tertia *-ի մասին, որ բերում է նա իր «Աշխարհագրության» վերջին՝ ութերորդ գրքի 19-րդ գլխում*[49]*։*

*Օգտագործելով Պտղոմեոսի քարտեզի սխեման՝ «Աշխարհացոյց»-ի հեղինակն այն հագեցրել է բոլորովին նոր բովանդակությամբ։ Այդ տվյալների տեղադրումն այժմյան քարտեզի վրա ցույց է տալիս, որ «Աշխարհացոյց»-ի՝ Հայաստանի ու Անդրկովկասի մեզ չհասած քարտեզը բավականին ճշգրիտ էր ու մանրամասն։*

*Հետևյալ՝ ութերորդ քարտեզը համապատասխանում է Պտղոմեոսի* Asiae tabula *IV-ին և իր ժամանակին արդեն այնքան ճշգրիտ է եղել, որ այժմյան քարտեզին շատ է մոտենում։*

*Իններորդ քարտեզը, ինչպես նշվեց, Անանիա Շիրակացու կազմած Սասանյան Իրանի՝ «Երանշահր»-ի քարտեզն էր, որը պիտի կոչվեր «Աշխարհացոյց Պարսից»։ Հետևյալ տասներորդ քարտեզը նորից վերարտադրում է Պտղոմեոսի սխեման՝* Asiae tabula *V կոչվող քարտեզը։ Այս քարտեզից արևելք և հյուսիս գտնվող երկրների համար Անանիա Շիրակացին նորից պիտի դիմեր ընդհանրացնող քարտեզներին։ Ըստ երևույթին գոյություն ունեին՝ Սկյութիայի, Հնդկաստանի, Տապրոբանիա (Ցեյլոն) կղզու, Ճենաստանի (Չինաստանի) և*

---

45 *Z. Khanzadian*, Atlas de cartographie historique de l' Arménie, Courbevoie (Seine), *1960, էջ 86* (Prima-Asiae tabula), 66 (Tabula Asiae I):

46 *Նույն տեղում, էջ 64* (Tertia Asiae tabula), 65 (Tabula Asiae III).

47 *Պտղոմեոսի ժամանակ Մեծ Հայքին սահմանակից Փոքր Հայքը վարչականորեն մտնում էր Կապադովկիայի կազմում։*

48 *«Աշխարհացոյց», էջ 38։ Դատելով այս մեջբերումից, կարելի է կարծել, որ «Աշխարհացոյց»-ում այս քարտեզը պիտի կոչվեր «Հայք», կամ «Աշխարհացոյց Հայոց»։*

49 *Տե՛ս* Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Երևան, 1963, էջ 15—16։*

Սինէացուց (Հնդկաչինի) աշխարհի քարտեզները։ Այսպիսով, կարելի է ենթադրել, որ «Աշխարհացույց»-ը, իբրև առանձին ատլաս, բաղկացած էր մոտավորապես 15 քարտեզից[50]։

Անանիա Շիրակացին ցույց է տալիս, որ իր համար ամենից ծանոթ երկրի՝ իր հայրենիք Մեծ Հայքի նկարագրման համար, Պտղոմեոսի տվյալները չէին բավարարում, ուստի նա հարկադրված է դիմել այլ աղբյուրների։ Խոսելով Մեծ Հայքը կազմող 15 նահանգների մասին, նա ասում է. «Արդ կամիմ զդոսա մանրամասնաբար պատմել, թէ և սակաւ ինչ աշխատիցիմ ի գիր և ի քարտէս»։ Սակայն, ինչպես նշվեց, համեմատությունը Պտղոմեոսի աշխատության հետ ցույց է տալիս, որ նա նոր նյութերով է ղեկավարվել ոչ միայն Հայաստանի մասը գրելիս, այլև նրան հարևան երկրները նկարագրելիս։

«Աշխարհացույց»-ի մանրազնին քննությունը բերում է նույն եզրակացության, որ Անանիա Շիրակացին ճիշտ և ճիշտ նույն նպատակն է հետապնդել, ինչ որ Պտղոմեոսը՝ պատրաստել քարտեզների ժողովածու—ատլաս, և միևնույն ժամանակ այդ քարտեզների տվյալները շարադրել առանձին, տալով աշխարհագրական ձեռնարկ, որը հասել է մեզ, իսկ քարտեզները բաժանել են Պտղոմեոսի քարտեզների բախտը՝ կորել են։ Ոմանք նույնիսկ տարակուսում են, թե արդյոք այդ քարտեզները հիմք ծառայել են Եվրոպայի վերածննդի ժամանակաշրջանի քարտեզների համար, թե վերջինները կազմված են Պտղոմեոսի տեքստի ցուցմունքների հիման վրա։

Ինչպես Պտղոմեոսի «Աշխարհագրության ձեռնարկը» սովորաբար անվանվում է «Քարտեզներ պատրաստելու ձեռնարկ», այնպես էլ «Աշխարհացույց»-ը կարելի է դիտել իբրև այն ժամանակ հայտնի աշխարհների քարտեզներ նկարագրող ձեռնարկ։

Քարտեզների—«Աշխարհացույցների» հետ միաժամանակ կազմվել են դրանց «աշխարհագիր»-ները, այսինքն՝ գրի է առնվել այդ քարտեզների վրա եղած ողջ բնագիրը և ստացվել է մի բավական ընդարձակ բնագիր, որը դարձել է այնուհետև աշխարհագրության ձեռնարկ։ Երկրի գնդաձևության տեսակետը զարգացնող Անանիա Շիրակացին Երկիրը պատկերացրել է գնդի-գլոբուսի ձևով։

«Աշխարհացույց»-ի ցուցմունքները հնարավորություն են տալիս վերականգնելու գլոբուսը։ Հասկանալի պատճառներով Անանիա Շիրակացին գիտեր միայն Արևելյան կիսագունդը, այն էլ այն մասը, որը պարփակված էր հյուսիսային լայնության 63°-ից մինչև հարավային լայնության 16° 25′։ Նրանից հարավ գտնվող «ընդդէմ երկիր»-ը պատկերացվում էր միայն տեսականորեն։

Արևելյան կիսագնդի նշված տարածքը բաժանվում էր յոթ «կլիմաների»-գոտիների և համարվում էր «բնակեալ երկիր»։

Գլոբուսի վրա պիտի նշված լիներ ծով՝ Հնդկային, Հունական (Միջերկրական ծով) և Վրկանից (Կասպից) ծովը, ինչպես և, Աստիճանացանցը և Հասարակածը («միջաւրէական շրջանակ»)։

Վերականգնվող գլոբուսը հիմնականում կրկնում է Կլավդիոս Պտղոմեոսի

50 Ս. Տ. Երեմյան. *Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի*, էջ 16։

*տվյալները։ «Բնակեալ երկիր»-ը բաժանվում է երեք մայր ցամաքների՝ «Եւրոպիայ», Լիբիա (Աֆրիկէ) և Ասիա, այստեղ բնակվող հիմնական ցեղերի ու ժողովուրդների նշումներով՝ ըստ անտիկ ժամանակաշրջանի ավանդույթների*[51]։

## 4. ՉԱՓԵՐ ԵՎ ԿՇԻՌՆԵՐ

*Հին և միջնադարյան Հայաստանում կիրառվող չափերի ու կշիռների վերաբերյալ պահպանվել են որոշ մատենագրական տեղեկություններ, իսկ նրանց իրական մեծությունները գտնելու համար հիմնական աղբյուր են հնագիտական գտածոները, երկարության միավորների մետրական արժեքը գտնելու համար կարևոր են ճարտարապետական առանձին կառույցների հիմնական չափումների տվյալները, որոնք ավելի քան հավաստի են դառնում մաթեմատիկական մեթոդների կիրառմամբ։*

**Երկարության չափեր:** *Միջնադարյան Հայաստանում, ըստ IV—XVI դդ. ճարտարապետական հուշարձանների չափական տվյալների, կիրառվել են՝ փոքր ոտնաչափը (հավասար միջին հաշվով 26,5 սմ), միջին ոտնաչափը (հավասար միջին հաշվով 30,9 սմ), մեծ կամ փիլետերյան ոտնաչափը (հավասար միջին հաշվով 35,6 սմ), որոնք իրենց միջին արժեքի նկատմամբ տատանվել են մինչև 5 %-ի սահմաններում։*

*Հիշյալ ոտնաչափերի հիման վրա գտնված են անտիկ և միջնադարյան Հայաստանում կիրառվող երկարության չափական համակարգերի միավորները, որոնք առկա են հայկական գրավոր սկզբնաղբյուրներում։ Անտիկ և վաղ միջնադարյան ժամանակներում է օգտագործվել Անանիա Շիրակացու «Աշխարհացոյց»-ում իր արտահայտությունը գտած օդաչափության համակարգը, որտեղ մեկ մղոնը=7 ասպարեզի ըստ օդաչափության կամ 7 վտավանի 100 քայլ, 600 ոտ, 211,4 մետր=700 քայլի. ասպարեզը կամ վտավանը=է 1480 մետրի։*

*Անտիկ և վաղ միջնադարյան ժամանակաշրջաններում կիրառվել է նաև «Մեկնութիւն տօմարի Անդրեասայ» և հայկական տոմարին նվիրված մեկնություններում պահպանված երկարության չափական. համակարգը, որտեղ մեկ մղոնը հավասար է 7 ասպարեզի=48 խրասխ-պլեթրոնի=1050 քայլի=2100 կանգունի=1480 մետրի։ Անանիա Շիրակացու կիրառած գետնաչափության համակարգում, որը գործածական է եղել անտիկ և միջնադարյան Հայաստանում, ըստ Հայաստանի ճարտարապետական հուշարձաններից ստացված փոքր ոտնաչափի միջին մեծության մեկ հրասախը կամ փարասխը հավասար է 3 մղոնի=21 ասպարեզաց ասպարեզի կամ պարսից ասպարեզ=4770 մետրի*[52]։

*Հայկական տոմարին նվիրված մեկնության մեջ պահպանված երկարության չափերը, որոնք վաղ միջնադարյան ծագում ունեն, հետևյալներն են՝ մեկ*

---

[51] *С. Т. Еремян*, Древнеармянский глобус. Второй всесоюзный симпозиум по проблемам эллинстической культуры на Востоке. Май, 1984, Тезисы докладов, Ереван, 1984, с. 24—25.

[52] *Քայլը հավասար է 6 ոտ, 2,114 մետր։ Ոտը հավասար է 16 մատ, 35,23 սմ։ Մատը հավասար է 2,2 սմ։ Ասպարեզը=է 150 քայլի, 300 կանգունի, 211,4 մետրի։ Խրասխ-պլեթրոնը=է կլոր 22 քայլի, 44 կանգունի, 30,83 մետրի։ Քայլը=է 2 կանգունի, 7 ներբանի, 14 բռան, 1,409 մետրի։ Կանգունը=է 7 բռան, 70,45 սմ։ Ներբանը=է 2 բռան, 20 սմ։ Բուռը=է 10 սմ։ Մղոնը=է 7 ասպարեզաց ասպարեզ կամ պարսից ասպարեզ. 1000 քայլ, 6000 ոտ, 1590 մետր։ Ասպարեզաց ասպարեզը կամ պարսից ասպարեզը=է 142 6/7 քայլ, 227 մետր։ Քայլը=է 6 ոտ 1,59 մետր։ Ոտը հավասար է 16 մատ, 26,5 սմ։*

*ասպարեզ-վտավան=100 քայլի=216,3 մետրի**։ «Յաղագս ընթացից արեգական եւ համարոյ չափուց» բնագրի օդաչափության համակարգում (ըստ մեծ և փոքր ոտնաչափերի) մեկ մղոնը հավասար է 7 ասպարեզի՝ ըստ օդաչափության քայլ=750 քայլ=4500 ոտ=1590 մետրի և 1603 մետրի**։

Հայկական տոմարի մեկնությունների մեջ փաստագրված չափական համակարգում, որը գործածվել է միջին դարերում, մեկ մղոնը հավասար է 7 ասպարեզի=5000 ոտի=1545 մետրի և 1590 մետրի***։

Հայկական «Մղոնաչափքում» տեղ գտած երկարության չափական համակարգում մեկ ասպարեզը հավասար է 166 2/3 գիրկ=500 կանգուն=1000 թիզ=8000 կոճ=16000 դունգ=231,75 մետրի****։

Հայկական միջնադարյան չափագիտական սկզբնաղբյուրներից և ճարտարապետական հուշարձաններից ստացված երկարության չափերն են՝ գարիգարեհատ, փոքր մատնաչափ (1,66 սմ), մեծ մատնաչափ-ըղունգ-եղունգ (2,22 սմ), կոճ (2,90 սմ), բոյթ (4,43 սմ), բուռնի (10 սմ), ներբան (20 սմ), թիզ (23,175 սմ), փոքր, միջին և մեծ ոտնաչափ (26,5 սմ, 30,9 սմ և 35,6 սմ), փոքր, միջին և մեծ կանգուն (46,35 սմ, 53 սմ և 71,2 սմ) փոքր, միջին, մեծ և երկրաչափական սովորական քայլ (70,2 սմ, 79,5 սմ, 92,5 սմ, 105—1,08 սմ), փոքր, միջին, մեծ և երկրաչափական-թագավորական գիրկ-կրկնաքայլ-մարդաչափ (1,4 մ, 1,54—1,59 մ) 1,85 մ և 2,11—2,16 մետր ձող (3,09 մ), խրասխըպլեթրոն (30,9 մետր), ասպարեզ ըստ օդաչափության-վտական-ասպարեզ (213 մետր), ասպարիզաց ասպարեզ-պարսից ասպարեզ-ասպարեզ նետաձիգ (227 մետր), հռոմեական մղոն (1480—1493 մետր), փիլետերյան կամ եգիպտական մղոն (1575—1590 մետր), հրասախ-փարսախ՝ մեկ ժամվա հետիոտնի ճանապարհ (4770 մետր), մեկ օրվա ճանապարհ (31,4—38,2 կմ)։ Երկարության չափերն ստանալուց հետո դժվար չէ որոշել քառակուսի-խորանարդ և այլ չափերը։

**Դրամակշռային միավորներ**: I դարի վերջից կամ II դարի սկզբներից մինչև IV դարի սկիզբը Հայաստանում տարածված էին հռոմեական դրամակշռային համակարգի միավորները, իսկ IV դարի II քառորդից սկսած մինչև XII դարի վերջը գերազանցապես բյուզանդական դրամակշռային համակարգը գործեց Հայաստանում։ Այդ համակարգում (ըստ Անանիա Շիրակացու, Մխիթար Գոշի մեկ կենդինարը հավասար է 100 լիտր-լաղարիկոն=1200 ունկի=4900 սիկղ-մեղիարիս-փոլչէ=7200 դահեկան-միթխալ=9600 սատեր-դրաքմե=14400 սիմեսպոտատ=21600 տրմես=28500 գրամար՝ 1,1125 գրամ)=43200 սինգ-դանգ (յուրաքանչյուրը 4 կերատ-թասուկուտ, 0,7416 գրամ)=

---

* Քայլը=է 7 ոտ, 49 բոյթի, 98 ղունկի, 2, 163 սմ։ Ոտը=է 7 բոյթի, 14 ղունկի. 30,9 սմի։ Բոյթը=է 2 ղունկի, 4,41 սմի։ Ղունկը=է 2,2 սմի։

** Ասպարեզը ըստ օդաչափության=է 107 1/7 քայլի, 227 մետրի կամ 229 մետրի։ Քայլը=է 6 ոտի, 96 մատի, 2,12 մետրի կամ 2,14 մետրի։ Ոտը=է 16 մատի։ 35,33 սմ կամ 35, 6 սմ։ Մատը=է 2,2 սմ։

*** Ասպարեզը=է 142 6/7 քայլի, 221 մետրի կամ 227 մետրի։ Քայլը=է 5 ոտի, 1.545 մետրի կամ 1,59 մետրի։ Ոտը=է 7 բոյթի, 30,9 սմ կամ 31,9 սմ։ Բոյթը=է 2 ղունկի, 4,4 սմ։

**** Գիրկը=է 3 կանգունի, 1,39 մետրի, Կանգունը=է 2 թզի. 46,35 սմ։ Թիզը=է 8 կոճի, 23,175 սմ։

172800 կերատ-թասուկուտ—230400 փշիտ=345600 դանգ=691200 գարեհատ=32,04 կգ*։

III դարի 30-ական թվականներից մինչև VIII դարի սկիզբը բյուզանդականին զուգահեռ օգտագործվում էր Սասանյան Իրանի դրամակշռային համակարգը, որտեղ ըստ Անանիա Շիրակացու, մեկ տաղանդը հավասար էր 2,5 պայուսակ=125 լիտր=2500 սատեր=10000 դրամ=60000 դանգ=40 կգ**։

VIII դարի 20-ական թվականներից մոտ 300 տարի բյուզանդականին զուգահեռ, կիրառվում էր արաբական դրամակշռային համակարգը, որի հիմնական միավորներն էին դրամ-դիրհեմը՝ հավասար 2,82—2,96 գրամ, մսխալմթխալը համարժեք դահեկանին՝ 4,44—4,45 գրամ, ունկի-ուկի-նուկին՝ 20 գրամ, լիտր-ռաթլը՝ 399,6 գրամ—400,5 գրամ։ Զարգացած ֆեոդալիզմի շրջանից սկսած առաջանում են տեղական դրամակշռային համակարգեր։

**Տարողության ճեղուկ և սորուն նյութերի չափեր:** Հայկական սկզբնաղբյուրների վկայությունները հնարավորություն են ընձեռում վերականգնելու անտիկհռոմեական շրջանի որոշ տարողության չափերի և հատկապես միջնադարյան Հայաստանում կիրառված ձիթաչափերի համակարգը, մեկ կայթը հավասար էր 4 սափոր-փաս=10 սրուակ-կամփսակ=40 քսեստ=80 սկավառակ-տրիվզիոն-պարապսիդոս=120 շիշ-բիսիոն-բեսին=240 ապակի=60 լիտր-լաղարիկոն=19224 կգ=21,36 լիտր***։

Միջին դարերում Հայաստանում կենցաղավարող ցորենաչափերի համակարգում, որի որոշ միավորներ գալիս են անտիկ-հռոմեական ժամանակներից, մեկ մեծ քոռը հավասար էր 3 մեծ կապիճ—մեծ մոդ=12 արդու-արտաբ մեծ չափ=18 կայթ=27 ծովային անվանվող մոդ=40 սրբության անվանվող մոդ—մեծ գրիւ—միջին կապիճ=80 կաբոս=120 փոքր գրիւ—փոքր չափ=400 փոքր կապիճ=864 քսեստ=1080 լիտր—լաղարիկոն=386,032 կգ=464,57 լիտր։

Հայկական սկզբնաղբյուրներից հայտնի ցորենաչափերի միավորները կարելի է դասակարգել այսպես՝ քոռ՝ մեծ և փոքր, կապիճ՝ մեծ, միջին և փոքր, մոդ՝ մեծ, ծովային և սրբության, արդու-արտաբ, չափ՝ մեծ և փոքր, կայթ, գրիւ՝ մեծ և փոքր, կաբոս։

Հիշյալ չափերից մի քանիսը այլ անվանումներով օգտագործվեցին մինչև ուշ միջնադար, նույնիսկ XIX դարի տեղական համակարգերում՝ մնացուկային ձևով։

---

* Լիտր-լաղարիկոնը հավասար է 12 ունկի, 72 դահեկան, 320,4 դրամ։ Ունկին հավասար է 6 դահեկան, 26,7 դրամ։ Սիկղ—Մեղիարիս—Փոլչէն հավասար է 6,675 գրամ։ Դահեկան—Մթխալը հավասար է 24 կերատ 4,45 գրամ։ Սարեր-գրաքմէն հավասար է 3,335 գրամ։ Սիմես—Պուրատը հավասար է 12 կերատ—թասուկուտ, 2,22 գրամ։ Տրմեսը հավասար է 8 կերատ, 1,483 գրամ։ Գրամարը հավասար է 6 կերատ, 1,1125 գրամ։ Սինգ-դանգը հավասար է 4 կերատ-թասուկուտ, 0,7416 գրամ։ Կերատ-թասուկուտը հավասար է 0,1854 գրամ։ Փշիտը հավասար է 0,139 գրամ։ Դանգը հավասար է 0,927 գրամ։ Գարեհատը հավասար է 0,4635 գրամ։

** Պայուսակը հավասար է 50 լիտր-լաղարիկոն, 1000 սատեր, 4000 դրամ, 16 կգ։ Լիտր-լաղարիկոնը հավասար է 320,4 գրամ։ Սատերը հավասար է 16 գրամ։ Դրամը հավասար է 4 գրամ։ Դանգը հավասար է 0,66 գրամ։

*** Սափոր-փասը հավասար է 10 քսեստ, 5,34 լիտր։ Սրուակ-կամփսակը հավասար է 4 քսեստ, 2,136 լիտր։ Քսեստը հավասար է 20 ունկի, 0,534 լիտր։ Սրուակ-տրիվզիոն-պարապսիդոսը հավասար է 0,267 լիտր։ Շիշ-բիսիոն-բեսինը հավասար է 0,177 լիտր։

Զարգացած ֆեոդալիզմի և հատկապես ուշ միջնադարում ստեղծվեցին տեղական տարողության չափերի համակարգեր, որոնք հիմնված էին ծանրության միավորների վրա և արտահայտվում էին կշռով։

## 5. ԲԺՇԿՈՒԹՅՈՒՆ

Բժշկությունը հին Հայաստանի մշակույթի անբաժանելի մասն է և նրա արմատները հասնում են դարերի խորքը։ Սնվելով ժողովրդական բժշկության ակունքներից, այն կուտակել է բժիշկների բազում սերունդների դարավոր փորձըն ու գիտելիքները՝ Հայաստանի բուսական և կենդանական աշխարհի, ինչպես նաև հանքային նյութերի բուժիչ հատկությունների մասին։ Ուրարտական և ավելի վաղ շրջանի հնագիտական պեղումների արդյունքները (բժշկական զանազան գործիքներ, դեղատան սարք և այլն) վկայում են հին Հայաստանում բժշկական արվեստի բարձր մակարդակի մասին։

Նախնադարյան հասարակության մեջ բժշկի դերը կատարել է կինը, և ամենևին էլ զարմանալի չէ, որ առողջության պահապան աստվածությունն էլ մարմնավորված է կնոջ կերպարի մեջ։ Հեթանոս հայերը սիրո և գեղեցկության դիցուհի Աստղիկին և «մայր ամենայն զգաստութեանց», «բարերար ամենայն մարդկան բնութեան» Անահիտին պաշտում էին որպես բժշկության հովանավորների։ Հիշյալ դիցուհու տաճարները, V դարի պատմիչներ Ագաթանգեղոսի և Մովսես Խորենացու վկայությամբ, կառուցված են եղել հին Հայաստանի գեղատեսիլ վայրերում, Բարձր Հայքի, Այրարատի, Տարոնի, Վասպուրականի նահանգներում, որոնք ժամանակի ընթացքում դարձան բուժական կարևոր կենտրոններ։

Տաճարների քրմերը, յուրացնելով ժողովրդական բժշկության փորձը և կատարելագործվելով բժշկական արվեստի մեջ, օգնություն էին ցույց տալիս բնակչությանը։

301 թ. հետո, երբ հիմնվեցին քրիստոնեական վանքեր, նրանց կից բացվեցին առաջին հիվանդանոցները։ Այսպես, V դարի պատմիչ Փավստոս Բուզանդը մեծ գովեստով է խոսում Ներսես Մեծ կաթողիկոսի շինարարական գործունեության մասին։ Նա պատմում է, թե ինչպես Ներսես Մեծը Հայոց աշխարհի բոլոր կողմերում հիվանդանոցներ է հիմնում՝ բորոտների, հաշմանդամների և ցավագարների համար։

Կաթողիկոսի այս միջոցառումներն արտացոլված են Աշտիշատի եկեղեցական ժողովի (354) որոշումներում՝ «Վարակիչ հիվանդությունների տարածվելը կանխելու համար հիմնել բորոտների համար բորոտանոցներ, հիվանդների համար հիվանդանոցներ, հաշմանդամների և կույրերի համար ապաստարաններ»[53]։

Ըստ ավանդության, մասնավոր հիվանդանոցներ կային Հայաստանում դեռևս III դարում։ Այսպես, 260 թ. հայ նախարար Սուրեն Սալահունու կինը՝ Աղվիթանը Դերջան գավառի Սուրենաշեն ավանում (այժմ՝ Ջուրմեջյուղ) Առբենուտ կոչվող բուժիչ հանքային աղբյուրների մոտ իր միջոցներով բորոտանոց կառուցեց[54]։ Հիշեցնենք, որ Եվրոպայում առաջին բորոտանոցները բացվել են դրանից երեք հարյուր տարի հետո միայն։

---

[53] *Л. А. Оганесян,* История медицины в Армении, т. 1, Ереван, 1946, с. 188.
[54] Տե՛ս Մ. Օրմանյան, *Ազգապատում, մասն Ա, Կ. Պոլիս, 1913, էջ 69—66։*

Հայ ժողովրդական բժշկությունը, որ գրեթե երեք հազար տարվա պատմություն ունի, ստեղծել է դեղամիջոցների մի հարուստ գանձարան։ Հնում առանձնապես մեծ համբավ ունեին Հայկական լեռնաշխարհի դեղաբույսերը, որոնք արտահանվում էին Արևելքի և Արևմուտքի մի շարք երկրներ և տեղ են գտել հնագույն դեղագիտարաններում։ Քսենոֆոնը իր «Անաբասիս» երկում խոսում է նաև հայկական բուրումնավետ գինիների և հրաշալի գարեջրի, քնջութի, նուշի ձեթերի և բեեկնի խեժի, ինչպես նաև անուշահոտ օծանելիքների մասին։ Հին աշխարհի անվանի բուսաբան Դիոսկորիդեսը, ծնունդով կիլիկիացի, իր «Materia medica» գեղագիտական աշխատության մեջ կանգ է առնում նաև բույսերի հայկական տեսակների վրա, որոնք, իր խոսքերով ասած, աչքի են ընկնում հրաշալի բուժիչ հատկություններով։ «Ամենալավ համեմը,— գրում է նա,— հայկականն է, ոսկեգույն, դեղնավուն ցոլումով և բավական հաճելի բուրմունքով»[55]։

Հռոմեացի պատմիչ Տակիտոսը իր «Տարեգրություններում» հիշատակում է «գյուղական» դեղամիջոցների մասին, որ հաջողությամբ օգտագործում էին հայ գեղջուկները վերքերը բուժելու նպատակով[56]։

Հայաստանը, ինչպես նաև Մարաստանը, հնում հանդիսացել են մի շարք արժեքավոր խեժաբեր բույսերի, այդ թվում նաև հայտնի ուպանի (laserpitium) հայրենիքը։ Վերջինիս բուժիչ հատկությունները, ինչպես վկայում է Պլինիոս Ավագը իր «Բնական պատմության» մեջ, չափազանց բարձր էին գնահատում հռոմեացիները[57]։

Հայ պատմիչները բազմաթիվ ուշագրավ տեղեկություններ են հաղորդում հին հայկական բժշկության մասին։ Այսպես, պատմահայր Մովսես Խորենացին գրում է, որ Հայոց Վաղարշակ թագավորը (II դար մ. թ. ա.) Տայքի և Կողի ճահճոտ վայրերում այգիներ և բուրաստաններ է հիմնել[58]։ Այդ այգիներում և բուրաստաններում աճեցվում և բազմացվում էին, ինչպես վկայում է V դարի մի ուրիշ պատմիչ՝ Ղազար Փարպեցին, բնության մեջ վայրի ձևով աճող դեղաբույսեր։ «Այնտեղ (Արարատյան դաշտում)—գրում է պատմիչը,— շատ կան զանազան բույսերի արմատներ, որ օգտագործում են ճարտար, հմուտ և գիտուն բժիշկները արագ բուժող սպեղանիներ կամ ըմպելի դեղեր պատրաստելու համար, որոնցով բուժում էին երկար ժամանակ հիվանդությամբ տառապողներին»[59]։

Հայաստանի բուժիչ բույսերը մեծ խնամքով աճեցվում էին հատուկ պարտեզներում, որ հիմնվել էին դեռևս Արտաշես թագավորի (I դար մ. թ. ա.) նախաձեռնությամբ, որի մասին գովեստի հետևյալ խոսքերն է գրում IX դարի պատմիչ Թովմա Արծրունին. «(Արտամետ քաղաքի) ամրոցի շուրջը նա տնկել տվեց զանազան բազմերանգ և անուշահոտ ծաղիկների բուրաստաններ, որոնք ոչ միայն հաճելի էին աչքի և հոտոտելիքի համար, այլև պիտանի հնարամիտ

---

55 Pedacii Dioscoridis Anazarbaei. Erstes Buch von den wohlriechenden Krautern, Frankfurt, 1610. S. 10.

56 *Тацит, Соч.*, в двух томах, т. I. Анналы, изд. «Наука», Л., 1969, с. 216.

57 *Pliny*, Natural History. Book XIX, v.Y. London, 1961, p. 445.

58 Մովսէսի Խորենացւոյ *Պատմութիւն Հայոց*, *Թիֆլիս*, *1913*, *էջ 108*։

59 Ղազարայ Փարպեցւոյ *Պատմութիւն Հայոց*, *Վենետիկ*, *1891*, *էջ 26*։

բժիշկներին՝ դեղեր պատրաստելու համար, համաձայն Ասկղեպիասի արվեստի»[60]։

Այլ տեղեկությունների համաձայն, Պոնտոսի թագավոր Միհրդատը՝ հին աշխարհի ականավոր բժիշկը և թունագետը, իր հռչակավոր հակաթույնը պատրաստում էր Հայաստանի դեղաբույսերից[61]։ Որոշ բույսերի, ինչպես, օրինակ, լոշտակի (Bryonia hioica) սև գնդիկի (Nigella sativa) հրաշալի բուժիչ հատկությունները հին Հայաստանում առաջացրին այդ բույսերի պաշտամունքը, որի հեռավոր արձագանքները պահպանվել են հայ բանահյուսության մեջ։

Մեծ համբավ ունեին հնում հանքային դեղամիջոցները՝ հայկական կավը, հայկական քարը, հայկական բորակը, ինչպես նաև սնդիկի, երկաթի, ցինկի, արճճի միացությունները, որոնք Հայաստանից արտահանվում էին հարևան երկրները։ Հայկական կավը (Bolus armena), որը պարունակում է ալյումասիլիկատներ և երկաթի օքսիդ, կիրառվել է որպես հակաբորբոքային, հակաալերգիկ և հակաուռուցքային դեղամիջոց, այն միաժամանակ օգտագործվել է արյունահոսությունների և թունավորումների դեպքում։ Այն լավ հայտնի էր անտիկ աշխարհի ականավոր բժիշկ Գալիանոսին, իսկ հետագայում շատ բարձր է գնահատվել «բժշկության իշխան» Իբն-Սինայի կողմից, որը իր «Կանոնում» գրել է. «Հայկական կամ անիական կավը զարմանալիորեն ներգործում է վերքերի վրա։ Այն առանձնապես օգտակար է թոքախտը և ժանտախտը բուժելու համար։ Շատերը փրկվեցին մեծ համաճարակի ժամանակ, քանի որ սովորություն ունեին այն պարբերաբար խմել թույլ գինու հետ»[62]։

Հայկական կավը այսօր էլ մեծ կիրառություն ունի ժողովրդական բժշկության մեջ։

Հայ և օտար հեղինակների վկայությամբ, Հայաստանը հնում հայտնի է եղել պղնձի, երկաթի և արճճի հանքերով։ Դեպի Վանա լճի եզերքն իջնող Ծըլտունյաց լեռները, ինչպես վկայում է Փավստոս Բուզանդը, կոչվում էին «Երկաթահատաց և կապարահատաց լերինք»[63]։ Այդպիսի հանքեր կային նաև Սասնա լեռներում։ Երկաթի միացություններից պատրաստված դեղամիջոցներն օգտագործվում էին մի շարք հիվանդություններ բուժելու համար և գեռ այսօր էլ պահպանվել են ժամանակակից դեղագիտարաններում։

Հին հայկական դեղանյութերի շտեմարանում հատուկ տեղ ունեին սնդիկի միացությունները, այդ թվում և կարմիր ներկը, որոնք արդյունահանվում էին Հայաստանում։ Անտիկ աշխարհի նշանավոր աշխարհագետ և պատմիչ Ստրաբոնը վկայում է. «Այնտեղ (Հայաստանում) կան նաև այլ հանքավայրեր, այդ թվում և այնպիսիք, ուր արդյունահանվում է, այսպես կոչված, սանդիկը (կարմիր ներկ, սուսր), որը կոչվում է հայկական ներկ և նման է ծիրանիին»[64]։

Բուսական և հանքային գեղերից բացի հայ բժշկության մեջ օգտագործվել են նաև կենդանական ծագում ունեցող դեղամիջոցներ՝ պատրաստված կենդա-

---

60 Թովմայի վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն տանն Արծրունեաց, II, Պետերբուրգ, 1887, էջ 53։

61 Л. А. Оганесян, նշվ. աշխ., էջ 74։

62 Ибн Сина, Канон врачебной науки, кн. 2, изд. АН УзССР,Ташкент, 1956, с. 303.

63 Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց, Վենետիկ, 1332, էջ 24։

64 *Страбон,* География, изд. «Наука», Л., 1964, с. 499.

նիների օրգաններից և հյուսվածքներից, որոնց մի մասը օժտված է ֆերմենտային հատկություններով։

Այս վերջինների թվին են պատկանում սեռական գեղձերի, ուղեղի, լյարդի, փայծաղի էքստրակտները, որոշ կենդանիների լեղին, նապաստակի խախացը, ինչպես նաև խառը բուսական-կենդանական բնույթ ունեցող «խոնավ կուֆան», որի մասին Իբն-Սինան իր «Կանոնում» գրել է հետևյալը. «Այդ այն ճարպն է, որ հավաքվում է Հայաստանում ոչխարների դմակի բրդի վրա, որ քարշ է գալիս կաղնչանի վրայով։ Այն իր մեջ ներծծում է այդ խոտերի ուժը և կաթնահյութերը։ Երբեմն ճարպը նոսր է լինում, ուստի եփում և թանձրացնում են այն։ Այդ ճարպը մաշեցնում է կոշտ ուռուցքները և ուղղում ծռված ոսկորները, եթե նրանով վիրակապ դրվի»[65]։ Վերոհիշյալ դեղանյութերը օժտված էին հակաթունային, հակասկլերոտիկ և հորմոնալ ներգործությամբ։ Հայ ժողովրդական բժշկության այս արժեքավոր փորձը հետագայում ավելի լայն կիրառություն ստացավ։

Հայկական գրերի գյուտից հետո, երբ հայ մատենագրության հիմքը դրվեց, պատմափիլիսոփայական երկերի կողքին իրենց տեղը գրավեցին բժշկությանը վերաբերող աշխատությունները։ Պետք է նշել, սակայն, որ բժշկական գրականության առաջացումը ամենևին էլ չվերացրեց ժողովրդական բժշկության բանավոր ավանդույթները։ Սրանք շարունակվելով նոր լիցք հաղորդեցին բժշկական գրականությանը։

Հայ դասական բժշկությունը իր զարգացման արշալույսին կրել է հելլենական մշակույթի բարերար ազդեցությունը։

Հին աշխարհի դասականների՝ Պլատոնի, Արիստոտելի, Հիպոկրատեսի, Գալիանոսի, Ասկղեպիադեսի և ուրիշների երկերը, որոնք հայերեն թարգմանվեցին հունաբան թարգմանչական դպրոցի ներկայացուցիչների ջանքերով, մեծ դեր խաղացին հայ բժիշկների աշխարհայացքի ձևավորման գործում[66]։ Այսպես, V դարի վերջում հայերեն թարգմանվեցին Արիստոտելի «Ստորոգութիւնք» և «Յաղագս մեկնութեան» երկերը, VI դարի սկզբին՝ Պլատոնի բնափիլիսոփայական երկերը, այդ թվում և «Տիմէոսը», VI դարի երկրորդ կեսին՝ Զենոնին վերագրվող «Յաղագս բնութեան մարդոյ», ինչպես նաև Կեղծ-Արիստոտելի «Յաղագս աշխարհի» և «Յաղագս առաքինութեան» ուսումնասիրությունները։ Դրանցից հատկապես ուշադրության արժանի է Պլատոնի «Տիմէոս» երկը, որի մեջ հեղինակը, ելնելով չորս նախնական տարրերի (հող, ջուր, օդ, հուր) ուսմունքից, փորձել է բացատրել ոչ միայն տիեզերքի (մակրոկոսմոսի), այլև մարդու (միկրոկոսմոսի) առաջացման և զարգացման օրինաչափությունները[67]։ Նախնական տարրերի տեսությունը, որ հին աշխարհում իր զարգացումն է ստացել Պլատոնի, Արիստոտելի և Հիպոկրատեսի երկերում, առաջին անգամ չափածո ձևով շարադրել է հույն բնափիլիսոփա և բժիշկ Էմպեդոկլեսը։ Հետագայում այն դրվեց հումորալ ախտաբանության տեսության հիմքում, որ չափազանց ուժեղ ազդեցություն է գործել միջնադարյան բժշկության վրա։ Իսկ

65 *Ибн Сина*, նշվ. աշխ., էջ 227։

66 *С. С. Аревшатян*, Древнейшие армянские переводы и их культурно-историческое значение, «Историко-филологический журнал», 1973, № 1, с. 31—37. Ս. Ս. Արևշատյան, Հնագույն հայկական թարգմանությունները և նրանց պատմամշակութային նշանակությունը, ՊԲՀ, 1973, № 1, էջ 31—37։

67 «Պղատոնի իմաստասիրի Տրամախօսութիւնք, Տիմէոս», Վենետիկ, 1877։

Հիպոկրատեսի և Գալիանոսի երկերը հայտնի են եղել հայ բժիշկներին, թեև ուշ ժամանակներից մեզ հասած մի ձեռագրում պահպանվում է Հիպոկրատեսի «Պրոգնոստիկոն» երկից մի հատված, որի սկզբում բերված է մեծ բժշկի մահվան մասին հայկական մի հին ավանդություն։ Հիշյալ գրչագրի մեջ կան նաև Գալիանոսին վերագրվող երկու ուրիշ հատվածներ՝ «Բառք Գալիանոսի» և Գալիանոսի «Վասն նշանաց ցաւոց»։

Պահպանվել են նաև մի քանի պատառիկներ մինչգալիանոսյան շրջանի բժիշկների երկերից։ Մաշտոցի անվան մատենադարանի № 6869 գրչագրի ժողովածուի մեջ, որ ընդօրինակվել է 1365 թ., հատվածներ կան Ասկղեպիադեսին վերագրվող «Վասն բնութեան մարդոյ», «Վասն չորից բնութեանց մարդոյ եւ տարւոյ, եւ ամսոյ», «Յաղագս բնութեան հոգւոյ» երկերից։ Այս ժողովածուում զետեղված են նաև հատվածներ հին հռոմեացի բժիշկ Դեմոկրիտեսի մի երկից, որի մեջ հեղինակը հարց ու պատասխանի ձևով շոշափում է պտղի զարգացման հարցերը ներարգանդային շրջանում և երեխայի ծնունդից հետո։ Նույն այս ժողովածուում կան ուրիշ հատվածներ ևս՝ «Վասն տղայոց բնութեան», «Վասն երիտասարդաց բնութեան», «Վասն ծերոց բնութեան» երկերից, որոնք վերագրվում են ուշ հելլենիստական շրջանի հռոմեացի ականավոր բժիշկ Օրիբազեսին (IV դար)[68]։

Այս աշխատությունների լեզուն վկայում է, որ նրանք ևս, հավանաբար, թարգմանված են «Տիմէոսի» թարգմանության ժամանակ։

VIII դարի սկզբին հայ ականավոր գիտնական Ստեփաննոս Սյունեցին Դավիթ Հյուպատոսի հետ միասին թարգմանել է IV դարի հույն բնափիլիսոփաներ Նեմեսիոս Եմեսացու «Յաղագս բնութեան մարդոյ» և Գրիգոր Նյուսացու «Տեսութիւն ի մարդոյն կազմութիւն» երկերը[69]։ Այս աշխատությունները, որոնց մեջ Պլատոնի, Արիստոտելի և Գալիանոսի ոգով քննված են մարդակազմության, մարդու կենսաբանության և հոգեբանության հարցերը, լայն ճանաչում էին գտել միջնադարյան հայ բժշկության մեջ։ Այսպիսով, կարելի է ասել, որ երեք դար շարունակ (V—VIII) հայ բժշկության մեջ լարված աշխատանք էր ծավալվել հին աշխարհի գիտական ժառանգությունը ստեղծագործաբար յուրացնելու ուղղությամբ։

Միջնադարյան հայ բժշկապետները, լրջորեն ուսումնասիրելով անտիկ բժշկության դասականների աշխատությունները, նրանց տեսանկյունից վերլուծում և մշակում էին հայ ժողովրդական բժշկության ավանդները։ Սակայն հայոց լեզվով ուրույն բժշկական երկերի ստեղծումը հետաձգվեց արաբական նվաճումների հետևանքով, որոնք հայ մշակույթի ընդհանուր անկման պատճառը հանդիսացան VIII—IX դարերում։ Միայն X դարում սկսեցին հանդես գալ հայ բժիշկների առաջին «Բժշկարանները», որ հիմնականում նվիրված էին հիվանդությունների դեղային բուժման հարցերին և որոնց մեջ հունական ազդեցությունից բացի աստիճանաբար նկատվում էր նաև արաբական մշակույթի ազդեցությունը։ Այդ իսկ պատճառով ավելի վաղ շրջանի՝ V—X դարերի բժշկագիտական հայացքների մասին կարելի է դատել միայն բնագիտական և

---

68 *Г. Арутюнян,* Гинекология и акушерство в Армении в древние и средние века. Ереван, 1974, с. 97—101.

69 «Նեմեսիոսի փիլիսոփայի Եմեսացւոյ Յաղագս բնութեան մարդոյ», Վենետիկ, 1882։

փիլիսոփայական աշխատությունների և առաջին հերթին Եզնիկ Կողբացու (V դար) «Եղծ աղանդոց» երկի և «Յաճախապատումի» հիման վրա։

Միջնադարյան հայ մատենագրության մեջ չորս տարրերի և նրանց համապատասխանող չորս հիմնական հեղուկների (արյուն, լորձ, դեղին և սև մաղձ) անտիկ տեսությունը առաջին անգամ հանդես է գալիս Եզնիկ Կողբացու երկում[70]։ Հիվանդությունների առաջացումը Եզնիկը կապում է հիմնական հեղուկների հավասարակշռության խախտման հետ։ «Հիվանդություններ կան,—գրում է նա,—որոնք առաջանում են ոչ թե մեղքերի պատճառով, այլ անկշիռ (հյութերի) խառնվածքներից։ Որովհետև մարդու մարմինը հանդիսանում է չորս տարրերի խառնուրդ... Եվ եթե նրանցից որևէ մեկը ավելանա կամ պակասի, ապա կառաջանա հիվանդություն»։ Սակայն հեղուկներից բացի Եզնիկը հաշվի է առնում նաև արտաքին միջավայրի գործոնների ազդեցությունը. «չափից ավելի կամ անխտիր ամեն բան ուտելը, խմելը, խիստ ժուժկալությունը, տոթ կամ ցուրտ եղանակին աշխատելը և այլ վնասակար հանգամանքները»։ Այս վնասակար ազդակներին նա մեծ նշանակություն է տալիս նաև նյարդային և հոգեկան հիվանդությունների առաջացման հարցում։ Հիպոկրատեսի նման, որը մերժում էր ընկնավորության «սրբազան» բնույթը, նա էլ հոգեկան հիվանդությունները համարում է ուղեղի հյուծման հետևանք։ «Ուղեղի հյուծման հետևանքով մարդ կորցնում է գիտակցությունը։ Խոսում է պատերի հետ, կռվում է քամու հետ։ Այդ պատճառով էլ բժիշկները համառորեն պնդում են, որ ոչ մի դև էլ չի մտնում մարդու մարմնի մեջ, որ մարդու այդ բոլոր վիճակները հիվանդություններ են, որ իրենք կարող են բուժել»[71]։ Ծնված լինելով Այրարատում և հրաշալի իմանալով Հայաստանի դեղաբույսերի հատկությունները, շատ լավ հասկանալով զանազան դեղամիջոցների չափերի և սիներգիկ ներգործության հարցերը, նա գրել է. «Մոլախինդն ինքնին հայտնի է որպես մահացու թույն որոշակի պայմաններում, բայց բժիշկներն այն օգտագործում են լեղապարկի հին հիվանդությունները բուժելու ժամանակ։ Կաղնչանի մի տեսակը առանձին վերցրած թունավոր է, իսկ մյուս դեղամիջոցների հետ միասին բուժում է լեղապարկի հիվանդությունները և հիվանդին փրկում մահից»[72]։

Միջնադարյան Հայաստանի ականավոր փիլիսոփա Դավիթ Անհաղթը (V դարի վերջ—VI դարի սկիզբ) հրաշալի ծանոթ էր հիպոկրատյան բժշկության սկզբունքներին[73]։ Նրա «Սահմանք իմաստասիրութեան», «Վերլուծութիւն «Ներածութեան» Պորփիւրի», «Մեկնութիւն ի վերլուծականն Արիստոտելի» երկերում շոշափված են մարդակազմության, կենսաբանության, դեղագիտության, հիգիենայի և բժշկական բարոյագիտության հարցերը։ Հատկապես պետք է նշել, որ «Վերլուծութիւն «Ներածութեան» Պորփիւրի» աշխատության էջերում հանդիպում է հայ մատենագրության ամենավաղ վկայությունն այն մասին, որ Հայաստանում կատարվել է դիահերձում։ «Վերլուծության գործն է,—գրում է նա,— գոյի բաժանումը այն մասերի, որոնցից նա կազմված է, ինչպես օրինակ, երբ մեկը վերցնում է մարդուն և անդամահատում, հերձում նրա

---

70. Եզնկայ Կողբացւոյ *Եղծ աղանդոց*, Վենետիկ, 1826, էջ 80։

71 Նույն տեղում, էջ 130։

72 Նույն տեղում, էջ 67։

73 *Давид Анахт,* Сочинення, пер. с древнеармянского, вступительная статья и примечания С. С. Аревшатяна, М., 1957, с. 110.

ոտքերը, ձեռքերը, գլուխը և այնուհետև մարմինը բաժանում ոսկրերի, ջլերի, անոթների և նյարդերի»[74]։ Դիահերձումները և կենդանահատությունը, որ ժամանակին կիրառվել են անտիկ Ալեքսանդրիայի բժշկական դպրոցում, հետագայում շարունակվել են նաև միջնադարյան հայ բժիշկների կողմից, որոնք սերտորեն կապված են եղել ալեքսանդրյան դպրոցի ավանդույթների հետ[75]։

Բժշկության նկատմամբ մեծ հետաքրքրություն է ունեցել հայականավոր աստղագետ և փիլիսոփա Անանիա Շիրակացին։ Նա 667 թ. կազմած իր «Քննիկոնում» աստղաբաշխությանը, համարողական արվեստին (մաթեմատիկա), տոմարագիտությանը և փիլիսոփայությանը վերաբերող աշխատությունների կողքին տեղ է տվել նաև բժշկագիտական երկերին[76]։ Դժբախտաբար «Քննիկոնի» մեծ մասը, այդ թվում և բժշկական ու բնագիտական երկերն այժմ կորած են։ Այն մասին, որ Անանիա Շիրակացին զբաղվել է նաև բուսաբուժության հարցերով, հիշատակված է Մաշտոցի անվան մատենադարանի № 549 գրչագրում, որտեղ նկարագրված են համասփյուռ կոչվող բույսի (Lychnis) բուժիչ հատկությունները, որի պաշտամունքը եղել է Հայաստանի մի շարք շրջաններում։

Նույն տեղում ասված է, որ Շիրակացին այդ խիստ հազվագյուտ բույսը հայտնաբերել է Այրարատյան նահանգի Զողակերտ վայրում և օգտագործել է բուժիչ նպատակով։

---

74 *С. А. Варданян*, медико-исторические воззрения Давида Анахта, Ереван, 1980, с. 4.

75 Լ. Ս. Խաչիկյան, *Դիահերձումը հին Հայաստանում, «Լրաբեր հաս. գիտ.», Երևան, 1947, № 4, էջ 83—90։*

76 *А. Матевосян*, «Канон» *(Քննիկոն)* Анании Ширакаци, «Вестник общественных наук», Ереван, 1977, № 7, с. 66.

ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

## 1. ՀԱՅԿԱԿԱՆ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ IV—V ԴԱՐԵՐՈՒՄ

*Վաղ միջնադարում հայ ինքնուրույն գրականության, զարգացման նշանակալից բարձրության վրա գտնվող գիտության ու պատմագրության հետ ներդաշնակ, բուռն վերելք է ապրում ճարտարապետական-կառուցողական արվեստը։ Կազմավորվում է իր յուրահատուկ դեմքն ունեցող հայ ազգային ճարտարապետությունը, որը հասնում է դասական արվեստի աստիճանի։*

*Շինարարական աշխատանքները կատարվում են մասամբ արդեն իսկ գոյություն ունեցող քաղաքներում, ամրոցներում և այլ բնակավայրերում, միաժամանակ երկրի տարբեր վայրերում ստեղծվում են ճարտարապետական-կառուցողական արվեստի զարգացման նոր օջախներ։*

*Կառուցողական ընդարձակ գործունեություն է ծավալվում հատկապես Դվին և Արշակավան քաղաքներում։ Եթե IV դարի կեսերին Արշակ Բ-ի կողմից Կոգովիտ գավառում հիմնադրված Արշակավան քաղաքը դեռևս լիովին չավարտված կործանվեց, ապա Դվինը դարձավ ոչ միայն երկրի մշակութային-տնտեսական կյանքի, այլև ճարտարապետական մտքի զարգացման ամենախոշոր կենտրոնը[1]։*

*Դվինը հիմնադրվել է IV դարի երեսնական թվականներին։*

*Արտաշատի մոտ առաջացած ճահիճները հակաառողջապահական էին դարձրել քաղաքի կլիման։ Նկատի ունենալով այդ, Խոսրով III թագավորը Արտաշատից մոտ 12—15 կիլոմետր դեպի հյուսիս՝ Դվին կոչվող բլրի վրա, որտեղ դեռևս I դարում կառուցվել էր Դվին-Ասսակ ապարանքը[2], կառուցեց իր նոր ապարանքների խումբը, որը հետագայում հանդիսացավ բլրի շուրջը ստեղծված քաղաքի միջնաբերդը։*

*Աստիճանաբար Դվին տեղափոխվեց Արտաշատի ազգաբնակչության զգալի մասը. կարճ ժամանակամիջոցում նորաստեղծ քաղաքը հասնելով լայն ճանաչում նվաճած քաղաքների մակարդակին, V դարի վերջին քառորդում դարձավ երկրի հոգևոր ու վարչաքաղաքական կյանքի գլխավոր կենտրոնը։*

---

1 Դվին քաղաքի և նրա պեղումների վերաբերյալ նյութերը վերցված են պրոֆ. Կ. Ղաֆադարյանի «Դվին քաղաքը և նրա պեղումները» աշխատությունից (Երևան, 1952)։ Դվինի ավերակների հետազոտության առաջին փորձը կատարել է Ն. Մառը (1899). որոշ ժամանակ անց (1907—1908) Խ. Դադյանի մասնակի պեղումների շնորհիվ Դվինում բացվեցին մոնումենտալ մի քանի շենքերի մնացորդներ։ Սակայն Դվինի սիստեմատիկ պեղումներն սկսվեցին 1937-ից. սկզբում պեղումները գլխավորում էր Ս. Տեր-Ավետիսյանը (1937—1939), իսկ 1946-ից մինչև 1976 թ. Կ. Ղաֆադարյանը։

2 Տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հ. I, էջ 761։

V—VI դդ. Դվինը Հայաստանի արհեստագործական արտադրության հիմնական կենտրոնն էր, միջազգային ապրանքափոխանակության կարևոր հանգույցակետերից մեկը, ուր խաչաձևվում էին Արևելքը Արևմուտքի հետ կապող առևտրական գլխավոր ճանապարհները։

V դարի վերջին—VI դարի սկզբներին Դվինն արդեն ժամանակի համեմատությամբ մի բազմամարդ քաղաք էր։ Տնտեսական աճին զուգակցվում է շինարարական աշխատանքների ծավալումը։ Ընդարձակվում է քաղաքը, ստեղծվում՝ պաշտպանական, հասարակական, բնակելի, արտադրական, տնտեսական, պաշտամունքային և տարբեր նշանակության բազմաթիվ կառույցներ, որոնք մեծապես նպաստում են ամբողջ երկրի ճարտարապետական-կառուցողական գործի վերընթացին։

Հայաստանի հնագույն քաղաքների նման, Դվինում նույնպես, բնակավայրի քաղաքաշինական-կոմպոզիցիոն գլխավոր կենտրոնը հանդիսացել է քաղաքի միջնաբերդը։ Գտնվելով տեղանքի ամենաբարձր մասում, այն գերիշխող դիրք ուներ ոչ միայն քաղաքային ամբողջ տարածքի, այլև Արարատյան հարթավայրի մի լայնատարած հատվածի նկատմամբ, որն օղակում էր քաղաքը։

Միջնաբերդի արևելյան լանջերին պահպանվել են քարի խոշոր զանգվածներով շարված պարսպապատի մնացորդներ։ Իրավամբ ենթադրվում է, որ այս բարձրադիր վայրը եղել է առավել հնագույն շրջանի բնակատեղի, ուր հայ Արշակունիներն իրենց կառույցներն ստեղծելուց հետո շրջափակեցին նոր պարիսպներով։

Արշակունիների թագավորության անկումից հետո (428) այստեղ են գտնըվել Հայաստանի հաջորդ ժամանակաշրջանների կառավարիչների՝ մարզպանների, ոստիկանների, կաթողիկոսների ու այլ իշխանավորների ապարանքները։

Բնական է, պատերազմներով ու ավերածություններով ուղեկցվող ավելի քան կես հազարամյակ ընդգրկող այդ ժամանակաշրջանում միջնաբերդի պալատական սկզբնական կառուցվածքները պետք է մի քանի անգամ վերակառուցվեին, կամ, որ ավելի հավանական է, դրանց շրջակայքում, թերևս և դրանց ավերակների վրա ստեղծվեին նոր տերերի պահանջներին ու ճաշակին համապատասխան նոր շենքեր։

Հետևապես, միջնաբերդի կառույցները, լինելով ստեղծագործական տարբեր ըմբռնումների և տարբեր ժամանակաշրջանների արգասիք, կարող էին որոշակի լույս սփռել հայ դասական ճարտարապետության կազմավորման ու հետագա զարգացման հանգուցային շատ հարցերի վրա։

Միջնաբերդից ցած՝ տարբեր բարձրությունների վրա գտնվել է «ստորին բերդը»։ Ենթադրվում է, որ այստեղ են կենտրոնացված եղել քաղաքի իշխանավորների բնակելի շենքերը, զինվորական պահակախմբին անհրաժեշտ կառույցները։ Բերդն արտաքինից ունեցել է միմյանցից ոչ մեծ հեռավորության վրա գտնվող հուժկու աշտարակների ու բուրգերի ռիթմիկ հաջորդականությամբ ստեղծված պաշտպանական մի հզոր համակարգ։ Միջնադարյան շերտում բուրգերն ունեն կիսակլոր, աշտարակները՝ կոր ձև, իսկ ամբողջ պարիսպը քարե հիմքերի վրա հում աղյուսով շարված կառուցվածք է։

Միջնաբերդի պաշտպանունակությունն ավելի ուժեղացնելու նպատակով, պարսպին զուգահեռ ստեղծվել է բերդն օղակող ջրի անանցանելի գոտի։ Միջ-

նաբերդից հարավ-արևմուտք գտնվել է քաղաքի կենտրոնական թաղամասը, որը միջնաբերդի հետ հաղորդակցվել է ջրով լցվող խրամի վրա նետված մեկ կամ երկու թռիչք ունեցող կամուրջների միջոցով։ Կենտրոնական թաղամասը հանդիսացել է երկրի հոգևոր իշխանության գլխավոր կենտրոնը, որի շինություններից պահպանվել են կաթողիկոսական ապարանքների, Մայր տաճարի, վերջինից մի փոքր հեռու պաշտամունքի մի այլ կառուցվածքի, ինչ-որ այլ նշանակության մոնումենտալ քարաշեն շենքի և առանձին կանգնեցված կոթողների մնացորդներ։

Ճարտարապետական այդ ուշագրավ խմբի կոմպոզիցիոն կենտրոնը հանդիսացել է Մայր տաճարի հորինվածքը։ Այն, ինչպես ծավալային մտահղացմամբ, նույնպես և հարթությունների մշակումով ներդաշնակելով շրջապատի մյուս շենքերի և այդ ամենը շրջափակող պարսպապատերի հետ, կազմել է մի շքեղ և արտահայտիչ ճարտարապետական ինքնատիպ համալիր։

Կենտրոնական թաղամասի ու միջնաբերդի շուրջը հետզհետե փռվել է քաղաքային ողջ տարածքը և այդ ամենը շրջապատվել է ընդհանուր պարսպապատերով։ Քաղաքն ունեցել է նաև իր արվարձանները, որոնք գտնվել են նրա հյուսիսային և արևելյան, հարավային և արևմտյան ծայրամասերում։

Չնայած քաղաքի ընդարձակ տարածության տարբեր մասերում բացահայտված տարբեր նշանակության կառույցների մնացորդների և քաղաքի ներքին կյանքին վերաբերող չափազանց հարուստ նյութերի առկայության, դժվար է առայժմ ստույգ խոսել քաղաքի հատակագծային հորինվածքի քաղաքաշինական հիմնական սկզբունքների մասին։ Մի բան ակնհայտ է, որ նույն ժամանակաշրջանի միջնադարյան մյուս քաղաքների նման, Դվին քաղաքի կոմպոզիցիոն գլխավոր կենտրոնը եղել է միջնաբերդը, որի շուրջը և աստիճանաբար հյուսվել է փողոցների և հրապարակների ցանցը և ըստ քաղաքային կյանքի խաղացած դերի՝ տեղադրվել են քաղաքային թաղամասերը։ Անշուշտ կասկածից վեր է, որ Դվինում քաղաքաշինական սկզբունքների կիրառման գործում կարևոր դեր կարող էին խաղացած լինել քաղաքաշինական այն հարուստ ավանդությունները, որոնք ունեին Դվինի կառուցման ժամանակ նրանից ոչ հեռու գտնվող հնագույն քաղաքները[3]։

Նշանավոր կենտրոն էր և Կարին քաղաքը՝ Արևելյան Հռոմեական կայսրության և Պարսկաստանի միջև՝ Հայաստանի 387 թ. բաժանումից հետո, Արևմտյան Հայաստանում Կարին բերդաքաղաքը (ավելի ստույգ՝ «Կարնոյ քաղաքը»), որը վերակառուցվում է և Բյուզանդիայի Թեոդոս Բ կայսեր (408—450) անունով կոչվում Թեոդոսուպոլիս։ Այն դառնում է Արևմտյան Հայաստանի կենտրոնը և համապատասխանաբար բյուզանդական կառավարիչ կոմեսի նստավայրը։ Սկզբնական շրջանում Թեոդոսուպոլիսն ունեցել է պաշտպանական թույլ համակարգ, որն ամրացվում է նախ Անաստաս կայսեր (491—518), ապա Հուստինիանոս Ա-ի (527—565) օրոք։

Քաղաքը ստեղծված լինելով ջրառատ «մի գեղեցկադիր լեռան ստորոտում»[4], V—VI դարերում շրջապատված է եղել ամրակուռ (բազմաստիճան) հիմքեր ունեցող պարիսպներով և ատամնավոր վերջավորությամբ բարձր աշ-

---

[3] Տե՛ս նաև՝ *С. Х. Мнацаканян, К. Л. Оганесян, А. А. Саинян*, Очерки по истории архитектуры древней и средневековой Армении, Ереван, 1978 (А. А. Саинян. Архитектура IV—конца первой половины VI вв.), стр. 52—58.

[4] Նկատի է առնված Կարինից հարավ բարձրացող Այծպտկունք լեռնագագաթը։

տարակներով։ Պաշտպանական այդ ամբողջ համակարգը շրջապատվել է արհեստական շատ խոր փոսերով և այդ ամենը ներառնվել՝ առջևում տեղծված ամրակուռ փոքրիկ ամրոցների օղակի մեջ։

Քաղաքն ունեցել է ջրմուղ, ստորերկրյա գաղտնի ուղիներ՝ պաշարման դեպքում մթերքների, կենդանիների կերի ապահովման, մինչև իսկ հեծելազորի անցման համար։

Ավանդաբար հիշատակվում են Թեոդոսուպոլսում սրբատաշ քարերով կառուցված գեղեցիկ պալատներ, աշտարակներ, մաքուր փողոցներ, հրապարակներ ու շուկաներ, հիացմունք պատճառող տաճարներ և քաղաքային բարձր ու լայն դարպասներ։ Անտարակույս քաղաքն ունեցել է ճարտարապետական բարձրարվեստ բազում կառույցներ։ Եվ այդ հասկանալի է, չէ որ դեռևս Թեոդոսուպոլսի կառուցումից շատ դարեր առաջ «Կարնոյ քաղաքի» շրջապատի գավառները հայտնի էին ժամանակին լայնորեն հռչակված ճարտարապետական կառուցվածքներով (Անահիտի պաշտամունքի տաճարը Եկեղյաց գավառում, Միհրի պաշտամունքի տաճարը Դերջան գավառում և այլն)։

Դվինի նման Կարինում ևս դժվար է ստույգ խոսել քաղաքի հատակագծային ընդհանուր հորինվածքում կիրառված քաղաքաշինական սկզբունքների մասին։

Վաղ միջնադարում շարունակվում ու զարգացման նոր աստիճանի է հասնում նախաքրիստոնեական շրջանից եկող կառուցողական արվեստը։ Հիմնական շինանյութը՝ երկրի ընդերքում անսպառ քանակությամբ գտնվող դյուրամշակ, դիմացկուն ու գեղարվեստական արտահայտչականության լայն հնարավորություններ ընձեռող բազմերանգ տուֆաքարն է։

Մոնումենտալ շենքերի պատերը շարվում են սրբատաշ, մեծ չափերի ուղղանկյուն քարերով։ Կոնստրուկտիվ ավելի պատասխանատու մասերում (դռների ճակատաքարեր, մույթերի շարվածքներ և այլն) քարերն ունեն անհամեմատ մեծ չափեր։ Մասսայական շինարարության մեջ հիմնական շինանյութը ճեղքված քարն է ու գետաքարը. հանդիպում է նաև հում աղյուս։

Հելլենիստական շրջանի մոնումենտալ կառուցվածքների պատերի չոր, անշաղախ շարվածքի փոխարեն III դարի վերջերից, IV դարի սկզբներից պատի կառուցվածքում, իբրև որմնաքարերն իրար կապակցող նյութ, օգտագործվել է կրաբետոնը՝ կազմված կրից, ավազից և տվյալ շենքի շինաքարի բեկորներից։ Սկզբնական շրջանում կրաշաղախ միջուկը պատի հաստության նկատմամբ կազմում է փոքր հատված, որի հետևանքով, պատի հիմնական կրող մասը նախորդ ժամանակաշրջանի նման դարձյալ քարն էր։ Հետագայում աստիճանաբար նվազում է պատի երկու կողմի որմնաքարերի խորությունը, մեծանում է նրանց միջև լցվող միջուկի ծավալը և, համապատասխանաբար, մեծանում վերջինիս մասնակցությունը պատի կրողունակության աշխատանքին։

Շինարարական այդ սկզբունքը ոչ միայն հնարավորություն է տալիս ազատվելու դժվար հայթայթելի մետաղական կապերի օգտագործումից, այլև պատի կառուցվածքը դարձնում է ավելի միաձույլ, կրողունակ և հնարավորություն ընձեռում կոնստրուկտիվ ավելի առաջավոր մտահղացումների (կամար, թաղ, գմբեթ) լայն կիրառման համար[5]։

5 Սակայն, թեկուզ խիստ հազվադեպ, այնուհանդերձ բոլոր շենքերի պատասխանատու մասերում (Զվարթնոցի տաճարի սյուների կառուցվածքներում և այլն) օգտագործվում են նաև մետաղական կապեր։

*Եթե հելլենիստական շրջանի խոշոր բլոկներով կառուցված պատում հակասեյսմիկ որոշակի ֆունկցիա ունեին մետաղական կապերը, ապա միջնադարի միաձույլ կոնստրուկցիա ունեցող պատի կառուցվածքում այդ դերը կատարում էր պատի կրաշաղախ միջուկը։ Նույն բանին են նպաստում թաղակիր կամարները և որմնաշարքերի վրա հանդիպող փայտյա հորիզոնական գոտիները։*

*Պաշտամունքի շենքերում գմբեթի հանդես գալն առաջացնում է կառուցվածքի տարածական-ծավալային մի նոր սիստեմ։ Այդ սիստեմի կոմպոզիցիոն կենտրոնն ընդունելով գմբեթը, ստեղծվում են կենտրոնագմբեթ շենքերի սեյսմակայուն բազմապիսի կոմպակտ հորինվածքներ (տարբեր տիպի խաչաձև ու բազմաբսիդ տաճարներ և այլն)։ Հենարանից-հենարան թռիչքներով նետվում են սեպաձև կառուցվածք ունեցող կրող, բեռնաթափող կամ թաղակիր կամարներ, որոնք IV—V դարերի հուշարձաններում ունեն խիստ շեշտված պայտաձև աղեղներ, իսկ VI—VII դարերում լինում են գերազանցապես՝ կիսաշրջանաձև։ VI—VII դարերում երևան են գալիս կրկնակի կամարներ, որոնք տնտեսական լինելուց բացի, գեղարվեստական տեսակետից ավելի արտահայտիչ են։ Լուսամուտների ծածկը կամարաձև է, դռների բարավորը՝ մեկ ամբողջական քարից՝ արխիտրավից։*

*V—VII դարերում արխիտրավի վերևում ստեղծվում է բեռնաթափվող կամար, որն իր վրա առնելով պատից եկող բեռը, արխիտրավի վրա թողնում է միայն կամարի և արխիտրավի միջև ընկած պատի ծանրությունը։ Երբեմն բոլորովին հանվում է նաև այդ մասը և արխիտրավը լիովին բեռնաթափվում է։*

*V—VI դարերի երկայնական տիպի մոնումենտալ կառուցվածքներում գոյություն են ունեցել հիմնականում երկու տիպի ծածկեր՝ փայտաշեն-հարթ, կամ քարաշեն-թաղակապ։ Մեծ թռիչքներ ծածկելու դեպքում, շենքի երկայնական պատերին զուգահեռ կառուցվել են երկու շարք մույթեր (կամ սյուներ), որպեսզի պատերի միջև ստեղծվող լրացուցիչ հենարանների միջոցով դյուրացվի վերը հիշված ծածկերից որևէ մեկ ձևի իրականացումը։*

*Թաղակապ խոշոր ծածկերը թաղակիր կամարների միջոցով բաժանվում են կարճ հատվածների և ստեղծվում է կոնստրուկտիվ ավելի կայուն սիստեմ։ Յուրաքանչյուր հատվածի թաղի երկարությունը եթե հնագույն հուշարձաններում հավասար է թաղի թռիչքի չափին, ապա հետագայում, շենքի կայունությունն ավելի ապահովելու նպատակով, այն հավասարեցվում է թաղի թռիչքի կեսին։*

*Ժողովրդական տներում փայտաշեն հարթ ծածկերի հետ մեկտեղ լայնորեն կիրառվել է, այսպես կոչված, «հազարաշեն» (կամ սողոմաքաշ) ծածկերի ձևը։ Դրանք փայտի առանձին հեծաններից կազմված ուղղանկյուն կամ ութանկյուն շրջանակների հաջորդականությամբ դեպի վեր աստիճանաբար նեղացող՝ գմբեթաձև ծածկեր են, որոնք վերնամասում ունեն ոչ մեծ բացվածք՝ երդիկ։*

*Հազարաշեն ծածկի սիստեմը, հնարավորություն ընձեռելով փոքր չափի հեծաններով ծածկելու մեծ տարածություն, միաժամանակ սենյակի ներքին տարածությանը հաղորդում է որոշակի արտահայտչականություն*[6]*։*

---

6 Ծածկի այդ ձևը տարածված է նաև Անդրկովկասի մյուս ժողովուրդների մոտ։ Վրաստանում այն հայտնի է «դարբազի», Ադրբեջանում՝ «ղարադամ» անուններով։

*Ծածկի այս ուշագրավ հորինվածքը տեղ էր գտել նաև V դարի աշխարհիկ և պաշտամունքային մոնումենտալ կառուցվածքներում։ Առաջին դեպքում այն ունի ճիշտ նույն ձևն ու շինանյութը, երկրորդ դեպքում նախօրինակ է դառնում արդեն քարաշեն գմբեթների համար։*

*Քարաշեն այդ գմբեթը բարձրանում է չորս մույթերի վրա խարսխված գըմբեթակիր քառակուսու վրայից և «հազարաշեն» ծածկի կառուցման սկզբունքով աստիճանաբար դեպի վեր նեղանալով թե՛ դրսից, թե՛ ներսից, ստանում է կոնաձև վերջավորություն։ Այստեղ թմբուկի պատվանդանը շատ բարձր է, ինքը՝ թմբուկը, անհամեմատ ծանր։ Գմբեթաշինության հետագա զարգացման ընթացքում պատվանդանի բարձրությունը հետզհետե նվազում է, թմբուկի բարձրությունը մեծանում, իսկ ներսի կոնաձև կորությունն ընդունում է կիսագնդի տեսք։*

*Ըստ երևույթին պալատական այդպիսի մի շենք՝ երկշար սյուներ ունեցող կենտրոնական դահլիճով և երկու կողմերում տեղադրված սենյակներով, բացվում է Դվինի կենտրոնական թաղամասում, որը, հավանաբար, VII դ. շինություն է։*

*Հետագա պեղումների ժամանակ 1970-ական թ. վերջերին բացվեց նաև մի այլ պալատական շենք, երեք զույգ սյուներով բաժանված երեք նավի, որը նույնպես կողքերին կից սենյակներ ուներ։ Այս շենքը հրկիզվել էր 572 թ. ապստամբության ժամանակ և նրա փլատակների վրա լցված էր VII դարի պալատական շենքի շինարարական խիճը։ Պետք է ենթադրել, որ դա եղել է կաթողիկոսական առաջին պալատը՝ կառուցված V դարում։*

*Հետաքրքրական է նաև 1962-ին Դվինի միջնաբերդի արևելյան մասում բացահայտված դահլիճը, որն, ըստ Կ. Ղաֆադարյանի, կառուցվել է IV դարի երեսնական թվականներին և հանդիսացել հայ թագավորների «գահասրահը»։ Այն 12. 5 28. 25 մ չափի ուղղանկյունի է, որը երկու զույգ հենարանների միջոցով բաժանված է եղել մեկ լայն և երկու նեղ նավերի։ Ենթադրվում է, որ գլխավոր նավի կենտրոնում պահպանված կառույցի մնացորդը պատկանում է արքայական գահի պատվանդանին։ Հուշարձանն ունի արևելք-արևմուտք կողմնորոշում. ցավոք այդ ուշագրավ կառուցվածքից պահպանվել են միայն հատակի և հիմքերի առանձին մնացորդներ։*

*V—VI դարերի աշխարհիկ ճարտարապետության հազվադեպ մի նմուշ է պատմական Շիրակի Սրբրույք ավանում մի քանի հեկտար տարածության վրա ստեղծված արհեստական լճի տուֆակերտ պատնեշի հիդրոտեխնիկական խոշոր կառուցվածքը։*

*Պահպանվել են մեծ քանակությամբ պաշտամունքի կառուցվածքներ։ Քրիստոնեությունն ընդունելուց հետո հեթանոսական պաշտամունքի օջախներում ստեղծվում էին նոր կրոնի անդրանիկ կառուցվածքներ, այդուհանդերձ բոլոր մեհյանները չէ, որ հիմնովին ավերվում են։ Առանձին դեպքերում ոչ միայն եկեղեցին կառուցվում է ճիշտ և ճիշտ մեհյանի հատակագծային հորինվածքի հիմքի վրա[7], այլև որոշ մեհյաններ «սրբագործվելով», ուղղակի փոխակերպվում են եկեղեցիների[8]։*

---

7 «Ագաթանգեղայ պատմութիւն Հայոց», էջ 398—399, 425 և այլն։ Զենոբ Գլակ. Պատմութիւն Տարօնոյ, Վենետիկ, 1889, էջ 33—35։

8 Փավստոս, Լ, 7։

Ինքնին հասկանալի է, որ նոր կրոնի արագ արմատավորման նպատակով երկրի բազմաթիվ վայրերում ստեղծվող նորակառույցները նույնպես հիմնականում պետք է ունենային այն նույն կերպարը, որպիսին ստացել էին հեթանոսական տաճարների հիմքերի վրա բարձրացված եկեղեցիները, կամ որպիսին արդեն ունեին եկեղեցու փոխակերպված մեհյանները։

Քրիստոնեական պաշտամունքի այդ անդրանիկ կառուցվածքներն սկզբում բաղկացած լինելով մեկական ուղղանկյուն-երկայնական սրահներից, աստիճանաբար ստացել են զանազան հավելումներ, մանրամասներ, հարդարանքներ ու ճարտարապետական այլ ձևեր, հիմք դարձել կամ նպաստել նոր տիպերի՝ բազիլիկ տաճարների առաջացման համար։

IV—V դարերում որոշ հուշարձանների արևելյան աբսիդներին կից ավելացվել են մեկ կամ երկու օժանդակ սենյակներ. առանձին դեպքերում երկու սենյակ էլ ստեղծվում է աղոթասրահի արևմտյան կողմում։ Սկզբնական շրջանում (IV—V դդ.) արևելյան կողմի սենյակները հանդիսացել են եկեղեցու սպասավորների ամառային բնակարաններ, հետագայում (VI—VII դդ.) միաժամանակ օգտագործվել տաճարի սպասքների պահպանման և զանազան ծիսակատարությունների համար։

Արևմտյան կողմի սենյակները, ինչպես և արտաքին սրահները ստեղծվելով համեմատաբար ավելի ուշ, դիտվում են իբրև ապաշխարության տեղեր։ Արտաքին սրահների հանդես գալու ամենաուշ սահմանը 480-ական թվականներն էին։ Դրանց կառուցման անհրաժեշտությունը վերացել է, ըստ երևույթին, VI դարի վերջին քառորդում։ V դարում երկրում քաղաքական-տնտեսական և մշակութային կյանքում ստեղծված նոր պայմանները թելադրում են ճարտարապետական նոր մտահղացումներ։ Ճարտարապետական միտքն սկսում է որոնել նոր գաղափարներ ու ձևեր։ Երկայնավուն կառուցվածքի նեղ և ձգված, հաճախ առանձին նավերով մասնատված աղոթասրահի փոխարեն առաջանում է լայն ու հավաք, ավելի ամբողջական հորինվածք ունեցող պաշտամունքային կառուցվածքի պահանջ։ Քրիստոնեական տաճարաշինության մեջ հանդես է գալիս Հայաստանում մինչ այդ ոչ անհայտ գմբեթը, սկսում է կենտրոնագմբեթ կառուցվածքի թեմայի բազմակողմանի մշակումը։ Ստեղծվում է պաշտամունքի կառուցվածքի տարածական գծի ծավալային մի նոր սիստեմ, որի հորինվածքի գլխավոր կենտրոնը լինելով գմբեթը, հիմք է դառնում գմբեթավոր տաճարների բազմապիսի տիպերի կերտման համար։ Ինչպես երկայնական տիպի, նույնպես և կենտրոնագմբեթ տաճարների ներքին տարածական կառուցվածքն արտաքին ծավալների հետ կազմել է մի օրգանական միասնություն։

Ճարտարապետը ձգտում է գեղարվեստական բարձր արտահայտչականության հասնել, ծավալային տրամաբանական ու հստակ լուծումների հետ մեկտեղ այդ ծավալների հարթություններին տալով, ինչպես միմյանց, այնպես էլ շենքի ընդհանուր հորինվածքի միջև ստեղծված համաչափություններ և փոխադարձ կապերի ներդաշնակություն։

Այսպիսով, վաղ միջնադարի պաշտամունքի երկայնական բազիլիկ կառուցվածքները սկզբնական շրջանում ունենալով բոլորովին պարզ տեսք, անցնում են կազմավորման բարդ ու արգասավոր ուղի։ Այդ շրջանից կանգուն և կիսավեր վիճակում պահպանվել են մեծ թվով հուշարձաններ, որոնցից ուշագրավ են Շիրվանջուղի, Թանահատի, Դիրաքլարի, Ջառջառիսի, Օհանավանքի, Եղվարդի, Գառնիի, Գյուլագարակի, Մազարջուղի, Օձունի, Ջովունիի, Դվինի

միանավ կառուցվածքները, Քասաղի, Տեկորի, Դվինի, Երերույքի, Էջմիածնի, Եղվարդի, Ծիծեռնավանքի, Աշտարակի, Օշականի եռանավ բազիլիկաները։ Ժամանակի ճարտարապետական արվեստի զարգացման մակարդակի ըմբռնման առումով հույժ հետաքրքրական են հատկապես Քասաղի, Երերույքի, Տեկորի տիպի հանգուցային հուշարձանները։

Քասաղի բազիլիկան գտնվում է պատմական Այրարատի Նիգ գավառի Քասաղ (այժմ՝ Ապարան) ավանում, որը, լինելով հայ Արշակունի թագավորների ամառանոցային նստավայրերից մեկը, ունեցել է իր արքունի ապարանքը։ Քասաղի բազիլիկան, ամենայն հավանականությամբ, եղել է ապարանքի ճարտարապետական կառուցվածքների խմբի մեջ և հանդիսացել արքունիքի աղոթատեղին։ Դրա կառուցման ստույգ ժամանակը հայտնի չէ. ճարտարապետական-կառուցողական արվեստի վերլուծությունից պարզվում է, որ այն գոյություն է ունեցել IV դարի առաջին տարիներից[9]։ Բազիլիկան սկզբնական շրջանում բաղկացած է եղել միայն մի ուղղանկյուն սրահից, որը երեք զույգ պայտաձև մույթերի միջոցով բաժանվել է մեկ լայն և երկու նեղ նավերի։ Նավերը ծածկվել էին թաղերով և բոլորն էլ առնվել մեկ ընդհանուր երկթեք կտուրի տակ։

Պաշտամունքի կառուցվածքի այս ձևը գրականության մեջ դիտվում է իբրև «բազիլիկալ կառուցվածքների արևելյան տիպ», կամ պարզապես անվանվում է «սրահաձև եկեղեցի»։ Տաճարը քրիստոնեական կրոնի ընդունման առաջին տարիներին հավանաբար ունեցել է ուղղանկյուն ձևի սեղան (խորան), որը հետագայում փոխարինվել է ներսից պայտաձև, արտաքինից հնգանիստ աբսիդով։ IV—V դարերի հավելումներ են նաև աղոթասրահի հյուսիսային պատի արևելյան մասին կցված շեղանկյունի հատակագծով սենյակը, կամարակապ արտաքին սրահը, արևմտյան և հարավային ճակատների մուտքերը երիզող սյունազարդ կառուցվածքները[10]։ Հուշարձանը ներկայումս կիսավեր վիճակում է. պահպանվել են աղոթասրահի արտաքին պատերը, կենտրոնական նավի հարավային կամարաշարքը, բազմանիստ խորանը, սենյակի պատերի և արտաքին սրահի մույթերի մնացորդները։ Պահպանված մասը հնարավորություն է ընձեռում ճշտորեն վերարտադրելու տաճարի ամբողջական հորինվածքը, որը ժամանակին վեր խոյանալով նշանավոր Քասաղ գետի ակունքի մոտ, պատկերվել է Արագած լեռան գեղատեսիլ ֆոնի վրա և իր ճարտարապետական ղուսպ, նույնիսկ խիստ ձևերով միահյուսվել այդ լեռնային վայրի խստաշունչ բնությանը։ Շենքի գեղարվեստական-զգայական արտահայտչականությանը հասել են պատերի պարզ հարթություններին տրվող ճարտարապետական մի քանի զուսպ շեշտերի (գետնախարիսխներ, քիվ, ճակտոն) և հատկապես համաչափությունների միջոցով։

Ճարտարապետական կառույցի համաչափությունները և դրանց շնորհիվ դրսևորված նրա առանձին ձևերն ու կոնստրուկտիվ մասերի փոխադարձ պայմանավորվածությունը ճարտարապետական ստեղծագործության արտահայտչականության հիմնական միջոցներից են։ Այս տեսակետից գիտական բացառիկ հետաքրքրություն է ներկայացնում Քասաղի բազիլիկայում բացահայտված բոլոր մասերի ու ծավալների համաչափությունների համակարգը, որը ոչ

---

9 Ա. Սահինյան, *Քասաղի բազիլիկայի ճարտարապետությունը*, Երևան, 1955, էջ 232—236։
10 Նույն տեղում, էջ 64—84։

միայն բանալի դարձավ ըմբռնելու համանման հուշարձանների հիմքում ընկած կառուցողական սկզբունքը, այլև աներկբայորեն ցույց տվեց դեռևս վաղ միջնադարում երկրում գոյություն ունեցած ճարտարապետական տեսական մտքի բարձր մակարդակը[11]։ Պարզվում է, որ Քասաղի բազիլիկայի հորինվածքում իբրև կառուցողական ելակետային միավոր, այսպես կոչված «մոդուլ», ընդունված է շենքի հիմնական կոնստրուկտիվ տարր հանդիսացող մույթի չափը։ Հուշարձանում չկա մի մաս, նույնիսկ մանրամասն, որ արտահայտված չլինի մույթի այդ չափի «միավորով» և որոշակի օրինաչափությամբ կապված չլինի մյուս մասերի ու մանրամասերի հետ։ Հետաքրքրական է նաև բազիլիկայի կառուցվածքում ճարտարապետական երկու հիմնական ոճի առկայությունը։ Տաճարի սկզբնական կառուցվածքին IV—V դարերում ավելացված մասերը որոշակի ընդհանրություն ունեն քրիստոնեական վաղ շրջանի արվեստի հետ, իսկ բուն սկզբնական կառուցվածքը ինչպես հատակագծային, նույնպես և տարածական-ծավալային հորինվածքով հեռանալով այդ ժամանակաշրջանից, սերտորեն առնչվում է անտիկ, այսինքն՝ մինչև քրիստոնեական կրոնի մուտքը գոյություն ունեցած ճարտարապետական-կառուցողական արվեստին։

Եթե նկատի ունենանք նաև բազիլիկայի սկզբնական կառուցվածքում պահպանված քրիստոնեական արվեստին ոչ բնորոշ մասերի գոյությունը (աղոթասրահի հատակի արևմտյան մասի բարձր դիրքը, գլխավոր ճակատում ուղղանկյուն հնագույն բացվածքների առկայությունը և այլն)[12], ապա բացառված չէ, որ Քասաղի բազիլիկայի սկզբնական կառուցվածքը հանդիսացել է եկեղեցու փոխարկված հեթանոսական նախկին տաճար։

Երկայնական տիպի տաճարների մի այլ տեսակ է պատմական Շիրակի Երերույք ավանում կառուցված եռանավ բազիլիկան։ Այն իրավամբ դասվում է վաղ միջնադարի ճարտարապետական-կառուցողական ընդհանուր արվեստի խոշոր նվաճումների շարքը[13]։ Ըստ հատակագծի գա եռանավ ուղղանկյուն դահլիճ է, որի անկյունային սենյակների միջև՝ հարավային, հյուսիսային և արևմտյան կողմերից կառուցվել են կամարազարդ ընդարձակ սրահներ։ Ի տարբերություն Քասաղի տիպի տաճարների, այստեղ դահլիճի կենտրոնական մասն ավելի առատ լուսավորելու նպատակով գլխավոր նավի երկայնական պատերի վրա եղել են լուսամուտի բացվածքներ։ Այդպիսով գլխավոր նավը կողքի նավերի համեմատությամբ դարձել է շատ ավելի բարձր և ծածկվել մյուս նավերից անկախ, իսկ շենքի տարածական-ծավալային հորինվածքն ստացել է, այսպես կոչված, «բազիլիկալ կտրվածք»։ Անկյունային սենյակները երկհարկանի են և ունեցել են թաղակապ ծածկեր. նման ձևով են ծածկվել նաև փոքր նավերը։ Սակայն, թե ինչպիսին է եղել կենտրոնական նավի ծածկը, թաղակապ թե փայտաշեն, ստույգ դժվար է ասել։ Շենքն այժմ կիսավեր վիճակում է. պահպանվել են՝ աղոթասրահի պատերը, գլխավոր խորանն իր երկու կողմի ավանդատներով, հյուսիսարևմտյան սենյակի պատերի մի մասը, արտաքին սրահների մնացորդները և տաճարը չորս կողմից երիզող բազմաստիճան գետնախարիսխները։ Բազիլիկայի ընդհանուր հորինվածքը ճարտարապետական իր մտահղացումով թողնում է ավարտուն, միասնական կառուցվածքի տպավորու-

11 Նույն տեղում, էջ 141—188։

12 Նույն տեղում, էջ 233—236։

13 *Н. Я. Марр,* Ереруйская базилика. Армянский храм V—VI вв. в окрестностях Ани. Ереван, 1968.

թյուն, սակայն շինարարական վերլուծությունից հետևում է, որ այն ստեղծվել է ոչ թե միանգամից, այլ տարբեր ժամանակներում՝ աստիճանաբար։ Սկզբնական կառուցվածքին (աղոթասրահ և խորանին կից ավանդատներ) հետագայում աստիճանաբար ավելացել են՝ արևմտյան, հյուսիսային և հարավային ճակատներին կից արտաքին սրահները, բազմաստիճան գետնախարիսխները և, հավանաբար, արևմտյան սենյակները[14]։

Եթե արևելյան սենյակները լինեն հետագա հավելվածքներ, Երերույքի սկզբնական կառուցվածքը կընդունի Քասաղի բազիլիկայի նախնական կառուցվածքի պարզ ձևը, իսկ եթե լինեն աղոթասրահին ժամանակակից, ապա այն կմոտենա Քասաղի բազիլիկայի կազմավորման երկրորդ շրջանին։ Այդ հետագա հավելվածքների առանձին մասերը (խոյակներ, լուսամուտների պարակալներ և այլն) ակնբախ ընդհանրություն ունեն քրիստոնեական վաղ շրջանի սիրիական նույնատիպ կառուցվածքների (Տուրմանին, Կալբ-լուզե) համանման մասերի հետ, որի պատճառով, թյուրիմացաբար ամբողջ շենքը հաճախակի դասվել է սիրիականատիպ կառուցվածքների շարքը։ Հետագա հավելումները կատարվել են մեծ հմտությամբ, չափի զգացումով և գեղարվեստական բարձր ճաշակով։ Մեծապես արտահայտիչ են, մանավանդ, շենքի գլխավոր՝ արևմտյան, ինչպես և հարավային ճակատները։ Արևմտյան ճակատի կամարազարդ սրահը ներդաշնակորեն միահյուսվել է աղոթասրահի եռանավ հորինվածքի սլացիկ կառուցվածքին և ստեղծվել է վայելչագեղ համաչափություններով աստիճանաբար վեր խոյացող ծավալների մի միասնական համակցություն։ Ամբողջ շենքն իր ընդհանուր մտահղացմամբ և հարթությունների մշակումով հեռանալով միջնադարյան խորհրդավոր և հաճախ ճնշող պաշտամունքային կառուցվածքներից, ստացել է առինքնող, հանդիսավոր տեսք և ավելի շատ հիշեցնում է անտիկ շրջանի չորս կողմից սյունազարդ հեթանոսական տաճարները, կամ թերևս թողնում աշխարհիկ նշանակության շենքի տպավորություն։

Անտիկ արվեստի հետ են առնչվում նաև որոշ մանրամասներ։ Արտաքին կամարաշարքի սյուների բները Գառնիի հեթանոսական տաճարի սյուների բների նման դեպի վեր նեղացում ունեն։ Ակնհայտ նմանություն կա նաև Երերույքի և Գառնիի արտաքին սյունասրահների խարիսխների միջև։

Երերույքի ճարտարապետական առանձին ձևեր ու մանրամասներ, իրենց հերթին, սկզբնաղբյուր են հանդիսացել հաջորդ դարերի հուշարձանների համանման ձևերի ու մանրամասների մշակման համար (Պտղնի, Զվարթնոց և այլն)։ Այսպիսով, Երերույքի բազիլիկայի ճարտարապետությունը նկատելիորեն սերել է նախաքրիստոնեական շրջանի արվեստից, որոշակի շփման մեջ գտնվել վաղ միջնադարի հարևան ժողովուրդների՝ մասնավորապես սիրիական ճարտարապետական արվեստի հետ և ինքն էլ իր հերթին առատ նյութ մատակարարել հաջորդ ժամանակաշրջանի ճարտարապետական-կառուցողական արվեստի առանձին ձևերի ու մանրամասների ստեղծմանը։

Հայ դասական ճարտարապետության կոթողների շարքում առանձնահատուկ տեղ է գրավում պատմական Տեկոր բերդից դեպի հյուսիս՝ այժմյան Դիգոր գյուղի մոտերքում կառուցված տաճարը։ Թ. Թորամանյանն այն համարում է հեթանոսական նախկին մեհյան, որը քրիստոնեական կրոնը Հայաստանում

---

14 Ա. Սահինյան, նշվ. աշխ., էջ 89—96։

սնտական հոչակվելուց հետո օգտագործվել է իբրև եկեղեցի[15]։ Պաշտամունքի այս ուշագրավ հուշարձանը Քասաղի և Երերույքի բազիլիկաների նման գտնվելով վաղ միջնադարի երկայնական տիպի կառուցվածքների կազմավորման ընթացքի մեջ, ցայտուն վերարտադրում է Հայաստանի ճարտարապետական-կառուցողական արվեստի զարգացման նաև հաջորդ աստիճանը։ Քրիստոնեական կրոնի ընդունման առաջին տարիներին շենքն ունեցել է պարզ հորինվածք՝ բաղկացած միայն «բազիլիկալ կտրվածք» ունեցող եռանավ աղոթասրահից և խորանի հնագույն (հավանաբար ուղղանկյուն) կառուցվածքից[16]։ IV—V դարերում կրոնական ծիսակատարությունների պահանջների թելադրանքով աստիճանաբար ավելացվել են՝ արտաքին սյունազարդ սրահները, դրսից բազմանիստ, ներսից կորագիծ այժմյան գլխավոր խորանը, դրան կից դեպի հյուսիս և հարավ ձգված ավանդատները, իսկ V դարի վերջերին՝ գմբեթը[17]։

Եթե Տեկորի տաճարի սկզբնական պարզ հորինվածքը հետագա մի քանի հավելված մասերով (արտաքին սրահներ, ավանդատներ և այլն) ընդունում է երկայնական տիպի տաճարների կազմավորման վերջին շրջանի տեսքը (Երերույք), ապա գմբեթի հավելումով այն թևակոխում է պաշտամունքի կառուցվածքների զարգացման նոր, առավել բարձր աստիճանը, ստեղծվում է գմբեթավոր կառուցվածքի անդրանիկ տիպերից մեկի՝ գմբեթակիր բազիլիկայի երկնասլաց կերպարը։

Հուշարձանների գմբեթների կառուցման համար ելակետը հանդիսացել է դարձյալ գմբեթակիր քառակուսին, որից գմբեթի կորաձև հիմքին անցումը, նայած գմբեթակիր քառակուսու մեծության, կատարվել է՝ կամ երկու, կամ երեք շարք տրոմպների միջոցով։ Գմբեթակիր քառակուսին կազմող չորս կամարների հանդիպման անկյուններից սկզբնավորվում են հովհարաձև կառուցվածք ունեցող մեկական տրոմպներ, որոնք իրենց վերնամասում ունենալով մեկ կամ աստիճանաբար առաջ եկող մի քանի կամարներ, գմբեթակիր քառակուսին դարձնում են հավասարակողմ ութանկյունի։ Այդ ութանկյան դրսի կողմից ելնում են թմբուկի պատերի համապատասխան նիստերը և որոշում դրա արտաքին ութանիստ տեսքը, իսկ ներսում, թմբուկի ու գմբեթի հիմքերին անցումը կատարվում է տարբեր եղանակով։ Եթե տրոմպների երկրորդ շարքը կառուցվում է գմբեթի կիսագնդաձև մասի հիմքից անմիջապես ներքև, ապա թմբուկը թե՛ ներսից և թե՛ դրսից ունենում է ութանկյուն հորինվածք։ Իսկ եթե հավասարակողմ ութանկյունի ստեղծող տրոմպների առաջին շարքին անմիջապես հաջորդում է տրոմպների երկրորդ շարքը, ապա թմբուկը դրսից պահպանելով իր ութանիստ տեսքը, ներսից կարող է ստանալ տասնվեց նիստ կամ կլոր ձև։

Թաղը, խորանի թաղակապ ծածկը, գմբեթը ինչպես և առագաստը կառուցվում են եզրերով, իրար հպված՝ ոչ շատ մեծ չափի քարերի հորիզոնական շարքերի հաջորդականությամբ, կառուցված այն սկզբունքով, ինչպիսին ունի կրաբետոնային միջուկով պատի կոնստրուկցիան։ IV—VII դարերի մոնումենտալ բոլոր շենքերի տանիքներն արտաքինից ծածկվել են կղմինդրներով։

---

15 Թ. Թորամանյան. Նյութեր հայկական ճարտարապետության պատմության, Երևան, 1912, հ. Բ, էջ 210—211։

16 Նույն տեղում, էջ 189, 197—198։

17 Նույն տեղում, էջ 189—201։

Կենտրոնագմբեթ շենքի կազմավորման որոշակի շրջան անցած կառուցվածքի յուրահատուկ տիպ է էջմիածնի Մայր տաճարը, որն ունի խաչաձև գմբեթակիր հորինվածք, առաջացած դեռևս V դարի 80-ական թվականներին։ Իրավամբ ենթադրվում է, որ Տեկորի գմբեթի նախօրինակը հանդիսացել է էջմիածնի տաճարի գմբեթի ձևը[18]։ Քանի որ էջմիածնի տաճարի գմբեթի սկզբնական կառուցվածքը չի պահպանվել, հետևապես Տեկորի գմբեթը դառնում է հայ ճարտարապետության առայժմ մեզ հայտնի քարաշեն ամենահնագույն գմբեթը և ստանում գիտական բացառիկ արժեք։

Հայկական ճարտարապետության մեծ կատարելությամբ ստեղծված բազմապիսի գմբեթների համեմատությամբ Տեկորի տաճարի գմբեթն ունի խիստ արխաիկ կառուցվածք։ Բազիլիկայի արդեն իսկ գոյություն ունեցող շենքը գմբեթավորելու նպատակով դրա միջմույթային երկայնական հեռավորության չափերը համապատասխանեցվել են միջմույթային լայնական հեռավորության չափերին և կենտրոնական չորս մույթերից նետվող կամարների միջոցով ստեղծվել է գմբեթի կառուցմանն անհրաժեշտ հիմքը՝ գմբեթակիր քառակուսին։

Այնուհետև գմբեթակիր քառակուսու չորս անկյուններում դրել են մեկական քար և աստիճանաբար դեպի կենտրոն թեքվող պատերի միջոցով ստեղծել ութ հավասար կողմերով բազմանկյունի. ապա վերջինից սկզբնավորվելով նոր նիստեր՝ ստացել են մի բրգաձև հորինվածք։

Գմբեթի այդ ձևը որոշակի ընդհանրություն ունի ժողովրդական տների «հազարաշեն» փայտաշեն ծածկերի, ինչպես և, ըստ էության, նույն սկզբունքով կառուցված մեգալիթյան շրջանի բնակարանների քարաշեն ծածկերի հետ և ակնհայտորեն ցույց է տալիս հայկական մոնումենտալ կառուցվածքների մեծ կատարելության հասած քարաշեն գմբեթների ծագման ու դրանց հետագա կատարելագործման ընթացքը։ Գմբեթի հավելման հետ մեկտեղ կրճատվել է բազիլիկայի սկզբնական կառուցվածքի երկարությունը, որի շնորհիվ շենքը թե՛ իր հատակագծային և թե՛ տարածական-ծավալային հորինվածքով հեռանալով երկայնական տիպի կառուցվածքներից, ստացել է կենտրոնագմբեթ կառուցվածքին բնորոշ խիստ հավաք, ուղղաձիգ տեսք։ Այսպիսով, Տեկորի սկզբնական կառուցվածքը ոչ միայն փոխակերպվում է գմբեթակիր բազիլիկայի, այլև, ստանալով կենտրոնագմբեթ կառուցվածքին բնորոշ հորինվածք, որոշակիորեն նպաստել է նաև այդ տիպի տաճարների կազմավորմանը։

Տեկորում վերակառուցման աշխատանքներ և փոփոխություններ կատարվել են նաև հետագայում։

Բազիլիկալ եռանավ կառուցվածքներում շատ պատասխանատու դեր ունեն մույթերը, որոնք իրենց վրա են կրում կամարների, դրանց վրա բարձրացող պատերի, թաղակիր կամարների ու թաղերի բեռը։

Դարերի ընթացքում աստիճանաբար ճշտվել է մույթերի լայնական կտրվածքի նպատակահարմար չափը և նրա կրելու ունակությամբ պայմանավորվել շենքի մյուս մասերի՝ կամարների, թռիչքների, նավերի, լայնությունների ու բարձրությունների, պատերի հաստությունների և մյուս մասերի ու մանրամասների հիմնական չափերը։

Մույթերի լայնական կտրվածքի այդ չափն արտահայտող միավորը՝ «մոդուլը» ամբողջական թվերով հանդես է գալիս վաղ միջնադարի երկայնական

18 Թ. Թորամանյան, նշվ. աշխ., էջ 206։

տիպի հուշարձանների թե՛ հատակագծային ու տարածական-ծավալային ընդհանուր հորինվածքում և թե՛ առանձին մասերի ու մանրամասների բոլոր չափումներում՝ անխտիր[19], իբրև հաստատուն համակարգ։ Ընդ որում, մույթի այդ չափի և շենքի մնացած մասերի միջև ստեղծվել է այնպիսի կապ, որ շենքի մասերը ինչպես միմյանց, նույնպես և ամբողջ շենքի նկատմամբ փոխադարձ պայմանավորվածության ու ներդաշնակության մեջ են[20]։

Հայաստանի բազիլիկալ եռանավ կառուցվածքներում միասնական մոդուլի վրա խարսխված համաչափությունների այդ ուշագրավ համակարգը, որը գիտական որոշակի հետաքրքրություն է ներկայացնում նաև ճարտարապետական արվեստի ընդհանուր տեսության համար, զարգացման նոր աստիճանի է հասել վաղ միջնադարի կենտրոնագմբեթ կառուցվածքներում։

Այստեղ ելակետը ոչ թե անջատ կանգնած մույթն է, այլ կենտրոնագմբեթ շենքի տարածական-ծավալային հորինվածքի գլխավոր առանցքը կազմող գմբեթը, ավելի ստույգ՝ գմբեթի հիմքի շրջագծի շառավղի չափը։ Այդ երևույթը բացառիկ հստակությամբ դրսևորվում է Էջմիածնի Մայր տաճարի V դարի կառուցվածքում։ Էջմիածնի Մայր տաճարը քրիստոնեական արվեստի հանրահայտ հուշարձաններից է։ Ստեղծված լինելով հեթանոսական (թերևս ուրարտական[21]) ժամանակաշրջանի սրբավայրի տեղում, իր ավելի քան մեկ ու կես հազարամյա գոյության ընթացքում այն բազմիցս ենթարկվել է վերակառուցումների, ստացել ժամանակի ոգուն համապատասխան ճարտարապետական նոր երանգներ, անգամ նոր կերպար։ Շնորհիվ այդ ամենի, դրա կառուցվածքը ցայտուն ձևով վերարտադրում է վաղ միջնադարի հայկական ճարտարապետության զարգացման հանգուցային մի քանի շրջանները։

Տաճարի սկզբնական կառուցվածքն ստեղծվել է քրիստոնեական կրոնը Հայաստանում պետական հռչակելու առաջին տարիներին՝ IV դարի սկզբին[22] և քրիստոնեական պաշտամունքի հնագույն կառուցվածքների՝ Քասաղի, Տեկորի ու հայկական համանման մյուս տաճարների նման ունեցել բազիլիկալ եռանավ հորինվածք։

IV—V դարերում, Հայաստանում Պարսկաստանի կողմից հաճախակի կրկնվող ավերածությունների ժամանակ, տաճարի սկզբնական կառուցվածքը ենթարկվում է լուրջ վնասվածքների, որի պատճառով համեմատաբար կարճ ժամանակամիջոցում, Ներսես I (353—372) և Սահակ I (388—439) կաթողիկոսների օրոք, կատարվում են մի քանի վերանորոգումներ[23]։ Սակայն երկրի տնտեսական ծանր կացության հետևանքով շինարարական այդ աշխատանքներն ըստ երևույթին կրել են խիստ անհրաժեշտ մասնակի վերանորոգումների բնույթ։ Եվ երբ V դարի երկրորդ կեսերին Պարսկաստանի դեմ մղվող հայ ժողովրդի ազատագրական պայքարի շնորհիվ երկրում նպաստավոր պայմաններ

---

19 Ա. Սահինյան. *Քասաղի բազիլիկայի ճարտարապետությունը*, Երևան, 1955, էջ 142—178։

20 *Նույն տեղում*, էջ 175։

21 Ա. Սահինյան. *Էջմիածնի Մայր տաճարի ճարտարապետական կերպարը*, «Էջմիածին», 1961, Ա, էջ 63։

23 Դարերի ընդերքից եկող ավանդության համաձայն Էջմիածնի Մայր տաճարի տեղի ընտրությունն ու կառուցումը կատարվել է երկնքից իջած Միածնի ցուցումով, որից և տաճարի անունը՝ Էջք-Միածնին՝ Էջմիածին։ «Ագաթանգեղայ պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1914, գլ. ԾԲ, էջ 375—384, գլ. ԾԳ, էջ 385—386, գլ. ԾԶ, էջ 391—392, գլ. ԾԴ, էջ 424—425։

23 Հովհ. Շահխաթունյան, *Ստորագրութիւն...*, Էջմիածին, 1842, հ. Ա, էջ 18—20, «Սամուելի Անեցւոյ հաւաքմունք ի գրոց պատմագրաց», Վաղարշապատ, 1893», էջ 267—286։

ստեղծվեցին կառուցողական աշխատանքների համար, վերակառուցվեց նաև Մայր տաճարը։

V դարի պատմիչ Ղազար Փարպեցու վկայությամբ, Մայր տաճարի սկզբնական կառուցվածքը խիստ քայքայվել էր, ուստի 480-ական թվականներին մարզպան Վահան Մամիկոնյանի կարգադրությամբ մինչև հիմքերը քանդել են, նրա տեղը կառուցել նոր շենք[24]։ Մայր տաճարում արվեստի ինստիտուտի վերջին տարիներս ձեռնարկած պեղումները լիովին վավերացրին պատմիչի վկայությունը։ Մայր տաճարի այժմյան կառուցվածքի գմբեթակիր մույթերի խարիսխների տակ բացվեցին հնագույն շենքի իրենց սկզբնական տեղում պահպանված չորս խարիսխները, դրանց կից սալահատակի սալերը, հնագույն խարիսխների հիմքերը. և այժմյան գլխավոր խորանի ներսում՝ հնագույն խորանի մնացորդները։

IV դարի շենքի համեմատությամբ ունենալով տարբեր ձև, հնարավոր չի եղել V դարում ստեղծված նոր շենքի հիմքերը տեղադրել հին շենքի հիմքերի վրա. հետևապես նոր շենքի հատակագծին համապատասխան ստեղծվել են նոր հիմքեր։ Սակայն նոր շենքի շինարարները չէին կարող բոլորովին անտարբեր գտնվել «Լուսավորչի ձեռքով» հիմնադրված տաճարի կառուցվածքի նկատմամբ։ Այդ իսկ պատճառով մի կողմից՝ նոր տաճարի ամենահիմնական մասը հանդիսացող գմբեթը բարձրացվել է հին սրբավայրի խարիսխների վրա, մյուս կողմից՝ IV դարի խորանի մնացորդներն առնվել են V դարում ստեղծված խորանի մեջ։ Պահպանվել է նաև «լուսավորչաշեն» սեղանը և դրա կենտրոնից բարձրացվող՝ քրիստոնեական տաճարների սրբության սրբոց համարվող սեղանի տեղն՝ իր վեմ քարով։

Հետաքրքրական է IV դարի բեմ-խորանի մնացորդների կենտրոնում՝ վեմ քարի պատվանդանի տակ բացված կրակարանի գոյությունը։ Մատենագրական վկայությունների համաձայն նման կրակարաններ հայկական եկեղեցիներում կառուցվեցին 450 թ. Հայաստանում զրադաշտական կրոնի պարտադրման փորձերի ժամանակ, իսկ վեմ քարի կանգնեցումը հենց կրակարանի վրա՝ խորհրդանշում էր հայերի քրիստոնեական դավանանքի հաղթանակը պարսից զրադաշտական դավանանքի նկատմամբ[25]։ Հնագույն շենքի պահպանված մասերը հնարավորություն ընձեռեցին վերարտադրել Մայր տաճարի IV դարի կառուցվածքի ինչպես հատակագծային, նույնպես և տարածական-ծավալային ընդհանուր պատկերը։ IV դարի բազիլիկալ շենքի այդ մնացորդների վրա V դարի 80-ական թվականներին ստեղծվում է Մայր տաճարի խաչաձև գմբեթակիր կառուցվածքը։ Այն ըստ հատակագծի գրեթե քառակուսու մոտեցող մի ուղղանկյունի է, որի պատերից ելնող հնգանիստ խորանները շենքի հատակագծային հորինվածքին թե՛ ներսից և թե՛ դրսից տալիս են հավասարաթև խաչի տեսք։

Խորաններին կից որմնամույթերից դեպի կենտրոնական մույթերը նետված կամարները և վերջիններիս վրա հանգչող թաղերը խաչաձև տեսք հաղորդելով շենքի նաև ծավալային կառուցվածքին, համախմբում են խաչ թևերի ու

24 «Ղազարայ Փարպեցւոյ պատմութիւն Հայոց...», Թիֆլիս, 1907, Գ, էջ 345—346։

25 IV դարի աբսիդի մնացորդները, դրանց կենտրոնում բացված կրակարանը և V դարի ճարտարապետական մի շարք ուշագրավ այլ մասեր ու մանրամասներ մշտապես դիտելու նպատակով այժմյան արևելյան աբսիդի հատակի տակ ստեղծվել է հատուկ կառուցվածք։

դրանց միացման հանգույցների ծավալները տաճարի կենտրոնից վեր ելնող գմբեթի ուղղաձիգ ծավալի ներքո և դրանով իսկ ամբողջացնում խաչաձև կենտրոնագմբեթ կառուցվածքի ճարտարապետական ընդհանուր կերպարը։ Շինարարական-գեղարվեստական վերլուծությունն աներկբայորեն ցույց է տալիս, որ Մայր տաճարի V դարի կառուցվածքը, չնայած հետագա դարերում ունեցած բազմապիսի վերանորոգումներին՝ բացառությամբ գմբեթի, պահպանվել է մինչև մեր օրերը[26]։ Այժմյան գմբեթը հետագա (հավանաբար XVII դար) վերակառուցման արգասիք է։ Սեբեոսի և Դրասխանակերտցու վկայությամբ Մայր տաճարը VI դարում ունեցել է փայտաշեն գմբեթ, որը Կոմիտաս կաթողիկոսը (615—628) փոխարինել է քարով[27]։ Սակայն դժվար է որոշակի ասել՝ այդ փայտաշեն գմբեթն ստեղծված է եղել V դարում, թե V դարի շենքը սկզբում ունեցել է քարաշեն գմբեթ, իսկ հետագայում որոշ ավերումից հետո ժամանակավոր կառուցվել է փայտից։ Առավել հավանականն իհարկե այն է, որ V դարի գմբեթը եղել է քարաշեն, որովհետև ո՛չ միայն քարաշեն են տաճարի բոլոր մասերը, այլև այժմյան գմբեթակիր մույթերի մեջ պահպանված V դարի գմբեթակիր մույթերը և դրանցից սկզբնավորվող կամարները ստեղծված են եղել հատկապես քարաշեն գմբեթ կրելու համար։ Նշանակում է չորս անջատ կանգնած հենարանների վրա գմբեթ ունեցող հավասարաթև խաչաձև կենտրոնագմբեթ կառուցվածքի ճարտարապետական ավարտուն կերպարը Հայաստանում գոյություն է ունեցել առնվազն V դարի 80-ական թվականներից։

Քրիստոնեական վաղ շրջանում ստեղծվում է «գմբեթավոր սրահի» կերպը, որի հնագույն օրինակը Զովունիի (պատմական Ծառայիշեն) Պողոս-Պետրոս կոչվող եկեղեցին է։

Հատակագիծը 9. 06×14.83 մ չափի ուղղանկյուն դահլիճ է, որի հյուսիսային ու հարավային պատերից ելնող զույգ որմնամույթերի վրա խարսխված է եղել երբեմնի գմբեթը։

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ Զովունիի Պողոս-Պետրոս տաճարի սկզբնական կառուցվածքը եղել է հեթանոսական մեհյան, որը վերածվել է քրիստոնեական պաշտամունքի աղոթատեղիի, իսկ վերջինս հետագայում վերակառուցվելով՝ ստացել է գմբեթավոր սրահի հորինվածք, որը կարող էր տեղի ունենալ VI դ. Պտղնիի գմբեթավոր սրահ նշանավոր տաճարի կառուցումից հետո։

Վաղ միջնադարի հանգուցային հնագույն հուշարձաններից է Ողջաբերդում պեղումներով բացված փոքրիկ կառուցվածքը, որը համարվում է V դարի գործ[28]։

IV—V դարերում ստեղծվել են նաև մեմորիալ կառուցվածքների ուշագրավ հուշարձաններ (դամբարաններ, տարբեր առիթով կանգնեցված կոթողներ և այլն)։ Դամբարանային հուշարձաններից հետաքրքրական են գետնափոր կառույցները, որոնցից հայտնի են՝ Հայ Արշակունի թագավորների դամբարանները Անի-Կամախում և Անգեղ ամրոցում (Անգեղտուն գավառում), Աշտարակի շրջանի Աղցք գյուղում, Վաղարշապատում՝ Հռիփսիմեի տաճարի տակ Սահակ կաթողիկոսի (387—439) կառուցած «...խիստ ցածր ու մութ» դամբարա-

26 Ա. Սահինյան, էջմիածնի Մայր տաճարի ճարտարապետական կերպարը, էջ 50—52։

27 «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», Թիֆլիս, 1913, էջ 141—142։ «Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ պատմութիւն հայոց», Թիֆլիս, 1912, էջ 74—75։

28 Տե՛ս Н. М. Токарский, Джрвеж и Вохджаберд, Ереван, 1964, стр. 69.

նը, Օշականում Մեսրոպ Մաշտոցի գերեզմանի վրա կառուցած, Ապարանի շրջանի Ձորվունիի դամբարանները և այլն։

Փավստոս Բուզանդը, անդրադառնալով պարսկական զորքերի կողմից Դարանաղի գավառի Անի ամրոցի 364-ին կատարած ավերածություններին, գրում է. «Բաց էին անում հայոց թագավորների, քաջ Արշակունիների գերեզմանները և թագավորների ոսկորները գերի էին տանում։ Չկարողացան բանալ միայն Սանատրուկ թագավորի շիրիմը՝ նրա... հսկայական պինդ ու ճարտար շինվածքի պատճառով»։ Այնուհետև հիշատակվում է, որ հայերը ետ են խլում այդ ոսկորները և տանում թաղում «Աղցք կոչված ամուր գյուղում..., որ գտնըվում է Արագած մեծ լեռան նեղ ու դժվարամուտ խորշերից մեկում»։ Աղցքի դամբարանը երկհարկանի է եղել, որից պահպանվել է ներքևի՝ ստորերկրյա հարկը։ Պահպանված մասի պատերը քարաշեն են, ծածկը՝ թաղակապ, կամարները՝ խիստ շեշտված պայտաձև։ Հատակագիծն ունի խաչաձև հորինվածք. կենտրոնական հատվածի 3.81×2.66 մ. չափի ոչ մեծ տարածությունից դեպի արևելք կառուցված է աբսիդի կորագիծ բացվածքը, դեպի հարավ և հյուսիս՝ մեկական ուղղանկյուն խորշեր, ուր և ամփոփված են եղել թագավորների ոսկորները։ Մուտքի պարակալներին և ներսի խորշերի առջև դրված սալերին առասպելական, կրոնական և աշխարհիկ թեմաներով քանդակներ են արված։

Իր ընդհանուր մտահղացմամբ, վաղ միջնադարի հայկական ճարտարապետության եզակի օրինակներից է Ձորվունի գյուղի դամբարանի ու դրան կից մատուռի ընդհանուր կառույցը։ Հատակագիծը 9.39 մ. չափի քառանկյունի է, որի հյուսիսային կողմում գտնվում է մատուռը, իսկ հարավային մասում՝ երկհարկանի դամբարանն ու նախասրահը։ Մատուռը ներսից հարուստ ձևավորում ունի։ Նրա առանձին մանրամասների մշակման ոճը (ականթի տերևներով և հավասարաթև խաչերով զարդաքանդակված խոյակներ, հորիզոնական մշակում ունեցող խարիսխներ և այլն) հար և նման լինելով Քասաղի և Տեկորի տաճարներին՝ V դարում ավելացված նույնանման մանրամասներին, նույն ժամանակաշրջանի կառույց է։

Հուշարձանը կրում է ս. Վարդան անունը, որը կառուցվել է 451-ին, Ավարայրի ճակատամարտում զոհված հայոց սպարապետ Վարդան Մամիկոնյանի հիշատակին, իսկ դրան կից դամբարանում, ամենայն հավանականությամբ, թաղվել է Վարդան Մամիկոնյանի հետ զոհված, նրա զինակից Տաճատ Գընթունին[29]։

IV—VI դարերի հուշարձանների հարդարանքները զուսպ են և պարզ։ Խոյակները երբեմն ծածկված են ոճավորված ականթի տերևի հավասարաթև խաչերի, սլացիկ շարժման մեջ ներկայացված վայրի կենդանիների (եղնիկ, առյուծ և այլն) ճոխ քանդակներով արմավենազարդ պսակների մեջ։ Մուտքերի ճակատաքարերի քանդակների կոմպոզիցիոն կենտրոնը հավասարաթև կամ դեպի վեր ձգված խաչի պատկերն է, որի երկու կողմերում քանդակվում են մեկական թռչուն (աղավնի) կամ այլ կենդանի (եղնիկ, խոյ) և այդ ամենն առնվում է խաղողի ողկույզների և տերևների ներդաշնակ համակցությամբ ստեղծված յուրահատուկ պսակի մեջ։ Նման սյուժեով քանդակներ հանդիպում են նաև Հայաստանի ու հարևան մյուս երկրների (Վիրք, Աղվանք, Բյուզանդիա)

---

29 Ա. Սահինյան. նշվ. աշխ., էջ 103—105։

*IV—VI դարերի պաշտամունքի շենքերի այլ մանրամասների ու մեմորիալ կառուցվածքների վրա։*

*IV—VI դարերի առավել նշանավոր տաճարների (Էջմիածին, Դվին, Տեկոր, Երերույք, Քասաղ, Ծիծեռնավանք և այլն) ներսը զարդարվել է որմնանկարչությամբ և խճանկարներով։ Սակայն, ինչպես որմնանկարը, նույնպես էլ խճանկարը, ենթակա լինելով շուտ քայքայման, շուրջ տասնհինգ դարի փորձությունններով անցած այդ կիսավեր հուշարձաններում ոչ մի հետք չեն թողել։ Առանձին քարերի վրա պահպանվել են որմնանկարի ներկի աննշան մնացորդները։ Դվինում մասամբ պահպանվել է երկրաչափական խճանկար, բացվել է նաև տիրամոր պատկերը, որը չի պահպանվել, իսկ Էջմիածնում գտնվել են միայն խճանկարի մեծ քանակությամբ խորանարդիկներ։*

*Այսպիսով, քրիստոնեական վաղ շրջանում Հայաստանում ստեղծվում է զարգացման նշանակալից բարձրության վրա գտնվող հարուստ ճարտարապետություն։ IV—VI դարերում արդեն իսկ առկա են հայկական ճարտարապետության մի շարք այնպիսի հիմնական տիպեր, ինչպիսիք են՝ միանավ կառուցվածքը (Շիրվանջուղ, Դիրաքլար), եռանավ բազիլիկան (Քասաղ, Երերույք), գմբեթակիր բազիլիկան (Տեկոր, Օձուն), եռաբսիդ երկայնական տաճար (Դվին), գմբեթավոր սրահը (Պտղնի), խաչաձև կենտրոնագմբեթ կառուցվածքը (Էջմիածին)։ Այդ կառուցվածքների շինարարական բարձր արվեստը, երկրի հին ու նոր քաղաքների, ամրոցների, իշխանական դղյակների ու այլ բնակավայրերի բազմաժանր կոթողների ճարտարապետության հետ միասին նշանավորում է Հայաստանի ճարտարապետական արվեստի զարգացման նոր, առավել բարձր աստիճանը։ Ավարտվում է ինքնատիպ, իր յուրահատուկ դեմքն ունեցող հայ ազգային ճարտարապետության կազմավորումը։*

## 2. ՀԱՅԿԱԿԱՆ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ VI—VII ԴԱՐԵՐՈՒՄ

*VI դարի երկրորդ կեսից սկսվում է հայկական ճարտարապետության զարգացման նոր փուլը։ Այս շրջանում է, որ ստեղծվում են մի շարք նշանավոր կոթողներ և ավարտի է հասնում հայկական դասական ճարտարապետության կազմավորումը։*

*Սոցիալ-քաղաքական իրադրության մեջ տեղի ունեցած որոշակի փոփոխությունները, ժողովրդի վճռական ձգտումը ազատվել թե՛ իրանական և թե՛ բյուզանդական գերիշխանությունից, դրսևորվեց նաև ճարտարապետության ասպարեզում։ Ազգային ինքնագիտակցության բարձրացումը արտահայտվեց հայկական սրբավայրերում ծավալված շինարարությամբ, որն ուներ նաև որոշակի սոցիալ-քաղաքական երանգավորում, հոյակերտ տաճարները կոչված էին ո՛չ միայն աստծո տուն լինելու, այլև ամրապնդելու և հաստատելու հայ ժողովրդի, հայ եկեղեցու ինքնուրույնությունը, ուժ ու կորով հաղորդելու օտար նվաճողներին դիմագրավելու համար։*

*Պատահական չէ բնավ, որ սրբերի շարքն են դասվում նաև ազգային աշխարհիկ հերոսները և նրանց պատվին երկրի այլևայլ մասերում կառուցվում են վկայարաններ։ Ճարտարապետությունն, այսպիսով, դարձավ ազգապահպանման, ազգային ինքնության համար մղվող պայքարի կարևոր գործոններից մեկը, ձևավորվեց VI—VII դարերի հայկական ճարտարապետության մոնումենտալ ոճը։*

VI—VII դդ. գմբեթավոր ճարտարապետությունը հասնում է զարգացման բարձր աստիճանի, ստեղծվում են գմբեթի, ինչպես կոնստրուկտիվ, այնպես էլ գեղարվեստական արտահայտչության կատարյալ ձևեր։

Մինչև VII դարի կեսերը գմբեթակիր քառակուսուց գմբեթի հիմքին անցումը կատարվում է հիմնականում տրոմպների միջոցով, իսկ VII դարի կեսերից գերազանցապես առագաստների միջոցով, տրոմպներ հանդիպում են հազվադեպ։ Առագաստը հնարավորություն է տալիս գմբեթակիր քառակուսուց գմբեթի հիմքին անցնել անմիջապես շրջագծի միջոցով և ավելացնել թմբուկի արտաքին կողերի քանակն ընդհուպ մինչև կլոր ձևի ստացումը։

Ճարտարապետական հորինվածքների մշակման բնագավառում այս շրջանը բնութագրվում է երկայնական տիպերի աստիճանական անհայտացմամբ և կենտրոնագմբեթ տիպերի բուռն զարգացումով։ Ոչ պակաս կարևորություն են ստանում երկայնական և կենտրոնագմբեթ սիստեմների հիման վրա մշակված տիպերը, և դրանց շրջանակներում է, որ մշակվում են վաղ միջնադարյան առավել ընդարձակ ու մեծ կառույցները։

Ինչպես նախորդ շրջանում, այժմ ևս համընթաց զարգանում են ճարտարապետական մշակույթի երկու հիմնական բնագավառները՝ աշխարհիկ և պաշտամունքային շենքերի ճարտարապետությունը։

Հայկական վաղ միջնադարյան ճարտարապետության պատմության մեջ աշխարհիկ կառույցներն ունեն իրենց խիստ որոշակի տեղը։ Դրանք պայմանավորված ժողովրդի առօրյա կյանքով, հեռու դավանանքային հակամարտություններից, խոր հեղաշրջումներ էին առաջացնում պաշտամունքային ճարտարապետության բնագավառում։ Աշխարհիկ ճարտարապետությունը դարեր շարունակ պահպանեց իր ավանդական ձևերը և յուրահատուկ հիմք հանդիսացավ ճարտարապետական մշակույթի զարգացման համար առհասարակ։

Դժբախտաբար վաղ միջնադարյան քաղաքներն ու նշանավոր կենտրոնները մեզ են հասել հիմնահատակ կործանված վիճակում։ Բայց և այնպես վերջին տասնամյակների ընթացքում ծավալված պեղումները, և, հատկապես, Դվինի պեղումները, շատ հարուստ նյութեր տվեցին մեզ հետաքրքրող բնագավառի համար[30]։ Հիմնադրված դեռևս IV դարում՝ Դվինը պահպանեց իր նշանակությունը նաև VI—VII դարերում և այս շրջանում է, որ այստեղ վեր են խոյանում մի շարք հոյակերտ շենքեր։ Դրանք կառուցվել են և՛ քաղաքի միջնաբերդում և՛ կենտրոնական թաղամասում։ Մատենագրական աղբյուրները և հնագիտական պեղումները ցույց են տալիս, որ շինարարական աշխատանքները Դվինում շարունակվել են նաև VI—VII դդ.։

572 թ. ապստամբության ժամանակ մեծապես տուժեց քաղաքի կենտրոնական թաղամասը։ Այրվեցին մեծ բազիլիկան, պալատը և այլ շենքեր։

VII դարի սկզբին Սմբատ Բագրատունին վերաշինեց քաղաքի այս կարևոր հանգույցը, օգտագործելով հնավանդ բազիլիկի հիմնապատերը, կառուցեց մի նոր գմբեթավոր տաճար, իսկ դրանից հյուսիս՝ կաթողիկոսական մի նոր պալատ։

Այս շրջանում գգալի աշխատանքներ են ծավալվում Վաղարշապատում։ Վեր են խոյանում այնպիսի նշանավոր տաճարներ, ինչպես՝ Հռիփսիմեն, Գայանեն, Զվարթնոցը։ Հոյակերտ հուշարձաններ են կառուցվում Գառնիում, Արուճում, Թալինում և այլուր։ Հատկապես ուշագրավ է Զվարթնոցի շուրջը

30 Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները։



Տիեզերքի երկրակենտրոն Համակարգն ըստ Անանիա Շիրակացու (VII դ.)

կազմավորված քաղաքատիպ փոքրիկ ավանը՝ բոլորաձև հատակագիծ ունեցող, բազմանիստ պատերով նրիզված այն բնակավայրի կենտրոնում, որի միջնաբերդն է հոյակերտ համալիրը՝ նույնպես շրջապատված ամուր պարսպապատերով։

Ինչպես վաղ միջնադարյան քաղաքները, այս բնակավայրը ևս մեզ է հասել հիմնովին ավերված, և ժամանակին այստեղ բարձրացող կառույցների չնչին մնացորդներն են պահպանվել միայն։ Այս հանգամանքը խիստ դժվարացնում է վաղ միջնադարյան քաղաքաշինության սկզբունքների բացահայտման գործը։ Մնում են պաշտամունքային նշանավոր կենտրոնների ճարտարապետական համալիրները, և դրանց հետազոտությամբ գեթ մոտավոր հնարավորություն է ընձեռվում պարզելու վաղ միջնադարյան անսամբլային կառուցապատման հիմնական գծերը։ Այսպես, Դվինի, Վաղարշապատի, Զվարթնոցի և այլ կենտրոնների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ բոլոր դեպքերում էլ համալիրը, որպես կանոն, կազմավորվել է պաշտամունքային հիմնական կառույցի, գլխավոր տաճարի շուրջը, որը եղել է համալիրի դոմինանտը, դրան չի կցվել և ոչ մի շենք, լինի դա եկեղեցի, թե աշխարհիկ կառույց, ինչպես այդ սովորական էր պատմական ավելի ուշ ժամանակների համար։ Սակայն մյուս կողմից վաղ միջնադարյան այս նշանավոր կենտրոններում ուշագրավ տեղ էին գրավում պալատական շենքերը, որոնք ունեին խիստ որոշակի հասարակական-քաղաքական ֆունկցիաներ։ Դրանք, ըստ էության, կաթողիկոսների (Դվին, Զվարթնոց) կամ երկրի կառավարիչների (Արուճ) նստավայրերն էին, նրանց ռեզիդենցիաները։ Պալատի կառույցի հիմնական մասը գրավող դահլիճում էին գումարվում եկեղեցական և աշխարհիկ ժողովները և պետականության բացակայության ու ներքին ինքնավարությունը պահպանելու պայքարի պայմաններում այստեղ էին վճռվում երկրի համար բախտորոշ շատ հարցեր։

Դժբախտաբար երբեմնի շքեղազարդ այդ կառույցներից չնչին մնացորդներ են հասել մեզ, սակայն նույնիսկ այն, ինչ լույս աշխարհ է հանվել պեղումների շնորհիվ (Դվին, Զվարթնոց, Արուճ), ակնհայտորեն վկայում է այն մեծ նշանակության մասին, որն ունեցել է հայկական ժողովրդական բնակելի տունը, դրա տարածական ու կոնստրուկտիվ ձևերն աշխարհիկ մոնումենտալ կառույցների թե՛ ընդհանուր հորինվածքների, թե՛ կոնստրուկտիվ ձևերի մշակման հարցում[31]։ Վաղ միջնադարյան Հայաստանում մշակվել էր աշխարհիկ, պալատական կառույցի մի կայուն տիպ, որտեղ հիմնականը, գլխավորը ձգված համաչափություններ ունեցող ուղղանկյուն սյունազարդ դահլիճն էր, որի երկայնական կողերին հպված էին համեմատաբար փոքր սենյակներ[32]։ Ուշագրավ է, որ այս հորինվածքի մշակման սկզբունքները, որոնք լավ հայտնի էին Հայկական լեռնաշխարհում դեռևս ուրարտական ժամանակներում (Էրեբունի, Արգիշտիխինիլի), դրսևորվեցին նաև իրանական աշխարհիկ ճարտարապետության մեջ, և այնքան կենսունակ էին, այնքան հարազատ հայկական ժողովրդական ճարտարապետությանը, որ պահպանվելով դարեր շարունակ, հասել են մինչև մեր օրերը[33]։

31 Վ. Հարությունյան, Դվինի V—VII դդ. ճարտարապետական հուշարձանները, էջ 58։
32 Ս. Մնացականյան, Զվարթնոցը և նույնատիպ հուշարձանները, Երևան, 1971, էջ 247։
33 Ս. Մնացականյան, Դվինի պալատի կառուցման ժամանակի մասին, ՊԲՀ, 1974, № 2, էջ 213։

Եվ, չնայած այդ ամենին, մեզ հասած շենքերից և ոչ մեկը նույնությամբ չի կրկնում մյուսին, դրանք բոլորն էլ ունեն իրենց ինքնատիպ ուշագրավ խոյակները։ Ոլորազարդ խոյակներն, ըստ էության, հայ ժողովրդական ճարտարապետության մեջ լավ հայտնի փայտյա խոյակների ձևերի վերամշակումն են, հարմարեցված արդեն նոր շինանյութի՝ քարի պահանջներին։

Այդ տեսակետից առանձնահատուկ տեղ է գրավում Դվինի կաթողիկոսական ապարանքը, որը համաձայն մատենագրական մի շարք տեղեկությունների, համարվել է V դարի երկրորդ կեսի գործ[34]։ Սակայն վերջին հետազոտությունները ցույց են տալիս, որ այն կառուցվել է ոչ վաղ, քան VII դ. սկզբներին և արգասիք է Սմբատ Բագրատունու ծավալած շինարարական գործունեության։ Հատակագիծը 31×32 մ չափի գրեթե մի քառանկյունի է, որի կենտրոնական տարածությունը չորս զույգ սյուների միջոցով բաժանված է մեկ լայն և երկու նեղ մասերի։ Սյունազարդ այդ ընդարձակ հատվածի հյուսիսային և հարավային կողմերից կառուցված են նույն տիպի հնգական ոչ մեծ չափերի սենյակներ, որոնք, բացառությամբ մեկից, բոլորն էլ ինքնուրույն մուտքերի միջոցով անմիջականորեն կապվում են սյունազարդ կենտրոնի հետ։ Շենքը եղել է տուֆաշեն, որի սկզբնական կառուցվածքից պահպանվել են պատերի ներքին որմնաշարքերի հիմքերը, սյուների դեռևս իրենց նախնական տեղերում գտնվող մի քանի խարիսխները և ամբողջական մեկ խոյակ։ Ապարանքի տարածական-ծավալային հորինվածքի վերարտադրության համար կարևոր է նրա սյունազարդ կենտրոնի ֆունկցիոնալ նշանակության հարցը։ Հետազոտողների մի մասն այն կարծիքին է, որ սյունազարդ կենտրոնը եղել է առանց ծածկի մի ընդարձակ բաց բակ[35], որն իր կարճ ճակատների ծածկված անցումների միջոցով իրար է կապել ապարանքի երկու կողմերում դասավորված սենյակների ինքնուրույն խմբերը։ Ըստ մի այլ տեսակետի, սյունազարդ տարածությունը եղել է սենյակների երկու խումբն իրար միացնող ապարանքի կենտրոնական դահլիճը. ընդ որում այդ տեսակետն առաջադրողներից ոմանք ենթադրում են, որ դահլիճն ունեցել է եռանավ բազիլիկայի հորինվածք և ըստ այդմ էլ ստացել է համապատասխան ծածկ[36], իսկ մյուսները գտնում են, որ ծածկվել է ժողովրդական տների «հազարաշեն» ծածկերի սկզբունքով[37]։ Վերջին տեսակետի հիման վրա կատարված վերակազմության նախագիծն առավել հավանական է, ըստ որի սյունազարդ դահլիճում, սյուների հավասար հեռավորությունների շնորհիվ առաջացած երեք հավասարակողմ քառանկյունիների վրա ստեղծված են եղել միմյանց հաջորդող փայտաշեն երեք միանման գմբեթներ։ Համանման ձևով միմյանց հաջորդող գմբեթներ կան նաև հետագա ժամանակաշրջանների ինչպես ժողովրդական տներում, նույնպես և այլ նշանակության շենքերում[38]։

Հետաքրքրական է ապարանքի ճարտարապետական առանձին մասերի մշակումը։ Եթե սյուների խարիսխները և խոյակներն իրենց մտահղացումով հիշեցնում են անտիկ շրջանի արվեստը, ապա ըստ որոշակի ձևերի ու մանրա-

---

34 Կ. Ղաֆադարյան. Դվին քաղաքը և նրա պեղումները, էջ 119։

35 *Н. М. Токарский*, Архитектура Армении. Ереван, 1961, с. 58—59:

36 Կ. Ղաֆադարյան. նշվ. աշխ., էջ 112։

37 Վ. Հարությունյան, Դվինի V—VII դդ. ճարտարապետության հուշարձանները, Երևան, 1950, էջ 73։

38 Նույն տեղում, էջ 74։

*մասների մշակման (խոյակի ծավալային ընդհանուր հորինվածք, արմավենիազարդ խոյակներ, վերնասալիկի զարդաքանդակման ոճ, խարիսխների ներքնասալի և դրա վրա գտնվող գլանի համաչափություններ և այլն) նրանք սերտորեն կապվում են տեղական-արևելյան արվեստի առանձնահատկությունների հետ։ Ենթադրվում է, որ կաթողիկոսարանն իր նախկին տեսքով պահպանվել է մինչև Դվինի 893 թ. երկրաշարժը։*

*Դվինի կաթողիկոսական ապարանքի տիպի պալատական մի շենքի մնացորդներ էլ կան Արուճում (VII դար)։ Թե՛ իր հատակագծային հորինվածքով, թե՛ կոնստրուկտիվ-տարածական լուծումներով և թե՛ մանրամասների մշակումով և գրեթե բացարձակ չափերով այն հար և նման է Դվինի կաթողիկոսական ապարանքի կառուցվածքին[39]։*

*Ցնայած Արուճի պալատական կառուցվածքի ճարտարապետի ստեղծագործական ակնհայտ ինքնուրույնությանը, իրավացիորեն նշվում է, որ Դվինի կաթողիկոսական ապարանքը նախօրինակ է հանդիսացել Արուճի իշխանական ապարանքի կառուցվածքի համար։ Ավելին, նույնիսկ հայտնվում է այնպիսի տեսակետ, որ «...V—VII դարերում մշակվել են... աշխարհիկ շենքերի որոշակի տիպեր»[40]։*

*Զվարթնոցի դահլիճը եղել է թաղածածկ, ընդ որում վերջինս հենվել է երկայնական պատերին հպված չորս զույգ որմնամույթերի վրա։ Ոչ պակաս ուշագրավ են Զվարթնոցի համալիրի մյուս աշխարհիկ կառույցները, որոնցից աչքի է զարնում ինը սենյակներից բաղկացած բնակելի մեծ շենքը, որը ժամանակին բոլոր կողմերից շրջապատված է եղել բաց սյունասրահներով[41]։ Դրա արևելյան կողմում հետագայում ավելացվել է բաղնիքի շենքը՝ լուծված անտիկ բաղնիքների կառուցողական սկզբունքներով։ Հնոցից ելնող տաք օդը մինչև հեռանալն անցել է հատակի սալերի տակով և տաքացրել դրանք։ Հետաքրքրական է հնձանի շենքը՝ խաղողը ճզմելու հարթակներով և հյութի հավաքման մեծ հորերով։*

*Դժբախտաբար, ինչպես մյուս բնակավայրերի, նույնպես և Զվարթնոցի համալիրի աշխարհիկ կառույցները խիստ վատ են պահպանվել։ Այդ հանգամանքն, անշուշտ, պատահական չէր. թշնամիների հարձակման ժամանակ նրանք էին ասպատակողների առաջին նպատակակետը, իսկ կործանվելուց հետո՝ մշակված քարի շտեմարան էին շրջակա բնակչության համար։*

*Մեծ է վաղ միջնադարյան աշխարհիկ ճարտարապետության նշանակությունը պատմական հաջորդ շրջանների ճարտարապետության կազմավորման խնդրում[42]։ Այդ ամենից առաջ դրսևորվել է պալատական կառույցների և հատկապես վանքերի սեղանատների կոմպոզիցիաներում, որոնք փաստորեն ունեին վաղ միջնադարյան պալատական դահլիճների հիմնական ձևերը, մշակված արդեն քարի ծածկի պայմաններում։ Ըստ էության նույն իրադրությունն է փշխում նաև X—XIV դարերին այնքան բնորոշ գավիթներում, որոնց կառուցողական ձևերում խիստ ակնհայտ է հինավուրց պալատների հորինվածքային սկզբունքների ազդեցությունը։*

---

39 Վ. Հարությունյան, *VII դարի աշխարհիկ ճարտարապետության մի նոր հուշարձան, «Լրաբեր հաս. գիտ.», № 8, 1953, էջ 59—65։*

40 *Նույն տեղում, էջ 65։*

41 Ս. Մնացականյան, *Զվարթնոցը և նույնատիպ հուշարձանները, Երևան, 1971, էջ 235։*

42 *О. Х. Халпахчян,* Гражданское зодчество Армении, М., 1971, стр. 93.

Վաղ միջնադարյան հայկական ճարտարապետության ոլորտում առանձին տեղ են գրավում պաշտամունքային կառույցները։ Սակայն արմատապես փոխվում է կառույցների տիպը։ Եթե IV—V դդ. գերիշխում էին երկայնական թաղածածկ կառույցները, և նոր-նոր էին զարգանում կենտրոնագմբեթ տիպերն ու սինթեզված լուծումները, ապա VI—VII դդ. արդեն երկայնական տիպերն արագ անհայտանում են, բուռն թափով զարգանում են կենտրոնագմբեթ լուծումները և երկայնական ու կենտրոնագմբեթ սիստեմների հիման վրա մշակված կառույցները[43]։

Նշվեց արդեն, որ VI դարի 50-ական թվականներից սկսվում է հայ ճարտարապետության զարգացման հաջորդ փուլը։ 654 թ. գումարված Դվինի երկրորդ ժողովից հետո, երբ վերջնականապես խզվեցին կապերը բյուզանդական եկեղեցու հետ, մի նոր, աննախընթաց վերելք ապրեց հայ մշակույթը, նաև ճարտարապետական արվեստը, բազմաթիվ վայրերում վեր խոյացան հոյակերտ շենքեր։

Արագորեն զարգանալով, գմբեթավոր տաճարները դարձան պաշտամունքային մոնումենտալ կառույցների հիմնական ձևերից մեկը։ Այս պայմաններում չպետք է զարմանալ, որ հայկական ժողովրդական ճարտարապետության մեջ մշակված գմբեթների կառույցների երկու հիմնական տիպերն էլ (առանց սյուների արտաքին պատերի վրա հենվող գմբեթով և չորս կենտրոնական գմբեթակիր սյուներ ունեցող տիպերը) ելակետ դարձան հայկական կենտրոնագմբեթ հորինվածքների մշակման համար։ Ոչ պակաս ուշագրավ են սինթեզված տիպերը, երբ գմբեթ էր դրվում միանավ և եռանավ հորինվածքների վրա։ Հայկական ճարտարապետության զարգացման այս նոր փուլի ամենաբնորոշ կառույցներից է Օձունի տաճարը, որտեղ ճարտարապետները պահպանելով հնավանդ եռանավ բազիլիկայի ընդհանուր կոմպոզիցիան, նրա վրա են բարձրացրել գմբեթավոր, բարձր գեղարվեստականությամբ օժտված մի հոյակերտ կառույց, որն աչքի է ընկնում ներդաշնակ համաչափությամբ և վերասլաց գմբեթակիր մույթերով։

Մինչև վերջերս էլ Օձունի տաճարի թվագրությունը տատանվում էր VI—VII դարերի միջև։ Վերջին ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ այն կառուցվել է VI դարի երկրորդ կեսում, թերևս Դվինի 554 թվականի ժողովից անմիջապես հետո։ Այս շրջանում նոր, մեծ բազիլիկաներ չեն կառուցվում արդեն, սակայն շարունակվում և ավարտվում է Ծիծեռնավանքի եռանավ բազիլիկան երկրի հարավում[44] և հիմնովին վերակառուցվում է Եղվարդի դարձյալ եռանավ մեծ բազիլիկան, որի հնավանդ փայտյա ծածկը փոխարինվում է մույթերի վրա հենված թաղով։ VII դ. թաղածածկ եզակի շենքեր են միայն հայտնի (Պեմզաշեն, Կարենիս), այն էլ կառուցված հիմնականում որպես դամբարաններ։ Գմբեթն աստիճանաբար ավելի ու ավելի լայն տեղ է գրավում, դառնում հայկական պաշտամունքային ճարտարապետության ամենաբնորոշ կողմերից մեկը։ Կենտրոնագմբեթ տիպերի զարգացումն ընթացել է ամենապարզ, դեռևս V դարում կառուցված Ողջաբերդի հորինվածքի զարգացման ճանապարհով,

---

[43] *Н. М. Токарский,* Архитектура Армении, М., стр. 91.

[44] Մ. Հասրաթյան, *Ծիծեռնավանք*, ՊԲՀ, 1960, № 2, էջ 39։ *Paolo Cuneo*, La basilique de Tsitsernakavank dans le Karabagh „Revue des Etudes Arméniennes„, nouvelle serie, tom V, Paris, 1967.

*երբ գմբեթակիր քառակուսուն աբսիդներ են ավելացվում բոլոր հիմնական կողմերում։ Ահա այս ճանապարհով ստեղծվեց պարզ խաչաձև հորինվածքների այն հիմնական բջիջը, որի վրա և խարսխվեց կենտրոնագմբեթ տիպերի հետագա ամբողջ զարգացումը։*

*Գմբեթավոր կառույցների շինարարության ժամանակ առավել կարևոր էր գմբեթի հուսալի հենարանի ստեղծումը, այսինքն՝ կոնստրուկտիվ տարրի մշակումը, որը պետք է փոխանցում ստեղծեր գմբեթակիր կամարներով կազմված քառակուսուց դեպի գմբեթի շրջագծային հիմքը։ Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ դժվարը եղել է ոչ թե բուն գմբեթի վերնամասի կառուցումը, այլ այն փոխանցման գոտու մշակումը, որը պետք է տեղադրվեր երկրաչափական տարբեր ձևեր ունեցող ծավալների միջև։ Տեկորի տաճարում (V դարի վերջ) այդ փոխանցման գոտին փաստորեն ներկայացնում է ժողովրդական բնակելի տան մեջ օգտագործվող փայտյա գմբեթների՝ հազարաշենների վերարտադրությունը քարի միջոցով և միայն հետո են մշակվում քարին յուրահատուկ ձևեր[45]։*

*Անկյունային փոխանցումները լինում են կամ կոնաձև կամարների (տրոմպների), կամ սֆերիկ շարվածքների (առագաստների) միջոցով։*

*Տրոմպային փոխանցումները լինում են երկշերտ և նույնիսկ եռաշերտ։ Գմբեթակիր տարածության անկյուններում դասավորված չորս հիմնական քառակուսիները վեր են ածվում ութանկյան, որն իր հերթին փոխանցվում է տասնվեցանկյան՝ դրանցից վեր դասավորված ութ, ավելի փոքր տրոմպների միջոցով։ Ահա այդ բազմանիստ հենարանի վրա էլ դրվում է գմբեթի թմբուկը[46]։*

*VI—VII դդ. կանգուն վիճակով մեզ են հասել եզակի հուշարձաններ միայն[47]։ Այս առումով խիստ ուշագրավ է Աշտարակի Կարմրավորը՝ VII դ. մի պարզ, խաչաձև կառուցվածք, արևելյան կիսաշրջանաձև և կողային ուղղանկյուն թևերով։ Այս գողտրիկ հուշարձանը նշանավորում է այդ դարաշրջանին յուրահատուկ պարզ խաչաձև կառույցների մի ուշագրավ օրինակ, որտեղ դեռևս VII դարից անաղարտ վիճակով պահպանվել է կղմինդրածածկ գմբեթը. նույնատիպ կառուցվածքների մեջ համեմատաբար սլացիկ համաչափություններով աչքի է ընկնում Արթիկից ոչ հեռու գտնվող Լմբատը, որտեղ ուղղանկյուն հենախորշերը ծածկված են ոչ թե սովորական կիսաշրջանաձև թաղով, այլ գմբեթարկներով։ Արտաքինից խաչաթևերն ավարտվում են երկլանջ ծածկով, որից վեր բարձրանում է ողջ կերտվածքը պսակող ութանիստ գմբեթը։ Լմբատի եկեղեցում պահպանվել են VII դարի բարձրարվեստ որմնանկարներ։*

*. Ընդարձակ ներքին տարածություններ ստանալու ձգտումը պայմանավորված էր գմբեթի մեծացումով. այս ճանապարհով է ստեղծվում Մաստարայի նշանավոր տաճարը՝ կառուցված, ամենայն հավանականությամբ, VI դարի երրորդ քառորդում[48]։ Այս հոյակերտ կառուցվածքն աչքի է ընկնում իր ծավալային ձևերի հստակությամբ, ներքին տարածության արտակարգ միասնակա-*

---

45 Թ. Թորամանյան, *Նյութեր հայկական ճարտարապետության պատմության*, էջ 205։

46 *Р. Я. Агабабян*, Композиция купольных сооружений Грузии и Армении, Ереван, 1950, стр. 44.

47 Վ. Գրիգորյան, *Հայաստանի վաղ միջնադարյան կենտրոնագմբեթ փոքր հուշարձանները, Երևան, 1982, էջ 74։*

48 *С. Х. Мнацаканян, К. Л. Оганесян, А. А. Саинян, նշվ. աշխ., էջ 93։*

նությամբ։ Այստեղ հենախորշերով և անկյունային ուղղանկյուն մասերով պարփակված ներքին տարածության վրա բարձրանում է լայնածավալ գմբեթը, որի ներսի մակերևույթը ձևավորված է վերևից իջնող դեկորատիվ ճառագայթներով։ Արտաքին ճակատները մշակված են խիստ զուսպ, և միայն լուսամուտների պսակներն են, որ մասնատում են դրա հարթ, վերասլաց պատերը։

Ճարտարապետական այս հորինվածքը VII դարում զգալիորեն տարածվում է և դրսևորվում մի շարք այլ հուշարձաններում (Հառիճ, Ոսկեպար, Արթիկ)։ Ինչպես Մաստարայում, նույնպես և նույն դարի քիչ թե շատ նշանակալից չափեր ունեցող այլ հուշարձաններում խորանի երկու կողմերում տեղավորվում են մեկական ավանդատներ։

Ճարտարապետական տիպերի զարգացումն ընթանում է ավելի բարդ, կոնստրուկտիվ տեսակետից ավելի կայուն հորինվածքների մշակման ուղղությամբ։ Այս առումով խիստ ուշագրավ է տաճարի՝ Ավան-Հռիփսիմեի տիպի մշակումը, որտեղ արդեն առկա են չորս սենյակներ կառուցվածքների անկյուններում։ Կոմպոզիցիոն տեսակետից տվյալ տիպը ներկայացնում է Մաստարայի տիպի հետագա զարգացումը, որտեղ անկյունային ուղղանկյուն հատվածները փոխարինված են $^3/_4$ շրջանաձև խորշերով, չորս անկյուններում ավելացված են բոլորաձև կամ քառակուսի սենյակներ և ամբողջ կառուցվածքը վերցված է ուղղանկյուն եզրաձև ունեցող պատերի մեջ[49]։

Սակայն այս հորինվածքի մշակումը չի կարելի բացատրել միայն կոնստրուկտիվ նկատառումներով։ Հայկական եկեղեցին դարեր շարունակ հսկողություն էր սահմանել տաճարաշինության բնագավառում, և յուրաքանչյուր նորակառույց եկեղեցու ձևերը նախօրոք պետք է հաստատվեին եկեղեցու հայրերի կողմից։ Այս պայմաններում հազիվ թե կարելի լիներ կասկածել, որ նման արմատական փոփոխությունը հետևանք լիներ միայն ճարտարապետների կոնստրուկտիվ որոնումների և պայմանավորված չլիներ ծիսական կոնկրետ պահանջներով։

Այս տիպի կառուցվածքներից հնագույն հուշարձան է Ավանի տաճարը՝ կառուցված Ավան գյուղաքաղաքում (այժմյան Երևանի հարավարևելյան մասում), հակաթոռ կաթողիկոս Հովհանի կողմից։ Տաճարն, ամենայն հավանականությամբ, հիմնադրվել է 591 թ., երբ այս տարածքն անցավ Բյուզանդիային և կայսրությունն այնտեղ հիմնադրեց հակաթոռ, քաղկեդոնական կաթողիկոսություն։ Այն մեծ կառուցվածք չէ, և տասը տարին լիովին բավարար էր այն ավարտելու համար։ Տարակույս չի կարող լինել, որ սահմանի եզրին գտնըվող այս կենտրոնը 602 թ. պետք է անմիջապես գրավվեր պարսկական զորաբանակների կողմից, և շենքն այն ժամանակ, անշուշտ, պետք է որ ավարտված լիներ։ Ըստ հատակագծային լուծման, այն ներկայացնում է քառաբսիդ մի կառուցվածք, անկյունագծային ուղղություններով դասավորված չորս $^3/_4$ շըրջանագծային հենախորշերով։ Հատկապես ուշագրավ են անկյունային սենյակ-

---

[49] *А. Б. Еремян*, Храм Рипсиме, Ереван, 1955, стр. 86, նույնի՝ «К вопросу датировки кафедральной церкви в Аване», *«Լրաբեր. հաս. գիտ.», 1969, № 3, էջ 47, Б. Н. Аракелян, А. М. Арутюнян, С. Х. Мнацаканян,* О некоторых вопросах истории армянской архитектуры, Ереван, 1969, Կ. Ղաֆադարյան, *Երևանի միջնադարյան հուշարձանները և վիմական արձանագրությունները, 1975, էջ 65։* Տ. Մարության, *Ավանի տաճարը, Երևան, 1976*. А. Х. Гораманян, Заметки об архитектуре храма в Аване. Научные сообщения Гос. музея искусств народов Востока, вып. X, М., 1978, с. 115.

ների ձևերը. դրանք ունեն շրջանաձև հատակագիծ և ծածկված են եղել գմբեթներով։ Սակայն վերջիններս համեմատաբար ցածր են եղել և դուրս չեն եկել կառուցվածքի ընդհանուր լանջավոր ծածկի տակից։

Ավելի մեծ վարպետությամբ է կառուցված Հռիփսիմեի տաճարը։ Այն կառուցել է Կոմիտաս կաթողիկոսը, 618 թվականին, Հռիփսիմեի նահատակության վայրում բարձրացող հնագույն դամբարանի տեղում. ընդ որում վերջինիս ստորերկրյա մասը, որպես սրբություն, պահպանվել է նորակառույց հոյակերտ տաճարի աբսիդի տակ։ Այդ հնագույն դամբարանի ընդհանուր ձևերի մասին կարելի է գաղափար կազմել Օձունի մոնումենտի հարավային կոթողի պատկերաքանդակներից մեկի հիման վրա, որտեղ ներկայացված է քրիստոնեությունը Հայաստանում տարածվելու լեգենդը։ Ահա այստեղ էլ, ըստ սյուժեի զարգացման, իր համապատասխան տեղում պատկերված է այն վկայարանը, որն այնքան կարևոր տեղ ունի լեգենդում և որի շինարարությունը վերագրվում է Տրդատին ու Գրիգոր Լուսավորչին[50]։ Այն ներկայացնում է մի աշտարակաձև կառուցվածք, որի ներքևի, բուն դամբարանային մասը մարմնավորող հարկի վրա էլ բարձրանում է երկրորդ հարկը՝ մշակված չորս մույթերի վրա հենվող կամարակապ ծածկույթի ձևով։ VII դարում Կոմիտաս կաթողիկոսը քանդում է այդ կառուցվածքի վերերկրյա մասը և դրա փոխարեն կառուցում մի նոր, հոյակապ տաճար։ Այս նոր տաճարում արդեն լիովին հաղթահարված են այն արխաիկ ձևերը, որոնք անխուսափելի էին այդ տիպի մշակման առաջին օրինակներից մեկում՝ Ավանի տաճարում։

Հռիփսիմեի տաճարում անկյունային սենյակներն արդեն քառակուսի են, իսկ արտաքին պատերի մեջ արված խիստ արտահայտված խորշերը ոչ միայն վերացնում են որմածքի ավելորդ զանգվածները, ոչ միայն հնարավորություն են ընձեռում ավելի լավ լուսավորելու արևելյան աբսիդը, այլև միաժամանակ հանդիսանում են արտաքին ճակատները ձևավորող հիմնական տարրերը։

Մինչև վերջերս էլ այն կարծիքն էր գերիշխում, թե գմբեթը կառուցվել է համեմատաբար ավելի ուշ։ Սակայն, 1959 թ., երբ տաճարի պատերը մաքրվեցին XIX դարում արված ծեփից, երբ բացվեցին պատերի ու գմբեթի կիսասֆերայի հիանալի շարքերը, տրոմպային ուշագրավ կոնստրուկցիաները և քարագործ վարպետների նշանագրերը, որոնք նույնությամբ կրկնվում են և տաճարի ներքևի մասերում և գմբեթի վրա, ապա պարզ դարձավ, որ ներսից շրջագծային և դրսից 16 նիստ ունեցող գմբեթը ոչ թե հետագայի հավելվածք է, այլ կառուցված է նույն՝ VII դարում և կազմում է ամբողջ հորինվածքի օրգանական մասը[51]։

Տաճարի արտաքին ծավալային ձևերում գերիշխում է գմբեթի բազմանիստ ծավալը, և այն օրգանական միասնությունը, որը կար տաճարի ներսում, ոչ պակաս ուժգնությամբ դրսևորվում է նաև այստեղ։ Ճիշտ է, այժմ չկա հնադարյան կղմինդրյա սֆերիկ ծածկը, փոխված են լանջավոր տանիքների թեքությունները, ավերված են շքամուտքերը և այլն, սակայն ընդհանուր համաչափությունները հիմնականում մնացել են նույնը, և տաճարը լիովին պահպանել է իր ողջ հմայքը, ուժն ու վեհությունը։

[50] *С. Х. Мнацаканян,* Об одном неизвестном типе сооружения древнеармянской архитектуры. «Լրաբեր հաս. գիտ.», 1952, № 7։

[51] Հ. Հակոբյան, Նորահայտ նյութեր Հռիփսիմեի տաճարի վերաբերյալ, «Հայկական արվեստ» (ժողովածու), Երևան, 1974, № 1, էջ 48։

Հռիփսիմեի տաճարի ձևերը նախօրինակ հանդիսացան VII դարում կառուցված մի շարք հուշարձանների համար, այդպիսիք են Զորադիրը Վասպուրականում[52], գողտրիկ Թարգմանչացը, Գառնահովիտի և Սիսավանի հոյակապ տաճարները։ Նշված հուշարձաններից համեմատաբար լավ է պահպանվել Սիսավանի տաճարը՝ կառուցված VII դարի վերջում։

Ուշագրավ է, որ բացի Հայաստանից, նույնատիպ կառուցվածքներ կարելի է նշել միայն հարևան Վրաստանում։ Այսպիսիք են VII դարում կառուցված Մցխեթի Ջվարին, և նույն դարի գործ հանդիսացող Աթենիի Սիոն տաճարը՝ շինարարական արձանագրության համաձայն կառուցված հայ ճարտարապետ Թոդոսակի ձեռքով։

Մինչև այժմ հիշատակվող բոլոր հուշարձաններում գմբեթները հենված էին կամ ուղղակի արտաքին պատերին կամ դրանց հետ օրգանական միասնություն կազմող որմնամույթերի վրա։ Հայկական վաղ միջնադարյան ճարտարապետության մեջ առանձին մույթերով կենտրոնագմբեթ հորինվածքը (արդեն հայտնի V դարի վերջում, Էջմիածնի տաճարում) քիչ թե շատ նշանակալից զարգացում չունեցավ և այդ սկզբունքով կառուցված շենքերից հայտնի է միայն Բագարանի տաճարը (624—631), որի հատակագծային հորինվածքում խիստ ակնհայտ է նշանավոր, հնավանդ կառույցին ընդօրինակելու ձգտումը։ Սակայն սկզբունքորեն այլ ձևով է լուծված կառույցի տարածական հորինվածքը։ Այստեղ հիմնականը, որոշիչը ներքին խաչաձև մասն է, որը վեր խոյանալով հենախորշերով և անկյունային ուղղանկյան հատվածներով կազմված մասի նկատմամբ, ներկայացնում է տաճարի երկրորդ հարկաբաժինը։ Ամբողջ կառուցվածքը պսակել է ութանիստ գմբեթը, որը և կազմել է կառուցվածքի երրորդ հարկաբաժինը։ Ծավալային եռաստիճան մշակման ահա այս գաղափարն էր, որ մեկ տասնամյակ հետո իր փայլուն դրսևորումը գտավ Զվարթնոցում, ճարտարապետական մի այլ, շատ ավելի համարձակ մտահղացման իրականացմամբ[53]։

Այս շրջանում ճարտարապետները համարձակ փորձեր են անում ընդարձակ ներքին տարածություններ ստանալ ճիշտ կենտրոնագմբեթի համակարգերի հիման վրա, ելակետ ունենալով դարերի խորքից եկող քառաթև կոմպոզիցիան։ Ահա այս ճանապարհով է մշակվում հայկական ճարտարապետության ամենանշանավոր հորինվածքներից մեկը՝ Զվարթնոցի տաճարը։ Տաճարը՝ կառուցված Ներսես Գ Շինող կաթողիկոսի կողմից, ամենայն հավանականությամբ, հիմնադրվել է 643 թվականին։ Պատահական չէր ընտրված դրա շինարարության վայրը։ Այստեղ, դեռևս V դարում եղել են ինչ-ինչ կառուցվածքներ, եկեղեցի, իսկ պեղումների ժամանակ հայտնաբերված ուրարտական կոթողը որոշակի հիմքեր է տալիս ենթադրելու, որ դեռևս շատ հին ժամանակներում այստեղ կյանք է եղել։

Գրականության մեջ տարածված այն կարծիքը, թե Ներսեսն իբր քաղկեդոնական էր մինչև 652 թվականը, իսկ Զվարթնոցը կառուցվում էր որպես քաղկեդոնական կենտրոն, որի նպատակն էր նսեմացնել Էջմիածնի ավանդական սրբությունները, ոչ մի կերպ հիմնավորված չէ։ Ընդհակառակը, Ներսեսի

---

[52] Tommaso Breccia Fratadocchi, La chiesa di s. Ejmiacin a Soradir, Roma, 1971.

[53] Burchard Brenties, Stepan Mnazakanian, Nona Stepanian, Kunst des Mittelalters in Armenien, Berlin, 1981, s. 67.

համերաշխ գործունեությունը Թեոդորոս Ռշտունու հետ շուրջ 10 տարի, մինչև 652 թվականը, և տաճարի շինարարության շարունակումը նույնիսկ այն ժամանակ, երբ Ներսեսը քաշվել էր հայրենի Տայոց նահանգը, անվերապահորեն վկայում է, որ ժամանակակիցները Զվարթնոցի շինարարությունը բնավ չէին կապում քաղկեդոնականության հետ, և այն երբեք չի համարվել քաղկեդոնական տաճար։ Ինչ վերաբերում է 653 թ. բյուզանդական կայսրի ներկայությամբ քաղկեդոնական ծեսով կատարված արարողությանը, ապա դա հարկադրաբար կատարված վաղանցիկ մի ակտ էր, որն անհետևանք մնաց։

1900—1907 թթ. պեղումների ընթացքում բացվեց մի ընդարձակ ճարտարապետական կոմպլեքս, որտեղ հոյակերտ տաճարից դեպի հարավ և արևմուտք տեղավորված էին պալատական դահլիճները, բնակելի սենյակները, բաղնիքը, հնձանի շենքը և այլ կառուցվածքներ։

Տաճարն ըստ իր հատակագծային հորինվածքի ներկայացնում է հավասարաթև քառաբսիդ կառուցվածք՝ շրջապատված օղակաձև սրահով։ Բացի արևելյանից, մյուս բոլոր խաչաթևերը միջանցիկ են և հենվում են վեցական սյուների վրա։ Խաչաթևերի անկյուններում տեղավորված են գմբեթակիր հզոր մույթերը։ Մույթերի ետևում տեղադրվել են առանձին կանգնած մեկական սյուները, որոնք իրենց հերթին պսակվել են արծվաքանդակ մեծ խոյակներով։

Հուշարձանը բարձրացել է մի բազմանիստ հարթակի վրա, որի նիստերը ձևավորված են յոթական աստիճաններով։ Այն կառուցվել է արտակարգ խնամքով, նույնիսկ հիմնապատերը շարված են սրբատաշ քարերով, իսկ առավել պատասխանատու հանգույցները, և հատկապես սյուները ամրացված էին երկաթյա գամերով։ Աբսիդների սյուները պսակված են հիանալի մշակված ոլորազարդ խոյակներով, որոնց ներքևի մասը հյուսված՝ «զամբյուղ» է։ Տաճարի ինտերիերի զարդն են կազմում առանձին կանգնած սյուների արծվաքանդակ խոյակները, որոնք եզակի երևույթ են ողջ հայկական և ոչ միայն հայկական ճարտարապետական մշակույթում։

Արտակարգ ճոխ է մշակված տաճարի արտաքին պատը. խուլ կամարաշարքերով ձևավորվել են թե՛ ներսի և թե՛ դրսի հարթությունները։ Պատը դըրսից ունեցել է 32 կող, ընդ որում նիստի անկյուններում տեղավորվել են զույգ որմնասյուներ, որոնց վրա էլ հենվել են ճոխ մշակված կամարաղեղներ։ Կամարաղեղներից վեր տեղավորվել է լայն զարդագոտին, մշակված նաև թփի և խաղողի որթի մոտիվներով։ Այդ զարդագոտուց վեր դասավորված են կլոր լուսամուտները, որոնց շարքում՝ տաճարի հարավային ճակատում գտնվել է արևի ժամացույցը։

Զույգ որմնասյուներից վեր, զարդագոտու ներքևի մասում տեղավորված են եղել շինարարական և այլ գործիքներ ձեռքներին բռնած մարդկանց պատկերաքանդակներ։

Զվարթնոցի հատակագծային հորինվածքի հիմնական սկզբունքները հայտնի էին դեռևս անտիկ ճարտարապետության մեջ, և ապա՝ Բյուզանդիայում։ Սակայն բոլոր դեպքերում էլ այդ տիպի տաճարները ծածկվում էին փայտով։ Առաջին անգամ Զվարթնոցի ճարտարապետն էր, որ մշակելով կրկնակի կորություն ունեցող լայնաթռիչք կամարների սիստեմը, կարողացավ տարածական այդ բարդ սիստեմը ծածկել քարակերտ ծածկով։

Պեղումների ընթացքում բացվեցին հոյակերտ հուշարձանի մնացորդները։ Աշխատանքները դեռևս չէին ավարտվել, երբ Թ. Թորամանյանը ձեռնամուխ

եղավ վերակազմության նախագիծը կազմելուն, և 1905 թ. հրատարակեց իր առաջին հոդվածը։ Թորամանյանի նախագծի համաձայն օղակաձև սրահն ունեցել է նաև երկրորդ հարկ, որը լուսավորվել է կլոր լուսամուտներով։

Բացի այդ, լայնաթռիչք կամարների վրա հենվող վերնահարկի օղակաձև պատը շարունակվել է վեր, կազմել տաճարի երկրորդ հարկաբաժինը, և իր մեջ պարփակել ներքին քառաթև կառուցվածքը։ Տաճարի երրորդ հարկաբաժինն է կազմել բազմանիստ գմբեթը[54]։

Զվարթնոցի ճարտարապետական ձևերն իրենց որոշակի կնիքը դրեցին թե VII դ. և թե X—XI դդ. կառուցված մի շարք հուշարձանների ձևերի վրա։ VII դարի զվարթնոցատիպ կառուցվածքներից կարելի է հիշատակել Իշխանի եկեղեցին՝ կառուցված նույն Ներսես Գ կաթողիկոսի կողմից, իր հայրենիքում՝ Մամիկոնյան տոհմի նահապետի նստավայր Իշխան գյուղում, հավանաբար 653—659 թթ., երբ նա ստիպված էր անավարտ թողնել Զվարթնոցը և քաշվել իր հայրենի Տայոց նահանգը։ VII դարի երկրորդ կեսի գործ է համարվում նաև պատմական Աղվանքում, Զվարթնոցի օրինակով կառուցված, սակայն շատ ավելի փոքր չափեր ունեցող Լյակիտի տաճարը։ Զվարթնոցի ձևերի որոշակի կնիքն է կրում X դարում կառուցված վրացական Բանայի[55] տաճարը։ Զվարթնոցի հորինվածքն է կրկնում XI դարի սկզբում Անիում Գագիկ Ա թագավորի կողմից կառուցված ս. Գրիգոր (Գագկաշեն) տաճարը։

Զվարթնոցի ազդեցությունը որոշակիորեն զգացվում է նաև VII դարի այլ հորինվածքներ ունեցող կառուցվածքների ձևերում։ Այդ դրսևորվում է ինչպես Ներսես Գ Շինող կաթողիկոսի կողմից Գառնիում 659 թ. կառուցած, ներսից քառախորան, իսկ դրսից բազմանիստ տաճարի ձևերում[56], նույնպես և VII դ. երկրորդ կեսի գործ հանդիսացող Եղվարդի և Իրինդի բազմաբսիդ տաճարներում։ Այս վերջին կառուցվածքներից իր ճարտարապետական ձևերի հստակությամբ աչքի է ընկնում Եղվարդից ոչ հեռու գտնվող Զորավորը՝ կառուցված Գրիգոր Մամիկոնյանի կողմից։ Այստեղ ութ կիսաշրջանաձև հենախորշերը, համախմբված գմբեթակիր տարածության շուրջը, իրենց վրա են պահում կառուցվածքի ինտերիերը միավորող, լայնանիստ, ներսից շրջանաձև, իսկ դրսից բազմանիստ գմբեթը։ Հենախորշերն ունեն շառավղային դասավորություն և միմյանցից բաժանված են եռանկյունաձև խորշերով։ Բոլոր հենախորշերն էլ միահավասար են, բացի արևելյանից, որն ունի համեմատաբար ավելի մեծ չափեր և այնտեղ էլ տեղավորված է եղել եկեղեցու աղոթարանը[57]։

Բազմաբսիդ հորինվածքներն իրենց լայն տարածումը գտան նաև հետագա դարերում, և հատկապես Անիում, որտեղ X—XI դարերի ընթացքում կառուցվեցին մի շարք, թե՛ վեցաբսիդ և թե՛ ութաբսիդ եկեղեցիներ։

Ճարտարապետական արվեստի զարգացման գործում իրենց խիստ կա-

---

54 Զվարթնոցի այս պատկերը լայն տարածում գտավ, թեև վեճերը Թորամանյանի վերակազմության շուրջը շարունակվում են մինչև օրս։ (Թ. Թորամանյան, Զվարթնոց, «Նյութեր հայկական ճարտարապետության պատմության», հ. Ա, Երևան, 1942, էջ 236։ А. В. Кузнецов. Тектоника и конструкция центрических зданий. М., 1951, стр. 114. Տ. Մարության, Զվարթնոցը և զվարթնոցատիպ տաճարները, Երևան, 1963, Ս. Մնացականյան, Զվարթնոցը և նույնատիպ հուշարձանները, Երևան, 1971)։

55 Հայերեն՝ Բանակ (այժմ՝ Փենյակ) Տայք նահանգի Պարտիզացփոր գավառում։

56 *Б. Н. Аракелян,* Гарни, I, Ереван, 1951, стр. 70:

57 *О. Х. Халпахчьян,* Архитектура Армении в кн.: «Всеобщая история архитектуры в 12 томах», т. III, М., 1966, стр. 221.

բևոր տեղն ունեն տաճարների համադրյալ տիպերը, որոնք ստացվել են երկայնական հորինվածքների և կենտրոնագմբեթ սիստեմների համադրման միջոցով։ Տեղ գտնելով գմբեթավորման առաջին շրջանում (Տեկոր՝ V դարի վերջ), այս տիպերն առավել զարգանում են VI դարում (Զովունի, Օձուն), VII դարում հասնելով կատարելության ամենաբարձր աստիճանին։

Կենտրոնագմբեթ և երկայնական հորինվածքների համադրության հիման վրա մշակված տիպերի առավել պարզ օրինակներից են գմբեթավոր սրահները, որտեղ ամբողջական, ոչնչով չմասնատված դահլիճի կենտրոնում, հենվելով երկայնական պատերին հպված հզոր մույթերին, վեր է խոյանում կառույցի ներքին միասնական տարածության վրա գերիշխող գմբեթը։ Հատկապես հայկական ճարտարապետությանը բնորոշ այս տիպը մշակվել է թերևս միանավ, երկայնական հորինվածքների գմբեթավորման ճանապարհով, ընդ որում այն ստեղծվել է հայկական գմբեթավոր հորինվածքների մշակման ամենավաղ շրջանում։ Այս պրոցեսն ընթացել է մի քանի ուղղություններով, թեև հիմնական նպատակը միշտ էլ մնացել է նույնը՝ չեզոքացնել գմբեթի հորիզոնական հակազդումները։ Մի դեպքում պրոբլեմը լուծվել է միանավ հորինվածքների երկայնական պատերին հզոր որմնամույթեր ավելացնելու միջոցով (Զովունի), մյուս դեպքում դրանց փոխարինել են դեպի ներս բացվող ուղղանկյուն կամ կիսաշրջանաձև հենախորշերը (Արթիկ, Դորբանտ)։ Զովունիում մշակված հորինվածքը լայն հեռանկարներ բացեց, և դրա զարգացումն ընթացավ ավելի միասնական ծավալներ ստեղծելու ուղղությամբ։ Աբսիդն ու ավանդատները կազմեցին դահլիճի ծավալային ձևերի անմիջական շարունակությունը, իսկ գմբեթը դրվեց ողջ կառույցի կենտրոնում։ Ստեղծագործական լայն որոնումների ճանապարհով մշակվեց այս հստակ, բյուրեղյա հորինվածքը, որն, ի տարբերություն շատ սիստեմների, չկորցրեց իր նշանակությունը նաև հետագա դարերում, դառնալով X—XIV դդ. հայկական պաշտամունքային ճարտարապետության հիմնական տիպը։ Ահա այս կարգի վաղ միջնադարյան հուշարձաններից է Պտղնիի տաճարը[58]։ Հուշարձանը մեզ է հասել խիստ վնասվածկործանվել է գմբեթը, արևելյան պատը, հարավային պատի զգալի մասը, սակայն նույնիսկ այդ վիճակում այն հիացմունք է պատճառում իր ներդաշնակ համաչափություններով և գեղարվեստական բարձր արժանիքներով։ Ուշագրավ է հյուսիսային ճակատի սափորազարդ քիվը և հատկապես հարավային ճակատի կենտրոնական լուսամուտի պսակը՝ հույժ հետաքրքրական պատկերաքանդակներով։ Այստեղ, ամենավերին հատվածում, քանդակված է Քրիստոսի համբարձման տեսարանը. նրա երկու կողմերում՝ առաքյալների դիմաքանդակներ են, իսկ ավելի ցած, պսակի հորիզոնական թևերի վրա պատկերված են Ամատունյաց տոհմի նախնիները՝ իշխան Պարգևն ու նրա որդի Մանուելը, որոնք դեռևս IV դարում զոհվել էին իրանական զորքերի դեմ մղվող կռիվներում։ Տաճարի բոլոր ձևերը վկայում են այն շրջանի մասին, երբ ավարտվել էին որոնումները և հայկական վաղ միջնադարյան մշակույթը թևակոխել էր իր զարգացման հասուն շրջանը։ Թեև հայտնի չէ տաճարի կառուցման ստույգ ժամանակը, սակայն թե ճարտարապետական ձևերը (աբսիդների առկայու-

---

58 Գ. Հովսեփյան. Նյութեր և ուսումնասիրություններ հայ արվեստի և մշակույթի պատմության, պրակ Գ, Նյու Յորք, 1944, էջ 30։ Ս. Մնացականյան, Պտղնիի տաճարը, ՊԲՀ, 1961, № 4, էջ 219։

թյունը ավանդատներում, որոնք ի հայտ են գալիս VI դարի երկրորդ կեսում, և անմիջական հետևանք են 554 թ. Դվինի երկրորդ ժողովի որոշումների), թե տաճարի բոլոր կոնստրուկտիվ (զարգացած տրոմպային փոխանցում) և դեկորատիվ (շքամուտքերի և լուսամուտների պսակները, պատկերաքանդակների ոճը) ձևերը տարակույս չեն թողնում, որ այն կառուցվել է VI—VII դդ. սահմանագծում, և թերևս հիմնադրվելով VI դարի վերջում, ավարտվել է VII դարի սկզբին։

Նույն հորինվածքն ունի նաև VII դարի 60—70-ական թվականներին իշխան Գրիգոր Մամիկոնյանի կառուցած տաճարն իր նստավայր Արուճում[59]։ Անչինչ տպավորություն է թողնում դրա հոյակերտ ինտերիերը, որտեղ երկու զույգ հզոր, վերասլաց որմնամույթերի վրա հենվող գմբեթակիր կամարները պարփակված են լայնանիստ, առագաստային սահուն փոխանցումներով, որոնց վրա ժամանակին բարձրացել է կառույցի վրա գերիշխող գմբեթը։

Դահլիճից ստացվող ընդհանուր հանդիսավոր տպավորությունն ավելի է ուժեղանում ներքին տարածությունների ավարտող ընդարձակ և բարձր աբսիդի շնորհիվ։ Այն եզակի երևույթ է իր երեք, համեմատաբար ցած դասավորված լուսամուտներով և ժամանակին աբսիդն ամբողջությամբ ծածկող որմնանկարներով (այստեղ կենտրոնում նկարված են եղել Քրիստոսի՝ մոտ 7 մետր բարձրություն ունեցող պատկերը, իսկ նրանից աջ ու ձախ՝ առաքյալների դիմանկարները)[60]։

Երկայնական և կենտրոնագմբեթ տիպերի սինթեզի հաջորդ դրսևորումն են եռանավ հորինվածքների գմբեթավորման հիման վրա մշակված կառույցները։ Այս պրոցեսը, ինչպես ցույց են տալիս հուշարձանները, անցել է բարդ, հակասություններով լի ուղի։ Բանն այն է, որ այժմ գմբեթը պետք է դրվեր ոչ թե արտաքին պատերին հպված մույթերի վրա, այլ հենվեր արդեն առանձին կանգնած մույթերին, մի բան, որը սեյսմիկ ուժերի ակտիվ գործունեության այնպիսի մի երկրում, ինչպիսին Հայկական լեռնաշխարհն էր, բնավ էլ հեշտ գործ չէր։ Վերը նշվեց, որ փորձերն այդ ուղղությամբ կատարվել էին արդեն V դարի վերջում (Տեկոր), երբ գմբեթավորվել էր երկու զույգ մույթ ունեցող հնավանդ բազիլիկան։ Այս սիստեմն իր առավել բարձր գեղարվեստական մարմնացումը գտավ VII դարում կառուցված մի շարք հոյակապ տաճարներում[61]։ Մեզ հասած հուշարձաններից առավել վաղ թվագրություն ունի Մրենի տաճարը (623—630)։ Համարյա նույն ժամանակ է կառուցվել Գայանեի տաճարը՝ Վաղարշապատում (630)։ Այս շենքերում չորս հաստահեղույս գմբեթակիր մույթերը բարձրանում են ժողովրդին հատկացված համարյա քառակուսի տարածության կենտրոնում, իրենց վրա կրելով համեմատաբար ոչ մեծ տրամագիծ ունեցող գմբեթներ։ Արևելյան կողմում գտնվում է համեմատաբար ցածրադիր աբսիդը, որի երկու կողմերում դասավորված են ուղղանկյուն ավանդատները։ Եթե Կամսարական իշխանների կառուցած Մրենի տաճարը մեզ է հասել առանց որևէ էական վերակառուցման, ապա Գայանեի տաճարն զգալի

59 *Б. М. Арутюнян,* По поводу датировки храма в Аруче, Ереван, 1941.

60 *Л. А. Дурново,* Очерки изобразительного искусства средневековой Армении, М., 1979, стр. 42.

61 *С. Х. Мнацаканян,* К вопросу о генезисе крестовокупольных храмов Армении и Византии, *ՊԲՀ, 1978, № 1, էջ 125։*

վերափոխումներ է կրել, հատկապես XVII դարում։ Այդ ժամանակ էլ վերակառուցվել են բոլոր ծածկերը, ավելի թեք են դարձվել լանջերը, իսկ արևմտյան կողմում ավելացվել է սյունասրահ-զանգակատունը։ Սակայն, չնայած այդ ամենին, տաճարը չի կորցրել VII դարի համաչափությունների հմայքը։ Այն իր պարզ, հստակ ճակատներով ու ծավալային զուսպ ձևերով արտակարգ տպավորություն է թողնում և իրավամբ համարվում է հայկական միջնադարյան ճարտարապետության ամենաբարձրարժեք գործերից մեկը[52]։

Նույն այս չորս կենտրոնական մույթեր ունեցող հորինվածքի հիման վրա է մշակված Բագավանի (631—639) տաճարը Բագրևանդ (այժմ՝ Ալաշկերտ) գավառում։ Այն կառուցվել է ճարտարապետ Իսրայել Գոռաղճեցու կողմից և իր հսկայածավալ չափերով (27×46 մետր) հավասարը չունի VII դարի կառուցվածքների շարքում։

Սակայն լայնածավալ, ընդարձակ ներքին տարածություններ ունեցող հուշարձանների ճարտարապետական ձևերի մշակումը չսահմանափակվեց երկու զույգ մույթեր ունեցող տիպերի շրջանակներում։ Վերը նշվեց, որ հայ ճարտարապետները դեռևս VI դարի կեսերին ձեռնարկել էին գմբեթավորելու երեք զույգ մույթեր ունեցող բազիլիկատիպ կերտվածքը և վեր խոյացրել գեղարվեստական բարձր արժանիքներով օժտված այնպիսի մի ուշագրավ կառույց, ինչպիսին էր Օձունի տաճարը[63]։ Այստեղ դեռևս պահպանվել են հնավանդ բազիլիկայի ձգված համաչափությունները, սյունասրահի բաց աբսիդը, սակայն դրա հետ միասին առկա են արդեն չորս գմբեթակիր հզոր մույթերը և բուն գմբեթի բավական զարգացած կոնստրուկտիվ ձևերը։ Իվ որպես հիշողություն բազիլիկայի երրորդ զույգ մույթի, տաճարի արևմտյան կողմում տեղադրվել է մի զույգ ևս, սակայն անհամեմատ փոքր մույթեր, որոնց նպատակն էր հնարավորին չափ փոքրացնել արևմտյան կողմի կամարների թռիչքները։ Արդեն հաջորդ կառույցներում (Դվին, Թալին) դրանք միաձուլվում են արևմտյան պատին, վերածվելով զգալի ելուստ ունեցող որմնամույթերի։

Եռանավ հորինվածքների գմբեթավորման հիման վրա մշակվեց նաև սկզբունքային մի նոր տիպ, Դվին—Թալինի տիպի կառույցներն են դրանք, որոնցից հնագույնը՝ Դվինի գմբեթավոր տաճարը (VII դարի սկիզբ), ստեղծվել է Դվինի հնավանդ մեծ բազիլիկայի արմատական վերակառուցման ճանապարհով[63]։ Դժբախտաբար այս հուշարձանից չնչին մնացորդներ են պահպանվել։ Անհամեմատ ավելի լավ է պահպանվել նույնատիպ Թալինի տաճարը, կառուցված արդեն VII դարի երկրորդ կեսում։ Կառուցվածքի ընդհանուր հորինվածքում որոշակիորեն շեշտված է արևմուտք-արևելք ուղղությունը։ Ինտերիերը մշակված է շատ զուսպ և հիմնական արտահայտչամիջոցներն են քարային կոնստրուկցիաները և մեծ խնամքով իրականացված պատի որմածքը, երբ ճիշտ հորիզոնական շարքերը ռիթմիկ կերպով հաջորդում են միմյանց, իսկ լավ նկատելի եզրակոսները որոշակի տարածական մասշտաբ են ստեղծում։ Տաճարի պատերը հետագայում (սակայն VII դարից ոչ ուշ) ծածկվել են շքեղ որմնանկարներով, որոնցից, դժբախտաբար, առանձին մնացորդներ են սոսկ պահպանվել։ Հոյակապ տեսարան է բացվում այցելուի առջև, երբ նա մտնում

62 *А. Л. Якобсон,* Очерк истории зодчества Армении V—XVIII веков. М.—Л., 1950. *О. Х. Халпахчян,* Архитектурные ансамбли Армении, М., 1980, стр. 101.

63 Գ. Շախկյան, *Օձունի եկեղեցին, Երևան, 1983, էջ 160։*

է տաճար գլխավոր, արևմտյան մուտքից։ Դիտողից աջ և ձախ վեր են խոյանում լայնանիստ, բարձր կամարներ, որոնք և ուղղում են նրա հայացքը դեպի հեռվում բացվող աբսիդը, դեպի վերասլաց, լուսավոր գմբեթը։ Վերջինիս թըմբուկի 12 նիստերում էլ բացվում են բավական մեծ լուսամուտներ, իսկ բուն գմբեթի ներքին մակերեսը մասնատված է եղել նուրբ կամարներով։ Ակնհայտ է ծավալների զգալի կուտակումն արևելյան կողմում։ Պարզ է դառնում, որ ճարտարապետը սկզբից իսկ խուսափել է ընդհանուր սիմետրիկ լուծումից և մշակել ծավալների դինամիկ շարժման խիստ ուշագրավ հորինվածք։

Առանձին վարպետությամբ է մշակված տաճարի արևմտյան ճակատը, այն մասնատող երկու խորշերի, հանդիսավոր շքամուտքի և ճոխ պսակներ ունեցող բոլորաձև լուսամուտների միջոցով։ Ուշագրավ են խորշերի մեջ տեղավորված վերասլաց զույգ որմնասյուները, որոնք ժամանակին կրել են քանդակներ կամ թևավոր խաչեր։ Այդ են վկայում դրանց խոյակների վրա արված հատուկ անցքերը, հար և նման հուշասյուների խոյակների վերին հարթությունների վրա եղած անցքերին։

Հսկայածավալ կառույցները բնորոշ մնացին միայն վաղ միջնադարին։ Պատմական հաջորդ փուլերում, երբ ճարտարապետության զարգացումն ընթանում էր համեմատաբար փոքր շենքերի կառուցման շրջանակներում, նման խոշոր չափերի հուշարձաններ այլևս չկառուցվեցին։

VI—VII դդ. ճարտարապետության մեջ իրենց ուրույն տեղն ունեն մեմորիալ հուշարձանները։ Դրանք են՝ կոթողներն ու հուշասյուները, մոնումենտներն ու դամբարանները, կառույցներ, որոնց ձևերում, առավել քան որևէ այլ տեղ, նկատելի են անտիկ ճարտարապետությանը բնորոշ ձևերի արձագանքները։ Կոթողներն ունեն պարզ և հստակ հորինվածք։ Աստիճանավոր ստիլոբատի վրա դրվում էր զգալի չափեր ունեցող միակտուր քարից կերտված խորանարդային պատվանդանը, որի վերին հարթության մեջ բացված անցքի մեջ էլ սովորաբար ագուցվում էր դարձյալ միակտուր քարից պատրաստված, 2—4 մետր բարձրությամբ քառակող կոթողը։ Վերջինս երբեմն պսակվում էր ոչ մեծ թևավոր խաչով[64]։

Կոթողները բնորոշ են իրենց հարուստ պատկերագրական ձևավորմամբ[65], ընդ որում ընդհանուր քրիստոնեական սյուժեների հետ միասին դրանց կողերի վրա հանդիպում են նաև տեղական սրբերի պատկերաքանդակներ։

Եթե հայկական վաղ միջնադարյան կոթողների ընդհանուր ծավալային կառուցողական լուծումն առնչվում է ուրարտական կոթողների հետ, ապա մեմորիալ հուշարձանների մյուս, ոչ պակաս տարածված տիպում ակնհայտ են արդեն համանման անտիկ հուշարձանների ձևերի արձագանքները։ Մենք նկատի ունենք հուշասյուները, որոնք արդեն զգալի չափեր ունեցող կառույցներ են, և արտահայտչականության պրոբլեմն այստեղ լուծվում է հիմնականում ճարտարապետական ձևերի միջոցով։ Այստեղ ևս առկա են աստիճանաձև ստիլոբատը և խորանարդաձև ամուր պատվանդանը։ Սակայն վերջինիս վրա բարձրանում է սյան բունը (Օշականի հուշասյան բունն ունի 3,7 մետր բարձրություն), որը և իր հերթին, պսակվում է զգալի չափերի խոյակով։ Ամբողջ

64 *С. С. Мнацаканян,* Проблемы генезиса и типологии мемориальных памятников древней и раннефеодальной Армении, *ՊԲՀ, 1979, № 4, 1980, № 1։*

65 Բ. Ն. Առաքելյան, *Հայկական պատկերաքանդակները IV—VII դարերում, Երևան, 1949։*

*կերտվածքն, ավարտվում էր մեծ, թևավոր խաչով, դրանց հիանալի օրինակները հայտնաբերվեցին Դվինի պեղումների ժամանակ։*

*Վաղ միջնադարյան մեմորիալ հուշարձանների շարքում իրենց յուրովի ձևերով առանձնանում են Օձունի և Աղուդիի մոնումենտները։ Թեև դրանցից և ոչ մեկը չունի ճիշտ թվագրում, սակայն ոճական վերլուծությունը որոշակի հիմքեր է տալիս Օձունի մոնումենտը թվագրելու դրանից ոչ հեռու գտնվող մեծ տաճարի կառուցման ժամանակներով՝ VI դարի 50—60-ական թվականներով, իսկ Աղուդին՝ VII դարով։*

*Օձունի մոնումենտը կառուցված է մեծ տաճարից հյուսիս, դրա արևելյան ճակատի ուղղությամբ։ Մոնումենտի ստորադաս մասը բարձր, ուղղանկյուն պատվանդան է, որի արևմտյան մասն ամբողջովին գրավում են դեպի վեր տանող աստիճանները։ Հարթակի վրա բարձրանում են համարյա քառակուսի հատվածք ունեցող երեք սլացիկ մույթեր, որոնք զգալի բարձրության վրա միանում են պայտաձև կամարներով։ Այս մույթերի միջև տեղադրված են 4 մետր բարձրություն ունեցող սլացիկ, կանաչավուն ֆելզիտի միակտուր քարերից կերտված քանդակազարդ կոթողներ։ Ամբողջ հորինվածքը պսակվել է պայտաձև կամարների վրա հենվող հարթակով, որի վրա ժամանակին բարձրացել են երեք ոչ մեծ կոթողներ։ Վերջիններից պահպանվել են հարթակի վրա դրված պատվանդանները և կոթողների ստորին մասերը։*

*Արտակարգ հետաքրքրական են կոթողների պատկերաքանդակները[66]։ Եթե արևմտյան կողմում տեղավորված են քրիստոնեական ընդհանուր թեմաներ (ծննդյան, ավետման, մկրտության և այլ տեսարաններ), ապա կոթողների արևելյան կողմում պատկերված է արդեն Հայաստանում քրիստոնեության տարածման լեգենդը՝ Տրդատ թագավորի խոզակերպ դառնալը, Հռիփսիմեի դամբարանը, Տրդատը և նրա քույր Խոսրովդուխտը և ուրիշներ։*

*Միանգամայն այլ հորինվածք ունի Աղուդիի մոնումենտը։ Այստեղ ևս ստիլոբատն ունի միասնական, զանգվածային լուծում, ընդ որում աստիճաններն այստեղ տեղադրված են արևելյան կողմում, իսկ արևմտյան ճակատը մասնատված է երկու բավական խոր, թաղածածկ խորշերով, որոնք, թերևս, խորհրդանշում են մուտքը դեպի ստորերկրյա դամբարանը։ Ահա այդ պատվանդան-հարթակի վրա էլ բարձրանում է երկու մույթերով եզրված կամարակապ հորինվածքը։ Կենտրոնում տեղավորված է սլացիկ համաչափություններ ունեցող մի սյուն՝ հիանալի մշակված խարիսխով և խոյակով։ Իսկ ավելի վեր, ասես կազմելով հորինվածքի երրորդ հարկաբաժինը, տեղավորված է ցածրանիստ, սակայն նրբագեղ մշակված հենակների վրա տեղադրված եռակամարը։*

*Վաղ միջնադարյան ճարտարապետական մշակույթի արտակարգ բարձր մակարդակը մեծապես պայմանավորված էր կառուցողական գործի և շինարարական տեխնիկայի զարգացման աստիճանով, և հայ վարպետները լիովին պատրաստ էին լուծելու այն բարդ խնդիրները, որոնք ծառանում էին նրանց առջև՝ հոյակերտ գմբեթավոր կառույցների շինարարության ժամանակ[67]։*

---

66 Բաբկեն Առաքելյան, *Հայկական պատկերաքանդակները IV—VII դարերում*, Երևան, 1949, *էջ 44—47։ С. С. Мнацаканян,* Рельефные изображения и символика в монументальной пластике Армении раннего средневековья, *«Լրաբեր հաս. գիտ.», 1977, № 6, էջ 62։* Ս. Ս. Մնացականյան, *Հայկական վաղ միջնադարյան մեմորիալ հուշարձանները, Երևան, 1982, էջ 19։*

67 Ս. Բարխուդարյան, *Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ, Երևան, 1963։*

Հայկական շինարարական արվեստը, ինչպես հայ ճարտարապետությունն ընդհանրապես, ամուր կանգնած էր կառուցողական մտքի զարգացման առաջավոր դիրքերում, և հանգուցային շատ հարցեր, որոնք մտահոգում էին բյուզանդական, փոքրասիական, սիրիական ճարտարապետներին, հաճախ առաջին անգամ փայլուն կերպով լուծվում էին հայկական հողի վրա, հայկական հուշարձաններում։ Այդպես էր մեծածավալ ամբողջովին քարակերտ կենտրոնադմբեթ հորինվածքների մշակման պրոբլեմը, որն առաջին անգամ այնպիսի փայլուն լուծում ստացավ հատկապես Զվարթնոցում։ Կոնստրուկտիվ նման բարդ հանգույցների իրականացումը պահանջում էր ժամանակակից մաթեմատիկայի և հատկապես երկրաչափության խոր իմացություն, առանց որի հնարավոր չէր բարդ հորինվածքների և քարային կոնստրուկցիաների ճիշտ տեղաբաշխումն ու նշանագծումը։ Որ հայ ճարտարապետները լիովին տիրապետում էին նաև այդ գիտելիքներին, վկայում են ամենատարբեր հուշարձանների հիմնապատերի, սյուների հիմքերի և կամարային փոխանցումների ինչ-որ սուր գործիքներով արված նշանագծման հետքերը։

Հայ վարպետները VI—VII դդ. նշանակալից հաջողությունների հասան հատկապես գմբեթավոր հորինվածքների և մասնավորապես քարային կոնստրուկցիաների բնագավառում։ Վաղ միջնադարյան հայկական ճարտարապետության առավել բնորոշ հատկանիշներից էր ֆունկցիոնալ և գեղարվեստական կողմերի արտակարգ միասնությունը, բնության հետ ունեցած անքակտելի ու ներդաշնակ կապը, հատկանիշներ, որոնք բնորոշ են միայն դասական արվեստներին։ VI—VII դդ. ճարտարապետական մշակույթը հիմք ծառայեց պատմական հաջորդ փուլերի ճարտարապետական արվեստի զարգացման համար։ Այդ շրջանում մշակված ձևերն էին, որ պատմական նոր պայմաններում ելակետ հանդիսացան ոճական այն նոր ուղղության համար, որը բնորոշում է հայկական ճարտարապետական մշակույթը IX—XIV դարերում։

ԴԼՈՒԽ ՔՍԱՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# ԱՐՎԵՍՏ

## 1. ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

*Վաղ ֆեոդալական դարաշրջանում հայկական արվեստը ստանում է նոր բովանդակություն և նոր կերպարանք։ Այդ վերաբերում է նաև քանդակագործությանը։*

*Անտիկ գծեր ունեցող մշակույթի անկման, հեթանոսական կրոնի և նրա աստվածությունների կուռքերի խորտակման հետ անհետանում է նաև ինքնուրույն քանդակագործությունը։ Այժմ քանդակներն ամբողջովին առնչվում են ճարտարապետական կառուցվածքների և կոթող-հուշարձանների հարդարման հետ, ուստի և երևան են գալիս բարձրաքանդակների և հարթաքանդակների ձևով։ Շենքերի ու կոթողների վրա քանդակվում են զանազան պատկերներ, առանձին տեսարաններ, բուսական և երկրաչափական շատ հարուստ ու բազմազան զարդաձևեր։*

*Զարգացող ֆեոդալական հասարակության կյանքի առանձին կողմերն ու գաղափարախոսությունն ամենից ավելի դրսևորվում են պատկերաքանդակների բնագավառում։ Դրան համապատասխան երևան են գալիս նոր բնույթի աշխարհիկ քանդակներ, իսկ պաշտամունքային քանդակները կապվում են քրիստոնեական կրոնի և գաղափարախոսության հետ։ Քանդակներ են արվում նաև դեռևս հնամենի ավանդական պատկերացումներով՝ առասպելաբանական բովանդակությամբ, որը նույնպես զգալի փոփոխություններ է կրում*[1]*։*

*IV—VII դդ. հայկական քանդակագործության մեջ տիրապետող էին կրոնական պատկերները, ինչպես ինքը՝ քրիստոնեական կրոնն էր իշխում գաղափարախոսության բնագավառում։ Կրոնական քանդակները կոչված էին ամրապնդելու քրիստոնեական հավատքը ժողովրդի լայն զանգվածներում, քանի որ դրանք ակնառու դավանաբանական քարոզ էին բանավոր և գրավոր խոսքի հետ մեկտեղ։ Իզուր չէ, որ քրիստոնեական պատվերահարգ գործիչները գտնում էին, որ պատկերներն ավելի հասկանալի և ազդեցիկ են, քան գրավոր խոսքը՝ գիրքը*[2]*։*

*Կրոնական հրաշապատում առասպելներն ու ավանդությունները պատկերող քանդակներն առավել արտահայտիչ էին, անմիջական ու ավելի մեծ ներգործող ուժ ունեին։ Դա էր պատճառը, որ ամբողջ քրիստոնյա աշխարհը այդ հավատքի տարածման առաջին դարերում ողողվեց նոր հավատքի գլխավոր*

---

1 *Տե՛ս* Բ. Առաքելյան. *Հայկական պատկերաքանդակները IV—VII դարերում, Երևան, 1949։*

2 Մովսէս Կաղանկատուացի, *էջ 212։*

*խորհրդանշանի, խաչի և Հին կտակարանի ու Ավետարանի զանազան պատմըվածքներն ու առասպելներն արտահայտող պատկերներով։*

*Քրիստոնեությունը շատ բան վերցրեց հեթանոսությունից և իրեն հարմարեցրեց. ի թիվս դրանց նա վերցրեց նաև պատկերների, քանդակների միջոցով մարդկանց մտքերի և զգացմունքների վրա ներգործելու կարևոր արվեստը։*

*IV—VII դդ. քանդակների թվում հանդիպում ենք նաև քրիստոնեական շատ տեսարանների՝ Դանիելը առյուծների գբում (Աղցի՝ Արշակունիների դամբարանում, IV դար, Երզնկա, Ավանի, Թալինի և այլ վայրերի կոթողների վրա), մկրտություն (մի շարք կոթողների վրա), Եղիայի համբարձումը, Տիրամայրը՝ մանուկ Հիսուսը գրկին (կոթողների վրա), Թեկղի և Պողոս (Էջմիածնի Մայր տաճարի հյուսիսային պատի վրա դրսից արված քանդակները), Քրիստոս և առաքյալներ (Օձուն, Մրեն, Պտղնի), չորս ավետարանիչներ (Սիսավան), Իսահակի զոհաբերությունը (Անի, Կամսարականների ժամանակի եկեղեցի), հրեշտակներ, սուրբ զինվորներ (կոթողների վրա, Օձունի տաճարի պատերին), սբ. Գևորգը՝ պատկերված վիշապի գլուխը նիզակով ջախջախող հեծյալի տեսքով և այլն*[3]*։*

*Քրիստոնեական այս տեսարանների ու պատկերների կողքին Հայաստանում IV—VII դդ. լայնորեն տարածված է եղել զուտ տեղական մի տեսարան, որն արտահայտել է Հայաստանում քրիստոնեությունն ընդունելու և հայ եկեղեցու սրբագործության հետ կապված Տրդատի և Գրիգոր Լուսավորչի հրաշապատում առասպելը, Հռիփսիմյան կույսերին և Գրիգոր Լուսավորչին հալածող Տրդատ արքայի խոզակերպ դառնալը և ամոքվելը՝ քրիստոնեությունն ընդունելուց հետո (Օձունի նշանավոր կոթողը և մի շարք այլ կոթողներ Ապարանում, Թալինում և այլուր)։*

*Վաղ շրջանի կրոնական քանդակներն արխաիկ տեսք ունեն, դրանց արվեստը պարզունակ է, երբեմն չի պահպանված պատկերների համամասնությունը։ Այդ քանդակները հերալդիկ են, շարժումից, ճկունությունից զուրկ, առանձին պատկերներ քանդակված են* en face *(դեմքով դեպի նայողը), իսկ ոտքերը պրոֆիլ են (կողքից) պատկերված։ VI—VII դդ. քանդակները համեմատաբար ավելի բարձրարվեստ մշակում ունեն, պատկերների դեմքերն ու մարմինները ավելի վարպետորեն են քանդակված։ Պահպանվում է դրանց համամասնությունը, զգեստների ծալքերի դրվագումը, պլաստիկ է (Ագարակի, Թալինի կոթողները, Մրենի արևմտյան մուտքի պատկերները և այլն)։ Որոշ դեպքերում դրանք տրվում են դինամիկ՝ շարժուն ձևերով (Պտղնիի և Օձունի քանդակներից մի քանիսը, մասնավորապես հրեշտակների պատկերները)։ Այս ամենով հանդերձ կրոնական պատկերներն ու տեսարանները պաշտամունքային կանոնիկ տեսք և հորինվածք ունեն, մի հանգամանք, որը խիստ կաշկանդում էր քանդակագործական արվեստի զարգացումը։*

*Կրոնական բովանդակություն ունեցող քանդակները հաճախ պատկերվում են տեղական զգեստներով, ուղեկցվում այնպիսի իրերով, կենցաղային առարկաներով ու սովորություններով, որոնք բնորոշ են մեր ժողովրդի այդ դարաշրջանի կենցաղին. օրինակ՝ Տիրամայրը նստած գահույքի և բարձի վրա, ոտ-*

---

[3] *И. А. Орбели,* Армянское искусство (Новый энциклопедический словарь Брокгауза и Ефрона, т. III). *IV—VII դարերի հայկական քանդակագործության մասին տե՛ս Բ. Առաքելյան, Հայկական պատկերաքանդակները IV—VII դարերում, Երևան, 1949։ Լ. Ազարյան, Վաղ միջնադարյան հայկական քանդակը, Երևան, 1975։*

քերի տակ՝ փոքրիկ աթոռակ, տեղական հարդարանք՝ Տիրամոր գլխին, տեղական ձևի անթև թիկնոց՝ Գրիգոր Լուսավորչի հագին, նվիրատուների երկար ու կողքերից բացվածք ունեցող զգեստներ, ոտքերը ծածկող հաստ վերարկուներ՝ ներքևից պոդավոր, աղեղնաձև կտրվածքով պրկվող վերարկու՝ խոզագլուխ Տրդատի հագին և այլն։

Տեղայնացման ձգտումը որոշ դեպքերում հանգեցրել է վաղ քրիստոնեության շրջանում մշակված ընդհանուր կանոնիկ պատկերների ու տեսարանների խախտման։ Այդպիսին է Իսահակի զոհաբերության տեսարանը, որտեղ խոյը կանգնած է ոչ թե զոհասեղանի մոտ, Աբրահամի կողքին, այլ եղջյուրներով կախված է ծառից (Անի, Կամսարականների ժամանակի բազիլիկ եկեղեցու քանդակը) կամ Տիրամայրը նստած բարձին՝ և արևելյան գլխահարդարանքով, իսկ նրա գրկի մանուկ Հիսուսը մորուքավոր է, քանի որ մորուքն ըստ տեղական հասկացողությունների իմաստության նշան էր (Հառիճի կոթողի քանդակները)։

Դանիելն առյուծների գբում տեսարանը պատկերված է ոչ թե վաղ քրիստոնեական կանոնի համաձայն, երբ առյուծները Դանիելի երկու կողմերում հանդարտ կանգնած լիզում են նրան, այլ մի դեպքում առյուծները կծում են Դանիելի կողքերը (Երզնկայի քանդակը), մյուս դեպքում Դանիելը բռնել է առյուծների ետևի ոտքերից և գլխիվայր կախ գցել, ասես մարտում հաղթել է նրանց (Ավանի կոթողի քանդակները), մի այլ դեպքում Դանիելի փոքրիկ քանդակը խիստ նսեմանում է հզոր առյուծների միջև։ Տեղական արևելյան առասպելաբանության համապատասխան շեշտվում են առյուծների պատկերները (Աղցի՝ Արշակունյաց դամբարանի և Արթիկի շրջանի Փարոս գյուղի կոթողի քանդակները)։

Տեղական ըմբռնումների հետ է կապված և Թալինի մի կոթողի պատվանդանի վրայի քանդակը, որտեղ գահույքի վրա նստած և ոտքերը աթոռակի վրա դրած Տիրամորը հովանի են անում հրեշտակներն իրենց թևերով։

Միանգամայն ինքնատիպ են Օձունի կոթողի վրա փորագրված հարթաքանդակները, որոնք նշանավորում են քրիստոնեության հաղթանակն ընդհանրապես, ավետարանական և այլ պատկերներ, ինչպես և հայերի քրիստոնեություն ընդունելու առասպելը՝ Տրդատ թագավորի խոզագլուխ կերպար ստանալը, Հռիփսիմյան կույսերի դամբարանի կառուցումը, քրիստոնեություն ընդունելը և ապաքինվելը[4]։

Այսպիսով, IV—VII դդ. կրոնական քանդակները, կապված լինելով հարևան երկրների, մանավանդ Ասորիքի ընդհանուր մշակում ունեցող վաղ քրիստոնեական արվեստի հետ, միաժամանակ երևան են բերում տեղական բավականաչափ ցայտուն գծեր և առանձնահատկություններ։

Աշխարհիկ քանդակները շատ չեն, սակայն կարևոր են իրենց բովանդակությամբ։ Դրանք արտահայտում են, մի կողմից՝ իշխող վերնախավի կենցաղը, մյուս կողմից՝ բնակչության առանձին զբաղմունքները։ Ֆեոդալների կենցաղում առանձին տեղ էր գրավում որսորդությունը, որը ոչ միայն իշխող-

4 Բ. Առաքելյան, նշվ. աշխ., էջ 44—47։ Լ. Ազարյան, Վաղ միջնադարյան հայկական քանդակը, Երևան, 1975, էջ 108 և հետո։ Սուրեն Մնացականյան, Հայկական վաղ միջնադարյան մեմորիալ հուշարձանները, Երևան, 1982։ Հեղինակը ենթադրում է, թե Օձունի կոթողների արևելյան կողմում արված քանդակները կարող էին նշանավորել քրիստոնեության ընդունումը ոչ միայն Հայաստանում, այլև Վրաստանում և Աղվանքում, տե՛ս էջ 143։

ների հաճույքի առարկա էր, այլև նրանց ուժի, զորության և խիզախության ցուցադրությունը։ Ինչպես Սասանյան Իրանում, նույնպես և Հայաստանում որսորդությունը կատարվում էր մեծ հանդիսավորությամբ՝ ոչ միայն սարերում, դաշտերում, անտառներում, այլև արքայական հատուկ որսատեղիներում, որոնք լինում էին անտառապատ և պարսպով շրջափակված։ Այդպիսի անտառ-որսատեղիներ հայ արքաններն ունեին երկրի տարբեր մասերում։ Խոսրով Կոտակ արքան (332—338) անտառ տնկեց Ազատ գետի ձորում, Գառնիից մինչև Դվինի մոտերքը և որսարան հիմնեց[5]։ Ղազար Փարպեցին, նկարագրելով Արարատյան դաշտը, թվարկում է նաև այնտեղ հանդիպող որսի բազմաթիվ կենդանիներն ու թռչունները։ Վարազի որսի տեսարանով քանդակի ենք հանդիպում Աղցի Արշակունյաց դամբարանի սալերից մեկի վրա (360-ական թթ.)։ Սակայն այս քանդակն ավելի շատ առասպելական բովանդակություն ունի։ Զվարթնոցում գտնվել է V դ. մի քանդակ՝ առյուծի հետ մենամարտի տեսարանով, որը, դժբախտաբար, վատ է պահպանված։ Պտղնիի VI—VII դդ. եկեղեցու հարավային մուտքի վերևի աղեղի հորիզոնական վերջավորությունների վրա քանդակված է որսի երկու տեսարան. մի դեպքում հեծյալ իշխանը, ըստ մակագրության՝ Մանուել Ամատունին նետ-աղեղով կռվում է առյուծի հետ, իսկ մյուս դեպքում՝ մի հետիոտն երիտասարդ իշխան է կռվում առյուծի հետ։ Ոչ այնքան համաչափ, բայց բավականաչափ դինամիկ այս պատկերները, ինչպես և Աղցի ու Զվարթնոցի վերոհիշյալ քանդակները, հիշեցնում են սասանյան արծաթյա թասերի վրա դրվագված որսի տեսարանները։

Իշխողների կենցաղն արտահայտող քանդակ է նաև իշխանի շքերթը։ Այդպիսի մի քանդակ գտնվել է Անիից ոչ հեռու Ծալայի ձորում։ Խրոխտ ձիու վրա նստած, հանդիսավոր երթով ընթանում է իշխանը, որի առջևից գնում է մունետիկը, իսկ ետևից՝ զինակիրը։ Հեծյալ ֆեոդալի երթի մի տեսարան էլ քանդակված է Մրենի եկեղեցու հյուսիսային մուտքի բարավորի վրա։ Իշխանն այստեղ նոր միայն իջել է սանձով-թամբով ձիուց և դիմում է իրեն ընդառաջ եկող պատանուն, որը կրում է խաչագավազան։ Իսկ սրան հետևում է ևս մի պատկեր՝ բուրվառը ձեռքին։ Բարավորի աջ եզրին քանդակված է կենաց ծառը։

Իշխանները սովորություն ունեին իրենց անունները հավերժացնել եկեղեցիներ կառուցելով և դրանց վրա իրենց քանդակները փորագրել տալով (կտիտորական քանդակներ)։ Այդպիսի քանդակներ ևս մեզ հասել են։ Տեկորի տաճարի արևելյան պատի վրա քանդակված է եղել Կամսարական Սահակ իշխանի կիսանդրին, որը խիստ եղծված է, սակայն բավարար են պահպանված նույն Կամսարական տոհմի երկու իշխանների քանդակները՝ Մրենի տաճարի արևմտյան գլխավոր մուտքի երկու կողքերին։ Այս քանդակների կոմպոզիցիոն կենտրոնում զետեղված են չորս սրբապատկերներ։ Կամսարական իշխանների պատկերները թեև քանդակված են ամբողջ խմբի երկու ծայրերին, մարմնով հակված և ձեռքերը պարզած դեպի սրբապատկերները՝ աղոթողի տեսքով, սակայն պատկերված են ամբողջ հասակով. ցայտուն շեշտված է նաև նրանց իշխանական զգեստավորումը և դիմանկարային տարբերությունը։ Մուտքի ձախ կողմում իշխանի դեմքն ավելի խոշոր է՝ ձվածիր բոլորակ և կրում է որոշ

---

5 Փավստոս Բուզանդ. նշվ. աշխ., Վենետիկ, 1889, էջ 18։

չափով անտիկ գծեր, մինչդեռ աջ կողմի պատկերի դեմքն ավելի փոքր է, գլուխը ծածկված է արևելյան հարդարանքով, թերևս սա իշխանուհու պատկեր է։

VII դարի երեսնական թվականներին քանդակված այս պատկերների կատարման արվեստը թեև շատ բարձր չէ, սակայն դրականապես տարբերվում է IV—V դդ. շատ ավելի պարզունակ պատկերներից։

Կտիտորական քանդակների շարքում ուշագրավ է Սյունյաց Կոհազատ իշխանի քանդակը, որի կողքին գտնվում են Սյունյաց Հովսեփ եպիսկոպոսի և Թոդորոս վանականի պատկերները, բոլորն էլ համապատասխան մակագրությամբ[6]։ Հոգևորականները պատկերված են վեղարով, հորիզոնական շերտեր կազմող ծալքավոր թիկնոցով, իսկ Կոհազատը՝ իշխանական զգեստով։ Նրա բեղ ու մորուքով զարդարված ձվածիր դեմքը դիմանկարային բնույթ ունի։ Նույնը կարելի է ասել նաև Հովսեփ եպիսկոպոսի և Թոդորոս վանականի քանդակների մասին, որոնք երևան են բերում ոչ միայն հասակային, այլև շատ որոշակի դիմանկարային տարբերություններ։ Բնորոշ է, որ նույն ժամանակներում (VII դարի վերջին քառորդ) և նույն տաճարի վրա արված չորս ավետարանիչների քանդակները պարզապես դիմանկարային չեն և զիջում են աշխարհիկ քանդակներին։

Աշխարհիկ քանդակների շարքում ուշագրավ են բնակչության զբաղմունքին վերաբերող պատկերները։ Միանգամայն բնական է, որ դրանց թվում կան խաղողի մշակման և բերքահավաքի հետ կապված քանդակներ։ Նման տեսարան քանդակված է Դվինում գտնված մի սալի վրա, որն, անշուշտ, քաղաքի նշանավոր շենքերից մեկի, թերևս Մայր տաճարի մուտքերից մեկի բարավորն է եղել։ Պահպանվել է սալի ձախ կեսը։ Սալի կենտրոնում քանդակված խաչի հիմքից դուրս գալով, քարի մակերեսը բռնում է խաղողի պտղաբերած որթը, երկար գոտևոր, բայց բոլորովին հարթ զգեստով մի կին կռացած՝ խաղող է քաղում, իսկ գոտկատեղից ցած հորիզոնական ծալքեր ունեցող զգեստով մի այլ կին ուսին դրած տանում է խաղողով լիքը զամբյուղը[7]։ Կյանքից վերցված և մինչև օրս էլ շատ սովորական այս տեսարանն ավելի ամբողջական կլիներ, եթե քարի մյուս կեսը ևս գտնվեր։ Քանդակի արվեստը դեռևս պարզունակ է, պատկերների համամասնությունը՝ խախտված։ Այս կոմպոզիցիայի նախատիպը գտնում ենք Քասաղի IV դարի եկեղեցու հարավային, մանավանդ արևմըտյան մուտքերի բարավորների վրա, սակայն, եթե Քասաղում այն կրում է առասպելաբանական խորհրդանշական բնույթ, ապա Դվինում այն իրական-կենցաղային կերպարանք ունի։

Բնակչության զբաղմունքի հետ կապված բազմաթիվ քանդակների ենք հանդիպում Զվարթնոցի հռչակավոր տաճարի (VII դարի կես) առաջին հարկի պատերին՝ դրսից։ Դրանք խաղողի և նռան պտղաբերած ճյուղերից կազմված քանդակների շքեղ գոտուց անմիջապես ցած տաճարի կամարաղեղների միջև գտնվող եռանկյունիների վրա քանդակված մարդկային պատկերներ են՝ ձեռքերին զանազան գործիքներ։ Բահը և կեռ կտրիչով ու բութ կրունկով այգեգործական դանակը, որը լավ հայտնի է դեռևս անտիկ շրջանից, ցույց են տալիս, որ պատկերներից գոնե մի քանիսը կապվում են այգեգործության հետ։ Բայց Զվարթնոցի մարդկային քանդակների ձեռքերին կան նաև քար մշա-

---

6 Ս. Մնացականյան, *Սիսավանի պատկերաքանդակները և տաճարի կառուցման ժամանակը*, «Լրաբեր հաս. գիտ.», № 10, 1961, էջ 63—76։

7 Կ. Ղաֆադարյան, *Դվին քաղաքը և նրա պեղումները*, էջ 144—145։

կելու գործիքներ, ուստի պետք է ենթադրել, որ քանդակների մի մասն էլ պատկերում են քարտաշ, քանդակագործ, շինարար վարպետներին։

Քանդակների տեղը (կամարաղեղների հատման եռանկյունի մակերեսը) հնարավորություն չի տվել քանդակելու նաև պատկերների ոտքերը, բայց զգեստների ձևերը պարզ երևում են։ Ուշագրավ է, որ այդ զգեստները շատ էլ երկար չեն և մեծ մասամբ ունեն ուղղահայաց խոշոր ծալքեր, որոնց կապն անտիկ արվեստի հետ ակնբախ է։ Պատկերներն իրարից տարբերվում են ոչ միայն զգեստների ձևերով, այլև դիմանկարներով։ Թեև դեմքերը եղծված են, բայց և այնպես նրանց տարբերությունն ակնհայտ է՝ կլոր դեմքով երիտասարդների կողքին կան ձվաձև դեմքով տարեց մարդիկ և մորուքավոր, երկար դեմքով ծերունիներ։ Հաշվի առնելով քանդակների նկատելի պարզունակությունը, կարելի է ենթադրել, որ գործ ունենք ոչ միայն անհատական դիմանկարային տարբերությունների, այլև հայ արվեստին բնորոշ ոճական միասնության մեջ ներկայացվող բազմազանության դրսևորման հետ։

IV—VII դդ. մեզ հասած աշխարհիկ քանդակների թիվը սահմանափակ է, սակայն դրանք արտահայտում են այդ դարերի հասարակական կյանքի ու կենցաղի մի քանի էական կողմերը, ընդ որում առավել կամ նվազ չափով ռեալիստական են իրենց թե՛ բովանդակությամբ, թե՛ ձևով։ Դրանց արվեստը դեռևս ցածր մակարդակի վրա է, սակայն աշխարհիկ պատկերներն ավելի դինամիկ են, քան քարացած տեսք ունեցող կրոնական քանդակները։ Նկատելի է, որ կրոնական քանդակները VII դարի մոնումենտալ շենքերի վրա հազվագյուտ են, մինչդեռ աշխարհիկ քանդակների թիվը համեմատաբար մեծ է։

Մեզ են հասել նաև առասպելական և խորհրդանշական (սիմվոլիկ) բնույթի քանդակների նմուշներ։ Հասարակական մտքի զարգացման այն աստիճանում, որն առկա էր վաղ քրիստոնեական դարերում, առասպելաբանությունն արդեն բավական երկար ճանապարհ էր անցել և ավելի բարդ ու վերացական կերպարանք ընդունել. մասնավորապես տարածված էին մարդկանց կոսմոգոնիական ըմբռնումները, որոնք ստացել էին նոր կերպարանք։ Այսպես, գոյացան քրիստոնեական առասպելները և սիմվոլիկան, որոնք ժողովրդական լայն շրջաններում երկար ժամանակ բնավ էլ չկարողացան փոխարինել հնամենի և ավելի խոր արմատներ ունեցող ավանդություններին։

Աղցի Արշակունյաց դամբարանի քանդակների մեջ կարելի է տեսնել ծննդի ու մահվան, լույսի ու խավարի հակադրություններին վերաբերող և կոսմոգոնիական բնույթ ստացած հակասությունների արտահայտությունը։ Ծննդի գաղափարն են նշանավորում դամբարանի մուտքի պարակալի վրա քանդակված, վզերով իրար փաթաթված արագիլները կամ կռունկները (ծնող զույգ), բայց ավելի հետաքրքրական է քանդակներից մեկը, որը պատկերում է որսի տեսարան։ Որսորդը նիզակով հուժկու հարված է իր դեմ ծառս ելած վարազին, իսկ որսի երկու շներից մեկը բռնել է վարազի ետևի ոտքից։ Մյուսը ցատկելով վարազի գլխին, բռնել է ականջից։ Պայքարը վարազի դեմ առասպելական բնույթ ունի, քանի որ վարազը նշանավորում է մութը, խավարը և ըստ կոսմոգոնիական հասկացությունների խավար աստղ է երկնակամարում, իսկ որսորդն իր երկու շներով կարող է նույնացվել քաջարի որսորդ Հայկ-Օրիոնի հետ, որն իր երկու շներով հալածում է գազաններին ու կենդանիներին[8], ապա նույ-

---

8 Բ. Առաքելյան, Հայկական պատկերաքանդակները IV—VII դարերում, էջ 78—85։

*նացվում է հարավային համաստեղություններից մեկի՝ Օրիոնի հետ։ Հայկ-Օրիոնը երկնքում էլ իր երկու շների հետ միասին (Մեծ Շուն, Փոքր Շուն համաստեղություններ) շարունակում է հալածել կենդանիներին՝ աստղերին։ Հայկը լուսավոր է, ուստի նրա պայքարը վարազի հետ արտահայտում է լույսի ու խավարի դուալիստական հակադրությունը (Հայկ-Օրիոն համաստեղությունը լավ է երևում հատկապես ձմեռվա ամիսներին և Մեծ Շուն համաստեղության հետ իշխում է հարավային երկնակամարում), երբ հարավային կիսագնդում ամառնամուտ է, իսկ հյուսիսում՝ բնությունը քուն է մտնում, մահն էլ (քանդակը դամբարանում է) դիտվում է իբրև քուն մտնել։ Այս առումով պատահական չեն նույն դամբարանի մուտքի վրա քանդակված եղջերուները, որոնք նշանավորել են երկնային արքայության կարոտը և հանգիստը։*

*IV—VII դդ. քանդակների մեջ հանդիպում են կենդանիների ու թռչունների բազմաթիվ պատկերներ, որոնք նույնպես առասպելաբանական և սիմվոլիկ բնույթ ունեն։ Կենդանիներից հանդիպում են եղջերուն (Աղց, Ապարան), եղնիկը (Տոպք գյուղ՝ Գուգարքում), խոյը (Երերույք), ցուլը (Աղց, Ծպնի, Անի), գազաններից՝ առյուծը (Զվարթնոց, Պտղնի, Տոպք, Էլար), հովազը (Ծպնի), թռչուններից հանդիպում են աղավնին, արագիլը կամ կռունկը (Աղց), սիրամարգը (Կողբ, Դվին), փասիանը (Պտղնի), արծիվը (Պտղնի, Զվարթնոց, Էլար)։*

*Առասպելական կենդանիներից հանդիպում են գրիֆոնը (Եղվարդ), վիշապը (Իրինդ)։ Սոսկ այս թվարկումն իսկ ցույց է տալիս, որ խոսքը վերաբերում է այնպիսի կենդանիների, գազանների, թռչունների, որոնց հին ժամանակներում վերագրում էին զանազան առասպելական ու սիմվոլիկ հատկություններ։ Դրանց մեծ մասը կապված է հին աշխարհում կյանքի հիմքը համարվող չորս տարրերի (հող, ջուր, օդ, կրակ) և կոսմոգոնիական հասկացությունների հետ։ Դրանք կամ աստղերի կամ կենդանիների նշանակներն են։ Նախնադարյան հասարակության դարաշրջանի կենդանակերպ աստվածությունների ու խորհրդանշանները վաղուց արդեն մարմնավորում էին կոսմոգոնիական ավելի բարդ ու վերացական հասկացություններ, ուստի նրանց վերագրվում են ոչ միայն բնապաշտական հասկացություններ, այլև զորություն կամ միջամտություն՝ ծննդի, կյանքի, բախտի կամ դժբախտության, մահվան և այլ հարցերում։ Անանիա Շիրակացին, պայքարելով հեթանոսական սնահավատությունների դեմ, ասում է, թե քրմերը չկարողացան վերահասու լինել կենդանակերպ պատկերվող երկնային զարդերի (համաստեղությունների, աստղերի, մոլորակների) իմացությանը, նրանց աստված համարեցին և մարդկանց բախտի բաշխման ու ծննդի վրա իշխանություն վերագրեցին[9]։*

*Առանձնապես մեծ դեր է վերագրվում տասներկու կենդանակերպերին (զոդիակ)։*

*Կոսմոգոնիական ըմբռնումների և կենդանակերպերի հետ կապվել են նաև օրացուցային առավել նշանավոր երևույթները, դրանց թվում գարնան օրահավասարը, որը համարվում էր նոր տարվա սկիզբը և կապվում ամանորի հետ։ Նոր տարվա մուտքը պատկերված է առյուծի և ցուլի պայքարի տեսարանով կամ առյուծի հարձակումով եղնիկի վրա։ Նման տեսարաններ հանդիպում են նաև Հայաստանում՝ IV—V դարերում։ Անիից ոչ հեռու, Ծպնի գյուղի եկեղեցու պատի վրա, հանդիպում ենք դեմդիմաց քանդակված ցլի և առյուծի կամ*

---

9 Անանիա Շիրակացի, *Տիեզերագիտություն և տոմար*, Երևան, 1940, էջ 19։

հովազի պատկերների, որոնք, ասես, պատրաստվում են հարձակվելու միմյանց վրա, իսկ Ծոպք գյուղի եկեղեցու քանդակները պատկերում են եղնիկներ, որոնց հետապնդում են առյուծները։ Այս տեսարաններն, անշուշտ, կապվում են վերը նշված առասպելաբանության հետ։ Սիմվոլիկ նշանակություն ունեն նաև Զվարթնոցի հոյակապ խոյակները, որոնք պսակել են տաճարի չորս հզոր մույթերի դիմացի չորս սյուները։ Թևատարած արծիվների պատկերները քանդակված են մեծ արվեստով և չափազանց արտահայտիչ են։ Քրիստոնեական սիմվոլիկայի մեջ հայտնի են ցուլը, առյուծը և արծիվը իբրև ավետարանիչների խորհրդանշաններ, սակայն, Ծպնիի, Ծոպքի, նույնպես և Զվարթնոցի քանդակներն ամենևին չեն կապվում քրիստոնեական սիմվոլիկայի հետ, մինչդեռ դրանց կապը հեթանոսական առասպելաբանության հետ, ակնհայտ է։ Ինչպես ցուլին, առյուծին, նույնպես և արծվին վերագրվում էին մի շարք առասպելական ըմբռնումներ։ Արծիվը, օրինակ, հին պատկերացումներով կապվում է երկնքի, արևի աստծո և գարնանամուտի հասկացությունների հետ։

Իհարկե, կենդանիների և թռչունների քանդակների մեջ հանդիպում են նաև քրիստոնեական սիմվոլիկայի հետ կապված պատկերներ, ինչպես, օրինակ, եղջերուն՝ իբրև երկնային արքայության կարոտի նշան, աղավնին՝ որպես հոգու հավիտենական խաղաղության նշան և այլն։ Սակայն վաղ քրիստոնեական այդ դարերում հնամենի ավանդությունների ու կոսմոգոնիական ըմբռնումները շատ ավելի զորեղ էին, և քրիստոնեությունը շատ բան էր վերցնում այդ հին, բազմազան ու հարուստ ավանդությունների շտեմարանից։

Հայկական քանդակագործության մեջ IV—VII դդ. կար մի ասպարեզ, որտեղ ժողովրդի ստեղծագործական տաղանդը զարգանում էր անկաշկանդ։ Դա բուսական և երկրաչափական զարդաքանդակների բնագավառն էր։ Այդ քանդակներն արվում էին շենքերի մուտքերի, քիվերի, պատուհանների պսակների[10], սյուների և որմնասյուների խոյակների և այլ մանրամասների, ինչպես և դամբարանային կոթողների ու այլ հուշարձանների վրա։ Երկրաչափական ձևերը շատ բազմազան են՝ աղեղներ, շրջանակներ, իրար հատող շրջանակներ, պարանաձև և կողովաձև հյուսվածքներ, համակենտրոն քառակուսիներ, սրտաձև պատկերներ, քիվերի ատամներ և պատուհանի ատամնավոր պսակներ, գլանդիկներ, ալիքաձև գծերի համադրություններ, մեղվի բջիջներ հիշեցնող խմբեր և այլն։ Դրանք քարի վրա արված բավականաչափ ռելիեֆ խոշոր և ցայտուն (մոնումենտալ) քանդակներ են, որոնք տարբերվում են հետագա դարերի մանրացված և ասեղնագործական բանվածքի նմանող ձևերից։ Երկրաչափական քանդակներն արված են բարձր արվեստով և դրանց հմայքը պարզ, մոնումենտալ և արտահայտիչ ձևերի մեջ է։ Երկրաչափական քանդակների թվին են պատկանում բոլորակ շրջանակների մեջ առնված խաչերը, որոնք զուգորդվում են վարդյակի պսակաթերթերի հետ։ Այդ ցույց է տալիս, որ հեթանոսական շրջանի վարդյակաձև նշանն է խաչի փոխարկվել։ Զգալի է նաև առանց շրջանակի խաչերի թիվը։

Բուսական քանդակները նույնպես բազմազան են։ Այստեղ հանդիպում են ոչ միայն ուշ անտիկ և վաղ քրիստոնեական դարաշրջաններում լայնորեն տարածված ականթի տերևները, արմավենու ճյուղերը, վարդյակները, ցածից երկու տերև ունեցող բողբոջը, բողբոջի կամ ծաղկի ուղղահայաց կտրվածքը,

---

[10] *Н. М. Токарский,* Архитектура Армении IV—XIV вв., Ереван, 1961, стр. 151—169.

*երեքից յոթ և ավելի տերևներ ունեցող ճյուղն իր բազում տարբերակներով, որը երբեմն ավարտվում է բողբոջով կամ պտղով։ Բազմազան են նաև ոճավորված և համարյա երկրաչափական տեսք ունեցող բուսական զարդաձևերը։*

*Հայկական բուսական քանդակների շարքում առանձին տեղ են գրավում խաղողի և նռան քանդակները, որոնք հիացմունք են առաջացնում իրենց կատարելությամբ, պարզ, ցայտուն և արտահայտիչ ձևերով։ Պատկերված են ինչպես խաղողի տերևներն ու ողկույզը, նռան պտղավորված ճյուղերն ու առանձին պտուղը, նույնպես և խաղողի ամբողջական որթը և նռան՝ պտուղներով ծանրաբեռնված թուփը*[11]*։ Զվարթնոցի խաղողի քանդակներն այնքան իրական տեսք ունեն, որ դրանց տերևների և ողկույզների օգնությամբ կարելի է որոշել Հայաստանում մշակվող խաղողի մի քանի տեսակները։ Մեծ արվեստով են կատարված նաև նռան թփի, ճյուղերի ու պտուղների քանդակները։ Զվարթնոցի արտաքին կամարաղեղների վրա քանդակված են ¾ բոլորակությամբ հսկայական նռներ, որոնք կախվում են այդ նույն աղեղների միջև քանդակված այգեգործներ և շինարարներ ներկայացնող մարդկային պատկերների գլխավեբեվում։ Ժողովրդական տնտեսության մեջ և կենցաղում խոշոր նշանակություն ունեցող խաղողը, մյուս բույսերը, նուռը քանդակների մեջ տեղ են գրավել միանգամայն բնականորեն, սակայն այդ քանդակների իմաստն ու խորհուրդը դրանով չէր սահմանափակվում։ Բուսական զարդաձևերը, մանավանդ բողբոջը, ծաղիկը, բողբոջի ու ծաղկի կորվածքը, վարդյակը, նռան պտղաբերած ճյուղերն ու թփերը ժողովրդական ըմբռնումների մեջ խոր արմատներ ձգած արգասավորության, պտղաբերության և բերրիության սիրված մոտիվներն էին։*

*Վաղ ֆեոդալական դարաշրջանի հայկական քանդակագործությունը բավական ցայտուն է անդրադարձնում հայ հասարակական կյանքը, կենցաղը, մանավանդ բնակչության ավանդական պատկերացումների, ըմբռնումների, հին հեթանոսական և նոր քրիստոնեական պաշտամունքի, այլ խոսքով՝ ժամանակի հասարակական մտքի տարբեր կողմերը։*

*IV—VII դդ. հայկական քանդակագործությունը՝ սկսած Աղցի, Քասաղի, Երերույքի ցածրարվեստ ու պարզունակ քանդակներից մինչև Մրենի, Ծպնի և Զվարթնոցի բարձրարվեստ քանդակները՝ անցել է զարգացման և ձևերի կատարելագործման նշանակալից ուղի և աչքի ընկնող տեղ է գրավում հայ մշակույթի պատմության մեջ։ Լինելով վաղ ֆեոդալական հայ մշակույթի բաղկացուցիչ մասը, քանդակագործությունը մի կողմից անդրադարձրել է նախորդ դարաշրջանի արվեստի ազդեցությունն ու մի շարք գծերը, մյուս կողմից՝ Հայաստանի մշակութային կապերը հարևան երկրների հետ և, վերջապես՝ նախադրյալ է հանդիսացել հայ արվեստի զարգացման համար հաջորդ դարաշրջանում։*

## 2. ԽՃԱՆԿԱՐ ԵՎ ՈՐՄՆԱՆԿԱՐ

*Ճարտարապետական հուշարձանների գեղարվեստական ներքին հարդարման առավել ցայտուն և արտահայտիչ ձևերից էին խճանկարը (մոզաիկա) և որմնանկարը։*

---

11 Թորոս Թորամանյան, *Նյութեր հայկական ճարտարապետության պատմության*, հ. II, էջ 82—83։

IV—VII դդ. խճանկարներ Հայաստանում հայտնաբերվել են Դվինի և Էջմիածնի մայր տաճարներում, Զվարթնոցում, իսկ Հայաստանից դուրս հայերեն արձանագրությամբ խճանկարներ կան Երուսաղեմում։

Խճանկարչությունը նորություն չէր վաղ ֆեոդալական հայ արվեստի մեջ, այն գալիս էր հին կամ անտիկ դարաշրջանից և կրում էր նրա ազդեցությունը։ Խճանկարներից հնագույնը Դվինինն է, որը հայտնաբերվել է 1951 թ. Մայր տաճարի հատակին և վերաբերում է V դարին։ Խճանկարը պատրաստված է մեկ սանտիմետրից պակաս մակերես ունեցող քառանկյունի ձևի բնական խճաքարերից, բազմերանգ է, թեև գույների գամման շատ հարուստ չէ։ Մեծ անցումներում արված են մեանդրի տարբերակը հիշեցնող երկրաչափական զարդեր, որոնք հատակի վրա պահպանվել են տեղ-տեղ և տաճարի հետագա նորոգումների ժամանակ ծածկվել կրաշաղախի շերտով[12]։ Իր կառուցողական տեխնիկայով, արվեստով ու ոճով Դվինի խճանկարն առնչվում է IV—V դարերի փոքրասիական, ասորական (սիրիական) խճանկարների հետ և վկայում է Հայաստանի և այդ երկրների մշակութային կապերի մասին։ Դվինի տաճարում 1907 թ. հայտնաբերվել էր նաև Տիրամոր խճանկար պատկերը՝ արևելյան խորանի պատի վրա, որը, հավանաբար, պատկանել է VII դարի սկզբներին, սակայն չի պահպանվել։

Տաճարի պատերի վրա եղած խճանկարների մասին են վկայում նաև նրա ներսում, հողի մեջ գտնված գունավոր ապակենման հատիկները, որոնց մեջ կան և այնպիսիները, որանք ոսկեզօծ են։ Խճանկարով զարդարված են եղել նաև Էջմիածնի Մայր տաճարի պատերը։ Սակայն այդ խճանկարները ոչնչացել են շատ հին ժամանակներում, դրանց հազարավոր հատիկները գտնվեցին տաճարի այժմյան հատակի տակ հողի լիցքի մեջ։ Գտնված բազմերանգ հատիկները բավականաչափ մանր են և հստակ ու հաճելի գույներ ունեն, ուստի վկայում են, որ Էջմիածնի տաճարի խճանկարները եղել են ցայտուն, գունագեղ։

Զվարթնոց տաճարը քանդակագործական բազմազան մոտիվների շքեղ հարդարանքից բացի ունեցել է նաև բազմերանգ ու գունագեղ խճանկարներ, որոնց մասին վկայում է ապակենման զանգվածից (սմալտայից) պատրաստված գույնզգույն, նաև ոսկեզօծ հատիկների, ինչպես և խճանկարների բավականաչափ խոշոր բեկորների հայտնաբերումն այդ տաճարի պեղումների ժամանակ։ Դժբախտաբար պահպանված բեկորները հնարավորություն չեն ընձեռում գաղափար կազմելու Զվարթնոցի խճանկարների մասին, բացի այն բանից, որ գույների գամման բավականաչափ հարուստ է եղել։ Շատ ավելի լավ են պահպանվել հայկական այն խճանկարները, որոնք հայտնաբերվել են Երուսաղեմում, որտեղ վաղ ֆեոդալական դարաշրջանում եղել են մի շարք հայկական եկեղեցիներ ու վանքեր։ Երուսաղեմի Ձիթենյաց լեռան վրա ռուսական վանքի ձեռք բերած հողամասում 1868—1872 թթ. շենքեր կառուցելիս հայտնաբերվել են խճանկարներ՝ հայերեն արձանագրություններով։ Դրանցից առաջինը շատ խոշոր և բարդ հորինվածք ունեցող, հոյակապ խճանկարի մի մասն է և ունի 6,7×4 մ չափեր։

Առաջին խճանկարը գտնվում է ռուսական վանքի փոքր սրահի հատակին։ Նրա բաց ֆոնի վրա կարմիր, դեղին, թուխ կամ մուգ շագանակագույն քարերով արված են բարձրարվեստ և շքեղ զարդեր։ Խճանկարը եզրված է լայն

12 Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները. էջ 97։

և կրկնակի շրջանակներով, որոնցից դրսինի կենտրոնական առանցքով անցնում է մուգ գույնի փոքրիկ քառակուսիների մի շարք, իսկ դրանից վերև՝ խաչաձև դասավորություն ունեցող կետերի մի շարք։ Ներսի շրջանակը բաղկացած է հյուսվածքազարդից, երկու կողմից եզրված գալարների կամ կեռերի անընդհատ շարքերով։ Խճանկարի մակերեսը պարանահյուս զարդերի օգնությամբ բաժանված է բոլորակ, կիսաշրջան, ձվածիր շրջանակների և դրանց միջև առնըված ոչ կանոնավոր ձև ունեցող շրջանակների, որոնցից յուրաքանչյուրի մեջ զետեղված է ինչ-որ պատկեր։ Խճանկարի պահպանված մասի կենտրոնում, ձվածիր շրջանակի մեջտեղում՝ քառակուսու մեջ, պատկերված է մի գառ, որից ներքև և վերև բոլորակ շրջանակների մեջ՝ մի աքաղաղ է՝ խրոխտ կեցվածքով և մի բադ։ Երկրաչափական ոչ կանոնավոր ձևի երեք շրջանակի մեջ պատկերված է մեկական ձուկ, մի նույնպիսի շրջանակում՝ մրգեր։ Կիսաշրջան կազմող ձևերի մեջ պատկերված են ոճավորված բուսական ու երկրաչափական հովհարաձև զարդեր։ Ամբողջ խճանկարը կատարված է վարպետորեն, բարձր արվեստով, երանգների նուրբ համադրությամբ, ավելի գեղանկարչական բնույթ ունի, իսկ գրաֆիկ կատարումը երևան է գալիս առավելապես երկրաչափական ձևերի մեջ։ Խճանկարը եզրող արտաքին շրջանակի ցածի մասում կա 2,96 մ երկարությամբ մի արձանագրություն. «Այս դիր է երանելւոյ Շուշանկան մաւր Արտաւանայ, հոռի ԺԸ»։

Այս խճանկարը կազմել է որևէ եկեղեցու կամ մատուռի հատակը, որի տակ 8 քարարկղային գերեզման (սարկոֆագ) կա։

Երկրորդ խճանկարը, որը գտնվում է ռուսական վանքի դահլիճի հյուսիսային կողմի սենյակի հատակին, շատ պարզ է և դրա մակերեսին շարքերով դասավորված են մուգ գույնի հատիկներով կազմված աստղաձև փոքրիկ պատկերներ, իսկ միջին մասում քառակուսի շրջանակներ են, որոնց կենտրոնում դրված են մեկական նույնպիսի աստղաձև փոքրիկ պատկերներ։

Երրորդ խճանկարը երկրորդի արտաքին մասի պես պարզ է, պատած աստղաձև փոքրիկ պատկերներով։ Չափերը փոքր են՝ 1,19×0,49 մ. մի քանի սմ լայնությամբ եզրից հետո խճանկարն առնված է շրջանակի մեջ և կենտրոնից քիչ վերև ավելի փոքր քառակուսի շրջանակի մեջ զետեղված է արձանագրություն. «Վասն աղաւթից եւ փրկութեան Թեւայ, Աբասու եւ Մուրկան»։ Տառերը շարված են սև քարի հատիկներից, իսկ շրջանակը և տողերը իրարից անջատող գծերը՝ կարմիր քարի հատիկներից։

Չորրորդ խճանկարը բացվել է նույն տեղում, մի այրի մեջ, կամարակապ դամբարանի հատակին. չափերն են՝ 1,00×0,72 մ։ Մի փոքր եզրից բացի առնված է պարանահյուս շրջանակի մեջ, որը շարված է փոսագեղ խորանարդիկներից, իսկ վերևի մասում զետեղված է արձանագրություն այն մասին, որ այդ հիշատակարանը Վաղանն է կառուցել տվել[13]։

Հինգերորդ խճանկարը հայտնաբերվել է 1893 թ. նույն վայրում։ Դա մի խոշոր քառանկյունի է՝ 3,50×3,20 մ չափերի, որի ողջ մակերեսը բաժանված է քառակուսիների և բոլորակ շրջանակների, որանք հաջորդելով իրար, կազմում են 5 շարք, ամեն շարքում ունենալով 7 շրջանակ, բոլորը միասին առնըված են պարանահյուս գեղեցիկ շրջանակի մեջ։ Այս 35 քառակուսիներից յու-

13 «Սիոն», թիվ 10, հոկտեմբեր, 1872, էջ 237—238, «Արարատ», 1872, էջ 493—494։ *Н. П. Кондаков,* Археологическое путешествие по Сирии и Палестине, СПб., 1904, стр. 257, табл. XI—XII և այլն։

բաքանչյուրի մեջ պատկերված է մեկական թռչուն կամ կենդանի, մրգեր և ոճավորված ծառ կամ ճյուղեր։ Խճանկարը, որը եղել է մի մատուռի հատակը, ոճական նմանություններ ունենալով շրջանակների բաժանված նախորդ խճանկարի հետ, միաժամանակ ավելի պարզ է և ճոխությամբ զիջում է նրան։ Այն արված է գծանկարային (գրաֆիկական) ոճով։

Այս խճանկարին կից հայտնաբերվել են VI—VII դդ. խճանկարներ, որոնք ունեն փոքր չափեր և երկրաչափական պարզ ձևեր։ Մեկը չորս պսակաթերթ ունեցող վարդյակների և դրանցով կազմվող բոլորակ շրջանակների համադրություն է՝ շրջանակների կենտրոնում 5 կետերով կազմվող խաչաձև փոքրիկ պատկերով։ Խճանկարն առնված է ատամնավոր շրջանակի մեջ։ Մյուսը բաղկացած է շեղանկյան ձևով դասավորված սովորական քառակուսիներից, որոնց կենտրոնում դրված են նույն ձևի, բայց շատ փոքրիկ շեղանկյուն քառակուսիներ։ Այս երկրորդի ցածի ծայրին կա հայերեն արձանագրություն այն մասին, որ դա եղել է տեր Հակոբի հիշատակարանը։

Վերջապես, հայկական ամենանշանավոր խճանկարներից մեկը հայտնաբերվել է 1894 թ. Երուսաղեմի հյուսիսային մասում՝ Դամասկոսյան դռան մոտ։ Չնայած իր խոշոր չափերին (7,15×4,4 մ), այն շատ լավ է պահպանվել։ Ձգված քառանկյունու տեսք ունեցող այս խճանկարը չորս կողմից առնված է կրկնակի շրջանակի մեջ. դրսինը՝ 25—30 սմ լայնությամբ, անզարդ է, իսկ դրանից ներս՝ պարանահյուս շրջանակ է՝ 26 սմ լայնությամբ։ Այս շրջանակից ներս ցածի կողմում պատկերված է ականթի տերևների վրա դրված երկկանթանի շքեղ զարդարուն անոթ, նեղ բերանով, որից դուրս եկած խաղողի որթը, դեպի վեր ճյուղավորվելով, կազմում է 43 շրջանակ-մեդալիոններ, որոնք խճանկարի երկարությամբ կազմում են 5 շարք։ Բոլոր մեդալիոնների մեջ պատկերված են խաղողի ողկույզներ, տերևներ, թռչունի և այլ պատկերներ։ Բավականաչափ հարուստ, բայց ոչ խրթին այս հորինվածքի (կոմպոզիցիայի) մեջ շեշտված է կենտրոնական շարքը։ Դրա հիմքում ընկած է խաղողի որթը կրող անոթը, որի երկու կողմից կանգնած է մեկական սիրամարգ։ Դրանից վերև օղակի մեջ պատկերված է մրգերով լի մի փոքրիկ գեղեցիկ զամբյուղ, ավելի վերև հաջորդաբար՝ մի սագ, մի շքեղ զարդարուն անոթ՝ անտիկ մշակումով, մի արծիվ, մի փոքրիկ վանդակ՝ մեջը թութակ, նորից մի զամբյուղ՝ խաղողով ու մրգերով լի և ամենավերին մեդալիոնում խաղողի երկու ողկույզ կրող շիվերի վրա դեմդիմաց կանգնած երկու աղավնի։ Կենտրոնական շարքից աջ և ձախ գտնվող բոլոր չորս շարքերի մեդալիոնների մեջ պատկերված է մեկական թռչուն՝ խաղողի ողկույզների և տերևների համադրությամբ։ Վերին եզրին կցված է մի կիսաշրջան հավելված, որի մեջ պատկերված է մրգերով լի սկահակ, իսկ սրա աջ և ձախ կողմերից կանգնած է մեկական թռչուն։ Սա մի ամբողջ թռչնանոց է՝ բաղկացած 43 թռչուններից, որոնց մեջ կան աղավնի, կաչաղակ, թութակ, կաքավ, սագ, բադ, հավ, աքաղաղ, հնդկահավ, խայտահավ, արծիվ, փասիան, կռունկ, կարապ, ֆլամինգո, ջայլամ, ձկնկուլ, արագիլ և այլն։ Այս խճանկարը թեև կոմպոզիցիոն սկզբունքով նման է 1893 թ. Ջիթենյաց լեռան վրա գտնվածին, որի քառակուսի և բոլորակ մեդալիոնների մեջ նույնպես պատկերված են թռչուններ, կենդանիներ ու մրգեր, բայց սա ավելի ճոխ է, շքեղ և գեղարվեստական ավելի բարձր արժանիքներ ունի։ Խճանկարն արված է մեծ ժայռափոր դամբարանի վրա, որի մեջ գտնվել են մարդկանց ոսկորներ, կավե ճրագներ, ապակյա սրվակներ ու դրանց բեկորներ։ Պարզ է, որ այն եղել

է մի խոշոր դամբարան՝ խմբական թաղումով, մի հանգամանք, որն ավելի պարզ երևում է խճանկարի վերին եզրի վրա թողնված արձանագրությունից՝ «Վասն յիշատակի եւ փրկութեան ամենայն հայոց զորոց անուանս տէր գիտէ»[14]։

Բուն Հայաստանի, մանավանդ Երուսաղեմի VI—VII դդ. հայկական խճանկարների ամբողջ հորինվածքի ոճի և արվեստի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ դրանք ակնհայտորեն կապված են անտիկ դարաշրջանի խճանկարչական արվեստի հետ և նկատելիորեն կրկնում են դրանց հորինվածքը՝ պատկերներն ու զարդաձևերը, սակայն թե՛ ձևի և թե՛ բովանդակության արդեն նոր երանգավորումներով ու առանձնահատկություններով։ Դրանց մեջ հին պատկերների և զարդաձևերի կողքին երևան է գալիս քրիստոնեական սիմվոլիկան (գառ, սիրամարգ և այլն), իսկ ապակենման զանգվածից (սմալտա) պատրաստված հստակ, վճիտ և վառ գույների հատիկների կիրառությունը խճանկարները դարձնում է առաջին հայացքից ավելի գունագեղ ու արտահայտիչ, սակայն դրա հետ միասին կենդանիների ու թռչունների պատկերները նկատելիորեն կորցրել են իրենց կենդանի, շարժուն ձևերը, ռեալիստական արտահայտչությունը և ստացել ավելի քարացած, անշարժ, երբեմն էլ ոչ այնքան բնական ձևեր, իսկ բուսական զարդերը շատ ավելի ոճավորված ու պայմանական տեսք են ընդունել։ Հայկական խճանկարները իրենց կոմպոզիցիոն հորինվածքով և ոճով որոշակիորեն տարբերվում են բյուզանդական խճանկարային արվեստի՝ Կոստանդնուպոլսի կամ մայրաքաղաքային ուղղության ստեղծագործություններից, որոնց բնորոշ են կիսաերանգների նուրբ անցումներով, գեղանկարչական ոճի զուսպ կոմպոզիցիայով, բայց առավել արտահայտիչ գործերը։ Ընդհակառակը, վաղ ֆեոդալական դարաշրջանի հայկական խճանկարները սերտորեն կապվում են արևելյան ասորապաղեստինյան ուղղության հետ, որին բնորոշ են երկրաչափական ցայտուն գծայնությունը (գրաֆիկա), որի հետ զուգորդվում են ոճավորված բուսական բազմերանգ զարդաձևերը և կենդանիների ու թռչունների պատկերները։

Հայտնի է, որ բյուզանդական արվեստը որդեգրել էր ավելի այս երկրորդ ուղղությունը, որը լայնորեն տարածվեց բյուզանդական կայսրության նաև արևմտյան երկրներում[15]։

Ճարտարապետական հուշարձանների գեղարվեստական հարդարման հետ էր կապված նաև մոնումենտալ գեղանկարչության մյուս ճյուղը՝ որմնանկարչությունը[16]։ Ուրարտական նշանավոր որմնանկարներից հետո անտիկ դարաշրջանի որմնանկարներ մեզ համարյա հայտնի չեն, եթե չհաշվենք Արտաշատ մայրաքաղաքի պեղումներով երևան եկած որմնանկարների բեկորները։ Նույնը կարելի է ասել նաև IV—V դդ. վերաբերյալ։ Քասաղի տաճարի մի մույթի խոյակը զարդարված է կարմիր ներկով նկարված մի խաչի պատկերով, որի երկու կողքերին արմավենու ճյուղ է երևում։ Էջմիածնի Մայր տաճարում V դարի որմնանկարների բեկորներ գտնվեցին հատակի տակի հողի լիցքի մեջ։ Աշտարակի Սպիտակավոր եկեղեցու խորանում պահպանվել են լուսապսակ կրող, ամբողջ հասակով նկարված մարդկային վեց պատկերների հազիվ նկա-

---

14 Տե՛ս Գ. Հովսեփյան, "Mosaik mit armenischer Inschrift und Norden Jerusalems ("Zeitschrift des Deutschen Palästina- Vereins, 1895, XYIII էջ 88—90 և այլն։

15 *В. Н. Лазарев,* История византийской живописи. Т. I, М., 1947, стр. 61—62.

16 Որմնանկարներին վերաբերող հատվածը շարադրված է գերազանցապես հայ արվեստի վաստակավոր ուսումնասիրող Լ. Ա. Դուռնովոյի աշխատությունների հիման վրա։

տելի հետքերը[17]։ Մկրտության տեսարանով որմնանկար է պահպանվել Մանազկերտի IV դ. եկեղեցու պատի վրա[18], իսկ Տեկորի 486 թ. հիմնված տաճարի պատերին հազիվ նկատելի են որմնանկարների հետքեր[19]։

VII դարից որմնանկարներ պահպանվել են ավելի շատ և ավելի լավ։ Դրանք դրսևորում են հայ արվեստի ինքնատիպությունն այդ ժամանակներում։ Արթիկի տուֆ քարի հանքերի կողքին գտնվող Լմբատավանքի սբ. Ստեփանոս եկեղեցու արևելյան խորանում և պատի վրա, խորանի կողքերին նկարված է երկնային ուժերը ներկայացնող մի ամբողջական կոմպոզիցիա, որը, ցավոք, մասամբ է լավ պահպանված։ Խորանի գոգավորության ներսում բոցերի ֆոնի վրա պահպանվել են գահույքի ցածի մասը, Քրիստոսի ոտքերը և զգեստի եզրը։ Քրիստոսից աջ և ձախ բոցերի և անիվների միջև պատկերված է մեկական սերովբե[20]։ Սրանց բաց գույնի չորսական թևերի վրա նկարված են բազմաթիվ աչքեր։ Խորանի երկու կողմերում՝ պատի հարթ մակերեսին նկարված է միկական հեծյալ։ Ցայտուն են պատկերված երեք կենդանակերպի գլուխները, մանավանդ դրանց միջև գտնվող մարդկային գլուխը, որի դեմքի և մազերի նկարման եղանակի կապը հելլենիստական շրջանի արվեստի հետ՝ ակնհայտ է։ Դեմքի կանոնավոր ձվաձևությունը, խոշոր, թախծոտ աչքերը, սեղմված շրթունքները պատկերին հաղորդում են ինքնամփոփություն, աշխարհում տիրող չարի և բարու երկվության և պայքարի ներքին ըմբռնում[21]։ Սերովբեներից աջ և ձախ, խորանի եզրերին կանաչ գույնով պատկերված է մեկական վեցթևանի պատկեր։ Սև և սպիտակ ձիերով հեծյալների պատկերներն առանց չար ուժը ներկայացնող վիշապի դեմ մղվող կռվի, ավելի շատ համապատասխանում են հայկական ժողովրդական պատկերացումներից հայտնի բարի օգնական ուժեր ներկայացնող սբ. Գևորգին և սբ. Սարգսին, քան քրիստոնեական ընդհանուր կանոնով պատկերվող սուրբ զինվորների կերպարին։ Այդ պատկերներն ունեն նկատելիորեն հելլենիստական բնույթի դիմագծեր։ Ամբողջ որմնանկարը, որն արված է կարմիր, կանաչ, շագանակագույն և բաց գույներով ու դրանց կիսաերանգներով, նուրբ անցումներով, արտահայտիչ է, միաժամանակ մեղմ ու հանդիսավոր։

Որմնանկարներով զարդարված է եղել նաև Թալինի մեծ տաճարը, որի պատերի վրա տարբեր տեղերում պահպանվել են ավաղի և գույների հետքեր։ Արևելյան խորանում եղել է նույնպիսի կոմպոզիցիա, որպիսին կա Լմբատի եկեղեցում՝ Քրիստոսը գահի վրա և շրջապատված երկնային ուժերով։ Խորանի ներքևի մասում նկարված են տասը բոլորաձև շրջանակներ՝ լայն երիզներով, որոնք ունեն տարբեր զարդեր և ցայտուն երևում են սև ֆոնի վրա, իսկ շրջանակների մեջ զետեղված են մինչև կուրծքը նկարված սրբապատկերներ։ Նույնպիսի 11 շրջանակ նկարված է տաճարի արևելյան մեծ աղեղի վրա, որի երկու կողմերից սյուսների խոյակների վրա դրված սկահակներից ելնում են ճյու-

[17] *Л. А. Дурново*, Краткая история древнеармянской живописи, Ереван, 1957, стр. 8.

[18] *Y. Strzygowski*, Die Baukunst der Armenier und Europa, Wien, 1918, Bd. I, էջ 152։

[19] *Л. А. Дурново*, նշվ. աշխ., էջ 8։

[20] Սերովբեի թևերի միջև պատկերված է չորս գլուխ՝ մարդու, ցուլի, առյուծի և արծվի, որոնք ավետարանիչների խորհրդանշաններն են։

[21] *Л. А. Дурново*, նշվ. աշխ., էջ 9—10։

զավորված ցողուններից և կարմիր պտուղներից հյուսված ծաղկաշղթաներ, որոնք կամարի վրայով ձգվում են դեպի վեր, իսկ դրանց վրա զետեղված բոլորաձև շրջանակների միջև նկարված են արմավենու փոքր ճյուղեր, որոնք տեղ-տեղ հանգուցվում են շղթային։ Այսպիսով, քրիստոնեական սրբապատկերները միահյուսվում են հնից՝ անտիկ շրջանից եկող զարդաձևերի հետ, ընդ որում սրբապատկերները համարյա չեն երևում, իսկ զարդերը լավ են պահպանված։ Տաճարի հարավային պատի վրա երևում են ավետարանական մի տեսարանի հետքեր, իսկ դեպի հարավային խորանը տանող մուտքի վրա նկարված են վեց սրբապատկերներ՝ ողջ հասակով, կանգնած, հազիվ նկատելի երկու հեծյալ՝ սև և կարմիր նժույգների վրա։ Թալինի տաճարի նկարներն արված են սպիտակ, կանաչ, տարբեր երանգի կարմիր, շագանակագույն և թուխ գույներով։ Կոմպոզիցիայով և երանգների համադրությամբ Լմբատի և Թալինի որմնանկարներին մերձենում են նաև Աշտարակի շրջանի Կոշ գյուղի եկեղեցու որմնանկարները։

Վերևում նկարագրված խմբից որոշակիորեն տարբերվում են Արուճի Գրիգոր Մամիկոնյանի (662—634) կառուցած մեծ տաճարի որմնանկարները։ Այստեղ ամեն ինչ ասես ներդաշնակված է այդ հսկայական շինության չափերի հետ և կատարված է վրձնի ավելի համարձակ օգտագործմամբ և ավելի գեղանկարչական ոճով։ Լայնորեն օգտագործված է կապույտ գույնը՝ բացից մինչև թանձր կապույտ երանգներով, մինչդեռ կարմիրը քիչ է օգտագործված։ Նկարը երանգների անցումների, կիսատոների օգտագործման շնորհիվ ավելի բնական է։ Տարբերվում է նաև ընդհանուր տեսարանը, որը պատկերում է Քրիստոսի համբարձումը[22]։

Տաճարի արևելյան խորանի գոգավորության վերին մասում նկարված է Քրիստոսի 7 մետրանոց պատկերը՝ կանգնած, օրենքների մագաղաթյա փաթեթը (հայերեն գրված) ձախ ձեռքին, իսկ ոտքերի տակ երևում է շագանակագույն աթոռակը։ Նրա տակ պահպանված է նկարչի անունը՝ Ստեփանոս։ Այս մեծադիր պատկերի երկու կողքերին նկարված են եղել հրեշտակներ, որոնցից մեկի աննշան հետքերն են պահպանվել։ Պատկերների այս խմբից ցած՝ խորանի լայնքով մեկ անցնում է մի լայն զարդագոտի։ Դրանից ցած խորանի հյուսիսային կողմում պահպանվել են ողջ հասակով հանդիսավոր դիրքով կանգնած վեց առաքյալների պատկերներ՝ ձեռքերին գիրք։ Պետք է, որ մյուս վեց առաքյալները նկարված լինեին խորանի արևելյան կողմում, սակայն այնտեղ ոչինչ չի պահպանվել։ Իրավամբ նշվում է, որ համբարձման այս տեսարանն իր որոշակի կոմպոզիցիոն առանձնահատկություններով, անգամ մանրամասներով համապատասխանում է առավել վաղ խմբագրված դրա դրսևորումներին, որ գտնում ենք Ռաբուլեի 586 թ. ասորական ավետարանում և Վրաստանի Ծրոմի տաճարի խճանկարում, որոնց տարբերակները երևան են գալիս արևմտյան մի քանի հուշարձաններում[23]։

Լավ է պահպանված և գեղարվեստական բարձր արժանիքներ ունի Արուճի տաճարի զարդագոտին, որը մոտ մեկ մետր լայնքով ձգվում է խորանի մի ծայրից մյուսը, կենտրոնում հատվելով Քրիստոսի ոտքերի տակի աթոռակով։

22 *Л. А. Дурново*, Стенная живопись в Аруче (Талиш). *«Լրաբեր հաս. գիտ.», № 1, 1952, նույնի՝* Краткая история древнеармянской живописи, Ереван, 1957, стр. 12.

23 *Л. А. Дурново*, Краткая история..., стр. 12.

Դա կանաչ և սպիտակ ճյուղերից ուականթատերևներից բաղկացած անընդհատ գալարվող և հավասարաչափ շրջանակներ կազմող չափազանց ճոխ արտահայտիչ մի զարդ է։ Ականթի մեծ թփերից դուրս են գալիս շրջանաձև գալարներ՝ զուգորդված կանաչ և բաց գույնի ականթատերևների, տերևազարդ ցողունների հետ և ավարտվում են վարդյակով, խաղողի ողկույզով, նռով, մրրգերով լեցուն զամբյուղով, իսկ երկու գալարների մեջ պատկերված են տարբեր ձևի թասեր։ Այս ամենը կատարված է հելլենիստական արվեստը հիշեցնող համարձակ շնչով, վրձնի լայն հարվածներով, գույների գեղեցիկ համադրությամբ և անցումներով, թանձր երանգավորմամբ։ Գունեղ ու ճոխ են մանավանդ ամբողջ զարդի մեջ գերակշռող ականթատերևները, որոնց շնորհիվ ամբողջ զարդագոտին մերձենում է Գառնիի հեթանոսական տաճարի քանդակազարդ գոտուն (ֆրիզին)։ Համենայն դեպս Արուճի զարդագոտին ակնհայտորեն դրսևորում է հելլենիստական արվեստի ավանդները՝ վաղ ֆեոդալական արվեստի մեջ։

Նկարազարդ է եղել նաև Արթիկի մեծ եկեղեցին, որտեղ պահպանվել են զգեստի քղանցքների և մի քանի զույգ սանդալակիր ոտքերի հետքեր՝ հարավային և հյուսիսային պատկերի վրա, հավանաբար այստեղ ևս պատկերված է եղել համբարձման տեսարանը[24]։

Բոլորովին այլ սկզբունքով է նկարազարդված Արայի լեռան ստորոտում, Եղվարդ գյուղից ոչ հեռու կառուցված Զորավոր ութխորանավոր եկեղեցին, որի տակավին կանգուն չորս խորաններից երեքում պահպանվել են բուսական զարդեր՝ առանց որևէ պատկերի։ Այստեղ խոշոր մակերեսներ բռնող բուսական զարդերն անհարկի մասնատված են շատ մանրակրկիտ մշակմամբ, որով դրանք կորցրել են նկարի մոնումենտալությունն ու ամբողջությունը։

Որմնանկարներ եղել են նաև Դվինում և Զվարթնոցում, որտեղ հայտնաբերվել են որմնանկարների աննշան բեկորներ։ Դրանց վրա նկատելի են կարմիր, մուգ կարմիր, կապույտ, կանաչ, դեղին, շագանակագույն, սև և սպիտակ գույներ՝ թանձր ոսկեզօծումով։ Այս ամենը թույլ են տալիս ենթադրելու շքեղ որմնանկարի առկայության մասին։ Որոշ տեղերում նույնպես եղել են որմնանկարներ և խճանկարներ։ Արաբ հեղինակ Ալ-Մուկադդասին, օրինակ, հիշատակում է, որ Դվինից 3 փարսախ (15 կմ) հեռավորության վրա (հավանաբար Արտաշատում, որն այդ ժամանակ ավան էր՝ ամրոցով) սպիտակ սրբատաշ քարերից կառուցված է ութ սյուներ ունեցող գմբեթազարդ մի շենք, որի ներսում եղել է Մարիամ կույսի նկարը, որը դու կտեսնես, որ դռնից էլ ներս մտնելու լինես, ասում է հեղինակը[25]։

IV—VII դդ. մեզ հասած որմնանկարների թիվը մեծ չէ, ոճով ու պատկերագրության առանձնահատկություններով էլ դրանք երևան են բերում որոշ ընդհանրություն, բայց և զուրկ չեն ինքնատիպությունից ու նկատելիորեն տարբերվում են իրարից։

Վաղ ֆեոդալական դարաշրջանի խճանկարներն ու որմնանկարներն ավելի ցայտուն, քան քանդակները դրսևորում են անտիկ դարաշրջանի արվեստի հետ ունեցած կապը, միաժամանակ նրանք ստացել են նոր բովանդակություն

---

24 Նույն տեղում։

25 *Ал-Мукаддаси*, Сборник по описанию местностей и племен Кавказа, вып. XXXVI, Тифлис, 1908, стр. 16.

և նոր ձև՝ դարաշրջանի քրիստոնեական ֆեոդալական գաղափարախոսության համապատասխան։

Հայ եկեղեցին հատուկ ձգտում չի ունեցել պաշտամունքային շենքերը և այլ հուշարձանները պատկերներով հարդարելու։ Բայց նա բնավ էլ չի հրաժարվել գաղափարական ներգործության այնպիսի ակնառու, զորեղ ու մասսայական միջոցից, որպիսին էին պատկերները։ Այդ լավ էին գիտակցում, մանավանդ պատկերահարգները, որոնք ասում էին՝ «Մեր արուեստս լոյս է, զի ծերք և տղայք առհասարակ վերծանեն, իսկ զԳիրս Սուրբ սակաւք ընթեռնուն»[26]։

Հայկական եկեղեցին չի կարելի բյուզանդական չափանիշով պատկերահարգ կամ պատկերամարտ համարել, այն պարզապես հակաքաղկեդոնիկ էր, իսկ դա ուներ քաղաքական կարևոր նշանակություն։ Եթե քրիստոնեական հավատքով հայ ժողովուրդը դիմագրավում էր պարսից աշխարհակալությանը, ապա հակաքաղկեդոնական դավանանքով նա հակադրվում էր Բյուզանդական կայսրության նվաճողական քաղաքականությանը, որին իբրև գործիք կայսրությունը ծառայեցնում էր իր քաղկեդոնական դավանանքը։ Այսպիսով, հակաքաղկեդոնական դավանանքը ոչ միայն եկեղեցու ինքնիշխանության, այլև հայ ժողովրդի քաղաքական ինքնուրույնության համար մղվող պայքարի միջոց էր։ V—VII դդ. քաղկեդոնիկ եկեղեցին պատկերահարգ էր, ուստի այն պահերին, երբ սաստկանում էր Հայաստանը զավթելու կայսրության ձգտումը, հայ եկեղեցին էլ հակադրվում էր բյուզանդական եկեղեցուն, նաև նրա ծայրահեղ պատկերահարգությանը, իսկ երբ թուլանում էր կայսրության աշխարհակալության վտանգը, հայ եկեղեցին, արևելյան մյուս քրիստոնեական եկեղեցիների նման, օգտագործում էր նաև պատկերներով մարդկանց զգացմունքների ու գիտակցության վրա ներգործելու միջոցը՝ ճարտարապետական շենքերն ու կոթողները հարդարելով ոչ միայն երկրաչափական, բուսական, հնամենի առասպելական քանդակներով, այլև քրիստոնեական պատկերաքանդակներով, խճանկարներով ու որմնանկարներով։

Հետևաբար սխալվում են այն գիտնականները, որոնք հայոց պատկերազարդ եկեղեցիները համարում են պարզապես քաղկեդոնական։ Հայաստանում նկարազարդ քաղկեդոնիկ եկեղեցիներ են եղել, բայց միանգամայն սխալ կլիներ բոլոր նկարուն եկեղեցիները վերագրել քաղկեդոնական ուղղությանը, քանի որ հայ եկեղեցին բառիս բուն իմաստով պատկերամարտ չէր։

Բացի պաշտամունքային շենքերից, նկարներով զարդարվել են նաև ֆեոդալների դղյակներն ու պալատները, բայց դրանցից մեզ ոչինչ չի հասել, միայն առանձին վկայություններ կան գրականության մեջ։

## 3. ՄԱՆՐԱՆԿԱՐՉՈՒԹՅՈՒՆ

Շատ ավելի սովորական և տարածված է եղել գրքերի զարդարումը մանրանկարներով։ V—VII դարերը հանդիսացել են հայ մատենագրության փայլուն զարգացման շրջան, երբ ոչ միայն թարգմանվել են բազմաթիվ օտար հեղինակների երկերը, այլև ստեղծվել են աչքի ընկնող շատ գործեր, որոնք վերաբերել են ժամանակի մշակույթի, գիտության և հասարակական մտքի բազ-

---

26 Մովսես Կաղանկատուացի, էջ 393։

մազան բնագավառներին։ Շատ գրքեր զարդարվում էին մանրանկարներով, որոնցից պահպանվելով մեզ են հասել VI—VII դդ. 4 մանրանկարներ[27], որոնք փակցված են էջմիածնի՝ 989 թ. գրված ավետարանի վերջում՝ փղոսկրյա կազմի տակ իբրև պահպանակ։ Մագաղաթյա երկու թերթի վրա արված այդ նույն չորս մանրանկարները միանգամայն տարբերվում են 989 թ. գրված ավետարանի մյուս նկարներից և իրենց ոճով համապատասխանում են VI—VII դդ. վաղ քրիստոնեական նկարներին, բայց և ինքնատիպ են։ Ավետարանական այդ պատկերներից երկուսը ավետման տեսարան են ներկայացնում, որտեղ Գաբրիել հրեշտակն իր երկար ծալքավոր, շատ բաց երկնագույն զգեստով ունի հելլենիստական կերպավորում և հիշեցնում է ուշ անտիկ շրջանի մարմարե արձանները, թեև Գաբրիելի դեմքը համարյա կորցրել է հելլենիստական գծերը։ Ակնհայտորեն անտիկ տեսք ունի նաև կորնթական խոյակներով, եռանկյունի ճակտոններով և հռոմեական տիպի աղեղնակամարով շենքը։ Ավելի ինքնատիպ են Զաքարիան և Մարիամ կույսը, որոնք արևելյան դիմագծեր ունեն, բայց դրանց զգեստավորման մեջ էլ առկա են հելլենիստական տարրերը։ Արևելյան տիպի տեղական և իշխանական գլխարկներով ու զգեստավորմամբ աչքի են ընկնում արևելյան երեք մոգերը, որոնք եկել էին երկրպագելու մանուկ Հիսուսին։ Դրանցից միայն մեկը, որը պատկերված է սև, գանգուր մազերով, պահպանում է որոշակի հելլենիստական գծեր։ Չորրորդ պատկերը մկրտության տեսարանն է։ Մինչև կուրծքը Հորդանան գետի մեջ մտած մանուկ Հիսուսն իր թարմ, մանկական բոլորակ ժպտուն դեմքով, գանգուր մազերով նույնպես հելլենիստական գծեր ունի, իսկ Հովհաննես Մկրտիչը, որը նրան պետք է հասակակից լիներ, պատկերված է բեղ ու մորուքով տարեց մարդու տեսքով, մինչև ուսերը հասնող երկար մազերով և այնպիսի կերպավորումով, որպիսին համարյա այդ նույն ժամանակներից սկսած կանոնական է դառնում ավելի շատ Քրիստոսի համար։

էջմիածնի ավետարանի վերջում փակցված այս մանրանկարները կատարված են գեղանկարչական ոճով, թեև ոչ այնքան ցայտուն հելլենիստական գծերով, ինչպիսին են Ռաբուլեի 586 թ. ասորական ավետարանի նկարները, բայց արտահայտիչ են, հորինվածքով ավելի հարուստ։ Գծանկարը (գրաֆիկան) այստեղ համարյա բացակայում է (միայն մոգերի զգեստների զարդերն են մուգ գույնի գծանկարով)։ Գույների գամման շատ հարուստ չէ, բայց բավականաչափ արտահայտիչ է։ Տիրապետող են երկնագույնը, կանաչը, ոսկեգույնը, որոնց հետ համադրված են մանուշակագույնը, վարդագույնը, դեղինը, ծիրանին, բայց երանգների անցումներն այնքան էլ մեղմ ու նուրբ չեն։ Մուգ և թանձր գույները զուգորդված են շատ բաց, համարյա սպիտակ երկնագույնի և ոսկեգույնի հետ, բայց ավելի տիրապետող են թանձր գույները, ինչպես Սրուճի զարդագոտու վրա։ Իսկ պատկերների ձվաձև, խոհեմ դեմքերը, խոշոր աչքերն ու սևեռուն հայացքը հիշեցնում են Լմբատի սրբավայրերի պատկերները[28]։

---

27 Հայ մանրանկարչության մասին նորագույն հետազոտություններից տե՛ս Т. А. Измайлова, Армянская миниатюра XI в., М., 1979.

28 *Л. А. Дурново*, Краткая история.., стр. 14, Miniatures arméniennes, texte et notes de Lidia A. Dournovo, Preface de Sirarpie Der Nersessian. Paris, "История византийского искусства., т. I. стр. 35, 37 , 39, 41:

*Հայկական արվեստը ինչպես անտիկ դարաշրջանում, այնպես էլ IV—VII դդ. ճարտարապետության, քանդակագործության, խճանկարչության, մանրանկարչության բնագավառներում դրսևորում է ակնհայտ կապեր սիրիական արվեստի հետ, որը բացատրվում է այս երկու երկրների տնտեսական, քաղաքական, գաղափարական, կրոնական և մշակութային դարավոր կապերով։ Այդ կապերն այնքան տևական, հաճախ էլ ցայտուն են եղել, որ շփոթության մեջ են գցել որոշ ուսումնասիրողների՝ IV—VII դդ. հայ մշակույթի մի շարք հուշարձանների բնութագրման խնդրում, ընդ որում անտեսվել են Ասորիքի և Հայաստանի պատմական կապերը, այս երկու երկրների մշակույթների ընդհանուր արևելյան, հելլենիստական, ապա և վաղ քրիստոնեական ակունքները, գերագնահատվել է ասորական ազդեցությունը, իսկ հայ մշակույթի որոշ հուշարձաններ պարզապես համարվել են ասորական (սիրիական)։ Այդպես է վարվել Ստրժիգովսկին էջմիածնի ավետարանի հիշյալ չորս և մյուս՝ ամբողջ էջը գրավող մանրանկարների հետ, թեև նշում է դրանց տարբերությունները[29]։*

## 4. ԿԻՐԱՌԱԿԱՆ ԱՐՎԵՍՏ

*IV—VII դդ. Հայաստանում զարգացած է եղել նաև կիրառական արվեստը, այդ են ցույց տալիս դրանց վերաբերյալ պահպանված մատենագրական վկայությունները, սակայն այդ ստեղծագործությունները, կարելի է ասել, մեզ չեն հասել։ Բարձր արվեստով պատրաստվում էին գահույքներ, թագեր, խույրեր, արքայական և իշխանական զարդարուն զգեստներ, զենքեր, պալատական և եկեղեցական սպասքներ, գրքերի մետաղյա ու փղոսկրյա կազմեր, զանազան զարդեր և այլ իրեր։ Արհեստավորները ոսկուց, պղնձից, երկաթից և պատվական քարերից պատրաստված իրերով զարդարում էին իշխողների թագերն ու խույրերը, ոսկեհուռ և մարգարտահուռ զգեստներն ու զարդերը[30]։*

*Հիշատակված է հայ թագավորի գահը, որը ոսկեպատ էր և ակնակուռ[31]։ Տրդատը Հռիփսիմե կույսին արքունիք բերելու համար նրա ետևից ուղարկում է «ոսկիապատ գահաւորակս... նաև հանդերձս ազնիւս, գեղեցիկս փափուկս, պայծառս և զարդարունս երևելիս»[32]։ Իշխաններն ունեին արծաթե գահ[33]։ Բարձրարվեստ գործեր էին արքայական թագերը։ Հայ նախարարների գահերը զարդարված էին ոչ միայն ըստ նրանց դիրքի և աստիճանի, այլև նույն սկզբունքով էլ դասավորված էին Հայոց արքունիքում։ Իշխանները կրում էին պատիվ (դիադեմա), որը կապում էին իրենց գլխին։ Բագրատունի թագավորի իշխանի պատիվը կազմված էր երեք շարք մանր մարգարիտներից։ Հայկական թագավորության անկումից հետո իշխաններից ոմանք ևս կրում էին ճառագայթավոր խույրեր՝ պատրաստված ոսկուց և ընդելուզված թանկագին քարերով։ Մարզպան Վասակ Սյունին, օրինակ, հավասարեցված լինելով պարսից*

---

[29] *Strzygowski*, Das Etschmiadzin Evangelier, Wien, 1891, s. 68: *Վ. Լազարևը էջմիածնի ավետարանի վերջին նկարները համարում է հայ նկարչի գործ և վերագրում VII—VIII դդ., տե՛ս նրա* «История византийского искусства», т. I.

[30] Ղազար Փարպեցի, *Տփղիս, 1904, էջ 10։*

[31] Սեբեոս, *Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, էջ 110։*

[32] Ագաթանգեղոս, *Տփղիս, 1909, էջ 91—92։*

[33] Սեբեոս, *էջ 66։*

առաջին կարգի շատրադարներին, պարսից արքունիքը մտնելու համար հագնում էր պատվական հանդերձներ, կապում պատիվը, որի վրա դնում էր ոսկեղեն խույրը։ Ոսկեձույլ, պատվական մարգարիտներով ընդելուզված գոտին կապում էր մեջքին, գինդերը կախում ականջներից, գումարտակը (մանյակը) անցկացնում վիզը և սամույրը նետում թիկունքին[34]; ուրպեսզի բոլորից շքեղ երևա, ակնկալելով ձեռք բերել նաև արքայական թագը։

Արվեստի ստեղծագործություններ էին արքայական և իշխանական զարդարուն զենքերը, զորքերի զինանշանները, դրոշակները։ Կաթողիկոս Ներսես Պարթևը մինչև աթոռակալությունը, լինելով արքայի սենեկապետը, կրում էր «զարքունական սուսերն, զպողովատիկն ոսկէպատեանն հանդերձ ականակապ մարգարտազարդ կամարաւն»[35], Բաբիկ Սյունին, որ բազմաթիվ քաջագործություններ էր կատարել պարսկական օլիմպիադայում և մենամարտում հաղթել էր հոների Հոնագուր հսկային, ուներ վագրենակերպ սաղավարտ, ոսկեհուռ վահան՝ ձախ թևին և հագին զրահ[36]։ Հայկական եկեղեցիներում կային ոսկուց, արծաթից պատրաստված և ակնեղենով ընդելուզված բազմաթիվ իրեր՝ խաչեր, թագեր, ջահեր, կանթեղներ, աշտանակներ, սկիհներ, գրքերի կազմեր և այլն։ VI դարի վերջերում, Մորիկ կայսեր ժամանակ, Դվինի Մայր տաճարի սպասները Կարին տարվեցին[37]։ Ղևոնդը հիշատակում է Բագավանի պատվական սպասները, «որ ի նման ամբարեալ (էին) թագաւորացն, իշխանաց և նախարարաց աշխարհիս»[38]։

Մովսես Եղվարդեցի կաթողիկոսը իր մահից (604) առաջ կազմել էր տվել մայր աթոռի սրբությունների և թանկարժեք իրերի ցուցակը, որն ընդունեց նրա հաջորդ Աբրահամ Աղբաթանեցին՝ կաթողիկոս ընտրվելիս (607)։ Այդ ցուցակում զանազան մասունքներից բացի, հիշատակվում են մի շարք իրեր, որոնք կիրառական արվեստի ստեղծագործություններ էին, օրինակ՝ աթոռ, գավազան, սպասներ, սկիհներ, սեղանի ծածկոցներ, վարագույրներ, խնկարաններ, բուրվառներ, քշոցներ, կաթողիկոսի վակասը՝ պատրաստված մետաքսից և ակնեղենով, ոսկով ու մարգարիտներով ընդելուզված և այլն։ «Ջգեղիսն և զարկանելիս, քահանայից և սարկաւագաց զբեհեզս և զծիրանիս... զեզրածիրանին և զմիջնածիրանին» և դիպակներից, կերպասներից ու ծիրանի գործվածքներից պատմուճաններ՝ պես-պես զարդերով, գունակ-գունակ, երփներփն, երանգ-երանգ ծաղկազարդ գեղեցկապես գործված զգեստներ, Տրդատ թագավորի պատվական զգեստը, որ նվիրված էր եկեղեցուն, նաև բազմաթիվ գրքեր և զանազան շքեղ եկեղեցական և վարդապետական պես-պես իրեր ու արժեքներ[39], Ցավոք, իր ժամանակի համար բնորոշ և ուշագրավ այդ իրերից համարյա ոչինչ չի հասել մեզ։

Կիրառական արվեստի նշանավոր ստեղծագործություն է Էջմիածնի ավետարանի փղոսկրյա կազմը, որը VI դարի գործ է։ Կազմի ինչպես առաջին, նույնպես և վերջին երեսները բաղկացած են փղոսկրյա տախտակներից, որոնց վրա փորագրված են ավետարանական տեսարաններ։

---

34 Եղիշե, Վասն Վարդանայ և հայոց պատերազմին, Երևան, 1957, էջ 130։
35 Փաւստոս, Պատմութիւն հայոց, Թիֆլիս, 1912, էջ 107։
36 Մովսես Կաղանկատուացի. Պատմութիւն Աղուանից աշխարհի, Թիֆլիս, 1912, էջ 123։
37 «Սեբեոսի եպիսկոպոսի Պատմությունը», Երևան, 1939, էջ 78։
38 Ղեւոնդ, Պատմութիւն, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 20։
39 Ուխտանես եպիսկոպոսի, Պատմութիւն հայոց, Վաղարշապատ, 1871, հ. 2, էջ 65։

Առաջին երեսի վրա փորագրված է Տիրամոր պատկերը՝ գահույքի վրա նստած, մանուկ Հիսուսը գրկին, որի կողքերին տախտակների վրա քանդակված են ավետման, ծննդի տեսարաններ, փախուստը Եգիպտոս, վերևի տախտակին՝ խաչի փոխադրությունը, իսկ ներքևի տախտակին՝ մոգերի երկրպագությունը։

Կազմի վերջին երեսի կենտրոնում քանդակված է Քրիստոսի պատկերը՝ պատվիրանների տախտակը ձեռքին, կողքերին պատկերված են նրա հրաշագործությունների տեսարաններ, ներքևում՝ մուտքը Երուսաղեմ, վերևի տախտակի վրա՝ խաչի փոխադրությունը։ Ստրժիգովսկին ուսումնասիրելով մի շարք պատկերների կերպավորման հելլենիստական գծերը, պտղաբերած արմավենու առկայությունը և պատկերների ընդհանուր հորինվածքն ու ոճը՝ փղոսկրյա այդ կազմը համարում է VI դ. առաջին կեսի գործ, որը ծագել է Ռավեննայում[40]։ IV—VII դդ. հին և վաղ ֆեոդալական դարաշրջանների արվեստի հուշարձանների քննությունը ցույց է տալիս, որ այդ կազմը կարող էր և Հայաստանում ստեղծվել, ունենալով սիրիական շատ գծեր կամ ընդօրինակված լինելով սիրիական փղոսկրյա կազմերից։

Հայ թագավորները, նախարարներն ու բարձր հոգևորականներն ունեին իրենց կնիքները, որոնք լինում էին փորագիր քարից (գեմմա), հաճախ ամրացված մատանու վրա։ Գեմմա-կնիքների վրա սովորաբար փորագրվում էին կենդանիներ, թռչուններ, բուսական ու երկրաչափական զարդեր, իսկ հոգևորականների կնիքների վրա՝ նաև խաչ։ Նման կնիքներով են կնքվել Հայաստանում գումարված ժողովների որոշումներն ու կանոնները։ Այդպիսի ժողովներ, եպիսկոպոսների ու նախարարների մասնակցությամբ, քանիցս գումարվել են Դվինում (506, 554, 648), ուստի պատահական չէ, որ Դվինի պեղումների ժամանակ գտնվել են ոչ միայն կնիք-գեմմաներ, այլև մեծ թվով դրոշմներ՝ չթրծված կավի գնդերի վրա, որպիսինները ամրացվում էին ժողովների ընդունած որոշումներին ու կանոններին։

Աշխարհի բոլոր թանգարաններում պահվող սասանյան կնիքների բավականաչափ հարուստ հավաքածուների ուսումնասիրողները նշել են քրիստոնեական նշանների ու պատկերների, անգամ տեսարանների առկայությունը դրանց վրա, ուստի և արել են այն ճիշտ եզրակացությունը, որ այդ գեմմաների մի մասը պատկանել է Սասանյան տիրությանը ենթակա քրիստոնյա ժողովուրդների ներկայացուցիչներին և քրիստոնեություն ընդունած պարսիկներին։ Այնպիսի անունների առկայությունը, ինչպիսիք են Շուշան, Արտակ, Խադունի, Արմենդուխտ, Տրդատ և այլն վկայում են «սասանյան» համարված որոշ գեմմաների հայկական ծագման մասին[41]։

IV—VII դդ. գեղարվեստական մշակման են ենթարկվել նաև խեցեղենի որոշ տեսակներ, որոնց վրա հանդիպում են գծագրությամբ, փորագրությամբ կատարված, կամ թաց կավի վրա ճնշման եղանակով զարդարված, մասնավորապես Դվինում, պեղումների ժամանակ գտնված՝ IV—VII դդ. պատ-

---

[40] *Y. Strzygowski*, Das Etschmiadzin Evangelier, стр. 52.

[41] *Տե՛ս Մորթմանի և Զուսքինի հոդվածները* Zeitschrift der Deutsche Morgenlandische Geselschaft, ZVIII, XLVI, LVI, S 52։ Հ. Տաշյան, *Արշակունի դրամները*, «Հանդես ամսօրեա», 1905, էջ 165, *А. Я. Борисов*, Эпиграфические заметки («Труды отдела Востока. Государственного эрмитажа», т. 1, с. 238—241). *А. А. Калантарян*, Раннесредневековые буллы Двина, Ереван, 1982.

կանող շենքերի եղրային կղմինդրները, որոնց եռանկյունաձև ճակտոնների վրա հանդիպում են ոճավորված բուսական և երկրաչափական զարդեր։ Աղցի Արշակունյաց դամբարանի մաքրման աշխատանքների ժամանակ գտնվել են աղյուսներ՝ կենդանիների պատկերներով։

Դվինի և Գառնիի պեղումների ժամանակ հայտնաբերվել են նաև IV—VII դարերի գեղարվեստական մշակում ունեցող ապակյա անոթների առանձին նմուշներ՝ մեծ մասամբ բաժակներ։

IV—VII դարերի հայ արվեստի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այդ արվեստի հուշարձանները, ստանալով ֆեոդալական հասարակության գաղափարախոսության, մասնավորապես վաղ քրիստոնեական շրջանի մշակույթին համապատասխան բովանդակություն և ձև, միաժամանակ դեռևս պահպանում են հին հայկական կամ հելլենիստական դարաշրջանի մշակույթին բնորոշ գծեր ու հատկանիշներ, դրանով իսկ դրսևորելով հին հայկական արվեստի ելակետային նշանակությունը վաղ ֆեոդալականի համար։

## 5. ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆ

Հայաստանում վաղ ֆեոդալական հարաբերությունների կազմավորման շրջանում հայկական քրիստոնեական եկեղեցին, ստանձնելով ֆեոդալիզմի պաշտոնական գաղափարախոսի դերը, իր խիստ վերահսկողության տակ է առնում հայոց մշակութային, այդ թվում և երաժշտական կյանքը։ Նա նույնիսկ պայքար է ծավալում հեթանոսական կենսազգացողությունն արտացոլող ու բանավոր կերպով զարգացող գեղջկական ու գուսանական երգերի դեմ, դրանց հակադրելով եկեղեցական, սկզբնական ասկետական երաժշտությունը, իսկ գրերի գյուտից հետո՝ նաև հայոց նորաստեղծ հոգևոր երգը։ Այդ պայքարի հետևանքն այն է լինում, որ դարերի ընթացքում դանդաղորեն փոխվում են ինչպես շինականների, նույնպես և գուսանների բարոյագիտական ըմբռնումները, իրենց արտահայտությունը գտնելով նաև գեղջկական ու գուսանական երգերում։ Անկախ դրանից, Հայաստանում վաղ ֆեոդալական շրջանում նույնպես շարունակում են ծաղկել աշխարհիկ երգ-երաժշտության ճյուղերը, և բարձրանում զարգացման մի նոր, նշանակալի աստիճան։ Հայ շինականների երաժշտաբանաստեղծական փորձն այս շրջանում այնքան է հարստանում, որ մեր հին մատենագիրների հատուկ ուշադրությունն է գրավում «ռամիկներին»՝ տարբեր առիթներով, նույնիսկ հանպատրաստից հորինելու, մանավանդ «շեր» ու «սուխչ» կոչվող երգիծական և այլ երգեր ստեղծելու կարողությունը։ Այսպես, Հովհան Մամիկոնյանը ոգևորված պատմում է, որ երբ Վահան Կամսարականն ու Վարազ Պալունի իշխանը պարսից վրա տարած մի փայլուն հաղթանակից, և թշնամու դիակները մարտի դաշտում թողնելուց հետո մտնում են մի գյուղ, (Կենաց վայրք), նրանց ընդառաջ են դուրս գալիս «արք գեղջն պարուք եւ երգօք», որոնք՝ «շէր հանեալ ասէին».

«Կերան գազանք զմարմինս դիակացն եւ գիրացան.
Կուղ կերեալ ուռեաւ իբրւ զարջ.
Եւ աղուէս հպարտ եղեւ քան զառեւծ.
Գայլ քանզի շատակեր էր՝ պայթեաց»[42]։

42 Յովհան Մամիկոնեան. Պատմութիւն Տարօնոյ, Երևան, 1941, էջ 247։

«Սուիչ» երգերի մասին հիշատակություն ունի Ստեփաննոս Սյունեցին. «Զկատակերգութիւն աշխարհաւրէն, այսինքն վատ կենցաղավարելոցն և անարի և ծուլիցն և ընչասիրացն և ի վերայ այսպիսեացն զեպերականն և զհեգնականն առնել ճառս և սուիչս, որպէս ռամիկքն սովորաբար ստեղծանեն առ այնոսիկ»[43]։

Հայկական ժողովրդական ձայնագրված երգերի հին շերտերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ վաղ ֆեոդալիզմի շրջանում հայոց գեղջուկ երգաստեղծության մեջ զգալիորեն մեծանում է քնարական և քնարադրամատիկական նախասկզբների դերը[44], որպիսի հանգամանքն, անկասկած, զարգացման բարձր մակարդակի վկայություն է։ Այս շրջանի գեղջուկ քնարական ստեղծագործության տիպական գծերը պահպանած հազվագյուտ մի նմուշ է՝ «Ուռի ես, կեռանալ մի» սրտահույզ երգը[45]։

Լուրջ տեղաշարժեր են կատարվում նաև վիպերգության բնագավառում։ Ստեղծվում և բյուրեղանում են՝ «Պարսից պատերազմ» անվամբ հայտնի ազգային մեծ վեպը, այլև սրան հարող, ավելի տեղայնացված «Տարոնի պատերազմը», որոնցում գեղարվեստորեն պատմվում է Արշակունյաց Հայաստանի և Սասանյան Պարսկաստանի դարավոր պայքարը, և որտեղ հատկապես գովերգվում են Մամիկոնյան տան քաջարի զորավարների սխրանքները։ Ի տարբերություն հայկական նախորդ վեպի կամ վիպասանքի, այստեղ «պակասում է հրաշալին, գերբնականը։ Գործող անձերը, թեպետ հերոսական բնավորությամբ, բայց մարդիկ են։ Չկան հին առասպելները վիշապների մասին։ Նյութն ընդհանրապես շատ ավելի պատմական գույն ունի»[46]։

Այնուհետև, ըստ բոլոր տվյալների, քննարկվող պատմաշրջանում է, որ սկսում են՝ գեղջկականից անջատվելով, նրանից փոքր ինչ տարբեր երանգ ու ճաշակ (մասնավորապես՝ ավելի ենթակայական քնարականության մի երանգ ու ձևի մշակվածության մի նոր որակ) դրսևորել հայկական քաղաքային ժողովրդական երգն ու պարը, որոնց մասին որոշ գաղափար կարող ենք կազմել հետահայեցողաբար՝ Ակնա երգերի համեմատաբար պարզ նմուշներից[47]։

Բուռն ծաղկում է ապրում գուսանական արվեստը, որում ձևավորվում են զարդոլորումներով ճոխացված համերգային ձևերը։ Այդ մասին կարելի է դատել թե մեր վաղ միջնադարյան հոգևոր երգերում գուսանական արվեստից եկող գործիքային տիպի վիրտուոզ անցումների՝ պասաժների առկայությունից, և թե մի շարք հին հեղինակների բնորոշ ասույթներից։ Այս առումով հատկանշական են Ստեփաննոս Սյունեցու խոսքերը «գուսանական դայլայլիկների» մասին, որոնք պարզ վկայում են խնդրո առարկա երգերի զարդոլորուն նկարագիրը։ «Եւ զքնարական քերդութիւն ներդաշնակապէս,— գրում է Սյունեցին,— այսինքն զգուսանական դայլայլիկսն, նման սիրին թեթևս յընթացուցանել ըստ նմին խորհրդոց. և ստեղծանին ամենայն դայլայլիկքն հագներգու-

43 Ստեփաննոսի Սիւնեցւոյ Մեկնութիւն քերականին (տե՛ս *Н. Адонц*, Дионисий Фракийский и армянские толкователи, Птг., 1915, стр. 193).

44 *Х. Кушнарев*, Вопросы истории и теории армянской монодической музыки, Л., 1958, стр. 102.

45 Նույն տեղում, էջ 103։

46 Մ. Աբեղյան, Երկեր, հատ. Ա («Հայ վիպական բանահյուսություն»), Երևան, 1966, էջ 192։

47 Տե՛ս «Շար Ակնա ժողովրդական երգերի», ձայնագրեց Կոմիտաս վրդ. Գևորգյան, Էջմիածին, 1895։

*թեամբ և ոչ այն միայն, այլև յաստուածայինսն»[48]։ Ինչպես «ռամիկներին», այնպես էլ ազնվականության կենցաղում ավելի ևս մեծանում է գուսանների դերը։ Ուշագրավ է, որ, ըստ Դվինի չորրորդ ժողովի ԺԲ կանոնի՝ «ոմանք յազատաց և յռամիկ հեծելոց համնելով ի գեւղս ուրեք, թողեալ զգեւղն ի վանս առնեն իջեւանս և ի յարկս սրբոց, և գուսանօք և վարձակօք պղծեն զնուիրեալ տեղիսն Աստուծոյ, զոր տսակալի է քրիստոնէից լսել՝ թող թէ առնել»[49]։ Իսկ Հովհան Մամիկոնյանի վկայությամբ, Արծրունի իշխաններից մեկը նույնիսկ նկամտաբեր երկու գյուղեր է նվիրել իր սիրելի գուսանին[50]։ Պարզ է, ուրեմն, որ գուսաններից տաղանդավորագույններն այս շրջանում հռչակ են ձեռք բերում հայրենի երկրով մեկ։ Ավելին. գուսանական արվեստը, խտացնելով հայոց ավանդական բանահյուսությունից և ժողովրդաքաղաքային երգերից, հնագույն վիպասանների և գողթան երգիչների ձայնային-գործիքային արվեստից եկող կենսունակ շատ տարրեր, իր ներքին կուտակումներին զուգընթաց օրգանապես հարստանում է վաղ միջնադարյան Հայաստանի դրացի (արևելյան) երկրների երգարվեստի նվաճումներով։ Դեռևս VI—VII դդ. (արաբական արշավանքներից առաջ), Հայաստանն իր երգարվեստի նշանակությամբ ու ներկայացուցիչներով դուրս է գալիս սեփական սահմաններից և Սասանյան Պարսկաստանի արվեստագետների ու արվեստասերների կողմից գնահատվում՝ իբրև երգ-երաժշտության բնագավառում ժամանակի հռչակված երկրներից մեկը։ VII դ. սկզբներին, երբ Պարսկաստանի Խոսրով Ապրուեզ երաժշտասեր արքայի աջակցությամբ Տիզբոնում նախաձեռնում են երգ-երաժշտության կանոնավորմանը, Հայաստանից հրավիրվում են մի քանի հայ երաժիշտներ[51]։ Նրանց մասնակցությամբ էլ տեսականորեն իմաստավորվում է, այսպես կոչված, «խոսրովային ոճը», որի վավերացնող երկու խոշոր երաժիշտներից մեկը լինում է Սարգիսը[52]՝ պարսկական արքունիքում լավ ճանաչված հայ նշանավոր երգիչը[53]։*

*Վերջապես Հայաստանում սույն պատմաշրջանում անգամ բարձր մտավորականության ներկայացուցիչները հորինել են ոչ միայն եկեղեցական, այլև աշխարհիկ երգեր, թեև սրանցից լոկ հատուկենտ նմուշների խոսքերն են միայն հասել մեզ, ինչպես, օրինակ, Դավիթ Քերթողի՝ Տիգրան Երվանդյանին նվիրված տաղը, որից մի քանի տող բերում է Անանուն մեկնիչը[54], և կամ Դավթակ Քերթողի՝ աղվանից Ջևանշեր իշխանի եղերական մահվան առթիվ հորինած նշանավոր «Ողբը», որ բերում է Մովսես Կաղանկատվացին[55]։*

---

48 Ստեփաննոսի Սիւնեցւոյ, *Մեկնութիւն քերականին, նշվ. հրատ., էջ 193։*

49 *«Կանոնագիրք Հայոց» (ձեռագրերի համեմատությամբ խմբեց Ա. Ղլտճեան), Թիֆլիս, 1913, էջ 128։*

50 Յովհան Մամիկոնյան, *Պատմութիւն Տարօնոյ, նշվ. հրատ., էջ 156—157։*

51 Ա. Շահվերդյան, *Հայ երաժշտության պատմության ակնարկներ, Երևան, 1959, էջ 67—68։*

52 Ղ. Ալիշան, *Շնորհալի և պարագայ իւր, Վենետիկ, 1873, էջ 88 (ուշագրավ է, որ Սարգսին Պարսկաստանում «Հոռոմ» են անվանած եղել, նրա քրիստոնյա լինելու պատճառով, ինչպես սովորություն էր այն ժամանակ)։*

53 *Н. Тагмизян,* Теория музыки в Древней Армении, Ереван, 1977, стр. 35.

54 *Անանուն մեկնիչ քերականին (տե՛ս Н. Адонц.* Дионисий Фракийский и армянские толкователи, стр. 129).

55 *«Պատմութիւն Աղուանից, արարեալ Մովսէսի Կաղանկատուացւոյ», ի լոյս ընծայեաց Կ. Վ. Շահնազարեան, Փարիզ, 1860, էջ 354—359։*

Վաղ միջնադարում կիրառված երաժշտական գործիքների մասին մեզ գաղափար է տալիս աստվածաշնչի հայերեն թարգմանությունը, որի հեղինակները բնագրում հանդիպող այլազան նվագարանների ասորական կամ հունական անվանակոչությունների փոխարեն օգտագործել են իրենց շրջապատին լավ ծանոթ հայկական անուններ, ինչպես՝ փանդիռ, քնար, սրինգ, ծնծղա, տավիղ, փող[56], ջնար[57], եղջյուր (կամ եղջրափող)[58], զանգակ[59], թմբուկ[60] և այլն։ Սրանց պետք է ավելացնել նաև Դվինի պեղումներից հայտնաբերված պարկապզուկի մնացորդները[61], Գառնիում գտնված ոսկորե սրինգը, ինչպես և Մամբրե Վերծանողի նկարագրած բազմափող սրինգը, որի կատարողին նա անվանում է «արուեստապետ»[62], այլև «Դաշանց թղթի» հիշատակությունները շեփորների ու (ջրահնչակ) երգեհոնների[63] մասին, որոնք այդ գրության համար օգտագործված պատմական հավաստի նյութերից են։ Հիշյալ գործիքների մի զգալի մասը հիմնականում օգտագործել են գուսանները, բայց տարբեր նվագարանների ոչ մեծ խմբեր այս կամ այն չափով ու ձևով գործածական են եղել բնակչության բոլոր խավերի կենցաղում։ Երաժշտությունը դպրոցում ուսուցանվող առարկաներից մեկն էր և ըստ Հովհան Օձնեցու վկայության, «պարտ է ուսումնասիրացն... նուագարանօք քնարահարու լինել երաժշտական հոգւոյն»[64], չխոսելով այն մասին, որ դեռևս պարզված չէ, թե հայ եկեղեցին այս ժամանակաշրջանում իրոք մերժել է գործիքային նվագի մասնակցությունը պաշտոներգության մեջ[65]։

Խոսելով հայ հոգևոր երաժշտության մասին՝ պիտի ասել, որ այն՝ IV դարի սկզբից ապրելով նախնական խմորման հարյուրամյա մի շրջան, գրերի գյուտի շնորհիվ բարձրանում է հայոց պրոֆեսիոնալ երգարվեստի աստիճանին, ու պատմաշրջանի վերջում, իր ժամանակի չափանիշով դուրս է գալիս զարգացման ամենալայն մայրուղիներից մեկը։ Հինգ դար ընդգրկող ձևավորման պատմական այդ ընթացքը, իր մեջ ունի մի շարք բարդ անցումներ ու կեռմաններ։ Ամբողջության մեջ այն գոյացնում է հիմնականում երկու խոշոր շրջափուլեր, որոնք սահմանագծվում են՝ հաջորդաբար՝ IV—VI դարերով (բարձրակետ ունենալով V հարյուրամյակը), և VII—IX դարերով (բարձրակետ ունենալով VIII հարյուրամյակի առաջին քառորդը)։ Հայ հոգևոր երգերաժշտության նախնական զարգացումը Հայաստանում, մինչև գրերի գյուտը, մի հարց է, որն իր գլխավոր կողմերով իսկ տակավին բավարար լուսաբանված չէ։ Քիչ ավելի կոնկրետանում են մեր պատկերացումները, երբ մոտենում ենք IV դ. կեսերին՝ քրիստոնեական ծեսի ու արարողության մեջ հայ սաղմոսերգության բյուրեղացման շրջանին։ Ինչպես ճիշտ նկատում է Է. Վելեշը,

---

56 Մնաց, I, ժե։

57 Նաւում, Գ.. 8։

58 Նեեմի, ժԲ, 27։

59 Եղբ, ԼԲ, 23։

60 Ծնն., ԼԱ, 27։

61 Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, Երևան, 1952, էջ 178—180։

62 «Կորիւն վարդապետի, Մամբրէի վերծանողի և Դաւթի Անյաղթի մատենագրութիւնք», Վենետիկ, 1833, էջ 42։

63 Ղ. Ինճիճյան, Հնախօսութիւն, հատ. Բ., Վենետիկ, 1835, էջ 253։

64 «Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ մատենագրութիւնք», Վենետիկ, 1953, էջ 31։

65 Տե՛ս Վ. Հացունի, Եկեղեցական երաժշտության մասին, «Բազմավէպ», 1917, № 5, էջ 207—212։

քրիստոնեությունը ծագել է Հռոմեական կայսրության հեռավոր մարզերից մեկում, որի բնակչությունը բաղկացած էր արամեացիներից, կապադովկացիներից, հայերից ու հրեաներից։ Քանի որ քրիստոնեությունը սկզբնական շրջանում ժողովրդական կրոն էր, հակադրված տիրապետող գաղափարախոսությանը, ապա ուրեմն նոր պաշտամունքին կապված արվեստը ևս, բնականաբար, պետք է լիներ մեծ մասամբ տեղաբնիկ արվեստագետների գործունեության արգասիքը[66]։

Հայաստանում քրիստոնեությունը պետական կրոն հռչակելուց հետո մինչև հայերեն գրերի գյուտը հունական կամ ասորական կրթություն ստացած եկեղեցականների գործունեության ամենակարևոր բնագավառներից մեկն էլ եղել է ժողովրդի համար մատչելի «ընթերցվածների» ու աղոթքների, մասնավորապես, ժամանակի «հասարակաց աղոթքի» գլխավորագույն մասը կազմող սաղմոսների բանավոր թարգմանությունը, նույնիսկ եկեղեցում[67], որտեղ ասորերենով[68] թե հունարենով[69] կատարվող արարողություններից բնակչության լայն զանգվածները ոչինչ չէին հասկանում։ Անհրաժեշտ էր, որ հոգևորականները իմանային հայիրեն և քարոզներն անեին հայերեն լեզվով[70]։ Բանավոր կերպով թարգմանված աղոթքները և, մանավանդ, սաղմոսները ժողովուրդը անգիր էր անում[71] ու երգում բնականաբար՝ հիմնվելով երաժշտական սեփական դարավոր փորձի վրա[72]։

Սաղմոսները հնուց ի վեր անգիր երգվել են ոչ միայն մեր մեջ, այլև հույնաց և ասորիների, և այսպիսով ստեղծվել են կանոնական աղոթքների «ռամկական» տարբերակները ևս, որոնց կատարումը եկեղեցում արգելում էր Լավոդիկեի ժողովի ԾԷ կանոնը[73]։ Նույն ժողովի ԺԵ կանոնը նաև արգելում էր ժողովրդին եկեղեցում մասնակցել սաղմոսերգությանը[74], և սակայն, չնայած դրան, սաղմոսները լայն ժողովրդականություն էին ստանում, որովհետև երգվում էին ոչ միայն եկեղեցում։ Հենց IV դարում Եվսեբիոս Կեսարացին Սաղմոսի մեկնության մեջ վկայում էր, թե սաղմոսները ժողովուրդը երգում է ամեն տեղ՝ քաղաքներում, գյուղերում և անգամ դաշտում, ոչ միայն հունաց, այլև «բարբարոսների» միջավայրում[75]։ Ու եթե Ղ. Փարպեցին էլ արձանագրում է, թե մեր մեջ, Աստվածաշնչի հայերեն թարգմանությունից անմիջապես հետո, ինչպես մեծահասակներից, այնպես էլ դեռատի մանուկներից շատերը «սաղմոսում էին» հրապարակներում, փողոցում և անգամ տանը[76], ապա ուրեմն պարզ է, որ Հայաստանում նույնպես սաղմոսները մասսայաբար անգիր

---

[66] F. Wellesz, Byzantine Music (Տե՛ս Proceedings of the Musical Association, 1932,I).

67 Մ. Օրմանյան, Հայոց եկեղեցին, Կ. Պոլիս, 1912, էջ 33։

68 «Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն հայոց», էջ 13։

69 «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն հայոց», Թիֆլիս, 1913, էջ 301։

70 Լ. Խաչիկյան, Փոքր Հայքի սոցիալական շարժումների պատմությունից, Երևան, 1951, էջ 15—16։

71 Մ. Օրմանյան, Հայոց եկեղեցին, էջ 33—34։

72 Հմմտ.՝ Կոմիտաս, Հոդվածներ և ուսումնասիրություններ, Երևան, 1941, էջ 105։

73 Տե՛ս «Կանոնագիրք հայոց» (աշխատասիրությամբ Վ. Հակոբյանի), հատ. Ա, Երևան, 1964, էջ 240։

74 Նույն տեղում, էջ 232։

75 Տե՛ս Ն. Հացունի, Պատմություն հայոց աղոթամատույցին, Վենետիկ, 1965, էջ 16։

76 «Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն հայոց», էջ 17։

Երգելու սովորույթը գալիս էր հնուց և, գոնե IV դարի կեսերից կենցաղում արմատացել էր արդեն։ Այսպիսով, Հայաստանում գրերի գյուտից էլ առաջ գոյություն ուներ քրիստոնեական պաշտամունքային բնագրերի եղանակավորման հայկական ազգային մի ուղղություն, որ ծագելով, ձևավորվել էր ժողովրդի ընդերքում։ Ինչ վերաբերում է պաշտոնական եկեղեցու ներկայացուցիչներին, ապա նրանք ևս, պաշտամունքային արարողությունը ստիպված կատարելով օտար լեզուներով, առարկայականորեն գեթ այն ծառայությունը մատուցեցին, որ Հայաստանը մի ամբողջ դար անմիջականորեն հաղորդակցվեց ասորական և հունական հոգևոր երգարվեստի փորձին։ Այդ հաղորդակցությունը շարունակվեց հետագա դարերում ևս, բայց արդեն բոլորովին նոր հիմքերի վրա։

Գրերի գյուտից անմիջապես հետո, Սահակ Պարթևի ու Մեսրոպ Մաշտոցի, ինչպես և նրանց ավագ աշակերտների ջանքերով թարգմանվում են Աստվածաշունչն ու պաշտամունքային գրքերը (գլխավորապես հունարենից)[77], որով ծեսն ու արարողությունը հայանում, բարեկարգվում և շուտով ճոխանում է[78]։ Հենց այս ժամանակ էլ, բնականաբար, անհրաժեշտ է դառնում ծեսի ու արարողության նաև երաժշտական կողմի բարեկարգման գործը, որը և գլուխ են բերում դարձյալ Սահակն ու Մաշտոցը, եկեղեցական երաժշտության հիմքում դնելով հայոց ավանդական ձայնեղանակները, ուսուցանելով դրանք աշակերտներին[79]։ Եկեղեցին նույնիսկ տարբերայնորեն սեփականում է սաղմոսերգության վերոհիշյալ ժողովրդաազգային ուղղությունը։ Ծագում է հայոց հոգևոր ինքնուրույն երգը[80], և այդ կապակցությամբ լիովին գիտակցված եռանդուն ջանքեր են ի գործ դրվում՝ պրոֆեսիոնալ նորաստեղծ երգարվեստն ազգային ձևերի մեջ զարգացնելով, նրա տեխնիկագեղարվեստական մակարդակն ասորականի և հունականի աստիճանին բարձրացնելու նպատակով։ Ինքնուրույն և թարգմանական հարուստ գրականության միջոցով տակավին V—VI դդ. գիտելիքների զգալի պաշար է կուտակվում նաև երաժշտության տեսության առումով։ Ի լրումն ձայնեղանակների կարգավորության՝ մշակվում են ուսմունքներ ձայնի[81] և ներդաշնակության հենքի մասին[82]։ Ազգային նոր դպրոցներում ջանասիրաբար յուրացվում է քերականության արվեստը։ Լայնորեն մեկնաբանվում են՝ տառի, վանկի, խոսքի և նախադասության կատեգորիաների՝ ինչպես և կետադրության վերաբերյալ մի շարք դրույթներ, որոնք մեծապես նպաստում են նաև երաժշտաբանաստեղծական արվեստի մետրառիթմիկ կողմը, և առհասարակ երգերում ու ասերգերում խոսքի ու երաժշտության փոխկապվածությունը տեսականորեն իմաստավորելուն[83]։ Նույնիսկ երաժշտագեղագիտական միտքն է կազմավորվում, եկեղեցական ու աշխարհիկ

---

77 Կորյուն, Վարք Մաշտոցի, Երևան, 1941, էջ 56 և 76։

78 Ն. Թահմիզյան, Երաժշտությունը հին և միջնադարյան Հայաստանում, Երևան, 1982, էջ 10։

79 Տե՛ս «Մեսրոպ Մաշտոցն ու հայոց հոգևոր երգարվեստը», «Բանբեր մատենադարանի», № 7, Երևան, 1964, էջ 177։

80 Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք Ա, էջ 477—478։

81 Տե՛ս «Ձայնի մասին ուսմունքը հին և միջնադարյան Հայաստանում», «Բանբեր մատենադարանի», № 5, Երևան, 1960, էջ 43։

82 Տե՛ս «Ներդաշնակության հենքի մասին ուսմունքը միջնադարյան Հայաստանում», ՊԲՀ, Երևան, 1966, № 1, էջ 75։

83 Նույնը պետք է ասել՝ առոգանության և տաղաչափության վերաբերող դրույթների կապակցությամբ ևս, մեկ վերապահումով. վերջիններս չէին արտացոլում հայոց լեզվի յուրահատկությունները, չնայած դրան, օգնում էին դպրոցականներին՝ տեսականորեն պատրաստվելու։

մտածողության երկու ուղղություններով[84], որ արդեն ինքնին ցույց է տալիս երգարվեստի խնդիրների գիտակցման աստիճանը։ Աչքաթող չեն արվում նաև երգարվեստի տեխնոլոգիայի հարցերը. Թարգմանվում են Եփրեմ Ասորու հռչակված «կցուրդները»[85] (առանց, սակայն, դրանք պաշտոնական ժամերգության մեջ մտցնելու)։ Հատուկ նպատակամետությամբ ուսումնասիրվում են հունական «կցուրդները» կս τροπάριον կոչված երգերը, անգամ ստեղծվում են հունաց մեջ տարածված մի քանի ավարտուն երգերի՝ ինչպես, օրինակ՝ «Փառք ի բարձունս»-ի և «Լույս զուարթ»-ի հայկական տարբերակները[86] և այլն։

Միաժամանակ, հենց նշված ձևերը հայկական ազգային մելոսի հիման վրա կիրառելու ձգտումով, հայ պրոֆեսիոնալ նորաստեղծ արվեստի մշակները լայնորեն օգտվում են ժողովրդական ու գուսանական երաժշտության մեջ դարերով կուտակված լեզվաոճական և այլ հարստություններից։ Արդեն հայկական ավանդական ձայնեղանակները դնելով հոգևոր երաժշտության հիմքում, նրանք ամենակարևոր քայլն են անում այդ ուղղությամբ։ Որովհետև հիշյալ ձայնեղանակների շնորհիվ ժողովրդագուսանական արվեստից հոգևոր երգին անցել են ոչ միայն երաժշտության լադային հիմքն ու տիպականացված մեղեդիների ծավալման հիմնական սկզբունքները, այլև մեղեդիական կոնկրետ դարձվածքներ ու նույնիսկ քիչ թե շատ ամբողջական մեղեդիներ։ Բացի դրանից, եկեղեցականներն այս շրջանում աշխարհիկ արվեստից փոխ են առնում մի շարք ձևեր ևս, ինչպես՝ «կրկնակով» կամ «դարձով» երգի ձևը, «հանկերգ-կրկներգի» ձևը, ապա և՝ հենց երգայնության հասնելու հնարանքները։ Սակայն այս բոլոր կողմերից ներհոսող տարրերը չէին հանգեցնի որևէ օրգանական արդյունքի, եթե հայոց հոգևոր երգարվեստը չունենար զարգացման իր ներքին խթանը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հայ պրոֆեսիոնալ երգարվեստի օրինաչափ զարգացումը զուտ երաժշտական տեսակետից, պայմանավորված է եղել՝ երգելու համար որպես հիմք վերցված գրական խոսքի նկատմամբ հանդես բերվող վերաբերմունքի աստիճանական ու հետևողական խորացմամբ։ Որովհետև այդ խորացումը գործնականում իրացվել է՝ երգերում երաժշտության կատարած դերի աստիճանական մեծացման միջոցով[37]։

Տվյալ ժամանակաշրջանում հայ հոգևոր երգի հեղինակներն են, նախ՝ Մեսրոպ Մաշտոցն ու Սահակ Պարթևը և ապա՝ նրանց ավագ ու կրտսեր աշակերտները։ Մեսրոպ Մաշտոցը հորինել է ապաշխարության շարականները, իսկ Սահակ Պարթևը՝ Ղազարու Հարության, Ծաղկազարդի և Ավագ շաբաթվա երգերը[88]։ Ցավոք, սահակ-մեսրոպյան ավագ աշակերտների երաժշտաբանաս-

84 Տե՛ս «էջեր հայկական վաղ միջնադարյան երաժշտական գեղագիտությունից», (Լրաբեր հաս. գիտ.), 1961, № 2, էջ 49։

85 Տե՛ս «Կցուրդք Ս. Եփրեմի խորին Ասորւոյ», Վիեննա, 1957, էջ ԺԷ։

86 Վ. Հացունի. Պատմութիւն հայոց աղօթամատոյցին, Վենետիկ, 1965, էջ 178—180։

87 Զարգացման այդ ներքին խթանն էապես կապված է նույնիսկ այն հինավուրց դրույթին, որի համաձայն՝ երգում առաջնայինը խոսքն է, իսկ երաժշտությունը՝ այն լսելի դարձնելու միջոցը միայն։ Երգարվեստի պատմական զարգացմամբ, սակայն, այդ դրույթը գործնականում, մի շարք դեպքերում, վերածվում է իր հակադրության. եղանակվող խոսքին ցույց տրվող վերաբերմունքն այնքան է խորանում և, դրանով իսկ, երգերում հենց երաժշտական բաղկացուցչի դերն այնքան է մեծանում, որ ձևագոյացման առումով գրական տեքստի նշանակությունը մղվում է ետին պլան։

88 Տե՛ս «Բանբեր մատենադարանի», № 7, Երևան, 1964, էջ 184։

տեղծական գործունեության վերաբերյալ կոնկրետ տեղեկությունններ բոլորովին պահպանված չեն, չնայած ընդհանուր առմամբ հայտնի է, որ նրանց մեջ ևս եղել են երաժիշտներ[89], որոնցից այստեղ հիշատակելի է գեթ Երեմիա Սարկավագապետը։ Փոքր-ինչ ավելի որոշ են պատկերացումները կրտսեր աշակերտներից մի քանիսի մասին։ Այսպես, միջնադարից եկող մի ամբողջ շարք տեղեկությունների համաձայն, Ստեփաննոս Սյունեցի Ա-ն հորինել է ավագ օրհնության մի քանի շարականներ[90], Մովսես Խորենացին՝ Ծննդյան, Հարության, Տեառնընդառաջի և այլ տոների վերաբերող շարականներ[91], Հովհան Մանդակունին՝ նույնպես Հարության, Տեառնընդառաջի, այլև նահատակաց նվիրված և այլ երգեր[92], Գյուտ Արահեզացին՝ արևագալի (հին) կանոնն ու քարոզը[93] և այլն։ Այսպիսով պարզ է, որ կրտսեր աշակերտների անվան հետ կապված շարական երգերի մեծագույն մասն իրոք ստեղծվել է V դարում։ Այդ, ինչպես և Սահակ-Մեսրոպյան շարականների քննությունը ցույց է տալիս, որ նշված հարյուրամյակում հայ հոգևոր երաժշտության բնագավառում ձեռք բերված ստեղծագործական կարևորագույն նվաճումը Ս. Գրքի սաղմոսներից և օրհներգություններից հետո որպես հավելված կատարվող փոքրածավալ «կցուրդ» տիպի երգերի ծաղկումն է՝ հայ ազգային հողի վրա։ Դրանց կատարումը եկեղեցում մինչև VIII դարն ազատ է եղել, որով դրանք անկաշկանդ ծավալվել ու զարգացել են։ Հաղթահարելով սաղմոսների եղանակներին հատուկ որոշ միօրինակությունն ու կաղապարյալ եղանակավորման բնույթը՝ հայ երգիչներն իրենց ինքնուրույն «կցուրդներում» ջանացել են հասնել եղանակների երգայնության (հոսունության), հուզական առավել հագեցվածության, ջերմության, հոգեբանորեն առավել տարանջատված իմաստավորման ու վառ կերպարայնության։ Եվ հասել են այդ ամենին, ինչպես խմբական (միաձայն), նույնպես և միայնակ (սոլո) կատարման համար նախատեսված ստեղծագործությունների գծով։ Խմբական կատարման համար նախատեսված երգերն իրենց ծնունդով կապված են սաղմոսներին, ուստի և սաղմոսատիպ են անվանվում։ Նույնիսկ սաղմոսատիպ հնագույն երգերի մեղեդիներում, որոնք զուգորդվել են ազատ ոտանավորներով, արդեն կիրառված է երգայնության այն սկզբունքը, որը ժամանակի ընթացքում արմատանալով տիրապետող էր դառնալու։ Այս տիպի երգերի մի հիանալի նմուշ է Մեսրոպ Մաշտոցի «Զըղջման իմոյ» շարականը։ Սաղմոսատիպ երգերից ծագում են հիմնային բնույթի ավելի զարգացած ստեղծագործությունները, որոնց եղանակները զուգորդվելով արդեն տաղաչափված ոտանավորների հետ, իրենք ևս աչքի են զարնում կուռ ռիթմա-ինտոնացիայով։ Միայնակ կատարման համար նախատեսված երգերում ազատ կիրառվել է գրական խոսքի առանձին վանկերը երկարաձգելու և զարդոլորելու հինավուրց հնարանքը։ Այս երգերից հնագույնները նկատվում են Սահակ Պարթևի ստեղծագործություններում, ինչպես օրինակ՝ «Ահաւոր ես

---

89 Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն հայոց, Երևան, 1961, էջ 27—28։

90 Տե՛ս Մ. Չամչեանց, Պատմութիւն հայոց, հ. Ա, Վենետիկ, 1784, էջ 780։

91 Տե՛ս Գր. Տաթևացի, Գիրք հարցմանց, Կ. Պոլիս, 1729, էջ 637։

92 Տե՛ս Բ. Սարգսյան, Քննադատութիւն Յովհան Մանդակունւոյ եւ իւր երկասիրութեանց վրայ, Վենետիկ, 1895, էջ 35։

93 Մ. Քեշիշյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Զմմառի վանքի մատենադարանին, Վիեննա, 1964, էջ 73։ Հ. Տաշյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց, Վիեննա, 1895, էջ 516 և 689։

Թագաւորս գեղեցիկ շարականը,— և իրենցից ներկայացնում են կառուցվածքային երկարաձիգ փոքրածավալ գործեր, որոնցում դեռևս պարզ զգալի է՝ ձևավորման տեսակետով գրական խոսքի կատարած որոշիչ դերը։ Սրանցից հետագայում առաջանում են հանկարծաբանական երկարաձիգ ավելի ծավալուն երգեր, որոնցում երաժշտական բաղկացուցիչը ձևավորման առումով ինքնաբավ է արդեն։

Հայոց հոգևոր ինքնուրույն երգի զարգացման խնդիրները արծարծվում էին, անշուշտ, Սահակ-մեսրոպյան դպրոցներում, որոնցից կարևորագույնը, V դարում, Վաղարշապատի վարդապետանոցն էր, որ գտնվում էր երկրի կենտրոնում՝ «ի կայս Թագաւորացն եւ քահանայապետացն»[94]։ Պետք է նկատել, սակայն, որ V դարի հայ մշակութային գործիչների մեծ մասն իր բարձրագույն կրթությամբ կապված էր ասորական, մանավանդ հունական կենտրոններին, և սա՝ նշված հարյուրամյակում հայ պրոֆեսիոնալ երգարվեստի թռիչքը պայմանավորող ազդակներից մեկն էր անկասկած։ Հետագայում բոլոր միջոցները ձեռնարկվեցին բարձրագույն կրթության գործը հայրենիքում հուսալի հիմքերի վրա դնելու համար։ VI դարում հայ հոգևոր երգաստեղծության մեջ չենք հանդիպում ոճականորեն կայունացած մի նոր երևույթի։ Այն՝ ներքին նոր կուտակումների ու արտաքին նոր մերձեցումների և պատվաստումների ժամանակաշրջանն էր, այն դարը, երբ Բյուզանդիան իր մշակութային դեմքը վերջնականապես դարձրեց դեպի քրիստոնյա Արևելք[95], իսկ հայկական հոգևոր կյանքն իր հունաբան հոսանքով, «փիլիսոփաներով», «քերդողներով» ու «ճարտասաններով» առավել սերտորեն կապվեց հելլենաբյուզանդականին[96]։ Հայաստանում ուշադիր հետևում են՝ «կացուրդի» կամ «կանդակի» բյուրեղացմանը բյուզանդական երաժշտության մեջ, ի մոտո ծանոթանում են հույն երաժիշտբանաստեղծներից թերևս ամենամեծի՝ Ռոմանոս Երգեցողի ստեղծագործությանը[97], և որ նվազ կարևոր չէ՝ լուրջ աշխատանքներ են նախաձեռնում բարձրագույն կրթության կատարելագործման ասպարեզում։ Այս ժամանակ է, որ Եզրաս Անգեղացին «զդասս ճարտասանիցն բազմացուցանէր»[98], Ներսես Բ Բագրևանդացին հատուկ ջանքեր էր գործադրում ուսման և կրթության կենտրոնների ծաղկման համար[99], և իրոք փայլում էին Սյունյաց դպրոցները։

Այս նախաձեռնումներին հետևեցին արդյունքները։ Հաջորդ VII դարասկզբից հայ մշակութային կյանքում ծայր առավ վերելքի երկրորդ մեծ շրջանը։ Այս հարյուրամյակում շարունակեց փայլել Սյունյաց վարդապետանոցը (մանավանդ Մաթուսաղայի ուսուցչապետության շրջանում), բայց նրա հետ մեկտեղ ծաղկեցին Արշարունյաց կամ Երասխաձորի «Վարդիկ հայր» դպրոցն ու Շիրակի Դպրեվանքը, ըստ բոլոր տվյալների՝ Կոմիտաս Աղցեցու հոգատարության շնորհիվ, որով բարձրագույն կրթություն ստանալու ծարավի հայ պատանիներն այլևս պետք չունեին հեռագնաց ուղևորությունների։

---

94 Կորյուն, Վարք Մաշտոցի, էջ 58։

95 Н. Адонц, Նշվ. աշխ. (տե՛ս առաջաբանը, էջ VII—XIV)։

96 Հ. Մանանդյան, Հունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները, էջ 233։

97 Տե՛ս Ն. Թահմիզյան, Գոզիկ Այրիվանեցին և հայ բյուզանդական երաժշտական հարաբերությունները, «Բանբեր համալսարանի», Երևան, 1968, № 2։

98 Ստեփաննոս Ասողիկ, Պատմութիւն Տիեզերական, Պետերբուրգ, 1885, էջ 82։

99 Մ. Օրմանյան, Ազգապատում, § 371։

Երաժշտության տեսությունը Հայաստանում հարստացավ հնչականության (ակուստիկայի) մասին ուսմունքով[100], իսկ գեղագիտությունը՝ Մովսես Քերթողի գաղափարներով[101]։ Երգաստեղծության բնագավառում Կոմիտաս Աղցեցու[102] բարձրարվեստ «Անձինքն» է, որ նշանավորում է խոր տեղաշարժերի սկիզբը։ Գրական վարպետ չափածո խոսքով, դրան համապատասխանող վառ մեղեդիով աչքի ընկնող այդ ստեղծագործությունն ունի «կացուրդ» կամ «կոնդակ» (κοντάκιον) կոչվող ավելի բարդ մի ժանրի բոլոր հատկանիշները։ Սակայն, լրիվ ազգայնացված և նույն ժամանակաշրջանի բյուզանդական կոնդակների համեմատությամբ նույնիսկ ավելի երգայնացված մի գործ է սա, որ նոր մակարդակ է ստեղծում հայ հոգևոր արվեստում և զարգացման նոր խթաններ հաղորդում նրան։ Ստեղծագործական ասպարեզ են դուրս գալիս ուրիշ երգահաններ ևս՝ Սահակ Ձորոփորեցին, որ հորինել է խաչի ու եկեղեցվո շարականների մեծ մասը[103]. Անանիա Շիրակացին և Բարսեղ Ճոնը, որոնք հորինել են Հարության, Համբարձման, Հոգեգալստյան, Ծննդյան ու եկեղեցական մի քանի այլ տոների նվիրված երգեր. նույնիսկ աշխարհականներ, որոնցից է Վարազտիրոցի որդի Աշոտ Բագրատունին, որի երգած մեկ շարականը՝ «Ջորս ըստ պատկերի»[104], կանոնացրել է եկեղեցին։ Այս շրջանում հայկական հոգևոր ինքնուրույն երգերի հորինումն ու կատարումը եկեղեցում դեռևս ազատ լինելով, դրանք այնքան են բազմանում, որ հարկ է զգացվում հատկապես զբաղվել ծեսի ու արարողության հարցերով։ Դա մասամբ արել է տակավին Եզր Փառաժնակերտացին, բայց ավելի՝ Ներսես Գ. Իշխանցին, որ եկեղեցում նոր երգերի կատարման ազատությունից բխող անպատեհությունները կանխելու նպատակով Շիրակի Դպրեվանքի առաջնորդ Բարսեղ Ճոնին հանձնարարել է ստեղծված շարականներից լավագույններն ընտրելով կանոնացնել[105]։ Ըստ եղած տվյալների՝ Բարսեղ Ճոնը եկեղեցու կողմից պաշտոնապես ընդունված հոգևոր ինքնուրույն երգերի առաջին ժողովածուն է կազմում, որ և կոչվում է «Ճոնընտիր»։

Այս միջոցառումները սակայն, ոչ միայն չեն խանգարում, այլև նպաստում են հայոց մասնագիտացված երգաստեղծության զարգացմանը, որի բարձրացող ալիքները հասնելով մինչև VIII դարի առաջին քառորդը, հանգեցնում են լուրջ արդյունքների։ Նախ ավելի ևս բարձրանում է մի քանի վարդապետանոցների՝ Սյունյաց, Այրիվանքի կամ Գեղարդա, ինչպես և Մաքենոցաց դպրոցների մակարդակը (հատկապես «Հարանց հայր» Սողոմոնի ուսուցչապետության տարիներին)։ Կարելի է ասել, որ հիշյալ և նման դպրոցներում աշակերտներին տրվում էր ոչ միայն ընդհանուր, այլ երբեմն նաև մասնագիտական թեքումով բարձրագույն կրթություն։ Ծեսի, արարողության խնդիրները Հովհան Օձնեցու կողմից արժանանում են մի նոր լուսաբանության՝ իր «Յաղագս կարգաց եկեղեցւոյ» և այլ գրվածքներում։ Ստեփաննոս Սյունեցի Բ-ի նախա-

---

100 Տե՛ս Ն. Թահմիզյան, Մի էջ հայկական վաղ միջնադարյան երաժշտական տեսությունից. «Բանբեր մատենադարանի», № 5, էջ 43, 76։

101 Տե՛ս «Մովսէսի Քերթողահաւրն Յաղագս կարգաց եկեղեցւոյ», «Անահիտ», 1935, № 1—2, էջ 30։

102 Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն հայոց, Երևան, 1961, էջ 53։

103 Գր. Տաթևացի, նշվ. աշխ., էջ 637։

104 «Հաւաքումն Պատմութեան Վարդանայ Վարդապետի», Վենետիկ, 1862, էջ 71։

105 Նույն տեղում, էջ 69, նաև՝ Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն, էջ 61—62։

ձեռնությամբ կրկին վերակարգավորվում են հայոց ձայնեղանակները, ըստ ութ-ձայնի համաքրիստոնեական նորագույն տեսության[106], սկզբունքորեն ընդունվում է եկեղեցական միևնույն տոնին վերաբերող 8—9 երգերից բաղկացած «կանոնի» ժանրը[107], ծագում է խազագրության արվեստի գաղափարը[108], ձևավորվում են գեղագիտական ավելի խորիմաստ դրույթներ։ Երգաստեղծության ազգային ավանդների հետագա հարստացման գործին, բացի Հովհան Օձնեցուց (որ հորինում է ավագ տոներին վերաբերող մի շարք շարականներ), մասնակցում են Ստեփաննոս Սյունեցի Բ-ն, Գրիգոր Այրիվանեցին, Սահակադուխտը և Խոսրովադուխտը։ Վերջիններս, ի հակադրություն բյուզանդացի նրաժիշտների, որոնց ստեղծագործության մեջ պատկերամարտության հետևանքով շուրջ հարյուրհիսունամյա մի ընդհատում էր առաջացել Ռոմանոս Երգեցողի հարթած ճանապարհին, Հայաստանում առանց որևէ ընդհատման զարգացրին երգեցողության արևելյան քրիստոնեական հեռանկարային ուղղությունը, հորինելով մի ամբողջ շարք մեղեդիներ, ստողոգիներ, առավոտերգեր և խազգրքերում ամփոփված զարդոլորուն (մելիզմատիկ) տիպի նման շատ գործեր»[109]։ Երգեցողության նշված ուղղությունը, որ V դարից հետո իր երկրորդ ծաղկումն էր ապրում Հայաստանում, ազդեց նաև շարականների վրա, ազատ անդրադարձում գտնելով, օրինակ, Խոսրովադուխտի «Զարմանալի է ինձ» գեղեցիկ գովքում։ Այն իր եռամաս ձևով, երաժշտական երկու տարբեր թեմաների վրա հիմնված զարգացմամբ, լադային կազմով և մեղեդիական հարուստ հյուսվածքով, անկասկած կարող է մրցել ժամանակի ասորական կամ հունական հոգևոր ամեն մի երգի հետ։

VIII դարի երկրորդ քառորդից, Հայաստանի քաղաքական ու տնտեսական ծանր իրադրության պատճառով, խափանվում է հայոց երաժշտամշակութային կյանքի առաջընթացը։ Նույնիսկ IX դարը, գոնե առաջին հայացքից, հարուստ չէ երևույթներով, չնայած պարզ է, որ այն կարևոր նշանակություն ունի ինչպես նախորդ նվաճումների ամրապնդման, նույնպես և հաջորդ (X դարից սկսվող) վերելքը նախապատրաստելու առումով։ Դատելով Աղթամարի և մանավանդ Սևանի ու Տաթևի դպրոցների վիճակից՝ հետևողականորեն կատարելագործվում էր ուսման և կրթության գործը վարդապետանոցներում։ Տաթևի դպրոցը Ստ. Օրբելյանի վկայությամբ, 896 թ. լեցուն է եղել արդեն «ծովամատոյց փիլիսոփայիւք երաժշտական երգոց»[110]։ Սևանում Մաշտոց Ա. Եղիվարդեցի կաթողիկոսը կարգավորում է հայոց գլխավոր ծիսարաններից մեկը՝ Մաշտոցը։ Երաժշտական կյանքում լայնորեն տարածվում և ընձյուղում է ութ ձայնի դրությունը։ Արվում են խազագրության առաջին փորձերը։

---

106 Ստեփաննոս Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 131—144։
107 Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք Ա, էջ 483—484։
108 Ռ. Աթայան, Հայկական խազային նոտագրությունը, Երևան, 1959, էջ 76—77։
109 Տե՛ս Ն. Թահմիզյան, Գրիգոր Այրիվանեցին և հայ բյուզանդական երաժշտական կապերը, «Բանբեր Համալսարանի», 1968, № 2։
110 Ստ. Օրբելյան, նշվ. աշխ., էջ 226։

## 6. ԹԱՏՐՈՆ

Միջնադարյան թատրոնն ամենաթատերայինն է բոլոր ժամանակների թատրոններից, նրանով, որ ազատ է եղել գրված խոսքի, որպես տիրապետող ուժի, իշխանությունից, որ իր և նյութը, և ձևը վերցրել է ոչ միջնորդաբար, այլ ուղղակի կյանքից։ Սա միջնադարյան թատրոնի և ուժն է, և թուլությունը. ուժը՝ բեմական երևակայության և թուլությունը՝ բանաստեղծական երևակայության առումով։ Միջնադարյան դերասանները գուցե եղել են մեծ իմպրովիզատորներ, և դրանով իսկ նրանց արվեստը կենսունակ էր իր ժամանակին։ Միջնադարյան թատրոնը հարուստ, բազմաբնույթ ու բազմաժանր է եղել։

Վաղ միջնադարյան Հայաստանում թատերական զվարճալիքները, ըստ պատմական ավանդույթների, սկսվում են նախարարական խնջույքներից ու խրախճանքներից։ Նախարարական և թագավորական խնջույքները եղել են երգի, պարի, խաղի, առակների, զրույցների ու վեպերի հորինման և ավանդման ասպարեզ[111]։ Մեզ հայտնի է Խորենացու ակնարկը, որ Արշակունյաց տան վեպը հորինվել է «ի գինարբուս և յերգս վարձակաց»[112]։ Այս երևույթը թատրոն չէինք անվանի, եթե չունենար պրոֆեսիոնալ նկարագիր։ Խնջույքների դահլիճներում պատմել, երգել ու խաղացել են ոչ թե խնջույքի մասնակից նախարարներն ու իշխանները, այլ «արուեստականք» կոչվող և խնջույքը զարդարող գուսաններն ու վարձակները։ Արուեստական բառը, ըստ Մ. Աբեղյանի, գուսան բառի հոմանիշն է[113]։ Այդ մասին է հուշում ամենահին վկայությունը. «դնել առաջի նմա խորտիկս և տալ նմա գինի, և ուրախ առնել զնա արուեստականօքն»[114]։

Խոսքն այստեղ երաժիշտ գուսանների մասին է։ Բայց բառի իմաստը դրանով չի սահմանափակվում։ «Արուեստական» նշանակել է նաև «ճարտար արուեստագէտ», «առաքինի, բարեպաշտ» (թերևս նկատի է առնվում կրթվածությունը), «նենգաւոր»[115]։ Համադրելով այս իմաստները և նկատի ունենալով բառի հետ ունեցած կապը, թվում է, «արուեստական» բառը կարելի է հասկանալ իր գործին, արվեստին կատարելապես տիրապետող մարդ։ Բառի ամենաստույգ իմաստն է (եթե ելնենք արմատի՝ «արուեստ» բառի իմաստից) «Ճարտարութիւն, մտաւոր կամ ձեռական արհեստ»[116]։ Ուշագրավն այն է, որ հայկական միջնադարում եղել է ոչ միայն կատարողական արվեստի պրոֆեսիոնալիզմի ըմբռնումը, այլև հասկացությունն արտահայտող տերմինը։

Մյուս բառերը «խնջույք» և «ժողով» բառերն են։ Դրանց միջնադարյան իմաստը էապես տարբեր է այսօրվա իմաստից։ Ըստ Մ. Աբեղյանի բացատրության. «Խնճոյք» կամ «խնջոյք» նշանակում է ընդհանրապես որևէ հանդեսի

---

111 Տե՛ս Վ. Հացունի, Ճաշեր և խնջույք հին Հայաստանի մեջ, էջ 255 և հետ։

112 Մ. Աբեղյան, Երկեր, հ. Բ, էջ 193։

113 Նույն տեղում։

114 Փավստոսը պատմում է, որ Արշակի սենեկապետը՝ Դրաստամատը, այցելում է իր թագավորին՝ Անհուշ բերդում և գուսաններ է բերում նրան թեկուզ մի քանի ժամով զվարճացնելու համար։ Կարճատև ուրախությունը դառնացնում է Արշակին, և նա այդտեղ էլ ինքնասպան է լինում։

115 Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հ. Ա, 1971, էջ 332։

116 Նույն տեղում։

համար հավաքված, ժողովված բազմություն, ժողովք, իսկ մասնավորապես «ուրախութեան խնջոյք»—ուրախության սեղան... Ամենահին ժամանակներից խնջույքին համանշանակ է եղել «ժողովք» բառը[117]։ Իսկ Հ. Աճառյանը բերում է բառի ամենահին վկայություններից մեկը Ագաթանգեղոսից, խնճոյք այստեղ նշանակում է «հանդիսականների բազմութիւն»[118]։

Այսպիսով, միջնադարյան թատերական խաղահրապարակի նախնական տեսակներից մեկը պալատական խնջույքների սրահն է։ Անհրաժեշտ է հիշել, որ փոքրասիացի հույն դերասանները նույնպես «Թաքսուհիները» ներկայացրել են թագավորական ճաշկերույթի վերջում։ Սա, հավանաբար, շատ հին ժամանակներից եկող սովորություն է։ Այդ խնջույքները, պետք է կարծել, եղել են բազմամարդ, շքեղ ու հանդիսավոր։ Ինչպես նկարագրում է Վ. Հացունին, դահլիճում սեղաններն ու բազմոցները դասավորվել են պատերի երկայնքով, իսկ կենտրոնում գուսանների համար թողնվել է ընդարձակ տարածություն։ Երգը, խրախճանքն ու պարն սկսվել են ճաշկերույթից հետո։ Ներս են հրավիրվել գուսանները, վարձակներն ու կատակերգուները, մատռվակներն սկսել են գինի բաժանել շքեղ սափորներով, և սկսվել է անզուսպ ու շռայլ մի խրախճանք, ծափ, ծիծաղ, ոտքերի դոփյուն, երգ, պարերգակների խմբական պարեր, վարձակների կայթյուն, պագշոտ մնջախաղեր, խեղկատակություն, սրախոսություններ, պարկեշտությունից հեռու կատակներ և այլն։ Այստեղ էլ հորինվել կամ կրկնվել են նախնիների պատմությունները, գովերգվել նրանց քաջագործությունները։ Իսկ նախարարները, իշխանները, սեպուհներն ու ազատները, իրենց բարձերին նստած կամ թիկնած գինի են խմել, լսել ու դիտել, չխառնվելով գուսանների ու կատակերգուների խմբին։ Նրանք ունեցել են իրենց սիրելի գուսաններն ու վարձակները, իրենց երաժիշտներն ու ծաղրածուները։ Մեզ են հասել մեկ-երկու անուններ նրանցից։ Խորենացին հիշատակում է Բակուր Սյունյաց նահապետի Նազինիկ անունով վարձակին, որի պարով հափշտակվում է խնջույքի հրավիրվածներից մեկը՝ Տրդատ Բագրատունին և բռնությամբ խլում տիրոջից։ Խորենացու նկարագրածը[119], ըստ երևույթին, բնութագրական փաստ է, որ շատ բան կարող է ասել վաղ միջնադարի ֆեոդալական կենցաղի ու հոգեբանության մասին։

Վաղ միջնադարի հայ ֆեոդալ-ազնվականների կյանքն ու կենցաղը, ինչպես կռահում է Ն. Ադոնցը, նման է եղել IX—XI դդ. եվրոպական սինյորների կյանքին ու կենցաղին[120]. պատերազմներ արտաքին նվաճողների դեմ, ներքին փոխադարձ կռիվներ ու ապստամբություններ, իսկ խաղաղ միջոցներում՝ որսորդություն, խրախճանք, թատերային զվարճալիքներ[121]։

---

117 Մ. Աբեղյան, Երկեր, հ. Բ, էջ 193։

118 Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հ. Բ, 1973, էջ 130։

119 Խորենացի, նշվ. աշխ., էջ 195—196։

120 Н. Адонц, նշվ. աշխ., էջ 436—479։

121 Վ. Հացունի, Ճաշեր և խնջույք..., էջ 205։ Եվ այս ամենը գինու, շվայտության, ցոփության ու զգացմունքների ազատության հետ։ Նույնն է ասում Փավստոսի պատմածը Հուսիկի երկու որդիների՝ Պապի և Աթանագինեսի մասին. «ըմպէին անդ գինի բոզօք և վարձակօք և գուսանօք և կատակօք» (3, ժԹ)։ Այս ակնարկը բառացի չպետք է հասկանալ, որպես թե հայ ֆեոդալ-ազնվականներն ու նրանց որդիները սեղանակից էին դարձնում վարձակներին, գուսաններին ու կատակերգուներին, այլ՝ գինի էին խմում երգ ու երաժշտություն լսելով, վարձակների պարը և կատակերգուների խաղը դիտելով։

Հետաքրքրական է, նաև բնութագրական Փավստոս Բուզանդի վկայությունը, որ Պապ Արշակունու սպանությունը տեղի է ունեցել խնջույքի պահին, գուսանների ներկայացումը դիտելիս. «Երբ սկսեցին խմել, ուրախության առաջին բաժակը մատուցեցին Պապ թագավորին, և իսկույն հնչեցին թմբուկներն ու սրինգները, քնարներն ու փողերը իրենց ներդաշնակ ձայներով։ Վահանավոր զորքին հրաման տվին, և մինչ Պապ թագավորը ուրախության գինին բռնել էր մատներով ու նայում էր գուսանների խմբին, մինչ ձախ ձեռքի արմունկին հենված մատներում բռնած ուներ ոսկե թասը, իսկ աջ ձեռքը դրել էր նրանի կոթին, որ կապած ուներ աջ ազդրին, մինչև բաժակը բերանն էր տարել, որ խմեր, իսկ աչքերով հառած նայում էր գուսանների զանազան խմբերին»[122]։ Հնարավոր չէ չհիանալ Փավստոսի նկարագրության ոճով և գեղարվեստականությամբ։ Պապի դիրքն ու դիմանկարը նախ թատերային է, հռոմեական զորավարի մոտ խնջույքի հրավիրված Պապը թիկնել է բազմոցին, ձախ ձեռքում գինու ոսկե գավաթը, աջ ձեռքը սրի դաստապանին, հիացած աչքը գուսանների բազմությանը։ Նույնքան թատերային է նրա անկման պատկերը. դավադիրներից մեկը նրա աջ ձեռքին է զարկում, մյուսը պարանոցին, «և գինին տաշտին և արիւնն պարանոցին նովաւ հանդերձ ի վերայ բաժակալ սկըտեղն անկանէր առ հասարակ»[123]։

Հետաքրքիր է, որ պատմիչը չի ասում, թե իր հերոսը երգ ու նվագ էր լսում միայն, այլ «նայէր», «աչօքն յառաչ կոյս պշուցեալ հայէր»[124]։ Ենթադրվում է, որ արուեստականները թագավորի առջև ինչ-որ տեսարան են խաղալիս եղել, ըստ երևույթին, բազմամարդ տեսարան, կամ պարզապես խաղացողների, նվագողների ու երգողների մեծ բազմություն է եղել խնջույքի սրահում. պատմիչը երկու անգամ կրկնել է՝ «պէսպէս ամբոխս գուսանացն»։ Իսկ ի՞նչ գուսաններ են եղել նրանք, «թմբկահա՞րք և սրնգահա՞րք, քնարահա՞րք և փողահա՞րք», ինչպես պատմիչն է ասում։ Այստեղ արդեն բախվում ենք քրիստոնյա հեղինակի պայմանական ոճին. նա առարկանները կոնկրետ անուններով չի կոչում, այլ օգտվում է Ս. Գրքի թարգմանության բառապաշարից ու ոճից[125]։ Գուսանների խաղը նկարագրելու այս ձևը կրկնում են ուրիշ հեղինակներ ևս։ Նրանցից մեկը Կարծեցյալ-Շապուհ Բագրատունին է, որ Փավստոսից մոտ վեց հարյուր տարի հետո Ս. Գրքի ոճով նկարագրում է Դերեն Արծրունու խրախճանքը[126]։ Խնջույքի սրահում խաղ ներկայացնողները կաքավում էին, այսինքն՝ պարում (կաքաւ նշանակել է մենապար, կաքաւել՝ մենապարել)[127]։

Նազինիկի դրվագը, ինչպես և այլ օրինակներ ցույց են տալիս, որ մենապարողները գերազանցապես եղել են կանայք, որ «կաքաւ» կոչված պարը շատ դեպքերում ունեցել է զգայական բովանդակություն։ Հնարավոր է, որ դա նման լիներ ասորաբյուզանդական միմական պարերին, ինչպես ենթադրել են ուսումնասիրողները։ Եթե Տրդատը Նազինիկին նայելով «շամշելով վավա-

---

122 Բուզանդ (աշխ. թարգմ., էջ 271—272)։

123 Նույն տեղում։

124 Այս հանգամանքի վրա ուշադրություն է հրավիրում Գ. Գոյանը (տե՛ս նշվ. աշխ., էջ 269)։

125 Հմմտ. Յատն., ԺԸ, 22։

126 «Պատմութիւն անանուն զրուցագրի, կարծեցեալ-Շապուհ Բագրատունի», 1971, էջ 177։

127 Հմմտ. Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հ. Բ, 1973, էջ 563։ Այս իմաստի տեսակետից պետք է մեկնել նաև կաքաւիչ, կաքաւանք, կաքաւաձև, կաքաւարան (հմմտ. Գ. Գոյան, հ. Ա, էջ 232—233, Ս. Լիսիցյան, հ. Ա, էջ 72—73) բառերը։

շէր» կամ Պապը «աչօքն պշուցեալ հայէր», առանց նկատելու թիկունքից մոտեցող դավադիրների սուրը, պետք է մտածել, որ իրոք նրա տեսածը նման է եղել Հռոմի անկումից հետո Առաջավոր Ասիայում, հատկապես Ասորիքում ու Բյուզանդիայում լայնորեն տարածված կանացի պագշոտ մենապարերին։

Միջնադարյան թատրոնի ու թատերական զվարճալիքների մյուս հավաքական կերպարը կատակերգուն է կամ, ինչպես այս հասկացության ամենահին վկայությունն է ասում՝ խաղակատակը։ Միջնադարյան կատակերգակ դերասանը, ինչպես հայտնի է, կրում է տարբեր ու համանման մի քանի անվանումներ՝ խեղկատակ, ծաղրակատակ, խաղակատակ, այպնակատակ, հացակատակ, կատակ, կատակերգու, ծաղրածու, կատակագուսան և այլն։ Այս անվանումները պետք է կարծել, որ ենթադրում են նաև որոշ դասային կամ տեսակային-ժանրային տարբերություններ։ Այստեղ հետաքրքիրը միջնադարյան կատակարարի հավաքական կերպարն է, առանց որի չի պատկերացվում ոչ պալատական խնջույքը, ոչ շուկան կամ տոնավաճառը, ոչ թատրոնը, ոչ ժողովրդական տոնախմբությունը։ Այս կերպարը հատկանշում է հասարակության ստորին խավերի վերաբերմունքը կյանքի հանդեպ և շատ դեպքերում ներկայանում է որպես ապագասակարգային կերպար։ Անհեթեթի, խենթակերպի, հիմարի, տարօրինակ մարդու կերպարն ընդհանրապես բնորոշ է միջնադարյան քաղաքին։ Սա կարգից ու օրենքից դուրս մարդ է. նրան չեն հարգում, չեն դատում ու պատժում, նրա հետ չեն կռվում, ծաղրում են, նրա արածի ու ասածի վրա ծիծաղում ու վարձատրում։ Կատակարարն ունի որոշակի սոցիալական ֆունկցիա՝ արթուն է պահում հասարակության առողջ բանականությունը։

Խաղակատակ բառի հնագույն և ինքնատիպ վկայություններից մեկը հանդիպում է Փավստոսի երկում։ VI դպրության Ը, Թ և Ժ գլուխները ներկայացնում են նովելանման պատմություն մի ստահակ հոգևորականի՝ Հոհան եպիսկոպոսի մասին։ Ըստ հեղինակի, սա պատմական անձ է՝ Փառեն կաթողիկոսի (348—352) որդին։ Ընչաքաղցությունը Հոհան եպիսկոպոսին տանում է խաբեության ու կողոպուտի ճանապարհով (ավազակին քահանա է ձեռնադրում և փոխարենը խլում նրա ձին, զենքերն ու հագուստը) և ի վերջո հասնում արքունիք։ Եվ եպիսկոպոսը դառնում է հայոց թագավորների խեղկատակը։

Ո՞վ է այս Հոհան եպիսկոպոսը, և ի՞նչ ավանդություն է արձանագրել Փավստոսը։ Ըստ երևույթին սա պայմանական դեմք է, խորհրդանշանական մի կերպար. Փառեն հայրապետի որդին թերևս բոլորովին էլ խեղկատակ չի դարձել։ Նրա կեղծ բարեպաշտությունն ու ընչաքաղցությունը մերկացնելու համար Փավստոսը (կամ գրույցի իսկական հեղինակը) հավանաբար բնութագրական մի զուգահեռ է ընտրել՝ խեղկատակությամբ՝ հարստացողի տիպը կամ հոգևոր պաշտոնից փախածի, սոցիալական այլ դիմակ հագածի, գուցե և իսկապես խեղկատակ դարձած մարդու տիպը։ Այն պրոցեսները, որ տեղի են ունեցել միջնադարյան Եվրոպայում XIII դարից (որը կոչում են «ժոնգլյորների ոսկեդարը»[128]), Արշակունյաց Հայաստանում արդեն եղել էին ու ավարտվել։

Իսկ ի՞նչ խեղկատակություն էր անում Հոհան եպիսկոպոսը։ Փավստոսի նկարագրության մեջ[129], թվում է, պետք է տեսնել հին կատակախաղային մի

128 Տե՛ս С. С. Мокульский, История западноевропейского театра, т. I, М., 1936, стр. 125.

129 Փավստոս Բուզանդ, Ժ։

տեսարան՝ որևէ կենդանու դիմակով ներկայանալը։ Հոհան եպիսկոպոսը ներկայանում է ուղտի կերպարանքով և չորեքթաթ սողում թագավորների առջև՝ «և զուղտու զձայն ածէր կառաչելով... ասելով, թե «ուղտ եմ ուղտ եմ, և զարքայի մեղս բառնամ... և թագաւորին զմուրհակս գիւղից կամ զագարակաց գրեալ և կնքել դնէին ի վերայ ողինն Հոհանու»։ Սա անպայման իրականությունից եկող տպավորություն է, լինի Փավստոսինը, թե վերցված ժողովրդական զրույցից։ Հեղինակը պատմում է պալատական խեղկատակի մասին, բայց նրա տպավորությունները, թվում է, ուրիշ տեղից են. հավանաբար, շուկայական կամ թատերական խեղկատակներն այս ձևով են դրամ խնդրել, ծաղրելով հոգևոր հայրերին, որոնք դրամով թողություն են շնորհել մարդկանց մեղքերին։ Սա ժողովրդական երգիծանքից եկող մոտիվ է։

Պալատական թատրոնը հայկական միջնադարում երկար է գոյատևել և վերացել է հավանաբար վերջին թագավորների հետ։ Համենայնդեպս, Արծրունիների պալատական թատրոնը եղել է ծաղկյալ վիճակում։

Թատերական զվարճալիքների տեսակները և թատերական ժանրերը եթե ոչ բացարձակորեն միանման, ապա նույն բնույթի են և Բյուզանդիայում, և Ասորիքում, և Հայաստանում։ Այստեղ տարբերություններ կարող էին լինել միայն ընդհանուր ծավալների (մասշտաբներ), ոճական և այլ արտաքին հատկանիշների մեջ։ Բայց հայտնի է, որ Հայաստանում թատերական ներկայացումները գրեթե նույնքան բազմամարդ են եղել, որքան հարևան երկրներում։

Համեմատելով բյուզանդական, ասորական և հայկական թատերական միջավայրերը, հիմք կա ասելու, որ առաջավորասիական քաղաքակրթության ամբողջ ռեգիոնում գործ ունենք գրեթե նույն երևույթի հետ։ Այն, ինչ հայտնի է բյուզանդական և ասորական թատրոնների մասին, մասամբ վերաբերում է և Հայաստանին։ Իսկ այն, ինչ գտնում ենք մեզանում, անպայման առնչվում է նաև հարևան երկրների հետ։ Հայտնի է, որ շատ են եղել թափառող կրկեսային խմբեր, որոնք շրջել այցելել են ամբողջ Առաջավոր Ասիան, հյուսիսային Աֆրիկայի ափերը, հետագայում անցել են Արևմտյան Եվրոպա, կամ այնտեղից են ինչ-որ խմբեր եկել հարավ, ավելի ուշ շրջանում կամ սրանց նմաններն անցել են սլավոնական երկրներ, Ռուսաստան[130]։ Բայց մինչև արևմտաեվրոպական ֆեոդալիզմի զարգացման շրջանը, մինչև Կիևյան Ռուսիայի կազմավորումը, այս շփումներն ու ներթափանցումները տեղի էին ունեցել վաղ ֆեոդալիզմի երկրներում, երբ կրկեսային-թատերական ժանրերը ձեռք էին բերել համընդհանուր մի նկարագիր։

Համաձայն ընդհանուր տեղեկությունների, միջնադարում թատերական ներկայացումները, ինչպես և մարզական ու այլ տիպի խաղերը տեղի էին ունեցել ամսվա առաջին օրերին։ Այդ օրերը հին Հունաստանում, Հռոմում, Բյուզանդիայում, հետագայում՝ միջնադարյան Եվրոպայում կոչվել են կալենդներ (calendae)[131], իսկ հին և միջնադարյան Հայաստանում՝ «կալենդամ-

---

130 Այն կարծիքը կա, որ հին ռուսական ժողովրդական-հրապարակային թատրոնի դերասանները՝ սկոմորոխները, արևմուտքից են անցել Ռուսաստան։ Այդ կարծիքը մասամբ հերքված է (տե՛ս А. А. Белкин, Русские скоморохи, М., 1975, էջ 30—53)։ Բայց այդ հարցը հնարավոր չէ լուծել առանց իմանալու վաղ միջնադարյան աղբյուրները։

131 Տե՛ս Е. Э. Липшиц, Очерки истории византийского общества и культуры, М.—Л., 1961, с. 410—412.

սագլուխք»։ Ամսագլուխը կամ ամսվա առաջին օրը նշանավորվել է տոնախմբությամբ ու թատերական ներկայացումներով։ Բոլոր կարգի խաղերը չէ, որ եկեղեցին դատապարտել է. եղել են աշխարհիկ խաղերի պաշտոնապես ընդունելի տեսակներ և՛ Բյուզանդիայում, և՛ Ասորիքում, և՛ Հայաստանում։

Մի շարք ուղղակի և անուղղակի փաստեր վկայում են, որ Հայաստանում նախարարական ամրոցներն ունեցել են թատրոններ[132], բայց դրանց կառուցվածքի վերաբերյալ ոչ մի տեղեկություն չի պահպանվել։

Հայկական միջնադարում ինչպիսի՞ն է եղել թատրոնի հասարակական նշանակությունը։ Դատելով Հովհան Մանդակունի կաթողիկոսի, Մայրագոմեցու՝ Սիմեոն եպիսկոպոսի ճառերից, կարելի է մտածել, որ թատրոնը խաղացել է հասարակական կարևոր դեր, որ թատրոնը միջնադարյան մարդու կենցաղում նկատելի տեղ է գրավել։ Թատրոնի պատմաբաններն այն տպավորությունն են ստացել, թե միջնադարյան Հայաստանում եկեղեցիներն իրոք դատարկ են եղել, իսկ թատրոնները «յամենայն ժամ» խուռն ամբոխով լեցուն։ Բայց հայոց աշխարհը ծածկված է վանքերի, եկեղեցիների ու մատուռների ավերակ ու կանգուն շինություններով, և մինչև այժմ չենք գտել թատրոնական շենքի որևէ հետք։ Սա, իհարկե, հակառակն ապացուցող փաստարկ չէ։ Միջնադարում, մանավանդ VII դարում, եկեղեցին չէր կարող կորցնել իր հասարակական դերը։ Եկեղեցու հայրերի տագնապալից խոսքերը ոչ այնքան նրանց ժխտման պաթոսով պետք է բացատրել, որքան ոճի առանձնահատկությամբ։ Համենայն դեպս, այդ պաթոսին համարժեք վերաբերմունք չենք տեսնում միջնադարյան կանոնագրքերում ու դատաստանագրքերում։ Արգելող օրենքները թատրոնի համար անհամեմատ մեղմ են երևում, քան ճառերը։ Վերամբարձ տոնը, չափազանցող մակդիրները պարզապես հռետորական, ոճական զարդարանքներ են։ Մայրագոմեցին ակնհայտորեն ընդօրինակում է բյուզանդական եկեղեցու հայրերի, հատկապես Ոսկեբերանի խոսձևակերպը։ Այս դեպքում էլ իրավիճակը չի փոխվում։ Թատերասիրությունը միջնադարյան հեղինակների տերմինով՝ «գուսանամոլությունը», միջնադարյան մարդու կենցաղի ու հոգեբանության անհրաժեշտ մասն է եղել և, այնուամենայնիվ, չի բացառել այդ նույն մարդու եկեղեցասիրությունը։

Հիմքեր չկան մտածելու, թե միջնադարում թատրոնը խարխլել է եկեղեցու հեղինակությունը։ Հասարակական մտածողության այդ երկու հակառակ իրողությունները միջնադարյան կենցաղում ունեցել են կարծես ներդաշնակ ու հավասարակշիռ դիրք. մեկի գոյությունը չի արժեզրկել մյուսին, չի բացառել նրա դերը։ Եվ դժվար է ասել, թե միջնադարյան Հայաստանում եկեղեցու պայքարը թատրոնի դեմ իսկապես սուր ձևեր է ընդունել։ Հայտնի է, որ հայ եկեղեցին, հատկապես վաղ շրջանում, հետևողական պայքար է մղել հեթանոսական կենցաղի ու աշխարհայացքի բոլոր դրսևորումների դեմ, և դա ունեցել է իր պատմական արդարացումը։ Հայտնի է, թե կրոնաքաղաքական ինչ սուր բնույթ են ունեցել դավանաբանական վեճերը, ինչպիսի հալածանքների են ենթարկվել այլադավանությունը, ազատախոհությունը, հերձվածողությունը, ինչպես են հալածվել աղանդները կամ ինչ թղթեր են գրվել պավլիկյանների դեմ։ Թատրոնի, որպես արվեստի, ժխտումն այս ընդհանուր կրոնաքաղաքական

132 Տե՛ս Г. Гоян, 2000 лет армянского театра, т. I, II, 1952 (т. II, стр. 41—44, 174)։ Հ. Հովհաննիսյան, Թատրոնը միջնադարյան Հայաստանում, Երևան, 1978, էջ 273—276։

պայքարի միջին հոսանքներից է և, մեզ հայտնի տվյալներով, բարոյական պարսավանքներից ավելի հեռուն չի գնացել։ Իսկ եթե նկատի ունենանք, որ հոգևորականներն էլ շատ հեռու չեն մնացել «ի թատերաց», պարզ կդառնա, որ պայքարը շատ դեպքերում եղել է ձևական։ Քրիստոնեության բարոյագաղափարական դոկտրինան պաշտպանելը եղել է ամեն մի քրիստոնյա հեղինակի սրբազան պարտքը, և ամեն մի գրիչ վերցնող թատրոնի դեմ ասել է մեկ-երկու խոսք հավուր պատշաճի, շատ անգամ էլ ոչինչ չի ասել։

Միջնադարում գիրքը, գրիչն ու քերթողական արվեստը մնում են գերազանցապես աստծո սպասավորների սեփականություն։ Իսկ հասարակական ընդհանուր գիտակցությունը կարգավորվում է ոչ միայն գրավոր խոսքով։ Քերթողական արվեստը կամ գրականությունը միջնադարյան աշխարհիկ կյանքի լիարժեք խորհրդանիշը չէր։ Միջնադարյան անհատի կենցաղային կենսական պահանջներն այնքան էլ կապված չէին դրի և գրականության հետ։ Գիրքը միջնադարյան մարդու համար իհարկե եղել է ակնածանքի և պաշտամունքի առարկա, բայց ոչ միշտ ըմբռնված, ոչ միշտ կյանքին ու կենցաղին մասնակից։ Միջնադարյան մարդը սիրել է «Ավետարանը», «Ժամագիրքը», բայց նրան շատ ավելի հասկանալի ու սիրելի են եղել առակը, խաղը, երգն ու խրախճանքը։ Իսկ թատրոնը և թատերականացված խաղերն ու հանդեսները արտահայտել են նրա իրական, այսաշխարհային ձգտումները, մարդկային կենդանի վարքագիծ՝ իրականությունը իմաստավորելով կենդանի արվեստով։

III—IX դդ. հայկական մշակույթի ուսումնասիրությունն ակնհայտորեն ցույց է տալիս, որ հայ ժողովուրդը ժամանակի քաղաքակիրթ ժողովուրդների շարքում ապրել է բազմակողմանի և հարուստ մշակութային կյանքով, կերտել ու թողել է նշանավոր ժառանգություն մատենագրության, մասնավորապես պատմագրության, փիլիսոփայության, բնական գիտությունների, ինչպես նաև ճարտարապետության ու արվեստի մյուս բնագավառներում։ Հայ ժողովուրդը ստեղծագործել և մարդկային մշակույթի գանձարանն է մուծել մեծարժեք գանձեր, ինչպես հոգևոր, նույնպես և նյութական մշակույթի ասպարեզում։

Վաղ ֆեոդալական մշակույթն իր զորեղ անդրադարձն ունեցավ երկրի ողջ կյանքի վրա։ Լինելով նոր սոցիալ-տնտեսական հարաբերությունների արգասիքը, հայ ֆեոդալական հասարակության ինքնագիտակցության աճի և հասունության արտահայտությունը, քաղաքական անբարենպաստ պայմաններում այն միաժամանակ ծառայեց համազգային կյանքի կայունացմանն ու արտաքուստ միշտ սպառնացող վտանգի դիմագրավմանը, իսկ ստեղծված արժեքներով՝ դասական օրինակ հանդիսացավ բազում սերունդների համար և իր պատշաճ տեղը գրավեց համամարդկային մշակույթի պատմության մեջ։



## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Մոտ 170—240 թթ.—Հերոդիանոս պատմիչ։

186—198 թթ.—Վաղարշ Բ Արշակունի՝ արքայ Հայոց Մեծաց։

189—216 թթ.—Ռև Արդար՝ թագավոր վրաց։

191—207 թթ.—Վաղարշ Դ՝ արքայից արքա պարթևական։

193 թթ.—Կոմմոդոս կայսեր սպանությունը։

193—284 թթ.—Հին աշխարհի ստրկատիրական հասարակության ճգնաժամը, որը ընդգրկել էր ամբողջ Հռոմեական կայսրությունը։

193—211 թթ.—Սեպտիմիոս Սևերոս՝ կայսր Հռոմի։

194 թթ.—Հայոց թագավոր Վաղարշ Բ-ի և Սեպտիմիոս Սևերոս կայսեր միջև կնքված համաձայնագիրը։

196 թթ.—Միջագետքի վերագրավումը պարթևական թագավոր Վաղարշ Դ-ի կողմից։

196—217 թթ.—Կարակալլա (Սեպտիմիոս Բասսիանոս, 196 թ. ստացավ Անտոնինոս Օգոստոս անունը)՝ Մարկոս Ավրելիոս։

198—216 թթ.—Խոսրով Ա Արշակունի՝ արքայ Հայոց Մեծաց։

199 թթ.—Խաղաղության դաշինք Սևերոս կայսեր և պարթևական արքայից-արքա Վաղարշ Դ-ի միջև։

201—202 թթ.—Դարաբգերդի արգապետի մահը։

202 թթ.—Սեպտիմիոս Սևերոսը (3-րդ անգամ) և Սեպտիմիոս Բասսիանոս Անտոնինոսը՝ Հռոմի կոնսուլներ։

208—223 թթ.—Վաղարշ Ե՝ պարթևական արքայից արքա։

208—209 թթ.—Սասանի որդի Փափագը հափշտակում է Պարսքի արքայական գահն իբրև ամարզպան և շահրդար Պարսքի։

209 թ.—Փափագը իր ավագ որդուն՝ Շապուհին հայտարարում է Ստահրի թագավոր (208—229)։

213 թ.—Արտավանը՝ Վաղարշ Ե-ի եղբայրը, իրեն հռչակեց պարթևական արքայից արքա։

214—216 թթ.—Արդար Ժ Սևերոս՝ Օսրոենեի թագավոր։

218—222 թթ.—Անտոնինոս Հելիոգաբալ՝ Հռոմի կայսր։

222—235 թթ.—Ալեքսանդր Սևերոս։

227 թ.—ապրիլի 28-ին՝ Որմիզդականի ճակատամարտը։

227—243 թթ.—Արտաշիր Ա. Փափագան՝ արքայից արքա Երանշահրի՝ Սասանյան դինաստիայի իշխանության սկիզբը։

235—238 թթ.—Մաքսիմինոս Թրակացի։

238—244 թթ.—Գորդիանոս Գ (Մարկոս Անտոնիոս Գորդիանոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։

237—238 թթ.—Մծբինի և Խառանի գրավումը պարսկական զորքերի կողմից։

242 թ.—Գորդիանոսը պատերազմ հայտարարեց պարսիկներին։

243 թ.—Հռոմեական զորավար Տիմեսիթեոսի մահը։

244 թ. փետրվարի 21-ին՝ ճակատամարտ Մեսիխեն (կամ Բեթ-Մաշկենե) վայրում։

244—249 թթ.—Փիլիպպոս Արաբ (Մարկոս Հուլիոս Փիլիպպոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։

244 թ.—Փիլիպպոս Արաբը խաղաղության դաշն կնքեց պարսիկների հետ։

248—276 թթ.—Ներսեհ՝ որդի Շապուհ Ա-ի։

249—251 թթ.—Դեկոս (Գայոս Մեսսիոս Կվինտոս Տրայանոս Դեկոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։

251—253 թթ.—Գալլոս (Գայոս Վիբիոս Տրեբոնիանոս Գալլոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։

252—325 թթ.—Գրիգոր Լուսավորիչ։

253 թ.—Պարսկական զորքերը ներխուժեցին հռոմեական պրովինցիա Սիրիան։

253 թ.—Սասանյանները գրավում են Հայաստանը։
253—255 թթ.—Վռաց թագավորության ենթարկումը Սասանյան Իրանին։
253—260 թթ.—Վալերիանոս (Պուբլիոս Լիկինիոս Վալերիանոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։
253—268 թթ.—Գալլիենոս (Պուբլիոս Լիկինիոս Էգնատիոս Գալլիենոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։
253—261 թթ.—Արտավազդ Ե՝ «Արմենիայի մեծ թագավոր»։
256 թ.—Վալերիանոսն իր բանակով գալիս է Արևելք։
259 թ.—Պարսկահռոմեական պատերազմի սկիզբը։
260 թ.—Վալերիանոս կայսրը գերի ընկավ Շապուհ Ա-ի ձեռքը։
261 թ.—Արտավազդ Ե-ին գահընկեց են անում և, ըստ երևույթին, սպանում։
261—272 թթ.—Որմիզդ-Արտաշիր՝ «Արմենիայի մեծ թագավոր»։
261—293 թթ.—Պարսկական տիրապետությունը Հայաստանի մեծագույն մասում։
262 թ.—Շապուհ Ա-ի՝ «Քաաբա-ի Զարդուշտ»-ի արձանագրությունը։
262—264 թթ.—Օդենատոսը շարունակեց պատերազմը պարսիկների դեմ և կարողացավ Եդեսիան ազատել պաշարումից։
264—272 թթ.—Որմիզդ-Արտաշիրը (կամ Խոսրով-Որմիզդ-Արտաշիրը)՝ «Արմենիայի մեծ թագավոր»։
266/7—273 թթ.—Օդենատոսին հաջորդեց նրա անչափահաս որդին՝ Վահբալաթ-Աթենադորը։
268—270 թթ.—Կլավդիոս Բ, Գոթական (Մարկոս Ավրելիոս Կլավդիոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։
270—275 թթ.—Ավրելիանոս (Դոմիտիոս Ավրելիանոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։
270 թ.—Ավրելիանոսի զորավար Պրոբոսը ետ նվաճեց Եգիպտոսը՝ Ալեքսանդրիա մայրաքաղաքով։
271 թ.—Ավրելիանոսի բանակը սկսում է իր արշավանքը։
272—273 թթ.—Որմիզդ Ա (Որմիզդ-Արտաշիր)՝ «արքայից արքա Երան և Աներան»։
273—276 թթ.—Որմիզդակ՝ «Արմենիայի մեծ թագավոր»։
273—276 թթ.—Վռամ-Վահրան Ա՝ «արքայից արքա Երան և Աներան»։
274—276 թթ.—Տրդատ՝ (առաջին անգամ) թագավոր հռոմեական Հայաստանի։
274 թ.—Քրիստոնեության մուտքը Հայաստան։
275—276 թթ.—Տակիտոս (Մարկոս Կլավդիոս Տակիտոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։
276—288 թթ.—Պրոբոս (Մարկոս Ավրելիոս Պրոբոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։
276—293 թթ.—«Խոսրով»—Ներսեհ՝ «Արմենիայի մեծ թագավոր» պարսկական Հայաստանում։
276—293 թթ.—Վռամ-Վահրան (Վռամ Բ)՝ «արքայից արքա Երան և Աներան»։
282—283 թթ.—Կարոս (Մարկոս Ավրելիոս Կարոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։
284—305 թթ.—Դիոկղետիանոս (Գայոս Ավրելիոս Վալերիոս Դիոկղետիանոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։
284—305 թթ.—Մաքսիմիանոս (Մարկոս Ավրելիոս Վալերիան Մաքսիմիանոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։
287 թ.—Տրդատ Գ-ն վերջնականապես հաստատվեց իր գահին։
287—293 թթ.—Տրդատը հռոմեական Հայաստանի թագավոր։
293 թ.—Ներսեհը Տրդատ Գ-ին նաև պարսկական Հայաստանի թագավոր է ճանաչում՝ «Մեծ թագավոր Հայոց Մեծաց» տիտղոսով։
293—330 թթ.—Տրդատ Գ Մեծ։
293—311 թթ.—Գալերիոս (Գայոս Գալերիոս Վալերիոս Մաքսիմիանոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։
296—297 թթ.—Պարսկահռոմեական պատերազմ Միջագետքում։
297 թ.—Ճակատամարտ հռոմեահայկական ուժերի և պարսիկների միջև Հայաստանում։
298 թ.—Մծբինի 40-ամյա դաշնագիրը։
301 թ.—Մեծ Հայքի արքունիքի և զորամասերի մկրտությունը Բագավանում՝ Եփրատ-Արածանի ղետում, որով քրիստոնեությունը Հայաստանում ճանաչվեց որպես պետական կրոն։ Տրդատ Գ Մեծը ստանում է «Յովհաննէս» մկրտության անունը և Բագավանում հիմնում իր անվանական տաճարը՝ «Յովհաննէս-Մկրտչի» բազիլիկան։
301 թ.—Գրիգոր Լուսավորիչը ձեռնադրվեց Մեծ Հայքի արքեպիսկոպոս՝ «կաթողիկոս Հայոց Մեծաց»։ Կաթողիկոս էր 301—325 թթ.։
303 թ.—Էջմիածնի տաճարի հիմնադրումը։

305—313 թթ.—Մաքսիմիանոս Դայա՝ կայսր Հռոմի։
306—337 թթ.—Կոստանդիանոս Ա Մեծ (Փլավիոս Վալերիոս Կոստանդինոս Օգոստոս)՝ կայսր Հռոմի։
308—324 թթ.—Լիկինիոս կեսար։
309—379 թթ.—Շապուհ Բ Երկարակյաց։
311—312 թթ.—Հայ-հռոմեական ռազմական ընդհարումները։
313 թ.—«Միլանի էդիկտը»։
324—337 թթ.—Կոստանդիանոս Ա՝ բացարձակ միապետ Հռոմեական կայսրության։
325—333 թթ.—Արիստակես Ա՝ «կաթողիկոս Հայոց Մեծաց»։
325 թ. մայիսի 19-ին—Նիկիա քաղաքում հրավիրվեց առաջին տիեզերական ժողովը, որտեղ ընդունվեց «Նիկիական հանգանակը»։
330—336/7 թթ.—Խոսրով Բ՝ «մեծ թագավոր Հայոց Մեծաց»։
330 թ. մայիսի 11—Կոստանդիանոս Ա Մեծ կայսրն իր մայրաքաղաքը Հռոմից տեղափոխեց Բյուզանդիոն, որը նրա պատվին վերանվանվեց Կոստանդնուպոլիս։
333—347 թթ.—Վրթանես արքեպիսկոպոս՝ «կաթողիկոս Հայոց Մեծաց»։
335 թ.—Հյուսիսային լեռնականները մազքութների Սանեսան թագավորի գլխավորությամբ արշավեցին Հայաստան և գրավեցին Վաղարշապատ մայրաքաղաքը։
336/7 թ.—Խոսրով Բ-ի դեմ ապստամբում են Աղձնիքի «մեծ բդեաշխ» Բակուրը և Բզնունիքի Դատաբեն նախարարը։
337—344 թթ.—Տիրան՝ «մեծ թագավոր Հայոց Մեծաց»։
337—361 թթ.—Կոստանդիոս՝ կայսր Հռոմի։
338 թ.—Շապուհ Բ-ի զորքերը պաշարում են Մծբին քաղաքը։
341—344 թթ.—Հուսիկ արքեպիսկոպոս՝ «կաթողիկոս Հայոց Մեծաց»։
344/5 թ.—Կայսրությունը վերսկսում է պատերազմական գործողությունները Սասանյանների դեմ։
345 թ.—Ճակատամարտ Սինգարայի մոտ։
353—372 թթ.—Ներսես Մեծ՝ «կաթողիկոս Հայոց Մեծաց»։
348—352 թթ.—Փառեն Աշտիշատեցի արքեպիսկոպոս՝ «կաթողիկոս Հայոց Մեծաց»։
345—368 թթ.—Վասակ Մամիկոնյան՝ «սպարապետ Հայոց Մեծաց»։
353—372 թթ.—Ներսես Ա Մեծ՝ «կաթողիկոս Հայոց Մեծաց»։
354 թ.—Աշտիշատում Ներսես Ա կաթողիկոսը գումարեց առաջին եկեղեցական օրենսդիր ժողովը։
358 թ.—Արշակավանի կործանումը։
359 թ.—Շապուհ Բ-ն գալիս է Միջագետք և 73 օր տևած պաշարումից հետո վերցնում Ամիդը։
361—363 թթ.—Հուլիանոս «Ուրացող»՝ կայսր Հռոմի։
361—440 թթ.—Մեսրոպ Մաշտոց։
363—364 թթ.—Հովիանոս՝ կայսր Հռոմի։
363 թ.—Հովիանոսը Իրանի հետ հաշտություն է կնքում երեսուն տարով (մինչև 393 թ.), որը համարվում է «ամոթալի»։
364—367/8 թթ.—Վասակ Մամիկոնյանը գլխավորում է հայ ժողովրդի հերոսական պայքարը Սասանյան Պարսկաստանի ներխուժումների դեմ։
364—378 թթ.—Վաղես՝ կայսր Հռոմի։
368—369 թթ.—Հայաստանի նշանավոր քաղաքների՝ Արտաշատի, Վաղարշապատի, Երվանդաշատի, Զարեհավանի, Զարիշատի և Վանի ավերումը պարսից զորքերի կողմից։
369—373 թթ.—Պապ՝ «թագավոր Հայոց Մեծաց»։
371 թ.—Ձիրավի ճակատամարտը։
371—372 թթ.—Հաշտության կնքումը Հռոմեական կայսրության և Սասանյան Պարսկաստանի միջև։
372—376 թթ.—Շահակ Մանազկերտցի՝ կաթողիկոս Հայոց։
374—378 թթ. Վարազդատ Արշակունի՝ «Մեծ թագավոր Հայոց»։
376—380 թթ.—Զավեն Մանազկերտցի՝ կաթողիկոս Հայոց։
378—385 թթ.—Արշակ Գ՝ «Մեծ թագավոր Հայոց»։
379—395 թթ.—Թեոդոսիոս Ա Մեծ՝ կայսր։

379—383 թթ.—Արտաշիր Բ՝ Պարսից արքայից արքա։

380—387 թթ.—Ասպուրակես Մանազկերտցի՝ կաթողիկոս Հայոց։

380—450 թթ.—Եղնիկ Կողբացի։

383—388 թթ.—Շապուհ Գ՝ Պարսից արքայից արքա։

383—384 թթ.—Պարսկահռոմեական բանակցություններ են սկսվում Մեծ Հայքի թագավորության բաժանման վերաբերյալ։

385 թ.—Մեծ Հայքի թագավորության տարածքի բաժանումը Սասանյան Պարսկաստանի և Բյուզանդական կայսրության միջև։

385—387 թթ.—Արշակ Գ՝ Հայաստանի՝ Բյուզանդիայի տիրապետության տակ անցած մասի թագավոր։

335—388 թթ.—Խոսրով Գ՝ Հայաստանի՝ Պարսկաստանի տիրապետության տակ անցած մասի թագավոր։

388—439 թթ.—Սահակ Ա Պարթև՝ կաթողիկոս Հայոց։

388—414 թթ.—Վռամշապուհ՝ «Մեծ թագավոր Հայոց»։

395 թ.—Հռոմեական կայսրության բաժանումը Արևելյան Հռոմեական կայսրության (Բյուզանդիա) և Արևմտյան Հռոմեական կայսրության։

393—404/5 թթ.—Հայոց գրերի ստեղծման ժամանակաշրջանը։

395—408 թթ.—Արկադիոս՝ Արևելյան Հռոմեական կայսրության կայսր։

395—423 թթ.—Հոնորիոս՝ Արևմտյան Հռոմեական կայսրության կայսր։

405—425 թթ.—Ատտիկոս՝ պատրիարք «տիեզերական»։

408—450 թթ.—Թեոդոսիոս Բ՝ բյուզանդական կայսր։

410—492 թթ.—Մովսես Խորենացի՝ (Քերթողահայր)։

419—421 թթ.—Ապստամբական շարժում Ներսես Ճիճրակացու գլխավորությամբ։

421—422 թթ.—Պարսկա-բյուզանդական պատերազմը։

421—439 թթ.—Վռամ Ե Գոռ՝ Պարսից արքայից արքա։

422 թ.—Հիսնամյա խաղաղության դաշնագիր (մինչև 472 թ.) Բյուզանդիայի և Սասանյան Իրանի միջև։

422—428 թթ.—Արտաշես Արշակունի՝ թագավոր Հայոց։

428 թ.—Արտաշեսի գահընկեցությունը։ Հայ Արշակունիների դինաստիայի վերացումը։

437—451 թթ.—Հովսեփ Ա Հողոցմեցի՝ կաթողիկոսական աթոռի տեղապահ։

439 թ.—Սահակ Պարթևի մահը։

439—457 թթ.—Հազկերտ Բ՝ Պարսից արքայից արքա։

442 թ.—Օշականի եկեղեցի-դամբարանի կառուցումը Մեսրոպ Մաշտոցի գերեզմանի վրա՝ Վահան Ամատունու կողմից։

450 թ.—Հազկերտ Բ-ը հրամայում է նախարարներին երկրպագել զրադաշտական կրակը։

450—451 թթ.—Հոների-խիոնիտների հաղթանակը Հազկերտ Բ-ի դեմ։

450—451 թթ.—«Հայոց պատերազմը»՝ հայ ժողովրդի մեծ ապստամբությունը Սասանյան Պարսկաստանի լծի դեմ։

450—457 թթ.—Մարկիանոս կայսր։

451 թ. մայիսի 26-ին—Ավարայրի ճակատամարտ՝ Վարդանանց հերոսամարտը։

451 թ.—Չորրորդ Տիեզերական ժողովը Քաղկեդոնում։

452 թ.—Տիզբոնում կազմվեց հանդիսավոր ատյանը։

452 թ.—Սասանյանների կողմից նեստորականության ճանաչումը իբրև Իրանում ապրող քրիստոնյաների միակ պաշտոնական դավանանք։

456—461 թթ.—Մովսես Ա Մանազկերտցի՝ կաթողիկոս Հայոց։

456—502 թթ.—Վախտանգ Գորգասար՝ թագավոր Վրաց։

457—478 թթ.—Լևոն Ա Մեծ Թրակացի՝ բյուզանդական կայսր։

461 թ.—Աղվանից թագավորության վերացումը և մարզպանության վերածվելը «Առան» անունով։

461—478 թթ.—Գյուտ Ա Արահեզացի՝ կաթողիկոս Հայոց։

464 թ.—Ատրորմիզդ՝ մարզպան Հայոց։

464—481 թթ.—Մարզպան Ատրվշնասպ «Յոզմանդեան»։

467 թ.—Մահացավ Աշուշա վրաց բդեշխը։

471 թ.—Տիզբոն ժամանեց Գյուտ կաթողիկոսը։

474—491 թթ.—Զենոն՝ բյուզանդական կայսր։

476 թ.—Դվինում ժողովուրդը կործանում է պարսկական զրադաշտական համայնքի ատրուշանը։

476—484 թթ.—Հակոբ՝ Ծոփքի եպիսկոպոս։

481—484 թթ.—Սահակ Բագրատունու և Վահան Մամիկոնյանի գլխավորած համաժողովրդական ապստամբությունը։

481—482 թթ.—Սահակ Բագրատունի՝ մարզպան Հայոց՝ «տանուտէր Հայոց» տիտղոսով։

482 թ.—Պատմահայր Մովսես Խորենացին մարզպան Սահակ Բագրատունուն ներկայացրեց իր «Հայոց պատմությունը»։

482 թ.—Պարսից զորքերի ներխուժումը Հայաստան։

482 թ.—Ճարմանայնի ճակատամարտը, որտեղ զոհվեց մարզպան Սահակ Բագրատունին։ Մովսես Խորենացին գրեց իր «Ողբը»։

482 թ.—Ցազդ Սյունեցու գլխատումը Սասանյանների կողմից։

482 թ.—«Հենոտիկոնի» («Միավորության գրի») հրապարակումը։

483 թ.—Պարսից զորքերի ներխուժումը Հայաստան։

484—491 թթ.—Վաղարշ՝ արքայից արքա։

484 թ.—Նվարսակի հաշտության պայմանագրի կնքումը։

485 թ.—Վահան Մամիկոնյանը Հայաստանի պարսկական մասի գերագույն կառավարիչ «տանուտէր Հայոց» և «սպարապետ Հայոց»։ Այնուհետև մարզպանական Հայաստանը հայերի մոտ կոչվում է «Տանուտիրական երկիր»։

488—531 թթ.—Կավատ Բ՝ արքայից արքա։

490—506 թթ.—Բաբգեն Ա Ոթմսեցի՝ կաթողիկոս Հայոց։

491—518 թթ.—Անաստաս՝ կայսր։

492 թ.—Հայերի ապստամբությունը Կավատի դեմ։

502 թ.—Կավատի զորքերի ներխուժումը բյուզանդական Հայաստան։

503 թ.—Բյուզանդական զորավար Կելերիոսը դուրս եկավ Սասանյանների դեմ։

506 թ.—Անաստաս կայսեր հրովարտակը։

506 թ.—Խաղաղության դաշնագիր Բյուզանդիայի և Սասանյանների միջև։

506—512 թթ.—Բաբգեն՝ կաթողիկոս Հայոց։

511 թ.—Պարսիկ Բուրգանը (509—520) Հայաստանի մարզպան։

518—527 թթ.—Հուստինոս Ա՝ կայսր։

527—565 թթ.—Հուստինիանոս Ա՝ կայսր։

531 թ. ապրիլ—Պարսկական զորքը պարտության մատնեց բյուզանդական զորքերին։

531—579 թթ.—Խոսրով Անուշիրվան՝ արքայից արքա։

532 թ.—«Հավիտենական» հաշտություն երկու պետությունների միջև։

535 թ. հուլիսի 23—Հուստինիանոս կայսեր էդիկտը հայոց ժառանգական իրավունքի մասին։

540 թ.—Խոսրով Ա Անուշիրվանը մեծ զորքով մտավ Բյուզանդական կայսրության սահմանները։

540 թ.—Պարսկաբյուզանդական երկրորդ պատերազմի սկիզբը։

544 թ.—Խոսրով Ա Անուշիրվանը ներխուժեց Միջագետք։

545 թ.—Բյուզանդական դեսպանները Տիզբոնում զինադադար կնքեցին հինգ տարի ժամանակով։

548 թ.—Դավադրություն Հուստինիանոսի և նրա զորավար Բելիսարիոսի դեմ։

548—557 թթ.—Ներսես Բ Բագրևանդացի՝ կաթողիկոս Հայոց։

552 թ.—Նոր հնգամյա զինադադար Բյուզանդիայի և Պարսկաստանի միջև։

554 թ. մարտի 29—Դվինում գումարված եկեղեցական ժողովը դատապարտում է քաղկեդոնական դավանանքը և վերջնականապես խզում իր կապերը բյուզանդական «տիեզերական» եկեղեցու հետ։

557—574 թթ.—Հովհաննես Բ Գաբեղենացի՝ կաթողիկոս Հայոց։

562 թ.—50-ամյա հաշտության պայմանագիր Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև։

564 թ.—Խոսրով Ա-ն Հայաստանի մարզպան է նշանակում Սուրեն Չիհովր Վշնասպին։

565—578 թթ.—Հուստինիանոս Բ՝ կայսր։

570 թ. սեպտեմբերի 1—Կնքվում է հայ-բյուզանդական դաշինքը։

571 թ.—Սյունիքի իշխան Վահանը առանձնացավ մարզպանական Հայաստանից։
571—640 թթ.—Սյունիքի իշխանության անջատված վիճակը Հայաստանի մնացյալ մասերից։
572 թ.—Հայ ժողովրդի ապստամբությունը Պարսկաստանի դեմ։
572 թ.—Պարսկաբյուզանդական 20-ամյա պատերազմի սկիզբը։
572 թ.—Բյուզանդական արևելյան բանակի գլխավոր հրամանատար Մարկիանոսը զորք է հավաքում և հաջորդ տարվա վաղ գարնանը ամայացնում պարսիկներին ենթակա Աղձնիքը։
574—604 թթ.—Մովսես Բ Եղիվարդեցի՝ կաթողիկոս Հայոց։
575—578 թթ.—Եռամյա զինադադար Սասանյան Իրանի և Բյուզանդիայի միջև։
579—590 թթ.—Որմիզդ Դ՝ արքայից արքա։
582—602 թթ.—Մավրիկիոս՝ կայսր։
590—628 թթ.—Խոսրով Բ Փարվեզ՝ արքայից արքա։
591 թ.—Պարսկաբյուզանդական հաշտության պայմանագիրը, Հայաստանի երկրորդ բաժանումը։
591 թ.—Եկեղեցական ժողովը Կ. Պոլսում։
595 թ.—Բյուզանդական և պարսկական տիրապետությունների դեմ ուղղված ապստամբությունը Հայաստանում։
599—616 թթ.—Կյուրիոն՝ կաթողիկոս Վրաց։
602—610 թթ.—Փոկաս՝ կայսր։
604—606 թթ.—Դարայի պաշարումը պարսիկների կողմից։
607—610 թթ.—Աբրահամ Ա Աղբաթանեցի՝ կաթողիկոս Հայոց։
608 թ.—Վրաց եկեղեցու անջատումը Հայոց եկեղեցուց։
610—685 թթ.—Անանիա Շիրակացի։
610—641 թթ.—Հերակլ՝ կայսր։
614 թ.—Երուսաղեմի գրավումը պարսկական զորքերի կողմից և խաչի գերեվարումը։
615/6 թ.—Ալեքսանդրիայի գրավումը պարսիկների կողմից։
615/6 թ.—Տիզբոնի եկեղեցական ժողովը։
611—628 թթ.—Կոմիտաս Ա Աղձեցի՝ կաթողիկոս Հայոց։
618 թ.—Հռիփսիմեի տաճարի կառուցումը։
618/9 թ.—Քաղկեդոնի գրավումը պարսկական զորքերի կողմից։
623—630 թթ.—Մրենի տաճարի կառուցումը։
624—631 թթ.—Բագարանի տաճարի կառուցումը։
627 թ.—Հերակլի բանակը պարտության է մատնում պարսկական զորքին։
628 թ.—Խոսրով Բ-ի սպանությունը, նրա որդի Կավատ Շերոյեի թագավորությունը, Հերակլի հետ հաշտության պայմանագրի կնքումը։
628—630 թթ.—Քրիստափոր Ա Ապահունի՝ կաթողիկոս Հայոց։
629—633 թթ.—Մժեժ Գնունի՝ պատրիկ Հայոց։
630 թ.—Գայանեի տաճարի կառուցումը։
630—641 թթ.—Եզր Փառաժնակերտացի՝ կաթողիկոս Հայոց։
631—639 թթ.—Բագավանի տաճարի կառուցումը։
633 թ.—Կարնո քաղաքի ժողովը։
633—639 թթ.—Դավիթ Սահառունի՝ պատրիկ Հայոց։
630—640 թթ.—Պաղեստինի և Ասորիքի նվաճումը արաբների կողմից։
635 թ.—Դամասկոսի գրավումը Խալիդ իբն ալ-Վալիդ զորավարի կողմից։
636 թ.—Բյուզանդական զորքի ջախջախումը Յարմուք գետի ափին։
637 թ.—Կադիսիայի ճակատամարտում Սասանյան Իրանը ջախջախիչ պարտություն կրեց և Տիզբոնն ընկավ արաբների ձեռքը։
639 թ.—Իյադ իբն Ղանմի հրամանատարության տակ արաբներն անցան Եփրատը։
639—641 թթ.—Արաբները նվաճեցին Ատրպատականը։
639—654 թթ.—Թեոդորոս Ռշտունի՝ իշխան Հայոց։
640 թ.—Արաբները ժամանակավորապես նվաճեցին Չորրորդ Հայքը։
641—661 թթ.—Ներսես Գ Տայեցի (Իշխանցի)՝ կաթողիկոս Հայոց։
642/3 թ.—Թեոդորոս Ռշտունին և Պռոկոպը Աղձնիքի վրայով մտան Վերին Միջագետք։
643 թ.—Զվարթնոցի տաճարի հիմնադրումը (ավարտվել է 661 թ.)։

644—656 թթ.—Օսման՝ խալիֆա։
649 թ.—Թեոդորոս Ռշտունին ուղարկվում է Հայաստան։
649 թ.—Դվինի ժողովը։
652 թ.—Պայմանագիր՝ Թեոդորոս Ռշտունու և Մուավիայի միջև։
654—661 թթ.—Համազասպ Մամիկոնյան՝ Հայոց իշխան։
656—661 թթ.—Պայքար Ալի խալիֆայի դեմ։
658—659 թթ.—Հաշտություն Մուավիայի և Կոստանդ Բ կայսեր միջև։
661—667 թթ.—Անաստաս Ա Ակոռեցի՝ կաթողիկոս Հայոց։
661—680 թթ.—Մուավիա՝ խալիֆա։
661—685 թթ.—Գրիգոր Մամիկոնյան՝ իշխան Հայոց։
666 թ.—Անանիա Շիրակացին Անաստաս Ա կաթողիկոսին ներկայացրեց իր «Աշխարհացույց» աշխատությունը։
669, 674—680 թթ.—Կատաղի գոտեմարտ խալիֆայության և Բյուզանդիայի միջև։
680 թ.—Տրուլլի եկեղեցական ժողովը։
667—677 թթ.—Իսրայել Ա Օթմսեցի՝ կաթողիկոս Հայոց։
677—703 թթ.—Սահակ Գ Ձորոփորեցի՝ կաթողիկոս Հայոց։
684 թ.—Խազարների արշավանքը դեպի Աղվանք։
685—689 թթ.—Աշոտ Բագրատունի՝ իշխան Հայոց։
687 թ.—Պայմանագիր խալիֆայության ու Բյուզանդիայի միջև։
689—639 թթ.—Ներսեհ Կամսարական՝ Հայոց իշխան։
639—701 թթ.—Սմբատ Բագրատունի՝ իշխան Հայոց (առաջին անգամ)։
693 թ.—Մուհամմադը նշանակվում է Հայաստանի, Ատրպատականի և Ջազիրայի (Վերին Միջագետք) փոխարքա։
695 թ.—Հուստինիանոս Բ կայսրն իր հակառակորդներից ձերբակալվեց և աքսորվեց Քերսոն։
695 թ.—Մուհամմադ զորավարը մտավ Չորրորդ Հայք։
695—698 թթ.—Լեոնտիոս՝ կայսր։
698 թ.—Ապսիմերոս Տիբերիոս՝ կայսր։
701 թ.—Մուհամմադի մեծ արշավանքը դեպի Հայաստան։
701 թ.—Արմինիա փոխարքայության հիմնադրումը։
703—717 թթ.—Եղիա Ա Արճիշեցի՝ կաթողիկոս Հայոց։
703—726 թթ.—Սմբատ Բագրատունի՝ իշխան Հայոց (երկրորդ անգամ)։
705 թ.—Խալիֆա դարձավ Վալիդը (Վլիթ), իսկ Բյուզանդիայի աքսորյալ կայսր Հուստինիանոս Բ-ը նորից տիրացավ իր գահին։
706—709 թթ.—Աբդ-ալ-Ազիզ՝ Արմինիայի ոստիկան։
709—732 թթ.—Մասլամա իբն Աբդ-ալ-Մալիք՝ Ատրպատականի և Ջազիրայի փոխարքա։
717—728 թթ.—Հովհաննես Գ Օձնեցի՝ կաթողիկոս Հայոց։
717—720 թթ.—Օմար՝ խալիֆա։
717—741 թթ.—Լևոն Գ՝ կայսր։
719 թ.—Դվինի եկեղեցական ժողովը՝ Հովհան Գ Օձնեցու նախագահությամբ։
741—775 թթ.—Կոստանդին Ե՝ կայսր։
720—724 թթ.—Եզիդ Բ՝ խալիֆա։
724—744 թթ.—Հիշամ՝ խալիֆա։
724—725 թթ.—Հարիս՝ Արմինիայի ոստիկան։
725 թ.—Մանազկերտի ժողովը՝ Հովհան Գ Օձնեցու նախագահությամբ։
728—741 թթ.—Դավիթ Ա Արամոնեցի՝ կաթողիկոս Հայոց։
732 թ.—Մրուան իբն Մուհամմադը Արմինիայի, Ատրպատականի ու Ջազիրայի փոխարքա։
732—749 թթ.—Աշոտ Բագրատունի՝ իշխան Հայոց։
741—775 թթ.—Կոստանդին Կոպրոնիմոս՝ կայսր։
741—764 թթ.—Տրդատ Ա Օթմսեցի՝ կաթողիկոս Հայոց։
747 թ.—Աբու Մուսլիմի ապստամբությունը Խորասանում։
749—752 թթ.—Մուշեղ Մամիկոնյան՝ իշխան Հայոց։
750—754 թթ.—Աբու ալ-Աբբաս ալ-Սաֆֆահի (Արյունարբու) խալիֆա։
752—770 թթ.—Սահակ Բագրատունի՝ իշխան Հայոց։
752—775 թթ.—Սմբատ Բագրատունի՝ սպարապետ։

752—754 թթ.—Եզիդ իբն Ուսայդ Սուլամ՝ Արմինիայի ոստիկան։
754—759 թթ.—Հասան իբն Կահթաբան՝ Արմինիայի ոստիկան։
759—770 թթ.—Եզիդ իբն Ուսայդ՝ ոստիկան։
764—767 թթ.—Տրդատ Բ Դասնավորեցի՝ կաթողիկոս Հայոց։
767—775 թթ.—Սիոն Բավոնեցի՝ կաթողիկոս Հայոց։
770—775 թթ.—Սմբատ Բագրատունի՝ իշխան Հայոց և սպարապետ։
774—775 թթ.—Հայ ժողովրդի մեծ ապստամբությունը խալիֆայության լծի դեմ։
775—788 թթ.—Եսայի Ա Եղիպատրուշեցի՝ կաթողիկոս Հայոց։
775 թ. ապրիլի 15—ճակատամարտ Արճեշի մերձակայքում։
775 թ. ապրիլի 25—Արձնիի (Բագրևանդ) ճակատամարտ։
775—785 թթ.—Մահդի խալիֆա։
775—781 թթ.—Աշոտ Բագրատունի՝ իշխան Հայոց։
781—785 թթ.—Օսման՝ Արմինիայի կառավարիչ։
781—785 թթ.—Տաճատ Անձևացի՝ իշխան Հայոց։
785—809 թթ.—Հարուն ալ-Ռաշիդ։
788—790 թթ.—Ստեփաննոս Ա Դվինեցի՝ կաթողիկոս Հայոց։
788—790 թթ.—Սուլայման՝ Արմինիայի ոստիկան։
790—791 թթ.—Հովաբ Ա Դվինեցի՝ կաթողիկոս Հայոց։
791—792 թթ.—Սողոմոն Ա Գառնեցի՝ կաթողիկոս Հայոց։
792—795 թթ.—Գևորգ Ա Բյուրականցի՝ կաթողիկոս Հայոց։
804 թ.—Աշոտ Մսակեր Բագրատունին Աբբասյաններից պաշտոնապես ճանաչվեց որպես իշխան Հայոց։
795—806 թթ.—Հովսեփ Բ Փարպեցի՝ կաթողիկոս Հայոց։
806—833 թթ.—Դավիթ Բ Կակաղեցի՝ կաթողիկոս Հայոց։
817 թ.—Խուրրամյան շարժման գլուխ կանգնեց Բաբեկը։
826—851 թթ.—Բագարատ Բագրատունի («Բատրիկ ալ-Բատարիկա»)՝ իշխանաց իշխան Հայոց։
851—855 թթ.—Սմբատ Բագրատունի («Խոստովանող»)՝ իշխան Հայոց և սպարապետ։
829—842 թթ.—Թեոփիլոս՝ կայսր։
833—855 թթ.—Հովհաննես Դ Ովայեցի՝ կաթողիկոս Հայոց։
837 թ.—Բաբեկի պարտությունը։
842—856 թթ.—Թեոդորա՝ կայսրուհի։
847—861 թթ.—Մութավաքքիլ՝ խալիֆա։
852—855 թթ.—Բուղա՝ Հայաստանի ոստիկան։
855—862 թթ.—Աշոտ Բագրատունի՝ «իշխանաց իշխան Հայոց և Վրաց»։
855—876 թթ.—Զաքարիա Ա Ձագեցի՝ կաթողիկոս Հայոց։
861 թ.—Թուրք զորապետների ձեռքով սպանվեց Մութավաքքիլ խալիֆան։
862 թ.—Աշոտ Բագրատունին դարձավ «իշխանաց իշխան Հայոց և Վրաց»։
877—897 թթ.—Գևորգ Բ Գառնեցի՝ կաթողիկոս Հայոց։
885 թ.—Աշոտ Ա Բագրատունին թագադրվեց և ստացավ «Թագավոր Հայոց և Վրաց» տիտղոսը։

# ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

## 1. ՄԱՐՔՍԻԶՄԻ ԿԼԱՍԻԿՆԵՐ

Մարքս Կ. Կապիտալ։ Հ. Ա։ Եր., 1954։
*Маркс К.* Формы, предшествующие капиталистическому производству. М., 1940,
*Маркс К., Энгельс Ф.* Соч., изд. 2-ое, т. 40, ч. 1.
Էնգելս Ֆ. Գյուղացիական պատերազմը Գերմանիայում։ Եր., 1940։
Էնգելս Ֆ. Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը։ Եր., 1965։
Լենին Վ. Ի. Պետության մասին։ Երկեր։ 4-րդ հրատ., հ. 29, էջ 578—604։
*Ленин В. И.* Философские тетради. М., 1973.

## 2. ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐ

### Ա. ՀԱՅԵՐԵՆ


Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց. *Աշխատությամբ Գ. Տեր-Մկրտչյան և Ստ. Կանայանցի Տփղիս, 1909։*

Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց. *Թիֆլիս, 1914։*

Ագաթանգեղոս. *Պատմություն Հայոց, Աշխարհաբար թարգմանություն ներածականով ու ծանոթություններով Արամ Տեր-Ղևոնդյանի։ Եր., 1977։*

Անանիա Շիրակացի. *Տիեզերագիտություն և տոմար. Աշխատությամբ Ա. Աբրահամյանի։ Եր., 1940։*

Աշխարհացոյց Վարդանայ վարդապետի. *Քննական հրատարակություն, Հայկ Պէրպէրեանի։ Բարիզ, 1960։*

Գիրք Աստուածաշունչ *Հին և Նոր կտակարանաց. Ըստ միաբան վաղեմի գրչագրաց մերոց և յոյն բնագրաց։ Վենետիկ, 1860։*

*Գիրք Թղթոց։ Թիֆլիս, 1901։*

*Գիրք հարցմանց երիցս երանեալ Սրբոյ Հօրն մերոյ Գրիգորի Տաթևացւոյն։ Կոստանդնուպօլիս, 1729։*

Դավիթ Անհաղթ. *Երկեր. Թարգմանությունը, առաջաբանը և ծանոթագրությունները Ս. Ս. Արևշատյանի։ Եր., 1930։*

Դաւիթ Անյաղթ. *Երկասիրութիւնք փիլիսոփայականք. Համահավաք քննական բնագրերը և առաջաբանը Ս. Ս. Արևշատյանի։ Եր., 1980։*

Դաւիթ Անյաղթ. *Մեկնութիւն ի վերլուծականն Արիստոտէլի. Համահավաք քննական բնագիրը, թարգմանությունը գրաբարից ռուսերեն, առաջաբանն ու ծանոթագրությունները Ս. Ս. Արևշատյանի։ Եր., 1967։*

Դաւիթ Անյաղթ. *Սահմանք իմաստասիրութեան. Համահավաք քննական բնագիրը, թարգմանությունը գրաբարից ռուսերեն, առաջաբանը և ծանոթագրությունները Ս. Ս. Արևշատյանի։ Եր., 1960։*

Դավիթ Քերական. *Մեկնութիւն քերականին. (Հրապարակեց Գ. Ջահուկյան)։—Բանբեր Մատենադարանի, 1956, № 3, էջ 241—264։*

Եզնրկայ վարդապետի Կողբացւոյ *Եղծ աղանդոց։ Թիֆլիզ, 1914։*

Եզնիկ Կողբացի. *Եղծ աղանդոց (Աղանդների հերքումը)։ Թարգմանությունը, ներածությունը և ծանոթագրությունները Ա. Ա. Աբրահամյանի։ Եր., 1970։*

Եզնկայ Կողբացւոյ *Բագրեւանդայ եպիսկոպոսի Եղծ աղանդոց։ Վենետիկ, 1826։*

Եղիշէի *Վարդանանց պատմությունը։ Թարգմանությամբ, ներածական ուսումնասիրությամբ և ծանոթագրություններով Ե. Տեր-Մինասյանի։ Եր., 1946։*

Եղիշէի *Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին։ Աշխատությամբ Ե. Տէր-Մինասյանի։ Եր., 1957։*

Եւսեբիոսի Կեսարացւոյ *Պատմութիւն եկեղեցւոյ։ Յեղեալ յասորւոյն ի հայ ի հինգերորդ դարու. Պարզաբանեալ նոր թարգմանութեամբ ի յոյն բնագրէն ի ձեռն Հ. Աբրահամ վ. Ճարեան։ Վենետիկ, 1877։*

Թովմայի վարդապետի Արծրունւոյ *Պատմութիւն Տանն Արծրունեաց։ Ի լոյս էած Ք. Պ.։ ՍՊբ, 1887։*

*Ժամանակագրութիւն Տեառն Միխայէլի Ասորւոց պատրիարքի։ Յերուսաղէմ, 1871։*

*Կանոնագիրք Հայոց, հ. Ա։ Աշխատասիրությամբ Վ. Հակոբյանի։ Եր., 1964։*

*Կանոնագիրք Հայոց։ Ձեռագրերի համեմատութեամբ խմբեց Ա. Ղլտճեան։ Թիֆլիզ, 1913։*

*Կանոնք Դունայ սուրբ ժողովոյն։ Վաղարշապատ, 1905։*

Կարապետ *եպիսկոպոս. Յովհան Մանդակունի եւ Յովհան Մայրագոմեցի։ (Արտատպութիւն «Շողակաթ»-ից)։ Ս. Էջմիածին, 1913։*

Կիրակոս Գանձակեցի. *Պատմութիւն Հայոց։ Աշխատասիրությամբ Կ. Ա. Մելիք-Օհանջանյանի։ Եր., 1961։*

*Կնիք հաւատոյ ընդհանուր սուրբ եկեղեցւոյ յուղղափառ և Ս. հոգեկիր հարցն մերոց դաւա-*

նութեանց յաւուրս Կոմիտաս կաթողիկոսի համահաւաքեալ։ Հրատարակութիւն Կարապետ եպիսկոպոսի։ Ս. Էջմիածին, 1914։

Կորիւն վարդապետի, Մամբրէի վերծանողի եւ Դաւթի Անյաղթի Մատենագրութիւնք։ Վենետիկ, 1833։

Կորյուն. Վարք Մաշտոցի։ Թարգմանությունը առաջաբանով և ծանոթագրություններով Մ. Աբեղյանի։ Եր., 1941։

Կցուրդք Ս. Եփրեմի խորին Ասորւոյ։ Հրատարակեց հանդերձ ներածութեամբ Հ. Ներսէս վ. Ակինեանն։ Վիեննա, 1957։

Համառօտ պատմութիւն վրաց։ Վենետիկ, 1884։

Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի։ Վենետիկ, 1862։

Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց եւ Թուղթ առ Վահան Մամիկոնեան։ Աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեան եւ Ստ. Մալխասեան։ Տփղիս, 1904։

Մանր ժամանակագրություններ XIII—XVIII դդ.։ Կազմեց՝ Վ. Ա. Հակոբյան. Հ. 2։ Եր., 1956։

Մելիքսեթ-Բեկ Լ.. Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին. Հ. Ա.—Եր., 1934—1936։

Մեծին Վարդանայ Բարձրբերդեցւոյ Պատմութիւն տիեզերական։ Ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին։ Մ., 1861։

Մովսես Խորենացի. Հայոց պատմություն։ Թարգմանություն, ներածություն և ծանոթագրություններ Ստ. Մալխասյանցի։ Եր., 1940։

Մովսես Խորենացի. Պատմություն հայոց։ Թարգմանությունը, ներածությունը և ծանոթագրությունները Ստ. Մալխասյանցի։ Եր., 1968։

Մովսես Կաղանկատվացի. Պատմություն Աղվանից աշխարհի։ Թարգմանությունը, առաջաբանը և ծանոթագրությունները Վ. Առաքելյանի։ Եր., 1969։

Մովսեսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի։ Թիֆլիս, 1912։

Մովսեսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի։ Ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին։ Մ., 1860։

Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն հայոց։ Աշխատութեամբ Մ. Աբեղեան և Ս. Յարութիւնեան։ Տփղիս, 1913։

Յովհան Մամիկոնեան. Պատմութիւն Տարօնոյ։ Աշխատությամբ Աշ. Աբրահամյանի։ Եր., 1941։

Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ Մատենագրութիւնք։ Վենետիկ, 1833։

Յովհաննու Կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն հայոց։ Թիֆլիս, 1912։

Նիւթեր Աղուանից պատմութեան ուսումնասիրութեան համար։—Արարատ, 1897, № 2, էջ 67—70։

Շար Սկնայ ժողովրդական երգերի. Ձայնագրեց Կոմիտաս վարդապետ։ Ս. Էջմիածին, 1895։

Պատմութիւն Անանուն զրուցագրի. Կարծեցեալ Շապուհ Բագրատունի։ Թարգմանությունը գրաբարից, առաջաբանն ու ծանոթագրությունները Մ. Հ. Դարբինյան-Մելիքյանի։ Եր., 1971։

Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերացւոյ։ Թիֆլիս, 1912։

Պատմութիւն Ղեւոնդեայ Մեծի վարդապետի հայոց։ ՍՊբ. 1887։

Պատմութիւն Յովհաննու կաթողիկոսի։ Երուսաղէմ, 1867։

Պատմութիւն նահանգին Սիսական։ Արարեալ Ստեփաննոսի Օրբէլեան արքեպիսկոպոսի Սիւնեաց։ Թիֆլիս, 1910։

Պատմութիւն Սեբէոսի։ Աշխատասիրությամբ Գ. Վ. Աբգարյանի։ Եր., 1979։

Պատմութիւն Տարօնոյ զոր թարգմանեաց Զենոբ Ասորի։ Վենետիկ, 1889։

Սամուէլի քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց. Յաղագս Գիւտի ժամանակաց անցելոց մինչեւ ի ներկաս։ Վաղարշապատ, 1893։

Սասնա ծռեր։ Խմբագրեց պրոֆ. դր. Մանուկ Աբեղյան աշխատակցությամբ Կարապետ Մ. Օհանջանյանի. Հ. Ա։ Եր., 1936։

Սեբէոսի եպիսկոպոսի պատմութիւն։ Բաղդատութեամբ ձեռագրաց, հանդերձ առաջաբանիւ և ծանօթութեամբք Ստ. Մալխասեանց։ Եր., 1930։

Սոկրատայ Պատմութիւն եկեղեցական և վարք սրբոյն Սեղբեստրոսի։ Աշխատասիրութեամբ Մեսրոպ վ. Տէր Մովսէսեան։ Վաղարշապատ, 1897։

Ստեփանոսի Սիւնեաց եպիսկոպոսի Պատմութիւն տանն Սիսական։ Ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին։ Մ., 1861։

Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական։ ՍՊբ, 1885։

Սրբոյ հօրն մերոյ Եղիշէի վարդապետի մատենագրութիւնք։ Վենետիկ, 1859։

Սրբոյ Հօրն մերոյ երանելւոյն Գրիգորի Լուսաւորչի Յաճախապատում ճառք լուսաւորք։ Յառաջաբանով, համեմատութեամբ և ծանօթութիւններով Ա. Տեր Միքելեանի։ Ս. Էջմիածին, 1894։
Սրբոյ Հօրն մերոյ Մովսէսի Խորենացւոյ Մատենագրութիւնք։ Վենետիկ, 1865։
Վարք և վկայաբանութիւնք սրբոց. Հատընտիր քաղեալք ի ճառընտրաց. Հ. Ա—Բ, Վենետիկ, 1874։
Վեցօրեայք Գէորգայ Պիսիդեայ իմաստասիրի։ Տպագրեալ հանդերձ յոյն բնագրաւ և լուսաբանեալ ի Հ. Աթանաս վ. Տիրոյեանէ։ Վենետիկ, 1900։
Տեառն Յովհաննու Մանդակունւոյ հայոց հայրապետի Ճառք։ Վենետիկ, 1836։
Տեառն Յովհաննու Մանդակունւոյ հայոց հայրապետի Ճառք։ Երկրորդ տպագրութիւն։ Վենետիկ, 1860։
Տիմոթէոսի եպիսկոպոսապետի Աղեքսանդրեայ Հակաճառութիւն առ սահմանեալսն ի ժողովոյն Քաղկեդովնի։ Ի լոյս ընծայեալ աշխատութեամբ Կարապետ ծ. վարդապետի և Երուանդ վարդապետի։ Ս. Էջմիածին, 1908։
Ուխտանէս եպիսկոպոս. Պատմութիւն Հայոց։ Վաղարշապատ, 1871։
Փավստոս Բուզանդ. Պատմություն հայոց։ Թարգմանությունը, ներածությունը և ծանոթագրությունները Ստ. Մալխասյանցի։ Եր., 1968։
Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն հայոց։ Ի լոյս ած Ք. Պ.։ ՍՊբ, 1883։
Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն հայոց ի չորս դպրութիւնս։ Վենետիկ, 1832։
«Քարթլիս ցխովրեբայի» կամ «Վրաց պատմության» հին հայերեն թարգմանությունը։ Վրացերեն բնագիրը և հին հայերեն թարգմանությունը ուսումնասիրությամբ և բառգրքով լույս ընծայեց Իլիա Աբուլաձեն։ Թիֆլիս, 1953։
Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին. Հ. 5. Բյուզանդական աղբյուրներ. Ա. Պրոկոպիոս Կեսարացի։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հ. Բարթիկյանի։ Եր., 1967։
Օտար. աղբյուրները Հայաստանի և հայերի մասին։ Հ. 8. Ասորական աղբյուրներ. Ա։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հ. Գ. Մելքոնյանի։ Եր., 1976; նույնի մասն Բ. [Ձեռագիր]։

## Բ. ՌՈՒՍԵՐԵՆ

*Анания Ширакаци.* Космография: Перевод с древнеармянского, предисловие и комментарии К. С. Тер-Давтян и С. С. Аревшатяна, Ер., 1962.
*Антиох Стратиг.* Пленение Иерусалима персами в 614 г. Грузинский текст исследовал, издал, перевел и арабское извлечение приложил Н. Марр. Тексты и разыскания по армяно-грузинской филологии, кн. 9. СПб., 1909.
*Аристотель.* Метафизика.—Соч., в 4-х т. М., 1976, т. 1, с. 63—367. Византийские историки Дексипп. Евнапий, Олимпиодор, Малх, Петр Патриций, Менандр, Кандид, Ноннос и Феофан Византиец, переведенные с греческого С. Дестунисом. СПб., 1860.
*Давид Анахт (Непобедимый).* Анализ «Введения» Порфирия Сводный критический текст, пер. с древнеарм., предисл. и примеч. С. С. Аревшатяна. Ер., 1976.
Житие Петра Ивера, царевича-подвижника и епископа Майумского V века. Грузинский подлинник издал, перевел и предисловием снабдил Н. Марр.—Православный Палестинский сборник, 1896, вып. 47, т. 16, вып. 2.
История епископа Себеоса. Перевел с четвертого исправленного армянского издания Ст. Малхасянц. Ер., 1939.
Сведения арабских географов IX—X веков по Р. Хр. о Кавказе, Армении и Азербайджане.—Сборник материалов для описания местностей и племен Кавказа. Тифлис, 1908, вып. 38, с. 1—130.
Церковная история Евагрия, схоластика и почетного префекта. СПб., 1853.

## Գ. ՕՏԱՐ ԼԵԶՈՒՆԵՐՈՎ

*Abu Yusuf*. Kitab al-kharadj, Bulaq, 1902 (1884).

*Acta Sancti Macarii* episcopi monasterii Pelecetі.—Analecta Bollandiana, 1897, t. XVI.

*Agapius (Mahboub) de Menbidj*. Kitab al-Unvan. Histoire universelle. Ed. et trad. en française par A. Vasiliev.—Patrologia Orientalis, 1912, t. 8, fasc. 3, p. 399—550.

*Agathiae Myrinaei* Historiarum libri quinque. Rec. R. Keydell.—Corpus fontium historiae Byzantinae, 1967, vol. 2.

*Ammiani Marcellini Rerum* gestarum libri, qui supersunt. Res. C. U. Clark. Vol. 1—2. Berolini, 1910—1915.

*Aristotle*. On the Heavens. With an english translation by W. K. C. Guthrie. London, 1939.

*Bibliotheca Geographorum Arabicorum*. Ed. M, J. de Goeje. T. 1—8. Lugduni Batavorum, 1870—1892.

*Cassii Dionis Coccelani* Historiae Romanae quae supersunt. T. 1—4. Lipsiae, 1818.

*Chronique de Denys de Tell Mahre*. Publ. et trad. par J. B. Chabot. Paris, 1895.

*Chronique de Michel* le Syrien. Ed. et trad. par J. B. Chabot. T. 1—4. Paris, 1899—1910.

*Claudii Ptolemaei* Geographia. Ed. C. Müller. Parisiis, 1901.

Codex Theodosianus cum perpetuis commentariis Jacobi Gothofredi. T. 1—6. Lugduni, 1665.

*Cornelii Taciti* Libri qui supersunt. Ed. E. Koestermann. T. I. Ab excessu Divi Augusti. Lipsiae, 1965

Corpus Inscriptionum Graecorum. Ed. A. Boeckhius. Vol. 1—4. Berolini, 1828—1877.

Corpus iuris civilis. T. 2. Codex Justinianus. Ed. P. Krueger. Berolini, 1959.

*Davidis Prolegomena* et in Porphyrii Isagogen commentarium. Ed. Adolfus Busse. Beroloni, 1904.

Eutropii Breviarium historiae Romanae. Rec. Fr. Ruehl. Lipsiae, 1897.

Evagrius Scholasticus. Ecclesiastical History. Ed. J. Bidez and L. Parmentier. London, 1898.

*Eznik de Kolb*. De Deo. Traduction francaise, notes et tables par L. Mariès et Ch. Mercier.—Patrologia Orientalis, 1959, t. 28, fasc. 4., p. 543—776.

*Eznik von Kolb* Wider die Sekten. Aus dem armenischen übersetzt J. M. Schmid. Wien, 1900.

*Genesius I*. Regna. Ed. C. Lachmann. Bonnae, 1834.

The Geography of Strabo. Trans. by H. L. Jones. In 8 volumes. London, 1931—1949.

*Georgii Cyprii* Descriptio orbis Romani. Ed. H. Gelzer. Lipsiae, 1890.

*Georgii Monachi Chronicon*. Ed. C. de Boor. Lipsiae, 1904.

*Giorgio de Pisidia*. Poemi. Edizione critica. Traduzione e commento a cura di A. Pertusi. T. I. Ettal, 1960.

Grammaire de Denis de Thrace par M. L. Girbied. Paris, 1824.

*Herodianus* Ab excessu D. Marci libri VII. Ed. K. Stavenhagen, Lipsiae, 1922.

Ibn al-Athir, Al-Kamil fi-t-tarikh, 1—9. Al-Qahira, 1353 (1934—1935).

Ibn Wadih al-Yaqubi. Tarikh, 1—2. Beyrouth, 1960.

Ioannis Malalae Chronographia. Rec. L. Dindorf. Bonnae. 1831.

Ioannis Zonarae Epitomae historiarum libri XIII—XVIII. Bonnae, 1897.

Jacut's Geographisches Wörterbuch. Hrsg. von F. Wüstenfeld. Bd. 1—6, Leipzig, 1924.

Liber expugnationis regionum auctore al-Beladsori. Ed. J. M. de Goeje. Lugduni Batavorum, 1866.

*Migne J. P.* Patrologiae cursus completus. Series graeco-latina. Paris. 1857—1866. Series graeca. 1856—1867.

Nicephorus Patriarchus. Opuscula historica. Ed. de Boor. Lipsiae, 1880.

Opus geographicum auctore Ibn Hauqal. Ed. J. H. Kramers. T. 1—2. Lugduni Batavorum, 1938—1939.

Paikuli. Monument and Inscription of the Early History of the Sasanian Empire by E. Herzfeld. Berlin, 1924.
Pliny. Natural History. With an english transl. In ten volumes. Vol. 5, libri XVII—XIX by H. Rackham. London, 1950.
Procopii Caesariensis Opera omnia. Rec. J. Haury. Vol. 1—4. Lipsiae, 1962—1964.
Scriptores Historiae Augustae. Ed. E. Hohl. Vol. 1—2. Lipsiae, 1965.
Tarikh at-Tabari par Abu Jafar Mohammad Ibn Jarir at-Tabari. Ed. critique par M. Abu-l-Fath Ibrahim, 1—9. Le Caire, 1960—1969.
Theodosiani Libri XVI cum constitutionibus Sirmondianis et leges novellae ad Theodosianum partinentes. Ed. Th. Mommsen et P. M. Meyer. Berolini, 1954.
Theophanis Chronographia. Rec. C. de Boor. Vol. 1—2. Lipsiae, 1883—1885.
Theophylacti Simocattae Historiarum libri octo. Rec. Imm. Bekkerus. Bonnae 1834.
Zosimi comitis et ex advocati fisci historia nova. Ed. L. Mendelssohn. Lipsiae, 1887.

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

### Ա. ՀԱՅԵՐԵՆ

Աբգարյան Գ. *«Սեբեոսի պատմությունը» և Անանունի առեղծվածը։ Եր., 1965։*
Աբեղյան Մ. *Երկեր։ Հ. Ա. Հայ վիպական բանահյուսություն։ Եր., 1966։*
Աբեղյան Մ. *Հայոց հին գրականության պատմություն։ Գիրք առաջին։ Եր., 1944։*
Ադոնց Ն. *Անծանոթ էջեր Մաշտոցի և նրա աշակերտների կյանքից ըստ օտար աղբյուրների։— Հանդէս ամսօրեայ, 1925, № 5—12։*
Ադոնց Ն. *Հայաստանի պատմություն։ Ակունքները X—VI դդ. մ. թ. ա.։ Եր., 1972 թ.։*
Ադոնց Ն. *Մաշտոց եւ նրա աշակերտները։ Ըստ օտար աղբիւրների։ Վիեննա, 1925։*
Ադոնց Ն. *Պատմական ուսումնասիրութիւններ։ Պարիս, 1948։*
Աթայան Ռ. *Հայկական խազային նոտագրությունը։ Եր., 1959։*
Ալիշան Ղ. *Այրարատ։ Բնաշխարհ Հայաստանեայց։ Վենետիկ—Ս. Ղազար, 1890։*
Ալիշան Ղ. *Արշալոյս քրիստոնէութեան հայոց։ Վենետիկ—Ս. Ղազար, 1901։*
Ալիշան Ղ. *Հայապատում։ Պատմութիւն հայոց։ Հ. Ա. Վենետիկ—Ս. Ղազար, 1901։*
Ալիշան Ղ. *Շնորհալի եւ պարագայ իւր։ Վենետիկ—Ս. Ղազար, 1873։*
Ալպօյաճեան Ա. *Պատմութիւն հայ գաղթականութեան։ Գահիրե, 1941։*
Ակինեան Ն. *Դասական հայերէնը եւ Վիեննական Մխիթարեան դպրոցը։ Վիեննա, 1932։*
Ակինեան Ն. *Դունայ 572-ի ապստամբութիւնը եւ յաջորդ տասնամեայ շրջանը։— Հանդէս ամսօրեայ, 1913, № 1, էջ 61—80։*
Ակինեան Ն. *Եղիշէ վարդապետ եւ իւր «Պատմութիւնն հայոց պատերազմին»։ Մ. 1—2։ Վիեննա, 1932—1936։*
Ակինեան Ն. *Թէոդորոս Ափիկուռա եւ Նանա Ասորի Հայաստանի մէջ եւ Նանայի Յովհաննու Մեկնութեան հայերէն թարգմանութիւնը։— Ակինեան Ն. «Մատենագրական հետազօտութիւններ» գրքում։ Վիեննա, 1922, հ. Ա, էջ 115—163։*
Ակինեան Ն. *Կիւրիոն կաթողիկոս վրաց։ Պատմութիւն հայ-վրական յարաբերութեանց եօթներորդ դարու մէջ։ Վիեննա, 1910։*
Աճառյան Հ. *Բանասիրական ուսումնասիրություններ։ Եր., 1976։*
Աճառյան Հ. *Երեք հարց Մեսրոպյան այբուբենի շուրջը։— Էջմիածին, 1946, № 8—10, էջ 35—39։*
Աճառյան Հ. *Երկու ուղղում Կորյունի մեջ։— Տեղեկագիր, ԱրմՖանի, 1941, № 1(6)։*
Աճառյան Հ. *Հայերեն արմատական բառարան։ Հ. Ա—Դ։ Եր., 1971, 1973, 1977, 1979։*
Աճառյան Հ. *Հայոց անձնանունների բառարան։ Հ. Ա—Ե։ Եր., 1942, 1944, 1946, 1948, 1962։*
Աճառյան Հ. *Հայոց գրերը։ Եր., 1968։*
Աճառյան Հ. *Հայոց լեզվի պատմություն։ Մ. 2.։ Եր., 1951։*
Աճաճեան Պ. *Ս. Գրիգոր Լուսաւորչի ձեռնադրութեան թուականը եւ պարագաները։ Վենետիկ—Ս. Ղազար, 1960։*
Անասյան Հ. *Հայկական մատենագիտություն։ Ե—ԺԸ դդ. Հ. Ա—Բ։ Եր., 1959—1976։*

Առաքելյան Բ. Հայկական պատկերաքանդակները IV—VII դարերում, Եր., 1949։

Ասատուրեան Հ. Քաղաքական վերաբերութիւններ ընդ մէջ Հայաստանի եւ Հռովմայ 190-էն ն. Ք. մինչեւ 428 յ. Ք., Վենետիկ—Ս. Ղազար, 1912։

Ավդալբեգյան Թ. Հայագիտական հետազոտություններ, Եր., 1969։

Ավդալբեգյան Թ. Հաս, սակ ու բաժ (Հայաստանի տնտեսական զարգացման պատմության խնդիրների շուրջը)։—Տեղեկագիր ՀԽՍՀ գիտության և արվեստի ին-տի, 1926, № 1, էջ 45—96։

Ավդալբեգյան Մ. Հայ գեղարվեստական արձակի սկզբնավորումը (V դար)։ Եր., 1971։

Արևշատյան Ս. Դավիթ Անհաղթը՝ հին Հայաստանի ականավոր փիլիսոփա, Եր., 1980։

Արևշատյան Ս. Դավիթ Անհաղթը և հին Հայաստանի փիլիսոփայական միտքը։—Պատմա-բանասիր. հանդես, 1980, № 1, էջ 21—29։

Արևշատյան Ս. Դավիթ Անհաղթի ժառանգությունը նոր լուսաբանությամբ։—Բանբեր Մատենադարանի, 1969, № 9, էջ 7—22։

Արևշատյան Ս. Հայոց գրերի ստեղծման պատմական պատճառները և հին հայկական թարգմանությունները։—Բանբեր Մատենադարանի, 1964, № 7, էջ 61—76։

Արևշատյան Ս. Հնագույն հայկական թարգմանությունները և նրանց պատմամշակութային նշանակությունը։—Պատմա-բանասիր. հանդես, 1973, № 1, էջ 23—37։

Արևշատյան Ս. Պլատոնի երկերի հայերեն թարգմանության ժամանակը։—Բանբեր Մատենադարանի, 1971, № 10, էջ 7—20։

Բադալյան Հ. Օրացույցի պատմություն, Եր., 1970։

Բարթիկյան Հ. Հայ-բյուզանդական նոթեր։—Տեղեկագիր ՀՍՍՀ ԳԱ. Հաս. գիտ., 1960, № 7—8, էջ 129—138։

Բարթիկյան Հ. «Narratio de rebus Armeniae», հունարեն թարգմանությամբ մեզ հասած մի հայ-քաղկեդոնական սկզբնաղբյուր։—Բանբեր Մատենադարանի, 1962, № 6, էջ 457—470։

Բարխուդարյան Ս. Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ, Եր., 1963։

Գարագաշեան Ա. Քննական պատմութիւն Հայոց. Ըստ նորագոյն պատմական, լեզուաբանական եւ բանասիրական տեղեկութեանց։ Մասն Բ. Պատմական ժամանակ. Արշակունիք ի ժամանակի հեթանոսութեան։ Թիֆլիս, 1895։

Գէլցէր Հ. Համառօտ պատմութիւն Հայոց։ Վիեննա, 1897։

Գէլցէր Հ. Սկզբնաւորութիւնք բիւզանդեան բանակաթեմերու դրութեան։ Թարգմանեց Հ. Գարեգին Գարանֆիլեան։ Վիեննա, 1903։

Գիւտերբօք Կ. Հռովմէական Հայաստան եւ հռովմէական սատրապութիւնները Դ—Զ դարերուն։ Գերմաներէնէ թարգմանեց Հ. Մկրտիչ վ. Նորչուեան։ Վիեննա, 1914։

Գրիգորեան Մ. Դիտողութիւններ եւ ստորագրութիւններ Սեբէոսի պատմագրոց բնագրին վերայ։ Վիեննա, 1973։

Գրիգորյան Վ. Հայաստանի վաղ միջնադարյան կենտրոնագմբեթ փոքր հուշարձանները։ Եր., 1982։

Դանիելյան Է. Արիստոտելի տարրերի տեսությունը և Անանիա Շիրակացու «Տիեզերագիտութիւնը»։—Պատմա-բանասիր. հանդես, 1971, № 2, էջ 217—222։

Դանիելյան Է. Իսիդոր Քարակացու «Պարթևական կայանները»։—Պատմա-բանասիր. հանդես, 1971, № 4, էջ 171—182։

Դանիելյան Է. Հայ բնափիլիսոփայական մտքի ակունքների մոտ։—Լենինյան ուղիով, 1980, № 5, էջ 92—96։

Դանիելյան Է. Հայ եկեղեցու նկատմամբ Խոսրով Փարվեզի վարած քաղաքականությունը։—Պատմա-բանասիր. հանդես, 1981, № 4, էջ 195—200։

Դանիելյան Է. Հայաստանի բաժանման տարեթիվը՝ 387 թե՞ 385։—Պատմա-բանասիր. հանդես, 1980, № 1, էջ 203—214։

Դանիելյան Է. V դարի տիեզերագիտական մի պատառիկ։—Լրաբեր հաս. գիտ. /ՀՍՍՀ ԳԱ, 1975, № 12, էջ 100—102։

Դանիելյան Է. 647 թվականի արաբական արշավանքը Հայաստան։—Պատմա-բանասիր. հանդես, 1982, № 2, էջ 106—116։

Եռեմյան Ս. Ատլաս «Հայ ժողովրդի պատմության» գրքի մաս 1-ի։ Եր., 1952։

Երեմյան Ս. *«Ծաւդէացւոց իշխանութիւն»։—Տեղեկագիր ՀՍՍՀ ԳԱ Հաս. գիտ. 1960, № 7—8; էջ 41—52։*
Երեմյան Ս. *Հայաստանը ըստ «Աշխարհացոյցի»։ Եր., 1963։*
Երեմյան Ս. *Հայաստանի քաղաքական վիճակը Արտավազդ V-ի ժամանակ (252/3—261)։—Լրաբեր հաս. գիտ. ՀՍՍՀ ԳԱ, 1975, № 1, էջ 13—22։*
Երեմյան Ս. *Հայկական ամսօրերի անուններին նվիրված սրբազան վայրերը նախաքրիստոնեական Հայաստանում։ Քարտեզ.* Տե՛ս Բադալյան Հ. Ս. *Օրացույցի պատմություն։ Եր., 1970։*
Երեմյան Ս. *Մեծ Հայքի թագավորության բաժանումը Սասանյան Իրանի և Հռոմեական կայսրության միջև (244—253 թթ.)։ Պատմա-բանասիր. հանդես, 1976, № 1, էջ 67—88։*
Երեմյան Ս. *Մեսրոպ Մաշտոց (ծննդյան 1600-ամյակի առթիվ)։—Լենինյան ուղիով, 1962, № 5, էջ 8—18։*
Երեմյան Ս. *Նախշ-ի-Ռուստեմի «Քաաբա ի Զարդուշտ» հուշարձանի արձանագրության վկայությունները Հայաստանի մասին։—Պատմա-բանասիր. հանդես, 1966, № 2, էջ 59—70։*
Երեմյան Ս. *Պայմանական հողատիրության առաջացման հարցի շուրջը ֆեոդալականացող Հայաստանում։ «Ձեռական իշխանութիւնը» հին Հայաստանում։—Պատմա-բանասիր. հանդես, 1971, № 1, էջ 3—9։*
Երեմյան Ս. *Վաղարշ 2-րդի քաղաքական հարաբերությունները Հռոմի և պարթևների հետ։—Պատմա-բանասիր. հանդես, 1976, № 4, էջ 37—56։*

Էփրիկեան Հ. *Պատկերազարդ բնաշխարհիկ բառարան։ Հ. 1։ Վենետիկ—Ս. Ղազար, 1903—1905։*
Թահմիզյան Ն. *Գրիգոր Գռզիկը և հայ-բյուզանդական երաժշտական կապերը։—Բանբեր Երևանի համալս., 1968, № 3, էջ 198—210։*
Թահմիզյան Ն. *Էջեր հայկական վաղ միջնադարյան երաժշտական գեղագիտությունից։—Տեղեկագիր ՀՍՍՀ ԳԱ. Հաս. գիտ., 1961, № 2, էջ 49—60։*
Թահմիզյան Ն. *Մեսրոպ Մաշտոցն ու հայոց հոգևոր երգարվեստը։—Բանբեր Մատենադարանի, 1964, № 7, էջ 161—208։*
Թահմիզյան Ն. *Մի էջ հայկական վաղ միջնադարյան երաժշտական տեսությունից։—Բանբեր Մատենադարանի, 1960, № 5, էջ 43—76։*
Թահմիզյան Ն. *Ներդաշնակության հենքի ուսմունքը միջնադարյան Հայաստանում (V—VI դդ.)։—Պատմա-բանասիր. հանդես, 1966, № 1, էջ 75—92։*
Թորամանյան Թ. *Նյութեր հայկական ճարտարապետության պատմության։ Եր., 1942։*
Թումանյան Բ. *Երկրակենտրոն և արեգակենտրոն համակարգերը Հայաստանում։ Եր., 1973։*
Թումանյան Բ.—*Տոմարի պատմություն։ Եր., 1972։*
Ինճիճեան Ղ. *Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհին։ Հ. 1—3։ Վենետիկ, 1835։*
Իսկանյան Վ. *Բյուզանդական կողմնորոշման հարցը Վարդանանց պատերազմի ժամանակ։—Պատմա-բանասիր. հանդես. 1966, № 3, էջ 53—70։*
Իսկանյան Վ. *Հայ-բյուզանդական դաշինքը Պարսկաստանի դեմ (VI դար)։—Պատմա-բանասիր. հանդես, 1963, № 4, էջ 51—62։*
Իսկանյան Վ. *Հայ-բյուզանդական հարաբերությունները VII դարում՝ արաբական առաջին արշավանքների ժամանակ։—Պատմա-բանասիր. հանդես, 1971, № 4, էջ 61—80։*
Իսկանյան Վ. *Մարզպանական Հայաստանի ապստամբությունը Պարսկաստանի դեմ և Բյուզանդիան (V դ. վերջ և VI դ. սկիզբ)։—Պատմա-բանասիր. հանդես, 1969, № 1, էջ 29—4[illegible]։*
Իսկանյան Վ. *Մի էջ հայ-բյուզանդական հարաբերությունների պատմությունից։—Պատմա-բանասիր. հանդես, 1960, № 4, էջ 148—161։*

Լեօ. *Հայոց պատմութիւն։ Հ. 1. Հին պատմութիւն։ Թիֆլիս, 1917, Հ. 2։ Եր., 1947։*
Խաչիկյան Լ. *Գրիգոր Պարթևին վերագրված «Հարցումը» որպես հայ մատենագրության երախայրիք։—Բանբեր Մատենադարանի, 1964, № 7, էջ 301—330։*
Խաչիկյան Լ. *Եղիշեի «Արարածոց մեկնութիւն» աշխատությունը։ Եր., 1945. (Անտիպ. թեկնածուական դիսերտացիա)։*
Խաչիկյան Լ. *Փոքր Հայքի սոցիալական շարժումների պատմությունից։ Եր., 1951։*
Կոգյան Ս. *Կամսարականները «տեարք Շիրակայ եւ Արշարունեաց»։ Պատմական ուսումնասիրութիւն։ Վիեննա, 1926։*
Կոգյան Ս. *Հայոց եկեղեցին մինչև Փլորենտեան ժողովը։ Բեյրութ, 1961։*

